# ՀԱՅԱՊԱՏՈՒՄ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

## ՀԱՏՈՐ Բ.



[redacted]

ՅԻՇԱՏԱԿ ՅՈԲԵԼԻՆԻ

ԵՐԿՀԱՐԻՒՐԱՄԵԱՑ ՀԱՍՏԱՏՈՒԹԵԱՆ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ

Ց ՍԵՊՏ. 1701–1901 ՍԵՊՏ. Ց

# ՀԱՅԱՊԱՏՈՒՄ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

ՅՕՐԻՆԵԱՑ

Հ. ՂԵՒՈՆԴ Վ. Մ. ԱԼԻՇԱՆ

ՀԱՏՈՐ Բ.

[redacted]





ՎԵՆԵՏԻԿ – Ի ՎԱՆՍ Ս. ՂԱԶԱՐՈՒ

1901






# ՀԱՅԱՊԱՏՈՒՄ

Մ

## ՅՈՎՀԱՆ ԻՄԱՍՏԱՍԷՐ ԵՒ ԽԱԼԻՖԱՅՆ

(ՅՈՎՀ. ԿԱԹ. ԻԲ.)



ԱՋՈՐԴԷ զաթոռն սուրբ մեծ իմաստասէրն Յովհաննէս. որ հմուտ և տեղեակ գոլով բոլոր քերթողական շարադծաց, մասանց բանի և մասնականաց, այլ և վարժից սեռից, և որք ընդ գոյացութեամբն են, սեռական տեսակարարողութիւնք, մինչ ց'անհատ վայր, և պարբերութեանցն եւս հանգամանացն և պատահմանց, անջատից և անանջատից ոչ անտեղեակ[1]: Դարձեալ և կրթական վարժից

1. Յովհաննու իմաստասիրի փիլիսոփայութեան զանազան մասանց գիտութիւնները բացատրէ՝ իմաստակ ոճով:

Թէոդոսկանաց, որ զարուեստքն ծառոյ պտուղս տուզանողջէս ներքուզրէ յարուեստուէքն, յաւէտ իմն հնազանդութեամբ դրոշմեալ. տալ եկեղեցւոյ Քրիստոսի զբովանդակ կարգաւորութիւնս պաշտաման ժամուց. զեղեցիկ իմն յօրինուածով նախացուցեալ, և բացայայտեալ ևս զմիոյ միոյ կարգացն զմեկնութիւնս ի մխիթարութիւն կղերց եկեղեցւոյ: Այլ և ճառս ևս ինքնախօս բանաստեղծս յարդարեալ զզղջացուցիչս չար գործոց և յորդորականս ի պէտս ապաշխարողական սակի: Սա ամենայն առաքինի քաղցրութեամբ զանձն տուեալ՝ աշխատասիրաբար կրթական ջանիւ զինքն զինէր յերկս հոգևորս, պահօք և աղօթիւք և ամենագիշեր տքնութեամբ. և ի ներքոյ ոչ յօղեաց ասր, այլ յայծեաց՝ ցփսիս դժոխըմբերս զգեստաւորէր. իսկ զարտաքոյսն[1] ի պատուական երանգէ նիւթից զգեստաւորեալ պճնազարդէր, և ոսկի մանր խարտիւ[2] աղացեալ և իւզովք անուշիւք յայն ընդխառնեալ, փչէր ընդ ծաղկեալ ալեօք մօրուսն, որ իջանէր մինչև ցգրապանս զգեստու նորա[3]: Եւ այնպէս ապա ասեան կազմեալ, զի տեսողացն բարեխորհաց՝ բարի պատճառք խրախութեան լիցի, և չարացն խակաց՝ ընդոստուցանող պակուցման՝ ի չարէն ի բարի:...

Եւ վասն զի տեսեալ էր զայրն Աստուծոյ ոստիկան ոմն Հայոց՝ Վլիր անուն, և եղև գնալ նմա առ ամիրապետն, և պատմէր նմա զմայեզչութիւնն Յովհաննու: Իսկ նորա զնա տեսանել ըղձացեալ, վաղվաղակի զմի ի ծառայից իւրոց առաքէր, առ ինքն զայրն Աստուծոյ ածել: Եւ իբրև ածաւ, բազում պատուով յարքունական քաղաքն, պատգամ առ նա ամիրապետն յղէր, զի ըստ սովորականին

1. Վրայի կամ դրսի հագուստ:

2. Խարտոց գործիքով մանրելով իբր և աղալով զոսկին:

3. Սաղմոսի մէջ Ահարոնի համար ըսուածը կրկնէ:

զարդու զինքն զգեստաւորեալ՝ այնպէս զնա տեսցէ։ Իսկ նորա զաւետարանաճառական զխորանն իւր եւս առաւել փայլուն և պայծառագոյն զգեստուք պճնաւորեալ, և զաղէբեկ ծաղկեալ[1] մորսան՝ ամփոփումն կազմեալ, և զոսկիանկար փառազանն՝ որ ի փայլից ոսկեզարդից՝ ի ձեռն տուեալ, այնպէս առաջնեան[2] այրն և Թիկնունքն՝ առ ամբիոնականն մատանէր. Զոր տեսեալ՝ հիացեալ զարմացեալ ընդ գեղեցկութիւն նորա բարեհամբոյր հասակին և չքնաղաշուք զխառակին[3]. ապա եղաւ աթոռ նստել նմա։ Եւ սկսաւ հարցանել ցնա ամբիոնականն. Ընդէ՞ր, ասէ, այդպէս պճնազարդեալ լինիս. վասնզի Քրիստոսն ձեր զզարկեչս և զչնչին զգեստ պատուեաց, և զնոյն արարին աշակերտք նորա։ Իսկ նա պատասխանեալ ասէ. Թէպէտ և Քրիստոսի Աստուծոյ մերոյ առ ի մէնջ առեալ մարմնոյն զաւատուածական փառսն ծածկեալ լինէր, իբրեւ ծարազուրաւ, սակայն աստուածային զօրութեան ընքանչելիք նշանացն ոչ ծածկեցաւ, այլ յամենեսին հեղաւ. զնոյն շնորհ նշանաց և արուեստից՝ տալով ի ձեռս իւրոց աշակերտացն, որ բաւական բերէր զմիտս մարդկան զարթուցանել յերկիւղն Աստուծոյ, և ոչինչ պիտոյացան զգեստուց աճարկողաց։ Իսկ արդ՝ վասնզի փակեալ է ի մէնջ բազում նշանաց նորա շնորհ, վասն այնորիկ աճարկու իմն զգեստուք հնարիմք զպարզամիտ խակութիւն մարդկան՝ ընդոստուցանել յերկիւղն Աստուծոյ։ Զայս ապա և ի մարմնաւոր թագաւորսդ ի ձեզ է տեսանել, ծիրանեփառ և ոսկեճամուկ զգեստուք և գեղեցիկ զարդուք և զինուք՝ առ ի յահարկութիւն բազմաց բերել. զի թէ խարազնազգեաց զձեզ ի մարդկանէ ոք տեսանիցէ և զծուծս

1. Դեռ քիչ մի եւ մազով խառնուած ճերմակ մօրուք։

2. Գեղեցիկ գունով կամ երեսով։

3. Դէմք, կերպարանք, նայուածք։

և խոշորս, ոչ ոք պակուցեալ զարհուրեսցի ի փառաց ձեռոց՝ որ ոչն երեւի։ Բայց եթէ զբովանդակն զիմ գտանել խուզես, հրամայեսցէ տէրութիւնդ քո արտաքս սակաւիկ մի գնալ արանցդ։ Իսկ ապա ի միայնանալն՝ մերկացաւ առ ի զգեստէն արտաքնոյ, ցուցանելով նմա զցփսիսն այծեայս, ասելով. Մերկութեան անդամոցս այս է զգեստ, իսկ արտաքոյքդ՝ միայն են ի տեսիլ արտաքնոց։ Եւ իբրեւ զձեռն ի ցփսիսն արկեալ լինէր ամիրապետն, դժգմեալ, խոժոռեալ՝ քստմնելով ասէ. Զիա՞րդ արդեօք կարէ մարմին մարդոյ տեւել ժուժկալել այսպիսի դժոխըմբերելի քըրձի, եթէ ոչ յԱստուծոյ տուեալ լինի նմա համբերութիւն։ Եւ ապա բազմահարկի պատուով զնա մեծարեալ, և եօթն անգամ զնա պճնաւորեալ գեղեցիկ իմն արքունական զգեստուք, և գանձս եւս ոսկւոյ և արծաթոյ նմա պարգեւեալ, յուղարկէ յիւրական աշխարհն։

---

## ՄԱ.

### ԵՂԵՐԱԿԱՆ ՎԱԽՃԱՆ ՍՏԵՓԱՆՈՍԻ ՍԻՒՆԵԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

(ՍՏԵՓ. ՕՐՊԵԼԵԱՆ. Ա. ԼԱ.)

Էր յայնմ ժամանակի վախճանեալ եպիսկոպոսն Սիւնեաց Յովհան. և էր իշխան Սիւնեաց՝ Բաբգէն և Քուրդ. որք եկեալ առ կաթողիկոսն Դաւիթ՝ խնդրեն ի նմանէ զմեծ իմաստասէրն, զերանելին Ստեփաննոս, որ էր սուր հրեղէն ի ձեռին Ամենասուրբ Հոգւոյն։ Եւ ձեռնադրեալ կաթողիկոսին զնա յաթոռ մետրապոլտութեան Սիւնեաց, և վասն մեծի երախտեացն առաւել պատուէ զնա և կացուցանէ գլուխ եպիսկոպոսաց, և զաթոռն Սիւնեաց՝

գլուխ ամենայն աթոռոց։ Այսն ոմանք, եթէ Սիւնեացն յեօթներորդ դասուն էր եպիսկոպոսաց Հայոց, այժմ յերրորդ դասուն կարգեցին. բայց մի՛ հաւանիր[1]. զի Աղուանիցն միայն էր ի վեր քան զՍիւնեաց, վասն արքեպիսկոպոսութեանն. իսկ Սիւնեացն վասն մետրապօլտութեան գեր ի վերոյ էր քան զամենայն եպիսկոպոսքն Հայոց. զի այլ ոչ ոք ունէր զմետրապօլտութեան պատիւն. և որքան պատրիարքն քան զարքեպիսկոպոսն է գեր ի վերոյ, և արքեպիսկոպոսն՝ քան զմետրապօլիտն, այնքան մետրապօլիտն քան զեպիսկոպոսն, զի նա ձեռնադրէ զեպիսկոպոսն։

Ահա առեալ զմետրապօլտութիւնն՝ Ստեփաննոսի, գնաց ի վիճակն. և աստուածային օրինօք խրատէր և ուսուցանէր. որպէս սուր հատանէր զախտացեալսն. որպէս բժիշկ իմաստուն բժշկէր զվիրաւորսն. որպէս աղ ընտիր համեմէր զանհամեալսն. որպէս արեգակն պայծառ լուսաւորէր ըզխաւարեալսն. տղայոցն ի Քրիստոս կաթն ջամբեցուցանէր որպէս ծնող. կատարելոցն՝ զկատարեալ կերակուրն մատուցանէր, որպէս տնտես հաւատարիմ։ Մեկնեաց և գրեանս բազումս, զԱրարածքըն[2], զՅոբն, զԵզեկիէլն, և այլ բազումս. որոյ բանքն նշանաւոր ի մէջ այլոց մեկնըչացն՝ փայլին որպէս ջահ պայծառ։ Արար և Ճառս բազումս. բաժանեաց և զութ ձայնսն[3] և կարգեաց. շարեաց զՅարութեան օրհնութիւնսն. երգեաց և կցուրդս[4]

1. Քու ըսածդ այլ աթոռոյդ համար՝ շատ հաւանելի չէ, ո՛վ Պատմիչ։

2. Աստուածաշունչ գրոց առաջինն, Ծննդոց գիրքն։ Քիչ բան գտուի հիմայ իր գրածներէն։

3. Եղանակաց եկեղեցական երգոց, Շարականաց, որք իրմէ առաջ այլ երգուէին։

4. Կարճ երգեր նման շարականաց, իբրեւ ատոնց կցուրդելու համար։

քաղցրաձայնս, յարմարեաց և զՍտողագիսն[1] Ցիծեռնց՝ ութն եղանակաց յոյժ խորհրդաւոր, և զԹաւհոցն և որ յաղուհացն երգի. մեկնեաց և զխորհուրդ Գիշերային պաշտամանն:

Էր սորա և քոյր մի՝ ի մանկութենէ սնուցեալ զվարս կուսութեան, և առանձնացեալ ի ձորակին Գառնեայ յայրի միոջ, և անսասանելի վարս ճգնութեան կրէր յանձին. որոյ անուն Սահակդուխտ: Սա յոյժ հմուտ էր երաժշտական արհեստին. որ և ի ներքոյ վարագուրի նստեալ՝ ուսուցանէր զբազումս: Եւ արար կցուրդս և մեղեդիս քաղցրեղանակս, յորոց մին Սրբուհի Մարիամ[2], որ իւրով անուամբն է յօրինեալ: Եւ անդէն ի նմին վախճանեալ դնի ի հանգստի, յորմէ բազում բժշկութիւնք լինին:

Իսկ երանելին Ստեփաննոս կացեալ յեպիսկոպոսութեան ամ մի, զոր ոմանք ութ ամ ասեն, չէջէր յամառային ի մէջ երկոտասան գաւառաց մեծավիճակ գաւազանի իւրոյ. և քարոզէր զբանն ճշմարտութեան: Որ և հանդիպեալ սորա սակս հագուոր հարկին՝ ի գաւառս բարեկից ի Ձորն Եղեգեաց[3], յաւանն Մոզան, յորում բնակեալ էր կին մի սեղեխ[4], արբեալ յիմարութեան ախտիւն. զոր յառաջ քան զայն երիցս անգամ զգուշացուցեալ էր զնա, ըստ Տեառն հրամանի. և ոչ էր զղջա-

1. Ստողագի յունական ςτοχολογία բառն է, տուն տուն տաղմոսի երգեր են: Վանական վարդապետ մը ուզեր է յոյն բառը ստուգաբանել հայերէն բառից նմանութեամբ՝ ստոյգ ողի:

2. Մի՞թէ «Սրբուհի Մարիամ Սափոր ոսկի», տուն մի ծանօթ շարականին. որոյ վայլէին նախակարգել կամ յետակարգել տասն եւս տունք, ըստ թուոյ տառից Սահակդուխտ անուանն:

3. Որ է Եղեգնաձոր, լաւ եւս հինն Վայոց ձոր:

4. Հրէշ կին մի. ոչ այնքան կոյր սիրով, որքան կրոտ սրտով. բարեբաղդաբար՝ թէ և ուշ, բայց նուաճեր է զայն ապաշխարութեամբ:

ցեալ։ Վասն որոյ այն անգամ սաստիկ ցասուցեալ սրբոյն՝ և վճիռ հատեալ մեծ պատուհասի՝ եղանէ ի գեղջէն։ Եւ վասն տօթամամանն գնայ յակն քաղցրահամ աղբերն՝ զոր Աստղ-ակն կոչէին, զովանալ ի նմա. և հրամայէ հարուլ զխորանն իւր. և ինքն ի վերայ ուռոյ միոյ[1] դնէ զմահճիճն հանգստեան։ Եւ եղեալ առանձինն աղօթէ ժամս. յոլովս. և ննջէ ի վերայ նորա։

Իսկ կինն հերատուկ շարժեալ ի կատաղի բացայ ցանկութեանն՝ առնու ընդ իւր զհոմանին իւր և գայ սպանանել զսուրբն, զի համարձակ լիցին ի գործն։ Եւ մերձեալ ի ծառն՝ հանէ ի վեր զայրն, եդեալ զսուրն ի ձեռն՝ զի սպանցէ զսուրբն։ Եղեալ առնն՝ տեսանէր զսուրբն ննջեալ, և իբր զբոց ցոլանայր շունչն ի վեր և ճախր առեալ զանձայր անդրէն. և հրեշտակ մի կացեալ ի սնարսն՝ հովանի ունէր նմա թեւօքն։ Տեսեալ զայն առնն՝ կարկեալ թուլանայր. և ամենայն յօդուածքն խաղայր, շարժէր, դողայր մեծաւ սոսկմամբ. և այնչափ ուշաբերէր՝ մինչ անդրէն իջանէր ի ծառոյն և պատմէր կնոջն։ Ապա կրկին յորդորէր կինն և սաստէր քաղցր բանիւք պոռնկութեան, և քաջալերեալ անդրէն յաղարկէր։ Եւ նորա հրաշափառագոյն իմն տեսեալ տեսիլ քան զառաջինն՝ սաստկագոյնս եւս թուլանայր. և անզգայ մարմնով իբր մեռեալ անկանէր ի ծառոյն։ Ապա կինն մինչ ետես յանհնարին պատուհաս ըմբռնեալ զայրն, փոխանակ զղջման՝ առաւել եւս զչարեալ, և սրեալ ի բանսարկուէն, առեալ զսուրն՝ հոլանեալ[2] ելանէր ի ծառն. և հարեալ զսուրն ի փողսն սրբոյն, հեղայր զարիւնն ամբիծ ի վերայ փայտեղէն մահճին, որպէս զՏեառն իւրոյ՝ ի վերայ փայտեղէն գործարանին մահու, սակս սաստիկ նախանձուն սատուածայնն

1. Ուռի կամ ուռենի ծառ, Saule. շատ մեծ ծառ պէտք է եղած ըլլայ, կամ ոչ մեր ճանչցած տեսակէն։
2. Զգեստները ամփոփելով, սոթթուելով։

գրենացն, որպէս զՀեղիանն և զՅովհաննէսն: յուրոց մին քառասունն որ փախստական լինէր յԵզաբէլ կնոջէն Աքայաբու, և միւսն՝ գլխատեալ ի դստերէ Հերովդիադայ:

Ապա յառաւօտուն իմացեալ պաշտօնէիցն՝ բազում ողբովք բարձին զնչխարս սրբոյն, տանէին ի սուրբ մենաստանն ի լեառնն կոչեցեալ Սեաւ, որ պայծառանայր ճգնաւոր արամբք յայնմ ժամանակի՝ քան զՍինայն և զՍկիւթիայն[1] յեգիպտոս: Զոր լուեալ Արկազան գեօղն՝[2] տերամբն իւրեանց ելին ընդ առաջ, և հաւանեցուցին զպաշտաւորսն հանգուցանել ի սենեակն՝ որ յանուն Սրբոյն Քրիստափորի անյաղթ զօրավարին շինեալ էր. զոր տարեալ անդէն հանգուցին ի սենեկին: Իսկ երանեալ ճգնաւորն Աստուծոյ Նու՝ որ էր բազում ամօք բնակեալ ի սուրբ լեառն Սիոն, և հրեշտակացեալ ամենայն վարուք, տեսանէր ի տեսլեան յայնմ առաւօտու՝ զերկինս բացեալ և զհոյլս հրեշտակաց՝ զի ելանէին գունդ գունդ ընդ առաջ Սրբոյն Ստեփաննոսի. և փարեալ զմաքուր և արիւնաներկ ոգւով նորա՝ գոչէին մեծաձայն. «Ծառայ բարի և հաւատարիմ, եկ, մո՛ւտ յուրախութիւն Տեառն քո». և այնպէս մեծամեծ գովասանութեամբ տարեալ հասուցանէին առաջի ահեղ աթոռոյ Աստուածութեանն, յորոյ վերայ մարմնաւոր տեսլեամբ նստէր Քրիստոս՝ որդին Աստուծոյ: Ապա երկրպագեալ Սրբոյն, և սպիտակ նափորտամբն զոր ունէր՝ ծրարեալ զգօգն՝ լի արեամբ, զոր մատուցեալ առաջի Տեառն՝ ասէր. «Քո՛ է վրէժխնդրութիւն և արդար իրաւունք». և այնպէս համբուրեալ առաքելոցն և հայրապետացն, տարեալ հանգուցին ի կայանս իւրեանց՝ մինչեւ յօրն հա-

1. Պէտք էր գրել և կարդալ Սկիտէ:

2. Ծանօթ է և հիմայ գիւղս՝ Արկազ կամ Էրգեզ կոչմամբ և Ս. Խաչ եկեղեցեաւ:

տուցման[1]։ Տեսեալ զայն արքայն Նուէ և իմացեալ զպատճառն, ժողովեալ զմիաձայնսն հօյլս՝ դիմեաց ի լեռնէն տա-Սուրբն, և մեծամեծ աղօթիւք և կականալից աղաղակաւ պաղատէր զտեսիլն և զգալ բարկութեանն Աստուծոյ ի վերայ գաւառին, և հայցէր զգուշանալ և հնարել աղօթիւք զհաշտութիւնն Աստուծոյ։

Ապա յանկարծակի եհաս ի վերուստ պատուհաս Տեառն. և կալաւ խաւար շօշափելի զգաւառն ամենայն՝ զաւուրս քառասուն. և շարժումն և դղրդումն սաստիկ. զի եռայր երկիրն ահեղ դողացմամբ յանդընդոց, և բարձրանայր մինչեւ ի վեր. և անդէն իբր զալիս ծովու փլուզանիւր. չերինք տապալէին, վէմք ի հիմանց քակտէին, տունք և ապարանք գեղեցիկք՝ լինէին գերեզմանք բնակչաց. աղբիւրք խցէին, գետք կորնչէին. և ամենայն տեղի երերէր տատանմամբ. և ձայնք մարդկեղէն բարբառոյ լսելի լինէին ի ներքուստ յանդընդոց, և ի վերուստ յօդոց, «Վա՜յ ձոր, վա՜յ ձոր». և կենդանւոյն ընկղմեցան ոգիք իբրեւ 10,000, զորս գիտէին և ի թիւ արկին, և զանծանօթիցն ոչ ոք գիտէր զհամարն. յաղագս որոյ կոչեցաւ անուն գաւառին Վայոց ձոր[2]։

Իսկ յետ քառասուն աւուր պատուհասին՝ դադարեցաւ բարկութիւնն Աստուծոյ ի վերուստ. և ժողովեալ մնացորդք գաւառին՝ կոչեն զկաթողիկոսն, և առնեն ժողով վանականաց. և բազում աւուրս ցայգապաշտօն կատարեալ՝ փոխեն զնշխարս սրբոյն ի միաբանակեցաց վանսն Թանահատի վանից[3], որք էին մշտապաշտօնք, հեռացեալք յամե-

1. Արդէն հատուցումն եղած էր ըստ արժանաւորութեան նորա, և հարկ չկար անծանօթ կայանից։

2. Սակայն ի Ե դարու եւս ծանօթ էր այդ անունդ. ի Վայոց ձորոյ վկայուած է Ս. Յովսէփ՝ ընտրեալ կաթողիկոսն նահատակեալ ընդ Ղեւոնդեանց։

3. Ճգնաւորք տեղւոյն՝ տաք կերակուր կամ թան

նոյն փափաքեալ կերակրոց, վասն որոյ և Թանահատք կոչեցան։ Եւ շինեալ ի վերայ փոքրիկ մատուռ մի, զոր յետոյ յեօթն հարիւր քսան և ութ թուականին[1] շինեցին բնակիչք տեղւոյն եկեղեցի՝ զմբէթայարկ գեղեցիկ յօրինուածովք. և եդին զտապան սրբոյն ի հիմն նորա։

Եւ էր կատարումն սրբոյն Ստեփաննոսի ի թուականութեանն Հայոց ՃՁԴ (735), ի հրոտից ի 15 և յուլիսի 21, յաւուր յիշատակի Սրբուհւոյն Մարգարտայ և Սիմէոնի Աղօթաւորին։

Իսկ կինն տիրասպան անազգան ուրեմն եկեալ ի սգաւորութիւն[2], մերկացեալ զհանդերձն և առեալ քարինս՝ ծեծէր զկուրծսն. և այնքան բաղխէր՝ զի իջանէր վտակ արեանց. և մեծ ողբովք և զառն աղաղակաւ ճչէր և խոստովանէր զչար գործսն իւր։ Եւ եկեալ հանդէպ վանացն յարեւմտից կոյս, յայնկոյս ձորակին, փորեալ զտեղին և թաղեալ զանձն մինչ յատինսն, զամառն և զձմեռն տապակէզ և ցրտահար լինելով, վայէր և ողբայր զցայգ և զցերեկ. և զմեղս իւր խոստովանէր։ Յաղագս որոյ շարժեալ ի գութ հայրապետին՝ խնդրէր ի Տեառնէ ողորմութիւն նմա։ Եւ յաւուր միում ի ժամ պատարագին ելանէր գոչիւն ահեղ ի տապանէ սրբոյն. «Թողեալ լիցին քեզ մեղք քո, ո՛վ կին դու»։ Եւ լուեալ ամենեցուն՝ փառս և գոհութիւն Աստուծոյ մեծի մարդասիրութեանն և անյիշաչար բարերարութեանն՝ մատուցանէին։ Բայց կինն թէպէտ էառ զթողութիւնն, ոչ ել ի տեղւոյն. այլ կացեալ ի նմին՝ վախճանեցաւ, և թաղեցաւ յապաշխարութեան գբին իւր. և կայ հանդէպ վանացն։

(ապուր) ուտելնուն համար՝ Թանէ կարուած կոչուեր են։ Տես Սիսական, 124։

1. Պատմող հեղինակին, Ստ. Օրբելեանի ժամանակն է, 1279 տարին։

2. Թերեւս գրուած էր ի զգաստութիւն։

# ԺԲ

## Վ Ա Հ Ա Ն   Գ Ո Ղ Թ Ն Ա Ց Ի

(ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ)

Յայնմ վայրի ի ժողով անկելոցն[1] դատանէր մանուկ մի ի Գողթն գաւառէ, Վահան անուն նորա, որդի Խոսրովայ Գողթնեան տեառն, ամկաւամենից իբրեւ չորից տարեաց. աստուածաշնորհ երեւեալ, հրամայեցաւ զնա յարքունուսում՝ ի մէջ ի մեծ խորհրդոցս ճշմարտութենէ՝ ի ստութիւն դարձուցանել, ուրանալով զմեր ճշմարտութեանն զլոյսն։ Եւ իբրեւ արարին զայն՝ կոչեցին զնա Վահապ։ Եւ երթայր և իմաստնանայր, և ամենայն խորհրդակցացն վերագոյն դատանէր, և իւր հասակակցացն վարդապետ, և դիւանադպիր արքունի։ Եւ ապա յետ փոխելոյ ժամանակին Աբդլմելքեայ և Վլիթի որդւոյ նորա, և Սուլէյմանի եղբօր նորա, ընտանի էր զրոյցս այս Տաճկաց, որ ի մեզ եղեւ ստութիւն։

Եւ իբրեւ նստաւ Ոմառ (717–20) ի գլխաւորութիւն Տաճկաց, արկ ի սիրտ նորա Աստուած յիշել զանիրաւութիւնն որ առ Հայս. հրաման տայր ժողովել զգերեալսն՝ մեծաւ պնդութեամբ. և ի ժողովելն՝ արձակեաց զամենեսեան։ Եկն և Վահանն այն որ անուանեցաւն Վահապ. և նոցա ուսմանցն և օրինացն քաջ տեղեկացեալ էր, և խօսիւք քաջ և կորովի, և ծանուցանէր զիւր դժուարութիւնն[2]։ Եւ դժուարին թուէին բանքն այն մեծին Ոմառայ, զի տեսանէր ոչ զոք նման նմա իմաստութեամբ. խնդրեաց վկայս, և չկամէր թէ ոք վըկայեսցէ զնմանէ. և որք ի Հայոց եկին վկայք՝ ոչ

1. Յարաբացւոց գերի առած Հայ տղայոց մէջ։
2. Իր հայրենիքէն զրկուելն։

ընկալաւ։ Այս պնդութիւն վասն պիտանութեան առնն եղեւ. բայց զիւր հրամանն հաստատուն պահէր ի բարոյական բնութեան իւր զոր ունէր, և ոչ փոփոխէր։

Ապա դեսպանս ձիով արձակէր առ քննող գրոցն ի Միջագետս, և (յետ) բազում խնդրոյ պնդութեանն, որ թէ Աստուծոյ տեսչութիւնն ոչ հեռի արգել լինէր[1]։ Եւ անդ գտանէին արք տասն և հինգ Տաճիկք. որ ըստ ժամանակին քաջ տեղեակք էին և երանելի մանկանն ծանօթք. և զայս ամենայն զըրոյցս առ Ոմառ հասուցանէին՝ վկայութեամբ։ Իսկ Ոմառ տեսեալ զժամանակն՝ ոչ կամեցաւ բռնութեամբ առնել, այլ յօղօք անկեալ ընդ պատանեկին՝ հեշտալի բանիւք. թէ, Մի՛ թողուր զմեզ, որդեակ. և եթէ պակասութիւն ինչ կարծես զքո կենացդ, երեւելի թագաւորութեանս իմում առնեմ զքեզ, փառաւոր իշխանութեամբ և գանձիւք։ Եւ այն որ աստուածային եռայր հոգւով, ոչ ինչ մարմնական ցանկութիւն խօցէր զնա, ի խորինս հայելով. այլ իմաստնանայր ի պատասխանիսն. եթէ, Հարց իմոց որ Պարսից իշխանութեան երթային, և նիզակի և աղեղան վաստակք, յոլով գանձիւք մեծացան քան զբազում ազատս որ յերկրին իմում էին[2]. արդ, եթէ ամենայն առ իս կրկնապատիկ դառնայր, իմ գերութիւնս որ ի ձեր քաջութեան էր, և սիրեցէք զիս, և այլ խոստանայք մեծութիւնս, սակայն և այսմ ոչ կարէ հասանել տեղեաց։ Արդ, որպէս քաղցրացոյց Աստուած զձեր

1. Շարաբանութիւնն մութ կամ խանգարած է. թուի ըսել, թէ որչափ այլ ջանքով քննեցին գրքերը, չկարցան խափանել Աստուծոյ խնամքը։

2. Իմ նախնիքս, կ'ըսէ, Պարսից տէրութեան ատեն անոնց ծառայութեամբ և քաջութեամբ՝ շատ բան վաստըկեր հարըստացեր էին. բայց եթէ անոնց կըրկինն այլ ինձ տրուի հիմայ, ոչ ինչ կ'երեւի աչքիս՝ որ կարող է տեսնել զհայրենիս։

գութ առ իս ողորմութեամբ, արձակեցէք որ տեսանեմ զորչափուրբիսն աւերածոյ երկրին իմոյ հայրենեաց[1]. և ձեր Հրամանաւ գործակալ արարեալ՝ առ ձեզ հասանեմ։

Եւ յետ իմաստութեան բանիցն այն՝ լուծեալ լինէր պնդութիւնն (Ոմերայ), գրեալ հրամանաւ հաստատուն և անփոփոխելի իրօք։ Նա հասանէր ի գաւառն իւր Գողթն, և (առնէր) կարգաւորութիւն վերակացուացն, ըստ հրամանին։ Բայց՝ որպէս մեզ թուեցաւ նմանութիւն իրացն, ճառագայթ՝ որ առ միտսն էին լուսոյ հաւատոցն, որ արդեօք եթէ խնդրեաց յԱստուծոյ զերծանել ի նոցանէ։ Վասն զի սակէպ լուր առ նա հասանէր, եթէ մեռաւ Ոմառ. և նորա ոչ կամեցեալ երթալ՝ ըստ ամուր հրամանին իւր հեշտութեանն՝ որ ի Տաճկաստանի, ողբայր զայն վերջդարձութիւն[2] ի տիս տղայութեանն. և վերստին ուազան զարտասուս առնէր։...

Եւ իբրեւ տեսին իւրաքանչիւր զայն ամենայն, զանհերկրաւէր մտացն զբաղս, կամեցան զնա ընդ աշխարհիս սիրով կապել. բռնադատէին զնա յամուսնութիւն, զի մի առժամայն գնասցէ պակասելով ազգին. և իւրեանց կամացն ի գլուխ ելեալ, արարին յազգականութենէ Սիւնեաց տեառնն։ Բայց նա յիւրմէն ոչ փոխեցաւ յաստուածսիրութենէն, զի մի ըմբռնեսցեն զնա աշխարհիս մեծութիւնք, և ի ծածուկ կացցէ աստուածպաշտութեամբ, այլ յայտնապէս խոստովանեսցի զՔրիստոս, և մի ուրացօրէն երկիւղիւ կեալ։

Ապա յ'անցաւոր կենցաղականացս զմիտս ի վեր ամբարձեալ՝ թողոյր զիւր զամենայն մեծութիւն,

1. Ինչպիսի՜ գրով կամ գոյնով գրելու էր անջնջելի Հայրենեաց սիրով բղխած այս տողերս. ոսկեո՞վ, կրակո՞վ թէ արիւնո՞վ։

2. Կու լար ուրացութիւնը, թէ և անգիտաբար չորս տարեկան տղայ ըլլալով։

առեալ ընդ իւր Թոշակ և հեծեալ քառն, և զէմ եդեալ զնայք յաշխարհն Յունաց[1]։ Եւ իբրև զառա- նայք ի Վայոց ձորոյ, զիւր ծանօթական յայտնի առ- նէր անձրոյն. օգնական խրատու ունէր զնոսա իւր առաջնորդութեան՝ ճանապարհին։ Անդ առա տի- րաշարժ[2] կանանցիքն՝ զորս մնացն արտասուօք ցուցանէին, ասելով. Թէ, Իշխանութեամբ առեալ զհայրենիս[3], մեծ յոյս և մեզ լինէիր. արդ, զայդ տեսեալ խորհուրդ՝ օտարանամք. և դու մեզ ոչ կեն- դանի լինիս և ոչ մեռեալ։ Իբրև շուրջ նստեալ արտասուօք յորդ անկեալ առէին. Հայեաց ի մեզ՝ յանհնարութիւն կենացս, զուցէ դու ի մէնջ խըն- դրեսցիս. ընդ քեզ զամք ի կեալ և ի մեռանել յօտար երկիրն. քեզ ողբակցեալ անկցուք անցա- մաքելի արտասուօք։

Իբրև զայն լսէր երանելին, ողբայր[4] զպատա- ղուար իւրն և զանկինելի, և զԹոշակին ծախումն. և յանդէպս վառեալ իբրև Հոգւոյն զինու, վաղ- վաղակի հասանէր յաշխարհն Վրաց՝ հաւատոյ Թո- շակեան, որպէս զի որ անդն էին յազատաց նորա մերձաւորք[5], ի ձեռն նոցա հնարեսցի յառաջ եդեալ ճանապարհն։ Եւ անդ ունէր ևս լինէր առաջշա- ւանք, և զիշերական աղօթք անհանգիստ, հանդերձ

1. Յունաց տէրութեան ներքև եղած Հայաստանի մասն։

2. Մանաւանդ թէ սրտաշարժ։ Վահան կ'ուզէր յայտնել իր քրիստոնէութիւնը. անոնք փախցընէին որ իր պատճառաւ իրենք այլ պիտի վտանգէին. յոր- դորէին որ փախչին յօտար երկիր։ Վահան կ'ուզէր իր խոստման համեմատ դառնալ առ ամիրապետն։

3. Արդեօք այս կանացեաց և կանանց տխրաշարժ և սիրաշարժ խօսքերը կ'ակնարկէ՞ Վահանայ վրայ երգուած արտասուէ Շարականն։

4. Լաւ ևս գրէ ուրիշ Օր. թողոյր այն սիրոյ միտքը զբաղեցընող հոգերը։

5. Կարծեցընէ թէ մայրն ի Վրաց կողմերէն եղած ըլլայ։

պահօք զԱստուած յօգնութիւն կոչել։ Եւ զատարեայ միոյ (չափ) ուկլի կամ պակաս՝ անդ անցուցեալ, դարձեալ եկն ի Հայս, յԱրագածոտն, իբրեւ օգնական հեծելքն ի բաց կային ի նմանէ՝ ձանձրութեամբ լքեալք։ Էր և անդ իշխանաց գաւառին՝ որ մօտաւոր ազգազն էին՝ խորհուրդ առեալ, զի ընդ ամուր աշխարհն Տայոց յուզարկեալք, եկանիցեն ի Թագաւորաբնակ քաղաքն[1]։ Զոր ոչ բաւական համարեալ իւրայոցն, զիշխանն և զկաթողիկոսն խորհրդակից առնէին. որպէս կարծեմ դեռ այն որ յամենայնի լինէր քաջավստահ, չարախորհուրդ մտածութեամբ փաղփաղակի հասեալ՝ աճ արկանելով զօրապետաց և քրիստոնէից վերակացուին, մինչեւ ասել, եթէ, Եթիցէ գնասցէ ի բաց, զի մի մեզ և անձին կորուստ լինիցի. զի թերեւս զերանելի այրն՝ յուրացութիւն կարիցէ ածել մերոյն Քրիստոսի։...

Իբրեւ ոչ գտանէր ելս իւրացն կատարմանն, անկանէր առաջի Աստուծոյ խնդրելով. որ և գրով իսկ գտաք զնորա աղօթս[2], այսպէս ասելով. Միածին որդի Աստուծոյ, որ մոլորելոյ ոչխարին հովիւ կոչեցար, և գտեալ զնա՝ ուսով քո բարձեր, և տարածեալ զբազուկս՝ ի քեզ ժողովեցեր զտիեզերս, մի՛ անօգնական թողուր զէս զոտարս. լուա՛ զյանցանս իմ քոյով արեամբդ և կենդանարար մարմնովդ, որ մանաւանդ ես անմահութեանց, յերկնից իջեալ հաց մեզ պարգեւեցար։ Ի՛մ Յիսուս, փրկութիւնարեր աշխարհի, որ Հօր և Հոգւոյդ Սրբոյ և քո իսկ կամաւորութեամբ՝ մեզ եղեր զենումն, և առաջնորդ կենաց ճանապարհին. Հայր

1. Կարծեմ Կոստանդնուպոլիս է քաղաքդ։

2. Ի՞նչ զգաստութիւն միտաց՝ արիական հոգւոյ հետ. ո՞ գիտէ ի՛նչ արտասուք բաներ այլ գրած է՝ իւր իր առանձնական օրագրութեան մէջ. երբեմն վարժ ըլլալով ամբրապետին դիւանաց մէջ արաբերէն գրել՝ անար առեւտուրը։

Սուրբ, և Որդի Սուրբ և Հոգիդ Սուրբ, որ մեր խոստովանութիւնս (է), Երրորդութիւն և մի աստուածութիւն, մի դէմս, երեք անձնաւորութիւն, հեռի յամենեցունց, և մօտ առ ամենեսեան. որում փառք յաւիտեանս. ամէն։

Եւ յետ գոհութեան աղօթիցն՝ երթայր առ դահճապետ ումն, որում անուն էր Քարշ որ Հիմացոց իշխան էր. և ծանուցեալ նմա, յօժարագոյն եղեւ նմա պատմելն. և առեալ տանէր զնա առ թագաւորն։ Եւ իբրեւ զգիրն ընթերցաւ, զարմացաւ ընդ գեղեցկագիր և ընդ ճշմարտաբան դիրս բանիցն. եւ հրաման ածել առաջի իւր, և հայեցեալ ի նա՝ հեշտալի բանս խօսեցաւ. եթէ, Ընդէ՞ր, Վահապ, աղքատահանդերձ երեւիս ի քո փառաւորութենէն. ուրեմն երկիրն Հայոց իջոյց զքեզ յայդ։ Պատասխանի ետ Սուրբն և ասէ. Եթէ Տէրն իմ զանձն ունայնացոյց՝ կերպարանօք ծառայի իջեալ յաղքատութիւն՝ յաղագս մեր, և հնազանդեալ մինչեւ խաչի, արդ, զոր նա վասն իմ համբերէր, յայնմանէ և ես ոչ վերջանամ։ Ասէ թագաւորն. Սառնապատ լերանցն Հայոց չար դեւքն՝ զքեզ պատրեալ մոլեգնեցուցին՝ ընդ վայր խօսել։ Ասէ վկայն. Զոր յառաջն ունէի՝ ըստ ձեր օրինացդ՝ հալածեցի յինէն. զի խաւար՝ ի լուսոյ փախչի, որպէս ձերդ յինէն։ Ասէ դատաւորն. Ասեն ձեր մոլար օրինացն իմաստունք, եթէ դիւացն ի վայր անկեալ՝ այլոց չարք եղեն. և ստոյգ է, զձեզ նեղեն աստ և ուր յուսացեալ էք երթալ։ Բարիատեա՞ց այր, ընդ մոլեկանաց նմանեալ քեզ ի բացէ ի բաց ձգես զփառաւորութիւն կենաց քոց։...

... Յայնժամ միաբանութիւն եղեւ ամենեցուն որ առաջի նորա նստէին, աղաղակէին ամենեքեան՝ որպէս զի անյապաղ փութով զրաւեսցի նա ի կենցաղոյս. և չնչեալ այսոյն չարի առ հասարակ յամենեսեան. և շրջեաց զգոյն երեսացն ամիրապետին, և հրամայեաց հանել զնա արտաքս և սպանանել։ Եւ նա երթայր հեզաբար անտրտում երե-

սաք, սաղմոսէր ասելով. «Առ քեզ, Տէր, համբարձի զհոգւոյս ակն. որպէս աչք ծառայի ի ձեռն տերանց, նոյնպէս և իմ մնաց տեսութիւն առ քեզ հայի». և որ զկնի սորին սաղմոս:... Հասեալ ի տեղի կատարմանն, ցնծալից ուրախութեամբ, և զձեռս յերկինս համբարձեալ, ասէ. Գոհանամ զքէն, որ հանապազորդ հառաչմանս իմոյ լուար և զփափաքմունս լցեր, և զլուծումն կապակցութեան՝ հասուցեր մահու սրբոց քոց վկայից. և արժանի արարեր մեռանել վասն մեծի անուանդ քո. արդ, յիշեա զմեզ, Տէր, զի վասն քո մեռանիմք զօրհանապազ. և արա յամօթ զպերճացեալսն յինքեանս երկրաթաւալ, անասնամիտ, դատողական, մարմնասէր դեգերմանց՝ ձախոյ կողմանն. և զմանկունս եկեղեցւոյ քում սրբոյ անարատ պահեա, անշարժ որպէս ի վերայ վիմիդ հաւատոց. և ի միւսանգամ գալըստեան քո արժանի արա յերկնաչու պողոտայն, ընդ առաջ ելանել քեզ՝ յերկնային խորանսըդ, որպէս գործիս լուսոյ, փառաւորել զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգին, այժմ և միշտ և յաւիտեանս. ամէն:

Յայնժամ դահճապետն զայրագին ցասմամբ ասէ ցնա. Ոչ կամեցար հաւանել բանից իմոց, արդ ելեալ կատարեցից զհրամայեալսն ի վերայ քո: Եւ Սրբոյն պատասխանեալ ասէ. Եթէ արդեօք ձեր սովորութիւն է արհամարհել զհրամանս վերակացուին ձերոյ, իսկ ինձ անհնար է անցանել ըզպատուիրանաւ երկնաւոր թագաւորին իմոյ: Յայնժամ դահճապետն հանեալ զսուսերն փայլեցոյց, հարկանելով սակաւ մի, ըստ հրամանի արքունի, զարիւնացայթսն ցուցանելով. նա ոչինչ զարհուրեցաւ: Ասէ դարձեալ ցնա. Զի՞նչ կամիս. Սուրբն ասէ. Արա՛ զինչ կամք է քո: Եւ այնուհետեւ այլ ոչ եւս խօսեցաւ: Ասէ դարձեալ սպանողն. Ա՛յ տառապեալ, ահա եկն եհաս քեզ դառնութեան օր, և դարձեալ՝ կենաց, եթէ կամիս. արդ ընդէ՞ր ոչ ընտրեցեր զկեանս, այլ զմահ սիրեցեր: Ասէ

Սուրբն. Ընտրեցի զմահ վասն Քրիստոսի, քան զկեանս անցաւոր:

Եւ ապա սպանողն՝ յառաջ ասաց ունել զպատքանացն. և վերացուցեալ զսուրն՝ եհատ զգլուխն. և ինքն նոյնժամայն անցեալ գնաց:

Կատարեցաւ սուրբ վկայն Քրիստոսի երանելին և մեծն Վահան, որ օր ութեւտասներորդ[1] էր մարտի ամսոյ, ի շաբաթու զատկի պահոցն երկուշաբաթու, յիններորդ ժամու, և ի քսան եւթն մարերի ամսոյ[2]:

Զարմանալի է ինձ՝ քան զերգս՝ երաժշտականաց Հայենս՝ ողբոց քոց հնչմունք. ո՜վ երանելի տէր Վահան, ընտրեալ յԱստուծոյ:

Առաւել յորդորէ այս զհոգւոյս մասունս[3], յօրինել քեզ երգս, ոչ զբղջականս, այլ հոգեւորս և ուրախարարս, յորդորականս և ներբողեանս. ո՜վ երանելի տէր Վահան, ծառայ Քրիստոսի:

Զարհուրեցուցանէ քո ձգնութիւնդ՝ զմարմնոյս բընութիւն. իսկ դու առաւել զտար, ո՜վ երանելի տէր Վահան, սիրող Քրիստոսի:

Արտաքնոցն զգաստքն[4], ստեղծիչ բանք սնոտեացն՝

1. Օրինակն եօթնեւտասներորդ էր գրած:

2. Կ'արժէ գեղեցիկ վկայաբանութեանն հետեւցընել գեղեցկագոյն Շարականն այլ ի պատիւ Սրբոյն, զոր աւանդութիւնն կ'ընծայէ անոր քրոջ, գուցէ ըլլայ կինն. որն և ըլլայ՝ յայտնուի որ Վահանայ Սիրայինն էր:

3. Հոգիդ մասունք չունի, բայց շատ նուրբ գեղեցիկ ազնիւ զգացմունք. ո՞ւր մնայ քո առջեւ՝ ի հնոց և նորոց համբաւեալ Լեսբացին Սափփով:

4. Արտաքին զգաստքն՝ բանաստեղծք և վիպասանքն են, և իրենց ստեղծած բանքն՝ խաղերայք. իսկ Սիրայնոյն հոգեշահ և աստուածարեալ բանքն՝ թուի թէ ոչ այս հինգ սուտքն միայն էին, այլ երկարք և ցանկալիք, Գողթնեաց քնարաց հետ լսեալ իսպառ:

ի պատարուշքին. իսկ քոյդ Սիրայնոյ՝ աստուածա-թեալ և ոգեշահ. ո՜վ երանելի տէր Վահան, ընտրեալ յազգաց:

Որպէս զքաջ նահատակ պատերազմեալ ի պատե-րազմ՝ կատարեցեր զընթացս քո արիաբար, յազ-գացն հարաւայենոյ, դասաւորեալ ընդ անմարմնա-կանսն. ո՜վ երանելի տէր Վահան, Գողթնեացն իշ-խեցող [1]:

---

## ՄԳ

## ՍԱՀԱԿ ԵՒ ՀԱՄԱԶԱՍՊ ՀԱՐԱԶԱՏՔ ՍԻՐԵԼԻՔ ԵՒ ԱՐԻՈՒԹԵԱՄԲ ՆԱՀԱՏԱԿԱԿԻՑՔ

(ՂԵՒՈՆԴ, Ը.)

Ոչ դադարէր ամբոխ աղմըկի հեռութեան [2] անդո-րրէն ազգին՝ յաշխարհէս. քանզի ամենայն ուրեք զբնական խարեանց չարահնարութիւնն ոչ լքին յան-ձանց՝ որդիքն Բելիարայ. այլ խծաբար դիմեալ... ոմն՝ որում անուն էր Սուլէյման, և ընդ նմա որ-դիք յանցանաց, ի կողմանցն Պարսից, ապստամ-բէին ի կողմանս Վասպուրականի, գործելով զան-արժան բարս սննդակից չար սերմանցն: Որոց ի դիմի հարեալ նախարարք ի տանէն Արծրունեաց, Սահակ և Համազասպ, սակաւ արամբք, անկան ի մէջ թշնամեացն: Իսկ նոքա իբրեւ տեսին զի նուա-զունք էին՝ ի մէջ արկեալք կամէին սպանանել: Իբրեւ տեսին Սահակ և Համազասպ զհէնն զար-թուցեալ ի վերայ, և զի ոչ ուստեք փախուստ

1. Այսպէս յետ անմարմնոց դասակից ընելու իր Սիրայինը՝ յիշեցընէ որ երկրիս վրայ նա իշխեցող էր Գողթնեաց գինեւէտ գաւառին Հայոց:
2. Հեռ., ատելութիւն, ոխ:

զտանէր՝ սուր ի գործ արարեալ զբազմութիւն թըշնամեացն խողխողէին, և ինքեանք դիմեալ ընդ տեղի մի ամրոխին՝ զերծանել ջանային։

Անդ կարեվէր խոցեալ Համազասպ՝ անկանէր յերիվարէն. և պատեալ զնովաւ թշնամեացն՝ սպանին։ Եւ Սահակ իբրև ետես զսպանումն եղբօրն, յաղագս յաճախ սիրոյն զոր ունէր առ եղբայրն, մատնէր զանձն ի մահ. և ի խոնարհ անկեալ յերիվարէն՝ կարթակոտոր[1] առնէր. և ինքն զայրագին անձամբ մենամարտէր և զբազումս դիաթաւալ կացուցանէր, մինչև խնդրել զվրէժ արեան եղբօր իւրոյ։ Եւ ապա պարտեալ ի մարտին՝ վախճանէր։ Եւ այնպէս վճարէին ի կենաց ընտիր նախարարքն, որք էին որդիք Վահանայ Արծրունւոյ։

Իսկ ապա յետոյ ազդ եղեալ եղբօր նոցա Գագկայ և այլոց նախարարացն որ ընդ նոսա, ելանէին ի տեղի մարտին՝ վայիւք և ճչօք. այլ ոչ կարացին հապանել թշնամեացն. դարձան ողբովք և աշխարանօք թաղել զմեռեալսն։ Իսկ թշնամիքն դարձան ընդ նոյն ճանապարհ. որ ապա յետոյ սակաւ մի անկաւ ի ձեռս Գագկայ Արծրունւոյ, և սպանաւ Սուլէյմանն և բազումք ընդ նմա։

1. Ինքն իր ձիոյն սրունքը կտրէր կտորէր. Թուի թէ գիտնալով որ այնքան բազմութենէ թշնամեաց ազատիլ անհնար է, չուզեց իր հաւատարիմ ձին այլ անոնց գերի թողուլ, կամ չուզեց փախչիլ փորձել։

## ՄԴ

## ԽՐԱՏ ԱՇՈՏՈՅ ԲԱԳՐԱՏՈՒՆԻՈՅ ԱՌ ՆԱԽԱՐԱՐՍ

(ՂԵՒՈՆԴ.)

Իսկ Աշոտ ի տանէ Բագրատունեաց, որդի իշխանին Սմբատայ, զի էր այր խոհական հանճարով՝ ոչ միաբանեաց ի գործ վնասակար աղէտին[1]. այլ և զնոսա եւս խրատէր՝ ի բաց թողուլ զվնասակար կարծիսն՝ զոր ունէին ի վնասակար խրատուէ մոլեկան մոնոզոնին[2], և անձնապահ լինել անձանց և ընտանեաց նոցին, զի ասէր. «Մանկունք էք և կրտսերագոյնք հասակաւ. և գիտեմ եթէ ոչ կարէք զդէմ ունել զօրութեան բազմագլուխ վիշապին. զի հզօր է զօրութիւն նորա և անթիւ բազմութիւն ընդ ձեռամբ նորա, և այնչափ պատրաստութիւն զինուց ի գանձս նորա. և ամենայն թագաւորութիւնք որ հակառակ կացին իշխանութեան նորա՝ փշրեցան որպէս զանօթ բրտի. զի թէ Հռովմայեցւոց թագաւորութիւնն[3] ոչ կարաց համբառնալ զձեռս ի վեր, այլ սարսեալ դողայ յերեսաց նորա, և ոչ յանդըգնել ընդդէմ տէրութեան հրամանին. զի և դուք չէք անտեղեակ ամենայն զօրութեան արքային Յունաց, քաջութեան անձին նորա և բազմութեան և պատրաստութեան զօրաց նորա, զի ամենեւին ընդ միտ անգամ ոչ էառ ածել զմտաւ, առնուլ զաշխարհս Հայոց ի ձեռաց նորա, Կոստանդին որդի Լեւոնի. որ մենամարտեալ ի միում աւուր ընդդէմ ահաւոր գազանացն, սպան զառիւծն իբրեւ զուլս այծեաց.

1. ՅԱրաբացւոց ապստամբիլ ուզողներուն։
2. Անխոհեմ կրօնաւոր մի որ գրգռէր զՀայս։
3. Յոյնք, Բիւզանդացի կայսերք։

արդ, որ զայս ուժ զօրութեան ունէր՝ այնպէս ընթադրեալ է յահէ չարաթոյն գազանին որ ապականէ զերկիր. իսկ դուք յո՞վ արդեօք ապաւինեալ, և կամ որո՞վ զօրութեամբ և որո՞վ ուժով կարէք զդէմ ունել անյաղթելի իշխանութեանն նորա։ Այլ արդ, եթէ հաճոյ թուի անձանց ձերոց՝ ընկալարուք զխրատ իմ, քանզի զօգուտն ձեր և զպիտոյսն և զանդորրութիւն աշխարհիս տեսանեմ ես. զի այս լինի ելք գործոյդ. կամ դառնալ ձեզ և մտանել ընդ հնազանդութեամբ նոցա, և հանդարտել և կեալ խաղաղութեամբ յերկրիս ձեր. և կամ մերժել փախստեամբ համօրէն ընտանեօք՝ յերկրէս ձերմէ, և լքանել թողուլ զժառանգութիւն հարցն ձերոց, զբնակութիւնս ձեր, և զանտառս և զանդաստանս, և զգերեզմանս հարց ձերոց, և երթալ բնակիլ նժդեհութեամբ ընդ արքային Յունաց։ Եւ կամ թէ ոչ՝ անկանիցիք ի ձեռս նեղչաց ձերոց ի միում աւուր, և անախորժելի մահուամբ բառնայցեն զձեզ ի կենաց. զի գիտեմ ես զբարս իշխանին Իսմայելի, զի ոչ դադարէ մինչև կատարէ զկամս անձին իւրոյ»[1]։

Իսկ նոքա ոչ ընկալան զոր լուան՝ զբանս խրատու օգտութեանն, յընչաց քերէին, իբրև զխրատ նենգութեան. քանզի յոյժ հաւանեալք էին ստապատում առն մոլորելոյ[2], որ օր ըստ օրէ յորդորէր զնոսա կալ պնդակազմ ի գործն առաջարկեալ, և մի ինչ երկմտութեամբ ըստգտանել զանձինս. որոյ անուղղայ կամակորութիւն ջախջախուն խորհրդին՝ անդէն ընդ հուպ երևէր. զի քակեալ ի միմեանց՝ անմիաբանք լինէին։

1. Կարեւոր խրատ՝ հասկացողաց։
2. Վերոյիշեալ տաքգլուխ կրօնաւորն։

# ՄԵ

## ՊԱՏԵՐԱԶՄՆ ՀԱՅՈՑ ԸՆԴ ՀԱԳԱՐԱՑԻՍ Ի ՊԱՇԱՐՄԱՆ ԿԱՐՆՈՅ ՔԱՂԱՔԻ

(ՂԵՒՈՆԴ)

Իբրեւ եհաս գրոյց պարտութեան գնդին ի քաղաքն Կարնոյ, յայնժամ լքաւ սիրտ արանց պատերազմողաց զօրացն Հայոց. և թոյլ ետուն պաշարման քաղաքին. և թէպէտ կարող էին մեկնել ի կողմն Յունաց, և ապրեցուցանել զանձինս ի չարաչար ապիրատութենէ զրպարտողացն, սակայն լաւ համարեցան զմահ անձանց՝ քան տեսանել ըզկորուստ աշխարհիս և զանպատուութիւն եկեղեցեաց Քրիստոսի։ Եւ զայս զմտաւ ածեալ, թէպէտ և նուազունք էին քան զթիւ թշնամեացն, ինքնակամ յօժարութեամբ դիմեցին ի վիշտն. և ժողովեալ զգունդս իւրեանց՝ իբրեւ արս հինգ հազար՝ գնացին ի քաղաքն Կարնոյ. անցանէին ընդ սահմանս Բասենոյ ի գաւառն Բագրեւանդ։ Իսկ և իսկ անցեալ ընդ գետն Արածանի[1] յարձակէին արիութեամբ սրտի՝ ի վերայ թշնամեացն. և բացագոյն երկու վտաւանօք[2] զատուցանէին զաղխն իւրեանց և զերիվարս. և ի հետիոտս զայրագնեալ պատրաստէին ի մարտ պատերազմի թշնամեացն։ Ելանէին ապա և գունդք թշնամեացն ի վերայ նոցա՝ բազում պատրաստութեամբ։

Եւ ընդ ծագել արեգականն խմբեցաւ պատերազմն. և իբրեւ բախեցին ընդ միմեանս, նախ զօ-

1. Հիմայ Մուրատ-սու, Իւչ գիլիսէի կողմերն։

2. Անյայտ է բառիս ծագումն և չափն, բայց թուի հաւասար շատ՝ անգամ յիշուած Ասպարիզի, որ է իբր 240 չափ (մետր)։

բացեալ գունդն Հայոց՝ հարկանէին բազում հարուածս, և ի փախուստ դարձուցեալ զթշնամիսն սատակէին զբազումս։ Եւ դարձեալ զօրացեալ[1] դարձան ի փախստենէ, և դիմադարձեալ զայրագին ցասմամբ՝ լնուին արշաւօք զբազմութիւն ռամիկ ժողովոյն. և ի փախուստ դարձուցեալ զումանս ի նախարարացն և ի նոցին հեծելոցն, և զռամիկսն որք ընդ նոսա, զի զբազումս ի նոցանէն հարեալ տապաստ դաշտացն արկանէին։

Իսկ քաջայաղթ նահատակքն թէպէտ և նուազունք էին ի մէջ չարաչուք որսողացն, սակայն ոչինչ զանգիտեցին ի դառնաշունչ օրհասէն. այլ մինչ ի սպառ գումարեալք ոգւով չափ՝ մարզէին[2] զմիմեանս բանիւք, ասելով. «Քաջութեամբ մեռցուք ի վերայ աշխարհիս մեր և ի վերայ ազգիս, և մի՛ տեսցեն աչք մեր կոխան ոտից լեալ պղծալից արանց զսրբարանս մեր և զտեղի փառատրութեան Աստուծոյ մերոյ. այլ նախ՝ ընդդէմ մեր լիցի սուր թշնամեացն, և ապա լիցի զոր կամիցին. փոխանակեսցին անձինք մեր ընդ ճշմարտութեան հաւատոյս, և մի՛ ընդ երկրաւոր զբաղմանս. զի այս մահ՝ ժամանակեան և կեանքն՝ յաւիտենական»։ Եւ զայս քաջալերութիւն տուեալ միմեանց՝ ի բարձունսն կարկառեալ զաչս՝ օգնութիւն ի Բարձրելոյն հայցէին, ասելով. «Աստուա՛ծ, յօգնութիւն մեզ հայեաց, և յընկերել մեզ փութա. Ամաչեսցեն զամօթ մեծ՝ որք խնդրեն զանձինս մեր, և մեք զանուն քո, Տէ՛ր, կարդասցուք ի նեղութեանս մերում. և զանուն քո, Տէ՛ր, փառաւորեսցուք ի նեղութեանս յոր պաշարեալս եմք. զի ահա շրջապատեալ պահեն զմեզ չարք՝ որոց ոչ գոյ թիւ, և ժամանեցին մեզ երկունք մահու»։

Զայս և առաւել եւս քան զսոյն մատուցանէին խնդրուածս աղերսականս և մաղթանս փափաքե-

1. Այլազգիքն։
2. Մէկզմէկ քաջալերէին։

լիս։ Եւ յետ այսորիկ դարձեալ զօրացեալք յօգնականութենէ վերնոյն, ոչ ինչ կասեցին յառաջի արկեալ խորհրդոյն, քանզի չէին աւելի քան զհազար մի արանց՝ ի մէջ երեսուն հազարացն։ Զի որպէս ուսաք ի նոյն ինքն ի թշնամեացն՝ ունէին, ասէ, ընդ ինքեանս՝ մարտակիցս՝ զհրեշտակական բազմութիւնս, որ մարմնական տեսլեամբ երեւէին թշնամեացն․ զի տեսանէին երիցունս և պապաս[1] աւետարանօք և մոմեղինօք և խնկօք առաջի նոցա երթալով՝ զօրացուցանէին զնոսա։ Եւ անխնայ կոտորմամբ խնդրեցին զվրէժ անձանց, մինչեւ պարտեցան ձեռք նոցա ի ծանրութենէ զինուցն․ միանգամայն, զի ոմանք թափուր մնացեալք ի զինուցն՝ անկան ի ձեռս նոցա և իսկոյն առեալք զհրամեշտ մեղանչական կենցաղոյս՝ փոխեցան ի հանդերձեալ յուսոյն ակնկալութիւնն, երանելի և քաջ նահատակքն։ Որոց զօրագլխացն անուանքն են այսոքիկ․ ի տանէն Բագրատունեաց սպարապետն Սմբատ, և Սահակ՝ բարձակից և նիզակակից նորին․ և ի տանէն Մամիկոնեանց՝ Մուշեղ զօրավար և Սամուէլ տէր Մամիկոնէից, որ էր որդի մատաղ և առոյգ գեղեցկութեամբ, աներ սպարապետին մեծի․ և ի տանէն Գնունեաց Վահանն դաշնակ[2]։ Եւ այլք բազումք ի նախարարացն և յազատաց, զորս ոչ բաւեմ մի ըստ միոջէ յանուանէ թուել․ որք անկանէին իբրեւ արք երեք հազար․ որոց ողորմելի կատարածն, և վախճանն՝ անարգապէս․ զի և ոչ հող նոցա բաւէր թաղել զդիակունսն թշուառացելոցն ի պատերազմէն․ այլ բացընկեցին օթագայեալ ի վայրի, յարեւու և ի փոշւոջ և յանձրեւի և ի մրըրիկս հողմոց։

Եւ յայնժամ սաստկապէս յաճախէին ողբք և աշխարանք աշխարհիս Հայոց․ վասն զի առաջնորդք մեծք և զօրագլուխք պատուականք՝ բարձան

1․ Ցոյն անուն, երէց քահանայ նշանակելով։
2․ Մականուն մի թուի, անյայտ մեզ պատճառն։

ի միջոյ ի միում վայրկենի ժամու. և երկիւս առհասարակ ի խոր տխրութեան ըմբռնեալ՝ կոծէին կոծ մեծ, և ուաղէին զվախճան նախամարտիկացն հզօրաց և քաջաց. քանզի մնացին թափուր յօգնականութենէ նոցա, և մատնեցան ի ձեռս գազանաբարոյ և անհամբոյր թշնամեացն։

---

## ՄԶ

### ԲԱԳՐԵՒԱՆԴԱՑ ԿՌԻՒՆ

(ՂԵՒՈՆԴ)

Ելեալ[1] նոյնժամայն ի գաւառն Բագրեւանդ, և ընդ նմա արք երկերիւր և վաթսուն, և ըմբռնեալ զպահանջողսն հարկին[2], որում անունն էր Այսումրձուր և զօրս ընդ նմա, հարեալ սատակէր ի սուր սուսերի իւրոյ. և լռեցուցանէր զպահանջումն հարկին յերկրէս։ Եւ իբրեւ այս այսպէս վճարէր՝ ժողովէին առ նա ամենայն վչտատեսք և վտանգեալք հոգւով. և յայնմհետէ զարթեան յամենայն կողմանց թշնամիք ի վերայ նորա։ Եւ նախ քան զայս՝ յորդւոցն Իսմայելի ի քաղաքէն Կարնոյ հասանէին ի վերայ նորա, որք էին իբրեւ արք երկերիւր, վառեալք կուռ սպառազինութեամբ. յորոց վերայ հասեալ ի գիշերի՝ ի գիւղն Խարս[3] սակաւ արամբք, զի էին բնակեալ ի մէջ այգեստանեացն, շուրջ կացեալ զնոքօք՝ փլուցին զդուզնաքեայ պատուար այգեստանեացն, զի էր կարկառակոյտ քարանց առանց հողոյ[4]. և յանչափ դղրդմանէ քարանցն

1. Մուշեղ Մամիկոնեան որդի Հրահատայ։
2. Արաբացւոց տէրութեան կողմանէ հարկ ժողվող։
3. Ծանօթ է և հիմայ գիւղս ի դաշտին Կարնոյ։
4. Այգիներուն չորս կողմը քար քարի վրայ դնե-

բախեալ երիվարացն՝ զբազումս առաւթուր հարեալ սատակէին. և առեալ զզէնս և զկապուստ անկելոցն՝ տային զօրաց իւր, և զերիվարս և զամենայն կազմած զինուց. և ինքն խաղացեալ գնայր ի կողմն ամրոցի իւրոյ։

Եւ իբրև այս լուր աղէտի հասանէր ի քաղաքն Դուին՝ առ զօրավարն Իսմայելի՝ Մահմէտ, յամենայն կողմանց տագնապ մեծ յառնէր ի վերայ նորա. և գումարեալ զզօրս քաղաքին Դունայ՝ տայր ի ձեռս զօրագլխի միում, որում անուն էր Ապու-Եզձիպ, ելանել ի խնդիր վրիժու արեան սպանելոցն։ Եւ առեալ զօրավարին այնմիկ զընտիրսն հեծելոց՝ իբրև արս չորս հազար, ուշ եդեալ ընդ պողոտայն արքունի՝ հասանէր ի գաւառն Բագրեւանդ, ի գիւղն Բագաւան։ Անդ ի վերայ հասանէր նոցա Մուշեղ, և ընդ նմա արք իբրև երկերիւր. և մարտուցեալք ընդ միմեանս՝ օգնութիւն ի Տեառնէ վաղվաղակի հասանէր ի թիկունս գնդին Մուշեղայ. և բազում հարուածս հարեալ սատակէին ի զօրացն Իսմայելի, և զմնացեալսն ի փախուստ դարձուցեալ՝ հետամուտ լինէին մինչև յաւանն Արուճ. և զբազումս ճռաքաղ առնէին, մինչև զնոյն ինքն զզօրագլուխն հարեալ սատակէին։ Եւ մեծաւ յաղթութեամբ դարձեալ ի հետոց նոցա՝ լնուին բազում աւարաւ յաւարէ թշնամեացն։

Եւ փախստեայքն անկան ի քաղաքն Դուին, սակաւք ի բազմաց. որոց ընդ առաջ լինէին համազգիքն՝ արք և կանայք, վայիւք և ճչօք, հող ի գլուխ լինելով, զճակատ հարկանէին և զձիս պատառէին, և ողբովք և աշխարանօք լնուին ամենայն փողոցք լայնանիստ քաղաքին։ Եւ ահ մեծ անկանէր ի վերայ սարակինոս գնդին. և ոչ լինէր նոցա համարձակ՝ ելանել քան զքաղաքն, այլ անձնապահ լինէին յամրութեան քաղաքին։

լով՝ առանց հողով կամ կրով իրարու հիւսելու՝ պատ քաշեր են։

Ապա իբրեւ զայս յաջողուած գործոյ տեսանէին նախարարք Հայոց՝ ամենեքեան միամտեալ ընթանային զհետ անմիտ խորհրդին. զի կարծէին լցեալ զժամանակ իշխանութեանն Իսմայելի, և մանաւանդ պատրեալք առաւել ի կարծիս առն միոյ մոնոզոնի, որ մոլորութեան հոգւովն շարժեալ՝ մարգարէանայր սնոտիս և ընդունայն, ասելով. «Ահա մերձեալ է ժամանակ փրկութեան ձերոյ. զի այժմ ընդ հուպ դարձցի գաւազան թագաւորութեանն միւսանգամ ի տուն Թորգոմայ, առնուլ ձեօք զվրէժ յազգէն Իսմայելի. և դուք մի՛ զանգիտէք յերեսաց նոցա, թէ նուազունք իցէք. զի մի այր ի ձէնջ հալածեսցէ զհազարսն, և երկուքն զբիւրսն. զի զպատերազմն ձեր Տէր պատերազմեսցի. զօրացարուք, մի՛ զանգիտէք»: Եւ այսպէս տեսիլ սուտ և ըղձանս ի սրտից որ ըստ օրէ պատմէր նոցա. որում առհասարակ հաւատացեալ՝ տեսանող զնա կոչէին: Եւ յայսմ բանէ ամենեքեան պատրեալք՝ գրգռեցուցանէին զմեծ սպարապետն Սմբատ որդի Աշոտոյ՝ հաւանել այնմ խորհրդի: Իսկ նա իբրեւ յակամայ կամաց շարժեալ յիւրմէ հաստատուն և յանխոնարհելի խորհրդոցն՝ չոգաւ զկնի խաբեբայ և մոլեկան առնն այնորիկ:

Եւ ժողովեալ ամենայն նախարարք Հայոց ի մի վայր՝ առնէին առ միմեանս երդմունս և դաշինս ուխտի՝ կեալ և մեռանել ընդ միմեանս: Եւ այսպէս միախառն ժողովեալք առ միմեանս՝ արք իբրեւ հինգ հազար. զի բազումք ի ռամիկ ժողովրդոց եկեալ խառնէին ի գունդն նոցա. և համբարձեալ գնացին ի կողմանսն այնոցիկ՝ պաշարել զքաղաքն Թէոդուպոլիս որ է Կարնոյ քաղաք. և պաշարէին զնա պատնիշօք, և զամենայն ժամանակս ձմերայնոյն մարտ եդեալ կռուէին ընդ նմա, կանգնեալ զնովաւ մահարձան, և հատանէին վէտս ծակուց արտաքուստ ի քաղաքն. այլ ոչ ինչ կարացին ստնանել, բայց որչափ սակաւ ինչ ի քարէ մեքենայիցն, որովք սատակէին ի քաղաքէն:

# ՄԷ

## ԱՇՈՏ ԱՐԾՐՈՒՆԻ
## Ի ՆԿԱՆ ԲԵՐԴԻ ՊԱՇԱՐԵԱԼ Ի ԲՈՒՂԱՅԷ[1]

(ԹՈՎՄԱ ԱՐԾՐՈՒՆԻ, Գ. Ժ.)

Ինքն իսկ գլխովին զօրավարն Բուղա, հեծեալ յերիվարն, պնդեալ զինքն զինու ի պատերազմ՝ ընդդէմ իշխանին, և զկորովին աղեղնաւորացն Ելիմացւոցն[2], և զընտիրս հեծելոց նոցա ընդ ինքեան վառեալ ի ճակատի՝ և զայլս ազգի ազգի զինու. որք ունէին վաղերք և սակուրք, սուսերք և սուինք, տապարք և վիրգաչանք[3], մեքենայք և ումբաքարք, վաչանք և նիզակք: Այլ և հուր և ծծումբ նաւթիւ բարձեալ ի գործ պատերազմին, և զլոյծ բնութիւնս յանօթս ապակեղէնս եդեալ, և մանր զծծումբն ընդ նմին խառնեալ[4], եդեալ ի պարսատիկ մեքենայից. և զհուրն առ ընթեր նմին հնարաւորեալ, արկանել զամրոցաւն: Եւ որք մերձ առ պարսպօքն զճակատն վառէին[5] և զմարտն գրգռէին, զգեստն ինքեանց յասուէից կազմեալ, զոր ի զօրութիւն թիկանց ուժոյ բազկաց ճնշեալ և մածուցեալ ընդ միմեանց զնրբութիւն մազոյն՝ թաղ[6] կոչեցին. զոր ի ջուր եդեալ՝ ծծէ իբրև

1. Ծանօթ մի յանգըթագոյն նեղչաց Հայոց. երբ պաշարեց Նկան բերդն Արծրունեաց, Աշոտ պարըսպաց վրայէն դիտէր զպաշարողն:
2. Պարսից, ըստ Ս. Գրոց:
3. Մեծ քարեր նետող գործիք, ինչպէս Catapulte. իսկ ումբաքարքն, փոքր քարեր:
4. Շուտ բռնկող հեղային նիւթք, որ սովորաբար Յունական հուր կոչուի, շիշերու մէջ դրուած:
5. Ամենայն ջանքով և հնարքով բերդը պաշարէին:
6. Թուրքերէն Քէչէ, Feutre.

զսպունգ. զայն զինեալ ի վերայ անձանց՝ սաստկացուցանեն զպատերազմն. աներկիւղ մտալով ի հրոյն տոչորմանէ. և զերիվարսն և զհեծեալս նոցա՝ զինեալ ապառազինօք չանչապահս[1] ձիոցն, և տաշտս[2] գուակացն, և զանգապանս[3] ի չորս կողմանս ձգեալ, և լանջացն զէն. և բարձրավիզ խրոխտանացն զրահս, և ոտնատորոփ փռնկալոյն մանեակս զանգակեալս[4], և մահիկս լուսնաձեւս ի մէջ ճակատուն կապեալ, և զնիւս երիվարացն երկաթապատ պնդեալ. այլ և աստի և անտի երիվարի փորոյն տախտակագործ գօգեալ՝[5] ըստ փորոյն չափու մածուցեալ ի ձեւ վահանի, զգործ արուեստի զինուն ցուցանեն: Եւ ինքեանք արկեալ զրահ զանձամբ, և սաղաւարտ ի գլուխ եդեալ, բազպանս ի ձեռն արկեալ, զանգապանս ի վերայ բարձիցն պնդեալ, օդ ոտիցն կօշկաձեւ արուեստաւորեալ. վահան ի թիկունս եդեալ, սուսեր ընդ մէջ ածեալ, նիզակ ի ձեռին ունելով, կապարճս և աղեղունս պատրաստականս՝ զառաջեաւ ի նիւսն ունելով[6], և զարդս ոսկեզարդս, արծաթազօծս, և կամարս ընդ մէջ ածեալ. դրօշս և վերջաւորս փողփողեալս, սաւառնաձայն հնչմամբ զլսելն թնդեցուցանէին. նշանս կանգնեալ, և փողք և քնարք հնչէին և թմբուկքն դափէին. և արեւն ի վերայ հասեալ ընդառաջէն զարդուն, և մերկ սուսերացն փայլեալ՝ ճառագայթս արեգակնայինս յինքեանց ձգէին շուրջ

1–2–3. Ձիոց կզակին պահպանակ, նոյնպէս կռնակի վարի կողմին այլ՝ տաշտի (թ. թէքնէ, Bassin) ձեւով զրահք. ծունկերէն վեր վար ու չորս կողմէն ծածկոց:

4. Ձիոց ոտից այլ (որոց դափրտալով գետինը զարնելուն փռընկալ կ'ըսէ), զանգակազարդ մանեակ անցուցած:

5. Ձիոյն փորին այլ պատեր են վահանի ձեւով՝ երկու կողմէն մէջը փորուած տախտակներով:

6. Նետերու կապարճը կռնակնին կախած:

զլերամբն։ Քաջքն խիզախէին, սաղարքն կանչէին, նահատակքն գոչէին. զռազմս ճակատուն կարգեցին պատրաստեցին։ Զայս ասաց Եսայի միով բանիւ[1]. «Ելեմացիք, ասէ; առեալ զկապարճս, հեծեալ յերիվարս»։ Եւ գունդք ճակատելոցն ելին կացին մօտ առ քաջն մեր Աշոտ և ընտիր զօրավարն Հայոց, առ մեծն իշխանաց. և յայնչափ և առաւել քան զոյն կազմութեան սպառազէն պատրաստութեանն, սաստիկ տարակուսանօք և մեծ երկիւղիւ պակչէին յահէ հայկասիրտ իշխանին և յաղթող նահատակին մեր Աշոտոյ, և որք ընդ նմա էին գունդք ազատաց, և նոցին զօրաց, ըստ տոհմս ազգաց ի բնիկ նախարարացն Վասպուրական տէրութեանս։

Իսկ իշխանն ելեալ կայր ի վերայ պարսպին, նազելով և ոխգալով, իբրև զկորիւն առիւծու ճեմէր, անկասկածելի մնալով, առ ոչինչ համարելով զհէնն եկեալ հասեալ, փակեալ չուրջ զնովաւ. զի կարծէր եւս համախորհ և միագործ զնիզակակիցսն իւր զօրսն և զօրագլուխս, զգունդ ազատացն՝ որ մտեալ էին ընդ նմա յանձաւն[2] Նկանի. բայց նոքա եւս քան զեւս սաստկացուցանէին զմարտն։

1. Ուրեմն Եսայեայ մէկ խօսքը՝ Թովմաս այսչափ ընդարձակեց, ձիոյն և ձիաւորին զրահն ու զէնքերը վայելչապէս նկարագրելով. և զրեթէ վախ ձգելով՝ ինչ որ անշուշտ ինքն այլ երբեմն զգացեր է, այդպիսի սպառազինեալ արաբացի գունդ մի տեսնելով։ Բայց իր մեծապոյն ճարտարութիւնն այն է՝ որ այնպիսի ահեղ զինուած զօրքերն՝ ոչ այնքան ահարկու՝ որքան ահաբեկ ցուցընէ՝ իր համազգի քաջ իշխանին՝ Աշոտի առջեւ։

2. Վասպուրականի Թոռնաւան գաւառի մէջ քարայրերդ մի, հիմայ անծանօթ։

# ՄԸ

## ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ ԵՐԿՐՈՐԴ ԱՏՈՎՄԵԱՆՑ[1]

(ՅՈՎՀ. ԿԱԹՈՂԻԿՈՍ)

Էին ի նոցանէ այլ եւս արք եօթն, որոց անուն գլխաւորին նոցա՝ Ատոմ ճանաչիւր, ի գաւառէ Աղբակայ՝ յԱրտիրանս գեղջէ։ Եւ վասն զի զուարթագին երեսօք էին և գեղեցկադիտակք, և աջողակք ի զէն շարժել, ոչ զնոսա ընդ այլսն սրով կատարէին, զի դեռ եւս ակն ունէին գոնեայ զնոսա յիւրեանցն թերեւս արկանել խորխորատ կորստական։ Եւ բազում պարգեւս բարեաց նոցա և գանձս ոսկւոյ և արծաթոյ առաջի արկանէին. այլ և գիւղս և դերդաստանս տալ խոստանային, և երեւելի և փառաւորս ի դրան արքունի առնել։

Իսկ երանելիքն ամենեքին բնաւին իսկ անհաւան միտս նոցա յայնմիկ ցուցեալ, իբրեւ նահատակք քաջք՝ նորոգեալ լինէին ի խոստովանութեան իւրեանց, զՔրիստոս՝ ըստ գրեցելումն՝ համարեալ իւրեանց կեանս, և զմեռանելն՝ շահ։ Ապա յայնմ հետէ եւս առաւել սաստկացեալ լինէր բարկութիւն բռնաւորին ի վերայ նոցա. դառն տանջանարանս զնոքօք հրամայէր հեղուլ, և արկանել զնոսա յամենայն չարչարանս և բախմունս կտտանաց, զոր ոչ լեզու բաւական լինի պատմել, և ոչ գլով բովանդակել։ Սակայն յոյսն աւետեաց և սէրն Քրիստոսի, և ուրախութիւն վկայութեանն՝ թեթեւացուցանէր նոցա զանհնարին ծանրութիւն բեռանցն։ Վասն որոյ ծանուցեալ բռնաւորին զանհրապոյր միտս սրբոցն, հրամայէ զնոսա զփայտէ կախել։

1. Ասոնք նահատակուած են նախընթաց Յօդուածին մէջ յիշեալ Բուղայի ատեն։

Եւ մինչդեռ ըստ կերպարանաց խաչի կախեալ կային, ուժգին պաղատանօք սուրբն Ատոմ քաջալերութիւն ընկերացն մատուցանէր. Մի՛, ասէ, զարհուրիք, եղբարք, յառժամանակեայ մահուանէս, զի թէպէտ և չարչարիմք վասն Քրիստոսի, հաղորդութիւն ունիմք ընդ Աստուծոյ կենդանւոյ։ Եւ ապա յերկինս՝ փոխանակ աչացն զխորհուրդս իւր ամբարձեալ՝ ասէ. Յիսուս Քրիստոս, յոյս իմ, ուխտաւոր գոլով իմ յայսմիկ տօնի տարեկանի մեծի Նահատակին Գէորգայ՝ Նոխազ պատարագ՝[1] և վասն փառաց անուան քո, և արդ՝ այսուհետև զիս ինքն քեզ փոխանակ Նոխազի մատուցանեմ. ընկալ զողջակիզութիւն անձին իմոյ՝ որ ընդունիչ ես պատարագաց, և խառնեա զիս և որք ընդ իս են՝ ի թիւ վկայից քոց սրբոց, որք սիրեցին զօր երևելոյ գալստեան քո։ Եւ այսպէս առհասարակ նոքա ըմբերեալ մեծի պատերազմին՝ բազում երկայնմտութեամբ, և յաղթեալ ամենայնի՝ աւանդեցին զհոգիս իւրեանց, և ընկալան ի Քրիստոսէ զպսակն անեղծութեան։ Իսկ ժողովք քրիստոնէից թէպէտ և մշտանային սակս սաստիկ սրոյն կոտորման զսուրբսն Աստուծոյ, սակայն զովեստ մեծ կատարէր նոցա Քրիստոս ի ձեռն վկայիցն։

Կատարեցան ամենայն սուրբքս որ առաջի և զկնի՝ յերեք հարիւրորդի երկրորդի Թուականութեանս Թորգոմայ (853), ընդ ամենայն աւելի քան զհարիւր յիսուն այր. թող զայնոսիկ որք յայլ գաւառս և ի քաղաքս եղեն վկայք. որոց և անուանք նոցա գրեալ են ի դպրութիւն կենաց։ Բայց մեծ հայրապետն Յովհաննէս՝[2] որ սահմանեալ յիշատակի ամենայն Սրբոցս այսոցիկ, տարեւորական

1. Անշուշտ մատաղ մ՚ընել փափագեր էր ի տօնի Ս. Գէորգայ Զօրավարին։

2. Յովհաննէս Ե կաթողիկոսն, 832-54։

պատուով տօնէին զայս կատարումն, ի մեհեկի ամսեան՝ որ օր քսան և հինգ էր ամսոյն, ի փառս ամենակալին Աստուծոյ:

---

## ՄԹ

### ՍՄԲԱՏ ԻՇԽԱՆ
### ՄՈԿԱՑ ԱԶԱՏԷ ԶԳԵՐԵԱԼՍՆ Ի ԲՈՒՂԱՅԷ

(ԹՈՎՄ. ԱՐԾՐՈՒՆԻ, Գ. Բ.)

Սմբատ Բագրատունի՝ զոր վերագոյնն յիշեցաք, Մոկաց իշխեցող, քանզի յոյժ սիրեցեալ եղեւ ի զօրավարէն[1], և առաւել քան զամենայն մեծամեծս ընդունէր պարգևս և պատիւս, անհանդուրժելի լեալ անցիցն անցելոց, և մեծաւ տրտմութեամբ հաշէր և հառաչէր յոգի իւր. և եկեալ արտաքոյ բանակին յորդառատ հեղոյր արտասուս ի վերայ բեկման իշխանին (Աշոտոյ) և այլոց նախարարացն. բայց ոչ ինչ ձեռնհաս լինէր օգնել նոցա, վասն դառն հրամանի ամբարիշտ թագաւորին. այրէր և խորովէր ի սիրտ իւր՝ ի ծածուկ՝ ընդ աւեր աշխարհին, և ընդ անողորմ չարչարանս գերելոցն ի թշնամեացն:

Յայնժամ համարձակեալ եմուտ յատեան բռնաւորին. և եկաց առաջի զօրավարին՝ անկերկիւղ համարձակութեամբ՝ առանց պատկառանաց, և ասէ. Որովհետեւ գտի շնորհս առաջի քո, և արարեր մեծարանս երեսաց իմոց, և առաւել քան զամենայն իշխանս Հայաստանեայց և մեծամեծս արքունի՝ զիս նախամեծար և մեծարգի ցուցեր, և լուան ամենեքեան զառնելն քո ընդ իս, մի՛ ընդունայն և դատարկ լիցի սիրելութիւն քո առ իս.

1. Ի Բուղայէ:

զի և որք յայժ առաւեցողքն են մեր և թշնամիքն, տեսցեն և յամօթ լիցին. և բարեկամքն և սիրելիքն յայժ ուրախ եղիցին։

Իսկ զօրավարն խոստացաւ երդմամբ տալ նմա զինչ և խնդրիցէ, մինչև հաւասար իւրոյ տէրութեանն բարձակից և պատուակից կացուցէ։ Իսկ նա անփոյթ արարեալ զերկրաւոր մեծութիւնս՝ զի անցաւոր է, անօգուտ և անվախճան և անծերանալի և անծախ և անանց ըմբռնելի ի գողոց՝ խնդրեաց՝ պարգևաց առիթ լինել. Տուր ինձ, ասէ, ի գերելոց այտի՝ որչափ և կամք քո հրամայեսցեն։ Անդէն փութով և անյապաղ երագութեամբ հրամանն ետ, զի որ ոք և հաճոյ թուեսցի Սմբատայ, մի ոք իշխեսցէ արգել լինել։ Եւ ետ նմա սուրհանդակս, և մեկնազէնս և սակրաւորս և կափաւորս[1]. զի ըստ կամաց նորա հանցէ ի բանակէ անտի զգերիս Վասպուրականի։ Եւ առեալ զնոսա անցուցանէ յիւրաքանչիւր սահմանս բնակութեան, ինքնին ըղհետ նոցա ելանելով, որպէս Կիւրոս արքայ Պարսից զհետ դարձելոցն ի գերութենէն Բաբելոնի՝ ած եհան զժողովուրդն յերկիր իւր։

---

# ՄԺ

## ԱՊՈՒՄԿԴԷՄԻ
## ՅԻՐԱՍԻՐՈՒԹԻՒՆ ԱՌ ԳՈՒՐԳԷՆ ԱՐԾՐՈՒՆԻ[2]

(ԹՈՎՄԱ ԱՐԾՐՈՒՆԻ, Գ. դ.)

Տէր Ապումկդէմ և որք ընդ նմա պահէին ըղպահպանութիւն գիշերոյն, և գիտէին զզգուշաւո-

1. Կափել նոյն ինչ է որ կոփել՝ ուժով զարնել. կափաւոր ուժով զարնելու զէնք կամ գործիք ունող։
2. Արծրունեաց ցեղին պայազատ կամ գլխաւոր

թիւն զօրայն, և դեռ եւս հեծեալ կայր ի նիւս երիվարին, փութացան ի բանակն. և հրաման ետ զինել վառել ի զէն և ի զարդ և ի սուր. և զընտիրս երիվարացն յիւրեանց զէնսն պատրաստել: Եւ ինքն շտապէր տագնապէր փութացուցանէր ռազմ բոլորել, կարգել կազմել զճակատն, պատրաստել ի պատերազմ. և Նժոյգաձիգն[1] իւր մատոյց նմա զընտիր երիվարն. և հեծեալ փութացաւ պնդեցաւ զհետ Գուրգինի: Եւ մօտ եղեալ՝ մերկեաց զսուսերն և զաղաւարտն և զգրահն՝ զոր արկեալ էր զանձամբ[2]. և աղաղակեալ զկնի նորա, զի թերեւս ի լուր ձայնին և ի փայլումն զինուցն և ի շողալ սուսերին, և ի խխնջիւն քաջ երիվարին, և ի վազս երագութեանն ուժոյ, ազդ լինիցի, և դարձցի ի ձայն նոցա և ծանիցէ. և դարձցի ի կորստական ճանապարհէն, յոր դիմեալ երթայր անկանել ի ժանիս արիւնարբու գազանացն: Եւ եղեւ զի ամբարձ զաչս իւր և ետես[3] զի պնդեալ գայր հեծեալն զկնի նորա, և ծանեաւ թէ զուժկան ոք է, զի սուսեր մերկ ի ձեռին ունի, և միայն առանձին գայ զհետ մեր. և դարձոյց զերեսանակ երիվարին ընդդէմ նորա. և հասեալ ընդդէմ միմեանց՝ դարձան հասին ի բանակն իւրեանց: Եւ զօրացն քաջալերեալ՝ ընթացան յիւրաքանչիւր զէնսն. և հեծեալ յընտիրս երիվարացն՝ կացին ի հանդիպոջ. և հանդիպացան գումարեցան ի մի վայր, և պնդեցան կարգեցան մածեան հոլովեցան յինքեանս. և եղեն իբրեւ զմի այր, և թէ իբրեւ զվէմ մի բլրաձեւ արձանացան կարծրացան

իշխանն, միամտութեամբ կ'երթար առ Բուղա, որ խաստմամբ խաբէր և բռնէր Հայոց իշխանները: Ապումկրդէմ յետ դարձընէ զնա:

1. Նժոյգ (սուրընթաց) ձին հոգացող և հեծցընողն:

2. Զրահները վրայէն հանելն նշանակէր՝ թէ ինքն թշնամի չէ, այլ բարեկամ:

3. Գուրգէն է նայող և տեսնողն զԱպումկրդէմ:

պնդութեամբ, անմատոյց լինել ի նոսա զօրութիւն երկաթի, և իբրև զպարիսպ անդամանդեայ, այնպէս եղին զանձինս ի վերայ բազմութեան գաղթականին աշխարհականոյն ամբոխիցն, իբրև զքաջ հովիւ՝ ի վերայ խաշանց մեռանել յանձն առին։

Բայց ոչ միայն քաջքն Հայոց նահատակեցան ի մեծ պատերազմին, այլ և անմարմին զօրք երկնաւորք մարտակից եղեն գնդին Հայոց. զի մինչ խըռնեցաւ պատերազմն, և դէմ առ դէմ ճակատէին, յանկարծակի այր մի ի նմանութիւն լուսոյ եկն եկաց ի մէջ ռազմի ճակատուն, արկեալ զիւրև պատմուճան լուսակիզն՝ փայլեալ իբրև զարուսեակ. և յաջոյ ձեռինն ունէր սուսեր, և ի ձախոյն՝ բուրուառ լի խնկով. և ինքն կայր հեծեալ ի վերայ սպիտակ ձիոյ, և ցանէր զծուխն ընդդէմ թշնամեացն, և օդ քաղցր՝ որ արկանէր զծուխն զերեսօք նոցա. և ի սաստկանալ ծխոյն՝ զօրանային գունդքն Հայոց, և ի նուազելն՝ փոքր մի ոգի առնուին ի թշնամեացն[1]։

## ՄԺԱ

### ՆԵՏԱՀԱՐ
### ՅՊԱՆՈՒՄՆ ԱՇԽԵԹԻ[2] Ի ՊԱՇԱՐՄԱՆ ՏՓՂԵԱՑ

(ԹՈՎՄԱ ԱՐԾՐ. Գ. բ.)

Հասեալ Բուղայ՝ անց ընդ մեծ գետն զոր Կուրն կոչեն. և յորձանուտ շարժման գարնային հոսանացն տեղի տուեալ՝ ելանել զօրուն, և բնակել

1. Պատմիչն գուցէ ոչ միայն եղածը պատմէ, այլ և ինչ որ փափագէր ըլլալ։
2. Բուղայի զօրաց կամ զօրավարաց մէկն էր, Վրաց Տփղիս մայրաքաղաքը պաշարելուն ատեն։

շուրջ զքաղաքաւն, և ոչ միոյ ումեք կորնչել, բայց ի միոջէ ումեմնէ, որում անուն Աշխէթ ճանաչէր. այր պերճ և անուանի ի զօրուն, քաջամարտիկ. ունելով ընդ ինքեան գունդ հարուստ՝ իբրև յիսուն վառելոց[1] զօրաւորաց։ Եւ ինքն Աշխէթ զինեալ զինքն ի զէն և յասպազէն, զոր կարծեալ ումանց երկաթեղէն պատկեր[2] զօգցես՝ զերիվարն և զհեծեալն, աչացն միայն ոչ գոլով ծածկոյթ։ Եւ իբրև մօտ եղեւ յափն գետոյն, քարշեալ ոմն զլայնալիճն՝ նստելով ընդ դարիւն, և հարեալ նետիւ ընդ բացաւն. և երասանակալ ձեռանն թուլացեալ, կրկնեալ այլ ոմն ճօճ նիզակաւն ընդ նոյն տեղն, գետավէժ արարին[3] զԱշխէթն. մինչև զդի նորա՝ գտելոցն յետ աւուրց ինչ, եւ Բուղա տասն հազար արծաթ. զի այնչափ պատուական էր այրն նմա։

---

## ՄԺԲ

### ԱՊՈՒ-ՄՈՒՍԷ ԱՂՈՒԱՆԻՑ ԻՇԽԱՆ ԵՒ ԲՈՒՂԱ

(ԹՈՎՄԱ ԱՐԾՐՈՒՆԻ, Գ. Ժ.)

Մուսէ վառեալ և զինեալ զինքն ամենայն զօրութեամբ իւրով, խաղաց էջ ի վերայ նոցա[4], և եհար ի հարուածս մեծամեծս, և առ աւար բա-

1. Տպագիրն (Կ. Պոլսոյ, 1852), «իբրև ծով առե-» լոց», կարդացեր է։
2. Ամէն կողմէն բոլորովին ծածկուած էր Աշխէթ՝ բաց ի աչքերէն, որոց վրայ զարկաւ նետը։
3. Պաշարուելոց մէկն ծածկուած տեղ մի նստած, կ'արձըկէ աղեղան նետը Աշխէթի աչքին. երբ ասոր ձեռքն թուլնալով չի կըրնար բռնել երասանակը, ուրիշ մի նիզակով զարնէ նոյն աչքին, և Կուր գետոյն մէջ գլորէ Բուղայի որդւի քաջը։
4. Ի վերայ զօրացն Բուղայի։

զօրս, եւ դարձաւ ի տեղի իւր ի բանակն իւրեանց։ Ապա այնուհետեւ ոչ կարաց կալ համարձակութեամբ ի բացեայ առնել զբանակն իւր[1], այլ եւ դնէր զօրսն յամուր գլխաւորս. և նստոյց զնա ի կողմանէ, ի Հիւսիսոյ կողմն. և ինքն բազմութեամբ զօրաց նստաւ յարեւելից կուսէ։ Եւ շինեցին ապարանս ամուրս և պարսպեցին մեծաւ զգուշութեամբ. և կանգնեցին պատնէշ, և կուտեցին քարինս, և կանգնեցին մեքենայս, և կացին ի պատրաստութեան։ Եւ յետ փոքր ինչ աւուրց հրաման ետ Բուղա ելանել ի պատերազմ. և կարգեցին ճակատս, և բոլորեցին ռազմ, և գունդս գունդս յընտրելոց զօրացն՝ ըստ ազգս ազգս՝ շուրջանակի ի ներքս փակեցին զլեառն. և դրօշս և նշանս բարձրագոյնս լայնատարածս կանգնեցին. կարգեցին ըստ գունդս գունդս՝ առ հինգ հարիւր այր՝ նշանակ մի։ Եւ զի՞ մի մի թուեցեմ յանուանէ զյանձախութիւն զինուցն և զազգաազգէն կազմութեանցն, զձիոցն և զհեծելոցն նոցա. գիտակ են այդմ արք քաջք, և որ մերձ ի պատերազմունս զդեգերումն առնեն. զումար արարեալ են, ամենայն զինուոր ի գանձարանս, ի տունս պահնուց Թագաւորին, զոր բարձեալ ուղտուք կրէին ընդ ինքեանս։ Ելին ի պատերազմ, և պատերազմեցան. ըստ որում սաստկացաւ պատերազմն, և խուռն յարձակմամբ դիմեցին ի վերայ իւրեանց. և հարան զօրքն արքունի ի հարուածս մեծամեծս, և դարձան փախստական ի բանակն իւրեանց, և մտին յապարանսն զոր շինեալ էին։ Եւ լեռնային զօրքն Ապու-Մուսէի՝ զհետ մտեալ փախստէիցն՝ բլուցին ի լեռնէ անտի. և դարձան առնել դիակապուտ. և չոգան ի բանակատեղ իւրեանց մեծաւ յաղթութեամբ, ուրախացեալ անպատում խնդութեամբ. և նստան պահել զպահպանութիւն։

Եւ զկնի աւուրիկ որ է երկրորդ հարուածք այլ-

1. Չհամարձակեցաւ թշնամւոյն դիմացը բանակել։

ազգեացն, դարձեալ հրաման ետ ելանել ի պա-տերազմ․ և հետամուտ հասեալ առ Նոսա․ և ահա իբրև արք հազարք ի յընտրելոցն Աղուանից՝ պա-տահեալ նոցա՝ հարին զնոսա, և ածին փախստեայ ի բանակն․ և ինքեանք դարձան ողջանդամ, և ոչ մի ոք վիրաւորեցաւ, և հասեալ առ զօրավարն իւ-րեանց մեծաւ յաղթութեամբ և բազում աւարաւ։

Իսկ զօրավարն Բուղա կայր ի կոր կմրծանման, ի տարակուսանս ըմբռնեալ, փղձկէր ի միտս իւր, ցնորակոծ լինէր, հնարէր ելս իրացն գտանել, ի վրանայարկն փակեալ․ և ոչ առնոյր դուլ և դա-դար․ և հատաւ քուն յաչաց նորա․ և ոչ ոք մտա-նէր և ելանէր առ նա զաւուրս տասն․ զի եմուտ ի սենեակն ամսթալի երեսօք․ այլ և երկիւղ ոչ սակաւ ունէր զնա․ զի բազում գունդք սուսերա-մերկաց շուրջանակի պահէին զնա։

Յայնժամ հրաման ետուն ամենայն զօրացն ելա-նել ի պատերազմ․ և ահա աղաղակ, և փողք և քնարք, և ջնարք․ և վառեալ զինու և սրոյ, ա-մենայն պատրաստութեամբ անհուն զօրացն, մինչ գրէ թէ ի հիմանց զլեառնն տապալել․ և եհան զզօրսն մինչ մերձ ի գլուխ լերինն․ և ընդ նոսա նշանս բազումս, իբրև հազար արանց ընտրելոց, քաջ երիվարօք․ և գրէ թէ ոչ ամենեւին ուրեք երեւեցաւ այնպիսի ահաւոր տեսիլ զօրու և սպա-ռազէն կազմութեան՝ ամենայն թագաւորաց որ կացեալ էին ընդ ծագս տիեզերաց։ Զորոյ սաստիկ և ահագին որոտումն և ճայթումն և փայլումն զինուցն, և որ ինչ յայնժամ զարդարեալ և զինեալ պատրաստեցան զօրքն Տաճկաց․ և ելանէին գունդք գունդք շտապով և ճեպով մի զմիոյ կնի, և ամե-նայն ոք որ տեսանէր՝ ընդ մեծաւ երկիւղիւ նե-րադրեալ լինէր․ և նստէր[1] անդ ի բացեայ ի

1․ Այս ահաւոր պատրաստութիւնք և Տաճկաց գունդագունդ զօրօք ի պատերազմ ելնելը՝ տեսնալով Մուշեղ՝ որ բլրի մի վրայ նստած դիտէր, և այլն։

վերայ բլրի միոջ՝ առ Մուշեղ, որդի ապարապետին[1], և կայր հիացեալ ահեղ և մեծ զարմացմամբ. և ամբարձ զմիտս իւր ի համբարձեալ գալուստն Քրիստոսի, և որ յայնժամ լինելոց ահեղ որոտմունք և թնդիւնք և հրձգութիւնք, և արհաւիրք մեծամեծք յերկնից և յերկրէ. և թէ զիա՞րդ գունդք գունդք հրեշտակաց մի զմիոյ կընի ելեւելս առնեն. և զիա՞րդ փայլեալ նշանն տէրունական ահաւոր ճառագայթիւք, և որ ինչ այդմ հետեւին ի համբարձեալ գալստեանն Քրիստոսի՝ ի վերջնում աւուրն: Յայնժամ մերկացեալ և ի բաց եդեալ զաշխարհական պատրանաց զբաղումն, և էանց գնաց ի վեր քան զերեւելիսս. և զի էր վարժեալ Աստուածաշունչ գրոց, և ընդել և ծանօթ էր ճարտասանական հրահանգիցն, եդ առ այն ժամու իմացական տեսութիւնն՝ գծրգս, որոյ սկիզբն է. «Անզբաղելի ական սրտի նայեցող անձն իմ», ի միւսանգամ գալուստն, հինգ տուն ի յութերորդ վանգէ[2]:

Եւ եղեւ իբրեւ գումարեցան ի մի վայր ամենայն բազմութիւն զօրացն, աւելի քան զերկու հարիւր հազարաց. և կազմեցին ռազմ, և կարգեցին ճակատ, և ետուն ձայն՝ այր առն ախոյեան ելանել. և ահա Աշու—Մուսէ՝ որ ճանաչէր Երիցու որդի[3], հանդէպ նոցա ել ի պատերազմ, և հանդիպացաւ ընդդէմ նոցա. և եղեւ իբրեւ զբլուր մի մեծ երկաթի, կամ զվէմ անդամանդեայ. և խուռն բոլորեալ գունդն կային մածեալ իբրեւ զմի այր: Եւ զօրքն Տաճկաց պնդեցան և փակեցին շուրջա-

1. Սմբատայ Բագրատունւոյ:
2. Քերթողական կամ բանաստեղծական՝ քան թէ ճարտասանական, հինգ տուն տոնաւոր 16 վանգ տողով. ափսո՜ս, որ չէ օրինակած Թովմա, թերեւս այն ատեն շատերու ծանօթ ըլլալուն համար, ինչպէս Սահակադըխտոյ Սրբուհի Մարիամն. տես Յօդուած 201:
3. Սովորաբար այս մականուամբ կոչէին զնա:

նակէ ի ներքս զգունդն Աղուանից, և դիմեցին յանդուգն ի վերայ նոցա. և նոքա կային անշարժ, և ոչ եւ այր քան զընկեր յառաջ։ Եւ մինչ նոքա կարծեցին թէ ի ձեռն նոցա մատնեցան, և նոքա կային յաղօթս, և զԱստուած կարդային օգնել նոցա. և դիմեցին ի մէջ նոցա ի չորս տառս, ըստ նմանութեան տէառնանշանման խաչին. և բախեցին զճակատն և պատառեցին զգազմն, և զարձուցին ընդ զառիվայրն, և թխուցին ի լեռնէ անտի, և հարին ի հարուածս մեծամեծս, որպէս յարդ ի հողմոյ վարեալ կամ ծուխ հարեալ ի մրրկէ, այնպէս կորեան գնացին յերեսաց զօրացն Աղուանից։ Եւ դարձան կուտեցին աւար, որոյ ոչ գոյր թիւ։ Բայց զի՞ մի մի իւրաքանչիւր հանդէս պատերազմաց նոցա գրեցից յականէ անուանէ. տայցից կարճառօտ և համառօտեցից զբանս. յերկարեցաւ գործ պատերազմաց նոցա իբրեւ մօտ ի լնուլ ամի միոյ. և ոչ ի միում ճակատու դարձոյց Ապու–Մուսէ զերեսս իւր յերեսաց Բուխայի. և որպէս պատմի՝ եղեւ թիւ պատերազմաց նոցա քսան և ութ անգամ. և հարան զօրքն արքունի յայսքան հանդէսս և ի կախ։

---

# ՄԺԳ

## ԳԻՒՏ ՆՇԽԱՐԱՑ Ս. ԼՈՒՍԱՒՈՐՉԻՆ ԵՒ Ս. ՀՌԻՓՍԻՄԵԱՆՑ Ի ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼԻՍ

(ՃԱՌԸՆՏԻՐ)

Ի ժամանակին յորում Հայոց թուականն երեքհարիւր քսան և հինգ էր, առաքեալ լինի ներքինի ոմն՝ անուն նորա Նիկողեմոս, ի վաշէ կայսերէն[1] Յունաց՝ հրեշտակութեամբ՝ առ Աշոտ իշ-

1. Ա Վասիլն է, Մակեդոնիացի կոչուածն։

խանաց իշխան՚[1] ի Հայս, հանդերձ պատուով ըն-
ծայիւք և վայելչական պարգեւօք ազգի ազգի,
բերեալս ի Թագաւորէն: Եւ հանդիպեալ լինի իշ-
խանաց իշխանին ի գաւառին Արշարունեաց, ի
Ջարեհաւանի գեղջ: Եւ կացուցեալ առաջի նորա
զընծայսն՝ յայնքանեւոյ մեծէ արքայէն, պատմէ
միանգամայն և զհրամայեալսն բանս հանճարեղս
և ախորժելիս: Զոր ընկալեալ իշխանաց իշխանին
զյոգնակրան պարգեւսն, զակնախտիտան և զերե-
ւելիս, մեծարէ և զառաքեալ ներքինին՝ իբրեւ զմը-
տերիմ և սպասաւոր Թագաւորին. վասն զի էր
այրն այն խոհեմագոյն և հանճարեղ և հաւատա-
րիմ Թագաւորին:

Եւ ի գլխաւորելն իւրում զհրամանն արքունի՝
բանիւ իրագործութեամբ, սկիզբն առար պատմել
իրս ինչ զարմանալիս և սքանչելիս. Ունիմ, ասէ,
պատմել քոյոյդ մեծանձնութեան՝ աստուածային
իմն հրաշագործ ներգործական յայտնութիւնս, ոչ
ի գրոց նախկին ինչ գծագրելոց, կամ ի համբա-
ւուց ումանց անդէն եղելոց, այլ ինձէն եղեալ ա-
կանատես և ականջալուր նորաքանչ հրաշից, որում
բոլորն այն ծովահայեաց քաղաքն Թագաւորական[2]
վկայէ[3] Հռովմայեցւոց Նահանգին, ասկս հասա-
րակաց գոլով յայտնի ի նմանէ եղեալ ի վերին
ներշնչութեանցն: Եւ սկսեալ պատմեաց զսքանչե-
լիսն եղեալս. զոր յօրինեալ ի մատենի՝ առաքէ
փողփողակի առ ժամանակին կացեալ վարդապետն
Հայոց, զոր յետոյ նշանակեցից զանունն: Իսկ
նորա յոյժ ուրախացեալ ընդ աստուածային ներ-
շնչութեանցն յայտնութիւնս, ըստ արժանի հօրն[4]

1. Որ յետոյ եղեւ առաջին Թագաւոր Հայոց Բա-
գրատունեաց:

2. Որ է աշխարհահռչակն մայրաքաղաքն Կ. Պօլիս:

3. Բոլոր քաղաքն վկայէ, կամ քաղաքացիքն:

4. Վարք տողին մէջ յիշուած Հայր մեր Ս. Գր. Լուսաւորիչն:

դրուատի՝ սուղ ինչ յինքենէ կարգէ բանս գովասանականս՝ մեծի մերոյ Լուսաւորչին, ոչ յինքենէ առաւելեալ ի պատմութեանն և ոչ նուազեալ յասացելոցն ի ներքինւոյն, բաց ի դոյզն ինչ բանից յորդորակաց, զոր կարգեաց ի սկզբան պատմութեանն. և է սկիզբն բանիցն այս։

«Ցերկուց պատուեալ լինի իմաստից խորհուրդք անճառութեանն, որոց սկսանին զպատմութիւնս ինչ իրացն եղելոց արտադրել գծագրական շարագրութեամբ, ոմանք զհնագունիցն և զվաղնջուց վերծանելով զպատմողական ճառս, իսկ այլքն զներկայացեալ իրս ճառելով վերակայութիւնս՝ նորոգեալ ստուգաբանեն պատմութիւնս[1]։ Ըստ որում և մեզ առաջի կայ հաստուցանել՝ ըստ ներկայացեալ բանի զիրակութիւնս՝ հրաշակերտս և քստմնելիս[2]. ոչ ըստ հեթանոսական բանաստեղծիցն պերճաբանեալ, որոց նիւթ բուսակնութեան է ստութիւն, թէպէտեւ պճնայարմար բանիւք քաղցունս ճարակեն լսողացս. իսկ մերոցս՝ սուրբ որ ի Քրիստոս հաւատացելոց՝ ճշմարտութիւն՝ ամենայն ուրեք յայտնէ զինքն սիրողաց, զանխլանալի բազմանուաճ խնդրոց, ոչ արժանաւորս գոլ խաւարեալ միտս նոցա նկատել զիւրոյ պայծառութեանն լուսազարդութիւն։ Արդ, նորոգեցէք զմիտս և զլսելիս ձեր առ ի լսել զզարմանս աքանչելագործութեան պատմութեանս, յորում վերստին փայլեն մերոյ Լուսաւորչին և նախաշար վարդապետին՝ սխրագործութեան ճառագայթք։

Ի ժամանակս Միքայելի կայսեր[3] որդւոյ Թէո-

1. Այսչափ երկարաբանութեամբ ըսել ուզածն է, թէ՝ Պատմութիւնն մէկ մի անցելոց մէկ մ՚այլ ներկայ դիպուածոց յիշատակութիւն է։

2. Քստմնելի սովորաբար վախնալ քաշուիլ նշանակէ, բայց այս տեղ՝ շատ զարմանալ, ափշիլ։

3. Միքայէլ Գ, Գինով կոչուածն, 842–67 ամաց միջոց թագաւորած:

փիլէ, և մօր իւրոյ Թէոդորայի աստուածասիրի և բարեպաշտուհւոյ, ներքինապետ ոմն անուն նորա Նիկոդիմոս, որ զմեծագոյն ստացեալ ունէր պատիւ[1] պռոպոսոտրեանն, գոլով իբրեւ զհայր և զառաջնորդ բոլոր սպասաւորացն՝ որք ի տան Թագաւորին սպասաւորէին, և ընդ ձեռամբ նորա էին նուաճեալ առհասարակ որք ի ներքինեացն Թագուհւոյն. և աքանչելիս ընկալեալ պատիւս ճոխութեան, առ որում և ես իսկ բնակեալ՝ սպասաւորէի նորա անզուգական մեծութեան, ի մէջ ըսպասաւորական նահանգին[2]. որում մտերմաբար իմն յորդորէի ի սպասաւորութեանն, ցանկացեալ խոհեմական և հանճարեղ նորայն վարուց և կարգաւորութեան, առ ի դաստիարակել զչքնաղ փառաւորութիւնս ի նորայն կորովութենէն: Էր նորա պատանեակ մի ընդոծին, ի նահանգէն կոչեցեալ Սկղաւիք[3], յորում էր այս պիղծ. ոչ փոքր ինչ տաժանեալ, միշտ ուխտից և Սրբոց պարապեալ, առ ի լուծումն իւրոյ վտանգաւոր պատահմանն, և ոչ ուստեք գտեալ բժշկութիւն. հանգոյն կնոջն այն՝ որ վտանգեալ ի բազում ժամանակաց և վատնեալ զինչս իւր, և ոչինչ հանդիպեալ անդորրութեան, ըստ որում յաւետարանականն պատմի ճառ: Գոլով նորա ի տեղի մի Թագաւորական քաղաքին՝ որում անուանեալ էր Դափնի[4], յորում եկեղեցիք երեք էին ձեռակերտեալք. անուանեալ մին՝ Միանական Սուրբ Երրորդութեանն, և երկրորդն՝ յանուն Նախասարկաւագին և վկային Քրիստոսի (Ստեփաննոսի), և երրորդն՝ յանուն ամենայաղթ կենսաբեր քրիստոսընկալ Սուրբ Խաչին:

1. Անշուշտ Պրոտոսեբաստոսրեան պէտք էր գրել:

2. Նահանգ՝ այս տեղ նշանակէ, դաս, խումբ (ծառայից):

3. Սկլաւոնիա:

4. Դանօթ Թաղ մի էր Կոստանդնուպօլսի:

սրբոյ եկեղեցւոյն Սոփեայ, և զօրաց շուրջանակի հզաւորագոյնս. և դիմեալ առհասարակ ամենեցուն ի հրաշալի նշխարս Սրբոցն գալլոցն, հրաշափառ նշանօք և երեւելի յայտնութեամբք. և հանդիպեալ աստուածային գանձուն՝ մեծին մերոյ Լուսաւորչին նշխարացն և այլ Սրբոցն, զոր վերագոյն ասացաք. և ամենեքեան օրհնէին զԱմենասուրբ Երրորդութիւնն: Եւ ըստ արժանաւորութեան Սրբոցն՝ փոխեցին մեծաւ պատուով առ ի նոյն հանգիստ, ուրախութեամբ մեծաւ, ջահիւք լուցելովք և ղամպարօք բորբոքելովք. և բազում անուշահոտ բուրմամբք խնկոց. և սահմանեցին զօրն զայն ամ ըստ ամէ զյիշատակս առ ի տօնախմբել, ի նմին աւուր հաւաքեալք առ հասարակ, զի հոգեւորապէս տօնեսցեն զյիշատակն նոցա »:

Եւ իրագործեցան ասացեալքս ի քառասներորդն մեծի պասեքին, ի հինգերորդումն շաբաթուն: Ի ժամանակս Տեառն Գէորգայ Հայոց կաթողիկոսի[1], և Աշոտոյ բարեպաշտի՝ կարգեցաւ տօն Սրբոյն Գրիգորի, ի փառս Ամենասուրբ Երրորդութեանն. այժմ և միշտ և յաւիտեանս. ամէն:

Եւ ի ժամէն յայնմանէ ապաքինեալ պատանին՝ բժշկեցաւ ի ձեռն Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ և այլ Սրբոցն՝ որք էին ընդ նմա: Վասն որոյ և մեք կատարելով զյիշատակս սրբոյ Հայրապետին մերոյ, փառաւորեսցուք զմի Աստուածութիւնն և զերրեակ անձնաւորութիւնն, զի զկատարեալ բարիսն ընկալցուք. ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր. որում վայելէ փառք և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

1. Գէորգ Գ. կաթողիկոս՝ Թ դարու վերջին քառորդին յաջորդած է, և թուի թէ նա է՝ զայս գրողէն այն ժամանակին վարդապետն կոչուածն, որ և սահմանած կ'ըսուի այս դիպուածիս համար՝ Լուսաւորչի տօն մի, Մեծ պահոց հինգերորդ շաբաթ օրն:

# ՄԺԴ

## ԱՇՈՏ Ա. ՆԱԽՆԻ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ ԹԱԳԱՒՈՐԱՑ

### (ՅՈՎՀԱՆ ԿԱԹՈՂԻԿՈՍ)

*Ինձ աստանօր ոչ արդեօք այլ ինչ է բանս սիրելի, քան թէ դեգերիլ ի բանս գովեստից՝ որ վասն Աշոտոյ իշխանաց իշխանին են հետեւմունք։ Վասն զի ի տիս հասեալ միջակութեան՝ քաջահասակ էր նա, և անձնեայ և թիկնաւէտ, և զուարթերես և մրրայօն. նկարէն իմն և նիշ արեան յաչսն ունելով, որպէս զակինթ կարմիր ի մէջ մարգարտի ծագեալ, և վայելչացեալ գեղեցկութեան ալեօք։ Մեծիմաստ և քաղցրաբան, և առ կերակուրս խրախճանաց օրինաւոր։ Ոչ խանդացեալ նորա ընդ լաւագոյնսն, և ոչ արհամարհեալ զնըւաստագոյնսն, այլ հասարակաց ի վերայ տարածէր զգեստ խնամոց իւրոց. և լծակօք իմն կշռէր՝ նախ զիւր և ապա զամենեցուն կենցաղս. միանգամայն իսկ ասել, եթէ որ ինչ մարդկութեանս է պիտանի՝ ոչ ինչ կասեցուցանէր[1]։*

*Զայսպիսի ապա տեսեալ քաջատոհմիկ պերճութիւն՝ իշխանացն և նախարարացն Հայոց, խորհուրդ միաբանական առեալ՝ թագաւորեցուցանել զնա ի վերայ իւրեանց. զեկուցանեն ամիրապետին՝ ի ձեռն ոստիկանին Յիսէի՝ որդւոյն Շէխայ. զոր և սիրալիր սրտիւ զարժանահայց խնդիրն ընկալեալ, առաքէ ապա Աշոտոյ՝ թագ թագաւորական. զոր և բերեալ իսկ ոստիկանին Յիսէի, ընդ*

*1. Այս ամենայն բնազննական նկարագիր և գովեստքն՝ քաղուած են Խորենացւոյ ըսածներէն՝ հին Հայոց քանի մի նշանաւոր անձանց վրայ, որոց մէջ վիպասանից զրուցաց հետք կան։*

նմին և այլ եւս զգեստս թագաւորականս, և պարգեւս և պատիւս, և երիվարս օդապարիկս, զինուք և զարդուք, մատուցանէին առաջի նորա: Կոչեցաւ ապա անդ և մեծ հայրապետն Գեորգ, և զհոգեւոր օրհնութեանցն զովութիւնս աստուածայինս ի վերայ կատարեալ, փոխանակ օծման սրուակի իւղոյն[1], պսակեն զնա թագաւոր ի վերայ Ասքանազեան ազին:

Եւ այնուհետեւ բազում և երեւելի կարգս յարդարէր յաշխարհի տէրութեան իւրոյ, յօրինուածս տանց, ազգաց, քաղաքաց, շինից, դաստակերտաց, և համօրէն հաւասար ըստ իւրաքանչիւրոցն կատարէր կարգս՝ լեռնականաց և ջերմահովիտ բարեխառն դաշտականաց: Եւ զամենայն տափարակ տեղիս՝ ագարակս և գոմս դնէր, և զմարմանդս՝ յայգիս և ի բուրաստանս զարդարէր. և զամենայն որ ինչ օրէն է թագաւորութեան, և որ ինչ ի թագաւորութեան և որ շուրջ զթագաւորութեամբ, ոչ ինչ իւիք կասեցուցանէր. և գրեթէ հարստագոյն և խոհեմագոյն քան զամենայն թագաւորութիւնս գտանէր: Եւ այսպէս ի նորոգատուր թագաւորութեանն բարձրացուցանէր զազգս Թորգոմեան:

Եւ ապա ձեռն զհիւսիսական կողմամբք արկեալ՝ ի ծործորս մեծի լերինն Կովկասու, որ ի հովիտս և ի ձորս երկայնագոգս բնակեալք էին ազգք՝ ընդ իւրեաւ հնազանդեցուցանէր: Այլ և զաղխատրայզ բնակիչսն Գուգարաց[2], և զեղուզակուտ մարդիկ Բշտի գաւառի՝ առ հասարակ ընդ ձեռամբ նուաճէր, ի բաց ի նոցանէ հերքելով զաւազակութիւն

1. Այս տեղ այլ յիշեցընէ Դաւթի թագաւոր օծուիլը Սամուէլ մարգարէի ձեռամբ:

2. Վրաց և Հայոց միջեւ ըլլալով՝ հաւանական չէր կարծուեր որ ինչուան այն ատեն աղխատրայզ, կոպիտ, անկիրթ մնացած ըլլային Գուգարացիք. նոյնպէս կընան կարծուիլ և Ուտիացիք՝ միանգամայն սահմանակիցք Հայոց, Վրաց և Աղուանից:

մարդադաւութեան. և իբրև օրէնաւորս և հլուս զամենեսեան կազմէր, և առաջնորդս և իշխանս նոցա կացուցանէր։ Այլ և զթագաւորն եւս Եգերացւոց՝[1] ի սէր միաբանութեան ընդ իւր կապակցեալ՝ այնպէս նմա այցելէր, մինչ զի անընդհատ յորդիութեան սակի գոլով, մտերմաբար պարտավըճար միշտ նմա ի ծառայութիւն բերէր։ Այլ և մեծ կայսրն Յունաց Բարսեղ՝[2] ոչ փոքր ինչ պայման խաղաղութեան և հաճութեան և սիրոյ հաստատէր ընդ արքային մերոյ Աշոտոյ, որդի սիրելի զնա անուանելով, և հաղորդակից կացուցանելով յամենայն թագաւորութիւնս թագաւորութեան իւրոյ։ Եւ այսպէս ապա լցեալ և կատարեալ լինէր բովանդակաբար բոլոր կարգս առաքինի գործոց, ըստ կարգի այնց պարծանաց՝ զորս ընկալեալն էր[3]։

---

# ՄԺԵ

## ՄԱՐԻԱՄ ՍԻՒՆԵԱՑ ՏԻԿԻՆ ԵՒ ՆԱՆԱ ՄԵԿՆԻՉ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ[4]

Այր ոմն սարկաւագապետ գոլով՝ Նսեմայ[5] անուանեալ, յոյժ հմուտ և վարժ ասորի դպրութեան, ստացող բոլորեցն առաքինութեան, պարկեշտ վարուք, մաքուր առ ամենայն մարմնական հեշտութիւնս, աղբիւրաբար ընկալեալ զշնորհս վարդապետութեան ի Հոգւոյն Սրբոյ, ուղղափառ

1. Այժմու Ջէրքէզաց նախնիքն։
2. Վասիլ Ա. 869–886։
3. Թէ և հայերէն լեզուն լաւ, բայց բոլոր գրուածն ուռած մեծաբանութիւն է։
4. Այս գրոց թարգմանչին և գրողին Յիշատակարանն է Յօդուածս։
5. Որ է Յովհաննէս։

հաւատոյն որ ի Քրիստոս. որ և յանդիմանեաց զոմն եռետիկոս, զայր պերճաբան և իմաստասէր, վանեալ հալածական առնէր յաշխարհէս Հայաստանեայց, որ երբեմն խոտորնակս ուսուցանէր, յերկուս բաժանելով զՔրիստոսի զանբաժանելի միաւորութիւնն, որ յետ անքակ և անշփոթ միաւորութեանն։ Եւ հաստատէ վերստին զնոյն ուղղափառ որ ի Քրիստոս դաւանութիւնն, մի յերկուց բնութեանց խոստովանել, զաստուածականն՝ բնութեամբ, իսկ զնուաստականն՝ կամաւոր յանձնառութեամբ։ Զսա թախանձեալ մեծին Բագարատայ, որ ի տանէն Բագրատունեաց, որ յոյժ բարձրագոյն ստացաւ զանուն, որ և Պետ իշխանաց երբեմն ի բարբարոս ազգէն Հագարացւոց անուանեալ, որպէս թէ այնու զնա առաւել պատուի արժանաւոր վարկուցեալ, զորոյ և զանցս անցիցն՝ յիւրում տեղւոջ փոքր ինչ յիշատակեսցուք։

Եւ զի՞նչ իցէ արդեօք օրինակ խնդրոյն.— Ստանալ նմա զՄեկնութիւն սրբոյ աւետարանին Յովհաննու. որոյ փոյթ ի մտի եդեալ՝ վաղվաղակի ի ձեռն ուժգին պահոց և աղօթից, ջան ոչ փոքր յանձին բերէ՝ շրջագայութեամբ երից ամաց, յածեալ ընդ անապատս երկրին Միջագետաց, ուր և յուսայր իսկ զգիւտ գրոց ուղղափառ վարդապետացն. և հանդիպեալ խնդրոյն առաջնորդութեամբ վերին խնամոցն, շարադրէ համառօտաբար ի բազմաց հաւաքելով՝ մի ըստ միոջէ ոճով զմեկնութիւն Յոհաննեան սրբոյ աւետարանին. փոխաբերելով յասորի լեզուոյն ի հագարական լեզուն։

Իսկ յորժամ ըմբռնեալ լինէր ի հագարական ազգէն՝ մեծն և երեւելին այն իշխանն Հայոց՝[1] վսեմամիտն, որ և զբովանդակ յանձին բերէր ունել զգիտութիւն որ ի Քրիստոս հաւատոցն. որ և նախանձ ոչ փոքրագոյն վասն Քրիստոսի միշտ յանձին կրէր՝ կշտամբել և յանդիմանել զհերձուածո-

1. Բագարատն վերոյիշեալ։

ղացն դասս. ոչ ինչ արութիւն քաջութեան այնուհետեւ իւրոյ մեծութեանն երեւեցոյց, այլ երագապէս ի վայր հոլովեալ յաստուածային հաւատոցն՝ զոր ունէր, գլորեցաւ ի վիհ անկանգնելի կորըստեան. եւ ի բաց ընկենլով զգրոշմ ուխտի ճշմարիտ հաւատոցն՝ սուգ անհնարին բոլոր աշխարհիս Հայաստանեայց հասուցանէր. Թէպէտ եւ հրեշտակացաւ ի լսելիս մեր[1], ի խորութեան սրտին հաստատուն պահելով զճշմարիտ հաւատոցս դաւանութիւնն[2]:

Ցայնմ ժամանակի ի ձեռն պատահման իմն՝ գանձ գրոյս հասեալ լինի առ տէր Սմբատ Բագրատունի. զոր ընկալեալ խնդութեամբ մեծաւ՝ հրամայէ փութով ի հագարացւոյն[3] ի հայկական վերաբերել լեզու, ոչինչ ներելով իմոյ տկարութեանս: Այլ զոր մեծն այն հռետորն կատարեալ յարհեստս եւ ի մակացութիւնս՝ այնքան ջան յանձին բերելով տարժանեցաւ, ո՞վ ոք ոչ զիմս աղարտեսցէ յանդգնութիւն, մտաբերել անգամ յայսքան բարձրագոյն խորհուրդ. զորոյ եւ ոչ զառաքինութիւն առնն՝ պարտ է որ յետ այնորիկ գործեցաւ՝ անյիշատակ թողուլ. այլ իբր ի նկարագրի փոքր ինչ ցուցանել զնորայն ճգնութիւն. ոչ իբրեւ ներբողելով դրուատել, զի եւ ոչ բազմութիւն յոյժ իմաստասիրաց ի մի վայր գումարելոց՝ կարող են բան ըստ նորա արժանաւորութեան հատուցանել հանդիսի. այլ միայն դոյզն ինչ բանիւք պատմութեանս թելադրել առ ի գիտութիւն լսողացդ:

1. Թէպէտ եւ մեր ականջին աւետիս տուին, կամ հանեալ եղաւ լսել՝ թէ, եւ այլն:

2. Բագարատ Արաբացւոց ամիրապետէն ստիպուած հաւանի դաւանանց անոր կրօնից, բայց ի սրտին պահէ զքրիստոնէութիւն: Սակայն այդ բաւական չէ հաւատարիմ քրիստոնէի:

3. Այսինքն, յ'արաբերէն լեզուէ. փափագելի էր որ թարգմանիչը՝ յայտնէր իր անունը:

Սա ըմբռնեալ եղեւ ի մերում իսկ ժամանակի՝ ի հագարական ազգացն, վասն նախանձու որ ի նմանէ բազմափայլ վարդապետութեանն և ներհակս միշտ առադրելոյն, դնի ի բանդ, հանդերձ որդւովք իւրովք. որովք բազում անգամ բանահրապուրականս առաջի արկեալ՝ հանդերձ յոգնազան պարգեւօք, ոչինչ խոնարհեցոյց զանխոնարհելի խորհուրդս մտացն որ ի Քրիստոս։ Դարձեալ յայլ տեսակ հնարից բերեալք լինէին, սպառնմամբ բանտից և կապանաց և պէսպէս տանջանաց, այլ ոչ զանգիտեալ երբէք գիջանէր ի բարձրագոյն հաւատոցն որ ի Քրիստոս. և մնացեալ ի բանդի անդ բազում ժամանակս, ոչ միայն զինքն ամբողջ պահելով յամբիծ հաւատսն, այլ և բազմաց լինի առիթ փրկութեան, աներկեղաբար միշտ պահելով զարգելանաւորսն ի բանդին, ուսուցանելով և հաստատելով ի հաւատս Ամենասուրբ Երրորդութեանն։

Եւ յետ այսորիկ այսպէս եղելոյ, հասեալ լինի գանձ գրոյս այսորիկ առ Մարեմ բագրատունի Սիւնեաց տիկին, ի ձեռն Աշոտոյ հօր իւրոյ[1] մեծ և երեւելի տեառն Բագրատունեաց՝ իշխանաց իշխանի։ Իսկ երանուհւոյս Սիւնեաց տիկնոջ փոյթ ի մտի եղեալ՝ վաղվաղակի հրամայեաց երկիցս անգամ փոխաբերել ի հայկական լեզու, առաջնորդութեամբ վերին խնամոց. յարդարէ համառօտաբար զաստուածային բարձրագոյն հաւատս, վերագոյն ունելով ըստ իւրում քաղցր և յոյժ գովելի բարոյիցն. որ հասարակաբար ունէր առ ամենայն մարդիկ՝ զխնամ սիրոյ սիրելի սուրբ մտացն, մանաւանդ թէ միամիտ հաւատոցն որ ի Քրիստոս, պահպանեալ լինի ի վերին խնամոցն անվրդով առ

1. Որ յետոյ առաջին թագաւոր Հայոց՝ ի ցեղէ Բագրատունեաց, ըստ նախորդ Յօդուածին։ Սա յառաջ քան զթագաւորելն փեսայացուցեր էր իր դըստերաց՝ Սիւնեաց և Արծրունեաց պայազատները։

ի յօգնականութիւն չորից ուստերաց։ Զոր ոչ պատ-կառիմ սիրող Քրիստոսի անուանել, և կենդանի վկայ, որ այնքան ժամանակս երբեր յանձին ժուժ-կալութիւն հաւատոցն։ Եւ սորա այսպիսի եղելոյ՝ մի՛ ոք զմեզ յայսմ վայրի բամբասիցէ, իբրեւ աւե-լագործ ինչ, խառնելով զմերս ընդ նոցայն ջան, կամեցեալ օտարացուցանել կամ աղարտել ինչ։...

Եւ վասն զի ձրիւք Հոգւոյն Սրբոյ աւարտեալ գլխաւորեցաք զաստուածախօս ճառիցս բացատրու-թիւն, ժամ է այսուհետեւ լուսաւորագոյնս շուրջ փայլեցուցանել զաւետաւորութեան բանս՝ առ սուրբ կաթուղիկէ Եկեղեցի։...

Վարձատրեա[1] (ո՜վ Սուրբ եկեղեցի), և զիմոյ փանաքի չքաւորութեանս տաժանմունս՝ առ փո-խարերութիւն աստուածային ճառիցս, ի խորթ բառիցն՝ ի քոց որդւոց շնորհաց փոխարերելով լեզու. վասն որոյ աճապարեալ անհանգիստ վեհ-երագութեամբ ընթացիւք ի մտից ասպարիսի՝[2] աւարտեալ գլխաւորեցի զաստուածազարդ բանիցս հանգամանս, յաւուր եկաւորութեան փեսային քո և հասարակաց կեցուցչին՝ ի Բեթանիա[3]։... Զի ես յետին ուսումնասիրաց՝ մանաւանդ թարգման-չաց, ի ձեռն աստուածային սիրոյն աղաչեմ ըզ-հայրապետս և զքահանայս, զճգնաւորս և զվար-դապետս, միանգամայն և զբոլոր ուխտ սուրբ եկեղեցւոյ, ի վերծանել զգեղեցկազան աստուա-ծաբանական ճառիցս բացատրութիւն, յիշեսջիք զիս ի դպրութիւն կենաց։ Այլ և որ յօրինակ

1. Գրոցս առաջին մասը թարգմանելէն ետեւ՝ եր-կար զօվեստ մի կ'ընէ Եկեղեցւոյ, և այսպէս վեր-ջացընէ։

2. Իբրեւ շատ շուտ շուտ վազելով թարգմաներ է գիրքս։

3. Ծաղկազարդի տօնէն քանի մ'օր առաջ գրեր է զայս։

գծագրութեան առնուցուք զաստուածախօս ճառից մեկնութիւն, մաղթեսջիք յողորմածէն Աստուծոյ՝ ապրեցուցանել զիս ի հրահոսան գետոցն ահեղ աւուրն[1] արդար հատուցմանն, յորում ըսպառնայ հուրն անշէջ՝ գունակ ինձ մեղաւորաց։ Այլ առընթեր գրեսցեն կյիշատակս բանիցս այսոցիկ, առ ի յիշատակ իմոյ յոգնամեղ անձինս։ Իսկ եթէ ոք արհամարհելով անփոյթ արասցէ, ընդ ամենեցուն նա տացէ համար ի դատաստանին, յորոց շահաւոր յիշատակաց զրկեաց զտարամերժեալ անձն իմ ի հանդերձեալ կենացն։

Այլ և Սմբատ բագրատունի և Մարեմ Սիւնեաց տիկին, որ զգիրս սուրբս թարգմանել հրամայեցին՝ զնոյն հայցեն, յիշել։

---

# ՄԺԶ

## ԴՈՒՆԱՑ ՍԱՍԱՆՈՒՄՆ[2]

### (ՅՈՎՀԱՆ ԿԱԹՈՂԻԿՈՍ)

Զայսու ժամանակաւ ահագին իմն յեղակարծում ժամու սաստիկ շարժմանց եղելոց ի գիշերի՝ Դուինն քաղաքի, բազում սասանումն և սարսափումն և դղրդումն և կործանումն՝ զընակչօք քաղաքին գեղեալ, հիմն ի վեր տապալէր. վասն զի առհասարակ ի վայր փլուզեալ զպատուար պարըսպացն և զապարանս գլխաւորացն, և զտունս ռամ-

1. Խնդրէ թարգմանիչն որ չմոռնան իրեն համար աղօթել, որպէս զի դատաստանին օրն ազատի դժոխոց կրակէն։

2. Ծանօթ մայրաքաղաք Հայոց՝ Դ դարուն կիսուն հաստատուած, դեռ անունը կրէ գեղ մի անոր աւերակաց մօտ։

կացն, իբրեւ զերիզուտ վայրս առապարաց՝[1] յա-
կան թօթափել տեսանիւր։ Այլ և զաստուածաշէն
եկեղեցիս կաթողիկոսարանին, և զայլ եւս հաս-
տահեղոյս վկայարանս՝ դղրդեալ քանդեալ աւերեալ
ի վայր հոսէին. որ գրեթէ իբրեւ զփապարս վի-
մուտս դերբկաց՝ սարսափելի տեսողացն երեւիւր։
Այլ և հեղձամղձուկ յարկածածուկ հողաթաւալ
հողահեղձոյց սատակումն դիակոյտ[2] բազմութեանն,
որ կարծրագոյն քարեղէն և անկարեկիր միտս էր
ստացեալ՝ յորդորէր զնա ի բազում ողբս և յար-
տօսրաթոր կականմունս[3]։ Թողում ասել զազգակիցս
և զկարեկիցս և զլծակից հարազատութիւն մարդ-
կան, որոց կականումն և ողբումն և աշխարումն
զուժից ճչոյ և կանչոյ և կառանչոյ, աղիողորմ
ձայնք երգեցիկ կուսանաց և սեւազգեաց կանանց
և տրանց վշտահար հեծութեամբ ազացելոց, մինչեւ
յերկինս բարձրացեալ հասանէր։ Իսկ զբազմութիւն
դիականցն՝ ոչ բաւեալ տալ գերեզմանացն, զբա-
զումն ի վիհս և ի խորափիտս և ի դարափլակս ըն-
կեցեալ լինէին։ Եւ այսպէս ահ բարկութեանն ա-
հափետ զամենեսեան առնէր, պաշարմամբ[4] զգա-
ծեալ զմնացեալսն։

Զայսպիսի լուեալ զաստուածասաստ բարկու-
թիւն՝ սրբոյ առն Աստուծոյ Մաշտոցի[5], որ բնա-
կեալն էր ի Սեւան կղզւոջ՝ բազմահանդէս ճգնու-
թեամբ, գրեալ թուղթ առ գանեալսն[6] մնացական,
օրինակ զայս.

1. Չոր ցամաք անբոյս երկիր։

2. Հողերն վրանին թափուելով՝ խեղդուէին շատ մարդիկ։

3. Եթէ մէկն քարեղէն սիրտ այլ ունենար, այս դիպուածին չէր կրնար չի լալ և չողբալ։

4. Պակուցմամբ ըսել վայլէր։

5. Որ քիչ յետոյ կաթողիկոս եղաւ՝ կարճ ժամանակ մի։

6. Մահուընէ ազատած՝ բայց ծեծուածներ, վը-տանգուածներ, վշտացեալ և տարակուսեալ մարդիկ։

« Զհամաշխարհականդ խորտակումն՝ զոր բուռն զօրութեամբ մանրեալ ճմլեաց աստուածայինն հընձանահար՝[1] ի բարկութիւն մեղաց մերոց բազմացելոց, գիտացի. հաւատացեալ և սիրուն տեա՛րք իմ և սիրելի եղբարք. զյանկարծակի հասեալդ ի վերայ զհնձանահարութիւն դառն արտասուաց, և զօրհաս անտանելի տուգանաց մահու, որ դարձոյց յողբ զխնդութիւն ձեր։ Վասն զի հուր եկեր միանգամայն, և փչրեաց զմայր[2] մարդկեղէն անտառաց. և ահա լայնութիւն ծովու և բարձրութիւնք լերանց ոչ կարացին արգելուլ զարագաթեւ հրամանն։ Աւա՜ղ դառն լուսոյ աւուրն կործանման. որ մինչդեռ ի սեղանս վայելչութեան իւրեանց՝ կերակուրք ի բերանս էին, բերանսեցաւ[3] ի բարկ բաղխման անչափ աղէտիցն։ Վասն զի լքին ծնօղք զծնունդս իւրեանց, և տղայք աղէտիւք հրաժարեցան ի ծնողաց. գերեզմանք նոցա տունք նոցա եղեն, և ի յարկս իւրեանց իբրեւ ի դամբարանի՝ թաղեցան։ Աւա՜ղ ի վերայ չարչարեցելոցդ և ի հնձեցելոցդ առ հասարակ, հարցդ և եղբարցդ. զի թակարդափակեաց[4] Տէր զբազմութիւն ազգաց ժողովրդեան իւրոյ՝ աներեւոյթ սուսերաւ, ի միում վայրկենի ժամու վանեալ, և իբրեւ զջուր հեղեալ ցամաքեցոյց, կամ իբրեւ զծուխ սպառեաց և աչախիլ խաւարաւ[5] զամենեսեան զմեզ ծածկեաց։

1. Իբրեւ թէ ինչպէս հնձուած քաղուած խաղողները կոխկրտեն (գինի շինելու համար), այնպէս կոխկրտուեցան բնակիչք քաղքին։

2. Մայր, անտառային ծառեր, որոց նմանցընէ մեռելոց բազմութիւնը։

3. Ուտելու ատեն՝ կերակուրն բերաններէն թափեցաւ, կամ բերնի վրայ ընկան ի գետին։

4. Իբրեւ թակարդի՝ որս բռնելու գործիքի մէջ՝ բռնուեցան, և այլն։

5. Աչաց տեսութիւնը խլող, արգելող, կուրացընող։

Երանի՜ աչաց՝ որք ոչ տեսին զնոր և զանլուր դատապարտութիւնն՝ զոր ընկալաք և հաստուցաւ մեզ. զի որ երբեմն ի միասին սիրալիր խնդութեամբ խրախամտեալք բերկրէիք ծնողք և եղբարք և զարմիւք և ղաւակօք, հնչեցուցանել Տեառն զբարբառ օրհնութեան, այժմ անտանելի տարակուսանօք յանկարծահաս խաւարազգեաց մթութեամբք տաչորեալ, և ստուեր անգամ ոչ թողաւ մխիթարութեան, և ոչ յոյս ինչ ելից զձեզ՝ փոխանորդութեան և լուծման՝ ըստ կենացս, բայց միայն Աստուծոյ եւեթ մարդասիրութիւնն: Ըստ որում և գիտէք իսկ, զի ոչ ինչ կայ հոգ Աստուծոյ՝ քան թէ զմարդկան ուղղութիւն և փրկութիւն. վասն զի մեք մոռանամք զԱստուած և զմեզ ինքն. այսպէս ապա ընդոստուցանէ՝ ըստ իւրում ողորմութեան և մարդասիրութեանն: Քանզի այսպէս հաւանիմ զտանջելն Աստուծոյ, ասեն գիրք, որով խրատէ զչարացեալ անզգամութիւնս մեր:

Դարձեալ, մի՛ զարմանայք վասն անքննելի նորայն դատաստանաց, թէ զիա՞րդ կորուսանիցէ զարդարն ընդ ամբարշտին: Նախ և առաջին, զի ո՛չ է արդար և ոչ մի. վասն զի «Ամենեքեան խոտորեցաք ի միասին և անպիտանեցաք». ապա[1], չէ ինչ կարի չար, եթէ մահն՝ որում պարտապան եմք՝ այն մեզ վրիժաբար հասանիցէ[2]: Յետ այնորիկ ապա, որպէս զարեւն և զանձրեւն և զամենայն բարութիւնս՝ ի միասին վայելեն արդարք և մեղաւորք, այսպէս և զբաժակ պատուհասին ի միասին ըմպեն. իսկ իւրաքանչիւրոցն պատիւն և պատուհասն՝ առ հանդերձեալ օրն պահի:

«Արդ, վասն զի այսպէս մինչեւ ցմեզ հաստատեալ են իրաւունք Արարչին, անաչառ վարելով առ ամենեսեան, ընկալարուք զակամայոդ որպէս

1. Սաղմոսի խօսքն է:

2. Եթէ հարկ է որ մեռանիմք, մեծ չարիք մի չէ այս կամ այն կերպով հասած մահն:

կամաւոր, որով յայտնի լիցի իմաստութեան և գիտութեան և հաւատոց ձերոց հանդէս. և զպարտական գոհաբանութիւնդ ձեր մատուցջիք նմա, որ մխիթարիչն է վհատութեան սրտից, որով և բնականդ իսկ էք նորա ընտանութեամբ՝ ըստ քրիստոսական հաւատոցն, և ուղիղ վարուք և առաքինասէր և ուղղափառ կարգաւ՝ յերկիւղ Տեառն հաստատեալք։ Եւ նա տացէ ձեզ հոգի մխիթարութեան և յոյս բարեաց ի սիրտ սուրբ, և բնական սփոփանօք լցուսցէ զձեզ զմնացեալսդ ամենայն՝ զհօտ և զհովիւ, մոռացումն առնելով ծանր և մեծ վշտացդ. և ըստ չարչարանաց ելից նոցա ի հովտէս տրտմութեան, հաւասար չարչարելոց վկայիցն Քրիստոսի՝ հաշտեսցի, հանգուցեալ զհոգիս նոցա ի յարկս լուսոյ. եղծանելով զգիր պարտեաց նոցա՝ զբանից և զգործոց և զմտածութեանց, և դասաւորելով ի խոստացեալ բարիսն, որ պահի սիրողաց իւրոց՝ որ յաւիտենից»։

---

## ՄԺԷ

### ՇԻՆՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑԻՈՑ ԵՒ ՎԱՆԱՑ ՏԱԹԵՒՈՑ

(ՍՏԵՓԱՆՈՍ ՕՐԲԵԼԵԱՆ, *խա.*)

Տեսանէր ապա երանելիս այս[1] զեկեղեցին՝ նեղ և խոթին և հնացեալ ի բազում ժամանակաց, նա և ի շարժմանէ իսկ խարխալեալ. և զի անպատշաճ էր այնպիսի մեծի մայրաքաղաքի[2] և աշ-

1. Յովհաննէս եպիսկոպոսն Սիւնեաց, որոյ աթոռն էր ի Տաթեւ։
2. Երբեմն մեծ վանքերն մայրաքաղաք կ'անուանէին, մանաւանդ ուր որ եպիսկոպոս նստէր։

խարհագումար ժողովարանի սուրբ հայրապետանացին՝ առանց մեծ կաթողիկէ եկեղեցւոյ լինել, վասն որոյ հանապազ մտախոհ լինէր ի սրտին և ոչինչ գտանէր հնարս. մի, զի ոչ իշխէր քակել զառաջին սրբոցն հիմնարկեալ տաճարն. և մի՝ զի անձեռնհաս թուէր յանհուն ծախս պիտոյիցն։ Ապա ի տեսլեան հրաման առնու ի հրեշտակէ՝ զհինն ի բաց դնել և նոր առնել սկիզբն շինուածոյ եկեղեցւոյն. և այն ինչ երկրորդէր և երրորդէր տեսիլն, մինչ բնաւին հաւաստեցուցանէր հրեշտակն՝ զիրն, զի մի՛ երեւոյթ երազական ինչ կարծիցի. և իւրով մականաւ ծրագրէր[1] զտեղին, հրամայէր շինել յանուն սուրբ և գլխաւոր Առաքելոցն, վիմին Պետրոսի և առաքելոյն Պօղոսի. և քաջալերէր ի գործն, ասելով. Ոչ ի մարդոյ կատարի դա, այլ Տէր կամի կանգնել զդա տուն փառաց իւրոց։

Զարհուրեալ եպիսկոպոսին, ապա և զարթուցեալ ի քնոյն՝ յոլով ժամս ափշեալ լինէր։ Յարուցեալ եկն ի տեղին, և ցուցանէր եղբայրութեանն՝ զծրեալն ի հրեշտակէն. ազդէ և զայս մեծի և գահերէց իշխանին Սիւնեաց՝ Աշոտոյ, եղբօր Վասակայ, որդւոյ Փիլիպպէի և հօր Սմբատայ և Սահակայ և Բաբգենի, և ամուսնոյ նորա երանելի և մեծահաւատ տիկնոջն Շուշանայ. և միւս իշխանին որ ի Գեղամ[2] գաւառի լինէր, Գրիգորի Սուփանայ՝ որդւոյ Գաբռոնայ, և Սահակայ և միւս իշխանին որ ի Բաղս՝ Զագիկ կոչեցելոյ, հօր Ջեւանշերի. որք մեծապէս խրախացեալ՝ աստուածային

1. Հրեշտակն իր ձեռքի գաւազանով գծեր է շինուելու եկեղեցւոյն ձեւը։

2. Հիմայ Գեանճի–պազար կոչուած գաւառն՝ Սեւանայ լճին արեւմտակողմը. որոյ ինքնագլուխ իշխան էր Գրիգորը. հետեւեալ գաւառաց այլ առանձին իշխաններն յիշէ. Սուփան, Գաբրոն, փաղաքշական կամ գգուելու մականուններ են՝ զոր տղայոց դնեն ծնողքն։

իմն տեսչութեամբ անդր փութապէս բերեալք լինէին. և հիացեալք ընդ սքանչելի տեսիլն՝ միաբան միախորհուրդ ձեռն ի գործ արկանէին, և ջանային փութապէս կատարել։ Բացեալ լինէին այնուհետև գանձարանք նոցա, և առատապէս ծախեալ ի գործոնեայս շինուածոյն. բայց գլխովին իսկ մեծ իշխանն Աշոտ և եպիսկոպոսն Տէր Յովհաննէս մեծամեծ ծախիւք և աշխատութեամբ կային ի վերայ գործոյն. և աստուածային կամակցութեամբն սկիզբն առնեն շինուածոյն, և արկանեն հիմն՝ յերեք հարիւր քառասուն և չորս թուականին Հայոց (895), ի թագաւորութեանն Սմբատայ բագրատունւոյ Խոստովանողի՝ որդւոյ Աշոտոյ թագաւորի, յիշխանութեան Սիւնեաց՝ Աշոտոյ, որդւոյ Փիլիպպէի, ի կաթողիկոսութեանն Հայոց Տեառն Գէորգեայ Գառնեցւոյ, հրամանաւ և կամօք Աշոտոյ, ձեռամբ Տեառն Յովհաննիսի, զոր և իւր իսկ գրեալ էր ի վերայ եկեղեցւոյն այսպէս.

ՅԱՄԻՆ ՅՈՐՈՒՄ ԹՈՒԱԿԱՆՆ ՀԱՅՈՑ ՅԽԴ ԷՐ, ԵՒ ԶԱՏԻԿՆ Ի ՆԱՒԱՍԱՐԴԻ Ի ՉՈՐՍ, ԵՍ ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՈՐ ԵՐԿՐՈՐԴ ԿԱՐԴԵՑԱՅ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՍԻՒՆԵԱՑ ԶԿՆԻ ՏԵԱՌՆ ՍՈՂՈՄՈՆԻ, ԱՐԱՐԻ ՍԿԻԶԲՆ ՇԻՆՈՒԱԾՈՑ ԵԿԵՂԵՑԻՈՅՍ.

Եւ այսպէս կատարեալ զեկեղեցին՝ կամար երկնանման գմբէթայարկ, ճեմարան իմն հրեշտակաց և քաւարան մարդկան, ի տաշածոյ վիմաց և ի քերածոյ քարանց, գաղատոսաշէն իմն յարմարեալ[1] ակնախտիղ տեսողաց. ի հարիւր կանգնոյ բարձրութիւն նորա[2] և ի քառասուն և ութ կանգնոյ երկայնութիւն նորա և ի քսան և չորս կանգնոյ լայնութիւն նորա. ունելով յինքեան չորս խորանս՝ բաց յաւագ խորանէն։ Եւ ըստ Սաղոմոնեան յարկին և կամ Զօրաբաբէլեանին՝ կառուցեալ ի մէջ տանն երկուս սիւնս հրաշակերտս, զԲոյոս և զՅա-

1. Արուեստաշէն, ճարտարի գործ։
2. Գմբէթն բարձր է, բայց եկեղեցին փոքրիկ։

քում[1], որք հաստահեղոյս խարսխօք և գեղեցկադիր և բարձրաբերձ թակաղակօք[2] պարաբարձեալ ունին զահագին թանձրութիւն երկնաձեղուն քարակարկառ յարկին. և այս ի խորհուրդ երկուց գլխաւոր Առաքելոցն՝ Պետրոսի և Պօղոսի, յորոց նշխարացս եդան ի ներքոյ սեանցս, և բազմութիւնք սրբոց նշխարաց անդ գումարելոց՝ առաքելոց, հայրապետաց, մարտիրոսաց, եդան ի հիմունս և յանկիւնս եկեղեցւոյն: Ահա զայս իսկ աւարտեալ զամս մետասան, կանգնէ և մերձ եկեղեցւոյն հանդէպ դրանն հարաւոյ՝ սիւն մի զարմանալի՝ յանուն Սրբոյ Երրորդութեանն, ի մանր քարանց պատուածեալ ի չափ երեսուն կանգնոյ[3]. պարսպէ և զեկեղեցին որմաքարով. և ապա զվանսն՝ կոփածոյ քարամբք: Եւ զի էր նիստ տեղւոյն անյարմար, հարթէ զթանձրութիւն գետնոյն, և զխորութեան վայրսն բարձրացուցանէ կրաշաղախ որմովք. շինէ և գաղտանոցս գետնափորս ի ներքոյ վանից՝ ծածուկ երկրաւ, բազում տունս և դարանս ի պէտս եկեղեցւոյն. և հարթեալ հաւասարեալ զվայրն՝ շինէ և սրբաշէն տրապէզս և գործարանս, համբարանոցս[4] և սրբատունս[5] և գրատունս. և ի դրան եկեղեցւոյն՝ տուն աղօթից և տեղի դամբանի իշխանաց և եպիսկոպոսաց Սիւնեաց:

Ահա զայս ամենայն կազմուած յօրինուած մեծի տանն հայրապետութեան՝ հոգացեալ և աւարտեալ, արար ցանկալի հեռաւորաց և մերձաւորաց բոլոր

1. Սողոմոն Իմաստնոյն իր շինած տաճարին մէջ կանգնած երկու սեանց անուանքն են. մին նշանակէ Զօրութիւն, միւսն՝ Ուղղութիւն:

2. Սեանց գլուխն պէսպէս զարդարուն քանդակօք:

3. Արդարեւ զարմանալի սիւն, որ հրելով շարժի և չի կործանիր:

4. Սեղանատուն կամ սեղանի տախտակներ:

5. Սրբազան ամաններ, նշխարներ, զգեստներ պահելու տեղ:

Հայաստանս աշխարհիս. և ջանհաւորեալ իբրեւ զարեգակն ի մէջ աստեղաց՝ երեւելի էր ի մէջ ամենայնի. ոչ միայն շինուածովք, այլ և պայծառանայր քաղաքականն և կրօնաւորական դասուք ի չափ հինգ հարիւր եղբարց. լի էր և ծովամտոյց փիլիսոփայիւք[1] երաժշտական երգոց. ճոխ էր և վարժարանն վարդապետական կրթութեամբն. Նա և արհեստաւորքն նկարչացն և գրողաց՝ անհամեմատք: Վասն որոյ յայսպիսի համբաւոյ հրաշացեալ թագաւորք և իշխանք և եպիսկոպոսունք՝ գային ի տեսութիւն և ընծայաբերք լինէին սուրբ և երկնահանգէտ աթոռոյն: Բայց յորժամ աւարտէր զշինուածն եկեղեցւոյն և այլ ձեռակերտացն՝ եպիսկոպոսն Տէր Յովհաննէս, ապա ի խնդիր լինէր աշխարհախումբ հանդիսի, առ ի կատարել զնաւակատիս մեծի և աստուածահրաշ տաճարին. կոչեն զթագաւորն Հայոց Սմբատ՝ այլովք իշխանօքն, և զկաթողիկոսն Տէր Յովհաննէս՝[2] որ զկնի Մաշտոցի ի Սեւան կղզւոյն յաջորդեցաւ, այլովք եպիսկոպոսօք Հայոց. գայ և Գագիկ Վասպուրականի[3], որ և թագաւորեացն իսկ՝ իւրով եպիսկոպոսօք և իշխանօք և ազատօք: Գայ և Աղուանից կաթողիկոսն Տէր Սիմէոն՝ իւրոյ աշխարհին եպիսկոպոսօք և մեծամեծ իշխանօք. ժողովին և համազգի Հայկազուն[4] իշխանքն Սիւնեաց՝ զորս յիշեցաք, և այլ վանականք և աշխարհականք Սիսական աշխարհիս. յորոց միջի՝ արդարեւ էր տեսանել՝ ըստ իւրում անսուտ հրամանին՝ զՔրիստոս,

1. Փիլիսոփայ կ'անուանեն մեր պատմիչք վարպետ երգեցողներ և երաժիշտներ. Ծովամտոյցն նշանակէ այնպիսի տեղ՝ ուր բազմութիւն մարդկան մտնէ:

2. Այն է Պատմիչն, Վեցերորդ ի կարգի Յովհաննէս անուանեալ կաթողիկոսաց:

3. Կամ Արծրունի, որ Սմբատայ քեռայրն էր:

4. Երկու գլխաւոր իշխանական ցեղ կար Սիւնեաց նահանգին, որոց մէկն բնիկ Հայկազուն կոչուէր:

Հօրն և Ամենասուրբ Հոգւովն, և ամենայն երկնային զօրօքն. նա և առաքելական և մարգարէական գնդիւք. և հայրապետախումբ և մարգարէական և մարտիրոսաջոկ երամօքն. զորս և տեսանէր ի ցայգապաշտաման՝ սուրբ եպիսկոպոսն Յովհաննէս զՊետրոս՝ և ի ձեռին բանալի երկաթի, և զՊօղոս՝ և ի գիրկն իւր Առաքելական գիրքն. որ մտեալ յեկեղեցին պատրաստէին աթոռ երկնաւոր թագաւորին, և տային զբանալին և զգիրքն ցեպիսկոպոսն, և ասէին. Հաճեցաւ Տէր բնակել ի սմա. և մեք պատրաստեմք տեղի հանգստեան նմա. և մեզ իսկ հրամայեցաւ աստէն մնալ մինչ ի միւսանգամ գալուստն թագաւորին մեր. այդ բանալի արքայութեանն է, կացցէ յեկեղեցւոջս. զի սա բանալոց է դուռն դրախտին ամենայն մեղուցելոց՝ հաւատով դիմելոցն ի սա. և այս գիրք կացցէ ի սմին, զի աստի բղխելոց է շնորհ վարդապետական, և ողջամիտ քարոզութիւն սուրբ գրելեացս՝ ա՛ստ մնալոց է անապակ և անխառնուրդ։

Զայս տեսեալ և զարթուցեալ՝ մեծաւ գոհութեամբ փառս ի վեր առաքէր, և ոչ ինչ յայտնէր ումեք։ Ապա ընդ լուսանալ առաւօտուն զգեստաւորեալ սուրբ հայրապետացն և ամենայն եպիսկոպոսացն՝ ելին ի բեմն. և կատարեալ զհոգեւորական օրհնութիւնն՝ օծանէին աստուածագործ իւղովն. և ի յասելն՝ «Օրհնեսցի, օծցի», ամենայն բազմութիւնն այնքան հնչեցուցանէին զԱմէնն՝ մինչ թուէր լսողացն ահագին որոտմունք և ճայթմունք ամպոց հրեղինաց եկեալ. և դղրդէր երկիրն և շարժէր վայրն. որ և այսպէս կարծեցեալ թուի ինձ, եթէ անմարմին ձայնք խառն լինէին նոցա, որ այնպէս ահարկու թուէր, և ոչ միայն սոսկ մարդոց։ Եւ այսպէս կատարեալ զօրհնութիւնն՝ ութ օր նաւակատիս առնեն, ի փառս Աստուծոյ։ Եւ իւրաքանչիւր ոք դառնայ ի տեղի իւր. բայց թագաւորն և իշխանքն Սիւնեաց՝ տեսեալ զայնպիսի հանդէս և զայնքան չքնաղագոյն յօրինուած,

առաւելապէս սիրեն և պատուեն զտեղին, և մեծ տրօք փարթամացուցանեն, և յոյժ ընդարձակեն զաճման տեղւոյն[1]:

# ՄԺԲ

## ՀԱՍԱՆ ԱՐԾՐՈՒՆՒ ԴԱՒԱՃԱՆԵԼ ԽՈՐՀԻ ՋԱՇՈՑ ԻՇԽԱՆ ԵՒ ԻՆՔՆ ԸՄԲՌՆԻ

(ՅՈՎՀԱՆ ԿԱԹՈՂԻԿՈՍ.)

Զայսու ժամանակաւ մեծ իշխանն Արծրունեաց Աշոտ[2], որ ի բողբոջից բուսոյ Սենեքերիմայ արքայի, ելեալ զգնայր շրջէր պկողմամբք իւրոյ տէրութեանն՝ փոքր ինչ գնդով. և հասեալ ի ձորակ մի, զոր փորակ Լամբայ[3] անուանեն, երեկօթս անդ առնէին յագարակի միոջ, յորում բնակէին Գաբաւոնացիք՝[4] ընդ յարկաւ շինուածի տանցն մտեալ զետեղեալ, սակս ձմերային ժամանակին: Իսկ Հասանն Արծրունի՝ որդի Վասակայ ուրացելոյ զՔրիստոս, և հօրաքեռ որդի նոյն իշխանին Աշոտոյ, բնակութիւն կայանի իւրոյ ունէր զամրոցն անուանեալ Սեւան: Իսկ իբրեւ լուաւ զիշխանէն յայն-

1. Անտարակոյս նկարագրածին համեմատ շատ շքեղ եղած է այդ շէնքն. զոր յետ հազար տարւոյ, հիմայ՝ այս տողերս գրելու օրերում՝ նոր նորոգեն:
2. Նախընթաց Յօդուածի մէջ յիշուած Գագկայ անդրանիկ եղբայրն:
3. Կամ Լըմբայ:
4. Անհաստատ բնակութեամբ տեղէ տեղ փոխուողք, որ սովորաբար Գնչուք կոչուին ի մերայոց, Ծինկար Ջինկեանք, և ասոնց նման՝ յօտարաց. շատք կարծեն ի Հնդկաց եկած, և շատ գրուածք կան ասոնց տեղւոյ և լեզուի վրայօք:

մինչ ձորակի[1] զոլ յիջեւանս, դաւաճանեալ ի չար դիւէ անտի, և կամաւոր կուրութիւն յինքն կրեալ, զոր ի գաղտնիս իմն կազմէր, որիկայս պատրաստէր, աղեղնաւորս չերտաւորս սուսերաւորս վահանաւորս կորովիս, զէնս չարժեալ, և ինքն իսկ հուպ ընդ նոսին տրեխաւորեալ[2], և յեղակարծ դիմեալ չուեալ՝ ի գիշերի հասանէին ի վերայ իշխանին։ Եւ պարսպածեալ պատեալ շրջափակեալ, պաշարեալ պահէին զդրունսն տանցն՝ յորում օթագայացեալն լինէր իշխանն Աշոտ իւրայովքն, ի դիպահոլ իմն զնոսա բերեալ, և ի ձեռս կարծեցեալ ըմբռնեալ։ Իսկ ապա Հասանն՝ յեցեալ ի նիզակն զոր ունէր՝ և կիցս իբրև զայծեամն ընկեցեալ ի տանիսն՝ յորում իշխանն կայր, վազէր. և ի արոփական դափմանէ տուիցն՝ թնդեալ տանիքն և ի վայր փլուզեալ հոսեալ, անկանէր զկնի փլուզմանն Հասանն ի տուն անդ։ Իսկ ապա ի հագագասփիւռ ձայնէ խօսիցն Հասանայ՝ զնա ծանուցեալ[3], և վազվաղակի ըմբռնեալ՝ ածէին զնա առ իշխանն։ Իսկ ամխատորոյզ չփոթմանն իրազգած եղեալ զօրացն Հասանայ, իբրև զծուխ ի մրրկէ հալածեալ և փախստեայք անհետ կորնչէին. և այսպէս զգուրն զոր և փորեաց և պեղեաց Հասանն, ի նոյն ընկլուզաւ՝ զոր և գործեաց[4]։

Իսկ իշխանն Աշոտ ի շղթայս կապարանի զնա արկեալ, և առեալ տարեալ զնա յամրոցն Սեւան[5], ի դուրս առ ինքն զամրոցն տալ հայցէր։ Իսկ մայրն

1. Կամ փորակի։

2. Տրեխ՝ անարգ ոտից աման է։ Թուի թէ Հասամուր կօշիկ հագած ըլլալ կ'ուզէր, ինչպէս կարծել տայ և ուժով ոտքով զարնելով՝ տանիքը փլցընելն։

3. Թուի թէ Հասանայ ձայնն այլ՝ ոտից հանած ձայնին նման՝ այլանդակ էր։

4. Սաղմոսի խօսքն է։

5. Սեւան կղզւոյ և ծովու մօտ չէ սա, այլ ուրիշ բերդ մի Վանայ երկրին մօտերն։

Հասանայ և եղբայր նորուն՝ որ առ ի մօրէ և ոչ ի հօրէ, բռնագրօսեալ՝ ոչ կամեցան տալ զբերդն. ոչ կարացեալ վստահ լինել ի խոստացեալ բանս իշխանին՝ վասն ողջանդամ զկապեալն Հասան Թողլոյ: Ապա զգացուցեալ որքայի Սմբատայ՝ հարկ առնէր ինձ[1] երթալ յամրոց գործոյն, թերևս կարողութիւն լիցի փակել զկոխստական դուռնն՝ զոր անձամբ անձին եբաց Հասան: Իսկ իմ երթեալ չուեալ և համոզեալ զտիկինն՝ վասն զամրոցն տալոյ, և փրկելոյ զՀասան ի մահու յերկիւղէ, և ողջանդամ զնա լուծանել ի կապարանէն, ընկալաւ ապա և յիշխանէն յետկար սաստիկ երդմանց, լուծանել Թողուլ ողջանդամ և անվնաս զՀասան: Իսկ ես իբրև առեալ ետու զամրոցն ի ձեռն իշխանին, ապա ի նանրական չար խորհրդոց ազատաց ոմանց հրապուրեալ, փորէ (Աշոտ) զաչսն Հասանայ, կուրացուցեալ զնա ոգիտաբար՝ ի կորուստ անձին իւրոյ. վասն զի որք երդմանց օրինաց և միջնորդաց հեստեալք և դիւրափոփոխք զտանին՝ ի հակամիտութիւն հակառակայն բերեալ, այնպիսիքն մահու անձանց առիթ գտեալք, ոչ կարեն հաստատուն կեանս իւրեանց ստանալ: Իսկ իմ զաւետարանական իշխանութիւն ի գործ արկեալ, և բանիւ սահմանականաւ կապեալ զիշխանն[2], տրտում Թախծանօք անցեալ գնացի: Ապա յետ ամի միոյ անցելոյ՝ ոգիտութիւն յանդգնութեան արկաւ իբրև զօթոց զբարեվայելուչ և զպատկառող և զչքնաղատեսակ դիտակաւն Աշոտոյ. և այսպէս զվախճան կենաց ընկալեալ ի տիս երիտասարդութեան, սաստիկ սուգ տրտմութեան զմեօք զեղեալ յարդարէր:

1. Յովհաննէս Պատմիչ կաթողիկոսն է հաշտութեան միջնորդ գացողն:

2. Կաթողիկոսն բանադրեր է զԱշոտ՝ ըրած երդմունքին հակառակ՝ զՀասան պատժելուն և կուրացընելուն համար:

# ՄԺԹ

## ՆԱՀԱՏԱԿԵԱԼՔՆ Ի ԴՌՒԻՆ ՅՈՍՏԻԿԱՆԷՆ ՅՈՒՍՓԱՅ

(ՅՈՎՀ. ԿԱԹՈՂԻԿՈՍ)

*Արք ոմանք ի Թշնամեացն յայնցանէ որ շուրջն կային, տեսեալ ի սրբոց անտի՝ մանուկ մի զըւարթատեսիլ և գեղեցիկ երեսօք, Միքայէլ անուն, յաշխարհէն Գուգարաց, որոյ չեւ եւս էր փաղփեալ բողբոջեալ մրադիր բոյսք մօրուացն ընդ ծնօտսն. և իբրեւ մարդասիրել ի նա խոկացեալ՝ և բուռն հարեալ զնմանէն՝ յինքեանս կորզեալ ձգէին, զի մի ընդ այլսն և նա կորիցէ։ Իսկ նա արտօսրաթոր կականմամբ զաչսն յերկինս համբարձեալ, և զօրացեալ վերին օգնականութեամբն՝ ի բաց զինքն ի նոցանէն շոպեալ ճողոպրէր. և հապճեպ տուեալ և դիմագրաւ դիմեալ առ ընկերս իւր, առաջի որոյն զգլուխն կամաւորապէս մատուցանէր. և այսպէս ի բանաւոր ողջակիզումն զինքն Քրիստոսի նուիրէր, ընդ այլ եւս անարատ պատարագացն և զենմանց, ի հոտ անուշից Հօրն երկնաւորի։...*

*Էին եւս յայնժամ եղբարք երկուք ի նախնեացն Գնունիք, որոց անուանքն միումն Դաւիթ և միւսումն Գուրգէն ճանաչիւր. որք և ըմբռնեալք ի գերչացն՝ ածան առաջի բռնակալ ոստիկանին։ Եւ իբրեւ հարցափորձ ընդ նոսա լեալ, և գրեթէ զկէս տէրութեանն իւրոյ տալ նոցա խոստանայր, այլ և բազում զգեստս և զարդս ոսկեճամուկս, և ծիրանիս և երեւելի լակոնացի և բեհեզս նոցա մատուցանէր, և կամարս և մանեակս ոսկեղէնս և նժոյգս սրավարս ճոխապաճոյճս՝ ի զէնս և ի զարդս. և ապա զձեռս իւր ի նոսա կարկառեալ և գիրկս*

զպարանոցօքն արկեալ և հուպ ընդ հուպ ի համբոյր մերձեցուցեալ զնոսա, այնպէս շոգմոգէր շողոմութեամբ բանիւ՝ հնազանդել նորայն բանի, և խնայել յարբունս մանկութեան իւրեանց, և դառնալ յօրէնս, զոր ինքն պաշտէր։ Իսկ նոցա գեղեցիկ իմն մոլութեամբ ի զէն զինուորութեանն Քրիստոսի զինքեանս վառեալ, համարձակաձայն բարբառով զբարւոք դաւանութիւնն քարոզէին առաջի ամենեցուն, թէ, Քրիստոնեայք եմք, և զճըշմարտութիւն Աստուծոյ՝ որ յինքն զանմահութիւն ունի և ի լոյս անմատոյց է բնակեալ՝ ոչ կամիմք փոխանակել։... Իսկ իբրև այսպէս զխորհուրդ նոցա ի սէր նահատակադրին Քրիստոսի արձանացեալ տեսանէր թշնամին, հրամայէր այնուհետեւ սրով զնոսա սպանանել։ Իբրև ածան ի թէատրոնն՝[1] իբրև զոչխար ի սպանումն, աղօթս մշտնջենամռունչս և պաղատանս աղերսալից անդր առ Աստուած մատուցանէին, գրել զնոսա ի թիւ վկայից սրբոց, որք սիրեցին զօր երեւելոյ գալըստեան նորա։ Եւ հանդերձեալ դահճացն զերեց եղբայրսն կատարել սրով, նա աղաչանս նոցա մատուցանէր՝ նախ զկրտսերն քան զինքն տալ կերակուր սրոյն. ի մտի եդեալ, եթէ գուցէ ի վերջ քան զնա մնալով՝ ըստ մանուկ տիոցն՝ զարհուրեսցի ինչ յիսմայէլեան սրոյն սպառնալեացն, — վասնզի մրազարդ մօրուքն ի ծնոտսն դեռ եւս էր տիգեալ[2] և ընձիւղեալ. — և դարձեալ յեղբայրն կոյս՝ ասէր. «Եղբայր սիրելի, նախ դու ընծայաբերեցիր Քրիստոսի յուսոյն մերոյ, մատուցանելով զքեզ ինքն բանաւոր ողջակէզ և զենումն նուիրական նմա՝ որ վասն մեր եղեւ մեռեալ և վերագրեաց զմեզ ի կեանս»։ Իսկ նորա ոչինչ գրեալ զվիշտս և ոչ ի մտի եդեալ զանհնարին մահուն տու-

1. Հրապարակ, բազմութեան առջեւ։
2. Տէգի նետի նմանցընէ՝ երեսներէն դուրս ցըցուած նոր ելած մազերը։

գանս, յօժարութեամբ դիմեալ ի սուրն, այսպէս հատաւ գլուխ նորա, պսակեալ ի Քրիստոսէ անթառամ պսակաւն։ Զկնի սորա և երէց եղբայրն՝ յետ բարւոք պատերազմին և կատարման ընթացիցն և պահպանութեան հաւատոցն, ի նոյն միտս զինքն վառեալ, յանողորմ որոյ անտի սպանանի ի կենացս, և կենդանանայ յանտի երանութիւնս անվախճան ուրախութեանցն վերին արքայութեան։ Այսպէս ամենեքեան սոքա սուրբք՝ որ առ ի յինէն պատմեցան, յիրաւի տարեւորական տօնախմբութեամբ պատուին միշտ յեկեղեցիս սրբոց. օր յիշատակի սոցա սահմանեալ մարերի ամսոյ՝ որ օր քսան և եօթն[1]։

---

# ՄԻ

## ՆՈՅՆ ԲԱՆ ԸՍՏ ԱՍՈՂԿԱՅ

Զբազումս վասն առ Քրիստոս խոստովանութեան՝ ի հարց և ի փորձ տանջանաց արկեալ[2], ջանայր դարձուցանել ի կուրանն Մահմետի. այլ Քրիստոս՝ որ զանձինս նոցա դարձոյց ի կամս կենարարս, նոյն ինքն աստուածային հրով ջեռոյց զմիտս նոցա ի սէր սուրբ և ի հաւատս քաջութեան. որք կոխեցին զխայթոց մահու, և կատարեալք սիրով՝ առին զպսակն լուսոյ։ Եւ զայլս յայլում ժամու ըմբռնեալ և մատնեալ տանջանաց. և տեսեալ զի դիմեցին վասն Քրիստոսի՝ որպէս զոչխար ի սպանդ, զմի ոմն տիօք մանկութեան ծաղկեալ՝ Միքայէլ անուն՝ յաշխարհէն Գուգարաց, յինքեանս կորզէին, զի մի ընդ այլս մեռցի, թերեւս կարասցեն պատրել խաղտանօք[3] մեծութեան։ Իսկ

1. Յայսմաւուրք այլ ի մայիսի 27 նշանակեն։
2. Ոստիկանն Յուսուփ։
3. Շոյելով և հարըստութիւն տալ խոստանալով՝ խաբել կ'ուզեն։

նա արտասուալից կականմամբ զաչս իւր առ Աստուած ամբարձեալ, և զօրացուցեալ զինքն վերին օգնականութեամբ՝ զինքն ի նոցանէ ճողոպրեալ որոշէր. և դիմեալ առ ընկերսն՝ մատուցանէր սրոյն զպարանոցն. և այսպէս կատարեցան միաբան ի հոտ անուշից Աստուծոյ Հօրն։

Էին յայնժամ երկու եղբարք Գենուենիք ազգաւ՝ մեծք և պատուականք, Գուրգէն և Դաւիթ, որք ըմբռնեալք ի դահճացն՝ ածան առաջի Յուսուփայ. որոց մեծապէս երդմամբ խոստանայր տալ զկէս տէրութեան իւրոյ, այլ և զզգեստս պայծառս գունակս գունակս, և մանեակս ոսկի, և նժոյգս արավարս[1] ճոխապաճոյճս. և ձեռն զպարանոցաւ արկեալ՝ համբուրէր և չոգմոգ շողոմութեամբ հրապուրէր ուրանալ զՔրիստոս։ Իսկ նոքա վառեալք աստուածային սիրով՝ համարձակ պատասխանեալ ըզբարւոք դաւանութիւնն, «թէ, Քրիստոնեայ եմք. և զլոյսն Աստուածգիտութեան՝ որ յինքն ունի զանմահութիւն, ո՛չ փոխանակեմք։ Զոր տեսեալ չարին զնոսա արձանացեալ ի սէրն Քրիստոսի, հրամայեաց սրով սպանանել։ Իսկ նոքա արտասուալից պաղատանս առ Աստուած մատուցանէին՝ խառնել զնոսա ի թիւ վկայիցն՝ որք խաչակցեցան նմա։ Եւ իբրեւ եհաս դահճին՝ ուղղէր երէց եղբայրն նախ զկրտսեր եղբայրն զենուլ, զանգիտեալ ի մանկական տիոցն. և ասէր. «Եղբայր ցանկալի, նախ դու պատարագեա Քրիստոսի յուսոյն մերոյ՝ զենումն բանաւոր. զի նա վասն մեր եղեւ մեռեալ, և վերագրեաց զմեզ ի կեանս»։ Եւ այսպէս յառաջեալ նորա, զկնի ապա և երէցն, պսակեցան արեամբ։ Այսպէս վկայեցան բազում վկայք ի Գուրին քաղաքի, ի ձեռն անօրէն ոստիկանին Յուսուփայ. որ զանուն իւրաքանչիւր ուրուք գրեալ է ի դպրութեան կենաց. որոց տարեւոր տօնախմբութեամբ կատարի յիշատակն ի 20 Նոյեմբերի[2].

1. Վաղուկ ձիեր։
2. Տես զ'3 ծանօթութիւն 274 երեսի։

զի անխէթ հաւատով յաղթեցին խորամանկ չարին, և հատին զոստս մահաբեր պտղոց նորա. զի չէք ահաւոր՝ ուր սէրն հարեալ է[1]. որով վառեալ կոխեցին զմահ, և առեալ զպսակն լուսոյ՝ դասակարգեցան յորդիս լուսոյ վերին Երուսաղեմի: Իսկ ոմանք խաբեալ պատրեցան ի խոստմունս չարին՝ և վրիպեալ գտան. զի և ի մարմնի անարգեցան ի սով և յանարգանս, և զրկեցան ի յաւիտենական լուսոյն:

Այս է խաւարաբեր ժամանակն Հայոց: Եւ այս Յուսուփ՝ երկրորդ Թեւդաս[2] և առաջին ապստամբ յԱմիրալմումնեացն Տաճկաց: Յորում ժամանակի անապատ և աւերակ եղեւ երկիրս Հայոց. քաղաքաց քակել, և աւանաց աւերիլ, ցիր և ցան յայլալեզուս և յօտար ազգս բնակչաց աշխարհիս. ամայանալ եկեղեցեաց և թափուր մնալ յուխտէ պաշտօնէից և ժողովրդոց, և յամենայն բարեզարդ զարդոց անզարդացեալ եղեն: Եւ նոյն ինքն կաթողիկոսն Տէր Յովհաննէս փախստեալ երթայ[3] յերկիրն Յունաց, ի հանգստարան և ի մենաստան Սրբոյ Լուսաւորչին մերոյ, ի լեառն որ Մանեայ այրքասեն, ի Դարանաղեաց գաւառին՝ ի վանս Գառնըկայ[4]:

Զայս ամենայն տեսեալ Գագկայ Արծրունւոյ՝[5] որ էր առաջնորդ Յուսուփի, ի գիշերի միում փախուցեալ անկանի յաշխարհն Կորդուաց. և զաշ-

1. Որոյ սիրտն Աստուծոյ սիրով վառուած է՝ անոր վախնալու բան չկայ:

2. Յիշեալն ի Գործս առաքելոց, Ե. 36:

3. Վերոյիշեալ Պատմիչն, որ ինքնին իսկ յիշէ զայս:

4. Այլք՝ Գառնոյ կ'ըսեն, Գառնիկ եզնաւորն է, որոյ յայտնեցաւ Լուսաւորչի մարմինն:

5. Մեծոգի մեծաշէն իշխան. բայց կերպով մի մատնիչ քեռւոյն, Ա Սմբատ Թագաւորի Բագրատունւոյ, որոյ սպանչէն Յուսուփայ՝ առաւ Թագ առանձին Արծրունեաց Թագաւոր ըլլալու:

խարհն Վասպուրականի գաղթէ յԱտրպատական, մինչեւ անցանել չար ամիրային. և ապա շինէ դարձեալ զաշխարհն, Թագաւորեալ մասին Հայոց Վասպուրականի։ Այլ և եղբօրորդին Սմբատայ Աշոտ՝ խորհրդակից եղեալ նորին չարախորհ միջա-դին՝ Թագակալի ի Նմանէ ի տեղի հօրեղբօր իւրոյ։ Եւ այսպէս ամիրայն Յուսուփ հինգ ամ՝ յամեալ ի Հայս՝ սրով և սովով և գերութեամբ վանեաց զաշխարհս։

---

# ՄԻԱ

## ՍՈՎ ԵՒ ՍՐԱՑՈՒԹԻՒՆ Ի ԺԱՄԱՆԱԿԻ ՀԱԼԱԾԱՆԱՑ ՅՈՒՍՓԱՑ

### (ՅՈՎՀԱՆ ԿԱԹՈՂԻԿՈՍ)

Ի յափշտակութենէ թշնամեաց և յանարգէին անպտղութեանց, ապա և սովն եւս ի վերայ սաստկացեալ զօրանայ ուժգնապէս։ Վասն զի հուրն կայծակնացայտ որ տեղեաց ի մեզ, և սուրն անողորմ պատերազմողացն որ միշտ ի մեզ բղխէր ըղհատ մահու, մինչեւ յեօթն ամ ձգեալ ընդերկարեցաւ. և վասն այսորիկ մնացեալք պանդխտեցաք ի վրանս Կեդարու[2], և Թափրացաք և ունայնացաք ի սասացուածոց և ի բոլոր պարենէ ռոճկաց և ի չգոյէ կերակրոց։ Ապա այնուհետեւ սկիզբն առնոյր սովն կորստական, և ապականէին առհասարակ Այրարատեան աշխարհի ծնունդք՝ ի քաղաքս և ի գիւղս և յագարակս, իբրեւ զդիակունս զունատեալս և քքեալս դանդաչէին։ Եւ այլք ի

1. Միայն մէկ գրով նշանակած ըլլալով թիւն՝ Ե կամ Է, ոմանք հինգ ոմանք եօթն տարի համարին։
2. Ս. Գրոց խօսքը յարմարցընէ իր ազգին։

փարթամաց՝ առ սակաւ սակաւ զիւրեանց ստա-
ցուածս վատնեալք ընդ աւուրն պարենի, ի վերջին
անանկութիւն հասանէին և յաւէտ յաղքատութիւն
և ի կարօտութիւն: Եւ կէսք՝ ի խոտորուտ կեանս
ի հարկէ սովոյն բերեալք, զմոլեխինդն և կամ
զայլս ոմանս վնասակար բանջարս՝ ըստ դիպաց իմն
ճարակեալ՝ յապականութիւն մահու հասանէին.
զի վտանգ սովոյն հասարակ շարժէր ի կարօտու-
թիւն, զամենայն ինչ ի կերակուր նոցա բերել:
Իսկ ոմանք զսիրելի որդեակս իւրեանց՝ ընդ սա-
կաւիկ ինչ ռոճկաց՝ թշնամեացն վաճառեալ ի տագ-
նապէ վտանգին, ոչ յիշեցան նոցա աղէկտուր
խնամք ծնողականաց: Եւ կանայք պատուականք ի
հարկէ կարօտութեանն՝ զքօղումն ի գլխոց մերկա-
ցեալ և զհանդերձս յանդամոց, առանց ամօթոյ ի
հրապարակս ելեալ, առ տագնապին մուրացիկ շրր-
ջէին: Եւ ոմանք ծիւրեալք և ծնգեալք և ցամա-
քեալք՝ ի տարակուսանս սովոյն՝ իբրև զմեռեալ
պատկերս դանդաչէին, և թօթափեալք այր անդր
սակս նկօղմանն և ընդ միմեանս հարեալք՝ կործա-
նէին զիրեարս: Եւ այլք իբրև զդիակունս բազ-
մակոյտս ի հրապարակս անկեալք և լքուցեալք՝
մինչ շունչ նոցա մերձ էր յելանել, աղաչէին զան-
ցաւորս ոմանս, զի կարկառեսցեն նոցա նշխար ինչ
կտորոյ հացի, և այնպէս զրաւէին ի կենացս: Իսկ
եթէ ի մեծատանց ոք տալով ինչ տայրն նոցա
ողորմութիւն, յետոյ յանողորմ բարս խստութեան
ընդ մուրացիկսն դառնային, զի խղճէին եթէ զուցէ
լինիցին և նոքա իբրև զնոսա: Բարձեալ էր ապա
յամենեցունց ի նոցանէ սեղան ուղղել. զի ոմանք
առ սաստիկ կարօտութեանն՝ զցորեանն իբրև չէր
աղացեալ կամ թրեալ՝ ուտէին. և այլք՝ ի կրակա-
րանաց զաղահումն յափշտակեալ ուտէին: Զար-
չարանաց էր կերակուրն՝ զոր թէ գտանէին երբէք.
և արտասուաց արժանի՝ տարժանական և ողորմելի
ճաշակքն: Գողումն և սոսկումն և սարսափումն
աստանօր զիս պատեալ պաշարէ ի բանէս, որ

առաջի կայ ասել. զի մարդք հաւատարիմք ստու-գեցին մեզ զբանս ճշմարիտ. Եթէ մարք ոմանք զասվամահ որդւոց իւրեանց մարմինս՝ ի կերակուր իւրեանց պատրաստեցին. և այլք զընկերակիցս իւրեանց զաղտակծութեամբ ինն իբրեւ զոչխար ի սպանդ վարեալ՝ կերակուրս իւրեանց պատրաս-տէին:

Եւ այս անդր եւս քան զվրէժխնդրութիւն Ե-րուսաղեմի, արժանի անհնարին ողբոց գործս ինձ տեսեալ լինի. վասն զի ձեռքն կանանց ողորմա-ծաց եփեցին զմանկունս իւրեանց, և եղեւ նոցա ի կերակուր: Եւ որ ի գիրկս գրգեալք և գգուեալք էին՝ գիրկս արկեալ աղբեւաց՝ թարթափեալք թուա-լէին և ուտէին իբրեւ զկերակուր: Կցեցան լեզուք դիեցիկ մանկանց ի քիմս իւրեանց ի ծարաւ իւ-րեանց, զի ոչ գոյր նոցա դիեցումն ի մարդ: Տղայք չորաբեկ հացիկ խնդրէին՝ և արտասուք ընդ ծնօտս նոցա թորէին, և ոչ ոք էր որ տայր նոցա. և այն-պէս ապա պակասեալ թափեալ հանեալ զոգիս ի ծոցս մարցն իւրեանց, ընկեցեալ ցրեալ ցնդեալ կային՝ առհասարակ ծնեալքն և ծնողքն ի մէջ քա-ղաքաց: Այսպէս մատնեցան ահա որդիք ժողո-վըրդեան մերոյ յապականութիւն՝ ի յանօրէնու-թեանց մերոց, և ճաշաքաղ եղեն ի վայրկեան ժա-մանակի:

---

## ՄԻԲ

### ՈՂԲՔ ՅՈՎՀ. ԿԱԹՈՂԻԿՈՍԻ
### ՅԱՂԷՏՍ ԱՇԽԱՐՀԻՆ ԱՌ ՅՈՒՍՓԱԻ

Սիրտ իմ տանջեալ տագնապի տարակուսանօք, և հաշեալ մաշի փոր իմ ի լալոյ. զի յանօրէնու-թեանց մերոց՝ այցելութիւն Տեառն անտես արար զմեզ, և ի սեւաթոյր տխրութենէ գործոց մերոց՝

խեթիւ հայեցաւ ի մեզ արեգակն ճշմարիտ, և մատնեցաք ի ձեռս ծանրասրտի երկրորդն Փարաւոնի և դառն գործավարաց նորա, որք առաւել եւս քան զանուր կաւափաղաղ աղիւ[1] աղիւսագործութեանն՝ վէրս ի վերայ եդեալ՝ կործանեցին զմեզ անհնարին հարուածովք ի վերայ հարուածոց։ Վասն զի իբրեւ զմրրիկ հողմոյ շնչեալ ի մեզ մահառիթ իմայէլեան օդն դառնաշունչ, և ըստ նմանութեան փոշւոյ պտուտաբար ցնդեալ՝ ի բաց զմեզ տարագրեաց ի մեր բնակութենէ. և ըստ սաստկութեան ուղխից յորձանաց հեղեղեալ ողողեալ՝ արբոյց ըզհոգի յիմարութեան, առհասարակ իբրեւ զոչխար ի սպանդ զմեզ վարատեալ։ Եւ արդ, սակս այսորիկ որ յիմումս շտեմարանի մտացս է տեսութիւն չարժութեան, շլացեալ և ունայնացեալ՝ ոչ բաւէ բանիւ լնուլ զնպաստ խորհրդոցն՝ ըստ զգալի աղէտից հասելոյ կալելոյ զմեզ։ Սակայն զհամարձակախօսն Եսայիաս յօժանդակութիւն ինձ բերեալ, զի իմաստասիրել և ողբալ ուսուսցէ զխըղխայթս մերձաւոր հարուածոց բարկութեան և խրատու ողորմութեան Տեառն. «Զարթիր, ասէ, զարթիր, և արի կաց. և դիտեա ինձ աստ, Երուսաղէմ, զոր արբերն՝ զբաժակն կործանման, զբաժակն սրամտութեան, զոր արբերն և թափեցեր, և ոչ ոք է յորդւոցն քոց՝ որ զքեզ մխիթարէ»։ Եւ ըստ միւսումն, «Ակնկալեալ՝ թէ ո՞ ընդ իս տըրտմեսցի, և ոչ ոք գտաւ մխիթարիչ ինձ։ Եւ ըստ այլումն, թէ, Ո՞վ եղիցի տրտմակից ինձ. մի թէ բեկո՞ւմն քո, կամ սասանութիւն սովոյ և սրոյ»։ Զի արդարեւ իսկ, ըստ նախագուշակ տեսողին, ոչ կարեն մխիթարել զմեզ որդիքն մեր տարակուսեալք և գերեալք և հալածեալք և սպանդեալք, և ննջեալք ի կիրճս ամենայն ճանապարհաց։ Եւ յիրաւի, ի մեզ բղխեաց այսպիսի մահաշշուկ հառ

1. Շաղուած կաւը աղիւս շինելու համար, ինչպէս կ'ընէին Հրեայք յԵգիպտոս, Փարաւոնի բռնութեամբ։

դառնութեան. զի որովք պատուեցաքն և վայելեցաք յօրհնութիւն քաղցրութեան կամացն Աստուծոյ, ոչ ծանեաք զնա արժանապէս՝ յորմէ զբարին կթեցաք, և ոչ գոհացաք զտուողէն մխիթարութեան, որով զպարտն պահանջէր. և սակս այսորիկ ապա նաքիմք և խրատեցաք. և ապա եօթնպատիկ հատուցան մեղք մեր ի ծոցս մեր։

Սուգ առնու և ընդ մեզ մարգարէութիւնն, ասելով. Հրէաստան կործանեցաւ, և խոնարհեցաւ փառքն Սիօնի. վասն զի թողան միանգամայն իսկ ի խնամակալութենէ Բարձրելոյն՝ աստուածաշէն եկեղեցիքն Քրիստոսի, իբրև զտաղաւար յայգւոջ, և իբրև զհովանի մրգապահաց ի մէջ սեխենեաց. և փայտատօք և մրճօք կործանեցին զդրունս նորա, և հրկէզ արարին զսրբութիւն նորա, և պղծեցին զխորան անուան նորա. և ժառանգութիւն Տեառն կոխեցաւ ի զարշապարաց պղծոց, և ի խոզական երկրապիշ անցաւորաց ճանապարհի. և անբիծ արիւն կղերց եկեղեցւոյ սարապարտ հեղաւ իբրև զջուր՝ շուրջ զԵրուսաղէմաւ. և ի տանէ առաւել քան յօտարաց բուսաւ արմատ դառնութեան։ Զի կարծեցեալ սիւնք ոմանք ապստամբեցան ի Տեառնէ, և զինեալք զլեզուս իւրեանց՝ նանրութեամբ և անօրէնութեամբ՝ խօսեցան խոտորնակս և թիւրս առաջի իշխանաց մերոց. և խաբեբայք և պատրիչք փոխաբերեցան ընդ արանց արդարոց և ստուգաբանից. և յաչս զօրավարաց մերոց և գլխաւոր իշխանաց՝ անարգեցան ստոյգ հովիւք հօտի Տեառն, և ստացան հովիւս բազումս ի զայթակղութիւն իւրեանց։ Եւ սակս այսորիկ ստացաք նախատինս յարանց ստոց և անզգամաց, և եղաք ի կատականս ծաղու ազգաց՝ որք շուրջ են զմեօք. և հօտք հանդերձ հովուօք յափշտակեցաք ի խստաց ապստամբողաց, ի գերութիւն մատնեալք և վաճառակուր լեալք։ Իսկ այլք ոմանք՝ սուրբ ձեռօք և ամբիծ սրտիւք՝ բազում զանից և զելարանաց և կապանաց և խոշտանգանաց և բան-

տից և անհնարին նեղութեանց զփորձ առին. և բարձան յերեսաց անիրաւութեանց այնոցիկ՝ որք բարձրացուցին իսկ զանարգանս մոլորութեան յանձինս իւրեանց: Եւ դիակունք ծառայից Աստուծոյ՝ գէշ թռչնոց երկնից արկան, և մարմինք սրբոց Բարձրելոյն՝ ի կերակուրս գազանաց տուան. և ոչ ոք գտաւ որ յինքեան բերէր զնախանձ Տեառն ամենակալի, և ի բաց տարեալ արգելէր ի տանէ Տեառն զմշակսն անիրաւութեան. և կամեցողք այսպիսեացս ապա յիրաւի զանարգութիւն մոլորութեան յանձինս իւրեանց կրեցին:

---

# ՄԻԳ

## ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ Ի ԲԱՐՁՐ ՀԱՅՍ

Իսկ իմ չուեալ գնացի ի գաւառն Դերջան. և ամսօրեայ աւուրս ինչ ի նմա զետեղեալ, թէպէտ և ստէպ ստէպ հրաւիրակն կոչէր սիրալիր կամօք՝ երթալ ի պալատն առ կայսր, սակայն ես ոչ կամեցայ. զմտաւ ածեալ, թէ՝ գուցէ գտցի ոք և ընդ ակամբ հայեսցի, զ'անդ երթալն իմ՝ ի քաղկեդոնիտոն յարակցել ինձ համարեալ. և ապա այսպէս ոչ կամեցայ գնալ ի գայթակղութիւն մտաց տկարաց[1]: Ապա ըստ ըղձակերտ խմոյս կամաց՝ չոգայ յԱյրն սուրբ, յորում և նախ իսկ սուրբ կինն Մանի[2], և ապա զկնի՝ երիցս երանեալ Լուսաւորչին մերոյ ի նմա բնակեալ. ուր և տկար մարմնովս զանմարմնոցն բերեալ յինքեան զվարս՝ յաղթեցին

1. Եւ քո միտքդ չեն ազատ ի տկարութենէ, ո՜վ բարեմոյն Հայրապետ:

2. Հռիփսիմեանց ընկերն. որոյ բնակութեանն համար՝ Մանեայ այրք կոչեցաւ տեղն:

բանութեան կարեաց. և անդր քան զհրամանն՝ զհանդէս առաքինութեան լցին, որբափայլ կրօնիւք կենսականօք, և անհամեմատ երանութեանցն արժանացեալք փառաց, պարծանօք պսակեցան ի Քրիստոսէ: Տեսի և անդ փոքր ինչ փորուած այրի ի ծործորս քարանձաւի միոյ, դժուարամուտ դրամբք, և անհամբոյր առ ի բնակել, սակս քարաժեռ խոշորութեանն, յորում և տէրունեան սեղան ի նմա կանգնեալ միշտ, Քրիստոսի բնակելոցն ի նմա նուիրականաց պատարագաց:

Զկնի ապա ահիւ սրտի չոգայ կացի ընդ քարաժեռ վիմին, յորում և լուսաւորութեանս մերոյ առիթն՝ երկօրեայ ի նմա աւկացեալ՝ սպասէր կատարման Սրբոյն Մանեայ. և անդ ամենազօր տէրութեանն Քրիստոսի երկրպագեալ՝ չոգայ ի բարեհամ Աղբերիկն, յորմէ զովացեալ Սուրբքն լինէին ի տապոյ քրտնահար երկոցն և հոգեւոր մշակութեանցն. որ և երաստոյ[1] վիմօք պարփակեալ շուրջանակի և դրամբք պատեալ. և յորոյ տեղւոյ մատռուակեալն իսկ էր յարբեցուցն իւր սուրբ և ամբիծ ձեռն Գրիգորի: Ի նմին տեղւոյ և ես թշուառականս՝ ախով[2] կամօք իմովք արժանի գտայ ճաշակել ջուր՝ յաղբերէ փրկութեան Նորոգողին զմեզ[3]. զորոյ և զաթոռն իսկ ընկալայ, երանի՛ թէ և զօրինակն:

Առի հող օրհնութեան և ի փլուզեալ դարակէն, յորում պատուական գանձն հոգեւոր ի հովուաց էր ծածկեալ. յորոյ վերայ շինեալ էր եկեղեցի՝ նախ քան զայս՝ իմով հրամանաւ, ի մահարձանաց ինչ կրով ձուլածոյ[4]: Տեսի անդ ի ծործորս և յա-

1. Կարծր քարերով պատեր էին հաւատացեալք՝ զԱղբիւրը, ուսկից խմեր և Լուսաւորիչն մեր:
2. Յօրինակին ափոց գրուած է:
3. Լուսաւորիչ՝ քրիստոնէութեամբ նորոգող Հայոց:
4. Այն լեռնակին գոգը՝ ուր նախ թաղուեր է Ս. Լուսաւորիչ. այն ինքն Յովհ. կաթող. եկեղեցի մի շինել տուեր է՝ մեծ մեծ հին քարերով և կիրով հիւսած:

մուրս քարանձաւաց՝ բնակեալ արս կուսակրօնս, խարազնազգեացս, գետնախշտիս, բոկագնացս, խոշորաճաշակս, մշտամռունչ յաղօթս և յաղերսալի պաղատանս. աշակերտք արդար վաստակոց և ծնունդք առաքինութեան: Եւ սոքա ոչ թերեւս միախուռն ի միասին բնակեալք, այլ ցան և ցիր առ ստորոտով լերինն կալեալ կայանս, որք և բազմաշխատ քրտամբք երկոց իւրաքանչիւր ոք զհարկաւոր պէտս մարմնոց վճարէին:

Եւ իմ ապա այսպէս ի նոցանէն օրհնեալ՝ չոգայ ի գիւղն Թորդան, ի տեղի գբօսանաց Պարթևականն սրբոյն Գրիգորի, յորում գանձք իմաստութեան և անմահութեան ծածկեալ կան Աստուծոյ, կենդանի ոսկերք Սրբոցն. որք անցին ընդ կարգս աշխարհիս՝ ամենայն ճշմարտութեամբ, և յանմատոյց լուսոյն փայլեցին իբրև զարեգակն, և հրով Հոգւոյն վառեալք ջահազարդեցան դամբարափայլ անշէջ լուսով ի փառս Աստուծոյ: Եւ անդ երեկօթս արարեալ, և երկրպագութիւն տերունեան հատուցեալ. հատի նշխար ի ծառոյ անտի Հացռոյ[1], զոր Սրբոյ Լուսաւորչին էր տնկեալ իւրովք ձեռօքն: Եւ ապա ընդ կրունկն անդրէն ի լեռնակողմն ի մենաստանսն դարձեալ, և ամիս իբրև ինն ընդ նոսին աղօթակցեալ. հրապուրեցայ ի շողոմարար շողմոգեալ բանից մերոց Թագաւորացն, և գաւաճանեալ[2] ի խոստմանց նոցա բարեաց՝ որ ըստ Աստուծոյ, դարձայ յերկիր Հայոց:

1. Հացի կամ Հացենի վայրենի ծառ, Frêne ըստ Փռանկաց. բայց գեր քան զընտանի համարելի, և արդարև որբենի, յորմէ՝ իբրև որբազան նշխար կտրեր և առեր է Պասմող կաթողիկոսն: Նիւթական նշխարէն ո՞րքան աւելի հիանալի է այն Մեծ անձին՝ յետ աշխարհք մի և ազգ մի լուսաւորելու, զՏրդատ մկրտող և հարիւրաւոր եպիսկոպոսօծող ձեռօք՝ ծառ ու ծաղիկ դարմանելն՝ իր կենաց վերջի օրերում:

2. Բագրատունի և Արծրունի թագաւորաց հրաւի-

# ՄԻԴ

## ՇԻՆՈՒԱԾՔ
## ԳԱԳԿԱՑ ԹԱԳԱՒՈՐԻ ԱՐԾՐՈՒՆԻՈՑ ՑՈՍՑԱՆ[1]

### (ԹՈՎՄԱ ԱՐԾՐՈՒՆԻՈՑ)

Այր արժաթասէր՝ սրով գելուլ զպարանոցն լաւագոյն համարի, քան եթէ դունգ մի տուժել յարծաթոյն[2]. և եթէ զարեգակն տեսանիցէ արձակելով զճառագայթսն ի խնամս տիեզերաց, ըստ հրամանի խնամողին Աստուծոյ, ընդդէմ Նորա ասէ. Ընդէ՞ր փոխանակ լուսոյդ ինձ ոսկի ոչ բղխես. և եթէ աղբիւր ակնավճիտ տեսանիցէ, ասէ, Ջեմ ծարաւի, և ոչ երբէք արբից ի քէն ջուր. մատո՛ ինձ արծաթ[3]: Իսկ բարք անարծաթասէր գոլով թագաւորին, զուտ և մաքուր մնալով յայսպիսի մեծավէր ախտէ, խնամ ածէ ոչ միայն անձին ըզբօսանաց, այլ և բնաւ աշխարհիս Հայոց. տայ զմթերս գանձուց ի ձեռս գործավարաց և արուեստաւորաց, պարսպաւորել ամրութեամբ զքաղաքս գաւառս, և զանառիկ ամրոցս բերդից, ի գաւառս և ի միջոցս երկրի, ի պէտս ապաստանի փախուցելոց ի հինից և ի խռովութեանց օտար ազգաց: Յորոց ի բազում ամրոցաց պարսպելոց

բանօք և խոստմամբք՝ կամայ ակամայ յետ դառնայ ուխտաուրջքիկ կաթողիկոսն:

1. Ինչուան հիմայ ծանօթ աւան մ'է Վանայ ծովու հարաւային եզերքը. անունն յայտնէ՝ որ շատ հնուց այն կողմերու տիրող իշխանութեան քաղաքն է եղած, նախ քան Արծրունեաց թագաւորելն:

2. Աւելի կ'ընտրէ գլխատուիլ քան տակ մի տալ:

3. Գեղեցիկ իմաստք ագահութեան դէմ, անշուշտ հին իմաստասիրի մի խօսք է:

յիւր անուն, յերկուս տեղիս կարի իմն յոյժ հաճեալ նուաճէ, ակնակառոյց լինելով. մինն առ եզերբ ծովուն, որ է աւանն Ոստան, ի գաւառն Ռշտունեաց, որ է յոյժ բարեխառն, ի չորից ծագաց երկրի օդոց առ հասարակ ի նա շնչելով. նա և ծառովք պտղաբերովք սաղարթեալ, և այգեւէտ բազմութեամբք՝ յոյժ վայելչացեալ զարդարի. բղխեն և աղբիւրք բարեխառնք չուրջ զքաղաքաւն, օգնականութիւն մատուցանելով մարդկան ի բազում պէտս։ Այլ և ի հարաւակողմն կուսէ ամրոցին մերձ կայ բարձրաբերձ լեառնն Արտոս, որ ի գարնանայինն հասարակաւորութենէն մինչեւ ցաշնանայինն եղանակ՝ ամբարեալ պահէ յինքեան ըզդալարութիւն արմատոց և ծաղկանց, և զձիւնահորս ամբարձեալ[1] ի պէտս թագաւորաց, և ամենայնի որ ցանկացի ոք առնուլ։ Նա և ի գլխոյ լերինն հոսեալ իջանեն գետք սահանակարկաջք յորդահոսք, որով ոռոգանի երկիրն առհասարակ. որք և ի ծով անկանելով՝ բղխեն ձկունս մանունս առ ի պէտս վայելչութեան բնակչաց աշխարհին, և ամբարեն ինչս բազումս ի գանձս թագաւորաց. զոր և արքայի առեալ նուիրէ ի դարմանս աղքատաց։ Եւ ինքն գագաթն ամրոցին է ծովահայեաց և յոյժ վայելուչ. եթէ շարժեսցի ծով յուզեալ ի հողմոց, ծաղկաձեւ ալիքն զբօսացուցանողք և վայելուչք երեւին. և եթէ մաքուր յօդոյ լինիցի, զամենեցուն աչս գրաւէ՝ զիւրն տեսանել ծաւալումն. վասն որոյ և արքայի ձեռն արկեալ շինէ ի նմա տաճարս և սենեակս և փողոցս հրաշալիս, պատկերակերպս, և ազգի ազգի յօրինուածս. զոր ոչ բաւեմ պատմել։ Պարսպէ և զծովակողմն՝ զօրաւոր վիմօք դնելով զհիմունսն յանհնարին խորութեան. շինէ և ի գլուխ պարսպին ընդդէմ ծովուն՝ տաճար մի ճեմարանոց ոսկէզարդ և պէսպէս պաճուճեալ դեղովք, արեգակնահրաշ ճառագայթաձեւս ի խտղը-

1. Աւելի յարմար էր ամբարեալ կարդալ։

տանս աչաց և յուրախութիւն սրտի ինքեան և իւրոց արժանեացն։ Իսկ զդրունս կազմեալ կամարաձեւս, օդաբերս, զովացուցիչս, միանգամայն և լուսանցոյցս շողախաղացս․ որք ի ծագել և ի մտանել արեգականն՝ փայլատակելով ի վերայ ծովուն, շող գործեն ի սիրտս տաճարին, և յերփն յերփն հրճհրճելով[1] զդրօշեալ պատկերատիպսն և զանազան յօրինուածսն, զմիտս հիացուցանէ զտեսողացն, և ի վեր անդր անցանէ քան զպատմողաց զխօսութիւն։ Իսկ մեր ի բազմաց զսակաւն յիշատակելով, ահա ասացաք որ ինչ յաղագս Ոստանն աւանի։

---

# ՄԻԵ

## ՇԻՆՈՒԱԾՔ
## ԳԱԳԿԱՅ ՅԱՂԹԱՄԱՐ, ԵՒ Ս. ՓՐԿԻՉ ՏԱՃԱՐՆ

(ԹՈՎՄ. ԱՐԾՐՈՒՆԻ)

Ընդ ամենայն հիւսիսականս և ընդ արեւելս ի հետիոտս գնալով, տեսաք զգործ քաջաց և նախնեաց․ միայն զմերս գրաւեաց զմիտս և զտեսութիւն՝ հրաշակերտն և քան զբազումս նորանշանն և զարմանալին Աղթամար[2]․ որ թէպէտ և յառաջ քան զայսոսիկ ի Դաւրայ Սախոռոռնեոյ[3], և յԹա-

1. Գեղեցիկ նկարագրութիւն արեւու ճառագայթից՝ ալիքներու վրայ և շէնքերու զարդերուն վրայ փոփոխակի փայլփլալուն։
2. Հին Հայոց հնագոյն բնակարանաց և շինուածոց մէկն, նշանաւոր անուամբ, որ կրնայ պէսպէս մեկնուիլ։
3. Հայոց իշխանապետ Է դարու կիսէն առաջ։

շառոոյ[1] ռուշտունեայ, և ի Թադափրանեայ[2] ասի ա-ռեալ չինուԹիւն, որ զԳաղեստինացւոց աշխարհն Համդերձ Հիւրկանեաւ քաՀանայիւ գերեալ ած բնակեցոյց յերկրիս մերում, սակայն ամենեքեան սոքա իբրեւ ի տագաւարի, և կամ որպէս ի Հիւղս մրգապաՀաց բնակեցան՝ յերեւելի յայնմիկ կղզւոյ կոչեցելոյն ԱղԹամար, մինչեւ յաւուրս մեծի ար-քային Հայոց Գագկայ. որ քաջակորով գիտու-Թեամբ նայեցեալ ի տեղւոյն զբօսանս, և ծանու-ցեալ զնա ապաստան լինել աշխարհի՝ Հենից Թշնա-մեաց, ձեռնարկէ Հիմն արկանել զնա[3] ահեղ իմն և զարմանալի Հիացմամբ. Հրաման տուեալ բազում արուեստաւորաց և անԹիւ մարդկան զՀատեալ վէմս ծանունս և դժուարակիրս՝ Հոսել ընկենուլ յատակս ծովուն անՀնարին խորուԹեանն: Եւ ժամանակաւ ինչ այսպէս ջան յանձին կալեալ մեծի արքային, և յանկարծակի եկն եկաց կանգնեցաւ քարայա-տակն ամբարտակ՝ կանգունս Հինգ ի վերայ բար-ձրացեալ մկանաց ծովուն. որ մտայն աչօք իբրեւ ի ցամաքի չարայարեալ տողադրէ զՀաստակառոյցն վիմաց կարգս: Յորոց վերայ լար եդեալ ձգէ ըզ-պարիսպն շուրջանակի՝ իբր ձիարշաւանօք[4] Հինգ.

1. Ռուշտամ գրուած և տպագրուած է՝ սխալմամբ, զի միջին դարուց Հայերէն ձեռագրաց Մ և Տ տառք՝ նմանուԹիւն ունին տեսակ մի ձեռագրաց մէջ. Ռըշ-տունեաց ցեղի ծանօԹ անունն այլ զայս վկայէ. որոյ նախաՀայրն այլ յայտնուի Ռուշտա կոչուած ըլլալ. բայց երբն անյայտ. սակայն յառաջ քան զԲարզա-փրան յիշուելով (որ Ա Արշակունի Տիգրանայ զօրա-վար էր), գոնէ Վաղարշակայ ատեն էր, Հաւանօրէն աւելի այլ առաջ:
2. Յովսեփոս Եբրայեցին և մեր Խորենացին յիշեն զայս:
3. Ըսել է՝ Հիմնարկել զնա կամ Հիմն արկանել:
4. Նոյն է ասպարէզ կոչուածն. որոյ չափն ըստ բանագիտաց՝ աւելի կամ պակաս՝ Հաւանագոյն է 170—180 բնաչափ (մետր):

և պարիսպն է հրաշակերտ, աճեղակերպ բարձրաբերձ լայնանիստ բրգամբք և բարձրացեալ աշտարակօք զարդարեալ, անկիւնաւոր, խորանանման տախտակաձեւ յենքեան ունելով գահոյք զբօսանաց. յորում հանդերձ որդւովք և ազատակոյտ զօրօք՝ միշտ ուրախանայր արքայ: Իսկ և զգլուխ պարըսպին ածեալ ի կիրճս դժուարամուծս քարանձաւին, ի համբոյրս միմեանց մերձեցուցանէ. ի շըրթունս խորայատակ հիմանց ծովուն՝ դնէ դրունս անհաւորատեսս հաստահեղոյսս բեւեռապինդս. որով և զմասն ինչ ծովուն ի կղզին կոյս հատանելով[1], հրաշալիս իմն ներգործեաց[2]. բազում նաւաց յո-

1. Կղզիին մէկ կողմը փորելով՝ գոգ մի բացեր և նաւահանգիստ ձեւացուցեր է:

2. Որչափ և պատմիչս մեծաբանութեամբ ստորագրած ըլլայ Գագկայ շինածները, անտարակոյս է և այն գոռոզ թագաւորին մեծագործութիւնն. և թերեւս ոչ պակաս քան ի ցամաքի՝ Վանայ ծովուն մէջ ըրածն, և զծովն առջինէն աւելի նաւարկելի ընելն. Նշանակութեան և քննութեան արժանի է այս. վասն զի ինչուան հիմայ ծովուն հանդարտութեան ատեն՝ մէջն երեւան ձեռագործք: Այս բանիս յանկարծագիւտ նշան մի կըլնայ համարուիլ՝ Գագկայ կնոջ (որ արաբերէն Թագուհի բառով Մըլքէ կոչուի), գրել և կողքերը ազնիւ նիւթերով զարդարել տուած՝ հազարամեայ Աւետարան մի. որոյ սկզբան համաբարբառից կամարաձեւ խորանաց մէջ՝ կան նկարք նաւակաց, նաւավարաց և ծովային ձկանց և ժժմակաց. մէկ կամարի մի մէջ այլ կայ արքունի նշան, Ծաղիկ մի է միջի երկու առիւծուց: Թողլով յարմարագոյն տեղւոյ և ժամանակի այս պատուական Աւետարանի կատարեալ ստորագրութիւնն և լուսաւորութիւնը, կ՚ուզեմք միայն այդ յիշեալ նշանակաւոր խորանաց մին կամ միւսն եւս՝ ճշգրիտ նմանութեամբ ներկայացընել այս գործոյս մէջ. որ և կըլնայ ճաշակ մի ընծայել՝ մեր Թ դարու վերջի կամ Ժին սկզբան ազգայնոց արուեստագիտութեան. վասն զի այդ նկարքն հայկական բնատիպ ունին և ոչ յունական, որ և աւելի յայտնուի Աւետարանչաց պատկերներէն և ուրիշ մի:

ըննեալ խաղաղ և անքոյթ նաւահանգիստ, բարձրագոյն հրաշակերտեաց քան զԱղեքսանդրին ի Մակեդոնն քաղաքի։ Եւ որպէս ինձ թուի՝ զանցոյց զարմանալեօք զՇամիրամեան փորուածոյ սենեկօքն, և զամբարտակաւ[1] գետոյն՝ որ առ ստորոտաւ լերինն Վարագայ. զի նորայն գոնեա ի վերայ ցամաքի, իսկ սա ի մեծ[2] խորոց ծովուս արուեստակեալ, հարստահարէ զամենայն միտս և զգործս իմաստնոցն յառաջ քան զինքն եղելոց։

Եւ այնուհետև ժողովեալ ի դուռն արքային իշխանաց և տերանց, ազատաց և ռամկաց, եպիսկոպոսաց և կրօնաւորաց, զի ամենեքեան, ո՛ն անդր, փութապէս շինուածս և ձեռակերտս հաստատեացեն, հրաման տայցէ զի լինիցի տեղի ապաստանի ամենայն հինից ի թշնամեաց եկելոց։ Եւ թագաւորն գթացեալ՝ ոչ արգելու զխնդրեալ պարգեւսն. և զկնի հնգից ամաց յորմէ հետէ սկսաւ շինել, պայծառացեալ բարձրացաւ շինութիւն քաղաքին առաւել քան զառաւել։

Յայնժամ և իւր իսկ արքայի ամենիմաստ հասողութեամբն, հանդերձ բազում արուեստաւորօք զլար ճարտարութեան ի ձեռն առեալ գծել, միանգամայն և գծագրել նշանակել առ ստորոտով լերինն, որ է գագաթն կղզոյն, զտեղիս զբօսացուցանողս վայելչաւորս, ըստ արժանի կայենից արքայական իւրոցն հանգստեան՝ ձգելով պարապունս, յարդարելով զփողոցս և դարս դարս դարաստանաց, և զահս ըստ գահից տէրութեանց, և բուրաստանս և պարտէզս բուրաստանաց և ծաղկոցաց որոշեալ հովիտս. զորս վաղվաղակի ածեալ ի կա-

1. Խորենացին այլ յիշէ զասոնք. բայց Թովմաս աւելի ստուգապէս, ականատես անկասկած. աւելի զարմանալին է՝ որ մեր օրերում և այս իմ գրածիս ատեն այլ, հետաքննին եւրոպացիք կու գտնեն այդ շէնքերու հետքեր, ով այլ ըլլայ շինողն։
2. Թերեւս ի մէջ կարդալու է։

մեք կարասցէ։ Վասն զի են ի Նմա ոսկեզարդ գահոյք, յորս բազմեալ երեւի արքայ Նազելի ճոխութեամբ, շուրջ զիւրեաւ ունելով պատանեակս լուսատեսակս՝ սպասաւորս ուրախութեան. ընդ Նմին և դասս գուսանաց, և խաղս աղջկանց, զարմանալոյ արժանիս. անդ են սուսերամերկաց հոյլք, և ըմբշամարտաց պատերազմունք, անդ և դառք առիւծուց և այլոց գազանաց. և անդ երամք հաւուց զարդարեալք ի պէսպէս պաճուճանս. զոր եթէ զամենայնն որ ի Նմա գործք՝ ի թիւ ոք կամիցի արկանել, բազում աշխատութեան պէտք են անձինն և լռողաց։ Եւ է փառք տաճարին ահեղ եւս և զարմանալի. եդեալ են ի Նմա դրունք հաստածոյք մանր յօրինուածով և հրաշալի գեղգեղմամբ. ի բանալն իւրեանց երկբացիկ են, օդաբերք զովացուցիչք, իսկ հուպ առ միմեանս գոլով՝ երեւին իբրեւ զմի պատկեր։

Պատմեաց մեզ և հաւատարիմ ոստիկան մի ի գործաւորաց քաղաքին, եթէ եմուտ ի շինուած տաճարին՝ երկաթ լոերս իբրեւ երկերիւր հազար. և հաւատապէս ճշմարտութեամբ նուազեաց զասելն՝ քան թէ առատութեամբն յաւելեաց ի բազումս։ Իսկ և նիստ փառաց տաճարին՝ յամենայն կողմանց գաւառին՝ ի մէջ քաղաքին երեւի իբրեւ զմեծ մի բլուր, ոչ ինչ նուազեալ բարձրութեամբ քան զքարանձաւ ծայր կղզոյն։ Պարագէ անմերձենալի ամրութեամբ և զծայրս ամրոցին. և շինեալ ի նմա շտեմարանս մեծամեծս և համբարանոցս, միանգամայն և տունս գանձուց և զինուց և ասպազինաց անհուն բազմութեանց։

Այլ եթէ զամենայն զզարդ շինուածոյն, զոսկեզարդ փողոցսն և զգումբէթակայս խորանայարկսն, և զզանազան տեղիս գահոյիցն, որք առաւել այլակերպութեամբ մի քան զմի գերահրաշապէս փայլեն, և ըստ արժանեացն մանրամասնաբար գովասանել ոք կամիցի, կարծեմ թէ յանհասութիւն ձկտեալ տատանի, որ և հասանելոյ չէ կարողու-

թիւն: Բայց մեր զդիպողն և զպատաշաճաւորն՝ որքան է կարողութիւն՝ ի լրումն ընծայեցաք գեղեցիկ քոյոցդ աչխորժակաց, ո՜վ քաջազգի և տան մեծի արգասաւոր և նախնական մեծ:...

Քանզի ճարտարապետ արուեստի էր Մանուէլն[1], զոր ի վեր անդր ցուցաք. այր լի իմաստութեամբ և զօրաւոր ի գործս իւր. հրաշակերտէ զեկեղեցին զարմանագործ արուեստիւ. և զոր վերագոյնն ցուցաք կրօնաւորն՝ ձեռն տայ նկարագրել զքարինն ճշգրտագործ նմանահանութեամբ, սկըսեալ յԱբրահամայ և ի Դաւթէ, և մինչև ցՏէր մեր Յիսուս Քրիստոս, զդասս մարգարէից և առաքելոց, յօրինեալ ըստ իւրաքանչիւր հանդիսի, զարմանագործ տեսլեամբ: Ստեղծագործեալ ջոկադրէ և ի կարգս եկեղեցւոյն՝ զյօլովս երէոց և զերամս հաւուց, միանգամայն և զդասս գազանաց. խոզից և առիւծուց, ցլուց և արջոց,, ընդ դէմ միմեանց զարդարեալս. զկենդանականին նոցա յուշ առնելով զմարտ, որ է յոյժ ըղձալի իմաստնոց: Ածեալ զթիկամբք եկեղեցւոյն և շրջապատ պարունակ մի պանծալի մանրամասն հատուածովք յօրինեալ, կերպագրեալ որթս խաղողաբերս այգեգործովք և գազանօք և սողնովք հանդերձ համակեալք. որոց և կերպարանքն այլ և այլ զանազանութեամբք ըստ

1. Մանուէլի առաջին յիշատակն չեմ գտներ ի Թովմաս, բայց Աղթամարայ դիւանագիրն յիշէ այսպէս. «Հրամայեաց Թագաւորն՝ ամենայն վարպե-
» տացն և կոչեաց զնոսա ի դարպասն մօտ յինքն, և
» խիստ մեծարեաց զնոսա. և գլուխ ամենայն ճար-
» տարապետացն արուեստին՝ էր Մանուէլ կրօնաւորն,
» այր լի իմաստութեամբ և զօրաւոր ի գործս իւր,
» զարմանալի ի պատկերհանութիւն, նման Անդէի
» պատկերահանին. զոր Աբգար յուղարկեաց մօտ ի
» Քրիստոս. զոր կարծեմ թէ աւելի էր քան զնա »:
Այս քանդակաց մասն մի՝ թէ և մաշուած՝ յայտնապէս երեւի հիմայ, և հաստատէ պատմըչին ըստծանեըը՝ Գագկայ տաճարին նկատմամբ եւս:

իւրաքանչիւր մասին առբերեն զանեսակս։ Իսկ ի չորից կողմանց ի վերայ գագաթան սրբութեանցն՝ ճշգրտագործեալ զչորից աւետարանչացն պատկերս. որք և արժանաւորապէս իսկ են պսակ ուրախութեան սրբոյ եկեղեցւոյ, և վերագոյն քան զամենայն սուրբս։

Նկարագրեալ է տեառնագրելով և զփրկչական պատկերս, որ վասն մեր զգեցաւ մարմին՝ երեւելով մարդ, և է ի կամարս արեւմտական խորանին. Նմանահան ճշգրտութեամբ յօրինեալ է ընդդէմ Փրկչին և զփառազարդ պատկեր արքային Գագկայ. որ մեծապարծ հաւատով բարձեալ ունի զեկեղեցին ի վերայ բազկացն, իբրեւ զսափորն ոսկի լի մանանայիւն, և իբրեւ զսուփ մի ոսկի անուշահոտութեամբ լցեալ. կայ առաջի Տեառն կերպագրեալ այնպէս, որպէս թէ զթողութիւն խնդրեսցէ մեղաց[1]։ Որ թէպէտ և մերս պատմութեանց իցեն բանք, սակայն թագաւորն ոչ վրիպի ի խնդրեալ պարգեւացն, յուսացեալ առ հանդերձեալ հատուցմունսն։

Դարձեալ, և ի հարաւակողմ կուսէ խորանին՝ ի վերայ դրան եկեղեցւոյն յօրինեալ է տեղի գահոյից, ի բարձանց ի խոնարհ կամարաձեւ աստիճանօք զչէջսն ունելով, որպէս զի իցէ տեղի աղօթից թագաւորին, զուսպ և զերծ ի մարդկանէ, որով ի միտս իւր եկեալ՝ անզբաղապէս ընդ Աստուծոյ խօսեսցի։

Իսկ ի ներքուստ կողմանէ՝ զսրբութիւն սրբութեանցն հրաշալիս իմն յօրինէ նկարապաճոյճ դեզովք, դրամբք արծաթապատօք և լի ոսկեհուռն զարդիւք, ոսկեպատ պատկերօք, և ակամբք պատուականօք, և մարգարտահիւս զարդիւք, և պէս պէս երեւելի և պայծառ սպասիւք. զոր հրաշա-

1. Այսպիսի են Բիւզանդական եկեղեցեաց մէջ՝ Փրկչին և կայսերաց պատկերքն, որոց հետեւեր են Գագկայ ճարտարապետքն եւս։

վով շրջապատեալ էր, և զբարեգործութիւն արքային։ Յայնժամ պատրաստեաց ընծայս հոգեւորապէս, եկն փութով Տէր Գէորգ կաթուղիկոս հանդերձ եպիսկոպոսօք և բազում վարդապետօք՝ ի նաւակատիս տաճարին և տեսութիւն արքային։ Իբրեւ ժամանեաց կաթուղիկոսի գունդն ի կապանն ամրոցին Ոստանայ, յառաջեաց մի ոմն յիշխանեաց, եւ աւետիս արքային՝ թէ աւանիկ Սրբազան եկեալ է ի դուռն կապանին, կամի տեսանել զզարմանալի տաճարն։ Իբրեւ լուաւ արքայն՝ զարդարեաց զամենայն փողոցս ի պատիւ հայրապետին, մանաւանդ զինքն և զզօրս իւր, և վարդապետքն որք անդ էին, նոյնպէս Տէր Եղիշէ արքեպիսկոպոսն. ապա նստան ի նաւ. և նաւն ժամանեաց ի յամրոցն։ Ելեալ արքայն յոսկիակազմ կառսն և նստաւ ի վերայ նորա, ընդ վարդապետաց և բազմամբոխ զօրաց և ռամկաց։ Յորժամ յանդիման եղեն միմեանց գունդք հայրապետին և թագաւորին, ո՜վ ընթերցող և լսող, դու տես զբազում խոնարհութիւն արքային՝ զարմանալի և հիանալի. ի տեսանել նորա ի հեռաստանէ զգունդն հայրապետին՝ իսկոյն ի վայր իջեալ յարքայական կառացն՝ հետիոտս քայլէր. իբրեւ մերձեցան առ միմեանս՝ կալեալ արքային զերջանիկ զարշապարն հայրապետին համբուրէր ստէպ ստէպ։ Ապա առեալ ընդ իւր զհայրապետն՝ ելեալ ի կառս արքունական. իսկ գումարք վարդապետաց նուագէին զերգս շարականաց, մինչ ի յափն ծովուն՝ ի նաւն։ Դարձեալ, յորժամ մերձեցաւ նաւն՝ անառիկ կղզւոյն Աղթամարայ, իսկոյն հնչեցուցին զզանգակսն. զօրքն թագաւորին առեալ զսուր ի ձեռն իւրեանց՝ փայլեցուցանէին, նոյնպէս շառաչեցուցանէին զաղեղունս. ճչումն և որոտումն կալաւ զերկիրն, շառաչումն, փայլատակումն. ձայնք մարդկան, նուագումն պարուց և երգոցն հիացուցանէր զմարդճային բնութիւն. այնպէս էր որ ձայնն մի աւուր կանապարհ հասանէր։ Եւ յառանձնանալ հայրա-

պետին և Թագաւորին՝ հանել կաթուղիկոսին զգանձն անգին՝ եդ առաջի արքային. նոյն երկրորդ ուրախութիւն. այս է գանձն անապական. զԱջն Լուսաւորչին, զԳաւազանն և զՄիթռ... Եւ զկնի սորա աղաչեաց (զ)հայրապետն՝ հանդերձ ամենայն իշխանօք, զի աստ արասցեն կաթուղիկոսարան: Եւ ապա ժողովեալ իշխանք և ամենայն ազատորդիք, և առեալ ընդ իւրեանս զհայրապետն՝ գնացին ի պալատն արքային. զի խնդիր իշխանացն այն էր, զի զԱղթամար արասցեն գահ ամենայն Հայոց. ուստի հաւանեցուցին զարքայն Գագիկ, և հաստատեցին զՍուրբ խաչն Աղթամարայ՝ աթոռ Լուսաւորչին[1]:

Հայրապետն և իշխանքն և Թագաւորն նստան. դատաստանաւ բաժանեցին զերկիրն. երկու մայրաքաղաք հաստուցին Աղթամարայ, Վանայ քաղաքին, Բաղէշու քաղաքին, յետ օծելոյն Տէր Եղիշէ կաթողիկոս. և սասցին. Յետ մերոյ անցմանն՝ եթէ Տէր կամեսցի՝ յԷջմիածին վերստին հաստատութիւն լիցի, մի՛ մարտնչեսցին ընդ միմեանս Աղթամարցիք և Էջմիածինցիք[2]: Քանզի Թագաւորն յոյժ իմաստուն էր, զամենայն բանս քննէր, զներկայն, զանցեալն և զապառնին, զամենայն խորհէր. քանզի յայնմ ժամանակի խիստ նեղէին զԷջմիածնի աթոռն՝ ազգն Պարսից: Եւ ապա հրամայեաց արքայն՝ նախ Տէր Գէորգ կաթողիկոսին. Դու բաժանեա, նոյնպէս իշխանաց: Եւ Տէր Գէորգ կաթողիկոսն սկսաւ ասել. Այս լիցի թեմ Սուրբ Խաչ աթոռին. նախ՝ Ճուլամերկ, Նօտըրզ, Աղբակ՝ մինչ ի Ճարայոց բերդն, Մոկնդան[3], Վանայ քաղաքն իւր նահանգով, երկու անապատներ[4], Բերկրոյ

1. Փափագ և ուանդութիւն Աղթամարեցւոց, ոչ ստուգութիւն:

2. Յետին ժամանակի հնարուած գրոյց, երբ կայր Էջմիածնի աթոռն, և ոչ Գագկայ ժամանակ:

3. Ամենքն այլ Վանայ ծովուն հարաւակողմն են:

4. Թերևս Լիմն և Կտուց:

դաշտն իւր աթոռով, Բաջբերունեաց գաւառն՝ որ է Արճէշ՝ իւր աթոռովն՝ որ է Մեծոփ, մինչ ի Ջիլանձորն. Բզնունեաց երկիրն որ է Արծկէ, իւր աթոռովն (որ է) Սքանչելագործ, Խոշաբու Նահանգն իւր աթոռով մինչ ի Ջրխոր գիւղն, Դատվան մինչ հասանի ի քաղաքն Բաղէշ, Մշու երկիր մինչեւ ի Ճապաղջուր, Բաղէշ իւր Նահանգովն, գաւառն Աղձնեաց որ է փայտի աշխարհն, այօրինքն Դատվանայ մինչ ի գայ Բեղուշ՝ Աղձնիք կոչի. Համկուշ երկիրն, Հայոց ձորն, Ոստան, Գաւաշ, Կառկառ, Եղեգիս, Կնցան, Հոշրանց, Խիզան, Ցերուշն, Շիրվան, Սպարկերտ, Պօհտան մինչեւ Մուսուլ, Բաբլշապի, Բարեդարեան, Շատախ, Մոկս[1]։ Այսքան բաժին շնորհեցին Աղթամարայ ամենազով շնորհազարդ աթոռին։ Այս է դատաստան մեծ Հայրապետին մերոյ, տէր Գէորգ կաթողիկոսին, Գագիկ Թագաւորին և ամենայն իշխանաց որք անդ կային. ամենեքեան հրաման զայս բան արարին. ուխտ և պայման դրեցին, թէ, Որ այս ուխտէն և կանոնէն վերայ անցնի, թէ Աղթամարայ կաթողիկոս թէ Էջմիածնայ՝ մէկզմէկու թեմն ըմբռնէ, նզովեալ լինի, և մի՛ մնասցէ ի կարգի կաթողիկոսութեան։ Քանզի Վանայ քաղաքն և Բաղէշու քաղաքն, այս երկու քաղաքն հանդերձ գաւառօքն զոր ասացաք, Աղթամարայ լիցի, միւս ընդհանուր Հայաստան Էջմիածնայ լիցի։ Եւ իբրեւ լուան հոյլք վարդապետացն, գունդք ժողովրդոցն, ասացին զԱմէնն. և արքայն յոյժ հաւանեցաւ։ Անդ կային բազում եպիսկոպոսք, վարդապետք, իշխանք, յոյժ շնորհակալ լինէին զարքայէն և զհայրապետէն, քանզի իմաստութեամբ դատաստան արարին։ Զի ի վերջին ժամանակին ի նուազել և ի ճոխանալ երկուց աթոռոց, մի՛ լիցի մին զմիւսն յաղթահա-

1. Բաց ի մէկ երկուքէն՝ թէ գաւառք թէ վանքեր թէ գիւղերն՝ ամենն այլ ծանօթ են հիմայ։

րեցէ, մին միւսին թեմ զաւթէ[1]. վասն այն կանոնիւ և դատաստանաւ փակեցին և նզովք ի վերայ դրին, զի մի ոք իշխեսցէ լուծցէ զայս, մինչեւ յաւիտեան: Եւ յետոյ ողջունեցին զմիմեանս և ելեալ գնացին ի տեղի զրօսանաց, զոր արքայն Գագիկ արարեալ էր:

---

## ՄԻԷ

### ԱԲԱՍ ԵՒ ԲԵՐ

(ԱՍՈՂԻԿ, Գ, Է.)

Աբաս[2] խաղաղութեան և շինութեան պատճառ եղեալ աշխարհիս Հայոց՝ ըստ քաղցր բարուց իւրոց, և ըստ քաջազօր զօրութեան իւրոյ որով յաղթող եղեւ շուրջանակի, և զՎրաց և զՍարմատացւոց[3] ասպատակն դադարեցոյց յաշխարհէս Հայոց: Որ ի միում աւուր բազմախուռն բանակօք բիւրաւոր զօրօք ելանէր բէլաղէս[4] ամբարտաւանութեամբ իշխանն Ափխազաց ի Սարմատացւոց աշխարհէն՝ որ յայնկոյս քան զԿովկասեան լերինն, խաղայ՝ գայ անթիւ բազմութեամբ առ ափն գետոյն որ Կուրն կոչի, անապատացուցանել կամելով զաշխարհս Հայոց: Դեսպան առաքէ առ Թագաւորն

1. Թուրք բառ, զաւթ, նշանակէ նուաճել, ուրիշի ինչը վիճակը գրաւել:

2. Որդի Ա. Սմբատայ նահատակի Բագրատունեաց, Թագաւորի:

3. Հոնաց կամ Խազրաց ցեղէն ասպատակողք, եթէ արդարեւ Սարմատացի էին, յորոց համարի մեր հեղինակն և զԱփխազս, որ չէ ստոյգ. զի սոքա Սեւ ծովու եզերք ծանօթ բնակողք են:

4. Ինչպէս Բէլ ելաւ ընդդէմ Հայկին, թերեւս ակնարկէ և անուանց նմանութեանն՝ Բէլ—Բեր:

Հայոց, մի՛ օրհնել նմա զեկեղեցին՝[1] ըստ ուղղադաւան հաւատոյ Սրբոյն Գրիգորի. վասն զի, ասէր, իւր գալ կատարել քաղկեդոնական սահմանաւն[2]. զի էր շինեալ Թագաւորին զկաթողիկէն սուրբ ի քաղաքին Կարուց վիմարդեան արձանօք, որձաքար պողովատաւ վիմօք՝ բոլորապէս զմբէթաւորեալ պայծառ զարդուք երկնանման խորան։

Եւ զայս պատգամ լուեալ Թագաւորին Աբասայ՝ զումարտակ արարեալ զօրաց այրուձիոյն Հայոց, հասանէ ի գետն Կուր. բանակի ընդդէմ բանակին Բերայ։ Իսկ ասպատակ զօրացն յամենայն աւուրս արշաւանս առնէին յայսկոյս յայնկոյս զափամբ գետոյն. և ի միում աւուր ասպատակն Ափխազաց անցեալ ընդ գետն Կուր, հասանէին ի բանակն Հայոց. և ձայն շփոթին առ Թագաւորն հասանէր։ Որոյ արագապէս զերիվարն խնդրեալ, զզարդ զինուցն զանձամբ առեալ, զերկսայրի սուսերն ի ձեռին ունելով, ընթանայր զկնի ասպատակին. և ի մէջ գետոյն հասեալ՝ հարկանէր հարուածովք ձեռին քաջի. կիսախողխող յերիվարացն ի վայր կործանէր, յուղարկաւոր նոցա զջուրն տալով. և ինքն զափամբ գետոյն ելեալ՝ ուժգնապէս ձայնիւ զԱստուած օգնական կարդայր, և զանուն իւր ասէր. յորմէ ահարեկ եղեալ հիւսիսական ազգին՝ ի փախուստ դառնային։

Եւ Հայոց զօրացն քաջապինդ զօրութեամբ հետամուտ եղեալ՝ սրոյ ճարակ տային զամենեսեան, առեալ յաւարի զբանակս նոցա. և ձերբակալ արարեալ զամբարտաւանն Բեր՝ ածին ի քաղաքն Կարուց, ասելով ցնա Թագաւորին. «Տեսցես զգեղեցկաշէն եկեղեցիդ, զի այլ ոչ տեսանելոց ես»։ Եւ հրամայեաց փորել զաչս նորա. իսկ զխաւա-

1. Ինչուան հիմայ կանգուն կայ այս գրեթէ հազարամեայ եկեղեցիս, յանուն Ս. Առաքելոց, ի ձեռս Թուրքաց։

2. Այս սահմանն օտար չէր Ս. Գրիգորի հաւատոյ։

րեալ պատկերն՝[1] արծաթով գնեցին ազգ նորա. և ուխտ խաղաղութեան ընդ Հայաստանեացս հաստատեցին երդմամբ, մի՛ այլ լինել պատերազմ ի մէջ նոցա։

---

## ՄԻԸ

### ՇԻՆՈՒԹԻՒՆՔ ՎԱՆՈՐԷԻՑ ԵՒ ՀԱՐՔ ԳԻՏՆԱԿԱՆՔ

(ԱՍՈՂԻԿ, Գ, Է.)

Ցայսմ ժամանակի[2] ծաղկեալ պայծառանայր կարգ կրօնաւորական հանդիսիւք յաշխարհիս Հայոց, և ի յոլով. տեղիս շինեցան եղբայրանոցք. և ժողովեցան միաբանակեացք, հաւատարականք սիրոյն Քրիստոսի։ Նախ առաջին՝ մեծահռչակ ուխտն Կամրջաձորոյ ի գաւառին Արշարունեաց, որոյ առաջնորդ՝ Հայր Յովհաննէս, որ հալածեալ յարեւմտեայ աշխարհէն, յԵգերացւոց գաւառէն... բերեալ ընդ իւր զհրաշէն նշանն տէրունական[3]. և ընդ որ անցանէր՝ բազում սքանչելիք և նշանք և բժշկութիւնք լինէին ի ձեռն պատուական խաչին. որպէս և ի մերում ժամանակիս աչօք մերովք տեսանեմք զի բազում հիւանդք և ախտաժէտք բժշկեցան. և հանապազ կայ և կատարէ զիւր հրաշագործութիւն։ Արդ, եկեալ բնակեցաւ յ՚առաջասացեալ տեղին Կամրջաձոր, կանոն կարգի ունե-

1. Ճարտար և կսկծալի նմանութիւն երեսաց՝ կուրացեալ անձին։
2. Ի կէս և յետ կիսոյ Ժ դարու։
3. Խաչ մի՝ հաւանօրէն ազնիւ մետաղէ. Հրաշէն կոչումն այլ կըրնայ իրեն յատուկ ըլլալ. ինչպէս Հայոց շատ խաչեր՝ ունին պէսպէս անուններ։

լով զատհմանադրութիւն Սրբոյն Բարսղի հայրապետին մեծի, ի վերայ առաքելական հիմանն. թէ, «Էր նոցա ամենայն ինչ հասարակաց»: Յոր ժողովեալ առք ճգնազգեացք թուով 300. և զկնի նորա նոյն ուխտի առաջնորդ եղեալ և հաստատի կրօնիցն պահապան՝ այրն Աստուծոյ Պօղիկարպոս. և զկնի նորա իմաստակն Սամուէլ[1] բազմաշնորհ ի գիտութիւնս գրոց սրբոց և յերգս երաժշտութեանց:

Իսկ ի գաւառին Շիրակայ՝ Հոռոմոսին կոչեցեալ վանք[2] շինեցաւ ի ձեռն Յովհաննիսի որ էր զարդարեալ յամենայն առաքինութիւնս, եւս առաւել յողորմածութեան զարդս: Վասն զի ողորմածութեամբ և առաքինութեամբ բաշխէր, մինչեւ ի զգեստուցն իւրոց մերկանայր զամենայն ի բաց, յորժամ աղքատաց հանդիպէր. և անցաւորաց ի ճանապարհորդաց՝ հանգստարան պատրաստէր զտեղին, մինչեւ հանգչել իւր յիւրեանց տան՝ ամենայն օտարաց. որ մինչեւ ցայսօր երեւի նոյն նշան ողորմածութեան ի տանն յայնմ:

Այսպէս և յայսմ ժամանակի շինեցաւ Նարեկ ի Ռշտունեաց գաւառին[3], նոյն կարգադրութեամբ, բազմազարդ պաշտօնապայծառ երգեցողօք և գրական գիտողօք: Նոյնպէս և ի գաւառին Գեղջանայ Խղաձորին անուանեալ վանք[4], որ ըստ վկայարանի նորին Սուրբ Գրիգոր կոչի, ի ձեռն Հօր Սիմովնի հիմնեցեալ, ժիր և ճգնողական ծառայի Քրիստոսի. որ ի սահմանս անախտութեան հասեալ վախճանի ի կենացս. փոխանակ իւր թողլով վերակա-

1. Սա յառաջապէս Կամրջաձորեցի կոչուի, և իր գրուածներէն ունինք եկեղեցական կարգաց և գրոց մեկնութիւններ. փափագելի է իւր երաժշտական հըմտութեան այլ ճաշակ մի ունենալ:

2. Մօտ ի մայրաքաղաքն Անի, ծանօթ և հիմայ:

3. Հասարակաց ծանօթ և հռչակեալ աղօթագրող Ս. Գրիգորի անուամբն:

4. Գաւառն ծանօթ այլ ոչ նոյնպէս և վանքն:

ցու ուխտին զՊետրոս ծերունին, որ ի տուէ և ի գիշերի աշխատէր ի մշակութիւն Տեառն, գործել ձեռօք և սաղմոսել բերանով, ցայգատարած բազկատարածութեամբ, արտօսրիջոյց ողբովք լցեալ զաւուրս․ որոյ ի ծերութեան վատեալ աչացն՝ յընտրութենէ ամենեցուն տայ զառաջնորդութիւն՝ Հօրն Բարսղի, որ ընդ ամենայնի ամենայն եղեւ, զամենեցուն լնու զպակասութիւն կամ զվերակացութիւն, գիտնական և իմաստնական հանճարով․ մեռեալ ի կենդանութեան, և ի մահու զկեանս քարոզեաց, օրինակ բազմաց եղեալ հեռաւորաց և մերձաւորաց։ Առ որ ժողովեալ բազմութեան արանց արդարոց՝ ճգնազգեստ, խոնարհազարդ վայելչութեամբ զարդարեալք, ի ճաշակս՝ անճաշակ, մի անգամ միայն յաւուր ճաշակեալ և զովացեալ ջրով՝ ի շաբաթու և ի կիւրակէի արբմամբ, յաւուրս սուրբ քառասնորդացն։ Առ որս եղեալ իմ յաւուրս քառասնորդացն՝ գրեցի զբանս յիշատակիս այսորիկ սակաւուք, և զչափ ժամանակաց թուեցի ըստ կարի ի սոյն ժամանակս[1]։

Եւ ի Լիկանտոիոն[2] աշխարհին, ի Նաիրնեար տեղիսն, ի Կարբերդ գաւառին[3], ի ձեռն Հօրն Մովսիսի շինեցաւ վանք, որ անուամբ նորա կոչի[4], բարեզարդ կարգադրութեամբ, բազմութեամբ եղբարց, բազմապայծառ բանական իմաստնովք։ Եւ էր Մովսէս՝ այրն Աստուծոյ ի Տարօն գաւառէ ազգաւ, որ ամենայն արեւմտեայ աշխարհին[5] պատճառ բարեաց եղեւ ի բազմացուցանել զդասս կրօ-

1. Իր ժամանակագրական Պատմութիւնը յիշեցընէ։

2. Բ և Գ Հայոց սահմանակից, սովորաբար Լիկանդոն գրուի։

3. Հիմակուան ծանօթ Խարբերդն՝ է, որ և Քարբերդ։ Ասոր անունն յիշուած է և յՈւռհայեցւոյ. երկրորդն թուի արաբերէն, գետերու նշանակութեամբ։

4. Մովսիսնոց կոչուած։

5. Արեւմտեան Հայք։

նաւորաց. և երբեւ աւանդապահ կրօնիցս մեր եղեալ՝ բաւեաց մինչեւ յաւուրս մեր։

Նոյն գունակ և նոյն օրինիւ վանք Հեճուց[1] ի Կարին գաւառի, ի ձեռն Հօրն Սարգսի[2] ամենայն օրինօք լցեալ. և վայելչազարդ տեղին որ կապոյտաքարն անուանի յԱրշարունեաց գաւառին. և Դպրեվանք ի Շիրակ գաւառի. և Ցախաց քար ի Վայոց ձորի՝ ի ձեռն Հօր Ստեփաննոսի։

Սոքա ամենեքեան և այլք յետ սոցա ի սոցանէ ուսեալք, միաբանական ճգնութեամբ անզբաղ յամենայն ինքնասիրութեան հոգոց, ոչ ստանալ մարգոյ ինքեան և ոչ խերեւէշ մի. ոչ ճաշակել ուրուք նախ քան զհասարակաց սեղանն, ո՛չ ի մրգաց և ոչ ի դալար խոտոյ. այլ զհրամայեալսն ի պատուիրանին Տեառն գործել. և զդաւթեան նուագսն հնչեցուցանել ի գիշերի և ի տունջեան՝ հանապազորդեան փառաբանութեամբ։ Եւ սոցա՝ այս գործ նահատակութեան։

Իսկ զմիայնաւորացն բազմազարդ առաքինութիւնս՝ զի՞արդ մարթասցուք բանիւ ասել. որք խաչակցեալք խաչելոյն Քրիստոսի՝ քաղցիւ և ծարաւով, և հանապազամեռիկ կենօք քաղաքավարեալք ի ժամանակին յայնմ։ Որպէս մեծանունն հռչակելին Վարդիկ՝ հայրն Վանգոյ[3], և սուրբ հայրն Կարմիր. որք՝ սուտեր զկեանս աշխարհիս համարեալ՝ ամայութեամբ ընդ գազանս ի լերինս և յանապատ տեղիս անսուաղութեամբ կէին, մինչեւ նշանագործ զօրութեան արժանանալ ի Տեառնէ. զի առիւծ հնազանդեցաւ Վարդկայ, բերեալ նմա

1. Ծանօթ մինչեւ հիմայ։

2. Գիտնական բարեկամ և Թղթակից Գրիգորի Մագիստրոսի։

3. Տեղին ծանօթ չէ, բայց շատ հռչակուած է հօն պատուած խաչի մի համար, զոր Շնորհալին և այլ կաթողիկոսք պահէին, և անով օրհնութիւն տային նա և զրով խաւրէին։

փառապէս եցոյց մեզ երկրորդ Երուսաղէմ, միանգամայն և դուռն վերին Սիոնի։

Աստանօր կատարին մարգարէութեանն նուագք, թէ, Ուրա՞խ լեր անապատ ծարաւի. և դարձեալ, եթէ, Ցնծասցէ երկիր, և ուրախ եղիցին կղզիք բազում։

Իսկ զօ՛ր Նաւակատեաց սորա դասիւք եպիսկոպոսաց և իշխանաց շքեղացուցանելով, տօն մեծ ուրախութեան կատարէ մեծապարծ պարծանօք, յիշատակ ազգաց յազգս։ Ահա տեսցաք որ ինչ յաղագս սրբոյ եկեղեցւոյն։

---

## ՄԻՋ

### ՆԱՒԱԿԱՏԻՔ

### ԵՒ ԹԵՄՔ Ս· ԽԱՉԻՆ ԱՂԹԱՄԱՐԱՑ[1]

Արդ ի վերոյգրեալ թուին (երբ 914 Քրիստոսի) զոր աւարտին Նաւակատիս տաճարին, յամենայն նահանգաց Հայոց եկին ի տեսանել զհրաշագործ տաճարն. նոյնպէս եւս այլազգիք գային և զարմանային ընդ նորաքանչ արքային՝ որ այնպէս ամրոց կառուցեալ էր։ Իսկ հայրապետ Հայոցն էր տէր Գէորգ, որ ազգակից էր Մաշտոց կաթուղիկոսին՝ որ նստէր յԷջմիածին[2]։ Սա լուաւ զկատարած զարմանալի գործոյ արքային, և պատմեցին նմա զհրաշալի շինուածն Սրբոյ Խաչին և զամբութիւն գաճին Գագկայ, որ յամենայն կողմանց ծո-

1. Կարեւոր գրուած բայց ռամիկ, և ոչ միշտ ըստոյգ. այդ եկեղեցւոյ կոնդակն է, այսինքն. անոր շինութեանց և պատուոյ յիշատակներն՝ տարէթուոց կարգաւ գրուած։

2. Այն տեղն ոչ յԷջմիածին այլ ի Դուին էր աթոռ կաթողիկոսին։

վով շրջապատեալ էր, և զբարեգործութիւն արքային։ Յայնժամ պատրաստեաց ընծայս հոգեւորապէս, եկն փութով Տէր Գէորգ կաթուղիկոս հանդերձ եպիսկոպոսաք և բազում վարդապետաք՝ ի նաւակատիս տաճարին և տեսութիւն արքային։ Իբրև ժամանեաց կաթուղիկոսի գունդն ի կապանն ամրոցին Ոստանայ, յառաջեաց մի ոմն յիշխանաց, եւ աւետիս արքային՝ թէ աւանիկ Սրբազան եկեալ է ի դուռն կապանին, կամի տեսանել զզարմանալի տաճարն։ Իբրև լուաւ արքայն՝ զարդարեաց զամենայն փողոցս ի պատիւ հայրապետին, մանաւանդ զինքն և զզօրս իւր, և վարդապետքն որք անդ էին, նոյնպէս Տէր Եղիշէ արքեպիսկոպոսն. ապա նստան ի նաւ. և նաւն ժամանեաց ի յամրոցն։ Ելեալ արքայն յոսկիակազմ կառսն և նստաւ ի վերայ նորա, ընդ վարդապետաց և բազմամբոխ զօրաց և ռամկաց։ Յորժամ յանդիման եղեն միմեանց գունդք հայրապետին և թագաւորին, ո՜վ ընթերցող և լսող, դու տես զբազում խոնարհութիւն արքային՝ զարմանալի և հիանալի. ի տեսանել նորա ի հեռաստանէ զգունդն հայրապետին՝ իսկոյն ի վայր իջեալ յարքայական կառացն՝ հետիոտս քայլէր. իբրև մերձեցան առ միմեանս՝ կալեալ արքային զերջանիկ զարշապարն հայրապետին համբուրէր ստէպ ստէպ։ Ապա առեալ ընդ իւր զհայրապետն՝ ելեալ ի կառս արքունական. իսկ գումարք վարդապետաց նուագէին զերգս շարականաց, մինչ ի յափն ծովուն՝ ի նաւն։ Դարձեալ, յորժամ մերձեցաւ նաւն՝ անառիկ կղզւոյն Աղթամարայ, իսկոյն հնչեցուցին զզանգակսն. զօրքն թագաւորին առեալ զսուր ի ձեռն իւրեանց՝ փայլեցուցանէին, նոյնպէս շառաչեցուցանէին զաղեղունս. ճչումն և որոտումն կալաւ զերկիրն, շառաչումն, փայլատակումն. ձայնք մարդկան, նուագումն պարուց և երգոցն հիացուցանէր զմարդկային բնութիւն. այնպէս էր որ ձայնն մի աւուր կանապարհ հասանէր։ Եւ յառանձնանալ հայրա-

պետին և Թագաւորին՝ հանեալ կաթուղիկոսին զգանձն անգին՝ եդ առաջի արքային. նաեւ երկրորդ ուրախութիւն. այս է գանձն անապական. զԱջն Լուսաւորչին, զԳաւազանն և զՄիթր... Եւ զկնի սորա աղաչեաց (զ)հայրապետն՝ հանդերձ ամենայն իշխանօք, զի աստ արասցեն կաթուղիկոսարան: Եւ ապա ժողովեալ իշխանք և ամենայն ազատորդիք, և առեալ ընդ իւրեանս զհայրապետն՝ գնացին ի պալատն արքային. զի խնդիր իշխանացն այն էր, զի զԱղթամար արասցեն գահ ամենայն Հայոց. ուստի հաւանեցուցին զարքայն Գագիկ, և հաստատեցին զՍուրբ Խաչս Աղթամարայ՝ աթոռ Լուսաւորչին[1]:

Հայրապետն և իշխանքն և Թագաւորն նստան. դատաստանաւ բաժանեցին զերկիրն. երկու մայրաքաղաք հասուցին Աղթամարայ, Վանայ քաղաքին, Բաղէշու քաղաքին, յետ օծելոյն Տէր Եղիշէ կաթողիկոս. և ասացին. Յետ մերոյ անցման՝ եթէ Տէր կամեսցի՝ յԷջմիածին վերստին հաստատութիւն լիցի, մի՛ մարտնչեսցին ընդ միմեանս Աղթամարցիք և Էջմիածինցիք[2]: Քանզի Թագաւորն յոյժ իմաստուն էր, զամենայն բանս քննէր, զներկայն, զանցեալն և զապառնին, զամենայն խորհէր. քանզի յայնմ ժամանակի խիստ նեղէին զէջմիածնի աթոռն՝ ազգն Պարսից: Եւ ապա հրամայեաց արքայն՝ նախ Տէր Գէորգ կաթողիկոսին. Դու բաժանեա, նոյնպէս իշխանաց: Եւ Տէր Գէորգ կաթողիկոսն սկսաւ ասել. Այս լիցի թեմ Սուրբ Խաչ աթոռին. Նախ՝ Ճուլամերկ, Նօրըզ, Աղբակ՝ մինչ ի Ճարայոյ բերդն, Մահկեդան[3], Վանայ քաղաքն իւր նահանգով, երկու անապատներ[4], Բերկրոյ

1. Փափագ և աւանդութիւն Աղթամարեցւոց, ոչ ստուգութիւն:

2. Յետին ժամանակի հնարուած գրոյց, երբ կայր Էջմիածնի աթոռն, և ոչ Գագկայ ժամանակ:

3. Ամենքն այլ Վանայ ծովուն հարաւակողմն են:

4. Թերեւս Լիմն և Կտուց:

դաշտն իւր աթոռով, Քաջբերունեաց գաւառն՝ որ է Արճէշ՝ իւր աթոռովն՝ որ է Մեծոփ, մինչ ի Ջիւանձորն. Բզնունի երկիրն որ է Արծկէ, իւր աթոռովն (որ է) Սքանչելագործ, Խոշաբու Նահանգն իւր աթոռով մինչ ի Ջրխոր գիւղն, Դատվանն մինչ հասանի ի քաղաքն Բաղէշ, Մշու երկիր մինչեւ ի Ճապաղջուր, Բաղէշ իւր Նահանգովն, գաւառն Աղձնեաց որ է փայտի աշխարհն, այսինքն Դատվանայ մինչ ի գայ Բեղու՝ Աղձնիք կոչի. Համկու երկիրն, Հայոց ձորն, Ոստան, Գաւաշ, Կառկառ, Եղեգիս, Կեցան, Հոշրանց, Խիզան, Ցերուն, Շիրվան, Սպարկերտ, Պօհտան մինչեւ Մուսուլ, Բարքայի, Բարեդարեան, Շատախ, Մոկս[1]: Այսքան բաժին շնորհեցին Աղթամարայ ամենազով շնորհազարդ աթոռին: Այս է դատաստան մեծ հայրապետին մերոյ, տէր Գէորգ կաթողիկոսին, Գագիկ թագաւորին և ամենայն իշխանաց որք անդ կային. ամենեքեան հրաման զայս բան արարին. ուխտ և պայման դրեցին, թէ, Որ այս ուխտէն և կանոնէն վերայ անցնի, թէ Աղթամարայ կաթողիկոս թէ Էջմիածնայ՝ մէկզմէկու թեմն ըմբռնէ, նզովեալ լինի, և մի՛ մնասցէ ի կարգի կաթողիկոսութեան: Քանզի Վանայ քաղաքն և Բաղէշու քաղաքն, այս երկու քաղաքն հանդերձ գաւառօքն զոր ասացաք, Աղթամարայ լիցի, միւս ընդհանուր Հայաստան Էջմիածնայ լիցի: Եւ իբրեւ լուան հոյլք վարդապետացն, գունդք ժողովրդոցն, ասացին զԱմէնն. և արքայն յոյժ հաւանեցաւ: Անդ կային բազում եպիսկոպոսք, վարդապետք, իշխանք, յոյժ շնորհակալ լինէին զարքայէն և զհայրապետէն, քանզի իմաստութեամբ դատաստան արարին: Զի ի վերջին ժամանակին ի նուազել և ի ճոխանալ երկուց աթոռոց, մի՛ լիցի մին զմիւսն յաղթահա-

1. Բաց ի մէկ երկուքէն՝ թէ գաւառք թէ վանքեր թէ գիւղերն՝ ամենն այլ ծանօթ են հիմայ:

րեցէ, մին միւսին թեմ զաւթէ[1]. վասն այն կանոնիւ և դատաստանաւ փակեցին և նզովք ի վերայ դրին, զի մի՛ ոք իշխեսցէ լուծցէ զսա, մինչեւ յաւիտեան։ Եւ յետոյ ողջունեցին զմիմեանս և ելեալ գնացին ի տեղի զբօսանաց, զոր արքայն Գագիկ արարեալ էր։

---

## ՄԻԷ

### ԱԲԱՍ ԵՒ ԲԵՐ

(ԱՍՈՂԻԿ, Գ, Է.)

Աբաս[2] խաղաղութեան և շինութեան պատճառ եղեալ աշխարհիս Հայոց՝ ըստ քաղցր բարուց իւրոց, և ըստ քաջազօր զօրութեան իւրոյ որով յաղթող եղեւ շուրջանակի, և զՎրաց և զՍարմատացւոց[3] ասպատակն դադարեցոյց յաշխարհէս Հայոց։ Որ ի միում աւուր բազմախուռն բանակօք բիւրաւոր վորօք ելանէր բելապէս[4] ամբարտաւանութեամբ իշխանն Ափխազաց ի Սարմատացւոց աշխարհէն՝ որ յայնկոյս քան զԿովկասեան լերինն, խաղայ՝ գայ անթիւ բազմութեամբ առ ափն գետոյն որ Կուրն կոչի, անապատացուցանել կամելով զաշխարհս Հայոց։ Դեսպան առաքէ առ թագաւորն

1. Թուրք բառ, զապթ, նշանակէ նուաճել, ուրիշի ինչը վիճակը գրաւել։
2. Որդի Ա. Սմբատայ նահատակի Բագրատունեաց, թագաւորի։
3. Հոնաց կամ Խազրաց ցեղէն ասպատակողք, եթէ արդարեւ Սարմատացի էին, յորոց համարի մեր հեղինակն և զԱփխազս, որ չէ ստոյգ. զի սոքա Սեւ ծովու եզերք ծանօթ բնակողք են։
4. Ինչպէս Բէլ ելաւ ընդդէմ Հայկին, թերեւս ակնարկէ և անուանց նմանութեանն՝ Բէլ—Բեր։

Հայոց, մի՛ օրհնել նմա զեկեղեցին՝[1] ըստ ուղղադաւան Հաւատոյ Սրբոյն Գրիգորի. վասն զի, ասէր, քեւր զալ կատարել քաղկեդոնական սահմանաւն[2]. զի էր չինեալ Թագաւորին զկաթողիկէն սուրբ ի քաղաքին Կարուց վիմարդեան արձանօք, որձաքար պողովատաշ վիմօք՝ բոլորապէս զմբէթաւորեալ պայծառ զարդուք երկնանման խորան։

Եւ զայս պատգամ լուեալ Թագաւորին Արտասայ՝ գումարտակ արարեալ զօրաց այրուձիոյն Հայոց, հասանէ ի գետն Կուր. բանակի ընդդէմ բանակին Բերայ։ Իսկ ասպատակ զօրացն յամենայն աւուրս արշաւանս առնէին յայսկոյս յայնկոյս զափամբ գետոյն. և ի միում աւուր ասպատակն Ափխազաց անցեալ ընդ գետն Կուր, հասանէին ի բանակն Հայոց. և ձայն չփոթին առ Թագաւորն հասանէր։ Որոյ արագապէս զերիվարն խնդրեալ, զզարդ զինուցն զանձամբ առեալ, զերկսայրի սուսերն ի ձեռին ունելով, ընթանայր զկնի ասպատակին. և ի մէջ գետոյն հասեալ՝ հարկանէր հարուածովք ձեռին քաջի. կիսախողխող յերիվարացն ի վայր կործանէր, յուղարկաւոր նոցա զջուրն տալով. և ինքն զափամբ գետոյն ելեալ՝ ուժգնապէս ձայնիւ զԱստուած օգնական կարդայր, և զանուն իւր ասէր. յորմէ ահաբեկ եղեալ հիւսիսական ազգին՝ ի փախուստ դառնային։

Եւ Հայոց զօրացն քաջապինդ զօրութեամբ հետամուտ եղեալ՝ սրոյ ճարակ տային զամենեսեան, առեալ յաւարի զբանակս նոցա. և ձերբակալ արարեալ զամբարտաւանն Բէր՝ ածին ի քաղաքն Կարուց, ասելով ցնա Թագաւորին. «Տեսցես զգեղեցկաշէն եկեղեցիդ, զի այլ ոչ տեսանելոց ես»։ Եւ հրամայեաց փորել զաչս նորա. իսկ զխաւա-

1. Ինչուան հիմայ կանգուն կայ այս գրեթէ հազարամեայ եկեղեցիս, յանուն Ս. Առաքելոց, ի ձեռս Ռուսաց։

2. Այս սահմանն օտար չէր Ս. Գրիգորի հաւատոց։

րեալ պատկերն՝[1] արծաթով գնեցին ազգ նորա. և ուխտ խաղաղութեան ընդ Հայաստանեայս հաստատեցին երդմամբ, մի այլ լինել պատերազմ ի մէջ նոցա։

---

## ՄԻԸ

### ՇԻՆՈՒԹԻՒՆՔ ՎԱՆՈՐԷԻՑ ԵՒ ՀԱՐՔ ԳԻՏՆԱԿԱՆՔ

(ԱՍՈՂԻԿ, Գ, Է.)

Ցայսմ ժամանակի[2] ծաղկեալ պայծառանայր կարգ կրօնաւորական հանգիստեց յաշխարհիս Հայոց, և ի յոլով. տեղիս շինեցան եղբայրանոցք. և ժողովեցան միաբանակեացք, համատարականք սիրովն Քրիստոսի։ Նախ առաջին՝ մեծահռչակ ուխտն Կամրջաձորոյ ի գաւառին Արշարունեաց, որոյ առաջնորդ՝ Հայր Յովհաննէս, որ հալածեալ յարեւմտեայ աշխարհէն, յՅգերացւոց գաւառէն... բերեալ ընդ իւր գհրազէն նշանն տէրունական[3]. և ընդ որ անցանէր՝ բազում սքանչելիք և նշանք և բժշկութիւնք լինէին ի ձեռն պատուական խաչին. որպէս և ի մերում ժամանակիս աչօք մերովք տեսանեմք զի բազում հիւանդք և ախտաժէտք բժշկեցան. և հանապազ կայ և կատարէ զիւր հրաշագործութիւն։ Արդ, եկեալ բնակեցաւ յ՚առաջասացեալ տեղին Կամրջաձոր, կանոն կարգի ուխե-

1. Ծարատար և կսկծալի նմանութիւն երեսաց՝ կուրացեալ անձին։
2. Ի կէս և յետ կիսոյ Ժ դարու։
3. Խաչ մի՝ հաւանօրէն ազնիւ մետաղէ. Հրազէն կոչումն այլ կընդնայ իրեն յատուկ ըԱԱալ, ինչպէս Հայոց շատ խաչեր՝ ունին պէսպէս անուններ։

լով զսահմանադրութիւն Սրբոյն Բարսղի հայրապետին մեծի, ի վերայ առաքելական հիմանն. թէ, «Էր նոցա ամենայն ինչ հասարակաց»։ Յոր ժողովեալ արք ճգնազգեացք թուով 300. և զկնի նորա նոյն ուխտի առաջնորդ եղեալ և հաւատի կրօնիցն պահապան՝ այրն Աստուծոյ Պօղիկարպոս. և զկնի նորա իմաստակն Սամուէլ[1] բազմաշնորհ ի գիտութիւնս գրոց սրբոց և յերգս երաժշտութեանց։

Իսկ ի գաւառին Շիրակայ՝ Հոռոմոսին կոչեցեալ վանք[2] շինեցաւ ի ձեռն Յովհաննիսի որ էր զարդարեալ յամենայն առաքինութիւնս, եւս առաւել յողորմածութեան զարդս։ Վասն զի ողորմածութեամբ և առաքինութեամբ բաշխէր, մինչեւ ի զգեստուցն իւրոց մերկանայր զամենայն ի բաց, յորժամ աղքատաց հանդիպէր. և անցաւորաց ի ճանապարհորդաց՝ հանգստարան պատրաստէր զտեղին, մինչեւ հանգչել իւր յիւրեանց տան՝ ամենայն օտարաց. որ մինչեւ ցայսօր երեւի նոյն նշան ողորմածութեան ի տանն յայնմ։

Այսպէս և յայսմ ժամանակի շինեցաւ Նարեկ ի Ռշտունեաց գաւառին[3], նոյն կարգադրութեամբ, բազմազարդ պաշտօնապայծառ երգեցողօք և գրական գիտողօք։ Նոյնպէս և ի գաւառին Դերջանայ Խշաձորին անուանեալ վանք[4], որ ըստ վկայարանի նորին Սուրբ Գրիգոր կոչի, ի ձեռն Հօր Սիմովնի հիմնեցեալ, ժիր և ճգնողական ծառայի Քրիստոսի. որ ի սահմանս անախտութեան հասեալ վախճանի ի կենացս. փոխանակ իւր թողլով վերակա-

1. Սա յատկապէս Կամրջաձորեցի կոչուի, և իր գրուածներէն ունինք եկեղեցական կարգաց և գրոց մեկնութիւններ. փափագելի է իւր երաժշտական հըմտութեան այլ ճաշակ մի ունենալ։

2. Մօտ ի մայրաքաղաքն Անի, ծանօթ և հիմայ։

3. Հասարակաց ծանօթ և հռչակեալ աղօթագրով Ս. Գրիգորի անուամբն։

4. Գաւառն ծանօթ այլ ոչ նոյնպէս և վանքն։

ցու ուխտին զՊետրոս ծերունին, որ ի տուէ և ի գիշերի աշխատէր ի մշակութիւն Տեառն, գործել ձեռօք և սաղմոսել բերանով, ցայգատարած բազկատարածութեամբ, արտօսրիջոյց ողբովք լցեալ զաւուրս. որոյ ի ծերութեան վատեալ աչացն՝ յընտրութենէ ամենեցուն տայ զառաջնորդութիւն՝ Հօրն Բարսղի, որ ընդ ամենայնի ամենայն եղեւ, զամենեցուն լինու զպատկառութիւն կամ զվերակացութիւն, գիտնական և իմաստնական հանճարով. մեռեալ ի կենդանութեան, և ի մահու զկեանս քարոզեաց, օրինակ բազմաց եղեալ հեռաւորաց և մերձաւորաց: Առ որ ժողովեալ բազմութեան արանց արդարոց՝ ճգնազգեստ, խոնարհազարդ վայելչութեամբ զարդարեալք, ի ճաշակս՝ անճաշակ, մի անգամ միայն յաւուր ճաշակեալ և զովացեալ ջրով՝ ի շաբաթու և ի կիւրակէի արբմամբ, յաւուրս սուրբ քառասնորդացն: Առ որս եղեալ իմ յաւուրս քառասնորդացն՝ գրեցի զբանս յիշատակիս այսորիկ սակաւուք, և զչափ ժամանակացս թուեցի ըստ կարի ի սոյն ժամանակս[1]:

Եւ ի Լիկանդոնին[2] աշխարհին, ի Նաքրնեար տեղիսն, ի Կարբերդ գաւառին[3], ի ձեռն հօրն Մովսիսի շինեցաւ վանք, որ անուամբ նորա կոչի[4], բարեզարդ կարգադրութեամբ, բազմութեամբ եղբարց, բազմապայծառ բանական իմաստնովք: Եւ էր Մովսէս՝ այրն Աստուծոյ ի Տարօն գաւառէ ազգաւ, որ ամենայն արեւմտեայ աշխարհին[5] պատճառ բարեաց եղեւ ի բազմացուցանել զդասս կրօ-

1. Իր ժամանակագրական Պատմութիւնը յիշեցընէ:

2. Բ և Գ Հայոց սահմանակից, սովորաբար Լիկան-դոն գրուի:

3. Հիմակուան ծանօթ Խարբերդն՝ է, որ և Քարբերդ: Այսոր անունն յիշուած է և յՈւռհայեցւոյ. երկրորդն թուի արաբերէն, գետերու նշանակութեամբ:

4. Մովսիսնոց կոչուած:

5. Արեւմտեան Հայք:

նաւորաց. և իբրև աւանդապահ կրօնիցս մեր եղեալ՝ բաւեաց մինչև յաւուրս մեր։

Նոյն գունակ և նոյն օրինիւ վանք Հենոց[1] ի Կարին գաւառի, ի ձեռն Հօրն Սարգսի[2] ամենայն օրինօք լցեալ. և փայելչազարդ տեղին որ կապուտաքարն անուանի յԱրշարունեաց գաւառին. և Դպրէվանք ի Շիրակ գաւառի. և Ցախաց քար ի Վայոց ձորի՝ ի ձեռն Հօր. Ստեփաննոսի։

Սոքա ամենեքեան և այլք յետ սոցա ի սոցանէ ուսեալք, միաբանական ճգնութեամբ անզբաղ յամենայն ինքնասիրութեան հոգոց, ոչ ստանալ մարգոյ ինքեան և ոչ խերևէչ մի. ոչ ճաշակել ուրուք նախ քան զհասարակաց սեղանն, ո՛չ ի մրգաց և ոչ ի դալար խոտոյ. այլ զհրամայեալսն ի պատուիրանին Տեառն գործել. և զդաւթեան նուագսն հնչեցուցանել ի գիշերի և ի տուընջեան՝ հանապազորդեան փառաբանութեամբ։ Եւ սոցա՝ այս գործ նահատակութեան։

Իսկ զմիայնաւորացն բազմազարդ առաքինութիւնս՝ զի՞որդ մարթասցուք բանիւ ասել. որք խաչակցեալք խաչելոյն Քրիստոսի՝ քաղցիւ և ծարաւով, և հանապազամեռիկ կենօք քաղաքավարեալք ի ժամանակին յայնմ։ Որպէս մեծանուն հռչակելին Վարդիկ՝ հայրն վանգոյ[3], և սուրբ հայրն կարմիր. որք՝ ստուեր զկեանս աշխարհիս համարեալ՝ ամայութեամբ ընդ գազանս ի լերինս և յանապատ տեղիս անսուաղութեամբ կէին, մինչև նշանագործ զօրութեան արժանանալ ի Տեառնէ. զի առիւծ հնազանդեցաւ Վարդկայ, բերեալ նմա

1. Ծանօթ մինչև հիմայ։

2. Գիտնական բարեկամ և թղթակից Գրիգորի Մագիստրոսի։

3. Տեղին ծանօթ չէ, բայց շատ հռչակուած է հօն պատուած խաչի մի համար, զոր Շնորհալին և այլ կաթողիկոսք պահէին, և անով օրհնութիւն տային՝ նա և գրով խաւրէին։

զեղջերուացն կաշի, և կորիւն երկու՝ առաջի անկեալ ձգեաց առ ոտս նորա[1]. և նա ձեռն եդեալ բժշկեաց զլատարանս նոցա. և այլ բազում հիւանդաց ձեռն եդեալ՝ արագապէս բուժէին յախտիցն։ Եւ հանգիստ ոսկերաց նորա որ ի Վանգոյ, յոր մինչեւ ցայսօր բժշկութիւն հիւանդաց լինի։

Իսկ Կարմիր հայրն՝ որ և բարձեալ զՔրիստոս մարմնով ի կերպ աղքատի, ի Ծոփաց գաւառին, մինչ Տաճկաց էր աշխարհն, բնակէր անդ. և յաւուր միում գնաց առ ամիրայն ի բերդն Փաղին. և ի սահմանսն յայնոսիկ յաւերակ տեղիան էր եկեղեցի մի, զոր հանգիստ իւր կալեալ՝ մտանէր անդ։ Ասեն ցնա մարդիկն, մի՛ լինել անդ, զի մահաշունչ է վիշապն որ կայ անդ։ Իսկ նա ի զօրութիւն Աստուծոյ վստահացեալ՝ մտեալ աղօթէր ի նմա զցայգն. և վիշապին մերձեցեալ ի դուռն եկեղեցւոյն՝ զօրութեամբ Տեառն և աղօթիւք սրբոյն՝ վաղվաղակի սատակեցաւ։ Եւ յառաւօտեղն՝ անհաւատ հեթանոսքն ասեն ցհաւատացեալսն. «Երթա՛յք, տեսէ՛ք, զի կլեալ է վիշապն ահաւոր զայրն զայն՝ զոր Աստուծոյն ասէք»։ Եւ ոչ ոք իշխէր մերձենալ ցբազում ժամս՝ անշարժ մնացեալ վիշապին. և մարդիկն կասկածանօք առ սակաւ սակաւ մօտէին։ Իսկ ճգնաւորն Քրիստոսի ի ներքուստ աղաղակեաց, «Քարշեցէք զպիղծդ, զի արտաքս ելից»։ Եւ այս ի պարծանս հաւատացելոց լինէր և յամօթ անհաւատից, և ի փառս Քրիստոսի։

Էին և վարդապետք վարժեալք վարդապետութեամբն Տեառն և ուսուցիչք ճշմարտութեան. Բասիլիոս ծերունին՝ քաջակարօղն ի խօսս և քաջաքարոզն ի պատմել զօրէնս Տեառն. և Գրիգոր քահանայ յամուսնացելոց, յորդախօսն և առատաբանն ի պատգամսն Տեառն. և Ստեփաննոս՝ աշակերտ Բարսղի՝ որ Հոգեձորն կոչեցաւ, առաքելա-

1. Իբրեւ վարձք իր կորեանց բժշկողին՝ բերէ իր բըռնուած եղջերուներու մորթը։

շնորհ բանիւ և գործով։ Ընդ սմա և մեծանունն ի գիտութեան և յառաքինութեան Մովսէս, որ քառասուն աւուրբք ձգտեցուցանէր զանսուաղութիւն. և Դանիէլ՝ աղքատակերպ և գծծասէր գիտնական, որում անուն Մաշկոտն կոչի. և Պետրոս՝ հաւատոյ մեկնիչ Գրոց սրբոց. և Անանիա՝ Փիլիսոփայն մեծ, որ և վանական Նարեկի[1]. սորա և գիրս է ասացեալ ընդդէմ աղանդոյն Թոնդրակաց[2] և այլոց հերձուածոց։ Զոմանս ի սոցանէ ի ծերութեան իւրեանց՝ ի տղայութեան մերում[3] տեսաք աչօք մերովք, ճաշակելով ի քաղցր ճաշակոց բանից նոցա։

---

## ՄԻԹ

### ՇԻՆՈՒԹԻՒՆ ՍԱՆԱՀՆԻ ՎԱՆԱՑ

(ԱՍՈՂԻԿ. Գ. Ը.)

Յաւուրս Աշոտոյ արքայի Բագրատունւոյ շինեցան վանքն Կամրջաձորոյ և Կապուտաքարն ի գաւառին Արշարունեաց[4], և Դպրեվանքն ի Շիրակ գաւառի, և հռչակաւորն Հոռոմոսին[5] կոչեցեալ վանքն. և զի կոչէին զերիցունս Հոռոմոց՝ վասն այնորիկ անուանեցաւ մինչեւ ցարդ Հոռոմոցի վանք, յառաջնորդութեան Յովհաննէս արհեպիսկոպոսին։
Շինեցին և եկեղեցի մի յանուն Ամենասրբու-

1. Սա այլ Նարեկացի համարուի. բայց գրածներն մեզի հասած չեն։
2. Այս աղանդաւորաց դէմ գլխաւոր գրողաց մէկն, զոր յիշեն և այլք։
3. Ժ. դարուն երկրորդ կիսուն։
4. Երբեմն այսպէս գրուի Արշարունեաց տեղ։
5. Տես ի Շիրակ, երես 18։

հոյ Աստուածածնին՝ ի վանքն որ կոչի Սանահին, ի սահմանս Լոռէ քաղաքին, որ էր գեղեցկայարմար և չքնաղատես կոխուածով[1] և պողովատաշ վիմօք գմբեթաւորեալ, և երկնանման խորան, կառուցեալ ի վերայ գագաթան Նշանն ամենայաղթ։

... Յաւուրս որդւոյ Նորա՝ Աշոտոյ Ողորմածի՝ ի բազում տեղիս շինեցան կրօնաւորաց և ճգնաւորականաց տեղիք, նա և ի Սեաւորդեաց աշխարհին[2] ևս, կամակցութեամբ թագաւորիս, մեծամեծ արդեամբք և բազում ծախիւք բարեպաշտուհւոյս և տիկնաց տիկնոյ Խոսրովանոյշ թագուհւոյս, կառուցան և հռչակաւոր ուխտք երկնանման և գմբեթաւոր խորանք, հաւասարակեաց և միաբանակեաց դադարք աստուածարնակաց և խաչաբարձից տեղիք, գեղեցիկ յօրինուածով և կոփածո պողովատաշ քարով... Որոց երկոցուն անուանք են այսոքիկ, Հաղբատ և Սանահին[3]... արանց հինգ հարիւրից և երկու. առաջնորդ Հաղբատայ՝ ճգնազգեաց Սիմէոն ծառայն Աստուծոյ, իսկ առաջնորդ Սանահնայ՝ Յովհաննէս գիտնական այրն Աստուծոյ, որ էր Թուական Հայոց ՆԺ (961)։ Ոչինչ այնուհետև փոյթ և հոգ մարմնական ունելով ի վերայ անձանց իւրեանց. քանզի բնաւ ծախք և պիտոյք սոցա յարքունուստ էր շնորհեալ, առաւել քան զկարիս, ազնուազն և բարեպաշտուհի դշխոյն և բամբիշն ամենայն հայկազեան զարմից Խոսրովանոյշն։

Բերից մեծապատիւ վկայ զՍիմէոն քաջ քարտուղարն Սանահնու, որ Սրբուհւոյ Աստուածածընին հիմնարկութեան և աւարտմանն ականատես էր եղեալ. որ ի ժամուն յայնմիկ գրեալ զգիրս

1. Հաւանօրէն պիտի գրուէր կոփուածով։

2. Ոչ այնքան ընդարձակ երկիր էր որ աշխարհ կոչուէր. սովորաբար Սեւորդեաց ձոր կոչուի, բնակչաց Սեւ կոչուած նահապետին անուամբ։

3. Իրարու մօտ են և շատ հեղ զոյգ յիշուին։

*Բարսղի Կեսարացւոյ Ցաղագս ճգնաւորաց, և նորուն յիշատակարանի գրեալ այսպէս։... « Ես անարժանս ի կրօնաւորաց փցուն գրիչս Սիմէոն, ի Թուականութեանս Հայոց ՆԻԱ (972), ի Նորաշէն վանքս կոչեցեալ Սանահին, հրամանաւ Հօր իմոյ Յովհաննիսի, որ էր վանիցս շինութեան ամ վեց. զոր շինեաց բարեպաշտ Թագուհին Խոսրովանոյշ՝ ամուսինն Հայոց Շահնշահի որդի Սմբատայ Բագրատունոյ Հայոց Թագաւորի, և յառաջին ամի հայրապետութեան հոգեւոր հօրն հանուրց Տեառն Խաչկայ արժանաւոր վերադիտողի, և յեպիսկոպոսութեան մերումս Նահանգի գաւառիս Տաշիր՝ Գրիգորի արժանաւոր հօտապետի, որ և նորուն աշակերտութեան են ամք երկու »։*

*Ձկնի մահուան Աշոտոյ ի Թուականին ՆԻԶ (977), Թագաւորէ որդի նորա Սմբատ. որում պատահէ երթալ ի տեսութիւն եղբօրն իւրում Հարազատին Գուրգենայ, որ էր յայնժամ իշխան բնաւ երկրին Տաշրաց. և ի բազում աւուրս կեցեալ առ միմեանս հանդերձ ամենայն ազատագունդ հայկազեան զօրօք, յիշեն զհոգեւորանոց և զմիաբանակեաց անդիսն որբոց, այսինքն զՍանահնոյ սուրբ Աստուածածնի կաթուղիկէս, որ էր հիմնարկեալ և աւարտեալ հօրն և մօրն իւրեանց. և գրէ կոնդակ և արձան յաւիտենական, Թագաւորական հրամանաւ. օրինակ զայս։*

Կամաւն ամենազօրին Աստուծոյ. Ես Գուրգէն Թագաւոր, Շահնշահի որդի Աշոտոյ Ողորմածի, յազգէ Բագրատունի, յիշեալ զմեղս իմ եւ առաջի մտաց ունելով զաւուր (օր) դատաստանին. եւ ետու առնել ի հալալ գոյից իմոց ջահ մի, ունելով կշռեան կանթեղս ՃԺԲ (112). զի որպէս հոլովելով արեգակն ի ծիր անուոյ յերկնից, եւ զդէմս ի յերկիր ունելով եւ պայծառացուցանելով զսա, որպէս նմին օրինակի եւ ջահս այս ճախր առեալ ի գմբէթ կաթուղիկէիս՝ եւ ոչ զդէմս ի վայր

դարձուցանելով եւ կամ հեղլով զձէԹն, այլ ի պայծառուԹիւն եւ ի լուսաւորուԹիւն սուրբ կաԹողիկէիս։ Եւ ապա չափաւոր ջահ մի այլ յանուն Սրբոց Քառասնիցն, ունելով յինքեան կանԹեղս ըստ Թուոյ նոցա. եւ արդ[1] բերելով զնմանուԹիւն լուսնի. զի որպէս լուսինն ի գիշերի ծագէ եւ խոնաւ ճառագայԹիւք իւրովք հաստուցանէ ըզպտուղ երկրի, այլ եւ ի մխիԹարուԹիւն այնոցիկ որ ձիալարեն ի վերայ ամեհի ալեաց ծովուն, այսպիսի օրինակաւ եւ ջահս այս պայծառացուցանէ զգաւիԹ Սուրբ Աստուածածնիս եւ զսուրբ կաԹողիկէիս Սանահնոյ, ի ծնողաց իմոց գերեզմանատանս Բագրատունեաց, որ են տեղիք հաստուն եւ կատարեալ առունելով զպտուղ հոգւոյն. այլ եւ ճանապարհարան ի վերին կայեանս եւ շաւիղ որ անցուցանէ ընդ յորդահոսան բռնուԹիւն ալեկոծուԹեան գեհենին։ Եւ արդ սոցա որ վառեալ բորբոքին ի տաւնս տէրունականաց եւ յիշատակի սրբոց մարտիրոսաց, մինն ի տունջեան ի ժամ սոսկալի պատարագին, եւ միւսն ի մէջ գիշերի ի լուսաւորուԹիւն սրբոցս, եւ ի պայծառուԹիւն մանկանց Նոր Սիոնի. Եւ Քրիստոսի փառք յաւիտեանս. ամէն»։

---

# ՄԼ

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ԺԱՄԱԳՐՈՑ ԽՈՍՐՈՎՈՒ ԵՒ ԳՐ. ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

*Շնորհիւն Աստուծոյ յայտնաբանուԹիւն տրաբեալ եկեղեցական կարգադրուԹեանց՝ ըստ իւրաքանչիւր ժամուց, ի կատարումն հասուցաք. ոչ որչափ ունէր խորհրդածուԹիւն քարոզչացն եւ ազօ-*

1. Գրելի էր այդ։

թիցն բանք, այլ որչափ հասողութիւն մեր բաւեաց՝ համառօտեցաք։ Եւ թէպէտ և բաղում են եկեղեցականացն կարգաց զանազանութիւնք, քարոզաց և աղօթից և Պատարագամատուցաց, և են որք ըստ մարտիրոսաց յիշատակի, և են որք ըստ տէրունական տօնից, Ծննդեանն և Յարութեանն, և է որ ի շնորհատրութիւն կարգեալք[1]. այսինքն ի Մկրտութիւն, ի Ձեռնադրութիւն և յՕրհնութիւն պսակի, և ի Թաղումն մեռելոց, և ի սեղան հաստատել, և սպաս եկեղեցւոյ օրհնել, և զջուր սրբել ի Յայտնութեան Տեառն, և խաչ օրհնել, և ի յօրհնել զմեռոն, զկալ, զզուարակ, զաղ, զհաս, և որ այլ եւս են շնորհաբաշխութիւնք. և որ վասն ճանապարհորդաց և հիւանդաց, և վասն այլ ինչ սոյնպիսեաց. զորս բովանդակ բան առ բան ընդքննութեամբ արկանել, ոչ միայն մեք գրելոյն չլինէաք հանդուրժող, այլ և ոչ ընթերցողքն՝ լսելութեան։ Բայց եթէ հաստատութեամբ ոք միտ դնէ այսոցիկ՝ որ ասացան, բաւականապէս առ այլսն ամենեսին միտս առանոյ։ Եւ զի՞նչ առնեմք թէ ամենեքումբք գրեցելովքս առ բովանդակ թողելոյն կարողանայ իմաստից. այլ թէ և մասին ինչ ի սոցանէ հասանէ մտաց՝ բաւականանայ առ ամենայն լրումն եկեղեցական կարգաւորութեանց։...

Համարձակեցայ առ այս յանդգնաբար՝ ի հարկէ, և ոչ զի անձին փառս ստացայց, այլ զի զեպիսկոպոսութիւն վիճակեցայ, և ի վիճակելն՝ տգիտութիւն ի յոլովսն վարկայ, և բանիւ՝ ամենայն ումեք զբովանդակ զայս ծանուցանել՝ անհնար գիտացի, պատշաճ համարեցայ ի գրի հարկանել. զի թերեւս այսպէս դիւրին առ ուսանել արարից՝ կամողաց։ Յաղագս որոյ և որք հանդիպին այսոցիկ լսելութեան՝ աղօթս վասն մեր փրկութեան արասցեն, սուղ աշխատութեանս՝ փոխահատոյց լինել

1. Մաշտոց գրոց կանոններն կամ արարողութիւններն են յիշածներն։

առ ի Քրիստոսէ զնորա ողորմութեանցն պարգեւս։ Որում լիցի ամենեցուն մեզ հանդիպել յերկրի և յերկինս, և փառս վերառաքել Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս։

## Յիշատակարան[1]

Շնորհիւն Աստուծոյ եղեւ մեկնութիւն այսմ գրոց՝ ի ձեռն Խոսրովայ Անձեւացեաց եպիսկոպոսի, յոյժ հետեւողի պատուիրանացն Աստուծոյ. զոր մեզ և զովել անճահ է, զի մի գայթակղեսջիք ի նոյն, վասն գոլոյ նորուն՝ հայր իմ ըստ մարմնոյ. որոյ չեմ արժանի կոչիլ որդի և ոչ վարձկան, ըստ գրեցելումն[2]. այլ ի գրելոցդ լինիցին հատու խնդրողքն՝ վասն նորա, որք սրտի մտօք ունկն դնիցեն։ Որք և աղօթիւք փոխադարձել պարտին ընդ տուեցելոյս. և հասարակացն տուողն Աստուած՝ և ձեզ հայցողացդ ձիրեսցէ զիւրական պարգեւ։ Այլ յոյժ ամաչեցեալ և տարակոյս գտանիմ ես Գրիգոր, պարտաւոր պատուիրանաց սուրբ գրոց։

Արդ առաջին սուրբ գրոցս այսօցիկ գծագրութիւն՝ եղեւ ձեռամբ Սահակայ, որդւոյ Տեառն Խոսրովու՝ սոյն սուրբ գրոցս մեկնողի, յերեք հարիւր իննսուն և ինն թուականութեանս Հայոց։

1. Գրիգոր Նարեկացին է ղայս գրողն։
2. Անառակ որդւոյն բանն է, յԱւետարանի։

# ՄԼԱ

## ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ԵՐԳՈՑ ԵՐԳՈՑՆ

Ի ՆԻԶ *թուականութեան* (977) և ի թագաւորութեանս Հայոց՝ հարկեցայ ես Գրիգոր քահանայ՝ ի Նարեկայ, որդի Տեառն Խոսրովայ Անձաւացեաց եպիսկոպոսի, ի Գուրգենայ աստուածասէր քրիստոսապսակեալ արքայէ՝ յորդւոյ Աբուսահլի Համազասպ[1] թագաւորի, առ ի մեկնութիւնս ահաւոր բանիցն Սողոմոնի, և բացայայտել զխորին ծածուկսն որ ի նոսա, որ են քաղցր առ ի լսել։ Վասն զի զփեսայէ և զհարսնէ ասէ. որ և զստեանց և զկարմրացեալ շրթանց, և զայտից գեղեցկութենէ, և զաչաց ցանկալեաց, և զքեռ և զեղբօրորդւոյ և զօրիորդաց. և զայլն ամենայն այսպիսեաց բանից տռփականաց և որտից խողտանաց, սեռն սիրոյ շաղկապ միաւորութեան։ Զոր լուեալ մարդկան՝ անիմանալեօք մտօք՝ յայլ և յայլ իրս իմանային. ապա ի հոգս եղեալ թագաւորին այսպիսի իրի, յղէ առ իս մի անգամ և երկիցս. որում ոչ իշխեցի ընդդիմանալ, զի ծանեայ՝ եթէ աստուածահաճոյ է հրամանն. և մեկնեցի զԵրգս երգոցն, նորին հրամանաւ։ Զի թէպէտ և աւելի գործ քան զիս առի զանձամբ, առ երկիւղի անհնազանդութեան, զի մի թագաւորական հրամանն անկատար մնասցէ. սակայն յոյժ յանդգնութիւն էր ինձ այս, և բազում բամբասանաց արժանի յամենեցունց, նա և յաստուածային կողմանէն՝ պատժոց ակնկա-

1. Արծրունեաց կամ Վասպուրականի թագաւորքն են։ Գրեթէ ամեն թագաւորազունք Արծրունիք՝ երկու անուն ունէին, մին հայկական, միւսն կամ գգուական կամ այլազգի։

լիք։ Բայց յերկոցունց կողմանէ՝ յաստուածայնոցն և ի մարդկայնոցն, զԹագաւորական հրամանն առաջի կալեալ՝ կարծեմ արդարանալ. զի իւր իսկ Քրիստոսի հրամանք է՝ հնազանդ լինել Թագաւորաց՝ իբրև Աստուծոյ. և որ հնազանդի՝ իւր համարի Աստուած. և որ անհնազանդ գտանի, և զայն ևս իւր համարի։ Զոր աղաչեմ զընթերցասէրսդ, մի՛ մեղադրանս յաւելուլ ինձ յաղագս ձեռնարկութեան ի գործ՝ որ առաւել քան զարժանն իմ։ Զի ըստ հարկապահանջ խնդրողին՝ ո՛չ կարացի վերջացեալ գտանիլ, այլ յուսալով ի մի Հոգին Սուրբ, զմտաւ ածի՝ թէ ոչ անտես առնէ զաղաչանսն առ նա, սկիզբն արարի աղօթիւք և արտասուօք խնդրել. որ և նայեցեալ յանարժանութիւն իմ, և ի սրտեռանդն կամսն հայցողին, եբաց զբերան իմ յասել և ի համառօտել զսա, ի փառս Քրիստոսի. Ամէն։

---

## ՄԼԲ

### ՇԻՆՈՒԹԻՒՆ
### ԵՒ ՆԱԽԱԿԱՑԻՔ ՍՐԲՈՑ ԽԱՉԻՆ ԱՊԱՐԱՆԻՑ[1]

### (ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ)

«Ստեփաննոս (առաջնորդ Ս. Խաչին) վերստին ստեղծմամբ ի զարդ պաճուճանաց զարմանագործեաց, և գրեթէ երկին երկնի ի յերկրի վայելչապէս գեղով յօրինեաց. և զկազմած պատշաճողութեան հրաշակառոյց խորանացն՝ քրովբէա-

1. Այս Թուղթիկ գրուածս քիչ շատ հասկանալ ուզողն, պէտք է ունենայ Աւետիքեան Հ. Գաբրիէլ վարդապետի գրած մեկնութիւնը. տպագրեալ ի Ս. Ղազար, ի Վենետիկ։

բնակն յարկաց՝ բարենչան կերպիւ հիմնադրեաց. և նմանասեր տոհմքէազգութիւ որահին Սիոնի՝ սիրատենչակ տեսիւ տիրագրեաց. և համանման երկնաբերձ կայից կանգնեալ ամրոցին, որ ի համար համբարոյ զինուցն օճառաց[1], սայրասուր սլաքաց՝ ոսկեկուռ նիզակաց՝ հազարաւոր վահանաց՝ յապաւինութիւն պահեստի թիկանց, բազմութիւն գնդաց գումարտակաց մարտկաց երբայականաց արանց քաջաց՝ որ ի Թալպիոթ. թագադիտակ փառօք պսակեաց: Եւ ըստ ամբարձման կամարի վերնայարկն գնտի[2] ձգման գմբեթի՝ ճչգրտաբար ճարտարապետեաց. և գունակ խրախարար և բազմահաւաք խորին խնճոյից սուրբ հարսնարանին, զԱստուածամօրն սրբասահման տենչալի տաճարն՝ ամենաբուեստ հիւթիւ զարդարեաց. և անդանօր համանգամայն զանդրանիկացն բոյլ[3] ի միում խմբի բոլորեաց: Եւ երբ քաղաք կենդանեաց շինեալ Աստուծոյ, խօսեալ Յեսուսի, մայր մաքուր որդւոց, հանդէպ տեսակի գեմաց օրիորդաց փեսային, երկօք պարողաց առագաստապատաց ընտրելականաց, անդրդուելի արուեստաւորեաց. և լայնատարած դրամբ անանձուկ կայան բանակի բիւրաւոր զօրաց հրեշտակականաց գերվարագուրեաց: Եւ եւս քան զեւս անստուեր փայլմամբ քան զմովսիսեան շինուած վրանին վկայականի՝ զանգականչ՝ բեհեզազանգուած մետաքսահիւս սպիտակապատուաստ կարմրայարմար շաղաշարման՝ զաճիւնագեղ անճառն խորհուրդ հանրահռչակեաց: Եւ երբ սարդենասեր անպաճ պահանգաց շնորհապատար արարուածոյ յարկի դաւթեան համբակին՝ ճեմարանօրէն արուեստիւ սադրեաց: Զօրմոցն վերադրութիւն՝ վիմախարիսխ արձանակառոյց կեր֊

1. Սողոմոնի շինած զինուց տաճարին նմանցընէ:
2. Երկնից գմբէթն կամ կամարն, նոյն. իսկ երկինքն:
3. Հաւատացեալք և կրօնաւորք:

պիւ առկայեաց. և իբր յականց վանեաց յեռեալց ճարտարագործ արուեստայարմար՝ բազմատեսակ երփնիւ նորոգեաց. և զեզեկիէլեան տեսլեան երեւոյթ անյօդն էութեամբ՝ նոր նմանութեամբ իբր զգայութիւն իրի արծարծեաց. և իբր զմիատանի վերարկու գեղեցկատիպ յանգուածով զբովանդակն նկսեալ յարմարեաց։

Ի նոյն և զաներեւոյթ հանդերձեալ բարեացն ծանօթութիւն փառացն ապառնեաց՝ ի ներկայումս աստ՝ ակներեւ տպիւ գծագրեաց։ Եւ իբր զփայլուած լուսածագ բոցոյ բոցբոքման՝ զորրամատոյց տիեզերալոյսն տեղի[1] ցանկեալ պարսպեաց։ Եւ զարտաքին որմոցն զարձանս մաքրապար տեղւոյն բերկրութեան՝ ճառագայթանշոյլ բեհեզատիպ ըղգեստուքն պճնեաց. իսկ զդիմաց դրանդեացն դիրս՝ սքանչելի քանդակագործեալ քառաշուրթն զարմանազան, իբր ծաղկեղէն զգեստուց հանդերձանս սրբաբեհեզն պատմուճանի առագաստանուէր գեղապանծ հարսինն, ի գլուխ ծայրից լրութեան թեզանեաց շրջապարուրեաց։ Իսկ զդրանցն երեսաց տիպ նկարակերտ յանգուածատաշեալ կարմրերփեան փայտիւք՝ և փղաց ոսկերօք սեռակոտոր այլայլակ գունովք երանգոց, յարակից կայիւք ի պէսպէս մասանց արհեստիւ կապեաց։ Իսկ զմէջ գաւթի յատակացն՝ իբր զկոնք մի ապակեղէն ամենահարթ գոյիւ անխորշ պնդութեամբ պատշաճ պատրաստեաց։ Իսկ զբարձրավանդակ սրբարանն դիտանոցի[2] երկնատեսակ բարձրութեան բեմբին, դաբիրայօրէն յօրինմամբ ըստ սարասի անհուպ և փայլեալ վերին եթերին՝ ի ստորնայնոցս աստի մեկուսեաց։ Իսկ զվարագուրացն անջրպետարան իբր զպատրուակ անքոյթ տեսութեան՝ ի պատիւ պատրաստութեան՝ ի պաշտօն զգուշութեան խորհրդոյ

1. Խորանն։

2. Խորանին տապանակն, ուր Ս. Խորհրդոյ բազմոցն դրուի։

մեծի, ի պատուական հիւթ պայծառ պաստառաց եգիպտացի դիպակակիտուած բազմատեսիլ ասկէփառ և հրակերպ՝ երկնաձեւ և երկվերարկու՝ շնորհազարդ շքով պաճուճեաց: Իսկ զոխրաւանդ և զարաբչատուր կտակիս պաշտամանն գործի՝ սրբութեան սեղանոյն զաքանչելի զգեստն, իբր զսուրբ սրբութեան ստուերին մաքրութեան, և զփայլուն աղօտականին աստ պայծառութեան, և ճշմարտութիւն ստուեթեանն, և զնոր լրութիւն նախնոյն թերութեանն, զվերընդունակն անբաւ բնութեան տէրունեայն մարմնոյ, ի զանազան թելոց գունելոց երկնակերպ կապուտակատիպ յելիմացի կղզեաց[1] ծովայնոց, ծիրանածուէն կերպասիւք պճնեաց: Իսկ զկապ պատուածոյ գօտեացն՝ եթովպացի և բաբելոնեացի բազմագանձ ականց բոցանշայլ յակընթաց՝ գարնանագեղ զըմբըխտաց, աստեղազարդ մարգարտաց, թխատիպ սաթացն[2] կապուտակաց յեռամամբ առ իրեարս, ամենապատիկն համատակօք կրկնելովք զուգայարեաց: Եւ որպէս զդշխոյ ումն թագակալ հանդէպ ճակատոյ պայծառ պատկերի դրուատելի դիմաց դիտակի սրբութեան սեղանոյն՝ մածուցեալ կապեաց: Իսկ զգմբեթին վերամբարձութիւն՝ որպէս կառուցումն ափան անդամոց՝ ցանկալի հասակի մարմնոյ գլխոյ զագաթան մեծ արքայուհւոյ, ի կարծրակուփ քարանց քերելոց քուաքատակեաց: Իսկ զդեղանկար ծաղկայօրինուորակ պատկերացն կենդանագիր տեսակի դեղոցն՝ զտուէրացեալ հին ամանակացն զաներեւոյթն աչաց[3] ներկայիցս, իբր զերեւոյթ յայտնի

1. Ելիմացւոց երկրին դիրքն տարակուսական է: Գարակատանի արեւելեան հարաւակողմն համարուի. Սիկիլիոյ մէջ այլ կար համանուն վիճակ մի:

2. Սաթ, Ambre. այլեւայլ բնական նիւթեր, ուսկից արեւելեայք տիրէին պէսպէս զարդեր շինել:

3. Անցեալ ժամանակաց անձանց կամ դիպուածոց պատկերներ նկարել տալ:

տեսակի ունողաց շնչոյ և զգայութեան՝ արգասաւորեաց։ Եւ ամենայնիւ զամենայնն յամենեցունց մասանց նիւթեղոց, ի մի կերպարան տեսակի զօդեաց։ Եւ որպէս զարձանն եւթնատես վիմին Զօրաբաբելի յանդիման աչացն Յիսուսի ուղղեաց[1], որպէս զտիցն Աստուծոյ տեղի ի վերայ հաւատոյ վիմին հաստատեաց։ Եւ իբր զընդարձակ ծոց արարածոց և երկրի արեգականն շրջագրութեան՝ կանթեղաբորբոք ջահավառ լամբարանշոյլ լուսով փայլեցոյց. և գրեթէ բոցեղէն յեղանակեաց ի մարմնի հողեղինի։

Իսկ զարտաքին զաւթացն յատակս և զդրաստանացն խրախճանութիւնս, ըստ իւրաքանչիւր պատշաճ խորհրդոյ պայծառ պատկանեաց. և տնկեաց հաստատեաց և մշտնջենաւոր հիմնեցոյց խիտս բիւրաւորաց բուսոց անտառաց, ծառս գեղասաղարթս[2], շնորհաշառաւիղս, ամբարձուղէշս, հաստաստեղունս, մարդադարմանս, բազկատածուս, անճունաճիւղս, վայելչատերեւս, բարեբողբոջ բոյսս վարսաւոր փայտից, այլայլասեռ տարազոց մրգոց, համեղահամս դիւրամոքելիս կրից կոկորդաց։ Եւ եւս քան զեւս յաճախեաց ի ցեղից ցեղից ցանկալեաց ցցեալ ի գետինս գերապարարս՝ արգաւանդահողս տենչալի վայրից, իբրեւ զծառն Տեառն և զմայրսն Լիբանանու լերինն Տուրայ՝ առատապէս պայծառազարդեաց. տունկս բերրեաց բերողաց բարեաց, ծաղկընծիւղս, պտղածինս, արմախարիսխս, մրգամատոյցս պատուաստակիրս, պտղապարգեւս. անդս ամենունակս, ջրահոս և շուշանափայլս, սահմանս վտակարբուս, ուղխապարարս, անձրեւասնունդս, ցօղամատոյցս։...

Իբրեւ զամենայն զայս այսպէս կարգեաց, և

1. Զաքարիա մարգարէի ըսածը (Գ. 9) յիշեցընէ. « Զվէմն՝ զոր ետու առաջի երեսաց Յեսուայ, ի վե- « րայ վէմին եօթն աչք են »։

2. Ծառոց և բանջարեղինաց այլեւայլ տեսակք։

Եղեմ երկրորդ՝ փառօք առաջնոյն լուսանորոգեաց[1], ապա այնուհետեւ զընկալեալն ի Տեառնէ շնորհ՝ զփայտն գործակից կենացն արդարութեան, զնշանակն համբերութեան կամաւոր մահուն Յիսուսի, զպատկերն պարկեշտութեան անձանց ճգնաւորաց, զհաճութիւն կամաց աստուածութեանն Հօր, զգործի իրք բարձրութեան փառացն Էմմանուէլի, զնշանն լուսոյ քրիստոսեան խաչին[2], մեծաւ ահիւ և զգուշական երկիւղիւ բարձեալ հանգուցին. յօրինեալ տեղի հրաշակառոյց խորանի նազելի յարկի Սուրբ Կարապետին: Զոր յաւուրս իւրոյ վանականութեանն սկսեալ՝ ի նմին կատարեաց՝ ընտրեալն յայցելութիւն մաքուր գիտողութեան սուրբն եպիսկոպոս. և սրբոյ և ընտրելոյ Առաքելոյն Ստեփաննոսի մարտիրոսարանի անուանն իւրոյ նորոգ յիշատակ՝ ի հանգստեան գերեզմանաց նախնեաց մեռելոց, ի հրաւէր խոստման անսուտ յարութեան, նպաստաւորեաց յառաջագոյն քան զյայտնել սրբոյ Խաչին գալստեան: Բայց զԿարապետին տիրաբնակ և հոգիազարդ տաղաւարն ի խորհուրդ յուսոյ աներկբայ դիտման խաչին գալստեան, իբր ընծայութիւն մաքրութեան ուխտի նուիրեաց[3] նախ քան զաթոռոյն վերակացութիւն: Վասն որոյ և ի գալուստ ծագման փրկականն փայտի՝ իբր ի գուշակումն անուան խոստացեալն շնորհի՝ ի նմին սեպհականեցաւ, հանգուցեալ ի տաճար մեծի մարգարէին Յովհաննու: Իսկ զԱստուածածնին չքնաղ կազմուած աքանչելաշուք բնակութեան՝ զուգամասն կրօնից բարեզարդն եպիսկոպոսութեան՝ կառուցեալ, սկիզբն արարեալ ի սկզբան տէրութեան իւրում նախագահութեանն. ուստի և հանճարեղ խորհրդածութեամբ ի նոյն տաճար վերագայել պատրաստեաց նշանին սրբոյ՝ ի յաւուր ուրբաթու

1. Դրախտին նմանցընէ այս պարտէզը:
2. Այս ամեն նմանութիւնք Խաչին համար էին:
3. Ս. Խաչափայտը դրին ի խորան Ս. Կարապետին:

մեծի պատեքին։ Զի յիշատակ զմնութեան պաշտելի անուանց երկոցունց վեհից, Խաչին և Աստուածածընին, ի միասին երկրպագեսցին, համբարեալ զոմն ծնող, զոմն ծանուցող մարդացելոյ միոյ Աստուծոյ Յիսուսի Քրիստոսի, Հօրն փառակցի։

Իսկ ի կողմանն աջոյ կայից հիւսիսոյ, ըստ առակողէն ընթացից հետոց աջողակ հողմոյն, ունի զԱռաքելայսն տիրապատիւս, և զԼուսաւորչին սուրբ դաւանարանն։ Իսկ ըստ հարաւոյ դիմաց դարումայ՝[1] զեբրայեցի ընտրեալ պատանին զմարտիրոսն Այգդլմըսեհ։ Եւ համբարձեալ վերադրեաց զերադոյն գլան երջանիկն Առաքելոց՝ ի սեան ունողի խորանի Սուրբ Աստուածամօրն՝[2] ի շինուած միջոցի որմոյն կառուցման, զսրբոյն ոսկերս ըզՄկրտչի զարարչին՝ ջրով. և մաքրելոյն ի նմանէ հոգւով՝ զՆախավկայն զերկրորդն Աբէլ, և նորոյս Ադամայ զվշտացն ծնունդ երանեալ, որ եղեւ հրաւիրող մեռելոցն ի նախնին ընդ դրունս մտից երկրին կենդանեաց. զՅակոբայ որդւոյ Յովսեփայ որ կոչիւր Արդար, և սակս սննդական կենցաղակըցութեանն՝ Եղբայր Յիսուսի. զմեծի Առաքելոյն Անդրէի. զհզօրացն վկայից զընտրեալն Ատոմեանց. զՔառասնիցն որ ի Պոնտոսէ երկրին Գամրացւոց սուրբ ղինուորացն[3]. զԿոզմայի և զԴամիանոսի զնահատակացն։ Եւ ըստ կայից հարաւոյ ի սեան խորանին՝ զսուրբ պատանեկին Այգդլմսեհի. զԿիպրիանոսի զԿարքեդոնացւոյն՝ որ յԱփրիկեայ սուրբ և երանեալ եպիսկոպոսի և վկայի., և Յուստիանեայ կուսի իմաստնոյ անարատի և մարտիրոսի. զմերազնեայ վկայից աստուածաշնորհ քահանայից փառաւորեալն Ղեւոնդեանց։ Այսպէս զամենեսին

1. Թուի դաշար, դադրելու կամ դնելու տեղ. եբրայերէն դարում նշանակէ նուէր, զոհ։

2. Այլեւայլ Սրբոց նշխարքները յիշէ տեղաւորած Ս. Աստուածածնի խորանին շուրջը։

3. Սեբաստիոյ Քառասուն մանկանց։

զՄրրոցն պարս՝ ունի հաւաքեալ ընդ Թեւովք իւրովք, իբր զմայր երանեալ ամենայն կենդանեաց՝ Տիրուհին և Աստուածածինն։

Արդ, ծագեաց նորանշոյլ փայլումն Սրբոյ Նշանին՝ ի մտից լուսոյ ականց արեւու[1], ի սահմանս բնակութեան լերանց Սիմնի, կողմանց հիւսիսոյ, յաւուրս ունողաց տանս Վասպուրականի՝ եղբարց երից... անուն կրտսերայն՝ զհաւոյն եդեալ Սենեքերիմ մակադրեալ, իսկ միջնոյն՝ Գուրգէն, և նախնոյն[2] Աշոտ. բայց ի փրկագործն ծննդենէ աւագանին նորոգութեան՝ աստուածութեանն որդեգրութեան[3], անդրանկին՝ Սահակ, երկրորդին՝ Խաչիկ, վերջնոյն՝ Յովհաննէս։ Թագաւորեալք և փառաւորեալք ի մի ամանակի, արք բարիք և աստուածասէրք, խոհեմութեամբ հանճարոյ առաւելեալք, և ըստ պատահման զիմաց պատկերի տեսման երեսի՝ յայտ ցանկալիք[4]։ Իսկ ի սէր սրբոց, ի պատիւ ընտրելոց, ի յարգումն հեզոց, յընդունելութիւն ուղղոց, ի զարդ եկեղեցեաց, ի պայծառութիւն սրբութեան տեղեաց և քրիստոսեան նշանաց, ի սպաս մարտիրոսաց, անկշիռք և անզուգականք։

Սոքա իսկ մեծաւ հաւատով՝ առեալ ընդ իւրեանս զզումարս և զկոյտս նախարարութեան սեպուհն ազատաց, ընդ առաջ խաղացին աստուածեան Խաչին, զորմէ պատմութիւնս է. և վերբերեալ մեծաւ ընծայիւք՝ ի սահմանեալ և յուխտեալ տեղին ածէին, որ է ի ծործորս միջոցի լերանցն Կորդուաց վիճակին Մոկաց. և յանձանձեալ

1. Արեւմտեան կողմէ կամ աշխարհէ, ինչպէս էր Կ. պօլիս նկատմամբ Հայաստանի։
2. Երէց կամ անդրանիկն եղբարց։
3. Իբր թէ այդ առաջին անուններն չէին քրիստոնէական, մէկ մէկ այլ սուրբ անուններ տրուած էին։
4. Երեսօք և կերպարանօք այլ գեղեցիկք են եղեր այդ երեք Թագաւորազն եղբարքն Արծրունիք։

անչափ գրգանօք, ի սրբոյ ուխտին տաճար Հանգուցին։ Ի թիւս չափոյ քանակութեան համարոյ եզանակական շրջանակի հոլովման արուսեկի, որ ըստ ընթացման ամանակի այսմիկ նկատի, չորեքհարիւրորդի, երեսներորդի երկրորդի, յարեթական տոհմիս տումարի[1]։ Եւ անդ գումարեցին խռնեցին ժողովս բազմութեան տօնողաց ազանց. հռչակեցին և աւանդեցին պաշտօն օրհնութեան կատարել աւուրց յաւուրս։ Եւ մատուցին ընծայեցին շուրջ զնովաւ ակումբ՝ զբուրումն խնկոց ջահիւք վառելովք, և ծխովք անուշիւք կնդրկի և կասիայի, խառն ընդ երկրպագութիւն հոգւոյ նմին պատարագ։ Եւ աղաղակեցին բերկրալիր բերանով օրհնեառաք բարբառով, ի շրթունս ընտիրս, ի լեզուս մաքուրս, ի հնչումն երգոց, ի տաւիղ օրհնութեանց, ի գոչումն ազդման, ի ձայն ցնծութեան, ի քնար շնչաւոր, ի փող անձնաւոր, ի խնճոյս հոգեւոր, ի ծնծղայս մարմնեղէն, ի ծափս ձեռին, ի տրոփումն կայթելոյ կաքաւման ոտին, ասելով զհոգեպարգեւն և աստուածաշունչն սաղմոս, «Ետուր երկիւղածաց քոց նշան, զի ապրեսցին յերեսաց աղեղան»։

1. Զորս տողով մէկ ի թուին ՆԼԲ բառը նշանակէ, որ է 983–4 Քրիստոսին։

# ՄԼԳ

## ՎՐԷԺ ԱՊԼՂԱՐԻՊԻ Ի ԴԵՐԵՆԿԱՅ ԵՒ ՀԱՇՏՈՒԹԻՒՆ

(ՄԱՏԹ. ՈՒՌՀԱՅԵՑԻ. ԺԹ.)

Յայսմ աւուրքս եղեւ կոտորած զօրացն Հայոց յԱնձեւացեաց գաւառին, ի Բանակն կոչեցեալ անուն[1], նենգութեամբ առն քաջին Ապլ-ղարիպայ[2]։ Վասն զի Թագաւորն Անձեւացեաց[3], որում անուն Դերենիկն ասէին, եհան զԱպլղարիպն ի յասպարապետութենէ զօրաց իւրոց, զայր հզօր և զքաջ, և եդեալ ի տեղի իւր զՍարգիս զոմն ազատ. և կարի յոյժ վիրաւորեալ լինէր հզօրն Ապլղարիպ։ Եւ յայնժամ բանսարկու լինէր[4] առ զօրսն այլազգեաց, և զամենայն պատճառս ծանուցանէր նոցա, և ասէր, թէ, «Ես ոչ ելից ի պատերազմ ընդ ձեզ. և արդ՝ ի գիշերի յարուցեալ եկայք ի վերայ բանակիս մեր. և ահա այս նշան ձեզ իմոյ վրանին, յորդան կարմիր է[5], և ի վերայ բլրին հարեալ կայ, և զօրք իմ ընդ իս»։ Իսկ զօրքն այլազգեաց եկին ի վերայ նոցա յանկարծակի ժամու. և էր Թագաւորն և զօրքն իւր ի մեծ ուրախութեան.

1. Յատուկ անուն տեղւոյ, թուի զօրաց այն տեղ կենալուն համար՝ այսպէս կոչուած։
2. Սա էր Հասոսնիք կամ Հասեոսնիք կոչուած ցեղէն։
3. Որ և Արծրունեաց։
4. Այլազգեաց մատնել ուզեր է զԹագաւորը։
5. Աղնուական ցեղերն՝ մանաւանդ զինուորականք՝ իրենց դրօշուց և զարդուց յատուկ գոյն ունէին. այս զօրավարին (վրանին) գոյնն ալ որդան ելած կարմիրն էր, Ver à Soie. Թուրք. Գըրմըզ։

և ի գիշերի անկան ի վերայ զօրացն Հայոց զօրք այլազգեացն, և արարին կոտորած մեծ. և մեռան բազում պատերազմողք երեւելիք և քաջք։ Բայց ապաշաւելի այս իսկ էր, վասն զի չէր պատերազմ ի պատեհ ժամու. և արարին ձերբակալ զԴերենիկն՝ զԹագաւորն. և ընդ Ապլղարիպայ վրանօքն ոչ իշխեաց անցանել ոք, վասն զի կայր ի վրանին զօրօք իւրովք պատրաստական։ Եւ յայնժամ տարան զԹագաւորն Դերենիկ՝ ի Հեր[1] քաղաք։

Ցայնմ աւուր Վարագ[2] և ամենայն վանորայքն անէծս ցաւագինս և սաստիկս կարդացին Ապլղարիպայ. միայնակեացք և միաբանակեացք՝ դղըրդեալ ի վերայ նորա՝ լուծին զնա ի հաւատոց[3] և հանին արտաքս ի յեկեղեցւոյ Աստուծոյ։ Իսկ Ապլղարիպայ եկեալ ի միտս իւր՝ լայր, վասն զի էր այր հաւատարիմ և երկիւղած յԱստուծոյ, և կարի յոյժ ապաշաւէր զհեղումն արեան քաջ արանց զօրացն Հայոց։ Եւ յայնժամ հարցուկ լինէր վասն Թագաւորին, եթէ յորում բերդի կայ արգելած՝ ի Հեր քաղաքի. և ծանուցին նմա՝ եթէ ամիրայն Ապշխամ[4] ի դարանաց արձակեաց զԴերենիկն, և յամենայն ժամ հանէ զնա ի խաղ գնտին մէյտանն[5] արտաքոյ քաղաքին Հերայ։ Եւ լուեալ զայս Ապլղարիպայ ուրախ լինէր յոյժ. և յուզարկեալ գաղտաբար առ Թագաւորն Դերենիկ, և ասէր ցնա այսպէս. «Ահա ես յայս անուն ժամու յայնմ տեղւոջ լինիմ. յընտիր և ի սուր ձիոջ հեծիր, և հանց ջանա որ ի յիս անկանիս[6]»։ Եւ յաւուր միում Ապլհաճայ ելեալ խաղայր ի գունտն, բազում ա-

1. Հիմկու Խոյ քաղաքին մօտ։
2. Որ գլխաւոր և եպիսկոպոսական վանք էր։
3. Այսինքն՝ նզովեցին կամ բանադրեցին։
4. Արաբացի կողմնակալ Հեր գաւառի և քաղաքի։
5. Գնտակ նետելու և քշելու խաղի (Jeu de la Paume) հրապարակ։
6. Դէպ իմ կողմս վազեա ձիովդ և գաս։

զատօք իւրովք, և արս հազարս երեք՝ զինուք շուրջ զնոքօք. և Ապլղարիպ կայր ի քմին[1] յիսուն արամբք, և Գերենիկն ի բունպանաց աւագէն[2] խնդրեալ իւր սուր ձի, և տուեալ ինչս իւր. և յայնժամ Գերենիկն եհար զգունտն և վարէր ի դիհն[3] ուր Ապըլղարիպ թագուցեալ կայր ի մէջ անտառախիտ ծառոց դրախտեացն Հերայ. և գաղեալ զերիվարն ուժգին՝ ի բաց թողեալ զգունտն և եղ արարեալ։ Եւ տեսեալ ամիրայն Ապլհաճէի և զօրացն, զհետ յարձակեցան մեծաւ ցասմամբ. և թագաւորն յԱստուած յուսացեալ գնայր քաջապէս և անկանէր առ Ապլղարիպ։ Իսկ ի զօրաց այլազգեաց ոմն խապչիկ՝ այր հզօր և քաջ, ընթացեալ զհետ և հասանէր ի վերայ Ապլղարիպայ. և Ապլղարիպ գոչեաց որպէս զառիւծ. և հասեալ ի վերայ նորա, և գաւազանաբար հարկանէր զնա, և յերկուս բաժանեաց զնա, և պատառեաց զնա ի վերուստ մինչեւ ցեթանս։ Եւ տեսեալ զայն այլազգեացն՝ ի փախուստ դարձան. և Ապլղարիպ ձայն տուեալ քաջ արանց իւրոց, զհետ յարձակեալ և հասանէր ամիրային Ապըլհաճէի, և կամեցաւ զնա ի ձիոյ առնուլ և մինչեւ ի դուռն քաղաքին վարեաց զնա. և ամիրայն որպէս զփայլակն մտանէր ընդ դուռն քաղաքին Հերայ։ Յայնժամ Ապլղարիպն պողպատ նիզակաւն[4] հարկանէր զերկաթի դուռն քաղաքին, և պատառեալ զերկաթն և յայն դեհն անցուցանէր, որ և աներևելի մնաց մինչեւ ցայսօր ժամանակի, և ի տեղն պնդեցին որպէս գրեւեռ։ Եւ այսպիսի օրինակաւ ի ծառայութենէ եհան զթագաւորն ըզԳերենիկ՝ քաջն Ապլղարիպ։ Այս ինչ եղեւ ի Ճուաշ գաւառին Հայոց աշխարհին, ի գեղն որ կոչի Բակ, սահմանակից Վասպուրականայ։

1. Պահուըտած էր. յանկարծ դուրս ելնելու և յարձըկելու համար։ 2. Ախոռապետ։
3. Գնտակը նետած կու քշէր դէպ յԱպլղարիպ։
4. Ճիկռ և Սակր հատ թուր կամ տապար (պալ-տա) նշանակեն։

# ՄԼԴ

## ԳԻՒՏ ՄԱՏԻՆ ՍՐԲՈՅ ԱՌԱՔԵԼՈՅՆ ՊԵՏՐՈՍԻ

## *Թէ զիարդ եղեւ կորուսմն կամ որպէս բերաւ ի Հայս*

(ԽՕՍՔ ՊԱՆԴԱԼԷՈՆԻ ՔԱՀԱՆԱՅԻ[1])

*Յամս Նիկիփորայ[2] տիեզերակալի կայսեր Յունաց, քաջի և առաքինոյ, յաղթող ի պատերազմունս հեթանոսաց, որ ջարդեաց զլուծ իսմայելական՝ որ ի վերայ պարանոցի քրիստոնէից, և խորտակեաց զկզակս նոցա, և առ զանառիկ ամուրս նոցա, մանաւանդ զմեծն և զականաւորն և զհռչակաւորն նոցա զՏարսոն Կիլիկեցւոց, և զկրեակ, որ բնակեալ էին անդ հանապազասուտքն չարաճըճիք դատարկապորտքն[3] այնոքիկ. և արար ծառայս զամենեսեան զայնոսիկ՝ մեծութեան պետութեան Հոռոմայեցւոց, թագաւորն այն՝ երկրորդ զկնի թագաւորութեան վերնոյն. այլ և եբեր զարդս զպիղծ մոգպետաց նոցա՝ ի պատիւ Սրբոյն Սոփեայ. եհաս ինձ տառապեալ Պանդալէոնի և ոչ ըստ արժանեաց քահանայի, իբր թէ ի տեսչութենէ Աստուծոյ՝ ի հրամանէ երկրորդ տիեզերակալի տեառն*

1. Ճոխաբանութեամբ գրուած է, բայց և եռանդեամբ և վայելուչ. Ձեռագիր օրինակք այլ երբեմն աւելցուցեր պակսեցուցեր են:

2. Բ Նիկեփոր կայսրն է՝ Փոկաս մականուանեալ, յամս 963–9: Ի գրչագրին գրուած է Նիկիփաւոս:

3. Եպիմենիդէս քերդողին բան է, զոր յիշած է Պօղոս Առաքեալ ի Թղթին առ Տիտոս, Ա, 12:

իմոյ աւագ Աշոտանէլի Համազասպայ՝ արքայից արքայի[1] մեծ պետութեանս՝ տանս Հայոց, դնել զճանապարհս ուղեւորութեան, որ ի թագաւորեալ քաղաքն Բիւզանդիոն՝ ի Նորն Հռոմ, յերկրորդն Բաբելոնն, եւ ի ճշմարիտն Երուսաղէմ, յամենատեսչն յամենահրաշն ի գլուխն տիեզերաց, յանմատչելին եւ յանկոխելին ի թշնամեաց՝ Կոստանդինուպօլիս, ի ՆԺԴ (414-965) թուականութեանս Հայոց, ի տօնի Աստուածայայտնութեանն ի վեց յունուարի, ի ժամու հինգերորդի. յորում եւ կոխեցի անարժան զարշապարօք իմովք զատակս տանն Տեառն եւ գյարկ բնակութեան Աստուծոյ մերոյ. յորում կայի հիացեալ ուշ յապուշ զարմացմամբ. զի դեռ եւս ոչ էին շիջեալ կանթեղքն վառեալք եւ մոմեղէնքն բորբոքեալք. որ մեծի լուսոյն կային հակառակատիպք, այսինքն արեգակնային ճառագայթիցն[2]: Ապա ուրեմն բղխեաց յիս Հոգին Սուրբ բանս բարիս՝ Ներբողականս եւ դրուատելիս խօսել ինձ՝ ի խորանն լուսոյ, հառաչագին արտասուօք. զի ոչ գիտէի զիս յերկրի, այլ յափշտակեալ մինչեւ յերրորդ յերկինս: Ընդ որում եւ յոյժ հաճոյական գտեալ զգրեալսն յինէն՝ առաջի յարակիրթ հզօրաց քաջաց իմաստասիրացն այնոցիկ. մինչ պատմեցին զգործս իմ՝ թագաւորին. մինչ զի միաբանական հաճոյութեամբ եւ օրհնութեամբ ընկալան զօրհնութիւնս իմ, եւ ոչ եղէ նախատինք հզօր արքայիս իմոյ եւ ոչ տանս Հայոց, եւ կամ վարդապետացն իմոց՝ որք սնուցին եւ ուսուցինն զիս[3]:

1. Այլեւայլ անուամբք կոչուած՝ Արծրունեաց ցեղին կամ Վասպուրականի թագաւորն է, որ թագակից ըրաւ իր որդին Սենեքերիմը: Տես ծան. 4, եր. 290:

2. Իբր թէ այնքան կանթեղք եւ մոմեղէնք վառուած կային, որոց լոյսն արեւու լուսոյն հաւասարէր:

3. Շատ փափագելի էր որ առ մեզ այլ հասած ըլլար այդ զմայլական Ներբողն կամ գովեստ Ս. Սոփիայ տաճարին:

Ապա եղեւ ինձ լինել իբրեւ եօթնամսեան աւուրբք, նստել ինձ ընդ վարդապետս, լսել և ուսանել ի նոցանէ, ի փառազարդեալ խորանին Աստուծոյ, զորմէ մարգարէն ասէ. «Եկայք ելցուք ի լեառն Տեառն և ի տուն Աստուծոյ մերոյ, և ցուցցէ մեզ զճանապարհս իւր և գնասցուք ընդ նմա»։ Զի անդ գումարեալ կան բազմութիւնք հրաշազգեստից կղերիկոսաց, քահանայից և եպիսկոպոսաց, և հոգելից իմաստասիրաց[1], անլռելի հրաշաձայնեալ եղանակօք գեղգեղմամբ ազգի ազգի և անհասանելի իմացմանցս մերոց՝ բանիւք ցնծութեամբ, յամենայն օր ի լսելիսն Աստուծոյ, անհանգիստ իրանամբք ի տուէ և ի գիշերի զփրկութիւն հայցելով տիեզերաց։

Հարցի և ապա քննութեամբ ի վերայ բազմաց և զայս եւս, եթէ զուցէ՞ արդեօք մասն ինչ ի նշխարաց Սրբոց Առաքելոցն Պետրոսի և Պաւղոսի, որք հաճեալք կան և հաւանեալք ի մեծն Հռոմ՝ յերկրորդումն անուանեալս Հռովմ և կոչեցեալս Նոր Երուսաղէմ. պատասխանի ետուն և ասեն, ո՛չ. և պատճառք ոչ լինելոյն այս է զոր պատմեաց Բարդեծան յԵդեսեայն[2], այր կորովի և բանիբուն իմաստասէր և հմուտ ժամանակագրական իմաստութեանց, որպէս կանխեաց ասաց նա վասն այսորիկ. թէ, Մեծ թագաւորն Յուստիանոս յորժամ աւարտեաց զշինուածս հրաշատեսիկ եկեղեցւոյն Սուրբն Սոփեայ, աղաչեաց զՀռովմայեցիս տալ մասն ինչ ի նշխարաց Սրբոց Առաքելոցն՝ ի պատիւ սրբոյ եկեղեցւոյն, զի լինիցի իբրեւ զեկեղեցին Հռովմայ զարդարեալ

1. Յիշեցինք ուրիշ տեղ՝ որ լաւ երգիչներն Փիլիսոփայ կոչուին, այս տեղ այլ նոյն նշանակութեամբ իմաստասէր։

2. Բարդածան Ասորին յիշած են Խորենացին, Բ. կզ, և Եւսեբիոս. բայց Պանդալէոնի յիշածն ուրիշ անձ է՝ եթէ Յուստինիանոս կայսեր ժամանակակից է, կամ աւելի վերջ։

սրբովք Առաքելօք. և զայն ի գինս փոխարինին ոսկւոյ՝ որչափ և կամեցին: Ըստ որում հաւանեալ եղեւ ի Նոցանէ՝ մազս վեց[1] ի մօրուաց Սրբոց Առաքելոցն Պետրոսի և Պաւղոսի, ընդ անհնարին չափոյ ոսկոյն կշռեալ բերեալ եղեւ ի քաղաքն Կոստանդինուպօլիս, և եդեալ ի Սուրբն Սոփի. և ժամանակ ինչ անցեալ՝ դարձեալ հնարեցան Հռովմայեցիքն և գողացեալ դարձուցին անդրէն ի Հռոմ: Եւ պատմութիւնս այս կայր պահեալ մեծաւ զգուշութեամբ յորկեղս մեծի թագաւորին Յուստինիանու:

Արդ դարձեալ մտախորհ լինելով իմ, թէ զիարդ արդեօք գրկեալ եղեն ամենայն ազգք յոսկերաց սրբոց Առաքելոցն, Հնդիկք, Պարթեւք և Մարք և Եղիմացիք, և որ բնակեալ են ի Միջագետս, ի Հրէաստանի, և ի Գամիրս, ի Պոնտոս և յԱսիա, ի Փռիւգիա և Պամփիւղայ, յԵգիպտոս և ի կողմանս Լիբէացւոց, Կրետացիք և Արաբացիք, և միայն Հռոմ եղեւ անդրանիկ ամենայն արարածոց. ապա հասի խաղաղութեամբ յաշխարհս մեր, զօրութեամբ սրբոյ նշանին և աղօթիւք սրբոց Առաքելոցն, և շնորհօք երկուց երանելեաց թագաւորաց մերոց՝ Նիկեփոռայ և Համազասպայ: Լուայ յասելոյ ոմանց՝ եթէ նշխարք կան Պետրոսի Առաքելոյն ի գաւառին Կոգովտի[2], և ոչ կարացի հաւատալ բազում ժամանակս՝ թէ այս լինիցի. ապա յայտնեաց ինձ աստուածահրաշ սքանչելի յայտնութիւնն՝[3] ի ձեռն Ցակոբայ Հայոց Մարզպանի[4], որ ի բուն և ի բնիկ նախարարաց տանս Հայոց, այր լի իմաստութեամբ և

1. Ուրիշ ՕՕ. կ՚աւելցընեն, Վեց մազ ի վեց փող ոսկի, կամ ի վեց փողակի եղեալ:

2. Որ և Կոգայովիտ, մօտ է Տարօնոյ:

3. Ուրիշ Օր. Աստուած զնոր հրաշիցս սքանչելի յայտնութիւն:

4. Ժ դարու Հայոց մարզպանութեան պաշտօնն կամ պատիւն՝ անծանօթ է ինձ. թուի սահմանապահ:

կատարեալ հանճարով, ուղիղ հաւատով և կատարեալ առ աւագասիրութեան խնդիրս, բարերար առ ընկերս և ողորմած առ աղքատս, օգնական անօգնականից, շինող աշխարհի և հալածիչ անիրաւաց, զարդարիչ եկեղեցեաց և պատուադիր քահանայական դասուն։ Ապա եթէ զաշխատութիւնն իւր պարզ և յայտնի բանիւք գրով ձեռին իւրոյ, զՊատմութիւն գալստեան Սուրբ Առաքելոցն յաշխարհս մեր. զոր քննեալ և տեսեալ ի ստոյգ տեղեկութենէ ճշմարտութեամբ, ոչ զմտաւ ածեալ զաշխատութիւնս, եւ ինձ զպատմութիւնն, զի երեւեսցի պարծանք աշխարհիս մերոյ և մեծութիւն թագաւորիս մերոյ, ի մէջ ամենայն տիեզերաց, և լիցի պատմութիւնս (մնացական, և թողաք յիշատակ յաւիտենական) ի մէջ եկեղեցւոյ, ի փրկութիւն թագաւորիս մերոյ՝ երկայն աւուրց կենաց, և թողութիւն մեղաց, և առաջնորդ ի կեանսն յաւիտենից, հանդերձ ամենայն զարմիւք, որդւովք իւրովք և կանամբք, կենդանեօք և ննջեցելօք, նա և իշխանօք և իշխեցելօք, միանգամայն ամենայն ծառայիւք իւրովք։ Զոր թողաք յիշատակ յաւիտենից ի մէջ եկեղեցւոյ. զի յաւուր յիշատակի Սրբոց Առաքելոցն՝ համախմբեալ ժողովք աստուածահաճոյք՝ ընթերցցին զճառս հրաշից որ ի ձեռն Սրբոցն այնոցիկ գործեցաւ, և զգուշասցին յամբարհաւաճ և յանուղղայ գնացից, և պատուեսցեն զքահանայս սուրբս։ Եւ արդ, ապաւինելով ի շնորհս Հոգւոյն Սրբոյ՝ սկիզբն արասցուք պատմութեանս՝ կարգեալ[1] յամենայն լսելիս, որ է այսպէս։

Քահանայ ոմն էր արժանաւոր զարդարեալ ամենայն առաքինութեամբք և սրբութեամբ՝ յԱգրագրնոշնեաց[2] գաւառին՝ որ կոչի Գոգովիտ, ի գեղն որ

1. Գուցէ պիտի ըլլար կարդալ։

2. Կամ Ասպագոշնիք, Տարօնոյ մերձաւոր գաւառ. իսկ միւս անունն սովորաբար գրուի Կոգովիտ։

Բզրայրի գոմ[1] անուն կոչի. և ի գեղն բնակեալ էր այր մի պատուական ի տանուտիրական տանէ. և խաբեալ զնա սատանայ չարութեամբ յայսմ նուագի, անզեղջ և անդառնալի խորհրդով արհամարհէր զքահանայն Աստուծոյ, և անարգէր զնա զարշելի և տգեղագոյն բանիւք, սաստիկ վիճելով ընդ երկար աւուրս[2]: Զայրացեալ սրբոյ քահանային նզովեաց զնա դառնապէս, և ըստ աստուածատուր իշխանութեանն զոր ունէր ի ձեռին իւրում՝ զկապելն և զարձակելն ի յերկինս և յերկրի, կապեաց զնա բանիւ և զօրութեամբն Աստուծոյ՝ յանլուծանելի կապանս իմանալիս հոգեկաշկանդ խեղդմանց, ոչ կարացեալ արձակել զնա ումեք, բայց եթէ բանիւք բերանոյ իւրոյ և մատամբ սրբոյ աջոյ ձեռին նորա: Ապա եհաս վախճան քահանային գնալ զճանապարհս հարց իւրոց՝ ըստ օրինակի ամենայն կենդանեաց. և նա մնաց անզեղջ սրտիւ յ'անել բանտի ի տան կապանացն: Ապա ուրեք եկեալ ի միտս իւր. և գիտացեալ զհիգութիւն կորստեան անձին իւրոյ, ըստ մարգարէին, թէ Յորժամ դարձցիս և հեծեծեսցես և յոգւոց հանցես՝ ապա գիտասցես թէ ուր իցես. սկսաւ այնուհետեւ կոծել զկուրծս իւր՝ լալով և ողբալով, վա՜յ և եղուկ զանձն իւր կարդալով՝ վասն անգիւտ կորստեան անձինն իւրոյ.

1. Կամ Բրայրի, ըստ Յայսմաւուրաց ոմանց Բձաւ և Գոմեր. ուրիշ կերպով այլ գրուած կայ:

2. Յայսմաւուրք՝ ռամկաբար կ'աւելցընեն. «Եւ
»ապա յետ անարգանացն առեալ զքցափ* զլխոյն
»իւրոյ՝ զարկեալ զգետնի, և դիմեալ ի դուռն եկե-
»ղեցւոյն, և անկեալ ի վերայ երեսաց իւրոց հա-
»ռաչեաց ի խորոց սրտէ, աղաղակեաց ի վեր, և
»անէծ զտանուտէրն»:

* Թէպէտ և կ'իմացուի որ այս բառս գլխանոց նշանակէ, այլ և յիշուած է ի գիրս, ի Վկայաբանութեան Ս. Թէոդուլայ, «Քցափ ի գլուխ»:

հարցանէր ցգիտունս գրոց և ցհմուտս օրինացն Աստուծոյ, թէ արդեօք իցէ՞ դեղ անբժշկելի ցաւոյս, և կամ հնար զերծանելոյ յ'անել գրոյ կորըստեանս: Պատասխանի ետուն նմա և ասեն, թէ, Զիք քեզ հնար բժշկութիւն գտանել դառն վիրիդ կամ արձակել յանխզելի կապանացդ, բայց միայն թէ ուղեւորիս ընդ երկայն ճանապարհ որ տանի ի գլուխն տիեզերաց ի մեծն Հռոմ, ուր են Սուրբ Առաքեալքն Պաւղոս և Պետրոս, օրինք եկեղեցւոյ, արձակողքն կապելոց և տուողքն կենդանութեան. նոքա կարեն արձակել զքեզ ի հիւանդութենէդ քումմէ. ընթացիր վաղվաղակի:

Զայս լուեալ նորա՝ ջերմեռանդն արտիւ հաւատչագին արտասուօք անյապաղաբար յուղի անկեալ, առ ոչինչ համարելով զանհնարին երկայնութիւն ճանապարհին, վաճառեալ զամենայն ինչս իւր, ընդ իւր տանելով թոշակ առ ի պէտս առաջի եղեալ ճանապարհին. յաջողեալ նմա ի Հոգւոյն Սրբոյ շնորհաց, ըստ մեծահաւատ աշխատութեանն իւրոյ՝ եհաս ի թագաւորեալ քաղաքն ի մեծն Հռովմ. դիմեալ յերկնանման սուրբ եկեղեցին, անկեալ առաջի պատրիարքին զոր Պապիռան կոչեն, և պատմեաց զամենայն անցս աղետից իւրոց նա և զպատճառս գալոյն: Յայնժամ կոչեաց երանելի հայրապետն զբովանդակ ուխտ սրբոյ եկեղեցւոյն, և ասաց նոցա զամենայնն, և խնդրեաց ի նոցանէ այսպէս ասելով. Արդ այս դիմեալ յարեւելից մինչեւ ի մուտս արեւու՝ եկեալ եհաս առ մեզ՝ մեծափափագ և պինդ հաւատով. եկայք եղբարք, աղաչեսցուք զտէր Աստուած մեր՝ վասն սորա, և զսուրբ զԱռաքեալսն, զի բացցեն սմա զդուռն ողորմութեան գթութեանն Աստուծոյ, և ազատեսցեն զսա յայնպիսի դառն նեղութեան կապանաց: Ապա ամենեցուն զայս լուեալ՝ ախորժելով ընկալեալ զասացեալսն ի սրբոյ հայրապետէն, սկիզբն արարեալ պաշտաման, անհանգիստ լինելով ի տուէ և ի գիշերի՝ զութ օր: Զկնի անցանելոյ ութ աւուրն՝ իբ-

րեւ յԱստուծոյ տեսչութենէ իմացումն եղեալ այսպիսի՝ սրբոյ պատրիարքին, հրամայեաց բերել զշղթայս երկաթիս և դնել ի պարանոց առն այնորիկ, և կապել առաջի Սրբոց Առաքելոցն. և զայս վիճակ և նշան լինել յաստուածուստ եղին ի սիրտս իւրեանց, ասելով. Եթէ շղթայքդ այդ լուծանի ի պարանոցէ դորա, ապա յայտնապէս գիտեմք՝ եթէ ողորմութիւնն Աստուծոյ ժամանեաց յայրդ յայդ և լուեալ աղաչանաց մերոց: Եւ այսպէս. Թողեալ զնա ի կապանս շղթայիցն՝ գնացին: Ապա իբրեւ այգն զառաւօտն մերկանայր՝ սկիզբն առնել տունջեան աւուրն, եկին տեսանել զնա ամենայն բազմութիւնն, ընդ ինքեանս բերելով ըզսուրբ հայրապետն՝ զՊապիոսն. իբրեւ տեսին՝ ի զարմացման եղեալ հիացմամբ մեծաւ փառք ի բարձունս Աստուծոյ առաքեցին, և օրհնութիւն ծնրադրութեան առ Սուրբ Առաքեալսն. զի ահ կալաւ զամենեսին. քանզի լուծեալ էին կապանք շղթայիցն ի պարանոցէ նորա. և նա կայր արձակ և աղօթէր առաջի Սրբոց Առաքելոցն: Հարցին ցնա և ասեն. Ո՛վ այր դու, զի՞նչ եղեւ քեզ, զինչ տեսեալ քո, զիա՞րդ լուծար ի կապանաց այտի. աղէ պատմեա մեզ մեղմով զամենայնն. աղէ ասա ճշմարտութեամբ առաջի այսքան ահագին բազմութեան՝ որ վասն քո այսքան աւուրքս նեղեալք և ճգնեալք են յոտանաւոր տքնութեամբ, զկնի սրբոյ հայրապետիս մերոյ: Պատասխանի ետ նոցա և ասէ. Մինչդեռ կայի ես կապեալ ի շղթայսն, յանկարծակի արկաւ զինեւ թմբրութիւն. տեսի ի տեսլեան դէմ յանդիման, զի քահանայն որ կապեացն զիս՝ նստէր ի վերայ աթոռոյ մեծ փառօք, և Սուրբ Առաքեալքն Պետրոս և Պաւղոս առաջի նորա յոտն կալով. և աղաչէին վասն իմ զքահանայն, այսպէս ասելով. Արձակեա՛, տէր քահանայ, զայրս զայս ի կապանացս՝ յոր կապեցեր. վասն զի ի մեզ դիմեաց այնքան հեռագնաց ճանապարհաւ. արդ, մի յամօթ առներ զյոյս դորա որ ի մեզ. ողոր-

մեծ վասն մեր՝ ողորմելի անձինդ. զի այսպէս հրաման ընկալաք ի վարդապետէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ, յորժամ առաքեաց զմեզ ընդ տիեզերս. Թողլով իւրաքանչիւր ումեք զյանցանս իւրեանց՝ որք հաւատով ապաւինին ի մեզ, և մեք յուսով՝ ի յոյս տիեզերաց Յիսուս Քրիստոս։ Արդ, դու աշակերտ գոլով հեզոյն և մարդասիրին, ողորմեա սմա, նմանելով ողորմածին և մարդասիրին որ զմեղս մեր էառ և զհիւանդութիւնս մեր եբարձ. զիա՞րդ կարէ հանդարտել սիրտ քո՝ չողորմել նմա՝ որ ըմբռնեալն է յայնպիսի դառն և ողորմելի տառապանս։ Իսկ նորա պնդագոյնս բարբառեալ առ Սուրբ Առաքեալսն, ասելով. Չէ հնար այդմ լինել, զի մեծ է վնաս դորա և անբժշկելի է. ոչ է արժանի արձակման։ Իսկ իբրև գիտացին զանխոնարհելի միտս նորա՝ երկաքեան նոքա ի ծունս անկեալ առաջի քահանայիսն, աղաչէին զնա զի լուծցէ ի կապանացն։ Իսկ իբրև յայս պաղատանս կային Սուրբ Առաքեալքն և ոչ ընդունէր, եկն եկաց առաջի նոցա այր մի ահաւոր տեսլեամբ և լոյս զանձամբ արկեալ. իսկ իբրև տեսին զնա Սուրբ Առաքեալքն՝ ասեն ցքահանայսն, Թէ և մեզ ոչ լսես՝ սակայն զդա առ քեզ բարեխօս ունիմք, վասն դորա ողորմեաց սմա և արձակեա զդա ի կապանաց իւրոց։ Ապա յարեաւ քահանայն յաթոռոյն իւրմէ, և անկաւ ի վերայ երեսաց իւրոց յերկիր՝ առաջի Սրբոց Առաքելոցն. ասէ ցնա. Այր դու, արձակեալ ես ի կապանաց քոց, վասն սոցա բարեխօսութեան, և թողեալ լիցի քեզ սաստիկ և անհնարին չար յանցանքն քո։ Զայս ասացեալ նորա՝ յանկարծակի անկան շղթայքն ի պարանոցէ իմմէ. և ես երկրպագեալ Սրբոց Առաքելոցն և քահանային, մեծաւ խնդութեամբ լցեալ՝ զարթեայ։

Զայս պատմեաց ժողովրդեանն և սրբոյ հայրապետին՝ այրն այն. և նոքա մեծ բերկրանօք լցեալ օրհնէին զԱստուած և զՍուրբ Առաքեալսն, որ ոչ անտես արարին զբազմաչխատ զպաղատանս նոցա.

յայնմ ի սքանչելի տեսլենէ գիտացին և ծանեան՝ զմեծ պատիւ քահանայութեան։ Ո՜վ սքանչելեացս. Պօղոս և Պետրոս՝ յորմէ սերովբէքն սարսեն և քրոբէքն պատկառին, որոց՝ ամենայն բազմութիւնքն երկնաւոր զօրացն ահիւ կան առաջի, նոքա առաջի միոյ քահանայի անկեալ կան ի դուռս, աղաչեն զի արձակեսցէ զկապեալն. և զայս վասն այնր՝ զի յայտ արասցեն զպատիւ քահանայութեան՝ ամենայն տիեզերաց։ Զի՞նչ այսր պատուոյ զուգական իցէ. յերկրէ սկիզբն դատողական՝ յերկին առնու. զի զոր սա աստ ի խոնարհ կապէ, զնոյն և նա ի յերկինս հաստատէ. վասն որոյ և զնոյնն իսկ զթագաւորական զգլուխն՝ ընդ ձեռամբ քահանային բերեալ եդ Աստուած, զի յայտ արասցէ թէ մեծ քան զնորայն ունի պատիւ։ Աստ օրհնեցէք ամենայն քահանայք զՏէր, ո կայք ի տուն Տեառն և ի գաւիթս Աստուծոյ մերոյ. ամենայն դասք քահանայից օրհնեցէք զՏէր, որ այսպէս փառաւորեաց զձեզ և բարձրացոյց յերկրի և յերկինս. միայն թէ արժանի գնասցուք ըստ կոչմանն յոր կոչեցարուք. և նմա փառք յաւիտեանս, որ այսպէս բարձրացոյց զկարգ և զպատիւ քահանայութեան։

Ապա յետ այսր սքանչելեաց՝ աղաչեաց այրն այն զսուրբ հայրապետն, զի տացէ նմա հրաման սպասաւորել սուրբ եկեղեցւոյն՝ առաջի Սուրբ Առաքելոցն. և նա հրամայեաց նմա։ Եւ նա եկաց սպասաւորելով սրբոյ խորանին զամս եօթն. և ոչ երբէք մեկնէր ի տաճարէն զցայգ և զցերեկ՝ անհանգիստ աշխատութեամբ։ Ապա անկաւ յետ այսորիկ ի խորհուրդս իւր՝ դառնալ անդրէն ի տուն իւր և տեսանել զորդիս իւր. և խնդրեաց ի հայրապետէն զի հրաման տացէ նմա գնալ յաշխարհ իւր. և հրամայեաց նմա գնալ։ Իսկ ապա ի խորհուրդս եղեալ ի տարակուսի կայր, զմտաւ ածելով թէ զիարդ արդեօք գնացից յաշխարհ իմ և ի տուն իմ, և ոչ լինիցի ընդ իս թոշակ կենաց և

դեղ փրկութեան, մասն ինչ ի Սրբոց Առաքելոցն։ Ապա ի գիշերին յայնմիկ խափանեաց զգուշիւն ժամահարին՝ մինչեւ ցպայծառ ծագումն լուսոյն։ Ապա յարուցեալ հայրապետին և դասք քահանայիցն՝ եկին ի դուռն եկեղեցւոյն, տեսանել թէ զի՞նչ է խափանումն ժամուն. տեսին զի փակեալ էր դուռն եկեղեցւոյն. ապա բացեալ զդրունսն և դիմեցին ամենեքեան ի ներքս առհասարակ. տեսին զայրն զայն շաղախեալ արեամբ, կալով անշունչ իբրեւ զմեռեալ։ Ապա սկիզբն արարեալ ժամու աղաչանաց և պաղատանաց, տեսին զեղեալ նշան առ նա. զի ատամամբքն իւրովք ի բաց հատեալ էր զտղայագոյն ի մատանցն Սրբոյն Պետրոսի, զճկոյթն. իբրեւ զայն տեսին՝ կամեցան սպանանել զնա։ Ապա ձայն եղեւ ի Սուրբ Առաքելոցն և ասէ. Թոյլ տուք զմա վասն մեծի հաւատոյ դորա և սպասաւորելոյն մեզ. և մի՛ հանէք զմասն՝ զոր ունի դա ի մէնջ, զի տարցէ զդա յերկիրն Հայոց։ Ապա թոյլ ետուն նմա, և մեծաւ պարգեւօք և սիրով և օրհնութեամբ յղարկեցին գնալ նմա ի յերկիր իւր՝ ի գաւառն Ասպագունեաց, ի Կոգովիտ, յինքեան ունելով զբացողն դրանց արքայութեանն երկնից։ Եւ եդ զնա յեկեղեցւոջն՝ ի գեղն որ կոչի Գոմ Բծրայրի, մեծաւ ուրախութեամբ, ի փառս և ի գովեստ Ամենասուրբ Երրորդութեանն. այժմ և յաւիտեանս յաւիտենից։

Որք ընթեռնոյք՝ յիշեցէք զտառապեալս Պանտալէոն, զի բազում աշխատութեամբ հանի զդա յարկեղաց Սրբոյն Սոփիայ, և թարգմանեցի ի յունականէն ի հայ լեզու, ձեռամբ օրհնելոյն Յովսեփայ[1]. ի փառս Աստուծոյ։

1. Ո՞վ էր այդ Յովսէփն. առաջ չէ յիշուած։

# ՄԼԵ

## ՆՈՑՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՏԱՂԱՉԱՓԵԱԼ ՌԱՄԿՕՐԷՆ

*Տաղ գեղեցիկ եւ նազելի ի վերայ Մասընցի տան-տիրոջն, որ ընդ բանիւ եղեւ ի քահանայէն իւրմէ, և յետոյ ի Հռոմ արձակեցաւ.*

Ականջ դրէք, եղբարք, բանիւ պատուական,
Զի պատմեմ սքանչելիս Տեառըն զօրութեան.
Թէ որպէս ցուցանէ հրաշս ողորմութեան,
Որ հրեղինաց մտացն է անհասական:
Ի յերկիրն Հայոց գաւառըն Սասուն,
Գիւղըն Գում Բրծայրի որ կոչի անուն,
Կայր քահանայ մի անդ հաճոյ Բարձրելոյն,
Արդար սուրբ և մաքուր և Տեառըն սիրուն:
Կայր անդ և տանուտէր մի ամբարտաւան,
Անահ ի մարդկանէ, լիրբ և անըզգամ,
Որ ի քահանային վերայ յարաժամ
Խրոխտայր և անարգէր զնա բազում անգամ:
Իսկ քահանայն անաք ու անկարեւոր էր[1],
Աղքատ ւ անօգնական, և նա տէր չունէր.
Եւ կարեւոր՝ զՔրիստոս կալեալ էր,
Եւ հայրական աջոյն պահպանեալ էր:
Եւ կայր նա զայրացեալ յառնէն յայնմանէ.
Ելեալ և ի տաճարն Աստուծոյ դիմէ,
Եւ զգլուխըն բացեալ՝ զայրն անիծանէ,
Եւ Քրիստոսի բանիւն անդէն զնա կապէ:
Եւ առեալ ըզտուն իւր ի գեղջէն ելաւ,
Գնացեալ յօտար երկիր անդ բնակեցաւ.
Եւ օր մահուն հասեալ անդ վախճանեցաւ,
Եւ յօտար գերեզմանըն նա թաղեցաւ:

1. Օգնական կամ ոյժ և ինչք չունէր:

Իսկ անէծք և նշխարքն քահանային՝
Կապեալ ըղձանուէրն անդերձանելին.
Իսկ նա անփոյթ առնէր յիմարեալ հոգին,
Մինչեւ եհաս վախճան սուրբ քահանային:
Այս արդէն Թմրեալ ի բաղում գինոյն՝
Ի միտս եկեալ ծանեաւ զղջաւէտ իւր հոգւոյն.
Բախէր զսիրտն և կոծէր ի բաղում սըգոյն,
Վա՜յ և եղուկ կարդայր անձին իւրոյն:
Ելեալ առ վարդապետացն շրջագայեալ՝
Դեղ անողջանալի վիրացըն հարցեալ.
Նոքա ամենեքեան զայս պատասխանեալ,
«Ոչ ուստեք չիք ճար՝ բայց այն որ կապեալ»:
Եւ արք յիմաստնոց նորա ասացին,
Գնալ ի յարեւմուտս՝ յերկիրըն Լատին,
Առ Պետրոս և Պօղոս աշակերտք Փրկչին,
Մայրաքաղաքն ի Հռոմ՝ յաշխարհ Ֆըռանգին.
«Զի նոցա եւ, ասեն, Տէրն՝ ըզբանալին
Երկնից արքայութեանըն յաւիտենին,
Եւ համարձակ խօսին հետ Կենարարին,
Եւ միշտ բարեխօսեն վասն ում և կամին»:
Զոր անյապաղ ելեալ և անդէն գընաց,
Ընդ ծով և ընդ ցամաք ճանապարհ հորդեաց.
Գնացեալ ի Հռոմ, լալով և երկըրպագեաց
Նըշխարացըն սրբոց Տեառն աշակերտաց:
Մըտեալ առ Պապն՝ առաջ զպատճառն երթալուն
Եւ ըզկապիլ նորա յուրմէ սրիցուն:
Իսկ նա վաղվաղակի զուխտ եկեղեցուն
Կոչէ, և ասէ նոցա ըզգործ եկելուն.
Ասէ. Թէ, «Աշխարհաւ ու ազգաւ սա Հայ է,
Եւ ի քահանայէն իւրմէ կապեալ է,
Եւ հաստատուն յուսով առ մեզ եկեալ է
Ցերկար ճանապարհաւ, որ մին տարոյ է:
Եկայք, աղաչեսցուք զԱստուած միաբան՝
Սըրբոց Առաքելոցըս բարեխօսութեամբ,
Միթէ ամենագութ Տէրըն վերնական՝
Տացէ քահանային հրաման արձակման»:
Եւ անդէն միաբան խորհուրդ արարին,
Բերին կապս երկաթի և յոտսըն դըրին.

Զձեռքն և պարանոցն այնպէս պնդեցին
Կնքեալ, և ի տաճարըն տարեալ արկին.
«Թէ արձակի, ասեն, կապանք երկաթոյն՝
Նա այնիւ ծանիցուք զարձակիլ հոգւոյն»։
Կանգնեալ հսկումն արին ի յայնմ իրիկուն,
Մինչեւ եկեալ եհաս լոյս առաւօտուն։
Իսկ այրն հառաչէր և լայր ի սըրտի,
Թէ, «Հոգւովս էի կապեալ ի յերկնի,
Եւ կրկին կապեցայ մարմնովս յերկրի.
Իցէ թէ արձակիմ աստի և անտի»։
Եւ մինչեւ յայս խորհուրդիս էր նա վարանեալ,
Ցանկարծ մեծ ապշութիւն էր ըզնա կալեալ.
Տաճարըն սուրբ պայծառ լուսով էր լըցեալ
Եւ հոտն անմահութեան էր ըզնա զմայլեալ։
Եւ աթոռ զանազան ի լուսոյ կազմեալ,
Զորոյ զնմանութիւնն ոք չըկարէ տալ,
Եւ ի վերայ նորա երէցն իւր բազմեալ,
Արեգական նըման փառօք զարդարեալ,
Եւ Առաքեալքըն սուրբ առաջի կային,
Կապեալ ոտքն և զձեռքն՝ պաղատէին
Արձակել ի կապից զայրըն խնդրէին։
Եւ նա չլուաւ նոցա իսկ ամենեւին։
Եւ կայր յարեւելից կողման տաճարին
Թագաւոր մանկազոյն բազմեալ յաթոռին,
Եւ էր տեսիլ նորա յոյժ ահագին,
Եւ հազարք հազարաց ըզնա պաշտէին։
Իսկ Առաքեալքն անկեալ հանդէպ աթոռին
Եւ երկըրպագեցին անմահ արքային.
Պատմեն զընդդիմանալըն քահանային,
Թէ, ոչ լսէ թողուլ զմեղս յանցաւորին։
Եւ Տէրն զՌափայէլն յուղարկէ առ նա,
Արձակել ի կապից զայրն որ անկեալ կայ։
Ծունր ի յերկիր կրկնեալ դէմ Փրկչին՝ նորա,
Ասէ, թէ Չէ հնար թողութեան նորա.
Զի շատ նախատանօք սա անարգեաց զիս,
Եւ ի յիմ հայրենի տանէն վարեաց զիս.
Ես զայրացեալ մընամ աւուրն՝ որ յայտնիս,
Եւ առնես դատաստան ընդ սա և ընդ իս»։

Աստուածն ամենայնի որ մարդասէր է,
Եւ վասըն փրկութեան մեր մարդ եղեալ է,
Ելեալ դէպ ի երէցըն քայլս արձակէ,
Բարեխօսել առ Նա վասն որ կապեալ է։
Իսկ քահանայն իբրեւ կանգնեալ զՏէրն տեսս,
Անկեալ և ի յերկիր մածուցեալ զերես,
Ասաց, թէ, « Արարիչ Աստուած, մեղայ քեզ ».
Եւ դարձեալ ցայրն ասէ, Տէրն արձակէ զքեզ։
Յորժամ որ քահանայն արձակեաց զհոգին՝
Բակտեցաւ ի Նմանէ կապանքն երկաթին.
Ելեալ երկըրպագեաց Յիսուսի Փրկչին,
Եւ օրհնեցաւ աջով իւր քահանային։
Իսկ Հայրապետն՝ ուխտիւ որ յաղօթս կային՝
Առաւօտուն եկեալ զտաճարըն բացին.
Տեսին զայրն արձակեալ զոր կապեալն էին,
Եւ խնդութեամբ լըցեալ զԱստուած օրհնեցին։
Հարցմունք եղեալ Նմա զպատճառս արձակման,
Եւ Նա կարգաւ պատմեաց Նոցա զայս՝ ամենայն.
Զխնդիրս Առաքելոցըն Տեառըն հարցման,
Եւ ազատիլըն իւր շնորհիւ տիրական։
Յայնժամ ի սուրբ Փափէն սկսաւ Նա խնդրել.
Ասէ, թէ, Լուսաւոր հոգւոյս խաւարել՝
Հրաման տուր ինձ տաճարիս այս ծառայել,
Եւ զերախտիս Սրբոցն աստէն վըճարել։
Եւ Հայրապետն երետ ի Նա զբանալին.
Եւ յանձն արար ի Նա զհոգըս տաճարին։
Եւ Նա ուրախութեամբ մինչ յեօթըն տարին
Սպասեալ Առաքելոցըն սուրբ տապանին։
Ապա խորհուրդ բարի արկեալ ի սըրտին՝
Գընալ ի յարեւելս իւր հայրենին.
Եւ ասէր։ Պիտէր ինձ աստ մասն և բաժին
Ի Նշխարաց սրբոց Պետրոսի վիմին։
Զի պատուական մարմինքն են յայտնի եդեալ
Ի յարծաթի տապան և ոսկով կազմեալ.
Անապական և սուրբ անդէն մընացեալ,
Ոչ մազ մի ի գլխոյըն չէ պակասեալ։
Գաղտաբար գընացեալ ի մէջ գիշերին
Եւ բացեալ ըզտապան Սիմոն Պետրոսին,

Եւ կտրեալ ատամօք զաջ ճկոյթ ձեռին.
Ի յահէ խելքն անցեալ՝ անկեալ ի գետին։
Զի ահագին ձայնիւ տաճարըն գոչեալ,
Մինչ ի բոլոր քաղաքն անդէն ժամանեալ.
Ելեալ ամենեքեան և անդէն դիմեալ,
Եւ տեսին զայրն անկեալ արեամբ ճապաղեալ.
Եւ նոքա ջուր բերին յերեսըն ցանել,
Եւ ապա խելաբերեալ սկսան հարցանել.
Եւ նա զինչ որ արար՝ սկսաւ պատմել.
Եւ նոքա կամեցան զնա սփոփանել։
Եւ կրկին ձայն եղեւ ի սուրբ տապանէն,
Թէ, «Մի առնուք ըզմասն ի լուսարարէն,
Վասըն ծառայելուն ի բոլոր սրտէն.
Թողէք՝ զի տանիցէ ի յերկիրն իւր մէն»։
Յաղում զանձս և ղուռմաշըս նորա տուին,
Եւ խիստ մեծարանօք զնա յուղարկեցին։
Եւ նա եկեալ եհաս յաշխարհըն վերին,
Ընդ ինքեան ունելով զերկնից բանալին։
Եկեալ ի Կոգովիտ գաւառըն Սաանոյ,
Եւ զագատիչ հոգւոյն իւր և մարմնոյ՝
Եդ ի կեկեղեցինըն Գոմ Բըծայրոյ.
Եւ ինքն անդէն հանգեաւ ի փառս Աստուծոյ։

---

# ՄԼԶ

## ԱՇՈՑ (Բ) ՈՂՈՐՄԱԾ
## ԹԱԳԱՒՈՐ ԲԱԳՐԱՏՈՒՆԵԱՑ

(ԱՍՈՂԻԿ. Գ. Ը.)

Զկնի Աբասայ թագաւորեաց Աշոտ՝ որդի նորա, որ և Շահանշահ կոչիւր, ամս 25. և Մուշեղ՝ եղբայր նորա առ նովաւ թագաւորեաց ի Կարս։ Այս Աշոտ խաղաղասէր բարուք կալեալ զաշխարհս Հայոց՝ խոնարհութեամբ և ողորմածութեամբ ան-

ցոյց զամենեքումբք. վասն զի զգոնջացեալսն[1] և զկաղսն և զկոյրսն՝ հաւաքէր առ ինքն, և բարձակեց ինքեան առնելով ի խրախճանութիւնս, զօմանս ի նոցանէ՝ իշխան և իշխանաց իշխանս և կիւրապաղատս անուանէր, և զբօսնոյր նոքօք. և զքօսն կարմիր և զվէրս նոցա՝ առաջի աչաց իւրոց՝ փոխանակ զարդուց և ականց փայլելոց՝ համարէր: Այլ և զբաժակն իւր Թագաւորական ըմպելեօք մատուցանէր նոցա. և յորժամ Թարախ վիրաց նոցա խառնէր ընդ գինւոյն՝ յայնժամ զմնացորդս նոցա առեալ ինքն ճաշակէր[2]: Եւ այնքան առատաձեռնութեամբ բաշխէր կարօտելոց, մինչեւ ի մահուն իւր ոչ լինել դրամ մի ի գանձատան նորա. այլ և զկապուստ զարդուցն և բազմականացն և որմոց՝ տայր կարօտելոց. և քաւեաց զմեղս իւր ողորմութեամբ և գթով անանկաց:

Յաւուրս սորա շինեցան կրօնաւորանոցք՝ ճգնաւորականաց տեղիք Սեւաորդեաց աշխարհին, հաւասարակեացք, միաբանականք, ըստ յառաջասացեալ կանոնին սահմանադրութեան Սրբոյն Բարսղի. որոց երկոցունց տեղեացն անուանք՝ Հաղբատ և Սանահին[3], հանդէպ միմեանց, միակրօնք ի տան Աստուծոյ՝ արանց հինգ հարիւրից:

1. Քոսոտ, բորոտ, կամ խեղանդամ. գոնէ նշանակէ եւս՝ անտաշ կոշտ փայտ:

2. Պժգալի առ բնութիւն. որոյ յաղթելով՝ ոչ միայն Թագակիցն Աշոտոյ Լուդովիկոս Թ. Փռանկաց, այլ և կուսանք (որպէս Սիենացին Կատարինէ) ըրած են այդպէս: Քրիստոս՝ ցուրտ ջրոյ բաժակ մի տուողին՝ վարձք խոստացաւ. իսկ այդպիսի բաժակի ի՞նչ կու տայ:

3. Շատ հեղ յիշուած գերահռչակ վանքեր, մինչեւ հիմայ չափաւորապէս չէն են:

# ՄԼԷ

## ՇԻՆՈՒԹԻՒՆՔ ՊԱՐՍՊԱՑ ԱՆԻՈՑ ԵՒ ԿԱԹՈՂԻԿԷԻՆ ԵՒ Ս. ԳՐԻԳՈՐ ԵԿԵՂԵՑՒՈՅ

(ԱՍՈՂԻԿ. Գ. ԺԱ)

*Զայսու ժամանակաւ մեռաւ թագաւորն Հայոց օրհնեալն Աշոտ, ի ՆԻԶ (977–8) թուին. և ի նոյն աւուր թագաւորեաց Սմբատ՝ որդի նորա ամս 13։ Սա լիր արկեալ՝ պարսպափակ առնէ զպարիսպն Անւոյ յԱխուրեան գետոյ մինչև ցձորն Ծաղկոցաց, կրով և վիմովք մածուցեալ մահարձանօք բրգանց, բարձրաբերձ պարսպեալ բայագոյն քան զհին պարիսպն՝ յընդարձակութիւն քաղաքին, և մայրագերան դրամբք երկաթագամ, հաստահեղոյս բեւեռապինդ ամրացուցեալ։*

*Արկանէ հիմն և մեծաշէն եկեղեցւոյն ի նոյն քաղաքին Անւոյ, ի ձեռն ճարտարապետին Տրդատայ[1], որ զկաթողիկոսարանին եկեղեցին շինեաց յԱրգինայ։...*

*Կատարամիդէ թագուհի բարեպաշտուհի եղեալ, որ էր դուստր Վասակայ՝ Սիւնեաց իշխանի, շինեաց զհիմնարկեալ եկեղեցին Սմբատայ՝ ամենապայծառ վայելչութեամբ, բարձրաբերձ կամարօք գմբէթաւորեալ խորան երկնանման. և զարդարեաց ի զարդ ծիրանեծաղիկ ոսկեթել, նկարագործ անկուածոց արծաթեղէն և ոսկեղէն անօթոց, և բազմապայծառ լուսատու անօթոց վայելչութեամբ.*

*1. Այս հռչակաւոր ճարտարապետն է՝ որ հրաւիրուած ի կայսերէն Յունաց՝ գնացեր և նորոգեր է Կոստանդնուպօլսի տիեզերահռչակ Ս. Սոփիայ տաճարին փլատուած մաս մը։*

*որովք ջահանայր ըստ երկնային կամարին՝ կաթողիկէն սուրբ, որ ի քաղաքին Անւոյ*[1]։...

*Ցայնմ ժամանակի, յորում լնոյր լրութեամբ ամն հազար մարմնանալոյ կամ մարդանալոյ Տեառն մերոյ, ի Վասլի կայսեր յաւուրս, Գագիկ՝ արքայ Հայոց, խորհուրդ բարի ի յանձին կալեալ՝ զմեծաշէն եկեղեցին, որ ի Քաղաքոշդաշտի անուամբ Սրբոյն Գրիգորի շինեալ, որ էր փլեալ և կործանեալ, կամեցաւ նոյնաձեւ շափով և և յօրինուա-*

*1. Արժանի է այս տեղ ընծայել այս մեծագի Թագուհւոյ չինուածոյն արժանաւոր՝ վրան քանդակած արձանագրութիւնն եւս.*

**Ի ՆԾ Թ. Հայոց ✠ ՄԺԹ Թ. Հոռոմոց ի ժամանակս աստուածապատիւ եւ հոգեւոր Տեառն Սարգսի Հայոց կաթողիկոսի եւ ի մեծափառ թագաւորութեանն Գագկա Հայոց եւ Վրաց Շահանշահի ես Կատրանիդէ Հայոց թագուհի դուստր Վասակա Սիւնեաց թագաւորի յողորմութիւնն Աստուծոյ ապաւինեցա եւ հրամանաւ առն իմո Գագկա Շահանշահի շինեցի զսուրբ կաթողիկէս զոր էր հիմնադրեալ մեծի Սմպատա եւ կանգնեցաք տուն Աստուծոյ նորոգ եւ կենդանի ծը-**

ծով յարդարել ի քաղաքին Անւոյ[1], հիմնարկեալ ի կուսէ Ծաղկոցաձորոյն, ի բարձրաւանդակ տեղւոյն. տարփատենչ տեսողացն, մեծատաշ, վիմորդեան, կոփածոյ վիմօք, մանուածոյ քանդակաւ

նունդ Հոգեւոր եւ արձան մշտնջենաւոր. զարդարեցի եւ զարդիւք պատուականաւք նուէրք ինձ ի Քրիստոս եւ զարմից իմ եւ որդոց Սմբատա Աբասա եւ Աշոտոյ. Հրամայեալ եմ ես Տէր Սարգիս սպասաւորաց եկեղեցոյս յետ ելից բարեպաշտ Թագուհոյս զՎարդաւարին[2] յիսնեակսն միով քառասնիւ կատարել անխափան մինչեւ ի գալուստն Քրիստոսի. Եթէ ոք զարձանագրեալս անփոյթ առնէ՝ դատապարտեալ եղիցի ի Քրիստոսէ.

1. Այս Գագկայ պանծալի շէնքն այլ իր նախագաղափարին (Քաղաքուղաշտի՝ եկեղեցւոյն) պէս հիմայ աւրուած է. փոխան եկեղեցւոյն՝ ներկայանայ այստեղ իր վայելուչ հանգստարանն՝ Ս. Գէորգ կոչուած մատրամբ, որ չէ հեռու իր հօր Ողորմածին Աշոտոյ շիրմէն:

2. Ոմանք ի նախնեաց մերոց այսպէս գրուածը իմաստակօրէն կամ ստիպեալ մեկնեն, թէ Վ տառը թուելով կարդալու է՝ արդաւար, իբր թէ հիմայ Աստուած իբրեւ աւար ժողվէ զհոգիս մարդկան՝ յար-

յօրինեալ, լայսանցայց պատուհանօք, երրակի դրանց դրանդիօք, աքանչատես տեսլեամբ գմբէթաւորեալ՝ գունակ գերամբարձ և երկնանման գնդին[1]։

---

# ՄԼԸ

## ԱԲԱՍ ԹԱԳԱՒՈՐ ԿԱՐՈՒՑ ԵՒ ՎԱՆՔ ՇԻՐՄԻՆ

(ԱՍՈՂԻԿ, Գ. ԺԷ.)

Ցայսմ ժամանակի, ի թուին ՆԼԳ (984) Մուշեղ՝ թագաւորն մայրաքաղաքին Կարուց[2] վախճանի. և փոխանակ նորա թագաւորէ Աբաս՝ որդի նորա, ամս վեց։ Սա յառաջ քան զթագաւորելն էր մանուկ փոյթ և կայտառ, և կարծիս տայր տեսողացն՝ անհաղորդ լինել բարեաց ինչ գործոց հոգևորաց։ Իսկ յորժամ եհաս նա յաթոռ թագաւորութեան, երևեցաւ նա այր չքեղ, լի հանճարով և իմաստութ, ընդ առաջին իմաստութեան համարեալ, և

քայութիւն։ Իսկ սովորական Վարդավառ գրութեան հին պատճառն է հեթանոսաց տօն մի՝ Աստղկան կամ Ափրոդիտեայ, որոյ նուիրած էին վարդը՝ ծաղկանց թագուհին, զոր մեր եկեղեցին վայելչապէս զուգեց Քրիստոսի հրաշափառ Այլակերպութեան։ Շատերն գայս յիշեն. նշանաւոր գանեմ զբան Ցովհ. Երզնկացւոյ. «Բոլորք նովաւ կոչին ռոդիսմոս (Ῥοδισμὸς) » որ է Վարդավառ, յերկոտասանէն մայիս ամսոյ » մինչև ի կատարումն յունիս ամսոյ. զոր քրիստո- » նէից առեալ Աստուածածնին նուիրեցին »։

1. Երկնանման գունտն միթէ նոյն ինքն երկինքըն չէ՞։

2. Յառաջ քան զԱնի շինուած և հաշակուած է Կարս, և ամրութեան համբաւն և փորձն ցուցած է շատ անգամ, մանաւանդ դեռ նոր անցեալ (ծթ) դարու, Օսմանեանց և Ռուսաց պատերազմաց առթիւ։

դարձաւ նա յայր այլ։ Եւ սկիզբն արարեալ ամենայն բարեգործութեանց, նախ և առաջին՝ երարձ նա յաշխարհէն իւրմէ զաւազակութիւն, զմարդադաւութիւն, զոր ազգքն Վանանդայ իբրեւ զհայրենիք ունէին, ըստ առելոյ պատմագրին[1]. և յաւուրս հօր սորա ոչ միայն ի ճանապարհս և ի բացեայ տեղիսն կողոպտէին, այլ ի նոյն ինքն ի քաղաքին՝ յերեկոյացեալ ժամուն. և զգիշերն ամենայն ճիչք և ձայնք կողոպտանաց լինէին։ Այլ սա ինքնին վրէժխնդիր եղեալ, և զգտեալ գողսն անաշառս մահու դատապարտեալ, ոչ խնայելով ի մեծս կամ ի փոքրս, յիշխանս կամ ի շինականս. և այնպէս խաղաղացոյց զաշխարհն իւր, մինչ զի ի գիշերի իբրեւ ի տուընջեան, և յանապատի՝ իբրեւ յապարանս շրջէին, ամենեքեան շինութեան և աշխատաժիր գործոց պարապեալ, և արդարադատ իրաւամբք ուղղեալք։ Նա և որ սովորութեամբ անկարգութիւն էր յաշխարհիս Հայոց, իշխանաց և ազատաց որովայնամոլութեամբ ապականել զկարգեալ զաւուրս պահոց՝ զչորեքշաբաթ, զուրբաթ և զաւուրս շաբաթուց, բաց ի մսոյ՝ կթեղէն կերակրովք. յայնմ՝ անձամբ օրինակ եղեալ, ոչ ի կթեղինաց ինչ և ոչ ի ձկանց ճաշակեալ, և հացիւ և բանջարեղէն մրգօք անցուցանէր զաւուրսն զայնոսիկ՝ զօրինաւորեալս կանոնիւ։

Եւ ապա խորհուրդ բարի կալեալ յանձին իւրում, շինել վանս ի փրկանս անձին իւրոյ և ի յիշատակ հոգւոյ յաւիտենական. և ընտրեաց տեղի ընտրանաւ՝ ի գլուխս Արշարունեաց գաւառին, որում Շիրիմն[2] կոչիւր. և ընդարձակագոյն պարըսպեալ որձաքար վիմօք, չորեքկուսի ձեւով, յիւրոց գանձուցն մեծածախ աշխատութեամբ յարդարեալ

1. Որ է Խորեն. (Խդ, Գ.) «Զաւազակութեան գործ՝ »մեծցանկութեամբ գործէին, և ուղիղ Թուին նոցա»։
2. Անուանէն գուշակուի որ այդ տեղ մեծագործ շիրիմք՝ գերեզմանք՝ կանգնուած են ի հնումն։

զամենայն շինուածոն պիտոյից, ի բնակութիւն կրօնաւորաց: Եւ ըստ հռչակաւոր տեղւոյն կացուցանէ առաջնորդ ուխտին զայրն Աստուծոյ զՄովսէս; ընտիր երեւեալ յամենայն աշխարհիս Հայոց. զի էին սոքա արք երեք, Մովսէս և Յովհաննէս և Յամղիքոս[1], եղբարք ըստ մարմնոյ, եւս առաւել հոգւով միաբանունդք. միակրօնք՝ ի կարգս Աստուծոյ. յորս էր մի հոգի և անձն, և բնութիւն շնչակապութեան յերիս անձինս բնակեալ, երիւք խոստովանութեամբ զԵրրորդութիւնն Սուրբ փառաւորեալ բարեպաշտութեամբ. և երիւք առաքինութեամբ պայծառացեալ, գործելով և պահելով և աղօթիւք: Եւ այսպէս կեցեալ առաքինութեամբ և բարի անուամբ՝ ի միում ամի վախճանեցան ի ՆԾԱ (1002) թուին:

Իսկ մայր թագաւորին Աբասայ՝ բարեպաշտուհի ի բարեպաշտ ծնողաց, որ է քոյր թագաւորացն Փառիսոսոյ[2] Սենեքերիմայ և Գրիգորի, ի բաց ընկեցեալ զերկրաւոր պսակն, յոչինչ համարեալ զփառս անցաւորս, ընթանայր զհետ երկնաւորին. զվարս կրօնաւորութեան յանձն առեալ, երթեալ բնակէ ի տեղին որ Թրիճ վանք կոչի[3], զի են եկեղեցիք փորածոյ ի սպիտակ քարի, ընդդէմ Հարաւոյ. և աղօթից և գործոց բարեաց պարապեալ և հոգեւոր առաքինութեան:

1. Գրուի և Ամլիքոս, անուանք Հայոց, Ιάμβλιχος, յոյն անուն, քանի մի հռետորաց. բայց այդ անուամբ Սուրբ չի յիշուիր:

2. Վերջին թագաւորին Սիւնեաց, որոյ սահմանակից է Փառիսոս գաւառ բնիկ Արցախոյ:

3. Կուսանաց վանք մ'էր նոյնպէս շինուած յԱբասէ, որոյ դիրքն յայտնի չէ, բայց Երասխաձորոյ կողմերն ըլլալու է:

# ՄԼԹ

## ՀԱՅՔ ԵՒ ՎԻՐՔ ՅԱՂԹԵՆ ՄԱՄԼԱՆԱՅ ՅԱԳԱՀՈՒՆԻՍ

(ԱՍՈՂԻԿ. Գ. ԽԱ.)

Յայսմ ամի և ի սոյն աւուրս, ի ՆԽԷ (998) թուին, դարձեալ զօրաժողով լինի Մամլան որդի Աբլհաճի, Թոռն Ռովադայ՝ ամիրայի Ատրպատականի, գալ ի պատերազմ ի վերայ կիւրապաղատին Դաւթի[1]. և կուտէ առ ինքն զրազմութիւն զօրացն Պարսից և Տաճկաց, և օգնականութեամբ ամիրային Խորասանոյ և այլ խառնաղանճ զօրօք բազմօք, խորհի տիրել Հայոց և Վրաց, շինել զքաղաքն Կարնոյ և յաւարի առնուլ զերկիրն Տայոց, փոխանակ զի ի Մանազկերտ զտուն աղօթից նոցա կործանեցին քրիստոնեայք։ Եւ եկեալ ի Թաւրիժոյ՝ ի քաղաքէ իւրմէ, ի սահմանս Հերայ[2] ծանր ամբոխիւ, լայն բանակաւ, անցանէ ընդ աշխարհն Վասպուրականի. գայ, իջանէ ի գաւառն Ապահունեաց[3]։ Իսկ կիւրապաղատն Դաւիթ ոչ անձամբն երթայ ի պատերազմ ընդդէմ նորա, զի այր ծեր էր և անցեալ զաւուրբք, այլ առաքէ առ արքայն

1. Իր ժամանակի արեւելեան թագաւորաց և իշխանաց մէջ ամենէն խոհեմն և զօրաւորն, զոր Հայք և Վիրք իրենց ազգակից համարէին։ Յունաց կայսերէն տուած պատուոյ անուամբն յիշուի. իր երկիրն Տայք՝ միջասահման էր Հայոց և Վրաց, Ախալցխէի կողմերն։

2. Յիշուեցաւ յ'233 Յօդուածի, այժմու Խոյ քաղաքն։

3. Ուր էր քաղաքն Մանազկերտ (Մէլազկերտ) ի Տուրուբերան նահանգի։

Հայոց Գագիկ (Ա.) և առ Թագաւորն Վրաց Գուրգէն. (զի մեռեալ էր Բագարատ՝ հայր Գուրգենայ, և Թագաւորեալ Գուրգէն՝ որդի նորա ընդ նորա), տալ զօրս յօգնականութիւն։ Եւ Գագկայ՝ յամենայն զօրացն Հայոց հատեալ զգունդ վեց հազար յընտիր վառելոցն, գումարէ ի ձեռն իշխանաց իշխանին Վահրամայ[1] որդւոյ Գրիգորի Պահլաւունւոյ, որ զՄարմաշէն և զԲագնայր[2] շինեաց, և Աբլքարայ մաժիստրոսի՝ որդւոյ Վահրամայ, և մարզպանին Աշոտոյ. և զօրք Թագաւորին Վանանդեցւոյ Աբասայ, նոյնպէս և Գուրգէն՝ Վրաց Թագաւորն, յընտրելոցն իւրոց վեց հազարի առնեւձիոյ՝ տայ ի ձեռն փերսի՝ իշխանաց իշխանին՝ որդւոյ Ջոջկայ. և ամենայն բազմութիւն զօրացն կիւրապաղատին Գուլթի՝ ի ձեռն Գաբրիէլի՝ որդւոյ Ոչոպընդրայ. որք յառաջ երթեալ ի լեառն Մուշկաւ[3], ի ձորն Աղոտից, պահէին զառաջս պարսիկ զօրուն, կարծելով նախ է Բագրեւանդ մտանել։ Առ որ միաբան հաւանէին զօրքն Հայոց և Վրաց. և չուեալ երթան ի գաւառն Ապահունեաց. բանակին յանդիման բանակին Մամլանայ, ի բարձրաւանդակ, ամրագոյն տեղւոջ մի, ի սահմանս դեղջն Ծմբռոյ[4]։ Եւ բազում աւուրս ի նմին տեղւոջ օթեւան կալեալ. զի ի սաստկութենէ ապային Պարսից զարհուրեալք էին, ոչ իշխելով քան զանձաւ[5] տեղի բանակին՝ արտաքս ելանել. այլ միայն աղօթիւք պաղատանս առ Աստուած վերառաքէին. նոյն և

1. Որ է հայր հռչակաւորին Գրիգորի Մագիստրոսի։
2. Ի Շիրակ գաւառի, ի սահմանս Անւոյ։
3. Հիմայ Քէօսէ տաղ կոչուի, յանուն Ս. Սուքիասանց Քօշից, ոչ շատ հեռի ի Մշոյ։
4. Կամ Ծծըմբռոյ. գեղն չի յիշուիր հիմայ այդ անուամբ, բայց այն կողմերու հանքային աղբիւրք տան գուշակել։
5. Քարայրներու կամ քարոտ տեղեաց մէջ ամրացեր են՝ իբրեւ պարըսպօք. եթէ անձուկ գրուած չէ։

յամենայն քրիստոնէից աղերսական աղօթք արտասուօք սփռեալ լինէին առաջի Աստուծոյ, յօգնութիւն անձանց և զօրացն կարդալով զանուննն ահաւոր։ Եւ Թագաւորքն առատաձեռն զողորմութիւնս աղքատացն բաշխէին, և զցայգապաշտօնն սաղմոսանուագ երգով՝ ուխտն սրբութեան[1] հանդերձ հայրապետաւն կատարէին։

Եւ իբրև գիտաց զօրն Պարսից եթէ ոչ կամին նոքա կամաւ իջանել առ նոսա ի պատերազմ, մանաւանդ զսակաւութիւն նոցա գիտացեալ՝ առ իրեանց բազմութիւնն, յայնժամ յարուցեալ յամսամըտին Արեգ ամսոյ[2], յերեք շաբաթւոջ աւուր, ընդ առաւօտանալն՝ ճակատ պատրաստէին բազմակրկին յօրինուածով. ռազմ յօրինէին ընդ երեսս լայն դաշտին դեղմաստանեան[3] վահանափակովն, գային, մերձենային մօտ ի բլուրն բանակին Հայոց և Վրաց. որոց և տեսութիւն իսկ ի բազմութենէն՝ ահաւոր Թուէր ամենայն տեսողացն. որոց թիւն պատմեցաւ հարիւր հազար լինել ընդ հետևակագունդ և ընդ այրուձին Պարսից։

Ձայն տային ի պատերազմ պատրաստիլ, յառաջ մատչել ի կռուարանն և ի տեղի հանդիսին. իսկ զօրքն Հայոց և Վրաց զանգիտեալք՝ առաքեն, ո՛չ յայսմ աւուր՝ այլ յայլում աւուր պատերազմեցարո՛ւք։ Իսկ Պարսիկքն պանծացեալ պերճութեամբ՝ առաքեն դեսպանս առ նոսա. Եթէ կամաւ եթէ ակամայ՝ յայսմ աւուր պատերազմեսցուք։ Բայց նոքա ոչ առին յանձն, և ոչ հեծան յերիվարս. այլ մնացին անդէն ի բանակին. միայն սակաւ արք իջեալ առ նոսա՝ մենամարտիկս լինէին. և մեռան ի Վրաց զօրուէն արք հինգ։ Յայնժամ Պարսկաստանեայքն զպատրաստութիւն պատերազ-

1. Սրբազան անձինք, քահանայք, կրօնաւորք։
2. Ըստ անշարժ տոմարի՝ յուլիսի վերջի օրերն։
3. Դեյլում, Կասպից ծովու հարաւակողման ընդարձակ գաւառէն եկած զօրքն։

առամբուռ եղեալ Հայոց և Վրաց զօրուն՝ սաստիկ հարուածովք հարկանէին՝ ի սուր սուսերի մաշելով զնոսա, մինչեւ ի մուտս արեւուն, մինչեւ ի դուռն Արճէշ քաղաքին։ Եւ անտի դարձեալ՝ յաւարի առին զբանակս նոցա, լցեալ բազմութեամբ գանձուց և երիվարաց և պատուական հանդերձից։ Եւս առաւել այն էր ուրախութիւն, զի քան զառաջին հինգ մարդոցն ի մենամարտութեան, որ ի Վրաց զօրուէն մեռան, այլ ո՛չ հարեալ ոք սրով և ոչ մեռեալ գտաւ յամենայն բազմութենէ Հայոց և Վրաց։ Վասն որոյ ուրախալից ցնծութեամբ դարձան յիւրաքանչիւր աշխարհ, փառաւորելով զԱստուած։

---

## ՄԽ

### ՄԱՀ ՄԵԾԻ ԿԻՒՐԱՊԱՂԱՏԻՆ ԴԱՒԹԻ

(ԱՍՈՂԻԿ. Բ. ԽԳ).

Այլ վասն մահուան մեծի կիւրապաղատին Դաւթի՝ պարտ վարկանէի երկարաձիգ ողբովք վիպասանել, եթէ ոչ զերկարանալ բանիս կամէի կարճել. զի ոչ ճառից են ժամանակ, այլ գոյզն յիշատակարանաց։ Բայց զի էր այրն հեզ և հանդարտ՝ առաւել քան զամենայն թագաւորս՝ որ ի ժամանակիս յայս. և եղեւ նա պատճառ խաղաղութեան և շինութեան ամենայն արեւելեայց, մանաւանդ Հայոց և Վրաց. զի զգոռ պատերազմաց յամենայն կողմանց գագարեցոյց նա, յաղթող եղեալ ամենայն շուրջանակի ազգաց. և ամենայն թագաւորք կամաւ հնազանդեցան նմա։ Սա լցեալ աւուրբք, ծերացեալ ժամանակօք՝ վախճանեցաւ յաւուր մեծի փրկական Զատկին, ի ՆԽԹ (1000) թուին. բայց զի ոչ գոյր նորա որդի կամ եղբայր,

որ ժառանգէր զաթոռ թագաւորութեան նորա[1], յանձն արարեալ էր զազատագունդն իւր՝ թագաւորին Յունաց Վասլի։

---

## ՄԽԱ.

### ՍԱՐԳԻՍ ՄԱՆԿԱՆՑ ԱՋԱՏԻՉ

(ԱՍՈՂԻԿ. Գ. ԺԹ.)

Որդի Ալեւորին[2] Հերայ հատուածի պատճառաւ անցանէ յամիրայն Ապահունեաց. և ի կրկին անդէն դառնալն՝ յորժամ մերձ եղեալ ի սահմանսն Հերայ՝ անցանէին ընդ գեօղ ինչ, տեսանէին ըզմանկունս քրիստոնեայս գեղեցիկս՝ ի խաղու. և գայլաբար արշաւեալ՝ բառնան յերիվարս իւրեանց և ի փախուստ մտանեն։ Զոր տեսեալ ազատ ումն ի հաւատացելոց՝ Սարգիս անուն, յերիվար հեծեալ զհետ ընթանայր. «Զի՞ և զի՞ առնէք զայդ», ասէր։ Եւ նոքա դարձեալ թշնամանս դնէին նմա. և (նա) զպողովատիկ սուրն՝ քաջապէս շահատակեալ[3], արեամբ նոցա արբուցանէր, զամենեսեան սատակելով, միջակտուր արարեալ զորդի Ալեւորին, դարձուցանէր զմանկունսն գերեալ։

Եւ Ալեւորն Հերայ առաքէ առ ամիրայն Ատրպատականի Աբլ-հաճ, տալ նոցա խոստանայր ըզ-

1. Իր բուն իշխանութեան երկիրն՝ Հայոց Տայք անուանեալ նահանգն կամ աշխարհն, ծանօթ էր հին հեղինակաց Յունաց՝ Τάοχει կոչմամբ։

2. Երբեմն արեւելեան իշխանք քաղաքաց՝ մանաւանդ կրօնականք՝ Ալեւոր (թուրք. Աք-սագալլը, ճերմակ-մօրուք) կ'անուանին։

3. Իր անուանակցին նման (Ս. Սարգսի Զօրավարի) շատ լաւ քաջութեամբ գործածեր է սուրը։

քաղաքն Հեր, միայն թէ զվրէժ արեան որդւոյ նորա խնդրեսցէ յաշխարհէն Վասպուրականի։ Եւ նորա յանձն առեալ՝ ի բազմութիւն զօրացն վըստահանալով, անմարդացուցանել խոստանայր զաշխարհն ամենայն։ Եւ ժողովեալ զբազմութիւն խուժադուժացն Պարսից՝ գայ հասանէ ի մուտս սահմանացն Վասպուրականի. յերիս առաջս զզօրսն բաժանելով, յերեկոյացեալ ժամուն. զի առ վաղիւն գունդ բանակին միոյ ընդ աջակողմն սփռեալ ընդ եզերս աշխարհին, և միւսն ընդ ահեկեայսն, և ինքն բանակաւ մեծաւ զմիջոց աշխարհին կալցէ զի մի ոք կարասցէ ապրել ի քրիստոնէիցն։ Զայս խորհեալ և խօսեցեալ ընդ զօրս իւր ի մուտս արեւուն. իսկ ի գիշերին յայնմ ասացաւ առ Նա բոն Փրկչին. «Անմիտ. թէ յայսմ գիշերի ոգիդ ի բաց պահանջի, իսկ այդ խորհուրդ ամբարհաւանութեան մտացդ զիա՞րդ կատարեսցի»։ Եւ ի վաղիւն գտաւ մեռեալ. և խափանեցաւ խորհուրդ չարութեան նորա։

---

# ՄԽԲ

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ՍԻՄԷՈՆԻ Վ. ԸՆԴՕՐԻՆԱԿՈՂԻ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ԹՂԹՈՑՆ ՊՕՂՈՍԻ[1]

Փառք Ամենասուրբ Երրորդութեան, որ հասոյց յետին գիրս գրողիս. ամէն։ Ցանուն Աստուծոյ գրեցաւ գիրքս ի Ն. Խ. ևԸ (449) թուականին Հայոց, ի հայրապետութեան Տեառն Սարգսի Հայոց կաթուղիկոսի, և ի թագաւորութեան Սենեքերիմայ[2]

1. Մեր Ս. Ղազարու վանքում է այս Ձեռագիրս՝ թղթի վրայ գրուած, և նշանաւոր է հնութեամբ այլ նիւթին. գրողին ուղիղ կամ ոչ գրածն՝ անփոփոխ օրինակուած է այս տեղ։

2. Արծրունեաց թագաւորն էր, որ և կոչուէր Յով-

որդւոյ Արշաւակի, ձեռամբ Սիմէոնի վարդա-պետի և Նուաստ կրօնաւորի. զորս զկարգադրողաց աղաչեմ յաստուածամատոյց աղօթս անմոռաց յիշմամբ յիշատակել պաղատիմ։ Եւ զՏիրանեան զկազմիչ և զյօրինիչ գրոցս[1] անմոռաց ունել. և Աստուած փոխարէն հատուսցէ յետին աւուրն։

Թուիցիմք թէ աւելորդս ինչ բանս յասացեալս յաւելցուք. վասն զի այլայլի ի գալ արփայն և բազմածիրք աստեղացն[2], և ի մանկութենէ փոխըն-տեալ ընթանայ ծերութիւն. տեղի տայ և ձմեռն գարնանայինն եղանակաց, միանգամայն և հիւան-դութիւն՝ քաղցրութեան և պայծառ և չքնաղ տե-սակաց. զոր և աստանաւս սակաւիկ ինչ բանքս՝ զոր ասել կամիմ՝ արգելու զիս հոգիս, և լռել՝ ան-պիտան վարկանիմ[3]. զոր և իբր ի մէջ երկուց հրեղէն վիմաց պաշարեալ դողամ[4]. զՏեառն Լւի-բեմէ ասեմ և զարեգերական և զաստուածապատիւ Տեառն Յովհաննու Կոստանդինուպօլսի եպիսկո-պոսապետի. զի սա զբոլորս զոլորտս լուսաւորեաց զազգսն Յունաց. և Տէր Եփրեմ՝ Ասորեստանեաց[5] ազգին աննուագ ծագեաց արեգակն, և զբազմա-դուռն[6] զբանսն և զմթին՝ Պաւղոսի երանելի Առա-

հաննէս, իսկ հայրն Արուսանն՝ կոչուէր և Համա-զասպ։

1. Գիրքը կոկող կազմող. եթէ հեղինակութեան կազմն է, աղքատին բան մ'է։

2. Երբ ծագէ արեւն՝ մթըննան աստեղաց բազմու-թիւնք։

3. Հեղինակն այսինքն գրիչն Սիմոն կու տագնա-պի, թէ արդեօք գրէ՞ թէ լռէ մտածածը։

4. Օրինակած գիրքն է Ս. Եփրեմի և Ս. Յով. Ոսկե-բերանի Մեկնութիւնքն Պօղոս Առաքելոյ թղթոց, զորս իր երկու կողմն հրեղէն պարիսպներու նմանցընէ։

5. Սուրբն Ասորւոց պէտք էր ըսել և ոչ Ասո-րեստանեաց։

6. Շատ կերպով բացատրելի մեկնուելի են բանք Պօղոսի։

քերոյն՝ բացերեւութար և յայտնի մեզ ցուցին։ Որքա են լերինք մշտնջենաւորք սեպք և ուղղորկք[1], անտեղիտալիք չոր և ննդաւոր գազանաց։ Արդ, եթէ ոք ինձ իցէ[2] մի մերձեսցի, զուցէ քարկոծեսցի, զի մի խայտաբղէտ իցէ անմաքուր վարուք. և մի ոք անասնական կերպիւ՝ գայլենի ի ներքուստ և արտաքուստ զառնենի՝ երկդիմի բնութեամբ՝ մի մերձեսցի ի լեառն. և դարձեալ մի ոք արտաքացի և ընդդիմադրող և հակառակող, քարկոծեսցին[3] ի վիմէն՝ զոր առանց ձեռին ի լեռնէն հատաւ՝[4] չափ աշխարհի. և մի ոք և այլ ինչ աղանդաւոր, զոր և ի ժամանակիս տեսանեմ։ Վասն զի լուծանել հրամայէ զերկրաքարշ և զմեղսաթաւալ կաւշիկ[5], և զօրէն մեծին Մովսիսի յիմանալի լեառն ելանել, և ընդ ամպովն լինել և ընդ Աստուծոյն խօսել։ Այս լերինք մշտնջենաւորք են դիտանոց դրախտին Աստուծոյ, որ գեղեցկապէս բուրեն ի մեզ զբուրումն բուրաստանացն Աստուծոյ, զերանելոյն ասեմ զՍրբոյն Պաւղոսի, որ հոտ անոյշ էր ի Քրիստոս, ի մէջ երկուց բնութեանց՝ բարւոյն և չարի։ Որքա հնչեցուցանեն ի մեզ, ոչ փողոյ բարբառ և բանք տագնապողք, այլ զՔրիստոս ի Պաւղոսէ քարոզեալ և յայտնեալ, և կենագործեալ զաշխարհս։ Որքա մածեալ և անառիկ բարձր դիտանոցք, որք ցուցանեն ոչ տախտակք քարկոծողք՝ այլ կեանք

1. Ողորկ, վրան խորտուբորտ չեղած։
2. Ինձ գազանն (թրք. գափլան) խայտաբղետ, խատուտիկ գոյներով։
3. Հին ատեն արաբացի ըռնուած կատաղի գայլը մէջէ, և այդ գազաններով՝ ծուռ մտածողները։
4. Դանիէլ մարգարէի տեսիլքն է յիշածն. լեռնէն փոքրիկ քար մի փրթաւ, բնաւորաց մեծամեծ արձանները կործանեց։
5. Աստուած երբ յայտնուեցաւ Մովսէս մարգարէին՝ հրամեց որ ոտից ամանները հանէ, որպէս թէ չաղտոտի սուրբ գետինն։

ւետարանականք և առաքելականք միանգամայն և մարգարէականքն։ Սոքա եւթնապատիկ ծագեալ քան զարեգակն՝ փախստական արարին զխաւար ագիտութեան յազգէ մարդկան, վասն որոյ[1] և առաւել եւս յազգէս Հայոց. ուստի և ես եմ Սիմէոն նուաստ և անպիտան կրօնաւոր, որ ընթերցասէր և ցանկացող եղեալ ի մանկութենէ իմմէ՝ յուզէի խնդրէի զգիրս Տեառն Եփրեմի զՀին կտակարանաց թարգմանութիւն և զնոր։ Զոր և գնացի յաշխարհն ուստի և սուրբ առաքեալն Բարթողիմէոսն կատարեցաւ, ի տեղւոջն՝[2] որ աթոռակալութիւն Արծրունեաց տանն կոչի Եղեգի անուն ինչ տեղոյն[3]. և գտի զմեկնութիւն երանելի Առաքելոյն՝ Տեառն Եփրեմի Խորին[4] Ասորւոյ, և գրեցի ի սոյգ և ի հին օրինակէ, զոր և բերի. և այսու միայնոյ ոչ հաւանեալ՝ այլ և յայլ տեղ գտի զերանելոյն Տեառն Յովհաննու Ոսկեբերանի կարճառօտ մեկնութիւն ԺԴ թղթոցն Պաւղոսի, և ի մին գիրս գրեցի. նախ առաջին՝ զՏեառն Եփրեմի և ապա զՏեառն Յովհաննու։ Զոր և անբաւ և մեծ գիտութիւն յինքեան բովանդակեալ ունի. և գրեցաւ գիրքս Տեառն Եփրեմի՝ որպէս յառաջն ասացի՝ յԱղբագ գաւառի ի տանն Արծրունեաց. և զերկրորդ գիրքս՝ ի Կոգովիտ գաւառի, ի տանն Բագրատունեաց եպիսկոպոսարանի, ի Տեառն Դաթէոսի[5] ժամանակի Տեառն Մուշէի եղբօրորդւոյ, որ զառաքելոյն Թադէոսի ունէր զվարս և զարբու-

1. Այս տեղ վասն որոյ նշանակէ՝ նաեւ, մանաւանդ։

2. Վարը կ'իմացընէ որ Աղբակ գաւառն է։

3. Թուի թէ տեղւոյն յատուկ անունը չուզեր ըսել և այսպէս աննշան կոչում մի տայ։

4. Ասորի կամ արաբ բառ է այս, որ նշանակէ կարդացող կամ դպիր։

5. Թադէոս գրուի ուղիղն, այսպէս կոչուի եղեր Կոգովտի կամ Բագրատունեաց եպիսկոպոսն, եղբօրորդի և յաջորդ Տէր Մուշէ եպիսկոպոսի։

թիւն. զոր համարձակիմ և ասեմ թէ զսուրբ և զմաքուր կուսութիւն Աւետարանչին Յովհաննու, այր կուսակրօն և պարկեշտ և վկայեալ յամենայն-բերանոց և յԱստուծոյ փառաւորեալ։

Ի սորա աւուրս և Աստուած հաշտ էր ընդ աշխարհի, զի կենդանի մարդ էր և Աստուծոյ՝ հանապազ մեռեալ. և ամենայն հոգեւոր գանձու գիտութեան եշտեմարան[1] զոր ոչ է բաւական ժամանակս բարբառել զերանելի հոգին՝ որքան արժան է. այլ յայնմ ժամու և ի ձեռն նորա գրեցաւ գիրքս ի Ն. Խ և ութ (448–999) թուականութեանս Հայոց. ի թագաւորութեան Գակկա[2] որդւոյ Աշոտոյ[3] և ի հարմանն Պարսից ի ձեռաց Թաւրի կորապաղատի[4], օգնականութեամբն Աստուծոյ։

Յայնմ ժամանակի այս գիրք գրեցան աղքատ նիւթով և խոշոր, զորս աղաչեմ անմեղադիր լինել անհեդեդ գրոյս և աղքատ քարտիսիս. այլ զաշխատութիւնս զոր ընկալայ ի սմա, զայս առ և ընկալ և ուրախ լեր սրբոցս[5]։ Վասն զի թէ տայցես յանօթ այլում ումեք՝ սորա փոխան ուժգին առցես[6]. զի չէ բաւական գանձք որք արժեն զսոսա. վասն զի Նոր կտակ կարգեցի այնոցիկ որք զկնի իմ վայելեն զսա և լուսաւորին։ Բայց, աւաղ, թէ և յանգիտաց անկեալ ի ձեռս անարգաբաց և ընդ վայր հարկանի[7]. զի հրաժարեցուցանէ

1. Այսպէս գրած է, փոխանակ շտեմարան գրելու։
2. Բագրատունեաց թագաւորն է, Գագիկ Ա։
3. Այս տեղ բառ մի գրուած և աւրուած է, կարծուի սպարապետ, կամ Բագրատ...։
4. Տես Յօղուած 240։
5. Իմանալու է, Ուրախ լեր վասն Սրբոցս մեկնչաց Գօղոսի Թղթոց, կամ շնորհակալ եղիր անոնց։
6. Թէ որ այս գիրքս մէկու մի տալու ըլլաս, անոր տեղ իրմէ ուրիշ մի և լաւ մի առ։
7. Բարեբաղդաբար՝ ոչ անգէտ այլ գիտուն՝ Յովհաննէս Բագրատունի թագաւորին ձեռքը անցեր է այս գիրքս. յետ մահուան այդ իմաստասէր թագաւորին և Անւոյ մայրաքաղաքին մատնութեան՝ ինչ

և աւետարանն՝ արկանել խոզից մարգարիտ և տալ որբութիւն՝ շանց[1], և որ այլ ես։ Այլ դու ո՛վ այր դու Աստուծոյ, գիտես զինչ է սա և սանիր և ծանիր զաշխատութիւնս իմ և մի՛ ապախտ առներ զվաստակս իմ, զոր ձրի վայելես զինս իմ. այլ անչափութեալ[2] ունել ի միտ և յանապական և յանմեռանելի կենդանի՝ որ վասն աշխարհի մեռաւ Քրիստոս՝ ի պատարագին՝ յիշել, և ի բաղդ սրտէ աղօթս առնել ի լուսաւոր և ի սուրբ պատարագին և ի մեղաւորաց փրկական խորհրդին. զի թերեւս Աստուած աղօթեսցի իմ մեղուցեալ հոգւոյս յաւուրն յայտնուեան[3] ի գալստեան մեծի արքայի Քրիստոսի. և Աստուած զձեզ յիշեսցէ յանդորրաւական և ի տիեզերագումար հրապարակին. ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, ընդ որում Հաւր և միանգամայն և Հոգւոյն Սրբոյ՝ փառք և պատիւ այժմ և յաւիտեանս. ամէն։

«Փառք Աստուծոյ՝ անսկզբան և անժամանակի. փառք Յիսուսի Քրիստոսի զի գահակցի Հաւր և փառակցի Սուրբ Հոգւոյն ելողի ի Հաւրէ և յՈրդւոյ ոչ բաժանողին, և իսկակցին Հաւր և Որդւոյ. այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից. ամէն[4]»։

Հասեր է այս Սիմէոնի տաղաչափաւոր գրած և յանձնած գրքին, կարդալու է զայն գանոց Սեւանայ Սարգիս վարդապետի գրածը՝ յամին 1041 (եր. 311)։ Դար մի և աւելի վերջ (1154) գիրքն անցեր է ի ձեռս Հաչակաւոր Տուտէորդի Գրիգոր վարդապետին, որոյ թէ իմաստակ խօսքով թէ ձեւով թէ պարծանօք (զինքն յազգաց սաենք ընելով) գրածն՝ ահա աստանաւ (յերես. 310)։ Անուանը տառերուն սրբանձեւ կամ երկայն մասերն կարմրագոյն են, ողակներն դեղնագոյն. յայտնի որ երիտասարդութեան ատեն ձեռնատեր է զայս։ Հիմայ մեր Ս. Ղազարու մատենադարանի մէջ հանգչի այդ Ձեռագիրքն՝ ինչպարեան յոբելինով։

1. Քրիստոսի խօսքն է, Աւետ. Մատթէի, Է, 6։
2. Անշնջելի, անկողոպտելի։
3. Այսպէս է գրուած, փոխանակ գրելու յայտնութեան։
4. Կարեւոր աստուածաբանական քննելի գրուած

# ՄԽԳ

## ԱՌԱՋԻՆ ԵԼՆ ԱՅԼԱԶԳԵԱՑ, ԵՒ ԱՍՊԱՏԱԿ Ի ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ[1]

(ՄԱՏԹ. ՈՒՌՀԱՅԵՑԻ. ԼԷ.)

Յորժամ թագաւորութիւնն Հայոց հասանէր ի յամս ՆԿԷ (467–4048), զարթեաւ աստուածասաստ բարկութիւնն ի վերայ ամենայն քրիստոնէից ժողովրդեանն և երկրպագողաց Սուրբ Խաչին. զարթեաւ վիշապն մահաշունչ՝ հանդերձ մահաբեր հրով. եհար զհաւատացեալս Սրբոյ Երրորդութեանն։ Յայսմ թուականութեանս սասանեցան հիմունք առաքելականացն և մարգարէականացն. վասն զի օձք թեւաւորք հասին, և կամին ցօղանալ ընդ ամենայն աշխարհս հաւատացելոց Քրիստոսի. այս է առաջին ելք արիւնարբու գազանացն։ Ընդ աւուրսն ընդ այնոսիկ զօրաժողով լինէին խուժադուժ ազգքն անօրինաց, և հասանէին մտանէին յաշխարհն Հայոց ի Վասպուրական գաւառ, և անողորմ ի սուր քերան կոտորէին զհաւատացեալս Քրիստոսի։

Յայնժամ հասանէր համբաւ կոտորածիս այս առ Թագաւորն Սենեքերիմ. և յայնժամ աւագ որդին նորա Դաւիթ ժողովեալ զզօրսն ազատաց, հասանէր ի վերայ (օտար) բանակին. և հարան սաստկապէս ընդ միմեանս ահաւոր պատերազմաւ։ Իսկ յայնմ ժամանակին չէին բնաւ տեսեալ Թուրք զօրք հե-

մի է և այս յիշատակարանս կամ փաստաբանութիւնն Ամիժենի։

1. Ո՞վ էր առաջնորդ այս ասպատակողաց. — չէ յիշուած. բայց այդ կողմերէ ծանօթագոյն և մեծ արշաւողն՝ քանի տարի մի յետոյ երեւցաւ. Տուղրիլ Սուլտանն Սելջուքեանց, զոր և Պատմիչս յետոյ պիտի յիշէ։

ծելոց. և ի հանդիպելն նոցա՝ ոսոխն այլակերպ զնոսա, աղեղնաւորս և հրարձակս իբրև զկանայս. և յայնժամ զօրքն Հայոց չէին ամօք պատրաստ լինել ընդդէմ նոցին. և քաղաքար ի վերայ այլազգեացն յարձակեցան, և առ հասարակ մերկացուցին զսուսերս իւրեանց պատենիցն, և աւերաբար ի պատերազմ ընթանային արիական զունդըն Հայոց. և զբազումս յայլազգեացն սատակէին. Իսկ այլազգիքն նետաձգութեամբն զբազումս ի զօրացն Հայոց վիրաւորէին խոցելով: Եւ տեսեալ զայն ամենայն Շապուհ՝ ասէր ցԴուրթ. «Դարձիր, թագաւոր, յերեսաց թշնամեաց, վասն զի ի նետաց վիրաւորեալ եղեն մեծ մասն զօրացս. գնասցուք, և ընդդէմ այսմ զինուցս՝ զոր տեսանեմք առ այլազգիսդ, այլ զգեստ պատրաստեսցուք ընդդէմ նետից[1]»: Իսկ Դուրթ առ մեծութիւնն իւր հայելով, հպարտացեալ մեծաւ ամբարտաւանութեամբ ոչ լսելով Շապհոյ, և դառնայր ի պատերազմ: Յայնժամ Շապուհ քաջութեամբ դիմեաց ի վերայ Դուրթի, և բանցի հարեալ զթիկունսն՝ ուժգնակի մղէր զնա դառնալ. վասն զի Շապուհ էր այր քաջ և պատերազմող հզօր, և էր մանկակալ և սնուցիչ Դուրթի. վասն այնորիկ անահ էր ի նմանէ. և այսպիսի օրինակաւ դարձուցանէր զԴուրթ՝ հանդերձ զօրօքն[2]: Եւ գնացին

1. Թուի թէ այս ժամանակ Հայք իրենց նախնեաց կապարճն և աղեղն թողեր և Բիւզանդացւոց զէնքեր գործածէին. յիշած եմք ուրիշ տեղ որ հին Հայք այնքան ճարպիկ նետող էին, որ Հռովմայեցիք՝ զՀայս կերպարանելու կամ նշանակելու համար՝ երբեմն միայն կապարճ և աղեղ ձեւացընէին, և երբեմն նա և Հայոց աղեղնաւորաց գունդ մի կ'ածանէին:

2. Երբ Սենեքերիմ՝ Դուրթի և ուրիշ որդւոցն հետ զաղթեցաւ ի Սեբաստիա և մեռաւ, կայսերք կասկածելով որդւոցը վրայ՝ կանչեցին ի Կ. պոլիս. Շապուհ որ անոնց հետ եկեր էր, ուզեց վարժել Յունաց զօրքը, և քաջութիւնը ցուցընելու համար՝

յԹոստան քաղաք, և պատմեցին Թագաւորին Սե-
նեքերիմայ, և ասացին զորպիսութիւն կերպարա-
նաց այլազգեացն։ Եւ լուեալ Սենեքերիմայ յոյժ
վիրաւորեալ լինէր. ոչ եկեր և ոչ արբ, այլ կայր
մտախորհ լի տրտմութեամբ, և զգիշերն ամենայն
անքուն անցուցանէր. և նստեալ քննէր զժամանա-
կագրութիւնս. և զասացուածս աստուածախօս տե-
սանողացն, զորբոց վարդապետացն, և գտանէր
գրեալ ի գիրսն զժամանակս ելանելոյ Թուրք զօ-
րականացն. և ծանեաւ զկորուստ և զկատարած
ամենայն երկրի. և գտանէր ի գիրսն գրեալ այս-
պէս. եթէ, «Ի ժամանակին յայնմիկ փախիցեն
յարեւելից յարեւմուտս, ի հիւսիսոյ ի հարաւ, և
հանգիստ ոչ գտանեն ի վերայ երկրի, վասն զի
արեամբք ծածկին դաշտք և լերինք. և այս էր զոր
ասաց Եսայիս, եթէ «Սմբակք երիվարաց նոցա
հաստատուն»։

---

## ՄԽԴ

### ՄԵՆԱՄԱՐՏ ԵՒ
### ՄԱՀ ՎԱՍԱԿԱՅ ՊԱՀԼԱՒՈՒՆՒՈՅ[1]

(ՄԱՏԹ. ՈՒՌՀ. ԾԱ.)

Ախոյեան մի երեւեալ ի զօրացն այլազգեաց,
նաեւ խափշիկ և այր քաջ, որ և Եշբճ–գայլ կո-
չէին զնա. վասն զի՝ զինչ և եւթն գայլն ի ջոկս

ըստ արքայորդւոցն. «Կամի՞ք՝ զի զզօրսդ Հոռոմոց
»ցիր և ցան ածեմ յերեսս դաշտաց». և արար զրահս
եօթն կրկնակի, և զարկանէր թրով ի վերայ՝ և ի վայր
թողոյր մանր զերկաթն։ Եւ ասեն որդիք թագաւորացն
Հայոց (վախնալով), «Մի՛ եղիցի այդպէս. այլ եր-
»թամք զհետ կոչնականացն». և գնացին։

1. Վասակ հօրեղբայր է հռչակաւոր Գրիգ. Մա-
գիստրոսի և եղբայր Վահրամայ Սպարապետի։

պատերազմին. և դիմեաց ելանել ի լեառն որ կոչէր Սերկեւեղոյ[1]. և ի բազում հալածանաց պատերազմին՝ նստեալ (հանգչէր) ընդ հովանեաւ քարանց: Եւ տեսեալ զնա չինականացն՝ որք փախուցեալ էին, յայնժամ մի ոմն նմանեալ Կայենի սպանողին, եկեալ գտանէր զնա զի ննջէր ի վշտացն, ուժգին բախեաց զնա, և ընկէց զնա ընդ բարձրութիւն քարին. և այսպէս կատարեցաւ քաջն Վասակ Պահլաւունին:

---

## ՄԽԵ

### ՄԵՆԱՄԱՐՏ ԱՇՈՏՈՅ ԵՂԲՕՐ ՅՈՎՀ. ԹԱԳԱՒՈՐԻ ԸՆԴ ՎՐԱՑԻՈՑ

(ՄԱՏԹ. ՈՒՌՀ. Թ.)

Իբրեւ լուաւ Յովհաննէս զգալն Աշոտոյ եղբօր իւրոյ, հրամայեաց փող պատերազմի հարկանել. և ինքն ի գահոյս անշարժ նստեալ կայր, վասն զի անհմուտ էր պատերազմի. և դղրդեալ Անի՝ ելեալ ի պատերազմ ընդ Աշոտոյ՝ քառասուն հազար հետեւակաց և քսան հազար ձիաւորաց: Եւ յայնժամ մի ոմն իշխան ի զօրաց Թագաւորին Վրաց՝ ի դեսպանութիւն եկեալ էր առ Յովհաննէս. վասն զի մայրն Յովհաննիսի և Աշոտոյ դուստր էր Վրաց Թագաւորին Գուրգէ, կատրամիտիդէ[2] Թագուհին. և ասէր իշխանն Վրաց ընդ Թագաւորն Յովհան-

1. Սաղմոսավանից մօտ է լեռն ու գեղն Սերկեւլի:
2. Հայրն ամփոփաբար Կուրիկէ կոչուի՝ ըստ Վրաց, իսկ Թագուհին շատ հեղ Կատրանիդէ գրուի, համաձայն Լաստիվնայ Գաբերիելեա անուան, որպէս կոչուէր և մեծոգի դշխոյն Կատրանիդէ, կին Գագկայ Ա: Տես Յօդուած 237:

նէս. «Ո՛վ արքայ Յովհաննէս, հրամայեա՛ զի ցուցանիցեն ինձ միայն զԱշոտ, և ես ձերբակալ արարից զնա, և կապանօք բերից զնա առաջի քո»։ Վասն զի այրն այն էր քաջ և անպարտելի ի պատերազմի. և ասէր Յովհաննէս թագաւորն ցայրն այն. «Ահա այր հզօր է Աշոտ, դու զիա՞րդ կարես ածել առաջի իմ»։ Եւ ասէր իշխանն վրացի. «Ձիովն առից զնա կենդանի»։ Եւ ասէ ցնա Յովհաննէս, եթէ, «Զկորիւն առիւծու մի՛ արհամարհեսցես՝ մինչև տեսանիցես»։

Եւ յորժամ ճակատեցան ընդ միմեանս, և իշխանն որ յԱփխազաց՝[1] որպէս զարծուի ընթացեալ ի ձայն բարձր և յուզէր[2] զԱշոտ, և ասէր. «Ո՛վ Աշոտ, յառաջ եկեսցես»։ Եւ լուեալ Աշոտ և եղև դայլրացեալ իբրև զինծ. և յուզեալ զմիմեանս՝ ընթանային առ իրեարս. և իշխանն Վրաց զնիզակն եդեալ Աշոտոյ. իսկ Աշոտ իբրև զկայծակն ի ներքս անցանէր և հարկանէր զնա պողովատովն ի վերայ սաղաւարտին. և զերկաթապատ մարմինն պատառեաց մինչև ցոտն, և հանդերձ միջօքն յերկիր ընկենոյր։ Եւ եղև յաւուր յայնմիկ սաստիկ պատերազմ. և դարձուցին զքաղաքն ի փախուստ[3], մինչև փախուցեալքն ոչ ժամանէին մտանել ի քաղաքն, յԱխուրեան գետն անկանէին. և դարձաւ Աշոտ մեծաւ յաղթութեամբ։

Եւ յետ աւուրց ինչ խորհեցան Բագրատունիքն և Պալհաւունիքն և այլ ամենայն ազատագունդ զօրացն հայկազանց, առնել խաղաղութիւն ի մէջ Յովհաննիսի և Աշոտոյ. և յայնժամ սուրբ հայրապետն Պետրոս և իշխանք ելին առ Աշոտ, և մեծաւ երդմամբ հաստուցին զԱշոտ Դրուց աշխար-

1. Ազգաւ Ափխազ էր, բայց հպատակ Վրաց։
2. Գրգռելով յառաջ կանչել։
3. Այսինքն, զքաղաքացիս Անւոյ կամ զզօրս քաղաքին։

*հին[1] Թագաւոր, ամենայն տանն Հայոց. և Յովհաննէս նստցի Թագաւոր ի քաղաքն Անի, և եթէ մեռանի Յովհաննէս, Աշոտ լինի Թագաւոր ամենայն տանն Հայոց[2]։ Եւ յայնժամ եղեւ խաղաղութիւն ամենայն աշխարհին Հայոց։*

---

## ՄԽՁ

### ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆ ՎԱՀՐԱՄԱՅ ՊԱՀԼԱՒՈՒՆՈՅ[3] Ի ՄԱՐՄԱՇԷՆ ՇԻՐԱԿԱՑ

«Շնորհիւն Աստուծոյ ես Վահրամ իշխանաց իշխան անթիպատ[4] պատրիկ, որդի Գրիգորի իշխանի[5] Հայոց Մեծաց ի ցեղէն Պահլաւունի եւ ի զարմից Սրբոյն Գրիգորի Հայոց Լուսաւորչի, որ յաղագս ի Քրիստոս յուսոյն հիմնադրեցի զսուրբ եւ զտիեզերական ուխտս *Մարմաշէն*[6] սկսեալ ի ՆԼԵ թուականին Հայոց (986 *Քրիստոսի*) յաւուրս Սմբատայ որդւոյ Աշոտոյ Հայոց Թագաւորի, մինչեւ ի ժամանակս Յովհաննիսի որդւոյ *Գագկայ* Հայոց *Շահանշահի*, առն իմաստնոյ շինողի եւ խաղաղարարի[7], եւ ի Թուականիս Հայոց ՆՀԸ (1029) կատարեցաք մեծ ջա-

1. *Անի քաղքին տաճարներէն դուրս եղած՝ Բագրատունեաց երկիրներն։*
2. *Վասն զի Յովհաննէս զաւակ չունէր։*
3. *Եղբայր Վասակայ և հայր հռչակաւոր Գրիգորի Մագիստրոսի։*
4. Ἀνθύπατος, *անթիհիւպատ գլուխ սովորաբար, պատուանուն բիւզանդական իշխանի, իբր Հեծելապետ։*
5. *Գրիգոր այս որդի Ապուղամրի՝ Համզէ կոչուէր։*
6. *Տես ի Շիրակ (147) տեղւոյս ստորագրութիւնը։*
7. *Նշանաւոր վկայութիւն բարուց Բագրատունեաց Թագաւորին, որոյ վկայեն և այլ պատմիչք։*

նիւ եւ բազում ծախիւք, ես եւ մայր իմ *Շուշիկ*[1] Հայոց տիկնաց տիկին[2], եւ եղբարք իմ՝ *Վասակ* իշխանաց իշխան որ նահատակեցաւ ի Թուրքաց պատերազմի[3], եւ *Ապլխարիբ* Հայոց մարզպան, եւ մանուկն Համզէ. որք էաք ամենայն տամբ եւ տոհմիւք հաւատարիմ տերանց մերոց, եւ նահատակեալ ի վերայ տանս Հայոց աշխատութեամբ եւ արեամբ մերով եւ որդւոց մերոց եւ գանձուց առատութեամբ. եւ ամենայն հնարիւք խնդրէաք զխաղաղութիւն աշխարհիս եւ զհաստատութիւն եկեղեցեաց։ Շինեցաք եւ այլ բազում եկեղեցիս եւ վանորայս. բայց զտեղի հանգստեանս մերոյ առաւել պատուով մեծացուցաք եւ լիացուցաք ամենայն գոյիւք լերամբք եւ դաշտաւք. աւանդեցաք ի սա գիւղս եւ ագարակս գանձագինս, զ*Բագարանի* գեղ[4] եւ զիւր ագարակն. զ*Գողիսն* եւ զ*Պորտանգն*, զ*Արագէճ* եւ զ*Ազատս*, զ*Ասմանէ* եւ զ*Եզնկայն*. եւ յ*Աւշականի* այգիք եւ Գ (երեք) աղաց. եւ Բ ջաղաց ի *Գողս*. ի յ*Աշտարակի* այգի. ի *Կարբոյ դաշտի* այգի. ի *Սերկեւլի* այգի. ի *Վժան* այգի. ի *Մրենի* այգիք. ի յԱնի տներ եւ կղպականի[5]. եւ զարդարեցաք զսա ամենայն կազմութեամբ ի յիշատակ յաւիտենից մեզ եւ որդւոց մերոց. եւ կարգեցաք ի ձեռն սուրբ հաւր *Երիմիափ*[6] եւ որ զկնի յաջորդեցաւ *Սոսթենէս* նորին որդիացեալ.

1. *Շուշիկ կամ Շուշան, ծնողքն կարծեմ յիշուած չեն, ծնած է յամի.* 952։

2. *Յետ Թագուհւոյն Հայոց՝ Նախապատիւ իշխանուհին այսպէս կոչուէր, նոյնպէս և յետոյ Ռուբինեանց ժամանակ։*

3. *Տես* 244 *Յօդուածը։*

4. *Բագարան և հետեւեալ շատերն ծանօթ են մինչեւ հիմայ, և յիշուած ի Շիրակ և յԱյրարատ գիրս։*

5. *Այսինքն կրպակք կամ խանութք։*

6. *Որ էր առաջնորդ Մարմաշինի վանաց։*

եւ փոխարէն հատուցմանն ընկալեալ մեր ի ժառանգաւորաց սուրբ ուխտիս՝ տարին Զ (վեց) քառասունք[1] անխափան մինչեւ ի գալուստն Քրիստոսի. Արդ եթէ ոք ի մերոց կամ յաւտարաց աւագ որ զմեր զտուրս ի սուրբ ուխտէս պակասեցուցանէ կամ հայր որ զմեր ժամս խափանէ, ինքն որոշեալ լիցի ի Քրիստոսէ եւ դատող նորա սատանայ լիցի, նա մի տեսցէ զփառս առ Աստուծոյ. իսկ որք հաստատուն պահեն զաւանդս մեր աւրհնեալ եղիցին։

### Յայտանագիր Սոփիայ կնոջ Վահրամայ

Այս հանգիստ է Սոփեայ աղախնոյն Քրիստոսի կնոջ Վահրամա Պահլաւունո իշխանաց իշխանի դստեր Տիգրանայ Հայոց մարզպանի տեառն Անձեւացեաց մեծին Վասպուրականի. կիսաւրեա առ Աստուած փոխեցա եւ թողի զաւակս իմ տրտում. աղաչեմ յիշեսջիք զիս եւ Աստուած ձեզ ողորմեսցի[2]. Թ. ՆԿԴ (1115)։

1. Վեց անգամ 40 պատարագ։

2. Զաւակներէն յիշուած են Սմբատ Մագիստրոս † 1044ին, Գրիգոր և Ապուղամր։



# ՄԻԷ

## ՅՈՎՀԱՆՆԷՍ ՎԱՐԴԱՊԵՏ ԿՈԶԵՌՆ[1]

(ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ, ՀՈԿՏ. 5.)

Ի թագաւորութեանն Հայոց ԴՃՀԸ (478–1029–30) ամին և ի նոյն թագաւորութեան Յունաց Վաս[illegible][2]. եղեւ յերկինս ահաւոր նշան, և սոսկալի [illegible]թիւն ի վերայ երկրի. ի հոկտեմբերի ամ[illegible] յերրորդ ժամու աւուրն, պատառեցաւ [illegible] հաստատութիւնն երկնից՝ յարեւելից կուսէ [illegible] յարեւմուտս, ընդ երկուս հերձաւ երկինդ[illegible], և լոյս պայծառ յերկիր թափեցաւ ի հիւսիսային կողմանէն, և մեծաւ շարժմամբ դղրդաց ամենայն երկիր. և նախ քան զնուաղել լուսոյն՝ (եղեւ) գոչիւն և թնդիւն ահաւոր ի վերայ ամենայն արարածոց. խաւարեցաւ արեգակն, և երեւեցան աստեղք որպէս ի մէջ գիշերի. և ամենեքեան սուգ զգեցան, և դառն արտասուօք աղաղակէին ամենայն մարդիկ առ Աստուած: Եւ ապա յետ երից աւուրց ժողովեցան ամենայն իշխանքն և ազատքն հրամանաւ թագաւորին Յովհաննիսի, և եկին առ մեծ վարդապետն Կոզեռն Յոհաննէս. որ էր այր աստուածազգեաց հրեշտակակրօն և հոգեւոր, լցեալ առաքելական և մարգարէական գրոց գիտու-

1. Կոզեռն ուղտու ձագ նշանակէ. յայտնի չէ թէ ինչու այսպէս մականուանեն զվարդապետս: Կ'աւանդուի որ երկար տեւիլք մի տեսած է և գրուած այս վերնագրով. «Տեսիլ սուրբ Վարդապետին Յո-» հաննու որ մականուն Կոզեռն կոչեցեալ, այր ճըգ-» նազգեաց և բանիբուն վարդապետ»:

2. Բ Վասիլ կայսրն է, որոյ գալն ի Հայս պատմած էր յօդուածիս հեղինակն:

թեամբ։ Եւ յորժամ եկին իշխանքն Հայոց հարցանել զնա և իմանալ վասն հրաշալի նշանին որ եղեւ, և տեսին զվարդապետն Յովհաննէս անկեալ ի վերայ երեսաց իւրոց խոր տրտմութեամբ, և լայր դառնապէս. և ի հարցանել նոցա՝ նա սգով և ողբողորմ հառաչանօք պատասխանի տուեալ ասաց. Ո՛վ որդեակք, լուարուք, զի ահա այսօր հազարամ է կապանաց սատանայի, զոր կապեաց Քրիստոս իւրով մկրտութեամբն ի գետն Յորդանան. և արդ արձակեցաւ սատանայ ի կապանաց իւրոց, ըստ վկայութեան Սրբոյն Յովհաննու աւետարանչի[1], որպէս ասաց նմա հրեշտակն, թէ հազար ամ կապեսցի սատանայ և դարձեալ արձակեսցի ի կապանաց իւրոց. և ահա այսօր արձակեցաւ սատանայ, որ Հայոց Թուականն ԴՃՀԸ (478) (է), և կալ զառաջին ԵՃԾԲ (552) որ լինի ՌԼ ամ (1030)[2]. արդ զերեսունն տուր յառաջ քան զմկրտութիւնն, և կամ զհազար ի մկրտութենէն Քրիստոսի մինչեւ ցայսօր։ Եւ արդ, որդեակք, վասն այսորիկ եղեւ պատառումն երկնից. և ահա յայսմ հետէ ոչ ոք կարասցէ կալ հաստատուն ի պատուիրանս Աստուծոյ։... Յայսմ հետէ կամքն սատանայի առաւել կատարեսցի ի մարդկանէ քան զԱստուծոյն։... Զայս ամենայն այսպէս խօսեցաւ սուրբ վարդապետն Յովհաննէս վասն ահաւոր նշանին. և զոր ասացն՝ ամենայն կատարեցան և կատարին։

Եւ դարձեալ յետ ութ տարւոյն՝ ի Թուականիս Հայոց ԴՃՀԸ (478)[3] խաւարեցաւ արեգակն ահա-

1. Արդարեւ Քրիստոսի քարոզութեան սկսելէն մինչեւ այս Թուականին՝ հազար տարի կ'ըլլար. շատ քրիստոնէից մէջ կարծիք և վախ կար, որ այն Թուականին աշխարհիս վերջ պիտի ըլլայ. և այս բանն՝ Յովհ. Յայտնութեան մէկ խօսքէն հետեւցնէին։

2. Որ է Քրիստոսի Ծննդեան կամ Մարդեղութեան Թուականն։

3. Առջի 478 Թուականէն ութ տարի ետքը՝ պէտք

ւոր եւ սոսկալի տեսլեամբ. զի սեւացաւ արեգակն ի կէս աւուրն, եւ ամենայն աստեղքն երեւեցան որպէս ի մէջ գիշերի. եւ ամենայն մարդիկ ահաբեկ եղեալ անկան յերկիր որպէս մեռեալ, ի սաստիկ շարժմանէն եւ յահագին որոտմանէն եւ գոռալոյն խորոց եւ բարձանց: Յայնժամ կաթողիկոսն Տէր Պետրոս եւ թագաւորն Յովհաննէս՝ յղեցին առս փառաւորս ի մեծապատուացն առ վարդապետն Յոհաննէս որ կոչիւր Կոզեռն, զի ի նմանէ գիտասցեն զմեկնութիւն մեծի նշանին. եւ զի էր այր սուրբ եւ զարդարեալ սքանչելի առաքինութեամբ. եւ էր մեկնիչ հին եւ նոր կտակարանացն Աստուծոյ լցեալ վարդապետական շնորհօքն. եւ որք եկին առ վարդապետն՝ էին այսոքիկ. Գրիգոր մագիստրոսն որդին Վասակայ[1], եւ մեծն Աւագ Սարգիսն[2], եւ այլք յազատացն Հայոց եւ ի պատուական երիցանց, որք եկեալ գտին զՎարդապետն անկեալ ի վերայ երեսաց իւրոց յերկիր, ի խոր տրտմութեան եւ ի լաց, մինչ զի թացեալ էր արտասուօք զգետինն՝ ի սաստիկ լալոյն. իբրեւ տեսին զնա յայնպիսի տրտմութեան՝ զահի հարան եւ ոչ իշխէին հարցանել զնա բան ինչ. զի անդադար հեղոյր զարտասուս իւր եւ կոծէր զկուրծսն: Ապա յետ վեց ժամու դեգերմանն, սկսաւ փառաւոր իշխանն Աւագ Սարգիսն հարցանել զնա վասն ահագին նշանին. լայրն ամե-

էր ըստ 486 Հայոց, Քրիստոսի 1036 ինչպէս կ՚ըսէ և Մատթ. Ուռհայեցի (ԽԸ). « Ի թու. Հայոց ՆՁԵ (1036)
» Խաւարեցաւ արեգակն ահաւոր եւ սոսկալի տես-
» լեամբ »: Դուցէ Այրիվանեցին ուղղագոյն դնէ ի ՆՁ թուականի (481). « Արեգակն խաւարեցաւ ի քա-
» ղոց ԾԳ, (դեկտ. 21) յուրբաթու, ի մէջօրէի, եւ որ-
» ձակեցաւ սատանայ ի կապանաց Խաչելութեանն
» Քրիստոսի »:

1. Ծանօթ Գր. Մագիստրոս՝ եղբօրորդի է Վասակայ:

2. Այն որ Վեստ կոչուէր յունական պատուանուամբ, եւ որ քանի մի տարի վերջ եղաւ մատնիչ, Անի մայրաքաղաքը Յունաց կայսեր անցընել տալով:

նայն մարդիկն եկեալ առ Նա անձինք 120։ Յայնժամ տեսեալ սուրբ վարդապետն զհառաչանս եկելոցն առ նա, սկսաւ ասել ցնոսա. Լուարուք, որդեակք իմ, ի դառնացեալ ծերոյս, զի այսօր լցաւ հազար ամ չարչարանացն Քրիստոսի. և յայսմ հետէ համարձակումն է սատանայի և պղծ դիւաց նորա։... Եւ առաջին նշանն եցոյց յառաջ քան զայս եօթն ամաւ[1], և դարձեալ երկրորդեաց. զի ահա յայսմհետէ ամենայն ազգք հաւատացելոց Քրիստոսի՝ ի խաւարի շրջելոց են, զի թուլանան ի պահոց և յաղօթից։...

Զայս ամենայն խօսեցաւ սուրբ վարդապետն Յովհաննէս ընդ իշխանսն եկեալս առ ինքն, և արձակեաց զնոսա։ Եւ ինքն կեցեալ ժամանակս՝ բազում ողբովք և հառաչանօք վասն աւերման աշխարհիս և խանգարման սուրբ կանոնացն՝ զոր ետես մարգարէական հոգւով, և լայր դառնապէս անմխիթար սգով։...

1. Վերը ուխթ տարի ըսաւ. Մխիթար Այրիվանեցին զայս այլ նշանակէ ի ժամանակագրական Պատմութեանն. «ՆՀԷ (477–1029). ի հոկտեմբերի դ. յերեկո-»րեայ երկինքն պատառեցաւ յեզրէ յեզր. և ան-»դունդք գոչեցին. և արձակեցաւ սատանայ ի կա-»պանաց մկրտութեանն Քրիստոսի»։

# ՄԽԸ

## ԱՊԻՒԼ-ՍՕՒՎԱՐ
## ԱՄԻՐԱՅ ԴՈՒՆԻ ԵՒ ԴԱՒԻԹ ԱՆՀՈՂԻՆ

(ՄԱՏԹ. ՈՒՌՀԱՅԵՑԻ. ԾԴ.)

*Յայսմ ժամանակիս զօրաժողով արար մեծ ամիրայն Պարսից Ապուսուար[1], իբրեւ հարիւր յիսուն հազար, զազգն յանօրինաց[2], եւ մեծաւ սրտմտութեամբ յարձակեալ գայր ի վերայ քրիստոնէից, եւ զանհնարին բարկութեամբ մտաւ յաշխարհն Աղուանից, ի Դաւթի Անհողինի[3] գաւառն. եւ բազում վիշտ էած հաւատացելոց. եւ Դաւիթ երկուցեալ ի բազմութենէ զօրացն այլազգեաց՝ ոչ ելանէր ի պատերազմ։ Իսկ անօրէնն Ապուսուար էառ զբազում գաւառս եւ դիմաբերդս շուրջ հարիւր[4]. եւ տարի մի կացեալ՝ արար յիւր հնազանդութիւն զմեծ մասն աշխարհին. եւ կամեցաւ գալ ի վերայ Դաւթի։ Յայնժամ անճարակեալ Դաւիթ եւ յուղարկէր առ Թագաւորն Յովհաննէս որ նստէր յԱնի, եւ ասէր, թէ, «Էառ Ապուսուար զամենայն*

1. *Ապիւլ-Սէվար Շէտտատ կոչուած Քուրդ ցեղէ էր, որոյ նախնին Ժ դարու կիսուն ապստամբելով յամիրապետէն Արաբաց՝ ինքնագլուխ տիրապետէր Աղուանից կողմերուն։*
2. *Սուլտանէն առած էր զօրաց մեծ մասը։*
3. *Ասոր քոյրը ի կնութիւն առած էր Ապիւլսէվար: Դաւիթ՝ հին Աղուանից մինակ փոքր մասին տիրէր: Ինչո՞ւ Անհողին կամ Անհող կոչուած է. — միթէ՞ փռանկաց այլ* Sans terre *կոչուածի նման։*
4. *Համարիմ թէ նշանակէ՝ դէմ դնելու բերդ, այսինքն ամուր. կան օրինակք որ Թ տառիւ գրեն Թիմաբերդ, որ գուցէ քեմ կամ ուրիշ բան նշանակէ. բերդից թիւն այլ կասկածելի է։*

գաւառս Հայոց աշխարհիս և գայ ի վերայ իմ. և եթէ ինչ ոչ օգնես ինձ, և ես երթամ իւր ի հնազանդութիւն, և լինիմ իւր առաջնորդ, և խաւար ածեմ գաւառիդ Շիրակայ»։ Եւ լուեալ զայս Յովհաննէս՝ յուղարկէր Դաւթի արս երեք հազար. նոյնպէս և յուղարկեալ ի Կապանին[1] Թագաւորն, զի և նա տայր նմա արս երկու հազար։ Եւ այսպիսի օրինակաւ սպառնացեալ Ափխազաց Թագաւորին, և նա յուղարկէր յօգնութիւն Դաւթին արս չորս հազար. և ինքն Դաւիթ ժողովեալ զիւր զօրսն իբրեւ տասն հազար. և յուղարկեաց առ կաթողիկոսն Աղուանից և ասէր. եթէ, «Այս ազգս անօրինաց վասն քրիստոսական հաւատոցն գան ի վերայ մեր, և կամին զօրէնս խաչապաշտացն խափանել և զհաւատս հաւատացելոց Քրիստոսի ջնջել. և ահա արժան է և իրաւունս ամենայն հաւատացելոց՝ ընդդէմ սոցա երթալ և մեռանել ի վերայ քրիստոսական հաւատոցն։ Եւ արդ ժողովեա զամենայն եպիսկոպոսունսդ Հայոց աշխարհիդ՝ որ յԱղուանսն են, և ի բանակ այսր հասիր, զի ընդ մեզ մեռանիջիք»։ Զոր և արար իսկ. երկերիւր եպիսկոպոսօք գնայր[2] Տէր Յովսէփ ի բանակն քրիստոնէից։ Գրեաց և ի վանորայսն առ հարսն՝ գալ միաբան ամենայն կրօնաւորօքն ի զօրսն հաւատացելոցն. և ժողովեաց զամենայն քահանայս Աղուանից աշխարհին և զարկաւագունսն, և քարոզ կարդաց ընդ ամենայն գաւառն և ասէր. «Եթէ այր իցէ և եթէ կին, որ ցանկացող է մարտիրոսական մահուն, ահա հասեալ եղեւ յայսմ ամի ի վերայ մեր. ում պիտոյ է Քրիստոս՝ վաղվաղակի

1. Սիւնեաց երկրին մէկ մասն է, լեռներով և նեղ անցքերով ամուր, անոր համար այլ Կապանք կոչուած, յետոյ Ղափան։

2. Չափազանց թիւ. Վրաց կաթողիկոսն հազիւ թէ 30 եպիսկոպոս ունէր, Աղուանք աւելի փոքր ազգ համարին։

առ մեզ հասցէ»: Եւ լուեալ զայս՝ հայր որդւովքն և մայր զաւակօքն ի բանակին հաւատացելոց հասանէին. և լցեալ զօրան առհասարակ անթիւ բազմութեամբ երթեալ զհետ հանդերձ զաւամբք:

Եւ լուեալ զայս Աղուասար ծիծաղեցաւ ի մերայ նոցունց այս, և խաղացոյց զօրս ի վերայ զօրացն քրիստոնէից: Եւ յայնժամ հրամայեաց Դուքսին բարձր կարդալ եպիսկոպոսացն և կրօնաւորացն և քահանայիցն, զի ամենայն ոք իւր զէնքն պատերազմի՝ խաչ առցէ ի ձեռս իւր, և միայն զանուանեն Քրիստոսի, և այնիւ ընդդէմ թշնամեաց պայծ ընթացցուք: Եւ յայնժամ ամենայն բանակն խաչ և աւետարան դարձաւ. և ահա մերձեցան չորք անօրինացն. և բազմութիւն քահանայիցն կայրն ընդդէմ նոցա. իսկ Դուքսն քան հազարավ ձայնէր ի վերայ այլազգեացն արանց քաջաց: Իբրեւ ճակատ զճակատ հարան, ձայն բարձրին քահանայական դասքն միաբան առ Աստուած՝ կարդալ, որ և հնչեաց երկիրն ի ձայնէն, և ասէին. «Արի Տէր. օգնեա մեզ, և փրկեա զմեզ վասն անուանդ քում սրբոյ»: Իսկ զօրքն հաւատացելոց իբրեւ զծով մխեցան ի մէջ բանակի անօրինացն, որ և ծածկեցան իսկ. յայնժամ քահանայական դասքն շարժեցան միաբան քրիստոսական սուրբ նշանիւքն. և ի վերայ թշնամեացն դիմեալ յարձակեցան. և հուր սաստկագէս ցոլացեալ ի նոցանէ, և եհար զզօրս այլազգեացն, և առհասարակ ի փախուստ դարձան: Եւ զօրքն Հայոց՝ արով զհետ նոցա. և զաւուրս հինգ աչագին կոտորածով վարեցին զզօրս այլազգեացն, որ և արեամբք ծածկեցան դաշտք և լերինք. առին անթիւ գանձս ոսկւոյ և արծաթոյ և աւարս բազումս. և մնացեալ զօրքն Պարսից մազապուրծ մերկ և բոկ անկան յաշխարհն իւրեանց: Եւ յաւուրս երիս տիրանայր Դուքսն ամենայն զաւառացն՝ զոր էառ այլազգին, և մեծաւ պարգեւօք յուղարկեաց զամենայն զօրսն որք եկեալ էին ի յօգնութիւն իւր. և բաշխէր

բազում ինչս յաւարէն՝ եպիսկոպոսացն և քահանայիցն և ամենայն եկեղեցն առ նա, և արձակեաց զնոսա. և եղեւ խաղաղութիւն։

---

## ՄԽԺ

### ԽՈՒԼ ԽԱՉԻԿ ԵՒ ՈՐԴԻՔՆ

(ՄԱՏԹ. ՈՒՌՀԱՅԵՑԻ. ԿԳ.)

Յայսմ ամի (1043) սպանաւ մեծ իշխանն Հայոց Խաչիկ և տղայ որդի նորա Իշխան անուն, ի Վասպուրական գաւառին. վասն զի ժողովեցան Հեր և Սալամաստ[1] և ապստամբ արարին զթոռնեան գաւառն. և համբաւ հասանէր առ Խաչիկ, եթէ զօրքն այլազգեաց մտին ի գաւառն քո։ Եւ նա էր այր քաջ և յաղթող պատերազմող, յազգէ ի վերոյն[2], յառիւծ ջոկէ[3]. բայց ծերացեալ և թողեալ էր զգործ պատերազմին, և հառաչելով ապաշաւէր. քանզի աւագ որդին նորա քաջն Հասան և Ճնճղուկն հանդերձ զօրօքն ի յարեւմուտս էին զհետ թագաւորին Միխայէլին[4]։ Եւ յայնժամ իշխանն Հայոց Խաչիկ ոչ կարաց համբերել սրտին. յարուցեալ եօթանասուն արամբք հասանէր ի վերայ այլազգեացն, և զորդին իւր ի տանն արգելական արար զԻշխան անունն, զի տղայ էր հնգետասանամեայ։ Եւ իբրեւ հասաւ Խաչիկ այլազգեացն, տեսաւ բազում զօրս (առաջի) իւր. ձայն

1. Այսինքն բնակիչք կամ զօրք Խոյ և Սալմաստ գաւառաց Պարսկահայոց։
2. Սխալ գրուած թուի. չեմ կարծեր Իվերիա և Վրացի նշանակել։
3. Առիւծի պէս ուժով, կտրիճ։
4. Որ է կայսրն Յունաց Միքայէլ Ե։

տուեալ արանց իւրոց՝ և ի պատերազմ մտանէր, և բաղխէր սաստկապէս զայլազգիսն և յերկիր Թաւալեցուցանէր։ Եւ ահա տեսանէր զի տղայ որդի նորա զերծեալ լինէր յարգելանոցէն և գայր ի պատերազմ. իբրեւ ետես Խաչիկ՝ բեկաւ[1]. քանզի տղայ էր և գեղեցիկ. և գայր Իշխանն անուն իբրեւ զկորիւն առիւծոյ, և ուժգին բաղխէր զպատերազմն, և առ տխմարութեանն՝ քաջապէս մտանէր[2]։ Եւ իմացեալ զնա թէ որդի առն քաջին է, փակեցին զնա ի մէջ, և կալան սպանին։ Եւ տեսեալ Խաչիկ բեկաւ ողն նորա, և անկաւ սուսերն ի ձեռաց նորա. և տեսեալ զայն զօրացն այլազգեաց՝ դիմեցին ի վերայ նորա, կալան զնա և սպանին. և մնացեալքն փախստական գնացին ի տունս իւրեանց։

Եւ զկնի աւուրց ինչ գային որդիքն Խաչիկայ յարեւմտից, զի լուեալ էին զմահ հօրն իւրեանց և զտղայ եղբօրն, և գային առաւ զգեստօք և լային բազում լալիւնս։ Եւ յայնժամ Հասան կալաւ ռայիս[3] մի Քուրթ, որ էր իւր սահմանակից, և տայր նմա հազար դահեկան և ասէր. «Սուտ ի Հեր և ի Սաղամաստ, և ասա, թէ, «Թոռնեւան և ամենայն աշխարհն անմարդ է. զի՞ կայք պարապ, բազում հօտս ոչխարաց և ծառայս ընդ վայր չրջին»։ Եւ արար ռայիսն այնպէս։ Եւ ժողովեցան այլազգիքն արս հնգետասան հազար. եկին մտին ի նոյն տեղին. և պայր ռայիսն, և պատմեաց Հասանայ և Ճնճղկան. և ժողովեալ Հասանայ բզզօրս իւր արս հինգ հազար, և մեծաւ զայրացմամբ իբրեւ զխոցուած գազան հասանէր ի վերայ բանակի անօրինացն։ Եւ ձայն տուեալ Հասան արտասուալից գոչմամբ ի ճակատ այլազգեացն և ասէր. «Ո՞ւր է այրն այն որ եսպան զհայրն իմ

1. Սիրտն կոտրեցաւ, որդւոյն վտանգը տեսնելով։
2. Ցանդգնութեամբ վազէր, թշնամեաց մէջ մտնէր։
3. Դեղապետ կամ վիճակապետ։

զԽաչիկ, յառաջ եկեսցէ »: Եւ ահա գայր մի ոմն յայլազգեացն, սեաւ մի և հզօր, և ձայնեալ ասէր, թէ, « Ես եմ որ սպանի զառիւծն զԽաչիկ, և ահա պատերազմու ձին և զգեստն և իւր նշանակն[1] և թուրն, զոր ունիմ ես »: Եւ տեսեալ Հասան որդի նորա՝ ելաց, և հանեալ զթուրն ի պատենիցն, և որպէս զառիւծ հասանէր ի մէջ այլազգեացն, և հարեալ զնա՝ ընդ երկուս պատառեալ յերկիր ընկենոյր. և առեալ զձին և զնշանակն՝ անվնաս ելանէր:

Այսպիսի օրինակաւ ձայն տուեալ բարձր՝ եղբայրն Հասանայ Ճնճղուկն և ասէ. « Ո՞վ է որ եսպան զեղբայրն իմ զԻշխան անուն. ելցէ յատենի՝ զի տեսից զնա »: Եւ գայր պարսիկ մի քաջ, և ձայն տուեալ և ասէր. « Ես եմ որ սպանի զԻշխան անունն, և ահա իւր սպիտակ ձին և իւր վառ նշանակն[2] և իւր թուրն »: Եւ որպէս կայծակն հասաւ Ճնճղուկ ի վերայ նորա և սատակեաց զնա. և առեալ զձին և զնշանակն, և գայր առ Հասան. և ձայն տուեալ Հասան զօրացն և քաջապէս բախեալ ի պատերազմ՝ դարձուցին ի փախուստ, և կոտորեցին ի նոցանէ արս չորս հազար. և դարձան խաղաղութեամբ և մեծաւ ուրախութեամբ, և փոխեցին զսեաւ զգեստս իւրեանց:

1. Խաչկայ պատերազմի դրօշն:
2. Վառ՝ շատ հեղ դրօշ նշանակէ, բայց այստեղ թուի կարմիր դրօշ:

# ՄԽԷ

## ՅՈՎՀԱՆՆԷՍ ՎԱՐԴԱՊԵՏ ԿՈԶԵՌՆ[1]

(ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ, ՀՈԿՏ. 5.)

Ի Թուականութեանս Հայոց ԴՃՀԸ (478–1029–30) ամին և ի նոյն թագաւորութեան Յունաց Վասլին[2], եղեւ յերկինս ահաւոր նշան, և սոսկալի բարկութիւն ի վերայ երկրի. ի հոկտեմբերի ամսոյ երեք յերրորդ ժամու աւուրն, պատառեցաւ վերին հաստատութիւնն երկնից՝ յարեւելից կուսէ մինչեւ յարեւմուտս, ընդ երկուս հերձաւ երկինք կապոյտ, և լոյս պայծառ յերկիր թափեցաւ ի հիւսիսային կողմանէն, և մեծաւ շարժմամբ դղրդաց ամենայն երկիր. և նախ քան զնուաղել լուսոյն՝ (եղեւ) գոչիւն և թնդիւն ահաւոր ի վերայ ամենայն արարածոց. խաւարեցաւ արեգակն, և երեւեցան աստեղք որպէս ի մէջ գիշերի. և ամենեքեան սուգ զգեցան, և դառն արտասուօք աղաղակէին ամենայն մարդիկ առ Աստուած: Եւ ապա յետ երից աւուրց ժողովեցան ամենայն իշխանքն և ազատքն հրամանաւ թագաւորին Յովաննիսի, և եկին առ մեծ վարդապետն Կոզեռն Յոհաննէս. որ էր այր աստուածազգեաց հրեշտակակրօն և հոգեւոր, լցեալ առաքելական և մարգարէական գրոց գիտու-

1. Կոզեռն ուղտու ձագ նշանակէ. յայտնի չէ թէ ինչո՞ւ այսպէս մականուաներ է վարդապետս: Կ'աւանդուի որ երկար տեսիլք մի տեսած է և գրուած այս վերնագրով. «Տեսիլ սուրբ Վարդապետին Յո-» հաննու որ մականուն Կոզեռն կոչեցեալ, այր ճըգ-» նազգեաց և բանիբուն վարդապետ»:

2. Բ Վասիլ կայսրն է, որոյ գալն ի Հայս պատմած էր յօդուածիս հեղինակն:

թեամբ։ Եւ յորժամ եկին իշխանքն Հայոց հարցանել զնա և իմանալ վասն հրաշալի նշանին որ եղեւ, և տեսին զվարդապետն Յովհաննէս անկեալ ի վերայ երեսաց իւրոց խոր տրտմութեամբ, և լայր դառնապէս. և ի հարցանել նոցա՝ նա սգով և աղխողորմ հառաչանօք պատասխանի տուեալ ասաց. Ո՛վ որդեակք, լուարուք, զի ահա այսօր հազարամ է կապանաց սատանայի, զոր կապեաց Քրիստոս իւրով մկրտութեամբն ի գետն Յորդանան. և արդ արձակեցաւ սատանայ ի կապանաց իւրոց, ըստ վկայութեան Սրբոյն Յովհաննու աւետարանչի[1], որպէս ասաց նմա հրեշտակն, թէ հազարամ կապեսցի սատանայ և դարձեալ արձակեսցի ի կապանաց իւրոց. և ահա այսօր արձակեցաւ սատանայ, որ Հայոց Թուականն ԴՃՀԸ (478) (է), և կալ զառաջին ԵՃԾԲ (552) որ լինի ՌԼ ամ (1030)[2]. արդ զերեսունն տուր յառաջ քան զմկրտութիւնն, և կամ զհազար ի մկրտութենէն Քրիստոսի մինչեւ ցայսօր։ Եւ արդ, որդեակք, վասն այսորիկ եղեւ պատառումն երկնից. և ահա յայսմ հետէ ոչ ոք կարասցէ կալ հաստատուն ի պատուիրանս Աստուծոյ։... Յայսմ հետէ կամքն սատանայի առաւել կատարեսցի ի մարդկանէ քան զԱստուծոյն։... Զայս ամենայն այսպէս խօսեցաւ սուրբ վարդապետն Յովհաննէս վասն ահաւոր նշանին. և զոր ասացն՝ ամենայն կատարեցան և կատարին։

Եւ դարձեալ յետ ութ տարւոյն՝ ի Թուականիս Հայոց ԴՃՀԸ (478)[3] խաւարեցաւ արեգակն ահա-

1. Արդարեւ Քրիստոսի քարոզութեան սկսելէն մինչեւ այս Թուականն՝ հազար տարի կ՚ըլլար. շատ քրիստոնէից մէջ կարծիք և վախ կար, որ այն Թուականին աշխարհիս վերջ պիտի ըլլայ. և այս բանն՝ Յովհ. Յայտնութեան մէկ խօսքէն հետեւցնէին։

2. Որ է Քրիստոսի Ծննդեան կամ Մարդեղութեան Թուականն։

3. Առջի 478 Թուականէն ութ տարի ետքը՝ պէտք

ւոր և սոսկալի տեսլեամբ. զի սեւացաւ արեգակն ի կէս աւուրն, և ամենայն աստեղքն երեւեցան որպէս ի մէջ գիշերի. և ամենայն մարդիկ ահաբեկ եղեալ անկան յերկիր որպէս մեռեալք, ի սաստիկ շարժմանէն և յահագին որոտմանէն և գոռալոյն խորոց և բարձանց։ Յայնժամ կաթողիկոսն Տէր Պետրոս և թագաւորն Յովհաննէս՝ յղեցին արս փառաւորս ի մեծապատուացն առ վարդապետն Յոհաննէս որ կոչիւր Կոզեռն, զի ի նմանէ գիտասցեն զմեկնութիւն մեծի նշանին. և զի էր այր սուրբ և զարդարեալ սքանչելի առաքինութեամբ. և էր մեկնիչ հին և նոր կտակարանացն Աստուծոյ լցեալ վարդապետական շնորհօքն. և որք եկին առ վարդապետն՝ էին այսոքիկ. Գրիգոր մագիստրոսն որդին Վասակայ[1], և մեծն Աւագ Սարգիսն[2], և այլք յազատացն Հայոց և ի պատուական երիցանց, որք եկեալ գտին զՎարդապետն անկեալ ի վերայ երեսաց իւրոց յերկիր, ի խոր սրմութեան և ի լաց, մինչ զի թացեալ էր արտասուօք զգետինն՝ ի սաստիկ լալոյն. իբրեւ տեսին զնա յայնպիսի տրտմութեան՝ զահի հարան և ոչ իշխէին հարցանել զնա բան ինչ, զի անդադար հեղոյր զարտասուս իւր և կոծէր զկուրծսն։ Ապա յետ վեց ժամու դեգերմանն, սկսաւ փառաւոր իշխանն Աւագ Սարգիսն հարցանել զնա վասն ահագին նշանին. լային ամե-

էր ըլլալ 486 Հայոց, Քրիստոսի 1036 ինչպէս կ՚ըսէ և Մատթ. Ուռհայեցի (ԽԸ). «Ի թու. Հայոց ՆՁԵ (1036) » Խաւարեցաւ արեգակն ահաւոր և սոսկալի տես- » լեամբ»: Գուցէ Այրիվանեցին ուղղագոյն ընէ ի ՆՁ թուականի (481). «Արեգակն խաւարեցաւ ի քա- » ղոց ԺԳ, (դեկտ. 21) յուրբաթու, ի մէջօրէի, և ար- » ձակեցաւ սատանայ ի կապանաց խաչելութեանն » Քրիստոսի»:

1. Ծանօթ Գր. Մագիստրոս՝ եղբօրորդի է Վասակայ:

2. Այն որ Վեստ կոչուի յունական պատուանուամբ, և որ քանի մի տարի վերջ եղաւ մատնիչ, Անի մայրաքաղաքը Յունաց կայսեր անցընել տալով:

նայն մարդիկն եկեալ առ նա անձինք 120։ Յայնժամ տեսեալ սուրբ վարդապետն զհառաչանս եկեղեցւոյն առ նա, սկսաւ ասել ցնոսա. Լուարուք, որդեակք իմ, ի դառնացեալ ծերոյս, զի այսօր լցաւ հազար ամ չարչարանացն Քրիստոսի. և յայսմ հետէ համարձակումն է սատանայի և պեղծ դիւաց նորա։... Եւ առաջին նշանն եցոյց յառաջ քան զայս եօթն ամաւ[1], և դարձեալ երկրորդեաց. զի ահա յայսմհետէ ամենայն ազգք հաւատացելոց Քրիստոսի՝ ի խաւարի շրջելոց են, զի թուլանան ի պահոց և յաղօթից։...

Զայս ամենայն խօսեցաւ սուրբ վարդապետն Յովհաննէս ընդ իշխանսն եկեալս առ ինքն, և արձակեաց զնոսա։ Եւ ինքն կեցեալ ժամանակս՝ բազում ողբովք և հառաչանօք վասն աւերման աշխարհիս և խանգարման սուրբ կանոնացն՝ զոր ետես մարգարէական հոգւով, և լայր դառնապէս անմխիթար սգով։...

1. Վերը ութ տարի ըսաւ. Մխիթար Այրիվանեցին զայս այլ նշանակէ ի Ժամանակագրական Պատմութեանն. «ՆՀԷ (477–1029). ի հոկտեմբերի Դ յերեկո»րեայ երկինքն պատառեցաւ յեզրէ յեզր, և ան»դունդք գոչեցին. և արձակեցաւ սատանայ ի կա»պանաց մկրտութեանն Քրիստոսի»։

# ՄԽԸ

## ԱՊԻՒԼ-ՍԷՒՎԱՐ
## ԱՄԻՐԱՅ ԴՈՒՆԻ ԵՒ ԴԱՒԻԹ ԱՆՀՈՂԻՆ

(ՄԱՏԹ. ՈՒՌՀԱՅԵՑԻ. ԾԴ.)

*Յայսմ ժամանակիս զօրաժողով արար մեծ ամիրայն Պարսից Ապուսուար[1], իբրեւ հարիւր յիսուն հազար, զազգսն յանօրինաց[2], եւ մեծաւ սրտմտութեամբ յարձակեալ գայր ի վերայ քրիստոնէից, եւ դառնաշունչ բարկութեամբ մտաւ յաշխարհն Աղուանից, ի Դաւթի Անհողին[3] գաւառն. եւ բազում վիշտ էած հաւատացելոց. եւ Դաւիթ երկուցեալ ի բազմութենէ զօրացն այլազգեաց՝ ոչ ելանէր ի պատերազմ։ Իսկ անօրէնն Ապուսուար էառ զբազում գաւառս եւ դիմաբերդս չորք հարիւր[4]. եւ տարի մի կացեալ՝ արար յիւր հնազանդութիւն զմեծ մասն աշխարհին. եւ կամեցաւ գալ ի վերայ Դաւթի։ Յայնժամ անճարակեալ Դաւիթ եւ յուղարկէր առ թագաւորն Յովհաննէս որ նստէր յԱնի, եւ ասէր, թէ, «Էառ Ապուսուար զամենայն*

1. *Ապիւլ-Սէվար Շէտատ կոչուած Քուրդ ցեղէ էր, որոյ նախնին ժ դարու կիսուն ապստամբելով յամիրապետէն Արաբաց՝ ինքնագլուխ տիրապետէր Աղուանից կողմերուն։*
2. *Սուլտանէն առած էր զօրաց մեծ մասը։*
3. *Ասոր քոյրը ի կնութիւն առած էր Ապիւլսը-վար։ Դաւիթ՝ հին Աղուանից մինակ փոքր մասին տիրէր։ Ինչո՞ւ Անհողին կամ Անհող կոչուած է. — միթէ՞ փռանկաց այլ* Sans terre *կոչուածի նման։*
4. *Համարիմ թէ նշանակէ՝ դէմ դնելու բերդ, այսինքն ամուր. կան օրինակք որ Թ տառիւ գրեն Թիմաբերդ, որ գուցէ թեմ կամ ուրիշ բան նշանակէ. բերդից թիւն այլ կասկածելի է։*

գաւառս Հայոց աշխարհիս և գայ ի վերայ իմ. և եթէ ինչ ոչ օգնես ինձ, և ես երթամ իւր ի հնազանդութիւն, և լինիմ իւր առաջնորդ, և խաւար ածեմ գաւառիդ Շիրակայ»: Եւ լուեալ զայս Յովհաննէս՝ յուղարկէր Դաւթի արս երեք հազար. Նոյնպէս և յուղարկեալ ի Կապանին[1] Թագաւորն, զի և նա տայր նմա արս երկու հազար: Եւ այսպիսի օրինակաւ սպառնացեալ Ափխազաց Թագաւորին, և նա յուղարկէր յօգնութիւն Դաւթին արս չորս հազար. և ինքն Դաւիթ ժողովեալ զիւր զօրսն իբրեւ տասն հազար. և յուղարկեաց առ կաթուղիկոսն Աղուանից և ասէր. եթէ, «Այս ազգս անօրինաց վասն քրիստոսական հաւատոցն գան ի վերայ մեր, և կամին զօրէնս խաչապաշտացն խափանել և զհաւատս հաւատացելոց Քրիստոսի ջնջել. և ահա արժան է և իրաւունս ամենայն հաւատացելոց՝ ընդդէմ սոցա երթալ և մեռանել ի վերայ քրիստոսական հաւատոցն: Եւ արդ ժողովեա զամենայն եպիսկոպոսունսդ Հայոց աշխարհիդ՝ որ յԱղուանսն են, և ի բանակ այսր հասիր, զի ընդ մեզ մեռանիջիք»: Զոր և արար իսկ. երկերիւր եպիսկոպոսօք գնայր[2] Տէր Յովսէփ ի բանակն քրիստոնէից: Գրեաց և ի վանորայսն առ հարսն՝ գալ միաբան ամենայն կրօնաւորօքն ի զօրսն հաւատացելոցն. և ժողովեաց զամենայն քահանայս Աղուանից աշխարհին և զսարկաւագունսն, և քարոզ կարդաց ընդ ամենայն գաւառն և ասէր. «Եթէ այր իցէ և եթէ կին, որ ցանկացող է մարտիրոսական մահուն, ահա հասեալ եղեւ յայսմ ամի ի վերայ մեր. ում պիտոյ է Քրիստոս՝ փաղփաղակէ

1. Սիւնեաց երկրին մէկ մասն է, լեռներով և նեղ անցքերով ամուր, անոր համար այլ Կապանք կոչուած, յետոյ Ղափան:

2. Զափազանց թիւ. Վրաց կաթողիկոսն հազիւ թէ 30 եպիսկոպոս ունէր, Աղուանք աւելի փոքր ազգ համարին:

առ մեզ հասցէ»։ Եւ լուեալ զայս՝ հայր որդւովքն և մայր դստերօքն ի բանակն հաւատացելոց հասանէին. և լցաւ դաշտն առհասարակ անթիւ բազմութեամբ իբրեւ զհօտս հանդերձ գառամբք։

Եւ լուեալ զայս Ապուսուար ծիծաղեցաւ ի վերայ եղելոցս այս, և խաղայր գայր ի վերայ դօրացն քրիստոնէից։ Եւ յայնժամ հրամայեաց Դաւիթ քարոզ կարդալ եպիսկոպոսացն և կրօնաւորացն և քահանայիցն, զի ամենայն ոք իւր զէնքն պատերազմի՝ խաչ առցէ ի ձեռս իւր, և միայն զաւետարանն Քրիստոսի, և այնիւ ընդդէմ թշնամեաց սրոյն ընթասցուք։ Եւ յայնժամ ամենայն բանակն խաչ և աւետարան դարձաւ. և ահա մերձեցան զօրք անօրինացն. և բազմութիւն քահանայիցն կային ընդդէմ նոցա. իսկ Դաւիթ քան հազարով հասանէր ի վերայ այլազգեացն առանց քաջաց։ Իբրեւ ճակատ զճակատ հարան, ձայն բարձրին քահանայական դասքն միաբան առ Աստուած՝ յոլով, որ և հնչեաց երկիրն ի ձայնէն, և ասէին. «Արի Տէր, օգնեա մեզ, և փրկեա զմեզ վասն անուանդ քում սրբոյ»։ Իսկ զօրքն հաւատացելոց իբրեւ զծով մխեցան ի մէջ բանակի անօրինացն, որ և ծածկեցան իսկ. յայնժամ քահանայական դասքն չարժեցան միաբան քրիստոսական սուրբ նշանիւքն, և ի վերայ թշնամեացն դիմեալ յարձակեցան, և հուր սաստկապէս ցոլացեալ ի նոցանէ, և եհար զզօրս այլազգեացն, և առհասարակ ի փախուստ դարձան։ Եւ զօրքն Հայոց՝ սրով զհետ նոցա. և զաւուրս հինգ աչագին կոտորածով վարեցին զզօրս այլազգեացն, որ և արեամբք ծածկեցան դաշտք և լերինք. առին անթիւ գանձս ոսկւոյ և արծաթոյ և աւարս բազումս. և մնացեալ զօրքն Պարսից մազապուրծ մերկ և բոկ անկան յաշխարհն իւրեանց։ Եւ յաւուրս երիս տիրանայր Դաւիթ ամենայն զաւառացն՝ զոր էառ այլազգին, և մեծաւ պարգեւօք յուղարկեաց զամենայն զօրսն որք եկեալ էին ի յօգնութիւն իւր. և բաշխէր

բազում ինչս յաւարէն՝ եպիսկոպոսացն և քահանայիցն և ամենայն եկեղեցն առ նա, և արձակեաց զնոսա. և եղեւ խաղաղութիւն։

---

## ՄԽԺ

### ԽՈՒԼ ԽԱՉԻԿ ԵՒ ՈՐԴԻՔՆ

(ՄԱՏԹ. ՈՒՌՀԱՅԵՑԻ. ԿԳ.)

Յայսմ ամի (1043) սպանաւ մեծ իշխանն Հայոց Խաչիկ և տղայ որդի նորա իշխան անուն, ի Վասպուրական գաւառին. վասն զի ժողովեցան Հեր և Սաղամաստ[1] և ապստամբ արարին զԹոռնաւան գաւառն. և համբաւ հասանէր առ Խաչիկ, եթէ զօրքն այլազգեաց մտին ի գաւառն քո։ Եւ նա էր այր քաջ և յաղթող պատերազմող, յազգէ ի վերոյն[2], յառիւծ ջոկէ[3]. բայց ծերացեալ և թողեալ էր զգործ պատերազմին, և հառաչելով ապաշխարէր. քանզի աւաղ որդին նորա քաջն Հասան և Ճնճղուկն հանդերձ զօրօքն ի յարեւմուտսն էին զհետ Թագաւորին Միխայէլին[4]։ Եւ յայնժամ իշխանն Հայոց Խաչիկ ոչ կարաց համբերել սրտին. յարուցեալ եօթանասուն արամբք հասանէր ի վերայ այլազգեացն, և զորդին իւր ի տանն արգելական արար զիշխան անունն, զի տղայ էր հնգետասանամեայ։ Եւ իբրև հասաւ Խաչիկ այլազգեացն, տեսաւ բազում զօրս (առաջի) իւր. ձայն

1. Այսինքն բնակիչք կամ զօրք Խոյ և Սալմաստ գաւառաց Պարսկահայոց։
2. Սխալ գրուած թուի. չեմ կարծեր Իվերիա և Վրացի նշանակել։
3. Առիւծի պէս ուժով, կորիճ։
4. Որ է կայսրն Յունաց Միքայէլ Ե։

տուեալ արանց իւրոց՝ և ի պատերազմ մտանէր, և բաղխէր սաստկապէս զայլազգիսն և յերկիր թաւալեցուցանէր։ Եւ ահա տեսանէր զի տղայ որդի նորա զերծեալ լինէր յարգելանոցէն և գայր ի պատերազմ. իբրեւ ետես Խաչիկ բեկաւ[1]. քանզի տղայ էր և գեղեցիկ. և գայր Իշխանն անուն իբրեւ զկորիւն առիւծոյ, և ուժգին բաղխէր զպատերազմն, և առ տխմարութեանն՝ քաջապէս մտանէր[2]։ Եւ իմացեալ զնա թէ որդի առն քաջին է, փակեցին զնա ի մէջ, և կալան սպանին։ Եւ տեսեալ Խաչիկ բեկաւ ողն նորա, և անկաւ սուսերն ի ձեռաց նորա. և տեսեալ ղայն զօրացն այլազգեաց՝ դիմեցին ի վերայ նորա, կալան զնա և սպանին. և մնացեալքն փախստական գնացին ի տունս իւրեանց։

Եւ զկնի աւուրց ինչ գային որդիքն Խաչիկայ յարեւմտից; զի լուեալ էին զմահ հօրն իւրեանց և զտղայ եղբօրն, և գային սեաւ զգեստօք և լային բազում լալիւնս։ Եւ յայնժամ Հասան կոլաւ ռայիս[3] մի Քուրթ, որ էր իւր սահմանակից, և տայր նմա հազար դահեկան և ասէր. «Մուտ ի Հեր և ի Սաղամաստ, և ասա, թէ, «Թոռնեւան և ամենայն աշխարհն անմարդ է. զի՞ կայք պարապ, բազում հօտս ոչխարաց և ծառայս ընդ վայր չրջին»։ Եւ արար ռայիսն այնպէս։ Եւ ժողովեցան այլազգիքն արս հնգետասան հազար. եկին մտին ի նոյն տեղին. և գայր ռայիսն, և պատմեաց Հասանայ և Ճնճղկան. և ժողովեալ Հասանայ զզօրս իւր արս հինգ հազար, և մեծաւ զայրացմամբ իբրեւ զխոցուած գազան հասանէր ի վերայ բանակի անօրինացն։ Եւ ձայն տուեալ Հասան արտասուալից գոչմամբ ի ճակատ այլազգեացն և ասէր. «Ո՞ւր է այրն այն որ եսպան զհայրն իմ

1. Սիրտն կոտրեցաւ, որդւոյն վտանգը տեսնելով։
2. Ցանդգնութեամբ վազէր, թշնամեաց մէջ մտնէր։
3. Գեղապետ կամ վիճակապետ։

զԽաչիկ, յառաջ եկեսցէ»: Եւ ահա գայր մի ոմն յայլազգեացն, սեաւ մի և հզօր, և ձայնեալ ասէր, թէ, «Ես եմ որ սպանի զառիւծն զԽաչիկ, և ահա պատերազմու ձին և զգեստն և իւր նշանակն[1] և թուրն, զոր ունիմ ես»: Եւ տեսեալ Հասան որդի նորա՝ ելաց, և հանեալ զթուրն ի պատենիցն, և որպէս զառիւծ հասանէր ի մէջ այլազգեացն, և հարեալ զնա՝ ընդ երկուս պատառեալ յերկիր ընկենոյր. և առեալ զձին և զնշանակն՝ անմնաս ելանէր:

Այսպիսի օրինակաւ ձայն տուեալ բարձր՝ եղբայրն Հասանայ Ճնճղուկն և ասէ. «Ո՞վ է որ եսպան զեղբայրն իմ զԻշխան անուն. ելցէ յատենի՝ զի տեսից զնա»: Եւ գայր պարսիկ մի քաջ, և ձայն տուեալ և ասէր. «Ես եմ որ սպանի զԻշխան անունն, և ահա իւր սպիտակ ձին և իւր վառ նշանակն[2] և իւր թուրն»: Եւ որպէս կայծակն հասաւ Ճնճղուկ ի վերայ նորա և սատակեաց զնա. և առեալ զձին և զնշանակն, և գայր առ Հասան. և ձայն տուեալ Հասան զօրացն և քաջապէս բախեալ ի պատերազմ՝ դարձուցին ի փախուստ, և կոտորեցին ի նոցանէ արս չորս հազար. և դարձան խաղաղութեամբ և մեծաւ ուրախութեամբ, և փոխեցին զսեաւ զգեստս իւրեանց:

1. Խաչկայ պատերազմի դրօշն:
2. Վառ՝ շատ հեղ դրօշ նշանակէ, բայց այստեղ թուի կարմիր դրօշ:

# ՄԾ

## ՎԵՍՏ ՍԱՐԳԻՍ ՄԱՏՆԻՉ ԱՆԻՈՅ

(ՄԱՏԹ. ՈՒՌՀԱՅԵՑԻ. ԿԵ.)

Յայսմ ժամանակիս սկսաւ անօրէնն Սարգիս յառաջ բերել զչար նենգութիւնն իւր. և ազդ արարեալ Մոնոմախին[1] և ասէր, եթէ, «Կոչեա առ քեզ զԳագիկ[2] ի Կոստանդինուպօլիս՝ սիրոյ պատճառանօք, և յայնժամ խաբէութեամբ առցես ի նմանէ զքաղաքն Անի»: Եւ լուեալ զայս Մոնոմախ թագաւորն, և ուրախ լինէր յոյժ. և բուսաւ ի սիրտ նորա բոյս չարութեան՝ առ ի բառնալ զթագաւորութիւնն Հայոց: Եւ գրեաց թուղթ առ Գագիկ արքայն Հայոց հանդերձ մեծամեծ երդմամբ. և այնչափ մոլեգնեալ՝ մինչև զքրիստոսական աւետարանն և զնշանն սուրբ Խաչին Քրիստոսի՝ միջնորդս և երաշխաւորս յուղարկեալ ի Հայք. և այսպիսի օրինակաւ կոչէր զթագաւորն Հայոց վասն սիրոյ և տեսութեան: Եւ լուեալ զայս Գագիկ և ոչ էառ յանձն գնալ զհետ ստութեան. վասն զի գիտէր զՀոռոմոց նենգութիւնն: Յայնժամ նենգաւորն Սարգիս և այլք յազատացն յառաջ մատեան, որք բանատուքն[3] էին առ Մոնոմախին, և քաջալերէին զնա գնալ, և ասէին. «Ո՛վ թագաւոր, վասն էր երկնչիս և ոչ գնաս, վասն այսպիսի երդմանցս և միջնորդութեամբ սրբոյ Աւետարանին և սրբոյ Նշանին Քրիստոսի. և յաղագս մեր մի՛ երկնչիր. վասն զի ահա անձինք մեր մե-

1. Կոստանդին Մոնոմախոս կայսր:

2. Վերջին թագաւոր Հայոց Բագրատունեաց, որդի Աշոտոյ՝ եղբօր Յովհաննու թագաւորի: Տես Յօդ. 245:

3. Մատնիչք, ծածուկ լուր տուողք:

ռանքն ի վերայ քո » ։ Եւ կացուցին միջնորդս զՏէր Պետրոս[1], և արարին երդմունս սաստիկս յաւուր յայնմիկ. և բերին զսուրբ խորհուրդն մարմնոյ և արեան Որդւոյն Աստուծոյ, և թանային զգրիչն յարիւն Կենարարին, և արարին երդման գիր Հայրապետն և ամենայն իշխանքն Հայոց[2]։ Եւ յայնժամ գնաց Գագիկ արքայ Հայոց ի Կոստանդինուպօլիս առ թագաւորն Մոնոմախ։ Եւ ամենայն քաղաքն բաղխեալ ելանէին ընդ առաջ Գագկայ Հայոց արքային. մեծ փառաւորութեամբ տարան զնա առ թագաւորն, որպէս վայել է թագաւորին. և աւուրս ինչ մեծարեաց զնա Մոնոմախն։

Եւ յայնժամ աստուածուրաց նենգաւորքն որք արեամբն Աստուծոյ կապեցին զերդումն սոսկալի, առաքեն զքառասուն բանալիս քաղաքին Անւոյ առ թագաւորն Մոնոմախ, և ի հետ թուղթ, թէ, « Անի քաղաքն և ամենայն արեւելք քեզ եղեւ »։ Եւ կոչեաց թագաւորն զԳագիկ, և զբանալիս տանն և զքաղաքին և զթուղթն առաջի նորա եդեալ, և ասէր ցԳագիկ, եթէ, զԱնի և զամենայն արեւելք ետուն ի ձեռս իմ։ Եւ ծանեաւ Գագիկ զնենգութեան գործքն, յոգւոց եհան արտասուօք և ասէր. « Դատ արասցէ Քրիստոս ընդ իս և ընդ նենգաւորսն իմ »։ Եւ ասէր Գագիկ ցՄոնոմախն, եթէ, « Տէր և թագաւորն ես եմ տանն Հայոց, և ահա ես ոչ տամ զՀայք ի ձեռս քո. վասն զի դու զիս խաբէութեամբ ածեր ի Կոստանդինուպօլիս »։ Եւ զաւուրս երեսուն պնդեալ ոչ հաւանեցաւ Գագիկ. և յորժամ ելս իրացն ոչ գտանէր, յայնժամ տայր զԱնի ի ձեռս Հոռոմոց. և տայր Մոնոմախն Գագկայ զԿալօն-պեղատն և զՊիզու[3], և ոչ յուղար-

1. Գետադարձ կոչուած կաթողիկոսն։

2. Չէ հաւատալի թէ կաթողիկոսն ըրած ըլլայ այդպիսի բան. և եթէ հաւաներ է Գագկայ երթալուն, պարզմտութեամբ է և ոչ մատնութեամբ։

3. Կապպադովկիոյ մէջ են, բայց տեղիքն անծանօթ։

կեաց զԳագիկ ի քաղաքն Անի. և զտունն հայրենի իւրոյ[1] տայր բերել ի Հռոմս. և կայր դեգերեալ Թագաւորն պանդխտեալ ի մէջ անողորմ և չար ազգին Յունաց[2]: Բայց ուր հասանէր Գագիկ՝ նեղութիւն մեծ արկանէր ի վերայ ազգին Յունաց, պէսպէս խայտառակութեամբ. վասն զի որպէս թագաւոր ահարկութեամբ կայր ի մէջ նոցա և Հռոմոց. բայց սաստիկ սուգ ունէր ի սրտի իւրում վասն հայրենի աթոռոյն իւրոյ, զոր նենգութեամբ յափշտակեցին:

---

# ՄԾԱ

## ՔԱՋՈՒԹԻՒՆ ԵՒ ՍՊԱՆՈՒՄՆ ԼԻՊԱՐՏԻ ՕՐՊԵԼԵԱՆ

(ՍՏԵՓԱՆՈՍ ՕՐՊԵԼԵԱՆ, ԿԶ.)

Համբաւ դառնալուր և տիեզերակործան հրոշակին[3] հասանէր յառաջագոյն առ կայսրն Յունաց. և դողումն սարսափելի հասեալ կալաւ զերիկամունս ամենայն մարդոյ: Վասն որոյ յղեն այր զկոմմենոս[4] ի Տրապիզոնոյ՝ զօրօք. և խնդրեն միաբան օգնականութիւն ի Հայոց և ի Վրաց, թերեւս կարասցեն զերծանիլ յայնմ անդնդապըտոյտ և ահագնեռանդ բարկութեանցն հարաւայ-

1. Պէտք էր ըսել, «զտունն իւր հայրենի» կամ զտունն հայրենեացն:
2. Պատմչին սիրտն այլ զայրացեր է ոչ պակաս քան զԹագաւորն, և սուր գրչով անխնայ խոցէ զՅոյնս:
3. Խուարէզմ կամ Խորազմ Պարսից արշաւանաց լուրն:
4. Ծանօթ անուանի յոյն ցեղէն մէկ մի, ուսկից յաջորդ դարերում կայսերք եղան Կ. Պօլսի:

նոց։ Զոր լուեալ Թագաւորին Դաւթի և Գագկայ՝[1] ոչ համարձակեցան ընդ առաջ ելանել իսմայելեան զօրուն. այլ մեծապաղատ թախանձանօք հաւանեցուցեալ զքաջն անպարտելի՝ զԼիպարիտն Օրբելեանց՝ գնալ և խառնիլ ի զօրն Յունաց, և ընդդիմանալ մարտին եկելոյ. և ինքեանք ղօղեալ որջացան յամուրս աշխարհին։ Այս յանձն առեալ Լիպարիտի՝ անվախ սրտիւ ասէ, «Ես երթամ ընդ առաջ այլազգեացն, և դնեմ զանձն իմ ի վերայ քրիստոսական հաւատոյս. և զօրութեամբն Աստուծոյ՝ կամ դարձուցանեմ անդրէն և կամ մեռանիմ վասն Քրիստոսի. բայց ո՛վ Թագաւոր, յանձն առնեմ զյետնորդս իմ[2] քեզ, զի մի՛ վասն նախանձու և չարաբարոյ ազատացդ Վրաց՝ նենգեսցես ինչ սոցա և զրկեսցես ի պատուոյ և ի հայրենեացս մեր»։

Զայս ասացեալ՝ ինքն Լիպարիտ հանդերձ արար ազատաց և զօրաց իւրոց, որ ունէր զկէս Թագաւորութեանն, և անցին ի հանդիսին 700 ազատք մեծամեծք, որք էին սեպհական ծառայք նորին. և 16,000 արք պատերազմողք։ Իսկ ի զօրացն արքունի էառ տասն հազար այր. և գնացեալ ի Վանանդ ի Դաշտն Կարուց՝ խառնեցան ի նա զօրքն Հոռոմոց 15,000 այր. և եղեն միանգամայն 41,000 հեծեալ։ Եւ զի այլազգիքն կոտորեալ էին նախ զՈրդոռ գիւղ[3], և ապաստակեալ էին զամենայն չրջակայ գաւառսն, և բանակէին ի նոյն դաշտի, ապա ճակատեցան ընդդէմ իրերաց ընդ լուսանալն այգուն, և յօրինեցին զռազմն հանդիսին երեքկարգեան գնդովք, նախամարտիկս և միջնամարտիկս և վերջապահս։ Եւ զի առ անթիւ բազ-

1. Դաւիթ՝ Թագաւոր Վրաց, Գագիկ՝ Հայոց Կարսի կամ Վանանդայ։
2. Զաւակները, ժառանգները։
3. Կամ Որդորու, Բասեն գաւառի գիւղ մի, որոյ մօտ էր Դոռ, որք հիմայ կոչուին Մեծ և փոքր Տոռ։

մութեան Իսմայէլացւոցն՝[1] Լիպարտեան զօրն ոչինչ երեւէին, այլ իբր ջրտուս կամ գինաքաղս[2] թուէին առ նոցա. տեսեալ զայն անպարտելի ախոյեանն քաջն Լիպարիտ՝ զօրացոյց զգունդն իւր, և ասէ. «Մի՛ երկնչիք, այլ միայն զօրացիք անուամբն Քրիստոսի, և կնքեցէ՛ք զձեզ նշանաւ խաչին. և մեր է յաղթութիւնն»: Եւ ինքն իջեալ յերիվարէն՝ ծունր դնէր և կնքէր զինքն նշանաւ սուրբ խաչին, և յանձն առնէր Քրիստոսի. և կապէր ի պարանոցն զմասնն որ ի փրկական խաչէն. և այնպէս զինեալ զինքն՝ հեծեալ ի տաճիկ երիվարն, և ընկենոյր զոսկենկար վահանն ի թիկունսն, և գծօճ նիզակին յահեկ բազուկն, և զլայն պողովատիկ շմշիրն[3] երկբերանի՝ յաջ ձեռինն, և զվաղրն ահագին ի ներքոյ բարձիցն՝ իբր զուռն դարբնաց և կամ ըզսակր կոտցաւոր քարահատաց. անցեալ ի մէջ ռազմաւոր հանդիսին՝ արշաւէր սիգալով յայսկոյս և յայնկոյս. և յոսկեկուռ զրահէն և ի սաղաւարտէն նշոյլք հատանէին իբր յարեգականէ: Բչէր, գոռայր իբր զառիւծ, խնդրէր ի նոցանէ մենամարտիկս, և ասէր. «Ես եմ Լիպարիտն Ափխազաց[4]. եկայք, քաջք Պարսից և Արեաց, և նախամարտեսցուք ընդ միմեանս»: Եւ թէպէտ բազում անգամ խնդրեաց՝ ոչ ոք իշխեաց ընդ առաջ ելանել նմա. և յոր տեղ սլանայր Լիպարիտն՝ և իբր զարծիւ խոյանայր ի վերայ նոցա, յետս յետս մատչէին՝ զմիմեանս առաթուր կոխելով:

Ապա գիտաց Լիպարիտն զի բեկան սիրտք նո֊

1. Սովորաբար Արաբացիքն կոչուին Իսմայելացի. իսկ այս այլազգիք ուրիշ ցեղապետէ առաջ եկած են:

2. Բանակի մէջ զօրաց ընկած զէնքերնին բերողք և ջուր տուողք:

3. Շեմշիրը, պարսկերէն սուր նշանակէ:

4. Իշխան Ափխազաց, բայց ոչ Ափխազ, զի Օրպելեանք ի Ճենաց գաղթեալ են ի կողմանս Վրաց և Հայոց, ըստ աւանդութեան նոցա:

ցա, և թուլացաւ զօրութիւն նոցա. դարձաւ յիւր ռազմն, և քաջալերեալ յառաջ շարժեաց. և գոչեցին ահեղ աղաղակաւ, և խառնեցան ընդ միմեանս. և խմբեցաւ պատերազմն ահագին իմն դղրդմամբ, որ թուէր իբր որոտումն ամպոց և ճայթմունք փայլատակմանց: Եւ ինքն Լիպարիտ իբր զամպ հրախառն մտանէր և ելանէր և կայծակնահար առնէր զբազումս. և զօրէն հրոյ ընդ եղէգն փոթորկեալ՝ ճեղքէր զռազմ նոցա և անցանէր յայն կողմն, և յաջ և յահեակ հոսէր գետս արեանց. և դնէր կոյտս դիականց, և հատանէր յայլազգեացն գունդս գունդս. և զայն իբրև զերամս նապաստակաց տապաստ արկանէր ի դաշտին: Եւ այնպէս կոտորեալ յաղթեաց Իսմայէլացւոցն. և փախստական արար զսակաւ մնացեալսն՝ քաջն Լիպարիտ, զօրութեամբն Յիսուսի Քրիստոսի Աստուծոյն մերոյ:

Եւ ապա ի հասարակել աւուրն՝ դարձան ի մեծաջան աշխատութեանց և վաստակոց՝ մեծաւ գոհութեամբ և բազում ուրախութեամբ: Իսկ անիծեալ և տիրասպան ազատքն Վրաց՝ երկուցեալ յահագին զօրութենէ նորա, և խորհուրդ արարեալ ընդ դեդեպուշ[1] զօրագլուխսն Լիպարտի, և յանկարծակի հատին զջիլ երիվարին նորա և ընկեցին յերկիր զԼիպարիտն. և ի մէջ առեալ բազմութեանն՝ սպանին զնա ի տեղւոջն, և ածին խաւար և սուգ քրիստոնէից: Զոր և իմացեալ Իսմայէլացւոցն և մեծաւ խնդութեամբ դարձան անդրէն և սուր ի վեր առեալ կոտորեցին զզօրսն Վրաց. և ոմանք փախստական եղեալ ցրուեցան ընդ երկիր: Եւ այն էր կատարած կորստեան աշխարհիս Հայոց և Վրաց, զի տիրեաց Տաճիկն ընդհանուր գաւառաց. առին սակաւ մի յետոյ զԱնի, որ ի 513 (Թուին Քրիստոսի 1064), Ալփասլան սուլտանն. առին և զԿարս, առին զբոլոր գա-

1. Վրաց բառ, գլխաւոր կամ իշխան նշանակէ:

ւառն Շիրակայ և Վանանդայ և Արշարունեաց, և զԱրարատեանն և զՄիսական աշխարհս և զԲաղացն, և զամենայն երկիրս մինչ ի դուռն Տփխեաց։

Եւ արդ, զայսպիսի դուռն մեծի կորստեան և աշխարհագումար կործանման քրիստոնէից՝ յայնմ աւուր բացին անիծեալ և տիրասպան զօրքն Վրաց։ Բայց ես զսպանումն Լիպարտի համարիմ ոչ կորուստ անձին, այլ գիւտ մեծի փրկութեան. զի եդեալ զանձն ի վերայ հօտին Քրիստոսի՝ մեծապէս հանդիսացաւ, և անպարտ սպանմամբ յիւրոցն՝ մարտիրոսական արեամբ պսակեցաւ, և գնաց առ ամենաթագաւորն Քրիստոս, զի ի նմանէ ընկալցի զվարձս և զպարգևս մեծավաստակ աշխատութեան իւրոյ։ Իսկ ապա հաւատարիմ ծառայք նորա բարձին զդիակ գեղեցիկ երիտասարդին և անպարտելի քաջին՝ մեծաւ ողբով. և տարեալ ի Կարս՝ կազմեցին դագաղս և զարդարեցին ոսկեհուռ հանդերձիւ և արքայական ճոխութեամբ. և առեալ տարան ի մեծ հանդիսաւոր վանսն իւրեանց ի Բեքաճիա[1], որ էր շինեալ նախնեացն նորա տուն գերեզմանի ինքեանց։

Եւ եկեալ թագաւորն Գաւիթ ամենայն մեծամեծօք, և արարեալ կոծ մեծ ի վերայ նորա, եդին ի տապանի ընդ հարս իւր։

---

## ՄԾԲ

### ՀԱՐՊԻԿՆ ՔԱՋ ԴԱՒԱՃԱՆԵԱԼ

(ՄԱՏԹ. ՈՒՌՀԱՅԵՑԻ. ՀԶ.)

Յամս Շ (1051–2) մատեան առ թագաւորն Մոնոմախ չարաթոյնք և լեզուք նենգաւորք, և մատուցանէին չարախօսութիւնս վասն փառաւոր իշ-

1. Տփխիսու մօտերն հին վանատուն։

խանացն Հայոց՝ որք ի գաւառն Պաղնայ[1] բնակեալ կային. և ասացին, թէ անհնազանդ կան հրամանաց քոց, և կամին ապստամբ լինել ի քէն։ Եւ առաքեաց զօրապետս հանդերձ զօրօք ի Պաղին, և անիրաւաբար հեղոյր զչարութեան թոյնս իւր ի վերայ անմեղաց. և բարկութեամբ սկսաւ ապականել զամենայն գաւառն, և զամենայն իշխանսն սկսաւ ի փառաց ընկենուլ. վասն զի էր այր պիղծ և չար, որ էր զօրագլուխ սատանայի, որոյ անուն նորա Պետրոս Ճանաչի. և կամեցաւ որ զմեծ իշխանսն զորդիսն Հաբելի՝ ձերբակալ առնել, զՀարպիկ զայր քաջ և հզօր, և զԴաւիթ և զԼեոնն և զԿոստանդին, զչորս եղբարսն, այսմ օրինակաւ և զայլ իշխանսն։ Յայնժամ ամենայն իշխանքն ծածկաբար խորհուրդ արարին զի ամենայն ոք զիւր ամրոցն բռնեսցէ, մինչեւ ծանուցանեն թագաւորին զաւերումն գաւառին յանօրէն Պետրոսէ. և միաբան արարին զերդումն միաբանութեան. զի յայդ շաբաթու առցէ ամենայն ոք զիւր ամրոցն[2]։ Եւ յայնժամ մի ոմն ի միաբանելոցն Թորոսակ անուն՝ տէրն Թլպաղտայ[3], ուրացաւ զերդումն, և ազդ արարեալ անդէն Պետրոսին, եթէ ամենայն իշխանքն միաբանեցան չգալ ի կոչումն քո։ Եւ զայս ամենայն ոչ գիտացեալ Հաբելի որդեացն, և որպէս յառաջն ասացեալ էին՝ յաւուր շաբաթուն առին զմեծ ամրոցն որ

1. Որ և Պաղնատունն գաւառ Դ Հայոց, արեւմըտեան Եփրատայ կողմերը։

2. Շաբաթ օր առաւօտուն, ամեն բերդատէր իր բերդը ամրացուցած գոցէ։

3. Գուցէ բերդն գլխաւոր ըլլայ, իբր Թիլ–Պաղնատնոյ կոչուելով երբեմն։ — Սովորաբար թիլ կոչուին ձեռագործ հողաբլուրք, և այդ Դ Հայոց և մերձաւոր Միջագետաց կողմերն՝ կան շատ տեղիք այդ Թիլ անուամբ։

կոչի Արկնի[1], որ էր մերձ ի գաւառն Թլխմոյ. և այլ ամենայն միաբանքն գնացին ի կոչն Պեռոսին։ Եւ լուաւ զայն զոր արարին որդիքն Հարբլի, աբար ժողով ի վերայ բերդին Արկնոյ զօրս բազումս. և տեսանէր զամրութիւն բերդին և հիանայր յոյժ, և ոչ կարէր պատերազմել, վասն զի բարձր էր յոյժ և անառ ի թշնամեաց. և ոչ կարաց մերձենալ ի նա։ Եւ յայնժամ խորհեցաւ զայս ինչ չար և ասաց. «Եթէ ոք բերցէ զգլուխն Հարպկան առ իս, տացէ գանձ ոսկւոյ և արծաթոյ բազում, և իշխանութիւնս և մեծութիւնս ի թագաւորէն»։ Եւ լուեալ զայս սննդակիցք և նախածանօթք իւր՝ որք առ ինքն էին ի բերդն, և խորհեցան խորհուրդ անօրէնութեան զՅուդայի և զԿայենի եղբայրասպանին։ Եւ էր մօտ ի բերդն տեղի հակառակի[2], և Հարպիկն առեալ արս և ելեալ պահէր զտեղին, և զաւուրս երեք ոչ իշխեաց ննջել ամենեւին. և ասեն ննդաւորքն. «Վասն է՞ր ոչ ննջես, տէր մեր, զի ահա այսօր անձինք մեր մեռանին ի վերայ քո անձինդ»։ Եւ հաւատացեալ նոցա ննջեաց, զի ձանձրացեալ էր յոյժ. և իբրեւ քաղցրացաւ ի քուն իւր, յարուցեալ ազգականն իւր հատանէր զգլուխ Հարպկանն՝ զառն հզօրի և քաջի, և զնոյն գիշերին հասուցանէին զգլուխն առ Պեռոս կատապանն, և սպանողքն ոչ ինչ օգտեցան, բայց միայն անէծս։ Եւ հրամայեաց Պեռոս ի ձողցել զգլուխ Հարպկանն և տանել ընդդէմ դրան բերդին. և ի լուսանալն՝ տեսեալ եղբարցն նորա և ծանեան. և վաղվաղակի բացեալ զդուռն և արկեալ հող ի վերայ գլխոց իւրեանց, և լալով գային երեք եղբարքն և անկանէին առաջի հատեալ գըլխոյ Հարպկանն. և այնչափ կոծ առեալ նոցա,

1. Հիմայ կոչուի Արղանա, և ի մօտն կան Պղընձահանք։

2. Այնպիսի ամուր և նեղ տեղ մի, որոյ տիրողն կըրնայ ուրիշ տեղ անցնիլ և տիրել։

մինչեւ ողբս առնել լային ամենայն զօրք բանակին։ Եւ այսպիսի օրինակաւս տիրանայր Գեռոսն՝ ամուր բերդին Արկնոյ, և զեղբարսն Հարպկանն զորդիս Հաբելի՝ տարաւ ի Կոստանդնուպօլիս առ թագաւորն Մոնոմախ։ Եւ տեսեալ զնոսա թագաւորն և ամենայն տունն Յունաց, հիանային ընդ տեսակալի տեսիլ կերպարանաց նոցա. վասն զի ահաւոր էին տեսլեամբ, և թիկամբք հանդերձ բարձր էին քան զամենայն տունն Յունաց. և յաղագս գեղեցիկ տեսլեանն ոչ ինչ արարին խրատ[1] նոցա. այլ հրամայեաց անցուցանել զնոսա ի կղզի[2], զԴաւիթ և զԼեւոն և Կոստանդին, արք քաջք և հզօրք և իշխանք երեւելիք Հայոց։

---

## ՄԾԳ

### ԱՆՇՔՈՒԹԻՒՆ ԱՇԽԱՐՀԻՍ ՀԱՅՈՑ. Ի ՆՈՒԱԶԵԼ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԲԱԳՐԱՏՈՒՆԵԱՑ

(ԱՐԻՍՏԱԿԷՍ ԼԱՍՏԻՎԱՐՏՑԻ.)

Աշխարհ՝ որ երբեմն ժամանակաւ իբրեւ զդրախտ տնկախիտ առաջի իւր, կանաչագեղ, սերեւալից, պտղաբեր, գեղեցկաչուք և երջանիկ անցաւորացն ցուցանիւր. քանզի իշխանք նստէին յիշխանական գահու զուարթահայեաց դիմօք, և զգարնանային ծաղկանոցաց բերեալ զնմանութիւն՝ վառ ի վառ գունովք առաջի կացեալք, ուրախական երգոց և բանից միայն լինէին հանդէսք. ուր և ձայնք փողոցն և ծնծղայիցն և այլ երգեցողական արուեստիցն՝ զլսողացն անձինս լի առնէին ուրախական

1. Պատիժ չտուին։

2. Աքսորել Կ. պօլսի մօտ կղզեաց մէկուն մէջ, ինչպէս կ'ընէին կայսերք. ազնուական յանցաւորաց։

թերկրանօք։ Անդանօր և ծերք նստէին ի հրապարակս՝ հարկաւոր և պատուական ալեօք բարգաւաճեալ. այլ և մարք զմանկունս ի գիրկս ընկալեալ, և մայրենի գթովքն աղէխարշեալ, և վասն առատ ուրախութեանցն՝ մոռանային զտխրական ժամանակս երկանց. զօրէն աղաւնեաց զնորափետուր ձագօքն միշտ թռթռելով։ Զի՞նչ ասացից և զհարսանցն ի սենեկի, և զփեսայիցն յառագաստի՝ զսիրահարուստ ըղձիցն զբորբոքումն, և զանծոյծ բնութեանն զհակամիտութիւն։

Այլ և ի վեր տանելի է մեզ բանս, առ Հայրապետական աթոռն և առ Թագաւորական պատիւն. զի մինն՝[1] զօրէն ամպոյ խտացեալ ի պարգեւացն Հոգւոյն, ի ձեռն վարդապետական շնորհին ցօղէր զցօղ կենացն. որով պարարտացեալ պտղաբերէր եկեղեցւոյն դրախտ, արթուն պահապանս ի վերայ պարսպաց նորա կարգելով՝ զառ ի յինքենէ ձեռնադրեալսն։ Իսկ Թագաւորն՝ յառաւօտինսն յորժամ ի քաղաքէն ելանէր, զօրէն փեսայի որ ելանէ յառագաստէ իւրմէ, կամ որպէս տունջենային արուսեակն[2], որ ի գլխոյն արարածոց բարձրանալովն՝ զամենայն տեսանելիս յինքն ձգէ, այսպէս և նա պաղպաջէր փառիւն հանդերձիւք և մարգարտախուռն թագիւն, և զամենայն մարդ ի տեսութիւն և ի զարմանս ցուցանէր. որ և սպիտակամազ նժոյգ՝ ոսկեզօծ զարդիւք առաջի ընթանալով, ի ճառագայթից արեգականն որ զնովաւ հարկանէր՝ շլացուցանէր ըզտեսողացն տեսանելիս. իսկ զօրացն բազմութիւն խուռն առաջի ընթանալով՝ զօրէն ծովային ալեացն զմիմեամբ կուտակելով։ Նա և անապատական վայրքն՝ լցեալ և խճողեալ էին կրօնաւորական դասուք. մինչ զի զգեօղս և զագարակս առ բարի նա-

1. Ուխտ եկեղեցւոյն, այսինքն եկեղեցականքն, կարգաւորք, սկսեալ ի կաթողիկոսէն։
2. Արեգակն յառաւօտու ծագման ատեն։

խանձ քահեալ՝[1] առնէին բնակութիւն կրօնաւորաց: Զայս և որ սոցին նման է՝ առաւել ունէր աշխարհս մեր: Եւ զայս զի գրեցի, զի յորժամ զսոցին հակառակն պատմեցից, ամենեցունց շարժեցից զարտասուսն:

Արդ այժմ՝ թագաւորն անկեալ ի պատուոյ, իբրեւ զգերի կալանաւոր՝ նստի ի հեռաբնակ տեղիս[2]. այսպէս և հայրապետական աթոռն ամայացեալ ի բնակողէն՝ ցուցանի տխուր դիմօք իբրեւ զկին նորահարսն՝ մնացեալ յայրիութեան: Հեծելազօրն անտերունչ շրջեալ, ոմն ի Պարս և ոմն ի Յոյնս, և ոմն ի Վիրս. սեպուհ գունդն ազատաց՝ ելեալ ի հայրենեաց, անկեալ ի ճոխութենէ՝ մուրն չեն, ուր և են, իբրեւ զկորիւն առիւծուցն ի խշտիս իւրեանց: Արքունական ապարանքն աւերակ և անմարդի. մարդաբնակ աշխարհն՝ թափուր ի բնակչացն: Ոչ լսի ձայն ուրախութեան ի կութս այգեաց, և ոչ բարբառնութիւն՝ առ կոխողս հնձանի[3]. ո՛չ խաղան մանկունք առաջի ծնողացն, և ոչ նստին աթոռով ծերք ի հրապարակս. ոչ լսի ձայն հարսանեաց, և ոչ զարդարին առագաստք հարսնարանին: Պակասեաց այս ամենայն և կորեաւ, և ո՛չ եւս յաւելուցու յառնել, ըստ սաղմոսողին ձայնին: Այժմ յողբս փոխեցաւ մեզ ամենայն, և ուրախութեան պատմուճանն այն՝ յարջնազգեստ[4] խորգ փոխեցաւ: Ո՞ր լսելիք տանիցեն զթշուառութեանս մերոյ զպատմութիւն: Ո՞ր սիրտ քարեղէն, որ ո՛չ լքանի հառաչմամբ և բեկանի հեծեծելով: Ժամ է ինձ յԵրեմիայի ողբոցն խառնել

1. Թուի Քամահել, արհամարհել:

2. Ի Գագիկ Թագաւորն Բագրատունեաց՝ Կապադովկիոյ կողմեր քաշուած, ոչ հեռի անկէ և կաթողիկոսն Պետրոս Գետադարձ:

3. Ամէն ազգի և երկրի գիւղացւոց բնական բերումն է ուրախութիւն, խաղող կթելու և կոխելու ատեն:

4. Սեւ և թանձր անարգ հագուստ:

ընդ մեր հառաչանս. «Ճանապարհք Սիօնի, աւաղ, սգան, զի ոչ ոք է որ մտանէ». այսոքիկ ասացան յայնժամ յաւերն Երուսաղէմի, բայց կատարեցաւ այժմ։

---

## ՄԾԴ

### ԱՌԱՋԻՆ ԱՐՇԱՒԱՆՔ ՍԱԼՋՈՒԿԵԱՆՑ Ց'ԱՐԾՆ

(ՄԱՏԹ. ՈՒՌՀԱՅԵՑԻ. ՀԳ.)

Ցայսմ թուականութեանս Հայոց ՆՂԸ (1049–50) ... զարթեաւ աստուածասաստ բարկութիւնն ի տանէն Պարսից, հրամանաւ Տուղրիլ[1] սուլտանին. և ելեալ երկու զօրապետք բազում զօրօք ի դիւանէ անտի, որք անուանեալ ասէին Աբրէհէմ և Գթլմուշ[2], և անթիւ բազմութեամբ գան յաշխարհն Հայոց. վասն զի ի ձեռաց Հոռոմոց գիտացին անտէր և անպահապան զամենայն աշխարհն Հայոց. զի զարս քաջս և զհզօրս քակեալ հանին յարեւելից՝ Հոռոմք, և կուրազօրապետօք ջանային պահել զաշխարհն Հայոց և զամենայն տունն արեւելից։ Եւ ահա յայսմ ամի զօրք (այլազգե)աց հասանէին ի հռչակաւորն և ի բազմամբոխ քաղաքն Հայոց՝ որ կոչի Արծն[3]. և գտեալ անպարիսպ զքաղաքն, և անթիւ բազ-

1. Տօղրուլ, Տօղրիլ, Տօղրէլ, Տուղղուլ ըստ մեր պատմագրաց, Թօղրուլ բէկ կամ սուլտան՝ ըստ օտարաց, նահապետ համարուի Սալջուկ կամ Սէլճուգ ցեղի Թուրքաց, որ տիրեց Պարսից և այլոց։

2. Լաւ եւս Գութուլմուշ կ'ըսուի։

3. Կարնոյ գաւառին արեւելեան լերանց ստորոտն, ոչ հեռի Եփրատայ աղբիւրներէն, հարուստ վաճառականաց շահաստան. հիմայ անյայտ է տեղն. ոմանք կարծեն զնոյն Կարնոյ քաղաքն (Արզրում)։

մութեամբ լցեալ արանց և կանանց, և անհամար չափս ոսկւոյ և արծաթոյ։ Եւ քաղաքացիքն տեսեալ զզօրսն այլազգեաց՝ միաբան ի պատերազմ ելեալ, և խմբեցաւ շուրջ զեզերօք քաղաքին սաստիկ և ահաւոր պատերազմ. և տեսեալ ցմեծ մասն աւուրն, և անդաստանքն արեամբ ծածկեցան. վասն զի ոչ գոյր տեղի փախստեան և ոչ օգնական, միայն զմահն ունէին յոյս. և ի բազմութենէ... ացն ձանձ-րացան զօրքն քաղաքին և ի փախուստ դարձան առհասարակ։ Եւ այլազգիքն սրով յարձակեցան ի վերայ քաղաքին, սաստիկ կոտորածով առհա-սարակ ի ներքոյ սրոյ անցուցին զամենայն քա-ղաքն, իբրեւ բիւրս հնգետասան[1]։ Այլ զոսկւոյ և զարծաթոյ և զդիպակաց՝ աւելորդ է ասել. վասն զի ոչ արկանի ընդ գրով։ Բայց զայս բազում անգամ լուեալ է մեր ի բազմաց՝ յաղագս քորե-պիսկոպոսին որ ասէին Դաւրոսկ[2], եթէ զգանձա-տանն տունն նորա Աբրէհէմն էառ, և քառասուն ուղտ բարձաւ զգանձատունն նորա, և ութ հարիւր վեցկի եզանց[3] ելանէին ի տանէ նորա։ Եւ կայր

1. Պատմիչս 150,000 կ'ըսէ ջարդուածներն, ոչ շատ պակաս և յոյն պատմիչ մի 140,000 կ'ըսէ։

2. Քիչ անգամ յիշուին առ մեզ քորեպիսկոպոսք. և սա նշանակէ որ Կարնոյ քաղաքն կամ Թէոդու-պօլիս՝ ունէր իր յատուկ եպիսկոպոսն կամ արքե-պիսկոպոսն. իսկ Արծն քաղաքաւան մ'ըլլալով անոր իշխանութեան տակ՝ ունէր քորեպիսկոպոս մի։

3. Վեցկի համարուի ըստ ոմանց վեց գիհ եզանց, այսինքն երեք զոյգ եզանց. ըստ այլոց՝ գիհ՝ զոյգ նշանակէ. 800 գիհք՝ եթէ երեք և եթէ վեց զոյգք ըլլան՝ չափազանց են. կան օրինակք որ միայն 100 գրեն. և այն ոչ է քիչ. իսկ Դուլթի ուրիշ գանձուց համար գրեն, թէ 40 ուղտուց բեռն բարձեր տարեր է Աբրեհիմ զօրավարն։

Նոյնպէս չափազանց է և թիւ եկեղեցեաց քաղա-քին, որ միայն կըրնայ բաղդատուիլ Անւոյ 1000 եկե-ղեցեաց հետ. զատոնք այլ համարելով միայն խորան

յայնժամ 800 եկեղեցի ընդ պատարագով։ Եւ այսպիսի դառն կոտորածիւս և չարաչար մահուամբս՝ սրով անցաւ վայելուչ և փառաւոր քաղաքն Արծն։

... Ո՞րպէս լալով ասացից զանցումն իշխանացն և զքահանայիցն՝ որք անթաղք կերակուր գազանաց լեալ. և փառաւոր կանայք հանդերձ տղայօքն վարեցան ի գերութիւն յաշխարհն Պարսից՝ յանդգին ծառայութիւն։ Եւ ահա սկիզբն եղեւ Հայոց կորստեանս... զի այս է առաջին քաղաք՝ որ առաւ սրով և գերութեամբ՝ ի Հայոց։

---

## ՄԾԵ

### ԹԱԹՈՒԼ ԵՒ ՏՈՒՂՐԻՒԼ ՍՈՒԼՏԱՆ

(ԱՐԻՍՏ. ԼԱՍՏԻՎԱՐՏՑԻ ԺԶ.)

Որ ի վերայ Հայոց գնացին (ասպատակք Սէլջուկ Թուրքաց), զոր և գտին՝ ի սուր և ի գերութիւն ծախեցին, և լցեալ աւարաւ՝ դարձան անդրէն. և եկեալ ի սահմանս Վանանդայ, որոց ի դիմի հարեալ քաջազուն իշխանքն Գագկայ որդւոյ Աբասայ[1], և բազում նախճիրս ի տեղւոջն գործեալ։ Որոց ի վերայ հասեալ զօրք անօրինացն՝ ի մէջ փակեցին. և քանզի յերկարել պատերազմին և յահագին կոտորուածէն՝ ի զօրութենէ պակասեալք էին ինքեանք և երիվարք իւրեանց, վասն որոյ ոչ կարացեալ զպատնէշ թշնամեացն պատառել և ելանել, յորոց սուր ի վերայ եդեալ կոտո-

պատարագի՝ պատարագողաց թիւն այլ կըրնար շատ ըլլալ, եթէ և վանականք ըլլային ի քաղաքին կամ մօտ ի քաղաքն. 130 քահանայք կ'ըսուին սպանուած ի ջարդին։

1. Վանանդայ և Կարսի բագրատունի թագաւորք են։

րեցին յազատացն այս երեսուն։ Իսկ զմի ոմն յազատացն կալեալ՝ որում անուն էր Թաթուլ, որ էր այր հզօր և պատերազմասէր, զոր առեալ տարան առ սուլտանն (Տուղրիլ)։ Եւ քանզի կարեւոր խոցեալ էր զօրդի Արսուզբանայ Պարսից ամիրային, զոր իբրեւ ետես սուլտանն՝ ասէ. Եթէ դա ապրի՝ զքեզ ազատեմ. ապա թէ մեռանի՝ զքեզ դմա մատաղ հրամայեմ առնել։ Որ յետ սակաւ աւուրց մեռաւ. իսկ նորա պատասխանեալ, «Թէ իմ է զարկածն՝ չէ կենաց. թէ այլում է՝ զայն ոչ գիտեմ»։ Սուլտանն իբրեւ լուաւ թէ մեռաւ, հրամայեաց սպանանել զնա. և զաջ բազուկ նորա հատեալ, ետ տանել Արսուրանայ ի մխիթարութիւն, թէ ի վատ բազկէ չէ մեռեալ քո որդին։

---

# ՄԾՁ

## ՏՈՒՂՐՈՒԼ
## ՊԱՇԱՐԷ ԶՄԱՆԱԶԿԵՐՏ ԵՒ ՈՉ ԿԱՐԷ ԱՌՆՈՒԼ

(ԱՐԻՍՏԱԿԷՍ ԼԱՍՏԻՎԱՐՏՑԻ, ԺԶ.)

Զի՞նչ է ինձ մի ըստ միոջէ զանկանգնելի կործանումն քրիստոնէից ընդ գրով սահմանել. որ իբրեւ ծով ի սաստիկ հողմոց յուզեալ՝ ահագին ծփանօք և փրփրադէզ կուտակօքն յամենայն կողմանց գայ ի ծփանս. այսպէս և մեզ հանդիպեցաւ. աշխարհս ամենայն յանկարծակի լի եղեւ խռովութեամբ, և ոչ ուրեք գտանիւր տեղի սպաւինի. զի վասն անհնարին չարեացն՝ բարձաւ յոյս կենաց յամենայն մարդկանէ։ Զայս և Փրկիչն յառաջագոյն գուշակեաց, իբրեւ ծովու խռովութեանց նմանեցուցանելով զեղեռնաւոր չարիս, յորս բազումք ի մարդկանէ թալկացեալք՝ ո՛չ կարէին պահել զոգիսն առ ինքեանս, յերկիւղէ և ի կար-

ծեաց եկեղեցն։ Բայց դու թողեալ զայլս, եկ զարմացի՛ր ընդ սուլտանայ անմտութիւնն և ընդ Աստուծոյ բազմապատիկ իմաստութիւնն. ընդ նորա անմտութիւնն, զի ամենակալ համբաւէր զինքն և Աստուծոյ աթոռակից. և ընդ Աստուծոյ իմաստութիւնն, զի միով տամբ[1] խաղաց ընդ նմա, և լի անարգանօք դարձոյց յաշխարհն իւր։ Եւ արդ, դու միտ դիր ասացելոցս՝ ի կարգի յառաջին անգամոյն. յորժամ՝ եկեալ անհամար զօրօքն շրջապատեաց զքաղաքն և նոքա յանպատրաստի էին ի մարդոյ և յանասնոյ, և յայնժամ թէ տասն օր ի վերայ կացեալ էր, առեալ էր զքաղաքն. բայց Աստուած որ ոչ ի սպառ բարկանայ և ոչ յաւիտեան պահէ ոխս, և ոչ ըստ մեղաց մերոց առնէ, այլովքն հանդերձ, արկանէր ի միտս նորա խորհուրդ նահանջութեան։ Յետ երից աւուրց չարժեալ ամենայն բանակաւն, խաղայ իջանէ ի Տուարածոյ տափ[2], և անտի իջանէ յընդարձակ դաշտն Բասենոյ, առ անառ ամրոցաւն որ կոչի Աւնիկ[3], յորում ետես աշխարհաժողով մարդոյ և անասնոյ, և ոչ ինչ փոյթ արար. քանզի ի հայելոյն միայն ծանեաւ թէ անառ է. և անցեալ առ նովաւ՝ գայ ի գլուխն Բասենոյ, մերձ ի գեօղն որ կոչի Դու։ Եւ ելեալ անտի սակաւ արամբք յանդգնոս ի վերայ գահին որ[4] հայի ի Կարին, ետես զքաղաքն վառեալ ամենայն պատրաստութեամբ. և նայեցեալ յերկար ժամս՝ դարձաւ անդրէն։ Իսկ արքն Մանազկերտոյ անկասկած ի դուրս ելեալ ի քաղաքէն՝ պատրաստեցին առատապէս դարմանս մարդոյ և անասնոյ. քանզի

1. Թերեւս միով արամբ պէտք էր ըլլալ։

2. Տուրուբերան կամ Տարօն նահանգի գաւառ մի է, անունն գուշակէ՝ եզն և ոչխար արածելու տեղ։

3. Շատ անգամ յայտնուած է այս բերդիս անառիկ՝ շատ ամուր ըլլալն, երկար պաշարմանց դիմանալով։

4. Կարնոյ գաւառին արեւելակողման լեռները։

ժամանակն հնձոց իսկ էր։ Եւ մինչ սուլտանն զայսու զայնու եղեալ դարձաւ անդրէն, նոքա յանհոգս եղեալ էին. և ապա եկեալ նորա վառեալ սրտմտութեամբ, դնէ մարտ պատերազմի ընդ քաղաքին։ Իսկ իշխանն որ ունէր զհոգ վերակացութեան քաղաքին[1], քանզի այր բարեպաշտ էր, զամենակալն Աստուած կարդայր յօգնականութիւն, պահօք և աղօթիւք հրահանգելով զինքն. և այնու սպառազինեալ՝ քաջապէս հաւատովք արիանայր, և առ Աստուած սաղմոսելով ասէր. «Ոչ երկեայց ի չարէ, զի դու Տէր, ընդ իս ես». և զմիւսն, թէ, «Ոչ երկեայց ես ի բիւրաւոր զօրաց նոցա, որ շուրջ են զինեւ». և որ ի կարգին է։ Եւ առ զօրս խրախոյս տուեալ ասէ. «Քաջալերեցարուք, ընկերք և եղբարք իմ, քաջալերեցարուք, և մի երկնչիք. գործ մի դիւրին է Աստուծոյ այս. նոքա գան ի վերայ մեր կառօք և երիվարօք, մեք զանուն Տեառն մերոյ կարդասցուք, և Աստուծով պարծեսցուք յաւիտեան, և անուան նորա խոստովան եղիցուք. զի նա տացէ զօրութիւն և հաստատութիւն ժողովրդեան իւրոյ, որ է օրհնեալ յաւիտեան»։ Զքահանայս յորդորէր յաղօթս, յերգելս սաղմոսաց, որք անհատական աղաղակաւ առ Աստուած կարդային ի տուէ և ի գիշերի, որ խաչիւ և ժամահարաւ բարձրաձայնութեամբ ի վերայ պարսպացն զԱստուած աղաչէին գալ յօգնականութիւն վտանգելոցն։ Յորմէ ձանձրացեալ լսելիք բռնաւորին՝ հարցանէր, թէ զի՞նչ է այն անհատ աղաղակն. և ուսանէր ի գիտնոցն՝ թէ առ Աստուած աղաղակեն։

Արդ, ամսականօք աւուրբք եկաց ի վերայ քաղաքին, առ մի մի օր երկիցս անգամ դնէր մարտ պատերազմի ընդ քաղաքին, մի ի լուսանալ աւուրն, մի ընդ երեկն։ Բայց դու աստ տես զԱս-

1. Ցետոյ կ'իմացընէ՝ որ Վասիլ կոչուէր այս իշխանն, հաւանօրէն ազգաւ յոյն էր։

տուծոյ իմաստութիւնն, թէ որպէս գիտէ հակառակորդն զհակառակին պտուղն շահել։ Արդ, մինչդեռ քաղաքն յայս տարակուսի և ի վտանգ կայր, արկանէր խորհուրդս բարւոք ի սիրտ իշխանի միոջ, որ էր յոյժ ի մտերմաց սուլտանայ, որ զառ ի նմանէ խորհեալսն ծանուցանէր քաղաքին՝ բանիւ կամ գրով. բազում անգամ գրեալ ի քարտիզի՝ ի սլաք նետին կապէր, և պատերազմի օրինակաւ մերձեալ ի պարիսպն՝ զնետն ի քաղաքն ընկենոյր. և այնու՝ զամենայն կռուոյ օրինակսն ծանուցանէր նոցա. թէ, առ վաղիւն այսպէս և ըստ այսմ ձևոյ է կռուոյն օրինակն. և եթէ, յայս նիշ տեղւոջ ի գիշերի կամին ի ներքոյ պարսպին զերկիր փորել և մտանել ի ներքս. բայց դուք պինդ և ամուր կացէք, և ի տեղեացն մերոյ զգուշացարուք։

Զայս առնէ Աստուած, որ գիտէ ի հեռուստ հիմն արկանել մեծամեծ իրաց. որ զԲաղաամ առ Բաղակաւ մարգարէ գործեաց՝ ի տեսչութիւն ժողովրդեանն, և զանխօս անասունն՝ մարդկեղէն բանիւ ետ բարբառել. և զԵղիա ի ձորն Քորիաթու ագռաւօքն զերիս ամս ի սովին կերակրեաց. զի՞նչ թէ և աստ ի ձեռն հակառակորդացն զփրկութիւնն քաղաքին անօրինեաց։ Արդ, յոր կողմ և նոքա ի պատերազմ կային՝ թէ ի գիշերի և թէ ի տուընջեան, նոքա վառեալք և պատրաստք անդր գտանէին։

Յետ այսորիկ մեքենայս կանգնեալ՝ այնու պատերազմէին։ Իսկ երեց ոմն ի մերոցս՝ հնազոյն ունելով զաւուրս, որ յոյժ տեղեակ էր արուեստին, և սա իւր կանգնեալ փիլիկուան¹, և լինէր՝ յորժամ նոքա քար եդեալ ի պարսատիկս մեքենային և ձգէին ի քաղաքն, երեցն զիւր քարն դէպ ի ուղիղ նոցա քարին արձակէր, որպէս զի դիպեալ քար երիցուն ի քար անօրինացն՝ ի վերայ իւրեանց ընկենոյր։ Զայս արարեալ անօրինացն եօթն

1. Քար ձգելու մեծ պարսատիկ (Թուրք. մանճընըք), արաբերէն Մընճանիք կոչուած։

անգամ, ոչ ինչ կարացին վնասել. քանզի զօրացաւ քարն երիցուն ի վերայ քարի նոցա։

Այպա այլ պատերազմական գործի պատրաստեալ, զոր ինքեանք թարան[1] կոչէին, որ յոյժ ահագին էր, զոր ասէին թէ չորս հարիւր ապաստաւորք էին նորա, որք զպարանսն քարշէին, և վաթսուն լիտր քար եդեալ ի պարսատիկան՝ ի քաղաքն ձգէին. և առաջի նորա պարիսպ կանգնեցին ի թամբակի թեռանց և յայլ բազում կարասւոյ, զի մի՛ քար երիցուն հասցէ ի նա։ Եւ իբրև զայս այսպէս յարդարեցին, արձակեցին քար մի, որ դիպեալ ի պարիսպն ուժգնակի՝ փլոյց և խոռեաց զնա. զոր տեսեալ քաղաքին՝ յոյժ զգուշի հարան, և առ Աստուած աղաղակէին մեծաւ հառաչմամբ, գալ յօգնականութիւն. իսկ անօրինացն լինէր մեծ ուրախութիւն։ Իսկ ի գալ երկրորդ աւուրն՝ Որտիլմիզ՝ որ զօրուն իշխանն էր, առեալ զզօրս իւր եկեալ մարտ եդեալ կռուէր ընդ մերսն, քանզի այր քաջ էր. եկեալ խուռին[2] կամէր հզօրապէս ի ներքս մտանել, և յանկարծակի զիւրովին երթեալ անկաւ։ Իսկ որ ի վերայ պարսպին էին, ձգեալ զճանկ երկաթի՝ կալան զնա և քարշեալ ձգեցին ի ներքոյ պարսպին. և զօրացն տեսեալ՝ դարձան լի տրտմութեամբ ի բանակն. իսկ քաղաքին լինէր ուրախութիւն ոչ սակաւ։

Յայնժամ մի ոմն զօրաւոր ի զօրացն Հոռոմոց՝ պատրաստեալ հուր նաւթիւ և ծծըմբով, և արկեալ յաման ապակեղէն, և նստեալ ի վերայ ազնիւ երիվարի, քաջասիրտ և արի գոլով, վահանաւ միայն զթիկունս ամրացուցեալ, և ելեալ ընդ դուռն

1. Հաստ աւելի մեծ քան զՓիլիկուանն, ոչ այնքան քար նետելու, որքան մեծ քարով պարիսպները ծեծելու փլցընելու. հին ատեն այլ հնարուած էր այսպիսի մեքենայ մի՝ որ յունական բառով կոչուէր Catapulte (Καταβολή). երբ վերէն նետող կամ վար ձգող։
2. Պարսպին ծակուած փլած տեղին մօտենալով։

քաղաքին՝ մտանէ ի բանակ այլազգեացն, մանտատոր[1] ձայնելով զինքն, այսինքն թղթաբեր։ Եւ երթեալ մինչեւ ի բաբանն՝ շուրջ անցեալ զնովաւ, և յանկարծակի ի վեր առեալ զշիշն՝ եհեղ ի վերայ բաբանացն. և նոյնժամայն բորբոքեալ հրոյն՝ բոց ծիրանի ի դուրս ելանէր, և ինքն դառնայր փութապէս։ Զոր տեսեալ անօրինացն՝ ի հիացման եղեալ, հեծեալ յերիվարսն զհետ մտեալ՝ և ոչ կարացին հասանել. և նորա եկեալ խաղաղութեամբ եմուտ ի քաղաքն, օգնականութեամբ Աստուծոյ ոչ ինչ ունելով վէր յանձին։ Իսկ սուլտանն իբրեւ ետես զեղեալսն, ցասմամբ մեծաւ հրամայեաց զպահապանսն սրակոտոր առնել։...

Իսկ Վասիլն որ քաղաքին իշխանն էր՝ հրամայեաց ռամկին ի վերայ պարսպին մեծաձայն աղաղակաւ անարգել և թշնամանել զսուլտանն. որ յետ երկուց աւուրց չարժեալ բանակաւն գնաց ի տեղւոյն... մեծաւ տրտմութեամբ յաշխարհն իւր. քանզի ոչ զոր ինչ կամէր կարաց վճարել ինչ։

---

## ՄԾԷ·

### ՄԻՒՍ ԵՒՍ ՈՂԲ ԱՐԻՍՏ· ԼԱՍՏԻՎԱՐՏ· ՎԱՍՆ ԱՒԵՐԱԾԻ ՀԱՅՐԵՆԵԱՑՆ[2]

Էր թուականիս մերոյ ամք հինգ հարիւր երեք (1054), ի նոյն ամիս և ի նոյն քանիս ամսոյն, ուր զառաջին աշխարհս գերի տարան, զԱրծն այրեցին, և զայլ քաղաքս և զաւանս. խաղաց գազանն մահաշունչ արիւնարբու և մարդախոշոշն սուլտան

1. Ըստ Յունաց և Լատինաց՝ լուր կամ հրաման բերող տանող։

2. Ողբասաց պատմիչ հեղինակիս շատ գեղեցիկ և տրտաշարժ մէկ կտոր գրուածն է այս։

անհամար զօրօք, փղօք և կառօք և երիվարօք, կանամբք և որդւովք, և բազում պատրաստութեամբ։ Զանց արարեալ զԱրծիչաւ և զԲերկրաւ՝[1] եկեալ բանակեցաւ շուրջ զքաղաքաւն որ կոչի Մանազկերտ ի գաւառն Ապահունեաց, որ կալաւ բովանդակ զընդարձակ վայրս դաշտացն։ Եւ արձակեաց ասպատակս յերեսին կողմանս աշխարհին. ի հիւսիս՝ մինչեւ յամուրն Ափխազաց և մինչեւ ի լեառն որ կոչի Պարխար և մինչեւ ցստորոտն Կովկասու[2]. և յարեւմուտս՝ մինչեւ յանտառն Ճանեթոյ[3], իսկ ի հարաւ՝ մինչեւ ցՍիմն կոչեցեալ լեառն[4]. և բովանդակ կալեալ զաշխարհս՝ իբրեւ հնձողք ոճոյ ապարակի։

Արդ, զայնմ ժամու զչարիսն՝ զոր նոքա աշխարհիս հասուցին, ո՞վ կարէ ընդ գրով արկանել, կամ ո՞յր միտք բաւեն ի համար ածել. զի ամենայն աշխարհս լի էր դիակամբք, շէնք և անշէնք, ճանապարհք և անապատ՝ տեղիք, քարանձաւք և առապարք, անտառախիտ մայրիք և ափափայ վայրք. և յամենայն շինանիստ տեղիս հուր հարեալ ապականեցին զտունս և զեկեղեցիս, որոյ բոց հրատին առաւել բարձրանայր քան զհնոցն Բաբելոնի. և այսպիսի ձեռնարկութեամբ ապականեցին զաշխարհս մեր, ո՛չ մի անգամ այլ երիցս անգամ մէ ի միոյ վերայ դարձ արարեալ, մինչեւ առհասարակ հատաւ երկիրս ի բնակչաց և բարձաւ կառաչ անասնոց[5]։

1. Վանայ ծովաւ հիւսիսային և արեւելեան եզերքն։

2. Հիւսիսային և արեւմտեան կողմէն մինչեւ ի սահմանս Սեւ ծովու, ուր են այդ յիշեալ Պարխար լերինք, յորոց փչուած հովերը՝ Հայք Պախըրցի կոչած են, իբր հիւսիսային։

3. Ճանիկ գաւառն Պոնտոսի յիշեցընէ զանունս։

4. Տարօնոյ և Սասնոյ կողմեր։

5. Անասնոց ձայն անգամ չէր լսուեր, հովուութիւն և մշակութիւն չըլլալուն համար։

Զայս արարուած տեսեալ՝ սուգ առ և կործանեցաւ երկիր. վասն զի կործանեցան բնակիչք նորա, բարձաւ ուրախութիւն յերեսաց ամենայն երկրի. յամենայն տեղիս ողբք և հառաչանք. ամենայն ուրեք կոծ և լալականաց հանդէսք. ոչ ուրեք քահանայից երգք. ոչ ուրեք լսի փառաբանութիւն Աստուծոյ. ոչ ուրեք բանին գիրք առ ի խրատ և ի մխիթարութիւն լսողաց. վասն զի ընթերցողքն սրամահք ի հրապարակս, և ինքեանք այրեցեալք և անհետացեալք: Ոչ ուրեք լսի ձայն հարսանեաց, և ոչ աւետիք նորածին մանկանց. ոչ նստին ծերք աթոռով ի հրապարակի, և ոչ խաղան մանկունք առաջի նոցա. ոչ երամանան անդեայք ի յարօտս, և ոչ խայտան գառինք ի մարգս: Ոչ լնու հնձող որայիւ զգիրկս, և ոչ լսի բարեբանութիւն յ'անցաւորաց. ոչ լնուն կալք ցորենով, և ոչ զեղուն գինւով. ոչ լսին ձայնք ուրախութեան ի կութս այգեաց, և ո՛չ ծանրանան պահարք ի ստոմանաց[1]: Բարձաւ այս ամենայն, կորեաւ և ոչ երևի: Ո՞ր Երեմիա ողբասցէ զմեր կործանումս, ի ճանապարհաց և ի լերանց՝ յերկարելով զողբսն. ո՞ր Եսայիաս անհնազանդի մխիթարչացն՝ զի՝ յագեսցի ողբովք:

Վա՛յ ինձ, որ վիպասեմ զայսոսիկ. յեմենացի երիտասարդին[2] նման գոլով իմ՝ գուժարկու եղէ, ո՛չ միում գեղջի կամ միում քաղաքի, այլ ամենայն աշխարհաց, ազգաց յազգս մինչև ի կատարած ժամանակաց. քանզի չիք ինչ ժամանակ կամ գործ՝ որ զմերն հնացուցանել կարէ, բայց թէ որ

1. Եթէ տակառ բառին հետ չփոթուած չէ, նշանակէ տեղ մի կամ դիրք մի՝ ուր շարեն գինւոյ ստոմանները, շիշ կամ որ և է մանր աման գինւոյ:

2. Կամ Յամինացի, որ Հեղի քահանայապետին գոյժ տուաւ, թէ որդիքդ սպանուեցան և Տապանակն գերի եղաւ այլազգեաց: Ա Թագ. Դ, 12:

զպղծոյն անապատի[1] զգուշացուցանեն զիս։ Արդ, զինչ արարից. Թողից ի պատմելոյ զանհնարին չարիսն որ եհաս ի վերայ քրիստոնէից, խնայելով ի ձեզ, եթէ չարժեցից ողբս և հառաչանս ամենեցուն՝ որք հանդիսակից էք այսմ դժոխալուր պատմութեանս. բայց գիտեմ որ կամիք լսել. վասն որոյ և ես ի բաց եդեալ զանձին դանդաղանս՝ գրեցից զգլխաւոր տեղեաց մի ըստ միոջէ զանհընարին չարիսն։ Զխորձեան և զՀանձէթն յորժամ յիշեմ և որ ինչ ի նոսա գործեցաւ, հատկլիմ արտասուօք, փղձկի սիրտ իմ, և յիմարին միտք իմ, և զդողի հարկանի ձեռքս, և ոչ կարեմ զոճ տաղիս յառաջ խաղացուցանել։ Բազում և անհամար հոգիք ի վերագոյն գաւառացն՝ վասն տեղեացն ամրութեան՝ անդր ժողովեալ էին. յորոց վերայ հասեալ անօրինացն արագապէս՝ որպէս թռչունք, անողորմաբար որպէս գազանք, սրտմտութեամբ եռացեալք՝ որպէս վրէժխնդիրք, և խիլ արկեալ[2] ի քարանձաւս և յանտառախիտ մայրիս՝ անյագաբար կոտորեցին զորս և գտին. մինչ զի արիւնն զօրէն գարնանաբեր ժամանակին, յորժամ ի ջերմութենէ օդոյն ջուրն ծորեալ ելանէ՝ ի ձեանն առուս առուս վիժելով, զհող երկրին զկնի իւր հեղեղատելով, այսպէս և յայնժամ լինէր. արեան առուք ի դիականցն անկելոցն գլեալ ի գառ ի կող տեղիս՝ ի յորդութեան գնացիցն զհող երկրին հեղեղատէին։

Այլ դու յայնժամ եղեալն ած զմտաւ. զկրօնաւորացն դաս և զքահանայիցն՝ որ անդ հանդիպեցան, կամ զերամս ծերոցն, կամ զերիտասարդացն զբազմութիւնս, որոց դեռաբոյս մօրուացն՝ իբրև զնկար գեղեցկայարմար զայտոն զարդարէին, և խոպոպս վարսիցն փաղփեալս ի վերայ

1. Այս մեզի հանդիպածէն աւելի մեծ չարիք չըլլար. բայց եթէ նեղին ընելիքն։
2. Ամեն ծածուկ տեղուանք փնտռելով։

ճակատուն՝ զօրէն վարդի վառ ի վառ գունով ըզդիրս երեսացն պայծառացուցանէին. Թէ որպէս յանկարծակի ի սրոյ Թշնամեացն իբրեւ ի կարկըտոյ հարեալք՝ յերկիր անկեալ Թաւալ գլոր խաղային։ Բե՛ր ի մէջ և զտղայոցն համար, զորս առեալ ի գրկաց մարցն՝ յերկիր ընկենուին, որ մեծակական հառաչմամբ զմարսն խնդրէին. իսկ ծնօղքն գանալից հարուածովք՝ առ շտապ ի նոցանէ բաժանէին։ Ո՞ր սիրտ քարեղէն՝ որ զայս լսելով ոչ հեղձնու արտասուօք՝ ընդ բազմադիմի չարեացն յաճախութեամբ։ Կոյսք ի խայտառականս անկեալք, նորահարսունք՝ յարանց բաժանեալք և ի գերութիւն մատնեալք։ Ի միում վայրկենի երկիրն՝ որ իբրեւ զ.քաղաք մարդախիտ առատութեամբ խճողեալ էր՝ եղեւ անմարդ ամայի. յերկուս բաժանեալ, կամ սրակոտոր կամ գերի։

Ո՜վ Քրիստոս, քո յայնժամ ներողութեանդ. ո՜վ մերում չարեաց. ո՞րքան դառն մահու մատնեալք եղաք։

---

# ՄՇԸ

## ՀԱՅՐՆ

## ԱՏՈՄ ԵՒ ԳԵՏԱՐԳԵԼ ՍՈՒՐԲ ՆՇԱՆՆ[1]

Յետ վաղճանին Տեառն Պետրոսի՝ ոմանք յաշակերտաց նորա առին զԳետարգել սուրբ Նշանն,

1. Ծանօթ աւանդութիւն է յազգիս՝ Պետրոս կաթողիկոսի ի տօնի Յայտնութեան ջուր օրհնելն ի Տրապիզոն, և խաչիւ կնքելով մեռոնը թափած ատեն՝ ջրոյն վխտալը, և այն պատճառաւ ինքն Գետադարձ՝ իր խաչն Գետարգել կոչուեր են։ Այս աւանդութեան հետեւորդ է այս տեղ պատմուած նոյն խաչին զօրութեամբ քարալերին ճղքուիլն և Ախուրեան գետոյ կամ իր մէկ առուին անոր միջէն անցնիլն։

և բնակեցան ի գաւառն Արշակունեաց[1], ի վանքն որ կոչի Խաւարաձոր[2]։ Եւ յետ նոցա սպասաւորեալ լինէր Գեւորգել սուրբ նշանն յայլմէ, մինչեւ ի բազմերջանիկն և ի ճգնազգեաց հայրն Աւտոմ. վասն որոյ համբաւ հաճոյական վարուց նորա ել առ հեռաւորս և առ մերձաւորս։ Քանզի էր հասակաւն վայելուչ, տեսլեամբն գեղեցիկ, և մըտօքն ընտրող, բարուքն հանդարտ, վարուքն ճգնող, խորհրդովն վեհ, հաւատովն ուղղափառ, յուսովն կատարեալ, սիրովն անկեղծաւոր, մարմնովն կորովի, հոգւովն առոյգ և խոնարհ, և սրտիւն սուրբ։ Սա անցուցանէր զամենեքումբ որ յառաջ նորա էին սուրբք և առաքինիք. յորում ժամանակի նուազեալ էր ազգն Հայոց, և զօրացեալ էր ազգն տաճկաց. և տիրէին առհասարակ ի վերայ բերդորէից և գաւառաց Հայաստանեայց. և անխնայ հարուածովք վշտանայր օր ըստ օրէ ազգս Հայոց ի Հագարացւոց. մինչ զի քանդեալ և աւերեալ լինէին եկեղեցիք և տեղիք աղօթից ի յանօրինաց։

Զայս տեսեալ երանելոյն Աւտոմայ, խոյս տայր ի բարկութենէ անտի, և երթայր ի գաւառն Շիրակայ, ի քաղաքն Անի. և անտի ելեալ գնայ ի սուրբ ուխտն որ կոչի Հոռոմոց վանք[3]. և էր վանքն այն ի խորուձոր ի վերայ բլրի միում, զորով շուրջ բակ առեալ պատէր մեծ գետն Ախուրեան. և գետն այն բազում ցաւս և վտանգս հասուցանէր վանացն. զի յորժամ արեգակն յամառայինն տեղին հասանէր, շոգեալ շողանայր վանքն ի տապոյ արեւուն, որ իջանէր ի քարանձաւուն, և օդք խորշակայինք և զազրահոտք և ցաւաբերք ի գետոյ անտի փչէր ընդդէմ վանացն, ի չորից կողմանց։

1. Փոխանակ ըսելու Արշարունեաց, որ և Երասխաձոր։

2. Անծանօթ է հիմայ տեղն և անուան պատճառն։

3. Սովորաբար Հոռոմոսի կոչուի. մօտիկ է յԱնի, և ռամկօրէն Խօշավանք կոչուի։

Զոր տեսեալ երանելւոյն Ատոմայ զվտանգ վանացն և զնեղութիւն, առեալ զսուրբ Նշանն և ել ի բարձր ի տեղի մի ի վերոյ վանացն. և կացեալ յաղօթս՝ տարածեաց զԳետարգել սուրբ Նշանն ընդդէմ լերինն, և ասաց. Տէր Աստուած զօրութեանց, աղաչեմ զքեզ, արա զօրութեամբ Գետարգել սուրբ Նշանիս՝ պատառել լերինս այսմիկ, և գնասցէ ջուր գետոյս այսմիկ ի մէջ լերինս զառ ի վայր հոսելով. և գետս այս որ գնայ ընդ հիւսիսի՝ դառնայ անդրէն Թափընթաց ընդ հարաւ։ Եւ իբրև կատարեաց զբանս աղօթիցն, յանկարծակի մեծադէտ որոտմամբ պատառեցաւ վէմն, և լեառն ընդ մէջ բաժանեցաւ յայսկոյս և յայնկոյս՝ կանգուն վաթսուն, և էանց գետն ընդ մէջ լերինն, զառ ի վայր կոյս սաստիկ Թափընթաց։ Իսկ բնակիչք վանացն՝ իբրև տեսին զսքանչելիսն՝ մեծաւ գոհութեամբ փառաւորելով զՔրիստոս Աստուած, երկիր պագին Գետարգել սուրբ Նշանին։

Եւ յետ այս սոսկալի սքանչելեացս՝ առեալ սուրբ հայրն Ատոմ զսուրբ Նշանն Գետարգել, և գնաց դարձեալ ի վանքն Խաչարանձոր. և ժողովեալ ըզցրուեալ եղբարսն և շինեաց զվանքն։ Եւ հասեալ ի բարւոք ծերութիւն սուրբ հայրն Ատոմ՝ հանգեաւ խաղաղութեամբ ի Քրիստոս, և եդաւ մեծաւ պատուով ի գիրս հարցն, ի հիւսիսոյ կողմանէ վանացն։ Իսկ այժմ Խաւարանձորն գեօղ դարձաւ, և կայ Գետարգել սուրբ Նշանն ի Ջագավանս՝ յերկիրն Կոտայից[1], ի փրկութիւն քրիստոնէից և ի պարծանս հաւատացելոցն։

1. Կոտայք գաւառն է, Երեւանու կողմերն։

# ՄԾԹ

## ԱՐՇԱՒԱՆՔ ԱԼՓԱՐՍԼԱՆԱՅ[1] ԵՒ ԱՌՈՒՄՆ ԱՆԻՈՅ

(ՄԱՏԹ. ՈՒՌՀԱՅԵՑԻ. ՃԺԶ.)

Յարուցեալ սուլտանն մեծաւ յաղթութեամբ և խաղաց չար վիշապն Պարսից, և գայր մտանէր յաշխարհն Հայոց. և զաստուածատաստ բարկութիւնն հեղոյր ի վերայ տանն արևելից, և արբուցանէր զմաղձ գազանութեան իւրոյ՝ ամենայն ազգին Հայոց. և սփռեցաւ բոց բորբոքեալ մահու առհասարակ հաւատացելոց Քրիստոսի, և լցաւ ամենայն տանն Հայոց արեամբ, սրով և գերութեամբ: Եւ յարուցեալ գայր որպէս զամպս սևացեալս, և իջեալ ի վերայ թագաւորաբնակ քաղաքին Անւոյ, և պատեաց առ հասարակ շուրջանակաւ՝ նմին չար վիշապի: Եւ տեսեալ բազմութիւն քաղաքին՝ դողաց առ հասարակ. և պատրաստեցան ընդդէմ Պարսից ամենայն զօրութեամբ: Իսկ զօրք անօրինացն յարձակեցան գազանաբար ի պատերազմ՝ մեծաւ սաստկութեամբ, և ի քաղաքն Անի արկանէին զզօրսն Հայոց, և դամբարեցին ընդնոսա առ հասարակ ի քաղաքն. և անհնար պատերազմաւ արկանէին զքաղաքն ի մեծ վտանգս: Եւ յայնժամ յահէ չար գազանին դողաց սասանելով ամենայն ազգ հաւատացելոց. սկսան լալ՝ հայր ի վերայ որդւոյ իւրոյ, և որդին ի վերայ հօր իւրոյ. մայր ի վերայ որդւոյ իւրոյ և դստերն, և դուստր ի վերայ մօր իւրոյ, եղբայր՝ զեղբայր, սիրելին առ սիրելին իւր: Եւ ահա ամենայն բազ-

1. Ալփ-արսլան՝ (մեծ կամ հզօր առիւծ նշանակէ) եղբայր և յաջորդ Տուղրիլի՝ տիրած է յամս 1064–72:

մուՃթիւն քաղաքին Անւոյ կային ի մեծ վտանգի, և պատերազմն եւս առաւել սաստկանայր յոյժ, որ և սասանէր ամենայն քաղաքն։

Եւ ի յերկարել պատերազմացն՝ աղօթից և պահոց սկիզբն արար ամենայն քաղաքն, լալով և հառաչանօք միաբան ձայն առ Աստուած արձակէին, զի փրկեսցէ զնոսա ի չար գազանէն։ Վասն զի էր Անի բազմամբոխ, լցեալ քաղաքն բիւրք բիւրոց արանց և կանանց, ծերոց և տղայոց, որ և հիացումն արկանէր տեսողացն. զոր կարծեալ զօրացն բազմաց եթէ մեծ մասն աշխարհիս Հայոց է. և յայնմ աւուր հազար և մէկ եկեղեցի[1] ի պատարագի կայր յԱնի։ Եւ էր քաղաքն շուրջանակի քարակտուր, և էր գետն Ախուրեան շրջապատ, բայց միայն ի մի կողմն կայր տեղի ինչ դոյր՝ որպէս թէ նեղընկէց մի, զոր բարնով փլուցին այլազգիքն. և զբազում աւուրս պատերազմեալ՝ ոչ կարացին մտանել ի քաղաքն. յայնժամ թուլացան ի պատերազմէն։ Իսկ անօրէն իշխանքն Հոռոմոց՝ զորս կացուցեալ էր թագաւորն[2] պահապանս տանն Հայոց, Բագրատ հայրն Սմբատայ[3], և Գրիգոր Բագուրանին որդին՝ վրացի ազգաւ, սկսան տալ ամրանալ ի վերին և ի ներքին բերդն։ Եւ յայնմ աւուր սուլտանն և ամենայն զօրքն Պարսից՝ բանակաւն խլեցան[4] և կամեցան գնալ ի Պարսիկս. և յորժամ տեսին քաղաքացիքն զաստուածուրաց պահապանացն ամրանալն, բեկան. և այր իւրաքանչիւր ի փախուստ լինէր առանց պատճառի. և ամենայն

1. Թէ և արեւելեան ձեւ մ'է շատութիւն ցուցընելու համար՝ հազար ու մէկ ըսել, բայց ստոյգ այլ է որ շատ եկեղեցիք և մատրունք կային յԱնի, թէ և ոչ մեծամեծք։

2. Կայսրն Յունաց՝ Կոստանդին Կոմնենոս։

3. Բազմաթիւ համանունանց մէջ՝ ծանօթ չէ որն ըլլալն։

4. Ժողովեցան ելան յետ դառնալու։

քաղաքն առ հասարակ ի փոշի դարձաւ. և մեծամեծքն քաղաքին երթեալ լալով անկանէին ի վերայ գերեզմանացն առաջին թագաւորացն Հայոց. և անդ կոծ առեալ սաստկապէս լալով և ասէին, եթէ, «Արի՛ք, տեսէք զտունն հայրենեաց ձերոց»։ Եւ իբրև զայս տեսին զօրք այլազգեացն՝ հասեալ պատմեցին սուլտանին, և նա ոչ հաւատայր. իսկ զօրք այլազգեացն յորժամ տեսին զպարիսպն անպահապան՝ առ հասարակ ի քաղաքն մտին. առին տղայ մի ի մօրէն իւրմէ, հասուցին սուլտանին, և ասեն. «Այս քեզ նշան ի քաղաքէն, զի ահա առաք զքաղաքս Անի»։ Եւ լուեալ զայս սուլտանն՝ հիացաւ յոյժ և այսպէս ասաց, եթէ, «Աստուածն նոցա մատնեաց զնոսա այսօր զանառ քաղաքն ի ձեռս իմ»։ Եւ դարձաւ բազմութեամբ զօրօք և մտաւ ի քաղաքն Անի, և առ հասարակ ամենայն զօրքն անօրինաց ունէին դանակ քաջասուր, զերկուսն ունելով յերկոսեան ձեռսն և զմէկն ունելով յատամունսն. և այսպիսի օրինակաւ սկսան զամենայն քաղաքն առհասարակ կոտորել անողորմաբար. և զայնքան բազմութիւն քաղաքին նման դալար խոտոյ հունձ ածին, և կամ որպէս զքարակոյտս ի միմեանց վերայ կոյտ արարին. և առ վայր մի ծովացաւ ամենայն քաղաքն արեամբ. և ամենայն մեծամեծ իշխանքն տանն Հայոց և դասք ազատացն՝ երկաթի կապանօք կային առաջի սուլտանին. և կանայք գեղեցիկք և ահարկուք՝ ի փառաւոր տանէ, վարեցան ի Պարսիկս ի գերութիւն. և անհամար մանկունս լուսատեսիլս, վայելուչ աղջկունս տարան զհետ մարցն. և բազում սրբասնունդ քահանայք այրեցան հրով, նա և զոմանս յոտից մինչև ցգլուխ քերթեալ չարաչար խոցուածով, որ և տեսողացն սոսկալի էր։ Եւ այլ ոմն ի չարագործ ազգէն՝ ելեալ ի վերայ բարձրութեան եկեղեցւոյն Սուրբ Կաթուղիկէ, և զծանրագին խաչն որ կայր ի գումբէթն եկեղեցւոյն՝ ընկէց յերկիր,

և մտեալ ի դրանն[1] որ կայր ի գումբէթն եկեղեց-
ւոյն, և պըլօր (բիւրեղեայ) կանթեղն ընկէց ի մէջ
եկեղեցւոյն և մանրեաց, զոր Ամբատ Տիեզերակալն
էր բերել տուեալ ի Հնդկաց՝ ընդ բիւր մի դան-
ձուց[2]. երկաթաման լիտր էր կշիռ նորա, և նոյն
չափովն երկոտասան լիտր տանէր. և յորժամ ըն-
կէց զխաչն ի գումբեթէն, նոյնժամայն եղեւ սաս-
տիկ որոտմունք և անձրեւ բազում, և զամենայն
զգէշն կոտորածոյն[3] եկից յԱխուրեան գետն, և
լուաց յարենէ զամենայն քաղաքն: Իսկ յորժամ
մանրեցաւ պըլօր կանթեղն, որ այլ չէր լեալ ի
վերայ արարածոց[4], լուեալ սուլտանն յոյժ վիրա-
ւորեցաւ. և զխաչն զարծաթին զոր ընկեցին՝ որ
էր մարդաչափ մի, տարան եդին զնա ի կոխ դրան՝
ի դուռն մզկիթին Նախչուան քաղաքին, որ կայ
մինչեւ ցայսօր:

1. Թերեւս պիտի ըլլար ի դարպասն, բան պահելու տեղ (Թուրք. տօշակ):
2. Իմանալու է 10,000 ոսկի:
3. Սպաննելոց մարմիններն:
4. Երկրիս վրայ ոչ մէկ տեղ մի այդպիսի մեծ բիւրեղ կանթեղ չէր տեսնուած:

# ՄԿ

## ԽՈՐԱԳԻՏՈՒԹԻՒՆ ԳԱԳԿԱՅ ԹԱԳԱՒՈՐԻ ՎԱՆԱՆԴԱՅ

(Մ. ՈՒՌՀԱՅԵՑԻ. ՃԺԶ.)

Յայնմ ժամանակի էր Գագիկ ի Խարս[1], որդին Աբասայ Շահնշահին. և յղեաց սուլտանն[2] առ նա դեսպանս՝ զի գայցէ նմա յերկրպագութիւն։ Եւ էր Գագիկ այր հանճարեղ և իմաստասէր, և խորհեցաւ հնարս զերծանել խաղաղութեամբ ի սուլտանէն. յայնժամ զգեցաւ սեաւ զգեստ սգաւորի և նստաւ ի վերայ սեաւ բարձի։ Եւ յորժամ տեսաւ զնա դեսպանն սուլտանին՝ հարցուկ լինէր, և կամեցաւ զպատճառն ուսանել, եթէ, Վասն էր ես սեւօք, զի ահա դու այր թագաւոր ես։ Եւ նա ասէր, թէ, «Յորժամ մեռաւ իմ բարեկամն Տողրիլ սուլտանն՝ եղբայր Ալփասլանայ, ես յայնմ աւուր զգեցայ զայս սեաւ զգեստս»։ Եւ հիանայր այրն այն, և երթեալ պատմեաց սուլտանին. և նա զարմանայր յոյժ։ Եւ յարուցեալ ամենայն բանակօքն եկն առ Գագիկ ի Խարս, և արար ընդ նմա սէր և ուրախութիւն մեծ. և զգեցոյց նմա զգեստ թագաւորական. և արար Գագիկ ճաշ սուլտանին։ Եւ զայս այսպէս լսեցաք, եթէ մէկ գառին վերայ՝ զոր խորովեաց՝ ծախք եհան հազար դահեկան, և հարիւր հազար դահեկան[3] սեղան

1. Որ սովորաբար Կարս գրուի, յայլազգեաց կոչուի Ղարս, Գարս. բայց կայ այն կողմերն և Խարս անուամբ գեղ մի, թերևս աւելի հին քան զքաղաքն։
2. Ալփասլան։
3. Կ'իմացուի ոսկի. բայց ինչ կերպով պատրաստուած էր այդ խորոված գառնուկն, կամ ինչ թանկ ամանի մէջ դրուած՝ որ այդչափ արժեց։

տուեալ սուլտանին և ամենայն զօրացն նորա։ Եւ այսու զերծաւ խաղաղութեամբ։

Եւ եղեւ զկնի աւուրցս այսոցիկ թողեալ Գագիկ զԹարս և գնաց ի Հոռոմս, և թագաւորն Տուկիժ[1] տայր նմա զԾամնդաւ[2]. և անդ եղեալ Գագիկ ազատօք իւրովք և թողեալ զտունն հայրենեաց իւրոց։

---

## ՄԿԱ.

### ԳՐԻԳՈՐ ՄԱԳԻՍՏՐՈՍ[3]

Ի ժամանակս բարեպաշտ արքային Յունաց Կոստանդեայ Մոնոմախի, և թագաւորելոյ և բարեսիրի[4], և ի հայրապետութեան Հայոց տեառն Պետրոսի, այր ոմն ի թագակալ տոհմէ յԱրշակունեաց, ի Պահլաւունեաց զարմէ, արեանառու ազգականութեամբ ի շառաւիղէ Սուրբ Լուսաւորչին մերոյ Գրիգորի, որդի Վասակայ Պահլաւունւոյ և մարտիրոսի, տեառն Բջնոյ, Գրիգորիոս անուն. յոյժ իմաստուն և հանճարեղ, և ներքին և արտաքին ուսմամբ ներակրթեալ վարժմամբ ի մանկական տիոց, հայկական և յունական դպրութեամբ. մինչեւ հասեալ ի հռետորական աստիճան փիլիսոփայութեան. որ և ուղեւորեալ ի թագաւորեալ քաղաքն Կոստանդինուպօլիս՝ յանդիման լինէր թա-

1. Կոստանդին Դուկաս։
2. Կեսարիոյ հարաւակողմը ամուր բերդ մի, որոյ անուամբ և մօտի գետն հիմայ կոչուի Ծամանդի։
3. Հեղինակ բանիս է Ներսէսէ Շնորհալւոյ վարքը գրողն, որ չի յիշեր իր անունը, այլ միայն կ՚ըսէ թէ այդ Ս. Կաթողիկոսին մահուանէն (1173) 67 տարի վերջը գրեր է, որ է 1240։ Տես Յօդուած 297։
4. Ուրիշ ազգային պատմիչք շատ գովելի չեն գըտներ այդ կայսրը։

դաւողին. և պատուեալ յինքնակալէն և ի մեծա-մեծաց պալատանն՝ ըստ արժանեաց քաղաքահմտու-թեանն և ըստ մեծիմաստ գիտութեանն և հան-ճարոյն. քանզի ընդ իմաստունս Յունաց ուսուս բազդուսմս ի Հայոց և ի փոքր դժուարալոյծ բանից մեքանեալ՝ ըստ փիլիսոփայական արուեստի, և ըստ եկեղեցական օրինաց և կարգի, յաղթէր բնաւիցն. և տիրապարգոյն զամենեսեան երեւեցուցանէր ան-ճշմարիտ գիտութիւնն [1]. Հզօր գոլով նորա ի պա-տասխանիս, և համձարեղ և խոհական ի դար-ձուածս բանից։ Որոյ աղագաւ ընկալեալ լինէր յինքնակալէն զպատիւ մագիստրոսութեան և դըք-սութեան, և առաքէր յաշխարհն արեւելից տիրել յոգունց գաւառաց։ Որոյ եկեալ՝ ոչ միայն մար-մնական իշխանութեամբ հովուէր զաշխարհն ամե-նայն որ ընդ իշխանութեամբ նորա էին, այլ և հոգեւորապէս կարգաւորէր զամենեսեան ըստ հաճոյիցն Աստուծոյ։ Զարդարէր զվանորայսն և զեկեղեցիսն աստուածային պայծառագոյն կարգօք. յարգէր զարս իմաստունս և զառաքինիս և զդասս եկեղեցականաց, և յանձանձէր զամենեսեան աս-տուածայնապէս. ժողովէր զհոյլս վարդապետաց և քննէր նոքօք անդադար զխորս աստուածայնոցն իմաստից. և զօրացուցանէր զամենեսեան ի գործս առաքինութեան և աստուածպաշտութեան։ Հայր՝ ըստ Յոփրայ՝ եղեալ որբոց և այրեաց, և ստացեալ զանձս նիւթականս՝ սերմանէր յանձինս տնանկաց և կարօտելոց։

Եւ քանզի ի ժամանակին յայնմիկ զօրացեալ լինէր աղանդն Մանիքեցւոց և Թոնդրակեցւոց, զորս խլէր արմատաքի աստուածուսոյց վարդապե-տութեամբ, և մաքրէր իմաստալեղց և կորավաբան թղթովք։ Իսկ առ անհաւատսն և խստացեալսն չարութեամբ՝ որք ըստ բնութեան իժից և քար-

1. Գր. Մագիստրոս անոնց անկատար գիտութեան տկարութիւնը յայտնէր։

բից՝ ոչ կամէին լսել զձայն թովչի ճարտարի, և ոչ առնուլ դեղ ի դեղատուէն իմաստնոյ, զիշխանականն սաստ ի կիր արկանէր, և այնպէս տապալէր ի հիմանէ զհնացեալն չարութիւն։ Եւ բարւոք կենցաղավարութեամբ և հանճարական քաղաքավարութեամբ կացեալ փոխի յաստեացս՝ սերմանութեամբ յանվաղճան կեանսն, թողլով ժառանգ բարի զամենայնիւ նմանեալն բարեպաշտութեանց նախնոյն իւրեանց պարթեւազեան պահլաւուն Գրիգորի՝ Վահրամ անուն[1]։

---

## ՄԿԲ

### ԹՈՒՂԹ ԳՐ. ՄԱԳԻՍՏՐՈՍԻ ԱՌ ՀԱՅՐ[2] ՍԱՐԳԻՍ

Ցորժամ տակաւին ի մերումն էաք բնակութեան[3], մնալով ողորմութեանն Աստուծոյ, ակն ունէի ի հրամանաց թագաւորական[4] ըստ խմում յոքնաջան թախանձանացն՝ ազատել զիս յայսպիսի գործառնութեանց, զի խնոյս պարապեցից տառապեալ հոգւոյս։ Այպ հասին հրամանք թագաւորական՝ ոչ մի կամ երկուց կամ երից. այլ բազում աղաչանօք առաւել քան զբռն թախանձումն նորայն արժանի հրաշից[5]. և փակեալ յամենայնի զելս

1. Այն է Գրիգոր Վկայասէրն Մեծ։

2. Եթէ իշխանաց և թէ եկեղեցականաց գիտնական թղթեր գրած է Մագիստրոս. յորոց՝ իբրեւ 80 կամ 90 գտուին։ Հայր Սարգիսը է վանահայր Ս. Կարապետի։

3. Այս խօսքով յայտնէ՝ որ Բագրատունեաց թագաւորութեան վերցուելէն վերջը գրեր է զայս։

4. Յունաց կայսեր, յորմէ մագիստրոսութեան պատիւն առեր էր։

5. Զարմանալի է կ'ըսէ, որ կայսրն աւելի կ'աղաչէր իրեն հրամանը կատարելու, քան ինքն կայսեր՝ որ հրամանէն ազատ ըլլայ։

իրացն իմոց հայցուածոցն, և տարակուսեալ յեր-կուցն՝ ոչ գտեալ զելս իրացն, ճեպէի զիս՝ միայն զհնազանդութեանն սահման և զհրաման արքունի կատարել․ յառաջել առ լեռնոտամբն բարձրաւան-դակի Զորին կոչելոյ[1], թողեալ զայլ մանկունս իմ հանդերձ մարբն ի տեղւոջ բնակութեան իւրեանց։ Իսկ զմանուկն զայն ոչ կարացի արգելուլ, քանզի որ երեւի ինձ կայտառ և արիական հարցն սեր-տութեամբ՝ ունի զխոկումն մարտական և ընթա-ցական մրցման[2]։ Արդ, մինչ զկնի իմ գայր, եհաս նմա պատահ խօթութեամբ սինեքոսական[3] ջեր-ման․ և առժամայն ամբարձեալ գոլորշի սաստիկ յուզման կոհակացն եռացելոց արեանն՝ ի խելա-պատակսն, յեղափոխէր զնա ի մտաց[4], և անծա-նօթս զմեզ ունէր։ Եւ այս հասանէր ի ձորակի միոջ ագարակի․ և արգելեաց զմեզ Հոգին Սուրբ, ցու-ցանելով եթէ մակացու եմ և գերագոյն ամենայն թագաւորական հրամանաց։ Եւ իմ տարակուսեալ առաւել քան զսաստ հրամանացն Աստուծոյ՝ ի թա-գաւորական խնդրոյն, և բորբոքեալ եռանդն ջեր-մանն ճեպէր զնա․ մինչեւ ծանուցեալ մօրն իւրոյ՝ եկն առ նա։ Եւ զինչ արդեօք մորմոքումն այրեց-ման և կիզման ներոյս ծնողական աղէտի գրել քեզ հաւանիմ․ քանզի առաւել[5] քո ընդ մեզ կիզեալ և տոչորեալ հանդերձ բոլոր քրիստոսազգեաց եղ-բարբքդ։

1․ Հաւանօրէն Տարօնոյ կողմերու լեռնակ մի է։
2․ Թէ խոհեմութեան և թէ քաջութեան ոգի ու-նէր՝ իր նախնեաց նման այդ իր զաւակն, որ իր յու-նարէն պատուոյ անուամբ Աճիպատ կոչուէր, որ նշանակէ փոխանորդ հիւպատոսի կամ բդեշխի։
3․ Յունարէն բառ, որ նշանակէ անընդհատ կամ շարունակ ջերմն, Συνεχής, և ոչ երկու կամ երեք օր հեղ մի բռնողն։
4․ Մագիստրոս բժշկութեան եւս հմուտ ցուցընէ զինքն այդ բացատրութեամբք։
5․ Բան մի պակսելով՝ լաւ չիմացուիր ըսածն։

Արդ, յայտնապէս տարակուսեալ ըստ իմում սովորութեան, քանզի բնաւորեալ եմ ոչ այլ ինչ աղօթել, բայց միայն թէ, Եղիցին կամք քո. քանզի, դու Տէր, առաւել գիտես զօգուտն մեր և կամիս. բայց, երբեք, Տէր իմ, զգործոց իմոց մի՛ հատուցանես ինձ՝ ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ։ Այս բարբառումն եռանդեան հրացեալ կայծակման՝ զիւրն վերջաւորութեանցն ծաղկի, զնախահօրն սերմանեալ յիւրոց վաստակոց։ Եւ զայն՝ ո՞րք և որպիսի՞. իբրու զկաշկառ փշոց հուպ միմեանց հարթ և հայծ կարկառեալ՝ անանցանելի թողլով մինչև ցմիոյ նշմարելոյ կառուցանելոյ ծայրի առաջն[1]. և փքացեալ իբրև զարիկս ուժգնակի փչմամբ՝ անբարբառ և անտես յաչաց զնա առժամայն գործէր, և անյուսալի զնա ամենեցուն ի կենաց գիտել։ Իսկ առուգեալ ծանեալ և ճշմարտութեամբ հաւատոց ոչ սակաւ ի Քրիստոս, զի ձերդ զօրութեամբ հայցուածք խնդրոյ՝ յայնմ աւուր իսկ վերարծարծեաց զնա, և ներհեաց անտանելի բարբառումն հրացեալ ախտին. և յուսամ և հաւատամ զի զօրութեամբ ի մեռելոց յարուցեալ է ձեր զնա. հրաշագործեալ ի մեզ ներգործութեանն Աստուծոյ, այն որ յամենայնի խնդրէ ի մէնջ զօգուտն մեր խորհել և առնել։... Իսկ մանուկն տակաւին տկարացեալ ի մահիճս դնի. մի՛ անփոյթ առնէք, թէպէտ և դուք ոչ երբեք մոռանայք՝ ըստ ձերումդ աստուածեղէն դպրութեան կարգի։ Ո՛ղջ լերուք։

1. Ջերմին տաքութենէն հիւանդին մարմինն մանր ծաղկանց պէս ուռեցքներ դուրս տուեր է, քովէ քով քարերու շարքի պէս, որ ասեղի ծայր մ՚այլ դնելու տեղ չըլլայ։ — Կաշկառ նշանակէ քարակոյտ, վրայէ վրայ դիզուած քարեր։ «Որք երթան » անդ (ի Մաքքա, կ՚ըսէ գրող մի մեր) կան ընկենուն » քար ի վերայ Կաշկառին »։

# ՄԿԳ

## ՓԻԼԱՐՏՈՍ ԵՒ ԹՈՌՆԻԿ

(Մ. ՈՒՌՀԱՅԵՑԻ. ՃԶ–Է.)

*Յայսմ ժամանակիս թանկայկեցաւ անօրէն և ամենաչար իշխանն որ ասէ Փիլարտոս[1], որ էր իսկ անդրանիկ որդի սատանայի. ի յանկանել Տիոժէնին[2] թանկայկեցաւ ի վերայ երկրի. այր չարաչուանչ, որ էր իսկ սա կարապետ պղծոյն Նեռին, դիւաբնակ և այլանդակ չարաչար վարուք[3]. Սա սկսեալ տայր պատերազմ ընդ հաւատացելոց Քրիստոսի, վասն զի էր սա անհաւատ քրիստոնեայ, ոչ Հայ գիտելով զնա և ոչ Հոռոմ. վարք և կրօնք Հոռոմոց ունէր, և հայրենեօք և մայրենեօք Հայ էր[4], և ի տղայութեանն կացեալ առ հօրեղբայր իւր ի վանք որ կոչի Զօրավարի–եղեգեան, ի Հարսն–Մնայ[5] գաւառին. Սա ելեալ յանապատէ՝ և եղեւ առիւծ յանապատի. սա ժողովեալ բազում աշխարհաց և քաղաքաց, և բազում մեծամեծ իշխանս կորոյս անողորմաբար, և եկեալ բնակեցաւ ի Մշարն[6]. և յաւզարկեաց և կոչեաց զքաջն Թոռնիկ՝ զտէրն Սասնոյ, զայլ նման ի հնազանդութիւն.*

1. Ըստ Յունաց Փիլարետ կամ Ֆիլարետ, ազգաւ Հայ բայց յունադաւան, մեծ պատիւ և իշխանութիւն գտած ի կայսերաց, Դոմեստիկոս (Domesticus) և Կիւրապաղատ:
2. Ռոմանոս Դիոգինէս կայսրն:
3. Շատ անխնայ է հեղինակն իր չհաւանածներուն:
4. Վասպուրականի Վարաժնունեաց գաւառէն:
5. Ուղիղն Հասան–մանսուր. Դ Հայոց նահանգին մէջ, Հայաստանի արեւմտեան հարաւակողմն:
6. Այս այլ ի Դ Հայս, Խարբերդու կողմերն:

Եւ լուեալ զայս Թոռնիկ՝ Մուշեղայ որդին, ծիծաղեալ զանմտութիւն նորա, և ասացեալ թէ, «Ահա որ բնաւ ես ոչ տեսանեմ զերեսս նորա»։ Եւ ասեն ցԹոռնիկ կոչնականք Փիլառտոսին, թէ, «Ահա գայ բազում զօրօք ի վերայ քո, և տապալեալ աւերեսցէ զամենայն գաւառս քո»։ Ասէ Թոռնիկ. Եւ քանի՞ են զօրք Փիլառտոսին. ասեն արքն, իբրեւ քան հազար։ Ասէ Թոռնիկ. «Են իմ հազար ձիաւոր, որ հանապազ հաղորդին ի մարմնոյ և յարենէ Աստուծոյ. բայց զայս այսպէս գիտեմ՝ զի Փիլառտոսն և ամենայն զօրքն իւր՝ Թափուր և ունայն են ի հաւատոցն, և կան լցեալ ամենայն չարաչար յանցանօք»։ Եւ գնացին՝ զայս ամենայն պատմեցին Փիլառտոսին. և յայնժամ կոչեաց Փիլառտոս զՏէր Գրիգորես[1] և ասէ ցնա, եթէ, «Փեսայ քո է Թոռնիկ, գնա և կոչէ զնա ինձ ի հնազանդութիւն»։ Իսկ Տէր Վահրամ՝ վասն չար բարուցն Փիլառտոսին յոչ կամաց գնաց առ Թոռնիկ, և այլ ոչ տեսաւ զերեսն Փիլառտոսին։ Եւ պատմեաց զպատճառն գնալոյն՝ Թոռնըկայ. և հիացեալ Թոռնիկն և ասէր, եթէ, Ձիա՞րդ ոչ պատառեցաւ երեսք անօրինին ի սաստիկ լրբութեանցն իւրոց, յուղարկել զքեզ առ իս իբրեւ զդեսպան, հանդերձ սուտ երդմամբ։ Եւ գիտացեալ Փիլառտոսին եթէ ոչ կամի գալ Թոռնիկ ի կոչ նորա, զօրաժողով արարեալ գնաց ի վերայ Թոռնըկայ. և Թոռնիկ ոչ գիտացեալ զգալ նորա ի վերայ նորա. և իբրեւ լուաւ զգալն Փիլառտոսին, ձայն տուեալ զօրաց իւրոց, և արար ժողով զամենայն Սասուն՝ յիսուն հազար հետեւակաց և վեց հազար ձիաւորաց, և գայր ի Ճապղջուր. և ոչ հաւատայր գալոյ Փիլառտոսին. դարձոյց զամենայն հետեւակազօրսն, և ինքն հազար ձիաւորով ի յԱշ-

1. Մեծ Վկայասէր կաթողիկոսն, որդի Գր. Մագիստրոսի, որոյ առաջին անունն էր Վահրամ։

մոշատ քաղաքն[1] Հայոց չոգաւ. և յԱլեշրուա դաշտին հանդիպեցան զօրքն Փիլառտոսին՝ ութ հազար արամբք: Եւ տրտմեցաւ Թոռնիկ որ դարձոյց զհետեւակ զօրսն իւր. և յայնժամ կարգեաց Թոռնիկ զճակատ պատերազմին իւրոյ՝ դաս առ դաս, յայսկոյս և յայնկոյս և յառաջոյ, և թիկնապահ իւր եղեալ զկապոսն՝[2] զայր քաջ՝ երեք հարիւր արամբք. բայց ակն ածէր ի Փռանկէն՝[3] քան յայլ զօրացն, և ասէր. «Տեսէք, զի գունդս երթիցէ ընդդէմ Ֆռանկին»: Եւ ահա գայր Բոմբաղտ[4] և զօրք իւր, և ի դիմի հարաւ Թոռնըկայ գնդին, և պատառեաց զզօրսն և էանց ընդ մէջն: Եւ յայնժամ ձայն տուեալ Թոռնիկ զօրաց իւրոց, և միաբան ի մէջ իւրեանց փակեցին զնոսա, և զամենայն իշխանս ձերբակալս արարին, կալան և զկոմսըն[5] նոցա. և զՓիլառտոսն[6] և զամենայն զօրս իւր փախստական արարին, և զիշխանս նորա արարին ձերբակալ արս հազար և հինգ հարիւր: Եւ յաւուր յայնմիկ եղեւ բազում կոտորածս Ֆռանկաց և այլոց քրիստոնէից: Եւ դարձաւ Թոռնիկ և ամենայն զօրքն Հայոց գնացին ի Սասուն, բազում աւարաւ. և Փիլառտոսն գնաց փախստական, և լի ամօթով մտանէր ի Խարբերդ: Այս եղեւ ի Հանձիթ գաւառին և յԱլերուա դաշտին:...

Յայսմ աւուրս[7] գայ Թոռնիկ սակաւ արամբք, և մտանէր ի բերդն իւր յԱշմուշատ քաղաք՝ ի

1. Որ և Արշամոշատ, ի Դ Հայս. զոր պէտք չէ շփոթել ընդ Շամշատայ՝ որ է Սամոսատիա:
2. Պօղիկարպոս անունն համառօտած:
3. Այն ատեններ գտուէին Փռանկ կամ գերմանացի զօրականք ի զինուորութեան կայսերաց:
4. Rembrandt կամ Rembault.
5. Անշուշտ վերոյիշեալ Բոմբաղտն:
6. Վարը որոշ կ'իմացընէ որ սա չէր բռնուած:
7. Հեղինակն անմիջապէս վերի գրածին հետ կըցէ, բայց ժամանակ մի վերջը եղած է այս:

յԱրծնոյ վերայ[1]. և յանկարծակի գայր ամիրայ մի բազում զօրօք, որում անուն էր Ամր-Ճափր. և լուեալ եթէ Թոռնիկ առանց զօրաց է, յայնժամ հրամանաւ Փիլառտոսի գայր ի վերայ Թոռնիկայ. և խաբանօք և սուտ երդմամբ ուխտաւ սէր և միաբանութիւն կարգել ընդ նմա, մինչև ի ձեռն բազում սրոց և ընծայից հաւանեցուցանել զծառայսն Թոռնիկայ. և այսու պատրել զնա՝ հանէր ի սուտ սէր միաբանութեան իւրեանց՝ երեք աւուրս: Եւ մինչդեռ կային ի գինարբուսն, փաղեաց ամիրայն պազանաւոր ի վերայ Թոռնկայ, և կամէր սպանանել զնա. և ոչ անսելով Թոռնիկ առ իւր՝ բայց փոքրիկ դանակով հարեալ զամիրայն՝ ի վայր հեղոյր զփոր նորա. և զայլոց ամիրայիցն բանեալ զգլուխսն՝ ընդ իրար ծեծեալ սատակեաց. և ինքն ելեալ անզէնս գնայր ի բերդն, վասն զի մօտ էր բերդն. և ամենայն Թուրքն փախստական լինէին առաջի նորա:

Եւ յորժամ գնաց մօտ ի բերդն՝ մի ոմն ի յայլազգեաց ի Թաքքստեան կայր. հարեալ զԹոռնիկ սրով ի սիրտն պատառեաց, և անդէն մեռանէր քաջն Թոռնիկ. և տարան զգլուխ նորա առ Փիլառտոսն. և անօրէն Փիլառտոսն հանեալ զսկաւառակ գլխոյն և արար գաւաթ, և նովաւ ըմպէր գինի. և զմնացեալսն գլխոյն տանէր ամիրային Մուֆարղնոյ. և զամենայն մարմինն այրեցին հրով. զորս յետոյ ժողովեցին զայրեցած զոսկերս նորա՝ զառն քաջի և աստուածապաշտի, և տարան թաղեցին ի դուռն Սրբոյ Կարապետին[2]: Եւ մնաց իւր երկու որդի, Ջորտուանէլն և Վասակ ի տղայական հասակի[3]:

1. Գետ մի Դ Հայոց մէջ, որ թափի ի Տիգրիս:

2. Ինչ այլակերպ անձինք և դիպուածք. ամեն լուող դառէ. Փիլառտոս ինչ և ուր այլ որ ըլլայ, Թոռնիկ մնայ միշտ քաջ և սրտառուչ Թոռնիկ:

3. Ասոնք պիտի յիշուին յետոյ յ'293 Յօդուածի.

# ՄԿԴ

## ՎՐԷԺՔ ԳՈՐԳԱՅ ՇԻՐԱԿԱՑԻՈՅ ՅԱՆՑԻՌՔ

(Մ. ՈՒՌՀԱՅԵՑԻ. ՃԻԴ.)

Այլ ինչ զարմանալի տեսացից ձեզ՝ զոր ինչ եղեւ յԱնտիոք, յառաջ քան զքսան ամ, զոր և մեք իսկ լուաք զայս ի քաղաքացեացն. եթէ, այնչափ չար և ատեցողք էին Հայոց ազգին՝ Անտիոքացիքն, զի յորժամ ի քաղաքն օտարական բռնէին, զմօրուքն կտրէին, և հանէին ընդ դուռն քաղաքին: Եւ յաւուր միում բռնեցին զոմն Անեցի՝ այր փառաւոր, և կտրեցին զմօրուքն նորա, և առին զամենայն ինչս նորա, և հանին զնա ի քաղաքէն. և նա վիրաւորեալ[1] գնաց. և առեալ զօրս Թուրքաց հինգ հարիւր այր, և եկեալ փերեաց զամենայն գաւառն Անտիոքայ, և զտուկին[2] երկոտասան գեղն այրեաց հրով. և բերեալ ի դուռն քաղաքին բազում գերութիւն, կոտորեաց և ելից զնոսա ի գետն. և ձայն տուեալ ի քաղաքն և ասէր. «Ես եմ Գորգ Շիրակացին, որ զմօրուքն կտրեցիք. թ՛ապա արժէ այս մօրուքս՝ թէ ոչ[3]». և գնաց անհամար աւարաւն:

Նոյնպէս յաւուրսն բարեկենդանին՝ ի նոյն ամին, եկեալ կարաւան ի յարեւելից ի քաղաքն Անտիոքայ, բարձեալ բերէին տարեխ[4] ձուկն. և

իրենց նախորդաց և յաջորդաց հետ, ուրիշ կերպով պատմուի դիպուածոց առթիւ:

1. Սիրտն վիրաւորուած, տրտմած:

2. Անտիոքայ Յունաց գիւղերին:

3. Տեսէք հիմայ, թէ ինչ արժէք ունի մօրուքս:

4. Վանայ ծովուն անուանի ձուկն, զոր չորցուցած դրկեն հեռու տեղուանք. գրուի և տառեխ:

կայրին ի մէջ շուկայրին ի գինարբութեան. և ի լսել քաղաքացեացն զձայն պարուցն նոցա, ամենայն արք քաղաքին հասանէին ի վերայ նոցա, և ծեծելով զանալից արարին զնոսա, սկսան հանել ընդ-նոսա ի քաղաքէն: Էին արքն իբրեւ ութսուն՝ բրէզածք՝[1] և ընտրեալք քաջութեամբ. և յայնժամ՝ ձայն տուեալ մանկտաւագքն[2] նոցա, և նոքա միաբան զինեխմեալ էին՝ յարձակեցան ի վերայ քաղաքացեացն, և ի Սեւոտոյն[3] դրանէն մինչեւ ի Տէր Պետրոս[4], զամենայն արք քաղաքին փախըստական արարին, և կառափնարեկ, ոտնակոտորս[5] արարին արս բազումս. և ապա խաչով և աւետարանով երդուեալ նոցա՝ բնաւ այլ ոչ մեղանչել նոցա. յայնժամ արարին խաղաղութիւն, և դարձան ի տեղիս իւրեանց անհամար աւարաւ:

---

## ՄԿԵ

### ՄԷԼԻՔ-ՇԱՀ[6] ՅԱՓՆ ՈՎԿԻԱՆՈԻ

(Մ. ՈՒՌՀԱՅԵՑԻ. ԺԻԲ.)

Յայսմ ամի (1086) շարժեալ ահագին բազմութեամբ տիեզերակալ Մէլիքշահ սուլտանն Պար-

1. Թուրի կէս թրածեծ պիտի, իբրեւ բրով. գաւազանով ծեծուած:
2. Կտրիճներուն գլխաւորքն. այսպէս կոչուին և տղայոց և ծառայից գլխաւորքն:
3. Քաղաքին ծովեզերեայ կողման դուռն, որ խաչակրաց ժամանակի պատմութեան մէջ շատ հեղ յիշուի. հին ատեն քաղաք մի կար այն տեղ Սելեւկիա Պիերիա կոչուած. իսկ Սեւոտի՝ Արաբացւոց Սուէյտիէ կոչածն էր:
4. Ս. Պետրոս մայր եկեղեցին Անտիոքայ:
5. Գլուխնին, ոտուընին զարկին, կտրտեցին:
6. Որդի Ալփ–արսլանայ եղբօր Տուղրիլ սուլտանի:

սից՝ Ասքանազանց ազգաւ[1], և անթիւ զօրակա-
նօք՝ խաղայր գայր, և շրջեալ եմուտ յարեւմուտս
ի յաշխարհն Հոռոմոց, առ ի տիրանալ այնմ աշ-
խարհին. և քաղցրութեամբ և հեզութեամբ և ողոր-
մութեամբ լցեալ էր սիրտ նորա ի վերայ քրիս-
տոնէից ազգաց, և հայրախնամ գութ ցուցանէր
ամենայն աշխարհի. և առանց պատերազմաց տի-
րեալ լինէր բազում քաղաքաց և գաւառաց: Եւ
յայսմ ամի տիրեաց սուլտանն ամենայն աշխար-
հին Հայոց և Հոռոմոց. և գայր հասանէր ի մեծ
քաղաքն Անտիոք, տիրանայր այն աշխարհին և
Հալպայ. և տիրելով տիրեաց ի Կասբականէն
մինչեւ ի յՈվկիանոս[2]. և հաւանեցոյց առ հասա-
րակ զամենայն թագաւորութիւնս՝ իւրոյ աթոռոյն,
որք յայսկոյս Ովկիանոսին, և ոչ մնաց աշխարհ՝ որ
ոչ հնազանդեցաւ նորա թագաւորութեանն. և եղեն
հարկատուք և հնազանդեցան նմա երկոտասան ազգք
թագաւորաց[3]: Եւ եղեւ յետ տիրանալոյ Անտիո-
քայ, իջեալ յեզր Ովկիանոս ծովուն՝ ի տեղի որ
կոչի Սեւոտի. և տեսեալ սուլտանին զծովն մեծ՝ գո-
հանայր և օրհնէր զԱստուած՝ որ մեծացոյց զթա-
գաւորութիւնն առաւել քան զհօր իւրոյ Ալփասլա-
նայ: Եւ ձիով իւրով մտեալ կոխէր զՈվկիանոս.

1. Ըստ Ս. Գրոց Ասքանազ հօրեղբայր էր Թոր-
գոմայ. անոր անունէն համարին ոմանք ի գիտնոց
զԹիւրքմէնս, որոց ցեղէն են և Սէլճուկեան Թուրքք
իրենց սուլտաններովն. ըստ այս կարծեաց՝ ազգա-
կան համարեցան ոմանք զՀայս և զԹուրքս:

2. Ի ծովէն Կասպից մինչեւ ի Միջերկրականն,
զոր հեղինակս և այլք Ովկիանոս կոչեն, իբր մեծ
ծով: — Սամուէլ Անեցի կամ իր ժամանակագրութեանն
աւելցընող մի՝ գրէ. «Կոխեալ երիվարաւն ի ծովն՝ և
» ետ շուքր (գոհութիւն) Աստուծոյ, որ տիրեաց խա-
» ղաղութեամբ ի ծովէն Պարսից մինչեւ ի ծովն արեւ-
» մտից »:

3. Ոսմնական ըսուածք մ'է, 12 ազգ համարել ընդ-
հանուր մարդկան ցեղերը կամ տէրութիւնները:

և եհան զթուրն իւր, և երկու հեղ մխեաց ի յՈվ-կիանոսն զթուրն իւր և ասաց, եթէ. «Ահա ա-րել ինձ երես Աստուած ի ծովէն Պարսից մինչև ի ծովս այս»։ Եւ հանեալ զհանդերձս տարածեաց ի վերայ գետոյն, և եկաց յաղօթս առ Տէր Աստուած, և օրհնեաց զբարերար ողորմութիւնն Աստուծոյ։ Եւ հրամայեաց ծառայիցն իւր աւազս բառնալ ի ծովէն, և տարաւ զայն ի Պարսիկս, և էարկ ի վերայ գերեզմանի հօրն իւրոյ Ալփասլա-նայ, և ասէր. «Հայր իմ Ալփասլան, ահա աւետիք քեզ, վասն զի տղայ որդին քո զոր թողեր, ա-րելով տիրեաց մինչև ի ծագս աշխարհի»։

Եւ դնէր սուլտանն յԱնտիոք զամիրայն որ ասի Աղսիան[1], այր չար և չան և խռովարար և գա-զանամիտ. դնէր և ի Հալպայ քաղաք՝ զԱղ-Սըն-ղուր[2], որ էր այր բարի և խաղաղարար և քաղցր ի վերայ ամենայն ազգաց և շինող աշխարհի։

---

## ՄԿԶ

### ՆՈՅՆ ԸՍՏ ՍԱՐԿԱՒԱԳ ՎԱՐԴԱՊԵՏԻ .

Իբրև առնուր զփառս իշխանութեանն բարե-բաղդն Մէլէք-շահ՝ զկնի հօրն մահուան Ալփաս-լանն կոչեցելոյն, մեծապէս կարգօք յօրինէր զթա-գաւորութիւնն, ըստ անուանն արդարև եղեալ Ար-քայ արքայից. ոչ հետևեալ հօրն բարուց և կա-մաց, այլ և յաւէտ մանաւանդ զընդդէմն՝ ախոր-ժեալ. մինչ զի և մտահաճ եղեալ զնորայն բա-րէր զխմացմունս, իբրև եղեալ հակառակ խաղա-ղութեան և կենաց մարդկան՝ արեամբ և զրկմամբ

1. Կամ Աղուսիան. Լատինք գրած են Æxianus, և այլ կերպ։

2. Թուրքերէն Ագ-սօնղօր նշանակէ ճերմակ բազէ։

խանգացեալ։ Իսկ ինքն իմաստաբար քաղաքավարութեան կարգաց պատրաստէր զամենայն։

Արդ, խոհեմն այն և առաւել քան զյոլովս ի Թագաւորաց և քան զամենեսեան որ առ մեօք, ոչ այնքան տանէր հոգ որքան արդարութեամբ առ ամենեսին վարիլ, զի մի ոք լիցի տրտում ի զրկելոյ և հալածել ի դատողաց։ Էր և աղքատասիրող և մեծախորհուրդ. այլ և ունէր մարմնոյն արժանի Թագաւորութեանն. ընդ որում՝ հեզութիւն և քաղցրութիւն բարուցն լծակցեալ՝ առնէր սիրելի ամենեցուն. զոր միայն կոչեցից Թագաւոր և փառթամ։ Սա ի դոյզն ժամանակի՝ փոքր ինչ նուազ զբոլորս հնազանդէր զօրեղս, զոր այլք ի Թագաւորաց ի բազում ժամանակս և կամ ոչ բնաւ. բայց ոչ այնքան պատերազմաւ և քաջութեամբ՝ որքան սիրով և քաղցրութեամբ. զի թէ սակաւ ժամանակաւ այնքան գործեաց, կարծեմ թէ և ոչ Եւրոպէ կարէր ոչ տալ մուտս արքայութեան նորա, եթէ յերկարեալ էին կենացն նորա ժամանակք։...

Ի ՇԽԱ (1092-3) թուականին[1] սպանաւ մեծ հազարապետն արքային Պարսից Մէլիք-շահի, որում անուն էր Հասան, իսկ ըստ պատւոյ աստիճանին՝ Վզրուշկ-խօջա[2]. և զկնի աւուրց քսան և ութից մեռանի և ինքն Մէլիք-շահն, զորմէ համբաւէր յամանց՝ դեղակուր ի կնոջէն լինել։ Որ էր հեզ առ ամենեսեան և քաղցր բարուք, յաւէտ առ ազգս քրիստոնէից. և յետ մահու նորա անպատմելի

1. Սամուէլ Անեցի այս Սարկաւագայ գրածը օրինակներէն առաջ՝ կ'ըսէ. «Անօրժելի եղեւ բանիւ դպրու-
» տեօք վարդապետին սրբոյ գրել, (որ) և խոստա-
» նայր դարձեալ գրել արուեստաբան և երկայն պատ-
» մութեամբ. և յորժամ զկենացն վճարէր զատա-
» ցուած, զմահուանէն ապա այսպէս է գրեալ»։

2. Ուրիշ Օր. Վզուշկ խօջա. բնիկ անուամբ կոչուէր Հասան-իպն Սապպահ։

եղեւ խռովութիւն ամենայն ազգաց զամս չորս. զի եղբայր նորա Դըդուշն և որդի նորա Բէքիարուխն[1] զայսուիկ զամս մարտիւ պատերազմաց ըզ-բարեյարմարութիւն զամենայն ի բաց ընկեցին, վասն ոչ ընդ փոյթ միոյ ի նոցանէ տիրելով՝ հասումունս արեանց իբրեւ զուղխից լինէր, ոչ միայն զինակիր նահատակաց՝ այլ առհասարակ ազանց և գաւառաց, և նեղութիւնք վշտաց, սովոյ և գերութեան. և այսպէս բարիքն ի բաց վճարեցան՝ ընդ խզման կենաց թագաւորին. որոյ երկք և աշխատութիւնք թագաւորականք՝ ուրոյն, և շահն և օգուտն՝ հասարակ ամենեցուն, մեծամեծքն և ընտրելիքն. մանաւանդ զխաղաղականն ասեմ կեանս, զանկարօտս և զանհակառակս: Զի սիրէր զազգս մեր այնքան՝ մինչ զի աղօթս հայցէր և օրհնութիւն. յորմէ՝ անդ երբեմն չռքաւ հայրապետն Հայոց: Օ՜չ, թէ միայն էր աշակերտեալ քրիստոնէական կրօնից և կարգաց: Արդ, ի քաղաքն յորում նստաւ և թագաւորեաց ի մայրաքաղաքն Այպահան՝ մեռանի անդ:

---

ՄԿԷ

## ՍԵՆԵՔԵՐԻՄ ՎԵՐՋԻՆ ԹԱԳԱՒՈՐ ՍԻՒՆԵԱՑ. ԵՒ ԳՐԻԳՈՐ ԵՊԻՍԿՈՊՈՍ

(ՍՏԵՓԱՆՈՍ ՕՐՊԵԼԵԱՆ. ԺԳ.)

Գրիգոր[2] առեալ էր իւր կին զամենօրհնեալ և մեծահաւատ բարեպաշտուհին Շահանդուխտ ի տանէն Աղուանից, դուստր նոցին թագաւորազինն մեծին Սեւադայի, և էին անզաւակ. և կամէր մնալ

1. Այլք գրեն Բերկիարուխ:
2. Սիւնեաց թագաւորն:

թագաւորութիւն Նոցա անժառանգ[1]։ Ապա խորհեալ ի միասին ընդ իշխանսն՝ ածեն յԱղուանից զՍենեքերիմ՝ եղբայր Նորին Շահանդըխտոյ, թագաւորազն մանուկ, յոյժ գեղեցիկ տեսլեամբ և առոյգ հասակաւ, հանճարեղ և իմաստուն, Նա և երկեւղած յԱստուծոյ։ Եւ ստանայ զսա (Գրիգոր) ժառանգ իւրեանց թագաւորութեանն ամս ինչ. և վախճանի և սա։

Եւ յայնմ ժամանակի էր բարձրացեալ և զօրացեալ տէրութիւնն Տաճկաց[2], և ամենայն աշխարհ ի Ներքոյ հարկի Նոցա Նուաճեալ կայր. վասն որոյ և յոլով գաւառս չորթեալ հանին ի Միսակեան աշխարհէս՝ ի ձեռաց բնիկ տերանցն։ Եւ էր յաթոռ սուլտանութեանն Մէլիք շահն, այր բարեբարոյ և խաղաղարար, յորմէ մեծարեալ լինէր Սենեքերիմ ի պատիւ թագաւորութեան. և յոյժ երեւելի փառօք թագաւորեաց ի տանս Բաղաց[3], և ընդարձակեաց զամենայն սահմանս տէրութեան իւրոյ. և բազում ամօք վարեալ զթագաւորութիւնն՝ քաղցր և խաղաղական կենօք՝ մինչ ի մահ Մէլիք սուլտանին, որ մեռաւ ի 541 թուականին։ Եւ ապա սկսաւ քայքայիլ խաղաղութիւնն և ապականիլ ամենայն շինութիւնք աշխարհիս, զոր յիւրում տեղւոջ ասացից։ Եւ էին Սենեքերիմայ երեք որդիք, Գրիգոր, Սմբատ, Սեւադա, և դուստր մի։

Բայց մահ Սենեքերիմայ եղեւ այսպիսի պատճառաւ. զի յետ Մէլիք-շահին ամենայն ոք գլուխ ի վեր առեալ՝ եղեւ անձնիշխան, և զմիմեամբ ելեալ[4] ո՛ ոք որ կարողանայր՝ աւերէր զերկիր

1. Անզաւակ ըլլալով անժառանգ պիտի մնային։
2. Սելճուկեան Թուրքաց։
3. Որ է գլխաւոր գաւառ Սիւնեաց, անոր համար և այդ թագաւորքն կոչուին Թագաւորք Բաղաց։
4. Ինչպէս Նախընթաց Յօդուածին մէջ այլ ըսաւ Սարկաւագ Վարդապետն։

գերփմամբ և յափշտակութեամբ։ Յետկս որոյ խանդացեալ... իսմայէլականացն՝ ընդ գեղեցիկ և ամուր թագաւորութիւնս Բաղաց, զոր ինչ մեծ՝ համարէին ինքեանց. և ելեալ ամիրայն Պարտաւայ և Բևանայ և Գանձակայ՝[1] բազում զօրօք գայ ի պատերազմ ընդ Սենեքերիմայ, ընդ որում էր Շիրակայ իշխանն Գրիգոր Ապիրատեան[2]։ Իմացեալ զայն Սենեքերիմայ և ամրացուցեալ զամենայն աշխարհն յանառիկ ամուրսն. եկեալ ապա անիծեալ ամիրայն, և տեսեալ զի անհնարին էր ի մարդկանէ, յուղարկէ զԳրիգոր իշխանն Անեցի, որ պատճառաւ ինչ կայր առ նմա, առ Սենեքերիմ արքայն, և ասէ. «Երդմամբ հաւանեցո՛ զնա գալ առ իս, և առնեմք ընդ միմեանս սէր, և մեծամեծ պարգևօք արձակեմ զնա. ապա թէ ոչ հաւանեցուցանես, և զքոյդ զլուխ աստէն հատանեմ»։ Գնացեալ ապա Գրիգորին այն զչար ճանապարհն, և մտեալ առ Սենեքերիմ և մեծամեծ երդմամբ հաւանեցուցանէ զնա գալ առ ամիրայն. որք և եկին ի միասին։ Իսկ տեսեալ զնա չարաթոյն գազանին, և ստեաց ուխտին, և յարձակեալ մռմռանօք ի վերայ՝ եսպան զթագաւորն. և ինքն անց գնաց յաշխարհ իւր։

Ահա այսպէս շիջաւ ճրագն քրիստոնէից, որ կայր մնացեալ յամուրսն Բաղաց։ Զոր և եկեալ մեծամեծացն և որդեացն իւր՝ կոծ մեծ արարին ի վերայ. և բարձեալ տարան ի սուրբ ուխտն Վահանոց[3]. և անդ եդեւ[4] ի շիրմի՝ ընդ այլ թագաւորսն։ Եւ յետ նորա էառ զտէրութիւն նորա որդի իւր Գրիգոր, նուազ և ընդ աղօտ թագաւորեալ։ Բայց այս Սենեքերիմ և քոյրն իւր Շահանդուխտ բազումս արարին արդիւնս և շինուածս երեւելիս

1. Աղուանից երկրի գլխաւոր գաւառք և քաղաքք։
2. Անշուշտ Պահլաւունի, Գր. Մագիստրոսի ցեղէն։
3. Սիւնեաց թագաւորազանց գերեզմանատունն էր։
4. Թերևս գրուելի էր եդաւ ի շիրմի։

ի վանս Ցովհաննու[1]. Նաեւ բազում պարգեւս և ժառանգութիւնս ընծայեցին ի սուրբ մայրաքաղաքն[2] աթոռ ի Տաթեւ։

Իբրեւ կատարեցաւ երանելի մետրապոլիտն Սիւնեաց Տէր Յովհաննէս, ապա աստուածապսակ թագաւորն Սմբատ[3] ընտրէ այր մի պատշաճաւոր, վկայեալ յամենեցունց, զարդարեալ ամենայն առաքինութեամբ և լի գիտութեամբ Գրիգոր անուն, յուղարկէ առ կաթողիկոսն Հայոց յԱնի[4], և տայ ձեռնադրել զնա եպիսկոպոս Սիւնեաց։ Որ եկեալ բազում ջանիւ, մեծավաստակ առաքինութեամբ քաղաքավարէր ի մարմնի, տուեալ զանձն օրինակ ամենայն բարեաց, տեւեալ ձիգ ժամանակօք մինչեւ ամս յիսուն և ութ։

Սա արարեալ զարմանալի շինուածս յեպիսկոպոսարանին Տաթեւ. զի կանգնեաց կամարս ի վերայ դրան վանացն որ հայէր ընդ արեւելս, և մերձ նմին տուն սրբաշէն[5]. և ի վերայ սոցա եկեղեցի մի գմբէթաւոր գեղեցկայարմար՝ յանուն Սրբուհւոյ Աստուածածնին։ Եւ էր նա իբրեւ դիտանոց բարձր որ հայէր ի վերայ վանացն. և ի չորեսին կողմանսն յօրինեաց գաւիթս. բայց յառաջի կողմն բարձրաբերձ սեամբք շինէր սրահս վայելուչս՝ իբր քաղցր հովանոց. և գրէ ինքեան արձան յիշատակի ի վերայ եկեղեցւոյն. և հաստատէ քառասուն մի՝ ամ յամէ կատարել անխափան ի յիշատակ իւր։

Սա առնոյր և զԲողորաքարն Նորքաց բաժինն[6]

1. Բաղաց ամուր բերդին տորոտն էր այս վանքս։
2. Այսինքն՝ մեծ վանքն աթոռ եպիսկոպոսին։
3. Նախորդն Գրիգոր թագաւորի։
4. Անուանեալ կաթողիկոս, մինչ ընդհանրական կաթողիկոսն Հայոց էր մեծ Վկայասէրն Գրիգոր։
5. Թերեւս սագաշէն, այս ինքն տափակ տանիքով։
6. Արցախ նահանգի Խաչէն գաւառին իշխող։

ի Դչնեն՝ որդւոյ Խաղբակայ[1]. և հաստատէր նզովիւք ի սուրբ եկեղեցին: Ի ձեռն սորա աւանդեաց երանելի և սուրբ Թագուհին Շահանդուխտ և բարեպաշտ Թագաւորն Սեննեքերիմ եղբայր նորին, զԱրիտն աւան որ է մերձ և սահմանակից սրբոյ և մեծի աթոռոյն Տաթեւոյ. և գրեն զվճիռ պայմանի ահագին և սոսկալի նզովիւք՝ ինքն իսկ Թագաւորն իւրով ձեռամբն որ էր այսպէս. «Կամաւ կարող հզօրին Յիսուսի ես Սեննեքերիմ՝ Թագաւոր Հայոց, կացեալ ի Սիսական և Բաղաց աշխարհիս, ընթերցայ զառաջին հայրապետացն և զիշխանացն հաստատագիծ նամակ. կամեցաք վերստին նորոգել և անդրէն դարձուցանել. և գրեցաք զայս վճիռ պայմանի՝ իմ սրտի յօժարութեամբ և հրամանաւ բարեպաշտ և քրիստոսազգեաց քերցս իմոց, Թագուհւոյս Շահանդխտոյ և սրբասնունդ օրիորդիս Կատայիս, որք լքին զերկրաւոր փառս աշխարհիս և զհետ երանաւէտ ձայնին Քրիստոսի ընթացան ճգնազգեստ առաքինութեամբ: Եւ ետու զԱրիտն իւր ամենայն սահմանօք շուրջանակի հողով և ջրով և արտավարօք և զամենայն որ ինչ իւրն էր, ի Տաթեւոյ սուրբ եկեղեցիքն, ի հայրապետանիստ մայրաքաղաքն, ի Սուրբ Առաքեալքն և ի Սուրբ Գրիգորն, ի հայրապետութեան Տեառն Գրիգորոյ՝ Սիւնեաց եպիսկոպոսի, և իւրեանն որդիացելոյ Տեառն Ստեփաննոսի: Եւ ետու անհաշիւ, անհամիմաղ[2], առանց զոք զրկելոյ, առանց զուրուք յափշտակելոյ, առանց ումեք տրտնջելոյ. քանզի մեր սեփական (էր) և ոչ այլ ումեք՝ զոր ընծայեցի սուրբ ուխտիդ Տաթեւոյ, յաղագս փրկութեան հոգւոյ իմոյ և քաւութեան մեղաց իմոց և հարազատաց իմոց քերց, և որդեկաց իմոց կենաց և փրկութեան, Գրիգորոյ, Սմբատայ և Սեւադայի և մօր իւրեանց և քեռն: Եւ կարգեցի քառասունք մի՝ որ

1. Բերդ մի ի Նորք կամ Նորիք վիճակի Բաղաց:
2. Առանց հակառակութեան:

ամ յամէ կատարեն ի սուրբ եկեղեցիքն ի տէրունի քառասունքն, զքսան օր Թագաւորին Գրիգորոյ՝ որդւոյ Աշոտոյ, և զքսան օրն՝ իմ մօրն Սոփիայ որչափ մեք կենդանի եմք, և յետ ելիցն մերոց՝ զքսան օրն իմ քուերն Շահանդխտոյ առնեն և զքսան օրն՝ ինձ Սենեքերիմայ »:

---

## ՄԿԸ

### ՍՈՎ ՅԱՆԻ ԵՒ ԳԹԱՍԻՐՈՒԹԻՒՆ ՊԱՐՍԿԻ ՄԻՈՅ

(ՎԱՐԴԱՆ)

Եղեւ ի պատճառս մարախոյ և երաշտոյ սով սաստիկ, և ի յԱնի կարի իմն նեղութիւն մեծ. ուստի զմեռեալսն թաղել ոչ կարէին ի սովոյն, և ոչ օրինացն հաղորդել. որ և այր մի, ասեն, քաջութիւն ցուցեալ և սէր առ Աստուած՝ թաղեաց վեց հազար անձինս, որում անուն էր Բեխ: Զայսպիսի աղէտս լուեալ այր մի մեծատուն ի Պարսս, և երամակ մի ուղտուց բարձեալ ցորենով՝ գայր ի յԱնի, և ասէր, ոչ այլ ումեք տալ՝ բայց տղայոց: Զոր լուեալ բերէին զբազումս՝ յորդառատ արտասուօք, և նա յագեցուցանէր և կերակրէր զնոսա. և ի սպառել ցորենոյն՝ ձայն արարեալ ծնողաց մանկանցն՝ զի եկեսցեն համբուրեսցեն զուստերս և զդստերս իւրեանց: Եւ իբրեւ կական բարձեալ մորմոքէին զրկախառնեալք, և ահա բարբառ քաղցր և բարի այրն բարբառեալ՝ ասաց. Առէք զտղայսդ ձեր և գնացէք ի տունս ձեր, փառաւորելով ընդ-տուողն բարեաց զԱստուած՝ ի մեծութեանն իւրում. զոր և արարինն իսկ:

## ՍՈՎ Ի ՄԻՋԱԳԵՏՍ
## ԵՒ ԱՒԵՏԻՔ ՈՂՈՐՄԱԾ ՔԱՀԱՆԱՅ[1]

(ՎԱՐԴԱՆ)

Եղեւ սով սաստիկ ի Միջագետս. և քահանայ մի Աւետ անուն հայ ազգաւ՝ բարձեալ ցորեան՝ իշոց, տանէր աղալ ի ջրաղացն. և ի տեսլենէ տառապելոցն աղէխարշեալ բաշխէր զամենայն՝ աղքատաց, և զէշն վաճառեալ նոյնպէս արար, և այլ ոչ դարձաւ ի տուն իւր. այլ զգեցեալ այծեայս շրջէր քարոզութեամբ ընդ քաղաքս և ընդ գեօղս քրիստոսաբար. զի ունէր բանս հանճարեղս և ետ նմա Տէր շնորհս նշանաց. և զղջացեալ ի բանս նորա՝ դառնային բազումք ի չարեաց, և խնամ ածէր որբոց և այրեաց, լնլով զկարիս նոցա իւրով միջնորդութեամբ՝ ի կարողացն: Եւ ել համբաւ զնըմանէ. և գային յարենային ի նա յոլովութիւնք ժողովոց. և եկն մինչեւ ի Մանծկերտ, և ել ընդ առաջ նորա Շահի Արմէնն՝ մեծաւ հանդիսիւ, և խնդրեաց ի նմանէ աղօթս և եմոյծ պատուով ի քաղաքն: Եւ զի յանդիմանէր զպոռնիկ քահանայսն՝ քսեցին[2] զնա առ շահն[3], թէ լրտես է Հոռոմ թագաւորին, և ետուն զնա քարկոծել. յորոյ վերայ տեսին լոյս երկնային՝ զերիս տիւս և զերիս գիշերս: Զոր տեսեալ շահն՝ աւաղեաց զմահ սրբոյն, և ետ հրաման պատուել զոսկերս նորա:

1. Յարմար համարեցայ վերոյգրեալ գեղեցիկ գործոյ նման մի այլ յարել նոյն հեղինակէն:
2. Ամբաստանեցին զրպարտութեամբ. ռամկօրէն այլ կ'ըսուի վրան մուր քսել:
3. Սելջուկեան սուլտանաց յաջորդն:

# ՄԿԹ

## ԵԼՆ ՖՌԱՆԳԱՑ· ԱՌԱՋԻՆ[1] ԽԱՉԱԿԻՐՔ

(Մ· ՈՒՌՀԱՅԵՑԻ· ՃԾ·)

Ի ժամանակիս (1096-7) եղեւ Ելն Հռովմայեցւոց, և բացաւ դուռն Լատինացւոց ազգին· վասն զի ողջոյն կամեցաւ Տէր պատերազմել ընդ տունն Պարսից· և դարձեալ եղեւ Տէր ի բարկութենէն իւրմէ, ըստ բանի Դաւթի մարգարէին, ըստ այնմ զոր ասաց· եթէ, «Զարթի՛ր, ընդէ՞ր ննջես, Տէր· արի՛ և մի՛ մերժեր զմեզ իսպառ»· և թէ, «Զարթեաւ որպէս ի քնոյ՝ Տէր, որպէս հզօր զի թափեսցէ զգինի իւր· և եհար յետս զթշնամիս իւր· Նախատինս յաւիտենից արար զնոսա»: Եւ ահա յայսմ ամի շարժեալ եղեւ ամենայն Իտալիա և Սպանիա մինչեւ յԱփրիկէա խորին· և ազգն Ֆռանկաց գրոհեալ անթիւ և անհամար և ահագին բազմութեամբ և անհամար դասապետութեամբ՝ որպէս զմարախ որ ոչ թուի, և կամ որպէս զա-

1. Այսպէս կոչեն ժամանակագիրք մեր՝ Լատինաց կամ քրիստոնէից Եւրոպիոյ՝ խաչակրութեամբ զիմեւլն յարեւելս՝ յազատութիւն Երուսաղեմի կամ Սուրբ տեղեաց· Լատինք սովորաբար կոչեն (Passagium, Փռ· Passage, Անգ·), յորմէ և ոմանք ի մերայոց՝ Խաչաձև· սովորաբար կոչուի Croisade, Crociata. Այս պատմական կամ տիեզերական մեծ գործոյն (յորում և Հայք մասն ինչ ունեցեր են) տեղեկ և մանրամասն գիտելիքն՝ ի հարկէ չի խնդրուիր մեր Ուռհայեցի պատմըչէն· սակայն բաւական ճշդութիւն և յարգ ունի՝ նա և յաչս Եւրոպացւոց, որք օգտուած են իրմէ, և բոլոր գործոյն փռանկերէն թարգմանութիւնն (Տիւլորիէի) Գաղղիոյ Ճեմարանն Խաչակրաց ամեն Պատմչաց հետ տպագրած է շքեղութեամբ:

ւազ ծովու որ ոչ քննի մտաց. և ահաւոր մեծութեամբ և բարձրագահ իշխանութեամբ ելեալ գային իշխանքն աշխարհին Ֆռանկաց, և իւրաքանչիւր զօրօք գային յօգնութիւն քրիստոնէից, և առ ի փրկել յայլազգեաց զսուրբ քաղաքն Երուսաղէմ, և ազատել ի Տաճկաց զսուրբ գերեզմանն աստուածընկալ. արք փառաւորք և թագաւորազունք, հաւատով և ամենայն աստուածպաշտութեամբ զարդարեալք. և էին սնեալք ի գործս բարութեան: Արոց էին անուանքս այսոքիկ, Կոնդոփրէ[1] այր հզօր, որ էր յազգէ թագաւորացն Հռովմայեցւոց, և Նորին եղբայրն Պաղտինն: Այս Կոնդոփրէ էր՝ որ ունէր զհետ իւր զթագն և զգթուրն Վեսպիանի[2] թագաւորին, որ կոտորեաց նովաւ զԵրուսաղէմ: Էր և մեծ կոմսն որ ասէին Պեմոնդ[3], և Տանգրին[4] քուրորդին նորա և կոմսն որ ասի Զնձիլ[5], այր ահարկու և փառաւոր, և Ռոպերթ Նորմնդաց կոմսն[6], և միւս այլ Պաղտինն[7]. գայր և յետոյ կոմսն որ ասի Ճօսլինն[8], այր քաջ և հզօր:

Արդ, այսքան արք հզօրք և պատերազմողք գային սոքա ահագին բազմութեամբ՝ որպէս զաստեղս երկնից. գային եւս զհետ սոցա բազում եպիսկոպոսունք, քահանայք և սարկաւագունք. և մեծաւ աշխատութեամբ ճանապարհորդեալ ընդ հեռաձիգ աշխարհն Հռովմայեցւոց, և չարաչար նե-

1. Աշխարհահռչակ առաջնորդ Ա խաչակրացն էր Godefroy de Bouillon վեհազնն, նոյնպէս հռչակեալ Երուսաղէմ Ազատեալ քերդուածով իտալացի Տասսոյ (Tasso) բանաստեղծի:
2. Այս աւանդութիւն է ռամկաց:
3. Bohemond prince d'Antioche.
4. Tancrède Նորմանտացի ի Սիկիլիոյ:
5. Saint-Gilles, comte de Toulouse.
6. Robert comte de Normandie.
7. Baudouin de Bourg, կոմս Եդեսիոյ:
8. Josselin de Courtenay.

զօրութեամբ անցանէին ընդ աշխարհն Ունգռաց[1], ընդ նեղ և դժար կապանսն լերանց նոցա. և ժամանեալ հասանէին ընդ սահմանս աշխարհին Բուլղրաց, որ էր ընդ իշխանութեամբ Ալեքսիսի Յունաց թագաւորին. և այսպիսի ճանապարհորդութեամբ հասանէին ի մեծն Կոստանդինուպօլիս:

Եւ լուեալ զգալն նոցա թագաւորն Ալեքսն՝ առաքէր զօրս ընդդէմ նոցա ի պատերազմ. և եղեւ ահագին կոտորածս երկոցունց կողմանց, և արար Ֆռանկն փախստական զզօրսն Յունաց. և յայնմ աւուր եղեւ բազում արեանց հեղումն: Եւ այսպիսի օրինակաւ ընդ որ անցանէին՝ գային ամենայն աշխարհք ի վերայ նոցա ի պատերազմ, և նեղէին զնոսա բազում չարչարանօք: Եւ լուեալ զայս ամենայն թագաւորն Ալեքսն, և վերացոյց զսուրն, և ոչ ետ այլ պատերազմ ընդ նոսա: Եւ ամենայն բանակն առհասարակ եկեալ իջաւ ի դուռն Կոստանդինուպօլսի. և խնդրէին ընդ ծովն Ովկիանոս անցանել. և թագաւորն Ալեքսն արար սէր և միաբանութիւն ընդ ամենայն իշխանսն Ֆռանկաց, և տարաւ զնոսա ի Սուրբ Սոփի, և ետ նոցա բազում տուրս ոսկւոյ և արծաթոյ. և նոքա երդուան նմա՝ զի զամենայն գաւառսն որ յառաջ լեալ էր Հոռոմոց՝ թափեն ի Պարսից և յԱրապկաց, եղիցին ազգին Հոռոմոց. և այսպիսի դաւանութեամբս խաչով և աւետարանով կապեցին զերդումն անլուծանելի կապանօք: Եւ առեալ զօրս և իշխանս ի թագաւորէն՝ նաւէին ընդ մեծն Ովկիանոս[2]. և հասեալ բազմութեամբ բանակաւն ի քաղաքն որ կոչի Նիկիա, մօտ ի յՈվկիանէ ծովն:

Եւ ամենայն զօրքն Պարսից ժողովեցան ի վերայ Ֆռանկաց, որ բանակեալ էին ի սահմանսն յայն, և արարին պատերազմ ընդ զօրսն Ֆռանկաց. և յայնժամ զօրքն Ֆռանկաց յաղթեցին զօ-

1. Հունգարք, Մաճառք, Hongrois.
2. Միջերկրական ծովն՝ Ովկիանոս համարուած:

րացն Պարսից և արարին զնոսա փախստական. և յարձակեցան զհետ նոցա սրով, և արեամբ լցին զերկիրն: Եւ պատերազմեալ ի վերայ քաղաքին Նիկիոյ՝ և սրով առին զքաղաքն. և կոտորեցին զամենայն անհաւատսն: Եւ յայնժամ գնացին ճիչկան[1] առ սուլտանն Խլիճ-Ասլան[2], յորժամ պատերազմէր ի վերայ քաղաքին Մելտենոյ. և զայս ամենայն ազդ արարին նմա: Եւ նորա արարեալ ժողովս անթիւ բազմութեամբ, և գայր ի վերայ Ֆռանկ զօրացն, ի գաւառին Նիկիոյ. և արարին սաստիկ կոտորածս յերկոցունց կողմանցն, և անխնայ քաջապէս յարձակեցան ի վերայ միմեանց, և զազանաբար բաղխէին զճակատ պատերազմացն. և ի փայլատակմանէ սաղաւարտացն և ի չաչել զրեհացն և ի ճայթմանէ աղեղանցն՝ եղեն գումարեալք ամենայն զօրացն այլազգեաց[3]. վասն զի ի սաստկութենէ ձայնիցն դողայր երկիրն, և ի չաչել նետիցն՝ երիվարքն սարսէին: Իսկ որ արիականքն ընտիրքն էին՝ քաջքն ընդ քաջք ելանէին, և որպէս զկորիւնս առիւծոց անխնայ կոփէին զմիմեանս: Եւ էր օրն այն օր մեծ և ահագին առաջին պատերազմին. վասն զի վաթսուն բիւրով (600,000) պատերազմէր սուլտանն ընդ ազգն Ֆռանկաց. և ի վերայ այսքան պատերազմաց՝ յաղթեաց զօրքն Ֆռանկաց զօրացն Պարսից, և արարին զնոսա փախստականս՝ ահաւոր և սաստիկ կոտորածով, որ և ծածկեալ եղեւ դաշտն դիակամբ մեռելոց. և առին բիւրս բիւրոց աւար և գերութիւն, և թիւ ոչ գոյր ոսկւոյ և արծաթոյ զոր առին ի Պարսից: Եւ զկնի երից աւուրց դարձեալ սուլտանն՝ և արար երկրորդ ժողով, և ահագին բազմութեամբ գայր ի վերայ Ֆռանկին զօրացն. և արարին պատերազմ ահաւոր և սաստիկ քան զառաջինն. և զօրքն Ֆռան-

1. Գոյժ, սեւ լուր տուող:
2. Իկոնիոյ (Գոնիայի) սուլտանն:
3. Սխալ ինչ կայ ի շարաբանութեանն:

կաց զնոյն բարկութիւն արկանէին ի վերայ զօրացն Պարսից, և սաստիկ կոտորածով և գերութեամբ հանին զնոսա յայնմ աշխարհէն. և ետուն զօրքն Յունկաց զՆիկիա ի ձեռն Հոռոմոց Թագաւորին Ալեքսին։

---

## ՄՀ

### ՏԱԳՈՒՄՆ ՌՈՒԲԻՆԵԱՆՑ ԵՒ ԵՐԿՐԱԿԱԼՈՒԹԻՒՆ ԿԻԼԻԿԻՈՑ

(ԿԻՐԱԿՈՍ[1].)

(Ցետ սպանման Գագկայ ի Յունաց) Զմանուկն[2] այն որ էր ընդ նմա, գնեաց ոմն վաճառական Հայ, և արար իւր փեսայ։ Եւ եղեւ յետ աւուրց իբրեւ զարգացաւ մանուկն և եղեւ այր, գնաց ի սահմանս Կիլիկիոյ արամբ միով որսալ կաքաւս. և էր անդ բերդ մի՝ զոր Բարձրբերդ կոչեն. և էր անդ եպիսկոպոս մի Հոռոմ. և եղեւ ծանօթութիւն առնն և եպիսկոպոսին, և եղեն միմեանց սիրելիք, և զբաղում աւուրս ուտէին և ըմպէին ի միասին. և այրն ոչ հանէր ի մտաց զխրսն զոր գործեցին Հոռոմք ընդ Թագաւորն Գագիկ՝ ընդ ազգական նորա։ Եւ եղեւ օր մի զի ամենայն պաշտօնեայք եպիսկոպոսին ելեալ էին արտաքս ի բերդէն՝ ի

1. Կիրակոս կ'երեւի թէ Ռուբինեանց ծագման վրայ ստոյգ տեղեկութիւն չէ ունեցեր, և չփոթէ զԳագիկ Թագաւոր Բագրատունեաց՝ Կարսի Գագիկ Թագաւորին հետ: Տես յաջորդ Յօդուածը։
2. Որ էր Ռուբէն Ա։ Իսկ բերդն իր ժառանգներուն ամենէն նշանաւոր բերդից մէկն եղաւ, զոր Արաբացիք այլ հայերէն անունը ծռմռկելով՝ Պերսպերթ կոչէին։

պէտս ինչ գործոյ իւրեանց. և էր եպիսկոպոսն միայն և մանուկ մի ընդ նմա. եկն այրն որսորդ հուպ առ բերդն՝ որսալ կաքաւս. և տեսեալ զնա եպիսկոպոսին ձայնեաց ի պարսպէն գալ առ նա, և ի միասին ճաշակել. և նա ոչ հաւանէր. և էջ առ նա եպիսկոպոսն առանց պաշտօնէի: Իբրև ետես այրն թէ միայն գայ եպիսկոպոսն և ծանեաւ թէ ոչ ոք կայ ի բերդն, ասէ ցայրն որ ընդ նմա էր. Այսօր ի դէպ է առնուլ զվրէժ արեան սպանման թագաւորին մերոյ՝ զոր գործեցին Հոռոմք. ահա՛ս, գուցէ առաքեսցէ զքեզ եպիսկոպոսն ի բերդքն, ջանաջիր առնուլ զնա, և ինձ իմացուցես ի ձեռն նշանի ինչ, զի ես սպանից զեպիսկոպոսն: Եւ իբրև եկն եպիսկոպոսն՝ մտին ի ճաշել. և ի պակասել գինւոյն՝ ասէ եպիսկոպոսն ցպաշտաւորն. Ե՛րթ ի բերդ անդր, և բեր մեզ անուշ գինի, զի ուրախասցուք ի միասին. և գնաց այրն և ասաց զհրաման եպիսկոպոսին՝ սպասաւորի նորա: Եւ իբրև նա խոնարհեցաւ ի կարաս անդր զի հանցէ գինի, նա կալեալ զոտից նորա և դարձուցեալ ի վերայ գլխոյն՝ խեղդեաց զնա ի գինի անդր: Եւ ելեալ ի պարիսպն՝ նշանակեաց տեառն իւրում, եթէ առի զբերդս. և սա աստէն ի ներքոյ խեղդեաց զեպիսկոպոսն, և ինքն մտեալ ի բերդ անդր բռնացաւ[1]: Եւ առ սակաւ սակաւ աճեցոյց զկալուածս իւր, զո՛ր բռնութեամբ և զոր պատրանօք. մինչև տիրեցին նա և որդիքն իւր և թոռունքն՝ աշխարհին Կիլիկեցւոց, քաղաքաց և գաւառաց: Սա է նախնի թագաւորին Լևոնի՝ որ ընդարձակեաց զսահմանս իւր քաջութեամբ:

1. Տարբեր կերպով պատմէ Ուռհայեցին:

# ՄՀԱ

## ՆՈՅՆ ԲԱՆ ԸՍՏ ՅԻՇԱՏԱԿԱԳՐԻ[1]

Յորժամ յաղախնածին զօրացն սրոյ և ի պարսկական խակամիտ նենգութենէ՝ սպառեցաւ թագաւորութիւնն Հայոց ի տանէն Արեւելից, և բարձաւ բազուկ տէրութեան Նոցին ի կողմանցն հիւսիսոյ, յայնժամ սահեալք իշխանք Հայոց և որք ընդ իշխանութեամբ Նոցին՝ զետեղեալ պանդխտեցան ի ստորին կողմանսն Գամրաց և Պոնտոսի․ որք և անդանօր նեղեալք և նհանջեալք ի նենգամէտ յազգէն Յունաց, խոյս տուեալ եկին ի սահմանս Կեսարիոյ Կապադովկացւոց[2]։ Որոյ տիրեալ քաջութեամբ արքայն մեծ Գագիկ, և զբազումս ի Յունաց սատակեալ, ընդ որս և զմետրապօլիտ քաղաքին զՄարկոս, որ եղեռնական բարուք զանուն ազգին Հայոց՝ շանն իւրոյ մակադրեալ՝ Արմէն անուն վերաձայնէր։ Արքայն բարեշուք զնա և զշունն իւր ի միում քրձի ածեալ՝ չար հարուածովք զանից,... Վասն որոյ և յընդհանուր Յունաց բնակչաց աշխարհին ոխացեալ եղեւ, որով և սպանաւ արդար արքայն յամպարիշտ որդւոցն Մանտալէի, ի բերդն Կնտռաւսկայի[3]։ Եւ յայնմ պատճառէ ցրուեցան պայազատքն Հայոց և այլ եւս խառնաղանճ բազմութիւնքն ընդ բազում տեղիս և գաւառս պանդխտացեալք։

1. Յիշատակարան Ճաշոց գրոց, յամին (1286)։
2. Վերոյգրելոյն Գամիրք ըսածն, յանուն Գոմերայ։
3. Ըստ ոմանց նոյն է Կիւզիստրա, Κύζςτρα, կոչուածն. բայց հմուտ Կիլիկեցի տարեգիր մի կ'իմացընէ՝ որ այժմու Թուրքաց Տեվէլի Գարահիսար կոչած բերդաւանն է, Արգէոս լերին արեւմտեան հարաւային կողմն. իսկ Կիւբիստրա՝ ըստ այժմու քննողաց՝ Արակլի, Heraclea Cybistra կոչուածն է։

Ընդ որս և մեծափառ ոմն իշխան իշխանաց ի սեռէ թագաւորութեան, արեանառու մեծին Գագկայ, Ռուբէն անուն, յինքն յարեալ գյոլովս ի զօրացն, խաղացեալ գայ և առնու զամրոցն զԿոպիտառայ[1]. յորում և դնէ ինքեան տուն իշխանութեան, և տիրէ լեռնակողմանցն Փռիւգիոյ. և բարեպաշտութեան կենօք կացեալ' փոխեցաւ առ Քրիստոս: Յաջորդեալ զփառս նորա որդի նորին Կոստանդին, այր քաջ և արդարագործ, որ և ի բազմաց սիրեցեալ եղեւ բնակչաց աշխարհին Կիլիկիոյ. որոյ ձեռնտուութեամբ ելեալ ի ծովակողմն Տորոսի, տիրեաց նահանգին այնորիկ. Նախ առեալ զդղեակն զՎահկայ[2], և ապա անտի յառաջ յոլովից տիրեալ տեղեաց' դաշտաց և ամրոցաց, գյոքունս ի Յունաց հարեալ: Այլ և փռանգ զօրուն' որ յԱնտիոք, նիզակակից եղեալ ընդդէմ Իսմայէլեան զօրուն, և քաջութիւնս զարմանալիս անդանօր կատարեալ, հիացոյց զարիականաց գունդն[3]. յորոց և կոմսութեան անուն առացեալ' Մարգիզ զնա վերակոչէին: Եւ այնպիսի յաղթական կենօք կեցեալ և ծնեալ երկու որդիս, զԹորոս և զԼեւոն, ինքն փոխեցաւ առ Քրիստոս, և թաղեցաւ ի սուրբ ուխտն Կաստաղօնն[4], տուեալ զիշխանութիւն իւր որդւոյ իւրոյ Թորոսի, այն որ ի Յունաց պատուեալ Պռոտաւ-Սեւաստոս կոչեցաւ: Որ և իսկոյն ընդ

1. Այս այլ նոյն համարուի ընդ Կոպիտառայ: Տես Սիսուան, երես 169:

2. Ինչուան հիմայ ծանօթ է այս տեղս ի հիւսիսակողմն Կիլիկիոյ: Տես Սիսուան, երես 161:

3. Հայք ժամանակին Արիական ազգ անուանէին զՖռանգս, գուցէ և ըստ բառին նշանակութեան, ազատ քաջ, կտրիճ:

4. Տես ի Սիսուան երես, 163. Մատթ. Ուռհայեցի փոխան Կաստաղօնի Վահկայի համար գրէ. «Մերձ ի » յամուր բերդն (վերոյ գրեալ ծան. 2) որ առի Վահ-» կայ, ի Տօրոս լեռան »:

տիրելն՝ խնդրեաց զվրէժ արեանն Գագկայ՝ յորդւոցն Մանդալէի. և առեալ զամրոցն յոլով գանձիւք, և զնոսին չարամահ սատակեալ, բերեալ ընդ ինքեան զպատկեր Տիրամօրն՝ եդ ի դղեակն Անարզաբայ[1], զոր իւր առեալ էր ի Յունաց. յորում և շինեաց զհռչակաւոր տաճարն[2], և եդ անդ զպատկերն, որպէս և գրեալ է յարձանի ի շինուածս տաճարին. այլ և բազում եկեղեցիս և ժողովարանս միանձանց շինեալ, և առատատուր պարգևօք կարգաւորեալ ճոխացոյց. միանգամայն և հիւրանոցս[3] բազումս, և ամենայն ազգաց քրիստոնէից տեղի և տուն պատրաստեալ, յարգեցաւ բարձրացաւ և հռչակեցաւ յամենայն լեզուս. որք

1. Այժմեան կիսաքաւերդ դղեակն անմատչելի՝ մեծին Լեւոնի (Առաջին Թագաւորի) շինածն է, ստորագրեալ խրոխտ արձանագրութեամբս և թուականաւ 1187 տարւոյն։

ՅԱՄԻ ՈԼԶԵՐՈՐԴԻ ԹՎԱԿԱՆԻՍ ՀԱՅՈՑ ԽԱՒԱՐԵՑԱՒ ԱՐԵԳԱԿՆ ՄԻՆՉԵՒ ԱՍՏԵՂՔ ԵՐԵՒԵՑԱՆ. ԵՒ ԷԱՌ ԹՈՒՐՔՆ ԶՍՈՒՐԲ ՔԱՂԱՔՆ ԵՐՈՒՍԱՂԷՄ. ՅԱՅՆՄ ԱՄԻ ՄԵՌԱՒ ՌՈՒԲԷՆ ՍՏԵՓԱՆԷԻ ՈՐԴԻՆ ԵՒ ՆՍՏԱՒ ՅԱԹՈՌ ՆՈՐԻՆ ԲԱՐԵՊԱՇՏՆ ԼԵՒՈՆ, ՈՒՆԵԼՈՎ ԶԿԻԼԻԿԻԱ ՏՈՐՈՍ ԼԵՐԱՄԲ ԵՒ ՍԵԱՒ ԼԵՐԱՄԲ ԾՈՎԵԶԵՐԲՆ ՄԻՆՉԵՒ ՅԱՏԱԼԻԱ. ԵՒ ՅԵՐԿՐՈՐԴ ԱՄԻ ՏԷՐՈՒԹԵԱՆ ԻՒՐՈՅ ՍԿՍԱՒ ՇԻՆԵԼ ԶԿԼԱՅՍ ՈՐ Է ՄԱՅՐ ՔԱՂԱՔԱՑՆ ԱՆԱՒԱՐԶԱ. ՃԵՂՔԵԱՅ ԽՍՏԱԳՈՅՆՍ ԵՐԿԱԹԵԱՒՔ ԶԱՊԱՌԱԺՍ ԵՒ ՀԱՍՏԱՀԻՄՆ ՄԵԾԱՄԵԾ ՎԻՄԱՒՔ ԿԱՆԳՆԵԱՅ ԶՊԱՐԻՍՊՍ ԵՒ ՀԱՍՏԱՏԵԱՅ ՏԱՐԲ ԵՐԿԱԹՈՎ ԵՒ ԿԱՊԱՐԱՒ. ԵՒ
Ի ՄԻ ԱՄԻ ԿԱՏԱՐԵՑԱՒ.

2. Արձանագիր ձեռակերտ տաճարին Թորոսի՝ որ Թէոդոս կոչէ զինքն, եթէ ուղիղ կարդացուեր է, մասամբ աւրուած է, նոյն և թուականն։

3. Ոչ միայն հիւրոց տեղ և պանդոկ՝ այլ և աղքատանոց և հիւանդանոց նշանակէ Հիւրանոցն։

զԿիլիկիա անուն լքեալ՝ Թորոսի Երկիր զաշխարհն
նորին վերաձայնէին։ Եւ նա բարիոք վարուք կեն-
ցաղավարեալ հանգեաւ ի Քրիստոս, և թաղեցաւ
ի սուրբ ուխտն Գրազարկն[1]. Թողեալ իւր որդի
մի, որ նենգեալ սպանմամբ յամպարշտաց ոմանց,
վասն որոյ ընկալաւ զիշխանութիւն մեծին Թորոսի
եղբայր նորին Լեւոն, որ և ծնեալ երիս որդիս,
զԹորոս, զՍտեփանէ, և ի հարճէ՝ զոմն Ռուբէն
անուն։

Այս Լեւոն տիրեալ Մամեստիոյ[2] և Տարսոնի
և ամենայն սոցին նահանգի, և աջակցեալ Ֆռան-
գաց ի գործ պատերազմի, քաջութեան անուն ըս-
տացաւ. և կացեալ յիշխանութեան կարողագոյն
կենօք և առաքինի վարուք. մինչև եկն թագա-
ւորն Յունաց Փեռփեռօժեն[3] ի Կիլիկիա, և պա-
տրանօք կոչեալ զԼեւոն՝ ըմբռնեաց ի կապանս,
երկու որդւովքն՝ Թորոսիւ և Ռուբենաւ, ոչ դի-
պեալ անդ Մլեհին և Ստեփանէի, զի կային յՌու-
հա առ կոմս նորին[4], որ էր քեռի ինքեանց։ Առեալ
Փերփերօժէն զԼեւոն որդւովքն՝ տարաւ ի Կոստան-
դինուպօլիս և արկ ի բանտ. յորում տեղոջ զՌու-
բէն՝ վասն անհնարին քաջութեանն կուրացուցին՝
կուրացեալ նախանձով ազգն Յունաց. և մեծն

1. Երկու երեք դար թէ իշխանազանց և թէ մեծ-
ատոհմեան եկեղեցականաց գերեզմանատեղի եղաւ,
իբրև Saint-Denis Բարիզու, այս Կիլիկիոյ ամենէն
նշանաւոր վանքն։ Անուանը նմանութեամբ Փռանկք
ժամանակին Trois-Arcs կոչած և թարգմանած են։

2. Հիներն կոչէին Մոպսուեստիա, ռամկօրէն կո-
չուի Միսիս։

3. Յովհաննէս Կոմնենոս Բ, զոր շատ հեղ մեր պատ-
միչք Կիռ Ժան անուանեն, իսկ Պերփերօժեն նշանակէ
Ծիրանածին, յորմէ և Հայք սովորեցան երբեմն նոյն-
պէս անուանել իրենց արքայազունքը։

4. Կոմսն էր՝ Baudouin de Bourg, ըստ Հայոց՝
Պաղտին Տ. Պօրկ, ըստ Մատթ. Ուռհայեցւոյ, որոյ
քրոջ անունն՝ կնոջ Լեւոնի՝ չէ յիշուած ի մերոց։

Լեւոն և որդի նորա Թորոս մնացին անդանօր ի բանտի. և իշխանութիւն Հայոց բարձաւ ի Կիլիկիոյ, տիրելով վերստին Յունաց։ Յետ ժամանակաց ինչ լինելոյ ի բանտի, ետես երազ որդի նորա Թորոս և պատմեաց հօր իւրում. թէ, Տեսի յանուրջս, զի այր ոմն տայր յիս նկանակ մի հացի և ձուկն ի վերայ, և ես առի, և քեզ ոչ ետու ի նմանէ. և հայրն խնդացեալ ելոյծ զտեսիլն որդւոյն. թէ, Ունիս վերստին տիրել Կիլիկիոյ, զոր նախնիքն մեր կալան քաջութեամբ. այլ և ընդարձակեսցես զտէրութիւն քո մինչեւ ի ծով, զոր ձուկն նշանակեաց, սակայն ես յայն ոչ ժամանեմ։ Որ և եղեւ իսկ, զի մեռաւ մեծն Լեւոն ի Կոստանդնուպօլիսն։

Եւ մեծն Թորոս գտեալ օգնութիւն յԱստուծոյ, և ի դիպող ժամու վերստին եկն ի Կիլիկիա. և ձեռնտուութեամբ լեռնակողմանց Տօրոսի ազինս Հայոց, որ մնացեալ էին անդանօր, տիրեաց նախ Վահկային և ամենայն փռիւգիոյ. և յետ սակաւուց Անարզաբայ և ամենայն դաշտակողմանն։ Զորոյ գյեղանակ գալստեանն ի Կոստանդնուպօլսէ և ըզտիրելոյն Կիլիկեայ՝ այլ և այլ օրինակաւ պատմեն գիրք. բայց որպէս և է, գթութեամբն Աստուծոյ և օգնականութեամբն ազատեալ ի բանտէ, վերըստին տիրեաց իշխանութեան նախնեաց իւրոց, զոր յափշտակեալ էր Յունաց. և եւս ընդարձակեալ զբազուկ տէրութեան իւրոյ՝ գնաց ի Մամռեստիա և առ զնա։ Եւ մինչ կայր նա յանհոգս՝ տունկն[1] յունական ազգին, որ էր ի կայսերէ կարգեալ, ժողովեալ զզօրս իւր եւս և զՀայկազունսն, զՆաթանէլեանս[2] զտեարսն Անկուրասայ[3], և զՀեթումն տէր

1. Այսինքն Դուքսն։

2. Մի ի գլխաւոր բերդորէից Լեռնային Կիլիկիոյ, զոր Նաթանայէլեան կոչուած տոհմ մի Հայոց՝ Հեթմեանց հետ յարեւելից եկած՝ ընդունեցաւ ի Յունաց։

3. Վենետիկեցի հին ճամբորդ մի Assers գրած է այդ անունը։

Լամբրոնեցին. որք և նոքա յարեւելից ի սրոյն Իսմայելացւոց խոյս տուեալ եկին և կալան զկողմանս նախատացեալ, և մտին ընդ հնազանդութեամբ կայսերն Յունաց. վասն որոյ և ընդ նոցին զօրաց և զօրապետի եկին ի վերայ Թորոսի ի Մամեստիա. և նա յարուցեալ սակաւուք արամբք անզէն և անպատրաստ ի վերայ անկաւ բիւրական զօրացն յեղակարծ ժամու. զՅոյնսն եսպան և ըզՀայկազունսն ձերբակալ արարեալ կալաւ, և յետոյ արձակեաց: Եւ այսպէս քաջացեալ էառ զՏարսոն, և զյոլով մասն Սավռիոյ[1]: Զորոյ քաջութեան համբաւ լուեալ կայսրն Էմմանուէլ որդին Փեռփեւոժէնին, մրմռեալ իբրեւ զառիւծ՝ եկն զօրօք բազմօք ի Կիլիկիա՝ ըմբռնել զԹորոս. և պաշարեալ զնա ի դղեակն Բարձրբերդ կոչեցեալ: Յարձակեալ ապա քաջն Թորոս ի վերայ ժողովոյն Յունաց, զբազումս եսպան, և զյոլով սեւաստիանոսս գերի տարեալ ի դղեակն, վաճառեաց ընդ ոսկւոյ՝ կայսերն Էմմանուէլի, և զգանձն բաշխեաց իւրոց հետեւակաց զօրուն: Ընդ որոյ քաջութիւնն և առատամտութիւնն զարմացեալ՝ կոչեաց զնա իւր յորդեգրութիւն, և ետ զԿիլիկիա ձեռնագրով և ոսկի վուլով[2] Թորոսի, և այլ գանձս բազումս, և ինքն գնաց ի Կոստանդնուպօլիս: Եւ վերստին լուեալ զհամբաւ բարութեան և զքաջութեան մեծին Թորոսի՝ կայսրն Էմմանուէլ, և ոչ կարացեալ տանել նախանձու, սկսաւ կաշառօք գրգռել զԽլիճ-Ասլան սուլտանն Իկոնիոյ՝ ի վերայ Թորոսի. որ և եկեալ բազում զօրօք ի Կիլիկիա՝ պաշարեաց զԹիլն[3] աւան, և ի Տեառնէ պատուհասեալ ախ-

1. Իսաւրիա, Փոքր Ասիոյ աշխարհաց մէկն, Կիլիկիոյ արեւմտեան հիւսիսակողմն:

2. Ոսկի կնքով հրովարտակ, Bulle.

3. Երբեմն Թիլն աւան կոչուի, երբեմն Թիլ Համտունոյ, ըստ Արաբաց Թիլ–Համտունն, Կիլիկիոյ արեւելեան կողմն, Ատոնւոց սահմանակից:

տիւ և ցաւօք, զորոց զերիվարսն շանաճանճ սպառեաց: Այլ և մեծն Թորոս ապստամբեալ զաշխարհն Իկոնիոյ աւերեաց, և զառ և զաւար էած ի Կիլիկիա. վասն որոյ՝ յայնմանէ Խլիճ–Ասլան և ի հարուածոցն Աստուծոյ նեղեալ, և այլ ոչ հրապուրեցաւ ի բանսն Էմմանուէլի:

Բայց իբրև եկն Թորոս ի Կոստանդնուպօլսէ ի Կիլիկիա, լուեալ եղբօր նորա Ստեփանէի՝ եկն առ նա, բայց Մլեհն մնաց առ Նուրատինն սուլտանն Հալպայ. և Ստեփանէ ձեռնտուութեամբ եղբօր իւրոյ գնաց ի Սեաւ լեառն՝[1] և տիրեաց ամենայն կողմանցն այնոցիկ. այլ և կալաւ զԳերմանիկէ[2] և զՊեհեսնի. և դաւեալ ի Յունացն՝ սպանաւ յեռանդական կատսայի, և թաղեցաւ ի սուրբ ուխտն յԱրքայկաղնին[3]. Թողեալ իւր երկու որդի, զՌուբէն և զԼեւոն, որ և յետոյ թագաւորեաց:

Այլ մեծն Թորոս տիրեալ քաջութեամբ Կիլիկիոյ և Սաւրիոյ, վարէր զիշխանութիւնն ըստ հաճոյից Աստուծոյ. զի էր այր բարեպաշտ և ողորմած, մեծախորհուրդ և առատամիտ, վարժեալ հին և նոր օրինօք Աստուծոյ, տեղեակ գոլով և ամենայն իմաստասիրական արհեստից. զորմէ ասեն հոգի մարգարէութեան ունել, որ և զբազում դժուարալոյծ բանս մեկնեալ, զոր գտանի այժմ առ մեզ[4]: Կեցեալ սա այսպիսի բարեզարդ կենօք, փոխեցաւ յաշխարհն կենդանեաց. և հանգուցեալ եդաւ ի դամբարանի, ի հռչակաւոր անապատն սուրբ՝ ի Դրազարկն. և զերկիր իշխանութեան իւրոյ և զմատաղ որդին իւր վստահացաւ յանձրն

1. Միջերկրական ծովու մօտ Տօրոս լերանց մասն:
2. Որ է Մարաշ քաղաք՝ իր գաւառովը:
3. Մի ի մեծագոյն և եպիսկոպոսանիստ վանաց Կիլիկիոյ:
4. Ափսոս որ մեզի չեն հասած:

իւր Թոռմաս անուն իշխան մեծ, զոր և Պայլ[1] իսկ եդ Հայոց յետ իւր։

Այլ Մլեհն լուեալ զմահ եղբօր իւրոյ զմեծին Թորոսի, էառ զօր բազում ի Նուրատին սուլտանէն, և եկն առնուլ զտէրութիւնն ի վերայ Հայոց. և բազում չար հասուցեալ աշխարհիս Կիլիկեցւոց, յորմէ նեղեալք բնակիչք և իշխանք աշխարհիս, կամօք ձեռնտու եղեն նմա տիրել ի վերայ ինքեանց։ Ուստի ընդ գալն նորա՝ Թումասն փախչէր յԱնտիոք՝ ուստի և եկեալն իսկ էր. և զորդի Թորոսին ամպարիշտք ոմանք կալեալ սպանին։ Եւ Մլեհն տիրեաց որոց ցանկայր անձն նորա. սակայն վասն խստասրտութեանն ոչ կարացեալ յերկարել, վաղվաղակի սպանաւ ի զօրաց իւրոց, ի քաղաքն Սիս[2], և թաղեցաւ ի վանքն Մեծ-Քար կոչեցեալ, զոր իւր իսկ շինեալ էր։ Եւ զօրք աշխարհին առաքեալ բերին զորդիսն Ստեփանէի, որ սնանէին առ քեռին իւրեանց Բակուրան՝ ի Տարսոն, և կացուցին իշխան և պարոն՝ զՌուբէն զորդի Ստեփանէի. որ եղեւ այր աշխարհաշէն առատամիտ և բարեգործ, որոյ ել համբաւ նորա ընդ ամենայն աշխարհ. վասն որոյ Հռովմայեցիքն զնա պատուեալ՝ յազգէ թագաւորութեանն կին ետուն նմա[3], յորմէ ծնաւ երկուս դստերս։ Սակայն ի տերանց Լամբրունի եղեւ դաւ նմա, զի ողարել[4]

1. Խնամակալքն տղահասակ ժառանգաց տէրութեան՝ այսպէս կոչուէին լատին կամ փռանկ բառիւ։
2. Առաջին անգամ յիշուի քաղաքս ի պատմութեան Ռուբինեանց, որոց յետոյ եղաւ մայրաքաղաք հռչակաւոր. և մօտիկ Մեծքար վանքն այլ՝ աթոռ եպիսկոպոսի. քարածայրից մէջ շինուած ըլլալով՝ ժամանակակից Լատինք այլ խորափոր քար կոչած են զայն, Petra concava.
3. Զապել, Isabelle, դուստր Հըմֆըրի՝ Humfery, տիրոջ Քարաքի, որ է գաւառ և քաղաք Ասորւոց ծովեզերքը, մօտ յԵգիպտոս։
4. Թուրք բառ. պաշարել նշանակէ։

էր Ռուբէն զԼամբրուն, և նոքա նեղեալ յղեցին առ բրինձն Անտիոքու, զի եւս հնարեսցէ իրացն. իսկ բրինձն խաբանօք ի ճաշ կոչեալ զՌուբէն՝ արգել զնա յԱնտիոք, վստահանալով՝ թէ կարասցէ այնու զԿիլիկիա առնուլ։ Այլ Ռուբէն յղեաց առ եղբայր իւր Լեւոն՝ նստել յաթոռ պարոնութեան և պահել զերկիրն, և պնդել զաղար բերդին Լամբրունի. և Լեւոն և իշխանքն այսպէս արարին։ Իսկ բրինձն իբրև ետես եթէ ոչինչ շահի այնու, ապա անկաւ ի բանս վաճառելոյ. զոր հաւանեալ Պարոն Լեւոն և իշխանքն՝ ետուն գանձ և երկիր, և թափեցին զՌուբէն. որ եկեալ և վերստին յինքն առեալ զպարոնութիւնն, կեցեալ աւուրս ինչ բարիոք կենօք, և ի վախճան մահու հասեալ՝ խրատեաց զեղբայրն իւր բազում իմաստութեամբ և բարութեան խրատով. թողեալ ի նա զիշխանութիւնն և զդստերս իւր, ինքն հանգեաւ ի Քրիստոս, և կրօնաւորեալ թաղեցաւ ի Դրազարկն։

---

## ՄՀԲ

### ԳՐԻԳՈՐ (Բ) ԿԱԹՈՂԻԿՈՍ ՎԿԱՅԱՍԷՐ (ՄԵԾ)[1]

Սնեալ և վարժեալ ի մանկական տիոց ուսմամբ աստուածային գրոց և զարդարեալ ամենայն բարութեամբ. որոյ հասեալ ի հայրենին իշխանութեան աստիճան՝[2] գեղեցիկ և պարկեշտ քաղաքա-

1. Իր եղբօրորդին և յաջորդն եւս Վկայից վարքեր հաւաքել տալով՝ իրմէ որոշուելու համար Փոքր Վկայասէր կոչուած է։ Հեղինակ բանից է գրող վարուց Ներս. Շնորհալւոյ (տես Ցուցուած 287). որ գրեթէ այս Սրբոյս Վիպասանութեամբ ոտանաւոր գրածը՝ արձակ փոխեր է։

2. Իբրև անդրանիկ որդի Գր. Մագիստրոսի՝ ժա-

վարութեամբ զարդարէր զանձն։ Ապա զմտաւ ածէր զտէրականն հրաման որ ասէ, թէ, «Որ ոչ առնու զխաչ իւր և ուրասցի զանձն և եկեսցէ զկնի իմ, ոչ կարէ իմ աշակերտ լինել»։ և վաղվաղակի ի բաց մերկանայր զաշխարհական ձեւ, և լուծանէր զիշխանականն կամար, և հրաժարեալ յիւրայոցն՝ հետեւէր ի միայնաստանս, զգեցեալ զխոնարհութիւն. և հնազանդեալ անզբաղական կենաց՝ ճգնէր պահօք ի տուէ և ի գիշերի. հանգոյն մեծին Յովհաննու, և աստուածաշունչ տառից միշտ ընթերցմամբ՝ կերակրէր զբանական հոգին։ Այլ քանզի ոչ կարէ քաղաք թաքչել՝ որ ի վերայ լերին շինեալ իցէ. ընդ այն ժամանակս բարձեալ լինէին հովուապետքն Հայոց՝ յաշխարհէ, և պակասեալ տունն Տեառն Պետրոսի[1] յարժանաւոր ժառանգաւորէ՝ որպէս ծերացեալն Հեղեայ, և մնայր տունս Թորգոմեան զեւթն ամ առանց հայրապետի։ Քանզի աշխարհս՝ ընդ այն ժամանակս անկեալ էր ի ձեռս այլազգեաց, և աթոռ կաթողիկոսութեանն վտարեալ ի Սեբաստիա, և այն ընդ իշխանութեամբ Հոռոմոց. և վասն այնորիկ թագաւորք Յունաց ոչ տային թոյլ դնել զոք կաթողիկոս, սակս անառաջնորդ մնալոյ ազգիս մերոյ, և այնր աղագաւ յինքեանս դառնալոյ։ Յայնժամ արքայն Հայոց Գագիկ[2] մեծաւ ջանիւ և բազում աշխատութեամբ զուն գործեալ՝ առաքէր առ թագաւորն Յունաց մեծաւ ծախիւք. և զամուրն զԿարս այսմ խնդրելոյ փոխանակեալ՝ տայր ի ձեռս Հոռոմոց, և առնոյր հրաման ի թագաւորէն՝ ոսկի մատանեաւ կնքեալ, նստուցանել զո և կամեսցին յաթոռ հայրապետութեանն Հայոց։ Ապա թագաւորն Հայոց Գագիկ ժողովէր զհարս Հայոց առ

ռանգ էր իր հօր մեծագոյն պատուոյ սատրճանի և ընչից։

1. Գետադարձի, որ վախճանեցաւ ի 1058։

2. Թագազուրկ թագաւորն Վանանդայ կամ Կարսի։

հաստատակ. և միաբան համակամութեամբ գտեալ զարժանաւոր խնդրոյն, որպէս ի վերուստ ակնարկութեամբ Հոգւոյն Սրբոյ յայտնեալ զգանձն ծածկեալ յագարակի, և ամենեցուն համաձայնութեամբ յառաջ կոչեն զվանիրամ որդի Գրիգորի մագիստրոսի՝ զորմէ վերագոյն ասացաք. որոյ ծանուցեալ՝ հրաժարէր ի պատուոյն, անարժան վարկանելով զինքն մեծի կոչմանն, և Աստուծոյ և մարդկան միջնորդ լինելոյն: Որոց ամենեցուն բանադատեալ՝ կոչեն զնա յանուն նախնոյն իւրոյ Սրբոյն Գրիգորի՝ Գրիգորիս. և արժանաւոր ձեռնադրութեամբ և հոգեւոր օծմամբ նստուցանեն յաթոռ կաթողիկոսութեան Հայոց և Թորգոմայ: Որ Վիմին հաւատոյ և Անօթոյն ընտրութեան[1] համեմատ՝ հաստատեաց զհիմունս եկեղեցւոյ Հայաստանեայց, և վերստին լուսազարդեալ պայծառացոյց համանման Սուրբ Լուսաւորչին և Սրբոց Թարգմանչացն՝ Սահակայ և Մեսրովբայ: Քանզի ունէր շնորհս թարգմանութեան, և միշտ քննէր զգիրս ամենայն ազգաց, և զպիտանիսն՝ զոր ըստ մերս թերի գտանէր՝ թարգմանէր աշխատասիրաբար, ինքեամբ և այլովք ումամբք ճարտարաց, և աւանդէր եկեղեցւոյ սրբոյ: Կարգէր տօնս վկայից և արանց սրբոց, և պատուէր զնոսա՝ պայծառագոյն տօնախմբութեամբ, և նորագոյն թարգմանեալ ճառիւք: Եւ ինքն վառեալ ի հուր սիրոյ նոցին՝ խառնէր զբուրն մշտավառ արտասուս՝ ընդ սուրբ և պատուական արիւնս նոցա. որ և ըստ ջերմեռանդն սիրոյն զոր ունէր առ սուրբ վկայսն՝ զՎկայասէր անուն ընկալաւ. զոր միշտ վերագոչէ եկեղեցի յամենեցուն յսելիս՝ զպարծանաց յորջորջումն: Հովուէր զհօտս յանձն արարեալս նմա ի Տեառնէ՝ ըստ օրինի քաջ հովուապետին, և տածէր զամենեսեան ի վայրս դալար և ի ջուրս հանգստեան, յաստուածային պատուիրանացն պահպանութիւն. տքնէր

1. Պետրոսի և Պօղոսի Առաքելոց:

տուածազգեաց Հայրապետ՝ զարդարեալ շնորհօք և իմաստութեամբ Հոգւոյն Սրբոյ, մեծաւ պատուով ընկալան զնա. մանաւանդ յորժամ խօսեցան ընդ միմեանս ի հարց և ի փորձ բանի, ըստ օրինի իմաստնոց, և գտին զնա անթերի լրմամբ լցեալ ի շնորհաց Հոգւոյն Սրբոյ. քանզի քաջ տեղեակ էր յունական լեզուին և դպրութեանն, և յիրս և ի բանս ըստ ամենայնի վարժ և կիրթ. ի հարցուածսն խոհեմ, ի պատասխանիսն՝ զգօն և հանդարտ. գեղ երեսացն բարետեսիլ և հեզահայեաց. և բանք աստուածաներկ լեզուին՝ համեստ և քաղցրագոյն. յորս կապեցան սիրով Թագաւորն և բովանդակ իմաստնոցն ժողով: Յայնժամ սուրբն Աստուծոյ ըստ խորագէտ իմաստութեանն իւրոյ՝ խնդրէր ի Թագաւորէն և ի պատրիարքէն դադարել ժամանակս ինչ առ նոսա և ընթեռնուլ զմատեանս նոցա և օգտել: Յօժարեալ կարգեցին ամենեցուն որոց ընդ նմա՝ կերակուրս և ռոճիկս յարքունուստ, և հրամայեցին անխնայ տալ զմատեանսն ամենայն՝ նմա: Որոյ դադարեալ անդ բազում ժամանակս և առեալ Թարգմանէր զՎարս սուրբ հարց և զՊատմութիւնս վկայից, և զմատեանս ուղղափառ վարդապետաց, և զճառս ներբողենից որ ի տօնս տէրունիս և յիշատակս Սրբոց. և տայր ցայնոսիկ որ ընդ նմայն էին՝ արք ճարտարք և իմաստունք՝ յարագագիր գրչութիւն և ի գիտութիւն բանի. զոր առեալ վաղվաղակի փոխարկէին, սրբաբանեալ ըստ մերումս բայի՝ զորկս ամենեւին և քերեալս ըստ քերթողացն արհեստի:

## ՄՀԳ

### ՆՈՅՆ ԲԱՆ ԸՍՏ ՄԱՏԹ. ՈՒՌՀԱՅԵՑՒՈՅ. (ՇԾԴ)

Ի Թուականութեանս Հայոց ՇԾԴ (554=1105-6) լինէր փոխումն սուրբ հայրապետին Տէր Գրիգորիսի, համանուն Տէր Վահրամին[1] որդի Գրիգորոյ (Մագիստրոսի) որդւոյ Վասակայ, ի Պահլաւունի ազգէ։ Ցայսմ ամի եղեւ անկեալ սիւնն հաւատոյ Հայաստանեայց և պարիսպ սրբոյ եկեղեցւոյ տանն Արեւելից. վասն զի սա եղեւ սքանչելագործ ի մէջ Հայաստանեայց, և պայծառ առաքինութեամբ կայր յամենայն ճգնողական վարս. և էր ժուժկալ պահօք և աղօթիւք. և կայր ի պաշտօնն Աստուծոյ անդադար սաղմոսերգութեամբ։ Սա նորոգեաց զկարգ հաւատոց Հայաստանեայց. և անհանգիստ թարգմանութեան էր պարապեալ. և զամենայն պակասութիւն կտակարանացն Աստուծոյ առ մեզ՝ կարգաւ կատարեալ զարդարեաց ի Յունաց և յԱսորւոց թարգմանութենէ. հոգատարեալ, և անդադար խորհրդով և ամենայն պայծառութեամբ Սուրբ Գրոց ելից զեկեղեցի Հայաստանեայցս։ Եւ էր ինքն հեզ բարուք և խոնարհ սրտիւ. և ի վերայ այսր ամենայնի էր յոյժ աստուածասէր և պատուիրանապահ. և յամենայն կողմանց կարող էր օգնել հօտին Քրիստոսի. վասն զի էր ի բնէ ի բուն[2] կորովի գրոց շնորհաց։ Եւ էր սա նմանեալ առաջին իմաստնոց Հայոց, Մովսիսի ունիմ ասել և Դաւթի[3]. վասն զի ունէր զլուխ աթենացի[4], և լեզու հրեղէն ներկեալ, և

1. Համանուանաբար և Գրիգոր և Վահրամ կոչուէր։
2. Պարզապէս կ՚ըսուի Բանիբուն։
3. Մովսէս Խորենացի, Դաւիթ Անյաղթ։
4. Գեղեցիկ բացատրութիւն, նոյնպէս և հետեւեալ

դիւրաւ առնայր զծածկոց՝ յիրեսաց հին և Նոր կտակարանացն Աստուծոյ, և բանայր զդուռն աստուածաբուղխ աղբիւրացն, և զհոսումն Սրբոյ Հոգւոյն զեղոյր ի լսելիս հաւատացեալ ժողովրդոցն։ Սա եղև օրինակ դասուց կրօնաւորաց. ամենայն քաջակիրթ առաքինութեամբ յառաջացեալ էր։

Եւ կացեալ սորա յաթոռ հայրապետութեան ամս քառասուն. և ի ժամանակի մահուանն հանդիպեցաւ առ մեծ իշխանին Հայոց՝ որ ասի Գող Վասիլ, որ էր այր հզօր և պատերազմող. վասն զի առ սա եղև ժողովեալ մնացեալ գունդն Հայոց։... Եւ եղև ի սոյն ամի, յառաջին շաբաթն ամառան աղուհացիցն[1] յաւուր շաբաթու փոխեցաւ սուրբ հայրապետն Տէր Գրիգորէս՝ և թաղեցաւ մեծաւ հանդիսիւ ի Կարմիր վանքն՝ մերձ ի Քեսուն. և Տէր Ստեփաննոս հայր վանացն արար ժողով ի վերայ գերեզմանին Նորա՝ կրօնաւորաց և քահանայից, և հայրապետական պատուով յուղարկեաց զնա ընդ սուրբսն։ Եւ իշխանն Հայոց Վասիլ և այլ ազատագունդք ի Հայոց՝ արարին կոծ մեծ ի վերայ Նորին. և դառնակոծ արտասուօք լացին առհասարակ ի վերայ Նորա. վասն զի զրկեալ եղեն յայնպիսի սուրբ հայրապետէն. և Նովաւ յիշեալ լացին տունն Հայոց, և լային զանտիրանալն իւրեանց յօտար աշխարհն և զելանել ի հայրենի տանէն իւրեանց։

ըստուածն՝ Սուրբ գրոց քօղը վերցընելը, որ է բանալ մեկնել զՍուրբ գիրքը։

1. Վկայաբերին մահուան տարին 1105՝ ըստ Հայոց տօմարի կու սկսի ի 23 փետրուարի, որով մահն այս մայիսի վերջերը կամ ի սկիզբն յունիսի. ամռան աղուհացն այս՝ կրնար յարմարիլ Վարդավառի պահոց։

# ՄՀԳ

## ԳՐ. ՎԿԱՅԱՍԷՐ ԵՒ ՔԵՌՈՐԴԻ ԻՒՐ ՅԵԳԻՊՏՈՍ

Խորհուրդ զմտաւ ածեալ (Գրիգորի Վկայասիրի), պատրաստէր զոր ընդ նմայն էին ազգայինքն իւր և ընտրելոց արանց ժողով, և զորդի քեռն իւր զարդարեալն երկոքումք գեղեցկութեամբ՝ ըստ մարմնոյ քաջագեղութեան և ըստ հոգւոյ պարկեշտութեան և սրբութեան, զարքեպիսկոպոսն զՏէր Գրիգորիոս, հանդերձ ամենայն կահիւն իւրեանց, մտանել ի Նաւ, և յառաջագոյն անցանել զսահմանս Պաղեստինացւոց. և ինքն զկնի սակաւ աւուրց առեալ հրաման յարքայէ[1], և ողջունիւ բաժանեալ յամենեցունց, զի թեթեւակի բացանաւեալ հասցէ նոցունց։ Որոց մտեալ ի նաւ, հընչեալ ուժգին հողմոյ՝ վարէր բռնութեամբ զնաւն, ձգէր յԵգիպտոս։ Եւ քանզի աշխարհն Եգիպտացւոց ընդ իշխանութեամբ Արաբացւոց էր, երկեան երկիւղ մեծ, և ակն ունէին վարիլ յաւար և ի գերութիւն։ Յայնժամ խորհուրդ իմաստութեան զմտաւ ածէր Տէրն Գրիգորիոս, և զգենոյր զեկեղեցական զգեստն իւր և զգեցուցանէր զարսն եկեղեցականս՝ իւրեանց զգեստուք. զարդարեցան և աշխարհայինք իւրեանց ոսկիակուռ պատմուճանօք, զորս ընկալեալ էին պարգեւ ի Թագաւորէն Յունաց. և ամենեքեան պաճուճեալք նստան, մեծամեծքն ըստ իւրաքանչիւր աստիճանի, և փոքունքն կանգնեցան ի սպասու առաջի։

Իսկ որպէս սովորութիւն էր՝ առաքեաց կարգեալ իշխան տեղւոյն տեսանել և իմանալ թէ զինչ իցէ որ կայ ի Նաւին, կամ ուստի իցեն եկեալ. գնացին առաքեալքն և տեսին արս պատուականս

1. Ի կայսերէն Յունաց ի Կ. Պոլիս՝ ուր գնացեր էր։

և գեղեցկատեսիլս, զարդարեալս պէսպէս զգեստուք. և հիացան ընդ սքանչելատեսիլն տեսիլ, ափ ի բերան եղեալ դարձան առ իշխանն և պատմեցին նմա։ Յայնժամ իշխանն յարուցեալ գայր առ նոսա յողջոյն, պատուով և հնազանդութեամբ, և հարցանէր հեզութեամբ, թէ ո ոք իցեն. և տուեալ պատասխանի, եթէ ազգականք և սպասաւորք կաթողիկոսին Հայոց եմք, և առաքեաց զմեզ յառաջագոյն, զի և ինքն եկեսցէ, որպէս զի տեսցուք զսուրբ լեառնն Սինա, և զմիայնարանս նախնի Սրբոցն որ աստ, և երկիր պագեալ դարձցուք յաշխարհ մեր։ Ապա ընկալեալ իշխանն ըզնոսա պատուով և հանգուցանէր մարդասիրաբար, և առաքէր վաղվաղակի ազդ առնէր ամիրապետին իւրեանց՝ մեծ խալիֆային, որ էր յառաջնորդական աթոռ ազգին իւրեանց. որ էր այր բարի և իմաստուն, առատաձեռն ի պարգեւս, քաղցր և ողորմած առ ամենեսեան։ Որ իբրեւ ծանեաւ՝ յոյժ ուրախ եղեւ, և փութանակի առաքեաց ածել ըզնոսա առ ինքն մեծաւ պատուով։ Զոր տեսեալ՝ համբուրէր ըղձական սիրով, և տեղեկացեալ հարցմամբ ի նոցանէ զպատճառս գալստեանն՝ ուրախ լինէր. մանաւանդ յորժամ ծանեաւ թէ սուրբ հայրապետն գալոց էր անդրէն. և հրամայեաց հանգուցանել զնոսա ի պատշաճաւոր տեղւոջ, և տալ զպէտս նոցա առատապէս։ Իսկ արքեպիսկոպոսն Տէր Գրիգորիս վաղվաղակի առաքէր առ սուրբ հայրապետն և ծանուցանէր նմա զիւրեանցն պատահումն, և հայցէր փութապէս հասանել առ նոսա։ Եւ լուեալ սրբոյն Աստուծոյ զայսոսիկ. վաղվաղակի մտեալ ի նաւ՝ անդր հասանէր. և բարեբարոյ խալիֆայն ամենայն մեծամեծօք իւրօք ելանէր ընդ առաջ նորա, և առեալ զսուրբ ձեռսն համբուրէր. և դնէր ի վերայ աչաց և երեսաց իւրոց, և տայր մեծաւ գոհութեամբ օրհնութիւն Աստուծոյ, որ այնպիսի մեծի փարթամութեան արժանի արար զինքն. և հրամայէր պատրաստել նմա

իշխանս պատուականս, և հանգուցանէր զնոսա որպէս արժանն էր. և կարգէր նոցա սպասաւորս, պատրաստական առնել զամենայն պէտս նոցա մեծամեծս և առատատուր պարգեւօք. և լցոյց զնոսա ի մեծամեծաց մինչեւ ի փոքունս՝ օժտապարգեւ ընծայիւք, ոսկւով արաբացւով և այլովք պատուականօք, զոր աշխարհն այն մատուցանէր տիեզերաց:

Ապա յետ բազում աւուրց տեսանելոյ զմիմեանս և յոգնակի խօսակցութեան, խնդրէր Հայրապետն հրաման դառնալոյ յաշխարհն իւր. իսկ նա ոչ առնոյր յանձն իւր ամենեւիմբ, թէպէտ սուրբ Հայրապետն պատճառէր և դնէր առաջի զերկիւղն Աստուծոյ, յաղագս բազում ժամանակաց անտէրունչ թողլոյ զժողովուրդն իւր. ասէր. Յայսպիսի մեծագոյն պարգեւէ առաքելոյ ինձ յԱստուծոյ՝ ոչ երբէք զրկեալ աղքատացայց. դնէր և այլ պատճառս բանի յաղագս ոչ լինելոյ անդ յազգէս Հայոց՝ ունայն զհովուեղն իւր: Իսկ նա բառնայր ըզպատճառանս և երդմամբ հաստատէր լնուլ զաշխարհն՝ Հայաստանեայց ազգօք, զոր և արար իսկ, և բազմացոյց անդ բազմութիւն յոյժ իբր տասն հազարաց. և ի նոցանէ բազում իշխանս և հեծելազօրս պատուեալս: Եւ տեսեալ սրբոյ Հայրապետին զջերմեռանդն և զգորովալիր սէր նորա, թողոյր փոխանակ իւր անդր զորդի քեռն իւր, և ձեռնադրէր զնա կաթողիկոս[1] Եգիպտոսի. և այսու հաւանեցուցանէր զբարեբարոյ խալիֆայն՝ թողուլ զնա՛ ելանել յաշխարհէն իւրոյ: Այլ մեզ ոչ է ժամանակ պատմել զբարէկրթութիւնս ի նմանէ եղեալս առ նորակերտ Հայրապետն և առ ժողովուրդն իւր. քանզի նախկի յայլոց ճառեցաւ մանրապատում երկարագոյն ճառագրութեամբ:

1. Թէ արդարեւ այդ գերագոյն կոչումը տուած է, կընայ տարակուսուիլ:

# ՄՀԵ

## ՏՕՆԱՆԱՄԱԿ ԳՐԻԳՈՐԻ (Բ) ՎԿԱՅԱՍԻՐԻ[1]

Այս է յիշատակարան տօնից տէրունականաց և Սրբոց Աստուծոյ. ցուցմամբ աւուրց հոռոմի աւուրց՝ ըստ իւրաքանչիւր Սրբոց հանդիպմամբ չարչարանաց կատարման, և կամ ըստ խաղաղական ելից հանգմանն[2] մարտիրոսաց և հայրապետաց սրբոց, որք հաճոյացան Աստուծոյ՝ նեղ և անձուկ ճանապարհաւն Յիսուսի:

Զոր ես Գրիգորիս ծառայ Աստուծոյ և դիտապետ Հայաստան ազգիս, համարձակեալ վասն սիրոյ վկայից Քրիստոսի, յաւելի ի Նախակարգեալ տօնսն հոռոմի ամսոց՝ ընտրեալ ի Տօնամակաց յոգունց զատկաւս, որ ի բազմաց անփոյթ էր լեալ: Եւ մեք աշխատեալ զայսպիսի համառօտահաւաք Տօնամակս՝ գրեցաք ի պայծառութիւն եկեղեցւոյ. զոր ցանկ ընթերցցի ամենայն ժամու սոսկալի պատարագին, զոր մի՛ ոք աւելորդ վարկցի. զորոց ըգվարս քաղաքավարական պատմութեանց՝ զոր ոչ գոյր առ մեզ հայ գրով, մեք աշխատութեամբ թարգմանեցաք ի յունականէն ի մերս գիր և բառ: Վասն որոյ աղաչեմ սրբովք վկայիւքս զամենեսեան

1. Գրիգոր Բ մեծ ջանքով փնտռեց և փնտռել տուաւ Սրբոց և մանաւանդ Մարտիրոսաց վարքեր, թարգմանեց կամ թարգմանել տուաւ. այն պատճառաւ կոչուեցաւ Վկայասէր. անոնց հանգստեան կամ նահատակութեան օրերուն յարմար դասաւորած գիրքն այլ կոչուեցաւ Տօնամանակ կամ համառօտեալ Տօնամանակ. իրմէ առաջ այլ կար այսպիսի հաւաքումն. բայց քիչ էին վկայաբանութիւնքն:

2. Այսինքն՝ ըստ աւուրց ամսոյ անոնց հանգըստեան, մահուան:

առհասարակ՝ մի՛ անփոյթ առնել զմեր աղէտանչ երկս աշխատութեան, այլ ընդօրինակել գաղափարաւ և գրելով՝ պահել յամենայն սուրբ եկեղեցիս. և անխափան առանց յերկուանալոյ կատարել ըղկանոն ընթերցուածիս ի տօնի յիշատակի Սրբոցն։ Եւ որ ոք գրէ զգիրս զայս՝ աղաչեմ գրել ի գլուխս գրոցն և զդոյզն բան յիշատակի մերոյ. և աղօթիւք յիշել ի Քրիստոս՝ զարարող գրոցս, և զԳրիգորիս[1] համանուն և համազգի իմ, որ և գրիչ և յօրինիչ գրոցս, յիշեսջիք ի Քրիստոս. և որք յիշէքդ յիշեալ լիջիք օրհնութեամբ ի Տէր։ Յիշեա Տէր և ողորմեա։

Ես կիրակոս տրուպ Գիտնական և անարժան ծառայ Աստուծոյ, ծանուցանեմ ձեզ վասն սուրբ կտակիս Տօնամակի եկեղեցւոյ սրբոյ և աստուածայնոյ յիշատակի։ Որպէս գիտէք՝ ի սկզբանէ հաւատոց մերոց, մեր ուղղադաւան ազգիս արամեան որդիացեալք՝ աշակերտութեամբ Սրբոյն Գրիգորի աստուածանման Լուսաւորչին մերոյ, համօրէն ամենայն Սրբովք՝ որ եղեն յազգս մեր հաճոյ Աստուծոյ, զայս գրոյ եկեղեցւոյ անփոյթ արարին՝ վասն ժամանակին. և մեծ և աստուածային տօնքն Խաչի կամ Աստուածածնի, վկայիցն և սուրբ հայրապետացն, հարցն ճգնաւորացն և կուսանաց վկայիցն, անփառաւոր և անկատար և անյարմար լինէր՝ առանց այս գրոց։ Ապա Հոգին Սուրբ ազդեաց սուրբ հայրապետին Գրիգորիսի աստուածասիրի և վկայասիրի, և նոր սկսեալ յօրինեաց զսա՝ ըստ ամենայն տօնից արժանապէս, ի դէպ սաղմոսիւք և ընթեր-

1. Գրիգոր Մագիստրոսի որդւոց և թոռանց շատոն՝ երեք չորս ազգ՝ Գրիգոր կոչուած են, և մի քանին կաթողիկոս եղած են, նոյն անուամբ, Բ, Գ, Դ, Ե. անոնցմէ զատ եպիսկոպոսք և այլք, որոց մէկն է աշխատակից մեծ Վկայասիրին և գիրքը կարգաւորողն, գուցէ իր քեռորդին, յիշեալ ի 274 Ցօղուածի։

ցուածովք աստուածախօսիւք. բայց ոչ ի գլուխ աւարտեաց զամենայն՝ զոր պարտ և արժան էր տօնելոյ: Ապա ինձ որ միշտ ընդ նմա էի՝ յամենայն իրս աստուածայինս կցորդ և յորդորիչ և փոյթ յաջխատութիւնս հոգևորաց և Աստուծոյ սիրելեաց, հոգ եդ ի վախճանելն իւրում, մի անփոյթ առնել զամանէ, այլ յանկել՝ [1] ընթերցուածովք ըստ արժանին, զոր և արարի: Զի հարկ եղեալ է ի (վերայ) մեր Աստուծոյ՝ տօնել զսոսա. և է այսպէս. Քառասուն և վեց տօն սուրբ հայրապետացն[2] կարգեաց, և երեսուն ես տրուպս յաւելի, որ լինի եօթանասուն և վեց. զորս բոլոր տարւոյն բաւական համարեցաք, ընթերցուածովքն և Մարտիրողոգօքն[3]. իսկ եթէ տարւոյն աւուրք չլինի բաւական. զի է տարի որ երկոտասան լուսին լինի և է որ երեքտասան, և տօնքն՝ կարճ տարին յաւելուն, դուք զերկուսն ի մի տօնեցէք՝ երեք և չորս. և այսպէս զբնաւն ի գլուխ տարէք. զի ըստ հաւատոց մերոց և տօնք Սրբոցն պարտ է որ կատարին: Իսկ զի սկզբնից սրբոց և աստուածասիրաց գրեցի[4], զի մի հայիցիք ի ծոյլ և յորովայնամոլ կրօնաւորանսն՝ և ընդ նոսին կորնչիցիք ի կենացն Աստուծոյ, այլ Սրբոց նմանեալ՝ մեծ փափագմամբ տօնեսջիք. մեք զընթերցուածսն առատապէս որիշ եդաք ընդ ամսոյն, զի մի աղքատ եղիցի կարգք եկեղեցւոյ:

Հարկ և հրաման ունիք յԱստուծոյ՝ զաւկաւ յիշատակարանս խրատու՝ ի գիրսն զոր նորոգեցէք՝ օրինակել, որպէս և զհոգևոր Տեառն[5] յիշատակ՝ ի նոր գիր: Եւ ի վերայ ամենայնի զմեզ զերեքեանս ի նոյն, զսուրբ կաթողիկոսն և զհամանուն կարևոր[6]

1. Յանգ հանել, աւարտել, լրացնել:
2. Գուցէ պէտք է «սուրբ հայրապետն կարգեաց»:
3. Յոյն բառ, յորմէ և լատինն Martirologium, որոյ ճիշդ թարգմանութիւնն է Վկայաբանութիւն ըսուածն:
4. Շփոթ կամ սխալ ըսուած մի է այս տեղ:
5. Կաթողիկոսին, նոյն Գրիգոր Վկայասէրին:
6. Մերձաւոր ազգական. թուի նոյն վերոյիշեալ

իւր զԳրիգորիս, և զիս զԿիւրակոս յիշեսջիք առաջի Քրիստոսի ի սուրբ խորհրդին, և ի խորոց սրտէ թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ. և նոյն ինքն Յիսուս Քրիստոս ամենեցուն ողորմեսցի, և արժանի արասցէ արքայութեան երկնից. որում փառք յաւիտեանս. ամէն։

---

## ՄՀՁ

### ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ԿԻՐԱԿՈՍԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ՅՈՎՀ. ԱՒԵՏԱՐԱՆԻ ՅՈՍԿԻԲԵՐԱՆԷ

Զանգիւտ Հայկազանցս զլուսաւոր մարգարտիս զպատճառն, զերանելի Լուսաւորչին մերոյ զփոխանորդ զԳրիգորիս՝ զհոգեւոր հայրն մեր և զխնամածու՝ յիշեցէք ի Տէր. վասնզի նա եղեւ սկիզբն զսուրբ Աւետարանիս զմեկնութիւնս գրելոյ ի գիրս՝ յայս, ի ձեռն բազում աղաչանաց իմոց՝ զինքն զերանելին. որ և լուեալ ինձ՝ ըստ աստուածասէր հոգւոյ իւրոյ՝ սկիզբն ետ առնել թարգմանութեան, նախ յասորւոյն լեզուէ. և քանզի շաղփաղփ այլատարազ գայ լեզուն ասորի ի մերս Հայկազանցս արամեանցս ազգ և լեզու, ըստ որում վերստին իմ աղաչանս ի ձեռն առեալ վկայասէր ոգւոյն, ի յունականէն առնել զթարգմանութիւն գերահրաշ ճառիցս աստուածաբան աւետարանչիս Յովհաննու մեկնութեան, ի ձեռն համանուն երանելի պատրիարքին Կոստանդնուպօլսի՝ ոսկեզերակեցոյց աշխարհալոյս վարդապետի, Ոսկեբերանն կոչեցելոյ մականունութեամբ. զոր օրինակ և վերաքեռորդին, զոր յետ մասամբ գրոցն կարգաւորելու՝ թողուց յԵգիպտոս։

1. Նոյն շատ հեղ յիշուած Գր. Վկայասէրն Մեծ։

գոյնդ առ նա արարեալ իմ Կիրակոսի զբանս մաղթանաց. վասն զի յարմար գոյ յունականն բարբառ ի մերս՝ ըստ թարգմանութեանն։ Արդ, ունկնդիր եղեալ ինձ՝ թողեալ զԱնդրէաս երէց ասորի զթարգմանիչ, յղէ ի Միսապոտամն[1] գաւառ, առ յունականն հռետոր Թէոպիստէ կոչեցեալ. որ էր քարտուղար և պռոտոյնոտար[2] իշխանին Առօնն կոչեցեալ[3]. և բազում ծախիւք առատատուր պարգեւօք նմա ետ թարգմանել զսուրբ գիրս։ Եւ արդ, նա ի Քրիստոս փոխեալ յերանելի կեանսն, բազում ճառք մնացին անթարգման. յոր ես ձեռն արկեալ նոյնպէս առատաբար ձրիւք զմնացեալսն ետու աւարտել նմին առն։ Եւ է ճառիցս թիւ զոր նորոգ ի յայտ ածաք՝ յիսուն և հինգ ճառ. քանզի զերեսուն և զերիսն՝ բազում յուզիւք յառաջին մեր թարգմանչացն գտաք թարգմանեալ. ի սկզբան տասն և երեք ճառ յասորի լեզուէ, բանքն իսկ ցուցանեն. իսկ զքսանն ի յունականէն, որք լինին երեսուն և երեք ճառք։ Բովանդակ էր գիրքն լեալ թարգմանած ի Հայս, և ի ծուլութենէ և յանփոյթ առնելոյ՝ այլքն կորուսեալ և եղծեալ էին յօրինակս հինս՝ ուր և կայր։ Եւ զայս զոր գտաք՝ ի յախմար և ի տգէտ խաւարած գրագրերոյ այլայլած և թիւրած էին բանքն և տունքն, և աւելի և պակաս, անօգուտ ի կարդալոյ և յիմանալոյ։ Զոր իմ Կիւրակոսի տրպի և անարժանի ի ձեռն առեալ՝ ուղիղ յօրինեցի ըստ կարի, ա՛յլ ի մտաց բանիցն և ա՛յլ ի կրկին օրինակաց. և ըստ այսմ զնորոգ թարգմանեալս բազում ջանիւ և աշխատութեամբ յերիւրեցաք յուղիղն բառ և բանս՝ ըստ մերումս, զհատակոտոր զխրթին բանսն, և ըստ վերագոյն գրելոցն՝ ոչ աւելի և ոչ պակաս։ Արդ, այսպէս գրեցաք և տուաք վերջին աւուրց վերջին դարուս,

1. Միջագետք, յունարէն. Mésopotame, փռանկ.
2. Protonotaire. Գլխաւորն նոտարաց։
3. Ազգաւ Հայ թուի, մագիստրոսի պատուով։

յորում ըստ կանխատեսութեան Փրկչին և Առա-
քելոց նորա՝ չար և դժնդակ են աւուրքս. սատա-
նայ թագաւորել, և սէր և հաւատ և ճշմարտու-
թիւն բարձեալ յամենայն մարդկանէ. քանզի բո-
լոր տիեզերք գնացին զհետ սատանայի, է որ ան-
հաւատութեամբ և է որ հերետիկոսութեամբ, և
է որ մեղօք. յոր թաւալեցան առհասարակ և մերս
ազգ. հաւատոք և կարգօք ուղիղ, և գործովք բա-
րանսարկուին կամաց հետեւեալք, և հեռացեալք
յերկնաւոր կոչմանէն. նա և բարձրացեալ յերկինս
աշխարհանաւ կրօնաւորք և քահանայք՝ ընդ այլ շա-
րաժաւուտ ազգս նախանձեալ՝ ի մարմին գործան
և ի կամս նորա, օտարացեալք ի կոչմանէն Քրիս-
տոսի: Այլ և յանիշխանութեան գոլով տիեզերք,
քանզի կործեալքն իշխանք ի սուր և յաւեր գոր-
ծան յիրեարս, եւս և որք թագաւորք անուանէին:
Եւ մեք ի սոյն աւուրս աշխատեալք՝ նորոգեցաք
զսա, և տուաք ի յիշատակ աստուածատէր եղբարց
սրբոց, թերեւս անձանց և բազմաց օգուտ գոր-
ծիցեն. որք և հովացեալք և ցրտացեալք եղեն
բնաւք ի պատուիրանացն Աստուծոյ և ի սրբոյ
գրոց: Զայս գրեցաք՝ զի որք ընթեռնուցուք՝ խնա-
ցեալք զմերս և զսուրբ դիտապետին[1] ջանս, ընդ
այսմ ի Փրկչէն հայցեցէք զողորմութիւն վասն
նորա: Ընդ որս և զսուրբ վարդապետն մեր զԳէորգ
յիշեսջիք, զդիտապետն Հայոց և զհովիւն բարի[2]
և զգաստ և զմարդասէր հոգին, որ վերատին ծնաւ
զմեզ բանիւն կենաց, և զերեց աւուրքս խոհակա-
նութեամբ զեղբայրն մեր և զանդրանիկ մերոյն
կրթավարժ և հրահանգայեղձ աշակերտութեան՝
զքրիստոսազգեացն զԳէորգ մականուն Մեղր[3] կո-

1. Գրիգորի Վկայասէրի:

2. Սա Լօռեցի անուանեալն է, որ նախ իբրեւ օգ-
նական եղաւ Գր. Վկայասէրի, յետոյ իր չափէն վեր
ելնելով՝ մերժուեցաւ աթոռէն:

3. Սովորաբար Մեղրիկ կոչուի:

չեցեալ՝ յիշեսջիք ի Քրիստոս. և ես զծնօղսն իմ հանգուցեալս ի Քրիստոս՝ յիշեսջիք աղօթիւք. որպէս զի աղօթիւք ձեր և ամենայն սրբոց հաճոյացելոց Տեառն ի սկզբանէ՝ գտցուք միաբան արժանաւորք կենացն յաւիտենից ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, ընդ որում Հօր և Ամենասուրբ Հոգւոյն փառք և պատիւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Էր թիւ ի սկզբանց արարչութեանց ի մեզ ՑՇԼԶ (6536) ամ, իսկ ի կենարար գալստեննէն Քրիստոսի ՌՃԺԲ (1112) ամ. իսկ ի Խոսրովայն Պարսից[1] սկսեալ մերս թիւ ըստ ամաց՝ ԵՃԿԶ (566). իսկ ըստ աւարտման առաջին շրջանին[2] ԵՃԼԲ, նորս սկսեալ շար ամաց ԼԴ (34) ամ։ Այլ և զաղաչանս իմ զվերջին ընկալջիք սիրովն Աստուծոյ. զկնի վախճանի իմոյ ում և տայ Աստուած ի ձեռն իմ զսուրբ գիրս զայս, մի արգելցէ տալ զսա օրինակ ով և կամեսցի գրել, զի տարածեսցի և մի իւիք փակեսցի խօսքս Աստուծոյ։ Եւ որք գրել տայցեն՝ գրեսցեն և զյիշատակարանս զայս բովանդակ ի նմին, և մի հատցեն ի սմանէ բան մի. և որք զերկու խնդիրս զիմ կատարեսցեն՝ գրեսցէ զնոսա Աստուած ի դպրութեան կենաց. իսկ որք ստունգանեն՝ եղիցին ընդ դատաստանաւ Տեառն Աստուծոյ, որ է օրհնեալ յանբաւ յաւիտեանս. ամէն։

Եւ որ զգիրքս գրեցի հրամանաւ սուրբ աստուածարեալ վարդապետիս Կիրակոսի՝ որում Յիշատա-

1. Հայոց թուականն դրուած է Սասանեան Պարսից Ա Խոսրով թագաւորին ատեն, և ըստ իմիք անոնց տոմարին այլ յարմարցուցած։

2. 532 տարուան շրջանն է, եկեղեցական տօնից օրերը գտնելու համար ըստ փոփոխութեան տարեգլխին. ըստ հեղինակիս՝ առաջին անգամ այս շրջանս լրացեր էր և 34 տարի առաջ սկսեր էր Բ շրջանն, որով առաջնոյն սկիզբն կ՚ըլլայ յամի 546 Քրիստոսի. սակայն Հայոց թուականին և տոմարին կարգադրութիւնն վեց տարի վերջն եղած է, այսինքն 552ին։

կարանս է, և բովանդակ գիրքս յօրինեալ և յարմարեալ ըստ տանց և ըստ ամենայն արհեստից պատշաճեալ, դիւրահաս ընթերցողաց և լսողաց. Թէպէտ և խոշոր է գիրս և անարհեստ և ախմար գրիչոյ, բայց աղաչեմ յիշել ի սուրբ մաղթանս զբազմամեղս Ստեփաննոս կոչեցեալ, և զեղբարս իմ, որպէս զի աղօթիւք ձեր և ամենայն Սրբոց հաճոյացելոց Տեառն ի սկզբանէ՝ գտցուք միաբան արժանաւորք կենացն յաւիտենից:

---

# ՄՀԷ

## ԳՈՂ ՎԱՍԻԼ ԳՆԷ ԶԳԵՐԵԱԼՆ ՊԵՄՈՒՆԴ, ՎԱՆԷ ԶՊԱՐՍԻԿՍ

(Մ. ՈՒՌՀԱՅԵՑԻ ՃՀԲ.)

Յայսմ ամի (1104) գնեցին զկոմսն Ֆռանկաց Պեմունդն[1] ի ձեռաց Դանիշմանին՝[2] հարիւր հազար դահեկան[3], միջնորդութեամբ և օգնութեամբ մեծ իշխանին Հայոց որ ասի Գող Վասիլ[4]. և սորա

1. Անտիոքայ Բրինց (Prince) կոչուած իշխանաց Առաջինն է:

2. Տէնիշմէնտ, գիտնական նշանակէ, վասն զի իր հայրն այսպիսի մէկն էր, իսկ իր սովորական անունն է Կիւմիւշ–դէգին, և տիրէր Սեբաստիոյ և ուրիշ կողմերու:

3. Դահեկանն ոսկի դրամ է. եթէ բիւզանդացի և եթէ արաբացի ըլլայ՝ այդ գումարն միլիոն մի ֆրանգ կ'ընէ ըստ նիւթական արժէից, իսկ համեմատութեամբ ժամանակին՝ կրկին և կրկին:

4. Յայտնի է պատճառ մականուանն, յանկարծ թշնամեաց վրայ հասնելով՝ անոնց ընչից և երկրին տիրելուն: Շատ նշանաւոր և արժանաւոր անձն է, խելքով, քաջութեամբ, բարեպաշտութեամբ և ճոխու-

տուեալ տասն հազար դահեկան ի գինս նորա. իսկ կոմսն Անտիոքայ Տանգրի՝ ոչ տայր ի գինս Պեմունդին և ոչ մի ինչ: Եւ յայնժամ ժողովեցան ամենայն գանձն առ Վասիլն, և մեծաւ իշխանութեամբ ջան եդեալ և տայր բերել զնա ի սահմանս աշխարհին իւրոյ, և տայր զգանձն հարիւր հազար դահեկան. և առեալ զՊեմունդն առ իւր, և ելանէր ընդ առաջ նորա, և մեծաւ պատուով հանգուցանէր զնա ի տան իւրում, և բազում ընծայս տայր Պեմնդին և բերողացն[1]. որ ընդ ամենայն 'լինէր քսան հազար դահեկան:

Եւ զկնի աւուրցն գնացեալ Պեմունդն ի քաղաքն իւր Անտիոք, և մեծաւ երդմամբ եղեւ որդեգիր Գող Վասիլին Հայոց իշխանին. և զՌիչարդն զքուրորդին Պեմնդին՝ երետ Դանիշմանն տուրս Ալեքսին՝ Յունաց թագաւորին՝ ի ձեռն բազում գանձուց:....

Յայսմ ամի (1108) զօրաժողով եղեալ ազգն Պարսից երկոտասան հազար, և անցեալ ընդ Տօրոս լեառն[2] որ կոչի Աշարզա[3], և արար աւար զամենայն երկիրն Թորոսի՝ որդւոյ Ռուբենայ[4]. և գայր անցանէր ընդ դաշտն քաղաքին Մարաշայ. և անթիւ գերութեամբ հասանէր յերկիրն Գող Վասիլին, ի տեղի որ կոչի Բերդուս[5] ի սահ-

թեամբ. ծանօթ և յարգելի ժամանակակից արեւմըտեայց, որք նոյն հայերէն մականուամբ կոչեն Corouassilius. Իր տէրութեան աթոռն էր Քեսուն քաղաքն:

1. Համբերողացն գրուած է ի ձեռագրին:

2. Այդ մեծ քաղքին մօտ ըլլալով՝ այդպէս կոչէ լեռները:

3. Անծանօթ անուն. ոմանք կարծեն Անաւարզա քաղքին անուամբ, բայց չի յարմարիր:

4. Հայոց Կիլիկիոյ իշխանութիւնը հաստատողն:

5. Բերդուս Կիլիկիոյ հիւսիսային կողմերում մեծ բերդաւան մ'էր, եպիսկոպոսանիստ:

մանս Նորիրական[1]: Եւ լուեալ զայս իշխանն Հայոց Վասիլն, զօրաժողով արարեալ զգունդն զօրացն Հայոց, և նոքա որպէս զարծիւս և կամ որպէս զկորիւն առիւծոց հասանէին ի վերայ այլազգեացն. և արարին սաստիկ և աՀաւոր պատերազմ. և մեծաւ յաղթութեամբ դարձուցին... ի փախուստ, և միաբան սրով զհետ ընթացան և արարին անթիւ կոտորածս զնոսա, և կալան ըզբազումս ի նոցանէ, և թափեցին զամենայն առ և զգերութիւնն: Եւ դարձեալ իշխանն Հայոց Վասիլ, և ամենայն ազատագունդն Հայոց մեծաւ յաղթութեամբ և բազում ուրախութեամբ եկեալ ի քաղաքն իւր Քեսուն, և տուեալ գոհութիւն Աստուծոյ որ ամօթ արար զթշնամիսն Խաչին Քրիստոսի:

Իսկ ի հասանել թուականութեանն Հայոց ՇԾԷ (1108–1109), դարձեալ կրկնապատիկ ժողով արարին ազգն Պարսից և արս ընտիրս, լինէին իբրեւ վ՛աց հազար, և հանդերձ սուլտանովն իւրեանց գային յաշխարհն Վասլին՝ Հայոց իշխանին, և քինախնդիր լինէին վասն առաջին կոտորածին զոր կոտորեաց Վասիլ իշխանն ի Բերդուսն: Եւ գազանաբար հասանէին ի սահմանս քաղաքին որ կոչի Հասան-մանսուր[2]. և էր ժամանակ հնձոցն արտեաց. և արարին կոտորած զվաստակաւորսն, և հանդերձ գերութեամբ դարձան և իջին առ բերդն որ ասր Հարրան[3]: Եւ յորժամ լուաւ իշխանն Հայոց Գող

1. Ուրիշ օրինակք այս անունս գրած են Նորշիրականն: Մեր հնագոյն պատմիչք յիշեն Նորշիրական երկիր մի, որ շատ հեռի չէ այս կողմերէ, բայց աւելի դէպ ի հարաւ-արեւելք. իսկ աս թուի իր հետ յիշուած Բերդուսին գաւառն ըլլալ:

2. Հըսն-Մանսուր, այսինքն Բերդ Մանսուրի, Եփրատ գետոյ արեւմտեան կողմը, Դ Հայոց մօտ:

3. Մօտ Նախայիշեալ բերդին, Ջահան գաւառի և Համանուն գետոյ մօտ:

Վասիլն՝ զգալ այլազգեացն, հասանէր զօրաք իւրովք ի վերայ նոցա հինգ հարիւր արամբք. և արարին սաստիկ պատերազմ. քաջազունդն Հայոց և ազատք՝ զմիմեանս յորդորէին և յօժարաբար քաջանային ընդդէմ այլազգեաց զօրացն։ Այլասար[1] յազատ ազգէ իւր զօրօքն յարձակեալ ի վերայ այլազգեացն, և Պետրոս քեռին Գող Վասլին՝ իւր ազատօքն արիանայր. և Վասիլ ոմն Տղայ[2] անուն՝ մայրենեօք յազատ ազգէ, և նա իւր զօրօքն բեկանէր զթեւս զօրացն Պարսից. և Տիգրան՝ այր հզօր և քաջ, որդի Ազնաւականի ի մեծամեծացն Հայոց։ Եւ արարին պատերազմ ահաւոր քաջագունդն Հայոց, և յաղթեցին զօրաց այլազգեացն՝ մեծաւ յաղթութեամբ, և արարին սաստիկ կոտորածս զնոսա. և կալան զսուլտանն Հայոց[3] և զայլ բազում իշխանս Պարսից. և ի գերութիւն վարէր զնոսա առաջի իւր։ Եւ դարձաւ իշխանն Հայոց Վասիլն մեծաւ յաղթութեամբ և բազում աւարաւ. և եկեալ ի քաղաքն իւր Քեսուն, և փրկեաց զամենայն գերութիւնն զոր առին այլազգիքն. և եղեւ մեծ ուրախութիւն հաւատացելոց....

Յայսմ ամի (1113) արեգ ամսոյ քսան և չորս մեռանէր մեծ իշխանն Հայոց որ կոչեցաւ Գող Վասիլ. և եղեւ սուգ սաստիկ ամենայն տանն Հայոց. վասն զի առ նա էին ժողովեալ մնացեալ զօրքն Հայոց, և ամենայն զօրքն Բագրատունեաց և Պահլաւունեացն, և որդիք թագաւորացն Հայոց՝ հանդերձ ազատագունդ զօրօքն՝ առ նա կային հանգուցեալ՝ մեծաւ փառաւորութեամբ. և աթոռ հայրապետութեանն Հայոց աշխարհին աստ եդաւ։

1. Տարօնեցի Տաճատ իշխանի որդի։
2. Թուի որդեգրածն նոյն մեծին Գող Վասլի։
3. Կամ տեղւոյ մի յատուկ անուն պիտի ըլլայ, մանաւանդ որ ուրիշ օրինակք Հայոցայ գրեն, կամ Մեծ Հայոց մասի մի տիրող մէկն։

Վասնզի տիրեալ էր բազում գաւառաց իւրով զօրութեամբն, և ամենայն երամք կրօնաւորաց, եպիսկոպոսաց, հարց և վարդապետաց՝ առ սա ժողովեցան, և առ հասարակ կային մեծաւ ուրախութեամբ։ Մեռաւ իշխանն Հայոց և թաղեցաւ ի կարմիր վանքն[1]. և էր հոգեբարձու նորա և հայր խոստովանութեան տէր Բարսեղ կաթուղիկոսն Հայոց[2]. և տուաւ հողադրամ հազար դահեկան, և պատարագուց հարիւր և յիսուն դահեկան, աւելի և ոչ պակաս, և մատաղ անթիւ։ Եւ տարան Տանգրէի բազում տուրս ի տանէն Վասլին, բազում գանձս և դիպակս, ձիս և ջորիս. տարան և զթագն կնոջ Վասլին առ կինն Տանգրէի. և այլ իշխանաց թագաւորացն տուաւ բազում ընծայս, և աղքատաց բազում ինչս։ Եւ տան զիշխանութիւն Վասլին՝ Տղայ Վասլին, որ է մայրենեօք յազգէ կամսարականն, սնեալ և զարգացեալ ի տան Վասլին՝ որպէս որդի ի ծոց հօր իւրոյ, գեղեցկատեսիլ և առիւծադէմ, յաջողակն և սրագլուխ, այր քաջ և պատերազմող, ամաց քսան և հնգից։ Զսա նըստուցին յաթոռ մեծ իշխանին Վասլին, և նմա հնազանդեցան ամենայն զօրքն. վասն զի յոյժ առատաձեռն և մեծատուր եղեւ, սիրեցեալ յաչս ամենեցուն և զօրացն։ Եւ արար միաբան ժողով Տէր Բարսեղ, և տայ զամենայն իշխանութիւնն ի Տղայ Վասիլն, և եղեւ ուրախութիւն ի վերայ տանն Հայոց[3]։

1. Քեսունի մօտ, անուանի այն ատեն։

2. Յաջորդ մեծ Վկայասէրին Գրիգորի։

3. Շատ երկար չեղաւ ուրախութիւնն. վասն զի չորս կամ հինգ տարի վերջ՝ երբ Վասիլ գնաց ի Կիլիկիա և Ա Պարոն Լեւոնի դուստրը կին առաւ, Լեւոնի եղբայրն Թորոս Ա բռնեց զՎասիլ և մատնեց Ուռհայի կոմս Պաղտինին (ինչո՞ւ համար). և սա շատ նեղացընելով զՎասիլ՝ առաւ անոր երկիրները. Վասիլ դարձաւ առ աներն և յետոյ գնաց առ կայսրն Յունաց։

# ՄՀԸ

## ԹՈՐՈՍ Ա·
## ԱՌՆՈՒ ԶՎՐԷԺ ՍՊԱՆՄԱՆ ԳԱԳԿԱՅ

(Մ. ՈՒՌՀԱՅԵՑԻ. ՄԵ.)

Ցայսմ ամի (1111) եղեւ վրէժխնդրութիւն Աստուծոյ՝ անմեղ արեան Գագկայ Շահնշահի՝ որդւոյ Աշոտոյ Բագրատունւոյ, ի ձեռն առն հզօրի և մեծ իշխանին Հայոց Թորոսի որդւոյ Կոստանդեայ՝ որդւոյ Ռուբենայ։ Արդ, ի յաւուրս Թորոսի էին սպանողքն Գագկայ արքային Հայոց ի բերդն որ անուանեալ կոչի Կնդռօսկաւիս, ահաւոր ամրութեամբ բարձրացեալ՝ անպարտելի յամենայն կողմանց. և որդիքն Մանդալէի դեռ եւս կենդանի էին՝ երեք եղբարք, և մի ի նոցանէ ունէր ընդ Թորոսի միաբանութիւն՝ վասն խնամութեան, և յաղագս այսորիկ խոստացեալ էին տալ զբերդն՝ Թորոսի, վասն զի սահմանակից էր գաւառի նորա մերձ ի յերկիրն որ կոչի Ջկնչուր[1], լեառնահայեաց Գամրաց աշխարհին։ Ցայսմ ամի յարուցեալ իշխանն Հայոց, և սակաւ ինչ զօրօք գնաց առ նոսա սիրոյ աղագաւ, և իջեալ ի սահմանսն այն և յուղարկեաց նոցա ծանուցումն զգալն իւր։ Ցայնժամ մի ոմն ի սպանողացն առեալ ընծայս և գայր առ Թորոս. և նա մեծարեաց զնա. և նա հանեալ դանակ մի ծանրագին և հանդերձ մի՝ դնէր առաջի Թորոսի. և կերան և արբին։ Ցայնժամ ասէր ցնա Թորոս, եթէ, «Ահա իս խոստումն կայ ձեր՝ վասն բերդին, տուք ի յիս, և յամենայն գաւառս իմ առէք ձեզ տեղի զոր կամիք»։ Եւ նորա ստեալ զյառաջասա-

1. Կապադովկիոյ կամ Կեսարիոյ գաւառին սահմանակից, բայց անունն անծանօթ է հիմայ։

ցեալսն՝ և ասէր ցիշխանն Հայոց, եթէ, Ոչ կարեմք տալ զբերդն, վասն զի մեր հայրենիք է և ազգի տեղիք։ Եւ իբրև գիտաց Թորոս եթէ խաբեցաւ ի նոցանէ, տայր զբերեալ նուէրս յինքն, և արտմեալ ասէր. «Արի՛ և գնա ի տուն քո, և յայսմհետէ պատրաստ եղերուք յինէն»։ Եւ յարուցեալ աստուածասպանին[1] դարձաւ ի տուն իւր. դարձաւ և Թորոս դիմօք[2] ի տուն՝ առաջի աչաց նորա։

Եւ իբրև գնաց սպանողն և եղև աներևոյթ, դարձաւ Թորոս զօրօքն և ի գիշերին հասանէր ի վերայ բերդին և դարանակալ առնէր զհետևակ զօրսն, և ձիաւորովն հեռանայր յագարակսն. կամեցաւ ասպատակ առնել զերկիրն։ Իսկ ի լուսանալ առաւօտուն ելանէին ի բերդէն բերդացիքն, և հանդիպեցան ի վերայ քմինն[3]. և յորժամ տեսին՝ եղեն փախստական։ Եւ յարուցեալ զօրացն Թորոսի ընթանային ընդ զառ ի վեր բերդին. և յորժամ տեսին բերդացիքն՝ փակեցաւ դուռնն. և նոքա արտաքոյ կալան զդուռն, և սկսան պատերազմել, և կրակ հարկանէին ընդ ցուեաց[4] բերդին, և նա յոյժ բորբոքեցաւ։ Եւ յորժամ տեսին բնակիչքն՝ բացեալ ի յայլ կողմանէ դուռն, և ելեալ փախեան. և զօրքն Թորոսի առին զբերդն և կալան զփախստականսն. և հասեալ պատմեցին Թորոսի. և նա յոյժ հիանայր, և գայր մեծաւ ուրախութեամբ ի բերդն Կնդռօսկաւիս։ Եւ յորժամ մտաւ ի բերդն, սկսաւ քննութիւն առնել գանձասանն նոցա. վասն զի ամենայն գաւառին գանձ՝ ոսկի և արծաթ անդ ի պահեստի էր ժողովեալ. և ասէր Թորոս ցՄանդալէի որդիքն, եթէ, Բերէք առ իս զԳագկայ թուրն և

1. Որովհետև հեղինակս՝ առաջ սպանողները Յուդայի նմանեցուցեր էր, հիմայ այլ փոխանակ մարդասպան ըսելու՝ զայս կ'ըսէ։
2. Բարկացած, ռամկօրէն կ'ըսուի երեսը կախած։
3. Պահուըտած տեղւոյն։
4. Առաստաղք, տանիք, տան վերնածածքն։

զհանդերձն Հայոց թագաւորին։ Եւ նոքա բերին. և տեսեալ Թորոսի ելաց դառնապէս, և ամենայն զօրքն լային։ Եւ յայնժամ հրամայեաց Թորոս ցուցանել զգանձս իւրեանց, և նոքա պնդեալ ոչ գային ի խոստ[1]. և սկսան ի խոշտանգանս արկանել զնոսա։ Յայնժամ միւս եղբայրն աղաչէր զզօրականսն՝ զի տարցեն զնա ի քարակտուրն՝[2] զի ջուր հեղցէ. և յորժամ տարան, ձգէր զինքն ի բարձրութենէն ի վայր, և անկեալ սատակեցաւ չարաչար։ Իսկ զմիւս եղբայրն սկսաւ ի վտանգ արկանել Թորոս. և նա լրբենի երեսօք ասէր ցԹորոս, եթէ, Դու Հայ մարդ ես, և մեք Հոռոմք իշխանք, զի՞նչ կամիս պատասխանիս տալ Հոռոմոց թագաւորին, որ դատես զմեզ։ Յայնժամ սրտմտեալ Թորոս և գոյն երեսացն այլագունեցաւ, և առեալ ի ձեռին իւրում բիր մի կռանի[3], և գազանաբար յարձակեցաւ ի վերայ նորա, և ասէր, եթէ, Ո՞վ էիք դուք որ զայր հզօր և զօծեալ թագաւորն Հայոց սպանիք. և կամ զի՞նչ պատասխանի ետուք ազգին Հայոց. և լալախառն սկսաւ չարաչար հարկանել զնա՝ մինչեւ սատակեցաւ դառնահառաչ մահուամբ։ Եւ յայնժամ գոհանայր զԱստուծոյ որ էառ զվրէժ արեան Գագկայ Հայոց արքային. վասն զի հայր հօր նորա Ռուբէն ի զաւակացն Գագկայ էր[4]։ Եւ միաբարձ արարեալ զամենայն տունս նոցա բազում գանձս և դիպակս և խաչս յոյժ մեծամեծս արծաթիս, և պատկեր ոսկեձոյլ և արծաթ, առեալ գնաց ի Վահկայն. և զմիւս եղբայրն զկնի տանէր, և դնէր զզօրսն ի բերդն պահապանս։

1. Չէին յայտներ։

2. Գլուխ քարաբլրոյն՝ որոյ վրայ կանգնած էր յիշեալ բերդն։

3. Փռ. Marteau. Թրք. չէքիճ։

4. Ստոյգ չէ Գագկայ ցեղէն ըլլալն՝ որ էր բագրատունի, այլ Գագկայ մարդիկներէն։

# ՄՀԹ

## ՀԱՅՔ ԶԵՐԾՈՒՑԱՆԵՆ Ի ԽԱՐԲԵՐԴԷ ԶԿՈՄՍՆ ՃՈՍԼԻՆ

(Մ. ՈՒՌՀԱՅԵՑԻ. ՄԼԵ.)

Ի թուականութեան Հայոց ի յամի ՇՀԲ (1123-4), զօրաժողով արարեալ Թագաւորն Երուսաղեմի Պաղտինն (Բ), և յուզէր պատերազմ ընդ Պալակայ ամիրային, վասն երկու իշխանացն զոր արկեալ էր ի բանտի, զՃօսլինն[1] և զԳալերանն[2]։ Եւ հասանէր Թագաւորն ամենայն զօրօքն Ֆռանկաց ի Ռապանն[3] քաղաք, և Պալակն յառաջագոյն եկեալ էր մերձ այնմ գաւառին, զի զերկիրն արասցէ աւար և գերութիւն. և զմիմեանց ոչ գիտելով երկոցունց կողմանցն՝ և եկեալ Թագաւորն սակաւ զօրօքն ի Շնչրհոյ կանդարայն[4], և անցեալ գետովն ի վեր՝ կամէր ելանել ի տեղին որ ասի Շնչրիկ. և Պալակն բազում զօրօք կայր մերձ ի քմին[5], յարժամ հարին զվրան Թագաւորին. և Թագաւորն կամէր որսալ բազէովն. և Պալակն[6] յանկարծակած յարձակեցաւ ի վերայ՝ իւր ամենայն զօրօքն, և արար կոտորած սաստիկ հզօր, և կալաւ զԹագա-

1. Խաչակրաց հետ եկողն, որ եղաւ կոմս Եդեսիոյ։
2. Ազգականն Ճօսլընի, Galeran կամ Waleran.
3. Յարեւմտեան Ասորիս կամ յԵփրատացիս։
4. Հին ատեն կ'ըսուէր Սինգա, գետ մի՝ որոյ վրայ Հռովմայեցիք կամուրջ մի (կանդարա) ձգած էին. որոյ անուամբ կոչուած է և Շնչրիկն։
5. Ուր որ պահուըտած էր, յանկարծ թշնամւոյն վրայ յարձըկելու համար։
6. Նուրէտ-տօվլա Պալակ՝ Ասորւոց և Եփրատայ կողմանց շատ քաղաքաց տիրող էր։

ւորն Երուսաղեմի և զքուրորդին Թագաւորին: Այս եղեւ յամսեանն հոռի, զկնի չորս աւուր անցանելոյ սուրբ Զատկին: Եւ տարաւ Պալակն զԹագաւորն ի դուռն կառկառայ[1], և նա տայր զկառկառ ի ձեռս Պալակին. և տարան զԹագաւորն և զքուրորդին ի Խարբերդ, և երկաթի կապանօք եդին ի խոր բանտին, ուր եդեալ կայր Ճօսլին և Գալերանն:

Յայսմ ամի զկնի հինգ ամսոց որ այս գործեցաւ, եղեւ զարմանալի ինչ. վասն զի յաղագս այսորիկ եղեւ կատարած կորստեան: Յարուցեալ միաբանեցան արք հնգետասանք ի յամուր բերդէն Պեհնեսնոյ, և խորհեցան խորհուրդս քաջաց և կատարեցին զգործս անմահից[2]: Յարուցեալ արանցս այսոցիկ գնան ի Հանձիթ գաւառն[3]. և յաչու[4] ունէին զամուր բերդն Խարբերդոյ, ուր կայր յարգելանոցի Թագաւորն Փռանկաց և Ճօսլինն և Գալերանն. և տեսին զպահապան բերդին սակաւս, և կային անհոգս. գնացին ի դուռն՝ գծուծ կերպարանօք, և իբրեւ զդատաստանաւորք[5]. կայր և այլ ոք բանատու ի ներքս ի բերդն: Եւ զկնի սակաւ մի ժամու դիմեցին և մտին ի բերդն, և քաջապէս ջանացան ի բանտն, և զոր ի դուռն գտին՝ սպանին և փակեցին զդուռն. մեծաւ աղաղակաւ հասանէին ի բերդն, ուր էր Թագաւորն արգելած, և Ճօսլինն և Գալերանն և այլ իշխանքն. և հանին զնոսա ի բանդէն մեծաւ ուրախութեամբ. և զայլս ոմանս զորս բազումս հանին ի կապանաց, արք և կանայք. և ոմանք ի տեղացեացն մտին ի

1. Ինչուան հիմայ ծանօթ քաղաքաբերդ Եփրատայ եզերքը, որպէս և վարը յիշուած Պեհնեսնին կամ Բեհնեսնի:

2. Քաջերուն արժանաւոր գեղեցիկ գրուցուած:

3. Դ Հայոց նահանգին գաւառ մի, յորում էր անուանի քաղաքն Խարբերդ:

4. Դիտէին, զննէին. աչել՝ նայիլ բառին արմատն:

5. Աղքատի ձեւով, և իբրեւ դատաստանի եկած:

բանտն վասն փրկութեան Թագաւորին և Ճօսլինին և այլոց կալանաւորացն։ Եւ ելեալ Թագաւորն և ամենայն բանտարկեալք, և առին զբերդն և տիրեցին ամենայն տանն Պալակին։ Եւ իբրև լուան զայս զօրք այլազգեացն որք էին ի գաւառին, փախեան ի յայլ աշխարհ. և զմիւս այլ գիշերին չորեքշաբաթ լուսանալն՝ ելեալ Ճօսլինն և հետեւակ մի ընդ նմա, և գաղտաբար գնացին ի Քեսուն, և անտի գնացին յԱնտիոք, զի զօրաժողով արասցէ և գայցէ յօգնութիւն Թագաւորին և այլոց կալանաւորացն։

---

## ՄԶ

### ՅՈՎՀ. ՍԱՐԿԱՒԱԳ ՎԱՐԴԱՊԵՏ[1]

(ԿԻՐԱԿՈՍ)

Մեծիմաստն գիտութեամբ քան զյոլովս և հանճարեղն ամենայնի, մտահարուստն Յովհաննէս՝ Սարկաւագն կոչեցեալ[2] ի Հաղբատ. սա բազում ինչ աշխատասիրեաց ի գիրս՝ յիշատակ բարի թողեալ. սա զբազմաց փափաքելին և ոչ ձեռնհաս՝ զհաստատ և զանշարժ տոմարն կարգեաց Հայոց, փոխանակ շարժականին և անհաստատնոյն. արար և զմիաբանութիւն ամենայն ազգաց տումարին[3]

1. Մեր հայ գրագիտաց ամենէն հանճարեղներէն և ճարտար գրողներէն մէկն է, ԺԱ դարուն վերջերում, ԺԲին սկիզբներում։

2. Անշուշտ քահանայ էր. բայց ինչո՞ւ Սարկաւագ կոչուի։

3. Հաստատ կամ Անշարժ տոմարին հետ Նոր Թուական մ՚այլ հաստատեց, Քրիստոսի 1084 տարիէն սկսեալ։

ընդ Հայոց. վասն զի յոյժ իմաստուն էր այրն, և աստուածային շնորհօք զարդարեալ։ Սորա բանքն ամենայն իմաստասիրական ոճով է, որպէս զԳրիգորի Աստուածաբանին՝ և ոչ գեղջուկ։ Սա գրեաց ճառս ներբողականս ի մեծազօր արքայն Հայոց Տրդատ, և ի սուրբ հայրապետն Ներսէս, և ի աքանչելին Սահակ և Մեսրոպ[1]. արար և չարականս Ղեւոնդեանց քաղցր եղանակաւ և յարմար բանիւ, որոց սկիզբն է այս. Պայծառացան այսօր սուրբ եկեղեցիք։ Գրեաց և Ճառս ներբողականս նոցունց[2]. գրեաց սա և գիրս Աղօթից[3]. գրեաց և օրինակս ստոյգ Գրոց[4]։ Եւ կարի յոյժ սիրէր զսա թագաւորն Վրաց Դաւիթ, հայրն Դեմետրեայ, պապն Գէորգայ և Դաւթի. այնքան՝ զի մինչ լսէր զգալուստ նորա՝ յոտն յառնէր և ելանէր ընդ առաջ նորա, և խոնարհեցուցեալ զգլուխն՝ խնդրէր ի նմանէ օրհնութիւն. և նա եդեալ զձեռն ի վերայ գլխոյ նորա, զայս սաղմոս ասէր. «Գտի զԴաւիթ ծառայ իմ, իւղով սրբով օծի զնա. ձեռն իմ ընկալցի զնա և բազուկ իմ զօրացուսցէ։ Մի՛ մեղիցէ նմա թշնամի և որդի անօրէնութեան մի՛ չարչարեսցէ զնա»։ Եւ ի պատճառս սորա սիրէր թագաւորն զազգս Հայոց։

Դէպ եղեւ սմա վասն անառակ գնացիցն որոչել զոմն ի խորհրդական պատարագէն, Ջումզումա անուն. և նա փոխանակ զղջանալոյ և ապաշխարելոյ՝ խորհէր սպանանել զաքանչելին. և օր մի պատահեալ նմա՝ մինչդեռ գայր նա յայրէ անտի՝ որ

1. Այս ներբողներն անծանօթ են մեզ. միայն Ս. Լուսաւորչի վրայ գրածն կայ և տպագրեալ է։

2. Այս ներբողն այլ չկայ։

3. Այս Աղօթագիրքն տպագրուած է ի Ս. Ղազար։

4. Այսինքն Աստուածաշունչ գրոց, բաղդատելով ձեռագիրքեր. կ'ըսուի թէ գտեր էր և բուն մեր Թարգմանչաց ձեռօք գրուած օրինակ մի, և երեսայցը քսելով պագնէր։

ի ներքոյ կայ վանիցն (Հաղբատայ), հայելով ի վերայ գետոյն. ըմբռնեալ անամօթն՝ ընկէց յերկիր և հարաւ ի վերայ նորա։ Իսկ սուրբն զի իմաստուն էր, ասէ ցնա. Որդեակ Ստեփաննոս, մի՛ սպանաներ զիս։ Եւ ասէ ցնա յանդուգն. Մինչեւ ցայժմ Զոմզոմա էի, իսկ այժմ փոխանակ միոյ նուիրագործ յաւելուս Ստեփաննոս. (քանզի աւելի անուն նորա Զոմզոմ էր[1]). դու ընդէ՞ր սպաներ զիս, զի հաներ յեկեղեցւոյն։ Ասէ ցնա իմաստասէրն. Եւ դարձեալ մուծից զքեզ յեկեղեցի։ Եւ եկեալ ի վանս ասէ ցեղբարսն. Զոր ինչ առէին զեղբօրէս զայսմանէ՝ կարծեմ թէ սուտ է. աճապարեալ մուծանեմ զսա յեկեղեցի։ Եւ հրամայեաց եկեղեցպանին առնել զնա աւագ երէց։ Բազում քրթմնջիւն էր վասն այնորիկ, որպէս թէ անարժան էր, և նա կաշառս էառ և եմոյծ զնա յեկեղեցին։ Իբրեւ եհաս ժամ խորհրդական պատարագին, եւ թշուառականն ի բեմն անդր զի մատուսցէ պատարագ. և եկն վարդապետն ի գաւիթ անդր ի մէջ ատենին հանդէպ սրբոյ սեղանոյն, երաց զգլուխն իւր, սկսաւ աղօթել. և վաղվաղակի ոգի չար եմուտ յայրն անօրէն, և ընկէց զնա ի բեմէ անտի յատակս տաճարին, և սկսաւ լլկել զնա յոյժ. և հանին զնա արտաքս ի տաճարէ անտի, որպէս զՈզիա. և երկիւղ մեծ անկաւ ի վերայ տեսողացն։

Եւ այսպիսի բարի քաղաքավարութեամբ կեցեալ յաշխարհի՝ փոխեցաւ ի Քրիստոս աշխատասէրն՝ ի Հաղբատ. և թաղեցին զնա յարեւելից կուսէ եկեղեցւոյն մեծի առ դուռն փոքրագոյն եկեղեցւոյն[2], զոր յետոյ քակեաց եպիսկոպոսն Համազասպ և

1. Այս նախատական մականունը չգիտեմ ինչ նշանակէ։ Թուի թէ Սարկաւագ ձայնը կակըղցընելով Ստեփանընոս կ'ըսէր։

2. Իր վեմ մնաց համեմատ է և տապանագիրն. Արձանս այս Սեմական է Սոփեստէսի Սարկաւագին։

շինեաց հրաշալի շինուած՝ ուր զանկական կախէին, յարմարեալ ի նմին և եկեղեցիս։ Եւ եղեւ վախճան սորոյն ի հինգ հարիւր եօթանասուն և ութ թուականին (1129[1])։ Եւ զկնի ամի միոյ վախճանեցաւ սուրբ լուսաւորիչն Դաւիթ վարդապետ Ալաւկայ որդի, որ գրեաց զկանոնական օրինադրութիւնս գեղեցկայարմար և պիտանացու[2], ի խնդրոյ քահանայի միոջ՝ որում անուն էր Արքայութիւն, ի քաղաքէն Գանձակայ։ Եւ միւս եւս սքանչելի վարդապետն՝ զոր Թոքակերի որդի կոչէին՝ Գրիգոր անուն. սոքա երեքին յաշխարհէ Գանձակայ էին, ուստի և ես։ Դէպ եղեւ զի յաւուր միում նստէին երեք այս արքս սքանչելի. եկն անդ այր մի շինական, և ասէ ցնոսա. Երանի՛ որ գիտէ ի ձէնջ թէ ո՞րդ իմաստնագոյն իցէ. զայս իբրեւ ծաղրական ասաց։ Պատասխանի ետ Թոքակերի որդին և ասէ. Ես ասեմ քեզ. մինչդեռ էաք ի մերում աշխարհին՝ ես կտրող էի և կարող. իսկ Սարկաւագս կարել միայն գիտէր. իսկ այժմ սա կտրէ և կարէ, և բազում նկարս յաւելու ի վերայ։ Զայս առակաբար վասն յիմարութեան նորա ասաց. զի այնպէս փոյթ էր այրն յուսումն, մինչ պատահեաց յաւուր միում գնալ յայրն յորում էին գրեանքն, և այլք ընդ նմա. իբրեւ ելին որ ընդ նմա էին և փակեցին զդուռն, նա թաքոյց զանձն ի ներքս. այսպէս գիտելով նոցա՝ եթէ նախ ել նա։ Իբրեւ անցին բազում աւուրք ի վերայ՝ դարձեալ գնացին յայրն ի պէտս ինչ, և տեսին զնա անդ, և սքանչացան, և հարցանէին՝ թէ ո՞րպէս ապրեցար առանց կերակրոյ և ըմպելւոյ. և եցոյց նա զգրեանն զոր ընթերցեալ էր, և ասէ. Այդ է իմ կերակուր և ըմպելի՝ զոր կերայ և արբի զաւուրս զայսոսիկ[3]։

1. Ոմանք տասն տարի առաջ կամ վերջ նշանակեն զթուականն, Կ (60) և Հ (70) տառից շփոթմամբ։
2. Այս օրինադրութիւնք մասամբ հասած են մեզ։
3. Սելջուկեան Թուրքաց համար է բանն։

# ՄՁԱ

## ՓԱՏԼՈՒՆ ԱՄԻՐԱՑ ՏԻՐԷ ԱՆԻՈՅ· ՔԱՋՈՒԹԻՒՆ ԱՑԾԵԱՄՆ ԿՆՈՋ

(ՍԱՄՈՒԷԼ ԱՆԵՑԻ)

Ի բազում հինահարութեանց և ի սպառ ջնջելոյ ասպատակ արձակելով յաշխարհս մեր, երբեմն ի Վրաց, երբեմն ի Սկիւթացւոց[1], անհնարին նեղութեամբ տարակուսեալ տառապեալ բնակիչք քաղաքիս Անւոյ և Շիրակ գաւառի, խորհեցան ելս գտանել մրրկին՝ ձեռս տալով յարքայն Վրաց ի Դաւիթ. նենգեցին ամիրային Ապլսուարայ որդւոյ Մանուչէի՝ որ տիրէր քաղաքին՝ յետ հօրն մահու. առնլով զթագաւորն ի ներքս, բանալով զդրունս քաղաքին. որ ընդ մտանելն եղեւ վնաս արեան և ոչ մի չնչոյ. բայց կալեալ զԱպլսուար որդւովքն՝ ընդ իւր խաղացոյց յերկիրն Վրաց, ի մահարար տեղւոջ բնակեցոյց զնոսա. ուր երկու որդիքն հանդերձ հարբն վճարեցին զկենցաղս: Նոյնպէս և քաջն Դաւիթ մեռանի. անդէն թագաւորէ աշխարհին Վրաց որդի նորա Դեմետրէ գովեալ յամենայն արիական մանկութիւնս: Իսկ Փատլուն անդրանիկն Ապլսուարայ՝ գնացեալ յառաջագոյն առ ամիրապետն ի Խորասան, յորժամ լուաւ զայսպիսի լուր զհօրէն և զտեղեացս, փութացաւ գալ յերկիրս մեր. և շուրջ զքաղաքաւս զիշխողս իւրաքանչիւր տեղեաց ի բանի արարեալ՝ պաշարեաց զսա. վասն որոյ զամն զայն ողջոյն օր ըստ օրէ սաստկացան հարուածք սովոյն. և բնակիչք սորա

1. Ապ-իւլ-Սէվար. Շէտատեան քուրդ ցեղի ճիւղ մի էր Սէվար կոչուած, յորմէ մէկն այլ Դուին մայրաքաղաքին տիրեց:

ի կողմանս կողմանս ելս առնելով ի գիշերի[1]. յորոց վերայ անկեալ դարանեալքն՝ զարս կոտորէին, որոց արեամբ և ոսկերօք ծածկեցաւ երկիր, և զկանայս և զմանկունս՝ վաճառական առնէին։ Եւ թէպէտ ետեղակալք գային յաշխարհէն Վրաց երբեք երբեք առք անուանիք, որպէս անուանի քաջազօրին իշանն որդի Ապլհեթի, որ բազում արութիւնս ցուցեալ՝ զասպատակս կոտորէր, և ի զօրաժողովս լինել ի վերայ քաղաքիս՝ Փատլունոյ՝ բազում հեծելովք առ ոչինչ համարեալ՝ պարտէր. այլ և սակաւ արամբ պատճառք եղեւ փրկութեան քաղաքիս, մարտակցութեամբ բնակչաց սորա։

Եւ յայսմ պատերազմի կին մի առաքինացաւ ի վերայ պարսպացս, առնացի ստացեալ սիրտ. հալածականս առնէր քարամբք զմարտուցեալսն յելանելն ընդ պատուարսն՝ առ ոչինչ համարեալ զխոցուած նետիցն զոր վիրաւորէին արտաքուստ. և էր անուն նորա ըստ արժանի արագութեանն Այծեամն կոչեցեալ։ Սակայն, վասն զի թագաւորութիւնն Վրաց չեւ էր հաստատեալ բովանդակ, և սոյն և մարդածախութիւն յոլովացաւ, ապա հարկեցան տալ անդրէն ի Փատլուն զսա. դաշինս երդմանց պահանջեալ ի նմանէ՝ չառնուլ վրէժս ի նենգելոց հօր նորա և եղբարց, զոր թէպէտ և յանձն առնոյր առ ժամայն, այլ յետ զպարապ առնլոյ՝ խուժք խուժք հնարիւք առ զվրէժս, հատուցեալ նոցա զհատուցումն։ Յորոյ իշխանակալութեամբն թէպէտ և խաղաղանայր երկիրս ի սովորական հինիցն, այլ վասն վերոյգրեալ նեղութեանց և յաղագս հարկապահանջ յափշտակութեանց, եկն եհաս ի վերայ մեր յետին աղքատութիւն և տառապանք անհնարին, որ յառաջագոյն ժամանակօք ունէր զաշխարհս Հայոց, և աստանօր յաւելու յաճախապէս մինչեւ յաւուրս յայսոսիկ յորում եմքս։

1. Գիշեր ատեն Անեցիք քաղքին այլեւայլ կողմերէն կ՚ելլեն փախչելու։

# ՄՁԲ

## ԺԱԺ ԳԱՆՁԱԿԱՑ

(ՄԽԻԹԱՐ ԳՈՇ)

Ցամսեանն արեգի որ օր ութեւտասն էր ամսոյն, ի գիշերի ուրբաթուն ի լուսանալ շաբաթուն, յորում աւուր տօն էր Սրբոյն Գէորգայ, զարթեաւ ցասումն բարկութեան Աստուծոյ ի վերայ աշխարհի՝ ի բանութենէ հողմոց[1], և շարժեալ անհնարին դողմամբ սաստիկ կործանումն հասուցանելով աշխարհիս Աղուանից, ըստ գրելումն, թէ, «Ո շարժէ զառ ի ներքոյս երկրի ի հիմանց, և սիւնք նորա դողան. և ըստ միւսումն, Ո հայի յերկիր և տայ դողալ սմա»։ Որով շարժմամբ բազում աւերուած լինէր ընդ բազում տեղիս ի գաւառիս փառիսոսոյ և խաչինոյ, առ հասարակ ի դաշտս և ի լերինս. յորում և մայրաքաղաքն Գանձակ առ հասարակ յանդունդս կործանիւր, խորասոյզ առնելով զբնակիչս իւր. քանզի չորս կողմ երեսաց նորա ամփոփեաց զնոսա ի ծոց իւր. և ի լեռնակողմանս բազում դղեակք և գիւղք տապալեցան հանդերձ վանորայիւք և եկեղեցեօք, որք փլան ի վերայ գլխոյ բնակչաց իւրեանց. յորում և անթիւք սատակեցան ի կործանմանէ շինուածոց և աշտարակաց. և լինէր այս ի ՇՁԸ (1139) թուականին Հայոց։

Իսկ ի նոյն յաւուրսն յորում եղեւ շարժումնն, ել թագաւորն Վրաց հանդերձ զօրօք բազմօք և եկն ի գաւառն Առանայ[2], որ անուանեալ կոչիւր Գե-

1. Յիշեցինք որ ըստ կարծեաց ոմանց՝ երկրի ներքեւ խորոց մէջ հովեր շնչեն, և անկէ պատճառի գետնաշարժն։

2. Նոյն Հայ–Աղուանից երկիրն է։

մեարկ՝ որդի Դաւթի թագաւորի. սորա եկեալ ի մայրաքաղաքն Գանձակ՝ յառաջնորդութենէ զօրագլխին իւրոյ Խունճէի, որ եկեալք անողորմ և գազանային բարուք՝ յարեան ի վերայ միացորդաց մարդկանն, վարելով առհասարակ ի սուր և ի գերութիւն. որ թէպէտ և տեսին զքաղաքն զայն որ յառաջագոյն էր քաղաք վայելուչ՝ որպէս զդժոխք եղեալ յանկարծակի, զի ի միասին կուտեալ էին ի նմա բլուրք ոսկեաց և բլուրք ոսկերաց մարդկան, յորում և անթաղ կային անթիւ բազմութիւնք դիականց. սակայն ոչ կամեցան առնել ողորմութիւն ի վերայ նորա. այլ փորէին հանելով զգանձս ոսկւոյ և արծաթոյ, և քերելով և տառապանօք տուեալ չարչարեցին քան զժամանն: Իսկ յաւուր չարժամանն՝ ի սաստկութենէ հարուածոցն փոխեցան առ Քրիստոս լուսաւորիչ վարդապետքն մեր Սարգիս և Գրիգոր[1]: Իսկ յետ աւուրց ինչ անցելոյ, ամիրայ ոմն ի Տաճկաց՝ որ անուանեալ կոչիւր Խարաճգուր, որ ըստ պարսկային բարբառոյն տիեզերակալ անուանեցաւ, սորա ելեալ յաշխարհէն Պարսից եկն ի գաւառս Առանայ, և սկիզբն արար շինութեան և հաստատութեան այսմ աշխարհի, և շինեաց զաւերեալ պարիսպ քաղաքին Գանձակայ, և առնէր խաղաղութիւն ամենայն սահմանաց նորա. և ապա դիմէր ի վերայ գաւառին որ ընդ իշխանութեամբ թագաւորին Վրաց, առ ի վրէժխնդիր լինել վասն գաւառի իւրոյ որ աւերեալն էր ի ձեռաց նորա, քանզի յառաջագոյն ընդ նորա իշխանութեամբ էր Գանձակ հանդերձ ամենայն սահմանօքն իւրովք: Ապա երթեալ յաշխարհն Վրաց միանգամ և երկիցս՝ զարհուրեցուցանէր զնոսա դողմամբ, և առնոյր յամուր դղեկաց նոցա և նուաճէր զնոսա, և դառնայր այսրէն ընդ լեռ-

1. Ի՞նչ էր այս վարդապետաց տուած լոյսն, կամ ո՞վք էին, մեզ անծանօթ են:

Նակողմ Գեղամայ[1]. ապա անցեալ ընդ գետն Եփրատ՝ հասանէր ի սահմանն Ատրպատականի, և անդ վախճանէր զկեանս ի ՇՁԹ թուականին Հայոց։

---

## ՄՁԳ

### ԱՌՈՒՄՆ ՈՒՌՀԱՅԻ Ի ԶԱՆԳԻ ԱՄԻՐԱՅԷ[2]

(Մ. ՈՒՌՀԱՅԵՑԻ. ՄԾԷ.)

Ի տէրութեանն Անտիոքայ որդւոյ Պեռեւմնին[3], որ էր ի տիս մանկութեան՝ ահայազոր և ուժեղ, այլ ոչ խելանի յիմաստասիրութեան, յիշխանութեան Պաղտնինն, որ էր Տէր Քեսնոյ և Մարաշայ և գաւառաց նոցա, ի սինօռէն[4] Մելտենոյ մինչև ի դուռն Անտիոքայ, որ էր տղայ տիօք և ծեր մտօք, աստուածահաճոյ յամենայն ի գործս արդարութեան. ի կոմսութեան Ճօսլինին փոքու՝ որդւոյ մեծի քաջ զօրականին Ճօսլինին, ի հայրապետութեանն Հայոց Տէր Գրիգորիսի[5] տանն Թորգոմայ. յաւուրս սորա և յառաջասացեալ թուաբերութեանս, ի տօնի սրբոյ Նախավկային Ստեփաննոսի, առնես եղեալ քաղաքն Ուռհայ ի քաջըր կամաց Արարչին, որ և առաւ բռնութեամբ յորդւոց Հագարու, որոյ անուն գլխաւորին Զանգի յորջորջէր. զոր բազում և անխնայ արիւն եա հեղուլ, ոչ խնայելով ի պատուական ծերսն. ոչ մայր ի

1. Սեւանայ ծովուն արեւմտակողմն։

2. Ցաջորդ յօդուածին մէջ պիտի տեսնուի՝ որ մեր Շնորհալի հայրապետն՝ թէ և բանաստեղծօրէն գրելով՝ շատ աւելի տեղեկութիւն տայ այս դիպուածիս վրայ։

3. Bodouin որդի էր Բոեմունդ դքսի։

4. Սահման, մօտ, դրացի երկիր։

5. Եղբօր Ներսիսի Շնորհալւոյ։

դուստր գթայր, և ոչ ողորմելով գառնանման տըղայոցն. որ և յահէ սրոյն զարհուրեալ քաղաքացեացն՝ փախստեամբ դիմեալ յապաւէն իւրեանց, զոր կչայ Մանիակայ ասէին[1]. ոչ եղբայր զեղբայր հօգայր և ոչ հայր զորդին, և ոչ մերձաւոր բարեկամ ի սիրելիս իւր նայելով, յաղագս դառն և ծանր լուսոյն այնորիկ. ոչ ժամանեալ փախուցելոցն մտանել յամուրն իւրեանց, խեղդամահ եղեալ ի դուռն ամրոցին՝ և մեռան ոգիք իբրև երկու հազարք. որ և պատրոն[2] Ֆռանկաց հեղձաւ յամբոխամիջի անդ։ Զայսոսիկ տեսեալ բռնաւորին՝ զղջացաւ ի միտս իւր, և հրամայեաց վերացուցանել զսուրն որ անխնայ և անողորմ կոտորէին ըզմարդիկն ի փողոցամիջի անդ՝ իբրև զանասունս. և զազգն Ֆռանկաց զոր ըմբռնեցին՝ հրամայեաց առաջի իւր սրախողխող առնել, և զկին և զորդիս ի գերութիւն վարել. և որք փախուցեալ քրիստոնեայք էին որք ժամանեցին մտանել յամրոցն, ոչ բաւեցին աւուրս բազումս, քանզի ջուր ոչ ունէին. առին և զայս սրով և երդմամբ։ Եւ ամբարտաւանն այն կամեցաւ խաղաղեցուցանել զքաղաքն, և հրամայեաց քարոզել՝ մի՛ ամենեւին այլ դժուար առնել քրիստոնէից, քանզի յագեցան ամենեքեան արեամբ և գանձիւ։

Դարձեալ խրոխտացաւ ի միտս իւր՝ որպէս և կատարեաց զյաղթութիւնն մեծ, զոր ի բազում ժամանակաց ոչ ոք ի մեծամեծաց և ի վեհագունից կարող եղև տիրել բռնութեամբ քաղաքին օրհնելոյ ի Տեառնէ, զոր անսուտ բերանովն հրամայեաց ի մարգարէութեանն իւրում, զոր գրեաց ի թղթին իւրում առ Աբգար[3] թագաւորն, թէ, «Սով

1. Անուամբ երբեմն տիրողի քաղաքին։
2. Ոչ պապն Հռովմայ, այլ Անտիոքայ պատրիարքն։
3. Անվաւեր թուղթ մի, զոր Եւսեբիոս, Խորենացի և այլք յիշեն. բայց անոր մէջ այս քաղքին պաշտպանութեան կամ չառնուելուն խօսք չկայ։

և սուր ոչ մտցէ ի քաղաքս քո՝ ի ժամանակի թագաւորութեան քո, եթէ կայցեն ի հրաման պատուիրանի իմոյ»։ Զոր և մոռացեալ նոցա յետ ժամանակաց զպատուէր Արարչին՝ նմանեալ Իսրայելացւոցն, (որք) յետ բազում երախտեացն զոր ընդունէին յԱստուծոյ, դարձեալ փութանակի մոռանային զաստուածատուր և զանճառ բարիսն, զսոխն և զսխտորն Եգիպտացւոց և զդառն ծառայութիւնն՝ յոգւոց հանելով յիշէին, մինչև զանբարկանալին Աստուած ի ցասումն սրտմտութեան բորբոքէին՝ ոչ տալ տեսանել նոցա զերկիրն խոստացեալ։ Նոյնպէս քաղաքացիքն զայս խոստումն Աստուծոյ մոռացեալ էին, և գործէին զանարժանս հակառակ կամաց ողորմածին Քրիստոսի. որ և ըզփոխարէնն առին՝ ըստ անիմաստ մտաց իւրեանց։

---

## ՄՋԴ

### ՈՂԲՔ (Ի ԴԻՄԱՑ ՔԱՂԱՔԻՆ) ԵԴԵՍԻՈՅ[1]

(ՆԵՐՍ. ՇՆՈՐՀԱԼԻ.)

Բայց եւ ըզքեզ յայս հրաւիրեմ
Արեւելեան քաղաքդ Անի,
Կըցորդ իմոյս լինել ձայնի

1. Եթէ շատերն չեն կարդացեր՝ բայց լսած են, որ մեր Շնորհալի հայրապետն՝ իր ատեն (1144ին) այս քաղաքին առման և փորձանաց վրայ երկայն ոտանաւոր ողբախառն պատմութիւն մի գրած է, համարելով թէ ինքն քաղաքն Եդեսիա կամ Ուռհա՝ երբեմն թշուառ Թագուհի մի կ'ողբայ իր և իրեններուն վրայ. և իրմէ առաջ նոյնպիսի փորձանաց հանդիպողները կու հրաւիրէ ողբակից ըլլալ. որոց մէկն այլ էր մեր աշխարհահռչակ Անի քաղաքն։ Աւելորդ

Եւ ըսթափել տարակուսի.
Քանզի և դու երբեմն էիր
Վայելչական հարսն ի քօղի,
Մերձաւորաց յոյժ ցանկալի
Հեռաւորաց փափագելի։...
Այլ կարեկից ինձ այս վըշտի՝
Պարտ է կոչել աղերսալի
Չորեքծագեան կողմ աշխարհի՝
Որք ընդհանուր մարդկան որդի,
Զարեւելս արեւմըտիւք
Եւ զհարաւ ընդ հիւսիսի։...
Եդեսիա Ուռհայ քաղաք
Որդեկորոյս որբ և այրի՝
Կանչեմ առ ձեզ ձայն կանացի
Կականալիր ողորմելի.
Զքօղս ի գլխոյս մերկանալով՝
Զիմ պատառեմ զծածկոյթ զարդի.
Փետեմ ըզվարսս իմ ցանկալի,
Խըզեմ ըզհերս անխնայելի։...
Նըստիմ ի սուգ ի տան մըթին
Որպէս օրէն է սգաւորի...
Քանզի առակ եղէ յերկրի,
Տիեզերաց նախատելի.
Եւ անցաւորք ճանապարհի
Վա՜յ ի վերայ ասեն վայի.
Զի ոչ ծածուկ էի տեղի
Կամ ի յանկեան ինչ թաքըստի,
Այլ ի գետացն որ յԱդենի՝
Էի բազմեալ ես ի միջի,
Ի յԵփրատայ և Տիգրիսի՝

է ըսել՝ որ Շնորհալւոյ գեղեցիկ և իսկատիպ գրուածոց մէկն է այս անուանեալն Ողբք Եդեսիոյ, թարգմանուած և ֆռանկերէն. 2000 տող աւելի է գրածն, որոյ առաջին կիսոյն միջէն քաղելով քանի մի հարիւր տող հրատարակեմք, թողածներուս նշան դնելով այս.... կէտերը։

Որ Միջագետքն անուանի։...
Ես մայր էի բազմորդութեան,
Անթիւ ծընայ դուստր եւ որդի,
Զորս մայրաբար դիեցուցի՝
Ի ստեանց իմոց կաթն արբուցի.
Գեղեցկատիպ յօրինեցի,
Վայելչապէս զարդարեցի.
Քանզի երկիր պարարտ էի,
Աղբիւր և կաթն յորդ բղխէի,
Արգասաւոր վայրի նըման
Ի այլ գերագոյն ես թըւէի.
Ջուր կենդանի յինէն բղխէր
Եւ զանազան բոյս յօրինէր.
Գետոց նըման վըտակ հոսէր
Ըզբուրաստանս արբուցանէր.
Ծովն ի միջի իմ ծածանէր
Քաղցրիկ օդովըն ծիծաղէր.
Զաղտեղութիւն տըղմից մաքրէր
Եւ զհըրապարակըն զարդարէր[1]։...
Տերեւախիտ հեզիկ շարժէր,
Անմահութեան հոտ իսկ բուրէր.
Նարդոս քըրքում ինձ ընձիւղէր,
Վարդ մանուշակ վերաբերէր,
Առաւօտեան ցօղն իջանէր
Ոսկէնըման ճաճանչ փայլէր.
Անհամեմատ երկրի նա էր
Պտղովն ամեն զոր ընծայէր։...
Բայց թէ զդիրս իմ յանկաւոր[2]
Ոք պատմեսցէ պատշաճաւոր,
Կարծեմ թէ չէ նմանաւոր

1. Յայտնէ քաղքին մէջ թէ ջըրի մեծ աւազան և թէ շատ աղբիւրներ ըլլալն, թէ մաքրութեան համար և թէ պարտիզաց ոռոգման:

2. Հետեւեալ տողերով նկարագրէ քաղքին գեղեցիկ դիրքը, շէնքերը, ամրութիւնները, վաճառանոցները, և այլն:

Այս քաղաքացս որ երկրաւոր.
Լայն և արձակ նստեալ յաթոռ՝
Որպէս ի կառըս թագաւոր,
Կամ թագուհի յոյժ գեղաւոր
Ոսկէտըստուն և ճամկաւոր,
Փողփողելով ի վերջաւոր
Պայծառազգեստ և պճնաւոր.
Շուրջանակի պարսաւոր
Պարիսպ ածեալ լայն և ամուր,
Աշտարակօք բարձր, ահաւոր,
Իմաստապէս արուեստաւոր.
Հաստահեղոյս հիմամբ ի խոր
Մահարձանօք պըսակաւոր.
Տունք և տաճար զարմանաւոր
Շինեալ ի գիրկս իմ չքեղաւոր.
Ցարկ և փողոց, տեղ վաճառոց
Գոյր յօրինեալ հանճարաւոր:
Բայց ըղխորանըն լուսաւոր[1]
Թէ որպիսիք յոյժ փառաւոր,
Ձայն չէ ասել ինձ հնարաւոր
Կամ հողեղէն մարդ երկրաւոր.
Զի երկնայնոցն է նմանաւոր,
Վերնագունին հանգիտաւոր,
Զարմանազան և աննման,
Զոր չէ տեսեալ մարդ բանական.
Այնպէս կայի յոյժ խնդաւոր
Զերդ մայր որդւով բերկրեալ յորդոր:...
Եօթնասուն խորհըրդաւոր
Աւանք պատեալ զինեւ բոլոր[2],
Եւ ես բազմեալ զերդ թագաւոր
Կայի ի մէջ հանդիսաւոր:
Արդ, այս բարիքս որ պատմեցան
Փոքր ի չատէ բան ճառեցան,

1. Եկեղեցեաց համար կ՚ըսէ:
2. Մանր գեղերէն զատ՝ 70 մեծ գեղ կամ աւան այլ ունի եղեր Եդեսիա իր չորս կողմն:

Որ ի յանցեալ դարուն սկսան
Եւ այժմ առին փութով վախճան։...
Բարիքն ամէն ըսպառեցան
Եւ քաղցրութիւնքըն՝ դառնացան,
Եւ երանի տալոյն փոխան՝
Չիս եղկելի այժըմ կարդան.
Իմ թշնամեաց դասքըն խնդան,
Եւ սիրելիքս կարի ողբան.
Գլուխ ի վերայ իմ ամբառնան
Որք ի ներքոյ ոտիցս եղան։...
Յայնժամ յարեան ի յիս վերայ
Ազգք և ծընունդքըն Հագարայ.
Յառաջ՝ զորդիսն իմ զոր ծընայ՝
Կոտորեցին յոյժ անխընայ,
Ապա զաւանսըն պարագայ
Որք և կային ինձ շըրջակայ՝
Քանդեցին աւերեցին,
Հողաբլուր թողին զնոսին.
Եւ այս ի յամս էր ոչ սակաւ՝
Այլ քառասուն և այլ փերակայ[1],
Յորս ի յուժոյ պակասեցայ
Եւ զօրութեամբ տըկարացայ.
Հէնք ի հինից գային վերայ,
Ապստակաւ ես գերեցայ։...
Արդ, զայս տեսեալ բռնաւորին
Եւ նենգաւոր թիւնաւորին...
Արձակեցաւ յանկարծօրէն
Եւ յեղակարծ ժամանակին.
Յորժամ լըւաւ և իմացաւ
Որ զօրականքն իմ աստ չէին,
Յայնժամ պատեաց շուրջանակի
Չիս պաշարեաց զօրօք նորին[2]...

1. Գրեթէ Խաչակրաց գալէն և Եդեսիոյ առնելէն քիչ ատեն վերջը սկսած է անոր նեղութիւնը յայլազգեաց։
2. Նախընթաց Յօդուածէն իմացուեցաւ թէ ո՛վ էր պա-

Եղիմացիք և Քեռսացիք
Անթիւ բազում լեգէոնին.
Զօրք բիւրաւորք պատեալ կային
Անել ւ անմուտ զիս տանէին...
Զըրահաւորք մըկընդաւորք
Նիզօք ի ձեռս վառեալ գային
Ծօշիւք[1] պատեալ բոլոր անձին,
Տիգաւորք ւ աղեղնաւորք
Նետիւք հարեալ խոցոտէին.
Պատնէշ կանգնեալ մեքենայիւք՝
Ըռըմբաքարըս հոսէին.
Ծեծէին հարկանէին
Անհընարին տագնապէին:
Բայց այսոքիւք ոչ կարացին
Յաղթել քաջացն՝ որ յիս կային,
Մինչեւ ի յայլ հընար մըտին
Այն խորամանկ նենգաւորին.
Որպէս գխլուրդըն[2] փորէին,
Ներքոյ հիմանց ամրականին՝
Սիւնս և նեցուկս հաստատէին
Աշտարակացն և տաճարին,
Առ ի յայրել պատրաստէին,
Որպէս օրէն է այս նոցին:
Յանկարծ բարբառ արձակէին
Առ ժողովուրդըս քաղաքին,
Մի՛ յամառել ընդդէմ նոցին,
Զի մի՛ մահու մեռանիցին.
Այլ տալ յօժար և կամովին՝
Զի բարութեանց պատահիցին:
Եւ զայս լըսեալ՝ ժողովէին
Քաջքն և արիքն ի միասին.
Գընդէին հաստատէին

շարադն. Զանգի, որդէ Մելիքշահէն այն կողմերու իշխան դրուած Աք-Սօնղուրի: Տես Յօդուած 265:

1. Զրահ նշանակէ:
2. Գետնի մուկ, Taupe.

Ուխտս և դաշինըս դընէին՝
Ոչ երկուանալ ի հանդիսին,
Ոչ լըքանել պատերազմին,
Ոչ հաւանել բանից նոցին
Եւ ոչ կամաւ բանալ նըմին[1].
Քանզի բարւոք վարկանէին
Թէ անդանօր մեռանէին,
Եւ ոչ սըտել մեծի ուխտին
Եւ վայելել առօրէին.
Մակաբայեանց նըմանէին
Եւ Վարդանանց պատերազմին։..
Քաջալերէր հայրըն զորդին,
Որդիքն ի մարտ պատրաստէին...
Եպիսկոպոսք և վարդապետք
Եւ քահանայք պատուիրէին
Անդրդուելի կալ ի մարտին
Արիաբար ընդդէմ չարին։...
Արդ, իբրեւ զայս բարբառէին
Եւ քաջալերս միմեանց տային,
Գոնէ հասցեն մեզ օգնութեան
Քաջ և արի զօրքն, ասէին[2],
Եւ ի թիկունըս հայերին
Ընդ ճանապարհըս դիտէին...
Թէպէտ և ոչ ժամանեցին
Որոց ինքեանք ըսպասէին.
Քանզի յամեալ յապաղեցին
Որք ընդհանուր կողմանս էին՝
Գալ յօգնութիւն իմոյ կոմսին՝[3]
Երկրպագուք սրբոյ Խաչին։
Վասն այնորիկ յոյժ փութային

1. Կ'իմացուի թէ քաղաքացիք յանձն չառին դղա-ները բանալ և հնազանդիլ պաշարողին։
2. Յուսալով որ Խաչակիրք իրենց օգնութեան գան։
3. Այս կոմսն էր Ժոսլէն կամ Ճոսլին Բ կամ Փոքր, որդի Ա և մեծ Ժոսլընի և մեր Պարոն Լեւոնի դստեր։

Կողմանք դաստաց հակառակին[1],
Զի գործ ծածուկ մեքենային
Փոյթ և արագ վըճարեցին….
Յայնժամ ըմհուրըն Սողոմին՝
Ներքուստ ի վեր բորբոքեցին,
Ոչ ի վերուստ անձրևածին՝
Այլ ի ստորինըս փորուածին։
Ցայնժամ պարիսպք ամրականին
Վերուստ ի վայր կործանէին
Եւ ի հիմանց տապալէին,
Մուտ թըշնամեացըն գործէին.
Այլ քաջարիքն ոչ կասէին
Ի ոչ ի փախուստ դառնային,
Բայց առ միմեանըս ձայնէին
Քաջալերեալ յորդորէին….
Իսկ չարութեան արբանեկին՝
Զդասըն վառէր զօրականին,
Հրատարակէր ի լուր նոցին
Արիանալ եւ յայն մարտին.
Յորմէ պարգեւք խոստանային
Եւ մեծութիւն յոյժ երկրային.
Նա և պատիժ պատուհասին
Սպառնայր ածել թոյլ և վատին։
Ցայնժամ զինեալք յոյժ վառէին
Գաղանաբար յարձակէին
Մերձեալ ի մուտըն պարըսպին։
Իսկ զօրականքն անյաղթելի
Ըզհակառակսըն վանէին.
Մինչ զի զահի հարկանէին
Եւ յետս ընդդէմ նահանջէին։
Բայց, երանի էր իմ անձին՝
Թէ բանք իմ աստ դադարէին

1. Թշնամիք այլ վախնալով որ օգնականք չգան, ջանային շուտով առնել քաղաքին, թէ պարսպաց հիմերը փորելով թէ մեքենաներով զարնելով և թէ կրակ թափելով։

Եւ ոչ յառաջ իսկ խաղային[1],
Քանզի ճմլէ զսիրտ լըսողին։
Այլ չէ օգուտ ինձ յայսցանէ
Բանիւ լըռել զորս ի կարգին։
Քանզի յորժամ ոչ կարացին
Յաղթել քաջացն որ անդ կային,
Յայնժամ վիշապն անդընդային
Գոչեաց ռամիկ զօրականին,
Ի սուր ւ աւար ի գերութիւն
Ասաց առնել զամենեսին։
Եւ զայն լըւեալ հեբրայեցին[2]
Անթիւ զօրաց բարբարոսին՝
Իբրեւ զեռանդըն կաթսային
Բոլոր պատեալ շուրջ քաղաքին՝
Ջերմըն սիրով տագնապէին
Եւ առ միմեանս արշաւէին.
Փողս և տաւիղըս հնչէին
Իբրեւ յամպոցն որոտային,
Ձայնս ահագինս արձակէին,
Մինչ զի զերկիր դըղըրդէին։...
Եւ զի տեսեալ ժուժկալեցին
Իբր ամսօրեայ գոլ ի մարտին,
Վասն այն տեղի ինչ ամրոցին
Ի պահակացն Թափուր գըտին,
Յորում ելեալ բարձրանային
Սակաւք ոմանք յաշտարակին.
Իսկ ժողովուրդըն քաղաքին
Ձայն ինչ տեսեալ՝ զարհուրէին,
Ձայնըս գուժի արձակէին
Եւ ի փախուստըն դառնային։

1. Շատ գեղեցիկ և սրտառուչ զգացուած. Նոյնպէս և անդրադարձութիւնն՝ թէ անօգուտ է լռելն, զի ամենուն յայտնի եղաւ գործն։

2. Եթէ սխալ գրուած բառ մի չէ, յայտնի չէ ինչ նշանակէ այս տեղ այդ հեբրայեցի բառն՝ որ հրեայ ըսել է։

Եւ ապա զի՞նչ կամ ուրախ՞,
Անդ տեսութիւնն է դժուարին.
Քանզի խուժան (պաշարողին)
Երբ ըզփախուստըն զայն տեսին,
Սուսերամերկըք լինէին,
Մէջ քաղաքին յարձակէին.
Եւ ժողովեցըն բազմութիւն
Մի զմիոյ հետ պնդէին,
Փոյթ ընդ առաջ ընթանային
Մինչեւ ի դրունըս դըղեկին.
Իսկ մարդադէմ գազանք չարին
Ըզսայրասուրըն քարշէին,
Եւ որպէս գայլս ի մէջ գառանց
Ըզհետ նոցա յարձակէին,
Առ հասարակ կոտորէին,
Արեան վըտակըս հոսէին.
Ջերիտասարդս և ըզմանկունս
Անխնայաբար խողխողէին,
Ցալիս ծերոյն ոչ գըթային
Ի ոչ ի հասակըն տըղային,
Ոչ ի պատիւ հայրապետին
Ի ոչ յաստիճան քահանայքն.
Մինչ զի յարեանցըն ճապաղիս՝
Ծերոց ալիքըն ներկէին,
Եւ քահանայքըն խորհըրդին
Ի սուրբ արեան կենարարին՝
Ջարիւնս իւրեանց յայն խառնէին
Եւ ընդ նոսին թաթաւէին.
Քանզի արեան էր ծարաւի
Որով էառ զփափագ սրտին....
Բայց ըզհանդէսն ողորմագին
Որ դառնագոյն է լըսողին՝
Չէ բաւական բան ասողին
Պատմել զաղէտըս սաստկագին....
Ցայնմ երկիւղէ զարհուրէին

Բարձր ի դղեակըն դիմէին[1]։
Իսկ չարութեան արբանեկին
Որ պահապան էր կըլային՝
Ըզդրունսն ընդդէմ եդեալ նոցին
Փակեալ ամուր ըզմուտ բերդին.
Եւ բազմութիւնքն խուստփէին
Յահէ սըրոյն փախուստ առին.
Ամենեքեան անդ փութային
Իբր ապաստան ամրանային,
Սաստիկ ճեպոյն տագնապէին
Աղխողորմ յոյժ գոռային.
Եւ զի փակեալ մուտն առաջին
Եւ թշնամեաց սուրըն վերջին[2],
Յայնժամ առ դուրսըն կուտէին
Իբրեւ ըզշեղջս անհընարին,
Կամ յօրինակ փայտից մայրին
Միմեանց վերայ դիզանէին,
Արք և կանայք, ծերք և տըղայք
Մանկունք ու ամէն չափ հասակի։...
Եւ զի խօսել ոչ կարէին՝
Յոգւոց հանելըն հեղձնուին...
Բայց փրկութեան ոչ ջանային[3],
Քանզի շարժել ոչ կարէին,
Իւրաքանչիւր յիւրում տեղին՝
Ուր պատահեացն՝ անկանէին,
Եւ ի չնչոյն նուաղութեան
Հեղձամըղձուկ անդ լինէին։
Իսկ փախուցեալքն որ ճեպէին՝

1. Ինչպէս ամեն պաշարելոց բնական է՝ երբ թշնամիք մտնեն ի քաղաքն՝ ջանան մտնել ի բերդն և ազատիլ։
2. Երկու կողմէն վտանգ էր քաղաքացեաց. առջեւէն՝ կլային դուռն գոցուած չէր բացուեր զիրենք ընդունելու, ետեւնէն թշնամեաց անխնայ սուրն։
3. Փախչել այլ չէին կըրնար, որովհետեւ նեղ տեղ գրեթէ իրարու կպած՝ չէին կըրնար շարժիլ։

Յահէ սրբոյն զարհուրէին,
Եւ ընդ անկելոց դիակուտին՝
Կոխան ոտից այնք լինէին,
Որպէս ի գետ կամ ի ծովի
Վերայ գլխոցըն լողային։
Բայց այլազգեացըն բազմութիւն
Որք սուսերօքն ի հետ գային՝
Իբրեւ գազանըս վայրենին
Ի մէջ հօտիցն անկանէին,
Իւրաքանչիւր ոք ըստ մըտին
Առ յընտրութիւն պարապէին.
Քանզի զոմանըս գերէին
Որք գեղեցիկ դիմօքն էին[1].
Իսկ ըզլըցեալըն հասակաւ
Զայնս չարաչար խողխողէին,
Եւ զխեղդելոցըն դիակունս
Քարշեալ արտաքըս ձըգէին։...
Զորից ազգաց քրիստոնէից
Գլուխք հօտից որք աստ կային,
Դաղմատեացն[2] և Թորգոմին
Յունականին և Ասորին՝
Առհասարակ զանձինս եդին,
Մինչեւ ի մահ զուն գործեցին,
Քաջ և արի հովուապետին՝
Գործովք բարեաց նըմանեցին...
Հռովմայեցւոց հօտապետին

1. Գուշակէ ընթերցողն թէ ինչ կ'ընեն այդպիսի բարբարոսք իրենց դաս դաս գերիները։

2. Զորս ազգք իրենց առանձին եպիսկոպոսն կամ արքեպիսկոպոսն ունէին, որոց առաջին գրէ զՀռովմայեցիս կամ Լատինս՝ Դաղմատացի կոչելով, ըստ Աւետարանի մերում գրուածին ի տախտակին Պիղատոսի. ապա Հայք, Յոյնք և Ասորիք։ Լատինաց եպիսկոպոսն սպանուեր է, Հայոցն բռնուեր է, բայց առջինին պէս ինք զինքը մահուան վտանգի դրեր էր իր ժողովրդեան համար։

Որ ի յանցեալ դարուն սկսան
Եւ այժմ առին փութով վախճան։...
Բարիքն ամեն ըսպառեցան
Եւ քաղցրութիւնքըն՝ դառնացան,
Եւ երանի տաղոյն փոխան՝
Ձիս եղկելի այժըմ կարդան.
Իմ թշնամեաց գառքըն խնդան,
Եւ սիրելիքս կարի ողբան.
Գլուխ ի վերայ իմ ամբառնան
Որք ի ներքոյ ոտիցս եղան։...
Յայնժամ յարեան ի յիս վերայ
Ազգք և ծընունդքըն Հագարայ.
Յառաջ՝ զորդիսն իմ զոր ծընայ՝
Կոտորեցին յոյժ անխընայ,
Ապա զաւանըն պարագայ
Որք և կային ինձ շըրջակայ՝
Քանդեցին աւերեցին,
Հողաբլուր թողին զնոսին.
Եւ այս ի յամս էր ոչ սակաւ՝
Այլ քառասուն ւ այլ գերակայ[1],
Յորս ի յուժոյ պակասեցայ
Եւ զօրութեամբ տըկարացայ.
Հէնք ի հինից գային վերայ,
Ասպատակաւ ես գերեցայ։...
Արդ, զայս տեսեալ բռնաւորին
Եւ նենգաւոր թիւնաւորին...
Արձակեցաւ յանկարծօրէն
Եւ յեղակարծ ժամանակին.
Յորժամ լըւաւ և իմացաւ
Որ զօրականքն իմ աստ չէին,
Յայնժամ պատեաց շուրջանակի
Ձիս պաշարեաց զօրօք նորին[2]...

1. Գրեթէ Խաչակրաց գալէն և Եդեսիոյ առնելէն քիչ տարի վերջը սկսած է անոր նեղութիւն յայլազգեաց։

2. Նախընթաց Յօդուածն իմացուեց թէ ո՛վ էր պա-

Ելիմացիք և Քեստացիք
Անթիւ բազում լեգէոնին.
Զօրք բիւրաւորք պատեալ կային
Անել և անմուտ գլխ առնէին...
Զըրահաւորք մըկընդաւորք
Նոքօք ի մարտ վառեալ գային
Ճօշիւք[1] պատեալ բոլոր անձին,
Տիգաւորք և աղեղնաւորք
Նետիւք հարեալ խոցոտէին.
Պատնէշ կանգնեալ մեքենայիւք՝
Ըռըմբաքարըս հոսէին.
Ծեծէին հարկանէին
Անհընարին տագնապէին:
Բայց այսոքիւք ոչ կարացին
Յաղթել քաջացն՝ որ յիս կային,
Մինչեւ ի յայլ հընար մըտին
Այն խորամանկ նենգաւորին.
Որպէս գխլուրդըն[2] փորէին,
Ներքոյ հիմանց ամրականին՝
Սիւնս և նեցուկս հաստատէին
Աշտարակացն և տաճարին,
Առ. ի յայրել պատրաստէին,
Որպէս օրէն է այս նոցին:
Յայնժամ բարբառ արձակէին
Առ ժողովուրդըս քաղաքին,
Մի՛ յամառել ընդդէմ նոցին,
Զի մի՛ մահու մեռանիցին.
Այլ տալ յօժար և կամովին՝
Զի բարութեանց պատահիցին:
Եւ զայս լըսեալ՝ ժողովէին
Քաջքն և արիքն ի միասին.
Գընդէին հաստատէին

շարողն. Զանգի, որդի Մելիքշահէն այն կողմերու իշխան դրուած Աղ-Սօնղորի: Տես Յօդուած 265:

1. Զրահ նշանակէ:
2. Գետնի մուկ, Taupe.

Ուխտս և դաշինըս դընէին՝
Ոչ երկուանալ ի հանդիսին,
Ոչ լըքանել պատերազմին,
Ոչ հաւանել բանից նոցին
Եւ ոչ կամաւ բանալ նըմին[1].
Քանզի բարուք վարկանէին
Թէ անդանօր մեռանէին,
Եւ ոչ սըտել մեծի ուխտին
Եւ վայելել առօրէին.
Մակաբայեանց նըմանէին
Եւ Վարդանանց պատերազմին։...
Քաջալերէր հայրըն զորդին,
Որդիքն ի մարտ պատրաստէին...
Եպիսկոպոսք և վարդապետք
Եւ քահանայք պատուիրէին
Անդրդուելի կալ ի մարտին
Արիաբար ընդդէմ չարին։...
Արդ, իբրեւ զայս բարբառէին
Եւ քաջալերս միմեանց տային,
Գոնէ հասցեն մեզ օգնութեան
Քաջ և արի զօրքն, առէին[2],
Եւ ի թիկունըս հայէին
Ընդ ճանապարհըս դիտէին...
Թէպէտ և ոչ ժամանեցին
Որոց ինքեանք ըսպասէին.
Քանզի յամեալ յապաղեցին
Որք ընդհանուր կողմանս էին՝
Գալ յօգնութիւն իմոյ կոմսին՝[3]
Երկրպագուք սրբոյ խաչին։
Վասն այնորիկ յոյժ փութային

1. Կ'իմացուի թէ քաղաքացիք յանձն չառին դըռները բանալ և հնազանդիլ պաշարողին։
2. Յուսալով որ խաչակիրք իրենց օգնութեան գան։
3. Այս կոմսն էր Ժոսլէն կամ Ճոսլին Բ կամ Փոքր, որդի Ա և մեծ Ժոսլընի և մեր Պարոն Լեւոնի դստեր։

Կողմանք դաստց հակառակին[1],
Զի գործ ծածուկ մեքենային
Փոյթ և արագ վրճարեսցին։...
Յայնժամ ըմհուրըն Սոդոմին՝
Ներքուստ ի վեր բորբոքեցին,
Ոչ ի վերուստ անձրեւածին՝
Այլ ի ստորինըս փորուածին։
Յայնժամ պարիսպք ամրականին
Վերուստ ի վայր կործանէին
Եւ ի հիմանց տապալէին,
Մուտ թըշնամեացըն գործէին.
Այլ քաջարիքն ոչ կասէին
Ի ոչ ի փախուստ դառնային,
Բայց առ միմեանըս ձայնէին
Քաջալերեալ յորդորէին։...
Իսկ չարութեան արբանեկին՝
Զդասըն վառէր զօրականին,
Հրատարակէր ի լուր նոցին
Արիանալ եւ յայն մարտին.
Յորմէ պարգեւք խոստանային
Եւ մեծութիւն յոյժ երկրային.
Նա և պատիժ պատուհասին
Սպառնայր ածել թոյլ և վատին։
Յայնժամ զինեալք յոյժ վառէին
Գազանաբար յարձակէին
Մերձեալ ի մուտըն պարըսպին։
Իսկ զօրականքն անյաղթելի
Ըզհակառակըսըն վանէին.
Մինչ զի զահի հարկանէին
Եւ յետս ընդդէմ նահանջէին։
Բայց, երանի էր իմ անձին՝
Թէ բանք իմ աստ դադարէին

1. Թշնամիք այլ վախնալով որ օգնականք չգան, ջանային շուտով առնել քաղաքին, թէ պարսպաց հիմերը փորելով թէ մեքենաներով զարնելով և թէ կրակ թափելով։

Եւ ոչ յառաջ իսկ խաղային[1],
Քանզի ճմլէ զսիրտ լըսողին։
Այլ չէ օգուտ ինձ յայսցանէ
Բանիւ լըռել զորս ի կարգին։
Քանզի յորժամ ոչ կարացին
Յաղթել քաջացն որ անդ կային,
Յայնժամ վիշապն անդընդային
Գոչեաց ռամիկ զօրականին,
Ի սուր և աւար ի գերութիւն
Ասաց առնել զամենեսին։
Եւ զայն լըւեալ հեբրայեցին[2]
Անթիւ զօրաց բարբարոսին՝
Իբրեւ զեռանդըն կաթսային
Բոլոր պատեալ շուրջ քաղաքին՝
Ջերմըն սիրով տագնապէին
Եւ առ միմեանս արշաւէին.
Փողս և տաւիղըս հնչէին
Իբրեւ յամպոցն որոտային,
Ձայնս ահագինս արձակէին,
Մինչ զի զերկիր դըղըրդէին։...
Եւ զի տեսեալ ժուժկալեցին
Իբր ամսօրեայ զօլ ի մարտին,
Վասն այն տեղի ինչ ամրոցին
Ի պահակացն Թափուր գըտին,
Յորում ելեալ բարձրանային
Սակաւք ոմանք յաշտարակին.
Իսկ ժողովուրդըն քաղաքին
Զայն ինչ տեսեալ՝ զարհուրէին,
Ձայնըս գուժի արձակէին
Եւ ի փախուստըն դառնային։

1. Շատ գեղեցիկ և սրտառուչ զգացուած. նոյնպէս և անդրադարձութիւնն՝ թէ անօգուտ է լռելն, զի ամենուն յայտնի եղաւ գործն։

2. Եթէ սխալ գրուած բառ մի չէ, յայտնի չէ ինչ նշանակէ այս տեղ այդ հեբրայեցի բառն՝ որ հրեայ ըսել է։

Եւ ապա զի՞նչ կամ որպիսա՞,
Անդ տեսութիւնն է դժուարին։
Քանզի խուժան (պաշարողին)
Երբ ըզփախուստըն զայն տեսին,
Սուսերամերկըք լինէին,
Մէջ քաղաքին յարձակէին.
Եւ ժողովացըն բազմութիւն
Մի զմիոյ հետ պնդէին,
Փոյթ ընդ առաջ ընթանային
Մինչեւ ի դրունըս դըղեկին։
Իսկ մարդադէմ գազանք չարին
Ըզսայրասուրըն քարշէին,
Եւ որպէս գայլս ի մէջ գառանց
Ըզհետ նոցա յարձակէին,
Առ հասարակ կոտորէին,
Արեան վըտակըս հոսէին.
Ջերիտասարդս և ըզմանկունս
Անխնայաբար խողխողէին,
Ցալիս ծերոյն ոչ գըթային
Ի ոչ ի հասակըն տըղային,
Ոչ ի պատիւ հայրապետին
Ի ոչ յաստիճան քահանային.
Մինչ զի յարեանցըն ճապաղիս՝
Ծերոց ալիքըն ներկէին,
Եւ քահանայքըն խորհըրդին
Ի սուրբ արեան կենարարին՝
Զարիւնս իւրեանց յայն խառնէին
Եւ ընդ նոսին թաթաւէին։
Քանզի արեան էր ծարաւի
Որով էառ զփափագ սրտին։...
Բայց ըզհանդէսն ողորմագին
Որ դառնագոյն է լըսողին՝
Չէ բաւական բան ասողին
Պատմել զաղէտըս սաստկագին։...
Ցայնմ երկիւղէ զարհուրէին

Բարձր ի դըղեակըն դիմէին[1]։
Իսկ չարութեան որբանեկին
Որ պահապան էր կըլային՝
Ըզդրունսն ընդդէմ եդեալ նոցին
Փակեալ ամուր ըզմուտ բերդին.
Եւ բազմութիւնքն խուսափէին
Յահէ սըրոյն փախուստ առին.
Ամենեքեան անդ փութային
Իբր ապաստան ամրանային,
Սաստիկ ճեպոյն տագնապէին
Աղիողորմ յոյժ գոռային.
Եւ զի փակեալ մուտն առաջին
Եւ թշնամեաց սուրըն վերջին[2],
Յայնժամ առ դուրսըն կուտէին
Իբրեւ ըղշեղջս անհըներին,
Կամ յօրինակ փայտից մայրին
Միմեանց վերայ դիզանէին,
Արք և կանայք, ծերք և տըղայք
Մանկունք ու ամէն չափ հասակի։...
Եւ զի խօսել ոչ կարէին՝
Յոգւոց հանելըն հեղձնուին...
Բայց փրկութեան ոչ ջանային[3],
Քանզի շարժել ոչ կարէին,
Իւրաքանչիւր յիւրում տեղին՝
Ուր պատահեացն՝ անկանէին,
Եւ ի չնչոյն նուաղութեան
Հեղձամըղձուկ անդ լինէին։
Իսկ փախուցեալքն որ ճեպէին՝

1. Ինչպէս ամեն պաշարելոց բնական է՝ երբ թշնամիք մտնեն ի քաղաքն՝ ջանան մտնել ի բերդն և ազատիլ։

2. Երկու կողմէն վտանգ էր քաղաքացեաց. առջեւէն՝ կլային դուռն գոցուած չէր բացուեր զիրենք ընդունելու, ետեւնէն թշնամեաց անխնայ սուրն։

3. Փախչել այլ չէին կըրնար, որովհետեւ նեղ տեղ զրեթէ իրարու կպած՝ չէին կըրնար շարժիլ։

Յաճէ սըրոյն զարհուրէին,
Եւ ընդ անկելոց դիակուտին՝
Կախան ոտից այնք լինէին,
Որպէս ի գետ կամ ի ծովի
Վերայ գլխոցըն լողային։
Բայց այլազգեացըն բազմութիւն
Որք սուսերօքն ի հետ գային՝
Իբրեւ գազանըս վայրենին
Ի մէջ հօտիցն անկանէին,
Իւրաքանչիւր ոք ըստ մըտին
Առ յըղտրութիւն պարապէին.
Քանզի զոմանըս գերէին
Որք գեղեցիկ դիմօքն էին[1].
Իսկ ըզլըցեալըն հասակաւ
Ձայնս չարաչար խողխողէին,
Եւ գլխեղդելոցըն դիակունս
Քարշեալ արտաքըս ձըգէին....
Զորից ազգաց քրիստոնէից
Գլուխք հօտից որք աստ կային,
Դաղմատեացն[2] և Թորգոմին
Յունականին և Ասորին՝
Առհասարակ զանձինս եդին,
Մինչեւ ի մահ գուն գործեցին,
Քաջ և արի հովուապետին՝
Գործովք բարեաց նըմանեցին...
Հռովմայեցւոց հօտապետին

1. Գուշակէ ընթերցողն թէ ինչ կ՚ընեն այդպիսի բարբարոսք իրենց դաս դաս գերիները։
2. Զորս ազգք իրենց առանձին եպիսկոպոսն կամ արքեպիսկոպոսն ունէին, որոց առաջին դրէ զՀռովմայեցիս կամ Լատինս՝ Դաղմատացի կոչելով, ըստ Աւետարանի մերում գրուածին ի տախտակին Պիղատոսի. ապա Հայք, Յոյնք և Ասորիք։ Լատինաց եպիսկոպոսն պապնուեր է, Հայոցն բռնուեր է, բայց առաջինին պէս ինք զինքը մահուան վտանգի դրեր էր իր ժողովրդեան համար։

Զանձն իւր ի մահ ետ ընդ հօտին...
Նա և Հայոց ազգաց ցեղին
Եպիսկոպոսն ընտրեալ Նոցին,
Թէպէտ մահու ոչ մատնեցին
Ըստ խընամոց Բարերարին՝
Որ զնա պահեաց ի մէջ գնդին,
Սակայն յոգունց ի հանդիսին.
Յաղթող գըտաւ յասպարիսին,
Անձամբ տըւեալ զանձն իւր ի մահ
Իբր յօրինակ հօտից Նորին։...
Սակայն ոմանք խուսափէին
Եւ ի դըղեակն ամրանային.
Զոր հուպ եկեալ բռնաւորին՝
Բանս ասելով զայս ընդ նոսին.
«Թէ ոչ լըսէք իմս հրամանի
Եւ հնազանդեալ տայք ի ձեռին,
Լինիք և դուք նըման սոցին՝
Որք կան անկեալք ի փողոցին»։
Բայց նոքա ոչ զանգիտէին
Եւ տալ ի ձեռն ոչ յանձն առին,
Արիաբար ընդդէմ կացին.
Սակայն և ոչ յառաջագոյն
Անդ կերակուր համբարեցին,
Եւ ոչ ըզջուրն առ ի վերուստ
Որք ժողովեալք ի միասին,
Զարար տեղեակ ոք ըզնոսին,
Թէ ահա մերձ է և դիւրին[1].
Վասն այսորիկ ոչ կարացին
Տեւել յերկար ընդդէմ չարին,
Այլ յետ աւուրց ինչ պայմանին՝
Տըւեալ արտաքս ելանէին։
Իսկ խորամանկ չար խաբողին

1. Բաջութեամբ ուզեր են դիմանալ կլային մէջ եղողքն, բայց ոչ բաւական ուտելիք հոգացեր են, և ոչ անձրւային վերէն իջած ջուրը հաւաքեր են խմելու համար։

Զուխտըն սըտէ զոր եդ 'նդ նռախն.
Ընտրէր ըզդ̣ասս զօրականին
Ցորոց ունէր խոց ի սրտին,
Տայր նըշուակ կանգնել յոտին,
Նետիւք խոցէր իւրով ձեռին[1]...
Զինքըն կարծէր ողորմելին
Վրէժխնդիր երկնաւորին,
Որպէս նըւէր աստուածային
Մատուցանէր զարիւնս նոցին.
Արդ, իբրեւ զայս կատարեցին
Փոքր ի շատէ զորս տացի,
Ընդ գերելոցն զորս գերեցին
Եւ զորս արեամբ սըրով սպանին,
Զինչս և ըզգոյս կողոպտեցին
Զհարց և զնախնեաց զանձս որ կային,
Զոսկիակազմ զարդ կանացին
Եւ զպատուական հանդերձանին,
Զարծաթեղէնս 'նդ ոսկեղինին,
Զանօթ սրբոյ պատարագին,
Զունեակ բուրման անոյշ խընկին[2],
Զհընչող քըշացն՝ տիպ հրեշտակին[3],
Ըզվարագոյրըս խորանին
Եւ ըզհանդերձըս տաճարին,
Զքահանայից զարդ հանդերձին
Զհայրապետաց պատմուճանին.
Ըզպատուական նափորտանին[4],
Զեմիփորոնն սուրբ խորհըրդին,
Զոսկէնըկար տիպն ուրարին՝
Այն որ զուսովըն պատէին,

1. Զանգի իրեն դէմ քաշքուեթեամբ կռուողներէն վրէժ առնելու համար՝ զանոնք կեցուցեր և նետահար սպաններ է։
2. Բուրվառներ և խընկի ամաններ։
3. Քշոցներու ձայնը հրեշտակաց ձայնի կուգէ։
4. Շուրջառներ։

Զականակապ քառակուսին՝ [1]
Որ էր նըման սուրբ վակասին.
Զբազմագունակ գործ հրաշալի
Այն որ ի քղանցըս հանդերձին.
Եւ զայլըն ամեն որ ի կարգին [2],
Որոց յիշումն է ողբագին։...
Արդ, փոխանակ այսմ ամենի՝
Դուք լըւարուք իմուսս ձայնի,
Զի դառնաբեր պըտուղք չարին
Զո՞րս ընդ որոց փոխարկեցին...
Այլ յամենայն սուրբ խորանին
Որք աստանօր շինեալ կային,
Ցամենեսին մըտանէին
Եւ զսրբութիւնսըն պղծէին...
Իսկ ըզգերեալսըն՝ զկին և զմանկտին
Պարգեւ միմեանց զնոյնս բաշխէին.
Ըզգեղեցիկսըն ընտրէին
Ի հեռաւորս յուղարկէին,
Բաբելացւոց Թագաւորին
Խորասանայ մեծ սուլթանին։

. . . . . . . .

. . . . . . . .

(Ցորոց հայցեմ և զիս յիշել)
Զողբերգական բանիս գըրող՝
Առ ի զբօսանս տրտմեցելոց
Զեզ և բոլոր ազգիս Հայոց,
Որ էք ի սուգ վասըն սոցունց։...
Զոր պահանջեաց տարփմամբ սիրոյ
Եղբօրորդին իմ ըստ մարմնոյ [3],

1. Եպիսկոպոսաց զօտիէն կախուած քառակուսի տախտակաձեւն, պնակիտն։

2. Դիտելի է որ այդ զգեստուց ինչուան քղանցքն՝ (փէշերն) այլ յիշէ, բայց գլխոյ խոյր կամ միթր՝ ոչ։

3. Եղբայրն էր Շահնշահ, որոյ այդ զինուորութեան հմուտ որդին՝ Ապիրատ, որ այն ատեն իբր 22 տարուան էր, յետոյ եղաւ Գրիգոր Զ կաթողիկոս։

Մանուկ տըղայ գոլով տիոյ
Եւ կատարեալ յիմաստ հոգւոյ.
Ներհըմտացեալ յարհեստ զինուց
Ըստ հրահանգին Հռովմայեցւոց՝
Գոլ աջողակ զինուց ձիոց,
Որպէս օրէն է վարժելոց.
Յանուն նախնեաց յորջորջելոց
Ի Ապիրատ մակձայնելոց,
Զօր արարաք խրախճանելոց,
Իրր ըզբօսանըս հրճուելոց։

---

# ՄՁԵ

## ՈՂԲՔ ԲԱՐՍՂԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ Ի ՍԻՐ ՊԱՂՑԻՆ ՏԷՐՆ ՄԱՐԱՇԱՑ ԵՒ ՔԵՍՆՈՑ[1]

(Մ. ՈՒՌՀԱՅԵՑԻ. ՄԾԸ.)

Բարսեղ, Նաւաստ ծառայ (Աստուծոյ) գրեմ մեծակական ողբումք և բազմահառաչ արտասուօք՝ համօրէն հաւատացելոց Քրիստոսի. մանաւանդ մերձակայից մերոց, Քեսնոյ, Պեհեսնոյ, Ռապնայ[2], Գերմանիկոյ[3], և որք ընդ ուքօք գեօղաւանք և կրօնաստանք իցեն յիւրաքանչիւր ազգս և լեզուս, վասն

1. Մեր մատենագրութեան մէջ նշանաւոր նորաձեւ և միանգամայն սրտառուչ գրուած մ՚է այս, իբրեւ դամբանական խօսք (Oraison funèbre). պատմիչն կ՚անուանէ զՀեղինակս Ամենագովելի վարդապետ, Սուրբ և երջանիկ հայրապետ, որ տայ կարծել թէ Քեսնոյ եպիսկոպոսն էր, միանգամայն և արեւմըտեայց լեզուաց՝ գոնէ փռանկերէնի՝ հմուտ, և քաղաքագէտ անձն։
2. Ամուր բերդաքաղաքի Դ Հայոց, Ասորւոց մօտ։
3. Որ է շատ հեղ յիշեալ Մարաշն։

անգիւտ կորուսելոյ իշխանին և անտէր մնացանելոյն Պաղտինին[1]. զոր առակ նշանակի և ցոյց խրատու արար զնա ամենազօր արարիչն Աստուած՝ ամենայն տիեզերաց, մանաւանդ անգեղջ, սէգ և անհրաւ իշխանաց զօրաց Հռովմայեցւոց. յայտ առնելով ամենեցուն, եթէ ակնարկելոյ կամաց արարչին սպասեալ միան տարերք և արարածք ամենայն, որ եթէ խեթիւ հայեսցի՝ ոչ տանին զնա տիեզերք ամենայն։ Զի ծով աղաղակէ, թէ, ոչ է սա Պաղտինն. և երկիր գոչէ, թէ, ոչ ծածկեցաւ հողով ի ծոց իմ. օդ և ջուր վկայեն հրային մասամբն՝ եթէ, ոչ մեք համարձակեցաք բառնալ, կամ յայտնել ումեք զառ ի խրատ պատուհասեաք թագուցեալն Աստուծոյ՝ մահ։ Եւ գերեզմանք բողոքեն, թէ մեք ոչ ըմբռնեցաք և ոչ տեսաք իջեալ ի կարգս մեռելոց. և ի մէջ կենդանեաց ոչ ուրեք երեւի։

Ըստ որում սիրելին իմ իշխան, հէքն այն մանուկ, խիզախն ի մարտի, յաղթող և քաջասիրտն ի պատերազմունս բարբարոսաց, մեծազօր ըմբիչն և անթաքչելի սպառազէն զօրականն քրիստոնէից, սիրեցեալ անուն իմ Պաղտին[2]։ Ո՞ր ձեռն կոփեաց զհաստատայեղց պնդութիւնն, կարճեաց զձեռն հզօրին. կամ ո՞ր բազուկ տկար՝ խոնարհեցոյց զանճկառելի բազուկս անուանի քաջին. կամ ո՞ր առն ի զօրականաց թլփատելոցն զօրութիւն՝ զօրեաց խորտակել, իջուցանել յերկիր զյաղթանդամն զայն, զբուռն ոսկերօք, զբարձր հասակն, զսկայազօր մար-

1. Սա Անտիոքայ Բրնձին եղբայրն էր, և միաբանելով ընդ Ժոսլընի՝ ուղեցին զԵդեսիա ազատել. բայց յետոյ պատերազմի մէջ մեռաւ, և դիակը չգտնուեցաւ. անոր համար սաստիկ կ'ողբայ Բարսեղ, որ խոստովանահայրն էր այն վառվռուն երիտասարդին։

2. Արդարեւ հօր պէս գուրգուրայ Բարսեղ և չի դադրիր Պաղտինին, Սիրի–Պաղտինին կանչել իր հոգեւոր զաւկին. և քերդողաց փնտռած սիրալիր սերտ բարեկամութեան՝ գեղեցիկ օրինակ մի կ'ընծայէ։

մինն։ Եւ ո՞ր կատարեցելոյ գազանի սիրտ՝ ոչ խանդաղատեցաւ գեղեցկութեամբ նորա, և ոչ ամաչեաց ի դիմաց նորա, ոչ գթացաւ ի գեղեցկութիւն նորա, և ոչ ողորմեցաւ մանկական տիոց վայելչութեան նորա, խնայելով ի հասակ տղայութեան նորա։ Եւ հէ՞մ ոչ ձայնեաց առ նա, զՈ՞վ ոք իցես դու, կամ ուստի՞, հարցանելով զբան. թերևս մեղկեալ զիջանէր կատաղութիւն գազանութեանն՝ ընդ համեստ, հանճարեղ և ընդ իմաստուն պատասխանիս նորա։ Անսայթաքելի լեզուաւ ի հայերէն լեզու բարբառէր, և առ ի բազմաց ծանուցեալ յիմաստութիւն, ի զօրութիւն և ի հասակ, ի տեսակ, ի քաջամարտիկ յաղթութիւն և յամենայն կիրս անցաւոր կենցաղոյս, ուստի ճանաչի մեծանձնութիւն գովութեան իշխանացն։

Աւելորդ վարկանիմ երկայնել զբանս, զի մի՛ ստգտանիցիմ ի պարսաւադէտ ատողաց նորա։ Աւաւա՜ղ, աւեմ՛, անթախտ կորստեան նորա և անաջողակ ճանապարհին՝ զոր բազում անգամ զեկուցաք՝ ոչ գնալ զանդառնալի զճանապարհն զայն, և ոչ անսաց բանից մերոց, զորոյ առեալ էր զփորձ։ Զի ոչ յայլ ինչ պարապէաք խօսել ընդ նմա, բայց զօգտակարն անձին նորա և զփրկութիւն և զխնայումն տառապելոց քրիստոնէից. որում անլար գըտաւ յայսմ ամենայնի։

Ուստի և մեք իսկ գուշակեցաք զկորուստ առաջի նորա՝ բազում անգամ, թէպէտ և ցաւ էր մեզ, և դժուարին էր զայն ասել նմա, այլ ոչ ոք իշխէր. սակայն հնարէաք զայն, (զի) թերևս զարհուրեալ երկիցէ և փոխեսցի ի յանցաւոր բարուց՝ ի խոնարհութիւն ողորմութեան և յանոխակալութիւն քաղցրութեան։...

Զիմոյ զանխրատ հոգւոյն, զանտէր մեռելոյն և զանգնելի գերւոյն, զանգիւտ կորուսելոյն, զվայելուչ մանկանն, զյաղթող և զօրաւոր քաջին, զհանճարեղ զիմաստուն և զխելօք իշխանին՝ զկարճօրեայ կենացն, զնազելի և զգեղեցիկ և զմարմնա-

ւոր անուանն զՄիրի–Պաղտնիս՝ ախորժեմ պատմել զկորուստն, և հրապարակագոյժ առնել խոստովանութեամբ զյանցումն. ոչ զի խայտառակեսցի, այլ զի կատարելապէս թողութիւն ընկալցի յԱստուծոյ. գիտելով զայս, զի ով ոք ծածկեալ թաքուցանէն սատ զյանցանս իւրեանց և զգաղտնիս ամօթոյ՝ վասն ամաչելոյ, յիմար են այնպիսիք՝ առաջի հրեշտակաց և մարդկան[1]:...

Ամբարտաւանութիւն և ստութիւն նորա բժշկեցաւ. յայն օր՝ անչափ և սաստիկ խոնարհութեամբ՝ որով զիջանէր առ ամենեսին, առ զօրս հեծելոց և հետեւակաց, քաղցրագոյնս և ախորժականս և ողորմագին բանս բարբառելով, որդիս Աստուծոյ և եղբարս հարազատս՝ զամենեսեան անուանէր, իշխանս և տէրս յանուանէ կոչէր, մարզէր զօրսն ամենայն, յորդորէր, սրտապնդէր, քաջալերէր իբրև ըմբիշ և քաջ նահատակ. շուրջանակի զօրացն անցանէր, ուժգին և ահագին ձայնիւ ամրացուցանէր զօրսն ամենայն. ձայնէր առ ամենեսեան յանուանէ զանուն քաջութեան. «Վա՜շ, ո՜վ քաջք. վա՜շ բազդին և աւուրս շնորհի, որ սատ նահատակի փոքր մի՝ և յաղթէ. մի՛ զանգիտէք ի նոցանէ. ահա օր հանդիսի և մահ երանելի վասն Քրիստոսի՝ ի վերայ քրիստոնէից մեռանել»: Եւ իբրև այսպէս զօրացուցանէր հաստատէր զարտաքոյ կողմանս բանակին, դարձեալ ի միջոցս անդ զօրացն մտանէր. զլքեալսն երկիւղիւ և զխուսափեալսն թաքստեամբ՝ յառաջ քարշէր, և զքաջասիրտսն գովէր. զ'ի բաց ընկեցեալ զէնս անարի արանցն կամ որք ունէին կարկամեալ ցամաքեալ ձեռս՝ յափշտակէր կորզէր և արիացելոցն մատուցանէր ի ձեռին. ոմանց տայր,

1. Այս խօսքէս յետոյ՝ Բարսեղ երկար և շատ երկար խոստովանութիւն գրած է Պաղտինի բերնով, իր մեղաց կամ բնաւորութեանց, և իւրաքանչիւրին պատիժ և քաւութիւն՝ այս պատերազմիս մէջ քաշած վտանգներն և մահն:

յոմանց առնոյր: Եւ դարձեալ առիւծաբար խրոխտանօք յայլ վայրս հասանէր, ահաւոր գոչմամբ և բարձրաձիչ աղաղակաւ զգիշերն ողջոյն և զտիւն ամենայն լնոյր զմիջոց բանակին. զի ոչ ունկն պարապէր զայլ ուրուք լսել զձայն քաջութեան, կամ ակնն տեսանել զարագընթաց սլացումն հաւասար և նման Սիրի-Պաղտնին. մինչեւ պակասեալ հատաւ ի ձայնէ և ի բնական ուժոյն զօրութենէ[1], հանդերձ երիվարաւն, և ժանգանալ կարմրութեամբ գոլորշեաց սրտին՝ ի սանձապատ զրահից բերանոյ նորա, որպէս ասի յոմանց: Արդ, խստութիւն հպարտութեան նորա այսու օրինակաւ ջնջեալ մաքրեցաւ. իսկ անողորմութիւն սրտին՝ յայնմ աւուր ողորմութեամբ գթովք աղէխարշեալ գործէր ի վերայ տառապելոցն կորըստեան. ուստի և դեգերելով ընդ նոսա՝ ինքն կորուսեալ եղեւ. և զրկանաց անցումն՝ որով զամենեսեան զրկէր առանց ողորմութեան, և ինքն զրկեալ գտանէր յայն օր ի մարտի անդ յամենայն օգնականաց իւրոց: Քանզի լքեալ թողին զնա ընկերակից իշխանք և զօրք ամենայն ի մէջ մեծի պատերազմին, և ելին ի մարտէ անտի. և ոչ ոք ողորմեցաւ նմա դառնալ գիտել թէ ուր իցէ գլխաւոր իշխանն, մեծ զօրականն մեր. և յայտ անտի է՝ զի ոչ ոք այլ ի զօրացն նորա կորեաւ կամ ըմբռնեցաւ ընդ նմա, և ոչ ամենեւին ետես ոք զնա: Եւ ոչ ի վատութենէ զօրացն ունիմ ասել զայս, կամ կամաւ զկորուստ նորա, այլ զի հարկ էր այնպէս բազմաժամանակեայ զրկանացն և անիրաւութեան որ առ նոսա՝ յայնմ աւուր զրկանօք ի զօրացն գտանել և բժշկութիւն, որպէս վերագոյն ասացաք:

Իսկ բազմաց արիւն որ հեղաւ յաւուրս նորա ի գալ յայս երկիր փախչուէր և սուտ ննդաւորին Վասլին՝[2] միով արեամբն իւրոյ անձինն, զոր յո-

1. Յօրինակին գրուած է և ի բանակն կամ բանական ուժոյն զօրութեամբ. պակաս կամ սխալ բան մի:
2. Ո՞վ է այդ ննդաւոր Վասիլն.— կարծուեցաւ թէ

ժարութեամբ սրտի եւ հեղուլ ի վերայ քրիստո-նէից՝ որք ելին և ազատեցան ի պատերազմէ ան-տի. զոր և ինքեանք յայտնապէս խոստովանին գեր-ծեալքն ամենայն, յԱստուծոյ ունելով նախ շնորհ, և երկրորդ ի մարդկանէ Սիրի—Պաղտնին՝ զազատու-թիւն իւրեանց։ Եւ արդ, եթէ կատարեցաւ մա-հուամբ ի պատերազմի անդ, թողութիւն ընկալաւ ի Տեառնէ ամենայն յանցանաց իւրոց... և եթէ կենդանի իցէ և յայտնեսցի, քաջութիւն նորա տարածեցաւ և տարածի օր ըստ օրէ ընդ տիեզերս ամենայն՝ մինչեւ ի կատարած աշխարհի։...

Այս ինչ է յայտնի պատճառ բանից մերոց եր-կարութեան. սիրէաք զնա հոգեւորական սիրով, որպէս օրէն է ծառայից Աստուծոյ, ըստ որում և նա զմեզ. և զկնի մահուան նորա՝ հարկ էր մեզ փոխանակ անչափ սիրոյ նորա հատուցանել սէր՝ կորուսելոյն ի կենաց աստի։ Որ յԱնտիոքացւոց քաղաքէն մինչեւ ի սահմանս Մելտինոյ ձգէր իշ-խանութիւն նորա, և տեղի ոչ ուրեք երեւեցաւ գերեզմանի նորա. այնքան զօրաց և աշխարհաց տէր և անուանի երեւելի իշխան, և այժմ ի մե-ռեալս ոչ յիշատակի, ոչ ի կենդանիս երեւի. ոչ զանգակ նմա հնչեցոյց և ոչ ուրեք եկեղեցի զա-նուն նորա յիշեցոյց. և ոչ նուէր պատարագի և կամ մասն յիշատակի ողորմութեան ել նմա յերկրէ աստի. ուլ մի կամ դանգ ինչ՝ ոչ կարի աղքատա-գունիցն հասանէ։ Ոչ ոք է որ յիշէ զնա, և ոչ ոք որ ողորմի նմա. ի կենդանութեան իւրում ոչ հան-գեաւ, ոչ վայելեաց ի սմա, այլ ի տղայական տիոցն սկսեալ՝ ի տագնապի ի ցնորս և ի տառապանս անցոյց զժամանակս մանկութեան իւրոյ՝ ի դիւաց, ի թշնամեաց և ի խստերախ մարմնական տերանց

Բարձրբերդոյ տէրն ըլլայ, Յունաց համախոհ, զոր յիշէ Ուռհայեցին (ՄԿԴ), և զոր գերի բռնեց Թորոս Ռուբինեան և տիրեց բերդին (1152). յիշէ նաեւ անոր եղբայրը՝ Տիգրան, որ Գող Վասլի զօրավար մ'էր։

և ի դաւաճանող ընկերակից իշխանաց, և այժմ ի կատարածի կենաց իւրոց՝ կորեաւ անյիշատակ. ջնջեցաւ բարձաւ անուն նորա և սէր՝ յամենայն աշխարհէ և ի սրտէ՝ ընտանեաց և օտարաց։

Զայս ամենայն դառն և անհնարին կորուստ՝ յորժամ տեսանեմ հատեալ ի վերայ նորա, հեղձամըղձուկ եղեալ ցնդիմ յարտասուս, և ոչ գիտեմ զի՛նչ արարից և կամ որպէս օգնեցից ձեռն կարկառելով։ Ցաւակից մեզ յայսոսիկ յԱստուած ապաւինեալ վստահացայ, որ միայն է անոխակալ և մարդասէր. որ ոչ կամի զմահ մեղաւորի և ոչ խընդայ ընդ կորուստ ուրուք։ Եւ գրեցաք զայս գիր խոստովանութեան և աղերսի ի դիմաց նորա և մեր, և ոչ դադարեմք յարաժամ գոչել այսու՝ յամենայն տեղիս՝ առաջի ողորմած հզօրին, որ բարկացաւ նմա և մեզ, հաշտեսցի ողորմութեամբն իւրով, և յայտնեսցէ զնա՝ մեռեալ կամ կենդանի։

Այլ և զձեզ զամենեսեան աղաչեմ, ով մարդիկ, որ լսէք զողբերգական բանս զայսոսիկ, մի՛ լքեալ ձանձրանայք և տաղտկացեալ հրաժարէք՝ անտես առնելով զպաղատանս մեր որ վասն նորա, առ ծուլութեան կամ ատելութեան նորա, այլ սրտի մտօք թողութիւն արարէք նմա. և մի՛ ընդ կորուսելոյն ոխս բերեալ պահէք. այլ և աղօթս արարէք առ հասարակաց դատաւորն և արարիչն Աստուած, զի ողորմեսցի նմա և թողցէ զամենայն յանցանս նորա՝ զոր առ Աստուած կամ առ մարդիկ։ Եւ ամենազօր արարիչն Աստուած բարեխօսութեամբ Սուրբ Աստուածածնին և աղաչանօք ամենայն Սրբոց՝ ողորմեսցի նմա և թողութիւն արասցէ ամենայն յանցանաց նորա՝ մեծամեծաց և փոքունց. և զձեզ օրհնեսցէ հոգւով և մարմնով, և երկնից արքայութեանն արժանի արասցէ ընդ ամենայն Սուրբս, ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր. որում՝ փառք յաւիտեանս. ամէն։

# ՄՀԶ

## ԿՈՒՆՏ ԾԱՐԳԻՍ Վ· ՄԵԿՆԻՉ ԱՒԵՏԱՐԱՆԱՑ ՂՈՒԿԱՑ ԵՒ ՅՈՎՀԱՆՆՈՒ

Ողորմութեամբն Աստուծոյ հասի ըղձից իմոց՝ որ յամայր ամս. և գտի տառս կենդանիս Տեառն և զմեկնութիւնս Սրբոց, զերանելւոյն Եփրեմի և Տեառն Կիւրղի Աղեքսանդրացւոյ և Տեառն Ստեփաննոսի Սիւնեաց վերադիտողի[1], և տէր Իգնատիոսի[2], և ուր ոչ այսոցիկ՝ Յոհաննու Ոսկեբերանի, և սուղ ինչ վկայութիւն յԱստուածաբանէ և յԵպիփանէ, և ի Նարեկացի վարդապետէն Գրիգորէ[3], և յիմաստուն հռետորէն Սարկաւագէ[4]: Ուր ուրեք մտաբերցի թէ աստուածային արօրոյն պիտոյանայ քառեակք եզանց[5] յուղղաձգութիւն ակօսոյն, ի խնդրոյ ուսումնասիրաց. և մնացայ զծերութիւն և զտկարութիւն մտացս՝ առ անձուկ յօժարութեանս, համառօտեցի շնորհօք Սուրբ Հոգւոյն, որ տայ իմաստս ախմարաց. Նմանեալ մեղուի անօսր թռչնոյ[6], արձակել զթեւս ի լերինս բարձանց և ի հովիտս ծաղկանց. այլ ճշպէտ և ունի յօժարութիւն, այլ սակայն վասն տկարութեան ոչ բովանդակէ զընաւն, այլ զպայծառագոյնն և զփո-

1. Տես ի Յօդուած 201 ասոր վախճանը:
2. Աշակերտակից Ն. Շնորհալւոյ և Սարգսի մեկնչին Թղթոց Կաթողիկեայց:
3. Գր. Նարեկացւոյ՝ Աւետարանաց մեկնութիւն գրելն ծանօթ չէ մեզ:
4. Որոյ աշակերտ է ինքն այս հեղինակս՝ Կունտ Ս:
5. Չորս գլխաւոր մեկնիչներէ քաղելով գրելը՝ նըմանցնէ չորս եզներով լծուած արօրի, որպէս զի շիտակ փորուի արտն:
6. Շատք՝ Թռչնոց դասակցեն զմեղուն՝ թեւաւոր ըլլալուն համար:

չնտեսակն և զանուշահոտն՝ ի միջոյ ծաղկանցն քաղեալ ի վերայ Թիկանցն կամ ընդ ոտիւք կառուցեալ, ամայէ[1] ի վեցանկիւնի բջիջսն, և գործէ զարմանալիս իմաստնոց[2]: Այնպէս և իմ բաղձանք աստուածային զանձուս ծածկելոյ աստուածագիծ տառիս, զերկու ոտս տարածեալ ի վերայ բազում բլրոց և լերանց՝ ի գիւտս օրինակացն[3] արփիահրաշ արեգնածաւալ լուսափայլ մտաց ընթերցասիրաց. որք ընդ հովանեաւ սորա նստին՝ քաղցրանայ ի կոկորդս նոցա քան զմեղու խորիսխ, և տայ մռուացումն ունել տկարութեան. զի անուշակ և քաղցր է իմանալի կերակուր հոգւոյ քան զզգալի կերակուր մարմնոյ՝ որոց կիրթ են ճաշակելիքն: Որում և ես Սարգիս մականուն և ոչ իր յիմաստս իմաստնոց և տգէտս ի գիտնականաց, պատկերս յանցանաց, զլուխս մեղաւորաց, ի Թուականիս Նորոյ[4] ԿԳ (63), ստացայ զսա ինձ ի խրատ և ի վարժումն:

Շնորհիւ Տեառն սկսայ և ողորմութեամբ Նորին կատարեցի, ժամանեալ ի կէտ նպատակի վերջին գծիս[5], որում ըղձայի. ես տրուպս և անպիտանս ի ժառանգաւորս եկեղեցւոյ՝ Սարգիս վարդապետ մականուն կոչեմ կոչեցեալ, ի գաւառէ Արարատեան. բազում ջանիւ աշխատեցայ՝ զտառս կենդանիս գտանել զանուշահոտ և զծաղկազարդ զպայծառացեալ և զարփիահրաշ զարեգակնածաւալ և ըղլուսափայլ մեկնութիւն սրբոց վարդապետացն, որք

1. Ամալ, ժողվել, դիզել, ամբարել:
2. Մեղրն, արդարեւ զարմանալի քաղցր գործ չնչին միջատաց:
3. Շատ տեղ երթալով փնտռելով գտեր է մեկնչաց ձեռագիրքերը:
4. Ըստ Յոհ. Սարկաւագի Թուականին, որ է Քրիստոսի 1146–7:
5. Այս երկրորդ Յիշատակարանն է հեղինակին, գործը լմնցընելէն վերջը գրած:

զծորանս շնորհաց Սուրբ Հոգւոյն՝ իբր յանսպառ աղբերէ յանձինս իւրեանց ընկալեալ ունէին. զերանելոյն Եփրեմի, զՏեառն Կիւրղի Աղեքսանդրացւոյ և Տեառն Ստեփաննոսի Սիւնեաց վերադիտողի, զՏէր Իգնատիոսի, և ուր ոչ այսոցիկ՝ Յովհաննու Ոսկեբերանի, և սուղ ինչ յԱստուածաբանէն Գրիգորէ առեալ ի վկայութիւն, և յԵպիփանէ Կիպրացւոյ և ի Նարեկացւոյ Գրիգոր վարդապետէ և յիմաստնոյն Սարկաւագ վարդապետէ, ուրեք ուրեք մուծեալ. է ինչ որ ի Մովսէսէ Քերթողէ և ի Մամբրէէ Վերծանողէ[1] և ի Թէոփիլոսէ Ոսկիբերանի աշակերտէ. սակայն ինչ յամենեցունց մասնաւորեալ զպատշաճաւորն, իբր իմաստուն մեղու թռչելով ի մարգս և ի լերինս և ի ծաղկաւէտ բուրաստանս ժողովելով զպիտանիսն ի նոցանէ առ ի յօգուտ և ի շահ փրկութեան մարդկան, հանգուցանելով ի պէսպէս աշխատութեանց հոգւոյ և մարմնոյ՝ զվարդապետս եկեղեցւոյ, լուսաւորել ըստ ներքին մարդոյն, յորում բնակեալ Տեառն՝ Հաւատոյ սուրբ եկեղեցի, ըստ անձին մաքրութեան։ Զտկարութիւն ի բաց եդեալ ձեռն ի գործ արկի, և բազում աշխատութեամբ ի մին տեղի հաւաքեցի, ի ՈԽԶ (1197) թուականութեանս հայկազեանս սեռի. ի դառն և ի չար ժամանակիս, որ շփոթ էր կաթողիկոսութեան իշխանութեան Սրբոյն Գրիգորի. զի անկեալ մեռաւ Տէր Գրիգոր կաթողիկոսն ի դղեկէն Կոպիտառու, և այժմ ոչ ոք է յաջորդեալ զաթոռ նորին[2]. և աղերս ընծայեցի ի սուրբ և յուղղափառ Հայաստանեայց եկեղեցի։

1. Մովս. Խորենացւոյ եղբայր համարուի. յայտնի են գրած ճառերն, Ղազարու Յարութեան և Քրիստոսի յԵրուսաղէմ մտնելու (Ծաղկազարդի) վրայ։

2. Այդ թուականին, 1197, Գրիգոր Ապիրատն արդէն յաջորդած էր Քարավիժին. թուի թէ լուրն դեռ չէր հասած ի Մեծ Հայս, կամ դեռ չէր օրինաւոր համարուած։

Կատարեցաւ հոգենորոգ տառս մեկնութեան սուրբ աւետարանին Յովհաննու[1], զոր կարգեալ և ուղղեալ բազում աշխատութեամբ մեծի իմաստնոյ Սարգիս կոչեցեալ, աշակերտ երիցս երանեալ սուրբ վարդապետի Սարկաւագ կոչեցեալ, որ և նմա համազուգեալ ի սոյն խորհրդի, ժողովեալ բանս պատշաճաւորս յաղագս օգտի լսողաց և ուսումնասիրացն ընթերցողաց: Բայց հաւաքեալ են աստ բանք պիտանիք ի վարդապետութենէ Սրբոյն Եփրեմի, և Ոսկեբերանի, և Տեառն Ստեփաննոսի Սիւնեաց վերադիտողի, և ի տեղիս տեղիս՝ Աստուածաբանի և Սարկաւագի, և Անանիայի, և Իգնատիոսի. և սկիզբն ի Նանայէ[2], սակաւ մի, և ի Սեբերիանոսէ՝ ի մէջ քրիստոսախօսացն[3] սուղ ինչ վկայութիւն: Գրեցաւ ձեռամբ Թադէոսի և Վարդանայ, ի յիշատակ մեզ և ծնողաց մերոց: Աղաչեմ որք օգտիք կամ ընդօրինակէք կամ ուսանիք և լուսաւորիք՝ թողութիւն հայցեցէք մեզ, և Քրիստոս յիշողացդ ողորմեսցի: Գրեցաւ ի թուականիս Հայոց ՈԽԷ[4] (1198-9), ի սուրբ յանապատիս Թեղենիս[5], ի սուրբ կաթողիկէ դրանս. և Քրիստոսի փառք յաւիտեանս յաւետնից: Եւ տուաք զսա հոգեւոր եղբօր մերոյ Աւետեաց, որ տառապէր տարաշխարհիկ՝ ի գիւտս մակացութեան գրոց:

1. Այս այլ գիրքն օրինակողին Յիշատակարանն է:
2. Տես 215 Յօդուածը:
3. Այս բառերով սկսի Սեբերիանոս յեպիսկոպոս իր ճառն ի Ծնունդ Քրիստոսի:
4. Հին և մեծ վանք Սիւնեաց երկրին:
5. Յօրինակին ՈԻԷ (1178) գրուած էր, բայց որովհետեւ վերը գործոյն աւարտին ՈԽԶ (1197–8) թուականին գրուած է, հարկ է որ օրինակելն այլ անկէ վերջն եղած ըլլայ:

# ՄՁԷ

## ՆԵՐՍԷՍ ՇՆՈՐՀԱԼԻ ԿԱՄ ԿԼԱՅԵՑԻ[1]

Սուրբ Հայրապետն Գրիգորիս, յորժամ տեսանէր զայսպիսի անճառելի շնորհս և զիմաստութիւնն՝ աղբերաբար յառաջ եկեալ յեղբօրէն՝ ի Սրբոյն Ներսեսէ, խնդրէր հարազատաբար հոգեւոր սիրով ի նմանէ՝ արծարծել այնուհետեւ զաստուածային շնորհն, և լցուցանել զթերին ի կարգս եկեղեցւոյ, յիշատակ նոցունց ի սուրբ եկեղեցի ապագայիցն թողլով: Որոյ ընկալեալ զհրամանս և զաղաչանս աստուածայնոյ Հայրապետին, սկսանէր երգել զերգս հոգեւորս պաշտամանց՝ զոր պակաս և թերի գտանէր. և սուրբ ձեռինն գրով աւանդէր մանկանց եկեղեցւոյ, որք ժողովեալ լինէին առ նոսա յամենայն գաւառաց՝ ի սպասաւորութիւն սրբոյ աթոռոյն, արք իմաստունք և շնորհազգեացք՝ յեպիսկոպոսաց և ի վարդապետաց, ի քահանայից և ի սարկաւագաց: Զի ոչ ինչ էր նոցա ըստ այնմ ժամանակի սիրելի, բայց եթէ ընտրելոց արանց

1. Խոհական ընտրութեամբ և ոճով շարադրուած Շնորհալւոյ վարուց մաս մ՚է այս Յօդուածս, որոյ ամբողջն հրատարակուած է ի ԺԴ Սոփերս Հայոց. հեղինակն չի յիշեր իր անունը, այլ միայն Յովհաննէս վարդապետի մի յորդորանօք գրելը իմացընէ, Ա Հեթմոյ թագաւորութեան ատեն, յամի 1240, Սրբոյն մահուանէն 67 տարի վերջը, որ սխալմամբ գրուած է 77 տարի: Մենք այլ այս սուրբ հայրապետին երջանիկ մահուան 700դ տարեդարձին՝ (1873) հրատարակեցինք ընդարձակագոյն պատմութիւն մի, Շնորհալի և Պարագայ իւր անուանելով. յետ այնորիկ ուրիշ յիշատակներ եւս յայտնուեցան, այլ դեռ չեն բաւական՝ այս արդարեւ Շնորհալի անձին արժէքը լիովին ճանչցընելու:

և առաքինեաց ժողով։ Որով հարսնացեալ եկեղեցի Հայաստանեայց՝ պայծառապէս զարդարմամբ չքեղանայր, հալածեալ ի նմանէ աղջամղջին խաւար թանձրամած (որ) ի յանկմանէ ազգիս և ի ծուլագոյն հովուաց ի ներքս մտեալ. և լուսաւոր կարգ եկեղեցւոյ ի սուրբ լուսաւորչացն հաստեալ՝ յանիշխանութենէ ազգիս մերոյ բարձեալ, և խաւարամտացութեան նսեմացեալ խրթնատեսակ անզարդութեամբ։ Եւ ոչ ի բնաւին նիւթականացս ինչ փոյթ էր նոցա, այլ որ ինչ եկեղեցւոյ սրբոյ կարգ, և պայծառագոյն մաքրութեամբ յիւրաքանչիւրսն մեղսաքաւիչ մարմնոյ և արեանն Տեառն անբիծ սպասաւորութեան, զորս պայծառս և առոյգս յարդարէր. զզգեստս մաքուրս և վայելուչս եկեղեցականացն կազմէր, և հոգեւոր և մարմնաւոր սրբութեամբ ուսուցանէր սուրբ խորհրդոյն սպասաւորել։ Նորոգէր զառաջին սուրբ հարցն հաստատեալ կարգս եկեղեցւոյ. և զարդարէր զեկեղեցիս Հայաստանեաց անթերի լրմամբ. և հոգեւոր երգովք և քաղցրանուագ եղանակօք վայելչացուցանէր ըզսուրբ պատարագին խորհրդական երգսն. որպէս զի թանձրագոյն միտք տեսողացն՝ զսուրբ խորհուրդն նայելով յայնպիսի պայծառագոյն սպասաւորութիւն և սարսափելի խորհրդածութիւն, կակղացեալ անօսրասցին զգալի տեսութեամբն, և յիմանալին դիտաւորութիւն հաստեալ օգտեսցին. ուստի առ փոքր փոքր յաւելեալ նոյն մեծագոյն շահիցն հասանիցեն, և պարզաբար պարզագունին տեսութեան արժանասցին։ Երգէր և երգս տաղից քաղցրանուագ եղանակօք՝ յիմաստս բանի դաշնակեալ՝ ի տօնս տէրունիս և յիշատակս առաքելոց և մարգարէից և մարտիրոսաց։

Եւ թէպէտ և հրաշալիք էին բանք երգոց նորա առ միտս իմաստութեան, բայց եւս առաւել զարմանալի էին արուեստք զանազան եղանակացն՝ զոր աննման միմեանց յօրինէր, որպէս յանծախելի և յառատագոյն գանձարանէ ի ճոխ և ի հարուստ

մտացն արտաբերեալ։ Եւ զի վայելուչք և զորկա-
գոյնք էին ասացեալքն առ ի Նմանէ և Հոգւով
Սրբով լի, այնր աղագաւ յօժարապէս ի միտ առ-
նուին զնոսա, զի իբրեւ աղիւ համեմեալք էին. և
որպէս ի ճախարակս ճարտարաց քերեալ անգէզ և
անգծական բայիւք[1]։ Առնէր և տաղաչափութեամբ
Վիպասանութիւնս հանգոյն տաղիցն Հոմերոսի,
չափաբերեալ և ի մի գիծ աւարտեալ[2], մանաւանդ
թէ եւս առաւելեալք Հոգւոյն իմաստիւք՝ հռետո-
րացն Եղլենացւոց։ Շարագրէր բանս աղօթականս
նոյն արուեստիւ, սկսեալ ի Նախնի հօրէն մինչ ի
կատարած յաւիտենից այսմ[3]. և լնոյր ի նմա
զմիտս և զզօրութիւն Հնոյն և Նորոյս[4], և զրո-
վանդակ յանգուածս տանցն միով գծիւ յօրինէր։
Առնէր և խոստովանական դաւանութիւնս սրբա-
բան աստուածաբանութեամբ առ Սուրբ Երրորդու-
թիւնն և միասնական աստուածութիւնն և Որդւոյ
տնօրէնութիւնն[5], ըստ ուղղափառ դաւանութեան
սուրբ հարցն, նովին տաղաչափութեամբ, յոյժ
ընդունելի և հաւանական ընդհանուր եկեղեցեաց
ուղղափառաց և իմաստախոհ քննողաց։ Գրէր և
Ողբս ի վերայ առման մեծին Եդեսիայ՝ նովին ա-
րուեստիւ յոյժ գեղեցիկ և յարմարական պատմու-
թեամբ, որ զամենայն ընթերցողս շարժէ[6]։ Նա և
զնախկի պատմագրեալն ի Մովսիսէ Խորենացւոյ

1. Ծուռ կամ խորթ, ակընջի ծանր եկող ձայն չունէին գրուածքն և երգքն։

2. Նոյն յանգով վերջացընէր տողերը, սովորաբար ին, ին կամ եալ եալ։

3. Այս է Յիսուս որդի բառերով սկսած երկար տաղաչափութիւնն, երեք մասն բաժնուած, 4000 տող։

4. Հին և Նոր կտակարանաց։

5. Ասոնք և վարի յիշուածքն՝ ամէնն այլ միատեղ տպագրուած են ի Ս. Ղազար, յամին 1830։

6. Արդարեւ շատ գեղեցիկ մասեր կան այս երկար քերդուածոյ մէջ, որ սովորաբար Ողբք Եդեսիոյ կոչուի։ Տես Յօդուած 284։

յաղագս նախնեացն Հայոց՝ վերատին չափաբերութեամբ պատմէր, սկսեալ ի տիտանեանն Բելայ և ի նախնոյն մեր Հայկայ և հասուցեալ մինչև ի հարս իւրեանց և յինքեանս[1]։ Գրեաց և զՍրբոց Հրեշտակապետացն և զերկնաւոր զօրաց ճառս ներբողական, և բացայայտեաց ի նմա զմիտս խորագոյնս որ յաղագս նոցին ծածկեալ էր ի գիրս սուրբս. արար և երգս խորհրդականս և պատշաճաւորս աւուր տօնի նոցին[2], և աստուածիմաստ շնորհօքն պայծառացոյց զօր յիշատակի նոցին։ Յեղյեղէր և զտաղս Այբուբենից և լնոյր ի նոսա բազում իմաստս բանի և խրատս հոգևորս. և ի բազում տեղիս ի նախագիծս տանցն՝ զսուրբ անունն իւր կարգէր, որպէս և յայտնի է ամենեցուն։...

Եւ լցեալ անթերի լրմամբ շնորհաց Հոգւոյն Սրբոյ, իբրև զծով համատարած ինքն առ ինքեան ծփայր միշտ[3]։

Եւ իշխանութիւն մեր բարձեալ և եկեղեցի մեր խրթնացեալ, և աշխարհն մեր յազգաց ստարաց աւերեալ, և յետին դառնագոյն և չար ժամանակի պատահեալք, ցրտացեալ լինէին ամենեքեան առ սէր աստուածայնոցն, և ոչ ոք էր որ խնդրէր յայնպիսոյն աստուածամուխ առնէ զճառս իմաստից, կամ զմեկնութիւնս խորին խորհրդոց զանխլացելոց ի սուրբ կտակարանս, առ ի յօգուտ Ծնալոյ ազգիս մերոյ՝ յիշատակ բարեաց յապագայսն զկնի եկողացն թողլով։ Եւ այսր աղագաւ ծարաւի մնային յանսպառ աղբերէն, և աղքատք և թափուրք յաննիազ ճոխութենէն։ Եւ քանզի կատարեալ էր նա աստուածային իմաստութեամբն, ոչ կամէր առանց խնդրոյ յանպէտս բաշխել զՀոգւոյն շնորհս, և բանս պարսաւանաց կրել շնորհակալութեան փոխարէն։

1. Իբրև 1600 տող, սոսկ հետեւակ բան, առանց բանաստեղծութեան։
2. Շարականն «Որ յանէից ստեղծեր», և այլն։
3. Շատ խորին և գեղեցիկ բացատրութիւն։

Եւ արդ, թէպէտ և ունէր զգիտութիւնն ի կըրթութենէ վարժմանն, ուստի և յայտ յայտմանէ էր, զի յարաժամ մելան և քարտէս պատրաստական լինէր մերձ նմա առ ի գրել. և նա անպարապորդ միշտ մատեան ի ձեռս ունելով ընթեռնոյր և որոնէր և քննէր անդադար զխորին միտս գրոց՝ նուրբ տեսութեամբ. և ի կարի երկարագոյն աշխատութեանցն՝ թէ պատահէր փոքր մի յարել ի բազմոցի և սակաւ ինչ նիրհմամբ հանգչել, շըրթունք նորա իբրև ի յարթնութեան շարժէին և խաղային՝ թելադրութեամբ Հոգւոյն Սրբոյ[1]. որոյ զկնի իբրև ի խթանէ ումեքէ զարթնոյր, և առեալ փութապէս զպատրաստական քարտէսն՝ գրէր արագ արագ, զոր ի տեսլեանն առեալ լինէր ի Հոգւոյն Սրբոյ. և դարձեալ ննջէր, և նոյնպէս լինէր այս առ նմա հանապազ։

Ունէր և այլ հրաշալի շնորհ առաքինութեան. զի յորմէ հետէ ի զգայութիւն եհաս, ոչ ումեք ի մանկանցն զանկատար ձայնեաց զանուն, զոր ամենայն ազգք մարդկան սովորաբար ունին, և ոչ ումեք մականուն ասաց. այլ որպէս երկոքումբք հոգիացեալ էր և լուսաւորեալ աստուածային լուսովն, Լոյս վերաձայնէր ամենեցունց[2] անուն՝ մեծի և փոքու։ Նա և այնչափ զբռնութիւն մարմնոյ սանձեաց և հնազանդեցոյց աստուածունոյց պատուիրանին, որպէս զանմարմին գոլով, և զամենայն ժամանակս կենաց իւրոց ոչ խօսեցաւ բանս դատարկս և ծիծաղելիս. այլ զոր ինչ խօսէրն բան՝ լինէր հոգեւոր, յորդորումն ի բարիս, պատճառք սիրոյ, խրատք առ ի գործս առաքինութեան, միշտ ընթերցումն, և աղօթք արժանաւորք ի սուրբ սըր-

1. Նշանաւոր և հրաշալի սուրբ Աստուծոյ. երբ շատ յոգնած ատեն քիչ մի նստի կամ կռթընի աթոռին՝ քնանալու, պռկունքն շարժին իբր թէ խօսի։

2. Փոխանակ որ և է փաղաքշական անուն տալու տղայոց կամ այլոց՝ միայն Լոյս կոչէր։

տէ, խօսակցութիւն ընդ Աստուծոյ։ Եւ զբնաւ զգայութիւն անձին և մարմնոյ՝ երասանակաւ առաքինութեան ուղղէր յանայթաք յընթացս աստուածայնոցն շաւղաց. պարկեշտութեամբ առ հարկաւորսն, և ճնշմամբ սուրբ և ամենամաքուր մարմընոյն՝ յըստ մարմնոյսն, զմարմնական ցանկութեանցն ամենեւիմբ ցամաքեցուցանէր զաղբիւր։

Էր ի նմա և այլ ինչ առաքինութեան կիրք, որ առաւել գերագոյն էր այլոց բարեաց մասանց, զոր կարի յոյժ դժուարին յերկրածնաց ոք ստացական ջանիւ կարողանայ ստանձնել. զամենազովելի հեզութիւնն ասեմ, զոր ունէր հանգոյն մեծի նախամարգարէին Մովսէսի, որ ոչ մասնաւորաբար ըստ ժամոյ ուրեք, այլ զամենայն աւուրս կենաց իւրոց՝ ոչ ումեք բարկացաւ. և եթէ լինէր ի պատճառէ իմեմնէ բան կամ գործ յումեքէ արժանի բարկութեան, նա և ոչ սրտնէր կամ ցուցանէր բարկութիւն ինչ, այլ հեզ և քաղցրագոյն բանիւ ասէր. «Լոյս, եթէ ոչ յիս խնայէի՝ բարկանայի քեզ»։

Եւ այս էր նորա բարեաց սովորութիւնք միշտ, որ ի վեր է քան զմարմնոյ բնութիւն։ Զոր տեսեալ եղբօրն՝ գոհանայր զՏեառնէ որ այնպիսի մեծի փարթամութեան եղեւ ունող. և այնչափ մեծ սիւն հաւատոյ եւեթ հաստատեալ ի սուրբ եկեղեցի՝ յորովայնէ ծնողաց իւրոց։ Որոյ լծակցութեամբ անթերի յօրինամբ զարդուց ճոխացուցանէր զեկեղեցիս Հայաստանեաց։....

... Սուրբն և ամենայն երանութեանց արժանին Ներսէս՝ արժանաւոր կոչմամբ նստեալ յաթոռն հայրապետական՝ տքնէր մեծաւ վարանմամբ, և հոգայր միշտ ի տուէ և ի գիշերի, թէ զիա՞րդ կարիցէ զհաւատացեալն իւր բանաւոր հօտ՝ ըստ քաջ հովուապետին հովուել. զի մի՛ ոք յանմարմին գազանէ որսացեալ պատառեսցի և գիշատեալ կորիցէ։ Քանզի որպէս վերագոյնն ասացաք, աշխարհ ամենայն յայլասեռից ըմբռնեալ էին և ազգ մեր ի մէջ նոցա ցրուեալք ընդ ոլորտս տիեզերաց, և

ոչ գոյր հնար շրջել ի միջի նոցա և խրատել զնոսա և ուղղել՝ ըստ նմանութեան առաքելոց սրբոց, յաղագս ժամանակին չարութեան և անիշխանութեան։ Նա և ոչ գոյր քաղաք Թագաւորական յազգի մերում, զի անդ նստելով յաթոռ հայրապետութեան և վարդապետութեան, ի տուէ և ի գիշերի ուսուցանել ժողովրդեան մերոյ զաստուածային պատուիրանս։ Եւ զ'ի բաց թողուլն և կքանելն ի հովուելոյ՝ անհաւատութեան համարէր նշանակ, տեսանելով զգառինս ի գայլոց յափշտակեալս, և անտես առնելով։ Ապա յետ բազում և պէսպէս հոգոց անհանգիստ լինելոյ՝ ածէր զմտաւ գրելով առաքել յընթանուրս և խօսել առ ամենեսեան զպատուիրեալսն յԱստուծոյ՝ ի հին և ի նոր կտակարանս. նմանելով այսուիկ մեծի Առաքելոյն Պաւղոսի, որ ոչ միայն շրջելով ի տար աշխարհ՝ քարոզէր զաւետարանն, որպէս և ասէրն, թէ, յԵրուսաղեմէ մինչեւ ի Լիւրիկիա, այլ և ի կապանս գոլով՝ թղթովք հաստատէր զաշակերտեալսն։ Եւ յայս խորհուրդ հաստատեալ՝ գրէր Ընդհանրական նամակ[1] և առաքէր ընդ ամենայն աշխարհ, յարեւելս և յարեւմուտս, ի մէջերկրեայս և որք ընդ տիեզերս երկրի ցրուեալք ի զանազան տեղիս. և զգուշացուցանէր զամենեսեան աստուածայնոց պատուիրանացն պահպանութեանց։ Զեպիսկոպոսունս, զերիցունս, զվանականս, զիշխանս, զզինուորս, զքաղաքականս, զռամիկս, և զամենեսեան ըստ իւրաքանչիւր կարգի խրատէր կանոնական սահմանադրութեամբ, որպէս և յայտնի են այսօր գրեալքն՝ ի միջի մերում։

Ի կիր արկանէր վերստին և զողորմութիւնն՝ զոր ունէրն նախկի բնաւորաբար սովորութեամբ. և ըստ մեծի աստիճանին առաւելութեան՝ առաւե-

1. Շնորհալւոյ Ընդհանրական անուամբ շատ հեղ տպագրուած են այս նամակներն, նա և լատիներէն թարգմանուած և տպուած։

լոյր և ի տուրսն աղքատաց, յայտնապէս և ի ծածուկ։ Քանզի ունէր սովորաբար առնել խորհրդազգած զոմանս իւրոց աշակերտացն՝ իւրում զանխըլաբար խորհրդեանն, գնալ իմանալ և քննել, թէ, ո՛ ոք իցէ տնանկ և հասեալ ի յետին աղքատութիւն՝ և ամաչէ գալ ի հասարակաց բաշխումն ողորմութեանն, և ծանուցանել նմա. զորս իբրև իմանայր՝ տայր ցնոսա ծրարս ոսկւոյ առատապէս, և հրամայէր ընկենուլ զայն ընդ երդս և ընդ պատուհանս նոցա ի գիշերի, առ ի լինել նոցա ի լրումն պիտոյից իւրեանց. և զգուշագոյնս պատուիրէր՝ զի մի՛ ոք գիտասցէ. և այսու նմանէր աքանչելագործ հայրապետին Նիկողայոսի։

Եւ բազում և պէսպէս առաքինութեամբ զնախնի Սրբոցն բերէր զնմանութիւն յանձին. զմիշտ աղօթսն ի սուրբ սրտէ, զպահսն սրբութեան, զհամբերութիւնն ի ճգունս հոգևոր պատերազմին, զսէրն՝ առ Աստուած և առ ամենեսին, զնախանձն ի բարիս, զհաւատն ուղիղ, զյոյսն առ Աստուած, զանբաւ հեզոզթիւնն[1], զընդ ամենայնի ամենայն լինելն, զժուժկալութիւնն յաշխատութիւնսն, մինչ և յարաժամ ընթեռնլով և գրելով զբանս աստուածային, և ի նոյն խոկալով անդադար. և զայլ ամենայն բարեաց տեսակսն, զոր տկարանայ լեզու պատմողաց մի ըստ միոջէն պատմել։...

1. Մասնաւոր խնամով կրկնէ հեղինակն՝ Շնորհալւոյ այս առաքինութիւնը, զոր առաջ այլ յատուկ և երկար յիշեր էր. և արժանապէս. վասն զի և Տէրն իւր և մեր՝ Յիսուս, այս քաղցր շնորհաց համար ըսաւ յատուկ, «Ուսարուք յինէն, զի հեզ եմ և խոնարհ » սրտիւ ». որոյ պտուղն այլ աւելցուց, «զի գտջիք » հանգիստ անձանց ձերոց »։ Դրանց շատ նեղութիւններ կրած է մեր Շնորհալին, այլ միշտ գտած և սրտին հանգիստը, ուրիշներուն այլ գտնել տալով իր ողորմութեամբքը, խրատուք և գրուածովք. զոր և մենք կարդալով՝ գտնեմք ոչ սակաւ հանգիստ մեր խղճուկ սրտին։

Թէ իմանայր ուրեք թէ իցէ ոք յերիցանց կամ ի սարկաւագաց որ ունիցի շնորհս և սէր ի հոգեւոր գործառնութիւնսն, փաղփաղակի առաքէր և ի ձեռն գրոյ առ ինքն կոչէր, և եւս առաւել յորդորէր ի նոյն, և ուսուցանէր և խրատէր յարաժամ։ Եւ յոյժ սիրելի էր նմա այր՝ որ ունէր նախանձ և ողջախոհութիւն ի բարիս և ի շնորհս աստուածայինս. զորս թէպէտ և հոգեւորքն ճոխացուցանէր, այլ և մարմնականօքն ոչ թողոյր անփարթամ։ Եւ որպէս լծակցեալ Աստուծոյ, զպատուեալսն շնորհօք ի նմանէ՝ և ինքն պատուէր, սիրէր և յարգէր աննախանձ մտօք՝ որպէս հայր բարի գթած և որդեսէր։

Վասն որոյ ընդհանուր եկեղեցի Հայաստանեաց՝ ի ժամանակս սուրբ հայրապետին Ներսիսի՝ լուսաւորեալք ի շնորհաց նորա և ուրախացեալք ի վերայ աստուածայնազգոյն հովուապետութեան նորա, ընդ ամենայն տեղիս գոհանային զՏեառնէ, որ այնպիսի լուսաւորիչ ի զարմէ Սրբոյն Գրիգորի պարգեւեաց նոցա ի յետին ժամանակիս, և ուրախ էին ամենեքեան ի Տէր։...

Իսկ անքնին դատաստանքն Աստուծոյ և անհասանելի խորքն՝ ի նոյն ամի (1173) վերափոխէր զերանելի զհայրապետն սուրբ, փոխադասեալ յանվախճան խաղաղութիւն, յամսեանն օգոստոսի որ օր երեքտասան էր, յաւուր հինգշաբաթւոջ, և ի թուականութեանս Հայոց վեցհարիւր քսան և երկու[1]. և մնաց այս գործ անկատար մինչեւ ցայս վայր[2]։ Քանզի ի ձգնաւորական կրօնից տկարացեալ

1. Այս թուականին 622=1173, հինգշաբթի օր մի հանդիպի օգոստոսի 8ին., որ օր նշանակեն Սրբոյն մահը՝ Միխայէլ Ասորի իր ժամանակակիցն և հին Յայսմաւուրք. և այս երեւի ստոյգ. ոմանք այլ ամսոյն 5ին նշանակեն։

2. Հայոց և Յունաց հաւատոյ միաբանութեան գործն։

երանելւոյն ըստ մարմնոյ, յայնժամ ճնշէր զաւօք պարկեշտ անձնն. և հասեալ ամառնայինն եղանակ ի վերայ՝ ջերմային օդովքն տապացուցանէր ըզսուրբն, և փաղփաղակի վախճանէր: Սուգ մեծ հասեալ եկեղեցւոյ մեր և բովանդակ զարմիս. և ոչ միայն մեզ՝ այլ հասեալ համբաւն ի Թագաւորական քաղաքն, վշտանայր բարեպաշտ արքայն[1] և հառաչանօք ասէր. Մեծ զգայարան և արթուն բարձաւ այսօր յեկեղեցւոյ Աստուծոյ. զրկեցան Հայաստանեայք յերկրորդ Լուսաւորչէն իւրեանց. ո՜վ երանելի սուրբ հայրապետ, զիա՞րդ զիմս փափաք անկատար թողեալ ժամանեցեր առ Քրիստոս. սակայն մեք զարժանի յիշատակի անուն քո՝ ընդ առաջին Սրբոցն դասակարգեմք տօնախմբելով ուրախութեամբ ի Քրիստոս: Եւ պատուէր հրամանի ետ՝ ի Թագաւորական քաղաքին եկեղեցիսն յիշատակել զնա ընդ առաջին Սուրբսն տօնախմբութեամբ:

Իսկ զհոգիացեալ մարմին սուրբ հայրապետին Ներսիսի՝ մեծաւ պատուով և առաքինեաց և վարդապետաց ժողովով, մեծապայծառ հանդիսիւ հանգուցին յարժանաւոր դամբարանին, ի հիմունս սուրբ և գեղապաճոյճ տաճարին, որ շինեցաւ յանուն Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին՝ յորդւոյ եղբօր իւրոյ ի Տէր Գրիգորիսէ[2]. քանզի նա յաջորդեաց զաթոռ հայրապետութեանն Հայոց՝ զկնի Սրբոյն Ներսեսի. որ և առաւել զարգարեաց զսուրբ աթոռըն, ամենավայելուչ տաճարին շինմամբ, և ճոխացոյց երեւելի և պատուական սպասուք. և ետ բերել զնշխարս սուրբ հայրապետին և նախնոյն իւրեանց Տէր Գրիգորիսի Վկայասէրի, և ամփոփեաց ի հիմունս նոյն տաճարի, մերձ առ դամբարանս երկուց հայրապետացն, Գրիգորիսի և Ներսեսի:

Արդ, կացեալ սուրբն Աստուծոյ ի հայրապետու-

1. Մանուէլ կայսրն. որ թղթակցէր՝ Հայոց և Յունաց միաբանութեան համար՝ ի հաւատոյ:
2. Գրիգոր Դ. Տղայ մականուանեալ կաթողիկոսն:

թեանն ամս ինն[1], բարւոք և գեղեցիկ կենցաղավարութեամբ՝ զընթացսն կատարեալ և զհաւատսն պահեալ, ըստ Պաւղոսի, փոխեցաւ յանվախճան և յերանելի կեանսն, և հանգեաւ ի դասս առաքելոց և մարգարէից և ուղղադաւան հարց և վարդապետաց։

---

## ՄՁԸ

### ՅԻՇԱՏԱԿ ՄԻ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ[2]

... Մեր երջանիկ սուրբ և աստուածարեալ հայրապետ (Ներսէս), ըստ մարմնոյ զարմ և շառաւիղ Սրբոյն Գրիգորի[3] մեծ Նահատակին Քրիստոսի, և ըստ հոգւոյ՝ համանման և զուգահաւասար նմին. բանիւ կատարեալ, հոգւով լցեալ, առատաբուղխ իբրև զյորձանս գետոյ, յ՚առնել և յուսուցանել զգիտութիւն աստուածաշունչ գրոց. հեզ և խոնարհ սրտիւ. զգաստ և արթուն ի քննութեան աստուածայնոց գրոց. որ և լի աւուրբք կատարեալ հասակաւ տիօք ծերութեան։ Որ և յանբարի ժամանակի յաջորդեաց զաթոռն հայրապետութեան տանս Թորգոմայ, ի քրիստոսազգեաց եղբօրէ իւրմէ Գրիգորիսէ. որոյ քաջութիւն անուանն և գովութիւն իմաստիցն՝ անցանէ քան զմիտս[4]. որ և

1. Թերևս իր եղբօր Գրիգորիսի կենդանութեան ատենէն սկսելով՝ ինն տարի. բայց ստուգիւ եօթն, ինչպէս հետեւեալ ժամանակակիցն այլ գրէ։
2. Նոյն Շնորհալւոյ հրամանաւ գրուած Աւետարանի մի յիշատակարան է։
3. Յայտնի է որ Շնորհալին թոռն է Գրիգորի Մագիստրոսի, և սա ի Պահլաւունեաց ցեղէն էր, յորմէ և Ս. Լուսաւորիչ մեր։
4. Այս գովութեան խօսքերս Գրիգորիսի համար

բազմամեայ ժամանակաւ, երկայնաձիգ գաւազանաւ վարեաց զհոգեւորս այս իշխանութիւն, փառաւորեալ յԱստուծոյ և ի մարդկանէ... լի աւուրբք պատուական ծերութեամբ փոխեցաւ ի Քրիստոս, յամին յորում էր թիւն Հայոց ՈԺԵ (1166)։.. Եւ ըստ վերոյգրելոցս՝ փոխանորդեաց ի հայրապետական յաթոռ՝ եղբայրն նորա երջանիկն Ներսէս։ Որ և ըստ աստուածային սիրոյն բորբոքելոյն յոգի նորա, ցանկացող եղեալ այսմ աստուածային գանձուս (Աւետարանի) և լուսերանգ տառիս, որ է աւետեաց քարոզ բոլոր ազգաց և ազանց... ետ գրել զսա ի լաւ և յընտիր օրինակաց սրբոյ աթոռոյս, և զարդարեալ զանազան երանգօք և ծաղկօք յոսկւոյ սրբոյ և դեղոց պատուականաց, ոչ ի պատճառս մեծութեան և փառաց՝ որ ի սմայս խօսի Աստուած, այլ ի վայելուչ և ի զուարճութիւն մանկանց եկեղեցւոյ և ի յիշատակ իւր յապագայն։ Որ և յաւարտումն լուսազարդ տառիս և ի լնուլ փափագման սրտին, փոխի յաստեացս առ Քրիստոս. վարեալ զիշխանութիւն իւր ամս եօթն, և յիշատակ բարի թողեալ յաշխարհի, յետ որոյ բազում խնամ ողորմութեան եցոյց Տէր ի վերայ աղքատացեալ ազգիս և սրբոյ աթոռոյս։...

Անօթս այս պատուական վայելուչ մատեան՝ որ իմով ձեռամբ գծեալ Գրիգորի մեղապարտի, և անկատար մնացեալ, զորոյ զպակասութիւն լցեալ հրամանաւ կաթողիկոսի Հայոց Գրիգորի Տղայի, ի թուականիս ՈԻԳ (1174)։ Վասն որոյ աղաչեմ զամենեսեան զստացողսդ, յետ սոցուն զընթերցողսդ յարաժամ, և զամենայն որդիս լուսոյ, յիշել ի Տէր՝ յառաջ զպատճառն բարեաց ի սորայս գործ-

են, որոյ շատ (Ծ4) տարիներ Հայրապետութիւնը՝ ամեն կողմ ցրուած ազգայնոց վրայ, երկայնաձիգ գաւազանն կոչէ. շատ պատիւ գտած է ի լատինաց յԵրուսաղէմ գնացած ատեն և հրաւիրուած անոնց եկեղեցական ժողովոյ։

[illegible] [illegible] և զաստուածազգեաց Հայրապետն Ներսէս, և ապա զերկրորդ լուսաւորիչն Հայոց զհայրապետ տէր զԳրիգորիս կաթողիկոս. ընդ սմին և զեղբօրորդի սոցուն Գրիգոր՝ վերատեսուչ Հայոց [illegible]։...

---

# ՄՉԹ

## ՍԱՐԳԻՍ ՇՆՈՐՀԱԼԻ

## ՄԵԿՆԻՉ ԹՂԹՈՑ ԿԱԹՈՂԻԿԷԱՑ

Ամենայն ազ որ[1] զգիրս աստուածային ի ձեռն առնուցուն՝ նախկի զմակագրութիւն նորա ընթեռնու, և նովաւ հաստ լինի՝ եթէ մարգարէականն իցէ արգեօք։... Այսպէս երիցս երանեալ և ճշմարտասէր հոգի սուրբ վարդապետն Սարգիս և կատարեալ պաւետրիկոսն՝ ընտրեցաւ ի Հոգւոյն Սրբոյ, և գրեցաւ ընդ անդրանիկս եկեղեցւոյ, ի տանէ Հայկազնեան, յազգէ Թորգոմեան. և որպէս ասաց Փրկիչն, թէ. ի պտղոյ անտի ծառն ճանաչի, այսպէս և հոգելից հայրս մեր՝ փորձ և ընտիր գտաւ ի համացեղս. և այս յայտնի է ի խորհրդական և ի հանճարեղ բանս իւր։ Թուի թէ առաքելաքն սուրբք՝ որք արբին զծորանս բանին ի վերնատանն՝ իջմամբ հրեղինօք լեզուօք Հոգւոյն Սրբոյ՝ ի վերայ նոցա՝ առ բանն ընտրութեան, եդին զդոյլ[2] կեն-

1. Սա նման Ներսիսի Կլայեցւոյ Շնորհալի անուանուած է յոմանց, շնորհիւ վարուցն և գրութեանն. և է անոր և Իգնատիոսի (Ղուկ. աւետարանի մեկնիչին) աշակերտակից։ Իր վրայ և իր վարպետին Ստեփաննոսի վրայ այս Յառաջաբան տեղեկութիւնները գրողն Կարապետ անուամբ մէկն է, թերևս իր աշակերտ կամ ժամանակակից կամ ոչ հեռի ժամանակաւ, զի կ՚ըսէ «ի մեր ժամանակ»։

2. Թուլի դոյլ, մեծ աման ջրոյ. Թուրք. պարգած։

դանարար բաժակին ի ձեռս նորա, արբուցանել զուրախարար բաժակն արժանաւոր և ընտրեալ անձանց, այսինքն է ամենայն հաւատացելոց...

Որպէս և ի մերս ժամանակ եօթնարփեան շնորհօք Հոգւոյն լցեալ սուրբ հայրս մեր՝ վարդապետս Սարգիս, և եղեւ ջահ եօթնաստեղեան անշիջանելի, յաւէտ լուսատու Հայաստանեայցս եկեղեցւոյ։ Բայց զոր օրինակ աբեգակն ի ծայրս կամարացն լինելով՝ ի հասարակ ժամու զամենեսին առհասարակ լուսաւորէ գարնանածս, ըստ մարգարէութեանն Դաւթի, թէ, «Ոչ ոք իցէ որ թաքիցէ ի տապոյ նորա», զի զծերպս և զփապարս ի լոյս ածէ և ի տեսիլ, այսպէս և սա զառաքելական բանս զծածկեալս և զխորինս զեօթանեցունց թղթոց կաթուղիկեայց՝ ի յայտ և ի տեսիլ ածեալ ամենեցուն, և ոչ եթող և ոչ խուն մի ի բանից նոցա՝ որ ոչ մեկնեաց վարդապետօրէն. և այլ ի ճահ և ի դէպ ի կարգ անկեալ՝ մեկնէ կամենայն. ոչ նուրբ բանիւք և ոչ գեղջուկ, այլ զմիջակ և զարքունականն գնալով ճանապարհ, զի դիւրալուր և ախորժ լինիցի լսողացն, զի ի պարսաւագիտաց և արհամարհողաց ի բաց փախիցի, և անկարօտ և անտարակուսելի զլսողսն առնէ։

Արդ, պարտ է մեզ հարկաւորաբար եւս գրել, թէ յորում ժամանակի էր սուրբ վարդապետս, կամ առ ո՞ վարժեցաւ, կամ ո՞յք էին ուսումնակիցք սորա, և տեղին ո՞ւր գրեաց զգիրս, և թէ ո՞ւր կան սուրբ ոսկերք նորա եդեալ. զի հաւատարիմ լիցի լսողացն, թէ ոչ որպէս ամենայն հին և նոր կտակարանք՝ ի լեզուս Հայոց թարգմանեցաւ. այլ սուրբս այս ի մերոց ազգաց է և ի տանէ Հայոց[1], առաքելական շնորհօք լցեալ, գրեաց զգիրս առաքելական մատենից մեկնութեանս։

1. Ըսել ուզէ, թէ ոչ իբրեւ շատ Ս. Հարց գրքեր յօտար լեզուներէ թարգմանուած է այս մեկնութեան գիրքս այլ, հապա մեր բնիկ հայազգի հեղինակի մը հարազատ գործ է։

Արդ, յաւուրս Տեառն Բարսղի[1] սովորութիւն էր Հայոց կաթողիկոսացն յառաջին՝ շրջել ամ յամէ ընդ Հայս, և հայրական խնամօք ուղղել զամենեսեան ի կանոնական սահմանս. գնաց յաշխարհն Կիլիկեցւոց և եմուտ ի Սեաւ լեառնն, ուր էին բազում վանորայք և անապատք. և յայնմ ժամանակի հալածումն եհաս ամենայն Հայոց՝ յանօրէն ազգէն Իսմայէլի, և բազում գաւառք և վանորայք աւերեցան, և մնացեալքն փախստական լինէին:

Իսկ մանուկ մի քահանայ գոլով և վարժեալ ի հին և ի նոր կտակարանս վարդապետական ուսմամբ՝ ի հօրեղբօրէն իւրմէ, անուն կոչեցեալ Ստեփանոս, որպէս թէ ութեւտասնամենից, սորա ընդ այլ փախստականսն հասեալ ի գաւառն Քեսնոյ, ի մեծահռչակ սուրբ ուխտն որ Կարմիր վանքն կոչիւր, որ էր իշխանաց իշխանին Վասլի, որ Գող Վասիլն կոչէր յայլազգեացն[2], վասն արիութեան նորին, և ի նոյն տեղին բնակեցաւ. բայց ծածկեաց զանուն վարդապետութեանն վասն մանկական հասակին. իսկ յետ աւուրց յայտնեցաւ բնակչաց տեղւոյն, եթէ ուսեալ է զհին և զնոր կտակարանս լիով, և հրաման ունի առանց գաւազանի աղօթել ի տեղի աղօթից: Եւ ապա ծերքն որ անդ կային՝ որք սիրողք էին լսել զպատուիրանս Աստուծոյ, հարկեցին զնա վարդապետել ի հասարակաց տեղին, օրինակ բերեալ ի մէջ, եթէ Դանիէլ մանուկ էր՝ սակայն զօրացեալ Հոգւովն յանդիմանեաց զանօրէն ծերսն ի սատակումն անձանց. և Սաղոմոն մանուկ գոլով և նստաւ յաթոռ թագաւորութեան հօր իւրոյ Դաւթի: Իսկ նա ոչ եղեւ անհնազանդ՝ կատարել զխնդրուածս նոցա, մանաւանդ զմտաւ ածեալ զտէրունեան հրամանն, եթէ, «Ոչ ոք լուցանէ ճրագ և դնէ ընդ գրուանաւ, այլ ի վերայ աշտանակի, զի լոյս տայ ամենեցուն որ ի տանն

1. Մեծ Գրիգոր Վկայասէրի յաջորդ կաթողիկոսն:
2. Տես Յօդուած 277:

իցեն »։ Եւ նա յանձն առնու խօսել առաջի հրեշտակաց զբանն կենաց. և անօթ ընտիր գտեալ զնա Հոգի Սուրբ Աստուած՝ առատաբուղխ լինէր ի նա զաստուածախօս վարդապետութիւնն. և ել համբաւ նորա ընդ բազում գաւառս։ Եւ ոմանք նմա նախանձաբեկ լինէին վասն մանկական հասակին՝ վարդապետք և առաջնորդք որ ի ժամանակին էին, և չարախօսէին առ Տէր Բարսեղ, անարգեալ՝ ոչ միայն զնա այլ և զբնակիչս սուրբ ուխտին։ Իսկ կաթողիկոսն առնու ընդ իւր վարդապետս և եպիսկոպոսս, այլ և յընտիր իշխանացն որ էին ի ժամանակին, և գայ յողջոյն իշխանաց իշխանին Վասլի, և զգլխաւոր վարդապետս զՄեղրիկ և զկիրակոս[1], և գայ նոքօք ի մեծ ուխտն ի Կարմիր վանքն։ Եւ բնակիչք տեղւոյն ելին ընդ առաջ մեծաւ հանդիսիւ, և ընկալան զնա մեծաւ պատուով։ Եւ քանզի շաբաթ էր օրն այն, և յորժամ ի գիշերային պաշտամունսն հասին՝ կացին առաջի կաթողիկոսին և խնդրէին, եթէ, Հրամայեա վարդապետացդ խօսել մեզ մխիթարութեան բան։ Իսկ վարդապետքն արհամարհեալ զծերսն՝ ասեն. Խօսեսցի ընդ ձեզ վարդապետն ձեր, որ յայնքան ի մանուկ հասակի համարձակութիւն տայք ի մէջ եկեղեցւոյ վարդապետել, և զհրամանս Ս. Գրիգորի Աստուածաբանի ի վկայութիւն ածեալ, եթէ, Յիսուս երեսնամեայ մկրտեցաւ, և դու յառաջ քան զմօրուսդ վարդապետես։ Մինչեւ յամենեցունց յառաջ կոչել զմանուկն Ստեփաննոս, կամ վարդապետել առաջի իմաստնոց և գիտնական գլխաւորաց, և կամ թէ ոչ՝ անարգիլ արհամարհանօք։ Եւ զայն ոչ զմտաւ ածէին զոր ասաց Փրկիչն, եթէ, «Որ հարցի ընդ վիմիս ընդ այս՝ փշրեսցի. և յոյր վերայ անկցի՝ հոսեսցէ զնա»։ Իսկ նա զօրացեալ Հոգւովն Սրբով և գրեալ զսիրտ իւր տէրունեան նշանաւ, որպէս թէ ասէր զմարգարէին, «Տէր տէր տայ ինձ լեզու խրա-

1. Տես Յօդուած 276, ուր յիշուին ասոնք։

[illegible] խօսել ինձ զբանն. և վասն խօսել առանց [illegible] [illegible] [illegible]. [illegible] զոր ինչ հոգւոյն [illegible] ընտանի առաքինութեան և համեստ խոնարհութեան։ Եւ միշտ զբանն յորդորութիւն Տեառն առաջնորդ. [illegible] [illegible] [illegible]։ Այս [illegible] [illegible] [illegible] Տէրն Քրիստոս [illegible] [illegible] [illegible] և համբերէր. և եղ [illegible] [illegible] [illegible] և [illegible]՝ ի ձեռն նորա, և [illegible] [illegible] ի ձեռն նորա։ Եւ ի [illegible] որ էր օր [illegible]՝ որոյ զնա [illegible] [illegible]՝ որ ընդ իշխանութեամբ մեծի [illegible] [illegible]։ Իսկ նա [illegible] ի [illegible] [illegible]՝ [illegible] առ նա [illegible] [illegible]. Իսկ նա ոչ [illegible] [illegible]՝ այլ [illegible] եղեալ՝ փչէր ի նոսա զբանն կենաց։

Որ և մի էր յաշակերտաց նորա հզօր վարդապետն Յորդանէս, որ և գրեաց զԿաթողիկեաց Մեկնութիւնս. և ընկեր նորա Իգնատիոս, որ և նա գրեաց զՄեկնութիւն աւետարանին Ղուկայ. և այլ ևս երկու եղբարք, Գրիգորէս և Ներսէս[1], եղբօրորդիք Տէր Վահրամայ կաթողիկոսին Հայոց[2], որ յետ նորա նստան յաթոռ հայրապետութեանն, յառաջագոյն Տէր Գրիգորիս և զկնի նորա Տէր Ներսէս եղբայր նորա։ Եւ այս յայտ իսկ է ամենեցուն, թէ որքան երգս հոգեւորս աւանդեաց եկեղեցւոյ Տէր Ներսէս, որ և այժմ երգեն յամենայն տեղիս. և սկիզբն արար մեկնելոյ զաւետարանն մատթէոսեան քաղցր բանիւք և առատ մտօք, որ և հաճելի էր գիտնականաց. և եհաս մինչև ցայն վայր՝ զոր ասաց Փրկիչն, Մի համարիք լուծանել զօրէնս, և աւարտ եղև կենաց նորա[3]։ Իսկ երէց

1. Ներսէս Շնորհալին և երէց եղբայրն։

2. Որ է Մեծ Վկայասէրն, Գրիգոր Բ։

3. Մնացած մասն աւետարանին՝ մեկնած և աւարտած է Յովհաննէս Երզնկացին, իբրև հարիւր յիսուն տարի վերջը։

եղբայր նորա տէր Գրիգորէս՝ որ Վկայասէրն անուանեցաւ[1] և մինչև ցայժմ ասի, սա բազում ճառս սուրբ մարտիրոսաց՝ էր որ ի Յունաց և էր որ յԱսորւոցն՝ ի Հայս թարգմանեաց, որ և այժմ ընթեռնուն յեկեղեցի. է որ ներբողեանքն են և է որ պատմութիւնք. վասն այսորիկ Վկայասէր կոչեցաւ: Քանզի ասաց ոմն յիմաստնոցն, եթէ Ծածկեալ գիտութեան վարդապետի՝[2] բերան են աշակերտքն. քանզի լուսաւորիչք եղեն ազգիս Հայոց՝ ի մերս ժամանակի:

Իսկ լցեալ Հոգւով Սրբով ի մէջ ընկերացն՝ սուրբս այս վարդապետս Սարգիս՝ վասն որոյ պատմութիւնս, արբ զհուրն կենդանի առաքելական, և զնոյն կենդանարար հուր իբրև զանսպառ աղբիւր մշտնջենաւոր՝ ետ յարբումն Հայաստանեայցս եկեղեցւոյ: Սա զամենայն ժամանակս իւր ետ զկեանս իւր ի խոկումն գրոց, և արար բնակութիւն իւր ի սուրբ ուխտն ճգնաւորաց, որ և յասորի լեզուն Քարաշիթու կոչի. անդ աւարտեաց զաստուածային մատեանս, և ի նոյն տեղի կան սուրբ նշխարք ոսկերաց նորա:

Ահաւադիկ ցուցաւ փափաքողաց և խնդրողաց՝ անտարակուսելի լինել ժամանակն և կենցաղավարութիւն նորա, և եթէ առ ո՛ վարժեցաւ և ոյք էին ընկերք նորա և տեղին ուր փոխեցաւ առ Քրիստոս[3]:

1. Փոքր Վկայասէր կոչուի, իր հօրեղբօրէն որոշուելու համար:

2. Ստեփաննոսի համար կ՚ըսէ:

3. Սարգսի գրութեան կամ մանաւանդ վերջացընելուն ժամանակն՝ է 1156 թուական Փրկչին: Գրուածն շատ երկայն է, անոր համար ինքն Սարգիս քանի մի տարի վերջը համառօտեր է զայն, որ առանց ձանձրութեան շատերն կարդան: Անոյշ խօսքերով և խոնարհաբար խնդրէ, «Զկրկին աշխատող գրոցս ի յերկս
» քանի Մեկնութեան նախագունիցն, և ապա ի համառօտել զպիտանացուն, ընթերցող լուսամիտ համ-

# ՄՂ

## ՅՈՎՍԷՓ ՆՈՐ ՎԿԱՅ

### *Դուրքի Քահանայի[1] ի սքանչելի վկայն Քրիստոսի Յովսէփ Պատանի, որ յԱյրարատոյ նահանգէն, Ներքողական գովեստի բան*

*Պարտական եմ պատուասիրել առ քեզ, ըստ նազելի և պարկեշտագեղ պատուոյ գերագունիդ իմաստնոյ, և ինձ յոյժ աստուածուսոյց պատուիրանին՝ սիրով մերձաւորիդ, զզօրութիւն աստուածային Հոգւոյն և զանուն մխիթարական յանձին կրողի, վկայասէր մտօք զվաղնջուցն ի ձէնջ խընդիրս լնուլ, զուռոգանութիւնս գովեստից։ Վասն զի մասնաւորիլ ի ճշմարիտն ձայնէ ուսաք ի հասարակութիւն նմանակցութեան՝ զյօժարութիւն.*

*» բակացդ ուսուցմնասիրաց և քրիստոսասիրաց, զոր*
*» աղաչեմ սիրով Հոգւոյն և մաղթեմ թախանձելով,*
*» մի անտես առնել զերկայն ժամանակաց աշխատու-*
*» թիւնս իմ, այլ ողբամատոյց աղօթիւք յիշել միշտ*
*» առաջի յուսոյն մերոյ Քրիստոսի, զի թերեւս ի ձեռն*
*» ձեր ողորմութիւն գտայց ի նմանէ՝ յաւուրն մեծի*
*» և համառօտի, և Աստուած յիշողացդ և յիշելոցս*
*» ողորմեսցի. ամէն»։ Ասոր նման շատ մանր յիշատակներ այլ գրած է։*

*1. ԺԲ դարու երկրորդ կիսուն **Դուրիք** անուամբ քանի մի գիտնական եկեղեցականք կային յարեւելեան կողմանս Մեծ Հայոց. ո՛վ և ո՛ր գաւառէ է սա, չէ յայտ. ով այլ ըլլայ՝ լաւ գրիչ մ'է. իսկ այս յառաջաբանն՝ թէ ոճով և թէ իմաստով՝ մեծ հանճարոյ նշան կու տայ։ Գրուածի խնդրողն այլ՝ Մխիթար մ'է, և հաւանօրէն Գօշն հռչակաւոր, որոյ հայրենակից և ժամանակակից էր **Դուրիք Վ. Աղուէկայ** որդի գիտնական գրող մի, յիշուած յ'280 Յօդուածի։*

զոր խնդրողիդ յաւէտ շնորհ ունել իրաւացի է, եթէ դիպեցացի պատեհաւոր ինչ իմանալ և առել, և դրուագս գովեստից ընդ պատմութեան Նորին գովելի կենացն և նահատակութեան յարահիւսել։ Սակայն ի սաստկագոյն լինիմ յերկիւղի. զուցէ այլայլութիւն մտաց և ապաղօր զգայարանացս գոլոյ՝ յարժանւոյն վրիպեցայց ասից. վասն որոյ անագան յայսոսիկ ածայ հաւանութիւն՝ լծակցեալ ընդ վկայասէր անձին քում և զիմս յօժարութիւն։ Եւ քանզի դու ինքն որով ունիսդ՝ բաւական քան զմեզ էիր յաւէտ հրաշացուցանել՝ զհանգունակիցն հրեշտակաց ի մարմնի անդ խոնարհութեան, այլ զի իրաւացի վարկար ըստ պատմութեան ճշգրտաբանութեան և զգովեստիցն մեզ լինել պարտս, հաւանութիւն յանձին ունիմ անստերիւր սիրոյ ախորժիւք. քանզի և հոգիք մարգարէից՝ մարգարէից հնազանդել օրինադրեցան յԱռաքելոյ. և սիրոյ հաստատութիւն՝ ընդարձակէ ի համարձակութիւն, վասն զիջանելոյ սիրողին ի սիրեցելոյն վատասրտութիւն։ Ուստի, իրաւացի վարկայ սկսանիլ ի դրուատիս գովեստից մեծապանծ և նորազարդ վըկային Աստուծոյ, և ինձ ի տեսիլ աչաց ժամանեցելոյ[1], իսկապէս և անըսգիւտ սիրողին Քրիստոսի՝ Յովսեփայ։...

Սա ի մեծ ոստանէն Հայոց՝[2] սուրենական ազգաւ, և պարսկականին վիճակեալ կրօնից, յորմէ յուրաստ ի մանկական տիոց լինեալ՝ յոլովակի խոշտանգանս զանըմպութեամբ ի ծնողացն ընդունէր, և մահու եւս սպառնալեաց ցոյցս. նա և շողոքորթանս փաղաքշականս, զոր սովոր են առաջի դնել մանկանց։ Յորոց առ վայր մի իբրեւ խաբանօքն յանձնառութեան կարծիս յինքեան բերեալ, և զայն ի սադրելոյ ոմանց, որպէս թէ ինչ ոչ վնա-

1. Գրող հեղինակս աչօք տեսեր է եղեր զՅովսէփ։
2. Որ է Դուին մայրաքաղաքն Հայոց յԱյրարատ։ Սուրենական՝ թուի թէ Պահլաւ ուզէ ըսել։

սեցի յայնմանէ. այլ թաղծէր սուրբն յինքեան յաղագս այնորիկ. և նորին աղագաւ փախստեայ եղեալ օտարանայր կամայօժար աղքատութեամբ։ Քանզի խիթայր յաղագս չար յանձն(առ)ութեանն, և ասէր յայտնի խոստովանութեամբ, թէ, Մինչ առ քրիստոնէիցն սնանէի մանկունս և յեկեղեցին Աստուծոյ ընդ նոսա փութայի, և զձախողակի դենին նախննեացն ազարտէի զաղձատելի կրօնս, ընդէր ոչ ի նմին կալով վկայեցի ճշմարտութեան Յիսուսի, ի գաւառի՝ յորում յոգունք վկայական արեամբն ծաղկազարդ զանդաստանս երկրին արարին[1]. յորմէ թէպէտ և վրիպեցայ մանկաբար, սակայն իրաւացի է ինձ ի նոյն տեղի խիզախելով ընթանալ, և տոկոսեօք յոգնապատկօք լնուլ զպարտապանութեանն գլուխս։

Եւ զայսոսիկ խորհելով՝ միթէ չութափեա՞ց ինչ մանկաբար և կամ յափրացօ՞յց հեղգալով զյօժարութիւնն. և ոչ ինչ։ Այլ ի բազում տեղիս ուխտից և յանուանի արս առաքինիս դէմ եդեալ ընթանայր ճգնական կրօնից ժուժկալութեամբ, մինչեւ զամենայն իսկ բաւանդակել զայսր դաւանութեան առաքինի օրեարս, յարեւելս, ի հիւսիսի, յարեւմուտս և ի միջերկրեայս[2]։ Եւ զոմանց ի նո-

1. Մեր չատ ազգային նահատակաց համար կ՚ըսէ, որք Դունայ կողմեր նահատակեցան, մանաւանդ Թ դարուն կիսում, և ի սկիզբն Ժին ի Բուղայէ և Յուսփայ։ Տես 219, 220 Յօդուածները։

2. Արեւմուտք և Միջերկրեայք իմանալու է Փոքր Հայոց և Միջագետաց կամ Ասորւոց կողմերը. որոց մօտ է և Հռոմկլայն, այն ատենուան Հայոց կաթողիկոսարանն, ուր նստէր մեր Ս. Ներսէս Շնորհալին. և երբ իրեն հանդիպեցաւ Յովսէփ, քաջալերեց որ համառատուն մնայ իր հաւատոց վրայ. և եթէ նահատակուիս, ըսաւ, գքեզ ի թիւս սուրբ նահատակաց կարգեմ. և այնպէս դասուած է ի Յայսմաւուրս՝ յիշատակն։ Ինչո՞ւ Շնորհալւոյ յաջորդքն չպատուեցին որ տօնուի։

ցանէ զնորատակ առաքինութեան առնու իւր օժիտս ճանապարհի, և զայլոց՝ բանից խրատականաց քաջալերս. գայ հասանէ ի մայրն մրցանաց ի սուրբն Երուսաղէմ, յորում Տէրն զքաջութեանն յաղթաբեաց ասպարէզ. որ և հանդիսարանն իսկ է առաքելոց և մարգարէից և դուռն վերնոյ մայրաքաղաքին. և անդ զերկեամ մի թովանդակեալ՝ ի տեղիսն շրջելով փրկագործ տնօրէնութեան մերոյ կենարարին, այնպիսի կրօնիւք սակաւապիտութեան և ժուժկալութեան յօրանայր, իբր ի փափկութեան գրգարանի և յանկարօտ կեանս դրախտին Աստուծոյ. վասն զի ոչինչ յերկրաւորացս հանգունակից աստուածայնոյ ուրախութեանն։ Եւ վասն զի ոչ զայն բաւական ի կատարած վարկանէր՝ առ ի բժշկութիւն այնր խղճի վիրաց՝ յորմէ խիթայրն և կասկածէր, յանկատարութեան միոյ ուխտի խոստովանութեանն. և յաղօթելն իւրում՝ զի ի չարչարակցութենէ հասարակացն Փրկչի մի վերջասցի, ծանեաւ թէ ի նմին գաւառի յորում զառաջինն սկսաւ խրախուսել՝ և վերջինն դիցի հանդիսարան[1]։ Վասն որոյ և ելս ի սրտի ընդ հոգեղէն բանիցն եդեալ՝ ի տեղի ուխտադրութեանն ժամանել. և նոյն հետայն գործ զխորհուրդն արարեալ, գայ և հասանէ առ սահմանօքն Հեր և Զարաւանդ[2] գաւառի. ի կողմանս Մեծն կոչեցեալ Հայոց՝ ի վկայարանս մեր առաքելոց և լուսաւորչաց, զի և զնոցայն եւս նման նախանձ յանձին բերիցէ՝ քաջալերս իւրոյ առարկութեանն, որով իբր ի պատրաստեալ խահից ա-

1. Գուշակեց՝ թէ ուր որ սկսաւ նախ քրիստոնէութեան փափագիլ՝ հոն այլ պիտի նահատակուի, որ է Գուրին։

2. Հիմակուան Խոյ, Սալամաստ և Ուրմի գաւառներն, ուր Քրիստոսի Առաքելոց մէկ երկուքն նահատակուած համարուին. ինչպէս. **Յուդա Յակովբեան և Սիմոն Կանանացի.** Բարթողիմէոսի նահատակութեան տեղն այլ հեռու չէ։ Տես Յօդ. 31, 36. և այլն։

մենապատկաց դիմեալ երթայր արքունական սեղանոյ[1]։

Ի մայրաքաղաքն Ոստանին՝ ուր իշխանն էր՝ Հասանէր. յորմէ ինչ ոչ զանգիտեալ կամ անխայութիւն անձին արարեալ. քանզի զտապ կրկնակի փորձութեանցն ջերմեռանդ սիրովն Քրիստոսի շիջուցանել փութացեալ էր։ Եւ եկեալ ի մայր քաղաքացն անօրէնութեան, մտանէր ի սնոտի և խաբեպատիր տուն աղօթանոցի նոցա, ուր ժողովք դպրաց դիւանուէր պատանեկաց՝ ի ձախակողմն աղօթողաց, զի այպանեսցէ զընդունայնաջան դեգերանսն, և յարեւելս կոյս զաղօթս իւր սուրբ նուիրէր Աստուծոյ. զի յայտնի հրապարակաւ լուսաւորեալ զանձն քարոզիցէ արդարութեանն արեգակամբ։ Զոր պղծալից տանն բնակչաց իմացեալ՝ ծանեան զարհամարհանս ձախողակի դենին իւրեանց. և զանալից զնա արարեալ՝ արտաքսեն ի խաւարաբնակ աղօթարանէն։ Իսկ նորա ի դուռն ապարանից ամիրապետին երթեալ՝ արձանանայր ի տեսիլ ելողաց և մտողաց, զի զհաւատոցն հաստատութիւն և զանդրդուելի համարձակութիւնն՝ հրապարակայայտ բազմութեանն արասցէ։ Իսկ նախածանօթիցն նորա ի մանկութենէ և տեղեակ նորայոցն եղելոց իրաց՝ տեսեալ զնա, ազդեն ի ներքս իշխանին. և նորա արտաքս զոմանս յղեալ՝ հարցանէր զհանգամանս գալստեանն։ Իսկ նորա ողոքականս պատասխանեալ, եթէ վասն սակին զոր արկեր յաղագս իմ ի վերայ գեղջէիցն՝ եկեալ աղերսեմ զի թողացուսցես, և զիս ազատ ի խղճէ արասցես. այլ և ինձ համարձակեսցես առանց զանգիտելոյ կալ յորում ճգնեցայ դաւանմանս[2]. վասն զի ոչ եկի ես դոյզն լոմայիւք ազատանալ վասն սա-

1. Իբրեւ թէ համեղ կերակրոց սեղանի կ'երթար։

2. Խնդրէ վկայն՝ որ իրեն համար գեղացւոց վրայ դրած տուրքը վերցընէ ոստիկանն, և զինքն ազատ թողու քրիստոնէութեանը մէջ։

կաւու ինչ դիւրութեան. քանզի գինք անձին իմոյ է արիւնն այն՝ որով տիեզերք յազատութիւն վերագրեցան. այլ ոչ եթէ ապականացու և անցաւոր նիւթով արծաթոյ ազատեցաք ի հայրենաւանդ ունայնութեանցն. զոր եթէ ոչ ախորժեսցես առնել, ես պատրաստեալ կամ ի վերայ այսր դաւանման և կրօնից՝ պատարագել Աստուծոյ, ըկանօք և մահու:

Իսկ նորա ըստ նախկի գազանաբարութեանն մռնչելով ի դուրս ելեալ ապարանիցն, սաստկապէս և յոլովակի գան հարկանել հրամայէր, մինչ թալանալ նմա ի սաստիկ հարուածոցն: Եւ բարձեալ զնա իբրեւ զմեռեալ անշունչ՝ ի տուն բանտին մուծանէին, պնդեալ զոտս նորա ի կոճեղս փայտեայ, և շղթայիւք երկաթեայ զձեռս և զպարանոցս սըրբոյն: Եւ այսպիսեօք անըմբերելի կտտանօք ի ներքս տանելով և արտաքս հանելով, որ ըստ օրէ անօղորմ գանիւք, և զմկանունսն պարանոցաւն ի խոնարհ կորացուցանելով պրկէին սաստկապէս: Եւ այնպիսի չարալլուկ հնարիւք զգլուխ երանելւոյն ընդ ստորոտ խարազն զգեստու նորա անցուցեալ, յետուստ կուսէ[1] մինչ ի քակտումն յօդից և խաղալեաց շրջանակի պարանոցին: Եւ յայնմանէ ի միւս շրջեալ հնարս տանջանաց՝ ծակէին զունչս սրբոյն որպէս ուղտու, և չրօշակ պարանաւ[2] ի ներքս անցուցեալ՝ քարշէին ընդ հրապարակն ամենայն՝ գանիւ ուժգնակի և ձաղանօք յօքնակի: Եւ այսօքիւք երկարաձգեալ երանելին, և այլ եւս հնարից պատրաստութեամբք՝ մինչեւ յաւուրս երից ամսոց բովանդակելոյ: Եւ ընդ այսոսիկ զդաժանագոյնսն ի միասին խառնեալ նիւթս, աղ և բորակ, քացախ

1. Գլուխը ծռելով իր մազեղէն հագուստին փէշէն կ'անցունեն բռնութեամբ, այնպէս որ վզին ետեւի ոսկորները կու խախտին:

2. Ինչպէս ուղտերու կ'ընեն, անոր քթէն օղակ անցուցած՝ չուանով քաշելով տանէին հրապարակին մէջ:

և մանանեխ, ընդ ունկունս նորա յորսայսեալ արկանէին, թերևս և այնու Տեառն իւրում և համգունակից նահատակացն հաւասարեսցի հանդիսից։ Զկնի որոյ քարոզ ամբարշտացն աղաղակէր, թէ, որ զհայրենին յուրաստ լինի կրօնս, զայսօսիկ կըրեսցէ անցս դժնեայս։

Արտաքս հանեալ յատենէն՝ մահու վճռաւ արիւնարբու Դելմաստանացն[1] մատնէր, որպէս զի զարհուրեալ հերքեսցի ի հաստատուն խորհրդոց։ Որոց արիւնախանձ զազանութեամբ ի վերայ յարձակեալ, զձեռանէ աստի անտի առեալ ի տեղի կատարմանն փութային։ Եւ նորա զոր միշտն առեալ էր ի բերան, և անդ զնոյն կրթէր բան. Վասն քո մեռանիմ, Քրիստոս Աստուած իմ, հանդիսադիր զօրագլուխ առաքինեաց. քանզի և դու վասն իմ զպատուականդ հեղեր զարիւն, ընդ հասարակն և զիս ազատել ի չար ծառայութենէ չարասիրին։ Իսկ դահճացն անողորմից՝ զանալից ի գնալն զնա արարեալ՝ քարամբք և փայտիւ և լուտական ձեռակոծմամբ. և նա ըստ առաջնոյ նախամարտին[2] անյիշութիւն ի քաւչապետէն հայցէր ամբարշտացն։ Բայց հարազատն իւր ըստ մարմնոյ՝[3] առ ոտն թաւալելով՝ զյանձնառութիւն աղերսէր նմա յայնմ նուագի, թերևս խափանեսցի այնր ժամու հատեալն վճիռ։ Առ որ խոժոռեալ իսկապէս հանդիսաւոր՝ սաստելով, Հեռի՛ յինէն երթիցես, և մի՛ խոչ ընդ ոտս ելանիցես բարւոյ առաջարկութեանս. քանզի տէրունականն սոսկալի է դատավճիռ ուրացողաց զնա ի մահկանացուաց ատենէ։ Իսկ զազանասիրտ դահճացն սուր ինչ հեռացուցեալ զնա յարքայօրէն բռնակալէն և յամկակոյտ

1. Պարսից Տիլում գաւառի մարդիկ։

2. Ս. Ստեփաննոսի Նախավկային նման կ՚աղօթէր իր չարչարողաց համար։

3. Իր հարազատ եղբայրն գալով կ՚աղաչէ, որ անգամ մի հաւանի ամիրային կամաց և ազատի։

վայրացն, առանց հարցափորձի կամ երկրորդելոյ մեծին հրամայողի՝ մի ոմն ի նոցանէ պատառէր ուսերաւ զորովայն նորա և հեղոյր յերկիր զփորոտի նորա, մինչեւ թաւալգլոր խաղալ նմա յարեան իւրում: Նմանապէս և այլքն շուրջանակի խոցոտէին սուսերաւ, և կէպ քարամբք զսուրբն կոչկոճէին. ընդ նմին և զգլուխն հատեալ՝ մորթէին յոսկերաց անտի զմորթն, և անդէն զնշխարս ոսկերացն թողուին բովանդակ իսկ անդամօք մարմնոյն: Եւ նորա ի ձեռս տուողին զմաքուրն աւանդեալ ոգի, ըստ գրեցելումն իմաստութեան. և եղբօրն արգահատողի դիպելով ի տեղւոջն՝ ի նմին վայրի յաւագին տեղւոջ թաղեալ զմարմին երանելւոյն, և խուսէր ի վայրացն:

Սակայն նուիրապետն[1] այնր անուշահոտ պատարագի՝ ոչ իրաւացի վարկաւ սակաւուց եւեթ տեղեկանալ մարտի նորա, և զանխուլ ի բազմութենէն լինել նշանաւոր աշխարի հօտի իւրոյ. այնր աղագաւ որոտման արհաւրօք և սաստկագին շարժմամբ զարհուրեցուցանէր զբոլոր բանակն ի նմին գիշերի: Եւ երեւէր յանկարծօրէն բանալ հաստատութեան վերնոյ, լուսոյ յղփագունի[2] և պանծալւոյ՝ զօրէն կամարաձեւ ծիածանի՝ կացեալ ժամս հարուստս ի վերայ տեղւոյ նահատակութեան սրբոյ պատանւոյն:

Ի վաղնջուց երաշտացեալ երկիրն Այրարատոյ՝ ի ցօղոյ արեան նախագունիցն մարտիրոսաց՝ իւրով անսպառահոս ցօղաւորեալ արեամբ՝ զովացուցանէր վերստին. յորմէ և ինքն ընձիւղեցաւ ուղէշ[3] պտղաշատ, կարմրագունի նմանեալ խնծորոյ՝ ըստ վկա-

1. Քրիստոս, այս զոհը կամ պատարագը ընդունողն:

2. Շատ առատ լոյս ծագեր է նահատակին վրայ:

3. Այս նոր վկայն այլ Այրարատայ երկրէն բուսաւ, և իր արեամբ նորէն ցօղեց զայն՝ որ ցամքեր էր իր հին մարտիրոսաց արիւնէն:

յական արեանն ներկուածոյ. Թէպէտ և ի փուշս բուսեալ անտառախիտ ամբարշտացն արմատոց, ոչ ինչ նուազ գովեստի արժանաւորի քաջաբերութիւն անդաստանին Այրարատոյ։ Քանզի յոլով ծանեաք յայսպիսեաց սերմացանութեանց փոփոխեալս յորակութեանցն բնաւորելոց՝ յայլս, յայսմիկ վիճակի, ի փշոց խաղող և ի տատասկէ թուզ. Թէպէտ և յանդգնութիւն է ընդդիմաբանել տէրունեանն հրամանի[1], այլ զի վասն ընդդիմացող կամակորացն կայն հրամայէ՝ անսուտ իսկ է վճիռն։

---

## ՄՂԱ

### ՀԱՂԲԱՏԱՑ ՎԱՆՔ· ԲԱՐՍԵՂ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ԱՌԱՋՆՈՐԴ ՏԵՂԻՈՅՆ ԵՒ ԲՈԼՈՐ ՎՐԱՀԱՅՈՑ[2] ԵՒ ԱՅԼ ԳԻՏՆԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏՔ Ի ՎԵՐՋՍ ԺԲ ԴԱՐՈՒ

Որ զթերութիւն եկեղեցւոյ միշտ լրացուցանէ Հոգին Սուրբ՝ իւրով ամենապատիկ շնորհօքն, նմա փառք ընդ Հօր և ընդ Որդւոյ միակամութեանն, այժմ և միշտ և յաւիտեանս։

Յոյժ ըղձիւ և յաւէտ տարփմամբ անձկոյ՝ ի վաղուց ժամանակաց տօշորեալ՝ այսմ աստուածահրաշ վարդապետութեան սիրով Սրբոյն Բարսղի, սուրբ ուխտս Հաղբատայ, քանզի թէ յանփոյթ առնելոյ առաջնոցն և թէ ի չպատահելոյ ժամու

1. Քրիստոս ըսաւ, թէ փուշէն խաղող կամ թուզ չի քաղուիր, սակայն այս տեղ կ'ըսէ պատմիչն, յանդըգնօրէն կերպով մի կըրնամ ըսել՝ թէ հակառակն եղաւ, փուշն պտուղ բերաւ. վասն զի Քրիստոսի ըսածըն՝ յամառելով չուզողներուն համար էր։

2. Այդ վանաց մէջ գրուած և ի գրատան դըրուած Մեծին Ս. Բարսղի ճառից Յիշատակարանն է։

դիպաւորի, ոչ գրեալ և ոչ ստացեալ ումեք զայս գիրս, և ամենափարթամ գանձարանս այսմ ուխտի՝ ոչ ունէր զսա[1]. որոյ Թերութիւն զիւրն խնդրէր լրումն, որ պահիւր համանուանս իւրոյ Տեառն Բարսղի արքեպիսկոպոսի աստուածարեալ այսմ սրբարանի. որ ըստ կանխանկատ գիտութեան վերնոյ դիտմանն՝ եկեալ ի գաւառէն Խաչենոյ, եղեւ ըստ յաջորդելոյ Հոգւոյն Աստուծոյ՝ վերատեսուչ համայն քրիստոնէից Հայոց, որ ընդ գաւազանաւ Թագաւորութեանս Վրաց, յաջորդեալ զաթոռ Տեառն Գէորգայ՝ ամենայնիւ առաւելեալ քան զառաջինսն ի փոյթ շինութեան սրբոյ ուխտիս: Քանզի Թէպէտ և էր ի հարց և ի հաւուց ազատ յազատաց և մեծազգի ի մեծազգեաց և փառաւոր ի փառաւորաց, եւս առաւել գոյր արժանաւոր մեծի գովութեան՝ վասն հոգւոյ անարատութեան և վարուց մաքրութեան. որով և կոչեցաւ իսկ յայս յաթոռ, ըստ վկայելոյ Թագաւորիս և համայն ազատաց այլ և ճգնաւորական դասու կրօնաւորաց, և յամենեցունց եղեւ պատուեալ ըստ արժանւոյ: Եւս առաւել ի մեծ Ամիր սպասալարէն յիշխանէ և ի զուգակցէ նորին ի բարեսէր Թագուհւոյն Ռուսուդանայ, որ էր յազգէ Բագրատունեացն մերոց կորուսեալ ազգիս Թագաւորաց, որ ցուցանէր զգութ հարց իւրոց և նորոգէր զիւրոյ նախնեացն սէր առ ամենեսին. առ հեզաւոր և մերձաւոր ուխտս սուրբըս: Քանզի ամենայն տեղի որ ի նախնեացն սորա շինեալ էին և նուազեալ յետոյ, ի սորա աւուրս պայծառանային և նորոգէին վերստին. եթէ ի մերում գաւառիս և եթէ ի գաւառն Անւոյ սեփական քաղաքին իւրեանց, և ի նոյն իսկ յԱնի, և եթէ ի գաւառն Դրշնայ: Քանզի յամենայն տեղի իշխա-

1. Շատ վկայութիւններ կան Հաղբատայ վանաց հարըստութեան ձեռագրաց. յորոց ոչ սակաւք գտուին հիմայ յէջմիածին և ուրիշ կողմեր. այս Ս. Բարսղի ճառերն այլ ի մեր քով:

նութիւն և երկիւղն մեծի սպասալարին Իւանէի՝ առն սորա[1] հասանէր. և սա ջանայր զի զիւր նախնեացն չինեալ եկեղեցիսն պայծառացուսցէ։ Որ և կամեցաւ զգերեզմանս առաջնոց Թագաւորացն՝ որ ի սուրբ ուխտիս, առաւել պատուել և պայծառացուցանել. վասն որոյ եդ զսուրբ ուխտս ի ձեռս Տեառնս Բարսղի. և նա ելից ընդ այլ Թերութեանցն բազմաց՝ և զայսմ գրոց պակասութիւն և հաստատեաց ի սուրբ տեղւոջս, զի մի՛ ոք իշխեսցէ հեռացուցանել ի սուրբ ուխտէս՝ Թշնամութեամբ կամ ագահութեամբ. ապա Թէ ոք յանդըգնեսցի՝ տարագրեսցի ինքն յորդեգրութենէն Աստուծոյ՝ զօրութեամբ սրբոյ Նշանիս[2]. իսկ Թէ ըստ ժամանակի բերմանց գողանայցէ յումեքէ կամ ի ձեռաց աւարառուաց գերեսցի, և ոք զսա դարձուսցէ ի տեղի իւր, Նորոգեսցէ Աստուած զյիշատակ Նորա և գրեսցէ զանուն Նորա ի կենաց դպրութեանն։

Գրեցաւ գիրքս ի Թուականիս Հայոց Նորումս[3] ՁԹ (89–1172), իսկ Հռոմոց ՅՂԳ (393), ի հայրապետութեան Տեառն Ներսիսի Հայոց Կաթողիկոսի[4], և ի Թագաւորութեանն Վրաց և այլ բազում ազգաց՝ Գէորգեայ՝ որդւոյ Դեմետրէի։

Գրեցաւ ձեռամբ Սարգսի, Նուաստ գրչի և ախմարի և յետին աշակերտի եկեղեցւոյ սրբոյ ուխտիս։ Ցորոց ամենեցունց հայցեմ չլինել մեղադիր տգիտութեան իմոյ, և յիշատակի Թերեւս արժանի համարել զիս. և հասարակաց Փրկիչն Քրիստոս յիշողացդ և զկնի յապագայ յիշելոցս՝ ողորմեսցի յիւրում միւսանգամ գալստեանն. ամէն։ Կազմե-

1. Ռուսուդանայ այրիկն Իւանէ սպասալար՝ Թուի ծանօթագոյն Իւանէ Աթաբէկի հօրեղբայր։

2. Մեծ եկեղեցին Հաղբատայ կոչուի Ս. Նշան։

3. Շատ անգամ յիշուած Սարկաւագայ Նոր Թուականն է։ Հռոմոց կամ Հռովմայեցւոց Թուականն այլ Հինգհարիւրեկի (532 տարիներու) շրջանովն է։

4. Վերջընթեր տարի կենաց Ներսիսի Շնորհալւոյ։

ցաւ ձեռամբ Յովսեփայ վարդապետի և եդաւ յարկեղ Սրբոյ Նշանիս, զոր կարապետ և կազմիչս ամենի[1] Նորոգեսցէ յիւրում գալստեանն՝ ընդ համապատուակցաց[2] իւրոց. ամէն։

---

## Այլ Յիշատակարան

Ի թուականութեանս Հայոց ՈԽԴես (վեց հարիւր քառասուն և չորից, 1195), յանկ ելեալ կատարեցաւ աստուածարուխ իմաստութիւն սրբոյ Հօրն Եփրեմի, մեկնութիւն Աւետարանի Համաբարբառ[3]. եւս և Ճառք հոգեպատումք, զոր չարակարգեալ ի չահ օգտութեան մանգանց եկեղեցոյ։ Ընդ որս հայեցեալ ի բազմաբեր բարեացն ամբարեալ ի սմա պտուղս, և որպէս աւանդ հայրենի յաղագս որդոց յառաջապահեստ արարեալ, գանձեալ և եդեալ սուրբ և արդիւնակատար վարդապետ ոմն՝ Անանիա, ժառանգողաց տանս Հաղբատայ, և ի լուսաւորութիւն հանուրց աշխարհի[4]։

Արդ, ես Խաչատուր այր ոմն անտոհմիկ թափառական և աղքատ, սուտ անուն աբեղայ, դիմեալ ի հրահանգս վարժից առ ոտս իմաստուն և սրբասնեալ վարդապետաց, գտեալ ապա իմ զայս աստուածատուր գանձարանս՝ առ մեծարգի և իմաստուն վար-

1. Քրիստոս և իր Սուրբ Խաչն։

2. Յիշեալ Յովսէփ վարդապետի պատուակիցքն։

3. Որոյ օրինակութեան Յիշատակարանն է Յօդուածս։

4. Սովորաբար Սանահնեցի կոչուի սա, ԺԱ դարու հեղինակ. կրօնական խնդրոց վրայ գրուածներ ունի աջ ու ձախ համօզմամբ։ Ինքն՝ Ս. Եփրեմի Աւետարանաց համեմատութեան գործոյն օրինակ մի ճարեր է Հաղբատայ վանաց գրանոցին, ուսկից ընդօրինակեր է Խաչատուր. այս օրինակս հիմայ մեր քով է։

դապետի իմոյ Դւարքի[1], և խնդրեալ շարագրեցի[2] անարուեստ և անվարժ գրով. զի ոչ փափագանացս ստիպեալ հարկեցոյց զիս, և կարի առաւել յորդորեաց. մանաւանդ համբաւ իմաստիցն Եփրեմի, որ ոչ միայն ինձ այլ և ամենեցուն է ցանկալի առաջնոյն և վերջնոց և որ այժմս են: Իսկ եթէ կորովութեամբ և ...[3] ութեամբ մտաց և ծաղկոց բուրաստան... չնչմամբ Հոգւոյն որպէս անօսր և քաղցր... օդով հովահարեալ զովանան և պար- (արին քիմք) նոցա. և որ ծանծաղութեամբ և վերվեր (թեթեւա)մտութեամբ մտանէ՝ սնամահակ ելանէ[4]... ոչ այլ ուրեք այլ ինքեան զինքն:

Բայց (գրեցաւ) գիրքս այս ի գաւառս Ջորոյգետ, ի վանքս Հաղբատ, ընդ հովանեաւ սուրբ և կեն(դանարար) մսրս լուսոյ կաթուղիկէի և ամենայն որ ի նմա սուրբք իցեն. յեպիսկոպոսութեան տեառն Յովհաննիսի, և ի մահուան Տեառն Գրիգորի Հայոց կաթողիկոսի[5], ի վարդապետութեանն Դւարքի, Պետրոսի, Իգնատիոսի. և զկնի մահուան Վարդանայ վարդապետի[6]. յորում ամի գերեալ ի Վրաց գաւառն Կարնոյ և վանօրայն յաւերումն յառ և ի գերութիւն մատնեցան: Յայսմ ժամանակի ես խաչատուրս տկարացեալ և խելայեղեալ՝[7] գրեցի զգիրս զայս խոշոր և անյարմար յանպիտան

1. Այդ ժամանակ, ԺԲ դարու կիսուն, նշանաւոր Դւարիք գիտնականք էին Բորայրեցին և Գանձակեցի. ուրիշ մի թուի այս տեղ յիշուածն:

2. Գրեցի, օրինակեցի ըսել կ'ուզէ:

3. Կիտանիշ տեղուանքն մաշած են ձեռագրին մէջ:

4. Անօգուտ աշխատանօք տանջուած կամ սովամահ:

5. Գրիգոր Դ, Տղայն:

6. Կիրակոս պատմիչն այլ (Գլ. Ի) մէկ տեղ յիշէ այն ժամանակի երեւելի վարդապետաց մէջ՝ զԻգնատիոս, Վարդան և Դաւիթ և Գոնեցի Գրիգոր մի:

7. Թուի թէ Կարնոյ վանքերէն էր Խաչատուր և տագնապով եկած ի Հաղբատ:

նութի[1]. և արդ յերեսս անկեալ աղաչեմ չլինել մեղադիր, այլ յիշել սրտի մտօք և ցաւակցաբար զիս և զվարդապետն իմ Դաւիթ՝ որ զօրինակս շնորհեաց, և զծնողս իմ և զեղբարս. և որ յիշէ յիշեսցի ի Քրիստոս, հանդերձ Հարբ և Սուրբ Հոգովն, որում փառք յաւիտեանս։

Ով եղբայր՝ որ կարդաս, գիտեմ որ մեղադրես, բայց աւատաս ու տեսանես որ... այս (չափս) կարացի, թէ դու լաւ ես՝ նիստ և այլ (գրեա). բայց վասն քո հոգոյդ ինձ մի՛ մեղադրես։

... Աւարտեցան ճառք աւետարանականք խորհըրդաւորք Ասրա Եփրեմի, ի փառս Ամենասուրբ Երրորդութեանն, յաւիտեան. ամէն։ Ջարդխնակատար սուրբ և ամեներջանիկ վարդապետն Վարդանն, զաստուածասէր հոգին[2], ի մանգութենէ մինչեւ յաւագոյթ ի Քրիստոս միացեալ, զՀոգոյ Սրբոյ բնակարանն, զլցեալն ամենայն տեսակօք բարութեանց, զզարդարեալն ամենայն առաքինութեամբ, զապաւէնն տնանկաց, զվերակացուն օտարաց, ըզսիրողն աղքատաց, զբժիշկն հոգոց, զհայրն որբոց, զպարծանսն քրիստոնէից, զլուսաւորիչ եկեղեցոյ, զհովիւն բանաւոր ոչխարաց, զհոգին օրհնեալ, զարժանին Աստուծոյ, զգերազանցեալ քան զգովութիւն, զփոխեալն ի կենաց և զհանգուցեալն ի Քրիստոս. և զԳրիգոր վարդապետ՝ նորին հարազատ և զխաչատուր որբացեալ աշակերտ՝ յիշեսջիք յաղօթս, ով ընթերցողք, սուրբ մանկունք նոր Սիոնի և որդիք վերինն Երուսաղէմի, և ուսումնականք և աշակերտեալք բանին Աստուծոյ։

1. Թղթեայ է գիրքն, հիմայ 700 և աւելի տարի հնութեամբ։

2. Փափագելի էր որ մականունն այլ գրած ըլլար, որ այնքան Վարդանաց մէջ այս մեծապէս գովուածն որոշուէր. մօտ ժամանակին յիշուի գիտնական Վարդան մի, որ գնացեր էր առ Ս. Ներսէս Շնորհալի, և

# ՄՂԲ

## ԿԱԹՈՂԻԿՈՍՔ ԵՒ ԴԷՊՔ ԱՂՈՒԱՆԻՑ ԱՇԽԱՐՀԻՆ Ի ՄԷՋ ԺԲ ԴԱՐՈՒ

(ՄԽԻԹԱՐ ԳՈՇ)

*Համարեցաք և զայս եւս հարկաւոր լինել[1], զի զշար կարգի հայրապետացն դիցուք զԱղուանից. զի և յայնոսիկ յամենեսեանն՝ զոսա որ այժմ ունին՝ յարմարեսցուք. մի, ըստ այդմ գրեսցուք պատճառի. երկրորդ, զի թէ ոք յօժարեսցի գրել պատմութիւն զկնի գրեցելումն պատմութեանն Մովսէսի Դասխուրանեցւոյն՝[2] որ զբովանդակ պատմէ զտանն Աղուանից, դիւրին լիցի յայսմանէ զշար հայրապետացն առնուլ. զի ոչ զամենեցուն անունն ի նորայն գտցէ պատմութեան, բայց զայնոցիկ զորոց գրեաց. զի յայն ժամանակէ մինչեւ ցայժմ՝ ոչ ոք գրեաց. և թէ պատահի ոք՝ յոյժ հարկաւոր է։ Եւ արդ դիցուք զկարգն.*

*Շարք հայրապետացն Աղուանից որք կացին զկնի Տեառն Եղիշայի որ եկն յԵրուսաղեմէ[3]։*

Ա. Սուրբն Շուփխաղիշոյ[4].
Բ. Մատթէ.

Ս. Գրիգորի Նիւսացւոյ գրոց վրայօք տեղեկութիւն առեր էր իրմէ:

1. Հեղինակն իր Դատաստանագրոց վերջաբան յիշատակարանին կցած է այս գրուածս. տես 297 Յօդուածը:

2. Տես ի կարգի Պատմչաց Հայոց զՄովսէս Կաղանկատուացի։

3. Տես զծանօթութիւն 47 երեսի գրոցս։

4. Սովորաբար Հ գրով գրուի, Շուփհաղիշոյ. անունն յայտնէ որ ազգաւ արամացի կամ ասորի էր։

Գ. Սահակ.
Դ. Կարէն.
Ե. Պանտ.
Զ. Ղազար. սա շինեաց զՂազարապատ գտեալ ի Բեղամէջս, և զոր եկեղեցին Պանտալէոնին[1], և շինէ ահաւոր տեսլեամբ։ Եւ ի Սրբոյն Եղիշայէ մինչև ցՍուրբն Գրիգոր ամք Յ (300)։ և ապա խնդրեցին Աղուանք ի Հայոց՝ կաթողիկոս զՍուրբն Գրիգորիս՝ ի հնգետասան ամի ձեռնադրեալ ի հայրապետութիւն, և ի բարբարոսաց վախճան մահու ընկալաւ. հուռոմ թվ. ճԱ (101) էր[2]։ Եւ այսոքիկ են որք ի Ձոլ[3] հայրապետք նստան.
Զաքարեա.
Դաւիթ.
Սուրբն Յոհան.
Երեմեայ.
Իսկ յամի յորում Հայ թուականն սկիզբն առնոյր՝ փոխեցին զաթոռ կաթողիկոսութեանն ի Պարտաւ[4], և նստուցին կաթողիկոս զՏէր Աբաս, որ կալաւ ամս ԻԳ։ Եւ նախնեացն այսպիսի իմն սովորութիւն էր, զօրինակ պատրիաակի[5] թղթոյն յաջորդէին այսպէս. Աղուանից, Լփնայ և Ձողայ կաթողիկոսէ։

1. Շարադրութիւնն շփոթ է. Աղուանից պատմիչն (Գ, ԺԴ) Ս. Գրիգորիսի համար կ'ըսէ, թէ, Ս. Պանտալէոնի (Բժշկին Նահատակելոյ ի Նիկոմիդիա) նշխարքը բերեր և դրեր էր ի Ցռի բերդաքաղաք, ուր հրաշքով գտուեցան ի վերջ Ե դարու (Նոյն, Գլ. ԺԹ)։
2. Հռովմայ շինութեան հազար տարիէն վերջ սկսեալ Նոր թուական, որոյ 101ն տարին կ'ըլլայ 351 Քրիստոսին։
3. Ձոլ կամ Ճոր՝ Դարբանդայ կամ Հոնաց դրան մօտ քաղաք մ'էր։
4. Շատ անգամ յիշուած մայրաքաղաք Աղուանից, մինչև հիմայ ծանօթ է Պէրտաէ գեղի անուամբ, որոյ քով են հին քաղքին աւերակներն։
5. Նամակաց երեսագիրն, հասցէն։

Տէր Վիրոյ ամս ԼԴ, այր սուրբ և պայծառա-ցեալ առաքինութեամբ. հայ թվ. ՀԵ (75-626)։

Տէր Զաքարեա այր սուրբ և ամբիծ, ամս ԺԷ.

Տէր Յոհան ամս ԻԵ.

Տէր Ուխտանէս, ամս ԲԺ.

Տէր Եղիազար ամս Զ. սա յԱստուծոյ ընտրե-ցաւ ի Նախագահութիւն. Հայ թուականն ՃԼԷ. (137=688) էր[1]։

Տէր Ներսէս ամս ԺԵ. և էր նա հեռեւեալ.. Քաղկեդոնի։

Տէր Սիմէոն ամ մի և կէս.

Տէր Միքայէլ ամս ԼԵ. հայ թուականն ՃՂ. (190=741).

Տէր Անաստաս ամս Դ.

Տէր Յուսէփ ամս ԺԵ.

Տէր Դաւիթ ամս Դ.

Միւս Տէր Դաւիթ ամս Թ. հայ թվ. ՄԻԵ.

Տէր Մատթէ ամ մի և կէս.

Տէր Մովսէս ամ մի և կէս.

Տէր Ահարոն ամս Բ.

Տէր Սողոմոն կէս ամ.

Տէր Թէոդորոս ամս Դ. հայ թ. ՄԼԴ (234=785)։

Տէր Սողոմոն ամս ԺԱ.

Տէր Յովհաննէս ամս ԻԵ.

Տէր Մովսէս կէս ամ.

Տէր Դաւիթ ամս ԻԸ.

Տէր Յովսէփ ամս ԻԲ. հայ թվ. ՅԻԷ (327=878)։

Տէր Սամուէլ ամս ԺԲ.

Տէր Յոհան ամս Ը.

Տէր Սիմէոն ամս ԻԱ.

Տէր Դաւիթ ամս ԼԵ. թու. ՅՀԸ (378=929)։

Տէր Սահակ ամս ԻԵ.

1. Կաթողիկոսաց աթոռակալութեան տարիներու գումարին և Հայ թուականին զուգութեան՝ կըրնան տարբերութիւնք գտուիլ։ Յատուկ անուանց ուղիղ կամ ծուռն այլ ըստ հեղինակին գրածին է։

Տէր Գագիկ ամս Ժ.

Տէր Դաւիթ ամս Զ.

Տէր Պետրոս ամս ԺԲ։ Սորա ի կենդանութեանն հրաժարեալ յաթոռոյն՝ յաջորդէ յաթոռ իւր զՏէր Մովսէս, վանական փառխուսոյ[1]։ Իսկ զկնի Մովսիսի կալաւ զաթոռ հայրապետութեան այրն Աստուծոյ Տէր Մարկոս. և յետ նորա Տէր Յովսէփ. և ապա միւս Տէր Մարկոս. և զկնի նորա Տէր Ստեփաննոս. և ապա Տէր Յովհաննէս. և ապա Տէր Ստեփաննոս կոչեցաւ ի կաթողիկոսութիւն ի տիս պատանեկութեան, որ և կալաւ զաշտիճան հայրապետութեան ամ մի և կէս։ Ապա յետ վախճանելոյ նորա՝ զամս ութ առանց հայրապետի եկաց Նահանգս Աղուանից, յորում և ոչ գոյր ի նմա եպիսկոպոս. մինչ զի զնուիրեալսն ի քահանայութիւն՝ յայլ գաւառ տանէին առ ձեռնադրութիւն. և այնքան սպառեցաւ իւղն օծութեան՝ մինչ զի լուկով ջրով մկրտէին զերեխայսն, և զոմանս սոսկ ձիթով օծանէին։ Իսկ յետ անցանելոյ ութ ամացն՝ ի ՇՁԸ (588=1139) թուակ. Հայոց (եկն) ի Հայոց Սահակ աստուածընկալ եպիսկոպոս ի դրանէ սրբազան հայրապետին Տեառն Գրիգորիսի[2] Հայոց կաթողիկոսի. որ ըստ հրամանի նորին և առաքմանն՝ եկեալ ի գաւառս Աղուանից, ի խնդրոյ և ի ձեռնարկութենէ Գրիգորոյ վարդապետի աշխարհիս մերոյ, որ էր աշակերտ Դաւթի փառաւոր և մեծահռչակ վարդապետի։ Արդ ի գալ Տէր Սահակայ յաշխարհս Աղուանից, ժողովէր զամենեսեան առ հասարակ ի տուն Թագաւորին Աքսասայ Բագրատունւոյ, որդւոյ Կիւրիկէի (Բ)[3] արքայի. որ

1. Նշանաւոր վանք Ուտի նահանգի Գարդման գաւառի մէջ, Սեւանայ ծովուն արեւելեան հիւսիսակողմն։

2. Եղբայրն և նախորդ Ս. Ներսէսի Շնորհալւոյ։

3. Հայոց և Աղուանից սահմանակցութեան միջոց ամուր բերդերու մէջ ապահովուած տիրէին այս փո-

և ժողովեալ ամենեցուն առաջի նորա ի բերդն որ կոչի Տաշոշ[1], ուր և ժողովեալ հարանց սրբոց և եպիսկոպոսաց. Թագաւորն Գուշիք եղբայր Աբասայ Թագաւորի. Տէր Ստեփաննոս որդի Կիւրիկէի՝ նոցունց եղբայր. Սարգիս վարդապետ աշակերտ Դաւթի վարդապետի. Գրիգոր արքեպիսկոպոս Գանձակայ. Սահակ եպիսկոպոս աշակերտ Սարգսի վարդապետի. Ստեփաննոս եպիսկոպոս Կողբ[2] գաւառին և քաղաքին Շամքորոյ[3]. Սարգիս եպիսկոպոս Շամիրամաձորոյ. Սամուէլ եպիսկոպոս Կաբրոյ. Հայր Սարգիս խամշի վանից. իսկ գլուխ ժողովոյն էր Տէր Սահակ դրան եպիսկոպոս Հայոց կաթողիկոսի, և Սարգիս ճգնազգեաց և երանելի վարդապետ։ Եւ այսպէս մեծաւ հանդիսիւ և հռչակաւոր կոչմամբ ձեռնադրեցին կաթողիկոս Աղուանից զԳրիգորիս հօրեղբօրորդի Տեառն Ստեփան-

քրիկ Թագաւորք, և իրենց պայազատքն ԺԱ–ԺԳ դարերում. Կիւրիկէն Աշոտ Ողորմածի Թոռան որդի է։ Յօդուածիս վերջը, յերես 392, դրուած ազգացուցակն (ոչ ամբողջ) յայտնէ այս Թագաւորաց նախորդ և յաջորդ սերունդքն՝ ինչուան տասն ազգ՝ յԱշոտոյ Ողորմածէ սկսեալ. որոնք որ Թուականին որ յիշուած են՝ դայն ցուցընեն նշանակուած Թիւքն։

1. Ինչուան հիմայ ծանօթ է Թառուս կամ Թովուզ կոչմամբ գեղ և գետ։

2. Հին Արցախ նահանգի գաւառ մի։

3. Երբեմն մեծ քաղաք, հիմայ աւերակ. շատ հռչակեալ էր Սիւն Շամքորոյ կոչուած զարմանալի աշտարակ մի, բարձր իբր 200 ոտք, կարմիր աղիւսով և կանաչ յախճապակօք շինուած, մի մասն ութանկիւնի, միւսն բոլորակ, շինողն անյայտ, զոր ոմանք ինչուան Մեծն Աղեքսանդր և Պոմպէոս համարած են, ոմանք զՀայս կամ զՊարսիկս. վրան տասն գրերը տեսնելով Ջալալեանն՝ Գէորգայ Վրաց Թագաւորի և Լիպարտի անունները կարդացեր է։ Այս հետաքննութիւնս ևս բաղացի տեսողք այլ չէին լուծած, երբ Արարատայ մեծ ժաժն 1840ին՝ այս դարաւոր կանգուն անծանօթից յիշատակը՝ գետնի հաւասար կործանեց։

նոսի Աղուանից կաթողիկոսի։ Եւ էր Գրիգորիս
յորժամ ձեռնադրեցաւն և նա ի տիս պատանեկու-
թեան, գոլով որդի Գէորգայ և եղբօրորդի Կարձկայ
թոռն Կարապետի։ Իսկ որ ժողովելոցն ի միասին
էր տօն պենտակոստէին և Գալուստ Հոգւոյն Սըր-
բոյ, յամսեանն տրէ։

Եւ ապա յետ այսորիկ չուեցին ժողովեալքն յիւ-
րաքանչիւր տեղի իւր. ապա դարձեալ ի տօնի
Վարդավառին ժողովեալ ամենեցուն ի միասին ի
բերդն՝ որ ասի Կաթողիկոսի-քար, նոյնք վերասա-
ցեալ եպիսկոպոսունք և վարդապետք և հարք սուրբք
և այլ վարդապետք քան զառաջինն յոլովագոյն և
քահանայք. յորում աւուր և ձեռնադրեցին երկու
եւս այլ եպիսկոպոս և օրհնեցին զեւղն օծութեան
յոլովագոյն, բազում և առատ ընձեռմամբ բաշխե-
ցին ընդ ամենայն տեղիս. և այսպէս խրախութիւն
հոգեւորական կատարէին մինչեւ ցաւուրս Սրբոյ
Խաչին, զուարճացեալք ի միասին ի փառս Աս-
տուծոյ[1]...։

Իսկ չահապ քաղաքին Գանձակայ՝ որ կարգեալ
էր ծառայ մի նորա անուն Խոռճտոռղտի, սորա
ապստամբեալ ի սուլտանէն՝ յանդգնէր և ձեռնար-
կէր համարձակութեամբ արտաքոյ իշխանութեան
սահմանաց իւրոց. և ապա ելեալ զօրօք բազմօք
ի Գանձակայ՝ եկն ի լեռնակողմ՝ Հաղաճերայ, և
հասեալ ի բերդն որ կոչի Կաթողիկոսի քար, և որ
մերձն է առ նմին՝ որ անուանի Կարապետանց քար.
և ի բազում աւուրս պաշարեալ զերկոսին և ջա-
նիւ մեծաւ առեալ՝ աւերեաց զերկոսին քակմամբ
և հրկիզութեամբ. և եկեղեցիք սրբութեան կոխան
եղեն անօրինացն, մինչ զի իսպառ ջնջել և աւերել
Կաթողիկոսի-քարին ի ՇՂԱ (1142) թվակ. Հա-
յոց. և ապա այսպէս վարելով ապստամբութեամբ
աւուրս ինչ։ Իսկ զկնի այնորիկ եկն դարձեալ ի

1. Ասկէ վերջը մինչեւ միւս... պատմէ զժամն
Գանձակայ, զոր տես ի Յօդուածն 282։

Պարսից զօրագլուխ մի անուն Չաւլի, որ ունէր զիշխանութիւն զօրօք ի դուռն Գանձակայ, յորում և ապստամբեալ էր Խուհտուղտի. և պաշարեալ զքաղաքն ամիս մի՝ առնոյր զնա. և կալեալ զԽուհտուղտի՝ փորեաց զաչս նորա. և յինքն նուաճեաց զամենեսին, ի ՇՂԲ թուականին (1142-3)։

Ի սմին ամի մեռաւ Տէր Ստեփաննոս եպիսկոպոս որդի Կիւրիկէի թագաւորի՝ ի բերդին որ կոչի Խաչենաքար։ Իսկ Չաւլեայ ամբարտաւանեալ յանձն իւր՝ դիմեաց ի կողմանս Խաչենոյ և էառ զամենայն ամրոցս նոցա, քակեաց զեկեղեցիսն և այրեաց զվանորեայսն, կոտորեաց զազատսն և գերեաց զզօրականսն, և պէսպէս խստառ մաշեաց զամենեսեան առ հասարակ ի սուր և ի գերութիւն. և ապա ինքն դարձեալ երթայր յաշխարհն Պարսից։ Ապա ի միւսում ամին դարձեալ գայր ի գաւառս Առանայ, և փութանակի երթայր ի բերդն Տաւուշ, յորում ամրացեալ էր թագաւորն Աբաս. և բազում ջանիւ ընդերկար պաշարեալ զնա՝ ապա առնոյր զբերդն. իսկ Աբաս անցեալ գնաց առ թագաւորն Վրաց, ի ՇՂԴ թուականին (1145-6)։ Ի նմին ամի փոխի առ Քրիստոս թագաւորն Դաւիթ որդի Կիւրիկէի ի յամրոցին որ կոչի Մածնաբերդ[1]. և թագաւորեաց Կիւրիկէ որդի նորա ընդ նորա։

Իսկ Չաւլի գնաց ի կողմ Խաչենոյ, Տանձեաց և Աղախայ, կրկին անգամ. քանզի յառաջնում նուագին ոչ մնացին ընդ ձեռամբ նորա դղեակք այնոքիկ զորս էառն, այլ սակաւ ինչ մնացեալքն՝ յազատաց անտի որք էին զօղեալք յանտառս մայրեաց, առին դարձեալ զբերդամրոցսն իւրեանց, և դարձեալ ապստամբութեամբ վարէին ընդ Տաճկացն։ Վասն այսր պատճառանաց սրտմտեալ Չաւլեայ՝

1. Գանձակայ մօտ որածայր բլրի մի վրայ. ռամկ. օրէն Մոզգնաբերդ կոչուի։ Վերը յիշեցինք, որ այս տեղ թագաւորող Դաւիթն եղբայր էր Աբասայ թագաւորին Տաւուշի։

դիմէ առ ի վրէժխնդրութիւն ի վերայ նոցա. իսկ զամիրացն ոչ կարաց առնուլ, բայց զգաւառն զամենայն ի սպառ աւերէր. այրեաց և զառաքելադիր ուխտ սրբութեանն որ կոչի Դադուի վանք[1]. և ինքն չուեալ գնաց յաշխարհն Մարաց, և ապստամբեալ ի սուլտանէն՝[2] ապա չարաչար մահուամբ սատակի մերձ ի քաղաքն Զանգան[3], ի ՇՂԵ (1146-7) թվ. Հայոց:

Իսկ այլ ոմն ամիրայ՝ անուն Փախրադին մեծատուն և մեծատոհմ յազգէ, սա տիրեաց զօրացն Զաւլեայ և գաւառացն համանգամայն որ ընդ իշխանութեամբ նորա. և ըստ հրամանի սուլտանին եկեալ ի գաւառս Առանայ՝ տիրէ ամենայնի. բայց զի ոխացեալ էր քինու ընդ թագաւորին Վրաց և սպառնայր աւերել զամենայն գաւառսն՝ որք ընդ իշխանութեամբ նորա, վասն այսր ահի և սպառնալեաց՝ տարակուսեալ յերկիւղէն՝ սուրբ մայրաքաղաք վանորեայսն, Հաղբատ և Սանահինն՝ միայն յաղօթս ապաւինեալ՝ հայցէին յԱստուծոյ փրկութիւն ամենայն հաւատացելոց. զոր և վաղվաղակի լսէր Աստուած աղօթից նոցա և բառնայր ի կենաց զՓախրադինն, սակաւ աւուրս տիրապետեալ Գանձակայ, սպանմամբ սրոյ ի ձեռն ամիրայի միոյ Խազբեկ կոչեցելոյ, որ ի տանէ սուլտանին՝ սպան զնա. և էր թուականս ՇՂԶ (596=1147-8), և հռոմին ՅԿԷ (367)[4]. իսկ Պարսիցն ՇԼԶ. և էր կայսր Յունաց Միխայէլ որդի Կալուժանայ, թոռն

1. Ս. Թադէոսի աշակերտ Դադի կամ Դադուի (տես Յօդ. 31) անուամբ շինուած, Մռաւ լերին ստորոտը, Թարթառ կամ Տրտու գետոյ մօտ:

2. Այսինքն Սելջուկեան սուլտանք յաջորդք Մէլիքշահին:

3. Ծանօթ Զանգեան անուամբ յԱտրպատականի:

4. Վերոյիշեալ Հռովմայ երկրորդ հազարեկէն հինգհարիւրեակ շրջան մի անցած և նոր սկսեալ շրջանին 367դ տարին, Հիճրէդի թուականին 536:

Ալեքսին. Թագաւորն Վրաց Դեմետրէ որդի Դաւթի թոռն Գէորգայ Բագրատունի. իսկ Պարսից սուլտանն Մասուդ որդի Մահմետի, թոռն Մլեքշահի։

Իսկ ամիրային Փարսայ և Խուժաստանի[1] որում անուն Բզափայ կոչիւր, լուեալ զսպանումն Փախրադինին, և իմացեալ թէ հրամանաւ սուլտանին է, զօրաժողով եղեալ դիմէր ի վերայ նորա, կամեցեալ ընկենուլ զնա յիշխանութենէ. իսկ Խազբեկին[2] առեալ զզօրս իւր գնաց յօգնականութիւն սուլտանին. և սաստիկ պատերազմ եղեալ՝ զմիմեանս զօրքն սատակէին. յորում պատերազմի սպանաւ Բզափայն, և եղեւ շփոթումն մեծ։

Յետ այսորիկ եկն ամիրայ ոմն անուն Ըրղիշ կոչեցեալ, առանց հրամանի սուլտանին տիրապետել կամեցաւ Գանձակայ. զոր գիտացեալ քաղաքին գլխաւորաց և ոչ ընկալան զնա ի քաղաքն. և նա զչարեալ յաղագս արհամարհանաց իւրոց՝ ել ի լեռնակողմանս, և ժողովեալ զապստամբ զգըլխաւորսն Թուրքմանին, և նոքօք բազում աւեր հասուցանէր լեռնակողմանցն, և զգաւառն բաժանեալ նոցա՝ ոչ սակաւ տագնապ հասուցանէր, և այնպէս կամեցեալ պաշարել զքաղաքն. իսկ քաղաքացեացն օգնականութիւն խնդրեալ ի թագաւորէն Վրաց՝ որում անուն էր Դեմետրէ, զի դուստր նորա յառաջագոյն կին լեալ էր սուլտանին, որոյ անուն էր Ռուզուզան, և յանուն վարձանի տուեալ էր նոցա Գանձակ. ըստ այսմ պատճառի զօրս առաքեալ թագաւորն Վրաց, և փախստական եղեալ Ըրղիշն դարձաւ ի կողմանս Պարսից։ Իսկ զկնի այսորիկ առաքէ սուլտան Մասուտ զամիրայ ոմն Ռուվադի անուն չահապ քաղաքին Գանձակայ. որոյ եկեալ և կամեցաւ վրէժխնդիր լինել աւերման գաւառին ի Թուրքմանէն, և ոչ կարացեալ նուաճել

1. Բնիկ Պարսից Ֆարս երկիրն և Խուժիստան։
2. Սուլտանին որդւոց աթաբէկն կամ դաստիարակն էր։

զնոսա. զի ոչ էր մեծ ազգաւ և կամ զօրութեամբ,
յաղագս որոյ արհամարհեալ զնա Թուրքմանի գլխա-
ւորացն՝ բազում ապստամբութիւն ցուցանէին նմա,
նոյնպէս և ամենայն բերդորայք գաւառին ոչ հնա-
զանդէին նմա. և նորա երթեալ և պաշարեալ ըզ-
նոսա՝ ոչ ինչ կարաց առնել նոցա. և Թուրքմանին
ոչ սակաւ աւերեալ զդաշտավայրս և զլեռնակող-
մանսն. յաղագս որոյ զչարեալ եւ, և բազում ա-
ւար առեալ ի Թուրքմանէն՝ և ածել զնոսա ի
թշնամութիւն իւր դարձուցանէր: Ապա սէր և բա-
րեկամութիւն եդեալ ընդ նոսա, առնու իւր կին
ի նոցանէ, և զքոյր իւր տայ ի կնութիւն Ազադին
կոչեցելոյ տեառն Հերքան-բերդոյ. և այսպէս խա-
ղաղութիւն արարեալ գաւառին:

Յետ այսորիկ որդի Դարին[1] Ցաղան անուն, իշ-
խան աշխարհին Ճառաբերդոյ[2] և Նորին դղեակին,
ամպարտաւանեալ և կամեցեալ տիրել Աղանայ,
միանգամայն զի եկեալ ումն որդի սուլտանի առ
նա՝ որում անուն էր Ջախր-շահ, և առեալ զնա և
զանեբ իւր զԳրիգոր իշխան որդի Վասակայ տեառն
Խաչախան[3] բերդոյ. որոյ եկեալ առ նա՝ զի նավաւ
վրէժ առցէ ի Հասանեայ որդւոյ Դեսմոյ, յաղագս
եղբօր իւրոյ Սմպատայ, զոր սպանեալ էր նա պա-
տերազմի պատճառաւ, զոր ունէին ընդ միմեանս
վայրապար. և յաղագս այդպիսի պատճառաց զդը-
տերս իւրեանց յայլազգիս յամուսնութիւն տային:
Եւ զի քան այսմ պատճառի Գրիգոր համարձա-
կեալ եկն առ փեսայ իւր Տաւղան, և երթեալ Տաւ-

1. Ո՞վ է այս Դարն, առաջ յիշուած չէ:

2. Որ և Ջարաբերդ և Ջրաբերդ, մի յամրագոյն բերդից Արցախ նահանգի կամ Խաչենոյ, ի հովտի Թարթառ գետոյ:

3. Կամ Խօխան, հիմայ կոչուի և Թարխան-գալէ, Գանձասարայ վանաց մօտ. բարձր և սուր բլրի մի վրայ, որոյ ներքեւ կան աւերակք աւանի և մեծամեծ տուներաւ, զոր Դարպասներ կոչեն:

ղան նոքօք բանակէր ի լեառն որ կոչի Կայծոյ ծառ, մերձ ի Հերքան-բերդ. բայց զի յառաջագոյն փեսայացեալ էր Ռովադայի՝ Գուրբուղային՝ գլխաւորի Թուրքմանի միոյ[1], զոր կոչէր Տաւղան ի հնազանդութիւն սուլտանին, զնա և զայլս որ ընդ նմա՝ զՏոշտաքեանսն կոչեցեալ. և նոցա բանակեալ ի լեառն որ կոչի Դիւշախոռ, ոչ գային ի հնազանդութիւն նոցա. և եղեւ յաղագս այսորիկ պատերազմ, և հարան զօրքն Տաւղանայ, և ինքն Տաւղան սպանաւ. սպանին և զԳրիգոր, և ընդ նմին այլ եւս ազատս, որ և թաղեալ անդ քրիստոնէից գաւառին. և զկնի ամի միոյ առեալ բերին ի վանքն անուանեալ Գանձասար[2]. որ էր տապանատուն նախնեաց նորա. և անդ թաղեցին զնա: Իսկ զՋախըրշահն ըմբռնեալ տարան յՌովադի[3], ի քաղաքն Գանձակ. իսկ նորա իբր զաւուս ոք և զխարբերայ համարեալ զնա՝ այպն արարեալ շրջեցուցանէր ի քաղաքին նախատանօք, և ապա թողին զնա: Եւ նորա երթեալ առ Թուրքմանսն զոր յառաջագոյն աւարեալ էր Ռովադի, և նոքա ուրախացեալ առ հասարակ կոչեն զամենայն Թուրքսն Գեղամայ լերինն, և պատուեալ զնա իբր թագաւոր, և զօր ժողովեալ և եկեալ զամենայն գաւառսն լեռնակողմանն բաժանէր նոցա. և ինքն զօրօք բազմօք եկեալ պաշարէր զքաղաքն Գանձակ: Իսկ Ռովադի առաքեալ ի թագաւորն Վրաց և հայցեալ ի նմանէ զօրք յօգնականութիւն, և նորա առաքեալ զօր բազում. և լուեալ Ջախըրշահին և փախուցեալ ի վայր քան զԹերոզապատ՝ որ այժմ ասի Պարտաւ, և անդ դադարեալ առ Թուրքմանսն ապստամբս:

Զկնի այսորիկ Մեշոշեհ ամն ծառայ Թապակար-

1. Ռովադի փեսայ եղեր է Գուրբուղայի:

2. Աղուանից ամենէն նշանաւոր վանքն, որ և իրենց կաթուղիկոսին աթոռ եղաւ ինչուան մեր օրերն:

3. Այսինքն տարին առ Ռովադի:

ղանայ, որ էր ի դղեկին եդեալ՝ որ կոչի Ջարեք[1], նա մախանս ունելով ընդ Բովադու, վասն յառաջագոյն պաշարելոյ զնա յիւրում ամրոցին և աւերման գաւառին իւրոյ, և միաբանութեան ոմանց ի քաղաքէն Գանձակայ, երթեալ առ Ելտկուզն[2] որ էր տէր Նախճաւան քաղաքին և գաւառին. և կոչեալ զնա և բերեալ, և պաշարեալ զքաղաքն Գանձակ՝ առնու զկնի ամսոյ միոյ, յաւուր ճրագալուցի Յայտնութեան Տեառն մերոյ, կամաւ քաղաքացեացն: Եւ Բովադի իբր գիտաց զկամս քաղաքին՝ ինքն իսկ կամօք տայ զքաղաքն ի ձեռս նորա. բայց իբրեւ եկն Ելտկուզն ի դուռն քաղաքին՝ ասեն քաղաքացիքն. Եթէ զթշնամին մեր զՋախըրշահն ոչ բառնաս՝ ոչ հնազանդիմք քեզ. յաղագս որոյ անյապաղ երթեալ և ըմբռնեալ զնա՝ կախէ զփայտէ. և այս եկեալ առնու զքաղաքն, որպէս ասացաք: Իսկ Բովադի անցեալ գնաց ի հայրենի գաւառն իւր մերձ ի Բեղապատ քաղաք: Բայց զի ունէր կին Ելտկուզն ի կանանց սուլտանին, զկնի մահուան Մասուդին թագաւորեցուցանէ զԱսլանշահ, որ էր որդի կնոջ զոր ինքն ունէր, և առնու յինքն զպատիւ աթաբակութեան, զի սպանեալ էր զԽազբէկն աթաբակ որդւոցն սուլտանին՝ ի հակառակելն իւրեանց. և յաղագս այսորիկ տիրեալ թագաւորութեանն Պարսից՝ զօրացաւ յոյժ և եբարձ զմեծամեծ իշխանսն ամենայն և հնազանդեցոյց ըզբազումս, և զգլխաւոր ապստամբսն ի Թուրքմանացն եբարձ բնաւ. և խաղաղացոյց զխռովութիւն աշխարհիս Առանայ. և վայրենամիտ ազգն իսմայելացւոց ընդանացան[3], և կապուտ կողոպուտն

1. Մի ի նշանաւոր բերդից. և քան զայն աւելի՝ Անապատն կամ Վանքն Ջարեքայ, Շամքոր գետոյ եզերքը. Հիմկու վանքն ԺԷ դարում շինուած է:
2. Շատ հզօր և անուանի է սա իր ժամանակի իշխողաց և զօրաւորաց մէջ:
3. Այսինքն, հանդարտեցան:

դադարեաց ի նոցանէ, զոր առնէին յաճախ աշխարհին Աղուանից։ Բայց սակայն զմարտ պատերազմի ոչ դադարեցուցանէր ընդ Թագաւորին Վրաց և ընդ իշխանսն Խաչենոյ. զի երթեալ երբեմն գազատագողի և առեալ զամրոցն Հարոշ[1], և առ հասարակ զամենեսեան կոտորեալ սրով։

Իսկ իբրև մեռաւ Թագաւորն Վրաց Դեմետրէ՝ թագաւորեաց փոխանակ նորա Դաւիթ որդի նորա, այր քաջամիտ՝ մանաւանդ առ իշխանսն Հայոց, որք էին ընդ ձեռամբ նորա. և զի յոյժ մեծարէր պատուով զշահապ քաղաքին Տփխեաց՝ զՎասակ որդի Վահրամայ իշխանի և զեղբարս նորա զՔուրդն կոչեցեալ և զՍարգիս, և այնքան բարեարութիւն ցուցանէր՝ մինչ զի առաքէր և կոչէր զԹագաւորն Կիւրիկէ[2] որդի Դաւթի Թագաւորի Բագրատունեաց, և խոստանայր նմա[3] դարձուցանել ի նա զժառանգութիւն նորա, զոր նախնեացն իւրոց հանեալ էր ի նոցանէ. և այնպէս պարգևօք յղարկէր զնա, ժամադիր եղեալ նմա։ Կամէր և ժողովս առնել և յաղագս հաւատոյ զճշմարիտն գտանել, և այնպէս պատուել զուղղափառութիւն։ Զայսպիսի զկամս իբրև գիտացին իշխանքն Վրաց՝ յոյժ նախանձաբեկ եղեն. մանաւանդ Որբելեանքն կոչեցեալ ազգ, և դեղ մահու արբուցեալ սպանին զԹագաւորն Դաւիթ, և սուգ մեծ և բազմաժամանակեայ արարեալ աշխարհին Վրաց և Հայոց, և թագաւորեցուցին զԳիորգի եղբայր նորա ընդ նորա։

1. Աղուանից անուանի Գարգարացւոց երկրին և գետոյն մասն մի՝ որ Վարանդա կոչուի հիմայ, որոյ մէջ է այս Հարոշ կամ Հարաշ գիւղս, Ս. Մեսրովպ եկեղեցեաւ։

2. Հայոց Բագրատունեաց սերունդք, առաջ Գուրգէն կոչուածքն՝ երբ Վրաց կողմեր սկսան թագաւորել Կորիկէ կոչուեցան. և շատերն յաջորդաբար որդւէ որդի Դաւիթ և Կորիկէ կոչուէին։ Տես վերոյիշեալ Ազգացուցակը (եր. 392)։

3. Յօրինակին էր Նորա։

Իբր թագաւորեաց Գիորգի կամեցաւ ըմբռնել զիշխանն Վասակ, զի մախանս ունէր ընդ նմա, զի մինչ քաղաքապետն էր՝ ոչ մեծարէր զնա իբրեւ զեղբայր իւր զԴաւիթ, և ոչ ծառայէր նմա ապա սանելով. չարախօսելով և այլոց իշխանացն Վրաց, յաղագս այսորիկ փախստական եղեալ Վասակայ իւրովք եղբարբքն հանդերձ, և երթեալ ի Թիոդուպօլիս որ այժմ ասի Կարնոյ քաղաք։ Եւ ամիրային որ կոչէր Սալտուղի՝ խնդութեամբ և մեծարանօք ընկալեալ զնոսա. զի յորժամ ըմբռնեցաւ Սալտուխն ի զօրացն Վրաց, մինչ պաշարեալ էր զքաղաքն Անի և ածաւ առ թագաւորն Դեմետրէ ի Տփխիս, բազում ապաստակալութիւն արարեալ էր նմա Վասակ. յաղագս այսորիկ պատուեալ զնոսա պարգեւօք և շնորհեաց իշխանութիւն գիւղօրէից բազմաց։ Եւ անդ լինելով ամս ինչ մեռաւ Վասակ, և թաղեցաւ յեկեղեցւոջն որ կոչի Աստուածածին՝ ի քաղաքին։ Իսկ զդրօշ նորա և զփող և զիշխանութիւն՝ տուեալ եղբօր նորա՝ որ կոչեցեալ էր Քուրդ[1], և կայր նա անդ մեծաւ պատուով։

Իսկ Գիորգի իբրեւ թագաւորեաց և հաստատեցաւ՝ բազում գործ արութեան ցուցանէր, արշաւելով ի կողմանս կողմանս, զբազում գաւառս հարկանէր զպատահեալսն պատերազմաւ, առնոյր և զքաղաքն Անի միանգամ և երկիցս, կոչելով եպիսկոպոսին Բարսղի և եղբարց նորա՝ որդւոցն Մագիստրոսին Հասանայ. և ապա ընդդիմացեալ ոչ տային ի ձեռս նորա զքաղաքն. և առեալ բռնաբար զքաղաքն՝ և հրամայեաց աւար հարկանել. և մերկացուցեալ զօրացն զամենեսեան զարս և

1. Պատմէ Կիրակոս (Գլ. ԺԱ) որ ատոր քով եկաւ կեցաւ ատեն մի Մխիթար Գօշ, ի քաղաքն Կարնոյ, յետոյ երբ դարձաւ իշխանն իր երկիրը՝ նորէն քովը եկաւ Մխիթար։ Դար մի վերջը աւելի անուանի եղաւ իր ցեղէն ուրիշ Քուրդ իշխան մի, որոյ քով իջաւ Հեթում Ա թագաւոր ի Թաթարստան երթալու ատեն։

զկանայսն, զքահանայս և զկրօնաւորս՝ բազում անարգանս ցուցանէին յաղագս ընդդիմանալոյն. և եղեալ շահապ քաղաքին և զօր ընդ նմա՝ գնաց: Եւ նեղեալ քաղաքն յարշաւանացն Թշնամեացն՝ աղաղակեցին տալ ի ձեռս առաջին տեառնն՝ որ էր պարսիկ ազգաւ. և դարձեալ յայլ յայլմէ փոխեալ՝ ոչ լինէր խաղաղութիւն քաղաքին և գաւառին: Ապա տայ ի ձեռս զօրավարին իւրոյ Իւանէի[1]. և ոչ եղեւ և ոչ այնպէս հանդարտութիւն, մինչեւ տալ ի ձեռս իւրոց առաջնոց տերանց:

Իսկ Ելկտուզին՝ որ էր իշխան ամենայն Թագաւորութեանն Պարսից զայս իբրեւ ետես և զամենայն զօրութիւն նորա յառաջ քան զայսոսիկ զօրաժողով եղեալ առեալ ընդ իւր զսուլտանն և եկեալ բանակեցաւ ի դաշտին մերձ ի բերդն որ կոչի Գագ[2]. և այրեալ զուխտն որ յանուն Սրբոյն Սարգսի. և բազում հարուած եղեալ ի բանակսն և բազումք յօձիցն սատակէին: Իսկ Թագաւորն Գիորգի ժողով արարեալ զօրաց բազմաց՝ եկն բանակեցաւ ընդդէմ նորա և պատրաստեցաւ պատերազմիլ: Բայց զօրավարն նորա Իւանէ որդի Սմբատայ Խաղագոռձեան կոչեցեալ՝ ծածկաբար ազդ արարեալ

1. Ոչ Զաքարիա Սպասալարի եղբայր անուանի աթաբէկն Թամար Թագուհւոյ, այլ իրմէ առաջ մէկն:

2. Կասպից ծովու արեւմտակողմն՝ ընդարձակ Մուղան դաշտի հիւսիսային մասն Գագ կոչուէր, յանուն լեռնաբլրոյ մի, որոյ գագաթան վրայ շինուած էր Ս. Սարգսի վանքն, ուր Ս. Մեսրովբ դրեր էր այդ Ս. Զօրավարին նշխարք մի. այս է որ երգուի յեկեղեցիս մեր ի տօնի Սրբոյն. «Խաչաչարչար սուրբ դիտապետ.
» Նշանագործ անուամբ ի խաչ և յեկեղեցի, առա-
» ւել պայծառ ի Գլոռխն Գագայ ի գագաթան տեղ-
» ւոյն՝ օրհնեալ Սրբոյն Մեսրովպայ, Երագահաս
» Սուրբդ Սարգիս՝ բագնեաց կործանիչ», և այլն:
Անոր մօտ է և սրագլուխ Գուշարգին լեռնաբլուրն, զոր իր սուլուլիկ ձեւին համար՝ ոմանք կարծեն Գուշագան կոչուած և անկէ փոխուած Գուարգին:

աթաբակին և սուլտանի, զի դաշնադիր էր նոցա և կաշառով կուրացեալ ի նոցանէ. և նոքա ի գիշերին յորում հանդերձեալ էին վաղն պատերազմիլ՝ փախուցեալ գաղտագողի թողեալ զխորանս իւրեանց գնացին. այլ սակայն ոչ դադարէր ի չար կամաց որ ընդ քրիստոնեայս։ Եկեալ յանկարծօրէն ի սահմանս Անւոյ, և զԱշնակ և զԹալին[1] զաւանապեօղորեայսն առեալ և այրեալ զամրոցսն, և զբազում զարս և զկանայս և զմանկտի ընդ նոսա. և զբազումս վարեաց ի գերութիւն վաճառակուր եղեալ յազգս հեռաւորս։ Իսկ թագաւորն Գիորգի յանկարծօրէն երթեալ սակաւ արամբք ի քաղաքն Դվին, և զբազում ժամանակեայ ի Պարսկաց մնացեալ... բազում աւար առեալ փակեաց և զտունն... Որմըզդի[2]։

---

## ՄՂԳ

### ԸՆՏԱՆԵԿԱՆ ԱԷՐ ԵՒ ՍՈՒԳ ԶՈՐՏՈՒԱՆԷԼԵԱՆ ԻՇԽԱՆԱԶԱՆՑ ԿՈՂՄԱՆՑ ՍԱՍՆՈՅ[3]

Ի ձիր շնորհի սորա (Աստուծոյ) յուսացեալ օգնութեամբ Երրորդութեանն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զՍուրբ Աւետարանս, ի հայրա-

1. Երկուքն այլ Այրարատայ Արագածոտն գաւառին մեծամեծ աւաններ էին. երկրորդին անուամբ կան Նոր գիւղ մի և հին շինուածոց մնացորդք, և եկեղեցին՝ որոյ պատկերն է դիմացնիս։
2. Վերջին տողերս մաշած են, յետոյ թուղթերն այլ թափած կորած. երեւի թէ և շատ բան պակաս հետաքրքրական դէպքերէն։ Տես ի կարգի Պատմչաց ինչ որ ըսած եմք Գոշին այս Պատմութեանն համար։
3. Յիշատակարան է աս Սասնոյ անուանեալ մէկ Աւետարանի, նոյն կողմերը գրուած յամին 1169–70,

**պետութեանն Տեառն Ներսիսի Հայոց կաթուղի-
կոսի[1] և ի տէրութեան Յասանոյ՝ Վիգենոյ[2] մեծի
Պատռշէկսիմոսի որդւոյ Զորտոռշանէլի[3], թուն թռռ-**

զոր բանաձեր Սրուանձտեան Գարեգին Վ. հրատարակած է իր Համոյական Թորոս Աղբար գրոց մէջ։ Այլեւայլ տեսութեամբ նշանաւոր գրուած մ'է այս. նախ և ամենէն աւելի՝ արտառոց բացատրութեամբ ցեղով և բարուք ազնիւ ընտանեաց սիրոյ և ցաւոց, կամ ծննդոց և մահու. որպիսի պարզ և զգայուն գրուած կամ դէպք՝ դժուար թէ գտուի մեր պատմագրաց քով։ Երկրորդ, զարմանալի իմն է՝ այն խորտուբորտ անհարթ անծանօթ, քրդաբոյն երկրի մէջ՝ այսպիսի ազնիւ արեամբ, սրտիւ և հոգւով անձանց գտուիլն այնպիսի ատեն, նման այն պայծառ գունագոյն ծաղկանց, որ թէ և քարանց մէջ բուսնին, բայց պարտիզաց ծաղիկներէն թերեւս աւելի ականատիզ երեւին։ Նկատելի է եւս այդպիսի կէս վայրենի խորշերում՝ ոչ միայն Հայոց հին ազնուականաց սերունդներ գտնել, այլ և այնքան իշխող և տէր, մինչեւ իրենց կանանց այլ կոչուիլ Թագուհի՝ հայ և արաբ լեզուաւ։ Որքան պէսպէս թաքուն գանձք կան եղեր այնպիսի հայրենեաց մէջ։

1. Յայտնի է որ Շնորհալի Ս. Հայրապետն է։

2. Անսովոր կամ անծանօթ անուն, զոր ոմանք հիմայ համարին. և կ'ըսեն փոխանակ լատինական Վիջենի, Vincentius, Vincent. Իսկ պատուանունն անշուշտ բիւզանդական մ'է, թերեւս Nobilissimus, որ ուրիշ հայ իշխանաց այլ տրուած է, և մեր գրիչքն նոյնպէս այլակերպած գրեր են նաեւ Նովսեբիմոս։

3. Ահա նորալուր անուն մ'այլ, չգիտեմ ուստի ծագեալ. Ժ դարու վերջերն և հետեւեալ երկու դարուց՝ մէջ շատ յիշուի, թէ առ Վրացիս և թէ մանաւանդ առ Հայս. ասոնց առաջին թուի Գորգ Զորտոռշանէլ ազատ, այսինքն ազնուական, նիզակակից Վասակայ Պահլաւունոյ հօր Գր. Մագիստրոսի, յամին 1021, (տես Յօդուած 244). կուցէ սա ըլլայ Վիգենի պապուն պապն, զի տարիքն յարմար է, և ըստ այսմ կ'ըլլայ դա հայր Մուշեղի, և ասկէ կ'իջնան որդիէ որդի վեց ազգք կամ պորտք, Մուշեղ. Թոռնիկ. Զորտուանել

Ըրկայ[1], մեծի հզաւրի և քաջի, որ բնիկ յԱստուծոյ հաստատուն հիմնականացեալ ունի զաթոռ հայրենի տէրութեան իւրոյ, և ի թուականութեանս Հայոց ի Ո. Ժ. Ը. Հրամանաւ երանելի և Քրիստոսասէր թագուհւոյ Մէլէքխաթոյ[2] ամուսնոյ Վիգենոյ, որ է յազգէ Արծրունի և ի չառաւիղէ Սըրբոյն Վարդանայ՝ դստեր մեծի իշխանին Մոկաց՝ Հմայեկի[3]: Իսկ բարեացապարտն երիցս երանեանն Վիգէն և ամենայն օրհնութեանցն արժանի երանելի աստուածասէր թագուհին, սոքա ըստ ազնուականութեան հայրենի պատուոյն և ըստ աս-

(Բ). Վիգէն. Զօրտուանէլ (Գ). Թոռնիկ (Բ) և իր եղբարքն Վասիլ և Շահինշահ: Բ Զօրտուանելէ (հօր Վիգենի) ժամանակակից է միւս Զօրտուանել մի որդի Տաճատայ, նոյնպէս Տարօնոյ իշխան հրատարակուած, մամիկոնեան և պահլաւ. որ և իր նախնեաց մէջ յիշէ Վեսեն մի. ասոր Յիշատակարանը յարմար համարեցանք կարգել յաջորդ (294) Յօդուածով: Այսչափ Զօրտուանէլեանց վրայ աւելի շփոթ կամ զարմանք բերէ՝ միւս մէկ մի Սասնոյ իշխան, որ Վիգենի որդւոյն պէս ճանչցուի քեռայր Գրիգորի կաթողիկոսի, բայց Տղային, սակայն ամենայարմար ժամանակին. վասնզի դորա որդիքն՝ Հեթում և Շահինշահ, կ'երթան ի Կիլիկիա առ Մեծագործն Լեւոն Ա, որ Հեթմոյ կին կու տայ իր եղբօր Ռուբենի Ալիծ դուստրը և Մսիս քաղաքը, Շահինշահի այլ զՍելեւկիա քաղաք, յամին 1188: Սոքա և իրենց քեռի կաթողիկոսն մէկ ամսուան մէջ մեռնին, յամի 1193: Ի՞նչ նմանութիւնք ու համանմանք:

1. Այս Վիգենի քաջ պապուն անարժան սպանութիւնն ի Փիլարտոսէ՝ պատմուած է յ'263 Յօդուածի:

2. Յայտնի է Մէլէք թագաւոր նշանակելն, նոյն արաբ լեզուաւ և խաթթի՝ տիկին նշանակէ. ըստ այսմ և Մէլէքխաթին՝ բնիկ անուն չէ՝ այլ պատուոյն:

3. Շփոթ է այս տեղ այլ շարադրութիւնն՝ որով և ազգակցութիւնն. թուի թէ չառաւիղն Ս. Վարդանայ էր նոյն ինքն (անծանօթ) դուստրն, տուեալ կին Հըմայեկի Մոկաց իշխանի, որոյ քով առեն մի քաշուած կեցաւ Վարդան:

տուածային օրինացն գեղեցիկ քաղաքավարութեամբ կացեալ առ միմեանս, և զամենայն օրինակ բարեպաշտութեան յանձինս իւրեանց բերելով, և զարդարող ոչ միայն մարմնաւոր մեծութեամբ այլ և հոգեւոր փարթամութեամբ աստուածպաշտութեամբ. զի երանելին Վիգէն զխաղաղութեան զհետ երթեալ՝ ըստ տէրունական բանին, որ ասէ՝ «Երանի է խաղաղարարաց, զի նոքա որդիք Աստուծոյ կոչեսցին», և զաշխարհաշինութեան, զարդար դատողութեան. խրատելով զստահակսն, դատ առնելով զրկելոց, օգնական լինելով նեղելոց և ապաւէն ամենայն փախուցելոց, շինելով զեկեղեցիս Աստուծոյ և զարդարելով ամենահրաշ սպասուք և զարդուք, և զքահանայս Աստուծոյ պատուելով և մեծարելով, և զկեանս նոցա դարմանելով. և յամենայնի առաջին սուրբ նահապետացն և թագաւորացն նմանեալ, որք զպատուիրանս Աստուծոյ պահեցին և հաճոյ եղեն նմա. և ի վերայ այսր ամենայնի զողորմածութիւն և զսէրն ունելով՝ որ է գլուխ ամենայն առաքինութեան:

Նոյնպէս և երանելի թագուհին զամենայն առաքինութեանց զհետ երթեալ, և զարդարեալ ոչ միայն ի հիւսս ոսկեմանս ընդելուզեալ մարգարտով և ակամբք պատուականօք, կամ ի հանդերձս ոսկեհուռս հպարտացուցանողս զմիտս կանանց թագաւորազանց. այլ սա զկնի մարմնական մեծութեան՝ ստացեալ և զհոգեւոր առաքինութիւն, զըրբութիւն, զհամեստութիւն, զխոնարհութիւն, ըզպահս սրբութեան և զաղօթս հանապազորդս, եկեղեցեաց զարդարիչ և քահանայից յանձանձիչ, որբոց և այրեաց խնամածու, զմերկս զգեցուցանելով և զքաղցեալս կերակրելով. և այլ բազում առաքինութեամբ, ըստ օրինակի առաջին սրբոցն որ ընթացան զկնի Քրիստոսի կոչմանն առաքելական քարոզութեանն, որպէս ասէ Պաւղոս փողն Տարսոնական, անօթն ընտրութեան, քարոզն տիեզերաց, յուսուցանելն իւրում, եթէ, «Կանայք, հնա-

զանդ լերուք արանց ձերոց յամենայնի՝ իբրեւ Տեառն. և, Արք, սիրեցէք զկանայս ձեր իբրեւ զանձինս ձեր »։

Իսկ ամենագով երանելիքս՝ ըստ առաքելական խրատու և ըստ Քրիստոսի պատուիրանացն, սուրբ և պարկեշտ ամուսնութեամբ կացեալ առ միմեանս՝ որպէս զմի մարմին, և ծնեալ ուստերս լուսածագիկս և դստերս գեղեցկատեսիլս, և սնուցեալ խրատու և ուսմամբ, կրթելով զնոսա յերկիւղ Տեառն և ի հրահանգս բարեպաշտութեան։ Ապա ոմանք ի զաւակաց նոցա յառաջագոյն փոխեցան յաստեացս ի հանդերձեալսն, իբրեւ զպտուղ ինչ նոր՝ յառաջին արմտեաց ընծայ Տեառն մատուցեալ. յորոց մինն Գրիգորիոս ճանաչիւր, և այլոց անուանքն գրեալ են ի դպրութեան կենաց. և սուղ ինչ զվախճան նոցա արտասուեալ, և գոհութիւն Աստուծոյ մատուցեալ, վասն ընդունելոյ զպտուղ որովայնի նոցա։ Ապա զկնի այսորիկ աստուածապաշտ կարգօք ուրախացեալք՝ բարեկարգութեամբ վարէին զիշխանական տէրութիւն իւրեանց, հանդերձ մնացեալ որդւովն. զերիցերանեան և զամենագովելին ասեմ զՋորտուաՆէլն, զգեղեցիկն, զբարետեսիլն, զգանգրահերն, զխարտիշագեղն, զլայնաթիկունքն, զհաստաբազուկն, զչափահասակն, զքրիստոսասէրն, զաղօթասէրն, զքահանայասէրն, զխոնարհամիտն, զհեզն, զերկայնամիտն, զսիրունն, զսիրեցեալն, զողորմածն առ ամենեսեան, զօգնականն անօգնականից և զբարեխօսն դատապարտելոց և զհանիչն բանտարկելոց և զկերակրիչն քաղցելոց։ Եւ զի՞նչ թուեմ մի ըստ միոջէ, զի ամենայն շնորհօք զարդարեալ էր ի հոգեւորականն և ի մարմնականս. և այսպիսի վարուք աճէր և իմաստնանայր և հլու էր ծնողացն և հպատակ հրամանաց նոցա. և ոչ իբրեւ զմանուկ թագաւորազին ամբառնայր ընդդէմ կամ բարձրամտէր, այլ ընդ խոնարհս զիջանէր. զտէրունեան հրամանսն կատարելով, թէ, Որ խոնարհեցուցանէ զանձն բարձրասցի. և վասն

գեղեցիկ վարուցն և լաւութեան բարուցն, ծնողքն առաւել սիրէին զնա։ Ապա խորհուրդ ի մէջ առեալ անճեցուցանել կամելով զշառաւիղն ազգին իւրեանց, փեսայացուցանեն զնա ընդ դուստր Վասակի եղբօր Տեառն Գրիգորիսի Հայոց կաթուղիկոսի, հզօրի և մեծի[1], որոյ անունն Վաճինէ[2] ճանաչի. որոց եկեալ առ միմեանս եղեալ իբրեւ զմի մարմին, սիրունք և սիրեցեալք, և ըստ աստուածային օրինացն կեցեալք՝ ծնանին երիս որդիս գեղեցիկս և հրեշտակատեսիլս. որում առաջնոյն ասի Վասակ, իսկ երկրորդին Շահինշահ և երրորդին Թոռնիկ. և կային բարեկարգութեամբ, զուարճացեալք լուսածաղիկ զաւակօքն։

Իսկ զկնի այսմ եղելոյս՝ աստուածասէրն Վիգէն և երանելի ամուսինն նորա Մելեքսթի՝ օրհնութիւն Ամենատեառն մատուցանէին, տեսանելով զբարեկարգութիւն տէրութեան իւրեանց և զաճումն զաւակաց և զշինութիւն աշխարհին։ Էր ապա դուստր մի իւրեանց կոյս գեղեցիկ յոյժ, զարդարեալ ամենայն բարեձեւութեամբ և յոյժ սիրեցեալ յաչս մօրն՝ առաւել քան զամենայն մանկունս իւր, որոյ անուն յորջորջեալ կոչի Կատա[3]. կատարեալ հասակաւ և գեղեցկութեամբ, և ամենայն առաքինութեամբ. յորոյ անուն՝ Ս. Աւետարանս գրեցաւ[4]։ Զնա կամեցեալ ծնողացն իւրոց տալ մեծաշուք պատուով ի թագուհութիւն Շահինշահի որդ-

1. Ծանօթ եղբայր երկու կաթողիկոսացն Գրիգորիսի և Ներսիսի, զօրավարութեամբ պատուեալ ի կայսերաց Յունաց։

2. Սովորաբար Վաճենի կոչուի։

3. Վերին Հայոց և Վրաց մէջ այլ շատ ընդունելի էր այս իգական անունս, իբրեւ համառօտութիւն Կատրանիտեայ կամ Կատարինեայ։

4. Այս Կատայի համար կամ ի յիշատակ նորա՝ մայրն գրել տուեր է այս արդարեւ յիշատակաց արժանի Աւետարանը։

ւոյ Գրիգորի, թոռին կատակալոսի որդւոյ կամենի[1] մեծի, ի Գեգեաց գաւառ, ի մեծ ամրոցն որ կոչի Սաղոչկ[2]. որ իբրեւ երթեալ անդ ըստ հայրենի ազնուականութեանն և ըստ մայրենի աստուածպաշտութեանն որում սնեալն էր, և անդ ցուցեալ զգեղեցիկ բարեձեւութիւնն, զսրբութիւնն, զողորմածութիւնն, զեկեղեցեաց և զքահանայից հոգաբարձութիւն: Եւ սուրբ ամուսնութեամբ ծնեալ մանուկ մի գեղեցկատեսիլ, որոյ անուն է Շահմէլիք[3]. զոր իբրեւ լսէին ծնողքն զնորա բարի յառաջադիմութիւնն, փառս ի բարձունս Աստուծոյ մատուցանէին: Եւ ինքն երանելի չքնաղագեղն կատայն գոհութիւն Աստուծոյ մատուցանէր, որ եթող ըղտուն հօր իւրոյ ի մեծութեան և յուրախութեան՝ եղբարբքն հանդերձ և ամենայն ընտանեօք:

Եւ մինչ յայսմ ուրախութեան էին և բերկրէին ի միմեանց բարեկեցութենէ, և ի շինութեան էին և ուրախ էին առ հասարակ ամենայն սիրելիք, հեռաւորք և մերձաւորք, պետք և իշխանք և ամենայն քրիստոնեայք և վանորայք և կրօնաւորք որ ընդ իշխանութեամբ նոցա էին, ապա մեղսասէրն և բարիատեացն սատանայ նախանձեալ ընդ բարի կեանս նոցա, մտեալ յիւր սիրելիսն... յարուցանէ

1. Կարծեցընէ զԿատակալոս Քեքաւմենոս (Այրածմականուանեալն, յորմէ Կամենն?) յոյն զօրավարն, զոր Մոնոմախ կայսրն՝ Գր. Մագիստրոսի հետ խաւրեց ի Հայս, իբր յամի 1051, և թէ նա խնամեցած ըլլայ ընդ Հայոց և անկէ ծագած Շահինշահ փեսայն Վիգենի:

2. Խորենացւոյ Աշխարհագրութենէն դուրս՝ հազիւ անգամ մի յիշուած է այս Դ Հայոց գաւառս, յորում էր անուանի բերդն Անգղ. իսկ հօս յիշուած Սաղոչկ ամրոցն՝ ոչ բնաւ. այլ հաւանօրէն սա էր բնավայր կամ հայրենիք Սղկունեաց ցեղին. որոց՝ Տարօնոյ տանհմանակից ըլլալն յայտնի էր:

3. Այս անունն այլ նշանակ թագաւորական, իբր Արքայորդի:

պատերազմ ի վերայ տանն Վիգենայ. այլ ի զօրութենէն Աստուծոյ յայտնապէս պատերազմաւ ոչ ինչ կարացին առնանել նմա, այլ դաղանագոյն իրրեւ զօձ սողեալ մտին և աւերեցին տեղիս տեղիս ի գաւառաց նորա, և գերեցին բազումս ի քրիստոնէից: Եւ այն էր սկիզբն թանձրամած օդոյն զոր ունելոց էր զմեզ և զնոսա և զամենայն քրիստոնեայքս, և զամենայն օտրեկիս, զհեռաւորս և զմերձաւորս: Զի հուպ ընդ հուպ կարճ ի կարճոյ ի նմին ամիս՝ յաւուրս պահոց քառասնորդացն, ի հինգերորդում շաբաթուն, զկնի տօնի Սրբոց Քառասնիցն, ըստ աստուածակոչ հրամանին՝ հասանէր վախճան երանելւոյն Զորտուանէլի՝ ի տիս երիտասարդութեան, թողեալ շառաւիղ ազգի գլխաւորաղին զաւակն իւր և մխիթարանք ծնողաց իւրոց, և ինքն փոխի ի Քրիստոս, առ որ անձկացեալն էր: Բայց զաղէտս տարակարծ դիպուածոյն և զիրս անբաւ կոծոյն որ եղեն յայնժամ, զոր գործեցին Հայակոյտ բազմութիւն ազատացն, ծառայից և աղախնեայց և տիկնանց ազատաց, և գաւառաց գաւառաց՝ ընդ խուռն եկելոց ի կոծ լալեաց, և զողբս հօրն և մօրն և ամուսնոյ նորա, ոչ կարեմք զգրով արկանել: Բայց ի նմին ժամու ժողովեալ բազմութիւն քահանայից և կրօնաւորաց և վարդապետաց, զապեալ զգեղեցիկ մարմին նորա պայծառ և պատուական հանդերձիւք, և բարձեալ տարան ի հայրենի տապանատունն իւրեանց, յուխտին որ կոչի Վանադիր[1], ի դուռն սրբոյ կաթուղիկէին զոր շինեաց իւր երանելի հայրն Վիգէն՝ իննխորանեան, և փոխեն զնա ի հանգիստ, սաղմոսիւք և աւրհնութեամբ և երգօք հոգեւորօք, և փառաւորեալ արձակեցին զժողովուրդսն: Գործեցաւ այս ի Հայոց թուականիս ի ՈԺԴ (1165):

1. Վանդիր գրութեամբ կարծեմ յիշուած է հեղ մի, բայց դիրքն անծանօթ, և փափագելի զոնէ աւերակացն յայտնուելու, վասն զի Իննխորանեան կոչմամբն գուշակուի մեծ կամ չքեղ:

Եւ մինչ յայսմ տրտմութեան էին և սակաւ մի զանձինս իւրեանց մխիթարել կամելով գեղեցիկ մանկամբն իւրեանց Վասակաւ և որդւովքն Զորտուանէլի, ապա յանկարծակի յետ ամի միոյ անցելոյ զկնի մահուան Զորտուանէլին, հասանէր նոցա տրտմութիւն ի վերայ տրտմութեան. զի քրիստոսասէր և բարեպաշտուհի դուստրն իւրեանց Կատայն, մինչդեռ յուրախութեան էր և ի մեծութեան ինքն և ցանկալի տէր իւր Շահինշահն, և համակեալ էին ի սէր իրերաց և բերկրէին ի միմեանց տեսլենէ, և ղուարճանային ընդ տեսիլ զաւակի իւրեանց, և ոչ էր լուեալ զմահ եղբօրն և զտրտմութիւն ծնողաց, և ակն ունէր բազում ժամանակս վայելել զկեանս աշխարհիս, և ծնանել ուստերս և դստերս. ապա եղեւ նորա ժամանակ ծննդելոյ՝ ունելով յորովայնին մանկունս երկուս. եկին հասին երկուքն ծննդեանն, ըստ տէրունեան հրամանին՝ որ ասաց ցնախամայրն, թէ, Տրտմութեամբ ծնցիս որդիս. և ի կենսաբեր Ս. Աւետարանին ասէ. «Կին յորժամ ծնանիցի՝ տրտմութիւն է նմա, զի հասեալ է ժամ նորա». և ստիպեալ երկանցն՝ զկնի ճեպէլին երկուքն մահուն[1]. և ի մեկնել մանկանցն՝ եկն եհաս օրհասն մահու, և ուրախութեամբ փչեալ զոգին՝ զերծեալ ի պատրանաց աշխարհիս և ի զբաղմանց սորա, փութացեալ առ նաւահանգիստն Քրիստոս: Եւ անդ էր տեսանել զաղէտս անբուռ տարակուսանացն և զողբս անհնարինս, զկականումն պատուական և ազատ կանանց, զաղիողորմ արտասուս տղայոցն, զհառաչանս սիրելեացն, զաշխարանս բարեկամացն. զի ամենեքեան մինչդեռ յուրախութեան և ի հանդերձս հարսանեաց համակեալք էին, վաղվաղակի սգոյ

1. Սխրալի կամ տխրալի զուգութիւն. երկուքն ծննդեան և յուսոյ և երկուքն մահու և սգոյ. սակայն երանելի է Կատայն՝ որ ուրախութեամբ աւանդեր է վերջին շունչը:

հանդերձ զգեցեալ ի թխութիւն դառնային. և այսպիսի կծով երանելի և սիրեցեալ առնն՝ ըզվախճան նորա զգացեալ՝ զի ի մատաղ հասակի հրաժարեաց ի նմանէ, և սուղ ինչ ժամանակս բերկրեցան ի միմեանց տեսլենէ, և կարճակտուր եղեւ սէր նոցա, փոխի յաշխարհէս ի հանդերձեալն առ Քրիստոս, յանվախճան ուրախութիւնսն:

Ապա առեալ զպատուական մարմինն պատեալ պայծառ հանդերձիւք եդեալ ի տապանի, և բարձեալ դասուք քահանայից և բազմամբոխ ժողովըրդովք՝ տարեալ յիւր սեփական վանսն որ կոչի Ս. Փրկիչ[1], յորում բնակեալ են կրօնաւորք միաբանակեցք հրեշտակակրօնք, սուրբք և ընտրեալք, փոխեն զնա ի հանգիստ՝ սաղմոսիւք և աւրհնութեամբ և երգօք հոգեւորօք. և կնքեալ զգերեզմանն և մեծարեալ զօր հանգստեան նորա՝ արձակեալ զժողովուրդս գնային ի տունս իւրեանց:

Այսոցիկ այսպէս եղելոց, լուեալ ապա երանելի ծնողացն զվախճան դստերն, յանհնարին սուգ տրտմութեան ընկղմեցան, և նորոգեցին զկեղեքումն առաջին վիրացն և յայրումն ի վերայ այրման. և մոռացան զառաջին սուգն՝ զօրայս խիստ համարելով. զի 'հեռաստեսութեան եղեւ վախճան նորա, և ոչ տեսին զմահ նորա. և բազում աւուրս սգացեալ զնա, ապա զյոյսն Քրիստոսի առաջի աչաց եդեալ՝ զմխիթարիչն ամենայն սգաւորաց, զգթութիւն Աստուծոյ մատուցեալ՝ որ ետ զնոսա և դարձեալ կամեցաւ առնուլ զնոսա: Զոր տէր Քրիստոս մխիթարեսցէ զնոսա մխիթարիչ Ս. Հոգւովն, հանդերձեալ մնացեալ զաւակօքն, անտրտում ուրախութեամբ, և հաստատուն պահեսցէ զտէրութիւն նոցա և յաղթող ի վերայ թշնամեաց, ազգաց յազգս մինչեւ ցյաւիտեան:

Իսկ ապա քրիստոսասէր և բարեպաշտ թագուհի

1. Անծանօթ է այս վանք, որոյ անուամբ կան այլեւայլ գաւառաց մէջ:

մայր գեղեցիկ պատուածասէր Կատային, բարի խորհուրդ զմտաւ ածեալ, զպակասութիւն զաւակին լնուլ կամեցեալ և զտրտմութիւնն յուրախութիւն փոխեցեալ, նմանեալ պան վաճառականի որ խնդրիցէ զպատուական մարգարիտն՝ զոր Տէրն յԱւետարանին առակեաց. ելեալ ի խնդիր այամ լուսաւոր մարգարտի, որ ոչ ինչ յեգելոցս փոխանակի ընդ սմա՝ ստացաւ զսա, նուիրականօքս զանանց մեծութիւնս ստացեալ, և յիշատակ դստեր իւրոյ՝ ի տեղի նորա կացուցեալ. իբրեւ այն թէ զնա կենդանի տեսանելով, յորժամ զսա տեսանիցեն և ընթեռնուցուն: Ապա հրաման ետ ստորագրել զսա՝ Արիստակիսի[1] յոքնամեղ անուն կրօնաւորի անիմաստ և փցուն գրչի. և գրեցաւ Ս. Աւետարանս ի լերինս Տաւրոսի, ի սահմանս Սասնոյ, յուխտիս որ կոչի Միջնաղբիւր[2]. որ է ի մէջ... աց քաղցրահամ ջուրց ընդ հովանեաւ Ս. փրկչիս, և Սրբոյ Աստուածածնին, յառաջնորդութեան Տեառն Ստեփաննոսի երջանիկ և ընտրեալ եպիսկոպոսի, զոր Տէր աւրհնեսցէ և պահպանեսցէ ընդ երկայն աւուրս... նա էր հոգացեալ: Եւ ետ զՍ. Աւետա-

1. Այսպէս գեղեցիկ շարադրողն՝ հաւանօրէն գեղեցիկ տառերով այլ գրած է այս պատուական Աւետարանը: Կըրնայի՞նք երազել թէ ինքն իսկ ըլլար հաչակաւոր հեղինակն Արուեստի գրութեան, որ ըստ ոմանց էր այս ԺԲ դարում. Սրուանձտեան վարդապետն ծանօթութիւն չէ գրած Աւետարանիս գրին կամ զարդուց և թղթին վրայօք. այլ ուրիշ հետագրգռելի յիշատակ մի. գրոց վերջին երեսին վրայ նկարուած է, կ՛ըսէ, Կատայն իր պատանաց մէջ, քով այլ իր նորածին խեղեփքն (երկուորեակք), և վրան հին տառերով գրուած քանի մի տող. զոր օրինակեմք յետ այս երկար Յիշատակարանիս:

2. Գուցէ ծանօթ ըլլայ հիմայ այս տեղս կամ գեղս. զի գրոցս Թուականէն քառասուն տարի մի յետոյ յիշուի Միջնաղբերցի Յովհաննէս քահանայ մի Տարօնոյ Ղազարու վանաց մօտերում:

րանս ի Ս. Փրկիչն, յորում է գերեզման դստեր իւրոյ, ի յիշատակ նորա և պայծառութիւն տօնից տէրունականաց, և ի զուարճութիւն մանկանց եկեղեցւոյ, ընթեռնլով յաւուրս տօնից և զատկաց և ի ժամ պատարագելոյ մեղսաքաւիչ և կենարար մարմնոյ և արեան Քրիստոսի:

Արդ, ո՛վ դասք սրբոց, պարք երկնագումարք, հրեշտակք բանաւորք, տաճարք Երրորդութեան, որդիք վերին Սիոնի. աղաչեմ զձեզ Ս. Աւետարանաւս, զոր յորժամ ընթեռնուք զՍուրբ Աւետարանս և լուսաւորիք, յիշեսջիք ի մաքրափայլ աղօթս ձեր, զաստուածասէր թագուհին զԿատայն, և զերանելի եղբայր իւր Զորտուանէլն, և զմայր իւր և զծնողս նորա. զի աղօթիւք ձերով և աւետարանիս շնորհիւ՝ յորժամ գայցէ Տէր փառօք Հօր յահագին աւուրն և ամենայն սուրբք ընդ նմա, պսակել և փառաւորել զսուրբս, յայնժամ յանուանէ կոչեսցէ զնոսա, թէ, «Եկայք օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք պատրաստեալ ձեզ զարքայութիւնն». և ընդ աջակողմեանսն դասեսցէ ընդ սուրբս իւր ի հայրենի փառսն, յանեզրական ուրախութիւնսն: Եւ նմա փառք յաւիտեանս ամէն:

[1] Ծրագրութիւն պատկերիս այս է յանուն Կատային դստեր Վիգենայ, որ ի ծնունդն վախճանեցաւ ի տիս մանկութեան, և եթող սուգ անհնարին մօր իւրում. որում ողորմեսցի Տէր յիւրում գալստեանն. ամէն:

1. Այս է նախընթաց ծանօթութեան մէջ յիշեալ պատկերին յիշատակարանն:

# ՄՂԴ

## ԶՈՐՏՈՒԱՆԷԼ
## ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԻՇԽԱՆ ՏԱՐՕՆՈՑ[1]

Այս մեր բարձր հրամանաց է գիր և մեծի տէրութեան իշխանի Տարօնոյ և ամենայն Հայոց. Զորտուանէլի՝ որդւոյ Տաճատայ քաջի Մամիկոնոյ. Փանգի ես Զորտուանէլ բազում աւուրց լեալ տիրեալ հայրենի աշխարհիս մերում Տարօնոյ և այլ բազում աշխարհաց, զօրաւիգն ունելով զՔրիստոս և զսուրբ խաչն կենարար. և հրամանաւ ինքնակալացն Յունաց՝ ոչ զանգիտեցի ի սպառնալեաց և յարշաւանաց ազգին Իսմայելացւոց, որք յայսմ ժամանակի մարտեալ կռուին ընդ սուրբ եկեղեցիսն Աստուծոյ, և ծարաւին հեղման արեան որդւոց սուրբ աւազանին. և մեր ապաւինեալ վերին օգնականութեան, կացեալ արիաբար ընդդէմ բազմահնար և չարաչար մարտի նոցա՝ զամենայն աւուրս կենաց իմոց մինչեւ յետին օր ծերութեանս

1. Տարօնոյ Հռչակաւոր Առաքելոց վանաց մեծ ճառընտիր գրոց մէջ անցուցած պահուի՝ այս պարգեւագիրս Զորտուանէլի. թէ որքան նշանաւոր պարգեւագրի կամ կտակի օրինակ է այս, ընթերցողք ինքնին գուշակեն։ Ժամանակն այլ կ'իմացընէ նոյն ճառընտրի մէջ սա համառօտ գրուածս. «Ի թուին
» ՇԾԳ (553 = 1104) ծորտուանել Մամիկոնեան որդի
» Տաճատայ Մամիկոնենի, իշխան գաւառին Տարօնոյ
» բազում աշխատութեամբ զաւուրս բազումս պարա-
» պեալ, յաջողութեամբ Աստուծոյ ի գլուխ եհան »։
Սակայն քննելի է այս յիշատակս, զոր Արեւելք լրագիրն իր 1114 թերթին մէջ հրատարակած է, միայն թէ այդ մեծ գիրքն ապրած ըլլայ այս վերջի տարիներուս այրեցաւերութենէն, և վախնալու է կորուստն, ըստ գրութեան Անահիտ ամսագրի, Ա, 66։

[illegible] հաղորդութիւն իմ ընդ նոսա. և զա-
[illegible] որ ընդ մեր ձեռամբ էր՝ ի խա-
[illegible] պաշտել: Ապա զմտաւ ածի զոր մա-
[illegible] և գրեալն ես իմ յաշխարհէս. գնացի
[illegible] Առաքելոյն Ղազարու վանաց՝ առ
[illegible] և մեծ հռետորն Հայոց Պօղոս, խնդրեցի
[illegible] ի դուռն սուրբ ուխտին. խոստո-
վանելով նմա զչարաչար յանցանս իմ, աղերսել ի
[illegible] շնորհել ինձ թողութիւն և լուծումն ի կա-
պանաց մեղաց: Իսկ նա որպէս զհայր գթած դու-
[illegible] զիս և մխիթարեաց զվշտացեալ հոգիս իմ՝
կանգնելով զիս վերստին ի գլորմանէ, և շնորհեաց
ինձ զհայցուածս իմ զոր խնդրեցի, տեղի գերեզ-
մանի մարմնոյս իմոյ. զի յետ ելից իմոց յաշխար-
հէս՝ անդ հանգուցից զծանրացեալ մեղօք մարմինս
իմ, ի դուռն Սուրբ Առաքելոցն. վասն որոյ և ես
Զարտուանէլ զուարթ դիմօք և յօժարական կամօք
և սրտի մտօք աւանդեցի և ետու զսա ....[1].. դաս-
տակերտս զհայրենի ..... մն և բազում.... (չա)
զացումն և բուրաստանօք և այգեստանօք. այս սի-
նօռովս[2]. Արեւելեանն՝ ընդ Մղաւնք սպիտաքարերն.
և իջանէ ի Տանձի-ձորն՝ կարմիր փոսովն ի վայր,
մինչ ի յԱտամն, և երթայ յԱտամն ուր խաչն է
Դուլթին, և անտի ի Սեղնքարն, և անտի յՈսկե-
ծամին[3] կոչեն խաչն, և երթայ ի Սնձնին՝[4] վերեւ
Նորշինի գերեզմանացն. և արեւմտեանն Զորն Աղ-
ղաց, և հարաւայինն՝ խաչն՝ Գոմորին[5] դաշտն. և

1. Աւրուած մաշած են կիտանիշ տեղիքն:
2. Զորս կողմի սահմանները, որոց մէջ կան քանի մի ծանօթ տեղուանք բայց ոչ ամենքն, զոր մեզ դժուար է ճանչնալ և ճանչցընել:
3. Ոսկեծամն թուի տիկին մի, որ՝ կամ որոյ համար խաչ մի կանգներ է:
4. Պտղոյ ծառեր. թուրք. իւվէզ. փռ. Sorbe.
5. Թուի Գոմ գիւղի տիրոջ:

ի ձորի անդ զՋերմաջուրն ջաղացքն երկուակնեան[1]. Միացական հայրենիս[2] Սուրբ Առաքելոցն Ղազարու վանիցն, ի յիշատակ ինձ և ծնողաց իմոց, Տաճատա Մամիկոնոյ և մօրն իմոյ Զարմանդխտոյ, և նախնեաց իմոց քաջ արանցն Վեսեռա և Մեհերա, որք յառաջ քան զմեզ տիրէին այսմ աշխարհիս։ Քանզի այս Բերդակ գեղս տեղիք էին զուարճանալոյ բուսօք և մրգօք անուշիւք՝ նախնեաց իմոց իշխանաց Մամիկոնէից, և մայրն իմ Զարմանդուխտ ի նոյն գեղի էր երկնել զիս յաշխարհ, և էր տեղիք ծննդեան իմոյ. Թէպէտ և բազում տեղեաց ունէաք զիշխանութիւն, այլ սեպհական դայս համարեցաք զտեղի ծննդեան իմոյ՝ տալ գին մեղաց իմոց, և հող փոխանակ հողոյ ծածկել զհողային մարմինս իմ. զի որով ծնայ ի յայս գեղ Բերդակ մարմնով մահկանացու, դարձեալ լիցի սա ի պատճառ վերստին ծննդեան իմում ի կեանս անմահականս. վասն այնր՝ սեպհականեցի զսա ընդ իմ՝ լինել կենդանի ծառայ և սատարիչ սուրբ տեղեացն, մինչև յաւիտեան, սակս Թաւշակի միանձնաւորաց և այլոց երթևեկաց։ Զսա եդի ինձ վարշամակ սեղանոյ, ջնջել սովաւ զզագիր Թարախ մեղաց իմոց, շնորհօք յուսոյն որ ի Քրիստոս։ Նոյնպէս և յարդար ստացուածոց՝ լուծս վեցից՝ որ են եզինս երկոտասանս, և երիս կիսագրաստս[3], և մաքիս ԵՃԾ[4] ի նոյն հանգստարան[5] Սրբոցն Առաքելոցն, ի սպաս պիտոյից հիւրատանն։

Դարձեալ աղաչեմ զամենեսեան ես Զօրտուանէլ

1. Երկու բերան կամ ծորակ ունեցող աղբիւր ջրոյ կամ ջաղացք։

2. Յիշեալ տեղեաց բովանդակ միջոցը կու տայ Առաքելոց վանաց, որ միշտ Միայ անուր։

3. Ջորիներ։

4. Հինգ հարիւր գառն կամ ոչխար։

5. Հանգստարան գրուած էր։

իշխան տանս Տարաւնոյ և ամենայն Հայոց[1], որք տիրէք յաթոռ և յիշխանութիւնս մեր՝ թէ ի մերոց զարմից էք և թէ յայլոց, թէ քրիստոնեայ էք ազգաւ և թէ այլազգիք, նոյն պաշտօնեայք էք Տեառն Աստուծոյ մեծին. Որք կարդայք և լսէք և զգիրս զայս տեսանէք, մի՛ վարկպարազի ընդ ոտն հարկանէք և ընդ վայր համարիք և ունայն զնշանագիրս և զաղաչանս՝ որք վասն այս գեղիս որ ի գրիս է նուիրած Աստուծոյ և Սուրբ Առաքելոյն, ի գինս մեղաց իմոց. զի ի բազում ստացուածոց մերոց զոր ունէաք զանձս բազումս և այլ քաղաքս, գեղք և ագարակս և բազում մեծութիւնս, զարդս և հանդերձս պատուականս, զայս գեղս միայն իմ առեալ ինձ յոյս կենաց աշխարհիս՝ ի թաւշակ հոգւոյ իմոյ այնմ աշխարհին, և զայլ բազում մեծութիւնս և զիշխանութիւնս թողեալ եմ իմոցդ և այլոց, որք տիրէք յաթոռ մեր և ի տեղի։ Եւ ես յաշխարհէս դատարկ և մերկ և ունայն կու գնամ. զի որք կարդան և լսեն ի սմանէ՝ ընդունին և հաստատ պահեն զաւանդութիւնս ի մէնջ, նոքա հաստատին ի վերստին յոյս անմահին Աստուծոյ, ժառանգեն զկեանս անվախճան, վայելելով զանանց բարութիւն արքայութեան, զարդարեալ պսակին ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, ընդ սրբոց առաքելոցն և մարգարէիցն։ Ապա եթէ ոք յիշխանաց և ի բռնակալաց ոք իցէ և տիրեսցէ այսմ աշխարհիս մերում, և կարդասցէ զվերոյիշեալս ի մէնջ և չընդունին և ընդ վայր հարկանեն զգիր աղաչանաց մերոց, և ջանան կտրել զսա կամ ի բաց հանել զգեղս զայս ի Սուրբ Առաքելոցն՝ զոր ոչ հրամայեցաք, կտրէ զնոսա Աստուած ընդ մէջ, և մասն նոցա ընդ անհաւատսն դիցէ, ընդ ուրացողսն և ընդ կողոպտիչս Սրբոց. և յահագին աւուր դատաստանին ընդ ամենայն մեղաց տոհմի իմում՝

1. Ամենայն Հայոց՝ շատ է. բայց եթէ այն կողմի Յունաց կայսերաց հպատակ Հայքն իմացուին։

ինքեանք տայցեն պատասխանի, և մերկ թափուր մեան յիւրեանց բարի գործոցն, վճարեն յանշէջ հուրն և ի տարտարոս սառնամանիս, ուր լալ աչաց է և կրճել ատամանց:

Բայց աղաչեմ զամենեսեան՝ չկողոպտել զմեր սակաւ սատարս՝ (զոր) ի մեր բազում մեծութենէս բարձաք, և երկնաւորին նուիրեցաք ի թօշակս սո-վացեալ ոգւոց մերոց. և մի զայս փոքրիկ նուէրս շարակնեալ յափշտակէք, զի մի և դուք ի յերկնա-ւորին փառացն զրկեսջիք և դատապարտեսջիք ի Սուրբ Առաքելոցն. այլ լինել սմա զօրավիգն և իրաւացի՝ զի հաստատ կացցէ ամենեւին յաւէտ: Դարձեալ եթէ ոք առաջնորդ եպիսկոպոս լիցի ուխ-տին կամ թէ հայր վանաց կամ ձեռնաւոր կրօ-նաւոր, և յաղագս իրի պատճառանաց[1] վերայգրեալ գեղս ծախէ կամ գրաւէ, կամ յայգեաց կամ յան-դաստանաց սորա կամ զջաղացքն երկու — ակնեան ծախեն կամ գրաւ դիցեն, լուծցին և նոքա ի ժա-ռանգութենէ կենացն յաւիտենից. և մի լիցի նոցա մասն բարեաց ընդ Սրբոց Առաքելոցն. այլ մնա-(ցեն).....[2]

---

## ՄՂԵ

### ԿԵՉԱՌՈՒԱՑ ՎԱՆՔ· ՊԵՏՐՈՍ ԱՌԱՋՆՈՐԴ[3]

Իղձք բաղձալեաց և տենչումն փափագանաց սի-րոյ՝ ընաւորեալ են զցանկալիսն իւրեանց մոռա-ցունս առնել բնութեան, և անհաւանելեաց ձեռն արկանել՝ որ անդր քան զզօրութիւնս իւրեանց,

1. Պատճառանաց էր գրուած:
2. Պակսի վերջն որով և գրութեան թուականն:
3. Յիշատակարան ընդօրինակողի Կունդ Սարգսի Մեկնութեանցն. Տես Յօդուած 286:

իբր զլերինս հեռաւմր բերել և կամ յոգս և յերկինս համապարհ տանել․ սակայն աշխարհն ի ցանկութեանց՝ նկրտել չանսան։ Այսպէս ես թշուառ Աստուածատուր լոկ անուամբ կրօնաւոր և անպիտան աբեղայ, ցանկացեալ սուրբ և երկնատեղեաց տարս, զոր ըստ օրինի երփնազան և պայծառացուցիչ ծաղկանց՝ ի միասին հաւաքեալ է աշխատասէր և արի մշակին Տեառն Հմաստէր և հանճարեղ իմաստուք Հօգւոյն՝ Սարգիս կոչեցեալ և կրօնք, ժողովեալ զսոսա ի միասին, զերկոցունց զլխոց աւետարեր բանից Տեառն զմեկնութիւնս, ի բազում որոց զխոսեցեալսն ի մի վայր գումարեալ, զՂուկասուն և զՅովհաննուն։ Որում և ես տառապեալս Աստուածատուր՝ ցանկայի և ոչ զօրէի, բայց սակայն պարտեալ ի փափագանացս՝ սկիզբն արարի․ զոր և օժտեալ ինձ և կարեկցեալ որդի իմ անդրանիկ ըստ հոգւոյս՝ Աղդէ, որ և նա տակաւին տկար գոլով մարմնով և անհմուտ գրչութեան արհեստի, սակայն անտես արարեալ զամենայն դանդաղանս ակարութեան՝ ըստ սիրոյ սրինի, սկիզբն արար․ իսկ ամենատես պարգեւաձիր Սուրբ Հոգին՝ որ մերձ է առ կարդացողս իւր, օգնական եղեալ և զօրութիւն պարգեւեալ, աւարտեցաք բազում թախանձանօք և տաժանմամբ։ Եւ արդ, գրեցաւ ի վանս հռչակաւոր և հրաշազան հանդիստարանիս Կեչառուց[1], ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորչիս Գրիգորի, որ և պայծառապէս նորոգեալ ի սկզբանն՝ և դարձեալ խրթնացեալ[2] ըստ յաճախելոյ մեղաց քրիստոնէից, զոր նորոգեաց սուրբ հայրն Պետրոս

1. Այրարատայ Նիգ կոչուած գաւառի գիւղ որ Կեչրոր այլ կ'ըսուի՝ և վանք մի, ուսկից էր և Խաչատուր վարդապետ Խորհուրդ խորին երգողն։

2. Այսինքն, վանքն երբեմն շատ չէն և պայծառ է եղեր, յետոյ մթընցեր է, ապա նորէն պայծառացուցեր է Պետրոս առաջնորդն, ԺԲ դարու կիսէն վերջ։

հանդերձ հարազատաւն իւրով Տեառն Յովսիփաւ[1]: Բայց զերանաւէտ անձին հօր Պետրոսի օրինակ բարեաց եղեալ՝ ո՞վ ոք բաւականասցի պատմել զառաքինութիւնս. զի որպէս ճշմարիտ է ասել, վայել է իսկ խնամոցն Աստուծոյ այսպիսում քաւարանի[2] լինել այսպիսի նորոգիչ. զի բնաւ զպատկեր կենաց առաքինութեան, մանաւանդ զհեզութեան և զխոնարհութեան, հանդերձ բնաւ առաքինութեանցն անդամոք յօրինեալ՝ արար զմարդն Աստուծոյ կատարեալ տիպ մաքրութեան և պատկեր առաքինութեան, ինքն առաջին առնող բարեացն մաքրափայլ բազմալոյս. զի որ զկնի նորա էառ՝ ի նա ամենեքեան նկրտէաք. և թէպէտ և անհասանելի էր այրն՝ սակայն պատճառ բարեաց հանդիսաւոր շընորհի սուրբ եղբայրանոցիս լինէր. և այնքան՝ մինչ զի զամենեսեան զգեստաւորեալ կրկին պատմուճանօք, և ինքն զժամանակս ձմերայնոյ միով ասուեաւ՝ դաժան և դառն սառամանեաց տեւէր. և ի թախանձել եղբարցն՝ հագիւ հնով յետնոյն[3] թէ յանձն առնոյր շատանալ: Իսկ վասն ակնառութեան արեան ընտանութեան և կամ կողմնաւոր սիրոյ՝ այսպիսի էր որպէս Տէրն վկայէր, թէ իմ եղբարք և մարք՝ սոքա են որ զբանն Աստուծոյ լսեն և առնեն: Իսկ վասն արծաթսիրութեան՝ որպէս կամակ և ախորժ է գայռ՝[4] փափկասուն արանց, այսպէս գրեսջիր և սորայս բարեսնունդ հոգի առ երկրաւորս ամենայն. իսկ աղօթիւք՝ անշէջ ջահից նմանեալ էր: Իսկ օտարսիրութեամբ և հիւրընկալութեամբ՝ յաւէտ գերազանց էր, եթէ ոչ յանդգնու-

1. Սա եպիսկոպոս է, իսկ եղբայրն Պետրոս թուի սոսկ վարդապետ, բայց ըստ գովութեանն՝ արժանաւոր Վեցիկ վարդապետի մահարձանին՝ որ հօն ի Կեչառուս:

2. Եկեղեցի նշանակէ:

3. Ամենէն նուաստ եղբօր հինկեկ զգեստը հագնէր:

4. Թուի քայքայմանեակ, վզնոց թանկագին:

թիւն է տանել՝ ըստ Աբրահամու օրինացն. ըստ Յոբայն՝ հայր որբոց և հանգուցիչ պանդխտացելոց. ըստ Մովսէսի՝ հեզ, ըստ Դաւթի՝ ողորմած, ըստ Սողոմոնի՝ հանճարեղ քան զամենայն նմանիսն. ըստ Երեմիայի՝ գթած և ամենեցուն փարելի, և ըստ Պաւղոսի՝ ընդ ամենայնի ամենայն, մինչեւ զամենեսին շահել. ըստ Յիսուսի՝ վասն ամենեցուն չարչարեալ և բնաւից հանգուցիչ: Եւ այս փոքր ի շատէ գրեցաւ. զի բազումն ի սակաւուցն ճանաչի: Եւ արդ, զի յիշատակ արդարոցն օրհնութեամբ լի է՝ ըստ իմաստնոյն, զի որք ընթեռնուք և կամ օգտիք և ընդօրինակէք, նախ զհայր Պետրոս բարի յապահով մեր յիշեսջիք յաղօթս, և ապա զԱնդէ[1] գծող և զձեռաստուն մանուկ մեր, և ապա զթշուառ Աստուածատուր՝ պատրաստիչ նիւթոց, և զԱռաքեալ համբակ քահանայ, զի յոլովս աշխատեցաւ ի սպասաւորութեան գրոցս: Բայց գրեցաւ ի Թուականիս Հայոց ՌՆԳ:

1. Թուի թէ պէտք էր ըսել զԱդդէ:

# ՄՂՁ

## ՄԽԻԹԱՐ ՀԵՐԱՑԻ ԲԺԻՇԿ[1]

*Բժշկարանն Մխիթարայ իմաստունն բժշկի որ ի Հեր քաղաքէ ծննդեանն, եւ վարժեալ իմաստութեամբն Հելլենացւոց, Հայոց, Արաբացւոց եւ Պարսից. օգնականութեամբ Աստուծոյ[2].*

Ես Մխիթար Հերացի տրուպս ի բժշկաց, որ ի մանկութենէ սիրող եղէ իմաստութեան և բժշկական արուեստից, և վարժեցայ ի դպրութիւն Արաբացւոց, Պարսից և Հելլենացւոց, տեսի յընթերցումն որ առ նոսա գրոցն, զի ունէին զարուեստ բժշկութեան լի և կատարելութեամբն առաջին իմաստնոցն. այսինքն, զՆախագիտութիւն, որ է իմաստ վարդապետութեան բժշկական արուեստից. և ի Հայք բնաւ ոչ գտի զվարդապետութիւն և զիմաստ Նախագիտութեան, այլ զՍտածումն միայն. և այս ոչ ըստ կարգի և լի, այլ համառօտ և ծաղկաքաղ աստի և անտի հաւաքեալ, յայլեւայլ գրչաց և մտաց այլայլած: Կամեցայ ըստ իմոյ կարողութեանս առնել զգիրքս զայս՝ միայն վասն երեք ազգ Ջերմանցն[3], համառօտ Նախագիտութեամբն և ըստածմամբն: Զբովանդակն որ վասն արուեստի բժշկութեանս իմաստութիւն՝ թողի, և զերեք ազգ

1. Ազգային ծանօթ գրող բժշկաց առաջինն է սա, ժամանակակից Ներս. Շնորհալւոյ. հայրենիքն Հեր՝ շատ հեղ յիշուած Պարսկահայոց Խոյ քաղաքն է։
2. Մխիթարայ գրոց վերնագիրն է այս։
3. Ջերմանց վրայ գրածէն զատ ունի ուրիշ գրուածք ևս՝ զուցէ յետոյ գրած, որք դեռ չեն տպագրուած։

իմ, ոչ եղեւ խաղաղութիւն իմ ընդ նոսա. և զամենայն աշխարհն որ ընդ մեր ձեռամբ էր՝ ի խաղաղութեան պահել: Ապա զմտաւ ածի զոր մահուան իմոյ և զյետին ելս իմ յաշխարհէս. գնացի ի սուրբ ուխտ Առաքելոցն Ղազարու վանաց՝ առ ծերունի և մեծ հռետորն Հայոց Պօղոս, խնդրեցի ինձ գերեզման ի դուռն սուրբ ուխտին. խոստովանելով նմա զչարաչար յանցանս իմ, աղերսել ի նմանէ շնորհել ինձ թողութիւն և լուծումն ի կապանաց մեղաց: Իսկ նա որպէս զհայր գթած գորովեաց զիս և մխիթարեաց զվշտացեալ հոգիս իմ՝ կանգնելով զիս վերստին ի գլորմանէ, և շնորհեաց ինձ զհայցուածս իմ զոր խնդրեցի, տեղի գերեզմանի մարմնոյս իմոյ. զի յետ ելից իմոց յաշխարհէս՝ անդ հանգուցից զծանրացեալ մեղօք մարմինս իմ, ի դուռն Սուրբ Առաքելոցն. վասն որոյ և ես Զօրտուանէլ զուարթ դիմօք և յօժարական կամօք և սրտի մտօք աւանդեցի և ետու զաա....[1].. դաստակերտս զհայրենի..... մն և բազում.... (ջա) ղացմն և բուրաստանօք և այգեստանօք. այս սինաւորս[2]. Արեւելեանն՝ ընդ Մղանեք սպիտքարերն. և իջանէ ի Տանձի-ձորն՝ կարմիր փոսովն ի վայր, մինչ ի յԱտամն, և երթայ յԱտամն ուր խաչն է Դաւթին, և անտի ի Սեղնքարն, և անտի յՈսկեծաղին[3] կոչեն խաչն, և երթայ ի Սնձնին՝[4] վերեւ Նորշինի գերեզմանացն. և արեւմտեանն Զորն Աւղաց, և հարաւայինն՝ խաչն՝ Գոմորին[5] դաշտն. և

1. Աւրուած մաշած են կիտանիշ տեղիքն:

2. Զորս կողմի սահմաններն, որոց մէջ կան քանի մի ծանօթ տեղուանք բայց ոչ ամենքն, զոր մեզ դժուար է ճանչնալ և ճանչցընել:

3. Ոսկեծաղն թուի տիկին մի, որ՝ կամ որոյ համար խաչ մի կանգներ է:

4. Պտղոյ ծառեր. թուրք. իւվէզ. փռ. Sorbe.

5. Թուի Գոմ գիւղի տիրոջ:

ի ձորի անդ զՋերմաջուրն ջաղացքն երկուակնեան[1]. Միացական հայրենիս[2] Սուրբ Առաքելոցն Ղազարու վանիցն, ի յիշատակ ինձ և ծնողաց իմոց, Տաճատս Մամիկոնոյ և մօրն իմոյ Զարմանդխտոյ, և նախնեաց իմոց քաջ արանցն Վասակա և Մեհերա, որք յառաջ քան զմեզ տիրէին այսմ աշխարհիս։ Քանզի այս Բերդակ գեղս տեղիք էին զուարճանալոյ բուսօք և մրգօք անուշիւք՝ նախնեաց իմոց իշխանաց Մամիկոնէից. և մայրն իմ Զարմանդուխտ ի նոյն գեղի էր երկնել զիս յաշխարհ, և էր տեղիք ծննդեան իմոյ. Թէպէտ և բազում տեղեաց ունէաք զիշխանութիւն, այլ սեպհական զայս համարեցաք զտեղի ծննդեան իմոյ՝ տալ գին մեղաց իմոց, և հող փոխանակ հողոյ ծածկել զհողային մարմինս իմ. զի որով ծնայ ի յայս գեղ Բերդակ մարմնով մահկանացու, դարձեալ լիցի սա ի պատճառ վերստին ծննդեան իմում ի կեանս անմահականս. վասն այնր՝ սեպհականեցի զսա ընդ իմ՝ լինել կենդանի ծառայ և սատարիչ սուրբ տեղեացն, մինչեւ յաւիտեան, սակս թաւշակի միանձնաւորաց և այլոց երթեւեկաց։ Զսա եդի ինձ վարշամակ սեղանոյ, ջնջել սովաւ զզազիր թարախ մեղաց իմոց, շնորհօք յուսոյն որ ի Քրիստոս։ Նոյնպէս և յարդար ստացուածոց՝ լուծս վեցից՝ որ են եզինս երկոտասանս, և երիս կիսագրաստս[3], և մաքիս ԵՃԾ[4] ի նոյն հանգստարան[5] Սրբոցն Առաքելոցն, ի սպաս պիտոյից հիւրատանն։

Դարձեալ ազաչեմ զամենեսեան ես Զօրտուանէլ

1. Երկու բերան կամ ծորակ ունեցող աղբիւր ջրոյ կամ ջաղացք։

2. Յիշեալ տեղեաց բովանդակ միջոցը կու տայ Առաքելոց վանաց, որ միշտ Մշայ անուր։

3. Ջորիներ։

4. Հինգ հարիւր գառն կամ ոչխար։

5. Հանգստարան գրուած էր։

իշխան տանս Տարաւնոյ և ամենայն Հայոց[1], որք տիրէք յաթոռ և յիշխանութիւնս մեր՝ թէ ի մերոց զարմից էք և թէ յայլոց, թէ քրիստոնեայ էք ազգաւ և թէ այլազգիք, նոյն պաշտօնեայք էք Տեառն Աստուծոյ մեծին. Որք կարդայք և լսէք և զգիրս զայս տեսանէք, մի վարկպարազի ընդ ոտն հարկանէք և ընդ վայր համարիք և ունայն զնշանագիրս և զաղաչանս՝ որք վասն այս գեղիս որ ի գրիս է նուիրած Աստուծոյ և Սուրբ Առաքելոցն, ի գինս մեղաց իմոց. զի ի բազում ստացուածոց մերոց զոր ունէաք զանձս բազումս և այլ քաղաքս, գեղք և ագարակս և բազում մեծութիւնս, զարդս և հանդերձս պատուականս, զայս գեղս միայն իմ առեալ ինձ յոյս կենաց աշխարհիս՝ ի թաւշակ հոգւոյ իմոյ այնմ աշխարհին, և զայլ բազում մեծութիւնս և զիշխանութիւնս թողեալ եմ իմոցդ և այլոց, որք տիրէք յաթոռ մեր և ի տեղի: Եւ ես յաշխարհէս դատարկ և մերկ և ունայն կու գնամ. զի որք կարդան և լսեն ի սմանէ՝ ընդունին և հաստատ պահեն զաւանդութիւնս ի մէնջ, նոքա հաստատին ի վերստին յոյս անմահին Աստուծոյ, ժառանգեն զկեանս անվախճան, վայելելով զանանց բարութիւն արքայութեան, զարդարեալ պսակին ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, ընդ սրբոց առաքելոցն և մարգարէիցն: Ապա եթէ ոք յիշխանաց և ի բռնակալաց ոք իցէ և տիրեսցէ այսմ աշխարհիս մերում, և կարդասցէ զվերոյիշեալս ի մէնջ և չընդունին և ընդ վայր հարկանեն զգիր աղաչանաց մերոց, և ջանան կտրել զսա կամ ի բաց հանել զգեղս զայս ի Սուրբ Առաքելոցն՝ զոր ոչ հրամայեցաք, կտրէ զնոսա Աստուած ընդ մէջ, և մասն նոցա ընդ անհաւատսն դիցէ, ընդ ուրացողսն և ընդ կողոպտիչս Սրբոց. և յահագին աւուր դատաստանին ընդ ամենայն մեղաց տոհմի իմում՝

1. Ամենայն Հայոց՝ շատ է. բայց եթէ այն կողմի Յունաց կայսերաց հպատակ Հայքն իմացուին:

ինքեանք տացեն պատասխանի, և մերկ թափուր մնան յիւրեանց բարի գործոցն, վճարեն յանշէջ հուրն և ի տարտարոս սառնամանիս, ուր լալ աչաց է և կրճել ատամանց։

Բայց աղաչեմ զամենեսեան՝ չկողոպտել զմեր սակաւ սատարս՝ (զոր) ի մեր բազում մեծութենէս բարձաք, և երկնաւորին նուիրեցաք ի թօշակս առ-վացեալ ոգւոց մերոց. և մի զայս փոքրիկ նուէրս չարակնեալ յափշտակէք, զի մի և դուք ի յերկնաւորին փառացն զրկեսջիք և դատապարտեսջիք ի Սուրբ Առաքելոցն. այլ լինել սմա զօրավիգն և իրաւացի՝ զի հաստատ կացցէ ամենեւին յաւէտ։ Դարձեալ եթէ ոք առաջնորդ եպիսկոպոս լիցի ուխտին կամ թէ հայր վանաց կամ ձեռնաւոր կրօնաւոր, և յաղագս իրի պատճառանաց[1] վերայգրեալ գեղս ծախէ կամ գրաւէ, կամ յայգեաց կամ յանդաստանաց սորա կամ զջաղացքն երկու — ակնեան ծախեն կամ գրաւ դիցեն, լուծցին և նոքա ի ժառանգութենէ կենացն յաւիտենից. և մի լիցի նոցա մասն բարեաց ընդ Սրբոց Առաքելոցն. այլ մնաս-(ցեն).....[2]

---

## ՄՂԵ

### ԿԵՉԱՌՈՒԱՑ ՎԱՆՔ. ՊԵՏՐՈՍ ԱՌԱՋՆՈՐԴ[3]

Իղձք բաղձալեաց և տենչումն փափագանաց սիրոյ՝ բնաւորեալ են զցանկալիսն իւրեանց մոռացունս առնել բնութեան, և անհաւանելեաց ձեռն արկանել՝ որ անդր քան զզօրութիւնս իւրեանց,

1. Պատճառնաց էր գրուած։
2. Պակսի վերջն որով և գրութեան թուականն։
3. Յիշատակարան ընդօրինակողի կոնդ Սարգսի Մեկնութեանցն. Տես Ցօղուած 286։

իւր զլերինս ձեռամբ բերել և կամ յօգս և յերկինս համապարհ առնել. առիկայն աշխարհն ի ցանկութեանց՝ նկրտիլ ջանան: Այսպէս ես մշտաստու Աստուածատուր լոկ անուամբ կրօնաւոր և անպիտան աբեղայ, ցանկացեալ սուրբ և երկնատեսակաց տառիս, զոր ըստ օրինի երփնազան և պայծառացուցիչ ծաղկանց՝ ի միասին համաքեալ է աշխատասէր և արի մշակին Տեառն հմտասէր և համեմաբեղ իմաստութք Հօգւոյն՝ Սարգիս կոչեցեալ և կրտսեր, ժողովեալ զսոսա ի միասին, զերկոցունց զլխոց աւետարեր բանից Տեառն զմեկնութիւնս, ի բազում որոց զխօսեցեալսն ի մի վայր գումարեալ, զՂուկասուն և զՅովհաննուն: Որում և ես ստացեալս Աստուածատուր՝ ցանկայի և ոչ զօրէի, բայց սակայն պարտեալ ի փափագանացս՝ սկիզբն արարի. զոր և օժանդեալ ինձ և կարեկցեալ որդի իմ անդրանիկ ըստ հոգւոյս՝ Աղէք, որ և նա տակաւին տկար գոլով մարմնով և անհմուտ գրչութեան արհեստի, սակայն անսուտ արարեալ զամենայն դանդաղանս սկարութեան՝ ըստ սիրոյ որինի, սկիզբն արար. իսկ ամենատես պարգեւաձիր Սուրբ Հոգին՝ որ մերձ է առ կարդացողս իւր, օգնական եղեալ և զօրութիւն պարգեւեալ, աւարտեցաւ բազում թախանձանօք և տաժանմամբ: Եւ արդ, գրեցաւ ի վանս հռչակաւոր և հրաշազան հանդիսարանիս Նեչաուուս[1], ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորչիս Գրիգորի, որ և պայծառապէս ճոխացեալ ի սկզբանն՝ և դարձեալ խրթնացեալ[2] ըստ յաճախելոյ մեղաց քրիստոնէից, զոր նորոգեաց սուրբ հայրն Պետրոս

1. Այլարատայ Նիգ կոչուած գաւառի գիւղ որ Կեչրոր այլ կ'ըսուի՝ և վանք մի, ուսկից էր և Խաչատուր վարդապետ Խորհուրդ խորին երգողն:

2. Այսինքն, վանքն երբեմն շատ չէն և պայծառ է եղեր, յետոյ մթընցեր է, ապա նորէն պայծառացուցեր է Պետրոս առաջնորդն, ԺԲ դարու կիսէն վերջ:

հանդերձ հարազատաւն իւրով Տեառն Յովսեփաւ[1]:
Բայց զերանաւէտ անձին հօր Պետրոսի օրինակ
բարեաց եղեալ՝ ո՛վ ոք բաւականասցի պատմել զա-
ռաքինութիւնս. զի որպէս ճշմարիտ է ասել, վայել
է իսկ խնամոցն Աստուծոյ այսպիսում քաւարանի[2]
լինել այսպիսի նորոգիչ. զի բնաւ զպատկեր կենաց
առաքինութեան, մանաւանդ զհեզութեան և զխո-
նարհութեան, հանդերձ բնաւ առաքինութեանցն
անդամօք յօրինեալ՝ արար զմարդն Աստուծոյ կա-
տարեալ տիպ մաքրութեան և պատկեր առաքինու-
թեան. ինքն առաջին առնող բարեացն մաքրափայլ
բազմալոյս. զի որ զկնի նորա էաք՝ ի նա ամենե-
քեան նկրտէաք. և թէպէտ և անհասանելի էր
այրն՝ սակայն պատճառ բարեաց հանդիսաւոր շը-
նորհի սուրբ եղբայրանոցիս լինէր. և այնքան՝ մինչ
զի զամենեսեան զգեստաւորեալ կրկին պատմու-
ճանօք, և ինքն զժամանակս ձմերայնոյ միով ա-
սուեաւ՝ դաժան և դառն սառամանեաց տեւէր. և
ի թախանձել եղբարցն՝ հագիւ հնով յետնոյն[3] թէ
յանձն առնոյր շատանալ: Իսկ վասն ակնառութեան
արեան ընտանութեան և կամ կողմնաւոր սիրոյ՝
այսպիսի էր որպէս Տէրն վկայէր, թէ իմ եղբարք
և մարք՝ սոքա են որ զբանն Աստուծոյ լսեն և առ-
նեն: Իսկ վասն արծաթսիրութեան՝ որպէս կամակ
և ախորժ է գայռ՝[4] փափկասուն արանց, այսպէս
գրեսջիր և սորայս բարեսնունդ հոգի առ երկրա-
ւորս ամենայն. իսկ աղօթիւք՝ անշէջ ջահից նմա-
նեալ էր: Իսկ օտարսիրութեամբ և հիւրընկալու-
թեամբ՝ յաւէտ գերազանց էր, եթէ ոչ յանդգնու-

1. Սա եպիսկոպոս է, իսկ եղբայրն Պետրոս թուի սոսկ վարդապետ, բայց ըստ գովութեանն՝ արժանաւոր Վեցիկ վարդապետի մահարձանին՝ որ հօն ի Կեչառուս:
2. Եկեղեցի նշանակէ:
3. Ամենէն նուաստ եղբօր հինկեկ զգեստը հագնէր:
4. Թուի քայթամանեակ, վզնոց թանկագին:

Քիւն է ասել՝ ըստ Աբրահամու օրինացն. ըստ Յոբայն՝ հայր որբոց և հանգուցիչ պանդխտացելոց. ըստ Մովսեսի՝ հեզ, ըստ Դաւթի՝ ողորմած, ըստ Սողոմոնի՝ հանճարեղ քան զամենայն նմանիսն. ըստ Երեմիայի՝ գթած և ամենեցուն փարելի, և ըստ Պաւղոսի՝ ընդ ամենայնի ամենայն, մինչեւ զամենեսին շահել. ըստ Յիսուսի՝ վասն ամենեցուն չարչարեալ և բնաւից հանգուցիչ։ Եւ այս փոքր ի շատէ գրեցաւ. զի բազումն ի սակաւուցն ճանաչի։ Եւ արդ, զի յիշատակ արդարոցն օրհնութեամբ լի է՝ ըստ իմաստնոյն, զի որք ընթեռնուք և կամ օգտիք և ընդօրինակէք, նախ զհայր Պետրոս բարի յապահով մեր յիշեսջիք յաղօթս, և ապա զԱնդէ[1] գծող և զձեռասուն մանուկ մեր, և ապա զԹշուառ Աստուածատուր՝ պատրաստիչ նիւթոց, և զԱռաքեալ համբակ քահանայ, զի յոլովս աշխատեցաւ ի սպասաւորութեան գրոցս։ Բայց գրեցաւ ի Թուականիս Հայոց ՌԼԳ։

1. Թուի թէ պէտք էր ըլլալ զԱդդէ։

# ՄՂՁ

## ՄԽԻԹԱՐ ՀԵՐԱՑԻ ԲԺԻՇԿ[1]

*Բժշկարան Մխիթարայ իմաստուն բժշկի որ ի Հեր քաղաքէ ծնընդեամբ, եւ վարժեալ իմաստութեամբն Հելլենացւոց, Հայոց, Արաբացւոց եւ Պարսից. օգնականութեամբ Աստուծոյ[2].*

Ես Մխիթար Հերացի տրուպս ի բժշկաց, որ ի մանկութենէ սիրող եղէ իմաստութեան և բժշկական արուեստից, և վարժեցայ ի դպրութիւն Արաբացւոց, Պարսից և Հելլենացւոց, տեսի յընթերցումն որ առ նոսա գրոցն, զի ունէին զարուեստ բժշկութեան լի և կատարելութեամբն առաջին իմաստնոցն. այսինքն, զնախագիտութիւն, որ է իմաստ վարդապետութեան բժշկական արուեստից. և ի Հայք բնաւ ոչ գտի զվարդապետութիւն և զիմաստ նախագիտութեան, այլ զԱստածումն միայն. և այս ոչ ըստ կարգի և լի, այլ համառօտ և ծաղկաքաղ աստի և անտի հաւաքեալ, յայլեւայլ գրչաց և մտաց այլայլած։ Կամեցայ ըստ իմոյ կարողութեանս առնել զգիրքս զայս՝ միայն վասն երեք ազգ Ջերմանցն[3], համառօտ նախագիտութեամբն և ըստածմամբն։ Զբովանդակն որ վասն արուեստի բժշկութեանս իմաստութիւն՝ թողի, և զերեք ազգ

1. Ազգային ծանօթ գրող բժշկաց առաջիններն է սա, ժամանակակից Ներս. Շնորհալւոյ. հայրենիքն Հեր՝ շատ հեղ յիշուած Պարսկահայոց Խոյ քաղաքն է։
2. Մխիթարայ գրոց վերնագիրն է այս։
3. Ջերմանց վրայ գրածէն զատ ունի ուրիշ գրուածք ալ՝ զուցէ յետոյ գրած, որք դեռ չեն տպագրուած։

ջերմանցս միայն հաւաքեցի և թարգմանեցի ի հայ բառ. պատճառ ունելով այսմ աշխատութեան ըղձէր և գլօժարութիւն սրբոյ և աստուածապատիւ կաթողիկոսին Հայոց Տեառն Գրիգորի՝ որ մակակոչի Տղայ: Սա՝ որ էր առաջնորդ յաթոռ Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին Հայոց, զոր տեսի ամենայնիւ սիրող իմաստութեան և հմուտ, և յաղագս այսորիկ յօժարեցի ի պէտս և ի յօգուտ սորա առնել զգիրքս զայս ի հռոմ և ի յարապիկ և ի պարսիկ գրենաց, ըստ իմոյ կարողութեանս և շնորհի, զոր ետ ինձ Տէր, գիտութեան լեզուաց և գրոց նոցա:

Կարգեցի և շարեցի ըստ չորից նիւթոց կարգի, զնախագիտութիւն և զստածումն նորա կարգի և բժշկութեան, վասն երեք ազգ ջերմերուն միայն… Նմանապէս և մեք շարեցաք և հաստատեցաք ըստ կարգի հին և նոր վարդապետացն, և արարաք ըզգիրքս զայս, և անուանեցաք Ջերմանց Մխիթարութիւն: Զի սա մխիթարէ զբժիշկն՝ ուսմամբ, իսկ զհիւանդն՝ առողջութեամբ. ողորմութեամբն և օգնականութեամբն արարչագործին Աստուծոյ: Եւ արարի զսա գեղջուկ և արձակ բարբառով, զի դիւրահաս լիցի ամենայն ընթերցողաց. առ ի յիշատակել զմեզ և խնդրել թողութիւն մեղաց ի մարդասիրէն Աստուծոյ: Թարգմանեցաւ և գրեցաւ գիրքս այս յամի հազարերորդի հարիւրերորդի ութսուն և չորրորդի Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի զալստեանն, յորում էր և թուականս Հայոց ՈԼԳ. ի հայրապետութեան սրբազան կաթողիկոսիս Հայոց Տեառն Գրիգորի, որդւոյ Վասլի բարեպաշտ իշխանի Պահլաւունւոյ, որ և պատճառն է գրոցս:

# ՄՂԷ

## ՄԽԻԹԱՐ ԳՈՇ ՎԱՐԴԱՊԵՏ

(ԿԻՐԱԿՈՍ ԳԼ. ԺԱ–Դ)

*Ա. Վասն վարդապետին Մխիթարայ՝ թէ ուստի էր, և կամ որպիսի ոք էր, սակաւ ինչ ասասցուք.*

Հռչակաւորն այն և մեծիմաստն գիտութեամբ՝ էր ի քաղաքէն Գանձակայ, քրիստոնեայ ծնողաց զաւակ, որք ետուն զնա յուսումն գրոց սրբոց. և իբրև եհաս նա յորբունս հասակին՝ ձեռնադրեցին զնա քահանայ կուսակրօն. և պաշտեալ զքահանայութիւնն յոլով ամս՝ ցանկացաւ նա հմուտ լինել գրոց սրբոց և առաւելաց խորհրդոց՝ որ կան ի նոսա. և հանդիպեցաւ նա Յովհաննէսի վարդապետի Տաւուշեցի անուանեալ, որ ի ժամանակին յայնմիկ երեւելի էր գիտութեամբ, զառաջինն յաշխարհականաց կեանս կացեալ սակաւ ինչ, և (այրի) մնացեալ յամուսնոյն, կրօնաւորութեան հետեւեալ, և հասու եղեալ աստուածայնոց գրոց պարապեալ: Եւ զի էր վարդապետն Յովհաննէս շրջագայ տեղւոյէ ի տեղի շրջելով, քարոզելով զբանն Աստուծոյ և ուսուցանելով զբարի վարս մարդկան. սա բազում իրս կարգաւորեաց կարգաց և կրօնից քրիստոնէից. զի դեռ ցայն ժամանակն ի տեղիս տեղիս լուծանէին զշաբաթ և զկիրակէն սուրբ քառասնորդաց աղուհացիցն. սա եդ օրէնս պահօք վճարել՝ որպէս զայլ աւուրս շաբաթուն. բայց միայն զի տօնեսցեն ի շաբաթուն՝ վկայիցն Աստուծոյ, և ի կիւրակէն՝ խորհուրդ յարութեանն Քրիստոսի, և մատուսցեն զխորհուրդ մեղսաքաւիչ մարմնոյ և արեան Քրիստոսի. և այսպէս հաստատութիւն կալաւ յամենայն տեղիս, զյիսներեակ՝ պահօք վճարել, որ յառաջն կէսք պահօք վճարէին և կէսք ոչ:

Կացեալ առ սմա Մխիթարայ և առ այլս ոմանս, էառ սա զանուանս վարդապետական. և այնու ոչ շատացաւ, այլ չոգաւ յարեւմուտս կոյս յաշխարհն՝ որ կոչի Սեաւ լեառն[1]; առ վարդապետսն՝ որք էին ուսուցիչք անդ. և զայն ինչ ի վեր ոչ հանեալ՝ թէ իցէ նորա առեալ զայն պատիւ, այլ բազում ինչ օգտեալ ի նոցանէ՝ եկն նա ի Կարնոյ քաղաք. և անդ գտանէ նա զբարեպաշտ իշխանն մեծ՝ զանուանեալն Քուրդ և հաւատովն քրիստոնեայ, որ ընդ այն ժամանակս անդ լինէր, սարտուցեալ ի Թագաւորէն Վրաց. և եղեալ նորա ծանօթ՝ սիրեցաւ ի նմանէ իբրեւ զհայր։ Եւ յետ այսորիկ դարձաւ նա յաշխարհն իւր. և ել համբաւ իմաստութեան նորա յաշխարհս, և բազումք աշակերտէին նմա յուսումն վարդապետութեան. և ապա նեղեալ նա ի Տաճկաց, ի սադրելոյ[2] կաթուղիկոսին Աղուանից Ստեփանոսի, և եկեալ նա յաշխարհն Խաչենոյ առ Վաղթանկ իշխանն Հաթերքոյ և առ եղբարս նորա, որք բազում պատուով պատուեցին զնա, և անդ դադարեալ ամս ինչ. ապա դարձ եղեւ իշխանին Քրդի ի հայրենիս իւր, գայ յաշխարհն Կայենոյ և Մածկաւորբերդոյ, և բազում մեծարանս եդ նմա Թագուհին Վրաց՝ որ Թամարն կոչէր, դարձուցանելով ի նա զհայրենի տեղիսն, և այլս յոլովս։ Սա[3] է հայր Սադոնելին։

Իսկ իբրեւ լուաւ վարդապետն Մխիթար, թէ դարձաւ իշխանն ի հայրենիսն իւր, եկն նա առ

1. Կիլիկիոյ կողմերն, ուր Ռուբինեանց նոր հաստատուած տէրութեամբ՝ կրօնք և գիտութիւնք այլ ծաղկէին։ Մխիթար չէ իմացուցեր իր վարդապետ ըլլալը, որպէս զի իբրեւ աշկերտի համարձակ սովրեցընեն։ Տես Յօդուած 292։

2. Սադրել՝ սովորաբար գէշ խրատ կամ խորհուրդ տալ նշանակէ, այս տեղ՝ տարակուսական է Ստեփանոսի ըրածն, Թուի բարի խրատ կամ յորդոր։

3. Նոյն Քուրդ իշխանն։

Նա՝ վասն առաջին սիրոյ և միաբանութեանն որ առ միմեանս, և բնակեցաւ նա ի վանքն որ կոչի Գետիկ, ի գաւառին Կայենոյ, որ ի վերայ գետոյն մեծագունի զոր անուանեն Աղստեւոյ գետ, յաջմէ կողմանէ գետոյն. և էր առաջնորդ վանիցն վարդապետն որ Սարկաւագ անուանիւր[1], աշակերտ նորին. որ բազում ուրախութեամբ ընկալաւ զնա, և ինքն սպասաւորէր նմա. և անդ դադարեալ յոլով ժամանակս: Ապա եղեւ շարժ սաստիկ՝ որ ըզբազում տեղիս կործանեաց[2] և տապալեաց զբարձրաբերձ շինուածս. ընդ որս և խախտեցաւ եկեղեցին Գետկայ սաստիկ յոյժ, մինչ զի ոչ լինէր հնար վերստին նորոգել: Ապա երկմտեալ բնակչացն կամէին ցրուիլ այսր և անդր, ոչ միայն վասն խախտելոյ եկեղեցւոյն՝ այլ զի նեղեալ էին ի մերձակայիցն. քանզի ոմն յիշխանացն Սարգիս անուն փոխեաց զգիւղն իւր ի տեղւոջէն իւրմէ, և բերեալ շինեաց մերձ ի վանսն՝ այլ գեղ, և այնուհետեւ բազում գժտութեամբ կային ընդ միմեանս, քանզի պարսաւադէտք էին հանապազօր:

Իսկ վարդապետն սուրբ արգել զնոսա անդ ի խորհրդոյն յայնմանէ, ոչ թողուլ զմիմեանս և ցրուիլ, այլ ի միասին կեալ և խնդրել իւրեանց բնակութիւն: Ապա չոգան միաբան առ մեծ իշխանն Իւանէ՝ եղբայր զօրավարին Վրաց Զաքարէի, որդիք քեռ բարեպաշտի իշխանին Քրդին. որ ընդ այն ժամանակս իշխէր բերդին Կայենայ և գաւառին, և ցուցին նմա զխնդիրս, զի տացէ նոցա տեղի ուր զվանքն իւրեանց փոխեսցեն. և նա հրամայեաց տեսանել, թէ ո՞ր տեղի պատշաճ իցէ. և նոցա շրջեալ գտին տեղի վայելուչ և գոգաձեւ առ ստորոտս երկուց լերանց՝ որ կայ ի գլխոյ նորա, զոր անուանեն զտեղին Տանձուտայ

1. Ոչ մեծանուն Սարկաւագ վարդապետն՝ որ շատոնց վախճանած էր:

2. Գանձակայ մեծ ժաժէն (Յօդ. 282) շատ վերջը:

ձոր[1]. և էր ի նմա գիւղ, և ձորակ մի եւս փոքրագոյն անցանէր ընդ մէջ նորա, և միւս յորդագոյն[2] յաջմէ կողմանէ, տեղի փայտաւէտ և ջրաւէտ. անդր համարեցան թէ պատշաճ իցէ զետեղել:

## Բ. Վասն շինութեան վանաց Նորն Գետկայ.

Սկսաւ այնուհետև վարդապետն օքանչելի հանդերձ միաբանօք իւրովք՝ ձեռն ի գործ արկանել շինութեան վանից և եկեղեցւոյ, ի վերասացեալ ձորն Տանձուտայ, հրամանաւ մեծ իշխանին Իւանէի. և շինեցին եկեղեցի մի գեղեցկաշէն փայտակերտ, և օծեալ կնքեցաւ յանուն սուրբ Լուսաւորչին Գրիգորի: Էր ի տնտեսութեան սուրբ եկեղեցւոյն և սուրբ վարդապետն խաչատուր Տարօնացի[3], առաջնորդ սուրբ ուխտին՝ որ կոչի Հաղարծին[4], այր սուրբ և առաքինի և գիտութեամբ հըռչակեալ, մանաւանդ երաժշտական արուեստիւ: Սա պայծառացոյց զսուրբ ուխտն՝ որում առաջնորդէր ինքն, որ յառաջ քան զգալ նորա ամայի էր և խամրացեալ. զոր պատուէր մեծապէս թագաւորն Վրաց Գորգի՝ հայր Թամարին. և ետ եկեղեցւոյն ձեռնագրաւ իւրով զերկու գիւղսն՝ զԱրասամոր և զՏանձոտն, և այգի մի ի Միջնաշխին. և ետ նզովս ամենայն Սրբովք՝ զի մի ոք իշխեսցէ հանել ըզնոսա ի վանացն: Սա եբեր զխազն[5] ի կողմանս արեւելից, զանմարմին եղանակս ի մարմին ածել. զարարեալսն իմաստնոց առաջնոց, որ ցայն ժամանակս չէր ցրուեալ ընդ աշխարհս. սա եկեալ գրեաց և ուսոյց բազմաց. և ինքն անդ հանգեաւ ի Քրիստոս, և կայ թաղեալ յարեւմտից կուսէ եկեղեցւոյն:

1. Ոչ հեռի Սեւանայ ծովուն արեւելեան կողմէն:
2. Աւելի շատ ջուր ունող ձորակ:
3. Երգողն պատարագի խորհուրդ խորին շարականը, որոյ տնագլուխ տառք իր անունը կազմեն:
4. Ոչ հեռի Մխիթարայ Գոշի շինած վանքէն:
5. Երգոց եղանակաց նշանները, Notes.

Շինեցին ի Նորն Գետիկ փոքրագոյն եկեղեցի մի յանուն Ս. Կարապետին Յովհաննու, ի ծնունդս կանանց մեծի և Քրիստոսի ձեռնադրողի, ի գլուխ վանիցն. և ապա սկսան հիմն արկանել մեծափառ եկեղեցւոյն կոփածոյ վիմօք և գեղեցկաշէն արուեստիւ գմբեթայարդ երկնանման, սխրալի տեսողաց, սկսեալ ի վեց հարիւր քառասուն թուին Հայոց, զկնի չորից ամաց առնլոյ զԵրուսաղէմ Սալահադինին, և կատարի յամս հինգ.... Յայսմ ամի եղեւ աւարտ հռչակաւոր և խնդատես եկեղեցւոյն Գետակայ, զոր շինեաց վարդապետն՝ իւր միաբանօք, ձեռնտուութեամբ Վախթանկայ Խաչենեցւոյ՝ տեառն Հաթերքոյ, և եղբարց իւրոց Գրիգորոյ և Գրիգորիսի և Խոյդանայ և Վասակայ և այլոց իշխանաց բարեպաշտաց, որդւոց Քրդին՝ Դաւթի և Սադունի. Նա և քոյր սոցա՝ որում անուն էր Արզու-խաթուն՝ կինն Վաղթանկայ Հաթերքոյ, սա բազում ինչ յօժանդակ եղեւ. արար և վարագոյր գեղեցիկ՝ դաստարովք իւրովք ծածկոյթ սուրբ խորանին, զարմանալի տեսողաց, ի մազոյ այծիցն կակղագունից ներկեալ, պէսպէս և զանազան գործ քանդակերպ, և նկարեալ պատկերօք ճշգրտագոյն հանուածովք՝ տնօրինականօք Փրկչին և այլ Սրբոց, որ հիացուցանէր զտեսողսն, և որք տեսանէին՝ օրհնութիւն տային Աստուծոյ, որ ետ կանանց իմաստութիւն ոստայնանկութեան և հանճար նկարակերտութեան, որպէս առ Յօբն ասացաւ. ոչ ինչ ընդհատ էր ի կազմուածոյ խորանին՝ զոր արարին Բեսելիէլ և Եղիաբ, թէ ոչ յանդգնութիւն է ասելս, զի նոյն հոգի էր զնոսա և զսոսա[1]: Եւ ոչ միայն այս եկեղեցւոյս արար ծածկոյթ, այլ և այլոց եկեղեցեաց, Հաղբատայ և Մակարայ վանիցն, և Դաւթի[2] վանից. քանզի յոյժ սիրող էր եկեղեցեաց բարեպաշտ տի-

1. Կամ ընելի էր ի նոսա և ի սոսա, կամ բառ մի պակաս, իբր, շարժողն կամ լուսաւորողն զնոսա:

2. Անծանօթ. գուցէ Դադի ԸԼԼար. տես երես 47:

կինն. և արարին Նաւակատիս եկեղեցւոյն մեծապէս խմբիւք. անդ էր և եպիսկոպոսն Հաղբատայ Յովհաննէս, առաքինի և սուրբ այր, և այլ բազմութիւն քահանայից և պաշտօնէից. և օծեալ կնքեցաւ եկեղեցին յանուն Սրբոյ Աստուածածնին։ Շինեցին և գաւիթ եկեղեցւոյն գեղեցկազարդ և կոփածոյ վիմօք. և յոլովք ձեռնտու եղեն. մեծ զօրավարն Զաքարէ և եղբայր իւր Իւանէ, քանզի նոքա ունէին գիշխանութիւն գաւառին, և յոյժ սիրէին զվարդապետն. քանզի Զաքարէ՝ խոստովանութեամբ նորա հոգեւոր որդի էր. և ընծայեցին եկեղեցւոյն սահման ջրադարձիւք՝ լեռնէ ի լեառն, և բով մի յԱրքասաձոր, և զՂորոյ ձոր[1] ի նահանգին Բջնոյ[2], և զՕշակա ի գլուխ վանացն։ Եւ շինեցին ինքեանք գիւղ մի մերձ ի ծովակն փոքրագոյն՝ անհնարին խորութեամբ, և անուանեցին զգիւղն յանուն ծովակին՝ Տզրկածով, քանզի բազում մորասէր և տղմասէր սողունք կային. և այլ միւս եւս փոքրագոյն գիւղ ի ներքոյ վանիցն՝ զոր Ոսկեղանեչ[3] անուանեցին. շինեցին և այլ մատրունս յանուն Սրբոց Առաքելոց և Սրբոյն Հռիփսիմեայ։

Եւ ինքն քանզի սիրէր զանապատ և զամայութիւն, արար իւր տուն բնակութեան բացագոյն ի վանացն. շինեաց և անդ փոքրագոյն եկեղեցի մի փայտակերտ յանուն Սուրբ Հոգւոյն. և ի ժամանակի ծերութեանն՝ ի գլուխ վանիցն յաջմէ կողմանէ շինեաց եկեղեցի մի շիրիմ գերեզմանի իւրոյ, կրով և վիմօք մածուցեալ սրբագործ, յանուն Համբարձմանն Քրիստոսի։

1. Կան օրինակք որ Շորաձոր գրեն։

2. Բնիկ Այրարատայ գաւառին մէջ, որ երբեմն Գր. Մագիստրոսի նախնեաց ժառանգութիւն էր։

3. Ուրիշ օրինակի մէջ գրուած է Ոսկեղանչ, որ թերեւս լաւագոյն է, զի բան մի նշանակէ, իբրեւ թէ ոսկի հանքի սեփական կաղապար լինէր։

## Գ. Թէ ոյք էին երեւելիք յաշակերտս նորա.

Բազումք էին որք աշակերտեցան ի նմանէ՝ վարդապետական բանիւ. քանզի համբաւ իմաստութեան նորա հռչակեցաւ ընդ ամենայն տեղիս, և գային առ նա յամենայն կողմանց. քանզի ըստ անուան իւրոյ մխիթարէր զամենեսեան. քանզի էր նա մխիթարական որպէս Բառնաբաս[1], և նշանաւոր ի մէջ ժողովրդեան՝ որպէս Անտոն[2]. և բանք նորա արդիւնականք և լի շնորհօք, և ամենայն ոք փափագէր տեսանել զնա և լսել ի նմանէ: Վասն այսպիսի համբաւոյ բազումք որ էին ի կարգի վարդապետ՝[3] ծածկէին զինքեանս, և գային ի կարգի աշակերտաց կալով՝ ուսանէին ի նմանէ, և առնուին վերստին հրաման. և բազումք յաշակերտաց նորա հասին ի պատիւ վարդապետական: Բայց երկուք ոմանք ի նոցանէ՝ որք իմաստնագոյնք էին քան զայլսն՝ որք կարող էին և զայլս օգտեցուցանել. առաջնոյն Թորոս անուն՝ ի սահմանացն Մելիտինոյ Հայոց, հայր նորա հայկական և մայրն ասորի. այր հեզ և խոնարհ, առաքինի և աղքատասէր յոյժ, ասպնջական օտարաց և առատ ի տուրս, որ զժամանակս կենաց իւրոց բարւոքապէս վարեաց և ի ծերութիւն պարարտութեան՝ յաւելաւ առ հարսն իւր, և կայ թաղեալ ի հռչականուն վանքն Հաղբատ, ի գլուխ վանացն, ի գերեզմանս եպիսկոպոսացն և վարդապետացն, որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի, և աղօթք նորա պարիսպ հաւատացելոց: Եւ երկրորդին՝ Վանական[4] անուն, այր

1. Առաքեալն, գործակիցն Պօղոսի, ըստ վկայութեան Գործոց Առաքելոց, Գլ. ԺԱ. 24:
2. Ս. Հայրն Անտոն Անապատական:
3. Կամ ի կարգի վարդապետաց:
4. Որոյ աշակերտ եղաւ պատմիչս Կիրակոս, և յետոյ գրեց անոր վարքն այլ, ինչպէս պիտի տեսնուի և ի կարգի այս մեր գրոց:

սուրբ և պարկեշտ և յամենայն գործս բարիս յառաջադէմ, ողջախոհ և զգաստ յամենայնի, և վարդապետական բանիւ քան զամենայն որ ի ժամանակն էին գերազանցեալ, ծննդական մտօք և յարմար բանիւք. վասն որոյ բազումք դեգերէին առ նա՝ ուսման աղագաւ, ոչ միայն վարդապետական բանի՝ այլ ամենայն կենաց նորա և շարժումն անգիր օրէնք էին տեսողացն. և զայս ոչ եթէ ականջալուր միայն ասեմ այլ և ականատես. զի բազում ժամանակս կացաք առ նմա ի վարժս կրթութեան, ի սահմանս Տաւուշ բերդոյ, յանապատի անդ՝ զոր ստացաւ իւր բնակութիւն, և աղբիւրաբար արբուցանէր ամենեցուն զբան վարդապետական:

Դ. Վասն վախճանի մեծ վարդապետին Մխիթարայ՝ որ Գոշն կոչի.

Սա երանելիս զոր վերագոյն ասացաք՝ զընթացսըն կատարեալ և զհաւատոն պահեալ, եհաս ի խորին ծերութիւն. և իբրև ետես նա թէ տկարացաւ յամենայն զօրութենէ մարմնոյն, և հանդերձեալ է այնուհետև յաւելուլ առ հարս իւր, կոչեաց նա զբնակիչս ուխտին վանաց Նոր Գետկայ, որ ընդ նմա ժուժկալեալ էին յամենայն աշխատութիւնս վանից և եկեղեցւոյն. օրհնեաց զնոսա և զաշակերտս իւրեանց՝ յանուն Տեառն. և զմի ոմն ի նոցանէ ընտրեալ Մարտիրոս անուն, որ աշակերտեալ էր նմա և ընտանի էր նմա՝ կացոյց զնա առաջնորդ նոցա, մանուկ տիօք բայց կատարեալ իմաստութեամբ, այր քաղցրաձայն յերգըս պաշտաման և առատամիտ յընթերցման, և արագ ի գրչութիւն. նմա հրամայեաց իշխել նոցա. և գրեաց կտակ առ մեծ հազարապետն Իւանէ՝ եղբայր Զաքարէի, և յանձնեաց ի նա զվանս և զառաջնորդն. և ինքն փոխեցաւ յաստեացս առ Քրիստոս, ալեւորեալ և լի աւուրբք: Եւ վերակացու վանացն Մարտիրոս հանդերձ միաբանօք՝ գե-

ղեցկապէս յարմարեալ զպատշաճս թաղման նորա, հոգեկան և մարմնական պիտոյիւք. և տարեալ համդուցին զնա առաջի դրան եկեղեցւոյն փաքրագունի, որ կայ ի գլուխ վանացն՝ յարեւմտից կողմանէ վանացն. և մինչեւ ցայսօր գերեզման նորա օգնէ ցաւագնելոյն՝ որք հաւատով ապաւինին յաղօթս նորա. և զհող տեղւոյն հանապազ տանին ի պէտս հիւանդաց՝ մարդոյ և անասնոյ. զի Աստուած ըզփառաւորիչս իւր փառաւորէ՝ կենդանութեամբ և մահուամբ:

Դէպ եղեւ երբեմն զի պաշտօնեայք նորա գային կրաստուիւք բարձեալ գինի ի պէտս վանացն. վրացի ոմն Բասիլիս անուն՝ եկեալ բռնութեամբ կամէր առնուլ ի նոցանէ ի գինւոյ անտի, զի գործակալ էր նա Իւանէի ի վերայ մայրոյն, որ պահէր զտեղի իշխանի նորա. և պաշտօնեայքն ասէին, Մի՛ նեղեր զմեզ, քանզի Գօշին եմք. զի այսպէս կոչէին զնա մականուամբ, զի հեզգագոյն եկին ալիք նորա: Իսկ թշուառականն հայհոյեաց զնոսա և ըզԳօշն. և իբրեւ եկն յայն տեղի որ յիշէր զանուն նորա անարգանօք, անդէն վաղվաղակի համրացաւ և կապեցաւ լեզու նորա, և թիւրեցան շրթունք նորա. և այսպէս եկաց բազում ամս, մինչեւ հառաչանօք խնդրեաց զթողութիւն, և ամենայն որ տեսանէր զայրն՝ գովէին զծառայն Աստուծոյ:

Եւ եթող նա յարձան և յիշատակ գերեզմանի՝ գիրս իմաստախոհս՝ յօգուտ իմաստասիրաց, համառօտ[1] մարգարէութեանն Երեմիայի՝ գեղեցկադիր կարգօք. և սուղ ինչ կանոնս վասն սպասաւորելոյ մարմնոյ և արեան Տեառն. թէ որպէս պատշաճ իցէ, կամ որպիսի կարգօք. և գիրք մի Ողբ ի վերայ բնութեանս՝ ի դիմաց Ադամայ առ որդիս նորա, և ի դիմաց Եւայի՝ առ դստերս նորա[2]. և

1. Այսինքն, համառօտ մեկնութիւն մարգարէութեանն Երեմիայի:

2. Հետաքրքրական գրուած, որ մեզի հասած չէ:

գիրք մի Յայտարարութեան ուղղափառ հաւատոյ՝ ընդդէմ ամենայն հերձուածոց, ի խնդրոյ մեծ զօ- րավարին Զաքարէի և եղբօր իւրոյ. և այլ Թուղթս խրատականս։ Եւ եղեւ վախճան նորա ի վեց հա- րիւր փաթսուն և երկու թուին (1213)։

---

## ՄՂԸ

### ՄԽԻԹԱՐ ԳՈՇ ԵՒ ԴԱՏԱՍՏԱՆԱԳԻՐՔ ԻՒՐ[1]

Եթէ յումմէ յորդորեալ եկաք ի գրել. ի բա- զում ժամանակաց հետէ տարակուսեալ յաղագս սորին լինէի, խոցոտելով ի Նախատելն զմեզ[2] մե- րոց և օտարաց ազգաց. սակայն վստահիլ ի սոյն ոչ իշխէի, գիտելով զանձին տկարութիւն. յաղագս որոյ զվարանսն ի զրուցատրելն մեր՝ լուաւ եղբայրն Պօղոս, սիրելի աշակերտն աստուածային գրոց, և խոստովան եղեւ փափագող այնմիկ լինել։ Առաւել եւս սկսաւ շարժել զմեզ հարկածուցիչ բանիւք. նա և ոչ այնու ձեռնամուխ լինել կամեցաք. այլ խոր- հէի զայլս աղաչել զօրաւորս, որք կարող էին զհարկ վճարել բանին, զի բազումք իսկ էին։ Բայց զի զանընդունելութիւն ազգիս գիտէի պատճառել[3], և այնու ոչ կամեցայ զոք առ այս աղերսել. լռեցի ապա այնուհետեւ և ես։ Եւ զարմացեալ յաղագս այսորիկ լինէի, թէ զիարդ յառաջնոց հարանցն մերոց ոչ կարգեցաւ. և զնոյն գիտացեալ պատ- ճառ, զի և ոչ յառաքելոց Տեառնէ տուաւ. և

1. Ինքնագիր Յիշատակարան հեղինակին, բուն իր ձեռօք գրածէն օրինակուած, որ պահուի մեր քով։
2. Սիրտը խոցոտէին Նախատելով, թէ Հայք՝ Օրի- նաց կամ Դատաստանի գիրք չունին։
3. Այսինքն, ազգային արհամարհելն այս տեսակ գրուածները և գրողները։

կամ զի ոչ ոք հրաւիրեաց՝ և անձամբ ոչ ետուն, զարհուրեալք ի պարսաւադիտաց. և կամ ի հալածանաց և ի խռովութեանց անպարապ պատահեցան, և կամ ընդ տէրութեամբ անկեալ այլոց ազգաց՝ նոցունց վարեցան դատաստանօք։ Եւ թէպէտ ամենայն պատահեաց ըստ ժամանակիս, և նոյն պատճառ՝ որպէս յաւուրս հարցն մերոց, ոչ աւանդել գրով դատաստան՝ բայց ի միոյն, զի և ոչ յառաքելոց անտի տուաւ, բայց սակայն հարկաւոր եղեւ գրել, որպէս վերագոյն ցուցաւ։ Եւ սկիզբն առնել այսմ իրողութեան այսպիսի եղեւ։

Հանդիպեցաք առաջի Տեառն Ստեփաննոսի[1] շնորհիւ Տեառն Յիսուսի Աղուանից կաթողիկոսի, և նոյն իրի վերստին յիշատակ եղեւ. և նա յորդորեալ փութացոյց զմեզ ասելով, եթէ շնորհ յոյժ ունիմ իրիդ կատարման. առաջի և մեք զմերս եդաք անկարութիւն, որպէս վերագոյնն. սակայն յերկրորդելն և ի քաջալերելն՝ խորհուրդ իմն ի մեզ եղեւ՝ եթէ արժան է հոգեւոր հրամանի անսալ, զի թէ ի Տեառնէ իցէ՝ բարիոք յանգեալ կատարեսցի իմաստախորհրդութեամբ, զի թերեւս ի նմանէ լինի առաջատուութիւնս. ապա թէ ոչ՝ պատճառ լիցի կատարելոց ոմանց շարժիլ ի սոյն. զի և ոչ գործ ամենայն և արուեստ՝ ի միոջէ սկսօղէ կատարեալ աւարտեցաւ ի սկզբանէ, այլ ի բազմաց. զի մասնաւոր գրեալքն ժողովեալ գոյացուցին զարուեստն՝ ըստ ոստայնանկաց։ Նա և պատշաճ ինձ վարկայ ընդոստնուլ սովաւ, եթէ յատեան մտանելոց եմ յանկաշառ և յանողոքելի, ըստ որում ձեռամբ իսկ գծեմ զապագայից նշանակ։ Եւ արդ, մի՛ ոք պարսաւանս դիցէ ասացելոցս. զի եթէ ախմար ոք իցէ՝ ուսցի, և եթէ ամենակատար իմաստուն՝ ղթերին լցցէ. երկաքանչիւրոցն պատրաստ եմք սիրով ընդառաջել։

1. Յիշուած է կաթողիկոսս այս՝ յ'272 Յօդուածի։

Նշանակ չափաւորապէս զօրութեան առաջիկայ իրողութեանց, հանդերձ աղերսաբանութեամբ առ Տէր Յովսէփանեան Աղուանից կաթողիկոս.

Քանզի հարկաւոր է զկնի այնոցիկ սակաւուք ցուցանել զզօրութիւն առաջիկայ ձեռնարկութեանս, զոր և աղաչեմ, ով պատուականդ գլուխ եկեղեցեաց սրբոց տանս Աղուանից, մի վարկպարազի համարել զհարկս հոգևորս զոր եդիր. զի և կանոնական ունիս սահման Գիրս դատաստանի, զոր յարմարել յայնոսիկ պարտիմք, զի յայտ լիցի չափ նորին:....

. . . . . . . . . . . . . . . .

Եւ թէպէտ բնաւորական է ամենեցուն լաւին ցանկալ և անսխալ յիրս ամենայն լինել, սակայն ոչ է հնար՝ որ ի լինելութեան և յապականութեան է բնութիւնս, և այդ յոյժ քաջաբանից. որչափ և մեզ իցէ՝ որ ամենայն ինչ գործ սխալեալն եղեւ, և գրեթէ յ'ակզբանէ: Վասն որոյ զամենեսեան զկնի մեր եկեալսդ՝ զհարս և զեղբարսդ՝ ի զանազան ժամանակս, աղաչեմ մաղթանօք, զյոլով և զոչ սակաւ սխալանսն ուղղեսջիք, պատահեալք ընթերցման տառիս. և զիրաւացի թերին լցջիք, որպէս վերագոյն ծանուցաւ. զի հասարակ և ի վեր քան զհասարակ՝ սխալանացն ունիմ զպատճառ: Նախ, զբիծս անձին, զոր զներգործութիւն խափանէ զհոգւոյն, և ապա զախտս մարմնոյ[1]: Եւ զի յայտ անվարժութիւնս համօրէն է սեռի և յազգի. և դարձեալ անպարապութիւն, զի ընդ բա-ռեամբք ախտաժետու զմանկունս ունէի բանի. և զպանդխտութիւն և զանտեղեկութիւն գրչութեան, և զհակառակութիւն՝ ներքնոց և արտաքնոց. ըզ-գայութեանց տկարութիւն, և զմարտս դիւաց, և

1. Խոնարհաբար ինք զինքն մեղաւոր կամ պակասաւոր ցուցընէ, նա և տկար մարմնով, և ոչ գիտուն, և շատ զբաղուած՝ աշակերտաց վրայ, և այլն:

զպակասութիւն գործեաց գծագրութեան, և զաղճատութիւն մատենից[1], յորոց զնիւթս հաւաքել ի դէպ էր բանից։ Ապա եթէ ընտանի ազգիս բարիւք[2] սխալանացն լինիք պարսաւիչ և ոչ ուղղիչ, գիտելով գործ Հայկազնեացս զայդոսիկ, միանգամայն զչափ անձին, անմեղադիր ձեզ յայդոսիկ լինիմք։ Ապա եթէ սիրով մերոցս պատահիք բանից, և խնամիչ կամօք զթերին լնուցջիք, ի Տեառնէ զհատուցումն առնջիք բարեաց. և զգանձս բանից ձերոյք երկամբք յեկեղեցիս ամբարեսջիք, յիշատակ բարեաց մնալ ձեզ ի նմա։

Բայց ձեռնարկութիւն մեզ յայսմ խրողութեան եղեւ ի Թուականիս Հայոց ՈԼԳ, և շրջանին երթալոյ ի բաց՝ ՃԱ[3], որ կոչի փոքր. յամս (ան)իշխանութեան թագաւորութեան մերոյ ի վաղնջուց. ի ժամանակի մնացելոց սակաւ իշխանացն՝ ի կողմանս Խաչենոյ[4]. ընդ ժամանակս անուանելոյ Հասանա, որդւոյ Վախտանկա, կրօնաւորեցելոյ, և

1. Հին ձեռագրաց աւրուածութիւնն։

2. Այսպէս գրած է, փոխանակ գրելու բարոյք։

3. Այսինքն Սարկաւագ վարդապետի կարգադրած Հինգհարիւրեակ տօմարի շրջանն, որոյ առաջինն Հայոց մեծ Թուականէն սկսելով, (յամի Տեառն 552) լրացաւ յամի 1083–4, և երկրորդն սկսաւ ի 1084. ուսկից մինչեւ Մխ. Գոշի այս գրութեան ժամանակ՝ 101 տարի անցեր էր, այն է 1184։ Այս երկրորդ շրջանն՝ Հայոց Նոր Թուականի սկիզբն եղաւ. և կոչուեցաւ Փոքր Թուական. երբ այս ալ լրացաւ, Գ շրջանն այլ Նոր Թուական մի համարեցաւ, և Նոր կարգդրողին անուամբ կ՚ըսուի Ազարիայի Թուական, սկըսեալ ի 1616 տարւոյ, և ի կողմանս Պարսկահայոց և Հնդկաստանի գործածուէր։

4. Մեծ Հայոց Արցախ կոչուած նահանգն՝ Աղուանից երկրին սահմանակից, երբեմն մերոց երբեմն անոնց իշխանութեան տակ էր. մեծ մասն կոչուէր Խաչենք. ԺԲ–Դ դարուց մէջ այն կողմանց տէրերն յիշեալքդ, որ իրենց նախահարց անուամբք յաջորդաբար Վախ-

որդւոյ Նորա Վախտանգա, ի դղեկին որ անուանեալ կոչի Հաբերդ, գլխաւորի այլոց իշխանացն. և կողմանցն Կիւղիկեա մեծի իշխանին Ռուբենի[1]. յամի յորում մեռաւ յաղթող թագաւորն Վրաց Գեաւրգէ, ի հայրապետութեան Տեառն Գրիգորի Հայոց Մեծաց[2], և ի դիտապետութեան Տեառն Ստեփաննոսի տանս Աղուանից յաշխարհիս Առանա[3], ի նահանգիս որ կոչի մայրաքաղաքին Գանձակայ, յանապատ և յեղբայրանոցս անուանեալ Դիւանոյ[4]. սկզբնաւորեալ ի լեռնակողմ մենաստանին կոչելոյ Հոռոմաշէն, ընդ հովանեաւ սրբոց եկեղեցեաց կուսաստանայն յիշեցելոց. ձեռնատւութեամբ Հօր Յովսեփայ, և եղբաւր Պաւղոսի յորդորմամբ յառաջարկութիւնս: Բայց գծագրութիւն յիշատակիս ի նախագրութիւն գրոցս դատաստանի եղեւ, զի կատարած սորա ի ձեռն մեր միանգամ ոչ է, որպէս ասացեալ է կանխաւ զպատճառն:

Եւ արդ, որքան է կար ի գործ անկանիմք, հիւսել զկնի գիրս դատաստանի. ընդ որս զայս եւս մաղթեմք, եթէ պատահի և հաճոյ ոմանց թուի՝ յօրինակէ աստի փոխել զգիրս դատաստանի, ընդ նմին փոխեսջիք և յիշատակս զայսորիկ, յիշատակել սոքօք զմեզ, որով և դուք համարէքն յիշեալ լինիջիք ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր. որում փառք յաւիտեանս ամէն:

տանգ և Հասան կոչուին. վերջի դարերումս այլ և ինչուան մեր առեն զտուին անոնց սերունդքն, Հասան–Ջալալեան կոչուելով:

1. Կիլիկիա, որոյ իշխողն էր Ռուբէն Բ, եղբայր՝ Լեւոնի Մեծի:

2. Որ է Գ Գրիգոր՝ Տղայ մականուանեալն:

3. Այսպէս կոչուի շատ հեղ Աղուանից երկիրն հին նահապետի մ'անուամբ, որոյ պայազատքն կոչուին Առանշահիկք ըստ Պարթից, որք և Առանեիէ կոչած են այս կողմերս:

4. Դիւանոյ անապատ կոչուած անուանի վանք մի:

*Տէր Աստուած վայելել տացէ աստուածասէր և բարեպաշտ իշխանաց իշխանին Վախտանկայ, որդւոյ Հասանայ, ի կամս իւր զԳիրքս դատաստանի, անսխալ ուղղութեամբ վարել զպատուիրան սորին։

*Փառք Փրկչին մերոյ Յիսուսի, ընդ նմին Հօր և Հոգւոյն, որ ետ զդադարումն աստանօր տալ Գրոցս Դատաստանի. զի թէ և յառաջագոյն ասացաք՝ գրելով զսակաւ Յիշատակարանն, եթէ, աւարտումն սորա ոչ է, սակայն այժմ մեք հանգուցանել կամեցաք գրելով ըստ կարի, ոչ խափանել զայլոց որք կամին գրել և յաւելուլ։ Եւ թէպէտ յամի յորում սկսաք՝ գրեցաք զեդեալ չափս Դատաստանի[1], սակայն յաղագս հալածանաց որ եհաս մեզ, ընտանի և ոչ օտար[2], յապաղեաց գրել զյիշատակս զայսոսիկ։

---

# ՄՂԹ

## ԱՌՈՒՄՆ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ Ի ՍԱԼԱՀԷՏՏԻՆԷ, ԸՍՏ ՄԻԽԱՅԷԼԻ ԱՍՈՐՒՈՅ

Ի ՈԼԸ թուին (638=1189) զօրացաւ Սալահատինն, ի յաճախութենէ մեղաց մերոց, և ժողովեաց զամենայն հնազանդեալսն իւր. զԵգիպտա-

1. Կարծածէն՝ շուտ հեղինակն Դատաստանագիրքը գրել կամ շինել սկսած տարին՝ կըրցեր է և աւարտել, և ի վերջն յարել այս Յիշատակարանս։

2. Շատ հետաքննական է գիտնալ Մխիթարայ կրած հալածանաց պատճառը. թուի թէ Վրաց և Հայոց կրօնական վէճն ըլլայ, Իւանէ աթաբէկին միջամտութեամբ։ Ջալալեան Սարգիս եպիսկոպոս՝ Աղուանից տեղագրութեան մէջ՝ կ'ըսէ, թէ Խաչապատ ձորոյ վանից մէջ, «Գտաւ աստ և Պատմութիւն անցից Գոշ » Մխիթարայ »․ անշուշտ այս մեր խնդրածն էր։ Բայց գտնողն ինչ ըրաւ, կամ ո՞ւր մնաց գտածն։

ցիօն, և զնեղքին Լիբէացիս [1] և զԲադուիս [2], և զԱբաղդացիս [3], և զՄիջագետս, և եղեւ բանակ մեծ և ահագին. և արար պատրաստութիւն զինուց և մեքենայից՝ որոյ ոչ էր թիւ։ Եւ խաղաց գնաց ամենայն բազմութեամբ լեգէոնին իւրոյ ի վերայ Թագաւորին Երուսաղէմի, առնուլ զքէն վրիժուց կորանաց իւրոց, զորս կրեաց ի Նոցանէ յառաջին ելանելն իւրում յԵգիպտոսէ՝ երեսուն և երկու հազար սպառազինօքն՝ զորս կորոյսն, և տկարացաւ և զանձեաց ի սրտի իւրում զԹիւնս տրտմութեանց, մինչեւ եգիտ օր Թափելոյ զնա, և զորս՝ տրում ցանկայր նա. եկն եբեր սպանողն մեր հին չարութիւնն, զոր սերմանեաց տռոմանցն մշակ։

Արդ, գնաց երկրորդն Բոռովամ սատանն Սողոմոնին մերոյ՝ Սալահատինն՝ և եհար զբանակն իւր մօտ ի Տապարիա. և գնաց Թագաւորն Երուսաղէմի ի վերայ և Նորա։ Ցիշատակեցաւ մեղքն քրիստոնէից առաջի Տեառն, և քննեցան ի կանոնս արդար իրաւանցն Աստուծոյ, և կշռեցաւ ի կշիռս, և գտաւ պակասեալ։ Քանզի կոմսն Տրապօլեայ եդեալ էր յառաջագոյն բանս ընդ անօրէնսն, և ծարաւեցոյց զզօրսն, և տկարացոյց, և մատնեաց ի ձեռս Թշնամեացն և ինքն անցաւ գնաց ի կողմն օտարացն։ Եւ զօրացան առելիքն ի վերայ անդամոցն Քրիստոսի, և արկին զնոսա ի սուրն իւրեանց անողորմն։ Ո՜հ ահագին ժամուն և Նսեմացեալ սպահուն, և կորստեան աւուրն մերում. յորում հօտն դրօշմաւոր [4] և գառինքն երկնաւոր՝ գազանաց մատնեցան՝ ընդ երեսս դիակոյտ դաշտին. քանզի ծարաւեալ երիվարքն խնդրէին ջուր՝ դիմելով ի ծովն, և Թուլացուցանէին զբազուկս արիա-

1. Ափրիկէի Ներսի կողմերը բնակողք։
2. Պէտէվի կոչուած Արաբացիք, Bedouins.
3. Ասորւոց երկրին բնակիչք։
4. Քրիստոսի դրոշմն կամ կնիքն ունեցող ոչխարները, որ են քրիստոնեայք։

կան քաղաքն, և դայլքն գիշատէրք ծարաւեալք արեան պարարտ զուարակացն՝ խնդրէին զնոսա. եռանդնոտ և արեալ ժանեօքն. և ի համառօտ ժամու՝ զաստեղագեղ բանակն ցուցանէին իբրև զկոյտս դերբուկ քարանց, և զդրախտս աստուածատունկ՝ իբրև զմայրիս կոտորեալ ի փայտահարաց. և որդարեւ սատակացաւ կոծ յԵրուսաղէմ, այսինքն յամենայն եկեղեցիս իբրև զկոծ մանկանցն կոտորելոց ի դաշտի։ Զի կալան զմատաղ Թագաւորն[1], և զվառեալ զունդն Ֆրերացն գովելեաց[2]. և սպան ի նոցանէ կատաղին[3] Զամբրի երեք հարիւր անձինս և զբրինձն Անտաքայ. և լուացաւ արեամբ նոցա, և ետ փառս Մահմէտի և աղօթեաց։ Եւ առ զՏապարիա, և կոտորեաց զնոսա. և չոգաւ յԱքայ[4], և առ զնա եւս. և իշխանքն որ կային անդ՝ փախեան նաւու ի Սոռ[5]։ Իսկ Կեսարիա[6] և Նապարէթ և Ճափե[7] թողին զտեղիս իւրեանց և փախեան. և դիւրաւ տիրեաց ի վերայ նոցա որպէս և կամէրն։ Եւ ո՞ է կարող ողբալ ըզնախատինսն և զտնհարութիւն՝ զոր առնէր նա մեզ, զպէսպէս կատականսն և զթուքն, զծնացորդս կրիցն Քրիստոսի։ Քանզի ոչ գիտեմ ըստ մասանց զորպիսութիւնս անցիցն զորս գործեցին, և զոր ինչ խօսեցան, զորս բերեն յինքեանս յոլով մատեանք ըստ լեզուաց և ազգաց. այլ մեզ թեթեւարանութիւն է ցանկալի, և մանաւանդ ըղձանալի։

1. Կի կամ Գուիտոն Լիւզինեան, որ յետոյ Կիպրոսի թագաւոր եղաւ։
2. Երուսաղեմի ասպետք կամ Ձիաւորք կոչուածքն։
3. Իսրայելացւոց անգութ թագաւոր մի, որուն ըսմանցընէ զՍալահէտտին։
4. Saint Jean d'Acre, ըստ Փռանկաց։
5. Այսինքն է Տիւրոս հին և անուանի ծովեզերեայ քաղաքն։
6. Պաղեստինու Կեսարիան և ոչ Փոքր Հայոց։
7. Եաֆա, Յոպպէ հին և անուանի նաւահանգիստն։

Աղետիցն մերոց հանգամանք որոշեաց զդասս լալեացն՝ ըստ ազգաց արուաց և իգաց, հասակաց և արժանաւորութեանց։ Վասն զի յետ այսորիկ գնաց ի յԱսղալան[1]. և զի մի՛ աշխատ լիցի վասն ամրութեան տեղւոյն, և սակաւ մի հանգիցէ ի սպանութիւն հօտից հաւատացելոց, խօսեցաւ կակղութեամբ, և երդուաւ թողուլ զթագաւոր նոցա ազատ, ուր և կամիցի երթալ հանդերձ նոքօք. և ետուն զքաղաքն ի ձեռն նորա. և առեալ զթագաւորն Երուսաղէմի գնացին ի Տիւրոս, որ է Սուր, անառիկ քաղաք, եթէ Տէր պահեսցէ, և թէ ոչ՝ ընդունայն տքնին շինողքն և զգուշանան պահապանքն։

Եւ Սալահատինն մնեալ յաղթութեամբ իբրև զպօղոմատ՝ եւ խնդութեամբ ի Սուրբն Երուսաղէմ, և աւուրս ինչ պաշարեաց զնա. և զի ոչ գոյր նոցա ուստեք ակնկալութիւն, կամեցան տալ զքաղաքն, և մատնել զանձինս անագորոյն հեթանոսաց. բայց նա անդանօր եցոյց զանձն մեծախորհուրդ. և կտրեաց նոցա գինս տասն դահեկանս ըստ գլուխս, տալ և գնալ ի խաղաղութիւն. և արարին այնպէս. և ելանէին կականեալք յարտասուացն, և իբրև զգառինս ի մօրէ զատչէին բառաչելով՝ յաստուածընկալ քաղաքէն, շարժելով յարտասուս և զվիմեղէնս անգամ. և որ մնացին ի տեղն՝ էին քսան հազար արք և կանայք. և ազատեաց ի նոցանէ չորեք հազար անձինս ծերս և պառաւունս, և եօթն հազար տղայք արու և էգ բաշխեաց զօրաց իւրոց, և հինգ հազար երիտասարդս առաքեաց յԵգիպտոս յաղիւսագործութիւն, ի շինութիւն պարսպաց և ապարանից։ Ազատածին որդիքն Սիոնի դարձան ի գործ հնոյն Իսրայէլի՝ ի մերոյն Փարաւոնէ. զորս ետ մեզ չարչարիչ՝ անմարմինն փարաւոն[2], և հինգ հազարս եթող անդէն

1. Ասկաղոն, հին Ս. Գրոց մէջ շատ հեղ յիշուած։
2. Այսինքն՝ սատանայ։

յԵրուսաղէմ, չինել զպարիսպն յամրութիւն իւրում անձինն սեփականեալ զնա[1]։

---

## Ե

### ՆՈՅՆ ԲԱՆ ԸՍՏ ՅԻՇԱՏԱԿԱԳՐԻ[2]

Յամի վեցհարիւրերորդի քառասներորդի երկրորդի Հայկականս տումարի, ի հայրապետութեան Տեառն Գրիգորի կաթողիկոսի Հայոց, և յիշխանութեան բարեպաշտ իշխանին Լևոնի. իսկ ի բռնակալութեան Հաքարացւոց ումեմն Սալահատին կոչեցեալ, ըստ իւրեանց առասպելաբանութեան, որ և տիրեաց Եգիպտացւոց և մինչև ի կողմանս արևելից, և զբազումս յազգայնոց իւրոց արկեալ ընդ իշխանութեամբ իւրով, և զօրացեալ այսու՝ սկսաւ պատերազմել ընդ սուրբ քաղաքն Երուսաղէմ և ընդ զօրս նորա։ Զորս թուլազգոյնս գտանէր ի հաւատս՝ զնոսա կարասեաւ և խոստմամբ պատրէր, և որք քաջ սպառազէնքն էին՝ բանիւք ողոքանօք հաւանեցուցանէր. և զայլս ի

1. Ժամանակակիցն այս մեծ պատահարիս Ս. Ներսէս Լամբրոնացին՝ իր Պատարագի Մեկնութեան գրոց Յիշատակարանին մէջ համառօտ կ՚ըսէ. «Ի թուականիս ՈԼԶին (1187) յափշտակեցաւ սուրբ քաղաքն » Երուսաղէմ ի Թուրքաց ազգէ. և եկեղեցականքն » և իշխանքն՝ որք սպասաւորէին սուրբ տեղեացն՝ » գերեցան. և համբաւ հասեալ յարևմուտս, զքնաւ » ազգսն թագաւորօք և իշխանօք՝ ըստ հրամանի » Հռովմայ հայրապետին՝ շարժեաց գալ յայս աշ- » խարհ »։

2. Գրող Յիշատակարանիս է ժամանակակից օրինակող մի Աւետարանի՝ ի Պօղոսական վանս՝ Կիլիկիոյ Կաստեն կամ Կայստեն կոչուած դղեկի։ Տես Սիսուան. 147. 534։

մեծամեծացն՝ երդմամբ հաստատէր նոցա՝ ունել զտէրութիւն աշխարհացն։ Եւ այսպիսի խորամանկութեամբ քակեաց զամենեսին ի միմեանց և արար ի միում տան խռովութիւն. և զայս արարեալ ի բազում ամս՝ ոչ կարաց յաղթել նոցա. և ապա օրինակօք խնդրէր պատերազմել ընդ նոսա, զի գիտէր զթուլութիւն և զերկպառակութիւն զօրացն և զյետս կացելոցն ի սուրբ ուխտէն։ Եւ պատերազմեալ ընդ նոսա՝ յաղթեաց, զի զօրքն ընդ չորս մասունս բաժանեալ էին. և ձերբակալ արարեալ զթագաւորն և զարս պատերազմողս՝ որ կոչին Փրէրք[1], և զայլ զարսն կոտորեաց. և բռնացեալ առ զսուրբ քաղաքն Երուսաղէմ և զԱսկաղոնն, և զամենայն սահմանս աշխարհին, և գայ ի սահմանս Անտիոքու, և քակեալ աւերեաց զաշխարհն և զամուրս նորա։

Եւ անարիին այն Բրինձ կոչեցեալ՝[2] ոչ կարաց ելանել ընդդէմ նորա. իսկ նորա կատարեալ զկամս իւրոյ չարութեանն՝ կամեցաւ մտանել յաշխարհն Կիլիկիոյ, նոյնպէս կարծելով զնոսա անարիս գոլ. քանզի գոռայր իբրեւ զառիւծ զօրաւոր, և դառնայր իբրեւ զաղուէս տկար։

Քանզի յառաջ ասացեալ Հայրապետն Սուրբ Գրիգորիս, որ ունէր զաթոռ Հայրապետութեան Սրբոյն Գրիգորի, որ և շառաւիղ գոլով նորին Լուսաւորչին Հայոց, պահպանեալ ընդ ամրածածուկ աջովն Աստուծոյ՝ յամուր դղեկին կոչեցեալ Ռոմելիսի կլայ, որ և սա բազում նեղութիւնս կրեալ ի շրջաբնակ այլազգանիցն, ընդդէմ կացեալ աղօթիւք և զօրութեամբն Աստուծոյ, և ըստ տուեցելոյ նմա յԱստուծոյ ամենաշնորհ իմաստութեանն, խրատէր և զօրացուցանէր զթագաւորն

1. Ասպետքն կամ Ձիաւորքն (Chevaliers) իւրեանց մէջ մէկմէկու Եղբարք կոչէին, Frères.

2. Պեմունդ Գ, որ իր անարի տկար ըլլալուն համար Le Bambe կոչուէր։

և զզօրս Կիլիկեցւոց, ընդդէմ կալ նորա չարու-
թեանն. որ և ոչ կարաց ձեռն արկանել ի նոսա։
Այլ քանզի հայրապետն սուրբ տեսանելով զայս-
պիսի նեղութիւնս տարակուսանաց, զառումն սրբոյ
քաղաքին և զաւերումն սրբոց տաճարացն, և զգե-
րութիւն ժողովրդեանն Աստուծոյ, և զայլանդակ
գործ պղծութեան նոցա, զորս ոչ է պարտ ընդ
գրով արկանել, զայսոսիկ տեսեալ սրբոյ հայրա-
պետին, վշտացեալ ի հոգի իւր՝ միշտ աղօթից և
արտասուաց պարապեալ խնդրէր փրկութիւն սրբոյ
քաղաքին և ժողովրդեանն Աստուծոյ։ Գրէր և ցու-
ցանէր զամենայն՝ թագաւորացն Յունաց և Հռով-
մայեցւոց, զի եթէ իցեն ինչ ձեռնհաս՝ եկեսցեն
յօգնականութիւն քրիստոնէից. և ինքն աղաւթից
և սրբութեան պարապեալ։ Եւ ապա շարժեալ մի
ոմն ի թագաւորացն Հռովմայեցւոց Ալամանն[1] կո-
չեցեալ, գայ մինչև ի սահմանս Կիլիկեցւոց. և
ոչինչ արիութիւն ցուցեալ՝ կատարի մահուամբ գե-
տասոյզ եղեալ. և զօրքն ցրուեալ բաժանեցան։

---

## ՅԱ.

### ՄԽԻԹԱՐ ԱՆԵՑԻ ԺԱՄԱՆԱԿԱԳԻՐ

Մխեալք Աստուծով ի սկիզբն մատենիս աշ-
խարհավէպ հանդիսարանացս[2], այժ առեալ՝ սատար
և նեցուկ զաղօթս սրբոցդ, եւս և զպատճառի բա-

1. Այն է Փրեդերիկոս Ա կայսր Ալամանաց կամ Գերմանացւոց. ոչ էր անարի իբրև զՊեմունդ, և շատ քաջութեամբ եկաւ մինչև ի սահմանս Հայոց Ռուբինեանց, այլ անկարծելի ջրախեղդ մահուամբն ցրուեցան քրիստոնեայք։

2. Պատմագրութեանն Յառաջաբանն է, որոյ մասանց սկզբնագրերն՝ իր անունը կազմեն Մխ–իթ–ար.

նիս, անսայթաք հաւատով կառուսցուք զշարաադար[1] մտացս՝ ի յոյսն անկարծելի և ի սէրն անկեղծաւոր, և այնպէս զօրացեալք ի Բանէն՝ որ բանիւ գոյացոյց զեղեալքս ամենայն, ուղղեսցուք զմակոյկ բանիս ի վերայ մկանաց անդնդահայեաց ծովայս խորութեան, ի ձեռն առեալ զայս մոյթս[2] սրտի և դաք[3] պարանոցի. որում աւարտն և նաւահանգիստն յանձն է քաջ և անմոլար նաւապետին:

Եւ արդ, ըստ կատարելոցն հրահանգից ի սոփեստական յեղանակսն՝ պարտ է յամենայնում յառաջարկութեանցն նախ քան զամենայն հարկաւորութիւն ցուցանել, թէ յաղագս ո՞յր է բանս, յորում և զբովանդակ մերս շահիցն և զհոյլս օգտութեանց՝ յայտ ածել և առաջի դնել. և ապա զի զմիտս ընթերցողաց և լսողացն առաւել յօժարագոյն արասցէ, և ի վարժումն մատենիս փութացոյնս և անյապաղս մղեսցէ:

Եւ արդ, է բանս սակս բացայայտութեան անցելոց իրաց, լաւաց և վատաց, արեաց և անարեաց, խաղմից հինից և խաղաղութեանց, պէսպէս և զանազան զրուցատրութեանց, որ ընդ ներգոյս ողամանակ[4] տեղեկութեամբ թեւացեալ յԱդամայ հետէ մինչեւ ի բնաւին վերջին ամանակս, յաւուրս Յովհաննիսի թագաւորի[5]. և անտի լայն և տարած բանիւք ընդարձակեալ մինչ ի ՈԽԲ թուականս:

տեսակ մի բանախաղութիւն, որպէս և լեզուի ոճն այլ բառախաղ է և իմաստակ:

1. Ուրիշ հեղինակի քով գրուած կայ Շարասղար, իբրեւ խմբապետ նշանակելով. այս տեղ գուցէ աւելի յարմար էր ըսել չար-սաղաստ, իբրեւ ցնդած միտք:

2. Հաստ գերան կամ նեցուկ. թուի հաստատութիւն ըսել ուզէ:

3. Անծանօթ է ինձ բառս:

4. Համառօտ, կարճ ի կարճոյ:

5. Բագրատունեաց վերջին Գագիկ թագաւորին հօրեղբայրն, յառաջին կէս ԺԱ դարու:

Իսկ մթերքն շահիցն ի սմա ամբարելոց, նախ լուսաւորութեան ոգոյ՝ ի զանազան բանս և ի գիտութիւնս, նա և ի բարեացն զլաւն չտեսմարանել, և ի վատթարացն զՀնարս զգուշանացն հայթայթել, յորմէ և ճողոպրեալ լինին բազում ոգիք ի չար սադրողաց։ Եւ երկրորդ, զկենցաղոյս ուսանել զզանազան քաղաքավարութիւնս. ի թագաւորացն՝ զթագաւորական ընդոստութիւն, յիշխանաց՝ զիշխանական ընթացս, ի զինուորաց՝ զմարզ մրցական հանդիսիցն, նմանապէս և յայլոցն և զայլսն, ընդ հոգեւորին՝ զհոգեւորն, ընդ կենցաղոյս՝ ըզմասնաւորն։

Քանզի յայսպիսի պատմութեանց ուսաք, թէ յարարչէն ստեղծեալն մեք միայն եմք անիշխան[1] ի սեռս կենդանեաց, որ յարարչապատում մատենիս անդ. նա և զբարձրագոյնն ասելի է. քանզի սովաւ ծանեաք զբնութիւն արարածոցս եղական գոլ, յոչէից ածեալ ի գոյութիւն՝ արարչին. ի սմանէ, թէ լքաք թողաք զվայրն վայելչական, և թէ մերկացաք ի փառաց, կողոպտեցաք յանմահութենէն։ Սա ուսոյց մեզ թէ բանսարկուն պատառեաց զզարդն մեր ցանկալի, և զխայտառականս մեր տերեւոյն կարօտացոյց։ Զամբարտակին սկայից կործանումն, զՆոյի յայտնի պատիւն, թէ արդարք այսպէս պատուով պատուին. զՄելքիսեդեկին, զԱբրահամուն, զՂովտայն և զկնոջն, զերկնատեղաց հրացանութիւն[2]. զբովանդակ Եգիպտոսին, զՄովսէսին և զանապատին, զերկրին աւետեաց, և զայլսն ամենայն մինչեւ ցՔրիստոս. զամենատենչ լուսոյ գալստեանն առ մարդիկ, և զանպայման ցնծութեան գործս և զբանս և զարդիւնս, որ ինչ յօրէնս և ի մարգարէս և յաւետարանս, պատմութեամբն ուսաք և իմաստնացաք։ Եւ եթէ ժամանակագրութիւն ոչ էր՝ առասպելօք և այլանդակ

1. Անձնիշխան պէտք էր ըսել։
2. Սոդոմայ վրայ թափուած կրակն։

գրուցօք և անդէպ հերձուածով լի էր եկեղեցի[1]։ Կամ թէ զարդարն ասել, զոյին ոչ իսկ և հետք հաւատոյ և ճշմարտութեան, եթէ ոչ էին կանոնք և տիպք պատմութեան, որ տուաւ մեզ ի սրբոց աւանդողացն. զայլուստ Բանին և կամ զործք առաքելոցն, կամ այլք ոտցին նման, որք ուսուցին մեզ զմիճարանութիւն ուղղացն ընդ Թիւրոն։ Եւ թէ ոչ ի պատմագրութենէ ահուաք զճանապարհ առաքինութեան և զգնացս որ ուղիղն է, ամենայն ոք կործանէր անկանէր ի խորխորատս կորստեան, ոչ ոք ծանօթ հաւատոյ գրուցաց, և ոչ տեղեակ կարգաց առաջնորդաց և Թագաւորաց. ոչ գիտութեամբն թէ լաւքն այսու առաքինացան, և ոչ զըղջումն՝ թէ վասն այսպիսի կենաց փառքն պատժապարտեցան[2].

Զի թէ որ այսչափ մանրապատում եղեն հնոցն և նորոյս կարգօք՝ և կրօնք և գործք և բանք, և ցանկապատեցաւ այգիս քրիստոսատունկ, դեռ եւս մըտանեն ապականեն աղուէսք ժանտագործք և խառնափնթորեն զոճ ճշմարտութեան, զի՞նչ ինչ արդեօք էր ի չարեաց՝ որ ոչ գործէր ի մէջ տգիտաց և անծանօթից գիտութեան։ Արդ, որպէս յայտնի է գիտնոց յայժ օգտութիւն սորա, ձեռն ի գործ արասցուք յուսով տալ զանձինս յաշխատութիւն հոգեւոր, ապաւինելով ի սուրբ շնորհս Հոգւոյն։

Արդ, ո՜ պատուական հայր Գրիգորիէ[3], գրեթէ զհարիւր և զքառասուն ամաց[4] մեծամեծ գործս՝

1. Թէ որ ստոյգ ժամանակագրութեամբ պատմութիւն չըլլար՝ եկեղեցական շփոթուածոց այլ ստուգութիւն չէր ըլլար։

2. Բոլոր գրածին միտքն այս է, թէ շատ հարկաւոր է պատմութիւն՝ անցեալները գիտնալու համար. և եթէ այսչափ գրուածներէ վերջ այլ՝ դեռ սուտ բաներ կ'ըսուէին, եթէ գրուածք չըլլային՝ որչափ աւելի ստութիւն և տգիտութիւն կ'ըլլար։

3. Շիրակայ Հառիճոյ վանից առաջնորդն էր։

4. Յովհաննու Թագաւորութեան վերջէն կամ մա-

խնդրէ քո պատուականութիւնդ, ի ժամանակաց անտի Յովհաննիսի յետին և վերջնոյն Բագրատունեաց՝ մինչև ի Ներկայս յայս՝ յորում եմքս գտեալ. իսկ ի վերայ այսոցիկ էր խնդիրն՝ ի գրի աստ նախ սկսանել զառաջին գերեալն յԵրուսաղէմ[1], յոստոց և յարմատոց Դաւթի մարգարէի, զոր գերեալ Նաբուգոդոնոսոր, և խնդրեալ Հրաչեայ պարգեւ զՇամբաթ՝ յարքայէ։ Արդ, հիմն բանիս պարտ է անդր ի վեր ընթանալ, և անտի կարգաւ աստ առ մեզ կացուցանել. և այս ի յոլովս արտաքերքի և կազմէ աշխատութիւն, ընդ որ յոյժ համառօտիւ կամիմք անցանել, տալով միայն պատճառ իմաստութեան քո։

Եւ արդ, գումարեցի զայսոսիկ գումարումն յերիս պրակս. զի խոստովանութիւն մեր և հաւատ՝ է ի Սուրբ Երրորդութիւն, որպէս Պօղոս ասէ, «Զամենայն զոր ինչ առնէք՝ յանուն տեառն և Աստուծոյ արարէք»։ Ա. Պրակն սկսանի ի Պարոյրայ Հայկազնոյ առաջին թագաւորէ Հայոց՝ մինչև ցՅովհաննէս վերջին. իսկ Բն ի Յովհաննիսէ մինչ ի քահանայանալն Տեառն Բարսղի[2]. և Գն մինչեւ ի գերելն զԵրուսաղէմ[3] և յելս ազգաց Ֆրանգաց։ Յայս երիս Հատուածս բազմապատրաստ ճառիւք՝ ոչ զանդաղեցից գրել, քաղելով ի սրբոց և ի պիտանեաց պատմութեանց. զի և աղքատք և մուրացիք սովոր են ի փշրանաց և ի դրացեաց առնուլ փոխ

հուանէն մինչեւ ի ՈԻԲ թուականն պատմութեանն, (եթէ տոյգ է այդ թուականդ՝) կ՚ըլլայ 130 տարի իսկ եթէ ՈԼԲ 140 տարի։

1. Բագրատունեաց ցեղին պատմութիւնը գրել նշանակէ, որոց նախահայրն Շամբաթ գերի եղած էր Նաբուքոդոնոսորի, որոյ օգնականն Հրաչէ թագաւոր Հայոց՝ խնդրեց և առաւ տարաւ զնա ի Հայս։

2. Եղիսկոպոս Անւոյ, որ և ուզեց ըլլալ կաթողիկոս։

3. Սալահէտտինի համար է ըսածն։

և կերակրել զեկեալ հիւրս մեծատունս, թէպէտ և այնպէս ոչ իցեն զի հանցեն ի համբարաց և ի գանձուց զնորն և զհին. և որ բարեմիտ բազմեալք իցեն՝ զսակաւն լուրջ երեսօք գոհութեամբ ընդունին, պայծառացուցանեն զամօթալի դէմս մուրողին, և առնուն վարձս ի Տեառնէ։

---

# ՅԲ

## ԳՐԻԳՈՐ Ե ԿԱԹՈՂԻԿՈՍ՝ ՔԱՐԱՎԷԺ

### (ՏԱՐԷԳԻՐՔ ԿԻԼԻԿԵՑԻՈՑ)

Ի սոյն ամի (1193) փոխեցաւ առ Քրիստոս՝ կաթողիկոսն Տէր Գրիգորիս (Դ) ի վեշտասան օրն մայիս ամսոյ, Հայոց յաշխարհն Կիլիկեցւոց, և թաղեցաւ ի Թրազարկն[1]. և նստաւ յաթոռն իւր որդի քեռն իւրոյ Տէր Գրիգորիս, որ կոչի Վահրամ, տղայ տիօք... Յորժամ եղեւ կաթողիկոս՝ ոչ տանէր զառաջին հնազանդութիւնն՝ ամենեցուն, որպէս յորժամ ընդ դաստիարակաւ էր. այլ ինքնիշխանութեամբ տանէր զհայրապետութիւնն, որպէս տեսեալն էր ի քեռին իւր։ Յայնժամ մախացեալ ընդ նա աւագագոյն մարդիկն՝ առաքեն առ Լեւոն և ասեն. Ոչ ունի սա իմաստութիւն՝ վարել զհայրապետութիւնն, որպէս արժան է։ Եւ յօդեցին որպէս կամեցան զնմանէ[2]. և զայս արարին միանգամ և երկիցս և երիցս, մինչեւ շարժեցին զԼեւոն ի կամս իւրեանց։ Եւ առաքեաց ի բերդն Հոռոմկլայն[3] զարքեպիսկոպոսն՝ զՏէր Յոհաննէս[4], առ-

1. Այս Տարեգրոց հեղինակն միշտ Թ տառիւ գրէ այս վանաց անունը, զոր այլք գրեն Դեւ Դրազարկ։
2. Ուզածնուն պէս զրպարտեցին զկաթողիկոսն։
3. Այս տեղս Հառոամկլայն գրուած էր յօրինակին։
4. Այն ատեն Սսոյ արքեպիսկոպոս էր, յետոյ կաթողիկոս եղաւ։

նել ըստ իմաստութեան իւրում· և նա գնացեալ անդ և մտեալ առ կաթողիկոսն՝ պատուով և մեծարեալ որպէս զհիւր և զազգային· իսկ նա ձեռնտուութեամբ սպասաւորաց նորա, մինչդեռ էին նստեալ ի սեղանն ի ժամ ճաշոյն, ետ փակել ըզդրունս բերդին· և տարածեցաւ աղմուկն։ Եւ Հայրապետն զարհուրեցաւ, և ասէ ցՏէր Յովաննէս· Զի՞նչ է այս զոր լսեմս· և նա ասէ· Բռնած ես։ Եւ կալեալ զնա եդին արգելանի, և ամրացուցին պահապանօք։ Եւ իբրև տարածեցաւ համբաւն յարտաքին բերդն և ի ներքին շէնն, հասին ամենեքեան զինուք ի վերայ կլային, առ ի յօգնութիւն Հայրապետին իւրեանց· և զաւուրս երիս պատերազմեցան նետիւ, և ոչ ինչ կարացին առնել· և ապա խաղաղացան։ Եւ առեալ Տէր Յոհաննէս զդատապարտեալ Հայրապետն՝ եբեր առ Լեւոն· և եդին զնա ի պահեստի՝ ի բերդն Կոպիտառա, ժամանակս ինչ կալ անդ։ Իսկ բնակիչք Հոռոմկլային աղէկիզեալք ընդ անիրաւ դատապարտութիւն Հայրապետին իւրեանց, առաքեն առ նա ծածկաբար, զի հնարեսցէ զելն իւր ի բերդէն, և մատուսցեն նմա երիվարս, և տարեալ արասցեն զնա տէր բերդին իւրոյ։ Որոյ անկեալ ի բանս նոցա մանկաբար, և առեալ կտաւ՝ կախեցաւ ի գիշերի՝ իջանել ի բերդէն· և կտաւուն անկն[1] բեկեալ պատառեցաւ, և անկաւ ի խոնարհ, բարձաւ մեռեալ։ Եւ առեալ տարան ի Թրազարկն, և անդ թաղեցին զնա, մերձ առ դամբարան քեռոյն[2] իւրոյ։ Եւ էր թուականն Հայոց ՈԽԳ։

1· Հիւսուածքն· արմատ անկանել բայի, հիւսելու նշանակութեամբ։

2· Ցօրինակին՝ քեռն գրուած էր։

# ՁԳ

## ՀԵԹՄԵԱՆՔ ԿԱՄ ԼԱՄԲՐՈՒՆԱՑԻՔ, ՅՈՐՈՑ Ս. ՆԵՐՍԷՍ ՍԱՂՄՈՍԱՄԵԿՆԻՉ

(ՍԱՄՈՒԷԼ ՍԿԵՒՌԱՑԻ[1])

Ընդ նուաղել թագաւորութեան և իշխանութեան Հայոց, յորժամ յափշտակեցաւ յԻսմայելացւոցն մայրաքաղաքն Անի[2], և տարագրեցան թագաւորքն մեր ի գաւառս և յիշխանութիւնս արքայիցն Յունաց, այր ոմն յիշխանացն Հայոց Ապլխարիբ անուն՝ որ էր ի տանէն Վասպուրականի[3], իբրև զմտերիմ և զխոհեմ և զարի ի գործ պատերազմի՝ առաքեցաւ յինքնակալէն Ալեքսէ[4] ի գաւառս Կիլիկեցւոց՝ իշխել մայրաքաղաքին Տարսոնի և Մամեստիոյ. որ և եկեալ տիրէր սոցա հայրենի կարգօք, և մնայր ի հաւատարմութիւնն Յունաց: Եւ շինեալ տաճարք աղօթից ի լեռնային և ի դաշտային գաւառս, որ և բազումք կան ի մէջ Յունաց՝ Հայաստեա ազգիս պաշտամամբք: Սա եգիտ ի ստորոտ լերինն Տաւրոսի և ի գլուխ քաղաքին Տարսոնի երկու անմատոյց դղեակս, միոյն անուն Լամբրոն միւսոյն Պապեռոն[5]. որք և ունէին շուրջ

1. Գրողս թէ և զինքն աշակերտ ցուցընէ Ներսեսի՝ բայց վկայէ որ անկէ այլ աւելի տարւոք էր. շատ լաւ ճանչցեր էր անոր գերազանց հանճարն ի մանկութենէն, և զարմանալով անոր ըրածներուն և գրածներուն, հասակին տարիներն այլ նշանակէ խնամով, որ չըլլայ թէ պարագայից անծանօթ մնան այնպիսի անձն և գործքն, ինչպէս քանի մի հին հեղինակաց:

2. Տես զՅօդուածս 259 և 281:

3. Արծրունեաց ցեղէն:

4. Ալեքս Կոմնենոս Ա. յամս 1081–1118:

5. Այդ երկու դղեկաց այլ երկար տեղեկութիւնք տրուած են ի Սիսուան գիրս:

զինքեամբք զիւղս և աւանս. զՊապեռոնն՝ իւր անփականելեաց զանձուց շտեմարան, և շինեալ եկեղեցի մեծ՝ դամբարան հանգստեան սահմանեաց իւր և իւրոցն. և զԼամբրունն եւս ի մտերիմ և ի սիրեցեալ իշխանն որ եկեալ էր ընդ իւր յաշխարհէն Հայոց[1], անուն Օշին. և աւանդեաց ի նա զմասն մեծի և գլխաւորի Առաքելոյն Պետրոսի, զոր ունէին Հայք, ըստ նախագրեալ պատմութեանն[2]. և հրամայեաց հպատակութեամբ սպասաւորել յայսմ դղեկի՝ որբոյ Առաքելոյն, և իւր անփական ունել զբերդս և զգաւառս:

Որ եկեալ ազգատոհմաւ իւրով և գտեալ զանառիկս ամայացեալ՝[3] շինէր ըստ կարի. և պատրաստեաց նախ ի ծայր բերդին հանգստարան սուրբ և գլխաւոր Առաքելոյն նշխարաց: Իսկ Ապլղարպայ վախճանեալ եդաւ ի Պապեռոնն. և տիրեաց Տարսոնի մի յիշխանաց իւրոց՝ փեսայ Օշնին. յորոյ աւուրս յարձակեցաւ ազգն Իսմայելացւոց ի վերայ գաւառին Կիլիկիոյ, ի հինգ հարիւր թուականին Հայոց (1052), և զամենայն դաշտային գաւառսն աւերեաց, էառ և զՏարսոն և որով ճարակեաց զքրիստոնեայսն: Իսկ Օշին մնացեալ յանմատչելի ամուրս՝ անփորձ, և մտերմացեալ Յունաց արքային՝ առնոյր ի նմանէ անուն պատուոյ և տուրս զանձուց առատապէս: Յետ սորա վախճանին տիրեաց որդի իւր Հեթում՝[4] հայրենի աթոռոյս, և պատուեցաւ ի Յունաց արքայէն Ալեքսէ

1. Մեծ Հայոց ամենէն արեւելեան հիւսիսային սահմաններէն:

2. Ուրիշէ պատմուած պիտի ըլլայ. այս նշխարքն չէ Մատն Պետրոսի պատմեալն յ'234 Յօդուածի, այլ թերեւ Լուսաւորչի և Տրդատայ ատենէն բերուած:

3. Այսինքն, այդ ամուր բերդերն՝ աւրուած երեւէ ձգուած գտեր է և նորոգեր է:

4. Հաւանօրէն Օշնի հայրն այլ Հեթում կոչուեր, յորմէ բոլոր ցեղն Հեթմեանք:

Սեբաստացւոց անուամբ. յորոյ ժամանակն եկն Փըռանգն եւ էառ զսուրբ քաղաքն Երուսաղէմ, եւ զԱնտիոք եւ զԿիլիկեցւոց քաղաքս, ի ՇԽԷ (517=1098) թուականին։ Եւ յետ ժամանակաց անձուկ բազում նեղութեան կրեաց ի Նոցանէ սեբաստացւոց Հեթում՝ վասն հայրենի բերդին. եւ զերծեալ յամենայնէ օգնութեամբն Աստուծոյ եւ սրբոյ Առաքելոյն Պետրոսի, փարթամացաւ եւ մեծացաւ օգնութեամբ թագաւորին Յունաց Յոհաննու[1]։ Եւ զի ունէր որդիս վայելուչս եւ դստերս՝ որք կատարեցան հասակաւ առաջի իւր, ամուսնացոյց զոմանս ի Նոցանէ. եւ զաւագ որդին իւր որոյ անունն Օշին՝ եթող ընդ իւր միայն առանց ամուսնութեան. իսկ Սմբատայ որ յետ Նորա՝ ետ զՊապեռօնն, եւ միոյ ի դստերացն փեսայացոյց զեղբայր կաթողիկոսին Հայոց Գրիգորի՝ զՎասիլ, որք էին թոռունք Գրիգորի մագիստրոսի Բջնեցւոյ։ Իսկ յետ վախճանին Հեթմոյ պայազատեաց զհայրենի աթոռն՝ հարազատ որդին Նորա Օշին, եւ պատուեցաւ յարքայէն Մանուէլէ սեբաստոս անուամբ. եւ փարթամացաւ բազում գանձիւք։ Յորոյ ժամանակս դարձեալ տիրեաց Յունաց արքայն Տարսոնի եւ այլ քաղաքաց Կիլիկիոյ[2]։ Սմա հարսնացոյց փեսայն իւր Վասիլ ըզդուստր եղբօր իւրոյ Զօրավար անուն՝ զանխլաբար ի կաթողիկոսէն յեղբօրէն իւր, վասն խղճին որ կայր վասն խնամութեանն[3]. եւ լեալ սմա կին ժրա-

1. Կիռ Ժանն, յամս 1118–1143։

2. Ա Լեւոն եւ Բ Թորոս Պարոնայց ժամանակ։

3. Վասիլ եղբայր Շնորհալւոյն՝ կին առեր էր զՄարեմիկ դուստր Հեթմոյ որդւոյ Օշնի. տեր համանուն որդւոյն՝ Օշնի՝ որդին Հեթում՝ կին առաւ զՇահանդուխտ՝ դուստր Շահան Զօրավարի եղբօր Վասլի եւ Ն. Շնորհալւոյ. որով այս Բ Օշին առած է իր քեռւոյն դուստրը. այս է մերձաւոր խնամութիւնն, զոր հայր հարսին Զօրավար՝ եւ փեսայն Հեթում՝ խղճահարելով՝ առանց յայտնելու կաթողիկոսին (Գրիգորի՝

գլուխ և պսակ առն իւրոյ, իբրև զայգի վայելուչ զնորատունկս զաւակաց ծաղկեցուցանէր շուրջ ըզ-Հայրենի սեղանովն, և միային յօրհնութիւն Աս-տուծոյ։ Ցորոց ծնաւ յետ անդրանիկ դստերն՝ որդի Հերուամ անուանեալ ի Ա թուականին (600=1151). և երկրորդ՝ Հայրս մեր (Ներսէս) վասն որոյ բանս է։

Որոյ ի ստնդիաց հասակն պատուաճեաց ախտ ցաւ-ւոց. բերաւ ի հաւատարիմ ծնողացն և ընծայեցաւ ամենօրհնեալ և միշտ փառաւորեալ Աստուածածնին՝ ի տաճար անուան իւրոյ որ ի վանքս Սկեւռայ[1], առընթեր բերդին։ Եւ սկսեալ ի դեռաբոյս հասա-կէն յուսումն դպրութեան, ըստ յօժարութեան ծնո-ղացն ընդ այլ եղբարս. մանաւանդ ի քաջահաւատ մօրէն իւրմէ դաստիարակեալ յամենայն երկիւղ։ Իսկ բարեպաշտ իշխանն Օշին բերեալ ուստերս հինգ և դստերս երեք, և համբերեալ պէսպէս փոր-ձանաց վասն առ Ցունաց արքայն հաւատարմու-թեան[2], լի աւուրբք ի ծերութեան հասակն՝ յաթոռ

եղբօր Շնորհալւոյ). պսակը կատարել տուին։ Այս-պիսի պսակէ մի ընծայեցաւ մեր եկեղեցւոյ և ազգի գերագոյն պսակաց մին, Ներսէս Լամբրոնեացի. և իր հարազատքն, նշանաւորք հանճարով և բարեպաշ-տութեամբ, որպիսի էին և քուերքն և անդրանիկ եղ-բայրն Հեթում-Հեղի։ Տես յետոյ և զՅօդուածն 304։

1. Այս մեծ վանաց տարագրութիւնն այլ պատուի ի Սիսուան, նոյնպէս և Կոստանդին կաթողիկոսի շի-նած և հօն դրած Սրբոց Նշխարաց Պահարանին տա-րագրութիւնն, որ և հրատարակուի այս գրոցս մէջ։

2. Գլխաւոր փորձանք բերողքն էին Ռուբինեանք, զորոնք կայսերքն Յունաց համարէին իրենց երկրին (Կիլիկիոյ) յափշտակող. Հեթմեանք այլ հաւատարիմ հպատակ ըլլալով կայսերաց՝ Ռուբինեանք նեղէին զանոնք և ջանային տիրել Լամբրոնին։ Զասոնք հաշ-տեցընելու համար հարկ եղաւ Շնորհալւոյ գալ միջ-նորդելն, և խնամութեամբ կապելն. Թէպէտ յե-տոյ այս այլ բաւական չեղաւ Բ Ռուբենի և իր եղ-բօր Մեծին Լեւոնի, որ Լամբրոնի և բովանդակ Կի-լիկիոյ տիրելով՝ միապետեց, և ամենքն լռեցին և հաւանեցան։

իւր և ի մէջ եղբարց և զաւակաց՝ օրհնութեամբ փոխեցաւ առ Քրիստոս, և եղոյց անդրանիկ որդւոյն Հեթմոյ՝ զտէրութիւն հայրենի աթոռոյն. իսկ նուիրելոյ որդւոյն որ Աստուծոյ՝ կալ ի գլուխ առ յինքենէ շինեալ եկեղեցւոյ սրբոյ վանիցս: Եւ տուեալ Աստուծոյ շնորհ անդրանկին՝[1] խոհեմութեան և իմաստութեան՝ գնաց առ արքայն Յունաց Մանուէլ, և փարթամ տրօք էառ զհայրենի պատիւ սեբաստաւորութեան:

Իսկ այս որ ի կրօնաւորականս էր վիճակ՝ յետ դաստիարակելոյ մանկական ուսմամբք, ի վերջաւան առ ընթացից հասակին ածաւ յերկիւղագործ մօրէն իւրմէ առ կաթողիկոսն Սուրբն Ներսէս, որ յաջորդեալ էր զաթոռ եղբօրն՝ Գրիգորի, ամենայն իմաստութեամբ և գիտութեամբ զարգարեալ. և սա ըստ հաւատով հայցուածոց զատեր եղբօրն իւրոյ՝[2] զմանուկն ածեալ առաջի ձեռնադրեաց քահանայ ի կրօնաւորական ձեւ, և կոչեաց յանուն իւր Ներսէս. զոր թողեալ մօրն առ ոտս նորին ի վարժումն՝ գնաց յերկրպագութիւն սուրբ տեղեացն Երուսաղէմի: Այլ Ներսէս կացեալ ի հայրապետական աթոռն փոքր մի աւուրս՝ ի շնորհէ ձեռնադրութեան զօրացեալ հոգւով՝ տենչայր յանգրաւ կեանս միայնութեան և ընթերցման. և սուրբ Հայրապետն ուրախացեալ ընդ յառաջադիմութիւն մանկանն՝ առաքեաց զնա ի վանորայս Սեւն լերին. յորս շրջելով գործնական նիազութեամբն[3] և տեսականին կրթութեամբ յառաջէր, և նկրտէր հասանել ի լրումն առաքինութեան ի աչերն Քրիստոսի:

Եւ յետ ամաց դարձեալ ի հայրենի աթոռոյն և

1. Որ է Սեբաստոսն Հեթում, յետոյ կրօնաւորեալ և Հեզի անուանեալ:

2. Որ է մայրն Ներսեսի՝ Շահանդուխտ. տես նախընթաց երեսի 7դ ծանօթութիւնը:

3. Թերեւս աշխատութեամբ աղքատօրէն ապրելով իմանալու է:

փափագանօք ի ծնողէն և յեղբարցն, ոչ հաւանեցաւ կալ ի գլուխ ուխտին՝ որ աւանդեալ էր նմա[1] ի հօրէն իւր. այլ ի մէջ լերինս յամայացեալ տեղիս, ընդ հոգևոր դաստիարակին իւրում Յոհաննու՝ եղեալ մնայր ի միայնութեան. և քաղցր էր նմա այն՝ քան զամենայն հեշտութիւն. և կոչէր անապատն իւր բնակութեան՝ Աստուածածին Սաղրոսի, ի հուանս գետոյն Ճեռակրայ[2], և մերձ նմին տաճար Սրբոյն Գէորգայ. յորում յանձուկ սենեկի՝ ի գիշերի և ի տունջեան անհանգիստ յընթերցումն, և միայն կատարէր զգործ սուրբ պատարագին պաշտաման։

Իսկ ի ՈԻԲ թուին (622=1173) փոխեալ առ Քրիստոս հայրապետն Ս. Ներսէս և յաջորդեալ յաթոռն սուրբ՝ նորին եղբօր որդին Գրիգորիոս՝ մականուն կոչեալն Տղայ, որ և քուերորդի հօր սորա, ձգէ յինքն զմանուկս Ներսէս հրամանաւ գրոյ. և սա վասն առ նա անանջրպետ սիրոյ, և վասն թերի ունելոյ զվարժումն գրոց՝ փութացաւ առ հարազատն իւր հայրապետն սուրբ. և նորին խնամօքն ի ձեռն վարժապետաց որոց քննեալ տեղեկացաւ հին և նոր Կտակարանաց իմաստից։ Զոր՝ քսան և երից ամաց ձեռնադրեաց հայրապետն՝ եպիսկոպոս Տարսոնի նոյն և Լամբրունին և շրջաբնակ գաւառացս, և առաքեաց առ իւրս պատուով։ Իսկ սորա եկեալ խուսափէր ի հովուութեան ըզբաղմանց, և ի տենչանս ընթերցման գրոց նկրտէր. և զի ոչ կարէր ըստ տափման իւրոյ ունել զանդրաղութիւն, փախստական լինէր այսր անդր ի հեռաւոր տեղիս։ Եւ զի վարժեալ էր ի մանկութեանն ջանիւ մօր իւրոյ զհելլենական գիրն՝ տենչմամբ որ առ նոսին իմաստութեամբն, եմուտ ի կղզին Կի-

1. Այսինքն՝ Սկեւռայ վանաց առաջնորդութիւնն, զոր յանձնեալ էր իւրն հայրն՝ Օշին։

2. Թէ վանքն Սաղրու և թէ գետն Ճեռակրի շատ ծանօթ չեն. տես ի Սիսուան։

պրոս աղքատապէս, մնալ անդ ի կատարեալ ուսումն
նոցին հեռաւորութեան։ Սակայն ոչ եւս թոյլ բաղ-
ձանք մօրն և սէր եղբարցն. յարժամ լուան՝ ածին
վերստին անտի բռնութեամբ։ Եւ ծանուցեալ թէ
ոչ կարէ հեռանալ, եւ դարձեալ յառաջին իւր անա-
պատն՝ կոչեցեալ Սաղրոս. յորում զանձուկն ունէր
սենեակ, և զդաստիարակ հոգեւոր հայր իւր Յո-
հաննէս, բնակեալ ի տեղւոջն, և անդ հաւաքեալ
զամենայն աստուածային գիրս, արգելեալ ի տեղ-
ւոջն ամաց ժամանակ, և կեայր ընդ մարմնոյ և
բանիւ Աստուծոյ, որ քաղցր է ի քիմս ճաշակո-
ղացն՝ քան զմեղր բերանոյ. պաշտէր ի տէրունա-
կան աւուրս զգոհութիւն՝ սրբոյ պատարագին խոր-
հրրդոյ, և յայլ աւուրս մնայր յառանձնական սե-
նեակն յընթերցումն և ի գրութեան, և յաղօթս
զբաղեալ։ Իսկ հոգեւոր հայրն իւր և դաստիարակն
Յոհաննէս՝ ի նստելն երբեմն երբեմն առ նմա՝
քննէր զմիտս Սաղմոսացն, և ի լուծանելն՝ աղա-
չէր գրել զնոյն և թողուլ ի պէտս զկնի եկելոցն։
Յայնժամ ըստ կամացն Աստուծոյ և ըստ հնազան-
դութեան խորհրդին՝ սկիզբն արարեալ գրել զքննու-
թիւն երգոց Սաղմոսին, ի շրջանս աւուրց ամաց
իւրոց քսան և վեց թուոյ և թուականիս վեց հա-
րիւր քսան և եօթանց (1178), և կատարեալ ի
քսան և ինն ամի[1]։

Յետ այսր փութացաւ ի լեառն որ առ ընթեր
մեծին Անտիոքու, ի վանօրեայսն՝ որ ի Լատինաց-
ւոցն և ի Հելլենացւոցն պայծառանային անդ աս-
տուածահաճոյ կարգօք և կրօնիւք, և բնակեալ անդ
աւուրս ինչ՝ թարգմանէր զՄեկնութիւն Յայտնու-

1. Երեք տարուան մէջ՝ իր տարիքին 26–9ին, Ն. Լամբրունացին քններ, մեկներ գրեր է բոլոր Սաղ. մոսաց գիրքն՝ երկար և լուսաւոր բացատրութեամբ. որ մեծ գիրք մի եղած է և մեծագոյն գործ, մանաւանդ հեղինակին դեռ երիտասարդ հասակն այլ նկատելով։

թեան Յովհաննու[1]: Եւ բանադատեալ դարձեալ ի սիրոյ հայրապետին սրբոյ Գրիգորի՝ որ կոչէր հռովմայական սատարիւ, գնաց առաջի նորա. ողոքանօք և ահարկութեամբ հաւանեցուցանէր կալ ի գլուխ ժողովոյն[2] որ հաւատացաւ նմին ձեռնադրութեան: Եւ այսպէս զսլացումն մտաց[3] ընդ իւրև նուաճեալ հոգևոր հօրն, առաքեաց զնա ի Նուաստ գձձութենէն յաթոռ իւր պատուով:

Ի նոյն ժամանակի և եղբայր իւր մեծապատիւ սեբաստոս Հեթում, ամենապատիւ վայելչութեամբ շինեալ էր զտաճար աղօթից ի սուրբ ուխտս, և նկարագրութեամբ պատկերաց զարդարեալ. ընկալեալ զելեալ յանապատէ փեսայս գեղեցկացեալ աստուածային հանճարովն՝ որպէս լուսին, և պայծառացեալ գիտութեամբն որպէս զարեգակն. և հիացուցանող վարուք, կացուցին յաջմէ սորա պղչխոյ սուրբ տաճարիս զարդարեալ և պանծացեալ[4]. և բազմեալ ի քահանայական աթոռն, և ի տօնի Իսկաւհեոյն ետ զխաղաղութիւն՝ ժողովս. և յարուցեալ կատարեաց զքանչելի խորհուրդ սրբոյ պատարագի, յիշատակ փրկագործութեան Քրիստոսի և քաւութիւն ժողովրդեանս. որոյ հաղորդեալ առ-

1. Տես յետոյ Լամբրոնացւոյն այս և ուրիշ գրոց Յիշատակներն ի յաջորդ 306 Յօդուածի:

2. Ժողովրդեան կամ կեմին հագն:

3. Ներսիսի արդարև բարձրասլաց միտքն փափագէր ուսմանց և աստուածային մատեանց՝ յառանձնութեան, բայց կաթողիկոսին հրամանաւ և վախով՝ հարկ եղաւ զսպել իր մտաց և հոգւոյ բարձր ոլացքը, և իջնել հոգալ իրեն յանձնուած ժողովուրդը:

4. Երզնկացին ըսածը (Գ. Ե. Զ, 9) յիշեցընէ, շատ յարմարապէս. «Ո՞վ է սա որ ելեալ գայ յանապա-» տէ... գեղեցիկ որպէս զլուսին, ընտիր որպէս զա-» րեգակն». և համարի զՆերսէս փեսայ՝ եկեալ առ հարսն իւր՝ առ սուրբ եկեղեցին Սկեւռայ, որ և բազմելով յաթոռն քահանայապետական՝ տայ ժողովրդեան զողջոյն խաղաղութեան (ի տօնի Վերափոխման):

ասութեամբս և ճաշակմամբ, ուրախութեամբ մեծա-մատուցանք փառս Աստուծոյ: Եւ յայնժամ հետէ բուռն հարեալ ի միջամտութիւն ժողովոյս՝ բարեկարգութեամբ անօրինէր ի հօրէն իւրմէ աւանդեալ սուրբ ուխտիս. իշխեալ որ ընդ որէ ի ժողով քաղաքին Տարոնի՝ մխիթարէր զնորին վարդապետական բանիւ, և հանգուցանէր յինքն զամենայն անդամս և գլուխս, ոչ միայն զոր ի Հայոց ժողովս, այլ և զՓռանգաց ազգ, եւս Յունաց, իւրաքանչիւր ազգացն կարգաց և կրօնից տեղեակ գոլով, և յընտրողութիւնն հաւանեցուցանող կամ հաւանեալ:

Իսկ յետ ամաց ինչ անցելոց զօրանայր արեան հարազատ սորա Ռուբէն[1], և յինքն նուաճէր յետ մահուան Մանուէլի արքայի զՄամեստիա և զՏարսոն, և ազատութեամբ որպէս զԱքայար զայգին Նաբովթայ՝ բռնադատէր զայս աստուածատուր ամրոցս ի սոցանէ, յորում մեծացեալ զամ մի ողջ յարգելանի և կրեալ զնոցա թշնամութիւնն, դարձեալ այցելութիւն առնէր Աստուած և ուղղէր սոցա զխաղաղութիւն. և մանուկն Ռուբէն ի գլուխ երկրորդ ամին վճարէր մահուամբ, և խնդրէր ի սոցանէ ներումն թողութեան մանկական որ առ նոսին սխալման: Եւ յաջորդէր զիշխանութիւնն հարազատ եղբայր նորին բարեմիտն Լեւոն, և կայէր ընդ նոսա անանձրպետ խաղաղութեամբ: Որ և ի տօնս տէրունականս առ իւր տանէր զհայրս մեր, և առ ի նմանէ վարդապետական խրատով և սրբոյ պատարագին նուիրագործութեամբ մխիթարէր, հանդերձ բազմութեամբ ժողովոյն:

Իսկ զի ի սոյն աւուրս առաւ վասն մեղաց մերոց սուրբ քաղաքն Երուսաղէմ, յայլազգեաց, և ինքնակալն Հռոմայ՝ որ (է) Ալամանաց[2] թագաւոր՝

1. Ռուբէն Բ. որդի Ստեփանէի:
2. Փրեդրիկ Շիկամօրուս, Barberousse, անուանեալ. որ յառաջ քան զնկերսիւր զբազմանութեամբ իւրեն հասանելն. Սելեւկիոյ գետոյն մէջ լողանալու ատեն խեղդամահ եղաւ:

լուծեալ թէ յառաջէ յարեւելս՝ ի փրկութիւն սուրբ տեղեացն. խորհուրդ էառ մեծ իշխողս Լեւոն՝ զհայր մեր սուրբ առաքել ընդ առաջ նորին հրեշտակութեամբ. և վասն այսր մտածութեան գնայր առ սուրբ հայրապետն Գրիգորիոս՝ առնել զնորին հրամանսն և զկամս ընդ իւր: Եւ ի նոյն ճանապարհէ խորամանկ ազգն Իսմայէլի յարձակեցան ի վերայ, և զճանապարհակից եղբարս և զկրօնաւորս՝ սրով ճարակեցին առընթեր քաղաքին Մարաշայ, և զբեռնակիր գրաստսն յափշտակեցին. Մնացեալ խնամօքն Աստուծոյ միայն սա և եպիսկոպոսակից հարազատ իւր Յոհաննէսն՝ և վարժապետն Գէորգ[2]: Եւ զի ունէր ընդ իւր զայս գիրս սրբոյ Պատարագին քննութեանն և եկեղեցական կարգաց՝ յինքենէ առաջեալ շնորհիւ Ս. Հոգւոյն, յափշտակեցաւ յաւազակացն և չմնաց հաւատարն, տրտմեցաւ յոյժ. և ի դառնալն առ մեզ վերստին՝ զգուշացեալ զի մի և այս Մեկնութիւն Սաղմոսիս յիւրք չփոթմանէ՝ որ իւրն է գիր՝ պակասեսցէ և հաւատարն ոչ մնասցէ, յորդորեաց զկրօնակից եղբայր մեր զԳէորգ՝ սկսանել և գրել. և նա յօժարութեամբ յանձն էառ, պատրաստեաց զնիւթն և սկիզբն արար: Իսկ այս փութացուցեալ իշխանական հրամանն զճանապարհն որ առ ինքնակալն Հռոմայ թագաւորն Ալամանաց, ճանապարհակից էառ իւր ըզԳէորգ, և ինձ Մամնակի նուաստի հրաման ետ զսկսեալն ի նմանէ՝ աւարտել. զոր յօժարութեամբ յանձն առի. և պինդ հաւատով ի փառս Աստուծոյ կատարեցի ի թուիս ՈԼԹ (639=1190). Այսամք երեք են կործանման սուրբ տեղեացն Երուսաղեմի:

Եւ յիջանել հօրս մեր ի Տարսոն առ ի նաւար-

1. Թուի թէ երբեմն դատարկանն:

2. Գէորգ Սկեւռացի կոչուած գիտնական վարդապետն, որ Ներսէսի առաջնորդութեամբ Հարանց վարք գիրքը նորէն կարգաւորեց:

կել, ի ճանապարհին որ առաջի կայր՝ ննջեաց ինքնակալն Ֆրիկոնիոն, եւ յետ փոքր ինչ աւուրց զօրք նորին ի Տարսոն, եւ մնաց սոցին յառաջելն։ Իսկ իմ ի գրելոյ զմատեանս ոչ թուլացեալ, քանզի առնուի ի սմանէ զխաւսաւորութիւն հոգւոյ, առընթեր կացեալ միայնութեամբ սուրբ ուխտիս. այլ հրաժարեցի, եւ խնամօքն Քրիստոսի ի վերջին կէտս ժամանեցի. եւ սպասաւորեցի զկնի եկելոցդ մատուակութեամբ զխառնեալ բաժակս աստուածային իմաստից ի հոգեւոր մեր հօրէս, զմայլեցուցիչ հոգւոց եւ մխիթարութիւն եւ բժշկութիւն մարմնոց։ Եւ յաւարտումն սորին փոքր ինչ թողի ձեզ զպատմութիւն կենաց սորին ընթացից. զի մի մնասցէ տարակոյս յառաջել ժամանակին՝ սորին քննողի ամս եւ աւուրն եւ զիա՞րդն. որպէս եւ մեք այսօր ունիմք զբազում հարց մերոց եւ վարդապետաց Հայոց, այսինքն զԴաւիթ Ներգեւեացի, զԳրիգոր Նարեկեցին եւ զՄովսէս Խորենացի եւ զայլս, որոց ի բանից պարապութենէ զուարճանամք, եւ զզիարդն կենաց եւ վարուց փափագելով գիտել՝ ոչ ունիմք, եւ ոչ մի բան վասն երանելեացն պատմութիւն։ Ցաղագս այսր՝ զսորայս մինչեւ ցայս, որ է կենաց իւրոց ժամանակ ԼԸ (38) ամ, ցուցաք համառօտ. եւ մաղթեմք Քրիստոսի տալ զսոյն մեզ՝ եւս երկարութեամբ աւուրց՝ ի գլուխ բարի հովուութեամբն, եւ հանճարեղ այցելութեամբն՝ խնամիչ սուրբ ուխտիս եւ առաջնորդ ժողովոյս։ Եւ զիմս աղքատութիւն դնել սորին օրհնութեամբ ի դամբարան հանգըստեան՝ ընդ սրբոց իմոց հարցն, որ այժմ հուպ եմ սոցին ծերութեան պլեօք կծեալ։...[1]

Ի թուականիս Հայոց ՈԼԹ (1190–1) գրեցաւ աստուածախաւսս մատենիս օրինակն՝ ձեռամբ Սամուէլի նուաստ եւ յետին գրչի, հրամանաւ սրբասնեալ վարդապետի Կ. արհի եպիսկոպոսի մե-

1. Քանի մի տող բան իբրեւ աւելորդ թողուած է այս տեղէն։

րոյ Տեառն Ներսիսի, ի նախայիշատակեալ սուրբ ուխտս Սկեւռայ, առ ընթեր հայրենատուր ամրոցի տերանց մերոց Լամբրունի. յիշխանութեան մեծահանճար աստուածասէր սեւաստոսի Հեթմոյ, և ի վերակացութեան Տեառն մերոյ Ներսեսի և եղբարց սոցին, Ապիրատի և Շահնշահի, զորս տացէ Քրիստոս ի հոգեւոր և ի մարմնաւոր իշխանութիւնս՝ բազում ժամանակս, և ի փոխելն յաշխարհէս՝ ի պարս սրբոց հայրապետացն և աստուածասէր իշխանացն. գասեսցէ ի ժողովս արքայութեան իւրոյ ընդ ամենայն Սուրբս։

Յիշեցէք բարեաւ և զբարի ծնողս սոցին զնախափոխեալսն առ Քրիստոս, զմեծանունն Օշին, հանդերձ երից դստերաւն Մարեմաւ և կրսեր որդեկաւն Գրիգորիւ, զի հանգիցեն ի գոգն Աբրահամու և մխիթարեսցին փառօքն Ղազարու. և մայր սոցին Շահանդուխտ ամենաբարի և ճգնազգեաց, այժմ կրօնաւորեալ ի ձեռաց որդւոյ իւր՝ սուրբ հօրս, երկու դստերօքն, Շուշանաւ և Տաղիթայիւ[1], որք նորին ճգնող շաւղացն հետեւին, զի մխիթարեսցին ի կեանս զաւակաց իւրեանց և եղբարց, և առքօք ընդ նախահանգուցեալսն փրկեսցին յիշխանութենէ խաւարի, և փոխեսցին յարքայութիւն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ի մասն վիճակի Սրբոցն ի լոյս, և ի յարազուարճ խնդութիւնն. ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն։

1. Թէ այս երկու քուերքն և թէ մայրն Շահանդուխտ՝ հաւատաւորաց՝ այսինքն կրօնաւոր կանանց կարգ և ձեւ առին, իրենց Սուրբ որդւոյ, եղբօր և առաջնորդի Ներսիսի ձեռօք։ Սքանչելի՛ հայրութիւն։

## ՅԴ

## Ս. ՆԵՐՍԷՍ ԼԱՄԲՐՈՆԵՑԻ[1]

Սուրբ և երջանիկ հայրն մեր Ներսէս՝ էր ազնուական ծնողաց զաւակ. շառաւիղ գոլով ծնողաց սուրբ և մեծ Լուսաւորչին մերոյ Գրիգորի, և մերձաւոր ազգական երանելի կաթողիկոսացն Գրիգորիսի Վկայասիրի և Գրիգորիսի և Ներսէսի Կլայեցւոյն[2], գոլով որդի Օշնոյ տեառն Լամբրունի: Զսա ի աղայութեան խոստացան ծնողքն՝ տալ Աստուծոյ ընծայ, զի որպէս Սամուէլն ուխտեալ էր յորովայնէ. սակայն զի տեսին զնա կայտառ փայլմամբ ապագայից շնորհացն, զղջացան դարձեալ՝ չտալ խոստացելոյ ուխտին. այլ կամէին առ ինքեանս պահելով՝ ժառանգ մարմնաւոր իշխանութեան առնել: Եւ նոյն ժամայն հիւանդացաւ մինչեւ ի մահ. յայնժամ մայր նորա առեալ ի գիրկս իւր և տարեալ ընկէց զնա յեկեղեցի Սրբուհւոյ Աստուա-

1. Ն. Լամբրոնեցւոյ մահուանէն վեց տարի վերջը՝ իրեն ամենէն արժանաւոր հետեւողն և բարեկամն Գրիգոր Սկեւռացին՝ անոր երկար ներբողական վարքը գրած է, որ և տպագրուած ի ԺԴ հատոր Սոփերաց. իսկ այս տեղ հրատարակուածին, որ բաւական ընտիր և սրտանց գրուած մ՚է, անծանօթ է հեղինակն. վերնագիրն է. «Ներբողեան և յիշատակ սուրբ և երիցս » երանեալ տիեզերալոյս հօրն մերոյ Սրբոյն Ներսէսի » ամենիմաստ վարդապետին և արհի եպիսկոպոսին » Տարսոնի»: Գուշակուի որ այս գրողն այլ ժամանակակից և ականատես ըլլայ Սրբոյն:

2. Լամբրոնացւոց կամ Հեթմեանց ցեղին և ազգաբանութեան վրայ զատ ի Նախընթաց Յօդուածէն տես ի Սիսուան, 77–83: Գրոցս 414 երեսի 7դ ծանօթութեան մէջ նշանակուեցաւ իր ազգակցութիւնն յիշեալ կաթողիկոսաց հետ:

ծածնին, ի մօտակայ վանսն որ Սկեւռա[1] կոչի. և առ ժամայն շնչաքերեալ կենդանացաւ տղայն՝ և ոչ ել ի վանիցն, այլ անդէն մնաց:

Եւ յայնմհետէ սկսաւ զպնդութիւն պահոց և զխոշորութիւն զգեստուց, զտքնութիւն ամենագիշեր հսկմանցն, և զհանապազորդ աշխատասիրութիւնն, մանաւանդ զանստացութիւն և զաղքատասիրութիւնն՝ առաւել ողորմութեամբ: Ընթեռնոյր և ուսանէր միշտ և գրէր անհանգիստ զցայգ և զցերեկ. մինչ զի ոչ երբէք մեկնեաց զոտս իւր յանկողինս՝ ի տուէ կամ ի գիշերի. այլ զցերեկն պարապէր աղօթից, ընթերցման սուրբ գրոց և վարդապետութեան և ամենայն բարի գործոց. և զգիշերն նստեալ գոլով յաթոռ ինչ, անդ վճարէր զքնոյն պէտս սակաւ մի, և փաղփաղակի զարթուցեալ կանխէր յաղօթս, յաչիցն բղխելով աղբիւրս արտասուաց: Գոլով զգաստ, ժիր, խոնարհամիտ, հեզ, զգուշացեալ բանիւ բերանով, և առաջինի բոլոր շարժմամբ հոգւոյ և մարմնոյ, ընդ աստուածայինսն խօսելով, զունայնաբանութիւն ի բաց վտարէր, խոկալով միշտ զվերինսն՝ զանց զստորայնովքս առնէր. և ի խուն ժամանակի քան զյոլովս աստուածային վարժիցն ի չափ հասանէր. մեծութիւն և փառք երկրաւորիս՝ սարդիոստայն կորովակի բացն երեւէր:

Սա մինչ տղայն էր՝ տարեալ եղեւ առ կայսրն Յունաց. և նա ասէ. Ե՛կ, մանուկ, զի արասցուք զքեզ որդեգիրս և ժառանգ մեծի իշխանութեան. իսկ նա տակաւին տղայ գոլով՝ իմաստուն պատմականօք[2] զարմացուցանէր զնոսա, ասելով, թէ, Ես երկնաւոր թագաւորին եմ զինուորեալ, մշտնջենաւոր բարեացն ակնկալութեամբ: Եւ այսպէս ի մանկութեան գոլով աստուածիմաստ և անբիծ և ա-

1. Կիլիկիոյ Հայոց ամենէն նշանաւոր վանաց մէկն. ան ի Սիսուան:
2. Պատասխանեօք պէտք էր ըլլալ:

Լուծմունս գրոց դժուարագոյն բանից, և Երգս պաշտամանց։

Սմա ետ հայրն իւր 30,000 դահեկան ոսկի, և նա յերիս մասունս արար զայն. մին շինեաց անօթս և զգեստս եկեղեցւոյ, և զմիւսն բաշխեաց աղքատաց, և զերրորդն՝ գրել ետ աստուածաշունչս և զմեկնութիւնս սրբոցն հարցն. այլ և ինքն ձեռամբ իւրով գրեաց կրկին զԱստուածաշունչ սուրբ գիրս, և զամենայն բանս սրբոց հարցն։ Քանզի յամենայն երեկոյի մինչև այրէին մոմեղէնք՝ գրէր, և ապա անդէն յաթոռն իւր նստեալ՝ սակաւ մի ննջէր. և իսկոյն յարուցեալ երթայր յեկեղեցին. ուր, սահմանեաց ի ներքս պաշտել զամենայն աղօթսն[1], և զառաջին կանոնն ի ձայն պաշտել տայր։

Սա բռնադատեալ եղև ի Գրիգորիսէ որ Մեծն կոչէր[2], որ էր եղբօրորդի սրբոյն Ներսիսի, և յետ նորա կալաւ զաթոռն ի Կլայն-Հռոմէական, և ի նմանէ հարկեալ ձեռնադրեցաւ սարկաւագ, ապա քահանայ. և յետոյ եղև եպիսկոպոս մեծի մայրաքաղաքին Տարսոնի, որ և հովուէր բարւոք զեկեղեցին Աստուծոյ։

Սա յոյժ սիրեաց զմիայնական վարս և ճգնէր անսուաղութեամբ պահոց առաւել յոյժ. զի զաւուրս եօթն անսուաղ կեայր, ոչ ձէթ և ոչ գինի, ոչ ձուկն և ոչ թան, այլ միայն ընդօք շատանայր, և անձանձիր ընթեռնլով և գրելով հանապազ յաղօթս և ի կանխելն առ Աստուած։ Սա յանապատի խոյս տուեալ՝ զանմահութեանն ողջունէր զկեանս, ըստ Յովհաննու և Եղիայի, յանապատի բնակել յօժարէր. ի մարմնի ընդ անմարմինս անմարմնական վարուք հանդիսանայր. և ապա

1. Եկեղեցւոյն մէջ. վասն զի ոմանք եկեղեցիէն դուրս կ'ընէին ժամասացութիւնը։

2. Ընդհակառակն՝ Տղայ կ'անուանուէր, իր ազգականաց մէջ իրմէ տարուօք Գրիգոր մ'այլ ըլլալուն համար։

զինու յաղթութեան առաքինեաց՝ արիաբար երե-ւէր զինամարտին: Մենամարտիկ հանդիսի. զի մի անփորձարար յառաջագիտին եկեալ՝ զբնելեաց յանդիմանեացն. յարում և ընկերն բազում խո-նարհութեամբ և հեզութեամբ ընդ եղբարս. ըն-տանեգոյն օգտաշահութեան լցուցանելով ըն-չիւք լրութեամբ բազմաւ. ի դէպ ժամանակի զգու-շական խօսելով: Եւ այսպ զինչ ասէր. ըստ նմա-նութեան զօրավարաց՝ որ ի սկզբն մարտին մա-չին, համբերէ ամենն զօրաց. նոյնպէս և սա զա-ռաքինութեանցն զինուորս ի հանդիսի կոչեցա-նէր. զկապս մարմնոյն զզգայութեամբք ընդ հոգե-կանն լծեալ, ի վերայ խոհականն բազմէր կառա-վար: Եւ յայսմիկ յոլովք յառաքինութեանցն զի-նուորացն՝ ինքնակամ յանձնութեանն վայրի լինի. և Ներհակքն ենթադրեալք. որպէս բամբասանք, հայհոյութիւնք, դատարկաբանութիւնք, ստախօ-սութիւնք, երդմնահարութիւն, կեղծաւորութիւն, մարդահաճութիւն, շողմոգութիւն, երկբանութիւն, ատելութիւն, չարախօսութիւն, ոխակալութիւն, զրպարտութիւն, յափշտակութիւն, նախանձ, թըշ-նամութիւն, հարստահարութիւն, լուտանք, հակա-ռակութիւնք, անհնազանդութիւն, կռիւ, սուտ վկայութիւն, և այլն ամենայն: Նա և զկերակրայն զհարկ վճարէր՝ ոչինչ կարի հեռաւորութեամբ յան-մարմնոցն անկարօտութենէ:

Նա երբէք ոչ եղաւ յարութենէ[2], ոչ կասեցաւ ի զգաստութենէ, ոչ թուլացաւ ի պնդութենէ, ոչ յաղթեցաւ յագահութենէ, ոչ մեղկացաւ ի հեղ-գութենէ, ոչ ի վայր քարշեցաւ ի ցանկութենէ. ոչ ծառայեաց նախանձու, ոչ ի Ներքոյ անկաւ որո-վայնի, ոչ սորկացաւ յամպարտաւանութենէ, ոչ

1. Այսինքն, սատանային հետ դիմադէմ կռուէր:
2. Երկարաբանութիւն է հետեւեալը, բայց գեղե-ցիկ համեմատութեամբք վայելուչ և արժանաւոր գո-վեցելոյն:

ողոքեաց զփառասիրութիւն, ոչ կերակրեաց զմախանայն ճճի, ոչ տածեաց զսրտմտութեանն գազան, ոչ աճեցոյց զբարկութեանն բոց, ոչ սրեաց զհայհոյութեանն սուսեր, ոչ թեքեաց զնենգութեան տէգ, ոչ մխեաց զչարախօսութեան նիզակ, ոչ արձակեաց զլուտանացն ըռմբաքար, ոչ ձգեաց զնախատանաց նետն. ոչ ցանեաց զթշնամանաց կայծակունս, ոչ խոցեաց բամբասանացն նրանաւն[1]. ոչ եհար ատելութեանն վաղակաւորաւ, ոչ պարտեցաւ ի յերդմանէ, ոչ ընկղմեցաւ յարբեցութիւն, ոչ մորոսացաւ յանզգամութենէ, ոչ գլորեցաւ ի կեղծաւորութենէ, ոչ յողդողդեցաւ ի մարդահաճութենէ, ոչ անկաւ յերկպառակութենէ. ոչ պատուեաց զքսութիւն, ոչ մեծարեաց զչոգմոգութիւն, ոչ հաճեցաւ ընդ նորափառութիւն. ոչ կամեցաւ ընդ ամպարհաւաճութիւն, ոչ փառաւորեաց զհեշտախտութիւն, ոչ խոնարհեցաւ ընդ բարձրամըտութիւն, ոչ թշնամանեցաւ ի հեղգութենէ, ոչ անարգեցաւ ի ծուլութենէ, ոչ տիրացոյց յարծաթսիրութիւն, ոչ հնազանդեցաւ դատարկութեան, ոչ յաղթեցաւ ի խեղկատակութենէ, ոչ լծակցեցաւ հերձուածոց, ոչ միաբանեաց հերեսիոտութեան, ոչ ընկլաւ յունայնաբանութիւն, ոչ խօսեցաւ ի նանրութիւն, ոչ խորհեցաւ զանօրէնութիւն, ոչ կապեցաւ ի սնոտեաց, ոչ պարաւանդեցաւ յունայնութեանցն: Այլ սիրեաց զսրբութիւն, հետեւեցաւ ճշմարտութեան, ողջունեաց զմաքրութիւն, բաղձացաւ անախտութեան, ընդգրկեաց զպարկեշտութիւն, ցանկացաւ իմաստութեան, տենչաց արդարութեան; փափագեաց խոնարհութեան, բուռն եհար զզօրութենէ. ստացաւ զողջախոհութիւն, սեփականեաց զխոնարհութիւն. յերկիւղէ չարէ օտարացաւ, և աստուածային երկիւղին ի ներքոյ եդ զանձն. սիրոյ ստուգութեան զհետ ընթացաւ, զատելութիւն յինքենէ ի բաց հեռացոյց. զմաղթա-

1. Նրան, տեսակ մի թուր, սուր:

նացն ստացաւ զանձ[1], ի պաղատանաց ի բաց ոչ եկաց, զարտասուս աղբիւրաբար բղխեաց. փրկութեան խորհրդոյ սպասաւորեաց, կենարարն բաշխման պաշտպանեաց[2]. ողորմութեամբ զարդարեցաւ, զսատարասիրութիւն ոչ մոռացաւ, զպարտ եթող պարտականին. հեզութեամբ ստացաւ զբարիս, զանախակալութեան ամբարեաց զստացուածս: Ի վերջին գիտմանէ ոչ շիջաւ՝ ուր Քրիստոսն նստի ընդ աջմէ Աստուծոյ. զնա ունէր նպատակ և նախագաղափար, առ որ ի սկզբնատիպն հայելով անշեղաբար՝ ի նոյն պատկեր նորոգէր փառաց ի փառս: Քանզի քաջարուեստն ամենից հայելի եդ զնա ի մէջի, արձան հաստատուն կանգնեաց, զի յողդողդքն կազդուրեսցին. աշտարակ անպարտելի կառոյց, զի փախուցեալք պատսպարեսցին. բժիշկ իմաստուն յայտնեաց, զի հիւանդացեալքն մեղօք՝ առողջասցին. ջահ լուսոյ պայծառացոյց, զի կուրացեալք՝ նովաւ լոյս տեսցեն. ծառ բազմապտուղ տնկեաց, զի այնու ազգ մարդկան կերակրեսցին. աղբիւր յորդահոս բղխեաց, զի որք տապացեալքն իցեն՝ զովասցին. խորան հովանոյ սփռեաց, զի անյարկքն տաղաւարեսցին. քաղաք ամրագոյն փակեաց, զի ի գերողէն ապահովեսցին. հովիւ իմաստուն կացոյց, զի պահպանեսցին ի պատառողէն[3]. շտեմարան գանձու շնորհեաց, զի աղքատքն փարթամասցին: Ցայսոսիկ՝ և զօրութեանցն խառնին հրաշք, այսոց հալածումն, և ախտից բժշկումն: Այսպիսեացս յաճախութեամբ, և մանաւանդ իմաստիցն և վարուցն լուր համբաւոյ՝ ամենայն ուրեք տարածէր. որ և բազումք երթային և գային՝ զօգտակարսն իւրեանց հայցելով: Իսկ Սրբոյն դժուարեալ ընդ լուր համբաւոյն՝ տարաշխարհիկ լինել ախորժէր, զեգիպտական հարանց զվարսն յարաժամ ընթեռ-

1. Այսինքն, աղօթասիրութիւն:
2. Պատարագելն և հաղորդելն նշանակէ:
3. Գայլ նշանակէ, և անով մոլորեցուցիչ մարդ:

նըլով ի նոցին տեղիս փափաքէր. նա և զմեծի և ա-
ռաքելաշնորհ հօրն մերոյ Լուսաւորչին զմենաստա-
նացն լուեալ, ըղձայր լինել թերևս ի նոյն տեղի.
վասն որոյ երկիցս և երիցս անգամ միով արբա-
նեկաւ յուղի անկեալ՝ զանխլաբար հետիոտս ըն-
թացեալ և հեռացեալ բազում միջոցաւ, աշխա-
տութեամբ մեծաւ և պատառմամբ ոտիցն, սակայն
ի գլուխ ոչ ել, ի հետամտացն բռնաբար արգել
լինելոյ. ապա զկայ առնու և դադարէ յակամայ:
Եւ ի տարակուսանս անկանէր անհնարինս. քանզի
անտերունչ լինել հօտին ոչ կամէր, և յանապատ
առանձնականութենէ զրկիլն դժուարէր. կարևոր
զբազմացն շնորհել զփրկութիւն համարէր, և զան-
դրադարձութիւն անապատին զլանալն՝ ոչ յօժարէր.
զՊօղոսին ապա կրէր զկիրս, «Եղանել ի մարմնոյ
աստի և մտանել առ Աստուած փափաքեմ, և մնալ
աստէն ևս կարևոր վասն ձեր»: Եւ այնպէս
յետ բազում անգամ բռնադատեալ լինելոյն, և յո-
լով անգամ հրաժարելոյն, աստուածային ընտրու-
թեամբն զքահանայապետականն ընկալաւ զաստի-
ճան և զշնորհս. և ձեռնադրեցաւ արքեպիսկոպո-
Կիւլիկեանն Տարսոնի, զմեծ առաքելոյն՝[1] փոխա-
նորդելով զտեղի, և բերելով զնորին հոգի շնորհաց
և զմեծի սիրոյն որ առ Քրիստոս՝ առ ամենե-
սեանն: Եւ այնուհետև նորոգէր զսրբոց հարցն
օրինադրութիւն, զոր ի վաղեմի խափանեալն էր.
և նախ անդէն յիւրում քաղաքին հաստատէր և
ուղղէր. յորում նստելով ինքն՝ հանապազորդէր
աստուածային վարդապետութեամբ զցայգ և զցե-
րեկ. աշխատասիրաբար զհաւատացեալ հօտն արա-
ծէր միշտ և կերակրէր իբրու ստուգապէս հաւա-
տարիմ և իմաստուն տնտես, ի ժամու՝ ծառայակը-
ցացն զբաժին տալով կերակուր, և ի սեղանաւորս
սփռելով զտաղանտեանն արծաթ: Եւ որպէս ճշմա-
րիտ Յիսուսի պատկեր՝ առնէր և ուսուցանէր,

[1] Պօղոսի Առաքելոյ:

զանձն տալով աշակերտելոցն օրինակ, և հանապազորդ ժրութեամբ քաջհանայագործէր Աստուծոյ արժանաւորապէս. և ոչ այնու շատանայր, այլ և ընդ ամենայն վիճակեալսն միշտ անձանձիր շրջելով՝ խրատէր և ուսուցանէր, ի ժամու և ի տարաժամու հասանելով ի վերայ, յանդիմանական սաստական և մխիթարական մատակարարութեամբն. ձրի տալով զաւետարանն՝ ոչ ինչ առնոյր յաշակերտացն, և մանաւանդ ինքն ամենայն ուրեմն զկարօտեալսն կերակրէր հանապազորդ ողորմածութեամբ, հայր որբոց լինելով և խնամակալու այրեաց, հիւանդաց և բանտելոց այցելու. յորս՝ զամենայն զգոյսն իւր ծախէր։ Բայց յայսցանէ, զի ի մեծի եկեղեցւոջն Տարսոնի յամենայն չորեքշաբաթն և ուրբաթն՝ բաշխէր հաց և բակլայ եփեալ՝ անձանց չորեքհարիւրից՝[1] անխափան հանապազ. ուղղէր և պայծառացուցանէր զամենայն եկեղեցւոյ ըզկարգս։ Ճշմարտապէս երկրորդ Լուսաւորիչ երեւեցաւ, զորբոյ հօրն զքրտունս և զերկունս ի միտ ածելով, զնշոյլս լուսոյ արծարծելով նորոգէր շինութեամբ վերստին. զցանկ խռովութեան և զատելութեան կրճիմն՝ որ եմուտ ի մէջ քրիստոնէից, քակել և բառնալ յօժարէր. զոր և արարն իսկ հանապազորդ աշխատութեամբ վարդապետելով զնոյն և գրելով. և ինքն զամենայն քրիստոնեայսն սիրելով յաղագս ջերմ սիրոյն Քրիստոսի. վասն որոյ և յամենեցունց սիրեցեալ և ընկալեալ լինէր, և ի բոլոր հերձուածոց հեռանայր. զհարցն սրբոց զուղղափառ կանոնադրութիւնս յառաջնոյն մինչեւ ցեօթներորդ ժողովսն որ եղեն, անշարժապէս յանձին ունելով, և միաբանեալ գոլով ի մի կաթուղիկէ և առաքելական եկեղեցի, յոր և զամենեսեանսն փութայր և ուղղափառութեամբ ի խաղաղութիւնն, ի միաբանութիւն սիրոյ վերածել. զխոչ և զխութն հորդելով, զոր յամայութենէ և անտե-

1. Սուրբն այլ գրէ զայս առ Լեւոն Ա. 300 ըռելով։

բունչ գոլոյ, զինքնաբոյս փուշս ծերատոյր աւանդութեանց և զեկամուտ սովորութիւնսն ի բաց խլելով և յատակելով, որ ի հեղգութենէն էր անտառացեալ, կամ ի քուն լինել մարդկան՝ ուրոյն թշնամւոյն ի վերայ ցանեալ։ Քանզի եբարձ զոր հեղգութեամբ մտեալ էր ի ներքս. որպէս զտհաս մանկունս առանց ընդ աստիճանս եկեղեցւոյ կարգաւ անցանելոյ, և զիւրաքանչիւրսն ըստ առաքելական օրինադրութեան պաշտելոյ՝ ի միում աւուր ածելն ի քահանայութիւն. և նորոգեաց ըստ սրբոց հարցն կանոնի զաստիճանս գրակարդացաց, կիսասարկաւագաց, և սարկաւագաց, որպէս նախնեաց էր սովորութիւն՝ անպակաս առնել[1]։ Այլ և զպատարագն հաստատեաց՝ անծածուկ կատարել ի տեսիլ ամենայն ժողովրդեան. զարդարեաց զաստուածային պատարագին և զձեռնադրութեանցն և զամենայն խորհրդական գործառութեանցն եկեղեցւոյ կատարմունս. և զթերին ելից թարգմանութեամբ։ Ուղղեաց զեօթն ժամս աղօթիցն, զտուընջեանս և զգիշերոյ, անխափան և անթերի կատարել ի մէջ եկեղեցւոյ։ Պատուեաց զամենայն տէրունական տօնս, և զբոլոր Սրբոց յիշատակս, և կարգեաց յամենայն աւուր յիւրաքանչիւրոցն յորում աւուր և հանդիպին՝ անխափան կատարել զպարտական պատիւ՝ տօնասիրաբար։

Ուսոյց բարեզարդապէս կրօնաւորացն հաստատել սահմանադրեալ օրհնութեամբ կրօնաւորութեանն, աքեմով և կնկղով, և պարկեշտանալ կերակրով, և կանոնաւոր բարեձեւութեամբ, զհարցն օրինակ բերելով։ Թարգմանեաց զսուրբ Հարցն զվարսն[2], և

1. Փոխանակ այլեւայլ ժամանակ կամ մէկ մէկ քահանայական աստիճանները տալու, մէկ օրուան մէջ տղաքը դպիր, սարկաւագ և քահանայ ձեռնադրէին, զոր խափանեց Սուրբն։

2. Թէպէտ և կար հին թարգմանութիւն Հարանց վարք կոչուած գրոց, որ է եգնաւորաց վարք և

զՄերոյն Բենեդիկտոսի կանոնաւորական առանձնա-
ցութիւն[1]։ Շինէր և մեծապայծառ եկեղեցի և
վկայարանս մարտիրոսաց, և զարդարէր նկարա-
գրելով զամենայն անօրինական զարդս Փռիւգին մե-
րոյ. և միշտ անյագ բաղձանօք զաստուածային պա-
տարագն մատուցանէր ի սոյն սրբութեանսն՝ հան-
դիսաւորապէս, ընդ քահանայից և սարկաւագացն.
իսկ յայլ աւուրս մի կամ երկու պաշտօնէիւ ա-
ռանձին անխափան կատարէր։ Եւ այս յաճախ,
եթէ ամփոփութիւն էր կամ ինչ ի վերայ կծիցն
կալեալ ի ժամ աստուածային պատարագին, զի եր-
կիցս և երիցս անգամ սարկաւագն քարոզէր[2]։ Այլ և ի
ջերմութենէ սրբոյն որ առ Գրիգորիոս, յորում ասէ
յեկեղեցւոյն հանդիպէր՝ հաղորդէր և պատարագէր
մեծաւ հաւատով, բաց ի հերետիկոսացն. փախչէր
ի բաժանմանէ Նեստորի, և հրաժարէր ի չարա-
չար միաւորութենէն Եւտիքէսի և Դէոսկորոսի.
ուղղապէս զմիջինն և զարքունականն պողոտայն
ընթանայր. ոչ չփոթէր զմարդկութիւնն և ոչ բա-
ժանէր զԱստուածութիւնն. և զնոյն զուղղափառ
հաւատոցն զճշմարտութիւնս, զմաքուր և զբարի
գործոց ուղղութիւնն՝ յանձին ունելով, անձանձիր
միշտ վարդապետէր. զի զոր սրբոյն իւրով անշի-
ջանելի ի նմա էր լուցեալ՝ զՍրբոյ Հոգւոյն զհրագն,
բարձրացուցանելով ի պատուոյ աստիճանին աշտա-
նակն, և այնուհետև առհասարակ զամենեսեանն
լուսաւորէր աստուածային պայծառութեամբ։

խրատք, բայց ինքն պարզեց շարադրութիւնը և դիւրա-
հասկանելի ըրաւ՝ Գրիգոր Սկեւռացւոյ օգնութեամբ։

1. Բաց ի Ս. Բենեդիկտոսի ամենածանօթ կանոն-
ներէն, մէկ առանձին քանի մի կանոններն այլ թարգ-
մաներ է մեր Սուրբն, Վրնչեր (Գեռանժէ) անուամբ
աբբայի մի գրուած, որոյ լատիններէն բնագիրն ան-
ծանօթ էր և մենք նորէն հայերէնէն ի լատին փոխե-
լով՝ հրատարակեցինք, յամի 1880, երկուքն ևս։

2. Սիրաբուղխ և արտաբուղխ արցունքներ. զորս
յետագայ Ողբոյ մէջ՝ (Յօդուած 507) իր աշկերտն
Խաչատուր՝ հեղեղ արցունք կ'ըսէ։

Եւ այնպէս զգուշանայր ամենայնիւ ի պահպանութեան հօտին՝ բազում ջանիւք և վաստակօք. երբեմն հասարակօրէն վարդապետէր, և երբեմն առանձին ընդ իւրաքանչիւրսն խօսէր՝ բազում հմուտ ճարտարութեամբ, ըստ որում պէտքն պահանջէր. զիւրաքանչիւր ոք որսայր, զոմանս սաստիւ յանդիմանէր, և զկէսս մեղմով խրատէր, զոմանս ողոքանօք դարձուցանէր, և զայլս ահարկու դիմօք նուաճէր. որք ապարասանք և ընդվզեալքն էին՝ գեհենին այրմամբ և տապարին հատմամբն կասէր. և որ դիւրալուրք էին՝ արքայութեանն յուսով յորդորէր. որք ի հեշտութեանն ցաւուն էին ծնկեալք՝ արտաքին խաւարին խարանաւն կտրէր. և որք զօրութեան բուռն հարեալք էին¹, հանգստեամբ դրախտին հրճուեցուցանէր. որք սովորութեան չարեաց անլուծիւ հանգուցիւք կապեալք՝ անքուն որդանց խածանօղ ժանիւքն խզէր. և որք ի բարիս կրթեալք՝ ի հաւատոցն հօր զօգն զգուէր. որք յարութեան յուսով զօրացեալք էին՝ հաստատէր, և որք յայնոսիկ հիւանդք էին՝ ողջացուցիչ բանիւք բժշկէր. և ամենայն ուրեք ընդդիմակօքն զներհակսն քակտէր։ Անաչառութեամբ յանդիմանէր, և ոչ առնոյր ակն յումեքէ, ոչ բռնաւորի երկեղ նուաճէր, և ոչ տկարաց տայր համարձակել. այլ զուգութեամբ առ ամենեսեանսն վարէր. նպատակ առաջի աչաց ունելով որով և իցէ օրինակաւ՝ զշահելն մեղմով և կամ խստութեամբ. որ և զամենեսեանսն ուռկանէր ի քարոզութիւն աւետարանին։

Այսոքիկ քահանայապետիս հանդէս. այս յառաջադիմութիւն, և եւս քան զսոյն, յոր անկարանայ բանս ձկտել, իբր ի գերագոյնս ճառելեաց, քանզի բնութեանս հարկ պահանջէ, և նախ հորդեալն անվրէպ ուղի՝ յինքն ձգէ, մանաւանդ եթէ յոգնամանակեայ բաղձանաց լնուն իղձք։

Արդ, եհաս որում ցանկայրն, ժամանեաց որում

1. Ուժով, առաքինութեամբ աշխատողք։

նարատ յամենայնի՝ գտաւ լցեալ բոլոր տեսակօք բարեաց։ Վասն զի ի մանկութենէ բնակեցաւ ի նա շնորհք Սուրբ Հոգւոյն; որով և սկսաւ մեկնել լուսաւոր մտօք դիւրալուր բանիւ զմատեան աստուածային գրոց. զորմէ ասեն, թէ մինչդեռ վեշտասանամեան էր; սկսաւ գրել զմեկնութիւնս և բանս իմաստայեղցս. զի ի տան կաթողիկոսարանին վարժէր առ Սուրբն Ներսէս, որ էր նորա մօրն հօրեղբայր։ Մեկնեաց զգիրսն Սողոմոնի՝ զԺողովողն և զԻմաստութիւն, այլ և զԵրկոտասանն Մարգարէիցն; և զՍաղմոսն Դաւթի[1], ի խնդրոյ միանձանցն որ բնակեալ էին ի լերինն, յորում ինքն առանձնացեալ ճգնէր. զոր բացայայտեաց՝ եթէ որով մտօք պարտ է մեզ զնոյն երգել։ Զորմէ պատմեն, եթէ ի մեկնելն՝ սպասաւոր նորին տարեալ դնէր միանգամ յաւուրն ընդ երեկս՝ զհացն և զըմպասն ամանօք ի պատուհանն խցկանն, և ի միւսումն աւուրն երթայր զմիւսն դնել, միշտ զնախեդեալն անարատ ի տեղին գտանէր անթերի. քանզի ունդով շատանայր[2]։ Սա մեկնեաց զՊատարագին խորհուրդն[3], և զտէրունական Աղօթսն. թարգմանեաց և զՄեկնութիւն Յայտնութեան Յոհաննու. թարգմանեաց և զգիրս Գրիգորի Պապուն, որ Տիալոգոս[4] կոչի. և այլս բազումս. զի ուսաւ և ըզդպրութիւն յունարէն գրոցն, նոյնպէս և զլատինացւոցն. և յոլով թարգմանութիւնս արար, և

1. Ընդարձակ և հոգելից գործ, և շատ զարմանալի, մանաւանդ իր գրած ատեն տարիքին նկատմամբ։

2. Միայն հունտի տեսակ (ինչպէս ոսպ, սիսեռ) կամ խոտեղէն կ'ուտէր։

3. Որ իր գերագոյն գրուածներէն մէկն կամ գլխաւորն է։

4. **Dialogues.** Հայերէն ասոր Տրամախօսութիւնք կ'ըսեն. Պապն իր աշկերտին հետ խօսելով, Սրբոց և ճգնաւորաց վարքեր պատմէ և խրատներ տայ. չորս գիրք բաժնուած է գործն։

Լուծմունս գրոց դժուարագոյն բանից, և Երգս պաշտամանց:

Սմա ետ հայրն իւր 30,000 դահեկան ոսկի, և նա յերիս մասունս արար զայն. միոյն չինեաց անօթս և զգեստս եկեղեցւոյ, և զմիւսն բաշխեաց աղքատաց, և զերրորդն՝ գրել ետ աստուածաշունչս և զմեկնութիւնս սրբոցն հարցն. այլ և ինքն ձեռամբ իւրով գրեաց կրկին զԱստուածաշունչ սուրբ գիրս, և զամենայն բանս սրբոց հարցն: Քանզի յամենայն երեկոյի մինչև այրէին մոմեղէնք՝ գրէր, և ապա անդէն յաթոռն իւր նստեալ՝ սակաւ մի ննջէր. և իսկոյն յարուցեալ երթայր յեկեղեցին. ուր, սահմանեաց ի ներքս պաշտել զամենայն աղօթսն[1], և զառաջին կանոնն ի ձայն պաշտել տայր:

Սա բռնադատեալ եղև ի Գրիգորիսէ որ Մեծն կոչէր[2], որ էր եղբօրորդի սրբոյն Ներսիսի, և յետ նորա կալաւ զաթոռն ի Կլայն–Հռոմէական, և ի նմանէ հարկեալ ձեռնադրեցաւ սարկաւագ, ապա քահանայ. և յետոյ եղև եպիսկոպոս մեծի մայրաքաղաքին Տարսոնի, որ և հովուէր բարւոք զեկեղեցին Աստուծոյ:

Սա յոյժ սիրեաց զմիայնական վարս և ճգնէր անսուաղութեամբ պահոց առաւել յոյժ. զի զաւուրս եօթն անսուաղ կեայր, ոչ ձէթ և ոչ գինի, ոչ ձուկն և ոչ թան, այլ միայն ընդօք շատանայր, և անձանձիր ընթեռնլով և գրելով և հսկելով հանապազ յաղօթս և ի կանխելն առ Աստուած: Սա յանապատի խոյս տուեալ՝ զանմահութեանն ողջունէր զկեանս, ըստ Յովհաննու և Եղիայի, յանապատի բնակել յօժարէր. ի մարմնի ընդ անմարմինս անմարմնական վարուք հանդիսանայր. և ապա

1. Եկեղեցւոյն մէջ. վասն զի ոմանք եկեղեցիէն դուրս կ'ընէին ժամասացութիւնը:

2. Ընդհակառակն՝ Տղայ կ'անուանուէր, իր ազգականաց մէջ իրմէ տարւօք Գրիգոր մ'այլ ըլլալուն համար:

զինու յաղթութեան սպառազինեալ՝ տխոյեան ելանէր դիմամարտին[1] մենամարտիկ հանդիսի. զի մի՛ անփորձաբար յասպարիզին ելեալ՝ զէնընկէց յանդիմանեսցի. յորում և բնակէրն բազում խոնարհութեամբ և հեզութեամբ ընդ եղբարս. ըղնուաստագոյն սպասահարկութեան լցուցանելով ըղչափ՝ լռութեամբ բազմաւ, ի դէպ ժամանակի զպատչաճսն խօսելով: Եւ ապա զի՞նչ ասէր. ըստ նմանութեան զօրավարաց՝ որ ի տեղիս մարտին մատչին, հանդէս առնեն զօրաց, նոյնպէս և սա զպառաքինութեանցն զինուորս ի հանդիսի կացուցանէր. զկառս մարմնոյն զգայութեամբքն ընդ հոգեկանս լծեալ, ի վերայ խոհականն բազմէր կառավար: Եւ յայսոսիկ յոլովք յառաքինութեանցն զինուորացն՝ ինքնակամ յամայութեանն վայրի լինի, և ներհակքն ենթադրեալք. որպէս բամբասանք, հայհոյութիւնք, դատարկաբանութիւնք, ստախօսութիւնք, երդմնահարութիւն, կեղծաւորութիւն, մարդահաճութիւն, չոգմոգութիւն, երկբանութիւն, ատելութիւն, չարախօսութիւն, ոխակալութիւն, դրպարտութիւն, յափշտակութիւն, նախանձ, թըշնամութիւն, հարստահարութիւն, լուտանք, հակառակութիւնք, անհնազանդութիւն, կռիւ, սուտ վկայութիւն, և այլն ամենայն: Նա և զկերակրոյն զհարկ վճարէր՝ ոչինչ կարի հեռաւորութեամբ յանմարմնոցն անկարօտութենէ:

Սա երբէք ոչ լքաւ յ՚արութենէ[2], ոչ կասեցաւ ի զգաստութենէ, ոչ թուլացաւ ի պնդութենէ, ոչ յաղթեցաւ յագահութենէ, ոչ մեղկացաւ ի հեղգութենէ, ոչ ի վայր քարշեցաւ ի ցանկութենէ. ոչ ծառայեաց նախանձու, ոչ ի ներքոյ անկաւ որովայնի, ոչ ստրկացաւ յամպարտաւանութենէ, ոչ

1. Այսինքն, սատանային հետ դիմադէմ կռուէր:
2. Երկարաբանութիւն է հետեւեալը, բայց գեղեցիկ համեմատութեամբք վայելուչ և արժանաւոր գովեցելոյն:

ողոքեաց զփառասիրութիւն, ոչ կերակրեաց զմախանայն ճճի, ոչ տածեաց զորտմոռութեանն գազան, ոչ աճեցոյց զբարկութեանն բոց, ոչ սրեաց զհայհոյութեանն սուսեր, ոչ թեքեաց զնենգութեան տէգ, ոչ մխեաց զչարախօսութեան նիզակ, ոչ արձակեաց զլուտանացն ըռմբաքար, ոչ ձգեաց զնախատանաց նետն. ոչ ցանեաց զթշնամանաց կայծակունս, ոչ խոցեաց բամբասանացն նրանաւն[1]. ոչ եհար ատելութեանն վաղակաւորաւ, ոչ պարտեցաւ ի յերդմանէ, ոչ ընկղմեցաւ յարբեցութիւն, ոչ մորոսացաւ յանզգամութենէ, ոչ զլորեցաւ ի կեղծաւորութենէ, ոչ յողդողդեցաւ ի մարդահաճութենէ, ոչ անկաւ յերկպառակութենէ. ոչ պատուեաց զքսութիւն, ոչ մեծարեաց զչոգմոգութիւն, ոչ հաճեցաւ ընդ նորափառութիւն. ոչ կամեցաւ ընդ ամպարհաւանութիւն, ոչ փառաւորեաց զհեշտախտութիւն, ոչ խոնարհեցաւ ընդ բարձրամրտութիւն, ոչ թշնամանեցաւ ի հեզութենէ, ոչ անարգեցաւ ի ծուլութենէ, ոչ տիրացոյց յարծաթսիրութիւն, ոչ հնազանդեցաւ դատարկութեան, ոչ յաղթեցաւ ի խեղկատակութենէ, ոչ լծակցեցաւ հերձուածոց, ոչ միաբանեաց հերեսիոտութեան, ոչ ընկլաւ յունայնաբանութիւն, ոչ խոսեցաւ ի նանրութիւն, ոչ խորհեցաւ զանօրէնութիւն, ոչ կապեցաւ ի սնոտեաց, ոչ պարաւանդեցաւ յունայնութեանցս: Այլ սիրեաց զսրբութիւն, հետեւեցաւ ճշմարտութեան, ողջունեաց զմաքրութիւն, բաղձացաւ անախտութեան, ընդգրկեաց զպարկեշտութիւն, ցանկացաւ իմաստութեան, տենչաց արդարութեան; փափագեաց խոնարհութեան, բուռն եհար զզօրութենէ. ստացաւ զողջախոհութիւն, սեփականեաց զխոնարհութիւն. յերկիւղէ չարէ օտարացաւ, և աստուածային երկիւղին ի ներքոյ ետ զանձն. սիրոյ ստուգութեան զհետ ընթացաւ, զատելութիւն յինքենէ ի բաց հեռացոյց. զմաղթա-

1. Նրան, տեռակ մի թուր, սուր:

նացն ստացաւ զանձ[1], ի պաղատանաց ի բաց ոչ եկաց, զարտասուս աղբիւրաբար բղխեաց. փրկութեան խորհրդոյ սպասաւորեաց, կենարարն բաշխման պաշտպանեաց[2]. ողորմութեամբ զարդարեցաւ, զօտարասիրութիւն ոչ մոռացաւ, զպարտ եթող պարտականին. հեզութեամբ ստացաւ զբարիս, զանոխակալութեան ամբարեաց ստացուածս: Ի վերին գիտմանէ ոչ չիջաւ՝ ուր Քրիստոսն նստի ընդ աջմէ Աստուծոյ. զնա ունէր նպատակ և նախագաղափար, առ որ ի սկզբնատիպն հայելով անշեղաբար՝ ի նոյն պատկեր նորոգէր փառաց ի փառս: Քանզի քաջարուեստն ամենից հայելի եդ զնա ի միջի, արձան հաստատուն կանգնեաց, զի յողդողդքն կազդուրեսցին. աշտարակ անպարտելի կառոյց, զի փախուցեալք պատսպարեսցին. բժիշկ իմաստուն յայտնեաց, զի հիւանդացեալքն մեղօք՝ առողջասցին. ջահ լուսոյ պայծառացոյց, զի կուրացեալք՝ նովաւ լոյս տեսցեն. ծառ բազմապտուղ տնկեաց, զի այնու ազգ մարդկան կերակրեսցին. աղբիւր յորդահոս բղխեաց, զի որք տապացեալքն իցեն՝ զովասցին. խորան հովանոյ սփռեաց, զի անյարկքն տաղաւարեսցին. քաղաք ամրագոյն փակեաց, զի ի գերողէն ապահովեսցին. հովիւ իմաստուն կացոյց, զի պահպանեսցեն ի պատառողէն[3]. շտեմարան գանձու շնորհեաց, զի աղքատքն փարթամասցին: Ցայսոսիկ՝ և զօրութեանցն խառնին հրաշք, այսոց հալածումն, և ախտից բուժումն: Այսպիսեացս յաճախութեամբ, և մանաւանդ իմաստից և վարուցն լուր համբաւոյ՝ ամենայն ուրեք տարածէր. որ և բազումք երթային և գային՝ զօգտակարսն իւրեանց հայցելով: Իսկ Սրբոյն դժուարեալ ընդ լուր համբաւոյն՝ տարաշխարհիկ լինել ախորժէր, զեգիպտական հարանց զվարսն յարաժամ ընթեռ-

1. Այսինքն, աղօթասիրութիւն:
2. Պատարագելն և հաղորդելն նշանակէ:
3. Գայլ նշանակէ, և անով մոլորեցուցիչ մարդ:

նըլով՝ ի նոցին տեղիս փափաքէր. նա և զմեծի և ա-
ռաքելաշնորհ հօրն մերոյ Լուսաւորչին զմենաստա-
նացն լուեալ, ըղձայր լինել Թերեւս ի նոյն տեղի.
վասն որոյ երկիցս և երիցս անգամ միով արբա-
նեկաւ յուղի անկեալ՝ զանխլաբար հետիոտս ըն-
Թացեալ և հեռացեալ բազում միջոցաւ, աշխա-
տութեամբ մեծաւ և պատառմամբ ոտիցն, սակայն
ի գլուխ ոչ ել, ի հետամտացն բռնաբար արգել
լինելոյ. ապա զկայ առնու և դադարէ յականմայ:
Եւ ի տարակուսանս անկանէր անհնարինս. քանզի
անտերունչ լինել հօտին ոչ կամէր, և յանապատի
առանձնականութենէ զրկիլն դժուարէր. կարեւոր
զբազմացն շնորհել զփրկութիւն համարէր, և զան-
զբաղութիւն անապատին զլանալն՝ ոչ յօժարէր.
զՊօղոսին ապա կրէր դկիրս, «Ելանել ի մարմնոյ
աստի և մտանել առ Աստուած փափաքեմ, և մնալ
աստէն եւս կարեւոր վասն ձեր»: Եւ այնպէս
յետ բազում անգամ բռնադատեալ լինելոյն, և յո-
լով անգամ հրաժարելոյն, աստուածային ընտրու-
Թեամբն զքահանայապետականն ընկալաւ զաստի-
ճան և զշնորհս. և ձեռնադրեցաւ արքեպիսկոպո-
Կիւլիկեանն Տարսոնի, զմեծ առաքելոյն՝[1] փոխա-
նորդելով զտեղի, և բերելով զնորին հոգի շնորհաց
և զմեծի սիրոյն որ առ Քրիստոս՝ առ ամենեսա-
եանն: Եւ այնուհետեւ նորոգէր զորբոց հարցն
օրինադրութիւն, զոր ի վաղեմի խափանեալն էր.
և նախ անդէն յիւրում քաղաքին հաստատէր և
ուղղէր. յորում նստելով ինքն՝ հանապազորդէր
աստուածային վարդապետութեամբ զցայգ և զցե-
րեկ. աշխատասիրաբար զհաւատացեալ հօտն արա-
ծէր միշտ և կերակրէր իբրու ստուգապէս հաւա-
տարիմ և իմաստուն տնտես, ի ժամու՝ ծառայակը-
ցացն զբանին տալով կերակուր, և ի սեղանաւորս
սփռելով զտանուտեառն արծաթ: Եւ որպէս ճշմա-
րիտ Յիսուսի պատկեր՝ առնէր և ուսուցանէր,

1. Պօղոսի Առաքելոյ:

զանձն տալով աշակերտելոցն օրինակ, և հանապազորդ ժրութեամբ քահանայագործէր Աստուծոյ արժանաւորապէս. և ոչ այնու շատանայր, այլ և ընդ ամենայն վիճակեալսն միշտ անձանձիր շրջելով՝ խրատէր և ուսուցանէր, ի ժամու և ի տարաժամու հասանելով ի վերայ, յանդիմանական սաստական և մխիթարական մատակարարութեամբն. ձրի տալով զաւետարանն՝ ոչ ինչ առնոյր յաշակերտացն, և մանաւանդ ինքն ամենայն ուրեմն զկարօտեալսն կերակրէր հանապազորդ ողորմածութեամբ, հայր որբոց լինելով և խնամակալու այրեաց, հիւանդաց և բանտելոց այցելու. յորս՝ զամենայն զգոյսն իւր ծախէր: Բայց յայսցանէ, զի ի մեծի եկեղեցւոջն Տարօնի յամենայն չորեքշաբաթն և ուրբաթն՝ բաշխէր հաց և բակլայ եփեալ՝ անձանց չորեքհարիւրից՝[1] անխափան հանապազ. ուղղէր և պայծառացուցանէր զամենայն եկեղեցւոյ ըզկարգս: Ճշմարտապէս երկրորդ Լուսաւորիչ երեւեցաւ, զորբոյ հօրն զքրտունս և զերկունս ի միտ ածելով, զնշոյլս լուսոյ արծարծելով նորոգէր շինութեամբ վերստին. զցանկ խռովութեան և զատելութեան կրճիմն՝ որ եմուտ ի մէջ քրիստոնէից, քակել և բառնալ յօժարէր. զոր և արարն իսկ հանապազորդ աշխատութեամբ վարդապետելով զնոյն և գրելով. և ինքն զամենայն քրիստոնեայսն սիրելով յաղագս ջերմն սիրոյն Քրիստոսի. վասն որոյ և յամենեցունց սիրեցեալ և ընկալեալ լինէր, և ի բոլոր հերձուածոց հեռանայր. զհարցն սրբոց զուղղափառ կանոնադրութիւնս յառաջնոյն մինչեւ ցեօթներորդ ժողովսն որ եղեն, անշարժապէս յանձին ունելով, և միաբանեալ գոլով ի մի կաթուղիկէ և առաքելական եկեղեցի, յոր և զամենեսեանսն փութայր և ուղղափառութեամբ ի խաղաղութիւնն, ի միաբանութիւն սիրոյ վերածել. զխուչ և զխութն հորդելով, զոր յամայութենէ և անտե-

1. Սուրբն այլ գրէ զայս առ Լեւոն Ա, 300 ըսելով:

բուռն գոլով, զինքնաբոյս փուշս ծերատեաց աւանդութեանց և զեկամուտ սովորութիւնսն ի բաց խլելով և յատակելով, որ ի հեղգութենէն էր անտառացեալ, կամ ի քուն լինել մարդկան՝ որոմն թշնամւոյն ի վերայ ցանեալ: Քանզի եբարձ զօր հեղգութեամբ մտեալ էր ի ներքս. որպէս զտհաս մանկունս առանց ընդ աստիճանս եկեղեցւոյ կարգաւ անցանելոյ, և զիւրաքանչիւրսն ըստ առաքելական օրինադրութեան պաշտելոյ՝ ի միում աւուր ածելն ի քահանայութիւն. և Նորոգեաց ըստ սրբոց հարցն կանոնի զաստիճանս գրակարդացաց, կիսասարկաւագաց, և սարկաւագաց, որպէս Նախնեաց էր սովորութիւն՝ անպակաս առնել[1]: Այլ և զպատարագն հաստատեաց՝ անծածուկ կատարել ի տեսիլ ամենայն ժողովրդեան. զարդարեաց զաստուածային պատարագին և պձեռնադրութեանցն և զամենայն խորհրդական գործառութեանցն եկեղեցւոյ կատարմունս. և զթերին ելից թարգմանութեամբ: Ուղղեաց զեօթն ժամս աղօթիցն, զտուընջեանս և զգիշերոյ, անխափան և անթերի կատարել ի մէջ եկեղեցւոյ: Պատուեաց զամենայն տէրունական տօնս, և զբոլոր Սրբոց յիշատակս, և կարգեաց յամենայն աւուր յիւրաքանչիւրոցն յոբում աւուր և հանդիպին՝ անխափան կատարել զպարտական պատիւ՝ տօնասիրաբար:

Ուստի բարեզարդապէս կրօնաւորացն հաստատել սահմանադրեալ օրհնութեամբ կրօնաւորութեանն, աքեմով և կնկղով, և պարկեշտանալ կերպակրով, և կանոնաւոր բարեձեւութեամբ, զհարցն օրինակ բերելով: Թարգմանեաց զսուրբ Հարցն զվարսն[2], և

1. Փոխանակ այլեւայլ ժամանակ կամ մէկ մէկ քահանայական աստիճանները տալու, մէկ օրուան մէջ տղաքը դպիր, սարկաւագ և քահանայ ձեռնադրէին, զոր խափանեց Սուրբն:

2. Թէպէտ և կար հին թարգմանութիւն Հարանց վարք կոչուած գրոց, որ է եգնաւորաց վարք և

զՍրբոյն Բենեդիկտոսի կանոնադրական սահմանադրութիւն[1]։ Շինէր և մեծապայծառ եկեղեցիս և վկայարանս մարտիրոսաց, և զարդարէր նկարագրելով զամենայն տնօրինական գործս Փրկչին մերոյ. և միշտ անյագ բաղձանօք զաստուածային պատարագն մատուցանէր ի տունս տէրունականս՝ հանդիսաւորապէս, ընդ քահանայից և սարկաւագաց. իսկ յայլ աւուրս մի կամ երկու պաշտօնէիւ առանձին անխափան կատարէր։ Եւ ասի յոմանց, եթէ սովորութիւն էր կտաւ ինչ ի վերայ կրծից կապել ի ժամ աստուածային պատարագին, զի երկիցս և երիցս անգամ սարկաւագն քամէր[2]։ Այլ և ի ջերմութենէ սիրոյն որ առ Քրիստոս, յորում ազգի յեկեղեցւոջ հանդիպէր՝ հաղորդէր և պատարագէր մեծաւ հաւատով, բաց ի հերետիկոսացն. փախչէր ի բաժանմանէ Նեստորի, և հրաժարէր ի չարաչար միաւորութենէն Եւտիքեսի և Դէոսկորոսի. ուղղապէս զմիջինն և զարքունականն պողոտայն ընթանայր. ոչ շփոթէր զմարդկութիւնն և ոչ բաժանէր զԱստուածութիւնն. և զնոյն զուղղափառ հաւատոցն զճշմարտութիւնս, զմաքուր և զբարի գործոց ուղղութիւնն՝ յանձին ունելով, անձանձիր միշտ վարդապետէր. զի զոր սիրոյն իւղով անշիջանելի ի նմա էր լուցեալ՝ զՍրբոյ Հոգւոյն զճրագն, բարձրացուցանելով ի պատուոյ աստիճանին աշտանակն, և այնուհետեւ առհասարակ զամենեսեան լուսաւորէր աստուածային պայծառութեամբ։

խորաք, բայց ինքն պարզեց շարադրութիւնը և դիւրահասկանելի ըրաւ՝ Գրիգոր Սկեւռացւոյ օգնութեամբ։

1. Բաց ի Ս. Բենեդիկտոսի ամենածանօթ կանոններէն, մէկ առանձին վանքի մի կանոններն այլ թարգմաներ է մեր Սուրբն, Վրնչեր (Գեռանժէ) անուամբ աբբայի մի գրուած, որոյ լատիններէն բնագիրն անծանօթ էր և մենք նորէն հայերէնէն ի լատին փոխելով՝ հրատարակեցինք, յամի 1880, երկուքն եւս։

2. Սիրաբուղխ և արտաբուղխ արցունքներ. զորս յետագայ Ողբոյ մէջ՝ (Յօդուած 507) իր աշկերտն Խաչատուր՝ հեղեղ արցունք կ'ըսէ։

Եւ այնպէս զգուշանայր ամենայնիւ ի պահպանութեան հօտին՝ բազում ջանիւք և վաստակօք. երբեմն հասարակօրէն վարդապետէր, և երբեմն առանձին ընդ իւրաքանչիւրում խօսէր՝ բազում հմուտ ճարտարութեամբ, ըստ որում պէտքն պահանջէր. զիւրաքանչիւր ոք որսայր, զոմանս սաստիւ յանդիմանէր, և զկէսս մեղմով խրատէր, զոմանս ողոքանօք դարձուցանէր, և զայլս ահարկու դիմօք նուաճէր. որք ապարասանք և ընդվզեալքն էին՝ փեհենին այրմամբ և տապարին հատմամբն կասէր. և որ դիւրալուրք էին՝ արքայութեանն յուսով յորդորէր. որք ի հեշտութեանն ցաւոն էին ծնկեալք՝ արտաքին խաւարին խարանաւն կտրէր. և որք զօրութեան բուռն հարեալք էին[1], հանգստեամբ դրախտին հրճուեցուցանէր. որք սովորութեան չարեաց անլուծիւ հանգուցիւք կապեալք՝ անքուն որդանց խածանօղ ժանիւքն խզէր. և որք ի բարիս կրթեալք՝ ի հաւատոցն հօր գոգն զգուէր. որք յարութեան յուսով զօրացեալք էին՝ հաստատէր, և որք յայնոսիկ հիւանդք էին՝ ողջացուցիչ բանիւք բժշկէր. և ամենայն ուրեք ընդդիմակացն կներհական քակտէր։ Անաչառութեամբ յանդիմանէր, և ոչ առնոյր ակն յումեքէ, ոչ բռնաւորի երկեղ նուաճէր, և ոչ տկարաց տայր համարձակել. այլ զուգութեամբ առ ամենեսեանսն վարէր. նպատակ առաջի աչաց ունելով որով և իցէ օրինակաւ՝ զշահելն մեղմով և կամ խստութեամբ. որ և զամենեսեանսն ուռկանէր ի քարոզութիւն աւետարանին։

Այսոքիկ քահանայապետիս հանդէս. այս յառաջադիմութիւն, և եւս քան զայն, յոր անկարանայ բանս ձկտել, իբր ի գերագոյնս ճառելեաց, քանզի բնութեանս հարկ պահանջէ, և նախ հորդեալն անվրէպ ուղի՝ յինքն ձգէ, մանաւանդ եթէ յօգնամանակեայ բաղձանաց լնուն իղձք։

Արդ, եհաս որում ցանկայրն, ժամանեաց որում

1. Ուժով, առաքինութեամբ աշխատողք։

փափաքէրն. քանզի ոչ անգիտանայր զառաջիկայ կետին կատարումն, ըստ աստուածային առ նա յայտնութեանն, որպէս թէ ասել. Զհաւատոն պահեցեր, զընթացսն կատարեցեր, զթշնամին ընկըղմեցեր, զյաղթութեան նշանն կանգնեցեր. արդ, արագեա ի պսակն, ժամանեա ի հանգիստն, փութա առ բրաբիոնն, և ընկալ զյաղթանակն: Այսմիկ իրազեկ եղեալ՝ լնոյր անբերելի խնդութեամբ. և զգեստաւորեալ խորհրդական զգեստիւ՝ մատուցանէր զփրկագործ պատարագն. և հաղորդեալ ի կենարար և ի մեղսաքաւիչ խորհրդոյն, յորմէ ոչ երբէք ի բաց եկաց, յետ այսորիկ յառաջ կոչէր զեղբարսն, և զելիցն խօսէր զբան[1]. սակաւուք երկրորդէր զխրատականսն՝ սիրելի որդւոցն աւանդէր՝ անփոխադրելի մնալ ի նոյն՝ հաստատէր. Սուրբ եմ յարենէ ձերմէ, ասելով. քանզի ոչ խորշեցայ ի պատմելոյ ձեզ զամենայն կամս Աստուծոյ[2]. և յանձն առնեմ զձեզ Աստուծոյ և բանի շնորհաց նորա. զամենայն ձեզ աւանդեալ աստուածային պատուիրանս՝ զգուշութեամբ պահեսջիք, մշակ առանց ամօթոյ լինելով. և զլուծանելի մարմինս իմ տուք հողոյ; ապօթիւք յուղարկաւորութեամբ: Եւ որք մերձաւորքն էին՝ իբրեւ լուան զհրաժարականն բան, ողբս առեալ կոծէին զանձինս մորմոքելի սըգով՝ զբաժանելն ի նմանէ: Եւ ինքն ի վեր զակն կարկառեալ, յորմէ ոչ երբէք խոնարհեցոյց՝ ըստ ասելոյն, Աչք իմ յամենայն ժամ առ Տէր են, զուարճ դիմօք և արտասուալից խնդութեամբ՝ ասէ. Ի ձեռս քո աւանդեմ զհոգի իմ: Եւ իսկոյն փչեաց զմաքրական հոգին ի ձեռս Աստուծոյ, որում անձկացեալն էր. և թագաւորեաց յաւիտենական կենօք ընդ սուրբս և ընդ սիրելիսն նորա, և ընդ նոսին փառաւորէ զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգին. յաւիտեանս յաւիտենից. ամէն:

1. Ինքն իր մահուանը վրայօք խօսէր:

2. Պօղոս Առաքելոյն հրաժարական խօսքը կրկնելով: Գործք Առաքելոց, Ի. 27:

# ԾԵ

## ԱՌԱՔՈՒՄՆ ՆԵՐՍ· ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՅ Ի Կ· ՊՕԼԻՍ ՎԻՃԵԼ ԸՆԴ ՅՈՅՆՍ

(ԳՐԻԳՈՐ ՍԿԵՒՌԱՑԻ)

Ըստ թագաւորական հզօր հրամանի՝[1] եհաս ժամանել Արքայս՝ յարքայանիստ քաղաքն Կոստանդնուպօլիս. և զի նախ իմաստութեանն և առաքինութեանն հասեալ համբաւ ի լսելիս ինքնակալին և պատրիարքին, յոլով պատուոյ և մեծարանաց ի նոցանէ լինէր ընդունակ. նա և ըստ բնաւոր նոցին իմաստասիրութեան և յարգանաց հանճարոյ՝ ի քննութեանն բանս արկանէին զաստուածային ի մէջ առեալ կտակարանաց, զ՚ի նոսա զանխուլ և դժուարահատ բանս առաջի արկանէին[2]: Եւ զի յոգունց իմաստասիրաց էին ժողովք, ամենեքեան ի մի վայր գումարէին. և ըստ սեփհական իշխանութեան՝ զհարցականսն ինքեանց առնէին, ի նըմանէ զլուծմունսն պահանջեալ: Եւ էր տեսանել իբրև զաղաւնի ի մէջ բազմաց բազէից խուճապեալ գոլով[3], երկիւղ իմն զառաջինն ըստ ատենին

1. Լեւոն Ա. թագաւոր մեր ղրկէ զՆ. Լամբրոնացին, իր հոգեկիր Ս. Շնորհալւոյ օրով սկսեալ Յունաց հետ կրօնական միաբանութեան խնդիրը քննելու. որոյ վրայօք ինքն իսկ Լամբրոնացին յիշատակ թողած է, ոչ այնքան հաւանելով Յունաց գոռոզութեան՝ որքան նոքա իր զգօնութեան:

2. Սուրբ գրոց և Ս. Հարց մթին խօսքերով ջանային փորձել զՆերսէս յաղթահարել, և իրենց բազմութեամբն և փառօք՝ վախցընել զնա:

3. Գեղեցիկ նմանութիւն, այնքան մեծափառ և խրոխտ մետրապօլտաց և աստուածաբանից մէջ՝ միակ գտնուելով հեզահոգին Ներսէս:

առաջարկութեան բերել, սակայն ի Հոգւոյն շնորհ խրախուսեալ յառաջ մատուցեալ իմաստալեաց հանճարով և հեզութեամբ առ պատասխանիսն, այնքան հաւանական տուեալ՝ որ և անակնկալն էր ի նոցանէ, մինչև հիացմամբ պակնուլ ի զարմացմանէն, ես ընդ միայնակն այլաբարբառ և տարաշխարհիկ գոլով՝ ի մէջ այնքան աթոռակալ իմաստասիրաց. և գովական բանս ի բարբառ իւրեանց առ ինքեանս հանրապէս նմա շնորհեցին. Ոչ որպէս լուաք միայն, ասեն, այլ գերագոյն ևս տեսաք:

Իշխանութիւն ապա հրաման առեալ՝ գրով զհարցականսն աւանդէր[1]. և ի բազում աւուրս հռետորացն ի մի վայր գումարեալ՝ խոկմամբ և առանձինն, էր ինչ զոր պատասխանեցին, և յոլովք այն՝ յորս պարտեցան: Եւ այսպէս զարմանալի ի միջի նոցա երևեալ, բազում պատուով և ձրիւք ի թագաւորէն և ի պատրիարքէն, անդրէն դառնայր: Եւ զանց զբազում արարեալ օթևանօք՝ ի սեպհականն ժամանէր դաւառ, առ թագաւորն[2] և կաթողիկոսն, մեծաւ զհանդիպումն արարեալ խնդութեամբ. և զսովորականն ի վեր արկեալ վարդապետական բանն՝ խրատէր և ուսուցանէր, յանդիմանէր և սաստէր, մխիթարէր և ողոքէր: Եւ ի տօնսն մեծահռչակ և ի ժողովսն՝ զիշխանսն և որք ընդ իշխանութեամբ, զառաջնորդսն և որք ընդ ձեռամբ՝ անյաչաղապէս զամենեսեան խնամարկելով:

1. Յունաց հարցմանց պատասխանները տալէն ետև, ինքն այլ անոնցմէ պատասխան ուզեց, գրով տալով հարցմունքը և գրով պահանջելով պատասխանները. նոքա չկըրցան զինքը գոհացընել և գոհ դարձընել, թէպէտ և շատ մեծարեցին և ընծայեցին. բայց ինքն գոհ չըլլալը և հիմակուան ոճով ըսելով՝ յուսախաբութեամբ դառնալը՝ գրած է Շնորհալւոյ թղթոց օրինակի մի մէջ, որ է վերոյգրեալ վկայութիւնն:

2. Լևոն Ա, որ դեռ մեծահանդէս չէր օծուած:

*(Վկայութիւն սորին Ներսիսի Լամբրոնացւոյ վասն այսր խնդրոյ).*

Ներսէս նուաստ ստացող մատենիս գրչութեամբ որդւոյ իմոյ Գրիգորիսի, ածի զսուրբ տառս[1] ընդ իս ի Կոստանդնուպօլիս. ի թուականիս Հայոց ՈԽԶ (1197–8), և սոսա Նամակօքս արարեալ խօսակցութիւն, գտաք զսոսա անծանօթ ի սոցանէ՝ թանձրաբարբառք և հրէական կամօք ընդ նիւթս կապեալք, որք ոչ ախորժեն ծառայել Աստուծոյ նորոգութեամբ Հոգւոյն՝ այլ հնութեամբ գրոյն. և ստրջացեալ ի հոգեւոր կամս մեր՝ դարձաք յիմաստախորհ յուսոյ սոցա ամօթով։

Նամակքն այս են. Գիրքն Երեմիայ և Գերմանոսի, Թուղթքն Փոտայ[2] որ ի Հայք վասն հաւատոյ, և Աթանասի և Մանեայ[3]։

1. Ներսէսի Շնորհալւոյ Թուղթերն են առ Մանուէլ կայսր գրած, Միաբանութեան խնդրոյն համար։

2. Յունաց Կոստանդնուպօլսի պատրիարքներն են, որ կրօնական խնդրոյ համար գրած են առ Հայս։

3. Լամբրոնացւոյ և Յունաց վիճաբանութեան գըրուած մի կայ, բայց հարազատ չերեւիր. վերջաբանն կ'ըսէ, թէ յետ վճարելու վիճաբանութեանն՝ յաղթութեամբ Լամբրոնացւոյն, «Եկն սմա իմաստասէր կրօ-
»նաւոր առ Ներսէս, և ասէ, թէ, Առանձինն առեր
»գովութիւն ի մետրապօլտացն և ի կղերիկոսացն և
»յիշխանացն և առ հասարակ ժողովրդոցն. զի որ ի
»մարտ եկանէ՝ թէ և ինքն գիտէ զիւր ըռըմբին թափ-
»տալն, բայց հայեցողքն առաւել եւս տեսանեն.
»այսպէս և մեք զքս յաղթութեանդ՝ հակառակամար-
»տին։ Նոյնպէս և իշխանքն գային և ասէին զար-
»մացմամբ, թէ, Մին մարդ զայսքան մեծ ժողովո-
»յտին կացոյց. և ի հարցանելն և ի Սրբոյն Ներ-
»սէսի պատասխանելն՝ ամենեքեան ափ ի բերան
»եղեն. և շնորհիւն Աստուծոյ՝ Հայոց եկեղեցւոյն
»եղջիւրն բարձրացաւ. և զոր Հռոմ դատէին՝ գտաւ
»անապակ Հայ և ճշմարտութեանցն վարդապետ. և
»եղիտ զնոսա անօսրացեալ ի գիտութենէ և թան-
»ձրացեալ ի հեշտութիւն մարմնոյ»։

Երուսաղէմ ի Թուրքաց ազգէ[1], և եկեղեցականքն և իշխանքն որք ապաստանէին սուրբ տեղեացն՝ գերեցան. և համբաւս այս հասեալ յարեւմուտս՝ զրնաւ ազգսն թագաւորօք և իշխանօք՝ ըստ հրամանի Հռոմայ հայրապետին շարժեաց գալ յայս աշխարհ: Եւ մինչ նոքա հեղուին անթիւ բազմութիւնք նաւօք ի ծովէ անտի ի Պտղոմիտեայ[2], ի թուականութեան ի ՈԼԸ (638–1189–90), յղեաց իշխողս մեր մեծ Լեւոնն[3] զմեզ՝ առ կաթողիկոսն սուրբ Տէր Գրիգոր յաթոռն հայրապետական՝ որ կոչի Հռոմի-կլայ ի վերայ Եփրատայ: Եւ ի գնալս մեր յաւուրս Պենտակոստէից յայնկոյս Մարաշայ, յարձակեցան ի վերայ մեր Թուրք-Մարք[4]. և սրով ճարակեցին զորս ընդ մեզ կրօնաւորք և աշխարհականք՝ ոգիք իբրեւ քսան. յափշտակեցին ընդ այլ ինչսն և գրեանքս. ի վերայ որոյ ագայի անմխիթար, չունելով զհաւաստարն[5]: Իսկ ապա ի տեսչութենէ զթութեանն Աստուծոյ՝ ի թուին ՈԽԱ (641–1192-3), քննեալ ուր վաճառեալ էին՝ դարձուցաք զայն ի գերութենէն. քանզի գտաւ ի գաւառն Ջահնայ[6], և սատարութեամբ եպիսկոպոսի գաւառին Ներսիսի և Վարդանայ կրօնաւորի՝ ածաւ սոյն առ իս վերստին. և եղեն վշտագնեալ ոգւոյ իմոյ մեծ սփոփանք և մխիթարութիւն, և առ Աստուած երկրպագութեան գոհութիւն: Փառք Ամե-

1. Տես Ցօղուած 298:
2. Խաչակրաց S. Jean d'Acre կոչած քաղաքն, ըստ արեւելեայց Աքքեա:
3. Այն ատեն Մեծ Պարոն կամ Պարոնաց Պարոն կոչուէր, տասն տարի վերջն եղաւ առաջին թագաւոր մեր Կիլիկեցւոց:
4. Ցայտնապէս Քուրդք կամ Թափառիկ Թուրքմէնք:
5. Այսինքն, ուրիշ օրինակ չունի եղեր այդ անգին գրոց:
6. Կիլիկիոյ արեւելակողմն, Ճիհան գետոյն անուամբ այդպէս կոչուած:

նաւուրբ Երրորդութեան, Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս։

**Բ. Պատճառ Թղթոց Միաբանութեան (Հայոց և Յունաց[1]).**

Այսմ ականատես և ականջալուր եղեալ նուաստս Ներսէս՝ համանուն որդի նորին Տեառն Ներսիսի հայրապետի[2], ըստ փափագման քո, իշխան բարեպաշտ և հարազատ եղբայր իմ Հեթում, շարագրեցի համառօտաբար զՊատճառ Նամակացն հանդերձ թղթովքն։ Իսկ զբովանդակ վարս երանեալ հօրն մերոյ և սուրբ կաթողիկոսին տեառն Ներսիսի, եթէ կամիցիս կարգաւորաբար ուսանել, նախ քան զայս է մեր աշխատասիրաբար գրեալ տաղաչափական բանիւ. զոր առեալ ի ձեռս ընթերցցիս և մխիթարեսցիս հոգւով, ըստ առակախօս իմաստնոյն, եթէ, «Յիշատակ արդարոց խնդութիւն ժողովրդոց»։ Քանզի յայս փափագ միայն զքո բարեպաշտութիւնդ ի մերումս ժամանակի տեսաք՝ վար արկեալ առ ի խնդրել և յուսանել. զոր և իմ կամելով՝ ըստ կարի գրեցի, ի փառս Քրիստոսի Աստուծոյ, որ է օրհնեալ յաւիտեանս։

**Գ. Յիշատակարան թարգմանութեան գրոց Յայտնութեան[3].**

Այս Յայտնութիւն աստուածաբան Աւետարանչին Յովհաննու՝ սրբոց հարցն մերոց վարդապե-

1. Շատոնց հրատարակուած են Թղթակցութիւնքն Յունաց Մանուէլ կայսեր և Ներս. Շնորհալւոյն ու իր յաջորդին, Հայոց և Յունաց հաւատոյ վարդապետութեան միաբանութեան համար, որոյ համար յետոյ և Ն. Լամբրոնացին ղրկուեցաւ ի Կ. Պոլիս. (տես Նախընթաց Յօդ. 305), բայց չկատարեցաւ գործն։
2. Տես 305 Յօդուածը։
3. Ոմանք վաւերական Ս. Գիրք չէին համարեր զայս։

տութեամբ պատուեալ՝ ի պէտս վկայութեանց, զեր-
ծաւ ի գայթակղութենէ կարծեաց ոմանց, որք այ-
լանդակս իմացան զսմանէ։ Քանզի մեծն Դիոնէ-
սիոս յԱստուածաբանական ճառսն հիւսեաց ըզ-
վկայութիւն սորա, և Երենիոս Մեգաղոս[1] եպիս-
կոպոսն, Գրիգորիոս Աստուածաբանն՝ ի Հրաժարա-
կան ճառն, Գրիգոր Նիւսացի յԵպիսկոպոսացն ժո-
ղովոյ, և մեծն Կիւրեղ, Մեթոդիոս[2] և Հիպողի-
տոս[3], նա և անփորձն իւրեգինէս[4], զոր պատուեալ
եկեղեցի՝ ըստ նոյին հաւանութեանն դասեաց ի
կարգ աստուածաշունչ Նորոց Կտակարանաց։ Որոց
եղեալ և մեր ընթացակից՝ ի սուրբ եկեղեցւոյ ման-
կունս աւանդեցաք զսոյն, ի դասակարգութիւն ա-
ռաքելական մատենիցս, որպէս արդարև զառաքե-
լական Յայտնութիւն. և ստուգաբան արարաւ մե-
րըստին երիւրեալ ի Հելլենացւոցն[5], իմով նուաստ
Ներսիսի թարգմանութեամբ, ընդ որ և զքննու-
թեամբ մեկնութիւն սորին ածի յեկեղեցիս Հայոց։

Արդ, որք յետ մեր լինիք սմին ընթերցողք և
պայծառութեան աստուածաբան մատենիս վայե-
լողք, տացէ ձեզ շնորհք Սուրբ Հոգւոյն՝ քաղցրու-
թեամբ առնուլ ի քիմս մտաց հոգւոյ՝ զբանս Աս-
տուծոյ, որ ախորժ է քան զմեղր՝ բերանոյ։ Քանզի
արդարև յիմանալն ի սմանէ՝ թիկունս դարձուցա-

1. Մեզի ծանօթ Ս. Իրինէոս կամ Իրենէոսն Լիոնի եպիսկոպոս էր։

2. Տիւրոսի եպիսկոպոս էր և մարտիրոսացաւ։

3. Բ կամ Գ դարու հեղինակ, եպիսկոպոս Հռովմայ սահմանաց, որոյ վարուց և վարդապետութեան վրայ տարակոյսք եղած են։

4. Սովորաբար Որոգինէս կոչուի. անփորձ կ'անուանէ զնա՝ իր քանի մի սխալ և միամտական կարծեացն համար։

5. Լամբրոնացին այս Յայտնութեան գրոց հին հայերէն թարգմանութիւնը գտեր է՝ թերեւս ոչ ամբողջ, և նորէն յունարենէ թարգմաներ է բաղդատութեամբ կամ լրացընելով։

նէք առնելութեամբ, ըստ Երգողին, յամենայն հանապարհաց չարաց։ Այլ թէ և առ մեզ ողորմութիւն ցուցանէք մաղթելով ի Տեառնէ քաւութիւն, և ձեզ լիցի ողորմութիւն, ըստ հրամանի իրաւախօսին. որ վարեցաք պաշխարչս ի ժամանակի յորում էանց սորին վայելչութիւն։ Քանզի ակներեւ աչաց մերոց սուրբ և աստուածակոխ քաղաքն Երուսաղէմ յափշտակեցաւ ի սպասաւորութենէ քրիստոնէից՝ սրով Իսմայելացւոցն, ի ՈԼԶ (1187–8) թուին Հայոց. ի վերայ որոյ բազում արեանց հեղմունք Լատինացւոց բազմայեղ ազգաց. որք դաս դաս առաքատեալ նաւօք և քաջասպինդ հաւատով և սրտաջան արութեամբ հասին ի Պաղեստին. և անդ դիակնացեալք շուրջ զքաղաքաւն, ըստ երգոյն, և ոչ ոք էր որ թաղէր. և մեք մնացաք նախատինս դրացեաց մերոց, մինչեւ ի լրումն թուիս ՈԽԷ (1198–9). յորում ամի վերապատուեցաւ թագաւոր Հայոց Լեւոն՝ որ յՌուբինեանց, բարեպաշտ և յաղթող Աստուծով. որոյ հռչակ արութեանն շարժեաց զմեծ ինքնակալն հին Հռոմայ զՀենրի[1], և նոր Հռոմայ զԱլեքս, որք պսակեցին զսա քարամբ պատուականաւ, յեկեղեցի Տարսոնի՝ որ իմ անարժանութեամբս հովուի[2]։ Զսա Քրիստոս Աստուած մեր շնորհեսցէ մեզ երկայնութեամբ աւուրց և անվանելի յաղթութեամբ, և ի փոխելն աստի՝ սրբոց թագաւորացն արասցէ պսակակից և խորանակից ի լուսեղէն յարկսն։ Եւ նմա փառք յաւիտեանս. ամէն։

1. Ենրիկոս Զ. որդի Շիկամօրուս Փրեդերիկոսի։
2. Լեւոնի մեծահանդէս թագով պսակուիլն քիչ մի վերջն եղաւ, երբ Լամբրոնացին յերկինս էր։

## Դ. Յիշատակարան թարգմանութեան Մեկնութեան գրոցն Յայտնութեան.

Յիշատակ տառիս գրողի Տեառն Ներսիսի գերահռչակ վարդապետի, զոր գտեալ ի մեծն Անտիոք, գրեաց զսա ի լուսաւորութիւն հոգւոց։

Ես Ներսէս ծառայս ի Քրիստոս, և տարտամս յուսումնասիրաց, վերջին և նուաստ ժամանակի ծնունդ, յընթեռնուլն զՅայտնութիւնն Յովհաննու՝ տագնապէի յանձն իմ առ ի յոչ գիտել զլուծումն բանից սքանչելեաց. և այսր անդր խուզելով զմեկնութիւն նորին ի մեր բարբառ՝ ոչ գտի։ Յետ որոյ եհաս ինձ ընթանալ ի մեծն Անտիոք, և շրջելով յոր անդ վանորայս Հոռոմոց և Փռանգաց, այս տենչումն բորբոքէր ի միտս իմ. ուստի և քննեալ գտի ի գրատանս հռչակաւոր ուխտին Սրբոյն Պօղոսի՝ ի քաղաքի անդ[1], զմեկնութիւն Յայտնութեանս ի Լանպըր[2] բարբառ, և ի նոյն գիր՝ որով վարին Փռանգք, երկու մեկնչաց արարեալ[3]. և փափագելով թարգմանել՝ ոչ գտի զոք որ յայն բարբառոյ ի հայս կարէր յեղաշրջել։

Ապա ելեալ արտաքոյ քաղաքին ի սուրբ լեառն[4] որ ի հիւսիսոյ կողմ անդր՝ ի մի վանորէիցն Հոռոմոց՝ որում անուն էր Բեթիաս[5], առ ոմն արդելական միայնակեաց՝ որոյ անուն Բասիլ, կնքեալ և քննեալ գտի զցանկալիս ի հելլենացի բարբառ և ի գիր,

1. Պօղոս Առաքելոյ նուիրուած էր Անտիոքայ մեծ եկեղեցին և վանք մի ևս Լատինաց։

2. Լոմպարտացի լեզու, որ գերմաներէնի և լատինի խառնուրդ էր։

3. Գլխաւորն է Անդրէաս արքեպիսկոպոս Կեսարիոյ, ի վերջ Ե կամ ի սկիզբն Զ դարու։

4. Շատ վանքեր ըլլալով լերան վրայ՝ Սուրբ կոչուէր և լեռն։

5. Bedias, այս անուամբ գեղ մի ծանօթ է, որ այն ատեն Տիւրոսի թեմին ներքեւ էր։ Տես երես 433։

ուղղարան և վայելուչ, որ լեալ էր Արշակունի պատրիարքի Նորին քաղաքի։ Եւ խնդրեալ աղաչանօք ի բարեմիտ տանէն՝ առեալ փութացայ զբաժքն ի Հայրապետական աթոռն առ Տէրն իմ և կաթողիկոս սուրբ Գրիգորիոս[1]. զոր ծանուցեալ ուրախ եղեւ յոյժ, և հրամայեաց թարգմանել ի ձեռն մետրապօլտին Ցերապաւլսի[2] Կոստանդեայ, որ անդ ի ներքոյ սորա Հայրապետին հովանւոյ հանգչէր։ Եւ սկսեալ օգնականութեամբ Աստուծոյ և սրբոյ Տեառն[3], նա ի թարգմանել և ես ի գրել, վերընծայեցաք եկեղեցւոյ Հայաստանեայց ուսումնասէր մանկանց՝ զայս սքանչելի և աստուածային Ցայտնութեանս մեկնութիւնս։ Աղաչեմ զընթերցողսդ և իմաստութեան զսիրողսդ, յիմանալ զնորա իմաստիցն Աստուծոյ քննութեամբ, զսուրբ հայրապետն Հայոց՝ զտէրն իմ զԳրիգոր զբարեմիտն և զբարեսէրն և զառիթն թարգմանութեանս և զհրամայօղ, մաղթեցէք ի Քրիստոսէ՝ յաստիս խաղաղութեամբ պահել, և ի հանդերձեալն սրբոց իւրոց յերկնիցն արքայութեան ժառանգակից ընդունել։ Այլ և զԿոստանդին մետրապօլիտն՝ որ թարգմանեաց և զԲասիլ կրօնաւոր որ զօրինակն ետ, Քրիստոս ողորմութեանն իւրոյ արժանացուսցէ աղօթիւք ձեր։

Թարգմանեցաւ աստուածային Ցայտնութեանս մեկնութիւն ի թուիս Հայոց ՈԻԸ, ի սուրբ և ի հայրապետական աթոռն, որ կոչի Հռոմկլա, շրջապատեալ յադենական աղբիւրէն Եփրատայ, որ մատակարարէ բնակչացն զամենայն մարմնական պիտոյս՝ խնամօք Աստուծոյ, ընդ հովանեաւ աստուածընկալ Նշանին Վանկոյ, և այլ սքանչելի սրբ-

1. Շատ անգամ յիշեալ Գրիգոր Տղայն։

2. Այլ և այլ քաղաքք կան այս կոչմամբ՝ որ Ս. քաղաք նշանակէ. սա թուի Մմբէճ կոչուածն յարեւելեայց, և շատ հեռի չէ ի Հռոմկլայէ։

3. Այսինքն, կաթողիկոսին։

քացն որ հանգուցեալ են անդ, ի փառս Աստուծոյ։ Իսկ սրբարանեցաւ ի Նշանագրութենէն քերթողական արհեստիւ, ի յապահով անապատս ի Սուրբ Գեորգ, ի մէջ լերինս Տորոսի, որ է ի գահ Կիլիկիոյ և ի սկիզբն Պամփիւլեայ, ձեռամբ Նուաստ եպիսկոպոսի Նորին մայրաքաղաքի Տարսոնի՝ տառապելոյս Ներսիսի, շնորհիւ և ողորմութեամբ Քրիստոսի, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն։

Ե. Յիշատակարան թարգմանութեան Տրամախօսութեանց[1] Ս. Գրիգորի Ա Պապի.

... Բազում փոյթ եղեւ ի հնումն և ի նորումս զվարուց Սրբոցն զկտակ՝ թողուլ գրով, որք պատմեցին զեղեալսն և մարգարէացան զառ յապա լինելոցսն։ Եւ ոչ միայն այս, այլ և վարք Սրբոցն և առաքինութիւնք սրանցն որք յարեւելս և յԵգիպտոս ճգնութեամբ երեւեցան և շնորհօք Ս. Հոգւոյն՝ ամենայն գովութեամբ գերազանցեցին, պատմի ի մէջ մեր։ Այսպէս և որ մեծ է ի Սուրբս՝ Հայրս մեր ամեներջանիկ Գրիգորիոս՝ մեծանուն քաղաքին Հռովմայ եղեալ Պապ, ընդ այլ գիրս բազումս՝ զորս պաճուճաբանս և խոր մտածութեամբ խօսեցաւ, երեւեցոյց և զվարս որք յԻտալիա փայլեցին սուրբ արք, և զժամանակս յորում էին և զտեղիս յորում եղեն, և արար ի հռովմայեցի լեզու՝ զոր վասն նոցին զգիրս. և անց ընդ մէջ ամս ՃԿԵ (165), և ոչ ոք փոյթ արար յեղաշրջել զգիրսս զայս ի Հռովմայեցւոց լեզուոյն յելլադացի բարբառ։

1. Սրբութեամբ, գիտութեամբ և գործովք գերագոյն Հայրապետիս Հռովմայ շատ նշանաւոր գրուած մի է, և ինչպէս իրեն արժանաւոր թարգմանիչն կ'ըսէ, իբրեւ Արեւմտեան Հարանց վարք մի. գրուածքին կերպն այլ իբրեւ հարցընողի և պատասխանողի ըլլալով՝ կոչուած է Տրամախօսութիւն. Dialogue, որ պարզաբար խօսակցութիւն կ'ըսուի։

Իսկ Զաքարիա[1] երջանիկն և հրեշտականման՝ առաքելական աթոռոյն Հռովմայ պապն, որ ի վերուստ աստուածային վերակացութեամբն վերակոչեցաւ հովիւ և հովուապետ և առաջնորդ ուղղափառ հաւատոյն, աստուածասէր և բարեսէր հոգին, յետ ամենայն առաքինութեան և ուղղութեան՝ եդ զանձն իւր և յաշխատութիւն յայս. և ջանիւ պար(ապ)եաց աստուածային գրոյս, ըստ պատուիրանին Տեառն՝ որ ասէ, «Քննեցէք զգիրս, զի նոքօք համարիք ունել զկեանս յաւիտենականս»։...[2]

Զչորս գիրս՝ որպէս վերագոյն յիշեցաք՝[3] զոր ասացեալ է (սուրբ) հայրն մեր Գրիգորիոս ի հռովմայեցի բառս... զսուրբ Հարցն առաքինութիւնս, և այսպէս... զանձ անկողոպտելի եթող... հաւատարմապէս և իմաստութեամբ ստացաւ։

Իսկ ապա և հուսկ յետին ժամանակս՝ ըստ թուոյ Հայոց ՈԻԸ (628=1179) յամի, իմոյ Ներսիսի Տարսոնի եպիսկոպոսի՝ ի մանկական հասակ՝[4] ուսումնասիրութեան և բարեկարգութեան տենչանօք շրջելով ի վանորայսն որ առընթեր մեծի քաղաքին Անտիոքայ, ի լերանն որ Ռաւախամճիր[5] կոչի՝ յափն ծովուն, հիանայի ի տեսանելն զառաքինազարդ միայնութիւնն և զճգնութիւն հռովմայեցի

1. Սա քահանայապետ եղած է 741–52 տարիներու միջոց. ազգաւ յոյն ըլլալով՝ իր հին նախորդին (Մեծին Գրիգորի) այս գործը թարգմաներ է յունարէնէ, յորմէ և Ներսէս ի հայերէն։

2. Հայերէն թարգմանութեան օրինակն տեղ տեղ մաշած էր, որով պակսի Զաքարիայի թարգմանելուն ամբողջ յիշատակն։

3. Յիշատակարանին սկիզբն յիշած էր որ այս Տրամախօսութիւնք չորս գիրք բաժնուած են։

4. Փոխանակ երիտասարդ ըսելու՝ մանկական հասակ կ՚ըսէ Լամբրոնացին, երբ 25 կամ 26 տարուան էր։

5. Արաբերէն խոզի գլուխ նշանակէ այս անունը՝ լերան ձեւին նմանցընելով։

միաբանակեաց վանորէիցն՝ որ այժմ կոչին Փըռանգք։ Եւ իբրեւ ընդ անընդել իրս սխրացեալ՝ Հարցի ընդ այն իմաստուն կրօնաւոր որ ի Յունաց՝ Բասիլ անուն. Ուստի՞ սոյս այսքան ուղղութեան կարգացս շնորհ, որով գերազանց գտանին այսօր ձեզ և մեզ։ Պատասխանեաց. ի Բենեդիկտոսէ երանեալ հօրէն[1], զորոյ զվարսն պատմէ Սուրբն Գրիգոր պապն։ — Եւ ունի՞ս արդեօք զնոյն գիրս, ասացի։ Պատասխանեաց, Այո. և եբեր առաջի իմ. և իմ փոքր մի վարժ գոլով հելլենացի գրոյն՝ ընթերցայ սատ անդ. և բորբոքեցաւ յիս ցանկութիւն աստուածային գրոցս թարգմանութեան։ Այլ զի ոչ կամէի անձին անձամբ վճարել զգործն՝ խափանեցաւ յայնժամ. և թարգմանեցի զնորին Բենեդիկտոսի Կարգ և զօրէնս կրօնաւորաց՝ նոյնժամայն ի լատին լեզուէն, ի փռանգ վանս Ս. Պաւղոսի՝ որ ի քաղաքն Անտիոք, ի ձեռն համակակից կրօնաւորի միոյ ի նոցանէ Կիլյամ[2] անուն։ Իսկ ապա եկեալ ի վանսն որ Սիւմանակլա[3] կոչի՝ Հուպ Անարզաբայ, յորում բազում գրեանք ի յունական գիրս աւանդեալ է, մանրամասնաբար խուզեալ՝ գտի զայս գիրս. և հրճուեալ ի վերայ անչափ խնդութեամբ, որպէս գիտեն փորձքն ուսումնասիրութեան՝ որ է նոյն և աստուածասիրութիւն[4], առեալ գնացի ի հայրապետական աթոռն՝ որ է Հռոմկլայ՝ յափն Եփրատայ, և կամօք Տեառն իմոյ կաթողիկոսին Գրիգորոյ թարգմանեցի զսա, և

1. Արեւմտեան միանձանց կամ կրօնաւորաց նախասկիզբն, ինչպէս Ս. Անտոն՝ արեւելեայց։

2. Կիյլոմ պէտք էր ըսել, Guillaume, գուցէ թարգմանիչն գրած էր Կիլյամ։

3. Անշուշտ Կլայ, բերդ բառով բարդած է անունն, բայց Սիմանն կամ Սիմոնն բերդատէրն ո՞վ է։

4. Գեղեցիկ խորհրդածութիւն. կարեւոր գիտելեաց ուսումնասիրութիւնը՝ կերպ մը աստուածասիրութեան համարիլ։

զՄեկնութիւն Յայտնութեանն Յովհաննու, ի ձեռն առաքինի մետրապօլտին Յերուսաղէմի[1] կատարեցաւ, և խնամատար աշխատութեամբ յեղյեղեալ և ուղղեալ՝ թողի զսոյն յեկեղեցի Հայոց, ապագայից բարեաց և Հրեշտակական մխիթարութեան զբաղելոցն ի վարս առաքինութեան: Արդ, որպէս ընկալաւ զսա եկեղեցին հռոմայեցի՝ ի յերջանիկ հօրն Գրիգորի պատմութենէն, և եկեղեցին Յունաց ի թարգմանութենէ սուրբ Հայրապետին Զաքարիայ, նոյնպէս և դուք որ Հայաստանս եկեղեցւոյ էք մանկունք, ընկալարուք ի նուաստ պաշտօնակցէ ձերմէ զսոյն, և հաւատով պատուեալ մխիթարեցէք զանձինս ի յոյսն որ ի Քրիստոս:

* Ներսէս տըրաւ եւ անարժան[2]
Սուրբ պատմութեանս սիրով թարգման,
Յորոց՝ սովաւ հոգւով ցնծան՝
Հայցեմ նորումըն թողութեան:

* Հաւատարիմ այս վըկայիս[3] դու հաւատա
Եւ ընդունեքըս զոր պատմէ՝ սիրով գըրեա.
Զի և այսօր մերձ ի յԱստուած զայս ընդգեստեա
Հաւատովք ընդ նոս կապեալ քան զազգս որ կայ:
Յերուսաղէմ ի սուրբ քաղաքն յոր ընթացայ՝
Տեսի պըտուղ սիրոյ սոցին. յոր ոչ հասայ.
Որովք չեռեալ որք յարեւմուտըս Սուրբք նոցա՝
Թէ տան պտուղ զայս սքանչելիսս՝ ոչ զարմացայ[4]:

1. Դ. Յիշատակարանին մէջ այլ յիշուեցաւ տա. և Թուի հալածանք մի կրելով ապաւինած մեր կաթողիկոսի քով:
2. Այս և ներքոյ գրեալները գիրքը թարգմանելու ատեն՝ զուարթութեամբ գրեր է:
3. Թուի թէ հեղինակին՝ Գրիգոր Պապի՝ համար կ'ըսէ:
4. Յերուսաղէմ եղած ատեն՝ անդուայն կրօնաւորաց աստուածսիրութիւնը տեսնելով, երբ արեւմըտեայցն այլ տեսաւ, չզարմացաւ թէ անոնցմէ աւելի էր ասոնցն:

**Զ. Յիշատակարան Լուծմանց Խնդրոց, առ Սիմէոն աշակերտ իւր.**

Այսքան առ ի մէնջ ծայրաքաղ հարցմանս լուծումն, ոչ ըստ ինքնայօժար կամաց, այլ ըստ քոյդ բռնադատելոյ՝ որդի սիրեցեալ Սիմէոն, յորս որքան զօրացեալ մտաց մեր տեսութիւն՝ ի ճշմարտութիւնն յեցաւ՝ և ոչ ի պաճուճանս բանից։ Արդ ընկալ թէպէտ և անազան սակայն անթերի ըստ կարի, և դատապարտեալ այսու զմիտս և զմարմին՝ փութա զբղջախոհ խորհուրդս ցամաքեցուցանել ճառագայթիւք աստուածայնոցս բանից. զի Սուրբ Հոգին իմաստութեան փախչի ի մարմնոյ՝ որ վարակեալ է մեղօք, ասաց իմաստունն...։

**Է. Յիշատակարան Մեկնութեան Աղօթից կամ Հանգստեան Ս. Յովհաննու Աւետարանչի[1].**

Տեսութիւն Քննութեան Աղօթից Աւետարանչին Յովհաննու. ի խնդրոյ Ստեփաննոսի Վարդա-

[1]. Յովհ. Աւետարանիչ յատուկ սիրելին Յիսուսի՝ որ ըսաւ ասոր համար առ Պետրոս Առաքեալ, թէ «Եթէ կամիմ՝ կեցցէ դա՝ մինչև ես գամ». այս խօսքէս կարծեցին ոմանք, կ՚ըսէ նոյն ինքն Աւետարանիչն, թէ պիտի չմեռնի ինքն մինչև ի միւսանգամ գալուստն Քրիստոսի. սակայն Նոր կտակարանի վերջը յարեալ գրուած մի, ըստ ոմանց հարազատ վաւերական մասն Ս. Գրոց, պատմէ, թէ այդ սքանչելի անձն ողջ ողջ մեռեր կամ հանգչեր է և թաղուեր. ասոր համար Հանգիստ Յովհաննու կոչուի այդ գրուածն. կամ, հանգչելէն առաջ երկայն ըսած աղօթքին համար Աղօթք Յովհ. Աւետարանչի, ինչպէս Լամբրոնացին այլ անուանէ. շատ հեղ այլ գրուածին պատմական սկզբան բառերովն՝ Էր ընդ եղբարսն կոչուի։ Ահա այս պատմական մասն և բոլոր աղօթքը մեկներ է Ներսէս, կամ ինչպէս ինքն կ՚ըսէ՝ Քննելով տեսութիւն մի գրեր է։ Իր երկար Սաղմոսաց մեկնութիւնն այլ այսպէս Քննութիւն կ՚անուանէ։

պետի Յակոմբցոյ[1], ի Ներսիսէ աշակերտէ իւր և հոգեւոր որդեկէ։

Գիր քո պատուականութեանդ՝ մի անգամ և երկիցս, Հայր սուրբ, եհաս առ իս, փութացուցանելով առ ի խնդիր քննութեան աստուածաբան Առաքելոյն Յովհաննու Աղօթիցն. և ես նախապատիւ վարկայ զհնազանդութեամբ աշխատութիւնն քան զհեղգութեամբ լռութիւնն. հաւատացեալ՝ թէ բան իմաստից յաստուածայինսն՝ ոչ է մարդկային գիւտ արուեստի, և ոչ պճնութիւնն որ ի նոսա՝ գովնոցա[2], կամ նուազութիւնն՝ պարսաւ, այլ իւրաքանչիւր ոք ունի զնոյն ըստ իւրում չափոյ հաւատոցն, յայնմանէ՝ որ զզանազանութիւն շնորհաց ի մարդիկ բաժանէ. առ որ և գովութիւնն ի լռողացն աւարտի։ Եւ մի՛ մեք յայսմ երկիւղէ խուսափեալ՝ զպարգեւ նորին ծածկեսցուք, և կամ ի պէտս նորին խնդրոյ յայտնեալ՝ աստուածայնոցն սեղանակապուտ և յափշտակող լիցուք. այլ ջանացեալ միշտ ի մարդկային նուաստութիւնս մնալ, զԱստուծոյն նմա վերագրել՝ ի փառս նորին մատակարելով պաշտոյանորէն խոնարհութեամբ։...

* [3] Որ ամենայնի ես ճշմարտասէր և իմաստասէր.

1. Ո՞վ է այս Ստեփաննոս Վարդապետն՝ որոյ աշակերտ և որդեակ կոչէ զինքն Ներսէս. չեմ գիտեր. Վանաց կողմանց անուանի եպիսկոպոսն որ եկաւ Լեւոն թագաւորի օծութեան ժամանակ և Լամբրոնացւոյ ծանօթացաւ, մի՞թէ նա էր։ Տես Յօդ. 311։

2. Աստուածային բանից կամ գրոց մեկնելն բացատրելն, կ'ըսէ հեղինակս, մարդկային գիւտ կամ գիտութիւն չէ, այլ Աստուծոյ տուրք մի, որ աւելի կամ պակաս կու տայ մեկնողաց. ասով իրենց աւելի լաւ կամ պակաս գրելն այլ՝ իրենց համարելու չէ։

3. Այս կտոր բանս բոլոր մեկնութեան գործոյն վերջաբանն է առ խնդրողն Ստեփաննոս Վ. զոր իմաստասէր և ճշմարտասէր վկայէ, այլ և օրհնող Աստուածաբանն Յովհ. Աւետարանչի։ Գրութեան ժամանակն չէ նշանակած։

մինչ զի ոչ քոյովդ բաւականացեալ այլ և զմեզ ձգեցեր հաւանութեամբս ի յանդգնութիւն, ո՛ Հայր պատուական Ստեփաննոս. զորոյ ի գլուխ ած շընորհքն Աստուծոյ՝ զխնդրելիս, ի ձեռն տառապեալս գործարանի, ի փառս իւր և ի վայելս քումդ հաւատոյ՝ և ճշմարիտ որ առ Աստուածաբանս սիրոյ[1]: Ոչ թէ ըստ որում պարտն էր կամ կբովանդակն ածել ի լոյս զսորա զօրութիւնն՝ որ անհնար էր լինել, այլ փութացեալ միայն հնազանդութեամբ որդիականս հպատակութեամբ պատճառնիւթել իմաստնոյդ, առ ի ևս սորին իմաստութեամբ բարձրանալ, շնորհօքն Յիսուսի Աստուծոյ յաւիտեան մերոյ, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն:

Ը. Յիշատակարան թարգմանութեան գրոց կարգաց Լատին Եկեղեցւոյ[2] — Առումն Երուսաղեմի. Գալուստ խաչակրաց. — † Ա Փրեդրիկ կայսեր.

Ի թուին Հայոց ՈԼԴ (1185) եկն Գրիգոր եպիսկոպոս[3] (փիլիպպուպօլսոյ) ի հայրապետէն Հռով-

1. Յովհաննէս աստուածաբան աւետարանիչը սիրելոյդ համար:

2. Մեր Մաշտոցի նման գիրք մի Օրհնութեանց, որոյ ամբողջ թարգմանութիւնն Ն. Լամբրոնացւոյ անխոնջ գրչէն՝ գտուի և մեր քով, իբրև դար մի իրմէ վերջ օրինակուած:

3. Մակեդոնիոյ կողմեր գաղթած Հայոց եպիսկոպոս, զոր թուի թէ և լեզուի գիտութեանն համար՝ կաթողիկոսն Գր. Տղայ Նուիրակ խաւրեր է ի Հռովմ առ Պապն Լուկիոս կամ Լուկկիոս Գ (1181–5). սա՝ թէ պատասխան գրած է առ կաթողիկոս մեր, թէ պալլիում խաւրեր է ընծայ, և աւելի պատուոյ և սիրոյ նշան՝ իր հայրապետական գլխոյ Խոյրը կամ Թագ մի. իր գրած թղթին թարգմանութեան օրինակն գտուի առ մեզ, իսկ լատին բնագիրն չկայ. Նոյնպէս և Կղեմայ Գ (1187–91) թղթոց՝ հայերէն թարգմանութիւնք կան, բնագիրքն չկան. ի հակառակէն՝ մեր կաթողի-

մայ Լուսիոյ՝ սա կաթողիկոսն մեր Գրիգորիոս, որ էր ի սմանէ առաքեալ, և երբ զպատասխանի նամակի Տեառնն մերոյ և զԳիրս Կարգաց Եկեղեցւոյ՝ Հռովմայեցի գրով. և եգիտ զՏէր մեր ի քաղաքն Տարսոն, յամսեանն հոգտեմբերի։ Եւ ընկալեալ կաթողիկոսին սրբոյ զպատուական պալիուռնն և զխոյրն (գլխոյ Պապուն); ի լրումն պատուոյ իւրոյ՝ գոհացաւ զԱստուծոյ։ Եւ ետ զնամակ Հայրապետին և զԳիրս կարգաց եկեղեցւոյ՝ իմ նուաստութեանս՝ թարգմանել. զոր յեղաշրջեցի ի հայ բարբառ, միայն երիցեալ[1] զբանն քերթողական արուեստիւ, առանց յաւելուածոյ և թերութեան։ — Իսկ յետ այսր ի թուին ՈԼԶ (1187-8) ընդ մեղաց մերոց առաւ Ս. քաղաքն Երուսաղէմ յԻսմայելացւոց Թագաւորէն Ցովսեփայ[2]. և որ ի նմանէ ազատաւորք և զօրք՝ ցիր և ցան եղեն յայսկոյս ծովու և յայն։ Իսկ Հայրապետն (Հռովմայ) շարժեաց զԹագաւորս և զիշխանս և զզօրս և զքաղաքացիս զանազան ազգաց՝ գալ յայսկոյս, ի փրկութիւն սուրբ տեղւոյն։ Եւ ամենեքին յօժարութեամբ բարձին զխաչն Քրիստոսի, և եկին մեծաւ աշխատութեամբ. ընդ որս եկն և Թագաւորն Ալամանաց Փիլտրիկք[3], որ էր ինքնակալ Հռոմայ և մեծ քան զամենայն Թագաւորս. և սա ոչ ծովով՝ այլ ընդ ցամաքն արար ճանապարհ, անթիւ զօրօք եմուտ յՈւնճկոս[4], և եկեալ

կոսի Գրիգորի զբանն այլ չկայ ոչ Հայերէն ոչ լատիներէն. կամ ծանօթ չէ մեզ։

1. Այսինքն. Հայերէն լեզուի ոճոյ յարմարցընելով լատին լեզուի ոճը։

2. Սալահէտտինի բնիկ անունն՝ Եուսուֆ։

3. Ալամանք և Գերմանացիք նոյն են. կայսեր անունն ըստ նոցա Ֆրետրիկ, մեք սովորաբար Փրեդերիկոս կ՚ըսեմք. սա այդ անուամբ Ա էր, նշանաւոր ի պատմութեան՝ մականուամբ Շիկամօրուս կոչուած է, Barberousse, մօրուաց գունոյն համար, որ բնական է իր ազգին։

4. Ունգարիա կամ Մաճառաստան։

ձմերեաց ի Մակեդոնիա՝ ի փիլիպպուպօլիս. և ի տօնի պասեքին անց ընդ ծովն Աշտեաց[1], և ծանր տարմամբ[2] հերձեալ զբանակս անթիւս խորանաբնակ[3] Թուրքմանաց, էջ զօրօքն հուպ քաղաքին Սելեֆկի Սաւրացւոց:

Զոր լուեալ կաթողիկոսն մեր Գրիգորիոս և իշխողն Լեւոն, (ընդ) որոյ տէրութեամբ էր Սելեֆկիա, փութացան մեօք հանդերձ ընդ առաջ նորա՝ մեծաւ ուրախութեամբ, իբրեւ փրկչի այս աշխարհաց: Այլ մեղաց մեր ծանրութիւն կարճեաց զընթացս արքային. զի յանցս գետոյն Սելեւկիայ[4] ախորժեաց լուանալ, և ծերութեամբն ոչ կարաց ընդդէմ կալ յորձանացն, հեղձաւ: Իսկ մեր տրտմութեամբ պատահեալ եպիսկոպոսացն որք գային զկնի նորա և որդւոյ նորին և զօրացն, դարձաք ի Տարսոն: Եւ զի խոստումն էր ինքնակալին ոսկի կնքեալ գրով՝ Հայոց թագաւոր դնել[5], պահանջեաց ի նմանէ կաթողիկոսն սուրբ՝ զլրումն խոստմանն. և ինձ հրաման ետ զսոյն թարգմանել. զոր կատարեցի յօրինակէ՝ միոյ յեպիսկոպոսաց նոցին,

1. Մակեդոնիոյ ծովեզերքն, ուստի նաւած է կայսրն՝ Միջերկրական ծովու վերաբերին. ինչո՞ւ այդպէս կոչէ մեր հեղինակն՝ ինձ անյայտ է:

2. Բազմաթիւ խումբերով զօրացն. սովորաբար թռչնոց բազմութիւնն կ'ըսուի տարմ:

3. Տուն չունող, տեղէ տեղ փոխուող և վրաններու (թր. չատըր) տակ բնակողք. որք ըստ Թուրքաց կոչուին Կէօչէրէվլի, իբր չուաբնակ:

4. Մատնիչ գետ մի, Մեծին Աղեքսանդրի այլ դրեթէ նոյն վտանգը հասուց:

5. Ցանկալի էր գտնել այդ խոստման ոսկեկնիք գրուածը. և անկէ առաջ Լեւոնի այլ խնդրածը, որ տասն տարի վերջ կատարեցաւ (1199) մեծ հանդիսիւ (տ. Յօդուած 309). տասն տարի վերջ Լեւոն դարձեալ Ալամանաց կայսերէն թագ բերել տուաւ իր եղբօր թոռին Ռուբենի՝ Անտիոքայ Բրինձին համար, Ներսէսի Լամբրոնացւոյ եղբօր Պր. Հեթմայ ձեռօք:

որ առ իս իջեւանէր՝ Մոնսդեր[1] քաղաքի, որ ունէր ընդ իւր դաս ձիավարի զկնի՝ հազար հեծելոյ։ Եւ յորժամ թարգմանեցի՝ խորհեցան և ոչ կարացին յանձն առնուլ զգործն, յորժամ ինքնակալն բարձաւ ի միջոյ . այլ իջին յԱնտիոք և անտի ի Պաղեստինէ։ Իսկ ես զթարգմանեալ Օրհնութիւնն թագաւորին՝[3] ոչ կամեցայ ապաւաղել, եդի ընդ նախ թարգմանեալ կարգաւ, վերստին յարմարմամբ։ Եւ աղաչեմ զիմաստուն ընթերցողդ՝ ոչ աւելորդ համարել զմեր ի սոյն վաստակ, որ ծարաւի էաք Հռոմայ եկեղեցւոյն կարգաց՝ ընդ այլ գիտութեանց, և սովաւ զովացաք և թողաք զկնի եկելոցդ, ի փառս Քրիստոսի. որ է օրհնեալ յաւիտեանս։

1. Գերմանիոյ ամենէն մեծ քաղաքներէն մին՝ մինչեւ հիմայ, Münster, որոյ արքեպիսկոպոսն այլ նախապատիւ և իբրեւ իշխան և մեծ պաշտօնեայ էր կայսերական. հազար ձիաւորով կամ ասպետներով եկեր էր. ամէն մէկ ձիաւոր քանի մի ոտաւոր կ՚ունենար. ուրիշ իշխանք և եպիսկոպոսք այլ քիչ շատ իրենց զինուորներն ունէին. որով անտարակոյս կ՚ըլլայ հեղինակիս ըսածն կայսեր համար, թէ եկաւ անթիւ զօրօք և ծանր տարմամբ։

2. Այսինքն, խորհեցան, թէ ի՞նչպէս կըրնան զԼեւոն թագաւոր օծել. բայց կայսեր մահուան պատճառաւ չհամարձակեցան։

3. Լամբրոնացւոյ նախայիշեալ թարգմանած կարգաց գրոց մէջ չկար Թագաւոր–օրհնէքի կարգն, զոր և շատ զգուշութեամբ պահէին և չէին թողուր որ շատ օրինակ ըլլայ, վախնալով որ իշխանազուն մի ուզէ անով թագաւոր օծուիլ։ Այսպէս և մեր եկեղեցւոյ գլուխք՝ չէին թողուր որ Մաշտոցաց մէջ գրուի Կաթողիկոս–օրհնէքի կարգն։

## Թ. Յիշատակ թարգմանութեան Օրինաց Գրոց[1].

Յամս քահանայապետութեան Հայոց Գրիգորի՝ որ երրորդ էր նախնեացն իւրոց՝[2] ի Հռոմկլայն, յաջորդ աթոռոյն, ի Թուին ՈԽԲ (642=1193), յութեւտասներորդ ամի նորին հայրապետութեան, խնդիր եղեւ առ նոյն սրբազանն՝ ի քաղաքաց և ի գաւառաց բնակչաց՝ Քաղաքական օրինաց. զի որք Իսմայելացւոցն էին իշխանք ի քաղաքս դատաւորք՝ զդատ Հայաստանեայցս ոչ դատէին, այլ զխնդրողս իրաւանց՝ առ իւրեանց օրէնս առաքէին. զի այս էր ի նախագլուխ մելիքացն[3] հրաման առ պատուարս քաղաքաց, յիւրեանց օրինացն դատ թողուլ զնոսին: Եւ եկեալ ոմանք յեկեղեցին՝ հարցանէին օրէնս ի քահանայից և ի քահանայապետաց. (և նոքա) ոչ ունէին գիրս՝ որով ընտրեսցեն զիրաւունս. զոր և այլոց ազգաց տեսանէին՝ քրիստոնէից և մալիմանաց. այսինքն, Հռովմայեցւոց, Հելլենացւոց, Ասորւոց, Եգիպտացւոց, Արաբացւոց, Պարսից, և այժմու իշխողացս Թուրքից[4]:

1. Քանի մի Յիշատակք կան Լամբրոնացւոյ Թարգմանութեանց Օրինաց գրոց, որովք յայտնուի որ այլեւայլ ատեն թարգմանած է այլեւայլ Օրէնքներ Յունաց կայսերաց. որպէս յետոյ և ի Լատինաց. և գուցէ զամենքն մէկ տեղ ի մէկ գիրք հաւաքելու ժամանակ չէ ունեցեր: Այս տեղ յիշեալ Լեւոնի և Կոստանդեայ կայսերաց Օրինաց հետ՝ կան խառն և Կոստանդիանոսի, Թէոդոսի, Իռինեայ, և այլոց օրէնք:

2. Գրիգոր Տղայն, որ ի Հռոմկլայ նստող կաթողիկոսաց երրորդն էր (յետ Գրիգորիսի և եղբօրն Ներսեսի). դարձեալ իր ցեղէն (Մագիստրոսի) Գրիգոր կաթողիկոսաց Երրորդն էր, յետ երկու Վկայասէրաց, իսկ Գրիգոր անուանելոց՝ հանդերձ Լուսաւորչիւ՝ կ'ըլլայ Դ Գրիգոր:

3. Արաբացւոց իշխանութեան ներքեւ եղող մեծամեծ գաւառաց ոստիկաններն:

4. Սելջուկեան Թուրքաց, յորոց և Իկոնիոնի (Գոնեայ), Դամասկոսի և այլ կողմանց սուլտանք:

Ի խնդիր եկին այդ առ հայրապետս ի Հայաստանեայց՝ արթունք[1] կղերիկոսք և աշխարհականք, խեթկեալք յայլոց ազգաց և նախանձեալք զբարւոքն։ Եւ խուզեալ ընդ նա մեր յարկեղս գրոց կաթողիկոսարանին՝ ոչ գտանք Օրէնս. բայց միայն զկանոնականս՝ որ ի Հարցն սուրբ ժողովոց էր գտեալ, և որ ի նոյն յարեցաւ ի նոցանէ՝ կանոնս զգուշաւորս եկեղեցւոյ. իսկ Քաղաքի Օրէնս ոչ գտաւ ի մէջ Հայոց, ոչ յեկեղեցիս և ոչ առ իշխանս։ Եւ կարի վշտացեալ հայրապետն՝ խնդիր առնէր առ այլ ազգս. և պատահեալ անդ յԱսորոց Թէոդոս անուն կիրթ յիմաստութեան քահանայ, յայտնեաց Տեառն՝ զի գոյր առ ինքն այս համառօտ Քաղաքական Օրինադրութիւն. և հրաման առեալ ինձ տառապեալ իւր ձեռնատուն որդւոյ Ներսէսի, յեղաշրջեցաւ ի Հայս[2], նմին յիշատակ բարի, և զկնի եկելոցդ՝ ուղղութիւն ընթացից։ Յետ որոյ ապա և ի Հելլենացւոց արարի Թարգմանութիւն Մովսիսական Օրինացդ, և Լեոնի և Կոստանդեայ օրինացդ. ի նմանէ Թարգմանեցի և զԶինուորական Օրէնսդ[3]. և ընծայեցի որոց սիրեն վարել ուղիղ և հաճոյ գտանել Աստուծոյ, և կառավարիչք քաղաքաց և գաւառաց։

Ժ. Յիշատակարան Օրինագրոց.

Զայս ծայրաքաղ Օրինադրութիւնս՝ տառապեալ եպիսկոպոսս Տարսոնի Թարգմանեցի ի ծերացեալ

1. Թուի զգաստ, զգօն, հոգացող, ուզէ ըսել որանք խեթկեալ, ստիպուած կամ ամըչցած ըլալ, յիշեալ օտար ազգերէն։

2. Երեւի թէ և ասորերէն գիտէր Ն. Լամբրոնացի, որպէս և եբրայեցերէն։

3. Այս Զինուորական Օրինաց Թարգմանութեանն համար այլ ուրիշ տեղ յիշատակ գրած է այսպէս. «Ներսէս տառապեալ Թարգմանիչ և օրինադրիչ Զի-»նուորական Սահմանադրութեանս, զգուշացուցա-»նեմ սովաւ զզօրս»։

հելլենացի մատենէ. Թուին ՈԽԵ (1196-7), ի նորաշէն ամուրն Լուլուայ, որ է ի գլուխ Դրանն Կիլիկիոյ՝[1]. զոր ի բազմաժամանակեայ յամայութենէն մարդաբնակ արար մի յեղբարց իմոց՝ Շահնշահ, և զկործանեալ շինուածն Յունաց յԻսմայելացւոց՝ շինեաց ամրագոյն. և ընդարձակեաց նովաւ զՀայաստանեայս՝ թագաւորի Լեւոնի ձեռն՝[2] որ ի Կիւլիկեայս և Ասորւոց գաւառացն տիրէ, և նովաւ կարողացաւ Երկրորդ Կապադովկիոյ[3], յորում մայրաքաղաք Տիանա, արտաքսանել զնորաշէն ամուրն, ի փառս Քրիստոսի և ի զօրութիւն քրիստոնէից: Դարձայ ի մեծ եկեղեցին Տարսոնի յղկեցի զթարգմանեալն աստ գրչութեամբ և աւանդեցի Հայոց:

## ԺԱ. Յիշատակարան Մեկնութեան Առակաց գրոց.

Սկսեալ ի քննութիւն աստուածախօս իմաստիցս՝ երեք ամօք յառաջ քան զայս, որ է ՈԽԶ թուականին (1197–8), ի հիւանդոտ մարմնոյ, ի ծանրութենէ հոգւոյ պանդխտէր միտք նուաստութեան՝ քննել, և ձեռն՝ ի գրել: Յայս ամ գնացեալ իմ ի Կոստանդնուպոլիս, և խնդրեալ ի նորին պատրիարգէն՝ զոր առ նոսին տեսութիւն Առակացս և Յոբայ, և ընթերցեալ տեղեկացայ՝ զի զոր առ ի մէնջ պտղաբերէ շնորհք Սուրբ Հոգւոյն՝ ոչինչ նուազ էր

1. Հռչակաւոր Դրունք կամ Կապանն Կիլիկիոյ, ի հիւսիսակողմն. յիշեալ ամրոցն այլ (Լուլուա) մօտ էր ի Լամբրոն:

2. Կապադովկիա կամ Գամիրք՝ բաւական ընդարձակ ըլլալով՝ քանի մի մասի բաժնուած էր. Երկրորդին գլխաւոր քաղաքն էր յիշեալն Տիանա:

3. Պատուելով կամ պատկառելով իմն յիշէ զՄեծագործն Լեւոն, մինչ սա դեռ չէր մեծ հանդիսով թագաւոր օծուած, ոչ միայն ի Յունաց այլ և յարեւմտեան կայսերէն թագ ընդունելով:

յայնմանէ, և նախ քննեալն համաձայն էր և ոչ ստարանայր. եկեալ ի յարկս իմ երկրպագութեամբ գոհացայ զԱստուծոյ, և քաջալերեցայ ի քննութիւնս, հօրս Ներսէս՝ որ ի Տարսոն անուամբ այցելու, իսկ առ օթեւանքս՝ բնակեալ ի հանգիստ։

---

## ՅԷ

### ՈՂԲՔ Ի ՏԷՐ ՆԵՐՍԷՍ ԱՐՀԻՆ ՏԱՐՍՈՆԻ

### *Ասացեալ Խաչատուր պաշտօնէի նորուն աշակերտի*[1]

Ա՜խ. զահ թողում, զամօթ մոռանամ[2],
Զիմ լուսեղէն Տէրըն մեծարեմ.
Զիր անընդգեան պարտքըն վըճարեմ,
Ածեմ զուշոյս, ու դառնամ ի միտ։
Երբ զիմ ծարայ Տէրըն յիշեցի՝
Լոյսըս զընաց, ուժըս պակասեաց,
Խելքս ու հոգիս իմ գումարեցաւ։
Յիշեմ զիմ Տէրն ի Շեքերանին[3].
Յիշեմ զիմ Տէրն ի Նարեկացեն.
Յիշեմ զիմ Տէրն առջեւ կանթեղին.
Յիշեմ զիմ Տէրն ի յեկեղեցին,
Յիշեմ զիմ Տէրն ի տունն ի զգեստին[4].
Յիշեմ զիմ Տէրն ի բազմախաչին[5],

1. Ժամանակին աշխարհիկ լեզուով գրուած, շատ արտաքուղղ և աննման։
2. Զափէս վեր համարձակիմ, ըսել կ'ուզէ։
3. Զկարցայ ստուգել զայս, տեղ է թէ գիրք մի, ինչպէս ասէ եւ քը յիշած Նարեկացին, որոյ աղօթից մեկնութիւնը գրած էր Ներսէս։
4. Զգեստատունն եկեղեցւոյ։
5. Բազմախաչ զարդով հիւսուած շուրջառն։

Ցիշեմ զիմ Տէրն առջեւ խորանին.
Ցիշեմ զիմ Տէրն ի պատարագին։
Առ ձեզ խօսիմ, հի՛ն Կըտակարանք[1],
Եկէք որ լանք, զի անպիտացայ.
Ե՛կ Սողոմո՛ն, զի անպիտացար[2].
Ե՛կ Դանիէլ[3], որ խոպանեցար.
Ե՛կ Արարածք[4], լաց, որ փակեցար.
Արի ե՛կ Դաւիթ, որ անպարտեցար[5]։
Առնում լալով վայրի ձայնակից
ԸզՑովհաննէս Որդին Որոտման.
Ե՛կ, ժողովէ զՏեսիլն ու պահէ[6],
Զի այլ չըկայ Տէրըն որ մեկնէ.
Բայց լաց ու վա՜յ տուր ինձ գերելոյս,
Զի քո Նըման՝ տէր եմ կորուսել։
Դառըն տեսար դու զՏէրն ի խաչին,
Ես դառն տեսայ զիմ տէրն ի տախտին[7].
Դառըն լըւար դու ըզծարաւին,
Եւ դառն լուայ ես զօրն աղմըկին։
Լացողք Թըլթոց Կաթողիկէից,
Եկէք ու լի՛ք վայրիս ձայնակից.
Զունինք այլ տէր՝ որ հաւաքըցընէ,
Ու ոչ այլ գրող որ Նոր Նորոգէ։
Ե՛կ Առաքեալըդ Տարօնեցի,
Ու ա՜ւ ամփոփէ գրանքս զոր լսեցի։
Ե՛կ Աթանաս, լալոյս ձայնակից[8],
Բաներըս քո են Պատարագի.

1. Իր ժողված և օրինակած գրքերն։
2. Որոյ գրոց մեկնութիւններ գրած էր։
3. Դանիէլի մարգարէութեան մեկնութիւն։
4. Ծննդոց գրոց մեկնութիւն։
5. Սաղմոսաց մեկնութիւնն։
6. Յայտնութեան գրոց թարգմանութիւնն և մեկնութիւն։
7. Աթոռն կամ հանգստարանն, որոյ վրայ վախճաներ է։
8. Ս. Աթանասի հայրից և Պատարագի աղօթիցն այլ Լուծմունք գրած է։

Բայց իմ հսկող Տէրըն չերեւի.
Ոչ մեկնըւի ու ոչ բացայայտի.
Ոչ այլ պայծառ Քարոզն տալի,
Ոչ այլ Նըման քեզ տէր գըտանի։
Ոչ ի քո բանք այլ ոք տոչորի.
Ոչ այլ հսկող թեւք քո տարածի.
Ոչ այն անքուն աչըն բոլորի.
Ոչ այլ հեղեղ արցունքըն իջանի[1].
Անտանելի հեծն այլ չըլսուի՜։
　Զայնեմ վանիցն՝[2] որ հովիւ չունի,
Կարօտ եղեւ արթուն հովըւի.
Ու, Աստուա՜ծ, ու զայս բանս այլ գըրեցի,
Որ ով լինի՝ զերթ զինք չըլինի[3]։
　Իմ Տէրն արթուն էր յամէն տեղի,
Կիրթ էր ու վարժ ամեն իմաստի.
Կենօքըն սուրբ էր ու ոչ քուպիտի[4].
Վարուքն ամբիծ Նըման Մովսէսի.
Սրտիւն ողորմ Նըման Պօղոսի.
Աղքատասէր Նըման Յիսուսի։
　Ներսէս՝ պըսակ էր յեկեղեցի,
Զարթուցանէր զամենն ի բարի.
Ներսէս՝ ոչ առ ծուլիցն ի տեղի.
Հեզ և հանդարտ արթնոցն ի բարի։
Ներսէս՝ արթուն էր դէմ գիշերի,
Հանէր ի գլուխ ըղցայգն ի կարգի.
Հետ սահմանէր ըղկարգն ի տեղի,

1. Տես ինչ որ յերես 423 ի Յօդուածին և ի ծանօթութեան ըսուած է այդ արտասուաց համար. իսկ ինքն Ներսէս իր գրուածոց մէջ իբրեւ իր հոգիէն ստիպուած շատ անգամ վկայած է իր սուրբ արտասուացն համար։

2. Սկեւռայ վանքն։

3. Այսինքն այսուհետեւ ով այլ գալու ըլլայ Ներսէսի տեղ, իրեն նըման կամ հաւասար չի կրնար ըլլալ։

4. Թուի անհոգ, անխնամ բան մի նշանակել։

Հետ խոկալով՝ գըրէր գրուի[1].
Երբ առաւօտ լինէր ցորեկի
Օկիզըն գնէր նա պատարագի։
Ներսէս՝ յասումն էր ընդդէմ ախտից,
Չար խորհըրդոց չունէր նա տեղի.
Բայց զըւարթուն էր ի պատարագի,
Հեշտ և կամակ եղբարցն ամենի։
Ներսէս՝ աղբերն անցամաքելի
Ունէր ի գլուխն ի յիւր գովելի.
Հետ տռչորէր յաղագս ամենի,
Հետ արտասուէր ի պատարագի։
Ներսէս՝ վստահ էր ի սէրն Յիսուսի.
Մեղաւորաց տայր զեկեղեցի[2].
Յիշէր ըզբանըն մեծ տէրունի,
Թէ՝ Ես եկի վանց մեղաւորի։
Ներսէս՝ այրեաց էր խնամածու,
Որբոցըն հետ տեղի խօսելու.
Ունեւորացն օրինակ բարւոյ,
Չունեւորացն էր տուն կենալոյ։
Աւա՜ղ մըտացն՝ որ դադարեցաւ.
Աւա՜ղ գըրչին՝ որ խոպանացաւ.
Աւա՜ղ բանին՝ որ պակասեցաւ.
Աւա՜ղ տեսոյցն[3] որ թառամեցաւ,
Աւա՜ղ բառին՝ որ նուաղեցաւ.
Աւա՜ղ գերեացս՝ որ որբ մընացաք։
Դու, Տէր, զըտար որում ցանկացար.
Դու, Տէր, հասար ում կարօտացար.
Դու, Տէր, առեր որ փափաքեցեր.
Դու, Տէր, տեսար որում ջանացար։
Դու, Տէր, տուար ում անուանեցար.
Դու, Տէր, հանգեար՝ զի աշխատեցար։

1. Մտածելով գրքեր գրեր։
2. Մեղաւորները կ'ընդունէր յեկեղեցի, ապաշխարել տալով։
3. Երեսքն, կերպարանքն։

Ես աղաչեմ զեմ Տէրըդ բարի,
Զհաւատարմանեղ ծառայս քո գերի,
Որ զայս լալոյ բանըս գըրեցի.
Գիտեմ որ մերձ կաս այժմ Յիսուսի,
Ծունըր կըրկնեա վասն իմ ցանկալի.
Տուր աղաչանս ինձ աղերսալի՝
Դառնալ ի հող. ինձ՝ կեանք շըղթալի[1]։

---

## ՅԸ

## ԼԵՒՈՆ Ա

## ՌՈՒԲԻՆԵԱՆ, ՅԱՌԱՋ ՔԱՆ ԶԹԱԳԱՒՈՐԵԼՆ[2]

Ի Թուին ՈԼԶ (1187) մեռաւ Ռուբէն (Բ) և էառ զիշխանութիւնն իւր եղբայրն իւր Լեւոն, բարեբարոյ և աննենգ. և ոչինչ պատճառի եղեւ վրէժխնդիր ումեք. այլ յԱստուած ապաւինեալ՝ յորմէ և յաջողեալ ուղղեցաւ իշխանութիւն նորա։ Եւ էր սա այր իմաստուն և հանճարեղ. ձիավարժ[3] հմուտ, և ի զինուորութիւնս քաջասիրտ, և արիագոյն յամենայն գործ բարութեան՝ ի մարդկայինսն և յաստուածայինսն, արագ և զուարթերես։...

1. Բայց այս Լալոյ բանիդ՝ Տէրոջդ հետ դու այլ պիտի ապրե՛ս, ո՛վ խեղճ Խաչատուր։

2. Հեղինակ Յօդուածոյս է նման Սմբատայ Գունդըստապլի տարեգիր մի. բայց աւելի ընտիր լեզուաւ և աւելի երկար գրող Կիլիկիոյ և Ռուբինեանց պատմութեան, մինչեւ մօտ ի վերջ ԺԳ դարու. ձեռագիրն այլ նոյն ատեն գրուած է. սկզբան և վերջին թղթերն պակաս ըլլալով՝ հեղինակին անունն այլ պակսի. վասն որոյ Պատմիչն Կիլիկիոյ անուանեմ։

3. Ժամանակին Լատին կամ Ֆռանգ Ասպետաց բարեկամ և կրթակից ըլլալով մեր Կիլիկեցի Հայ ազնուականք, անոնց ասպետական վարժութիւնն ունենալնին յայտնէ Ձիավարժ կոչելն։

Ի թուին ՈԽԲ (1193), յորժամ դարձաւ Բրինձն[1] ի Սալահըտնէն, խորհեցաւ ընդ տիկինն իւր՝ բռնել զԼեւոն. և նա ասէր, մի՛ գործեր զայդ գործ անիրաւութեան, քանզի փեսայ է իմ, և յամենայն ժամ յօժարութեամբ գայ ի ծառայութիւն քո. և ձեռնտու է քեզ ի գործ պատերազմի։ Այլ նա ոչ դարձաւ ի չար խորհրդոցն, և առաքեաց կոչեաց զնա։ Եւ յարուցեալ Լեւոն գնաց ի Պաղրաս[2], և կինն Բրընծին ծանուցանէր Լեւոնի զբանն՝ զանխըլաբար. և առաքեաց Լեւոն առ Բրինծն՝ գալ ի Պաղրաս՝ ինքն և բրընծէսն (Princesse), զի անդ պատուեսցէ զնոսա, և ապա ելեալ նոքօք գնասցեն յԱնտիոք։ Եւ նոքա եկին յօժարութեամբ. և Լեւոն ել ընդ առաջ նոցա, և մեծարեալ երեք ի Պաղրաս, և անդ կալաւ զԲրինծն. և տարեալ եդ յարգելանս ի Կլայն Սիսոյ, և պահէին զգուշութեամբ։...

Իսկ Լեւոն յորժամ բռնեաց զԲրինծն, կալաւ զնա յարգելանս աւուրս ինչ. և եկեալ յԱքքայոյ[3] թագաւորապարմ իշխանն Գունթ Հեռին[4], և խընդրեաց զնա պարգեւս ի Լեւոնէ. և նա շնորհեաց նմա։ Եւ հաստատեցին ուխտ սիրոյ խնամութեան ընդ միմեանս. և ետ Լեւոն զդուստր եղբօրն իւրոյ Ռուբինի զԱլիծն, որ յառաջագոյն Հեթումն ունէր, եղբայրն Տահենշահի[5], աւագ որդւոյն Բրըն-

1. Bambe կոչուած Պեմունդ Գ. Անտիոքայ անարք իշխողն։

2. Բերդ մի՝ Անտիոքայ շատ մօտ, Պէյլանի լեռնանցից վրայ. հին ատեն այլ նշանաւոր տեղ մ'էր. Pagre կոչուած. Հայոց տէրութեան այլ պահպանութեան ամրոց մի եղաւ։

3. Աքքեա, St. Jean d'Acre.

4. Comte Henri de Flendres, որ յետոյ Ֆռանկաց երկրորդ կայսրն եղաւ ի Կոստանդնուպօլիս։

5. Հեթմոյ Սասընցոյ կին էր. տես Յօդուած 293։

ծին՝ Ռաեմընդին[1]. այս պայմանաւս[2], որ թէ լինէր ի նմանէ որդի արու՝ լինէր ժառանգ Լեւոնի և զկնի մահուան հօրն իւրոյ՝ Ռաեմնդին՝ լինէր տէր Անտիոքու. և հաստատեցին զայս գրով և երդմամբ: Եւ էր որդի պրընծին առ Լեւոն, և մտանէր և ելանէր ընդ նմա. և կացեալ ժամանակս ինչ մեռաւ: Եւ կինն նորա մնաց յղի ի նմանէ. և ծնաւ որդի արու, վայելուչ և գեղեցիկ տեսլեամբ. ընդ որում ուրախացաւ Լեւոն մեծապէս. քանզի ոչ գոյր որդի Լեւոնի լինել ժառանգ հայրենեաց իւրոց. և տայր սնուցանել զնա մեծաւ զգուշութեամբ. և մկրտեաց զնա և կոչեաց զանուն նորա Ռուպէն[3]:

* [4] Ի սոյն ամի (1187) թուրքման ոմն Ռստոմ անուն՝ ժողովեաց անթիւ թուրքման և եմուտ յաշխարհն Կիւլիկեցւոց, և խրոխտայր բառնալ զանուն քրիստոնէից. և գնաց մինչեւ ի Սիս, և բանակեցաւ առաջի քաղաքին յՌաւշիենն (դաշտագետին). և ծածկեաց զերեսս երկրին անհամար բազմութեամբ: Եւ յայնժամ աստուածազօրն Լեւոն՝ երեսուն մարդով պատերազմեցաւ ընդ նմա. և ընկէց յառաջագոյն զգլխաւորն նորա զՌստոմն, և դարձան ամենեքեան ի փախուստ. որոց զհետ մտեալ՝ կոտորեաց զնոսա մինչեւ ի Քարն Սարվանդաւի[5]: Բայց ասէին, թէ մարմնաւոր տեսլեամբ և զգալի աչօք երկու զօրականք ելին ի բերդէն Սիսոյ, և

1. Ալիծ՝ կին տրուի Ռեմունդի՝ որ էր Պեմունդի մեծ որդին:

2. Խոստմունք, դաշն:

3. Որ և Ռեմոնեանդ կոչեցաւ հօրն անուամբ, և չատ դիպուածաւոր կեանք և ողբերգական վերջ ունեցաւ:

4. Այս երկու * հատուածքս այլ մեր Կիլիկեցւոց ժամանակագիր պատմըչին են:

5. Տես ի Սիսուան, 209. 368. 393:

կոտորեցին զնոսա. որ տուի Սուրբն Գէորգ և Սուրբն Թորոս[1]։

* Ի սոյն ամի (1193) առաքեաց Սալահատին սուլտանն առ Լեւոն, տալ զերկիրն Կիլիկիոյ ի նա, և ինքն գնասցէ ողջ անձամբ։ Եւ Լեւոն յերկիւղի եղեալ՝ թէ՛ զինչ արասցէ և յԱստուած ապաւինելով՝ ասէ ընդ առաքեալն առ նա. Ասա սուլտանն, թէ Երկիր ոչ ունիմ տալ քեզ. բայց եթէ գայցես յերկրիս իմում, տաց քեզ յերկաթից ըմպելիս[2], որպէս հաւատակցին քո Ըռոստոմի[3]։ Եւ սուլտանն լուեալ զայս՝ մռմռէր որպէս զառիւծ, և պատրաստէր զզօրս իւր գալ յերկիրն Կիլիկիոյ, զի բնաջինջ արասցէ զհաւատացեալսն Քրիստոսի։ Եւ եկն եմուտ մինչեւ ի գետն որ կոչի Յեաւ։[4]. և պատահեցաւ նմա ախտ հիւանդութեան, ... կեցաւ անդ։

*[5] Ի Թուականութեանս Հայոց ի ՈԿԵ (1216–7), ի կաթողիկոսութեանն Տեառն Յովհաննիսի, և ի ժամանակս քրիստոսապսակ Թագաւորին Հայոց Լեւոնի, ի ծովեզերս Ովկիանոսի, ի գաւառս որ Ճկեր անուանի, ի գեօղս որ Պայաս կոչի, ընդ հովանեաւ ամենօրհնեալ մօր լուսոյ Աստուածածնի, և այլ Սրբոց. յամս յորում Տէրամբ յաղթող Թագաւորն Հայոց Լեւոն էառ զԱնտիոք զմեծ մայրաքաղաքն Ասորւոց։

1. Այս քաջ Զօրավարաց Սրբոց նուիրած էին Հայք եկեղեցի մի ի Սիս։

2. Սուրով խմելիք կու տամ. այսինքն, զօրքդ ջարդեմ, արիւն թափեմ։

3. Յիշեալ դիպուածն այս է, ըստ նոյն հեղինակի Տարեգրոցն։

4. Անտիոքայ կողմերն։

5. Յիշեալ ՈԿԵ թուականին գրուած մաշտոցի մի Յիշատակարանի մասն է։

# ՑԹ

## ՀԱՆԴԷՍ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԼԵՒՈՆԻ

### (ՊԱՏՄԻՉՆ ԿԻԼԻԿԻՈՑ)

Ի թուին ՈԽԷ (1199) յամսեանն յունուար՝ ի յօր Ցայտնութեան Տեառն, օծին զԼեւոն թագաւոր Հայոց, ի հնազանդութիւն եկեղեցւոյն Հռոմայ և ընկերութիւն Ալամանաց[1]. և եղեւ ուրախութիւն մեծ ազգիս Հայոց, զի տեսին վերըստին կանգնեալ և նորոգեալ զտէրութիւն իւրեանց յերեսս Լեւոնի բարեբարոյ և աստուածասէր արքայի.... Եւ արդ պարտ է մեզ պատմել փոքր ի շատէ՝ զոր ըստ Նորայն ժամանակի վայելչացեալ էր տունս Հայոց: Քանզի էր արքայն Լեւոն այր իմաստուն և հանճարեղ. զուարթ տեսլեամբ, և առատ սրտիւ առ հասարակ՝ առ եկեղեցականս և աշխարհականս, առ աղքատս և առ տկարս. ի վանօրեայս և յուխտեալ տեղիս, և ամենայն ուրեք տարածանէր ըզբարեաց իւրոց պարգեւս: Զարդարեաց զտօնս զատկաց մեծահանդէս ժողովով և մեծածախս սեղանով: Եւ ուր իմանայր թէ գոյ այր պիտանի ի գործ ինչ և աջողակ, առաքէր և կոչէր խոստմամբ, և բերեալ հանգուցանէր առատաձիր պարգեւօք: Եւ ամենայն դասուք եկեղեցականօք և պատուաւոր իշխանօք զարդարեալ և վայելչացեալ էր երկիրս Կիլիկիոյ. զոր և պատմեցից զանուանս մի ըստ միոջէ[2]:

1. Empreur, Գերմանացւոց կայսրն, վասն զի անկէ խնդրեց Լեւոն թագը:

2. Սիսուանայ տեղագրութեան մէջ այս ամեն վանաց ու բերդից ստորագրութիւնք գտուին, զոր այս տեղ կրկնել՝ ծանր համարիմ, բայց քանի մի:

Տէր Դաւիթ՝ արքեպիսկոպոս Մամուեստիոյ և առաջնորդ սուրբ ուխտին Արքակաղնոյն.

Տէր Գրիգորիս՝ արքեպիսկոպոս Կապանոյն[1], և առաջնորդ Արիգնոյն[2].

Տէր Յովհաննէս արքեպիսկոպոս[3] Սիսոյ, և առաջնորդ Թրազարկոյն[4].

Տէր Մինաս՝ արքեպիսկոպոս պատուածարանակ քաղաքին Երուսաղէմի.

Տէր Յուսիկ՝ արքեպիսկոպոս Անտիոքու, և առաջնորդ Յիսուսանցն[5].

Տէր Կոստանդին՝ արքեպիսկոպոս Անարզաբոյ, և առաջնորդ Կաստաղաւնին[6].

Տէր Վարդան՝ արքեպիսկոպոս Լամբրունին, և առաջնորդ Սկեւռային.

Տէր Ստեփանոս՝[7] արքեպիսկոպոս Տարսոնի, և առաջնորդ Մլիճոյն.

Տէր Թորոս՝ եպիսկոպոս Սելեւկիոյ.

Տէր Աստուածատուր եպիսկոպոս Մեծքարոյն[8].

Տէր Յովհաննէս՝ եպիսկոպոս Սանեհիւանց.

Տէր Գէորգ՝ եպիսկոպոս Անդրիասանց[9].

Տէր Կոստանդին եպիսկոպոս Յոհնեանց.

Տէր Գրիգոր եպիսկոպոս Փիլիպպոսեանց.

Տէր Ստեփանոս՝ եպիսկոպոս Բերդուսին[10].

Տէր Մխիթար եպիսկոպոս Ընկուզուտին։

1. Կապան բերդն, ամենէն ամուր և իբր Կիլիկիոյ Հայոց պահպանիչն։

2. Արեգնի վանքն։

3. Յետոյ կաթողիկոս։

4. Յիշեցինք որ գրոցս հեղինակն միշտ Թ տառի. գրէ այս անունը, անշուշտ աւանդութեան մի հետեւելով. գուցէ թուրով զարնուած ըլլայ անոր դուռն։

5. Յեսուայ վանք մօտ, յԱնտիոք։

6. Անուանի բերդաւան։

7. Դեռ նոր յաջորդեր էր քիչ առաջ վախճանած Ս. Ներսէսի Լամբրոնեցւոյ։

8. Մեծքար, բերդ և անկէ աւելի անուանի վանք։

9. Այս այլ մեծ վանք էր։

10. Այս վանաց կամ աթոռոյ տեղն յայտնի չէ։

Իշխանն Պաղրայ՝ Ատանն[1].
Իշխանն Ճկերոյն՝ Աշոտն.
Իշխանն Համոսին՝ Արեւգոյնն.
Իշխանն Սարվանդաւի[2] Սմբատն.
Իշխանն Հարունոյն Լեւոն.
Իշխանն Սիմանակլային՝ Սիրուհի[3].
Իշխանն Անեոյն՝ Հեռի.
Իշխանն Հուտափոյն, Ապլղարիպ գումնդուստապլն.
Իշխանն Ընկուզուտին՝ Պաղտինն.
Իշխանն Թոռնկային՝ Ստեփն.
Իշխանն Բերդուսին՝ Լեւոն և Գրիգոր.
Իշխանն Կանչոյն՝ Աշոտն.
Իշխանն Ֆառնուսայ[4], Ապլղարիպն.
Իշխանն Կապնուն՝ Տանկրի.
Իշխանն Ճանձոյն Կոստանդին.
Իշխանն Շողականն՝ Ճաւֆրի.
Իշխանն Մազոտ-խաչին՝ Սիմոնն.
Իշխանն Թլին՝ Ըռօպերտն.
Իշխանն Թլապոյ՝ Թորոս.
Իշխանն Վանեռոյն՝ Վասիլ մարաջախտն.
Իշխանն Բարձրբերդոյ[5] Գեորգ.
Իշխանն Կոպիտառոյ՝ Կոստանդին.
Իշխանն Մօլովնին[6] Աժառուն.
Իշխանն Կուկլկայ[7] Սմբատ.
Իշխանն Լամբրունին՝ Հեթում[8].

1. Սիր Ատան կոչուած, որ շատ ընդարձակ երկիր ունէր. թէ սա թէ յաջորդքն աւատական իշխանք էին Լեւոնի, ոչ ցեղով Հայք, որպէս և այլ շատք։
2. Որ և Սարուանդի քար. յարեւելակողմն Կիլիկիոյ։
3. Իգական անուն է, բայց իշխանն այր է։
4. Ինչուան հիմայ ծանօթ Ֆրնոսս կոչմամբ։
5. Ոչ անծանօթ և սա, Պերապերթ կոչմամբ յայլազգեաց։
6. Սովորաբար Մոլեւոնն կոչուի։
7. Կուկլակ շատ ամուր բերդ՝ լեռնանցից մէջ։
8. Անդրանիկ եղբայր Ներսէսի Լամբրոնեցւոյ։

Իշխանն Լուլուայոյ՝ Շահնշահն[1].
Իշխանն Պապեռաւնին՝ Բակուրան.
Իշխանն Աւկոռւոյ[2] Վասակ.
Իշխանն Մանաշոյ՝ Հերում.
Իշխանն Բերդկանն՝ Միխայլն.
Իշխանն Պառականոյ՝ Տիգրանն.
Իշխանն Սխեկոյ՝ Աշխնն.
Իշխանն Կոռիկոսոյ՝[3] Սիմոնն.
Իշխանն Սիշեշկիոյ և Պոշնաոյ՝ Կոստանդն.
Իշխանն Սինիտոռ և Կոմասոռ՝ Ռոմանոսն.
Իշխանն Վեռին և Վեռըսկու՝ Նիկիֆոռն.
Իշխանն Լաւզատոյ և Տիմիտոռուպաւլսոյ Խոստուֆոռն[4].
Իշխանն Մանիօնին, Լամօսոյ, Քեռմանիկանն և Անամուռին՝ Հալկամն[5].
Իշխանն Նորբերդոյ և Կօմատոփասոյ[6] Սեբաստատասն Հեռի.
Իշխանն Աեդօշծին՝ և Կոռպային՝ Պաղտինն.
Իշխանն Մաղվայոյ և Սիկոյ և Պալապաշին[7] Կիռիսակն[8].
Իշխանն Մանաշղատին և Աշարոյ[9] Միխայլն.
Իշխանն Լակռաւնենոյ՝ Կոստանդին՝ և Նիկիֆոռն.

1. Լուլուա անուն բերդ մօտ ի Տարօն, Համբրուանացւոց վիճակ, յորոց էր և այս նորոգիչ տեղւոյն Շահնշահ. կրտսեր եղբայր Ս. Ներսիսի:
2. Ուղիղն Աւկուռաւ:
3. Շատ անուանի բերդ ծովեզերեայ և նաւահանգիստ, որ հասարակօրէն Կոռիկոս կոչուի, և տեղն ծանօթ է հիմայ:
4. Այսինքն Քրիստափոր:
5. Անամուր՝ նշանաւոր բերդ և նաւահանգիստ:
6. Կոմարտիաս մականուամբ մեծապատիւ իշխանաց տեղ մի, որոց մէկը Լեւոն դեսպան խաւրեց առ Իննովկենտիոս Գ պապ:
7. Երեքն այլ ծովեզերեայ տեղիք:
8. Յոյն իշխան, ինչպէս ոմանք այլ վերը և վարը յիշուածներուն:
9. Առոնք այլ ծովեզերեայ են:

Իշխանն կալանօնօսայ, Այժոստապին, Յոսրբ Յոփէ և Հաղօնին՝[1] կիս վարդն։

Արդ այս վերոյգրեալ բերդերս ժամանակ մի ծառայեցին Թագաւորին Լեւոնի, և ապա դարձան ի սուլտանն[2]։ Եւ յետ Պեմունտ Բրընծին մահուանն՝ բազում զինուորք[3] եկին ի ծառայութիւն Թագաւորին Լեւոնի և իշխանք ընդ նոսա. որոց անուանքն են այսոքիկ. Ուլիվէր չամբռլայն[4]. Ռոձէլ (Տը) Մոնմբն[5].. Ջոպարտն[6]. Թոմաս Մալըպրունն[7]. Բայէն Պօդլէրն[8]. Կիյամ Տլիլն[9]։ Եւ այսպիսի խոհեմ իշխանօք և քաջամարտիկ զինուորօք՝ քաջապէս մղէր պէոյլս Թշնամեացն։ Եւ զօրդիոն խոյժ Անշան սուլտանին՝ որք աւերեցին տանն Հոռոմոց՝ նեղեալ զնոսա յոյժ, առնելով ի նոցանէ բերդորայս և գերելով զերկիր նոցա աւերմամբ։ Եւ արիագոյն քաջութեամբ սպառազինեալ՝ կայր ի մէջ Թշնամեաց իբրեւ զախոյան անպարտելի։

1. Առոնց ոմանք Կիլիկիոյ լեռնակողմն են, ոմանք ի ծովակողմն. իշխանքն այլ յունազգի։
2. Իկոնիոնի (Գօնեա) սուլտանն, որոյ ձեռքէն կորզեր էր Լեւոն, և նորէն անոր դարձան։
3. Ասպետք և զօրապետք։
4. Olivier le Chambellan.
5. Roger de Montibus
6. Թէրբէւ Joubert.
7. Thomas Mallebrun.
8. Payen le Bouteiller.
9. Guillaume Delile.

# ՃԺ

## ՄԱՀ ԵՒ ՑՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԼԵՒՈՆԻ[1]

### (ՊԱՏՄԻՉՆ ԿԻԼԻԿԻՈՅ)

Մինչդեռ էր թուականն ՈԿԸ (1219) պատահեաց ախտ[2] հիւանդութեան թագաւորին Լեւոնի, ոտի և ձեռուն իւր։ Եւ մինչդեռ կենդանի էր եկին առ նա իշխանքն իւր հանդերձ կաթողիկոսիւն Տէր Յովհաննիսիւ[3]. և իբրեւ ծանեաւ զինքն թէ փոխելոց է յաշխարհէս, հրամայէր[4] հանել զինքն ի Սիսոյ՝ և տանել ճանապարհաւ Ակներայն[5], զոր ինքն էր շինեալ, զի յորժամ մեռցի՝ անդ տարեալ թաղեսցեն զնա։ Եւ ի ճանապարհին կոչէր զամենեսեան և խրատէր զնոսա, անքակտելի մնալ ի սէր միմեանց, և որբիացոյն՝ ի պահ աշխարհին, և անարատ հաւատ պահել տղայ դստերն իւրոյ Զապէլի, զոր թողոյր ժառանգ տէրութեան իւրոյ։ Կնէր և

1. Արդար քննադատութիւնն ունի կարեւոր նիւթեր քննութեան Լեւոնի վրայ, բայց որ և է արդարադատ անձն չի կրնար չճանաչնալ զնա բազում մասամբ մեծ անձ մի, թերեւս մեծագոյն իր ժամանակին։ Մեծութեանն համեմատ է և վսեմական իր վախճանն, զոր յետ իր բազմակերպ գործոց յիշատակին՝ գրեթէ անհնար է առանց խոր զգացման նկատել. թէ կրօնական թէ թագաւորական գերագոյն տեսարանաւ։

2. Այս ախտն արքայացաւ կոչուի, որ է Podagre, Ոտքի ցաւ. զոր այդ յոյն բառով մեր հեղինակք Պոտագրոս կոչեր են։

3. Իբրեւ պարագլուխ իր յուղարկաւորաց։

4. Շատ թշնամեաց դէմ ելեր էր Լեւոն, զարկեր և յաղթեր. նոյնպէս և հիմայ կ՚ուզէ արիաբար մահուան ընդ առաջ ելնել։

5. Անուանի եպիսկոպոսանիստ վանք։

դաստիարակս տղային իւրոյ՝ զմեծ իշխանն Սիր Ադամ, որ էր տէր բազում բերդից և գաւառաց՝ ի Սելեւկիոյ մինչեւ մերձ ի Կալօնորոս, որ անուամբ նորա կոչի մինչեւ ցայսօր՝ Աշխարհ Սիր Ադամայ։ Եւ էր սա աստիճանաւ՝ սենեսկալ[1] Հայոց, որում յանձն առնէր թագաւորն զորդին իւր, հանդերձ Պայլիւն, հայրապետին և իշխանացն ամենեցուն. և բանս խրատականս խօսէր ընդ նոսա։ Եւ հասեալ ի գեօղն Մրվանայ՝ անդ զտեղի կալաւ, զի տկարացաւ մարմինն ի ցաւոյն։ Եւ էր անդ առաքինի վարդապետն Գրիգոր՝[2] որ և Սկեւռացի ասի, վասն սուրբ հաղորդութեան յետին Թոշակին։ Եւ որպէս յառաջագոյն պատմեցաք զորդւոյն Ունգառաց Թագաւորին[3] որ հանդերձեալ էր գալ և փեսայանալ նմա, զոր պատուէր տայր իշխանաց իւրոց՝ կատարել զերդեալ պայմանս իւր, պսակել զդստերն իւր Զապել ընդ որդի Թագաւորին՝ յորժամ գայցէ, և անյապաղ թագաւորեցուցանել զնա ի վերայ ինքեանց։

Եւ ապա սկսաւ զելիցն իւր ի կենցաղոյս՝ հոգալ ըստ պատշաճի, և զմարմինն հանգուցանել ի սուրբ ուխտն Ակներն։ Եւ կոչէր զսուրբ վարդապետն Գրիգոր, և խոստովանէր զյանցանս իւր, և դաւանէր զխոստովանութիւն ուղղափառ հաւատոյն. և ընկալեալ զհաղորդութիւն ի ձեռաց սուրբ վարդապետին՝ գոհանալով զՏեառնէ. և էր մայիս ամսոյ մին։

Եւ եղեւ հակառակութիւն թէ ո՞ւր հանգուսցեն զմարմինն. զի կաթողիկոսն Տէր Յոհան բռնադատէր ի Թրազարկ տանել, և իշխանքն յԱկներն՝ ուր ինքն հրամայեաց։ Եւ իբրեւ փոխեցաւ ի Քրիստոս բարի խոստովանութեամբ՝ սահմանեցին այս-

1. Sénéchal.
2. Բարեկամն Ներսէսի Լամբրոնացւոյ, և յետ նորա արժանաւորագոյն եկեղեցական անձն ժամանակին։
3. Անդրէաս Բ Մաճառաց Թագաւորն։

պէս․ զի հանցեն զփորոտին և տարցեն յԱկներն, և զմարմինն տարցեն ի Սիս, և տապանաւ հանգուցեն յեկեղեցւոյ խորում[1]։ Որոյ ողորմեսցի Տէր Աստուած, և թողցէ զյանցանս նորա։

---

## ՃԺԱ

### ՍՏԵՓԱՆՈՍ

### ՏԻՐԱՑՈՒ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՎԱՆԱՑ Ս. ԽԱՉԻՆ[2]

Զպարծանս բնաւին մանկանց Նոր Սիաֆնի և զծաղիկ եկեղեցւոյ, և զպսակն ամենայն գիտնական և վարժ վարդապետաց, զերեքերանեանն զՏէր Ստեփանոս, մականուն Տիրացու[3], մեծաւ թախանձանօք և զօրավառանական նամակաւ, ի հոգեւոր Տեառն Գրիգորիսէ կոչեցեալ լինէր ի կղզայն՝ զոր Հոռոմ կոչեն. և նորա հնազանդեալ հոգեւոր հրամանացն, ոչ դարձեալ ընդդէմ կամ պատճառեալ զծերութիւն կամ զինչ և իցէ, այլ որպէս վայելէր իւրում զուարթ և զուարճածաղիկ ալեացն, հլու[4] և հպատակ եղեւ վեհին և սիրալիր կոչողին. յուղի անկեալ պատրաստեցաւ առաջիկայ ճանապարհին, ընդ իւր տարեալ և զիս։ Եւ զբազում օթեւանօք զանց արարեալ հասաք ի բաղձալին. և

1. Լեւոն՝ յգաստ մօօք հոգայ թէ ինչ որ կու թողու, թէ մանաւանդ ինչ որ պիտի պահէ միշտ. զՀոգին։
2. Ներս. Շնորհալւոյ Թղթոց Կաթողիկեայց Մեկնութեան օրինակի մի Յիշատակարան է։
3. Անուանի էր գիտութեամբ, զոր և զովութեամբ յիշէ Ներս. Լամբրոնացի՝ իբրեւ իր վարպետը, ըսելով. «Աննմանի սրբոյն՝ Ստեփանոսի Տիրացուին՝ ուսու- » ցիչն մեր և Գէորգ ճգնաւորին», և այլն։
4. Այսպէս գրուած էր՝ վասնզի տարտամանութեամբ, փոխանակ ճշտիւ գրելոյ։

ի տեսանելն զիրեարս մոռացաք զաշխատութիւնն: Եւ ի լինելն անդ ետես զգիրքս զայս և փափաքեաց, որպէս ընդդէմ ծաղկանցն՝ գործողն քաղցր և ախորժ ճաշակացն, ի սա պէս և Հայրս իմ ըստ Հոգւոյ, Հրամայեաց շարայարել ի քարտիզի՝ զտեսիլ մաքրեցելոյն ի կրական ախտից որ ի մեզ, և զԿաթողիկէիցն Թուղթ, զոր բացայայտեալ էր իմաստունն և Հանճարեղ[1], և զՊատմութիւն սրբոյ վկային Քրիստոսի Սարգսի Զօրավարի. և ի շարադրելն իմում անդ՝ գային առ իս այլք ոմանք, և Հոգաբարձու եղեալ առ իս, օգնել կամեցեալ՝ գրէին և նոքա որպէս երեւիդ:

Եւ զկնի աւուրց ո՛չ ճանապարհ առաջի եդաւ իմում տեառնս և կաթողիկոսին Հայոց, զի կոչեցեալ եղեն[2] ի Լեւոնէ, որ այժմ զվաղնջուցն ի մերմէ ազգէս և զընկեցեալն յերեսաց տեսողէն՝ զթագաւորականն անունն՝ զոր ունէին Հայք, սա միայն ստացաւ վոգոստական զծիրանափայլ պատմուճանն. և ընկալաւ օծումն որպէս զմեծն Տրդատ, կամակցութեամբ արիական ազգին Յունաց[3], բերեալ նմա նշան զխաչանիշ թագն: Եւ նորա պատուասիրաբար կոչեցեալ զՀոգեւոր Տէր Գրիգորիոս, զի երթիցէ և օծցէ զնա սրբարար և մաքրագործակ մեռոնաւն, և պսակեսցէ զգլուխն խաչանշան դրօշմաւ: Եւ Հոգեւոր Տեառն ընդ իւր տարեալ զիմ Տէրն՝ յաղագս անճառ գիտութեանն և կատարեալ իմաստութեան և անարատ մաքրութեան, և Հռչակաւոր բարի անուանն, որ ի տղայական տիոցն մինչ ի կատարեալ ծերութիւն առ դուրս իմաստութեան դեգերեալ՝ ըստ աստուածայնոյն Սողոմոնին խրատուն, թէ, Լաւ է իմաստու-

1. Պակասի անունն, որ է Ս. Ներսէս Շնորհալի. նոյն ինքն է և յիշեալ Ս. Սարգսի պատմութեան Հեղինակն:

2 Ի Հռոմկլայէ կոչուեցան յարքունիս Լեւոնի Ա:

3. Սխալմամբ գրուած է, փոխանակ Ֆռանգաց:

թիւն քան զոսկի և քան զամենայն մեծութիւնս երկրաւորս. և դարձեալ յաճախէ զասելն, թէ. Ի բովանդակ կեանս քո ստացիր զնա. Եր վասն. զի Առ դրունս հզօրաց յաճախէ և ի հրապարակս համարձակութիւն բերէ։ Որպէս արդիւնական վարդապետս և տէրս իմ՝ որպէս զարեգակն փայլեալ ի մէջ իւրոց նմանեացն. զի զոր օրինակ յաստեղս արեգակն՝ սապէս և ի բանաւոր իմաստունս երեւեալ. զի այս զգալի արեգակնս գտեսանելի աշխարհս լուսաւորէ, իսկ սա զհոգի և զմարմին առ հասարակ ճառագայթաձեւ յորինէ. այս արեգակն զբոյս և զտունկ ստաքացուցանէ, իսկ սա զմտաւոր և զխշխանականն առ երկնիւքն բարձրացուցանէ. այս արեգակն զժախահոտ[1] և զխոնաւուտ վայրս սաբուատեալ ցամաքեցուցանէ, իսկ սա զնեխութիւն և զաղտեղութիւն հոգւոյ և մարմնոյ՝ հրացայթ և լուսատեսակ գործէ. այս արեգակն առ երկրաւորս ճանապարհ անմոլար տանի, իսկ սա զմոլորեալս յուղիղ և ի բարի ճանապարհէն՝ անվեհեր և անմոլար առ երկնային և խաղաղ նաւահանգիստն Քրիստոս հասուցանէ։ Զոր մաղթեմք յընթերցողացդ զի ի մաքուր և ի սրաթափիչ յաղօթս ձեր հանապազ հայցելով ի վերնատուողէն, զի շնորհեացէ զաս մեզ և ամենայն Հայաստանեաց՝ առանց ամենայն փորձանաց՝ ընդ երկայն աւուրս, ամէն, յարամնաբար մնալ, մինչեւ ի խոր ծերութիւն. և յետ աստեացս՝ յաթոռս առաքելոցն և ի տաղաւարս մարգարէիցն, և ի դասս սուրբ վարդապետացն. և ըղտուեալ տաղանդն լիապէս մատուցէ իւրում տեառնըն, բազմապատիկ առաւելութեամբ, և զերանականն լսել զձայն, թէ, «Բարի և հաւատարիմ ծառայ, որովհետեւ ի սակաւուդ հաւատարիմ գտար՝ ի վերայ բազմաց կացուցից զքեզ». յաւելուլ ի հինգն այլ եւս հինգ, և յերկուսն այլ երկու. և զուարթացուցեալ ամենավայելուչ աշալրջութեամբ

1. Այս տեղ այլ ի փոխանակ ժահահոտ գրելու։

պայծառ փառօք ընկալցի զբրաբիոնն յաղթութեան ընդ ամենայն սուրբս, ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր. ընդ որում Հօր և Ամենասուրբ Հոգւոյն:

Եւ զիս զստահակեալս Ցակոմբ՝ զաւակս աշխատանաց և զամենաբարի զՀայրապետն իմ զՅովհաննէս, զընտիրն ի բժշկական[1] և զանյաղթն յերաժշտականս և զանձանձրոյթն ի գրչութեան անհանգչ[2], զգովելին յամենայն բարեձեւութիւն, և զԳիրոգ՝ և ծնողսն իմ՝ բարի մտօքն արժանի արարէք յիշմամբ ի Քրիստոս. և դուք յիշեալ եղիցիք յողորմութիւն... Ընդ նմին և զամենօրհնեալ կրօնաւոր և զբարի հոգի զՀայր Ցակոբ՝ որ հայր է վանիցս, և զհաւատարիմ եղբարս զԳաւրիթ և զՍարգիս, հանդերձ (այլովք) յիշեսջիք ի Քրիստոս զկազմող գրոցս:

Եւ գրեցաւ ի ՈԾԷ թուիս լուսաւորանց և հրաշապատում տասն առաքելագիր մատենիս, բազմազան բարութեամբ և իմաստութեամբ լցեալ. զոր Տէրն մեր և Աստուած վայելել տացէ Տէր Ստեփաննոսի մականուն Տիրացու, բազում ամօք խաղաղականօք, և առողջ մնալ հոգւով և մարմնով. և իւր ժառանգին՝ Տէր Սարգսին՝ նորընծայ եպիսկոպոսի, բարի և իմաստուն պատանեկի. զոր ընտրեաց և կարգեց[3] իւր փոխան և տեսուչ անապատիս Սուրբ Խաչի, ստացողաց և ամենայն գոյից. բազում և պէսպէս ընտրութեամբ կոչակաւ... զրով. կամակցութեամբ և յօժարութեամբ եպիսկոպոսաց և վարդապետաց և համօրէն քահանայից և... անց, այլ և զօրաւորաց և իշխանաց Շամիրամաշէն[4] քաղաքի և այլ գեղից. և... այ. եղեալ զօրհնութիւնն Աստուծոյ և զնորին հաւատակն. զի որք կամակից և օգնական լինին՝ զօրհնութիւնն ժա-

1. Քարոզիչ, ճառախօս:
2. Այս անգամ ալ հակառակ սովորականին անհանգչ գրելու՝ հ տառն գրեր է:
3. Հաւանօրէն կացոյց պիտի ըլլար:
4. Որ է Վան քաղաքն:

ղանդեցեն, իսկ որք զխմոացին և ի հակառակու-
թիւնս հատանէին, այնպիսիքն անիծիւք պատու-
հասեցին առաջի անեղ աւենին Քրիստոսի։ Այլ
զՏէր Սարգիս զօրացուցէ Քրիստոս և հեզամուտ[1]
արասցէ, զի պտէրն չահեսցէ և զնորին պատուա-
կան որդիացեալսն, նա և զինքն իսկ զլխովին և
զՔրիստոս զառուրչ իմաստութեան. և նմա փառք
այժմ և միշտ և յաւիտեանս։...

* Եւ ընդ աւանդել հոգւոյն տէր Եզեկ[2], ո՜վ վա՜յ
հազար բերանով զկեա միացեալս, որ զրկեցաք ի
քաղցրահամ աղբիւրէն և յալորտածաւալ ճառագայ-
թիցն. զի ի մեծի երկշաբաթաջն՝ խաւարեցաւ (ա-
րեգակնս) մէտուզիեան... Տէր Ստեփաննոս մա-
կանուն Տիրացու..., ա թու[3]։

* Տէր Յիսուս ի քո սոսկալի գալստեանդ ի ծա-
ւալումն ծիածան ճեմարանացն, պարծանաց պսա-
կաւն զարդարեա ի շուք շնորհի անմարմնոցն տե-
սաւորեալ զՏէր Ստեփաննոս։

* Զաստուածապսակեալ և զսուրբ զիտապետն
Հայաստանեայց՝ զՏէր Գրիգորիս արժանապատիւ
կաթողիկոս Հայոց, զմեծ զիտնական և զվսեմա-

1. Դարձեալ փոխանակ խելամաւտի հեղամոլութ գրէ։
2. Անշուշտ շարունակած էր Ստեփաննոսի վարքն, որ զրոց հնութեամբն կորսուեր է, և միայն մահուան յիշատակն է մնացեր։
3. Անշուշտ մահուան թուականն է, որոյ միայն այբ ա վերջի թիւն որոշ կ'երեւի, և գուշակուի որ առջի թիւերն էին ՈԾ կամ ՈԿ, որ է 1202 կամ 1212 թուական Քրիստոսի, հաւանօրէն առաջինն։ Կըրնայ նկատուիլ որ Ստեփանոս չէ յիշուած Լեւոնի թագաւորօձուեթեան ներկայ եպիսկոպոսաց կարգին, (Յօդ. 309)։ բայց նոյնպէս այլ նկատելի է որ բոլոր յիշեալքն՝ նոյն թագաւորին տէրութեան վերաբերեալքն են։

փայլ առաջնորդ՝ յիշեսջիք ի Քրիստոս. յորոյ օրինակէ գրեցաւ գիրքս այս. զոր հաւաքեալ մեծաւ աշխատութեամբ՝ իբրեւ զգործաւէր մեղու՝ զԹուղթս սրբոց Կաթողիկեայց. զոր և մեր եկեալ աստ տեսաք զսա ուղիղ յարմարեալ ըստ պատշաճի դրութեամբ: Որում ցանկացող եղեալ այսմ՝ հոգեշահ առաքելական մատենիս՝ Տէր Ստեփաննոս արդիւնաւոր գիտնական, որ և Տիրացու յորջորջի, և ետ գրել հոգւոյ որդեկի իւրոյ Յակովբայ, ի վայելումն անձին և ի յիշատակ հոգւոյն: Արդ որք ըստ պատահման հանդիպիք տեսութեան գրոյս, յիշեսջիք աղօթիւք ի Քրիստոս զՏէր Գրիգորիս կաթողիկոս Հայոց և զՏէր Ստեփանոս վարդապետ. նա և ընդ արժանապատիւ յիշատակելոցս՝ և զգրողս Յակովբ մի՛ մոռանայք յաղօթից, որդիք լուսոյ:

---

## ՅԺԲ

### ԶԱՔԱՐԻԱ ՍՊԱՍԱԼԱՐ ԵՒ ԻՒԱՆԷ ԱԹԱԲԷԿ[1]

(ԿԻՐԱԿՈՍ. Բ.)

Յաւուրս ժամանակաց թագաւորութեանն Հայոց Լեւոնի (Ա) արքայի[2] էին յԱրեւելս երկու եղբարք.

1. Լաւագոյն նկար կամ լուսատիպ պատկեր մի չունենալով՝ ներկայացընեմք (յերես 444) ինչ որ շատ տարի առաջ գտեր և հրատարակած եմք ի Շիրակ (եր. 160), Հառիճայ (Ղփչախ) վանաց եկեղեցւոյն գմբեթին մէջ քանդակուած Զաքարէի և Իւանէի:

2. Շատ յարմարագէս Լեւոնի յիշատակին զուգէ պատմիչս՝ այս հարազատները. վասն զի. ինչպէս Լեւոն ի Կիլիկիա հանդիսացաւ քաջութեամբ և ճարտարութեամբ, նոյն ժամանակ և քիչ մ'այլ վերջն ասոնք՝ ի Հայս և ի Վիրս: Կիրակոսի ընկեր Վարդան պատմիչ այլ համաձայնի իրեն և աւելի պարզ

որդիք Սարգսի բարեպաշտ իշխանի, որդւոյ Վահրամայ, որդւոյ Զաքարիայ, որ հատուածեալ ի Քրդաց, ի Բաբիլական խելէն?, անուն առաջնոյն Զաքարէ և երկրորդին Իւանէ. արք քաջք և ճոխք իշխանութեամբ, պատուեալք ի թագուհւոյն Վրաց՝ որ Թամարն կոչէր, դուստր Գէորգայ քաջի՝ որդւոյ Դեմետրի: Եւ Զաքարէ էր զօրավար Վրաց և Հայոց զօրուն՝ որ ընդ ձեռամբ թագաւորին Վրաց. իսկ

կ'ըսէ. «Փառաւորեալ իշխանքն Զաքարէ և Իւանէ
» որդիք Սարգսի... ի Քուրդ ազգէ հատուած եկեալ
» առ թագաւորսն Վրաց Գէորգեայ՝ որ ի Բագրատունեաց
» ազգէ, հաւատացին ի Քրիստոս և պատուեցան...
» և յաւուրս Թամարին առաւել փառաւորեցան, և
» ետ նոցա զԼօռէ», և այլն: Իր հետեւեալ խօսքն որպէս և Կիրակոսի՝ ինքնին յայտնեն որ իրենց փառաւորուելէն աւելի փառաւորած են զթագուհին Թամար իրենց յաղթութեամբք և երկրակալութեամբք, և Վրաց Շամիրամի համբաւ տուած են անոր: — Վերք տանոց ցեղը Մխարգրձել կ'անուանեն, որ նշանակէ Երկայնաձեռն, վասն զի կարծեն թէ հին Պարսից Երկայնաբազուկ Արտաշիրի զաւկըներէն առաջ եկած են:

Վարդան յիշէ Զաքարէի և Իւանէի պապուն պապն այլ, Աւագ Սարգիս. սոր հայրն այլ կոչուի Խոսրով, որ է հնագոյն ծանօթն այդ Երկայնաձեռն իշխանաց. իսկ իրենց որդիքն և թոռներն յիշուին ցկէս ԺԴ դարու, որոց ամենէն նշանաւորքն ի պատմութեան՝ են, Շահնշահ՝ որդին Զաքարէի. Աւագ՝ որդի Իւանէի, ինչպէս տեսնուի յԱզգացուցակին (եր. 447):

Այս երկու մեծազօր եղբարց նման իրենց մեծազգի քոյրն Նանա թագուհի՝ կին Աբասայ (Գ) Տաւուշոյ թագաւորին, (տես զԱզգացուցակ 292 Յօդուածի) իրեն արժանաւոր յիշատակ մի թողած է, Զորագետոյ (Հիմայ Պռաչայլու) անզուգապ տրավար ալիքները կերպով մի սանձելով, վրան միակամար կամուրջ մի ձգելով, իբր 18 կամ 20 չափ (մետր) բացուածքով, զոր եօթն դարէ աւելի ժամանակն՝ չէ կրցած կործել, այլ դեռ լաբուածոյ. բնական շէնքէն աւելի բանականին վսեմ շինուածով, այսինքն արձանագրութեամբ Նանայի. որ տող իր սիրտը, աչքն ու ուշքը և իր վաղամեռիկ

իւանէ աթաբէկութեան պատուով[1] ։ Սոքա բազում մարտս քաջութեան ցուցին. քանզի զբազում աշխարհս Հայոց՝ զոր ունէին Պարսիկք և Տաճկունք՝ առին ի նոցանէ յինքեանս, զգաւառն որ շուրջ զծովովն Գեղարքունեաց, զՏաշիր և զԱյրարատ, զԲջնի քաղաք և զԴուին և զԱնբերդ և զԱնի և զԿարս և զՎայոց ձորն, և զաշխարհս Սիւնեաց, և որ շուրջ զնովաւ են բերդք և գաւառք, հարկատուս արարին և զսուլտանն Կարնոյ քաղաքին։ Աւերեցին և զբազում քաղաքս Պարսից և զԱտրպատականու,

*Աբաս թագաւոր ամուսինը (+ 19 տարուան) կանգուն և կենդանի թողուց. և է այսպէս, խաչքանդակի մի ներքեւ.*

Նշա՛ն Քրիստոսի, լեր բարեխաւս իշխանաց յազգէ Բագրատունեաց.— Ես Նանայ* դուստր իշխանաց իշխանի Սարգսի որդւոյ Զաքարէի, կին Աքասա Թագաւորին. որ կիսաւրեայ վախճանեալ խաւարեցոյց զմեզ. Շինեցի զկամուրջս. կանգնեցի զխաչս յիշատակ նմա, մխիթարութիւն ինձ եւ ի կեանս ծնողաց եւ եղբարց իմոց. Յիշեցէք ի Քրիստոս Յիսուս. Ամէն։

*Ոչ պակաս փոխմական և արտառուչ է Համառօտութեամբն և իր տապանագիրն՝ ի մէջ բազմաթիւ իշխանազանց Հաղբատայ պատկառելի տապանատան, մօտ իր քերցն, այս չորս վանկով, ՀԱՆԳԻՍՏ ՆԱՆԱՅ **։*

1. Կիլիկեցւոց առեն մեծ Պայլ կամ Թագաւորահայր կոչուած պատուոյ յարմարի. Թագաւորին առն հօգցող և նախնեաց բանիւն՝ Հազարապետ։

* Օրինակող արձանագրութեանս Նանայի գրած էր.

** Նանա Հաղբատայ միաբանից համար Սեղան մի հաստատեր էր, այսինքն իբր ի յիշատակ հանգուցելոյ՝ սիրոյ և ողորմութեան կերակուր. հօն ի Հաղբատ թաղուած են՝ ամուսինն՝ Թագաւորն Աքաս և անոր հայրն Կորիկէ, և իր քանի մի քոյրերն. շատ յարմար էր որ ինքն այլ անոնց քով ունենար իր վերջի հանգիստն՝ քան ի Սանահին, ուր գտուի այսպիսի արձանագիր մի. ՃԳՆԱՒՈՐ ԳԱՏՐՈՆՈՒՀԻ ՆԱՆԼ ՔՈՅՐ ԳԱՏՐՈՆԱԾՆ ԶԱՔԱՐԷԻ ԵՒ ԻՒԱՆԷԻ։ Յառաջ քան զպսակիլն ընդ Աքասայ՝ Նանա պատարմանուհի էր, բայց յետ պսակմանն հարկ էր որ ոչ եւս պատարմանուհի այլ Թագուհի կոչուի։

և ընդարձակեցին զսահմանս իւրեանց յամենայն կողմանց[1]։...

Եւ այսպէս յաջողեցաւ նոցա ի վերուստ յաղթութիւն նոցա. զի համբաւ քաջութեան նոցա ել ընդ բազում գաւառս[2]. և բազում ազգք հարկատայքին նոցա, որ սիրոյ աղագաւ և որ յերկիւղէ։ Շինեցան և բազում վանորայք՝ որ ի վաղուց ժամանակէ անտի աւերեալ էին ի հինիցն Իսմայէլի. վերստին նորոգեցան եկեղեցիք, և պայծառացան դասք պաշտօնէից. շինեցան և նոր վանորայք և եկեղեցիք որ ի հնոց էին լաւք. ընդ որս և հռչակաւոր վանքն՝ որ Գետիկն կոչի՝[3] ի գաւառին Կայենոյ, զոր շինեաց սուրբ վարդապետն Մխիթար՝ զոր Գօշն կոչէին[4]. շինեալ հրաշազան եկեղեցի գմբեթայարկ երկնանման. և կնքեալ զեկեղեցին և օծեալ յանուն Ս. Աստուածածնին, տաճար փառաց Տեառն և բնակարան բանաւոր հօտին Քրիստոսի։

Եւ իբրև այսպէս յաջողեցաւ նոցա իշխանութիւնն, հարին զսուլտանն որ Տաճիկ Արմէն կոչիւր. ապա կամեցան առնուլ և զհռչակաւոր քաղաքն Բզնունեաց՝ որ կոչի Խլաթ[5]. և զօրս գումարեալ պաշարեցին զնա, և մերձ էին առնուլ։ Ապա ելեալ իշխանն Իւանէ՝ եղբայր զօրավարին՝ զբօսանաց ինչ աղագաւ ի զնին պարսպին, և յանիմաստ շրջելն՝ գթեաց ոտք երիվարին ի խորխորատն՝ որ

1. Վարդան իւրեանց երկրակալութեան տարեթիւերն այլ նշանակէ. «Ի 640 թուին (Քրիստոսի 1191–2) ա-
» ռին զերկիրն Շիրակայ, և ի 645 (1196–7) զԱնբերդ
» և ի 648 թուին (1199) առին զԱնի և ի 650 թուին
» (1200–1) առին զԲջնի, և ի 652 թուին (1203–4)
» առին զԴուին, և ի 655 թուին (1206–7) առին զԿարս
» (աթոռ) թագաւորին. և ապա զԳետաբակս և զՉա-
» րեքն »։

2. Ուրիշ ՕՕ. գրեն ընդ ամենայն տիեզերս։

3. Տես Յօդուած 297։

4. Տես զՅօդուածս 282. 292. 297։

5. Որ նոյն Տաճիկ Արմէնին նստոց քաղաքն էր։

Թաքուցեալ էր[1]. և ընկէց զնա յերկիր. և տեսեալ արանց քաղաքին՝ յարեան ի վերայ նորա և ձերբակալ արարեալ՝ տարան զնա ի քաղաքն. և եղեւ քաղաքին ուրախութիւն մեծ. և իսկոյն ազդեցուցին զըմբռնումն նորա. ընդ որ կարի յոյժ ուրախացեալ հրամայեաց առ ինքն ածել: Եւ լուեալ զօրավարին Զաքարիայ՝ յղեաց առ քաղաքացիս բանս սպառնալեաց, և ասէ. Եթէ հանէք զեղբայրն իմ ի քաղաքէդ յայդմանէ կամ կորուսանէք, զհողդ երկրիդ ի կողմանս Վրաց տանիմ, և անմարդ աբարից զձեզ ի մարդկանէ[2]: Եւ երկուցեալ նոցա ոչ ետուն տանել առ սուլտանն՝ որք էին ի կողմանս Դամասկոսի. որոց անուանք էին Կուզ[3] և Մելիք Քէմլ[4] և Աշրաֆ՝ յազգէն Սալահատինին որ առ զԵրուսաղէմ: Ապա արարեալ սէր ընդ միմեանս, խնդրեցին զդուստր Իւանէի ի կնութիւն, և արձակեցին զԻւանէ. և նորա երթեալ ի տուն իւր առաքէ զդուստրն իւր, որ եղեւ կին Կըզոյն, և յետ նորա Աշրաֆի: Բազում օգուտ եղեւ գալ կնոջն ի տունս սուլտանացս. զի դիւրեցին քրիստոնէիցն որ ընդ իշխանութեամբ իւրեանց էին, եւս առաւել երկրին Տարօնոյ. զի վանորայքն որ

1. Արաբացի պատմիչ մի՝ փոխանակ խորխորատի՝ կամուրջ կ՚ըսէ, որոյ մէկ մասը խախտեր էին այլազգիք, որ Իւանէի ձիուն կոխելէն փլաւ, և նա ինկաւ:

2. Ոչ վայրախօս՝ այլ տոհմ քաջ մարդու խօսք, որմէ վախնալով՝ հաշտութիւն ըրին գերողքն զԻւանէ, և նոյն ինքն Թագաւոր Հայոց (Շահի Արմէն) կոչուածքն. փեսայացեալք Իւանէի:

3. Կուզն՝ Թերեւս Իկոնիոնի Քէյ Քաուս կոչուած սուլտանն է, կամ Նախճաւանի կողմանց իշխող Ելտակուզ ամիրայն բայց Կիրակոս զԹամթա՝ Կըզոյ կին տրուած ըսելով՝ զնոյն Շահի-արմէնն համարի, որ այն ատեն Ախլաթ կոչուածն էր, և տարի մի չանցած մեռնելով՝ իր յաջորդն Աշրաֆ առաւ զԹամթա: Տես զ՚7 ծանօթութիւն Ազգացուցակին՝ ի վերջ Յօդուածիս:

4. Պարզապէս Մէլիք Քեամիլ կոչուէր:

անդ էին՝ ընդ հարկաւ էին. թեթեւացուցին զսակ հարկին, և կիսոյն զամէնն խսկ թողին. և հրամայեցին այնոցիկ որ ընդ իշխանութեամբ իւրեանց էին՝ ոչ գրկել կամ նեղել զճանապարհորդս, որք աղօթից աղագաւ երթային յԵրուսաղէմ. և առաւել ընդարձակեցին ազգին Վրաց. վասն այնորիկ առաւել մեծարէին զՎիրս, զի անհարկ էին նոքա յամենայն քաղաքս նոցա և յԵրուսաղէմ եւս։ Եւ էր անուն կնոջն Թամրա։ Եւ այսպէս եղեւ սէր և միաբանութիւն ընդ թագաւորին Վրաց և ընդ իշխանութեան Սուլտանայ։

---

## ՅԺԳ

### ԳՐՈՒԹԻՒՆ, ԳԵՐՈՒԹԻՒՆ ԵՒ ՎԵՐԱԳՆՈՒԹԻՒՆ ՄԵԾ ՏՕՆԱԿԱՆ ԳՐՈՑ[1]. ԱՅԼ ԵՒ ԱՅԼ ԴԷՊՔ Ի ՍԿԶԲԱՆ ԺԳ ԴԱՐՈՒ. ԱԼԱՅԻՆ ՍՈՒԼՏԱՆ ՍԵԲԱՍՏԻՈՑ ԵՒ ԶԱՔԱՐԵԱՆՔ

... Թէ զիարդ և ուստի զայս աստուածային գանձս ստացաւ այր մի պատուաւոր ուայիս[2] Բայբերդոյ[3], որոյ անուն յորջորջի Աստուածատուր, յոյժ

1. Մշոյ Ս. Առաքելոց կամ Ղազարու վանաց ճառընտրի Յիշատակարանն է, ուր երբեմն որբազան և համբուրելի ինչ պահուէր այս մեծագիր գիրքս, Տօնական կամ Տօնամակ կամ Ճառընտիր կոչուելի, ԺԲ դարու վերջին և յաջորդին սկիզբն գրուած և գերուած յայլազգեաց։ Ի՛նչ խնամքով գրել տուեր և մանաւանդ գերողներէն գներ են՝ աստի անտի տասն հանգանակելով, կ'արժէ գիտնալ և յարգել գրոց յարգողներն եւս, և ծանօթանալ ժամանակի քանի մի նշանաւոր անձանց։

2. Գիւղապետ կամ գլխաւորն ազգայնոց տեղւոյն. յայտնի է բառն արաբացի։

3. Թերեւս ոչ Բաբերդ քաղաքն՝ այլ գիւղ մի։

աղքատասէր, մանաւանդ թէ և աստուածասէր. որ և առ խուկ ցանկացող եղեալ այսմ սուրբ մատենիս և պատուական մարգարտիս, ապա այսուհետև չաղկապեցաւ ի սէր այսմ սուրբ բուրաստանիս, և ապա հոգ տանելով թէ ո՞վ արդեօք կարող իցէ հասուցանել զնա ի փափագ բաղձանացս. զի Մովսէսեան այն աստուածային պատգամքն արժանացաւ հայէլ առ Աստուած: Եւ ապա խնդիր արարեալ յոգնախմաստ գրչի, և գտեալ քահանայ մի ի գաւառէն Կարնոյ. որում Վարդան կոչեցեալ, հմուտ և վարժ ամենայն արհեստի գրչութեան, և նա յանձին կալեալ և օգնականութեամբն Աստուծոյ սկիզբն արարեալ, և ապա զկնի երից ամաց եհաս յաւարտ բանիս: Եւ ի կատարման գրոցս՝ սուլտանն Սեւաստոյ[1] ժողով արարեալ անհուն բազմութեամբ՝ նմանեալ ամպարշտին Յուլիանեայ, փքացեալ լեռնացեալ եհաս ի Թէոդոսուպօլիս[2], և անտի կամեցեալ անցանել յաշխարհս Հայոց և Վրաց. և ամենեւին մոռացաւ զԱստուած և յուսացաւ ի նանրութիւն իւր, կամէր յաւարի առնուլ զաշխարհս ամենայն: Իսկ օգնականութեամբն Աստուծոյ եկին հասին զօրքն Վրաց, և մեծն Զաքարէ հանդերձ իւանէիւ[3] հարազատաւն իւր, և այլ աստուածասէր իշխանօք և նախարարօք և յոգնախումբ խառնիճաղանջ բազմութեամբ՝ հասին ի վերայ անօրէն զօրացն և յանխնայ կոտորեցին զնոսա, զոմանս ձերբակալ արարին, և ոմանք ի փախուստ դարձան, բայց սուլտանն անվրէպ մնաց[4]: Սակայն զաւարոյն զթիւ ո՞

1. Սելջուկեան սուլտանաց միացորդներէն, որոնք յիկոնիոն և ի Սեբաստիա ինքնագլուխ իշխէին:
2. Որ է Կարնոյ քաղաքն, հիմայ Էրզրում:
3. Ժամանակին արեւելեան քրիստոնէից կողմանցս՝ վեհագոյն և յաղթող պաշտպանք և ազատարարք, ինչպէս տեսնուեցաւ ի նախընթաց Յօդուածին:
4. Անձամբ ազատ պրծաւ:

կարէ գիտել՝ զուկւոյ և զարծաթոյ և զմետաղաց, զերամակս ուղտուց, ձիոց և ջորւոց։

Եւ յայսմ ամի ի սոգրելոյ չարին ըմբռնեցաւ այրս Աստուածատուր ի ձեռն ամիրային Խւրոյ Աղաղիեն[1] կոչեցեալ, որ և ի ձեռն այնմ գազանի Աստուածատուրն այն ընկալաւ զվախճան, և յափըշտակեցին պստացուածս նորա. և ոչ մնաց և ոչ մի ինչ՝ բայց այս գիրքս։ Այս դատաւոր քաղաքին ձեռն յառաջ տարեալ՝ զսար պատճառանօք բանս ի վերայ եղեալ թէ հինգհարիւր դահեկան[2] մնաց ինձ առ Աստուածատուրն։ Եւ իբրեւ այս այսպէս եղեւ, ապա այնուհետեւ չու արարեալ զատուարին՝ եկն բնակեցաւ ի Հաշակաւոր քաղաքն Խլաթ, և երկու ամ կայր ի պահեստի[3], և ոչ ոք գիտաց. և ապա կամեցաւ վաճառել, և ոչ ոք կարէր գամագիւս լինել[4], զի բազմագին կամէր վաճառել։

Ապա հարապատ եղբարք անձինք՝ երեք քահանայք գեղջն Դասնջայն կոչեցեալ, որ է առ դուռն քաղաքին, և են անուանք նոցա՝ միոյն Մանկիանոս, իսկ միւսոյն Վարդապետ, և երրորդին Յովհաննէս, որ և նոքա աղդ արարին մեզ, զի էին միաբանք Սուրբ Առաքելոցս, նամակ արձակելով՝ թէ զանձ պատուական կայ ի քաղաքիս. և մեր լուեալ զայս՝ եռափափաք սիրով շտապեցաք ի մէջ ամին. ապա հայելից եպիսկոպոսապետս մեր Տէր Եսայի[5] զմեծ-

1. Վերոյիշեալ (Ծան. 4) ուխտանուց մին, Սեբաստիոյ կողման իշխողն։
2. Ինձ անծանօթ՝ առակի մի անուն գուշակուի։
3. Գիրքն է պահուած մնացածն։
4. Ոչ ոք համարձակէր գնելու, վասն զի շատ սուղ ծախել կ'ուզէր։
5. Ն. Լանգլուանցի ի Թղթին առ Մեծն Լևոն (Ա. Թագաւոր) իր գործը հանճարներուն մէջ զոյլութեամբ յիշէ զսա. «Ըոլոր գաւառն Տարօնոյ և որ ի նմա » իմաստուն եպիսկոպոսն Եսայի և վարդապետ Թէո-» դորոս, որ զմերս Հայաստանն բարեկարգութիւն, և » երանեն զհաղորդելան»...։

միաբանն ստացեալ սէր՝ ելեալ չորս քահանայիւք փոյթ ընդ փոյթ գնաց ի Խլաթ՝ յաղագս խնդրոյս այսորիկ, և ոչ կարաց հասանել ի փափագ բաղձանացն. քանզի ժամանակն ձմեռային (էր). և այլ եւս սպասաւորք սուրբ ուխտին որ կոչի Արծկեոյ վանք, և նոքա եւս քան զեւս վառեցան բորբոքեցան ի սէր սուրբ կտակիս։ Իսկ բոծորն[1] այն զոր յառաջագոյն կանխեցաք ասացաք՝ իբրեւ ետես ըզջերմեռանդ սէր մեր, եւս առաւել զԱրծկեցի սուրբ քահանայիցն՝ ապա զգինն եւս առաւել աճեցոյց։ Եւ իբրեւ այս այսպէս եղեւ՝ յայնժամ սուրբ եպիսկոպոսս մեր թոյլ տուեալ վայր մի և եկն ի վանքս, ապա նոյնպէս և Արծկեցի քահանայքն դարձեալ գնացին։ Մի ամ այլ մնաց գիրքս առ բոծորն այն. ապա ի գալ միւս ամին խնդիր արարեալ թէ գիրքս Ղազարու վանիցն է, զի առաջի գնող այն մեծ եպիսկոպոսն է, ապա յառաջ ստացեալ երեք քահանայքն որ ի Դանջան՝ դարձեալ գրով ազդ արարին մեզ։ Սակայն թէպէտ և սէր սմին ստիպէր զմեզ, բայց գնոյն անկարող էաք. ապա քահանայ ոմն անուն նորա Յովանէս ի Միջնաղբերաց[2] էր և միաբանեցաւ սուրբ Առաքելոցս, և իբրեւ լուաւ զերկչոտ բարս մեր, ապա յառաջ կացեալ քաջալերեաց զմեզ և հաստատեաց ասելով, թէ, ես օգնական եմ որչափ իմ կարն է։ Ապա ըստ բանից նորա ոյժ առաք ի զօրութենէն Աստուծոյ. յայնժամ Սարգիս վարդապետն հինգ փիլիսոփայիւք[3] որոց անուանքն գրեալ են ի դպրութեան կենաց, Յուսիկ և Ուստա-

1. Հին Բառգիրք՝ այլազգի թարգմանեն զԲոծոր, անշուշտ յանուն Բոստրա քաղաքի Եդովմացւոց և Մովաբացւոց, ըստ նոցա Բոծրա. ծաղկած քաղաք Հռովմայեցւոց իշխանութեան ատեն, որոյ եպիսկոպոսքն յիշուին Դ և Ե դարու ժողովոց մէջ. հիմայ Հաւրան կոչուած Արաբիոյ կողման վերաբերի։
2. Տարօնոյ կամ Մշոյ գիւղ մի։
3. Երգողք կամ ժամասացք։

գէս, Աշոտիս և Ստեփաննոս և Ներսէս, յարուցեալ ուղեկից առնլով զսուրբ Առաքեալսն Քրիստոսի, և մեծաւ ցանկութեամբ հասին ուր գանձս աստուածային, և յոյժ աշխատեցան, զի ժամանակն ձմեռային էր և սղն դառնաշունչ և ձիւն բազում. և իբրեւ մերձեցան ի մեծահռչակն խլաթ, և մտին կացին ի մէջ մեծահարկի տանուտերացն, և Աստուած աչ արկ ի վերայ քահանայիցն խլաթայ և Դանշնայ, և նոքա մեծաւ ուրախութեամբ յանձին կալան և օգնական եղեն բանիւք և արդեամբք. որոց անուանքն գրեալ են ի դպրութիւն կենաց. և զօրութեամբ Քրիստոսի առաք զըղձալիս մեր և դարձաք, ըստ իմաստուն վաճառականին՝ որ եգիտ մի պատուական մարգարիտ. նոյն և մեք առեալ զսա դարձաք յերկնագունմար եղբայրանոցս մեր, որ յորջորջի Ղազարու վանս, և եդաք զսա առ դրունս սուրբ Առաքելոցս, և ոչ եւս կարէաք գնել, զի ԵՌ (5000) դրամ[1] խնդրէր բռծորն այն՝ որ է տաճիկ. և դարձեալ մեծաւ հազիւ կարացաք գնել ի ԴՌ (4000) դրամ. և փառք, փառք Թագաւորին (Աստուծոյ)։

Արդ, նախ առաջին զամենագովելի եպիսկոպոսս մեր Տէր Եսայի, և որ իւրն գեղեցիկ բարի արգասիւքն երեւեալ՝ համակք գովելիք, որոց անուանք Յակոբ և Ստեփաննոս եպիսկոպոսք՝ շնորհիւն Աստուծոյ և արդարապէս ուղիղք, յիշեսջիք զՏէր Եսայի ի սուրբ աղօթս և ընդ նմին զիւրսն։ Եւ որ յիւր հալալ արդեանցն ընծաուր եղեւ մեծանունն Տէր Յարսեղ, շնորհելով ընծայ ի սուրբ պատուիրանս՝[2] տասն դահեկան[3], յիշեսցի ի Տէր։ Եւ

1. Հաւանօրէն Արաբացւոց փոքր արծաթի դրամ է, ըստ նիւթոյն նուազ քան ֆրանգ մի, ըստ արժէից ժամանակին քառապատիկ արժող։

2. Սուրբ գիրք՝ այսինքն Աստուածաշունչն սովորաբար կոչուի Սուրբ Պատուիրան, բայց այս տեղ այդ Ձեռագրին համար բռուած է։

3. Ոսկի դրամ է, ըստ չափուն նուազ քան զոսկին

թէպէտ և այս անուան կանոնացն ղաստաղով եղեն մեզ, առակայն հայր մեր Աբրահամ[1] տուաւել քան զառաւելս հնարէր փոյթ[2]. և զաստուածային նորին Տէր Բարսղի, հեղն և անարատ և պարկեշտն խաչատուր փիլիսոփայն, որ ըստ կարի և նա ես Ծ (50) դրամ. յիշեսցի: Եւ զԹովմասնենս Միխեալբեցի՝ որ աղբերացոյց աստուածայնս զընծայս ի սուրբ պատուիրանս Աստուծոյ, յիշեսցի: Եւ որ սուրբ քաղաքեցիք և յորդորիչք են աստուածաճանաչ անձինք՝ Սրապիոն և խաչատուր՝ յիշեսցին. որ ոչ զսա միայն յորդորեցին՝ այլ և զբազումս՝ շնորհատու լինել ի գինս գրոցս: Եւ որ ի մեր սուրբ ուխտէս յօժարամիտք եղեն ի գիրս՝ տալ պարգեւս, և նոքա յիշեսցին. յողորմութիւնն Աստուծոյ և ի մաքուր աղօթս քրիստոսասիրացդ. և են անուանք՝ Ստեփանոս՝ որ յորջորջի Ճռեի, և միւս՝ Աւետիս Ցրոնցի[3]. սոքա ետուն ի սուրբ պատուիրանս Աստուծոյ դրամ Ն (400), յիշեսցին: Եւ որ այլ ըստ կարի, Պօղոս՝ դրամ Ճ (100) յիշեսցի. Ներսէս՝ դրամ Ճ (100) յիշել. և Վարդան և իւր եղբայրն Ստեփանոս՝ ետուն և նոքա ընծայ ի սուրբ Պատուիրանն՝ հինգ դահեկան, յիշեսցին և նոքա: Հայրապետն և իւր եղբայրն Դաւլաթն շատ աշխատեցան ի քաղաքաւանն Մուշ, և էր զոր անձամբ լիապէս շնորհեցին ընծայ ի գինն, յիշ: Ցիրատուր երէց ընծայատրեց ի սուրբ Պատուիրանս Աստուծոյ՝ դրամ Ծ. յիշեսցի: Եւ որ փակակալն էր Կիւրակոս՝ ի վեր քան զիւր կարն եցոյց զպնդութիւն: Արդ են և այլ այլք բազումք՝ որ մեծ յուսով օգնական

փանեկաց, ըստ արժէից ժամանակին՝ նոյն համեմատութեամբ նախայիշեալ փոքր դրամոյն:

1. Առաջնորդ Ղազարու վանացն:

2. Այսպէս գրուած է. նշանակութիւնը չգիտեմ:

3. Ծանօթ գիւղ Տարօնոյ. ըստ ռամկական աւանդութեան՝ մարդկան այս տեղէն ցրուելուն համար այսպէս կոչուած:

եղեն. և գի յոլով են և անկար է դրոշմել զանուանս նոցա, միայն գիտողին Աստուծոյ թողցուք, որ յառաջ քան զմեր օգնականելն՝ գրեաց զանուանս նոցա ի գիրն կենաց: Գիւղն անուանի Մոկուննք, իւր քահանայիւքն ջերմն սիրով փափագողք եղեն, և ետուն լի սիրով ընծայ ի գինս: Կին մի ետ դրամ Ճ ի նոյն գեղջէ, յիշեսցի: Եւ այլ որ յաւանիս Մշոյ աստուածասէր քահանայքն և տանուտէրքն օգնական եղեն, յիշեսցին: Եւ որ ի մեծ քաղաքին Խլաթ պարոնայքն օգնեցին, առաւել Խոցադեղն և Աստուածատուր և Վարդիկ, Քրիստոս Աստուած յիշէ զնոսա յարքայութեան իւրում: Եւ որ ի Դանձնայ երեք հարազատ եղբարքն և իւրեանց հօրեղբայրն Խաչիկ կրօնաւոր և աղօթասէր, սա շատ բաղձաց մինչև եհաս սուրբ Պատուիրանիս. յիշեսցին և սոքա ամենեքեան: Ցովհանէս փիլիսոփայ՝ որ անհաս խոնարհութեամբ սպասաւորեց մեզ, և սա յիշեսցի և գրեսցի ի գիրս կենաց: Աբանէս որ աշխատեցաւ գնալ ի Խլաթ՝ յիշեսցի ի Քրիստոս: Պատուական տանուտէր մի Ծամիկ անուն, դրամ երեսուն ընծայ ի գինն, յիշ: Կին մի Ոշգիկ անուն՝ դրամ երեսուն ի սուրբ Պատուիրանս ընծայ, յիշեսցի: Խապազ[1] մի Արտաւազ անուն՝ դրամ երեսուն ետ ընծայ յաստուածային Պատուիրանս, յիշեսցի և նա:

Շնորհիւն Աստուծոյ Հօր և Աստուծոյ Որդւոյ և Աստուծոյ Սուրբ Հոգւոյն, ի թուաբերութեան արարչութեանն՝ որ լինի յիսկզբան լինելութեանն մինչև ցայժմ ամք վեցհազարերորդ վեցհարեւրերորդ երեսներորդ. և ի ծննդենէ Բանին Աստուծոյ լինի ամք ՌՄԴ (1204). և ըստ Հայկազեան տոմարի որ լինի վեցհարիւրերորդ յիսներորդ և չորրորդ. Սկսայ կազմել զբազմերանեան շտեմարանս աստուածային գանձուց, ի նահանգիս որ կոչի

1. Հացագործ նշանակէ, Արտաւազդ անունն այլ յիշեցընէ նախնի Մամիկոնեան պայազատներըն:

Ղազարու վանս, ընդ հովանեաւ Սուրբ Առաքե-
քելոցս, ի մէջ աստուածատես աստուածախօս սըր-
բեցելոյ և մաքրազարդից արանց։ Արք վայելէք և զմայլիք ի սմանէ՝ զորս շարադասեցաք ընդ գրով յիշեսջիք ի Քրիստոս, և զորս ոչ կարացաք գրով յիշատակել՝ առհասարակ զմիեղէն եղբայրութիւն՝ որք այժմ բնակեալ են առաջի դրան Սուրբ Առաքելոցս, առհասարակ ողորմեսցի մարդասէրն Աստուած՝ որ ողորմածն է յամենայնի, և գրեսցէ ի գիր կենացն յաւիտենից։

Արդ ի գրեցելումս ամին շինեցաւ ժամատունն. իսկ յայսմ ամի որ գիրքս կազմեցաւ՝ կռօնեցաւ գումբէթն Աստուածածնի. և տէր Աստուած ողորմեսցի աշխատողացն՝ որք անդ և աստ աշխատեցան։ Վասիլ հիւրատեսն յիշեսցի ի Քրիստոս։

Արդ. Յովաննէս Միջնաղբերցի ետ ի գինս գրոցս ՌՃ (1100) դրամ. իսկ ի կատարման Յայտնութեան ութօրէիցն ի Տնօրինեցաւ[1] աւուր գրեցաք երկրորդ պատարագ Յովաննիսի, հրամանաւ տէր Եսայեայ և փիլիսոփայիցս և համօրէն ուխտիւս, և գերապայծառ առաջնորդիս մերոյ Աբրահամայ, և սուրբ բեմբականաց[2], երկրորդ պատարագ անխափան ամ յամէ կատարել. իսկ որ անփոյթ առնէ՝ տացէ համարս յաւուրն դատաստանի։ Յրաւնցի Աւետեացն՝ մին մատուցաք պատարագ, յաւուր տօնի Սուրբ Առաքելոցն Յոհաննու և Յակովբայ։

Զկազմողս[3] զեղկելիս և զեղբայրիկն իմ զՍտեփաննոս յիշեսջիք ի սուրբ յաղօթս ձեր։

1. Յայտնութեան կամ Ծննդեան տօնի ութերորդ օրն, որ ըստ ոմանց յատուկ Մկրտութեան տօնի օր համարուի, Տնօրինեցաւ բառով ոկսուած շարականին անուամբ։ Երկրորդ պատարագ ըսելով յայտնէ՝ որ առաջին պատարագ մ'այլ սահմաներ էին իրեն համար, հաւանօրէն ի Զատկին, զուցէ Յիշատակարանիս օրինակողին աչքէն փախեր է այս։

2. Իբր քարոզիչ վարդապետ։

3. Այսպիսի մեծ և պատուական գրոց՝ արժանա-

# ՅԺԴ

## ԹԱԹԱՐՔ ԵՒ ԱՐՇԱՒԱՆՔ ՆՈՑԱ Ի ՀԱՅՍ

(ԿԻՐԱԿՈՍ, Լ.)

## *Վասն ցուցման կերպարանաց Թաթարին, բացատրութիւն սակաւ.*

Վասն զի յօժարեցաք մեք յիշատակ թողուլ յազգս՝ որ գալոց են, քանզի ակն ունիմք մեք յուսովք փրկութեան՝ ի նեղութենէ սաստի որ պաշարեալս է զմեզ, սակաւիկ մի ցուցցուք քննասիրացդ՝ զկերպարանս և զխօսս նոցա։ Էին տեսլեամբ կերպարանոց՝ դժոխատեսք և ահագնալուր. մօրուս ոչ ունելով՝ բայց սակաւուց ոմանց կամ ի կլափն կամ ի շուրթն. ակն՝ նեղ և արագատես, ձայնն՝ նուրբ և սուր[1]. բազմակեացք և տեւողք։ Յորժամ անկանէր՝ յաճախ ուտէին և ըմպէին անյագ, և յորժամ ոչ անկանէր՝ ժուժկալք էին[2]. ուտէին զամենայն կենդանիս, զսուրբս և զանսուրբս, և զմիսն

ւոր եղած պիտի ըլլայ կազմն այլ, զոր երկու անգամ յիշէ կազմողն և անունը չի յայտներ, թուի՝ խոնարհութեամբ, այլ իր եղբօր անունը յիշէ։ Իսկ գիրքն՝ արդեօք պրծա՞ւ այս ետքի տարիներուս հանդիպած վտանգներէն, ինչպէս տարակուսելով ըսած եմք ուրիշ անգամ եւս. (Զ ծանօթ. 294 Յօդուածի)։ Այս մեծ գրոց մէկ երեսի կողմին վրայ գծուած էր այս ձեւով, գունով և մեծութեամբ այս զարդս (տես եր. 449). շատ ուրիշ գունագոյն և ոսկեգոյն զարդեր այլ ունի եղեր։

1. Ճիշդ և ճարտար նկարագրութիւն մարդաբանական։

2. Եթէ ձեռուընին ուտելիք չընկնար՝ երկայն ատեն համբերէին. իսկ եթէ գտնէին՝ առանց կշտանալու լափէին։

ձիոյն տառուել մեծարէին, անդամ անդամ յօշեալ և կամ եփեալ և խորովեալ տանեց աղի, և ապա մանր կարատեալ և Թացեալ յաղաղջուրն՝ այնպէս ուտէին. ոմանք ի գուճ ըստ նմանութեան ուղտուց, կէաք նստելով ուտէին: Եւ յուտելն համարակ բաշխէին ոտրանց և ծառայից. և յըմպելն զ՚զմոզ[1] կամ զգինի, առեալ մի ումն մեծ ամանով ի ձեռն իւր, և փոքր բաժակաւ առեալ ի նմանէ՝ ցանէին ընդ երկինս, և ապա յարեւելս, յարեւմուտս, ի հիւսիս և ի հարաւ. և ապա իւր իսկ ցրողին զայն սակաւ մի ըմպեալ ի նմանէ, մատուցանէր աւագագունին: Եւ թէ ոք բերէր նոցա կերակուրս կամ ըմպելիս, նախ բերողին տային ուտել և ըմպել և ապա ինքեանք ուտէին և ըմպէին, զի մի՛ ի մահացու դեղոց ինչ դրժիցին: Որչափ և կամէին կանայս առնէին. բայց զպոռնիկս ամենեւին ոչ ապրեցուցանէին ընդ իւրեանց կանայս. բայց ինքեանք ուր և հանդիպէին այլազգեաց՝ անխտիր խառնակէին: Եւ զողութեան ատելիք էին, մինչ զի չարաչար մահուամբ սատակէին:

Եւ պաշտօն ինչ ոչ գոյր առ նոսա կամ երկրպագութիւն, բայց ստէպ զանունն Աստուծոյ յիշէին յամենայն իրս. զայս թէ զէ՞ն Աստուծոյ զօհանային և կամ թէ զայլ ումն Աստուած կոչէին[2], մեք ոչ գիտեմք, և ոչ ինքեանք եւս: Բայց սովորաբար զայս ասէին, զարքային իւրեանց՝ որդգակից Աստուծոյ, զերկինս առեալ իւր բաժին, և զերկիրս տուեալ խաղանին[3]. զի ասէին զՋանկզ խանն՝[4] զհայր խաղանին՝ ոչ ծնեալ ի սերմանէ առն. այլ լոյս իմն եկեալ յաներեւութից և մտեալ

1. Քամուած նուէթի մի ջուր, պաղոյ կամ կաթին:
2. Արդեօք ճշմարիտ Աստուծոյ անո՞ւնը յիշէին, թէ իրենք այլ ըստածնին չէին գիտեր:
3. Խաքան կամ Խաղան, ղանից ղան, Թագաւոր Թագաւորաց:
4. Սովորաբար Ճինկիզ կոչուի ի մերոց:

ընդ երդս տանն, և ասացեալ մօրն՝ թէ յղացեր և ծնցես որդի ինքնակալ երկրի. և յայնմանէ առէին ծնեալ զնա։ Զայս պատմեաց մեզ Գրիգոր իշխանն՝ որդի Մարզպանին, եղբայր Աշլան-պէկին, Սարգսի և Ամիրային, յազգէ Մամիկոնէից, զոր իւր իսկ լուեալ էր յառնէ միոջէ մեծէ և ի կարի աւագացն, որում անուն էր Ղորոն-նոյին[1], յաւուր միում յուսուցանել նորա զմանկագոյնս։ Եւ յորժամ ոք մեռանէր ի նոցանէ՝ կամ սպանանէին, էր որ բազում աւուրս շրջեցուցանէին ընդ իւրեանս, քանզի մտեալ դիւի խօսէր անդուստ բազում բարբաջմունս[2]. և էր զոր այրէին, և կէսն թաղէին յերկրի խորափոսիւք, և ընդ նմին դնէին զզէնս իւր և զհանդերձն և զոսկին և զարծաթն, որ ինչ բաժին իւր էր. և թէ ի մեծաց ոք լինէր՝ ի ծառայից և յաղախնեաց եւս դնէին ընդ նմա ի գերեզմանի, զի սպաս կալցի առէին նմա. այլ և զձի եւս, զի առէին անդ պատերազմ սաստիկ լինել. զոր յիշատակ կամէին առնելոյ մեռելոց, ճեղքէին զփոր ձիոյն և քարշէին ընդ այն զամենայն միսն առանց ոսկեր, և ապա զփորոտին և զոսկերս այրէին հրով. և կարեալ զմորթն ձիոյ իբր թէ զամենայն մարմինն ունիցի, սրեալ փայտ մի մեծ՝ հարեալ յորովայնն և հանեալ ընդ բերանն՝ այնպէս վերացուցանէին ի ծառ կամ ի բարձրաւանդակ տեղի ինչ։ Այլ և կանայք նոցա կախարդք էին, և զամենայն ինչ հմայէին, և առանց հրամանի կախարդաց և դիւթից՝ ոչ երթային ի ճանապարհ ուրեք, բայց նոքա հրամայէին։

Այլ և խօսք նոցա խժականք անծանօթք ի մէնջ[3].

1. Նոյին և յոգնաբար Նոյեան նշանակեն աւագ մարդիկ, իշխանք։
2. Իրենց քուրմերն կամ կախարդքն էին խօսողքն։
3. Մողղալ կամ Մունկոլ Թաթարաց բարբառով են այս անուանքս, որոց չիտակն կամ ծուռը յանձնեմք գիտողաց։

քանզի կոչէին զանունն Աստուծոյ՝ Թանգրի, և զմարդն՝ էրէ, և զկին՝ եմէ ափճի. և զանուն հօր՝ էչքա, և զմօրն՝ աքա, և զեղբայրն ադա, և զքոյր՝ աքանձի. և զգլուխ՝ բիրօն. և զաչս՝ Նիդուն. և զականջս՝ չիքին. և զմօրուս՝ սախալ. և զերեսս՝ յիզ-Նուր, և զբերանն՝ ամահ. և զատամն՝ սիդոնն-սխուր. զհացն՝ օրմաք. և զեզն՝ օքար. և զկով՝ ու-Նէն. զոչխար՝ ղոյնա, և զգառն՝ դուզղան, և զայծ՝ իմամ. և զձի՝ մօրի. զջորի՝ լուսամ. զուղտ՝ բամա. և զշուն՝ Նօխա. և զգայլ՝ գինա. և զարջն՝ այգգոս (այու). և զաղուէս՝ ճուներա. և զնապաստակն՝ թօրշղա–թուշլա. և զհաւ՝ թախեա. և զաղաւնին՝ քօքուչին. և զարծիւ՝ բուրքուշի–ղուշ. և զջուրն՝ ուսուն. զգինին՝ տարա-սու. և զծով՝ Նաուր-տանգըզ. և զգետ՝ մօրան–ուլան-սու. և զթուր՝ խօլոու. և զաղեղն՝ Նմու. և զնետն՝ սմոս. և զթագաւորն՝ մէլիք. և զպարոն՝ Նուինն. և զմեծ պարոն՝ էքա–Նուինն. և զերկիր՝ էլ իրկան. և զերկինք՝ զօգ. զարեգակն՝ Նարան և զլուսին՝ սարա. զաստեղս՝ հուտուտու-սարղա. զլոյս՝ օտուր և զգիշեր՝ սոյնի. և զգրագիր՝ բիթիքչի. և զսատանայ՝ բարաքուռ–էլէպ: Եւ զայլ այսպիսի խժական անուանս, զոր ի բազում ամաց մեզ անծանօթ՝ իսկ այժմ ակամայ ծանուցեալ:

Եւ գլխաւորք՝ երեւելիք, որք յառաջադէմք էին՝ այսոքիկ են. առաջին մեծ՝ որ գլուխ և հրամանատուն էր ամենայն զօրուն՝ Չարմաղան Նուինն, այր իրաւարար և դատաւոր. և որ աթոռակիցք էին նորա՝ Իսաւր-Նուինն, Ղուրուշն-Նուինն, Տուրուծ-Նուինն՝ և Ջաղատայն՝ որ զօրագլուխն էր զօրուն, զոր սպանին Մուլեհիդքն[1]. և այլ բազում գլխաւորք էին և անթիւ զօրք:

1. Մուլհեդք, արաբերէն՝ միւլհիտ, կապաշտք կամ աղանդաւորքն էին:

# ՅԺԵ

## ԹԱԹԱՐՔ ԸՍՏ ՎԱՐԴԱՆԱՅ ՊԱՏՄՉԻ[1]

Ծնչեաց բարկութիւն Տեառն՝ ճանճուն[2] արեւելեան հիւսիսայնոյ, օտար և անընտել ազգին որպէս ասեն՝ Թորգոմազանք[3] զարմին Հագարու. և հողմով անօրէնութեան մերոյ ած զնոսա մինչեւ առ մեզ, ըստ նախասես մարգարէութեան նախնի սուրբ հօրն մերոյ Ներսէսի արտասուապատում ողբոցն, զոր լալով նախաձայնեաց՝ զկորուստ հօգեւոր երկանցն իւրոց ծննդոցս, զոր ինչ կրեցաքս յազգէն Նետողաց, զորոց զանուանսն կոչէ Սուր և բերեւ, զի թերեւս Թաթարն սուր և թեթեւ ասի ըստ լծորդաց փոփոխման, և կամ տուր և տար, որ է Տաթար. քանզի հարին անյագապէս և տարան աներկիւղապէս զորդիսն Սիոնի՝ ի ստրկութիւն գերութեան. և ասէ զնոսա Սուրբն Ներսէս ի Թեացորդացն Հագարու. և Ասորիք ասեն զնոսա Թորգոմեանս, յայտ է՝ խառնեալ ազգին Գովգայ որ ի Թորգոմայ՝ ընդ զարմն Հագարու, որք ունին զՍկիւթեայ մասն աշխարհի. որ սկսանի յԱթլ գետոյ և ձգի առ Եմաւոն լերամբն, ուր բնակեալ են ազգք քառասուն և երեք, որք խուժական անուամբ

1. Հաւանօրէն հռչակաւոր Վարդան պատմիչն է գրող բանիս, ի վերջաբանի թարգմանութեան Միխայելի Ասորւոյ պատմութեանն։

2. Մարգարէից ըստ ծն յիշէ, որ Ճանճիռն՝ այսինքն մեծ կամ խայթող ճանճ կ՚անուանէին զհրեայք նեղացնող ազգերը։

3. Թուրք և Թորգոմ անուանց նմանութենէն ոմանք ի Թորգոմայ համարին զԹուրքս, ոմանք այլ Աբրահամ նահապետի Ագար կնոջ որդիէն, որ է Իսմայէլ, յորմէ Հագարացիք. բայց չեն ստոյգ։

կոչին յիւրեանց լեզուս՝ և գլխաւոր նոցա՝ փուշխ[1] անուանի. և անուն միոյ ազգին Թուղարք սաի, զոր կարծեմք այս են Թաթարքս. և որպէս լուաք յոմանց ի նոցանէ, եթէ ելին առաջինք նոցա ի Թուրքաստանէ աշխարհէ, և մեկնեցան ի կողմ ինչ արեւելեայ, և կային աղքատութեամբ ի գործս աւազակութեան և յափշտակութեան, և պաշտօն ինչ ոչ ունէին, բայց ընդ արեգակն զարմանային, և ի պատճառս հմայութեան ունէին պատկերս ինչ թաղեալ, զոր տակաւին կրեն ընդ ինքեանս. և զկնի ժամանակաց անցելոց՝ ոմանց ի նոցանէ զգայուն արանց՝ նեղեալ ի թշուառական կենաց իւրեանց, կոչեցին վերկնաւորն Աստուած, որ զամենայն ինչ արար՝ յօգնականութիւն անձանց. և ուխտեցին նմա ուխտ և ելին ի վերայ քաղաքի միոյ փոքու, և յափշտակեցին զնա ի տերանցն, և բնակեցան անդ. և յայնմանէ ուժ առեալ տիրացան երկրին, կոչեցին և յերկրէ իւրեանց թիկունս. և զօրացան ի վերայ Պարսից, և առին զիշխանութիւն նոցա. ուսան և ի մոգուց անտի կախարդութիւնս, և տուեալ հրամանս ի դիւթաց անտի, եթէ տուեալ է նոցա յԱստուծոյ զաշխարհ ամենայն, ելցեն վստահութեամբ և ժառանգեսցեն զնա: Եւ չէ ինչ զարմանալի, զի Նաբուգոդոնոսոր արքայ Բաբելացւոց հմայիւք ել յԵրուսաղէմ, և մատնեաց Տէր ի ձեռս նորա, և զԿիւրոս Պարսից արքայ՝ օծեալ իւր կոչէր Աստուած, և հրաւիրէր ի վերայ Բաբելոնի. նա և ինքեանք խոստովանին զամենայն ինչ Աստուծոյ առնել, և զինքեանս սորին հրամանաւ ասեն եկեալ:

Արդ, հաւատացեալ նոցա հրամանի իւրեանց երեւմանն՝ եղեն նոքա երեք բաժին ընտրութեամբ իւրեանց թագաւորին՝ զոր Ղանն կոչեն. առաջին մասն գնաց ի կողմն Հնդկաց, և մասն երկրորդ չոգան առ անապատօք հիւսիսի. և երրորդ բա-

1. Գրուի և Բ տառիւ, Բուշխ:

ժինն ընդ մէջ Պարսից աշխարհին՝ եկն մինչեւ առ մեզ։ Եւ ասեն թէ երեք էին գլխաւորք, և մինն բարբարոս քան զերկուսն, զոր Ջարմաղանն կոչէին. որք զկնի բազում աշխարհաց աւերման և կոտորման՝ նստեալ ի խորհուրդ, զոր ղուռուլթայ[1] կոչեն, և ասացեալ Ջրմըղանին թէ բաւական է աւերս և կոտորուածս, յայսմ հետէ զհնազանդեալսն մեր մի՛ ջնջեսցուք իսպառ, զի մի՛ բարկասցի Աստուած։ Իսկ երկրորդ գլխաւորքն հակառակեալք ընդ նմա՝ ասացին, թէ ոչ է պարտ մեզ ապրեցուցանել և ոչ զոք, որովհետեւ յաղթող մեզ Աստուած։ Եւ տրտմութեամբ ննջեցին զգիշերն այն. և յայնմ գիշերի մեռան երկոքինն որ զանողորմութիւն կամէին, և զարմացան զօրքն և հաստուցին զբանն առ զանն. և առաքեաց հաստատեաց զկամս Ջաղըրմանին, օրինակ խնայել ի հնազանդեալսն, և դնել ի ներքոյ հարկի. և զնա միայն հաստատեաց ի գլխաւորութիւն, զի այն է ասէ կամք Աստուծոյ. վասն որոյ և կան ի նոյն մինչեւ ցայսօր։ Իսկ զժամանակ ելանելոյ նոցա ասէ մեծն Ներսէս, եթէ զկնի իմոյ վախճանիս յորժամ անցանէ եօթն հարիւր[2] ամ սկսանի այս լինել. և արդ, է ըստ վճռի Սրբոյն՝ յիսուն ամ զօրանալոյն նոցա յաղթութեան. և յորմէ հետէ մտեալ են ի յարեւելեան աշխարհն Հայոց՝ քսան և ութ ամ է. և զոր ինչ գործեցին ապականութիւն երկրին և տապալումն քաղաքաց և դղեկաց և աւեր եկեղեցեաց, և մահս ազգի ազգիս և գերութիւնս, և թէ որպէս յետ այնորիկ հաշտեցան ընդ Միացորդսն ի ձեռն իշխանաց աշխարհին, և արարին խնամութիւնս,

1. Մէկ տեղ գալով խորհուրդ ընելն։

2. Եթէ առայգ ըլլար գուշակութիւնն՝ ոչ 700 այլ 900ի չափ տարի պէտք էր Ս. Ներսեսի մահուանէն (373) մինչեւ Թաթարաց մտնելն ի Հայս. առաջին թիւն (700) աւելի յարմարի Սելճուկեանց արշաւանաց ի ԺԱ դարու։

և Միացեալ եկեղեցեացն և եկեղեցականացն դիւրութիւնս, և ազատ կամօք կալ ի կրօնս իւրեանց․ սակայն անաչառապէս պահանջումն հարկաց ճշտիւ և անխնայապէս, ըստ գլխոց արանց և անասնոց․ բայց ի մանկանց եկեղեցւոյ և ամենայնի որք զձեւ աղօթականութեան և զկարգ ունիցին։ Զայսօսիկ զամենեսեան գրեալ է լիով ի տեղիս տեղիս․ և մեք մի՛ չփոթեսցուք զո՟ն չարագրոցն կարգի, որ յատուկ խնդրէ հատուածս և պարզումն ժամանակաց և հաւաստութիւն ի տեսիլ աչաց գործելոցն։ Սակայն զյոլովս տեսաք աչօք մերովք ի նախաձայնեալ աղետից սուրբ նահատակին Ներսէսի․ և մեր իսկ տեսեալ զյոլովութիւն չարեաց նոցա, և կացեալ ի գերութեան զաւուրս ինչ․ զեկեղեցիս մեր նսեմացեալ, զսեղանսն սուրբ կործանեալ, զմատեանս աստուածայինս այրեցեալ և առ ոտն կոխեալ, զպաշտօն սրբութեան և զքրիստոսական նշանսն անարժանից ձեռամբ շօշափեալ և նախատեալ, և յանարգ պէտս վարեալ․ զաշխարհս մեր անապատացեալ, զքաղաքս բնակութիւն լեալ գազանաց։ Քանզի լցան լերինք և անապատք մեր անզերծ փախստէիւք, և դաշտք՝ դիակայտք ոսկերօք կոտորելոցն․ անդաստանք մեր և հովիտք ոռոգեցան արեամբք, և կերաք մնացորդքս զհասկ անընդեռոն այնպիսի արտորայից։ Ազատքն մեր ի ծառայութիւն իջին, և փափուկքն մեր անըմբերելի չարչարանս․ բարձունք մեր խոնարհեցան, և փառաւորքն մեր յանարգութիւնս ընկճեցան․ անուանիքն հովասուն լերանց՝ խորշակահարք եղեն յարեւու․ կուսանքն մեր՝ օտարաց եղեն, և երիտասարդքն մեր՝ հովիւք և կուսպանք՝[1] այլասեռից․ կարօտացաք ողբոցն Երեմիայի, և կրեցաք զպատուհասն հնոյն Իսրայէլի․ տղայք մեր որբք եղեն, և մարք նոցա այրիք, որդիքն վերնոյն Սիոնի զուգակշիռք ոսկոյ՝ զքարի հարան իբրեւ զանօթ անպիտան․ ցրուեցաւ

1․ Գրաստ պահողք։

հօտն Տեառն. ճապաղեցան գաւիթք արօտի նորա. վաճառականք եղեն յազգս հեռաւորս գնեալքն արեամբն Քրիստոսի. բաժանեցան ծնունդք ի ծնողաց, մեկնեցան հարազատքն ի միմեանց, հեռացան բարեկամք ի սիրելեացն. դարձաւ տօնն մեր ի սուգ, և ուրախութիւն մեր յարտասուս, և ոչ գոյ թիւ աղաղակի մերում, զի չիք համար չարեաց մերոց։

---

## ՑԺԶ

## ԹԱԹԱՐՔ ԸՍՏ ՄԱՂԱՔԻԱՅ ԱԲԵՂԱՅԻ

Խառնեալ ի միմեանս երեք ազգս այս, Հագարու. Կենդուրայ[1] և Եսաւայ, և ծնաւ ի սոցանէ ծնունդ այլանդակ ապերախտութեամբ չարին[2], և անուանեցաւ Տաթար, որ ասի սուր և թեթեւ։ Իսկ սուրբն Ներսէս[3] ասէ գտա ի մնացորդացն Հագարու, խառնեալ ընդ ազգին Գոմգայ՝ որ ի Թորգոմայ, որք ունին զԱկիւրեայ մասն երկրի, որ սկսանի յԱթլ գետոյ առ Իմաւոն լերամբն ձգեալ մինչեւ ի ծովն Կազբից. ուր բնակեալ են ազգք քառասուն և երեք[4], որ խժական անուամբ կոչին խուժ և դուժ, այսինքն՝ ազգ առանձնականս. և գլխաւորին ամենեցուն ասի Բուշխ. և յազգացն այնոցիկ միուոյն ասի Բուղարք, զոր կարծեմք՝ թէ այս է որ ասին Թաթարք[5]։ Եւ որպէս յոմանց ի նոցանէ

1. Կին Աբրահամու, յետ մահուան Սառայի։
2. Ըստ ռամկաց աւանդութեան ասէ Մաղաքիա. ո՜րքան տարբեր ի Կիրակոսէ։
3. Մեծին Ներսիսի Պարթեւի ընծայուած անվաւեր տեսիլն կամ գրոյցք։
4. Ըստ Խորենացւոյ կոչուած աշխարհագրութեան։
5. Վարդանայ գրածին հետեւած է Մաղաքիա։

յուսաք, եկին ի Թուրքաստանէ աշխարհէն իւրեանց ազգն այն, և մեկնեցան ի կողմ ինչ մասին յարեւելեաց, և կային անդ ուսազակութեամբ, վայրաբնակք և յոյժ աղքատք. և բազում ժամանակս պաշտօն ինչ ոչ ունէին, բայց միայն պատկերս Թաղեայ[1], զոր տակաւին կրեն ընդ ինքեանս ի պէտս կախարդութեան: Բայց ընդ արեգակն զարմանային՝ որպէս ընդ զօրութիւն ինչ աստուածային. և ապա յանկարծակի ուշաբերեալ, յոյժ նեղեալք ի թշուառական և աղքատ կենացն, կոչեցին յօգնութիւն զԱստուած՝ զարարիչն երկնի և երկրի, և ուխտեցին նմա յուխտ մեծ՝ կալ ի հրամանս նորա: Որոց երեւեալ հրեշտակ հրամանաւն Աստուծոյ, ի կերպարանս ոսկեփետուր արծւոյ, և կոչեալ ի ձայն և ի բարբառ նոցին լեզուի՝ զգլխաւորն նոցա, որոյ անունն ասիւր Ջանկըզ, և նա երթեալ կացեալ հանդէպ արծուակերպ հրեշտակին հեռագոյնս և ի բացեայ իբրև նետընկէց մի, և ապա արծիւն ըստ նոցա լեզուի ասաց զամենայն հրամայեալսն յԱստուծոյ:

Եւ այս էր օրէնքն Աստուծոյ, որ եդեալ է ի նոսա, զոր անուանեալ են իւրեանքն Եասախ[2]: Առաջին այս, որ սիրեն զմիմեանս. երկրորդ, մի՛ շնալ. մի՛ գողանալ. մի՛ սուտ վկայել. մի զոք մատնել. պատուել զծերս և զաղքատս. և թէ գտանի ի նոսա յայսպիսի մեղանաց՝ սպանցին գործողքն մեղացն: Եւ մինչ զայս ուսոյց հրեշտակն, ապա կոչեաց զանուն գլխաւորին Ղայան, որ և ասացաւ նմա Ջանկըզ ղայան. և ասաց հրեշտակն՝ տիրել ի վերայ բազում աշխարհաց և գաւառաց, և բազմանալ նոցա անթիւ և անհամար բազմութեամբ. որ եղեւն իսկ. և կատարեցաւ ասացեալն ի Տեառնէ, որպէս ի ձեռն մարգարէին սպառնայր Աստուած ասելով. թէ, «Բաժակ է ի ձեռին իմում Նաբուգոդոնոսոր,

1. Թուրք. քէչէ. փռ. Feutre.
2. Օրէնք, մանաւանդ արգելք:

և ում կամիմ արրուցանեմ զնա»։ Այսպէս և այլադէմ և գազանաբարոյ ազգս այս, ո՛չ միայն բաժակ, այլ և մրուր դառնութեան հասեալ ի վերայ մեր, վասն բազում և ազգի ազգի մեղաց. զոր հանապազ բարկացուցանեմք զարարիչն Աստուած ի գործս մեր. վասն որոյ զարթոյց զնոսա Տէր բարկութեամբ՝ առ ի խրատել զմեզ, վասն ոչ պահելոյ (մեր) զպատուիրանս նորա։

Իսկ յորժամ իմացան այլադէմ և գազանաբարոյ ազգն այն, թէ կամք է Աստուծոյ տիրել մեզ ի վերայ երկրի, ապա այնուհետեւ զօրաժողով լեալ գնացին ի վերայ Պարսկաց, և առին ի նոցանէ փոքր քաղաք մի. և Պարսիկքն զօրացեալ առին դարձեալ զիւրեանցն և զնոցայն։ Եւ ապա դարձեալ ձայն ձգեցին ի յազգն իւրեանց՝ ուր և կային բնակեալ ազգն Նետողաց[1], և այլ եւս դարձեալ յարձակեցան ի վերայ Պարսից և յաղթեցին, և առին զքաղաքն և զամենայն ինչս նոցա։ Եւ ի վերայ այսր ամենայնի դարձեալ հրաման առին ի ղանէն իւրեանց՝ որ կոչեցաւ Չանկըզ ղան, և յարձակեցան ի վերայ աշխարհին Աղուանից և Վրաց. և զայս լուեալ թագաւորն Վրաց՝ զհամբաւ գալոյ Տաթարին, ել ընդդէմ նոցա վաթսուն հազար հեծելով, ի դաշտն մեծ՝ որ կոչի Կոտման[2], որ կայ առաջի Ցերռնաւականն բերդին. և յորժամ խմբեցաւ պատերազմն, ազդեցութեամբն սատանայի՝ որ հանապազ հակառակ է նա ճշմարտութեանն, տէրն Մանասապազմոց՝ Համիդոլա անուն, յաղագս քինու ինչ՝ չլատեաց զձին Աթաբակ Իւանէի[3]. զի յայնմ ժամանակի մեռեալ էր թագաւորն վրաց Լաշէն[4],

1. Ըստ վերոյիշեալ Ս. Ներսեսի գրուցից՝ Նետողք կոչուեցան Թաթարք, իրենց գլխաւոր զէնքն աղեղ և նետ ըլլալուն։

2. Հայ-Աղուանից կամ Արցախ նահանգի մէջ։

3. Որ էր սպարապետ Վրաց, յետ մահուան իր եղբօր Սարգսի։

4. Սովորաբար Լաշա կոչուի։

և մնացեալ էր որդի մի նորա Դաւիթ անուն, և դուստր մի Ռուզուքան[1] անուն. և անկեալ էր Դաւիթն ի ձեռս Հոռոմոց[2] սուլտանին, և կայր ի բանտի. և քոյր նորա Ռուզուքան ունէր զթագաւորութիւնն, վերակացութեամբ Իւանէի՝ որ Աթաբակ անուանեցաւ. իսկ յորժամ եհաս համբաւ գալոյ Տաթարին՝ ըստ վերագոյն ասացելոյդ, յայնժամ առեալ ի տանէ զհեծեալ թագաւորութեանն Վրաց, և եկն ի Գագ[3], առ մեծ և իմաստուն իշխանն Վարհամ որդի Պլու Զաքարէին, և առեալ զնա զօրօք իւրովք՝ գնաց ընդդէմ Տաթարին. և առեալ կորովի և մեծ իշխանն Վարհամ զաջոյ թեւն և Իւանէ զձախոյ. և յորժամ յարձակեցան ի միմեանս, այս ոճիրս գործեցաւ՝ որ գրեցաւ, ի ձեռն անիծելոյն Համիդողայ։ Իսկ յորժամ ետես ազգն Նետողաց զայնպիսի երկպառակութիւն ի նոսա՝ յայնժամ զօրացեալ յարձակեցան ի վերայ Վրաց հեծելոյն, և յանխնայ կոտորեցին զնոսա։ Իսկ մեծ իշխանն Վարհամ՝ տէրն Գագայ առեալ զաջոյ թեւն, և մինչ յերեկոյ գնաց կոտորելով զՏաթարն յանխնայ յարձակմամբ, մինչեւ առ հասարակ լցաւ դաշտն Սագամայ[4] կոտորեալ Տաթարով. և ինքն Վարհամ իշխանն Գագայ՝ իբրեւ լուաւ զկոտորումն զօրաց թագաւորութեանն, յայնժամ մեծապէս տրտմեալ և թողեալ զգործ պատերազմին՝ դարձաւ յամուրս բերդին իւրոյ, որ կոչի Քարհերձ։ Եւ այս եղեւ ի թվականութեան Հայոց վեց հարիւր վաթսուն և երեք[5]։ Եւ երից ամաց

1. Ոմանք Ռուզուդան գրեն։
2. Հոռոմք իմանալու է զՓոքր Ասիա։
3. Դաշտ և բերդ հիւսիսակողման Արցախոյ՝ յիշեալն ի շարականի Ս. Սարգսի։ Տես, երես 391. ծանօթ 1։
4. Սագամ կամ Զակամ գետ մի է, օժանդակ Կուր մեծ գետոյ, և նոյն անուամբ գաւառ։
5. Թուականն պէտք էր ԸԱալ աւելի ուշ, նա և քան զ՚675 (1224)։

անցելոց դարձեալ եկն Տաթարն, և էառ զԳանձակ Շահաստան, և յանխնայ կոտորեաց և գերեաց, և դարձաւ յերկիրն իւր բազում աւարաւ և գանձիւք։

Իսկ եթէ զի՞նչ նմանութիւն ունէր առաջի Տաթարն[1], ասասցուք և զայն եւս. զի ոչ էին իբրեւ զմարդ առաջինքն՝ որ եկին ի վերին երկիրն[2], այլ էին աճազինք տեսողաց և անպատմելիք. զի գլուխն մեծ էր իբրեւ զգոմիշու, աչքերն նեղ իբրեւ զճագու[3], քիթն կարճ իբրեւ զկատուի, դունչն մռուզ[4] իբրեւ զշան, մէջքն բարակ զի՞նչ մրջիման, ոտքերն կարճ զերդ զխոզի. մօրուս բնաւ իսկի չունէին, տօլար[5] ունէին զերդ առիւծի, ձայնն ճիչող քան զարծուի. ուր չի պատմիր՝ անդ գտանուիր[6]։ Կանայքն իւրեանց ունէին զդականի սոցլոցլ[7] ի վերայ նալի ծածկեալ չարագուրով դիպակի. երեսքն զայն պեռիքի, սպանմամբ դեղով ծեփէին[8]. իժի նման ծնանէին, և գայլապէս կերակրէին. մահն ի նոսա իսկի չերեւիւր, վասն այնոր երեք հարիւր տարի ապրէին[9]։ Այս ցեղ էին առաջինքն՝ որ եկին յաշխարհն վերին. և հաց ամենեւին չուտէին։

1. Առաջին եկող Թաթարքն, ինչպէս զիրենք առաջին անգամ տեսողաց երեւէին։
2. Հայաստանի հիւսիս-արեւելեան կողմն։
3. Հաւու կամ թռչնոյ ձագ։
4. Ի ձեռագիրս կայ և մռռղ գրուած. բայց թուի մռուզ, զի բուսոց բարակ մասերն՝ մազիկք կոչուած գտուի.
5. Ցէվլէ, թուրք. առիւծի բաշ կամ մազ նշանակէ։
6. Առակաւոր խօսք մի է, իբր աննման։
7. Սուր երկայն գլխանոց, վրան այլ վարագուրի պէս ձգուած դիպակէ (ազնիւ լաթէ) ծածկոց կամ քող։
8. Երեսքն... ծեփէին. այս երկու բառից միջից գրուածն անստոյգ կամ սխալ գրուած է. զայն թերեւս Զայն ըՍայ։ Պեռիքի ի՞նչ է։
9. Կիրակոս այլ երկարակեաց ըսաւ զանոնք, բայց ոչ այդչափ նահապետական կեանք։

# ՅԺԷ

## ԹԱԹԱՐՔ · ԸՍՏ ՍՏԵՓ · ՕՐԲԷԼԵԱՆ (ԿԶ)

Յետ մետասան ամի (ՈՀԴ թուին, այսինքն ի ՈՁԵ, 1236) զարթոյց Տէր յարեւելից զազգն Նետողաց՝ որ Մուղալք կոչէին, և ըստ գեղջկացն՝ Թաթարք, որ ի Չին և ի Մաչին աշխարհէ, անդր քան զԽաթայստան[1]. անաստուածք և անօրէնք, բայց բնութեամբ օրինացն զարդարեալք. ատեցողք աղտեղի գիջութեանց և ամենայն պէսպիսակոր գործոց. արդարադատք առ միմեանս, միամիտք և հնազանդք տեառնորդի իւրեանց, իրաւարարք և իրաւադատք. իսկ բարուք՝ աղքատք և ընչաքաղցք. նեղիչք և կեղեքիչք մարդկան. պատկերով յոյժ գեղեցիկք[2] և լերկք ըստ կանացի դիմաց. և ծանօթք քրիստոսեան հաւատոյ, և յոյժ սիրողք քրիստոնէից. յաղեղունս՝ կորովիք[3], և յամենայն պատերազմունս յոյժ հնարաւորք: Բայց յետոյ թողին զբնական բարս իւրեանց, և ելին ի հայրենի սահմանէն զոր ունէին, մտին ընդ մահմէտի օրինօքն, և ուսան զամենայն պղծութիւնս և անկարգութիւնս, և անպատակ կեանս վարէին:

Ահա սոքա բաժանեալ յերիս տապաճ՝ գնաց մինն ընդ արեւելից հիւսիսով յաշխարհն Խազրաց և Սուտաղաց[4], Ըռուսաց և Չէրքէզաց և Բուլղարաց. և տիրեցին նոցա մինչ ի սահմանս Ալամանի և Աե-

1. Խաթայի կոչուէր այն ժամանակ գլխաւոր քաղաք մի Չինաց, հիմակուան Փէքինի մօտ:

2. Շատ տարբեր նկարագրեն ուրիշ պատմիչք անոնց կերպարանքը. տեսանք ինչ ըսին Կիրակոս և Մաղաքիա:

3. Քաջ աղեղնաւորք, ուժով նետ արձակող:

4. Ղրիմու Սուտաղ լեռը և քաղաքը յիշեցընէ անունս:

կրաց՝ որք են Փռանգք[1]. որոց գլխաւորին անունն Բաթուզ ղան։ Իսկ միւս կողմն գնաց առ Հնդկաստանօք, որք տիրեցին մեծ մասին Հնդկաց և հնազանդեցին զՍնդորս և զՍողոզս[2] և զԽորազմիկս և զԴերմիկս, և առին զԱշամալեխ և զԲէշպալեխ[3], և զամենայն կողմանսն զայն. որոց գլխաւոր՝ Հուքաթար ղան[4]։ Իսկ միւս կողմն եկին ընդ մէջ աշխարհիս, անցեալ ընդ մեծ գետն Ջահուն և ընդ ջուրն՝ զոր ինքեանք Ամու մուրան կոչեն. և պտուտկեալ փոթորկեալ հասին յաշխարհս մեր, և առ հասարակ տիրեալ հնազանդեցին զամենայն տեղերս. կոխեցին կործանեցին զամենայն թագաւորութիւնս։ Առին զԽորասան և կործանեցին զմայրաքաղաքն նոցա զԲալխ[5] և Հրէ, զՄավր և զՆշաւաւորն, զՏուսն և զԴամղանն[6]. առին զԽուժաստան, ըզԼուրաստան, զՊարսկաստան, զՔրդստան, զԱրաբստան. առին զԴիարպաքր՝[7] որ է Ասորեստան, զՇոշտար[8] և զՔրման, զԲաղդադ և զԲասր[9] մինչ ի Խորմզ քաղաք[10]։ Առին և զԱտրպատական, զԱռան

1. Յայտնի է Գերմանացւոց Ալեման կոչումն. Մաճառաց այլ Ուռնգար կամ Հունգարացի, որոց ծագումն շատ օտար է ի Փռանգաց։

2. Սովորաբար նոյն (Մողոլաց կամ) Թաթարաց ցեղէն համարուին այդ երկուքն։

3. Հեթում Ա. թագաւորին ճանապարհագրութեան մէջ յիշէ Կիրակոս այս քաղաքներս. տես յետոյ զՅօդուած 320։

4. Կամ Ուխադա, որդի և յաջորդ Ճինկիզ ղանի՝ ազգապետին Մողոլաց։

5. Բնավայրն Պահլաւկաց։

6. Պարսից անուանի քաղաքներ, երկրորդն Նիշապուհ անուամբ շատ ծանօթ է մեր հին պատմչաց։

7. Տիարպէքիր, Ամիդ քաղաքի կողմերն։

8. Կամ Շուշտր։

9. Ծանօթ Պարսից մեծ քաղաքն։

10. Որմուզ, Հիւրմիզ, Պարսից ծոցոյն վրայ բանուկ նաւահանգիստ վաճառաշահ։

և զՀայաստան, զՎիրս և զՀոռոմս, մինչև ի Մե-կիդրիա և ի Գանգրա[1] և ի Զմիւռնիա Եփեսացւոց, և զԿիլիկիա, մինչ ի ծովն Ովկիանոս և ի ծովն Պոնտոսի՝ ի Տրապիզոն քաղաք։ Նաև և զտունն Շամայ[2], զԲզուհա և զԽլաթն՝ մինչ ի Համս և ի Համայ[3]։

Բայց զառաջինն եկն յաշխարհս Չարմաղան[4] և Չաղաթայն[5], Բայջուն և Ասլանպն և Ղատաղան. և առին զաշխարհս ի ՈՁԵ (1236) Թուականին։ Եւ յետոյ եկն Հուլաւու ղանն՝ թոռն մեծի Չանկըզ ղանին. և զմնացեալսն յառաջնոցն էառ, զԲաղդադ քաղաք, յորում և եսպան զխալիփայն ի ՉԷ (1258) Թուին, զամ մի պաշարեալ, և գնաց մինչ յԵրուսաղէմ. էառ զՀալպ որ է Բերիա և զԴիմըշխ՝ որ է Դամասկոս, և զՊաալպակ որ է Արեգ[6]. էառ և զմեծն Անտիոք, որք կամաւ հնազանդեցան. էառ և զԵրուսաղէմ ի Մսրացւոյն[7]. և այնպէս բազում և անհուն քաղաքթինս եցոյց։ Եւ զի յոյժ սիրող էր քրիստոնէից՝ վասն որոյ ամենայն ազգք հաւատացելոց կամաւ հնազանդէին նմա և յոյժ ձեռնտու և օգնական լինէին։ Եւ արդ այսքան առ այս։

1. Փոքր Ասիոյ ծանօթ քաղաք, որ հիմայ Զանկըրը կոչուի։
2. Այժմեանքն Դամասկոսի սահմաններն։
3. Ամենն այլ ծանօթ քաղաքք Ասորւոց երկրի։
4. Կերպ կերպ ծամակելով այս անուն գրուի Չարմաղան, Չուրմաղան Չաղըրման, և այլն։
5. Չաղաղա անդրանիկ որդին էր Ճինկիզ ղանի, և իր անուամբ կոչուեցաւ իր տիրած ցեղն և երկիրն։
6. Արեգ նշանակէ Արեւու քաղաք. յունարէն Հելիոպօլիս. եղեւոյն արեւապաշտեցն համար այսպէս կոչուէր։
7. Եգիպտոսի սուլտանէն։

# ՅԺԸ

## ԹԱԹԱՐՔ ԸՍՏ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՅԻՇԱՏԱԿԱԳՐԱՑ

### Ա

Յամս Հայկազեան թուաբերութեան տասնամերին՝ յորում էր թիւ համարոյ թուականին ՈՁԵ (1236), որ եղեւ տառապանաց բարկութիւնն յաշխարհն արեւելից, և յարեաւ ազգ մի գազանաբարոյ և անողորմ, և եհեղ բազում արիւն. Եւ կերպարանն այսպէս. լայնաթիկունք և հաստապարանոցք, և գլուխն մեծ և հեր գլխոյն ողողորդ և ձարբ[1], և աչքն նեղ, և ճակատն լայն, և քիթն տափակ, և մօրուքն քօսակ[2]։ Բայց մարդոյ, և քան զգազան անողորմ եկին ի վերայ մարդոյ. և բնակչին անուն նորա խա-րաթաթար. Թէ կերակուր գտանէր՝ ուտէր, և թէ չգտանէր՝ ոչ քննէր և ոչ խնդրէր կերակուր. և այնչափ անողորմ էր՝ որ թէ հրեղէն լեզու ստա-նամ՝ ոչ կարեմ պատմել զանցս չարչարանացն, որ ետ ըմպել զբաժակն բարկութեան՝ Այրարատեան գաւառին և Անոյ[3] եւս առաւել. զոր իմ է տե-սանել զանձնարին, ողբն և զաղէտ տարաժամանացն. զի զբազում քաղաքս և զբերդերս էառ և հիմն ի վեր տապալեաց. զայր և զկին գերեաց և զտղայս նոցա առաջի նոցա զքարի հարոյր[4]. զոմանս ի գիրկս մօրն սրախողխող սպանանէին, և զեղբայրն եղբօր սպանանել տային. զոմանս քարկոծէին, զո-

1. Կարծր և ցցուած մազ։
2. Թուրքերէն քէօսէ, կարճ. յորմէ և հայերէն Գօշ, որպէս կոչուի Մխիթար։
3. Անի քաղաքին առումն յիշէ։
4. Փոխանակ ըսելու հարկանէր, զարնէր։

մանս ի հուր ընկեցեալ այրէին. զաղափար[1] գաուինքն յոտս երիւարացն ընկեցեալ ի գրկաց մարցն՝ կոխան արարին։

## Բ.

Յամի վեցհարիւրերորդի ութսներորդի երկրորդի Հայոց տոհմիս տումարի՝ գրեցաւ անուշահամ և աստուածախօս կենաց կտակս, որ է Աւետարանութիւն Տեառն մերոյ և Փրկչին Յիսուսի Քրիստոսի, ձեռամբ Յակոբայ սուտանուն կրաւնաւորի և անարհեստ գրչի, ի խնդրոյ սրբասէր քահանային եպարապետի. յաշխարհիս Կիլիկեցւոց, ի նահանգիս Տարսոնի, առ ստորոտով լերինն Տորոսի, յանմատոյց դղեակս Լամբրոնի, ի փոքրիկ ագարակիս որ Յովանի[2] կոչի. վայրարնակ լինելով ինձ գրչիս ըստ նախնեացն ձայնի, թէ Օտարք և պանդուխտք եմք[3] յերկրի. ի հայրապետութեան Տեառն Կոստանդեայ, և ի թագաւորութեան քրիստոսապսակ և բարեպաշտ թագաւորին Հայոց Հեթմոյ։ Արդ, որք օգտիք ի սմանէ կամ դաղափար առնոյք, յիշեսջիք ի Քրիստոս զստացող գրոցս զեպարապետ աստուածաբնակ քահանայ. զի ստացաւ զսա յարդար վաստակոց իւրոց, ի յիշատակ հոգւոյ իւրոյ և ի վայելս և ի ժառանգութիւն սրբասնունդ պատանւոյն Աշոտայ եղբօրորդւոյ իւրոյ։ Զի և սոքա օտար գոլով յայսմ դաւառէ, զի էին ի Միջագե-

1. Թուի աղ նշանակել, որ ախորժելի է գառանց և անուշիկ սիրունիկ ըսել կ՚ուզէ, կամ իբրեւ աղեօք՝ իրար զիրար գրկած. դժբաղդաբար ձեռագրին վերջէ թուղթն ընկած է։

2. Այս ժամանակ քանի մի անգամ յիշուած է այս տեղս, ուր եզնաւորաց վանք մի եղած է։

3. Գրողին և յիշածներուն պանդխտութեան պատճառն՝ Թաթարաց արշաւանքն եղած է ի Մեծ կամ ի Վերին Հայս։

տաց աշխարհէն. և վասն աստուածատուր ցասմանն՝ որ բարկութեամբ շարժեալ զմարդակերպ գազանսն որ տապալեցին զամենայն աշխարհն Հայոց, և զբազում ազգս մաշեցին ի սուր սուսերի. և սա թողեալ զհայրենի ժառանգութիւն իւր վասն բարբարոսացն երկիւղի, եկեալ պանդխտանայ յաշխարհս Կիլիկեցւոց՝ իւրովք հարազատովքն:

Ընդ նմին աղաչեմ յիշել աղօթիւք ի Տէր զյոգնամեղ և զեղկելի գրիչս և զծնողսն իմ, և զաստուածասէր զբարի զօտրատեկլատն զպարոն Յոշշապն[1], զի հոգւոյ չափ օժանդակ եղեւ ինձ ի պանդխտութեանս իմում, զի պահեսցէ զնա Տէր Աստուած խաղաղութեամբ ի կեանս իւր, և զկնի ելիցն իւր՝ ընդ սրբոց զինուորացն զնա դասեսցէ:

## Գ.

Ի թուիս ՈՁԷ (1238) գրեցաւ գիրքս Դատաստանաց[2] առ ափն մեծ գետոյն որ կոչի Եփրատէս, առ ստորոտ աստուածապահ դղեկիս Հռոմկլայ կոչեցեալ, ի հայրապետութեան Տեառն Կոստընդնեայ. ի չար և ի դառն ժամանակի՝ յորում նշանք երեւելիք եղեն. քանզի մեռաւ երեք սուլտանս, Հոռոմոցն և Շամբին և Մսրայն[3]: Եւ արդ գրեցաւ սա ձեռամբ Բարսղի մեղապարտի և փցուն գրչի, հրամանաւ աստուածապատիւ և առաքելաշնորհ Տէր Մարկոսի արքեպիսկոպոսի, ի վայելումն անձին իւրոյ, և զկնի ելից իւրոց յաշխարհէս՝ անջինջ յիշատակ իւր և ծնողաց իւրոց և եղբարց և ազգականաց իւրոց:

1. Նորալուր անուն, բայց աւելի զարմանալի այս ատեն այդ յոյն զօրավարի կամ մարտկի Մոտքանեշան կոչումն:
2. Մխիթար Գոշի, տես Ցուցակ 297:
3. Ղոնիոյ, Դամասկոսի և Եգիպտոսի:

տր ընդ նմա. և քաջալերէր զնա և ասէր. եթէ, Մի՛ երկնչիր, կարող է ապրեցուցանել զմեզ Աստուած ի հրոյս, որպէս զերիս մանկունսն։ Եւ մինչդեռ բարբառէր բացն՝ մանուկ իշխանին անկաւ ընդ պարիսպն բերդին, և յարեաւ անվնաս. և ի հարցանելն՝ թէ, Ո՞րպէս կաս կենդանի. պատասխանի ետ, թէ Այրն այն զոր ընկեցիք ի հուրն՝ նա եբարձ զիս ձեռօք իւրովք, և ոչ ետ ինձ անկանել յերկիր։ Եւ առժամայն առաքեաց իշխանն, և հրամայեաց հանել զնոսա ի հրոյն. և թոյլ ետ գնալ ուր և կամեցի։ Եւ նորա շրջեալ ընդ բազում գաւառս՝ գնաց ի Հռոմկլայն, առ մեծ կաթողիկոսն Հայոց Տէր Կոստանդին. և նա ուրախութեամբ ընկալաւ զնա մեծաւ պատուով, և ոչ ետ թոյլ երթալ այլ ուրեք[1], և անդ եկաց մինչև փոխեցաւ ի Քրիստոս, և թաղեցաւ ի նմին։...

. . . . . . . . . .

Վկայութիւն Յովհաննու Գառնեցւոյ վասն Սաղմոսաց ստուգագրութեան.

ԶՍաղմոսս Դաւթի՝ մանաւանդ թէ զերգս Հոգւոյն Սրբոյ, այլեայլ աւելի և պակաս նուագեն մանկունք եկեղեցւոյ, ոչ ուսեալ զճշմարիտն և ոչ իմացեալ զճշգրիտն. և այս եղեւ յանհոգութենէ ոմանց և ի սղալագիր գրչաց. իրահամարձակք ոմանք մտայօդ իմացմամբ՝ տարագրեցին զուղիղն և զուղղորդն. նա և բազում անգամ վրիճեն ոմանք՝ ի նուագելն զՍաղմոսս, և այլ ոմանք ծայրաքաղ առնելով՝ բարբանջեն անզեղջ սրտիւ և անխմաստ բայիւք. և ոչ յիշեն զասացեալն ի Դաւթայ, եթէ, Սաղմոս ասացից և ի միտ առից. և զհրամայեալն ի Պաւղոսէ, Սաղմոս ասացից հոգւով և մտօք։ Ամենայն ազգք գրոց երգեն զՍաղմոսն, և զաւանդութիւն սուրբ Հարցն և զանսղալութիւն Սաղմո-

1. Շատ խոհեմութեամբ ըրեր է կաթողիկոսն։

կարգից, առ Թագաւորն Հեթում, գալ տեսանել զնա[1] և զՄանգու ղանն։ Եւ նա երկուցեալ ի նմանէ զայս զաղտագողի այլակերպեալ զինքն՝ վասն ահին Թուրքաց՝ որք տաճկանակիցք նորա էին, զոր Հառամոց[2] սուլդան անուանեն, որում անուն էր Ազառին, զի ոխս մթերեալ ունէին ընդ նմա՝ վասն ձեռն տալոյ նորա ի Թաթարն[3]։ Եւ փութով անցեալ ընդ երկիր նորա՝ յաւուրս երկոտասան՝ եկն ի Կարս քաղաք[4], և տեսեալ զԲաչու-նուինն՝ որ զօրապետ էր Թաթար զօրուն որ յարեւելս, և առ այլ մեծամեծսն, և պատուեալ ի նոցունց՝ զտեղի առ յոտն Արագածու, հանդէպ լերին Արայի, ի գիւղն որ կոչի Վարդենիս, ի տանն իշխանին՝ զոր Քուրդ անուանէին, Հայ ազգաւ, կրօնիւք քրիստոնեայ, և որդիք իւր Վաչէ և Հասան, և կին նորա Խորիշահ յազգէ Մամիկոնէից, դուստր Մարզպանայ, քոյր Աւագ-պէկին և Գրիգորոյ[5]. մինչև բերան նմա ինչ ի տանէ իւրմէ՝ ի պէտս ընծայից և պատարագաց, զոր առաքեաց Հայր նորա իշխանաց իշխանն Կոստանդին, յայնժամ ծեր գոլով, և որդիք նորա[6] Լևոն և Թորոս՝ զոր եթող փոխա-

1. Զինքն, Դաւիթ։
2. Իկոնիոնի (Գոնիա) սուլտան. Ազզէտտին կամ Իզզէտտին Քէյքաւուս։
3. Հեթում դաշնակցեր կամ միաբաներ էր Թաթարաց հետ, իր եղբօր անոնց քով երթալուն առթեն, և Ղանին հրամանաւ ստիպուեր էր սուլտանին՝ դարձնել Հայոց անոնցմէ գրաւած երկիրը։
4. Ծանօթ մեծ քաղաք (Կարս) ի Վանանդ գաւառի Մեծ Հայոց, և հիմայ ամուր քաղաք Ռուսաց ի սահմանի Թուրքաց։
5. Քուրդ և իր ցեղն շատ ծանօթ են ԺԳ–Դ դարուց մէջ, թէ այս կողմերս և թէ Արցախոյ, շատ շէնքեր շինած և արձանագրած են։ Բայց երկու անձինք եղած են անուանի իշխանք այդ կոչմամբ, և ոչ հեռաքժամանակաւ, զորս երբեմն դժուար է որոշել իրարմէ։
6. Հեթմոյ թագաւորորդիքն։

նորդ իւր. զի փոխեալ էր առ Քրիստոս բարեպաշտ թագուհին նորա Զապէլ անուն[1], որ թարգմանի Եղիսաբեթ, այս է Աստուծոյ եօթնեկ. զի որ-պարեւ ըստ անուանն և հանգիստ էր նա կամացն Աստուծոյ, բարեգործ, ողորմած և աղքատասէր, դուստր մեծ թագաւորին Լեւոնի՝ առաջին պսակաւորին: Եւ իբրեւ գիտաց մեծ կաթողիկոսն Կոստանդին՝ եթէ գնաց նա խաղաղութեամբ և դադարեալ է ի Մեծն Հայք, առաքեաց զմեծ վարդապետն Յակոբ[2] զայր բանաւոր և իմաստուն, զոր առաքեալ էին յառաջագոյն վասն սիրոյ և միաբանութեան՝ առ թագաւորն Յունաց Յովհաննէս՝ որ ունէր զկողմանս Ասիոյ[3], և մեծացեալ էր յաւուրսն... Եւ զեպիսկոպոսն Տէր Ստեփաննոս. եկն և Մխիթար վարդապետն, որ լինէր ի Սկեւռայն[4], գնացեալ անդ ի կողմանց արեւելից, և Բարսեղ քահանայ որ դեսպան էր Բաթուին. ընդ նմա իսկ եկեալ էր և Թորոս քահանայ կուսակրօն, և Կարապետ որ դրան երէց էր արքային, հեզ բարուք և գիտնական. այլ և իշխանք յոլովք[5]: Զորս ընդ իւր առեալ արքային՝ չոգաւ ընդ աշխարհս Աղուանից, և ընդ դուռն Դարբանդայ՝ որ է Պահակն Ճորայ, առ Բաթուն, և առ Սարթախն՝ որդի (նորա), որ էր քրիստոնեայ հաւատով. և մեծարեալ

1. Դուստր մեծին Լեւոնի, դեռ նոր վախճանած՝ Հեթմոյ ճամբորդութենէն քիչ առաջ: Անուանն համառօտութիւն է Եղիսաբեթի, որոյ հրէարէն նշանակութիւնը բացատրէ Կիրակոս:

2. Թուի թէ Հռետոր անուանեալ Սսեցի վարդապետն էր:

3. Եփեսոսի կողմերն:

4. Կիլիկիոյ ամենէն անուանի վանքն, յետ կամ զոյգ Դրազարկի: Մխիթար վարդապետն այլ ժամանակին գիտնականաց մէկն էր:

5. Կ'արժէր ասոնց վրայ աւելի տեղեկութիւն ունենալ, զի գուշակուի թէ արժանաւոր անձինք էին:

ի նոցանէ բազում պատուասիրութեամբ, ապա առաքեցին առ ղանն Մանգու՝ ընդ երկայնաձիգ ճանապարհն, յաւելեալ ժամուն կարգաց։ Եւ ելեալք ի նմանէ ի վեց մայիսի ամսոյ և յերեքտասաներորդ մեջլիսի, անցեալ ընդ Ալչիս գետն՝ եկին յԱրն[1], որ է մէջ ճանապարհին ընդ Բաթուն և ընդ Մանգու ղանն. և անցեալ ընդ Երթիժ գետ՝ մտին յաշխարհն Նայիմանեանն[2]. և եկեալ ի Ղարախիթայն[3], և անցեալ ի Թաթարիստան՝ ի չորս հոռի ամսոյ և յերեքտասան սեպտեմբերի, ի տօնի նաւակատեաց խաչի, տեսին զՄանգու ղանն երեւելի փառօք նստեալ, և մատուցեալ զընծայս՝ մեծարեցաւ անուանն ի նմանէ, ըստ արժանեացն։ Եւ կացեալ յօրդուն[4] յիսուն յաւուր, և առեալ նմա հրովարտակ նշանաւոր, զի մի՛ ոք խլեսցէ նեղել զնոսա, և զաշխարհս նորա. և ետ գիր ազատութեան եկեղեցեաց՝ ընդ ամենայն տեղիս։ Եւ ել ի նմանէ յաւուրն յիսներորդի՝ ի քսան և երեք սահմի և ի մի նոյեմբերի. և յերեսուն օրն հասին ի Ղռսար-ղուշլի, և եկեալ ի Պերպալիխն և ի Պէշպալիխն[5], և յաւագուտ երկիրն, յորում կային մարդիկ վայրենիք, մերկք, մազ ունելով միայն ի գլուխն. և առինք կանանց՝ մեծ յոյժ և երկայն, և էին անբանք. յորում կան և ձիք վայրենիք, դեղին և սեւ

1. Կիրակոս շատ անուններ յիշէ այս Հեթմոյ երկար ճանապարհութեան մէջ, որոց ոմանք ծանօթ ոմանք անծանօթ են, ինչպէս և այս Արն բառն, և երկար քննութեան կարօտ են, որոյ համար դուրս թողուցինք զանոնք։

2. Թաթարաց մեծ ցեղի մի անուամբ կոչուած երկիր։

3. Ընդարձակ երկիր մի, Գարա-Խիթայի կոչուած ի Թաթարաց։

4. Յարքունի բանակին։

5. Առաջինն անծանօթ, իսկ երկրորդն՝ Պէշպալիխ, մեծ քաղաք էր Ույղուր Թաթարաց։

մինչեւ երթեալ էր առ Մանգու ղան. այլ և եպիսկոպոսք և քահանայք և իշխանք քրիստոնէից՝ որք գային առ նա, սիրով ընդունէր զամենեսին, զի այր քաղցր էր և իմաստուն և գիտնաւոր գրոց, և տայր պարգեւս և ուրախ արձակէր. տայր պարգեւս և հանդերձս քահանայականս ի զարդ եկեղեցեաց, զի յոյժ սիրող էր պատարագի և եկեղեցւոյ. և ընդունէր զամենայն ազգաց քրիստոնեայս, և աղաչէր սիրով կալ առ միմեանս, իբրեւ զեղբարս և զանդամս Քրիստոսի. որպէս պատուիրեաց Տէր, թէ, «Յայսմ ծանիցեն թէ իմ աշակերտք էք՝ եթէ սիրէք զմիմեանս»։...

Բազում և այլ ինչ պատմէր թագաւորն իմաստասէր՝ ի խժական ազգացն, զոր թողաք մեք, զի մի յաւելորդ համարեսցի[1]։ Յութ ամիսն ապա եհաս յերկիրս Հայոց, յետ ելանելոյ ի Մանկու ղանէն. և էր թուին Հայոց եօթն հարիւր և չորս (1255–6)[2]։

1. Մենք այլ թողուցինք քանի մի բան՝ որ անհաւատալիք էին. և թուի թէ այդ կողմանց տգեղ և աղտեղի մարդիկ՝ կէս անբան և անբանից խառնակից երեւցեր են։

2. Կիլիկիոյ պատմիչն իր ոճով համառօտ գրէ այս Հեթմոյ ճամբորդութիւնն, այսպէս. «Փոխեաց զինքն »ի կերպս սպասաւորի, և ել յերկրէ իւրմէ Կիլիկիոյ՝ »սակաւ արամբք. և դէմ եդեալ գնայր յարեւելս՝ առ »ազգն Նետողաց, առ խանն որ կոչէր Մանգաւ։ Եւ »բազում աւուր անցեալ գնայր ի մէջ Իսմայելացւոց »ցեղիցն՝ որ բնակեալ էին յերկիրն Գամրաց, և առաջ»նորդէր նմա աբեղայ մի՝ Բարսեղ անուն, որ և բա»զում անգամ ճանապարհ արարեալ էր ընդ նոյն »պողոտայ։ Եւ հասին մինչ ի սահմանս Թեոդոսպօ»լեայ, ի տեղի ուրեմն որ կոչի Վարդենի. և իջե»վանեցան ի տուն ուրումն իշխանի Քուրդ անուն. և »մասին ընծայիցն՝ զոր պատրաստեալ էին խանին, զի »հասուցեն յերկրէն Կիլիկիոյ՝ տանել զկնի իւրեանց։ »Եւ թագաւորահայրն Կոստանդին պատրաստեալ զկա»րասին՝ յղեաց առ թագաւորն Հեթում՝ հաւատարիմ

# ՑԻԱ

## ՅՈՎՀԱՆՆԷՍ ՎԱՆԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏ

(ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ)

Էր նա յաշխարհէն Աղուանից ի Տաւուշ[1] գաւառէն, ազգաւ Հայ. և ծնողքն նորա նուիրեցին զնա Աստուծոյ, և սրբութեամբ սնաւ ի վանս Գետկայ[2], առ երէց եղբօրն իւրում որում անուն էր Փօղոս, կուսան և սուրբ արեղայ։ Եւ էր մանուկն Վանական յոյժ ուսումնասէր և երկիւղած յԱստուծոյ և ամօթխած ի մարդկանէ։ Եւ ձեռնադրեցին զնա քահանայ ի տիս մանկութեան քսանամեայ. և եմուտ յաշակերտութիւն մեծափառ վարդապետին Գօշին Մխիթարայ. և ուսաւ ի նմանէ զամենայն մեկնութիւնս հին և նոր կտակարանաց աստուածային գրոց. և՛ եղեալ գիտնական՝ արժանացաւ մեծագոյն աստիճանի վարդապետութեան։ Գնաց յԱղուանս, շինեաց փառաւոր վանք մի սրբատաշ վիմօք, բազմախորան գմբեթաւոր, և հրաշազարդ եկեղեցիս, և անուանեաց զվանքն այն Խորանա-

»արամբք։ Եւ յայնժամ թագաւորն Հեթում առեալ
»զամենայն ցանկալի տեսողայ ընծայսն՝ գնաց առ
»խանն Մանգաւ և մատոյց նմա. և խանն ուրախա-
»ցեալ ընկալաւ զթագաւորն Հեթում, և զինչ և
»խնդրեաց ի նմանէ՝ շնորհեաց նմա. և եդ ի պատա-
»ւորաց իւրոց ընդ թագաւորին՝ գալ յաշխարհն իւր Կի-
»լիկիա, զՄարկուտեա, որ էր միականի և զՊայչու»։

1. Կուր գետոյ օժանդակ փոքր գետոյ մի անուամբ կոչուած է այս գաւառս. գետակն կոչուի և Տուզ, Տաուզ։

2. Մխիթար Գօշի շինած անուանի վանքն. տես Ցօղուած 297։

շատ[1]։ Եւ համբաւ իմաստութեան նորա տարածեցաւ յամենայն աշխարհս. և գային առ նա յամենայն կողմանց և ուսանէին ի նմանէ զվարս պարկեշտութեան և սրբութեան և մանաւանդ զգիտութիւն աստուածային գրոց. և լուսաւորեալք գիտութեամբ գնային յիւրաքանչիւր տեղիս և լինէին լոյսք աշխարհաց[2]։

Յորում ժամանակի եկեալ Ջալալատին սուլտան[3] Խորասանայ՝ և աւերեաց զբազում տեղիս Հայոց և Աղուանից. յորմէ փախուցեալ վարդապետն Վանական յանապատ տեղի մի, յորում էր մեծ քար մի, և փորեաց ի նմա եկեղեցիս և ժամատունս, խուցս և տնտեսատունս, և բնակեցաւ անդէն աշակերտօքն՝ շատ տարիք, մինչև եկին զօրք Թաթարին ի ՈՁԴ (1235) թուականին, որոց առաջնորդէր Չարմաղան Նուինն[4] հրամանաւ Խոքտա[5] խանին, և աւերեաց զբազում գաւառս Թուրքաց, զՀոնաց, զՊարսից, զՔրդաց, զՀայոց և զՎրաց. և զԱղուանից. և գերեաց բազում մարդիկ յամենայն ազգաց։ Գերեցաւ և վարդապետն Վանական աշակերտօքն իւրովք, և ողորմութեամբն Աստուծոյ ապրեալ ի նոցանէ՝ եկն դարձեալ յառաջին ի վանս իւր ի Խորանաշատ. և անդ բացեալ դպրոց ուսուցանէր բազում աշակերտաց զբանս վարդապետութեան իւրոյ, որովք լուսաւորէր և մխիթարէր զբազումս։ Զի էր այր զուարթամիտ անձան-

1. Յայտ է թէ շատ խորաններ կամ մատուռներ ունենալուն համար՝ այդպէս անուաներ է։

2. Յետ Մխիթարայ Գոշի գերագոյն գիտնական և հռչակեալ վարդապետն է այն ժամանակին. իր շատ աշակերտաց մէջ ծանօթագոյնք են երկու պատմիչքն Վարդան և Կիրակոս, մանաւանդ առաջինն այլեւայլ գրուածովք։

3. Որ է Ճէլալէտտին, ըստ արեւելեայց։

4. Նուինն կամ Նոյինն, յոգնակի՝ Նոյայանն, իշխան նշանակէ Թաթարաց լեզուաւ։

5. Որ և Օկոդայի կամ Ոգոտայ գրուի ըստ այլոց։

ձիր և համբերող, որպէս և էր առաքեալն Բառնաբաս: Եւ էր անձամբն չափահասակ, մեծերես և փոքրաքիթ, լայնամօրուս և փառահեղ, մեծաչուք և աչարկու, քաղցրատես և շնորհալից. միտքն ծննդական և առատաբան, ժուժկալ և անձանձիր ուսուցանող. ուղղիչ ստահակաց և խրատիչ անզգամաց. յանդիմանիչ հերձուածողաց և դարձուցիչ մեղաւորաց, սփոփիչ տխրութեանց և յորդորիչ ապաշխարութեանց. յուսադրող անյուսից և մխիթարիչ վշտացելոց. պահաւակաց[1] և աղօթարար, սուրբ և սրբասէր, պարկեշտ և որի հոգւով և մարմնով. յայժ արդիւնարար և վաստակաւոր եկեղեցւոյ: Որով գրագում որդիս ի փառս ածեալ ընծայեաց Աստուծոյ:

Եւ հասեալ ի բարւոք ծերութիւն՝ ալեւորեալ և լի աւուրբք հանգեաւ ի Քրիստոս, եօթանասուն ամաց, ի մարտի ամսոյ ութեւտասան և յարեգի տասն:

Իսկագիր Յիշատակարան մի Վանական Վարդապետի.

Ես Վանականս գրեցի իմով ձեռամբս ի Տփխիս քաղաքի՝ ի դրան Ս. Քառասնիցս. զի գերեալ էր սուրբ Աւետարանս ի Տավուշոյ՝ ի Մուղանի Թաթարէն. և յետ երից ամաց աստ բերեալ անձինս՝ վաճառեցին ի ՈՁԵ (1236) թուիս. զոր փառաւոր աւագերէց Սարգիս՝ հասարակ պատուական քահանայիւք և աստուածասէր ժողովրդական տանուտէրօք՝ բազում ծախօք և աշխատութեամբ գնեալ եդուն ի մեզ: Որոց տացէ Քրիստոս փոխադարձ զսուրբ արքայութիւն և զդրախտն, արձակել ի կապանաց մեղաց, և հանել ի խաւարէ ի լոյս անմատոյց, աստէն պահելով ի շինութեան և ի խաղաղութեան, բարեխօսութեամբ Սուրբ Աւետարանիս և ամենայն Սրբոց իւրոց. ամէն:

1. Շատ կամ երկար պահք պահող:

# ՑԻԲ

## ԳԵՐՈՒԹԻՒՆ ՎԱՆԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԵՒ ԱՇԱԿԵՐՏԱՑՆ Ի ԹԱԹԱՐԱՑ

(ԿԻՐԱԿՈՍ. ԻԲ.)

Ընդ ժամանակս ընդ այնոսիկ մեծ վարդապետն որ կոչէր Վանական իւրովք աշխատութեամբք փորեալ էր քարայրս ի կատարս բարձրագոյն քարի միոյ, որ կայ հանդէպ գեղջն որ Լորուտն[1] կոչի, ի հարաւոյ կողմանէ Տաւուշ բերդի. և շինեալ էր յայրի անդ եկեղեցի մի փոքրիկ, և անդ դադարէր զաղտութեամբ. իբրև աւերեցաւ առաջին վանք նորա, որ կայ հանդէպ բերդին Երգեվանից՝ ի Ջալալատին սուլդանին հինից: Եւ անդ կայր զետեղեալ, ժողովեալ բազում գրեանս. զի յոյժ ուսումնասէր էր այրն այն, մանաւանդ թէ աստուածասէր. և բազումք գային առ նա և ուսանէին բան վարդապետական ի նմանէ: Եւ իբրև շատացան մարդիկն՝ հարկ եղեւ նմա իջանել յայրէ անտի, և առ ստորոտս քարին շինեաց եկեղեցի և սենեակս, և անդ դադարեալ էր: Իբրև եղեւ այս կործանումն ի Թաթարէն, և եկն Մոլար-նուինն[2] յայն սահմանս, բնակիչք գեղջն այնորիկ անդր դիմեցին, և լցաւ արամբք և կանամբք և մանկտով այրն. և եկեալ Թաթարն պաշարեաց զնա յայրի անդ. և նոքա ոչ ամբարս ունէին և ոչ ջուր. և էր եղանակն ամառնային և տօթ յոյժ, և սկսան տապիլ յայրի անդ իբր ի բանտի, և մանկունքն պա-

1. Եթէ բառին նշանակութիւնը քննենք, շատ լոր թռչուն (Caille, պըլտըրճըն) ունող տեղ կարծուի:
2. Մեծ կոչմակալ Ջալմաղանին ձեռաց տակ եղած զօրավարներէն մէկն:

պակէին ի ծարաւոյ, և մերձ էին ի մեռանել. և խնամիքն հայնէին արտաքուստ, թէ ընդէ՞ր մեռանիք. ելէք առ մեզ, և տացուք ձեզ վերակացուս, և թողցուք զձեզ ի սեղւոջ ձերում. և կըրկնէին երից երդմամբ: Ապա որք էին յայրի անդ՝ անկանէին առ ոտս վարդապետին, աղաչէին և ասէին. Գնեա զարիւն մեր ամենեցուն, և էջ առ նոսա և տուր սէր ընդ նոսա: Իսկ նա ասէ ցնոսա. Ես զանձն իմ ոչ խնայեցից վասն ձեր, թէ գոյ հնար փրկութեան, զի և Քրիստոս զանձն իւր ի մահ ետ վասն մեր և փրկեաց զմեզ ի բռնութենէ սատանայի. ապա պարտիմք և մեք ի վերայ եղբարց մերոց զնոյն սէր ցուցանել: Ապա առեալ վարդապետն երկուս քահանայս ընդ իւր, անուն միոյն Մարկոս, և երկրորդին Յոսեփէս, որք ապա յետ այնորիկ առին զպատիւ վարդապետական ի նմանէ, զի անդ էաք մեք[1] ի վարժս կրթութեան գրոց սրբոց ընդ աւուրսն ընդ այնոսիկ, և էջ առ նոսա: Եւ գլխաւորն կայր հանդէպ այրին՝ ի վերայ բլրակի միոջ, և հօլանի ունէին ի վերայ գլխոյ նորա վասն տօթոյն, զի ի տօնի Վարդավառին արգելին զմեզ: Իբրև մօտ եղեն ի զօրագլուխն՝ որք տանէին զնոսա երիցս անգամ՝ հրամայեցին երկիր պագանել ի վերայ ծնկաց իւրեանց՝ իբրև ուղտուց՝ ի ժամ գձելոյն[2], զի այնպէս էր սովորութիւն նոցա: Իբրև եկին առաջի նորա՝ հրամայեաց յարեւելս կոյս երկրպագել խաղանին՝ արքային իւրեանց. և ապա մեղադիր եղեւ, թէ, Իմ լուեալ է զքէն՝ թէ այր իմաստուն և երեւելի ես, և կերպարանք քո յայտ իսկ առնեն զքէն, զի այր բարի ես տեսլեամբ, հանդարտ օրինակաւ, փառաւոր մօրուօք, ծաղկեալ ալեօք. դու իբրև լուար զհամբաւ գալոյ մերոյ՝ ի սահմանս մեր, ընդէ՞ր ոչ եկիր ընդ առաջ մեր սիրով և խաղաղութեամբ, եւ ես

1. Ինքն պատմիչն Կիրակոս այլ հոն է եղեր:
2. Ուղտերուն ճկիլն կամ ծունկերնին ծալելն:

հրամայեալ էր՝ զամենայն որ ինչ քո է անվնաս պահել ի մեծէ մինչեւ ցփոքր: Պատասխանի ետ վարդապետն և ասէ. Մեք զբարեմտութիւնն ձեր ոչ գիտէաք, այլ երկիւղիւ և դողմամբ պաշարեալ էաք յահէն ձերմէ, և լեզուիք անտեղեակ գոլով, և ի ձէնջ ոչ ոք եկն առ մեզ կոչել զմեզ առ ձեզ. վասն այսր էր դանդաղումն մեր. և արդ իբրեւ կոչեցիք՝ եկաք առաջի ձեր. մեք ոչ զինուորք եմք և ոչ ընչից տեարք, այլ աբեղք պանդուխտք և օտարականք. ժողովեալք յայլ և այլ աշխարհաց՝ վասն ուսման ինչ մերոյ պաշտաման. արդ ահաւասիկ առաջի ձեր եմք, զոր ինչ կամ է ձեր արարէք ընդ մեզ, թէ կենօք և թէ մահու:

Ցայնժամ ասէ ցնա իշխանն. Մի երկնչիր. և հրամայեաց նոցա նստել առաջի իւր, և բազում ինչ հարցեալ ի նա վասն բերդիցն և. իշխանին Վահրամայ, թէ ո՞ւր իցէ. զի կարծէր զնա թէ մարմնական ինչ իշխան էր ի վերայ երկրի: Իբրեւ ասաց զոր ինչ գիտէրն, և զայն եւս՝ թէ ոչ է մարմնական ինչ գործակալ, ապա հրամայեաց նմա զի իջուսցէ զմարդիկն յամրոցէ անտի՝ յաներկիւղս, և խոստացաւ իւրաքանչիւր յիւրում տեղւոջ կալ՝ իւրովք վերակացուօք, և յանուն նորա շինել ըզգիւղսն և զագարակսն: Ապա ձայնեցին առ մեզ երիցունքն որք էին զհետ վարդապետին, եթէ, Ի՛ջէք վաղվաղակի, և զոր ինչ ձեր է բերէք ընդ ձեզ: Եւ մեր իջեալ դողութեամբ առ նոսա՝ որպէս զառինս ի մէջ գայլոց՝ երկուցեալք և զարհուրեալք, ակն ունելով մահու. իւրաքանչիւր ի մտի իւրում ասելով զհաւատս խոստովանութեան՝ որ ի Սուրբ Երրորդութիւն. զի յառաջ քան զիջանելն մեր յայրէ անտի՝ հաղորդեալ էաք պատուական մարմնոյ և արեան Որդւոյն Աստուծոյ: Եւ տարան զմեզ ի փոքրագոյն աղբիւր մի որ կայր ի մէջ վանիցն՝ և ետուն մեզ ջուր, զի յոյժ ծարաւի էաք զաւուրս երիս. և ապա տարան զմեզ ի տեղի ինչ արգելանի, և զաշխարհականսն ի գաւիթս եկե-

ղեցւոյն. և ինքեանք շուրջ զմեօք պահէին զմեզ զգիշերն, զի ընդ երեկս էր օրն։ Եւ ի վաղիւ անդր հանին զմեզ ի գլուխ վանիցն ի բարձրաւանդակ տեղի ինչ, և խուզեալ առին որ ինչ կայր առ ումեք՝ որ պիտոյ էր նոցա. և որ ինչ յայրի անդ էր, և որ ինչ սպասք էր եկեղեցւոյն, կամ շուրջառ կամ այլ անօթ ինչ կամ խաչ արծաթի, և երկուս աւետարանս ընդելուզեալ արծաթով, զայն ետուն վարդապետին, զոր յետոյ առին ի մէնջ. և ընտրեալ ի մէնջ զարս՝ որ կարող էին շրջել ընդ նոսա, և զայլսն հրաման ետուն տանել ի վանսն և ի գիւղ անդր, և վերակացուս թողին յինքեանց, զի մի այլ խուժեսցեն զնոսա։ Հրամայեաց և վարդապետին ի վանս կալ. և եղբօրորդի մի էր նորա քահանայ Պօղոս անուն, հրամայեաց գալ ընդ մեզ զկնի նորա։ Իսկ վարդապետն սուրբ խնայեաց յեղբօրորդին իւր՝ զի մանուկ տիօք էր, ինքն եկն զկնի նորա, յուսացեալ թէ հնար իցէ և զմեզ զերծուցանել։ Եւ շրջեցուցանէր զմեզ զկնի իւր աւուրս բազումս նեղութեամբ և տառապանօք, հեռի և բոկոտս. և որ կարգեալ էին պահել զմեզ՝ արք պարսիկք էին, ծարաւիք արեան քրիստոնէից. նոքա առաւել նեղէին զմեզ ամենայն տառապանօք ուղէգնացութեամբ, այնքան ստիպով տանէին զմեզ, որպէս երիվարս յասպատակի. և թէ դէպ լինէր ումեք վասն տկարութեան մարմնոյ կամ խեղութեան սակաւ մի կասել ի գնացիցն, անխնայ ջարդէին զկառափունս, և ծեծէին զմարմինն գանալից, մինչ զի զփուշս անգամ ոչ կարէին հանել յոտիցն՝ թէ ելանէր ընդ նա. և ոչ ջուր ըմպել ոք կարէր յասխպողացն։ Իբրև իջանէին՝ տանէին լնուին զմեզ ի տունս նեղս, և ինքեանք շուրջ նստեալ պահէին զմեզ. և ոչ տային ումեք ելանել արտաքս ի պէտս կարեաց մարմնոյ, այլ ի նոյն տունսն անցուցանէին զպէտսն, և ի նմին ագանէին զյոլով աւուրս. վասն որոյ ոչ կարեմ ընդ գրով արկանել զամենայն նեղութիւնս՝ որ անցին ընդ

մեզ. և զվարդապետն ոչ թողին առ մեզ, այլ ուրոյն հետի ի մէնջ՝ յայլս ոմանս յանձնեցին զզուշութեամբ պահել: Ապա առին և զիս[1] ընկերաց հնգից զկնի իւրեանց ի պէտս դպրութեան՝ գրել թուղթ և ընթեռնուլ. զորս զկնի իւրեանց շրջեցուցանէին, և յերեկոյն տանէին զմեզ առ վարդապետն՝ երաշխաւորութեամբ, և դարձեալ զայլն առնուին հետի կամ մերկ՝ ի վերայ կրմուզ զրաստու. և այսպէս առնէին զաւուրս բազումս: Իսկ իբրև անցին աւուրքն ամառնային և եկն եղանակ աշնանային, և հեռացեալ էին նոքա ի ծանօթ յաշխարհէ մերմէ յօտարութիւն, ապա զանձինս ի մահ եդին ամենեքեան, և սկսան առ սակաւ սակաւ փախչել ի գիշերի՝ ուր և կարացեն զերծանել. և այսպէս եղև շնորհօքն Քրիստոսի ամենեցուն զերծանիլ՝ բայց յերկուց երիցանց, որք ի տունջեան կամեցան գաղտ երթալ և ոչ կարացին. զոր ըմբռնեալ ածին ի բանակն և սպանին առաջի մեր՝ յերկիւղ և ի զարմացումն. զի այսպէս առնէին ամենայն փախուցելոց:

Ապա յաւուր միում ասէ ցիս վարդապետն աքանչելի. Կիրակոս, և ասեմ. Զի՞նչ հրամայես, վարդապետ. ասէ ցիս. Որդեակ, գրեալ է թէ յորժամ ի նեղութիւնս անկանիցիք՝ համբերեցէք. արդ պարտ է մեզ զբան գրոյն ցուցանել յանձինս. զի ոչ լաւեմք մեք քան զառաջին սուրբսն՝ Դանիէլ և զԱնանեանս, զԵզեկիէլ և զԵրեմիա, որք ի գերութեանն իւրեանց զբարեպաշտութենէ բուռն հարին, մինչև Աստուած այց արարեալ փառաւորեաց ըզնոսա ի գերութեանն: Արդ, և մեք կացցուք և մնասցուք խնամոցն Աստուծոյ, մինչև ինքն այց արասցէ մեզ, որպէս և կամի: Եւ ասեմ. Սուրբ հայր, որպէս հրամայես՝ այնպէս արասցուք:

Դէպ եղև ապա յաւուր միում գալ իշխանին

1. Ինքն պատմիչն Կիրակոս է, որ թուի թէ հմուտ էր օտար լեզուաց և դպրութեան:

այնմիկ որ գերեացն զմեզ՝ ի տեղին՝ ուր էաք մեք ի պաշտօնի. և տարեալ զմեզ՝ խոնարհեցաւ առ մեզ. և մեր ընթացեալ ընդ առաջ նորա, ասէ ցմեզ. Զի՞նչ պիտոյ է ձեզ. միթէ քաղցեալ էք. տաց ձեզ միս ձիոյ. զի ինքեանք անխտիր ուտէին զամենայն անսուրբս անասունս, այլ և զմուկն և զամենայն սողունս: Ասէ ցնա վարդապետն. Մեք ձիոյ միս ոչ ուտեմք. և ոչ զայլ կերակուրս ձեր. Թէ կամիս շնորհս առնել մեզ, արձակեա զմեզ ի տեղիս մեր, որպէս խոստացար. զի այր ծեր և հիւանդոտ եմ ես, և ոչ եմ քեզ պիտանի ի գործս ինչ զինուորութեան և հովուութեան կամ այլ ինչ ի պէտս ձեր: Ասէ ցնա զօրագլուխն. Յորժամ եկեսցէ Զաւչաւ ղան՝ հոգացից զձեզ վասն այդորիկ. և էր Զաւչու ղանն այն վերակացու տան նորա, և երթեալ ընդ զօրս նորա յաւար: Այսպէս կացաք առաջի նորա երկիցս և երիցս, և նա զնոյն պատասխանէր: Եւ ապա եկն այրն ի ճանապարհէն, և կոչեցին զմեզ ի դուռն իշխանին, և յղեաց զնոյն այրն առ մեզ թարգմանս, և ասէ. Ո՞չ ապաքէն ասէք դուք թէ ինչս առ մեռելոյն՝ օգուտ է հոգւոյ նորա. արդ եթէ մեռելոցն օգնէ՝ զկենդանիս ընդէ՞ր ոչ փրկէ. տուր զոր ինչ ունիս և գնեա զհոգի քո. և երթ նստ ի տան քո: Պատասխանի ետ վարդապետն և ասէ. Մեր ինչք այն էին զոր դուք առիք, խաչքն և աւետարանքն, բայց յայնմանէ մեր այլ ինչ ոչ գոյ: Ասէ ցնա այրն. Եթէ ոչ ունիս ինչս՝ անհնար է քեզ երթալ տուն: Ասէ վարդապետն. Ճշմարտութեամբ ասեմ քեզ, մեր ոչ ինչ կայ, ոչ գին աւուր միոյ կերակրոյ. բայց եթէ կամք իցեն ձեր, առաքեցէք զմեզ ի մի ի բերդից յայսցանէ՝ որ շուրջ կան զմեօք, և քրիստոնեայքն որ կան ի նոսա՝ գնեն զմեզ: Իսկ նոցա հաւանեալ գինս ծանունս ի վերայ նոցա, և դարձեալ թեթեւացուցին յայնմանէ, և առաքեցին զնա ի բերդն որ կոչի Գագ. իսկ նա խնդրեաց զմեզ զնոյ, զի ընդ իւրն և զմերն տացէ, և ոչ ետուն: Ասէ. Սա

ի պէտս են մեզ թուղթ գրելոյ և ընթերցման, թէպէտ բազում գինս տայք՝ ոչ տամք զաս։ Եւ բաժանեցաք ի միմեանց արտասուօք. և ասէ ցիս Որդեակ, ես երթամ անկանիմ առ ոտս սուրբ Նշանին՝ որ յանուն սուրբ Սարգսի, խնդրել նովաւ ի Տեառնէ վասն քո և այլ եղբարցն՝ որ կան ի ձեռս անօրինին, զի թերևս զերծուցէ և զձեզ Աստուած գթութեամբ իւրով։ Զի էր ի Գուգն[1] խաչ մի սքանչելագործ առ ամենայն նեղեալս, մանաւանդ առ գերիս. զի որք ապաւինէին ի նա բոլորով սրտիւ՝ ինքն իսկ Սարգիս բանայր զդրունս բանտից և արգելլոցն լուծանէր զերկաթս և առաջնորդէր մարմնաւոր տեսլեամբ ի տեղիս իւրեանց. և համբաւ սքանչելեացն տարածեալ էր ընդ ամենայն ազգս. զոր կանգնեալ ասեն զնա Սրբոյն Մեսրոպայ վարդապետին մերոյ։ Եւ եղեւ որպէս ասաց վարդապետն. գնեցին զնա ութսուն դահեկանի. և իբրև տարան զնա՝ ի նմին աւուր ասէ ցմեզ Մոլարն. Մի՛ տրտմիր ընդ գնալ մեծ երիցուն. զքեզ վասն այնորիկ ոչ թողաք ընդ նմա՝ զի պիտանի ես մեզ. մեծացուցից զքեզ ի մեծամեծաց իմոց, և թէ կայ քո կին՝ բերից զնա առ քեզ, և թէ ոչ՝ տաց քեզ կին ի մէնջ։ Եւ առ ժամայն ետ մեզ վրան մի և երկուս պատանիս սպասաւոր մեզ. և ասէ. Ի վաղիւն տաց քեզ ձի, և ուրախ արարից զքեզ. միամիտ կացջիր. և գնաց ի մէնջ։ Խնամօքն Աստուծոյ պատահեաց մեզ ի նմին գիշերի գաղտագնաց լինել ի նոցանէ և զերծանել. և եկաք ի տեղի սննդեան մերոյ՝ ի վանքն որ կոչի Գետիկ, և նա աւերեալ էր ի նոցանէ և այրեալ զշինուածս որ ի նմա. և անդ դադարեցաք։

1. Այս է յիշուածն ի շարականի Ս. Սարգսի. բլուր մի է ի հիւսիսակողմն երկրին Աղուանից, ուր Ս. Մեսրոպայ խաչ մի օրհներ՝ և կանգներ էր, ինչպէս յիշէ և պատմիչս՝ քանի մի տող վերջը։

# ՑԻԳ

## ՎԱԽՃԱՆ ՎԱՆԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ

(ԿԻՐԱԿՈՍ· ՏԱ·)

Աստուածահաճոյ և մեծ վարդապետն Վանական հասեալ ի բարիոք ծերութիւն, ալեւորեալ և լի աւուրբք, ըստ օրինակի նահապետին Աբրահամու՝ առ Տէր փոխեցաւ, զընթացն կատարեալ և զհաւատս պահեալ ուղղափառ խոստովանութեամբ՝ որ ի Սուրբ Երրորդութիւնն և ի տնօրէնութիւնն Քրիստոսի. ի տղայական տիոցն աստուածազգած ծառայութեամբ կացեալ, բազում քրտունս և աշխատութիւնս ցուցեալ ի բան վարդապետական, և բազում որդիս ի փառս ածեալ, և ազգի ազգի ճգնութիւնս կրեալ և սպանեալ զանդամս երկրաւորս, ըստ խրատու Առաքելոյն, և զմարմինն ի խաչ հանեալ կարեօք և ցանկութեամբ հանդերձ։ Զի նման էր սուրբն Աստուծոյ՝ որսաթռիչ թռչնոյն մեղուի, որ թռչելով ի վերայ բազում և ազգի ազգի ծաղկանց, ժողովէ ի նոցանէ զպիտանին և զօգտակարն՝ ի պէտս ինքեանց և ի կերակուր, և ի բժշկութիւն թագաւորաց և ռամկաց. նոյնպէս և սա յոյժն իւր հաւաքեալ զամենայն սրբոց զվարս և զառաքինութիւնս, և նովօք արկանէր զգործ խորսխին՝ ի պէտս անձին իւրոյ և յայլոց օգուտ։

Արդ, նա որ զայս ամենայն բարիս ստացեալ ունէր յանձին՝ ինքն առնէր և այլոց ուսուցանէր, առ Տէր փոխեցաւ, զբնութեան զպարտսն հատուցեալ. և եղեւ վաղճան նորա այսպիսի օրինակաւ ի վանսն՝ զոր իւր իսկ էր շինեալ, որ կոչի Խորանաշատ, և վասն յոլով եկեղեցեացն որ ի նմա ընկալաւ զանունն, որ կայ հանդէպ Երգեվանից բեր-

դին և ի Թիկանց Գարդմանոյ[1]. առնէր նա շինուածս երևելիս, զաւիթ շինելով ի կոփածոյ վիմաց, ի դուռն մեծ եկեղեցւոյն զոր իւր իսկ շինեալ էր. և զբան վարդապետութեան ուսուցանէր այնոցիկ՝ որ ժողովեալ էին առ նա յամենայն գաւառաց։ Յաւուրս աղուհացից հիւանդացաւ նա հիւանդութիւն՝ որ և մեռաւ իսկ. և նախ քան զաւանդել սուրբ հոգւոյն ի ձեռս Աստուծոյ՝ ըստ գրեցելումն, կոչեցեալ զեղբարսն՝ քաղցր և ախորժ բանիւ մխիթարէր զնոսա, աղաչէր հաստատուն կալ ի կարգս և ի կրօնս ուղղափառութեան և աստուածպաշտութեան։ Եւ ապա քաղցր շնչմամբ մաքուր հոգին արձակեցաւ ի կապանաց մարմնոյն, յարեգ ամսոյ տասն, ըստ Նոր եզանակի ճշմարտութեան[2], և յութևտասն մարտի ըստ Հռոմայեցւոց. երկու օրով յառաջ քան զգարնանամուտ, յաւուր շաբաթու, յորում աւուր յիշատակ էր Կիւրղի Երուսաղեմայ հայրապետին, որ զԸնթերցուածսն կարգեաց և ըզԿոչմանն[3] գիրսն գրեաց. և վկայութիւն Սրբոյն Օրէնցի և վեց եղբարց իւրոց, որք նահատակեցան ի Մաքսիմիանոսէ ամբարշտէ[4]. նոցին վարուց լեալ հետևող, վասն այնորիկ և յիշատակի նոցունց արժանացաւ։ Եւ ժողովեցան անթիւ բազմութիւնք ի թաղումն նորա, և մեծաւ սգով և տրտմութեամբ ողբային յոյժ, զի զրկեցան ի լուսաւոր վարդապետութենէ երանելւոյն և ի հոգեշահ բանիցն։ Եւ տարեալ թաղեցին զնա ի գլուխ վանիցն, յարևելից կուսէ, մօտ ի փոքրագոյն եկեղեցին՝ ուր էին գերեզմանքն աղքատաց. զի ինքն այսպէս հրա-

1. Հնագոյն և նշանաւոր էր քան զշատ բերդորայս կողմանցս։

2. Այսինքն, ստոյգ տոմարի կարգաւորութեան։

3. Այն է կոչումն ընծայութեան անուանեալ գիրքն. որ է քրիստոնէական վարդապետութիւն և կրթութիւն երեխայից յառաջ քան զմկրտութիւն։

4. Տես 304 Յօդուածը։

մայեաց։ Անդ էր և եպիսկոպոսն գաւառին Տէր Սարգիս, բազում վարդապետօք և երիցամբք. չոգաւ և կաթողիկոսն Աղուանից Տէր Ներսէս, և եպիսկոպոսն Տէր Յովհաննէս. յետ միոյ աւուր յիշատակի նորա, ողբացեալ և լացեալ յոյժ ի վերայ գերեզմանի նորա, և մխիթարեալ զեղբարս որ անդ՝ դարձան յիւրաքանչիւր տեղիս։ Եւ կալաւ զառաջնորդութիւն վանիցն եղբօրորդի նորա Պօղոս քահանայ, և զվարդապետական ուսումն՝ Գրիգորիս վարդապետ՝ նորին աշակերտ և ազգական։ Եւ այս եղեւ յեօթն հարիւր թուին։ Արդ, աղօթիւք նորա տացէ Աստուած խաղաղութիւն աշխարհի և մեզ մասն ի յարութեան նորա և ի պսակելն։

---

## ՅԻԴ

## ՀՈՒԼԱՂՈՒ ՂԱՆ

### (ՄԱՂԱՔԻԱ ԱԲԵՂԱՅ)

Էր Հուլաւուն ղանն յոյժ բարի, սիրող քրիստոնէից և եկեղեցւոյ և քահանայից. նոյնպէս և օրհնեալ կինն իւր Տաւղուզ[1] խաթունն, զի յամենայնի բարի էր և ողորմած առ աղքատս և կարօտեալս. և յոյժ սիրող ամենայն քրիստոնէից՝ Հայոց և Ասորոց, մինչ զի վրանէ եկեղեցի[2] և ժամահար շրջեցուցանէր ընդ ինքեան, և բազում քահանայս հայ և ասորի։ Իսկ լուեալ զայս բարեպաշտ թագաւորն Հեթում, թէ Հուլաւունն՝ ղան նուաճ և այնպէս բարեսէր է և քրիստոնեայսէր, ապա և ինքն Հայոց թագաւորն գնաց յարեւելք բազում

1. Սիրամարգ հաւն այսպէս կոչուի թուրքարէն։
2. Կտաւէ շինած շարժական եկեղեցի. ժամահարն այլ կոչնակ՝ յեկեղեցի հրաւիրող։

ընծայիւք և խօսս զՀուլաւուն ղանն. և տեսեալ ղանն զՀայոց Թագաւորն՝ յոյժ սիրեաց և պատուեաց զնա, և կրկին ազատութիւն գրեաց Թագաւորութեան նորա, եւս առաւել եկեղեցեաց և եկեղեցականաց և ամենայն քրիստոնէից երկրին. և այսպիսի պատուով և մեծաւ հարկօք առաքեաց զԹագաւորն Հայոց յաշխարհն իւր: Այլ և բազում Թագաւորք և սուլտանք եկին նմա ի հնազանդութիւն, բազում ընծայիւք. և մեծացաւ Հուլաւուն ղանն և հարըստացաւ այնքան՝ որ ոչ գոյր թիւ հեծելոց և զօրաց նորա. Նոյնպէս և ամենայն իրօք, կի պատուական ոսկի և մարգարիտ իբրեւ զաւազ ծովու էր առաջի նորա, թող զայլ ցեղ մեծութիւն և զբազմութիւն ոսկոյ և արծաթոյ, և ձիոց և հօտից, որոց ոչ գոյր չափ և թիւ: Իբրեւ գիտաց Հուլաւուն ղանն թէ ետ նմա Աստուած ղանութիւն և մեծութիւն և բազմութիւն զօրաց և հեծելոց և զամենայն ընչից, յայնժամ հրամայեաց դարպաս շինել իւր մեծ ծախօք ի Գառանն դաշտին[1], զոր կոչեցին իւր ինքեան զանուն տեղւոյն Ալատաղ, որ էր զառաջին տեղին այն նստոց ամարան մեծ Թագաւորացն Հայոց՝ այսինքն Արշակունեացն: Եւ էր ինքն Հուլաւու ղանն մեծախելք, մեծամիտ դատաւոր, ամենեւին գիտուն, և յոյժ արենհեղ. բայց զչարսն և զԹշնամիսն սպանանէր և ոչ զբարիսն և զբարեսէրսն: Սիրէր առաւել զազգ քրիստոնէից քան զայլազգեաց. և այնչափ սիրեաց զքրիստոնեայսն՝ որ զմի տարեան հարկն՝ խոզ էառ ի Հայոց, գոձէմայր[2] 100,000, և յամէն տաճիկ քաղաք 2000 խոզ առաքեաց, և հրամայեաց դնել տաճիկ խոզարածս, և յամէն շաբաթ դիր[3] մի սապոնով

1. Աղուանից և Հայոց միջոց՝ հարաւակողմն, կողքից ծովու մօտերն:

2. Մատակ խոզ. փոխանակ տակի զանոնք կ՚առնու ի քրիստոնէից, տաճկաց տալու համար:

3. Կտոր սապոնի սովորական ձեւով:

լուանալ, և զատ ի յարստոյն ամէն վաղ և երեկոյ տալ նաւշ և արմաւ խոզից՝ ուտելոյ. և տաճիկ մարդ՝ եթէ մեծ և եթէ փոքր՝ որ ոչ ուտէր միս խոզի՝ գլուխն կտրուէր. և այսպէս պատուէր զտաճկունք։... Ցոյժ սիրէր Հուլաւու ղանն զզօրքն Հայոց և Վրաց՝ վասն արի քաջութեան իւրեանց, զոր տեսէրին առաջի նորա յամենայն պատերազմունս։ Վասն որոյ բահադուրս[1] անուանեաց զնոսա, կի զգեղեցիկ և զերիտասարդ որդիս մեծ իշխանացն Հայոց և Վրաց՝ ընտրեաց և կացոյց գանապանս իւր, և անուանեաց զնոսա քիսիկթոյք[2] որ են դըռնապանք՝ սրով և աղեղամբ։ Սկսաւ և զաւեր տեղիսն շինել, և յամէն չէ՛ն գեղէ մէկ տնաւոր հանէրին, և ի փոքրէն՝ մէկ, ի մեծէն՝ երկու կամ երեք, և անուանեաց զնոսա եամս[3]. և առաքէր ըղնոսա յամէն աւեր տեղիսն՝ առնել շինութիւն, և ամենեւին հարկ ոչ տալ, բայց միայն հաց և թան ճանապարհորդ Տաթարի։ Այսպիսի կարգօք հաստատեաց զիւր ղանութեան աթոռն, և ինքն նստաւ յուտել և յըմպել բազում ուրախութեամբ։

1. Ըմբիշ, ախոյեան։
2. Ուղիղ թէ ոխալ՝ ինձ անծանօթ բառ։
3. Եթէ ստոյգ է գրուածն եամ՝ պարսկերէն ձի կամ ձիարած նշանակէ։

# ՑԻԵ

## ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ ՀՈՒԼԱՂՈՒ ՂԱՆԻ ԸՆԴ ՎԱՐԴԱՆԱՅ ՊԱՏՄՉԻ

(Վ. ԱՐԴԱՆ, ԼԶ.)

Ի յեօթն հարիւր երեքտասան թուին կոչեաց զմեզ մեծն Հուլաւու էլղանն ի ձեռն Շնորհաւոր[1] կոչեցեալ փոխաւորելոյ տան յայնմ ժամանակի՝ յամենեցունց, և աւելի յաշխարհակալացն, ի Բաթու[2] կուսակալէն հիւսիսայ, ուր չոգաւն և պատուեցաւ նախ, ապա ի Հուլաւու էլղանէն. որ տարաւ իւրով ծախիւք և գրաստիւք զմեզ և որք ընդ մեզ էին վարդապետք՝ եղբարք մեր Սարգիս և Գրիգոր, և աւագ երէցն Տփխեց տէրտէրն: Եւ տեսաք ըզմեծն զայն ի մեծի աւուրն ամառնոյ և տարեմտի իւրեանց, ի յամսեանն յուլիս ըստ Հռոմայեցւոց, և ըստ մեզ յԱրաց: Եւ էր նոցա աւուրք ուրախութեան իբր լուսին մի. և կոչէին զաւուրսն զայնոսիկ խուռուլթայ, իբր խորհրդատօնս, յորս խորհէին այլղանքն՝[3] ազգայինքն Ջանկզ ղանին՝ առ մեծն եկեալ, զոր ինչ պատշաճն տեսանէին, հանդերձ ամենայն աւագանւօքն իւրեանց. ամենեքեան նոր զգեցեալ՝ յամէն աւուր ուրիշ գունով փոփոխս: Անդ լինէին ամենայն հնազանդեալքն իւրեանց, շատ և երեւելի նուիրօք. թագաւորք և սուլտանք. որպէս և ի մեր տեան[4] թագաւորն Հայոց Հեթում,

1. Բուն անունն էր Շահրատին, ինչպէս վերջը յիշուի, և ուրիշ պատմիչ մի վկայէ, «Սարվանին որդին Շահպատինն զՎարդան վարդապետն տարաւ » ի մոտ Հուլայունն», և այլն:
2. Բաթու՝ Ջինկիզղանի թոռն էր:
3. Էլ-ղանքն, մեծ ղանք:
4. Մեր տեառն ատեն:

և Թագաւորն Վրաց Դաւիթ և Բրինձն Անտաքու, և սուլտանք ի Պարսից կողմանց յոլովք։

Եւ ի տեսանելն զմեզ՝ ծունր ոչ ետուն կրկնել և ոչ շոգել ըստ իւրեանց սովորութեան. իբր թէ արքայութիւնքն՝[1] Աստուծոյ միայն երկրպագեն. զինի ետուն օրհնել և ի մեր ձեռաց առնուլ։ Եւ խօսք զոր ինչ հրամայեաց՝ առաջին այս. Կոչել եմ զքեզ որ տեսանես զիս և ճանաչես, և ի սրտաց աղօթես վասն իմ։ Եւ աւելորդ է թերեւս զամենայնն գրել (զի) շատ խօսեցաւ, և մեք տուաք պատասխանի։ Եւ նստուցին զմեզ, և զինի ետուն. և չարական պաշտեցին եղբարքն որ ընդ մեզ, և Վրացիք զիւրեանց պաշտօնն, և Ասորիք և Հոռոմք զիւրեանցն։ Զի յոյնմ աւուր տեսին զեկեալսն յամենայն կողմանց, մինչ ասել Այլղանին, թէ, Ես զքեզ միայն եմ կոչեալ, ի՞նչ է այս նշանս, որ ոչ յառաջ և ոչ ետես, մի աւուրբ յամենայն կողմանց եկին ընդ քեզ, տեսանել և օրհնել զիս։ Եւ յառաջեաց հրամայեաց ինքն[2]. Թուի եթէ նշան է՝ որ Աստուծոյ սիրտն լաւ է ինձ։ Ասացաք. Զմեզ այլ կալաւ զարմանք, և պատճառ՝ զոր դուք հրամայեցիք[3]։ Ապա հրամայեաց, թէ, Ծածուկ բան ունիմ առ քեզ։ Եւ յաւուր միում արար անապատ յոյժ[4], և հեռի կացուցեալ զամենայն բանակն, և երկու արամբ միայն խօսեցաւ ընդ մեզ յերկար, յիւր ծննդենէ հետէ և ի մօրէ՝ որ քրիստոնեայ էր, ասէ. և թէպէտ դայեակ սնուցանէ զտղայն, երբ ի հասակ գայ՝ զիւր մայրն սիրէ. չենք օտարք ի սիրոյ քրիստոնէից. զոր ինչ ունիս ասելոյ՝ ասա։ Եւ բռնեալ էր զիմ ձեռքս. և մեք ասացաք զինչ Աստուած

1. Քրիստոնեայ նշանակէ։

2. Ինքն իր հարցմանը փութաց պատասխանել։

3. Ձեր ըսածն է այս բանիս (ամէն կողմէ գալուն) պատճառն։

4. Զամենքը հեռացընելով իր քովէն՝ տեղն անապատ դարձաւ։

երեա տանել բան. Թէ, Որչափ ի վեր ես դու քան զայլ մարդիկ՝ մօտ ես յԱստուած. Աստուծոյ աթոռն արդար դատաստանաւ է հաստատ: Ամէն ազգի տուեալ է Աստուած տէրութիւն աշխարհի. մինչ ի ձեզ՝ աշխարհաւեր են լեալ, և աղքատաց անողորմ՝ ծանր շալակ[1] են դրել. Նաքան[2] յոգոց են հանել և լացեալ առաջի Աստուծոյ. Աստուած առեալ է զիշխանութիւնն և յայլ ազգ տուեալ. Թէ դուք աշխարհաշէն լինիք և աղքատաց ողորմած, ի ձեզանէ չառնու Աստուած, զոր տուեալ է՝ Թողու առ ձեզ, և զոր տալ կամի՝ զայն այլ տայ: Ի քո դրանս հէնց մարդ կացո՝ որ յԱստուծոյ երկնչի և զձեզ սիրէ. որ զլալով եկած տառապեալն՝ որ աղերս[3] չունի և կաշառք՝ ուրախ ի տունս աղարկէ, քեզ յիշեցնէ. և զաշխարհս տեսանել[4] տուր հէնց մարդոյ՝ որ յստակ տեսանէ, կուրանայ ոչ՝ կաշառօք, և քեզ ասէ զիրաւն:

Եւ յայս կարգիս շատ խօսեցաք: Հրամայեաց Թէ, Ի սրտումս դրի զքո խօսքդ. ո՞նց է որ զամէն զայն ասացեր որ յիմ՝ սիրտս կայր՝ որ ինձ դիւր Թուեաց. Աստուած խօսեցեալ է քեզ, երեւեալ է քեզ: Ասացաք, Թէ Ջէ. մեք մեղաւոր մարդ ենք, այլ զաստուածախօս մարդկանց գիրքն կարդացել ենք, և սիրտք Թագաւորաց ի ձեռն Աստուծոյ են. Աստուած յայտնեալ է քեզ առանց գրոց: Ապա ասացաք, Թէ, Առաջի Աստուծոյ խօսք մի եմ յասել, որ Աստուած լսէ և ապա դու, որ սուտ չկայ ի ներս: Հրամայեաց, Թէ ասա՛. ասցի. Թէ, Ջինչ քրիստոնեայ կայ և արքաւուն ընդ ծով և ընդ ցամաք, ամինոյ սիրտ հետ քեզ լաւ է, և քեզ աղօթք են առնում: Հրամայեաց, Թէ Հաւատալ եմ որ հէնց է. ապա յԱստուծոյ ճանապարհն չեն ար-

1. Բեռն:
2. Նոքա. անոնք:
3. Ընծայ չունի տալու:
4. Հոգալ, դատել:

քաւուկքն, ինձ ի՞նչ աղօթք առնեն. և թէ առնեն՝ Աստուած ե՞րբ լսէ. մէչում[1] արքաւունն զԱստուած յերկնից յերկիրս բերէ. չբերէ: Ասցէք որ յԱստուծոյ ճանապարհն կենան, և աղօթք առնեն: Մեր եղբարքն հետ մեզ վասն այն են ի կռուիլ, որ մեք քրիստոնեայք ենք և քրիստոնէութիւն կայ ի մեր տանս. Նոքա տաճկասէր են և տաճկութիւն կայ ի նոցա տանն:

Ապա ասէ ցմեզ. Ոչխարենի էր ես զգեցեալ և ոչ ոսկի. և իմացեալ թէ մեք մեծ մարդ և աստիճանի տէր չենք, լուր[2] արեղայ մի եմք. և հրամայեաց թէ Մեծացանեմ զքեզ ոսկի զգեստիւ, և չատ ոսկի տամ: Եւ մեք ասեմք. Ոսկին՝ մեզ և հողն մի է. մեք ա՛յլ մեծ ուզենք, որ վայել է քո մեծութեանդ. ողորմութիւն ի վերայ աշխարհի: Եւ հրամայեաց, թէ մէչում քթեթ[3] կարեմ խիստ գէշ, և խիստ փոքր իրք, լուր այնչափ որ խունկ գնես եկեղեցւոյն, թէ ՙչէ՝ երկիր ի՞նչ ասեն, թէ Ալղանն զնա ո՞նց տեսաւ: Եւ զայդ զոր ասացիր՝ առնեմ, և մարդիկ յղարկեմ՝ որ տեսանեն զաշխարհ:

Իսկ երբ հրաման ուզեցաք գնալոյ, ա՛յլ կոչեաց զմեզ և խօսեցաւ. և ունէր ի ձեռքն բալիշ[4] մի, և երկու հանդերձ էր տուեր կարել: Յիշեցուցաք, թէ, Ալղան, այդ դրամդ հատանի և հանդերձդ մաշի. մեք անհատանելի և անմաշելի խնդրեցաք պարգևք: Եւ հրամայեաց թէ, Առաջի օրն զքո խօսքդ լմնեցի[5], յարլեխ[6] եմ տուել գրել. կարդալ տուր և զինչ քո սրտիդ պիտի աւելի՝ զայն ալ գրել

1. Թշուառ քրիստոնեայն:
2. Սոսկ, միայն:
3. Հասարակ քթանէ զգեստ մի:
4. Ոսկիէ կամ արծաթէ տախտակ մի ձեռքի մեծութեամբ, զոր իբրև գումար մի դրամոյ՝ պարգևէին ղանքն:
5. Կատարեցի:
6. Հրովարտակ:

տուր։ Եւ ի Սախալրուս և ի Շանքաստիանն եմ յանձնել զերկիրդ և զքեզ, որ զինչ ասես առնեն։ Եւ մեզ շնորհ կալջիք և եղբարք։ Թերեւս աւելորդ թուիմք գրելով զայս, այլ վասն բարեսէր և քաղցրաբարոյ մեծի Հոլլանտնին յիշատակի՝ գրեցաք յօգուտ կամ յօրինակ այլոց՝ որ գալոց են յետ մեր. ո՞ գիտէ։

---

## ՅԻՋ

## ՎԱՐԴԱՆԱՅ (ՊԱՏՄՁԻ) ԸՆՏԱՆԵԿԱՆ ԲԱՆՔ ԵՒ ԼՈՒԾՄՈՒՆՔ ԳՐՈՑ ԱՌ ՀԵԹՈՒՄ Ա[1].

Այժմ հայնց արա, իմ Պարոն, սակաւ մի աշխատեա. քո սակաւ աշխատելն առաւել է քան զայլոց շատն. զի որպէս լուաք ի Քրիստոսէ, ամէն մարդոյ հրեշտակ կայ պահապան, և ձեզ՝ որ ազգի գլուխ և թագաւոր էք՝ ինքն գլուխն Քրիստոս է պահապան անմեկնելի։

Մի՛ պաշտել զնա որպէս հեռաւոր՝ այլ որպէս առ քեզ, ի սրտիդ և յոգւոջդ. ուր կամիս զգլուխդ և զերեսդ դնել ի պատիւ Նմա՝ ի գիրկն դնես, և յԱստուած միանաս։ Եւ զոգի իմ տառապեալ և տկար յիշեսցես, որ զքեզ սիրէ առաւել քան զանձն։ Վասն որոյ զայս աշխատութիւն՝ տկար մարմնով կատարեցի, սիրով ձեր զօրացեալ և օժանդակեալ. և յիշեա՛ զոր ի ձեռն Թորոսի հրամայեցիք վասն Իւղաբերիցն կանանց գրել ձեզ՝ և ի

1. Քերականական և ուրիշ գրոց մութ բանից Լուծմունք կամ բացատրութիւնք են, զոր ռամկօրէն լեզուով գրեր է Վարդան առ Հեթում թագաւոր՝ անոր երիտասարդութեան ատեն, և խնդրէ որ այս գրած գրքոյկը պահէ Զապել թագուհի կինն Հեթմոյ։

խորհուրդ պատարագին. և ապա երեւաք յԱկներն[1] հրամայեցիք, որ գրէաք ձեզ ժղլանք[2] ի մեկնու-թենէն Փերակալնին. և ես այլ աւելի սիրով (կա-մեցայ) գրել ձեզ ձեռամբ՝ Լուծմունս յաւետարանէն և յԱրարածոցն[3]. Ուստի տեսէք թէ շատ էք ի հարցանել և սիրէք սրտիւ, է որ հանդուցանէ զձեր միտքդ, և է որ պատճառ լինի ձեզ բանաւորու-թեան զայս հարցանելոյ և զստոյգն գտանել: Բայց աղաչեմ, զպարզմիտ մարդ և զառաքինի մի՛ հար-ցանել՝ որ չամաչիցեն, զի ես նախահոգութեամբ[4] գրե-ցի, և թէ առժամայն զիս հարցանեն և ես գտա-նիմ ակարացեալ[5]. վասն որոյ մի՛ մեղադիր լինիր՝ ժման[6] չգտանողացն զտեսութիւն բանին: Եւ ես գիտեմ որ այս չէ թագաւորական իրք, այլ ասկե-գիր պիտէր և ճարտար դրչի, և ես շատ պատճառ-անէի որ խափանէր զիս յայս ձեռնարկութենէս. տկարութիւն և մութն խրճթիս, և հողմ պար-խըցու[7] փոշեխառն փչելով ընդ պատուհանսն և պաղ օդայս, բայց սիրոյն հրաշագործին յաղթա-հարեալ եղեն պատճառքն. և որպէս տեսանէք՝ եղեւ, թէ կամիս գիրերն է տալ փոխել յաղէկն՝ որ հեշտ կարդայք, և թող Գրիգորէսն փոխէ՝ որ բան չկորնչի. բայց իմ կամ է որ իմ մատանց

1. Կիլիկիոյ վանքերէն մէկն է ու շատ ծանօթ:
2. Զբօսանաց բանք կամ զուարճալի գիտելիք:
3. Ծննդոց գրոց:
4. Ես առանց շատ մտածելով քննելով իմացայ այս խնդիրները, և այնպէս գրեցի. ուրիշ մի անգամ լսելով՝ դժար է որ կարենայ չիտակ հասկընալ և մեկնել:
5. Խրթին բաներու մեկնութիւնը շատ հոգով քններ գտեր է. եթէ ուրիշի հարցընեն՝ չկարենալով մեկնել՝ կըրնայ ամըչնալ. ինքն իսկ գրողն կըրնայ մէկէն չյիշել իր գտած մեկնութիւնը:
6. Մէկէն ի մէկ, շուտով չգտնողք կամ չհասկցողք:
7. Հիւսիսային հով:

սատարն[1] մեայ առ ձեզ. ո՞ գիտէ թէ աւելի շնորհաւոր լինի ձեզ վասն յուսոյն իմոյ որ առ Տէր, և սիրոյն՝ որ առ ձեզ. զի այն[2] ճառ և պատմութիւն չէ՝ որ շատ աշխատանք տանին և ապա բան գտանեն. թէ թուղթ մի կարդաս ժամուն կամ երկու, գտանես յոլով խորհուրդս. և Աստուծով՝ տղայահասակ և մտօք և աչօք զօրաւոր էք, և ի մի անգամ կարդալն սակաւ ինչ աշխատիք, և յայլն անհոգ լինիք։ Եւ զի արքայ և արքայուհի[3] ի միում մարմնի տեսանի, և հասարակ է հոգեւորն և մարմնաւորն, թէ Աստուծով իրք մի օգուտ լինի ի գրելոյդ կամ մխիթարութիւն՝ երկուցդ լիցի. և զակնդ բազմագոյն և պայծառ՝ որ պահէ զձեզ յաւիտեան՝ թող թագուհի պահէ, և ի պիտոյ ժամն առնայք ի նմանէ[4]. և նմա հրամայէ Պօղոս հարցանել զձեզ և զպատեհն ծանուցանել. և պարտական են ասէ ապրեցուցանել զիրեարս՝ առն և կնոջ։ Եւ զերկոսինդ ապրեցուսցէ Տէր Յիսուս. կենդանութիւնն ձեր ի խնամս Հօր և ի գութ Հոգւոյն Սրբոյ, յորդորումն սննդեան դալարարձակ տնկաբողբոջ շառաւիղեալ ոստոցդ, ծիրանածին տղայոցդ ի գիրկս Սիոնի սրբոյ, ի կատարումն պսակման հայակոյտ ազնուական ազգաց և ազանց, տոհմից ազատաց ազատացուցիչք արեանառու զարմից, լծադիրք և բռնաբարձողք, կորացուցիչք օտար ազգաց. ի փառս փառաւոր և պաշտեցեալ Աստուածութեանն, որ է օրհնեալ։

1. Աշխատութիւնն։
2. Այն տեսակ. սովորաբար hամlig կամ hայlig գրուի։
3. Ակնարկէ ի Զապել թագուհի՝ կին Հեթմոյ։
4. Առաքեալն Պօղոս՝ որ գրէ, թէ, երբ եկեղեցւոյ մէջ կանայք բան մի լսեն և չհասկանան, երբ դառնան ի տուն՝ իրենց էրկան հարցընեն։

# ՑԻԷ

## ՎԱՐԴԱՆ Վ. ՊԱՏՄԻՉ ԱՌ ԿԻՐԱԿՈՍ Վ. ՊԱՏՄԻՉ[1] ՈՒՍՈՒՄՆԱԿԻՑ ԻՒՐ

*Նման է արքայութիւնն Աստուծոյ՝ գանձի ծածկելոյ յագարակի, ասէ Տէրն գանձուն և արքայութեանն. զոր գտանէ խնդրողն, և տալով զոր ունի և գնէ զագարակն, զոր ասելի է և ընդ այլ ինչ զամենայն առակաւոր իմաստս, որ յամենայն աստուածաշունչ գիրս՝ որ է տէրունի, յորմէ ցանկացողն գնէ զիւրն, տալով զբոլոր գոյսն, որ է հաւատն. զի այն է մերն ամենայն: Յորոց և դու ճանաչիս տէրունական[2] իր և անուն, հարազատ եղբայր մեր Կիւրակոս, բարունեաց պետ և քաղցուայնի կիրք մեր, և մեծ մասն յուսոյն ի սուրբ եկեղեցի: Որ և քում ըղձիցն կցորդել հրամայեցեր ի բան և ի գիր՝ շատս, զհաւատն Տեառն տալով, շնորհօք նորա կարել մեզ զմնացեալն յԵրգոց երգոյն ի Գրիգորէ Նիւսացոյ, որ մեծն է աղբիւր եկեղեցւոյ, լնուլ՝ առաջնորդութեամբ Որոգինեայ, համառօտել և զԳրիգորին ի սկզբանէ. որ ի վեր գտանի քան զկար մեր յոյժ. Աստուծոյ միայն կարելի և քումդ աղօթից և յուսոյ, որ ի փշոյ և յապառաժ անապատէ, ի ծերունոյ և յանապատ մտաց՝ խնդրես պտուղ, ի ձեռն ոչ սակաւ վաստակաց զոր առաջ յանձն, ի մեծն յոյս վստահութեամբ, չարչարիլ մարմնով և արդարանալ հոգւով. ի քեզ տալ զգիր պարտուցն մեր, կրել միշտ առաջի Աստուծոյ, և*

1. Վարդան իր Երգերգոց գրոց մեկնութեան Յառաջաբանին մէջ գրած է զայս ընտանեբար՝ առ ուսումնակից իւր:

2. Կիրակոս անունը՝ տէրունական թարգմանէ, ըստ յոյն լեզուի:

ջնջել անապիապէս[1]։ Եւ դու նմանեալ տանուտեառն, ճոխացիր աշակերտութեամբ արքայութեան, հանելով ի գանձէն հին ճաշակ որ քաղցրագոյնն է, ո՛ գիտէ և նոր ինչ[2]. ընդ մեզ գոլ հաւատալ և զՀոգին Սուրբ Հարբ և Որդւով՝ ըստ խոստմանն, օրհնեալն յաւիտեանս։...

[3] Իսկ դու մշակդ մորենեաց և աղտաղտ անբուսաբեր վայրաց, անոյշ մեզ ճաշակ յարաժամ, և յայս յԱստուած, վարդապետդ Կիրակոս. որ հարկեցուցիչ հրամանաւ և գումիւն մահու քեզ՝ առել զմերն մերձակայ, մուծեր զմեզ ի տուն գինոյ և իւղոյ, խնձորոյ և նռնենեաց դրախտի[4], չղթայից արժանաւոր ոտիւք՝ հայել, լսել և խօսել, հոտոտել և շօշափել զկեանս և զանմահութիւն, զգայարանօք բիւր քանքարոյ պարտականօք իւրաքանչիւր մասամբ, որ անախորժելեացն էին արժանաւորք քան զիմանալ և զասել, մեծ էր ինձ և սոսկալի։ Սակայն ընդոստեաք և առաք յոյս մեծագոյն, եթէ և արդ եւս եկն Տէրն և կոչէ, և ոչ զարժանաւոր ոք՝ այլ զմեղաւորս գիս, ոչ յապաշաւ միայն յանցեալ կենացն, այլ յանբաւ և յանհատ ուրախութիւն հարսանեաց[5], գի զարմացուցէ զերկինս և զերկիր. զոր սովոր է միշտ առնել, որք և գտանին ի գիրս յայս, Ռահար և Բաբել և Եթոպիա[6]. ի բաց եդեալ բնաւին զառաջին կերպարանն և առ-

1. Սպի՝ վէրքի նշան է. այս տեղ ըսել է՝ առանց արատի կամ պակաս մնալու՝ ջնջել պարտքը։

2. Քրիստոսի խօսքը յիշեցընէ, թէ. «Տանուտէրն »հանէ ի գանձէ իւրմէ զնորն և զհին»։

3. Այս բանս գրոց վերջաբանն է։

4. Երգ երգոցի մէջ յիշուած բաներ են։

5. Պէսպէս Ս. Գրոց և սաղմոսաց յիշատակօք՝ զինքն անարժան՝ բայց Աստուծոյ ողորմութեամբ արդարանալ՝ բացատրէ։

6. Ինչպէս այս օտարներն և սեւերն ընտանի և ճերմակ եղեն, այսպէս Աստուծով՝ տգէտն այլ գիտնայ։

տուածազգեաց եղեալ. զոր և դու միշտ աղօթեսցես զայս լինել ի կարող և ի կամեցող Տեառնէն։ Եւ մեք քեզ շնորհ ունելով շատ գոհութեամբ ձեռնարկեցաք ի յիղձս բաղձանաց հարցմանն քո, ըղձեռն յուսոյն ի Քրիստոս տալով մտաք յանհուն խորս և ելաք. եթէ բերաք ինչ ի վեր քեզ ցանկալի իրս որ գտանին յայսպիսի ծովուս, չունիմ ինչ ասել, Տէր գիտէ տուողն՝ որում երկրպագեսցես յառնուլն ինչ, և զխալանսն՝ ինձ համարեալ՝ ուղղեսցես, օժանդակդ ինձ յամենայնի։ Սակայն զհնազանդութիւնս հատուսցես, զցայգ և ըզցերեկ անմոռաց յաղօթս. և զդա Նուէր տացես Սիոնի մօրն վերնոյ, ի գաւիթս Նորա ընկենլով իբրև զոստ մի ձիթենեաց։ Ո՞ գիտէ, թէ մանգունք Նորա ի մտանելն առցեն և ցուցցեն Նմա ի խնդութիւնս ինքեանց և ի քաւութիւն մեզ, բացերես զնա և բերկրեալ տեսանելով յորդիս իւր, միակցելով զմեզ ի շնորհս փեսային իւրոյ Յիսուսի և Հօրն գթածի և Հոգւոյն Սրբոյ ողորմածին. որում ամենայն խնդութիւն և ցնծութիւն և սէր ի սուրբս իւր և յարարածս, և ի քեզ և ի մեզ և ի մեր երախտաւորս, յամենայն յաւիտեանս և յաւիտենից յաւիտեանս. ամէն։

Ի թուիս ՉԺԴ եղեւ Մեկնութիւն Երգոց երգոյս ի Վարդանայ ի գիտնական և ի տիեզերալոյս[1] վարդապետէ, յաստուածամերձ սուրբ ուխտն Հաղբատայ, ընդ հովանեաւ սուրբ Նշանիս[3] փրկութեան մերոյ արեգականս, և Հօր և Հաւաքողի սըրբութեանս մերոյ. ի պատրիարգութեանն Հայոց Կոստանդեայ և Հեթմոյ պսակաւորին մերոյ, և յարհիեպիսկոպոսութեանն Տեառն Յովանիսի. զորս

1. Այս մասն եւս Վարդանայ գրածն է, բայց հին օրինակող գրոցն աւելցուցեր է անոր գովեստի անուններ, որոց մէկն այլ չէ գրուած:

2. Հռչակաւոր Հաղբատի եպիսկոպոսանիստ վանաց եկեղեցւոյ անունն է՝ Ս. Նշան։

ի կամս իւր խնամեսցէ և ի սէրն իւր մածուսցէ Յիսուս Քրիստոս Աստուածն մեր, Բանն փեսայացեալ և հարսնազգեցեալ։ Եւ նմա փառք։

---

# ՅԺԲ

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ ԳՐՈՑ ԿԻՐԱԿՈՍԻ ԱՐԵՒԵԼՑՈՅ[1]

Յուսո՛վն Աստուծոյ և սիրով սրբոց Նորա, Նուաստ ոգի Կիրակոս վարդապետ Արեւելցի, ի միասին հաւաքեցի զսոն Սրբոցս Աստուծոյ՝ ըստ իւրաքանչիւր յիշատակի աւուրց։ Գրեցի և պատմութիւնս նոցա որոց ոչ էր եդեալ ի գիրս Յայսմաւուրցն[2] և խառնեցի ընդ նախակարգսն։ Եւ աղաչեմ զտօնողսդ և զգրողսդ՝ գրել և զայս յիշատակ բանի, զի և դուք գրեսջիք ի գիրն կենաց. և որ բառնայ զմերս՝ ջնջեսցի և ինքն ի դպրութենէ կենաց։ Եւ եղեւ իրակութիւնս այս ի թուիս ՉԺԲ, յաշխարհիս Կիլիկեցւոց ի Սիս մայրաքաղաքի, ի թագաւորութեան Հեթմոյ, և յառաջին ամի իշխանութեան որդւոյ նորին Լեւոնի. ԿԶ (66) ամի կենաց պանդըխտութեան մերոյ, յորում աւարտն եղեւ ի փառս Աստուծոյ, յաւիտեանս. ամէն։

1. Կիրակոս՝ համշիրակն կամ աշակերտակից Վարդանայ Պատմչի, հայրենեօք էր ի Գանձակայ, որ հիմայ ի Ռուսաց Ելիսաբէթոպօլ կոչուի, հին քաղաք Աղուանից, յարեւելակողմն երկրին Հայոց, վասն որոյ Արեւելցի կոչուեր է Կիրակոս։ Մեր այս գրոց մէջ շատ հեղ յիշուեցաւ իր հայրենիքն՝ Գանձակ, որոյ մէկ տեսարանն է այս պատկերս, և չենքն Թուրք Թաթարաց առնենէն շինուած։

2. Իրմէ առաջ գրուած Յայսմաւուրաց մէջ։

Եւ ճառք որ յաւելաք մեք ընդ հինն խառնեալ՝ հարիւր և եօթանասուն. անուամբն և շնորհօքն Աստուծոյ. ամէն[1]։

---

## ՑԻԹ

## ԱՐՇԱՒԱՆՔ ԵԳԻՊՏԱՑԻՈՑ Ի ԿԻԼԻԿԻԱ. ՎՏԱՆԳ ՈՐԴԻՈՑ ՀԵԹՄՈՑ

(ՎԱՐԴԱՆ. ՂԴ.)

Ի նոյն թուին (1267) մերձ յաշնան յեղանակի՝ բացաւ մեզ աման դառն քացախուն և մրուր բարկութեանն Աստուծոյ՝ հայկազարմ ազգիս. քանզի սուլտոնն Մըսրայ փնտուխտար անուն՝ խնդրէր զբերդսըն՝ կոր Թաթարի ուժովն առեալ էր Հայոց թագաւորն Հեթում։ Եւ ի չտալն, աւելի վասն երկեղի Թաթարին[2], բարկանայր յոյժ և զօրս գումարէր բազում յոյժ, և առաքէ ի ձեռն զօրագլխի ուրումն Սմլմօք անուն՝ յերկիրն Կիլիկեցւոց։ Որ և յանպատրաստից մտեալ յաշխարհն՝ առնու զՍիս մայր քաղաքաց՝ զարքունանիստն, այրէ զնա եկեղեցեաւքն որ ի նմա, և գտանէ զտունն գետնափոր գանձուցն, և առնու յոյժ բազում. զոր ի միում ամանի լինել ասէին վեց հարիւր հազար կարմիր[3]։

1. Ուրիշ Յիշատակարանէ մի կ'իմանանք որ իբր 17 տարի առաջ աւելցուցեր է Կիրակոս հին Յայսմաւուրաց վրայ 112 նոր բան, ի վանքն Կողայ, Մեծ Հայոց Տայք գաւառի մէջ, և իրեն օգներ են Վահրամ և Ստեփաննոս անուամբ քահանայքն։

2. Հեթում վախնար՝ որ եթէ Փնտուխտարի բարեկամ երեւնայ՝ Թաթարք իրեն թշնամանան։

3. Ոսկի դրամ. եթէ հիմայ քանի մի հատ Հեթմոյ և Լեւոնի գտուած ոսկի դրամոց հաւատար էին։

Եւ գնայ ջերմամբ մինչեւ յԱստնա. և այս լսէ համբաւ երկիւղի և դառնոյ աւարաւ և գերութեամբ քառասուն հազարաւ, բայց ի կոտորելոցն. որ գլուխ և խոց անողջանալի կոտորելոցն՝ Թորոս արքայորդին, գեղեցիկ ծաղիկ ի մատաղ հասակի, մերձ ի փթթիթս մուրուաց, վկայեալ յամենայն բերանոյ, անպակաս ի բովանդակ բարւոյ, և կուսութեամբ շտեմարանեալ ի ծրար շնորհացն Աստուծոյ։ Որ յօժարութեամբ եւս դիմեալ ի պսակն արեան. քանզի հարցեալ զ՚ո՞ւն[1] ոչ ետ զանուն հօրն, զի կենօքն գերեալ՝ մի լիցի աւելի բեռն հօրն և աշխարհին, ընդ անդրանիկ եղբօրն Լեւոնի, պսակելոյ և հրաւիրելոյ յաթոռ թագաւորութեանն՝ առ կենօք հօրն։ Քանզի նա եղեւ գլուխ գերելոցն մեր, և հուր աղէկէզ լերդաշարշար և սրտակտուր աշխարհիս մեր և ազգիս, որ կամք շընչարգել և յերերման։ Հասանէ ձեռն վերին, որ եհարն ցասմամբ՝ նոյն բժշկէ ողորմութեամբ, ածելով[2] զմեծաբաց խոցն, առնելով գերէդարձ՝ զոր տարան ընդ այլսն. հնգետասան օր յամելով յաշխարհն և լնլով աղետիւք, զնոսա՝ իրօք, և զմեզ՝ խոցոտիչ համբաւովն[3]։

Նոյն բան ըստ Յիշատակագրի.

Վասն Թշուառութեան ժամանակիս զի՞նչ պիտոյ է մեզ գրել, որ Երեմիայի մարգարէի ողբոցն կա-

փռանկաց Նաբոլէոնի հաւատարին, և այդ թիւն՝ եթէ ստոյգ է՝ շատ մեծ գումար կ՚ըլլայ, միլիոն և միլիարք, որ չէ հաւանելի։

1. Թորոս չէ ուզած իմացընել ով ըլլալը, որպէս զի զինքը ողջ պահելով՝ իր հօրմէ շատ բան չպահանջեն՝ ազատ թողլու համար։

2. Պատելով ազգիս հասած մեծ վէրքը։

3. Շատ փափուկ սրտի միանգամայն և աղնիւ և կիրթ մտաց խօսքեր։

բռնանամբ, զի աշխարհացուք զգերեալոն մեր յանօրէն զօրացն փարաւոնի, նմանեալք գերութեանն Երուսաղեմի։ Եւս առաւել ուաղեմք զթագաժառանգն թագաւորութեանս մերոյ, զխողխողեալն սրով անօրինացն, զքաջ զօրականն Քրիստոսի զՊարոն Թորոս, և զգերեալն յԵգիպտացւոցն՝ զՊարոն Լևոն։ Վասն որոյ հայցեմք յԱստուծոյ՝ միոյն հանգիստ յարքայութեանն երկնից և պսակ մարտիրոսական արեամբն նահատակին, և ազատութիւն ազատեցելոյն արեամբն Քրիստոսի՝ պայազատին Լևոնի Պարոնին մերոյ, զի ազատութեամբ նորին վերստին ուրախասցուք մեք, որպէս Իսրայէլ ի դարձին ի Բաբելոնէ՝ ի ձեռն Զօրաբաբելի։ Որում շնորհիս պարգևողին Քրիստոսի՝ օրհնութիւն և փառք. և այլն։

## Այլ Յիշատակագիր.

Ի շրջագայութեան ամանակաց թուաբերութեան հայկականս ազին տումարի, յաքաբարդեալ ամաց ԺԴ յիսնեկաց հանդերձ առաջին կատարեալ թուով վեցեկան ընդ տասնեկի[1] շարամանելոյ. ի բռնակալութեան կողմանցն արևելից բաժնին Ասիոյ, ի վերայ յոլովից տիրեալ ազգաց՝ խուժադուժ և բարբարոս ազգին Նետողաց. որոց զրաւեալ ծառայութեամբ ծանրագոյն լծոյ հարկապահանջութեան, ևս առաւել տանս Հայոց, որպէս երբեմն Իսրայէլ ի ժամանակս անիշխանութեանն. յորում ժամանակի վարէր զառաջնորդութիւն թագաւորութեան Կիլիկիոյ՝ Հեթում բարեպաշտ, որ էր և նա մտեալ ընդ վերասացեալս հարկաւ։ Այլ բռնադատէ զիս աստանօր թախիծ սրտիս՝ յողորմելիս յաւել պատմութիւն. զի յանցելում ամի ներգրութեան այսր

1. Տասն և չորս անգամ 50 լինի 700, աւելցընելով 16 կ՚ըլլայ 716 թուական Հայոց, որ է Քրիստոսին 1267։

մատենի, յաղագս ծովացեալ մեղաց մերոց սուլտանն Մորայ՝ բազմաձեռն զօրու պատրաստութեամբ մահմէտական սպայիւ, իբր ի ցասմանէ Աստուծոյ ածեալ եմուտ յերկիրն Կիլիկիոյ: Որում ոչ կարացեալ զդէմ ունել զօրն Հայոց՝ անդէն փաղփաղակի Թիկունս դարձուցին, պարտեալ յաղթեալ լքեալ վայրավատեալ ցրուեալ լինէին: Ուրանօր երկու որդիք թագաւորին ձերբակալ եղեալ՝ Թշնամեացն ի բուռն անկանէին. կրտսերոյն սրախողխող եղեալ, զերէցն գերի վարէին[1]: Եւ ընդ ցրուել զօրացն. զի և Թագաւորն եւս ոչ եղեւ պատահեալ յերկրին, այնուհետեւ առանց կասկածի եղեալ, բազում նախճիրս և ոճիրս արարեալ, հըրդեհեալ գյոլովս ի քաղաքաց և զաւանս նոցին, և տապալեալ զեկեղեցիս և զգիրս սուրբս հրոյ մատնեալ. ընդ որս և կարքայանիստ քաղաքն Սիս՝ գեղեցկաշէն ապարանօք և մեծափառ եկեղեցեաւն Սրբոյն Սոփեայ՝ հրձիգ արարեալ, զբազումս ի սուր սուսերի մաշեալ, և զեւս բազումս գերի վարեալ՝ հանդերձ յոլով աւարաւ:

---

## ՑԼ

## ՍՈՒԳ ՀԵԹՄՈՅ Ի ՎԵՐԱՅ ՈՐԴԻՈՅՆ

(ՄԱՂԱՔԻԱ)

Մինչ հոգայ (Հեթում երթալով) առ գլխաւորս Տաթարին՝ գալ և օգնել զօրաց նորա, և ինքն երեկ երկու աւուրբ յառաջ, ապա լսեաց[2] զգալն

1. Կրտսերն (փոքր) էր Թորոս, երէցն (մեծն) Լեւոն:
2. Հեթում Թաթարաց գլխաւորէն դառնալով՝ իր երկիրը մտնալէն երկու օր առաջ լսէ որդւոցը պատահարը:

Թուրքին և զբեկումն զօրացն. երկմտեց, որ ետուն[1] զԹագաժառանգ որդին իւր ի ձեռս անօրէն գայլոցն, և ինքեանք փախեան յամուրս իւրեանց: Զի զգեղեցիկ որդի Թագաւորին՝ զպարոն Թորոս՝ ի պատերազմին սրախողխող արարին յիւրում երիվարին, և զպարոն Լևոն ըմբռնեալ բազում զօրօք Թուրքացն, և տարան ի ծառայ ի Մըսր: Եւ զայս լուեալ մեծախելք Թագաւորն Հեթում՝ բեկաւ սիրտըն ի կարի և յանհնարին տրտմութենէ, որ յանկարծահաս դիպեցաւ, և ոչ կարէր կանգնել զսիրտ իւր, մինչ եկն ի սուրբ և ի գերահռչակ ուխտն միանձանց ի յԱկանց անապատն. և սաստ մխիթարեալ սակաւ մի ի միեղեն եղբարց[2] սուրբ ուխտին, կեցեալ աւուրս ինչ մինչ ելաւ Թուրքն յերկրէս։...

Իսկ բարեպաշտ Թագաւորն Հեթում առ ոչինչ համարեալ զայս ամենայն անցս աղետից, առ ժամանակ մի՝ վասն նենգաւորաց և երկմտի իշխանացն, չահելով զբարս նոցա ուրախութեամբ սրտի. առ իւր ունելով զայլ մանր ուստերս և զդստերըն՝ մխիթարիւր ի նոցանէ սուտ մխիթարութեամբ, վասն չահելոյ զբարս իշխանացն, և գիտենալոյ զխորամանգ միտս նոցա՝ սիրով. զի որ գրէր գիր յիշխանացն՝ վասն պակասութեան որդւոցն և սեւօք կապէր և առ Թագաւորն առաքէր[3], Թագաւորն գրէր պատասխան և կարմիր կապեալ ի Թուղթն այնպէս առաքէր. և զայս ձեռքն միայն գծէին և չարժէին, բայց զսիրտն՝ ինքն և Աստուած միայն գիտէին, Թէ որպէ՞ս կրակով լցեալ էր, զի ոչ տեսանէր զայնպիսի գեղեցկապատկեր և զծաղկալից որդիսն իւր առաջի իւր, ոչ երեկոյ և ոչ ի վաղիւն,

1. Կասկածեց Հեթում Թէ սմանք յիշխանացն վատութեամբ կամ նախանձով էր որդիքը մատնեցին:
2. Միաբան եղբարքն, կրօնաւորքն:
3. Ի նշան սըգոյ սեւ գըռով և կնքով ղըկէին Թուղթը՝ որպէս սովորութիւն է, կնիքն այլ սեւ կապով կախէին Թղթէն:

և ոչ ի ժամ ճաշոյն յուտել և յըմպել. և ընդ միտ ածեալ զանմխիթար աղէտս գեղեցիկ որդւոցն, զԹորոսի գեղեցիկ պատկերն և զվայելուչ հասակն՝ որ ի սրոյ բաժանեցաւ յանողորմ և արեանարբու անօրինացն, նոյնպէս և զԼևոնի ահիւ և անգոհիւ լինելն ի մէջ այլազգեացն՝ ի ծառայութիւն. զայս ամենայն զմտաւ ածեալ բարեպաշտ թագաւորն Հայոց, այրէր անհնարին կրակով. և գալարէր աղիքն յաղագս սիրոյ որդւոցն որ ոչ տեսանէր, և թաւալէր ընդ երկիր՝ անմխիթար սգով, բայց գաղտ և ի ծածուկ, զի մի գիտասցեն նախանձոտ և տիրասպան իշխանքն և ուրախասցին ընդ տրտմութիւն թագաւորին։ Եւ այս գործեցաւ յաւուրս ամառնային եղանակին յետին ամսին և տօնի Սրբոյ Աստուածածնին[1]։ Եւ թագաւորն Հեթում համբեր տուեալ կրակով լցեալ սրտին՝ եկաց մինչև ի տօն Սրբոց Առաքելոցն, ծածկելով զտրտմութիւն իւր յաներկեղ իշխանացն. և ապա հրամայեաց կոչել զամենայն իշխանսն՝ զոր ի հեռի և զոր ի մօտ, վասն պատճառի ջուր օրհնելոյ[2] ի քաղաքն Սիս. և ժողովեցան ամենայն իշխանքն որք կային ընդ թագաւորութեամբ նորա՝ ի քաղաքն Սիս։ Եւ յորժամ գիտաց թագաւորն զգալուստ ամենայն իշխանացն, ապա հրամայեաց գալ առաջի իւր և նստել. և յորժամ ամենն եկին և նստան, հրամայեաց սպասաւորացն՝ թագաւորն, թէ, ո՛յլ են պակաս, կոչեցէք. և նոքա ասացին. Սուրբ թագաւոր[3], ամենն այս են՝ որ քեզ առաջի կան։ Եւ թագաւորն ստիպէր կոչել զպակաս իշխանսն և ըզպարոնայսն. իսկ սպասաւորք թագաւորին ոչ կարէին իմանալ զմիտս թագաւորին. ապա իշխանքն ասա-

1. Ս. Աստուածածնի Վերափոխման տօնն։

2. Ի մեծահանդէս տօնի Յայտնութեան և Մկրտութեան Տեառն մերոյ։

3. Այսպէս կոչէին Կիլիկեցիք իւրենց թագաւորը, Կ. Պօլսի արքունեաց սովորութեամբ։

ցին ցԹագաւորն, Թէ, Ձոր դուք հրամայել էք և կոչել՝ ամենն սուտ է, և չէ ոք պակաս։ Իսկ Թագաւորին զայրագին սրտիւ հայեցեալ յայսկոյս և յայնկոյս, և ապա հրամայեաց կիսաձայն և արտասուալից աչօք. Թէ, Երբ ամենն սուտ են, ապա ո՞ւր են Լեւոնն և Թորոսն։ Յայնժամ սկսան իշխանքն անմխիթար և ծանր սգով ծեծել և վա՜յ և եղուկ ասել. յիշելով զգեղեցիկ որդիքն Թագաւորին իւրեանց, զմիւսն ի ծառայութիւն ի մէջ այլազգեաց, և զմիւսն սրախողխող եղեալ ի ձեռաց անօրինաց. և այսպիսի աղիողորմ արտասուօք լային, և ոչ միայն իշխանքն այլ և քահանայք և վարդապետք եկեղեցոյ, յերգ արկեալ զողբն Երեմիայ մարգարէին՝ որ ասէ. « Ո՞ տայր զգլուխս իմ շտեմարանս ջուրց, և զաչս իմ աղբիւրս արտասուաց, զի նստեալ լայի զբեկումն ժողովրդեան իմոյ »։ Եւ այսպէս վարդապետքն և քահանայքն և իշխանքն լային, և ոչ ոք կայր ի միջի նոցա՝ որ մխիթարէր զնոսա, այլ կային տարակուսեալ ի ծանր սուգն՝ բեկեալ սրտիւք։ Իսկ մեծախելք և մեծահոգի Թագաւորն Հեթում՝ ինքն յինքեան կանգնեաց զբեկեալ և զտրտմեալ սիրտն իւր, և ապա խօսեցաւ բանս մխիթարականս ի սիրտս իշխանացն և քահանայիցն և վարդապետացն, այսպէս ասելով. Գիտէք ամեն իշխանքդ, վարդապետքդ և քահանայքդ, որ Վարդանանց պատերազմ վասն քրիստոնէից եղեւ, այնչափ բազմութիւն հեծելոցն վասն քրիստոնէից նահատակեցան և երկնաւոր պսակացն արժանի եղեն. Նոյնպէս և որդիքն իմ. Թորոս վասն քրիստոնէից պատերազմեցաւ և վասն քրիստոնէից նահատակեցաւ, և խառնեցաւ ի գունդս Սրբոց Վարդանանցն, և նոցին պսակացն արժանի եղեւ. զնա՝ այլ մի՛ լայք, այլ երանեցէք զնա, զի սիրեաց զնա Քրիստոս և իւր Սրբոցն պսակացն արժանի արար, և զարիւն նորա ընդ արեան մարտիրոսացն խառնեաց, ժառանգելով ընդ նոսա զերկնից արքայութիւնն որ ի Քրիստոս Յիսուս։ Իսկ Լեւոն երէց

որդին իմ ի Մսըր է ի ծառայութիւն, ի մէջ այլազգեաց. ինձ լաւ է Լեւոնի ծառայութիւն, և Թորոս իւր արեամբն ի վերայ քրիստոնէից սպանած, քան ես այս ամէն երկրիս ձեր արեանդ և խղճիդ տիրացած. վասն զի դուք ոչ գիտէիք թէ այս ցեղ չէր հանդիպեալ ինչ՝ կայր Հայոց երկիրս առաջի[1]:

Զայս և այլ բազում բանս մխիթարականս խօսեցաւ թագաւորն, և դադարեցոյց զիշխանսն ի լալոյ և ի սգոյ: Իսկ բարեմիտ և բարեկամ իշխանք թագաւորին, նա և քահանայք և վարդապետք և եպիսկոպոսք՝ որ էին ժողովեալք առ թագաւորն վասն տօնի սրբոյ Յայտնութեան, մխիթարեցան ի թագաւորէն վասն սգոյ թագաւորորդեացն. նոյն և նոքա խօսեցան մխիթարական բանս բազումս, և կանգնեցին զսիրտ թագաւորին, և արարին զտօն սրբոյ Յայտնութեան ի միասին ուրախութեամբ, մխիթարելով զթագաւորն: Իսկ թագաւորն ոչ կարէր դադարեցուցանել զսիրտն ի թառանչելոյ և յոգոց հանելոյ վասն Լեւոնի որդւոյ իւրոյ, որ էր ի Մսըր ծառայ, և ոչ գտանէր հնարս, թէ որպիսի հնարիւք կարէ զերծուցանել զնա[2]:

1. Շփոթ է գրուածն, թէ չէ և պակաս. թերեւս ինչն պիտի ըլլար մինչ:

2. Յետոյ գտաւ հնարք. Սուլտանին մէկ ուրիշ պաշտօնեայն ազատելով ի Թաթարաց, իր որդին Լեւոնն այլ ազատեց ի գերութենէն:

# ՅԼԱ

## ԺԱԺ ԿԻԼԻԿԻՈՅ

### (ՅԻՇԱՏԱԿԱԳԻՐ)

*Շարժեալ սասանեցաւ երկիրս մեր առ հասարակ, նա և բազում գաւառք այլազգեաց. և այս ոչ ի մի ժամ այլ զրեթէ ամսօրեայ ժամանակս, մինչ զի անապատացան բազում շինանիստք. քանզի դղեակն կոչեցեալ Սարաւանի-քար[1] ընդ մէջ հերձեալ՝ յերկիր կործանեցաւ, զամենայն բնակիչսն ծածկելով բաց ի սակաւուց. նա և Համուսն անուանեալ (բերդ) զմայր սիրելի որդւովք և որ մերձ էին կորոյս տարաժամ վախճանօք: Տա՜ց բանիս, և որ կարի վշտալին է, քանզի գերահռչակն ուխտ Արքակաղինն անուանեալ, և որ ընդ վիճակաւ նորա՝ բազում աղօթանոցք և մենաստանք առ հասարակ ի վայր խաղացին: Եւ անդ էր տեսանել արժանի ողբոց պատահումն, և լսել ականջաց՝ դառնութիւն. վասն զի ոմանք ի հեծիւն և այլք ի հառաչ, կէսք ի ճիչ այլք յողբս. և ո՞վ ոք կարասցէ պատմել զանպատմելի վիշտն՝ որ եհաս նահանգիս Կիլիկեայ. աւերումն եկեղեցեաց, քահանայից կորուստ, ժողովրդոց սպառումն, և ամենայն հասակի սուգ անմխիթար: Եւ զայսոսիկ մեք իսկ տեսաք աչօք մերովք. իսկ առաջակայն՝ Տեառն գթութեան և ողորմութեան յանձին. վասն զի յոյժ զարհուրեալ եմք: Բայց եղեւ այս ի ժամանակս գարնայնոյն՝ յամսեանն մայիս, ի թագաւորութեան բարեպաշտ արքային Հեթմոյ[2] և իշխանութեան որդւոյ իւրոյ*

1. Որ և Սարուանդի քար, յարեւելակողման Կիլիկիոյ: Տես ի Սիսուան, 209. 368. 392:

2. Վերջին տարի թագաւորութեան Հեթմոյ, որ զԼեւոն դրաւ յաթոռն և ինքն հրաժարեցաւ:

Լեւոնի, այն ինչ նորընծայ ի պարոնութիւն, և ի հայրապետութեան Տեառն Յակոբայ. յորում էր թիւ տոմարին ՉԺԸ (1269)։

### Նոյն, ըստ Պատմչին Կիլիկիոյ.

Ի թուիս ՉԺԸ (1269) եղեւ շարժ սաստիկ՝ և յաշխարհին Կիլիկեայ՝ ի տեղիս տեղիս բազում չէնս յաւեր դարձոյց, և առաւել առ լերամբն որ Սեաւ կոչի. և զանառիկ դղեակն Սարվանդաւ՝ յաւեր դարձոյց, և զբնակիչսն առ հասարակ մահացոյց։ Եւ ի սուրբ ուխտն Արքակաղնին՝ քահանայս և կրօնաւորս վախճանեցան ի տանց ընկղմելոց. և ընդ լեռնակողմն ընդ այն բազում չէնս. և ընդ բերդն Դեղնձարն և այլ բազում տեղիս խարխալեալ հերձեաց։

## ԺԱԺ ԽԼԱԹԱՅ[1]

### (ՅԻՇԱՏԱԿԱԳԻՐ)

Տրտմալի աղէտս որ ի յԱստուծոյ եղեւ վասն մեղաց իմոց. քանզի ի սոյն ամի (1275-6) շարժեաց Աստուած մասն ինչ ի յերկրէ և անզնդասոյզ արար զԽլաթ և զԱրճէշ, և ոչ գիտեմք որչափ մարդոց վախճան եղեւ. և բաւանդակ ամ մի շարժի երկիր, և զկատարածն Աստուած գիտէ, որ զամենայն շարժէ և ինքն յումեքէ ոչ շարժի. և թէ. շարժի՝ ինքն ըստ ինքեան շարժի ի խնամս մարդկան։ Քանզի այր մի էր բարեսէր և երկիւղած յԱրճէշ քաղաք՝ անունն Խաչիկ, ինքն և որդին իւր Կոստանդին տարաժամ մեռացին մահուամբ ընդ շարժեալ վիմացն. որով և յանցանք նոցա ջնջեցին, և նահատակութիւն նոցա ընդ Սրբոյն Ստեփաննոսի խառնեցի։

1. Ժամանակին մօտաւորութեան համար յարեցինք Խլաթայ պատահարն. որոյ տիրողքը տես ի Յօդ. 312։

# ՅԼԲ

## ՍԱԴՈՒՆ ԱՐԾՐՈՒՆԻ ՅԱՂԹՈՂ ՀՍԿԱՅԻՑ

(ՄԱՂԱՔԻԱ)

Երեկ այր մի ի Մանկու ղանէն, Մուղալ ազգաւ, և էր այրն այն յոյժ ահագին տեսողացն. երկայն հասակաւ, թիկնեղ, չլնիքն[1] զերդ զգումիչու, ձեռներն[2] անճոռնի՝ իբրև զարջու, և ամէն օրէն ուտէր ոչխար մի։ Եւ ունէր ի Մանկու ղանէն ի հետ՝ գիր և անգին կապայ մի. և գրեալ էր ի գիրն այսպէս. «Այս անուն բազքայ[3] երեկ առ իմ եղբայր Հուլաւու ղանդ. թէ լինի ազ բազքայ որ զդա ձգէ, զայդ կապէդ[4] նման հագո, ապա թէ իմ բաւքէդ զքոյն ձգէ, յայնժամ զկապէտ զմա հագո և մեծ էլչով[5] յիս յղարկէ»։ Յայնժամ կոչեաց Հուլաւու ղանն զամենայն գլխաւորս զօրաց Հայոց և հրամայեաց, թէ Գիտէ՞ք մարդ Տաթար կամ Հայ կամ Վրացի՝ որ զդա ձգէ։ Եւ որոնեցին, և Տաթար ոչ գտին. զի ով տեսանէր զայրն զայն՝ ամենն փախէին յահագին հասակէն և ի տեսոյ նորայ։ Իսկ Հայոց և Վրաց իշխանքն ասացին՝ թէ մեք գիտեմք մարդ, որ միթէ ի նմանէ լինի ճար։ Եւ հրամայեաց ղանն փութով բերել. և ասացին, թէ չէ ի տեղս, այլ կայ ի տուն իւր. և հրամայեաց առ ժամայն էլչեաց շուտով հասուցանել, բայց ոչ ձիով՝ այլ սայլով։ Եւ էր այրն այն զոր ասացին Հայոց և Վրաց իշխանքն՝ յազ-

1. Վիզն։
2. Թերևս կեռներն, այսինքն ակռաներն։
3. Թուլի ըմբիշ, գոտեկռուող, մենամարտիկ։
4. Կապայ, վրայի զգեստ։
5. Էլչի, դեսպան, լուր տուող։

գէն ի բարձր Արծրունեաց, թոռն Ամիր Քրդին, Սադունն անուն[1]. երկայն և վայելուչ հասակաւ, յոյժ ուժեղ ի մանկութենէ, և փորձ և կիրթ ի գործն յայն. բայց առաջի զանիին այլ չէր բանել մարդ: Յայնժամ իբրև գնացին էշլիքն և առացին զհրամանքն ղանին, տրտմեցաւ սա ղառն, մի՝ զի առաջի խանին այլ ոչ էր բանել մարդ. և մի այս՝ որ ահագին և ուժով լսեաց զհաշուակիցն իւր[2]: Եւ ապա յանձնեաց զինքն վանորէիցն՝ աղօթել վասն նորա. և ինքն երթեալ ի Գագ առ Աստնահաս Սուրբ Սարգիսն, զոր օրհնեաց երանելի և սուրբ վարդապետն Մեսրոպ, և արարեալ անդ ուխտ և մատաղ սրբոյ Նշանին, և ապա առեալ զէշլիքն գնաց առ Հուլաւու ղանն: Իսկ յորժամ ետես Հուլաղու ղանն զՍադունն և զկորովի և զերկայն հասակ նորա՝ յոյժ ուրախացաւ, և հրամայեաց ինն օր՝ երկու բաւշխային կալ ի միասին. և ամէն օրէն ուտեցոյց ոչխար մի և տիկ մի գինի: Եւ յորժամ վճարեցաւ ինն օրն այն, ապա հրամայեաց ժողովել ամենայն զխաթունս առաջի իւր, և կոչել զերկու բաւշխային, և հրամայեաց բռնել զմիմեանս: Եւ յորժամ ըմբռնեցին զմիմեանս՝ էր աւուրն երեք ժամ, և երեք ժամ աւուրն մինչև ցվեց ժամն զիրեար կային առել երկուսն, և ոչ կարէին մէկ մէկի յաղթել. և ապա Սադունն զօրացեալ անուամբն Աստուծոյ, յանկարծակի ուժգին բախմամբ ընդգետնեաց զբօքսն Մանկու ղանին առաջի Հօլաւու ղանին: Եւ մեծացաւ Սադունն առաջի ղանին. և նման նմա ոչ գտաւ յամենայն երկիր՝ հարկօք և

1. Կիրակոս պատմիչ այս ըմբիշին հայրը Շէրպարըք կոչէ, պապը Սադուն. Նոյնն վաթսուն տարի առաջ յիշէ Սադուն մի եղբայր Դաւթի և Արզու խաթունի՝ որդիք Քուրդ իշխանի, որք օգնեցին Մխիթարայ Գոշի՝ Նոր Գետիկ վանքը շինելու: Տես Յօղ. 291: Սադուն վախճանած է ընդ մէջ 1280–90 ամաց:

2. Որու հետ որ պիտի կռուէր. կռուակից:

մեծութեամբ և ուժով՝ ի ժամանակս Տաթարին։ Եւ հրամայեաց Հուլաւու ղանն գրել եառլախ[1], թողուլ նմա մինչ ի յինն կոռճակն[2]։

---

## ՅԼԳ

### ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ
### ՆՇԽԱՐԱՑ Ս. ՆԵՐՍԻՍԻ ՊԱՐԹԵՒԻ

Ուսանիմք ի պատմութենէն[3], թէ ինքն թագաւորն և իշխանքն տարեալ թաղեցին ի թիլն աւան ի մեծ եկեղեցւոջն, և կացեալ սիւն լուսոյ ի վերայ գերեզմանին զաւուրս քառասուն. և բազումք գտանէին զբժշկութիւն ի շնորհս գերեզմանի նորա։ Եւ յայսմ պատճառի իմանամք ի պատմութենէ. քանզի Հերակլ արքայն Յունաց յետ ութսուն ամի թուականին Հայոց (632 Քրիստոսի) եկանէ ի պատերազմ ընդ Խոսրով արքային Պարսից և սպանանէ զնա. և յետ ութ ամի այսմ լինելոյ՝ Աբդռահիմ քեռորդին Մահմէտի՝ եկանէ ութեւտասն հազարաւ ի Հայս, խնդրել հարկս և կոտորել զզօրս քրիստոնէից որ ի Տարօն գաւառի. և անցանէր ի Հարք և ի Բասեն, ի Վիրք և ի Ջաւախս[4] և ի Վանանդ. և առեալ հարկս դառնայ ի Տաճկաստան։ Ի սոյն ամի քակին երեք մեծամեծ եկեղեցիքն, որ հիմնարկեալ էին ի Սրբոյն Գրիգորէ. եկեղեցին որ Յաշտից վանսն[5], և որ յանուն Սուրբ Կարապե-

1. Հրովարտակ, հրամանագիր։
2. Եթէ ինչուան եօթն անգամ յանցաւոր գտուէր՝ ներուէր, թողութիւն տրուէր իր յանցանացն։
3. Թերեւս Յովհաննէս Եզնկացին ըսայ հեղինակ գրուածքս, Նշխարաց գտուած տեղն։
4. Գաւառ մը Գուգարաց, Ջաւախքի ըստ Վրաց։
5. Այն է Աշտիշատու մայր եկեղեցին ի Տարօն։

տին որ յիննակնեանն[1], և կաթողիկէն որ ի Թիլն[2]։ Նա ի փոփոխմանէ շինուածոյ եկեղեցւոյն այլ և ի սրոյ ապաւելոյ ծանօթից ապաստանաւորացն՝ ի բաղում հինահարութեանց այլազգեացն, անյայտացաւ գերեզման Սրբոյն[3]. որ և այժմ շնորհօքն Աստուծոյ յայտնեցաւ ի ժամանակս վերջին. յորում էին ի ծննդենէն Քրիստոսի ամք հազար երկերիւր եւթանասուն և հինգ, և ի Սրբոյն Գրիգորէ ինն հարիւր վաթսուն և ութ ամ[4], և ի մահուանէ սրբոյն Ներսէսի՝ ութ հարիւր եւթանասուն և երկու ամ, և թուականին Հայոց որ յաւուրս Մովսէսի Հայոց կաթողիկոսի եդաւ ի պատճառս պատճենի մերոյ տումարիս՝ եւթն հարիւր քսան և մի, ի հայրապետութեանն Հայոց Տեառն Յակոբայ հոգեշնորհ վարդապետի, ի թագաւորութեանն Հայոց Լեւոնի որդւոյ Հեթմոյ և թոռին քաջին Լեւոնի, որդւոյ Ստեփաննեայ, որդւոյ Լեւոնի, որդւոյ Ռուբենի մեծի իշխանին, որ էր ի զօրացն Բագրատունեաց և յազգէ Նորին, և ի տանէ և ի տոհմէ Արծրունեաց. որ և մեր պակասորն Լեւոն զերկուցն ունի թագաժառանգ ազգաց զազգականութիւն. ի յարքեպիսկոպոսութեան մայրաքաղաքին Եզնկայ և գաւառիս Եկեղեաց՝ Տեառն Սարգսի. յորում տունկ քաջազաւարճ երե-

1. Մշոյ Սուրբ Կարապետն։

2. Մօտ յԵզընկա քաղաք Բարձր Հայոց։

3. Սրբոյն Ներսէսի, որ էր այդ յիշեալ Թիլ աւանին մէջ։

4. Ըստ այսմ՝ Ս. Գրիգորի լուսաւորութեան կամ հայրապետութեան թուականն կ'ըլլայ 307 Քրիստոսի, բայց հասարակօրէն վեց կամ եօթն տարի առաջ դրուի։ Ս. Ներսէսի մահուան և նշխարաց գիւտին թուականք այլ չեն յարմարիր, զի նա վախճանած է յամի 373. եթէ նշխարքն յայտնուեր են յամի 1275, ապա միջոցն է 902 տարի և ոչ 872. յիշեալ Հայոց թուականն այլ 721՝ պատշաճի Քրիստոսի 1273 տարւոյ։

ւեալ ի վիճակիս յայս, որ և է տեղի չարչարանաց և նահատակութեան Լուսաւորչին մերոյ Սրբոյն Գրիգորի, պատուեալ յԱստուծոյ, մեծարեալ յազգաց և յազանց և ի թագաւորաց մեծաց, բարենշան շառաւիղ մերում ժամանակիս և սկիզբն նորոգման եկեղեցւոյ պայծառութեան. որ և շինեաց զհրաշագեղ խորանն Աստուծոյ զգեղեցկայարմարն եկեղեցի, որ յանուն փրկչին մերոյ և Տեառն Յիսուսի. բարեսէր և աստուածապարգեւ զաւակաւն Յովհաննիսիւ[1]. վասն որոյ և այս նշան ակնկալութեան յուսոյ փրկութեան Հայաստանեայց՝ յաւուրս սոցա երեւեցաւ. զոր և պատմեմ ձեզ հաւատացեալ հօտիդ Քրիստոսի, զյայտնութիւն նշխարաց սուրբ և երջանիկ հայրապետին Հայոց Տեառն Ներսիսի, որ է որդի որդւոյ Յուսկանն, որդւոյ Վրթանիսի, որդւոյ մեծին Գրիգորի Հայոց Լուսաւորչին:

Եւ է օրինակ երեւմանն այսպէս. ի Թիլն աւան՝ յեկեղեցւոջն որ յանուն սուրբ հայրապետացն, էր անդ սարկաւագ մի ի գործ սպասաւորութեան վանիցն, հեզ և հանդարտ վարուք, Պատուական կոչեցեալ անուն, թէ ըստ պատահման և թէ ըստ յուսոյ ի ծնողացն եդեալ, այլ ճշմարտապէս ըստ յուսոյ՝ ի վերայ նորա կատարեցաւ. զի զայս մեծագոյն պատիւ ի Տեառնէ ընկալաւ, նմա յայտնել զնշխարս փառաւորեալ Սրբոյն Ներսեսի: Զոր և պատմեաց այսպէս զտեսիլն առաջին՝ զոր ետես յամսեանն յունուարի. ի քսան և վեց, և ի հինգշաբաթւոջ գիշեր. Տեսանէի, ասէ, այր մի ծերունի զգեցեալ ի կերպարանս քահանայական ձեւոյ, նստեալ ի ջորւոջ փառաւորապէս, և մտանէր ի դուռն վանիցն, և ասէ ցիս. Եղբայր, ո՞ւր է հանգուցեալ եկեղեցին որ աստ կայ: Եւ կալեալ իմ

1. Սարգիս արքեպիսկոպոսն և որդին Պարոն Յովհաննէս՝ ժամանակին աշխարհաշէն նշանաւոր անձինքներէն էին, և մէկ տեղ սպանուեցան Թաթարաց աւերութեան ատեն:

զամանս ջորւոյն՝ իջուցի զնա և առաջնորդեցի մինչեւ ի հանգուցեալ եկեղեցին. և եկեալ ասէ. Աստ է գերեզման Սրբոյն Ներսիսի. և գաւազանաւն զոր ի ձեռին ունէր՝ նշանակէր զտեղին ի կողմն գլխոյն. և ի հարկանել գաւազանին՝ լոյս հրախառն փայլատակէր ի տեղւոյն. և ասէ. Տեղիս զոր ցուցի՝ ստուգապէս է գերեզմանն Սրբոյն Ներսեսի, յորում կան նշխարք սուրբ ոսկերաց նորա. առաջիք առաջնորդէի տեղւոյդ, և եկեալ հանջիք. և չէ խորագոյն, այլ սակաւ հողով ծածկեալ։ Եւ այս չորս անգամ ասացին ինձ գալ և ցուցանել զտեղիս, և ես պատճառէի զծերութիւն. և ետուն զջորիս զայս, զի բարձցէ զծերութիւնս իմ, և ես եկեալ ցուցի։ Եւ իբրեւ զարթեայ ի քնոյ ի զարմացման եղեալ կայի ահիւ պակուցեալ, և պատմեցի զտեսիլն եղբարցն որ ի վանսն. և ասեն, աղօթեա զի երկրորդեսցի տեսիլդ։ Եւ ի միւսում գիշերի յորում ուրբաթ լուսանայր՝ տեսանէի երիտասարդ մի ի ձեւ զինուորի, և հանդերձ ի գոյն ծիրանւոյ. այն ինչ բոլորեալ զծնօտիւն թխագոյն մորուացն շուրջանակի. և ասէ ցիս. Հանիք զնշխար Սրբոյն Ներսեսի՝ և ասեմ. Ոչ, վասն զի չհաւատան ինձ. և նորա իբրեւ կնիք մատանւոյ ունելով ի ձեռինն՝ դրոշմէր ի վերայ տեղւոյն, և ասէ. Աստ է գերեզմանն յորում կան նշխարք Սրբոյն Ներսեսի. փութապէս հանջիք զնա։ Եւ իմ զարթուցեալ պատմեցի զտեսիլն։ Եւ ասեն եղբարքն. Աղօթեա, զի երրորդ անգամ երեւեսցի քեզ տեսիլն, զի անհնարին է այդ թէ կարասցուք գտանել զգերեզման Սրբոյն։ Եւ ապա ի միւս գիշերի երեւեցաւ ինձ նոյն երիտասարդ, և ասէ իբրեւ սաստիւ. Ընդէր յապաղէք և ոչ հանէք զնշխարս Սրբոյն Ներսիսի։ Եւ ես զարթուցեալ պատմեցի զնոյն տեսիլ. և ասեն ցիս. Մի անգամ այլ երեւեսցի քեզ և ճշմարիտ է բանդ։ Ապա ի միւս գիշերի յորում միաշաբաթ լուսանայր, երեւեալ նոյն երիտասարդ և ասէ. Ընդէր ոչ փութայք հանել զփառաւորեալ նշխարս Սրբոյն

Ներսէսի. զի ահա այս երեք անգամ եկեալ ցուցի քեզ և հասեալ է ժամանակ յայտնելոյ Սրբոյն, որ մինչև ցայսօր եկաց անյայտ և կոխան ոտից, վասն ազգին իւրոյ կոխան լինելոյ ի բազում ազգաց. այլ այժմ փութասջիք հանել. զի զճնճղուկ՝ որքան ի ձեռին ունիս՝ զգուշասջիր պահել, ապա թէ զերծեալ թռիցէ՝ դժուարին է ըմբռնել։ Որ է այս ինչ տեսութիւն բանին, թէ անձն սուրբ՝ որ իբրև զճնճղուկ ապրեալ եղև յորոգայթից որսաղին, հրեշտակակրօն վարուք ի մարմնի ազատ մնացեալ ի հոգեկան և ի մարմնական ախտից, և զայսքան ժամանակս անյայտ լեալ ի մարդկանէ, այժմ որ իւր իսկ է կամք յայտնել՝ հոգ տարջիք գտանել. ապա թէ անփոյթ առնէք՝ դարձեալ ծածկէ զինքն, և յայնժամ ոչ ինչ կարասջիք առնել։

Եւ իմ յարուցեալ պատմեցի զվերջինս զայս տեսիլ, և հաւատարիմ եղև ամենեցուն, և ետուն փառս Աստուծոյ ի վերայ գթութեան շնորհաց նորա և ողորմութեան։ Ապա վաղվաղակի վարդապետն Ներսէս առաջնորդ տեղւոյն՝ ի քաղաքն հասանէր առ մեծապատիւ արքեպիսկոպոսն Տէր Սարգիս, և պատմէր նմա զհանգամանս տեսլեանն, և աւետիս տայր բարեաց և փրկութեան լինել նշան գերեզմանի Սրբոյն Ներսէսի, որ յաւուրս նորա առաջնորդութեանն յայտնեցաւ. և նա գոհանայր զԱստուծոյ՝ լցեալ մեծաւ խնդութեամբ։ Եւ ապա ասէ. Գնասջիք, զգիշերս զայս եղբայրական դասիւն հսկումն արասջիք, և ի վաղիւն բրեցէք զտեղին մինչև երևեսցի գերեզմանն, և ինձ ազդ արարէք, զի եկեալ հանցուք զուրախարար գանձ Հայաստանեայց։ Եւ նոքա գնացեալ այնպէս արարին։ Եւ ի վաղիւն որ էր մուտ փետրուարի ամսոյ, աստուածապատիւ արքեպիսկոպոսն Տէր Սարգիս և բարեսէր իշխանն պարոն Յովհաննէս որդի նորա՝ առին ընդ ինքեանս զպաշտօնեայս եկեղեցւոյն և ի պատուաւոր արանց քաղաքին. և այլ բազմամբոխ ժողովուրդ քաղաքին ելին զհետ նոցա՝ իբ-

թեւ զեղջերուս ծառաւէ ի ջուր փափագեալ. զի վկայէր ի միտս ամենեցուն մեծի և փոքու, թէ եհաս ժամանակ փրկութեան և ազատութեան Հայաստանեայց: Եւ իբրեւ եկին ի տեղին, անկեալ երկրպագեցին գերեզմանին հրեշտականման մարմնոյն օթարանի և յարկին սրբոյ՝ ծածկողի զգանձն լուսոյ: Իսկ զնշխարս Սրբոյն հանեալ էին յառաջագոյն բնակիչք վանիցն, երկուցեալ ի բազմութենէ ամբոխին, զույշ ոչ կարիցեն հանել պատբաստութեամբ: Եւ էր կազմեալ գերեզմանն ըստ երկայնութեան չափ երից կանգնոյ, և լայնութեամբ իբր կանգուն մի՝ ի կողմ ներքին, և խորութեամբ չորս աստիճանօք մարդաչափ մի, կազմեալ կրամած քարիւ. և յարեւմտից կողմ գերեզմանին էին նշխարք Սրբոյն Ներսիսի՝ բազմեալ յաթոռ, և այնպէս եդեալ ի գերեզմանն հանդէպ արեւելից. որ և նոյնպէս կային ամենայն յօրինուածք մաքուր ոսկերացն՝ յիւրում տեղւոջն, և գլխոյն՝ գեր ի վերայ ամենայն անդամոցն որպէս կենդանւոյ: Եւ էին առաջի նորա ի մէջ գերեզմանին այլ նշխարք, ոչ բովանդակ մարմին՝ այլ մասն ինչ եդեալ ի մեծամեծ անդամոցն, և սակաւ ինչ հողով ծածկեալ էին սուրբ նշխարքն. և ապա ի վերոյ երեք կրկին կամարք կապեալ ի կրոյ և ի քարանց ի վերայ գերեզմանին: Եւ հրամայեալ եպիսկոպոսն սպասաւորաց եկեղեցւոյն բերել զնշխարս Սրբոյն մերձ ի գերեզմանն, զի անդ տեսցէ ինքն և բազմութիւն ժողովրդեանն: Եւ իբրեւ ետես զաստուածային հոգւով կենդանի նշխարս ոսկերաց սրբոյ հայրապետին մերոյ Ներսիսի և երկրորդ Լուսաւորչին Հայոց, յարտասուս եղեալ սկսաւ լալ, և ողբական ձայնիւ՝ իբրեւ ընդ կենդանւոյ խօսելով գութ արկանէր Սրբոյն:...

Յայնժամ առեալ եպիսկոպոսին զսուրբ նշխարսն և մտանէր յեկեղեցւոջն, եդեալ ի սպիտակ և ի սուրբ կտաւս, և առանձին դնէր յերկուս արկեղս՝ և կնքէր իւրով մատանեաւ. և երկու մասն

մեծ տայր ի պաստաւորս եկեղեցւոյն՝ ի Համբոյր և ի տես ուխտականաց ժողովրդեանն՝ որ գային յամենայն կողմանց. և այլն կայր յեկեղեցին, կնքեալ մատանեաւ և պահեալ զգուշութեամբ. և ինքն եպիսկոպոսն գնայր ի քաղաքն, և որ ընդ նմա բազմութիւն քաղաքին, մնալով տեսչութեանն Աստուծոյ թէ զինչ արասցէ։ Եւ վասն զի հնչեաց համբաւն յաշխարհ, և ղուարճացան որ յամենայն տեղիս ազգ Հայաստանեայց, և դիմեալ գային բազմութիւնք հաւատացելոց յերկրպագութիւն և ի տեսութիւն սուրբ գերեզմանին. յայնմանէ ընդոստուցեալ և զարմացեալ ազգն Տաճկաց, և եմուտ խորհուրդ ի նոսա եթէ յինչ կամի աւարտել վախճան բանին. քանզի է գրեալ առ նոսա իւրեանց գրովն հրաշալի տեսիլ Սրբոյն Ներսիսի[1] որ վասն հանդերձելոյ ժամանակացն որ ինչ եղեալ է և որ լինելոցն. և տագնապէին խորհրդով զսկիզբն իւրեն վախճան իւրեանց իշխանութեանն համարելով. և բազումք ի նոցանէ ի նախանձ մտաբերեալ՝ խորհեցան ժողով լինել ի բնակչաց քաղաքին, գնալ գիշերի ի վանսն, յափշտակել զնշխարս Սրբոյն, թերևս կարասցեն ծածկել զհամբաւն աշխարհալուր։ Ազդ եղեալ այս եպիսկոպոսին և գնաց քահանայական դասուք և պատուաւոր արամբք, և առեալ զսուրբ նշխարսն բերէր ի քաղաքն մեծապէս փառօք և բերկրալից ցնծութեամբ. որում ընդ առաջ ելեալ բազմութեան քաղաքին՝ լցեալք անպատում խնդութեամբ, տարեալ եդին ի մեծարեալ և ի գեղեցկաշէն եկեղեցին։ Իսկ պատուեալն ի Տեառնէ արքեպիսկոպոսն Տէր Սարգիս զաջն և զմիւս բազուկն տայր յօրինել իմաստուն ոսկեգործաց, և զմանր մասունս մատանցն առ մի-

1. Անհաւանելի երևի Ս. Ներսեսի տեսլեան թարգմանութիւնն յարաբերէն. բայց էրենց յատուկ աւանդութեամբ կըրնան ըլլալ գրուածք՝ աշխարհիս կատարածին նկատմամբ։

մեանս միաբանեալ յարծաթոյ և յոսկւոյ պատեալ մանրամասն յօրինուածով՝ տեղի երևման ի ցոյցս տեսլեան արարեալ պանծպանծիչ աջոյն և բազկին շնորհաբաշխ։ Նոյնպէս և տայր յօրինել գլուխ արծաթեղէն յարմար մեծահասակ անձինն, պահարան գլխոյն Նշխարաց, և ի բաց առնելով ղդիրս երեսացն և զբերանոյն, և յերիս տեղիս հանդէպ ճակատոյն խաչաձև հատուածս արարեալ յարծաթոյն, յորում երևէին Նշխարքն փառաւոր։ Եւ զայլ բովանդակ Նշխարս սուրբ ոսկերացն՝ լուանայր զհողն մածեալ՝ անապակ և անուշահամ գինով յանուշահոտ ծաղկանց խառնելոց, և օծեալ խնկահոտ իւղով կազմեալ արուեստաւորապէս։ Եւ պահէին ըզգուշութեամբ մինչև շինեսցի եկեղեցին ի վերայ գերեզմանին, զի անդ եդեալ ի տեղւոջն գերեզման յօրինեսցեն գեղեցկազարդ կազմեալ և մեծածախ զարդիւք, և զանկողոպտելի գանձն զոր շնորհեաց Աստուած գաւառին Եկեղեաց՝ անդէն ծածկեալ ունելով գերեզմանին։ Իսկ զաջն առաքելաշնորհ եդեալ արքեպիսկոպոսն Տէր Սարգիս յիւրաչէն եկեղեցին որ ի քաղաքն, ի Նորագապէս շինեալն հրաշատես և զարմանալի փառօք և մեծածախ զարդուք, երից Թուով խորանաց, յանուն փրկչին մեր Յիսուսի զաւագ խորանն, և միւսն Կաթուղիկէ և միւն յանուն Սրբոց Առաքելոցն. և եդեալ անդ զաջն Սրբոյն Ներսիսի ի զարդ և ի պանծպանութիւն սրբոյ տաճարին, Թեալ մշտնջենաւոր կայիւք։ Եւ զմիւս բազուկ ձեռինն կազմեալ մատամբքն մաքուր՝ տարեալ ի հռչականուն և ի գեղեցկաշէն սուրբ ուխտն Տիրաշինին՝ անդէն Թեալ յեկեղեցւոջն փառաւորապէս, զոր և յառաջն իսկ շինեալ էր։ Որ և ընդ մէջ լինելով եղեմաբուխ գետոյն Եփրատայ՝ բարեզարդ և վայելուչ վիճակին և ամենազով գաւառին Եկեղեաց, զոր իմաստաբար և մեծ յուսով արարեալ խոհեմականն Տէր Սարգիս, զի զերկոսեան բազուկսն և զձեռն առատաձիր շնորհիւ լցեալ Սրբոյն Ներսեսի՝ զեր-

կրորդ մեր Լուսաւորչին, սահմանէր յերկուս կող-մանս գետոյն, որպէս թէ տարածեալ ունելով ըզ-թեւսն հովանի գաւառին և զբազուկսն աղաչող բա-րեխօս առ Բարձրեալն, և զձեռնն՝ յառնուլ յան-նուազ բարեաց և բաշխել եկեղեցւոյ մանկանց, ի փարթամութիւն փառաց հայրենի գանձիւք. և տայր հաւաքել նիւթ շինուածոյ եկեղեցւոյն:...



# ՀԱՅԱՊԱՏՈՒՄ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

ՀԱՏՈՐ Գ.

ՅԻՇԱՏԱԿ ՅՈԲԵԼԻՆԻ
ԵՐԿՀԱՐԻՒՐԱՄԵԱՑ ՀԱՍՏԱՏՈՒԹԵԱՆ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ
Յ ՍԵՊՏ. 1701–1901 ՍԵՊՏ. Յ

# ՀԱՅԱՊԱՏՈՒՄ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

ՅՕՐԻՆԵԱՑ

Հ. ՂԵՒՈՆԴ Վ. Մ. ԱԼԻՇԱՆ

---

ՀԱՏՈՐ Գ.

---



ՎԵՆԵՏԻԿ – Ի ՎԱՆՍ Ս. ՂԱԶԱՐՈՒ

1901



# ՀԱՅԱՊԱՏՈՒՄ



## ՅԼԴ

### ԱՐՇԱՒԱՆՔ ԵԳԻՊՏԱՑԻՈՑ Ի ԿԻԼԻԿԻԱ ԵՒ ՄԱՀ ՍՄԲԱՏԱՅ ԳՈՒՆԴՍՏԱՊԼԻ

(ՑԻՇԱՏԱԿԱԳԻՐ.)

ՊԱՏՄԵՑԻՑ ձեզ աղէտս աղեխարշեալ. քանզի ի Թուիս ՁԻԴ՝ եկն Մսրայ սուլտանն ի Սիս և աւերեաց բազում գեօղս, և սրոյ ճարակ ետ զյոլովս. և Թագաւորն Լեւոն ոչ վստահացեալ զանձն՝ զօրաց իւրոց, գիտելով զխարդախութիւն նոցա, ոչ ել ի պատերազմ ընդդէմ անօրինացն. և նոքա վստահացեալ յանզգամութիւնսն՝ կամեցան յափշտակել զամուրն՝ զՍիսոյ զբերդն. և ել երէց մի ընդդէմ նոցա ի ճակատու, և զմի սուլտանեացն սատակեաց, և ինքն անդէն նահատակեցաւ, և այլքն պերճանդամ գնացին[1] յաշխարհն իւրեանց։ Եւ ի

1. Թուի թէ ծաղրելով կ՚ըսէ։

նոյն ամի դարձեալ դարձան ի Սիս. և Տէր ոչ յաջողեաց նոցա, այլ փակեաց զնոսա ընդ ձեռամբ Լեւոն Թագաւորի, և ի սուր մաշեաց զնոսա. և մնացեալքն փախստեայ անկան ի խորշս իւրեանց։ Իսկ սպայապետն Հայոց մեծաւ քաջութեամբ կացեալ ի մէջ նոցա. և յորժամ ելեալ (դառնայր) ի պատերազմէն՝ երիվարն հարեալ զնա ընդ ծառոյ միոջ՝ ոչ կարաց տանել ցաւուն, քանզի յոյժ ծերացեալ էր[1]. գնաց ի Սիս, և սակաւ ինչ ապրեալ՝ բարի խոստովանութեամբ ննջեաց ընդ հարսն իւր ի Քրիստոս Յիսուս. և մի յիշեսցի մեղք նորա առաջի Աստուծոյ, այլ ընդ Աբրահամու և ընդ Սահակայ կարգեսցի յարքայութեանն Աստուծոյ։

Եւ ի սոյն ամի երիցս անգամ Հոռոմոց տաճիկն եկն յերկիրն Հայոց, և Աստուած յաջողեաց Թագաւորին Լեւոնի, և զնոսա սրով մաշեաց։

### Յիշատակարան մի Սմբատայ Գունդստաբլի[2].

Ո՞վ հանճարեղք յիմաստ բանիս
Եւ մակացուք յայս արվեստիս,
Մըտադրութեամբ միտ դիք բանիս
Անյաղթ գիտուն վարդապետիս.
Որ զընդհանուրն առեալ գոյիս՝

1. Ոչ այնքան ծեր, զի ծնած էր յամի 1206 † 1276, ի 6 մարտի։ Ուրիշ յիշատակագիր մի կ'իմացընէ՝ որ ոտքն զարնուեցաւ ծառին և ճզմեցաւ։

2. Սմբատ Գունդստապլ իր ժամանակին ամենէն նշանաւոր անձանց մէկն է. քաջութեամբ՝ առաջին յետ Ա Լեւոնի. գրագիտութեամբ այլ առաջին էր գրասէր Թագակապ ընտանեաց մէջ. Սիսուան գրոց մէջ այս բաներս բացատրուած են իրեն ինքնագիր յիշատակարանօք՝ որ շատ Ձեռագրաց մէջ գտուին մինչեւ հիմայ, և իրեն այլեւայլ ուսումնական ախորժակաց և ձրից վկայութիւնք են։ Դրինք այս տեղ Արիստոտէլի Թարգմանեալ գրոց մէջ՝ իր գրած շատ յիշատակաց մին։

Տըքնեալ բաշխեաց մարդկան ազգիս.
Իբր ընդհանուր ըզկենդանիս՝
Բաժնեաց ի ձիս և ի ջորիս.
Զոր համանուամբք առնէ տեղիս.
Իսկ բաշխելով զանուանս գոյիս՝
Միաւորէ դարձեալ ի միս.
Եւ յարանուամբ զօլ Նըմանիս,
Որպէս. յԱրի ազգէն՝ Արիս,
Կամ ի միոյ Նոյն իսկ զարմիս:
Արդ, ո՞նց պատմեմ զօճ ըզբանիս՝
Երբ կարի խիստ կարճ է տեղիս.
Բայց թէ հազար կարճեալ բանիս՝
Հարկըն կոչէ զիս յայս տեղիս,
Ցիշել ըզմայրն ամէն գոյիս
Եւ ըզպատճառ ծնընդականիս:...
Եւ զոր գըրեաց Արիստոտէլ
Նամակ և գիր զարմանալիս՝
Առ Աղեքսանդր իւր աշակերտ
Տիեզերակալ երեք կուսից,
Երբ հեռացեալ էր ի Նմանէ
Առնուլ ըզչորս կողմ աշխարհիս.
Զորս ընդհանրեաց ի քիչ տեղիս՝
Ըզգիտութիւնս անճառելիս,
Եւ ժողովեաց ի միասին
Զիմանալիս և ըզգալիս:
Ընթերցէք և զարմացէք
Որք ի խնդիր լինիք բանիս՝
Ըզմակագիր Բնութեան ազգիս
Գրիգոր Նիւսեայ վարդապետիս:
Զոր ժողովեալ ի մի տեղիս՝
Ցարմարեցի ի պատեհիս,
Ես մեղաւորս և ողբալիս
Տէր և պարոն Պապեռօնիս,
Եղբայր Հեթմոյ թագաւորիս
Եւ սպայապետ Հայոց գնդիս.
Նոյն և շինող ի բնէ Նորոյ
Զանաւ գըղեակն անմարտելիս,

Որ ըստ խմոյ անուանս եդի
Սմբատակլայ քաջ ամրոցիս.
Զորս աղաչեմ զամենեսին
Որք ընթերցողք լինիք գըրիս,
Խնդրել պարգեւս ի Քրիստոսէ
Ըզթողութիւն մեղաւորիս.
Եւ պարգեւողն առատաձիր
Տրիտուր բարեաց տացէ բարիս.
Ի հայ ազգիս թըւականիս
Ի վեցհարիւր իննսուներորդիս (1245)
Գրեցի վատթար ձեռօքըս ես
Անշար ըզգիր յիշատակիս.

---

## ՅԼԵ

### ԼԵՒՈՆ Բ ԹԱԳԱՒՈՐ ԳՐԱՄԷՐ, ՆՈՒԻՐԱՑՈՒ ԵՒ ՄԻԱԲԱՆ ՎԱՆՈՐԷԻՑ ԵՒ ՀԱՑ-ՏԱՆՑ[1]

(ՅԻՇԱՏԱԿԱԳԻՐ.)

### Ա.

Ամենագով թագուհին Զապէլ[2], այն որ զուգեալ յամուսնութիւն բարի թագաւորին Հեթմոյ (Ա) ծնաւ զյաղթող թագաւորս մեր Լեւոն. որ թէպէտ ըստ օրինակի Տեառն իբրու քաջ հովիւ եդ զանձն ի վերայ ոչխարաց և եկեղեցւոյ, և մատնեցաւ ընդ եղբօրն իւրում Թորոսի ի մահ և ի գերութիւն[3],

1. Յիտալիա գաղթած Հայ եկեղեցականք երբեմն և խառն ընդ աշխարհականս՝ իրենց բնակարանը կոչէին Հայտուն, այսինքն Հայոց տուն, երբեմն և Հոգետուն, եւս և Հիւրանոց:
2. Դուստր Ա և Մեծ Լեւոնի:
3. Եգիպտացւոց արշաւանաց առեն ի Կիլիկիա: Տես Յօդ. 327–8:

սակայն շնորհն Աստուծոյ իբրու զփրկեցեալ անդրանիկ որդին իւր զԻսրայէլ՝ վերստին յերկաթի հնոցէն և ի հալոցէն յԵգիպտոսէ պարգեւեալ մեզ շնորհեաց. որ Թագաւորեալ տիրէ մեզ իմաստութեամբ և բարեպաշտութեամբ, իբրեւ վէմ անդամանդ և անշարժելի բազմագոյն հնարիւք իմաստից և աշխատութեամբ ճանապարհաց և պատերազմաց, և ծախիւք գոյից պարսպէ զմեզ շուրջանակի՝ ի մրրկեալ ալեացն յանաստուած հեթանոսացն խռովութենէ։

Արդ, սոյն ամենաբարի և պայազատ Թագաւորս մեր Լեւոն՝ ի վերայ յոգունց բարեաց տեսակաց և բարեգործութեանց, որպէս Տրդատ Մեծն՝ որ քան զամենայն փառսն Թագաւորական՝ երանելի համարէր զվայելչութիւն տանն Աստուծոյ սրբել և տեսանել, նոյն օրինակ և սա սիրելով զսրբոյ եկեղեցւոյ պայծառութիւն և վայելչական կարգս եկեղեցականս, առատանայր ի բազում վանորայս և յեկեղեցիս. ընդ որ զպէտս սպասաւորացն առատաձիր պարգեւօք ռոճկաց, միանգամայն և վայելչացուցանէր փարթամութեամբ զտունս Աստուծոյ պէսպէս զգեստուք և անօթովք պատուականօք, և բազում կտակարանօք հին և նոր պատուիրանաց. նա և պէսպէս մեկնութեամբք նոցին, զոր հարքն երջանիկք ի ձեռն Հոգւոյն Սրբոյ պարգեւեալ բացայայտեցին. և մանաւանդ առաւել տենչմամբ սրտի սիրով՝ զհայրենի և զպարծելի բնիկ Հայկազանց աշխարհն[1] զՏունն արեւելից, որ առաջին է մասն և գլուխ՝ օրինակ իմն բոլոր աշխարհի, զի անտի սկսանին ի ձեռն լուսաւորչացդ՝ աշխարհի շարժմունք. և կամ թէ կոչել զնոյն աշխարհ է իբրու հայր և հաւ մարդկութեանս, յորում դադարեալ տապանն Նոյի, և բուսեալ՝ անտի դարձեալ

1. Այս խօսքս նշանակէ Լեւոնի բնիկ Հայոց աշխարհէն դուրս բնակող ազգայնոց այլ օգնելն՝ նուիրատուութեամբ։

սերեցաւ մարդկային զարմ։ Յորմէ ի նոյն արեւ-
ելեան կողմանէ՝ որ զգալի լոյս արեւուդ տիեզերաց
ծագէ, այսպէս և զհոգեւոր լոյս աւետարանին փա-
ռաց անտի ծագեալ ընկալաք ի մեծ Լուսաւորչէ
մերմէ Գրիգորէ. որով թէպէտ այսր և անդր վտա-
րեցաք ի նմանէ՝ իբրեւ Հրէից ազգ յԵրուսաղեմէ
գերութեամբ, սակայն զԴաւթին գոչէ ամենից սրտ
մեր, «Թէ մոռացայց զքեզ Երուսաղէմ, մոռասցի
զիս աջ իմ»։ Զոր ճշմարտապէս քան զբազումս
առաւել սիրով և անմոռաց բաղձանօք միշտ ի մտի
ունելով արքայս Լեւոն, զվանորայս և զեկեղեցիս
և զբարեձեւ կրօնաւորս և զկարգս արեւելեան կող-
մանցն՝ որ ի Մեծ Հայք. որով և հանապազ պար-
ծէր առ ամենայն ազգս և լեզուս քրիստոնէից, և
միշտ գովէր և տենչայր իբրու հարազատ ժառանգ՝
և մանաւանդ քան զբազում տեղիս՝ զմեծ և զհռչա-
կաւոր երկնահաւասար սուրբ ուխտն զմայրավանքն
զՀաղբատ. յորում կամէր անմոռաց արձանացու-
ցանել զինքեան յիշատակ բարի ի Քրիստոս՝ նուի-
րօք և պատարագօք։ Վասն որոյ և ընդ այլոց թա-
գաւորական ընծայից՝ զոր միշտ առաքէր, և զգիրքս
զայս Մեկնութիւն Սաղմոսաց Դաւթի, որ ի նախ-
սասացեալ սուրբ Հօրէն Ներսիսէ[1] յազգայնոյն ար-
քայիս մերոյ յարմարեալ տեսանելով, զի չգոյր և
դեռ չէր բնաւ ուրեք տարածեալ յաշխարհս արեւ-
ելից. սա սկիզբն և պատճառ լինելով բարեաց՝
նորոգ ընծայ առաքեալ պարգեւեաց սուրբ ուխտին
Հաղբատայ, ի վայելումն մանկանց նորա և յիշա-
տակ ինքեան անմոռաց, և ամենայն աշխարհին և
վանորէիցն արեւելից, օրինակ գաղափարի և պատ-
ճառ տարածման ի բոլորս։

Վասն որոյ աղաչեմք զամենեսեանդ որ կարդայք
և վայելէք, և կամ լսէք և շահիք օգտութեամբ.
դարձեալ և որք օրինակէք և գրէք, մանաւանդ թէ

1. Լամբրոնացւոյ, որոյ ցեղակից էր Հեթում փե-
սայն Զապելի և իր սերունդքն։

այն բարեյոյս արքայս աղաչէ թախանձանօք և ժամէ զօրքաղան մաքրութիւն ձեր. յիշել զայն բազմաքիրան և զաշխատեալ ի վերայ ազգիս մերոյ զթագաւորս Լեւոն, որ Միոյց զաւակ արծանութեան Հայկազանց տոհմիս. «Զի թէ ոչ Տեառն զօրութեանց թողեալ էր մեզ զաւակ՝ իբրև զՍոդոմ լինէաք և Գոմորայ նմանէաք»: Նա և զբարեհօգի Նախնիան զազգն Ռուբինեանց և զՀեթմեանց, և զմեծ արքայն զառաջին պսակաւորն զթագաւորն Լեւոն, և զամենապարկեշտ և զառաջին զուստր Նորին զմարգասէրն և զքրիստոսասէրն զթագուհին Զապէլ զմայր արքայիս: Եւս և զերանելի հայր սորա զբարի թագաւորն զՀեթումն, զգովեալ և զհռչակեալն յամենայն ազգաց և ի հանուրց բերանոյ. որ ընդ ամենայն բարեաց և աստուածսիրութեանց յաւել և զայս, զի յորժամ եղ ի վերայ աշխարհի գերփիչ և աւերիչ հեղեղ զօրացն՝ որ Մուղալ կոչի, սա սկիզբն վաղվաղակի ընդ մէջ բազում ազգացն Թուրքաց և երկայնաձիգ հեռաւորութեանն ճանապարհի և աշխարհաց, ծառայական և ստրուկ զծծութեամբ՝ զառաջինն այլակերպեալ ընդ դեսպանաց իւրոց, եհաս առ ղանն մեծ, և զհաշտութիւն և զխաղաղութիւն աշխարհի և ազգի մերոյ հնարեցաւ. որպէս Տէրն որ զծառայի առեալ զկերպարանն և թափեալ յանճառ աստուածութեան փառաց՝ արար զմեր փրկութիւն. որով իմաստութեամբ Նորին թագաւորին՝ յորժամ աշխարհ ամենայն և մեծամեծ թագաւորութիւնք ի սուր սուսերի մաշեցան, մեր փոքրագոյն գաւառն[1] և ազգ՝ անվնաս ապրեցաւ, և յաւիտեան առ նոսին հաւատարիմ պատուեցաւ. որով արժանացեալ յիշեալ լիցի ի Քրիստոս: Յիշեցէք և զթագաւորահայրն զծնող Նորին արքային Հեթմոյ զՊարոն Կոստանդին՝ որեամբ նահատակեալ որդւովք իւրովք ի Տէր, և մանաւանդ զորդի թագաւորին զՊարոն

1. Կիլիկիա, Ռուբինեանց թագաւորութեամբն:

Թորոս, զկրտսեր եղբայր արքայիս մեր, որ ընդդէմ զինեալ եգիպտացի զօրացն՝ վասն քրիստոսական կրօնիցն և եկեղեցւոյ սրբոյ և ազգիս մերոյ, արեամբ նահատակեցաւ։ Յիշեցէք և զամենաբարեգործ և զքրիստոսասէր դշխոյ արքայիս մերոյ զօրհնեալն ի կանայս՝ զթագուհին զկեռան՝ ղկիր[1] Աննայ, որ մայրաբար խնամօք զբոլոր եկեղեցւոյ որդիս յանձանձէր, և զհայրական այցանութիւն ամենայն աղքատաց՝ առատաձիր տուրս՝ զուարթամիտ ողորմութեամբ լնոյր. իբրև զնորատունկ ձիթենի ծաղկեալ լու.սաւոր գործովք, և բարերոյս ծննդովք[2]. կատարեալ ի սակաւուն, զերկայն ժամանակաց վաստակ և պարդիւնս ելից. և յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս[3], յորժամ արքայ նորին տէրս՝ ճանապարհորդեալ էր յարեւելս ի դուռն ղանին Արղունին։ Յիշեցէք և զբարի յիշատակն սոցին զարքայիս։

1. Տիրուհի նշանակող յունական բառն, որոյ յարելով Թագուհւոյն ընիկ Աննա անունը, միանգամայն համառօտելով կոչէին Կիռ-Ան կամ Կեռ-Ան. և շատ կանայք այսպէս կոչուեցան։

2. Թէ մէկիկ թէ խեղեփ, զոյգ (երկուորեակ) ծնանելով՝ 15 կամ 16 զաւակ ընծայած է Կեռանն։

3. Կեռան թագուհի վախճանած է յ'9 օգոստ. 1285։

## Բ.

## ՄԻԱԲԱՆՈՒԹԻՒՆ
## ԼԵՒՈՆԻ Բ ՑՈՒԽՑ ՏԱԹԵՒՈՑ ՎԱՆԱՑ

(ՍՏ. ՕՐՊԵԼԵԱՆ. ԿԷ.)

Ծերական աւեօք եպիսկոպոսն բարեբարոյ Տէր Հայրապետ՝[1] յաղթեալ ի սիրոյ Տեառն իւրոյ՝ գնաց ի տեսութիւն աստուածակոխ տեղեացն Երուսաղեմի. և հասեալ փափագմանն լնու զտենչումն երանելի ոգւոյն, և դառնայ առ աստուածապատկ Թագաւորն Հայոց Լեւոն: Եւ նորա ի վաղ ժամանակաց ցանկացող եղեալ միաբանութեան սուրբ և գերափառ ուխտին Տաթեւոյ՝ խրախացաւ մեծապէս ընդ հանդիպումն եպիսկոպոսին. և ըստ մեծայոյս հաւատոյն կազմեալ ընծայ թագաւորական սուրբ և երկնանման եկեղեցւոյն՝ զգեստ սեղանոյն, յարքունական մետաքսից՝ զբիւզանդացին՝ որ ի Յունաց ճարտարացն աննման կիտուածօք[2], և խաչ պատուական ի ոսկիտակափայլ և սաւնատեսակ քարանց՝ համակ կերպացեալ և պնդեալ յոսկում, և ակինք պատուականք ի զուտ արծաթոյ, և այլ բազում պարգեւս եպիսկոպոսին: Եւ գրէ իւրով ձեռամբ յիշատակ ինքեան.

«Մարդիկ՝ որ հոգւոյ աչօք յանփախճան կեանսն հայեցան,

1. Սիւնեաց արքեպիսկոպոսն էր Հայրապետս, որոյ մահարձանն է այս քանդակս, երկու կողմն գրուած է. ՋՏՐ ՀԱՅՐԱՊԵՏ ՍԻՒՆ–ԵԱՑ ՆՊԻՍԿՈՊՈՍ ՅԻՇ(եցէք):
2. Յայտնի է Կոստանդնուպօլսի Յունաց ճարտարութիւնն մետաքսեղէն հիւսելոյ. պէսպէս ծաղկօք և զարդուք:

Մինչդեռ ի մարմնի էին՝ փրկութեան հոգւոյն ջանացան.

Յաղագս որոյ եւ Լեւոն թագաւոր ազգին հայկազեան՝

Եւ խոստովանող ուղիղ հաւատոյ համագոյ Սուրբ Երրորդութեան,

Յայս աստուածընկալ սուրբ ուխտ խնդրեցի լինել միաբան,

Որպէս զի հաղորդ եղէց ի նմանէ ամենից որ աստ բարութեան.

Որ և աղերսեմ առ ձեզ աստանօր, անձինք սրբազան,

Զի մեզ և նախնեաց մերոց որք հանգեան յաւուր յարութեան,

Լիցի՝ աղօթիւք ձերովք հասանել մեզաց թողութեան,

Եւ արքայութեան երկնից արժանի լինել հանգստեան.

Ընդ որս և որդւոց մերոց և զարմից որ գան մեր փոխան՝

Մնալ ի յերկրի կենօք ընդ երկայն աւուրս բարութեան»։

Ի թուիս Հայոց ՉԼԱ, Յեպիսկոպոսութեան Սիւնեաց Տէր Հայրապետի և Տէր Յովհաննիսի[1], հզօր և բարեպաշտ արքայն Հայոց Լեւոն՝ տիրապետեալ արեւմտեան նահանգին Կիլիկիոյ, մեծագոյն յաւուր և առատ պարգեւօք միաբանեցաւ ի սուրբ ուխտս միեղջն եղբայրութեանս, որպէս յայտ առնեն վերոգրեալ բանքդ։ Արդ, որ զկնի մեր գայք բնակել յայս աստուածաբնակ տեղի աղօթից, և ամենայն բարեգործութեան որ աստ կատարին, հաղորդ կալջիք զբարեսէր թագաւորն Հայոց Լեւոն՝ հանապազորդ յիշմամբ առ Տէրն մեր Փրկիչ օրհնեալն յաւիտեան։ Յաղագս այսր յաւսոյ և սիրոյ աստուա-

1. Աթոռակալն և յաջորդ Հայրապետին։

ծազօր Թագաւորին՝ եղբայրութեամբս կարգեցաք զօր Սրբոյ Զատկի Յարութեան միաշաբաթուն՝ յիշատակ նմա, որ կատարեն զպատարագն յամենայն եկեղեցիս անխափան, մինչ ի վախճան։

Գ.

## ՃԱՇՈՑ ԳԻՐՔ ՊԱՐԳԵՒԵԱԼ Ի ԼԵՒՈՆԷ ԵԿԵՂԵՑԻՈՑՆ ՀԱՅՈՑ Ի ՓԵՐՈՒԺ[1]

Լեւոն շնորհաւքն Աստուծոյ և աւգնականութեամբ նորին Թագաւոր ամենայն Հայոց, որդի հանգուցեալ արքային Հեթմոյ, վասն խնդրոյ Յոհաննիսի քահանայի, պարգեւեցաք զՃաշոցգիրքս զայս իւր եկեղեցւոյն Ս. Մատթէոսի Աւետարանչի, որ է ի Փերուժ քաղաքի, ի յիշատակ մեր և նախնեաց մերոց. ի թվականութեանս Հայոց ՉԻԸ։

1. Իտալիոյ՝ որ և է Հայ գաղթականներ ընդունող քաղաքաց՝ առաջիններէն մէկն է Բերուճիա, Perugia, զոր փառանկ արտասանութեամբ Փերուժ գրեր է Թագաւոր մեր Լեւոն Բ։ Հայ կրօնաւորաց գալն և եկեղեցի հաստատելն այս քաղքիս մէջ՝ 1262–5 թուականաց միջոց եղեր։ Լեւոն յամին 1279ին պարգեւեր է զգիրքս՝ զոր Ճաշագիրք կոչէ և հիմայ սովորաբար Ճաշոց կ'անուանի. գիրքն իբր յիսուն տարի առաջ գրուած էր, այսինքն ի թուին ՈՀԹ (1230). հիմայ այս պատուական մատեանս պահուի յեկեղեցւոջ կամ ի Հայաստանն Հռովմայ։ — Պարգեւի խնդրողն և ընդունողն յայտնուի Յովհաննէս քահանայ. միւս յիշեալքն այլ թուի թէ հոն ի Փերուժ էին։ Դիտելի է անուններն, Հեթում և Օշին, զուտ Ռուբինեան տէրութեան ծաղկած ատենի յաճախեալ անուանք։ Լեւոնի թուականէն յիսուն տարի վերջ այլ գտուին յիշատակք այդ Փերուժի Հայոց և եկեղեցւոյն, նաեւ անկէ 70 տարի վերջ յիշատակ մի եւս, հոն մահուան և թաղման Թովմաս եպիսկոպոսի Հայոց։

Յիշեսջիք և զիս զՀեթում նուաստ սարկաւագ, ով սուրբ ընթերցողք, և զեղբայրն իմ զՂուկաս քահանայ և զԱւշին սարկաւագ. և որք յիշէք՝ յիշեալ լիջիք ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր. որ է աւրհնեալ յաւիտեանս. ամէն։

---

# ՅԼԶ

## ՅԻՇԱՏԱԿՔ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՐՔԱՅԵՂԲՕՐ[1]

### Ա.

Ես Յովհաննէս եպիսկոպոս և Բաբուն, ծառայ մեծին Աստուծոյ և ընտրելոցդ, որդի մեծ իշխանաց իշխանին Կոստանդեայ՝ արքահամեան ծերունւոյ[2] և աշխարհաշէն առաքինւոյ, և եղբայր համահայր ի Քրիստոս փոխեցեալ բարեպաշտ արքային Հեթմոյ, որոյ յիշատակն օրհնութեամբ, և ցօղ կենսակայլակ կողից Կենարարին իջցէ ի դամբա-

1. Հեթում թագաւորին համահայր (Կոստանդին Պայլ) այլ ոչ համամայր եղբայր ըլլալով՝ իրեն յատուկ եղեր է Արքայեղբայր կոչուիլն. յայտ է որ ինչպէս և ինքն կ՚ըսէ՝ կրսեր եղբայր էր Հեթմոյ և ուրիշ համամայր եղբարցն. և ինչպէս նոքա ամենքն նշանաւոր եղան ի քաղաքականութեան՝ ինքն ի կրօնական վարս և ի գիտութեան, ազնիւ բարուք. որոյ վկայ են իր ձեռագիր յիշատակարանքն: Ծաղկահասակ եպիսկոպոս ձեռնադրուած է (1259–60ին) և առաջնորդ Գռներ վանաց. վախճանած է յամի 1289: Իր վրայ աւելի տեղեկութիւնք գտուին ի Սիսուան, (եր. 144–7): Իր ձեռնագիր Ս. Դիոնիս. Արիոպագացւոյ գրոց Յիշատակարանն է սա:

2. Այսպէս կոչէ զհայրն երկարակեաց ըլլալուն և նահապետական կեանք մ՚անցընելուն համար՝ իր բազմաթիւ որդւոց մէջ:

բան չիրմի նոցա. ամէն[1]: Ի թվականիս Հայոց ՉԻ (1271) գրել եղաւ զիմաստալի և գերապատուամ տառս Սրբոյն Դիոնիսիոսի Աթենայ եպիսկոպոսի, և տիեզերալոյս վարդապետի, ի թագաւորութեանս քրիստոսապսակ արքային Լեւոնի տեառն իմոյ և եղբօրորդւոյ, զոր աջն Աստուծոյ միշտ պահեսցէ ի չարէ, աստուածաշնորհ զաւակօքն իւր՝ Հեթմիւ և Թորոսիւ և Ռուզբինեաւ[2], փառաց ի փառս բարձրացուցանելով. ամէն: Եւ գրեցաւ սա յերկուց գրչաց՝ ի Ստեփաննոսէ և ի Յովհաննիսէ, որոց Տէր ողորմեսցի. ի կաթողիկոսութեանն Տեառն Յակոբայ, յորմէ և զօրինակն ընկալայ, ի լուսաւորութիւն խաւարելոյս և յիշատակ բարի ինձ և ծնողաց իմոց և համայն զարմից: Աղաչեմ տերամբ Աստուծով որք օգտիք ինչ ի սմանէ և կամ գաղափարէք, ողորմութիւն և թողութիւն խնդրեցէք մեզ ի Քրիստոսէ Աստուծոյ, զոր և ձեզ տացէ Քրիստոս:

Բ.

Առ Տիկին Եղբօր (Հերմոյ[3]) դուստրն.

Յ[4] աստուածային սէրըն հարեալ
Սա որ հրով նորին վառեալ,
Որ և ըղտառս այս ըստացեալ
Բամբիշըն[6] մեծ Տիկին կոչեալ,

1. Դեռ նոր, տարի մ'առաջ վախճանած էր Հեթում:
2. Ասոնցմէ ետքը ուրիշ զաւակներ այլ ունեցեր է Լեւոն Բ. Ռուբէնն մատաղաշ հասակով մեռեր է:
3. Տիկին եղած է Յուլիանէ՝ Սիդոն (Սայտա) քաղաքի և վիճակի տիրոջ, որ պատուոյ անուամբ Սիր կոչուէր. Sire, կինն այլ Dame. Առ սա կ'ընծայէ Յովհաննէս Սողոմոնի գրքերը, փոքրիկ հատոր մի, մատամբ իր ձեռօք գրած, որ հիմայ ի մեր քով է, ի Ս. Ղազար:
4. Տնազլուխ տառքն կապեն, Յոհաննէս անեմ:
5. Dame պատուանուան փոխանակ՝ հայերէն:

Նուիրեալ զանէն նոր զուարթ լեալ՝
Որ էր ազգայ Հայոց ծնեալ.
Ձայնաւոր զօր ծանուցեալ
Ընդանց Թագին այն բաղձացեալ.
Գ՝երապատկերար սովաւ պնդեալ
Լի թագաւորօք ընդգառաջեալ
Գ՝որ փեսային է Հարսնացեալ,
Մուից գրախտին արժանանալ։
Գ՝եղջկին սովաւ Թախծեալ
Երկամբք մատանցս ընդոս տանեալ.
Ստես որ ի մի զարծ ընկերեալ
Փոքր ինչ յայլոց օժանդակեալ.
Սատարօք վերջս և որք օգնեալ՝
Հայցեմք բարի մասըն մեզ տալ,
Ջրել ձեօք ի Հրոյն գանձեալ
Մեք մերայօքըն զայս ժրեալ.
Սրբոյիւք ի ձեզ եմըք դիմեալ
Բուռըն զանից ձերոց Հարեալ.
Գ՝րանութեան սուրբ վիճակեալ
Եւ Թողութեան պարգեւ շնորհեալ.
Զեզ և մերացն յիշողըն յիշեալ
Եւ համայնիւքս Աստուած օրհնեալ։

* [1] Զիմաստութեամբ լցեալն և զամենայն բարենձեւութեամբ զարդարեալն, զսիրողն Աստուծոյ և զսպասաւորն ամենայն ծառայից Նորա զարքածին[2] բամբիշն Յիմի և զաստուածապարգեւ զաւակն Նորին՝ զՊաղիան և զՃոշան և զՀեզանազն Մարկոշն[3] յիշեցէք ի Քրիստոս Աստուած, ստացողք սորա և վայելողք։ Եւ Աստուած զձեզ յիշեսցէ ի բարի։ Այլ և զեղկելիս Ցոհան եպիսկոպոս՝ մի՛ մոռանայք զգրողիկս անարժան։

1. Նոյն գրոց մէջ ուրիշ յիշատակարան մը։
2. (Հեթում) թագաւորէ ծնած։
3. Աղջիկ է, Մարգարիտ անուն համառօտեալ։

* 1 Ընկալ ո՛վ աստուածասէր և գթասէր հայր, մեծդ
ըստ մարմնոյ և բարգաւաճդ ըստ հոգւոյ՝[2] ծիրա-
նածինդ[3] Ֆիմի, զբաղձալին քո՝ երկամբք ձեռին
մեղապարտիս Յօհ. եպիսկոպոսի կրսերոյ եղբօր հօր
քո. Որով յԱստուած և յաստուածայինսն խոկա-
ցիս միշտ, և տրտմեալ սրտի քո սփոփանս սովա-
րասցես[4]. գիտելով զի սեփհական է մարդոյ նժդե-
հութիւն և պանդխտութիւն և փորձանք։ Որոց ան-
դորր տացէ ձեզ որ ամենահնարն է։

## Գ.

Զեղկելիս ոգի, զՄխիթարքայս[5] գրող և զտառիս
ստացող՝ զմեղապարտ ծառայս Աստուծոյ և ամե-
նայն ծառայից նորա, զՅովհաննէս եպիսկոպոս
զեղբայր բարեպաշտ արքային Հայոց Հեթմոյ և
զորդիս մեծին Կոստանդեայ, աղաչեմ զվայելողդ
սորա և զժառանգողդ և որք լուսաւորիք սոքօք,
յիշել սրտի մտօք զմեզ, ծնողօքն մերովք և հա-

1. Դարձեալ նոյն գրոց մէջ յիշատակարան մի։
2. Մտօք, գիտութեամբ կամ բարեպաշտութեամբ
այլ նշանաւոր։
3. Թագաւորական ըլլալով Ծիրանածին կոչուի։
4. Փափկիկ վիրաւորեալ սրտի փափուկ ձեռօք և
մտօք մխիթարանք։ Ազնիւ տիկնոջ Ֆիմեայ ցաւերն
այլեւայլ էին. մէկ մ'որ Յուլիան իր տէրութեան եր-
կիրը ծախեց, որոյ վրայ շատ նեղացաւ իր աներն
Հեթում թագաւոր. մէկ մ'այլ որ որդւոց մէկն տա-
րաժամ դիպուածով մի մեռաւ. առոնցմէ աւելի՝ իր
էրկան պաղութիւնն և խստորիլն, որոյ համար յան-
դիմանութիւն գրած է առ նա Պապն Հռովմայ, ջատա-
գովելով Ֆիմեայ արժանաւորութիւնը։ Ֆիմի յիշուի
շատ տարիներ վերջը՝ ազնուական տիկնայց կրօնա-
կան միաբանութեան մի ընկեր եղած։
5. Յովհաննէս՝ հին կտակարանի Սիրաքայ գիրքն
օրինակելով՝ գրեր է զայս Յիշատակարան՝ ամբողջ
Աստուածաշունչ գրոց մէջ, որ պահուի յէջմիածին։

մայն ընտանեօք և երախտաւորօք. Թողութիւն և ողորմութիւն և հանգիստ գտանել ի Քրիստոսէ Աստուծոյ, այժմ և յապագային. զի կարող են մեզ ձերդ բարի յիշման, որպէս և Տեառն ողորմութեան, և որ առատն է ի բարիս Աստուած, մեզ և ձեզ և ամենեցուն ողորմեսցի. որ է օրհնեալ բարեբանեալ և երկրպագեալ յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Դ.

Յամին ՉԻԹ (1280) Թուականիս Հայոց, ես Յովհաննէս եպիսկոպոս նուաստ ծառայ Աստուծոյն իմոյ Յիսուսի Քրիստոսի և կրսեր ձեր ծառայակից. որդի քրիստոսասէր և բարեպաշտ իշխանաց իշխողին Կոստանդեայ Թագաւորահօր և արքայհաւր Հայոց, և եղբայր քրիստոսապսակ քաջ արքային Հեթմոյ, շնորհիւ ողորմածին Աստուծոյ և աւրհնութեամբ և ջանիւ ամենաւրհնեալ հօգի հաւրն իմոյ Կոստանդեայ, եղէ այցելու սուրբ անապատին Գռներ կոչեցեալ, ի գաւառս Կիլիկիոյ՝ ի գաւառն Բերդիկն Բարձր ասացելոյ[1]. յորժամ տիրէր հայրն իմ դղեկին և կրսերս անապատին, յորում տաւաղեալ բնակէր իւր յանխռով և յանքայթ նաւահանգստի, բերկրեալ միշտ աստուածաշունչ տեսլեամբ մեծ նահապետ հաւր մեր, և կրթեալ սուրբ տառիւք. տեսի զնորին շինեալ գիւղաքաղաքն յանուն իւր Կոստընդնենց կոչեցեալ՝ լի ի Քրիստոս հաւատացելովք բազմօք առաքինի երիցամբք և սարկաւագօք. ընդ որս խրախացեալ՝ յանձին կալայ իմովս իսկ մեղսամակարդ ձեռամբքս գրել նոցին զսուրբ Աւետարանս. յոր և յանկ ելեալ Տերամբ ի մէջ ամբոխից և պատերազմաց. զի Թէ-

1. Գարզօրէն Բարձրբերդ կոչուի, և գրեթէ Կիլիկիոյ ամենէն նշանաւոր և հին բերդն էր:

պէտ ոչ էի յոյժ հմուտ գրչութեան[1], այլ վասն Տեառն իմոյ Քրիստոսի սիրոյն, նա և հօրն իմոյ և եղբարց ի Քրիստոս փոխեցելոց, որոց Տէր ողորմեսցի. ամէն: Եւ ես վասն հոգացելոցս և մոռացելոցս յիշմանց գրեցի զսա՝ լաւ և ընտիր կազմեալ որպէս տեսանի, և ետու զսա ի գեւղն Կոստնդնոց, որ էին Նախ Կարմիր-գառակնի կոչեցեալք, յիշատակ մեզ և վայելս ապագայցդ: Վասն որոյ աղաչեմ Տերամբ զվայելողսդ՝ յիշել ի բարին Քրիստոս, մերայովքն անմոռաց յիշմամբ, և Թողութիւն և հանգիստ գտանել համայն Թագազնէիցն մեր[2]: Եւ որք յիշէքդ յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերմէ: Մի՛ ոք իշխեսցէ իւր առնել հայրենիք կամ յափշտակել կամ գողանալ կամ ծախել կամ աղաւաղել զբան յիշատակի մեր. այլ որ յանդգնի՝ մասն զՅուդային առցէ, և որ մեզ լսէ և յիշէ՝ բիւր բարիս ի Քրիստոսէ գտցէ: Բայց գրեցաւ ի յոյժ տրտմութեան ժամ. զի այս երիցս անգամ քրիստոսատեացք Եգիպտացիք հրձիգ զամենայն Կիւլիկիա արարին: Եւ քրիստոսասէր տէրն իմ և եղբայրորդի՝ արքայն Լեւոն՝ իբրեւ գթած հայր ժողովէ և մխիթարէ զմնացեալսն, և եւս բարւոք պատուաստէ. զոր աջն ամենակալին Աստուծոյ որդւովք իւրովք պահեսցէ միշտ ի չարէ, ի կրկին կեանս Թագաւորեալ: Այլ և զերջանիկ կաթուղիկոսն Հայոց Տէր Յակոբ համայն լրութեամբ եկեղեցւոյ՝ Քրիստոս Աստուած միշտ պահեսցէ մերձ իւր, և զամենայն գնեալքս սուրբ արեանն իւրոյ յինքն միացուսցէ ողորմութեամբ իւր Քրիստոս, օրհնել զնա ընդ Հօր և Սուրբ Հոգւոյն յաւիտեանս. ամէն:

1. Ընդ հակառակն շատ գովուած է իր վայելչագրութիւնն, ինչպէս մնացեալ ձեռագիրքն այլ վկայեն:
2. Իր թագաւորական ցեղին, հօրն և եղբարցն, որոց վախճանելէն վերջը գրած է այս գիրքս:

## Ե·

Զեղկելի ոգիս զՅովհ. եպիսկոպոս զԱրքայեղբայր Հայոց, զգրող սորա[1] և ստացող, որք ժառանգէք զսա կամ գաղափարէք, յիշեցէք զծնողս մեր և զբնաւ զարմսն՝ մեօք հանգեալս. զի յոյժ աշխատանիմ յուղղոյն գիւտ[2]. և զձեզ Տէր յիշեսցէ. ամէն:

* Շնորհիւ Տեառն և ողորմութեամբ կատարեցաւ սուրբ Աւետարանս[3] ի յընտիր աւրինակէ, ի վայելչութիւն ստացողի իշխանի Պր. Սմբատայ, որդւոյ հանգուցելոյ և բարեպաշտ իշխանին Պր. Կոստանդեա և հանգուցելոյ մայրն[4] իւրոյ տիկին Շահանդուխտին, և հանգուցելոյ եղբարցն, Պր. Բահոյրամն[5] և Պր. Կոստանդ: Գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ սուրբ և ընտրեալ աստուածահաճոյ արքեպիսկոպոսին սուրբ ուխտին Գռներոյն Տէր Յովհաննիսի, որդի աստուածասէր և բարեպաշտ իշխանաց իշխանին՝ հանգուցելոյ ի Քրիստոս Պր. Կոստանդեայ Թագաւորահօրն: Գրեցաւ սա ի հայրապետութեան Տեառն Յակոբայ և ի թագաւորութեանն Հայոց աստուածասէր և բարեպաշտ թագաւորին Լեւոնի. Գրեցաւ ի մեծ թուական. Հայոց ՉԻԷ:

1. Աւետարան. որ հիմայ պահուի ի գրատան Մոնագոյ քաղաքի Պաւիերայ:
2. Աստ նման և ուելի մանր յիշատակներ գրած է շատ տեղ, և ի լուսանցս գրոցն նշանակած գրչագրաց տարբեր ընթերցուածքը, մինչ մեծ հոգ ունելով ստոյգը գտնելու. այս է յուղղոյն գիւտ ըսածն:
3. Գրոց բուն Յիշատակարանն է այս:
4. Այսպէս գրուած էր, փոխանակ մօր գրելու:
5. Սովորաբար գրուի Բահրամն: Այս իշխանքս թոռին Հեթմայ (Ա) հօրեղբօր ցեղէն:

## Ձ.

[1] Յիշատակ հօրն և եղբօր (Հեթմոյ) և թոռանց.

Դատապարտ այցելու[2] և անիմաստ բարբառն Արքայեղբայր Հայոց Յովհաննէս՝ որ երբեմն Պաղտաւոյն[3], որդի քրիստոսասիրեալ և ամենընտիր երջանիկ և բարեպաշտ իշխանաց իշխանին և Թագաւորահօրն՝ Պարոնին ամենայն Հայոց Կոստանդեա մականուն Մոզոն[4] կոչեցեալ, յՌուբինեանց տոհմէ, որոյ յիշատակն օրհնեալ յԱստուծոյ և յաստուածայնոցդ լիցի միշտ. ամէն: Ցօղ կողից Կենարարին յառկերս նորա տեղասցէ. ամէն: Ի հոգիս նոցա Հոգին Աստուծոյ հանգիցէ, և ի լոյս երեսաց իւրոց լոյս փառացն Հօր ընդ սուրբսն դասեսցէ զնոսա: Արդ, ի Թուականիս Հայոց ՉԼԸ (1289) գրել[5] ետու զեռափափագ և իմաստատու հոգենիւթ և աստուածարեալ բանքս Սրբոյն Դանիէլի մեծ վարդապետին և հոգեխառն իմաստնոյ՝ Սարգսի Նորակերտ[6] գրչի վանից երիցու, որոյ Տէր ողորմեսցի: Եւ քանզի յոյժ վատթարեալ տխմար գրչաց տեսի զօրինակն, յորս բնաւ իսկ ոչ և կամ սակաւ ինչ

1. Դանիէլի Ասորւոյ Սաղմոսաց Մեկնութեան հայերէն Թարգմանութեան օրինակի մի Յիշատակարանն է այս:

2. Եպիսկոպոս ըսել կ'ուզէ:

3. Իր առաջին անունն էր, այն ժամանակի դըրակից Փռանկներէն առած, և ընտանի անուն մի դարձած առ Կիլիկեցիս մեր:

4. Չէ յայտ ինչ պատճառաւ այսպէս կոչուեր է Կոստանդին Պայլն՝ հայրն Հեթմոյ, Յովհաննու, Սմբատայ Գունդստապլի և այլոց:

5. Նոյն Թուականին այլ վախճանած է ինքն Յովհաննէս:

6. Սարգիս անուամբ երիտասարդ վանահօր մի գրել տուած է:

գտանի ճշգրտութիւն, երկու օրինակս եդի առ իրեարս, և յոյժ քրտնաջան և մեծախոնջ տաժանմամբ ուղղեցի ըստ կարի. որպէս յայտ ահա գիտնոցդ երեւի. յոյժ համազոյգ էին մինչ ի ԿԸ սաղմոսն. և զկնի այնց կարի եւս բայից երկարութեամբ զատեալ գտանին ի միմեանց, թէպէտ և ամբողջ մտացն էութիւն գոյր ի նոսա, և արահետ իսկ գոյր ի միոյն բանքս գրեալ յինէն։ Վասն որոյ Տերամբ Աստուծով աղաչեմ զսուրբսդ մեր՝ զժառանգողսդ սորա և զօրինակողսդ, և որք աշխատասիրաբար ուշիմութեամբ ընթեռնոյք՝ ուղղածուծ զանծախս ծաւալումն առնել[1]։ — Յիշեցէք սրտի մտօք զմեզ մերայովքն ի բարի և յանմոռաց յիշումն Քրիստոս՝ ներումն յանցմանց, քաւումն պարտեաց, գրումն ի գիրն կենաց, ազատ ի գերչաց, հաշտ ի խռովութեանց, և հուպ[2] ի տարաբնակաց, աջակայ յահեկաց, և բարձրաթռիչ ի սրաթեւ բնակաց։ Նա և բնաւ իսկ ի գերն մեր գլուխ Քրիստոս միանալ՝ համայն ի նա մկրտելոց, եւս և զմեզ յիշողսդ և զ՚ի սա աշխատողքս. ամէն։

Աղաչեմ սուրբ և մաքուր զսա պահել, գրել իսկ և մի՛ գողանալ և խորել։ Օրհնեալ են յԱստուծոյ լսողք և յիշողք մեր. ամէն։

* Բնաւորական իմն է բանական սեռի՝ բարւոյն բաղձալ և նմանել նախատպին ըստ կարի գիտողացն զնա, ի վեր՝ զօրէն հրոյ միտել և զակն հոգւոյ ի գերն մեր գլուխ[3] առնել, կի վեհիցն է և բարձրագունից՝ յովտէս տխրութեան բարձրանալ և զթակարդիւք սորա անցրաքայլել. ո՜ն անդր ի

1. Այսինքն, լաւ չկակղած չարադրութիւնը՝ մտադրութեամբ քննել հասկանալ։
2. Փոխան հեռաբնակութեան մօտաւոր ըլլալ. ձախակողմեանի տեղ՝ աջակողմեան ըլլալ. և այլն։
3. Հոգւով նայել ի գերագոյն գլուխն՝ յԱստուած։

վեր ելանել և հրազինեամ[1] լուսափայլեցն վսեմաց պատրաստեցիլ: Իսկ ես Յովհաննէս Արքայեղբայր որ երբեմն Գաղտուոյն, որդի քրիստոսամեծար և ամենեբջանիկ աստուածարեալ իշխանաց իշխանին և Հայոց Գարոնին Կոստանդեայ մականուն Մոզոն, որոյ յիշատակն օրհնեալ միշտ յԱստուծոյ և յաստուածազանեցդ եղիցի. ամէն:

Դատապարտս այցելու անհիմաստ բարուն հոգս և նուաստ ձեր ծառայակիցս, ոչ ընդ սակաւ գտանիմ պարտեաց անկեալ՝ Տեառն իմոյ արարչին և վասն իմ խաչեցելոյն, զի մոռացող անթիւ երախտեաց և բազում բարեաց նորա եղէ, ի ստորակայս ծուեթ յար պչուցեալ, և ի ցանկալի տեսոյ իւրոյ վրիպեալ, կայ զանկայս և էակ զոչէս[2] վարկուցեալ: Յորմէ շնորհիւ գթածի Տեառն իմոյ և հաստչի Յիսուսի Քրիստոսի ստեղծչի և նորոգողի Աստուծոյ՝ իբր ի թմրական քնոյ ընդոստուցեալ տագտապմամբ՝ ի ոքանչելի պատուիրանս նորա ուշմաբար նայեցեալ և ալտափարատ լուսով հրճուեալ, յինէն անծանօթ անուանս կրեալ և լուսատու բանիւքս ազդեցեալ, զբերան հոգւոյս բացեալ և կաստուածագիծ մատեանս կլեալ, որ քաղցր ի քիմս մասցս իմ գտեալ քան թէ զխորիսխ մեղու ճաշակեալ, որով յոյժ եղէ ճոխացեալ, քան որ ոսկւով և ակամբք է փարթամացեալ, և յիմ ձայնս իսկ ջանասիրեալ. զի զանգիւտս ի գիւտ գրիս արկեալ, և զոր յախմար գրչաց էր այլայլեալ՝ յօրինակաց բազմաց տաժանմամբ եղեւ յարմարեալ. զօրէն ջրոյ խողովակի ասուբայդ[3] եմ անցուցեալ, և զոգւոց ձեր պտուղ անթարշամ ոսլաւ արարեալ. վարուք տե-

1. Հրաշէն կամ հրազինեալ նշանակէ, այսինքն հրեշտակաց պարակից ըլլալ:

2. Անկայուն անհաստատ բաները (աշխարհիս) կայուն հաստատուն համարեցայ, և ոչինչը՝ ինչ:

3. Անծանօթ բառ, թերեւս ասորերէն, թուի ընթերցող կամ նման բան մի նշանակել:

բեւախիտ զմարմինս փթըթեալ, և իմաստիւք զմիտս գրոց պարզել սովաւ կամեցեալ, երջանիկ պարու-պետաց պարակցեալ, և աչալուրջ տեսլեամբ ար-քային մեծի զուարճացեալ, լի լապտերօք մտից փե-սային ժամանեալ, և անաղտ սիրով ի սէր նորին խառնեցեալ: Այո՛, ամէն, եղիցի:

Արդ՝ պաղատանօք սրտի ջերմ արտասուօք հայ-ցեմ ի ձէնջ՝ հարք սուրբք և եղբարք ի Քրիստոս և որդեակք, ժառանգողք սորա և ընթերցողք և օրինակողք, յիշել ի բարին Քրիստոս զաստուածաբանս Յովհաննէս եպիսկոպոս, ծնողօք մեր և ընտանեօք և ամենայն նոցին ծննդօք, և համայն ի Քրիստոս հաւատովք՝ քաւութիւն թողութիւն հանգիստ և ողորմութիւն գտանել ի Քրիստոսէ յԱստուծոյ, այժմ և յապագայն, ամէն: Պաղատիմ մերդ ա-սուբաց՝ մի՛ աղաւաղել տալ զսա անմիտ մանգամբք, մի՛ մրճոտել, մի՛ անառիգած[1] և բերանարաց ձգել[2] մի՛ զգանձս հասարակաց գողանալ, խորել և ծրա-րել՝ իբր գծխտողն ստամբակ, մի՛ գիտնաց խնայել և մի՛ արհեստագէտ գրչաց արգելուլ յօրինակ տա-լոյ. մի՛ պարսել[3] զայսր խաչի[4] կազմող ձեր՝ զդայժ տաժանեալս յուղղույն գիւտ[5]. մանր է առել գիր և փոքր դիրք: Երեք օրինակ բերեալ՝ զմին ուղղե-ցի, և զսա եսու գրել Սարգիս քահանայի, և եւս ուղղեալ յինէն կրկին եղբարբք մեր վաստակա-կցօք. որոց Քրիստոս Աստուած ողորմեսցի նոցա և նոցայոցն. ամէն. Եղիցի, եղիցի:

1. Առանց դատտառակի, վայելուչ կտաւի՝ չի բռնել, կամ չպլլած պահել:

2. Երես ի վար բաց ձգել կամ դնել:

3. Եթէ ոչ պարսաւել պէտք էր ըլլալ, կըրնայ նշա-նակել եւս՝ քարկոծել, արհամարհել:

4. Այսպիսի անուշ կերակուր ուտելիք պատրաս-տողս:

5. Շատ աշխատողս ուղիղը, չիտակ գրուածը գըտ-նելու:

Գրեցաւ ի Թվին Հայոց ՉԼԸ, Լիսոնկա[1] վանքն, ի կաթող. Տեառն Կոստանդեայ Երկրորդի՝ յայս ամ եղելոյ. ի Թագաւ. Լեւոնի բարեպաշտի և քաջի, և աստուածաշնորհ զաւակաց նորա, Պարոն Հայոց Հեթում աստուածապատ երջանիկն ի հանուրս և անհամեմատ ի բնաւս[2]. զոր Քրիստոս փրկեսցէ միշտ ի չարէն. ամէն. և Պր. Թորոս, Սմբատ, Կոստանդ, Ստեփանն, Ռուբէն[3], Աշխէն: Այն Աստուծոյ հովանաւորի նոցին. Աստուած զձեզ յիշեսցէ. ամէն:

## Է.

Յովհաննէս՝ յարքայն Հեթում մինչ ի Տարսոն էր[4]. որոյ նախագիծ տանցն ըստ անուանն է ոգեալ[5]. .

Երրորդութիւն Սուրբ Աստուած անսկիզբն և անեղ, Անկէտ, անվախճան, աներր,

1. Պէտք է որ կարդացեր են գաղափարողք այս վանացս անունը. Ոսնկա, Սոսնկա, Խոսնկա, Լիսոնկա, ուղղագոյն կ'երեւի Լիսունկան, զոր Թագաւորահայրն Կոստանդին հաստատած է, կ'ըսէ մեր Նոր պատմահայրն Չամչեան, չգիտեմ ինչ յիշատակի մէջ գտած. լատիններէն (Հայոց Թղթին) թարգմանութեան մէջ՝ Լիսնանկա գրուած է:

2. Շատ գովութեամբ յիշէ սա որպէս և Յ. Երզնկացին՝ իր եղբօր Թոռն Բ. Հեթումը, որ արդարեւ արժանի է, թէ գիտութեան թէ քաջութեան և թէ բարեպաշտութեանն համար, և ոչ արժանապէս ճանչցուած և պատուած յազգայնոցս, մինչ յօտարաց դասեալ է և ի կարգս Երանելեաց (Տես Յօդ. 347. 350–1):

3. Սա սովորաբար փաղաքշական անուամբ Ալինախ կոչուի, և Օշնի խեղդեալ է (մէկ փորէ ծնած) ջուխտակ, և մէկմէկու անհնար սիրելի. այլ դժբաղդաբար՝ ջրի մէջ լոգանալու ատեն՝ միայն անհամբեր ոտից զոհ եղած:

4. Այսպէս գրուած էր, կամ փոխանակ եր գրելու, կամ երթայր բառին մասն է:

5. Թէ և աղօթական իմն է այս գրուածս, բայց

Բամայնից էից Հայր, յանգոյից արարիչ,
Ընդ քեզ գոյդ Որդի յարմարիչ,
Գոյիցըս տածիչ տարրից ու անտարրից՝ Սուրբ (Հոգիդ,
Ի Հաւրէ բղխեալ անըսպառ,
Սրբոց սրբարար, անձամբ բաժանեալ և զատեալ.
Բնութեամբ միացեալ և զուգեալ.
Հառաչման ձայնիս մատո զունկըն քո,
Չի աղքատ և տնանկ եմ ես, լուր ինձ Տէր։
Երբեմն անպատուած գոլով Հայկազեանք տիրէին
Բազմակոյտ ազգաց և ազանց.
Թագաւորդ ահեղ մերակերպական խառնութեամբ
Ազատեաց ըզգերեալքս անդարձ.
Մեծարգոյ անյաղթ ողորմութեամբ քո պահեցեր
Դարձեալ ըզմերն արքայութիւն։
Ոչ ձայն գոհութեան և ոչ մաղթանաց վերհընչեալ,
Այլ կացեալ անկռինչ անյարիր[1].

պատմական կարեւոր խնդրոյ մի համար, որ է Հեթմոյ Ա. Թաթարատան երթալով՝ յաջողութեամբ դառնալու խնդրուածք մի յԱստուծոյ։ Յովհաննէս Արքայեղբայրն՝ որ այս տաղնաւոր երգոյ անագլուխ տառերով այլ յիշէ իր կրսեր եղբայր ԸԼԼԱԼԸ, այն ատեն արդարեւ տարւօք այլ շատ կրտսեր էր. բայց տարիքէն վեր մտածութեամբ և արուեստով, զգացմամբ և իմաստութեամբ գրած է, ներելով քանի մի բառից խաղի կամ կրկնութեանց։ Ըստ նախնի հոգեւոր երգողաց՝ երկու մասն բաժնած է, որոյ երկրորդն փոխ կոչուի. առաջին մասին անագլուխ տառքն, կամ ինչպէս ինքն կ'ըսէ՝ Նախագիծք տանցն կապեն Երգս Հեթմոյ և արքային Հայոց. երկրորդին, Ա. Յովհաննէսն կրսերն իւր. ոգեալ, այսինքն առացեալ կամ երգեալ։ Այս երգոյ քերդողական չէնքն այլ ճարտարութիւն և նախընծայ հանճար յայտնէ հեղինակին։

1. Առաջ մինչ դեռ հեթանոս էին մեր նախնի հարք կ'ըսէ, հզօր և տիրող էին ազգաց. երբ Քրիստոս ազատեց զանոնք ի գերութենէ սատանայի՝ նորէն պսակեց թագաւորութեամբ. բայց անոնք ոչ ըստ բաւա-

Ցորոց վերջացեալ բունալիր քարանցն ձգմամբ
Քեցեալ ըզմեզ ետուր օտարացն.
Եղաք նախատինք զարմից համայնից և մատնեալք
Տերանց անբարեաց չարեաց։
Այլ դու Տէր անյիշաչար ոչ արարեր անտես իսպառ,
Պահեալ մի խանձող ի հրոյն, զոր սաղարթիւք (պըճններ առայգ.
Բամեալ ի դալար վայրոջ և հանգստեան ջրով (սնուցեր,
Որոց արքայ ընտրեցեր զոր աջով քո պըսակեցեր.
Քարոզ տալով մեզ ըզնա վարուք բանիւք փոխան (քո՝ Տէր.
Որոյ Հերոսմ մակագրէր, սիրոյդ սիրով յաւէտ (վառէր,
Անուամբ քո տէր նա կարգեցեր, նովաւ զներհա- (կըն խորտակէր.
Զքո սուրբ զեկեղեցիս զերապանձ միշտ և ճոխ (պահէր.
Ցորոյ հովանեաւն տավղեալք, ի միջօրեայ տապոյն (ապրեալք
Որդւովք, հարբն և իւր եղբարբք, զբարեանունդն (չնչէր մեզ սիգ։
Իսկ մեք ի շուս չարութեան [1] չարճկապեալըք չա- (րութեամբ,
Որոյ վասն արքաք ըզմրուրն զպահեալն ազանց (մեղասիրաց.
Նըման հոլուիդ մեր քաջի՝ մատնեաց զանձն իւր (ազգին չարի,
Գուցէ բա հնարաւոր լինի, որով փաքրիկն այն (հոտ փրկի։

կանին երախտագէտ շնորհակալ եղան. Աստուած թողուց որ օտարաց իշխանութեան ներքեւ նեղուին. բայց դարձեալ գթալով նոր աէրութիւն մի շնորհեց և Հեթմոյ թագաւորական պսակ։

- 1. Ի ճանապարհս չարութեան կամ մեղաց խոտորեցանք, և օտարաց վախն ընկաւ մեր վրայ. սակայն

Հոգի քո սուրբ և բարի՝ նըմա յաւէժ ընթացակցի,
Առնել զջանն իւր ըստ մըտի՝ տալով պըսակ (զլխոյն մեծի։
Աւետաբեր աղաւնի բերէր ըզնա նեղեալ անձանցս,
Ցորմէ զառհաւատչեայն իսկ կենաց ունել տես(լեամբ նորա։
Ցերեսօ անկեալ Արարչիդ և բազմագութ ողոր(մածիդ՝
Թէպէտ մեղաք՝ սակայն զքեզ երբեք սրտիւք ոչ (մոռացաք.
Որդոց մեր և մաղթանաց՝ այց արասցես, Տէր (Նախախնամ,
Գութ քո գերազանցեսցէ և զյանցանս մեր ան(տեսեսցէ.
Ցօղ քոյդ կաղի այսր իջցէ և զտոչորեալքըս զովա(ցուսցէ,
Կանգնել ի մեծ գլորմանէս. քեզ փառս երգել (արժանապէս։

* [1] Այս որ հաւաքման հոգիահոյլ հովուացս
Հովուեալըդ հովուօքս անկցուք առ ոտս Հովուիդ,
Ցորդահոս արտօսր աղիողորմ հնչմամբ
Ի վեր հնչեսցուք ամենալուր ունկանն.
Որդի Բարձրելոյ և հաստատարմատ սիրոյ,
Զսէր քո բազմացո առ անարժան հօտ քո.
Հողմով քոյդ Հոգւոյ և Հօր բազկիդ աջոյ
Հովանի լիցիս մերն արքայի Հեթմոյ. ամէն։
Անդ տալ շնորհս նըմա՝ որպէս Դանիէլի,
Առնել զդարձ նորա ըստ Զօրաբաբելի.

չմոռացանք զԱստուած. այլ ի բանաւորաց ազատելու կամ դիւրելու համար Հեթում յանձն առաւ երթալ ի Թաթարս, և այլն:

1. Երկրորդ մասին առաջին գիրն պիտէր Ի Յօհաննիսէ կարդալու համար. թուի թէ հին երգողաց և չարականաց Այսօր բառին սկզընաւորութեան հետեւել ուզեր է։

Նովաւ նորոգել զտաճար անուանըդ մեծի,
Որով ծանիցեն (զքեզ) գոլով ի մեր միջի.
Նորին զօրութեամբ զգայռեալ[1] հանդերձըն մեր֊
(կեա.

Պըճնեա պերճալի պատմուճանաւ ըզնա։
Իմաստից իմաստ, իմաստութիւն շնորհեա,
Մի՛ զմեզ՝ այլ զանուն քո սքանչելի գործեա։
Սրտացո զմեզ, ո՜վ Սուրբ Երրորդութիւն.
Տեսլեամբ տենչալւոյն՝ տուր զմեծ խաղաղութիւն
Երգել ընդ Սրովբէսըն սրբասացութիւն,
Երկրպագութիւն քեզ փառք և գոհութիւն։

Կերակրիչ կաթամբ կերակրողին համայնից
Խառնարան ի մի յատուկ երկուց բնութեանց,
Բարունայդ սերոյ քումըդ Միածնի որդւոյ՝
Լեր միշտ բարեխօս՝ սակս հաշտութեան մերոյ
Սրբել ի մեղաց և դասակցել երանելեաց
Վերնոց հրեշտակաց և սուրբ մարտիրոսաց,
Երջանիկ անձանց ի Տեառնէ քարոզչաց
Երկոտասանիցն այլ և Եօթանասնիցն.
Բամողին ի մի որդիքս Յաբեթի
Սրբոյն Գրիգորի մերըն Լուսաւորչի։
Եթէ կամեսցիս՝ կարող ես, Սրբուհի, (Որդի.
Ընդ որ զուարճասցի Աստուածդ մեր և քոյդ
Ի մաղթանըս մեր նայեաց Տաճար Բանին կենաց.
Առեալդ զայսըր փոքր՝ փրկեա զմըտեալքս ի
(փորձ[3].

1. Աղտեղեալ, աղմուտ. զայռ նշանակէ տիղմ, ցեխ։
2. Այս տողով երգողն դառնայ առ Ս. Աստուածածինն, և աղաչէ մաղթէ որ բարեխօսէ առ իւր Միածին Որդին Քրիստոս, ձայնակցելով բարեխօսութեան Հրեշտակաց և Սրբոց և անմոռանալի Լուսաւորչին։
3. Ազնիւ համարձակութեամբ յիշեցընէ Տիրամօր՝ որ ինքն այլ փորձ առեր է վշտաց, և խնդրէ որ օգնէ մեզ ի փորձութիւն ի վտանգ ընկնողաց, և բոլոր,

Իւսող հատուածելոցս լեր ի մերըն Գլուխ.
Նովաւ միացո զմեզ ի միայնըն Մի,
Բոտել քոյդ շնորհիւ զմեզ ի սուրբ Զուարթունսն,
Գոչել ընդ նոսին ըզփառս քեզ ի բարձունս։

---

## ՑԼԷ

### ԳԱՀԱԿԱԼՈՒԹԻՒՆ ՍՏԵՓԱՆՈՍԻ ՕՐՊԵԼԵԱՆ[1] (ԿԸ)

Ես Ստեփաննոս Թարմատար անձամբ և եղկելի ոգւով, որոշեալ յարգանդէ մօր իմոյ և ընծայեալ ի տուն Տեառն, որդիացեալ մեծի և արքայաշուք իշխանին Սմբատայ. ի մօրէ ծնեալ Սիւսական և ի հօրէ Օրբէլեան՝ որ Տարսայիճ կոչի, տիրեալ ի Բաղաց[2] մինչեւ ցԱյրարատ. իսկ հոգեւոր ծնընդեամբ սուրբ ուսազանին որդիացեալ Տեառն Հայրապետի՝ եպիսկոպոսի Սիւնեաց[3]։ Սնեալ և ուսեալ առ ոտս աստուածարեալ արանց, կրթեալ ի հրահանգս ընթերցման և երաժշտութեան՝ եղէ փաստ և անագանոս[4] ի գաւիթս Տեառն. կոչեցայ ի դպրութիւն և ի սարկաւագութիւն տանն Աստուծոյ, քահանայացայ, և մանկական տիօք կարգեալ կղերիկոս աշարկու և աստուածընկալ բեմին, անպատշած ոգւով և անարի անձամբ, վարժեցայ ի

ժողվէ միացընէ հրեշտակաց հետ, անսպառ փառաւորութեամբ երգելու։

1. Սիւնեաց եպիսկոպոս Ստեփանոս պատմիչն է, որ պատմէ իր ձեռնադրութիւնը իբրեւ մետրապօլիտ մեծարանելով. ոխալ կարծեաց հետ ազնիւ զգացմունք այլ ունի։
2. Սիւնեաց նահանգին գլխաւոր։
3. Տես երես 484։
4. Սաղմոսասաց, գրակարդաց։

կրթարանի աստուածեղէն սառից. սակայն մի առեալ զճաշակ ռետնի[1] քաղցրութեան՝ առ հրաման յաստուածազգեաց և յաշխարհալոյս րաբունապետէն Ներսիսէ[2], և տհաս խակութեամբ Նստայ յաթոռ վարդապետական։ Ես ինձէն խաւար գոլով կամեցայ այլոց լոյս լինել. ես անմաքուր ոգի և աղտեղեալ պատկեր՝ սկսայ այլոց քաւչապետել։ Ես առանց Հոգւոյն կոչման՝ իմով յանդգնութեամբ կամեցայ յառաջ մատչել[3]. ես պատրաստեցի զականջս իմ լսել խաւարահրաւէր բանին, «Եթէ հանդերձ ոչ ունէիր». «և ծառայ չար և վատ». Նա և զսարսափելին իսկ՝ զգեհենաժառանգ և զդժոխահրաւէր հրամանն՝ եթէ, «Ե՛րթ»։ Եւ ի վերայ այսր ամենայնի այլ ևս յաւելի յանդգնութիւն, զի ժպրհեցայ յաստիճան հայրապետական։

Եւ ժողովեալ մերոց եպիսկոպոսաց առ հայրն իմ՝ հրաւիրեցին զիս ընթանալ ի թագաւորական աշխարհն Կիլիկիա, առ երջանիկ կաթողիկոսն և աստուածապսակ թագաւորն Հայոց, առնուլ ձեռնադրութիւն մետրապոլտութեան ի վերայ աթոռոյս Սիւնեաց. զոր և յանձն առեալ մեր յիմարութեամբ, անգիտացեալ զահարկու և անտանելի լծոյս ծանրութիւն, միայն առօրեայ փառօքն հեշտացայ՝ ախտաւոր մտօք. վասն որոյ երանեմ զչեղեալսն և բիւր երանի յարգանդէ վիժելոցն[4]։

Գնացաք ապա և հասաք ի մայրաքաղաքն Սիս, և գտաք զհայրապետն փոխեալ յաստեացս[5], և

1. Հոգևոր գրոց ուսմունքը նմանցընէ մեղրի նման անուշութեան։

2. Անշուշտ Գլաձորեցի (Գայլեձոր վանքէն) անուանեալ վարդապետն է։

3. Զինքն անարժան համարելով այն եկեղեցական բարձրագոյն աստիճանին, կ'ուզէ խոնարհեցընել այսպիսի չափազանց խօսքերով։

4. Անյարմար և չափազանց ըսուած։

5. Որ էր Յակոբ Ա. † 12 փեբրուարի, 1286։

սուգ մեծ եղեւ մեզ։ Եւ անտի գնացաք ի միւս քաղաքն յԱդանա, և հանդիպեալ Թագաւորին՝ [1] գտաք պատիւ ի նմանէ ի վեր քան զարժանն մեր. և յամեալ առ Թագաւորին ամիսս երիս՝ մինչեւ աշխարհահագումար ժողովով ընտրեցին յաւուրս քառասուն՝ այր մի արժանաւոր Կոստանդին անուն. և օծին զնա պատրիարք Հայոց, ի մեծի ճրագալուցին Զատկին. և ի վաղուեան աւուրն զմեզ իսկ ձեռնադրեցին, և պսակեցին ընդ սուրբ և առաքելական եկեղեցւոյն Սիւնեաց. և պատուեցին մեծամեծ պարգեւօք, և կրկին Թագիւ կարգեալ յաստիճան մետրապօլտութեան, և կոչել պռոտոֆրոնդես[2] պատրիարքին Հայոց, այսինքն նախաթոռ լինել և գլուխ ամենայն եպիսկոպոսաց Հայոց։ Եւ այնպէս մեծաշուք պատուով դարձաք ի Նոցանէ և հասաք յաշխարհս մեր. և բազում վիշտս կրեալ յեպիսկոպոսացն որ ի Տաթեւ (մինչեւ) փոխեցան նոքա մահուամբ։ Եւ մնացաք մեք ի դառն և վշտալից կենցաղավարութեանս միապետեալ զբարժանեալ վիճակ աթոռոյս, սահմանեցաք մի լինել տուն միաբանութեան զՏաթեւ և զՆորավանս։

Բայց վասն հրահոսան նզովիցն առաջին կաթողիկոսացն՝ Տեառն Կոստանդեայ և Տեառն Յակոբայ, և առաջին եպիսկոպոսացն՝ Տեառն Յովհաննիսի և Տեառն Ստեփաննոսի և Տեառն Սարգսի և միւս Տեառն Ստեփաննոսի, և Տեառն Գէորգայ, Գրիգորոյ և Տեառն Սարգսի[3], որք հաստատեալ էին զՎայոց ձոր[4] բոլոր՝ ժառանգութիւն Նորավանից

1. Լեւոն Բ, որդի Ա. Հեթմոյ և Զապելի։

2. Կէս յոյն կէս լատին բառիւ, πρωτοφροντιστής, իբրեւ տարկաւագապետ կամ առաջին պաշտօնեայ կաթողիկոսին։

3. Ամենքն այլ իրարու յաջորդ Սիւնեաց եպիսկոպոսք են։

4. Սիւնեաց երկրին նախապատիւ գաւառներէն մէկն։

եկեղեցւոյն, ոչ խախտեցաք. այլ որպէս կալեալ էին մինչեւ ի մեզ՝ նոյնպէս կալցին. եւ զայլն բուն աթոռն կալցի եւ մի լիցի երկոցունցս սոցա եպիսկոպոսութիւն եւ մի առաջնորդ եւ իշխեցող. եւ ո՛րք որ լիցի եպիսկոպոս՝ մի՛ իշխեսցէ երկու ակամբ եւ երկու մտօք հայել ի սոսա՝ միոյն աւելի խնամ տանելով. մի՛ լիցի հեռ եւ նախանձ ի մէջ տանս այս, եւ բնակիչք սոցա մի՛ իշխեսցեն ասել միմեանց, եթէ, Դու Տաթեւացի եւ կամ Նորավանեցի, այլ իբրեւ մի անձն եւ մի սիրտ եղիցին: Զի եւ յառաջին ժամանակացն մինչ ի մեզ՝ սոյնպէս էին կացեալ. եւ եթէ փոփոխումն լիցի ժամանակաց, եւ աւեր հասցէ Տաթեւոյ, զժառանգութիւն այնր եկեղեցւոյ՝ Նորավանից եկեղեցին ժառանգեսցէ, եւ բնակիչքն անդ բնակեսցեն. եւ թէ Նորավանից հասցէ աւեր՝ զժառանգութիւն եւ զստացուածս նորա Տաթեւոյ եկեղեցին վայելեսցէ, եւ բնակիչք նոցա անդ բնակեսցեն: Եւ թէ յետ մեր խախտեսցէ ոք զայս վճիռ եւ կամ խորել եւ դաւաճանել խորհի միւս կողմանէ՝ անէծս ցաւագինս ժառանգեսցէ ի մէնջ եւ յամենայն հայրապետաց, եւ նզովս առցէ ի Սուրբ Երրորդութենէն, եւ մասնակից լիցի ամենայն չարագործաց. ապա եթէ այլ ինչ հակառակութիւն եւ չփոթումն զարթիցէ, որպէս եւ մեզ պատահեցաւ, հակառակողքն պարտապան լիցին անիծից, եւ ժամանակին իշխեցողքն տեսցեն զարժանն:

Դարձեալ, ի գալ մեր ի Կիլիկիոյ՝ յետ աւուրց ինչ գնացաք առաջի աշխարհակալ արքային Արղունին[1]. եւ հանդիպեալ նմա՝ ընկալաւ զմեզ եւ յոյժ յարգեաց եւ սիրեաց. եւ մեք ծանուցաք ըղվիշտս մեր, եւ ցուցաք զշրջաբերականն մեր, զոր ետ թարգմանել եւ ընթեռնուլ առաջի իւր: Յու-

1. Թաթարաց մեծ զանին կողմանէ դրուած կառավարիչ Պարսից եւ Հայոց կողմանց:

ցաք և զսիգելն[1] հայրենեաց մարմնաւոր ժառանգութեանց՝ զոր ետ հայրն իմ. զի հանեալ էր բաժին ժառանգութեան մեզ զվանորայսն իւրոյ իշխանութեանն՝ զՏաթեւ, զՆորավանս, զՑաղացքար, զԱրատիս և զայլսն ամենայն. զոր և տեսեալ հրամայեաց գրել հրովարտակ հրամանի և վերստին հաստատեաց ի մեզ զբովանդակն, կրկին իշխանութեամբ հոգեւոր և մարմնաւոր. և հրամայեաց մեզ կալ և օրհնել զեկեղեցին ի դրանն արքունի[2], զոր առաքեալ էր մեծ պապն Հռոմայ:

Անդ էր և կաթողիկոսն Նեստոր[3] երկոտասան եպիսկոպոսօք, որք և օրհնեցաք ի միասին մեծաւ հանդիսիւ. և ինքն Արղունն զգեցուցանէր իւրով ձեռամբն զզգեստն հայրապետական, զոր ինքն էր սահմանեալ կաթողիկոսին և մեզ և ամենայն եպիսկոպոսացն. և առեալ ի ձեռն զժամահարն[4] շրջէր ի մէջ բանակին և հարկանէր և օրհնէր զամենայնն: Եւ դարձեալ յետ սակաւուց եկն և եպիսկոպոս մի ի նոյն պապէն, և մկրտեաց զկրսեր որդի արքային և անուանեաց Թէոդոսիոս, զոր ինքեանք Խարպանդայ (ծառայ Աստուծոյ)[5] կոչէին. և եդ ի գիրկս փռանգ իշխանին որ Սիր Ջաղ ասէին[6]:

Իսկ յետ վախճանին սորա Թագաւորեաց Քեղաթուն, որ կոչէին Երնջի թուրնջի, այսինքն գտաք զկորուսեալն: Առ որ գնացեալ մեր, և ի նմանէ ընկալաք պատիւ որպէս յեղբօրէն. և առաք հրովարտակ հրամանի վերստին հաստատութեամբ:

1. Իշխանական կնքով (Sigillum) կնքեալ մուրհակ, հրովարտակ, և այլն:

2. Շարժական, տեղէ տեղ տանելու մատուռն կամ փոքրիկ եկեղեցի, զոր խաւրեր էր հայրապետն Հռոմայ՝ լատին կրօնաւորաց ձեռօք:

3. Ասորի կամ քաղդէացի Նեստորականաց:

4. Կոչնակ, զանգակ, գործիք յեկեղեցի կանչելու:

5. Ըստ այլոց՝ էշոյ ծառայ, զի խար էշ նշանակէ:

6. Անգղիերէն հնչմամբ, Sir Charles.

Ապա յետ այսր ի Թագաւորել Ղազանին՝ գնացաք և առ նա, և բարձրագոյն ի նմանէ ընկալաք փառս քան յայլոցն, զի ետ կրկնապատիկ ամրութեամբ զնոյն հրովարտակ, և հրամայեաց ի շրջելն մեր՝ զխաչ զառաջեաւ ունել և բարձրագոյն շրջեցուցանել. շնորհեաց և մեզ փայիզայ[1] ոսկի, որ էր տախտակ ի չափ Թզոյ միոյ և կիսոյ, գրեալ ի վերայ զանունն Աստուծոյ և զանին և այլ սակաւ բանք։ Եւ մեք տեսեալ զանակնկալլի ողորմութիւնն՝ փառս և գոհութիւնս արարչին վերընծայեցաք. և այսպէս եկեալ ի տուն՝ կացաք հաստատութեամբ։

---

# ՑԼԸ

## ՆՈՐԻՆ ՍՏԵՓԱՆՈՍԻ ՑԻՇԱՏԱԿԱՐԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆՆ (ՀԳ) ԵՒ ՄԱՀՈՒ ՄԱՆԿԱՀԱՍԱԿ ԵՂԲՕՐՆ

Սկիզբն և կատարած ամենայնի Աստուած. զի ի նմանէ սկսեալ և նովաւ յառաջացեալ և ի նոյն կատարէ Տէրն. որպէս ի կարակնակերպ[2] բոլորումն է տեսանել, զի ուստի սկսաւ ի նոյն յանգեալ միացաւ, ի ծոց իւր գրաւեալ զբազմաւորական մասունսն։ Տի՛նա և ի ապաւորումն շնորհին է տեսանել. զի հոսեալ յորդառատ յականակիտ յաղբե-

1. Լաւ բացատրէ հեղինակն ինչ ըլլալը. փոխանակ երկար հրովարտակի՝ այդպիսի մեծագին տախտակի մը վրայ տող մը կամ երկու բանով հաստատէին իրենց տուրքը կամ հրամանը։ Ի Չինաց առին զայս՝ Թաթարք, ի Թաթարաց այլ Պարսիկք։

2. Իբրեւ կարկինով (compas) գծուած կլորակ մը, որոյ գիծն որ կէտէն որ սկսի՝ դառնալով ի նոյն հասնի և դադրի. այսպէս և Աստուծոյ շնորհքն, կ'ըսէ, ամենուն վրայ բաժնուելով նորէն իրեն վերադառնայ։

րէն, անցանէ ընդ բնաւն բաշխելով իւրաքանչիւ-րոցն զմասնաւորն ըստ պատշաճին։ Եւ այնպէս գործեալ յամենեսեան զօգուտն և զօգտակարն՝ ինքն նոյն պարզութեամբն միանայ ուստի բղ-խեցաւն։ Ըստ որում և ես իսկ, շնորհօք վեր-նային, բարուք ստորնային[1], ձեւով երկնային, վա-րուք եղեռնային, կերպիւ կենարաշխ, ոգւով կե-նազրաւ, անուամբ քաւչապետ[2], բանաւորկուբին գոր-ծապետ. առեալ յաստուածային շնորհացն՝ կամե-ցայք սակաւ մի սեղանաւորել[3], և սկիզբն արա-րեալ Աստուծով յառաջացայք նովիմբ, զոր և ա-ւարտեսցուք ի նոյնն։

Արդ, գոհութիւն և փառք Ստեղծողին էիցս, ան-ճառին և անհասին, պարգեւողին առատաբաշխ և խնամող բոլորից, օրհնութիւն, պատիւ և երկըր-պագութիւն անբաւ բիւրուք, անհաս և անվճար ի հրաբաւն սեւից երկնաւորաց և ի նիւթեղէն սար-բաւկանաց երկրածին կենդանեացս, ի բոլոր եղա-կանաց և ի բնաւից գոյութեանց արարածոցս որ կարողացոյց զխակակիրթ տհասութիւն իմոց մտացս և զցաւալից տառապանութիւն ծովահեղձուկ հոգւոյս, տեսանել զաւարտ աւարտութեանս և հասանել ի կատարումն սկսմանս[4], ի դառն աւուրս և ի տըվ-մածոյց մահաչունչ ժամանակս. յորում մահն ցան-կալի և երանական, և կեանքն ատելի և թշուա-ռական. համապատրաստ ամենեցունց զցայգն ի ցաւ և զցերեկն ի ցնորք. և ակնկալութիւն ոչ ի բարին, այլ օր ըստ օրէ յանհնարին վիշտս և նե-ղութիւնս։

1. Պէսպէս նմանութեամբ ինք զինքն խոնարհե-ցընէ, չափազանցութեամբ։

2. Քահանայապետ, եպիսկոպոս։

3. Ուզեր է Աստուծմէ առած շնորհքն ուրիշնե-րու այլ բաշխել։

4. Գոհանայ զԱստուծոյ՝ որ կարողացուց սկսած գործը (Պատմագրութիւնն) աւարտել, և այնպիսի ան-յաջող փորձանքաւոր ատեն։

Եւ արդ՝ ի կամս կարող և հզօրին Աստուծոյ Հօր, և ի շնորհս գթութեան Միածնի Որդւոյն Յիսուսի, և յողորմութիւն նախախնամող և ազատիչ Սուրբ Հոգւոյն, ես Նուաստ և յոգնամեղ ծառայ Քրիստոսի Ստեփաննոս, և ողորմութեամբ նորին եպիսկոպոս Սիւնեաց երկրատեսան գաւառաց, նա և ըստ ներքոյ կամաց նորին՝ նստեալ ի գահ մետրապօլտութեան տանս, տեսաք նուաղեալ և ժըտեալ[1] զանուն և զյիշատակ առաջնոցն, և յափըշտակեալ և կորուսեալ զժառանգութիւնս եկեղեցեաց։ Եւ ի վաղուց հետէ ցանկացեալ այսմ նորոգման և վիպագրութեան, և բազում ջանիւ և յոլով աշխատութեամբ որոնեալ՝ հաւաքեցաք ի հին և ի նոր պատմագրաց Հայոց, նաեւ յարձանագրութեանց եկեղեցեաց և ի հնագոյն նամակաց, որ կայր պահեալ յամուրս տեղեացն. աշխարհախումբ հանդիսարանին Տաթեւոյ[2]. էր ինչ և որ յաւանդութեանց ստուգագէտ արանց, որում վկայէին իրքն և տեղիքն, զհետ մտեալ ամենայն ճշդիւ ըստուգութեան, ի բաց ձգեալ և զունայնախօսս զրաբանութիւնն, զի մի՛ տաղտկասցին լսողք. և կարճաբան վիպասանութեամբ ցուցաք համառօտիւ զառաւել պիտանին և զճահագոյնն. և գրեցաք զայս քաղցրաբան պատմութիւն, հանդէսք դպրութեանց յիշատակարանաց առաջնոցն, ոչ ընդհանրական այլ առանձին Սիսական աշխարհիս, որ կոչի Յիշատակաց մատեան։

Եւ թողաք զսա արձան անջնջելի և յիշատակ գովելի յապա ժամանակաց, ի հաստատութիւն սուրբ և երկնահանգէտ աթոռոյս Սիւնեաց, և ի պայծառութիւն եկեղեցեաց՝ որ ընդ սորին այցելութեամբ[3]։ Եւ բարձեալ զսա մեղսաներկ բազկօք՝

1. Պակսեցուցած, վերցուած։

2. Տաթեւ թէ եպիսկոպոսարան էր, թէ մայրավանք Սիւնեաց։

3. Եպիսկոպոսական թեմ, վիճակ Սիւնեաց։

տարեալ ընծայեցաք ի տուն Տեառն, խայրիս[1] խորհրդական և դաշնամունս նուիրական կաթողիկէ և առաքելական եկեղեցւոյս Տաթեւոյ և ամենայն աստուածարեալ տաճարաց այսմ իշխանութեան։ Եւ ի գուճս անկեալ աղաչեմք և յոգնահառաչ ձայնիւ պաղատիմք, ո՜վ գերապանծ և լուսաճեմ առագաստ երկնաւոր փեսային, հայցեմ ամենայն Սրբովք ի գլխայն քոյ սիրալի, ընդունիլ զսա յիւր աստուածային գանձարան, զայս պտուղ շրթանց և ծնունդ հոգւոյ՝ պատարագ հաճելի, և թէ ոչ ընդ պատուականսն՝ սակայն ընդ չքաւորեալսն առ խորանաւն որք մազ մատուցանէին, նա և ընդ բաժակ մի ցուրտ ջրոյն կամ ընդ երկու լումային։ Եւ շնորհաւորելով զսա եկեղեցւոյն իւր՝ տացէ մեզ ակն ունել բարեաց և առատաձիր պարգեւին, եթէ ոչ կատարելոյն՝ այլ փշրանացն, յորմէ շունք կերակրին[2]. զի քանքարս զոր ետուր ցիս, ոչ բնաւին ընդ անբանութեամբ փակեալ խորեցի, այլ սակաւ մի ըստ իմում սակի արկի ի սեղանաւորն[3]. վասն որոյ մի՛ լիցի ինձ լսել, եթէ, Ծառայ չար և վատ. այլ յաներեկ աւուրն մեծի ուր բանք ապառին և գործք թագաւորեն, արժանասցուք երանաւէտ ձայնին, եթէ, «Ե՛կ, մո՛ւտ յուրախութիւն Տեառն». որում զոհութիւն և փառք յամենայն եղելոց, այժմ և յանսպառ յաւիտեանս. ամէն։

Արդ, յարմարեալ այս հանդէսք բանի շարագրեցաւ յաշխարհակալութեան մեծի և ինքնակալ արքային ղան Ղազանին, որդւոյ Արղունին, ի տիրել տիեզերաց ցեղին Նետողաց, ի թագաւորութեան Վրաց Դաւթի՝ որդւոյ Դեմետրէի, և Հայոց Հեթմոյ՝[4] որդւոյ Լեւոնի թագաւորի, յիշխանութեան

1. Անուշահոտաշաղ ընծայ հոգեւոր։
2. Յաւետարանի յիշուած Քանանացի կնոջ ըղձածն և խնդրածն ի Յիսուսէ։
3. Դարձեալ յԱւետարանի Քրիստոսի առակն։
4. Բ Հեթում, կրօնաւորեալն։

այսմ նահանգի օրհնելոյն և բարեպաշտի Եւլիկոս-
մին՝ որդւոյ Տարսայիճին[1] և եղբարց իւրոց, յամս աստուածապատիւ և հոգեւոր Տեառն Գրիգորի՝ ինքնագլուխ պատրիարքի, և Տեառն Մաքիաննոսի՝ Աղվանից կաթողիկոսի, և թուաբերութեան անժամանակ Բանին 1299, և ըստ Հայոցս ի ԺԴ յոբելինին[2] և ԽԶ համարին, ի 186 ողոմպիադին և յերկրորդ ամին, ի յիսուն ընդիքտիոնին պակասեալ թուով, իսկ ըստ քսան և ութեակ շրջանի արեգականն միոյ հինգհարիւրեկին[3], յ214 թուին. ի վանս վսեմական և փառաւորնակ ուխտի Նորավանից[4], ընդ հովանեաւ աստուածաբնակ տաճարացս և աստուածակիր նշանացս, ի նժդեհ և ի պանդխտական աւուրս, մինչ կայաք ի մէջ տիեզերահռչակ տագնապի, միշտ զգուշեալ երեքալեան դիմակցութեամբ, ակնկառոյց միայն վերին այցելութեան։

Վասն որոյ մայրաման դիմօք[5] մաղթեմ զդասս որբազանիցդ՝ զի յիշման զմեզ արասջիք արժանի, և ոչ առնէք սնոտիս զանէութիւնս[6] իմ՝ որ կամ հողայեալ ի կորդացեալ գերեզմանի, այլ առաջի աչաց համարեսջիք զոգ ի վեր քարշեալ զորէն մուրողաց չառագունեալ դիմօք և տուայտեալ երեսօք, խնդրել ի ձէնջ փշրանս ողորմութեան, այսինքն

1. Առաջինն իր եղբայրն է, երկրորդն՝ իր հայրն։
2. 14 անգամ 50 (700) և 46, որ է ՉԽԶ (746) թիւն Հայոց, զոր հաւասարէ Քրիստոսի 1299ին, բայց սովորական հաշուով ՉԽԶ՝ Հայոց թիւն է 1297 Քրիստոսին, իսկ սոոր 1299 է ՉԽԸ Հայոց. գուցէ այսպէս գրած էր։
3. Սարկաւագի թուականն. սկսեալ Բ հինգհարիւրեկին հետ, յամի 1084, որոյ վրայ աւելցընելով 214՝ հաւասարի վերոյգրեալ Քրիստոսի թուականին 1298։
4. Երկրորդ աթոռ եպիսկոպոսին Սիւնեաց։
5. Գետնամած, երեսն գետին ի դնելով իբր ի մայր մարդկան, որ ի հողէ ստեղծուած հողածին կոչուին։
6. Ոչնչութիւն, անպիտանութիւն։

միով նուագիւ երկնաւոր զենմանն առնել արժանի[1]։ Եւ թէ սխալանս ինչ և կամ թերի գտանէք ի սմա, յաւելուած կամ պակասութիւն, մի՛ ախտաւոր մտօք պարսաւեսջիք, զի բնութիւն է մարմնոյ գթել և ակարանալ ի բանս և ի գործս. այլ ողջախոհ կամօք ուղղել և աստուածաբար սիրով ներել մեզ և շնորհել գյանցանսն։ Եւ ձեզ ամենեցուն լիցի միոյն բիւրապատիկ գտանել ողորմութիւն յողորմածէն Աստուծոյ՝ կրկին կենօք։

Բայց պատուէր դնեմ ամենեցուն որք հանդիպիք սմա, ո՛չ քեցել ի բանից սորա և կամ այլանդակել գյեղանակ կարգին. և կամ ժտել ի սմանէ կամ թուղթ հատանել, կամ վասն նախանձու և նենգութեան և կամ այլ ինչ պատճառի։ Ապա թէ ոք ժպրհի յանդուգն լրբութեամբ՝ ջնջեալ եղիցի ի դպրութենէն կենաց, և կորեալ ի կտակէն[2] յաւիտենից, ընդ Յուդայի և խաչահանուացն վարձատրեսցի, ընդ սատանայի և ամենայն չարագործացն դատապարտեսցի։ Եւ որ ոք ընդ օրինակին զսա դիցէ և ընդ այլոց զանկաւագիծ յիշատակս. և առ հասարակ ամենեքեան մեք և դուք ի միասին գտցուք ողորմութիւն յարարչական սիրոյն Աստուծոյ՝ ի մարմնի և ի գերեզմանի, և յաներեկ աւուրն մեծի։ Եւ նմա փառք յամենայն արարածոց, և գոհութիւն յամենայն բանակաց յերկնաւորաց յամերամս ժամանակաց և յանվախճան յաւիտեանս. ամէն։

### Յիշատակ մահուան եղբօրն. փախրադոլայ (ՀԱ).

Եւ արդ աստանօր, ով եղբարք, յիշեմ և զխոցուած լերդի իմոյ, զի սակաւ մի յառաջ քան

1. Խնդրէ իրեն համար պատարագ մի մատուցանել։

2. Յետ այնքան խոնարհութեանց չափազանց չէ՞ այս խստութիւնն. բայց սովորական ձեւ մի էր արձանագրողաց կամ ձեռագրողաց։

զգծագրութիւն տառիս՝ հասաւ մեզ սուգ անմե-րանալի. զի կրսեր և սիրելի եղբայրն իմ փախրա-դուղայն[1], ի զարդ և ի գեղ մանկական հասակի, մինչ տէգ մօրուացն փափկեալ լինէր թխատիպ տեսակաւ շուրջ բոլորեալ զպատշաճագեղ ծնոտիւքն, և սիրտ նորա զուարճ խնդամտական խորհրդովք ի վայելս քաղցրաղբոյ կենցաղոյս. և կամք նորա ի վազս և ի թիւս իշխանաշուք փառաց, յանկարծակի հասեալ օրհասն կենաց՝ խզեաց զբոյսն քաղ-ուղէշ, և խլեաց զտունկն ծաղկափթիթ. եբարձ տարաժամ զբաղձալին ինձ: Որ և հրաժարեալ ի մէնջ՝ գնաց յաստեացս առանց իրիք յիշատակի. զոր և տարեալ եդին ընդ հօրն իւրում՝ ի տապանի: Որում Տէրն իմ Յիսուս՝ փոխանակ աստի զրկանացս՝ անդ ողորմեսցի. և անտես արարեալ զմեղսատեսակ կիրս մարմնոյ նորա՝ զուարճացուսցէ ի վայելսն անմահական և յուրախութիւնսն անզրաւական[2]. ամէն:

1. Արաբաց, Պարսից և Թուրքաց տէրութեան ատեն անոնց լեզուաւ այլ պատուաւոր անուններ դնէին Հայք իրենց որդւոց. այս անունն այլ կարծեմ Ֆախիր և Տէվլէթ բառերով զուգած՝ նշանակէ փառաբաղդիկ, մեծաբաղդ:

2. Շատ ստոյգ զգայուն է Ստեփաննոս՝ իր կրտեր եղբօր տապանին վրայ գլխակոր, քան իր մետրապօլտական գահուն վրայ գլխամբարձ. և հաւանօրէն ինքն է գրող անոր արտասուաց տապանագիրը և թուականը, 1296, Նորավանից եկեղեցւոյ մէջ, որ է այս:

ԱՅՍ ՅԱՐԿ ՏԱՊԱՆԻ ԲԱՆԴ ԲԱՐԿՈՒԹԵԱՆ Է ԵՒ ԳՈՒԲ ԳԵՐՈՒԹԵԱՆ, ՀՐԱՇԱԳԵՂ ՄԱՆԿԱՆՆ ԵՒ ՔԱՋԱՋԱՒՐ ԵՐԻ-ՏԱՍԱՐԴԻՆ ՓԱԽՐԱԴԱՒԼԻՆ, ՈՐԴԻՈՅ ՄԵԾԱՓԱՌ ԻՇԽԱՆԻՆ ՏԱՐՍԱՅԻՃԻՆ. ՎԱՍՆ ՈՐՈՅ ԱՂԱՉԵՄ ՅԻՇԵԼ. ԹՎԻՆ ՉԽԵ:

# ՑՂԹ

## ՍԿԵՒՌԱՑ ՎԱՆՔ
## ԵՒ ԳԻՏՆԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏՔ ԺԱՄԱՆԱԿԻՆ

Քաղաքնայ ումն Աստուածատուր անուն՝ հանդերձ ձեռատուն իւր հարազատ պատանեաւ խաչատրիւ, որ է որդի քեռ իւրոյ, ի դեգերանս աստուածայնոց գրոց գոլով, կանխագոյն յինքենէ ի տղայոյթ[1] վարժեալ, և իւրանման կրթասէր բարուց զուգակցեալ, կամօք յերկոցունց՝ յաստուածահաճոյ ըղձանս անձանց և ի սատարութիւն բանահարեալ գործոյ ընթերցմանն, և յիշատակ բարեաց զկնի տացան զայս աստուածախօս մատեանս Նորոց կտակարանաց, ի ձեռն իմոյ Նուաստութեանս Ստեփանոսի ամենամեղ և անպիտան գրչի, և ներելով Աստուծոյ տրուպ և անարժան քահանայի, ի ժամանակս աստուածապաշտ արքայի Լեւոնի (Բ) որդւոյ Հեթմոյ, և ի նորուն աստուածասէր անդրանկի Հեթմոյ (Բ) տէրութեան աստուածապահ բերդիս Լամբրունի. և ի կաթողիկոսութեան աստուածահաճոյ կրկին ծերութեամբ պատուեալ Տեառն Յակոբայ. ի ՉԼԴ (1285) թուականիս[2] Հայոց գրեցաւ տառս յաստուածապահ սրբարանս մեծի ուխտիս Սկեւռայի, ընդ շքով թեւոց աստուածազօր Սուրբ Նշանիս և Սրբոյ Փրկչիս[3]. յառաջնորդութեան Տեառն Մինասայ: Արդ, մաղթեմք բոլորեցն յԱստուծոյ՝ ստացողք գրոցս հանդերձ տրուպ գրչաւս և մերովքն համայնիւք. եւս և զպատուական քա-

1. Այսինքն տղայութեան ժամանակէն:
2. Գրեթէ իր կաթողիկոսութեան վերջին տարին էր. յաջորդած էր յամի 1269, փետր. ամսոյ 12ին:
3. Որ է անուն մեծ եկեղեցւոյն:

հանայն Ստեփանոս Գոյներ Երիցանց[1] և զծնողս նորին, գտանել ողորմութիւն ի Տեառնէ, որ օգնական եղև ի նիւթ գրոյս։ Նա և հանդիպելովքդ այժմ և յապա ամենառատ ողորմութեան Աստուծոյ արժանանալ, խնդրուածովք Աստուածածնին Սրբոյ և Սրբոց Աւետարանչացն, և բոլոր իսկ Առաքելոցն դասուց, այժմ և յանվախճան աւուրն. ի փառս մարդասիրին Աստուծոյ. յաւիտեանս յաւիտենից։

Ըստ բանի Սրբոյ ումեմն, «Որում բաղձայ ոք նմին և հասանել ջանայ». վասն զի «Բուռն է քան զմահ՝ սէր, զոր ջուրք բազումք ոչ կարեն շիջուցանել[2]», մանաւանդ յորժամ յԱստուծոյ իցէ տուփումն[3]։ Այսպիսեաւ երանելի ըղձիւք առ ստացումն աստուածաշունչ տառիցս վառեալ սրբասնունդ պատանին Խաչատուր, թելադրութեամբ Գէորգեայ վարդապետի՝[4] առ որում կայր ի վարժս կրթութեան բանի և գրոց՝ ուսումնասէր դպիրն Խաչատուր, ինքնագիր երկոք ստացաւ զգիրս Ծննդոցն, զԴատաւորացն և զԹագաւորութեանց. և վասն ոչ բերելոյ ակար մարմնոյն զերկս գրութեան, օժանդակեաց սնուցիչ նորին և քեռի՝ աստուածապաշտ քահանայն Աստուածատուր. և սակս աղքատութեան կարծեաց՝ նախ զՆոր կտակարանս ետ գրել՝ իբրև դյոյժ հարկաւորս, և դարձեալ յԱստուած խրախուսեալք՝ իմով ձեռամբ Ստեփանոսի Գոյներ Երիցանց փցուն գրչի՝ ստացան զաստուածային գիրս սրբոց մարգարէիցն և զարքագրաց ոմանց, յՉԼԷ (1288) թուականիս. ի մխիթա-

1. Անուանի է շատ ճարտար և գեղեցիկ գրչութեամբ։

2. Սուրբ Գրոց խօսք է։

3. Այսինքն, մանաւանդ եթէ յիշեալ Սէրն՝ աստուածային սէր ըլլայ։

4. Անուանի վարդապետն է լաւ գրիչն. տես Ցօդուած 345։

րութիւն ինքեանց հոգւով. որոց տացէ Աստուած ի հաճոյս իւր յերկար վայելել ի սոյն, և ի յոյժ բարեաց յիշատակի ստացողացն և աշխատողիս գրչի. եւս և ընդհանուր զարմից նոցա և մեր, ի փառս Քրիստոսի օրհնեալն յաւիտեանս. ամէն։

* Կին ոմն ի Նիւթ սորա օգնական եղեւ, յիշեսջիք և զնա ընդ վերոգրեալքն. և Աստուած զձեզ յիշէ։

---

## ՑԽ

## ՀՐԱԺԱՐՈՒՄՆ ԿՈՍՏԱՆԴՆԻ Բ՛Ի Ի ԿԱԹՈՂԻԿՈՍՈՒԹԵՆԷ

(ՍՏ. ՕՐԲԷԼԵԱՆ. ԿԷ.)

Հեզն այն և հանդարտն՝ ըստ տիրապատուէր հրամանին՝ ոչ ինչ ընդոստնոյր[1], այլ զամենայնն յանձն առեալ ունէր. Արդար են բանքդ այդ, և ես ճշմարտիւ գործեցի զդոսա. բայց այդ յայտնիքն, իսկ զծածուկն՝ որում վկայէ միայն ծածկագէտն, բիւրապատիկ քան զդոյն ունիմ ամբարեալ յոգիս, և չեմ արժանի այսմ աստիճանի. արդ, զոր կամ է ձեզ՝ արարէք ընդ իս։ Որում պատասխանեալ թագաւոր[2] և ժողովն. ի բաց հան ի քէն, ասեն, զկաթողիկոսութիւնդ և տուր մեզ։ Լուեալ զայս կաթողիկոսին և յանձն առնոյր յօժարութեամբ. և զգեցեալ զգեստն հայրապետական զբազմոխուչն և զեմիփորոնն հինգ կրկին[3] որ

1. Իր վրայ եղած ամբաստանութեանց համար՝ չխռովեցաւ, չհակառակեցաւ։

2. Հեթում Բ (Տես 2 ծան. յաջորդ երեսի)։

3. Հինգ ծալք ունող եմիփորոն կամ մեծ ուրարն, զոր միայն կաթողիկոսն կ'առնուր վրան։

պատրիարքացն է, և զթագն պատուական եդեալ ի գլուխն, և զվաւերականն[1] մեծագին ածեալ ի մատն, և առեալ ի ձեռն զաջ Սրբոյն Գրիգորի՝ օրհնեաց զթագաւորութիւնն զայն և զամենայն աշխարհ, և ասէ. Գոհանամ զքէն, Տէր իմ Յիսուս, որ մատնեցեր զիս մարմնաւոր դատաստանաց և անցաւոր պատժոց և ամօթոյ, և ոչ պահեցեր յօրն մեծ՝ յորում դատաստանքն ահեղ և պատիժքն անվճար և ամօթն յաւիտենական: Բայց տուր սոցա առաջնորդ բարի և հովիւ ընտիր, զի ըստ կամաց քոց հովուեսցէ զբանաւոր հօտս քո: Այլ արանցս այսոցիկ որք առին զդատաստանս քո, և նախ քան զօրն իմ աստուածաբար դատեցին զիս, դու արասցես իրաւունս ընդ իս և ընդ նոսա:

Եւ ապա հանեալ զզգեստն եդ ի վերայ արծաթի սեղանոյ, նմանապէս և զաքեմն եպիսկոպոսութեան հանեալ ծալեաց և եդ ի վերայ նորա, և ծածկեաց պատուական հանդերձիւ. եհան ի մատանէն և զծանրագին մատանին, և զգաւազանն. և ետ զամենայնն ցպատգամաւորսն, և ասէ. Ահա զոր խնդրէքդ: Եւ ինքն ետ բերել մազեղէն մի սեւ և յոյժ խոշոր և զգեցաւ. և ի նոյն մազեղինէն քուսիթայ եդ ի գլուխն[2]. և ողջունեալ զամենայնն՝ ել ի տանէ եպիսկոպոսարանին, միայն և լռիկ, որ էր մերձ ի քաղաքն Սիս, զոր Գլխիթացի կոչեն[3]:

1. Մատանին՝ որով կնքէր կոնդակները:

2. Գլխի գտակ կամ կնկուղ:

3. Ինչ պատճառաւ այսպէս կոչուած է այդ եպիսկոպոսական տեղն և եկեղեցին՝ ինձ յայտնի չէ: Իսկ ինքն Կոստանդին Բ կաթողիկոսն՝ այդպիսի առաքինական և սրտառուչ հրաժարելէն 17 տարի վերջը, նորէն հրաւիրուեցաւ և դարձաւ յաթոռն (1307) և երկար տարիներ այլ նստաւ մինչեւ ի մահն (1323): Իր վրայ եղած ամբաստանութեանց մէկ քանին յիշէ հեղինակն և արդարացընէ. բուն պատճառն չէ յայտնուած: Յաջորդ Յօդուածին մէջ Կոստանդնի տուած գովեստն առ-

# ՑԽԱ

## ԿՈՍՏԱՆԴԻՆ Բ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ՊԱՀԱՐԱՆ ՆՇԽԱՐԱՑ ՍՐԲՈՑ Ի ՎԱՆՍ ՍԿԵՒՌԱՅ[1]

Ցեւթ հարիւր Հայոց թուական
Ընդ քառասուն ամաց լրման
Եւս և երկուց ի սոյն պայման[2],
Որչափութեամբ լցեալ այսքան:
Ես Կոստանդին անձն տառապեալ:
Որ եմ ծառայ Տեառն անարժան:
Անեալ եմ ի Կլայն Հռոմայական[3]:
Ուր մեծ աթոռն էր հայկազնեան:
Յորում գլուխն պատուական:

Հեթում և իրեն բարերար հաջակելըն՝ շատ հաւանելի չեն սար որ Հեթում յօժարած ըլլայ զնա աթոռէն հրաժարեցընելու:

1. Մեր Ռուբինեանց հարստութեան ժամանակի անթիւ որբազան յիշատակարանաց և սպասուց՝ սա կամ միակ կամ քիչերէն մէկն է հասած մինչեւ մեր աւռեն, թէ և վրայի գոհարներէն մերկացած: Սիսուան գրոց մէջ մանրամասն նկարագրուած է (երես 107–112) համդերձ վրայի ձեւացեալ պատկերներովն: Երբ և ինչպէս յիտալիա բերուեր է՝ յայտնի չէ. սակէ իրր 80 տարի առաջ Բրեմանդի Աղեքսանդրիա քաղքին մէջ Դոմինիկեան կրօնաւորաց քով գտուէր. յետոյ օտարաց ձեռք անցեր է, մինչեւ 1880ին՝ ասոր հարուստ հնասէր մի գներ և իր ժողոված շատ հնութեանց հետ վաճառեր է իր կայսեր, որոյ թանգարանին մէջ պահուի այսուհետեւ: Նմանօթ փռանկ հայագէտ Կարրիէր այլ դրած է այս չքնաղ Պահարանի վրայօք: Գրեմք ինչպէս է Նշխարանոցիս վրայ ոսկոյ կամ ուղիղ:

2. Հայոց թուականն է ՉԽԲ, որ է Քրիստոսին 1293. գրեթէ նոյն տարին որ Կոստանդին հրաժարեցաւ յաթոռոյն. ապա քիչ առաջ ըրած է գայս:

3. Կարճ կերպով կոչուի Հռոմկլայ:

Նստիւր ի գահն պետական :
Հայրն հանուր Հայոց լրման ։
Որ Յիսուսի գոլով փոխան :
Յաջորդ գնդին Սուրբ Գրիգորեան ։
Լուսաւորչին ընդՀայաստան :
Յորոց սկսեալք ըցմեզ հասան ։
Կաթողիկոսքն սրբազան :
Որք և եղեն ինձ պաշտպան ։
Խնամեալ գթով զիս հայրական :
Ուր և ի վեր քան զիմն արժան ։
Հաւատացաւ ինձ աստիճան :
Նստիլ յաթոռ այցելութեան ։
Գաւազանաւս հովական :
Արդ ըստ աստուածեան յաջողման ։
Ի դէպ ժամու և պատահման :
Բարոյն Հեթմոյ արքայութեան[1] ։
Որ գիտնական էր սրբազան :
Եղէ յաթոռ վսեմական ։
Սկեւռա վանացս ի հովութեանն[2] :
Եղայ տեսուչ այն մեծի տան ։
Եւ վիճակին իւր սեպհական :
Այլ երանի թէ աստ վախճան ։
Առնոյր զրոյցս պատմութեան :
Աւա՜ղ մեծի թշուառութեան ։
Բո(լո)ր ազինս հայկական :
Ամաւք յառաջ քան զթուական .
Առեալ եղեւ Հռոմկլայն :
Նստեալքն երբեմն անդ բնական ։
Եղեն վարեալք ի գերութեան :
Եկեղեցիքն երկնանման ։
Յանհաւատից կոխեցան ։
Եւ սրբութիւնքն աստուածական ։
Ձեռաւք պղծոց շաւշափեցան :

1. Բ Հեթում, կրօնաւորն։
2. Յառաջ քան զկաթողիկոսութիւնն՝ Սկեւռայ վանաց և թեմին արքեպիսկոպոս էր Կոստանդին։

Եւ սուրբ Մատեանքն աստուածարան։
Ի նախատիպս ցրուեցան։
Սուրբ Հայրապետքն և որք նորայն։
Գերեալք յաշխարհն տաճկաստան[1]։
Վա՜յ եւ ա՜ւաղ հազար բերան։
Ընդ մեծ չարեացս որ մեզ դիպան։
Փղձկիմ յիշմամբ այնց որբութեանն։
Յորս եմ ունեալ ի մանկութեան։
Զոր յար ի միտս իմ նկատմամբ։
Նստիմ ի սուգ նըսեմական։
Այլ զեթեղել[2] իմ ի Սկեվռայն։
Ստիպեց փափաք զիս ցանկութեան։
Դնել զայս Մատուռս ի հանգըստեան։
Ի յոյս մեծի ինձ բարութեան։
Եւ ի սփոփանս այս տրտմութեան։
Որ միշտ խոցէ զիմ խոհականս։
Ուստի չքեղ զայս խմբարան։
Սուրբ Նշխարացս պահարան։
Կազմել ետու յոյժ հրաշազան։
Ըստ սրբութեանց ճահողական։
Փորձ արծաթով եւ պատուական։
Խառնեալ ոսկով բոցանման։
Պճնեալ ի զարդ զարմանազան։
Յաւրինուածովք վայելչական։
Ականակապ ընդելուզմամբ։
Իբր զտախտակն ահարոնեան[3]։
Սրբոցս որ աստ հաւաքեցան։
Սուրբ ոսկերաց հանգստարան։
Որպէս արժան ինձ բանական։

1. Յեգիպտոս քշուեցան գերի։

2. Թուի զետեղել. իբր թէ ի Սկեւռայ բնակած ըլլալով կ'ուզէ ընծայել այն տեղւոյ կամ վանքին՝ արծաթէ Պահարան մի Սրբոց Նշխարաց։

3. Ահարոնի և իր յաջորդ քահանայապետաց Հրէից կուրծքի վրայ դրուած գոհարներով զարդարուած ազնիւ մետաղէ տախտակն։

Հուչակ Սրբոցն յաղթութեան :
Նշխարքս սուրբ որ աստ եղան ։
Զորս ոչ արժէ նիւթք ամենայն :
Դեղ են ցաւոց բժշկական ։
Մեծ աւգնականք ազգի մարդկան :
Սատաւղք այսոցն չարութեանն ։
Կոչաւղք գհրշտակս մեզ պահապան :
Յորում եւ ես յայս ապաստան ։
Շինեալ պարկեշտ զայս սրբարան :
Սրբոցն ընծայ հաճոյական ։
Եւ ինձ նշան բարոյ յիշման :
Նայ եւ իմոցն որ զիս ծնան ։
Եւ բնաւ ազգիս լրութեան :
Զոր տամ ընծայ նուիրական ։
Փառաց Փրկչին տնաւրէնութեանն[1] :
Ի տաճարին իւր սրբութեանն.
Ի Սուրբ Փրկիչն որ ի Սկեւռայն :
Զոր պահեսցէ Տէր ընդ երկայն ։
Աւուր[2] յանշարժ հաստատութեան :
Եւ զբոլոր զՀայաստան ։
Աւցե ի գոգն ծնողական :
Արդ ես ձայնեմ ձայն ըղձական ։
Եւ բարբառեմ բան մախթական :
Ի յնթանուրս կարդամ զայս բան ։
Սփռեմ զհայցուածս աղերսական :
Որք տեսանեք զայս Պահարան
Հըպիք ի Սուրբս որ աստ եղան
Զի հայցուածովք ձեր մախթական ։
Խնդրուածաւքն աղերսական :
ԶՀեթում արքայն Հայոց ազնեան ։
Թագել ընդ Սուրբս յարքայութեան :
Եւ երախտիցն որ յիս հասան ։
Առնուլ զվարձս հատուցման : ամէն ։

1. Սկեւռայ տաճարն Ս. Փրկիչ կոչուէր ։
2. Ընդ երկայն աւուրս անշարժ պահեսցէ Տէր ։

# ՅԽԲ

## ՍՈՒԼՏԱՆՆ ԵԳԻՊՏՈՍԻ[1]
## ԳՐԱՒԷ ԶԿԱԼՈՒԱԾՍ ՓՐԱՆԿԱՑ ՅԱՍՈՐԻՍ

(ՀԵԹՈՒՄ Բ.)

Որ[2] շուրջ ըզմեզ գրացեաց տիրեաց,
Եւ զԱնտիոք մեծն աւերեաց.
Զբազում ամրոցս ըմբռնելով
Եւ զքրիստոնեայս կոտորելով:
Որ և յաշխարհն մեր արշաւէր
Երիցս անգամ զայս զուն գործէր.
Սակայն պահել հայր[3] իմ ջանաց,
Զազգս և զերկիր մեր փոխանցեաց:
Իսկ առ ինքն յաճախեցին
Մեծ արհաւիրք երկիւղագին.
Զի թշնամիքըն զօրացեալ,
Եւ Տրապօլեա նախկին տիրեալ
Եղեւ խաւար մեզ անհնարին
Անմխիթար սուգ դառնագին,
Քանզի առին զքաղաքն Աքքա[4]
Եւ ըզբոլորն որք ընդ նմա:
Տեսին թէ չէ ոք օգնական
Եւ ոչ ինքեանք իսկ ներհական,

1. Այս գրասէր և կրօնասէր թագաւորի մէկ գրած Ս. Գրոց Յիշատակարան է այս:

2. Սուլտանն Եգիպտոսի:

3. Լեւոն Բ:

4. Անտիոքայ շատ տարի առաջ տիրած էին Եգիպտացիք, Տրիպոլեայ տիրեցին 1288ին. քանի մի տարի վերջը (1294, մարտ) առին զԱքքա յետ երկար պաշարման, որով արեւմտեայց ոյժն և յոյսն վերցուեցաւ Ասորւոց և Սուրբ երկրէն, միայն Կիպրոսի թագաւորութիւնն մնաց նա և յետ Ռուբինեանց:

Զի յորս էաք մեք ապաստան՝
Ազգ Նետողացըն հեղգացան.
Զայս առաւել խրոխտացեալ՝
Զմեզ որսային գազանացեալ.
Որք զօրս անթիւըս գումարեցին
Զնջել ըզմեզ ամենեսին.
Որպէս առիւծ մըռընչելով
Զմեզ յորոժայնս համարելով։
Զի այն գթած Տէրն այց առնէր,
Զազգս և զգաւառս հրաշիւք փրկէր։
Եւ այսօրիկ միջնորդ լինէր
Որ մեր գըթած նախահայրն էր,
Գործավարար մեզ վշտակցեալ
Գրիգորիոս Սուրբն երանեալ.
Որ վասըն մեր կըրեաց նախկին
Զկիրս տանջանացն և զՎիրապին։
Այժըմ զմեղաց մեր պատուհաս
Ըզգան խրատուն արժանահաս՝
Ի բաց ի մէնջ առդարձուցեալ
Ցինքն և յԱթոռն իւր ընկալեալ[1]
Հովիւն եդ զանձն ընդ ոչխարաց,
Մատնեալ զոսկերս իւր Նշխարաց։
Քանզի զոռոզն այն խստորէր,
Եւ զդըղեակ Հօրըն պաշարէր,
Ասեմ ըզԿլայն Հռովմայական,
Զհայրապետաց մեր նստարան.
Զոր և յիշելն է ողբալի,
Աղէտ կսկիծ ճառ դողալի.
Քանզի, տիրեալ ի սուր մաշէր,
Ողորմելի գերիս վարէր

1. Ինքն կ՚իմացուի իր յաջորդն՝ Ստեփանոս կաթողիկոս, որ գերի տարուեցաւ յԵգիպտոս, Աթոռն այլ Հռոմկլայն զոր քանի մի տող վերջն յիշէ. այն տեղ զանձեալ և պահեալ Սրբոց Նշխարքն և գլխաւորն՝ Ս. Լուսաւորչի Աջն՝ նոյնպէս տարուեցան յԵգիպտոս և յետոյ մասամբ ազատեցան։

Նաբուզարդան նոր կատաղէր.
Քանզի զտաճարըն հրդեհէր[1],
Ըզհայրապետըն սուրբ զըզուէր,
Ըզորբութեան կայըն գերէր.
Որում և թաթ աջոյն յայտնէր
Ընդ Բաղտասար զնա տարագրէր[2]
Մինչդեռ հարճիւքն խրոխտ լըրբէր՝
Գըծել զանօթան այն որ սուրբ էր.
Քանզի ըզփոխն էառ յանձին,
Որպէս գերողք տապանակին.
Եւ այժըմ կան դեռ հարուածեալք,
Անձամբք յանձինըս բաժանեալք։
Իսկ մեք շնորհիւ պահեալ եղաք
Որպէս ճնճղուկք յորսոյ զերծաք,
Զի որոգայթըն փշրեցաւ.
Որով օրհնեմք ըզգութն անբաւ։

---

## ՅԽԴ

## ԱՌՈՒՄՆ ՀՌՈՄԿԼԱՅԻ
## ՅԵԳԻՊՏԱՑԻՈՑ· ՀԱՇՏՈՒԹԻՒՆ ԸՆԴ ՀԵԹՄՈՅ Բ

(ՅԻՇԱՏԱԿԱԳԻՐ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ)

Յայսոսիկ աւուրս ժամանակաց՝ բազում եղեւ աղէտս ողորմանաց զգայական սուգ, և… դողական քրիստոնէից ազգի… զոր պարտ է յիշել յամառօտ բանիւ։ Զի ի ՉԼԸ (1289) Թուականին սուլտանն Եգիպտոսի Ալֆի անուն առ զՏրապօլիս[3]

1. Երուսաղեմի գերութեան նմանցընէ Նաբուգոդոնոսորի Նաբուզարդան զօրավարին ձեռօք։
2. Նաբուգոդոնոսորի որդին, որոյ ըրածը և կորանը պատմէ Դանիէլ մարգարէ։
3. Տրապաւլուս ըստ Թուրքաց, Tripolis, Խաչակրաց ամրոցք յն ծովեզերեայ Լատիններէն մէկն։

զերեքպարսպեան ամրութեամբ պատեալն գեղեցկաշէն քաղաք, անցեալ զօրօք ընդ մուտս ծովուն՝ յաւարի առեալ զանչափ գանձս, որ ամրացեալ կայր առ փարթամացեալ բնակիչսն, աւերեալ յատակեցին զպարիսպս քաղաքին և քակեցին ըզհրաշազարդ եկեղեցիսն։ Իսկ յ՚ՉԽ (1291) թուին որդին Ալֆէ՝ Մէլիք Աշրաֆ անուն՝ խակամիտ և գազանաբարոյ՝ առ զմեծահռչակ և բազմամբոխ քաղաքն զԱքայ[1], զոր ունէին առ Ֆռանգացն՝ տունն Թամփլոցն և Ասպեթարին[2], անարի և թոյլ գըտեալ ազգն օրինական՝ առաջի անօրինացն մատնեցաւ քաղաքն ի պաշարումն, և առաւել եւս պատեցան սպանմամբ սրոյ և գերութեամբ. զի սուրք անօրինացն զաւազանածին[3] տունկսն բանաւոր՝ թօթափէին, զգլուխսն ի մարմնոյ՝ իբրեւ զտերեւս ծառոց. և այլքն վարեցան ի գերութիւն, իբրեւ զհօտս հաւուց ի բունոյ բնակութեանց իւրեանց. և ազնուականքն և ազատածինք, ճոխքն և փառաւորքն գնացին ի ստրկութիւն, և մնաց քաղաքն բազմորդի իբրեւ զմայր սեւազգեստ ի վերայ մանկանցն իւրոց։

Իսկ ի թուականին ՉԽԱ (1292) յաւելաւ ահ և երկիւղ, դողումն և սասանութիւն յերկիրն Հայոց ի Կիլիկիա. զի միջապագլուխն այն որ առ զԱքա՝ դիմեաց ի դարանէ իւրմէ ահագին շնչմամբ, և դղորդելով անհուն զօրօք հեծելօք և հետեւակօք, ըստ Երեմիայի գուժմանն բօթի, «Ել առիւծն ի մորոյ իւրմէ սատակել զազգս». խաղաց և ել ի տեղւոջէ իւրմէ՝ առնել զերկիր աւերակ, և քաղաքք

1–2. Քան զայլ քաղաքս ամրագոյն և գլխաւոր պատնպարան փրանկաց յարեւելս. որք կոչէին զայն S. Jean d'Acre, և զոր այն առեն պաշտպանէին Տաճարական (Templiers) և Հիւրանոցք (Les Chevaliers de l'Hôpital) ասպետքն։

3. Մկրտութեան աւազանէ ծնեալքն, քրիստոնեայք։

քաղաքացին առ ի չգոյէ բնակչաց ի նոսա. վասն որոյ ասէր, «Ի վերայ այգորիկ քրձազգած եղերուք, կոծեցարուք, ենչ բարձէք, զի ոչ բարձաւ սրտմտութիւն բարկութեան իմոյ ի ձէնջ»։ Յայսմանէ սարսեալ երկիրն Կիլիկեցւոց՝ զաղթեցան ի լերինս և յամրոցս բերդից. իսկ նա զիմեալ գնաց ի վերայ հայրապետական աթոռոյն Հայոց ի Հռոմկլայն, և պատեալ պաշարեաց զնա բազմաձեան պատերազմօք, բարձրաձիգ[1] .. անօք ծանր քարանց, քարահաարուեստականօք, և բազմափոր զարանամօք. և (է) առ զաստուածաշէն և գեղեցկագիր ամրոցն վասն մեղաց մերոց յանհաւատութեանցն և բարեացն նուազութեանց. գերեաց և զսուրբ հայրապետն մեր զկաթողիկոսն Տէր Ստեփաննոս, եպիսկոպոսաւք և քահանայիւք և անթիւ քրիստոնէիւք. որ համեմատէր ողբոց և ուերմանն Երեմի և Երուսաղէմի... զի քահանայք և որք փառաւորք անկան ի սուր, և կանայք պատուականաց անարգեցան, աստուածային կտակարանքն յանօրինաց ձեռաց յափշտակեցան, տաճկական և մարտիրոսական նշխարք Սրբոց խորտակեցան. զարդն ոսկւոյ և մարգարտաց և ականց պատուականաց՝ որ ի վերայ սրբութեանց՝ կողոպտեցաւ։ Աջն սքանչելապատիւ Սուրբ Լուսաւորչին մերոյ՝ յերկիրն այլազգեաց գերեցաւ, որ ողորմելի էր քան զգերութիւն տապանակին ի Հնումն։ Եւ եղեւ այս ամենայն Հայաստանեայց ողբս և յարտասուս, ի հեծումն և ի հառաչումն։ Յայսքան ամ՝ որոյ այս ամենայն գայր ի վերայ քրիստոնէից ի պատուհաս մերացն յանցանաց և անզգամալի մեղացն, յար և անհատ եկաւորութեամբ գային դեսպանքն ի մեծամիտ և յամբարտաւան սուլտանէն առ քրիստոսասէր և աստուածազարդ թագաւորն մեր, սաստիկ սպառնալեօք և ծանր հարկապահանջութեամբ և անթիւ գանձս յոսկւոյ և արծաթոյ խնդրելով, և այլ բազում ընչից։

1. Բառին կէսն պակասի։

Իսկ Թագաւորն մեր կայր երկայնմտութեամբ անշարժ և հաստատուն յուսով՝ ապաւինեալ յաղօթս և ի պաղատանս հաշտարարս և հեզութեան արտասուաց. և ըստ յուսոյ մարգարէր Թագաւորին կայաք և մնայաք, մինչև ի թիւս Թուականին ՁԽԲ. և վստահանայաք յողորմութիւնն Աստուծոյ՝ պարգևել լինել շինութիւն աշխարհիս, յուսոյ և սիրոյ Թագաւորին որ յԱստուած և ի սուրբն Նորա[1]: Իսկ Աստուած որ ոչ ամաչեցուցանէ զյուսացեալսն իւր՝ ըստ հայցմանն Դաւթի և երաշխաւորութեանն Պօղոսի, և որպէս փարձի ի բովս ոսկի և արծաթ՝ նոյնպէս ընտրէ զսիրօս Աստուած՝ ըստ Սողոմոնի. հայեցեալ ի համբերատար ժուժկալութիւն Թագաւորին մերոյ և ի նեղութիւնս զոր կրէր երկիրս Հայոց, և որ ի ձեռին ունի զսիրտս Թագաւորաց որպէս սահանս ջուրց, և ընդ որ կամս կամի նայեցուցանել՝ դարձուցանէ զնա. և որ մինչև ցայս վայր թոյլ ետ զօռօզաբարու սուլտանին սրտմտական բարկութեամբ իբրև զհոսանս գետոց՝ գոռալ հեղեղաբար յարձակմամբ գերել և գերփել, և դաղանային ցասմամբ զպատուհաս սպառնալ ընդ Նաբուգոդոնոսորայն ի վերայ Երուսաղեմի, դարձոյց զսահմանս սրտմտութեան նորա, և նայեցոյց խահականին վարել ընտրութեամբ, և գթալ որպէս Կիւրոս առ գերեալսն յԵրուսաղեմէ ի Բաբելոն: Զի ի նոյն թուին ՁԽԲ, ի մուտս յունիս ամսոյ եկին գեսպանք պատուաւորք ի սուլտանէն, և բերէին ոսկիտս մածագին և պատուական զգեստուց, ղաշար և ղիլայ[2] անձին Թագաւորին և զՄգ[3] եղ-

1. Թագաւորին՝ (Հեթմոյ Բ) բարեպաշտութեան, աստուածասիրութեան և յուսոյ վրայ՝ վստահանայինք, կ'ըսէ գրողն, որ Աստուած իբրև արժանաւոր վարձ անոր երախտեաց՝ խնայէ իրենց:
2. Խիլա և Խաշաք նոյն արաբ բառն է, եղակի և յոգնակի. Նշանակեն շքեղ զարդարուն զգեստ:
3. Այսպէս անծանօթ բան մի է գրուած:

բօր նորա. բերին և թուղթս երդման զսուլտանին և զմեծամեծ ամիրայից նորա, և հաստատեցին դաշինս սիրոյ և խաղաղութեան ընդ թագաւորն Հեթում. առին և ի նմանէ երդումն հաստատութեան, ընկալան և պատմուճանս զարդուց ամենայն եկեալքն ի սուլտանէն. առաքեաց և առատամիտ թագաւոր մեր բազում բեռինս արծաթուց, և զանազան կտաւս ոսկենկար մետաքսից, և բազմութիւն ձիոց և ջորոց, և այլ իրս նորագիւտս, աղերս և հարկ սուլտանին։ Եւ եղեւ այս սիրոյ խաղաղութեան հաստատութիւն՝ խնդութիւն մեծ յերկրիս Հայոց. էր և աղերս գթութեան Աստուծոյ ի մեզ բարերարելոյ, յոյս և հաւատ և սէր և ողորմածութիւն թագաւորին։ Զի որպէս զդառն ջուրն Մեռայի՝ արար ըմպելի անուշահամ հնոյն իսրայէլի, զդառնութիւն բարուց սուլտանին քաղցրացոյց ընդդէմ թագաւորին մերոյ և եկեղեցւոյ Քրիստոսի։

## Այլ Յիշատակ Առման Հռոմկլայի[1].

Թովմաս ոմն անուն տարաշխարհիկ եղեալ ի հայրենի տեղոյ իմոյ յերբեմն ի փաղընջուց ամաց հայրապետական աթոռոյ ճոխութեամբ փառաւորեցելոյ, ի Նշանաւորն աստ Դղեկէ Հռոմկլայէն. և վասն իմոյ մեղացն նախ քան զվեց ամ գրութեան տառիս՝[2] ի ձեռս Տաճկաց մատնեցելոյ.

1. Անշուշտ շատ ժամանակակիցք գրած են զայսու թերեւս և ոմանք մանրամասնաբար, բայց մեր ձեռք գտուածքն են համառօտ յիշատակք, յորոց և այս Թովմայի՝ թէ զգայուն և թէ ընտիր գրուած։ Հեթում Պատմիչ Կոռիկոսի տէրն՝ իր Ժամանակագրութեան մէջ՝ այսպէս յիշէ. «ՉԽԱ, (1292), Աշրաֆ (սուլտանն) » էառ զհայրապետանիստ դղեակն Հայոց զՀռոմ- » կլայն, և գերեաց զՏէր Ստեփաննոս կաթողիկոսն »։

2. Որ է Թղթոց գիրք. կրօնից վերաբերեալ Թղթակցութիւնք կաթողիկոսաց, և այլն։

յորմէ ամաւ և կիսով նախ քան զառնուլն՝ պատահեաց ինձ ելանել և գալ յաշխարհս Կիլիկիոյ, յուսով տեսութեան սուրբ գերեզմանին Քրիստոսի։ Զոր վարկանիմ՝ թէ և ոչ վասն իմոյ արժանեաց՝ այլ վասն այնչափ խնամոցն Տեառն դիպեցաւ այս, ոչ տեսանել ի ժամանակի պաշարման դղեկին զանհանդուրժելի նեղութիւնն[1], որոյ և լուրն պակուցանէ զամենայն լսողս։ Ուր և բազումք՝ մանաւանդ բնաւքն սննդակիցք իմ և ազգայինք՝ ի պէսպէս մահս և ի գերութիւն վարեցան. մեծ թշուառութեամբ արտաքս քարշեալք ի մայրենի գրկաց պանծալի դղեկին։ Զորոյ յիշատակ երջանկութեան և զայժմու թշուառութեան՝ որ ի դէպ է հարազատ զաւակի առ սիրելի ծնող կրել, ոչ առանց արտասուաց բերեմ։ Վասն զի գերեալ եղեւ Աջ Սրբոյ Գրիգորի և հուշակաւոր Նշանն սուրբ Վահկոյի, առ ատն ընկեցեալք նշխարք ոսկերաց սրբոց վկայիցն. նա և աստուածարեալ և երկնանման շքեղաշուք և գերապայծառ սուրբ տաճարն, զՍրբոյն Գրիգորի ասեմ[2], և Տիրամօրն Սրբուհւոյ Աստուածածնին, և յանուն Որդւոյ նորա Սուրբ Փրկչին, կործան եղեւ և օթարան անհաւատիցն։

1. Աստուծոյ խնամոց շնորհք մի համարի՝ իր այն ատեն Հռոմկլայէն ելած ըլլալն. որով ականատես չեղաւ այն ոգալից և ահաւոր պատահման, գերութեան կաթողիկոսին և Սրբոց Նշխարաց։

2. Գրիգոր Դ. Տղայ կոչուած կաթողիկոսին շինած կամ շքեղացուցածն. որոյ կից կամ մասն էին Ս. Փրկիչն և Ս. Աստուածածինն եկեղեցիք։

# ՅԽԴ

## ԱՐՇԱՒԱՆՔ ԱՅԼԱԶԳԵԱՑ Ի ԿԻԼԻԿԻԱ

(ՅԻՇԱՏԱԿԱԳԻՐ[1].)

... Խանդակաթ փափագանօք՝ իբրեւ տեսի (ըզգիրս Փիլոնի Տրբայեցւոյ) անյապաղ փութով շուտափութեամբ խաշոր գրով աւարտեցի զցանկալի տառս, ես Վահրամ սուտանուն սարկաւագս, ի վայելումն ինձ և մխիթարութիւն հոգւոյ և մարմնոյ, ինքնագիր երկօք, ի ծոցն սնուցչի իմոյ աստուածաբնակ տաճարին Աստուածածնի և Ս. Փրկչի՝ յԱնապատիս Արմենի[2]: Եւ թէպէտ և տկար եւս էի ի գլխոյ, մինչ գրեթէ յոգիս ապաստան եղեալ և յոգնեալ, սակայն ամենակալ ձեռամբն Աստուծոյ օժանդակեալ՝ հազիւ հազ տագնապաւ իմն հասի յաւարտ աղօթելոյն Տեառն. որոյ՝ ի մեղուցեալ անձնէս բիւրապատիկ գոհութիւն և երկրպագութիւն: Եւ վասն ժամանակիս անհանդուրժեալ վրդովմանցս և խուճապ տագնապիս զոր եհաս ի վերայ մեր յազգէն իսմայելացւոց, և

1. Գրողն Վահրամ անորոշ անուամբ իսմայելացի կոչէ վազողները Կիլիկիոյ վրայ, որ այն ատեն Եգիպտոսի սուլթանաց իշխանութեան տակ ըլլալով՝ հարկ է թէ օտար ցեղէ էին և ոչ Արաբացիք: Կարճ յիշատակ մի է այս, բայց նշանաւոր է դեռ վանորէից մնալն ի Կիլիկիա՝ իրենց կարգով, և այսպիսի իմաստասիրական գրոց գրուիլ և կարդացուիլն:

2. Սիսուան գրոց մէջ տեղագրուած է սա (96), որ աւելի ճգնաւորաց տեղ էր քան միաբան կրօնաւորաց, Լամբրոնի բերդին կից էր կ՚ըսուի. երբեմն՝ լերին անուամբն (որոյ վրայ էր) Արմենի կոչուի, երբեմն յատուկ անուամբ Յովանի անապատ, իսկ եկեղեցին՝ Ս. Փրկիչ:

յափշտակեաց զյուռթի[1] և զպարարտ մասն երկրի մերոյ, ի Թվականիս Հայոց ՉԽԷ (1298), յորում եղեւ զրաւ գրոցս. և բազումք անկան ի սուր սատերի և ի գերութիւն, վասն խրատելոյ զմեզ Տեառն՝ և մեք ոչ խրատեալք. այլ հաւատք պակասեալք և ամբարշտութիւն զօրացեալ, արդարութիւն հեռացեալ և անօրէնութիւն բազմացեալ, սէր եղծեալ և անգթութիւն ծաղկեալ, բարիք գօսացեալ և չար արմատացեալ, Աստուած վաճառեալ և ագահութիւն Թագաւորեալ. եկեղեցիք քակեալք և քահանայքն խողխողեալք, վանորայքն ապականեալք և միանձունք ցրուեալք. մանկունք գերեալք և աղջկունք վաճառեալք ի ձեռս անօրինաց: Արդ, որպիսի՞ չարաշշուկ և բազմավրդով ծանր աղէտի աւուրս՝ ես ունայնացեալ և յոյժ խաւար ժառանգս և պարապնդեալս մեղօք Վահրամ սարկաւագս՝ մարթացից ճառել զթշուառութիւնս. զոր Տէր Յիսուս ընդարձակումն՝ արասցէ:

Նա և առ ապագայոդ հանդիպողս և ընթերցողս կամ գաղափարողս մաղթանք՝ բարւոյ յիշման արժանաւորել զհօգեւոր հայրն իմ և ուսուցիչ, որ իբրեւ զհօր մաքրէ զիմ զմարմնական ախորժակս, յաստուածայինսն յորդորելով հանապազ աննախանձաբար, զՍտեփաննոս Գոյներ Երիցանց[2]: Եւս

1. Ջուրերով բարեբրոյս եղած երկիր:

2. Շատ ճարտար գրիչ քահանայ մի էր աս, և շատ գեղեցիկ գրքեր գրած է, յորոց ծանօթ են մեզ մէկ քանին, ոչ միայն ի Հայս մնացեալ այլ և յԵւրոպա և մինչեւ ի Գալիֆոռնիա տարուած: Ոչ միայն գիրն վայելուչ է այլ և ուղղագրութիւնն, վասն որոյ խնդրեր էր ի հաջակաւոր Գէորգայ վարդապետէ Սկեւռացւոյ՝ որ լաւ բացատրէ զԱրուեստ Գրչութեան, զոր իւր դար մի առաջ գրեր էր Արիստակէս ամն վարդապետ: Ստեփաննոսի մականուան պատճառն Գոյներ Երիցանց՝ ինձ յայտնի չէ, միայն գուշակուի որ երիցու որդի և ցեղէ էր. իւր 30 տարուան մէջէն ծանօթ են իր յիշատակարանքն (1284–1310). 1292ին

և զծնօղսն իմ աղաչեմ տրտասուալից հառաչմամբ յիշել ի մաքրափայլ յաղօթս ձեր. վասն զի սովոր է ամենողորմ Աստուած՝ այլում աղաչանօք այլում օգնել. զի վասն յիշման աշխատեցայ ի սա. և որ յիշէ ողորմելով՝ յիշեալ լիցի յաններեկ աւուրն առաջի Քրիստոսի, ուր բանք սպառին և գործք թագաւո-րեն. Ես և զկոկող քարտեսխս՝[1] զՊետրոս կրօնաւոր և զԿոստանդին սարկաւագ՝ աղաչեմ յիշել. որ աշխատեցան ի սա։

գրածի մի մէջ զինքն ծեր ցուցընէ, «ի ծերութեան » հակեալ ժամանակի», և կ'ողբայ Հռոմկլայի առումն և կաթողիկոսին գերութիւնը. բայց անկէ 12 տարի վերջ այլ գրքեր գրած է՝ ի Կիպրոս, ուր քաշուեր էր իր երկրին վտանգներէն նեղուած, և հոն գրեր էր Աւետարան մի՝ Լամբրոնի տիրոջ Հեթմոյ դստեր Ալիծ տիկնոջ համար, և Գործոց Առաքելոց Խմբագիր մեկնութիւնն՝ այն օրինակէն՝ զոր Յովհաննէս Արքայեղբայրն օրինակել տուած էր վերոյիշեալ Գէորգայ։ Տես Յօդուած 336։

1. Շատ հեղ ձեռագրաց մէջ յիշուին մագաղաթը կամ թուղթը շտկողք, գրելու գիծերին ընողք՝ իբրև երախտաւորք և արուեստաւորք. այդպիսի մէկն եղեր է Պետրոսդ այդ։ Ստեփաննոսի գրած մէկ գրքին մէջ յիշուի և կին մի՝ որ գրքին կազմի կամ կողից մետաղէ կոճակներ տուեր է։

## ՑԽԵ

## ԳԷՈՐԳ ՎԱՐԴԱՊԵՏ ԼԱՄԲՐՈՒՆԱՑԻ ԿԱՄ ՍԿԵՒՌԱՑԻ

*Դրուատ բանի սուղ ինչ պատմագրաբար յերջանիկ րաբունապետն և ի քաղցրաբարբառ վարդապետն Գէորգ Լամբրունեցի, ասացեալ* ՄՈՎՍԷՍԻ *վարդապետի աշակերտի նորին* [1]

Իղձք բաղձանաց և ճշմարտութեան յորդորէ, փափագ սիրոյն ստիպէ, և երախտիքն պահանջէ, երկիւղն վարհուրեցուցանէ, և անարժանութիւնս իմ հրաժարեցուցանէ. վասն զի զՍրբոց Աստուծոյ խօսել՝ երկիւղ մեծ է, և վասն նորին լռաց ճառել՝ զարհուրումն սաստիկ է, այլ և լռելն վնաս մեծ է։ Վասն որոյ և բազում զգուշութեան պէտք են առ ի խօսել զվարուց երանելի արանց, և մեծաւ հոգացողութեամբ պարտ է ուղղութեան հոգ տանել, ոչ խոտորելով յաջ կամ յահեակ, այլ առաւել զուղղականին պարտ է ասել։

Արդ, ի թուականիս Յաբեթական տումարին յեւթն հարիւր և յիսուն (1301) եղեւ վախճան երջանիկ և հռչակաւոր մեծ Րաբունապետին և հաւ-

1. Մեր ԺԴ դարու հեղինակաց և վերջին ընտիր գրողաց մէկն է Գէորգ, որոյ գրածները յիշէ իր գովող և ողբացող աշակերտն Մովսէս. իսկ սա ո՛ր տեղացի է կամ ի՞նչ ուրիշ բան գրած է. չէ ծանօթ։ Բաւական յաջող է այս իր գրածն. թէ արձակն և թէ չափածոն, միայն չափազանց կրկնող բանից. սակայն և այս նշանակ է իր մեծ սիրոյն և յարգանաց առ արժանաւոր վարդապետ իւր։

տոր գիտնականին Գէորգեայ Լամբրունեցւոյ, յունուարի ԺԱ (11), յաւուր չորեքշաբաթի. որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի: Արին և վեհն և հռչակաւորն յամենայնի, առաքինին, հեզն, հանդարտն, խոհեմն, ողջախոհն, ողորմածն, երկիւղածն, աստուածասէրն, բարեսէրն, մարդասէրն, եղբայրասէրն, օտարասէրն, գրասէրն, ուսումնասէրն. բազմաբեղունն, բազմաբաշխն. աննենգն, անկարծիքն, անամբարտաւանն, անոխակալն, անյիշաչարն. ամենագութն, ամենախնամն, ամենողորմն, ամեներջանիկն. բարեմիտն, բարերարն, բարեգութն, ցաւակիցն, ախտակիցն, կարեկիցն, խաղաղարարն, արդիւնարարն, բազմաշնորհն, բազմահնարն, որբասէր անձն, լուսաւոր միտքն, մաքուր մարմինն. բազմաց գերագոյնն, յոքունց վեհագոյնն, անհամեմատն յ՚արդեան ժամանակիս, աննմանն, անհանգունակն, մակաւասարն, երկիւղածն, զղջականն. Սրբոց պարակիցն, գերագունից դասակիցն, վեհագունից կաճառակիցն, արդարոց խմբակիցն. արեւմտային արեգակն, աստղն առաւօտեան, արուսեակն ուրախարար, քահանն հաւատոյ, ուղղապատում բաբունապետն, խնամողն բարեմիտ, աւանդողն ճշմարտութեան, քարոզն քաջափառ, բարուոք պատմողն բանին Աստուծոյ, ճշմարիտ պատմողն աստուածային բանից, լին շնորհօք աստուածայնովք. ահարկուն անուղղայից, սարսափելին ստոց, զարհուրեցուցիչն ժխտողաց, թշնամանողն թիւրելոց, անակնառուն յամենայնի, անաչառն, անմարդահաճոյն. սիւնն հաւատոյ, ամրութիւնն եկեղեցւոյ, հաստատութիւնն ուղղութեան. պատուականն պարծանքն ազգիս արեթական. քաղցրաբարբառն, ստոյգ յաւէտ գովելի որդին գրոհիս հայկազեան. շառաւիղն սրբոց, ոստն անբծութեան, ստեղն սրբութեան, աշնանային ժամանակիս՝ գարնանային ծաղիկն. ակն լուսատու յակնկալութիւնն բազմաց. ամրութիւնն ախմարաց, հաստատութիւնն տգիտաց. Հօր Աստուծոյ հնազանդն, Որդւոյ Աս-

տուծոյ ընտրեալն, Հոգւոյ Աստուծոյ բնակարանն, Երրորդութեանն օթարանն. օրինացն Աստուծոյ արհամարհողացն վրէժխնդիրն, փառացն Աստուծոյ բարձրացուցիչն, եկեղեցւոյ պայծառութիւնն. ժողովրդոց յուսադրութիւնն, մեղուցելոց ուղղիչն, արդարոց յորդորիչն, որբոց և այրեաց յանձանձիչն. Սրբոց պատուողն, տօնից տօնախմբողն, Աստուծոյ փառաբանողն, օրինաց պատմողն:

Եւ արդ զի՞նչ եւս ասացից. զի տկարանայ բանս իմ առ ի պատմել. քանզի թողում ասել զբազումս յառաքինութեանցն զոր զանխլաբար գործէր և միշտ ծածկէր և ոչ բնաւ յայտնէր. իսկ զգանձս աստուածայինս յօժարութեամբ յայտնէր՝ երանելին և ընտրեալն, առ Աստուած միշտ աղօթաւորն, յօրէնս Տեառն խոկացողն. առ զօրեղս և իշխանս բարեխօսն, զարհուրեցուցիչն, պատկառեցուցիչն յամենայնի, աստուածայնովքն յաղթահարողն և զիրաւունս հաստատողն:

Եւ արդ, սա ծնեալ ի նահանգին Կիլիկեցւոց, ի գաւառէ մայրաքաղաքին Տարսոնի, յանառիկ դղեկին Լամբրոնի կոչեցելոյ, որ ի յունական բարբառոյն ի հայ լեզու՝ կրակարան հրոյ[1]. և այս յաւէտ յիրաւի. քանզի զհուրն աստուածային սիրոյն յինքեան ջերմապէս բորբոքեալ, որով և սնեալ և վարժեալ ի հռչակաւոր սուրբ ուխտն Սկեւռա կոչեցեալ, առ քեռւոյն իւրում Տեառն Գրիգորի դիտապետի նմին ուխտի, որոյ և վարժապետ կարգեալ՝ զի կրթեսցէ զնա գրովք սրբովք ի մանկական հասակին. յորում և քան զյոքունս առաւելեալ գտանէր: Եւ յորժամ յարբունս հասանէր հասակի՝ ընթանայր նա և յելս արեւու, որ և դարձեալ լինէր անտի բազում բարգաւաճեալ փառօք, և եկեալ դադարէր ի տեղի իւր. և բնաւ ոչ այլ իմիք փափագէր՝ բայց վերծանութեան աստուա-

1. Աւելի՝ փայլող կամ լուսոյ աման է լապտեր՝ նշանակէ քան կրակի աման:

ծայրին տառից, որով և զյոլովս վարժէր և կրթէր ի նոյն լուսաւորութիւն պատուիրանի Աստուծոյ, և հրամանաւ հաստատէր և գաւազանաւ ջահաւորէր. ի խոնարհութիւն կրթէր և յերկիւղածութիւն յորդորէր, վասն պահոց պատուիրէր, և զպարկեշտութիւն ուսուցանէր, զսրբութիւն սիրել և յանկարգութենէ հրաժարել, զերկրաւորս արհամարհել և երկնաւորին փափագել: Եւ այսոցիկ ամենեցուն նախ զանձն տայր օրինակ. զի զոր բանիւ ուսուցանէր՝ զնոյն և գործով յոյժ կատարէր:

Առնէր և Գանձս[1] յոլովս տօնից տէրունականաց և Սրբոց Աստուծոյ: Գրէր և կանոնս կարգաւորս և Բանս խրատականս վասն խոստովանութեան առ ի յօգուտ տգիտաց քահանայից: Առնէր Համարս գլխոց և Ցանկս և Նախադրութիւնս Աստուածաշնչից տառից[2]: Գրէր և Ճառս ներբողականս ի պատիւ Սրբոց. առնէր և համառօտ Մեկնութիւն Գործոց Առաքելոցն՝ ի խնդրոյ Արքայեղբօրն Տեառն Յովհաննու: Գրէր և մարգարէին Եսայեայ լայն և ընդարձակ Մեկնութիւն, հրամանաւ արքային Հայոց Հեթմոյ: Բազում բանս պիտանիս հաւաքէր ի գանձուց աստուածայնոց առ ի վարժումն մանկանց նորագունից:

Եւ արդ, այսոքիկ սակաւք գոն ի բազմաց՝ եթէ մասն ի բոլորէ կամ տեսակ ի սեռէ, կամ անհատ յընթանրէ, զոր ծանուցաք փոքր ի շատէ, առ ի յորդորումն զկնի եկելոց. զի երանելի հայրս մեր ոչ եթէ մերոցս էր կարօտ գովութեանց, զի սուրբք՝ յԱստուծոյ ունին զգովութիւն և զփառս, այլ զի

1. Գանձարան գրոց մէջ գտնուին իր (Գէորգ) անուամբ այդ եկեղեցական երգերն:

2. Շատ կարեւոր գործ, Ս. Գրոց թէ իբրեւ յառաջաբան ծանօթութիւն աւելցուցած, և թէ գլխոց համարներն նշանակած և ցանկած. ուրիշ ոմանք այլ ըրած են այսպիսի բան, բայց այս Գէորգայն նշանակուի Աստուածաշունչ գրոց ընտիր օրինակաց մէջ:

զկնի եկեալքն օգտեսցին. մանաւանդ զի աստուածասէրքն սիրեն լսել վասն աստուածայնոցն բան ինչ գովասանական և վիպասանական, որպէս և ասէ Սողոմոն, «ի գովութեան արդարոյն ուրախանան ժողովուրդք»: Եւ քանզի ըստ գրելումն՝ լսողութիւն մոռացմամբ ոչ տայ զարդարութիւն, վասն որոյ պարտ է և գործոցն հետեւել սրբոց, զի փառաց նոցին գտանիցեն հաղորդ:

Եւ արդ, երանելի սուրբ հայրն մեր և ճշմարիտ րաբունապետն՝ այսպէս բարւոք կացեալ ի մարմնի և այսպէս ճշմարտութեամբ քաղաքավարեալ ի կենցաղումս, հանգեաւ խաղաղութեամբ ի Քրիստոս, յամսեանն յունվարի որ օր մետասան էր ամսոյն, յաւուր չորեքշաբաթի. և յաւելաւ հայրն մեր երանելի ի հարս, ճգնաւորն ի ճգնաւորս, արդարն յարդարս, սուրբն ի սուրբս, քահանայն ի քահանայս, նահատակն ի նահատակս, առաքինին յառաքինիս, վարդապետն ի վարդապետս, քարոզն ի քարոզս, փառաւորեալն ի փառաւորեալս, հրեշտակն ի հրեշտակս, ժառանգն Աստուծոյ ի ժառանգաւորս, քրիստոսասէրն առ Քրիստոս, որդին արքայութեան յարքայութիւնն: Ընդ որում և զմեզ արժանաւորեսցէ մարդասէրն Աստուած՝ ողորմութեան իւրում, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն:

## ՈՂԲ

Աւա՜ղ իմոյս թշուառութեան,
Անմխիթար սըգոյս դիպման.
Ըզբաղձալին իմ կորուսի
Զրաբունապետըն գովելի,
Գէորգ անուն հռչակաւոր
Ամենեցուն գոլ հրաշաւոր.
Բազում որդիս ի փառս ածեալ
Յոլով բերմամբ բարգաւաճեալ.
Ծնանէր ծընունդ միշտ հոգեւոր
Զարդիւնարարն և շնորհաւոր.

Մակեռակի[1] տառիւք գծնէր,
Հրաշիւք բանիցըն զարդարէր,
Գրախեցիւ հմտաւորէր,
Դարձմամբ ըզնոյն ծանուցանէր[2],
Յարի բաշխմամբ զբանն ողորկէր.
Կարգաւ ըզնոյն ուսուցանէր.
Թելադրութիւն տայր արհեստի
Գրոյ և բանի յամենայնի։
Երկամբք միշտ գայր զաշակերտօքն,
Պաճուճազարդ գործէր շնորհօք.
Ահարկու գոլով հեղգոց,
Միշտ յորդորող փութացելոց.
Մօտակայից էր խրախութիւն
Հեռագունիցըն տրտմութիւն.
Ականատեսքըն բերկրէին,
Որք վրիպէին՝ տրտմէին.
Ձի բանքն օրէնք էր տիրապէս
Առ ընկալուչսըն ստուգապէս։
Սուր երկսայրի որպէս ասի
Միշտ հատանող գոլ անուղղի.
Հըրով Հոգւոյն միշտ հրազինէր
Ըզխռովագոյնսըն տոչորէր։
Բեղնաւոր բուսոց բարեաց
Թելադրութիւն տայր աւետեաց,
Ձեռամբ գրեալ բանիւ պատմեալ,
Ձամենեսին Տեառն աւանդեալ.
Ըստ հրամանի Տեառն Յիսուսի
Եւ մեր Փրկչին ամենայնի՝
Ձորըս բանիւ վարդապետէր
Գործով ըզնոյն օրինակէր.
Դաստիարակ գոլ ազգաց
Եւ արբանեակ միշտ օտարաց.
Հիւրոց հնազանդ գոլ և հլու

1. Կարծեմ թէ՝ Երեք կամ կրկին երեք երեք գրով կամ վանգով տառնաւոր բառ գրելն յիշէ։
2. Գրադարձի վրայ յատուկ գրած է։

Ըստ մեծի հօրն Աբրահամու.
Ըսպասաւոր և պաշտօնեայ
Եւ արքանեակ որպէս ծառայ.
Ոչ հրամայէր կամ պատուիրէր,
Այլ զնոյն անձամբ միշտ վըճարէր.
Մըխիթարէր ըղվըշտացեալսն,
Ուրախ առնէր ըզտըխրացեալսն.
Ճանապարհ յաւէտ հորդէր
Եւ ժողովուրդ Տեառըն կազմէր.
Պարիսպ գոլ պըղընձէ
Իմանալի սիւն երկաթի:
Զանձըն մատնէր ի մահ վըշտաց
Վասն աղքատաց և օտարաց.
Պետրոսաբար ի խաչ դիմէր
Եւ զՅիսուսին պատկեր բերէր.
Զսէր աշխարհիս մեռուցանէր,
Ինքըն սիրոյ սմին մեռանէր.
Ճըշմարտութեան վասըն եգնէր,
Զանձն իմ ի մեծ վըշտաց պահէր.
Միշտ ի. քարին մեզ թելադրէր,
Տիւ ըզգիշեր յաւէտ գործէր.
Եւ զտիւն անդորր անցուցանէր:
Զաչերն յառէր յաւէտ ի լոյս,
Զմատունս շարժէր ի գործ պիտոյս:
Իբր ըզհօրանս հօտից այծից[1]
Միշտ յօրինէր ըզշարս տողից,
Եռակի կերպիւ կազմէր
Գեղապաճոյճ յաւէտ գործէր.
Բոլորակ և աղիւսակ
Եւ զվերջագիր տառըս հրեշտակ[2].
Գեղեցիկ և հրաշալի
Եւ պճնազարդ յամենայնի:

1. Գեղեցիկ կերպով գրած գրերու շարքն նմանցընէ այծերու հօտի:

2. Առով այլ դարձեալ նշանակէ իր վայելուչ և զարդարուն գրուածը:

Զի ոչ յարդեանըս ժամանակի
Ուք գըտանէր նմին հանգունակ
Արուեստաւոր և գործունեայ,
Գըւեստիկոս որպէս պիտայ[1].
Խոհեմ և հեզ հոգւովըն լի
Ըստ Անօթին ընտրականի[2]։
Մշտամռունչ հեծեծանօք
Ըզգայգն հօկէր միշտ արտասուօք,
Անդոյլ և անգադար
Որպէս մեղու ի գործ յօժար.
Պահօք պնդէր զանձն և ճնշէր,
Զպատրողական մարմինն խարէր.
Զպէտս իւր յաղքատսըն նըւիրէր,
Յաւէտ զնոսին մըխիթարէր։
Եկին հասին ամքըն սովու[3]
Որ զամենայն մարմին կասու,
Նա արտասուէր և հառաչէր,
Զինքն ընդ նոսին յաւէտ մաշէր.
Պատուիրէր խաշարարին
Խընամ տանել միշտ աղքատին..
Ինքն ողորէր ընդդէմ սովին
Սպանանելով զհուրըն մարմին.
Պատառ հացիւ զինքըն պնդէր
Կամ դուզնաքեայ պտոյք զինչ էր։
Խույն իւր մարտի տեղի լինէր,
Հանդիստն արտաքըս թէ դիպէր.
Նա եւս երկօք յայն գըտանէր։
Ի սպաս հիւրոցն ոչ դադարէր.
Եւ թէ տնօրէնըն[4] տրտընջէր՝

1. Ինչպէս որ վայլէ, վարպետ պուեստիկոս, այսինքն բանաստեղծ և քերական կամ քերթող։
2. Պօղոս Առաքեալ, զոր Ս. Հոգին իրեն ընտրեալ աման մի կոչեց, ըստ վկայութեան Գործոց Առաքելոց։
3. Եգիպտացւոց ի Կիլիկիա արշաւելէն պատճառած։
4. Տնտեսն, ուտելիքը հոգցողն եթէ գանգատէր՝

Ինքըն պատրաստ զինքեան ասէր,
Զտրտունջ նոցին միշտ նըհանջէր;
Եւ զյորդորման բանըս խօսէր։
Որովք յաւէտ պատկառէին
Եւ ի նոյն գործըն ժրանային։
Ինքըն բնակէր յանապատի,
Գործըն պատմէր ի յաշխարհի.
Զօրէն ճպուան ազդողական
Համբաւ հընչէր միշտ հիական։
Այսպիսի՜ նախանձ բերէք
Որ յաշխարհի ոչ՛ր վըկայէք[1].
Այսպիսի՜ գործս ըստացիք
Որք ըզկենցաղս յաւէտ ունիք.
Այսպիսի անուն բարի
Ստացիք յաւէտ ի յաշխարհի։

Այլ ինձ ժամ է եղկելւոյս՝ դարձեալ յիշել զբան աւաղոյն. Աւա՜ղ ինձ եղկելւոյս. աւա՜ղ ինձ թշուառիս. աւա՜ղ ինձ յետնելոյս. թէ որպիսի՜ հայր կորուսի. զորպիսի՜ դաստիարակ. զորպիսի՜ յորդորիչ և մխիթարիչ։ Ողբացէք ընդ իս երկինք և երկիր և տարերք ամենայն։ Ո՜վ հայր պատուական, այլ ո՞չ գրես առ իս գրան և գգիր քո պատուական. այլ ո՞չ լսեմ զբերկրական լուր քո ի հեռաստանէ։ Այլ որ ես կենդանի միշտ յամենայնի և բարեխօս միշտ աշխարհի, յիշեա զեղկելի անձն քոյին սիրողի, առաջի Փրկչին յամենայնի, օրհնելոյն ընդ Հօր և ընդ Հոգւոյն՝ յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Վերստին Յաւելուած.

Եկայք և մեք աշակերտեալքս
Երանելւոյ հօրըն մեծի,

Թէ օտարաց տալու բան չունի, ինքն զինքը պատրաստ ցուցընէր տալու։

1. Թուի թէ պէտք էր ըլլալ վայելէք։

Միաբանեալ ի մի փայլի
Զանմըլեթթար երկու աղէտք.
Յաւէտ լացցուք յամենայնի
Որպէս օրէն է ողբացողի:
Բազում որդիս ի փառս ածեալ
Եւ զանազան շնորհօք լըցեալ.
Յայսըմ հետէ հայրըն բարձաւ
Ի մէնջ՝ ըստոյգ և հաստատեաւ.
Այլ ոչ տեսցուք զնա ի մարմնի
Ոչ լըւիցուք բան խըրատու.
Տարակոյս մեզ ոչ լուծցի
Ոչ դըժուարին բան իմանի.
Զի բարձաւ սուրբն ի միջոյ
Եւ պակասեալ ի յուղղելոյ.
Այլ մեք յուսով համբերութեան
Ստասցուք ըզնոյն ուղի լըման,
Թերևս տացէ բան ի բերան
Շնորհիւ նորին աղաթականն.
Ի խորըս գրոց էջանելով
Զմիտըս խըրթինս իմանալով:
Եւ թէ ընդաւ այս պատահի՝
Նորին շնորհիւ յաջողեսցի.
Այն որ հըզօրն էր և արի
Եւ երջանիկ գոլ ի մարմնի.
Առաքելոցն հետևողի
Եւ երջանկացըն դասակցի.
Որ միշտ յօրէնս Տեառըն խոկայր
Եւ Աստուածոյ հաճոյանայր:
Ցանկալին և գովելին
Յոգունց, և պերճ ի հանդիսին.
Այն որ պարիսպ էր և պատուար
Եւ զապագայն բնաւ չըխօկայր,
Նա էր Նըման Եղիայի,
Թէ յանդըգնին բանս չըթըւի[1],

1. Եթէ ըսելս յանդգնութիւն չէ՝ Գէորգ նմանէր Եղիայի, Յովհաննու Կարապետի, և այլն:

Եւ Յովհաննու Կարապետի,
Ստեփաննոսի Սարկաւագի.
Զի էր ծառայ հանգոյն Նըմին
Եւ պատուաւոր առօրէին.
Ցանկալի՛ և հրաշալի
Հանգոյն մեծին Պանփիլի.
Այն որ զուարթուն էր քաղձալի
Այր ցանկութեան, որպէս ասի.
Գրեթէ թէ ոչ լինի
Այսպէս պայծառ զօր հրաշալի,
Զի մի՛ անուամբ երևեցի
Կամ նախանձիւք ըղցի բանի,
Այլ որբնակ քարեալ ըղցի
Եւ յիշատակ յաւիտենի.
Որով Աստուած փառաւորի
Եւ համայնից բարի լիցի.
Եկայք և մեք յետնեալքս շնորհի,
Զնորին առացուք վարքս բարի,
Թէպէտ և ոչ հանգոյն Նըմին,
Այլ որպէս կար է ստացողին,
Զի Տէրն առատ է և բարի
Շնորհէ հանուրց ըստ արժանի,
Զի միշտ ի փառըս Տեառըն լիցի
Յաւէտ բանին որ ի յերկրի.
Որով Աստուած փառաւորի
Յաւէտ Օրհնեալն յաւիտենից.
Ամէն, ամէն, և եղիցի։

Այս գծածք հանդիսի վասն երջանիկ տեառն րաբունապետի Գէորգ անուն կոչեցելոյ, ոչ սուտակատարութիւն կամ կեղակարծ բանից յօդումն, այլ ճշմարիտ ստուգութիւն, առ ի յորդորումն զկնի եկելոց. ի փառս Աստուծոյ օրհնելոյն յաւիտեան։

## ՑԽԶ

## ՄՈՎՍԷՍ ՎԱՐԴԱՊԵՏ ԵԶՆԿԱՑԵՑԻ[1]

Ցիշատակ յաւիտենից եղիցի արդարն, վերաձայնէ մարգարէն Դաւիթ. առ որս խրախուսեալք պատշաճ վարկանիմք զամենայն Սուրբս և զերջանիկ ընտրեալս Աստուծոյ գովել և պատուել արժանապէս, և զյիշատակս նոցա գովասանութեամբ կատարել. մանաւանդ զայնոցիկ որ քան զայլսն բանիւ և գործով փայլեցան և մեծամեծ գործս կենցաղօգուտս և շահաւէտս իրագործութիւն առ յետագայս թողին, և զմարդկային օգնականութիւն և զառաջնորդութիւն յԱստուծոյ առեալ ընկալան, խնամակալ և ապաստան կենաց. մերոց եղեալք:

1. Թէպէտ Կամախ—Անի է հայրենիքն, այլ այն կողմերաւ գլխաւոր քաղաքն Եզնկայ ըլլալով՝ առոր անուամբ կոչուի: Անանուն գրող վարուցն ի սկզբան յառաջաբանելով կ'իմացընէ (ինչպէս և ի վերջաբանին), որ տեսեր է զնա և լսեր. շատ բան չի պատմեր բայց յայտնէ մեծ համբաւ ունենալն, որոյ յիշատակ մ'այլ թողած է Մովսէս (շատոց անծանօթ) Ոսկիփորիկ գիրք մի. Ս. Հարց Խրատական բանք և Սրբոց վարքեր հաւաքելով 200էն աւելի. յօրինակ և ի չինութիւն ընթերցողաց: Այս գրքէն դուրս իր կողմանէ քանի մի խրատական և կանոնական բան գրած կայ, որչափ որ մեզ յայտնի է. և առանցմէ աւելի արժանաւոր՝ համառօտ մեկնութիւն մի Պատարագամատոյցի, «Զոր, կ'ըսէ, սուրբ հարքն՝ Խոսրով Անձևացեաց »եպիսկոպոս և Ներսէս՝ Տարօնի, յառաջագոյն ընդ »երկար քննեալ էին, նա և զոր յայլոց սրբոց Հարց »կարացաք բանագտակ լինել՝ յանձնիւր տեղւոջ »եդաք»: Այս գործս ըրած է ի թուին ՉԽԲ (1293). «յորդորեալ առաւել յիմաստուն րաբունապետէն »Յովհաննէ, որ և ի նոյն ամի փոխեցաւ ի Քրիստոս»: Ծանօթ և գերագոյն Եզնկացի Յովհաննէսն չէ սա, այլ ուրիշ մի:

Որպէս յերանելի հայրս մեր և տիեզերաքարոզ վարդապետս մեր Մովսէս տեսանեմք եղեալ. յորոց սակաւ ինչ պատշաճ վարկանիմ ընդ գրով արկանել՝ ի յորդորումն մանկանց եկեղեցւոյ և ի փառս այսոցիկ ներգործողին Հոգւոյն Սրբոյ Աստուծոյ մերոյ. զոմանս ականատես եղեալ ի նորայոցն և զայլս ի յոլովից տեղեկացեալ: Եւ արդ սկիզբն արասցուք նմա աստուածային վարուց և գեղեցիկ քաղաքավարութեան ի մանկութեան... զի նմա սկսանելով ի հարց և ի գաւառաց և որ յետ այնորիկ:

Էր սա ի գաւառէ Գարանաղեաց, յանուանիկ դղեկէն յամուրն Անի կոչեցեալ, և այժմ Կամախ[1] յորջորջեալ. անուն հօր նմա Ներսէս քահանայ Աստուծոյ բարձրելոյ և մօրն մայր և Տիկին[2] ի սոյն գաւառէ, ազգաւ մեծատոհմ և երևելի՝ որ և ցարդ եւս յայտնի են ամենեցունց:

Բայց արանց առաքինեաց և աստուածային օրինօք վարժելոց և արիութիւնս բազումս ի վերայ երկրի ներգործողաց, ոչ են այսոքիկ նոցունց ի մեծամեծաց գովասանութեանց, այլ երկրասիրաց և վայրաքերելոց ընդ ստորինս. այլ ըստ Սողոմոնի որ ասէ «Լաւ է անուն բարի քան զմեծութիւն բազում, և իմաստութիւն քան զականս պատուականս»:

Արդ որպէս ասացաւ, ի սոյն գաւառի սնեալ ի տան հօր իւրոյ, մօրն արագ վախճանեալ, և առ ոտս Սրբոյ Լուսաւորչին բազմաչարչար նահատա-

1. Շիրակայ հռչակաւոր մայրաքաղաքին հետ չի շփոթելու համար՝ սովորաբար ուրիշ անուամբ կոչուի նա Կամախ, որպէս Թուի Կմախք բառի նշանակութեամբ. մեռելոտի կամ դիակ. զի հօն թաղուէին հեթանոս Հայոց մեծազունքն:

2. Արդեօք բնիկ յատուկ անուամբ Մայր և Տիկին կոչուած է այդ տիրուհին, թէ գրողն անունը չգիտնալով այդպէս կ'ըսէ:

կին վարժեալ[1] ի տիս մանկութեան աստուածային ուսմանց, ի մենաստանն Աղագ կոչեցեալ վանք. և ի շատ հասակի եկեալ և ի լրումն քահանայական վարժից, ի նոյն գաւառի զօծումն քահանայութեան ընկալեալ, ի բաց թօթափեալ զանարի խարէութիւն հեշտութեան կենցաղոյս, թէպէտ և բազումք առ այն բռնադատէին զնա նախ և երեւելիք[2]: Եւ ապա յետ այսորիկ ի մեծապայծառ կամեցեալ թեւարկել յիմաստս կատարեալս աստուածային ուսմանց վարժից վարդապետութեան, և իբրև ըղձեցաւ ի բազմաստան ծաղկանց զանազանից վայրս ընթացեալ, և յարեւմուտս և յարեւելս, և յամենեցուն իբրև զբուրեալ մեղուաց զբանս փափկալուչս աստուածային իմաստից համահաւաքեալ և ըստ կարողութեան ի կատարելութիւն հասեալ, հայր ամենեցուն առանց խարդախանաց ի կերակուրս և յըմպելիս հաստատակաց հաւատացելոց, և բազում օգտիս ի փառս ածեալ։ Եւ զի ըստ բնածին բարուց էր առ ամենեսին բարուք, ողորմած կամօք, սիրող առաքինութեան և ճգնութեան, և ի նոյն յորաժամ ուղղէր ի պահս, բազում անգամ յաղօթս երկարաձգութեամբ, և զգիշերս յոգունս հանէր ի գլուխ յաղօթս Աստուծոյ. յաղթող եղեալ փառաց ունայնոց, որ և ոչ ի թագաւորաց և ոչ ի հայրապետաց բանադատաղաց պատուեալ ըմբռնեցաւ, ըստ այսմ և ի յախտից ագահութեան ընչասիրութենէ, և որ ըստ այսոցիկ ի հարկաւոր պիտոյսն չափաւոր՝ ըստ Առաքելոյ. «Կերակուր և հանդերձ, և այնու շատանայք»։ Իսկ ածարկու առ անհնազանդս աստուածային օրինաց, առ զղջացեալս՝ քաղցր և ողորմած, որ և բազմաց այնու սիրելի լինէր։ Սիրող սիրողաց սրբութեան և առաքինութեան, ուրախա-

1. Այժմեան Ս. Լուսաւորչի անուան նուիրուած Աղագ Վանաց մէջ կրթուեր է Մովսէս։

2. Շատերն ուզեր են ամուսնացընել՝ բայց Մովսէս չէ հաւանած։

միտ և զուարթ առ ամենեսին, որ և յոգունց այսպէս հաճելի լինէր։ Այլ որ մեծագոյնն քան զայսոսիկ՝ ի հարցն որոց նախակարգելոց սրբոց դաւանութեան և մեծագունի ուրբ և գերակայ մտաւորական Երրորդութեան խոստովանութեան և ներմարդութեան Բանին՝ առ մերս խոնարհութեան անշփոթ միաւորութեան սրբոյ եկեղեցւոյ առաջնորդագրութեան՝ ըստ Նիկիական քարոզութեան, և որ Նորն Հռոմ Թագաւորական քաղաքին մեծին Կոստանդինուպօլսոյ, և որ ի ծովանայեացն յԵփեսոս, և որ յայլոց սրբազանից ժողովոց եղելոց և հաստատելոց. անփոփոխ և անայլայլելի կացեալ Յացեալ, և յինքեան պահելով, և այլոց աւանդելով՝ մինչև ցոր եկից վախճանի իւրոյ. որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի։

Եւ ի վերայ մեծամեծացս այսոցիկ առաւելոցս ոչ կամիմ և զայսմանէ եւս զանց առնել, զոր ի վերջին աւուրս ներգործեաց, առ դամբանարան հասարակացս մեր Լուսաւորչին և պարծանաց ապաստանի. վասն զի զուայր տեղիս այս և որ առ ամ՝ շքեղաշուք պայծառացուցեալ զարդարելոց զանազան երանգօք և բազմագիմի զարդուք, և անօթոց պատուականաց և կանթեղաց որոց աստաքեղականաց և մարգարտականաց, և որոց հարց և վարդապետաց, և որ անմնեցուն ընձեռէ առձեռն պատրաստ զփոփոխմանս և զմխիթարութիւն զաւաց և փշրաց հոգեկանաց և մարմնականաց, և պատճառ լուսաւորութեան խնամոց ումանց աստուածոյնոց. այլ և շինուածոյ զանազանից տաճն Աստուծոյ և տեղի աղօթից և ամուր դղեկիս հաստահեղոս վիմօք կառոյց ի յանապատս Մօրն լուսոյ ի դուռն Սուրբ Աստուածածնին և Սուրբ Կարապետին, և այլոց պիտոյից հարկաւորաց ի հանգիստ և ի վայելս ժառանգաւորաց սրբոյ եկեղեցւոյ, և այսոցիկ մենաստանաց։ Զորս տեսեալ բազմութեան հաւատացելոց՝ իւրաքանչիւր ոք ըստ կարողութեան ձեռնամուխ եղեալ ի սատարութիւն այսոցիկ շի-

նուածոց և ի խնամս յարաժամեայութեան երկարութեան աւուրց, ընչից և ստացուածոց ընձեռութիւն, և այլոց աւժանդակութեանց՝ սերտ և սեռն յուսով և հաւատով: Այլ և շնորհք սորին սրբութեան և առաքինութեան որ իբրև գձայն փողոյ մեծաձայնից տարածեցաւ ընդ տիեզերս, յորս բազմութիւն ժողովեալ միանձանց կրօնաւորաց և սրբազան կուսակրօն քահանայից, և սիրողաց ուսմանց աստուածայնոց վարժից վարդապետութեանց. և լցաւ վայրս այս արամբք աստուածայնովք՝ ի փառս և ի պատիւ համայնիցս մեր Լուսաւորչի և Հօր, և յուրախութիւն և ի ցնծութիւն Հայաստանեայցս սեռի. յորում տեղւոջ իբր ի նաւահանգիստ դիմեալք ամենեցունց՝ ի զանազանից ծփելոց ալեաց խաղաղանան. և ոմանք ի ցաւոց պէսպէս ախտակրելոց իբրև առ հանուրց բժիշկ և առողջարար եկեալ առ ժամայն հանդիպէին բժշկութեան: Եւ զի՞ է առ այս երկարել զբանս, և ձանձրութիւն տաղտկութեան լսելեաց առնել. միանգամայն ասացից, աղբիւր ամենայն բարեաց եղեալ, և այլափոխ իմն կերպարանօք տեղիս այս և վայր՝ կերպ և որպիսութիւն[1] յայտնապէս ցուցեալ: Եւ ապա յետ այսոցիկ լցեալ աւուրբք և ի խորին հասեալ ծերութիւն վայելուչ և շնորհազարդ, ըստ նմանութեան հօրն հաւատոյ Աբրահամու և մերն համայնից հօր և Լուսաւորչի, բազում որդիս ի փառս ածեալ, և ըստ ի վերուստ ակնարկութեան ի տօնախմբութեան Սրբոյ Լուսաւորչին, որ ըստ աւանդութեան զկնի երկրորդ շաբաթուն Պենտեկոստէին զելոն ի վիրապէն, մայիս ԻԸ (28) և մարերի ԻԱ (21) և սիւան[2] Ը (8). յաւուր յիշատակի երկրորդ մահուն Ղազարու և սրբոց վկայիցն Դիդիմայ և Սրբուհւոյն Թէոդորեայ, վերափոխեալ լինի մահուամբ ի կարգս հրեշտակաց, առ սրբազան հար-

1. Թուի թէ բառ մի պակսի այս տեղ:
2. Հրէից ամիսն:

սըն՝ հայրս, առ վարդապետսն՝ վարդապետս, առ քարոզսն ճշմարտութեան՝ քարոզս, առ աշակերտսն Բանին Հօր՝ հարազատ աշակերտս, և որ ըստ այսոցիկ։ Եւ պատուական մարմին նորա եդաւ ի տունս աղօթից առաջի խորանին սրբոյ, որ հրամանաւ իւրով շինեցաւ յանուն Սուրբ Աստուածածնին, և Սուրբ Առաքելոյն Պետրոսի և Սրբոյն Ստեփաննոսի Նախավկային։ Եւ մեզ սուգ մեծ՝ կարօտիցս նորին հայրական խնամոց և այցելութեան թողեալ. որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի, և դաստակցութեամբ Սրբոց արժանաւորութեան։ Զաս կալցուք բարիոք վարուքն օրինակ առաքինութեան, որք տեսողք և լսողք եղեալ սորայն սրբութեան և վարուց առաքինութեան, և ի հայրական խնամս սորա վայելեալք։

---

# ՅԽԷ

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԵԶՆԿԱՅԵՑՒՈՅ

### Ա.

### *Յիշատակարան Մեկնութեան Քերականին.*

Ի պատահելն մեր յերբեմն ժամանակի ՉԼ թուին մերոյ (1281), գնալ յաստուածային քաղաքն Երուսաղէմ՝ ի տեսութիւն փրկագործ տնօրէնութեան Քրիստոսի Աստուծոյ մերոյ, և եկաք առ վերադիտողն աթոռոյ Սուրբ Լուսաւորչին մերոյ՝ կաթողիկոսն Հայոց Տէր Յակոբ. հեղինակն հոգւոց[1], և

1. Հեղինակ հոգւոց՝ փոխանակ ըսելու առաջնորդ, որ էր Յակոբ Բ. կաթողիկոսն, Մեծքարեցի կոչուած, այն անուամբ Կիլիկիոյ վանքի միաբան և առաջնորդ

սոցին մեկնողաց գրոց, այլ և աստի և անտի լու-
ծումն բանից արարեալ մերոց իմաստնոց. և էր զոր
յայլ իմաստասիրական գրոց՝ զյարմարն և զդէպն
և զնմանն բերեալ եդաք ընդ համազօր բանին. և
յայսցանէ ամենեցունց արարաք զՄեկնութիւնս
զայս։ Եւ էր զի ի զօրութենէ սոցուն և ի շնոր-
հաց՝ ի մերս ծնանէր պիտանութիւն բանի՝ ի միտս,
և զամենայն մեկնչացն բան կշիռ և հանդէպ եդաք.
զկրկին և զերեքկին բանիցն երկարութիւն՝ ի միա-
ւորութիւն խառնեցաք. և որոց ոչ գոյր լուծումն
մասանց բանի՝ լիով և անթերի գտեալ՝ լցաք զթե-
րութիւն բազում. և այլ դրունս բանական արուեստի
յայլմէ սեփհւոյ առ ազգակիցն խառնեալ յաւելաք.
էր զի յարուեստ բանականութեանս անուանց՝ զյո-
լովս որ անծանօթ էր մերում ազգի՝ նշանակելով՝
ծանօթ եկեղեցւոյ մանկանց արարաք։ Եւ այսպէս
զմերս դիտաւորութիւն աւարտեալ՝ մօր մեր եկե-
ղեցւոյ սրբոյ ընծայեցաք, և զմանկունս ուսման ի
փոյթ սորին յօժարամիտ արարաք։

Վասն որոյ պատուիրեմ ձեզ և յոյժ աղաչանօք
հայցեմ, մի՛ անփոյթ առնէք կրթիլ վարժմամբ փո-
քու այսու գրովք, զի մեծամեծ և յոլովս է տուող
զաճումն միտաց, և բազմաց է սա բանալի իմաս-
տութեան դրաց[1]։ Եւ յոյժ սրտաբեկեալ խոցիմ՝
յորժամ տեսանեմ զազգս մեր անփոյթ արարեալ
զիմաստասիրական ուսմանց և զհմտութենէ ար-
հեստից բանականաց. մինչեւ զի զհանգամանս
անուանց իմաստասիրացն գրոց անտեղեակ գոլով,
զորս յայտնեալ են հարքն մեր ի գիրս իւրեանց, զոր
ընթեռնումք. զոր այժմ երկարութիւն համարիմ
յիշել զանուանսն, և կամ պատճառ հեղգութեան
ազգիս։ Այլ միայն զայս պատուիրեմ. մի՛ ոք որ
անտեղեակն է արհեստի գրչութեան՝ ձեռն արկցէ
գրել զսա և տապալել զերկս աշխատութեան բա-
նասիրացն, այլ ստոյգ և ուղիղ գրչաց տացէ փո-

1. Այսինքն դրանց. կրնայ և գրոց գրած ըլլալ։

խել, զի իւր և այլոց լիցի պիտանացու. և մի՛ ոք նեղատրանել հանճարութեամբ՝ թողցէ զաւկաւ բան նախադասութեան՝ իբրև զաւելորդ, որք փոխանակ օրինակաւ, կամ որք ասէք զայն աշակերտաց՝ եթէ յաղագս աշխատութեան, զամփոփն ասել բարեմտ-ութեամբ փոխարէն սիրոյ: Եւ այսորիկ այսքան. այսուհետև ի սկիզբն եկեսցուք ասմնիկայ գրոցս՝ զոր Տէր առաջնորդեսցէ:

* Արդ. վերնական աստուածային բարեացն ի կերպ կազմածին սուրգապէս պատկերագրոյն բարեպաշտութեան, և իմաստութեան տիրապէս տարփաւորն, աստուածասէր թագաւորն Հայոց Հեթում[1] որդի Լեւոնի բարեպաշտի, որդւոյ իշխանաց ազգային Հեթմոյ հօր, և մօր Զապելի արքայ թագուհւոյ, դստեր առաջին պսակաւորին Լեւոնի, որդւոյ Ստեփանէի, որդւոյ Լեւոնի, որդւոյ Կոստանդեայ, որդւոյ Ռուբենի մեծի իշխանին. յերկուց թագաւորական ցեղիցն սերեալ զարմի, ի Բագրատունեաց և յԱրծրունեաց[2]. յայսոցիկ թագընկալաց և յիշխանաց բարձրագահից բողբոջ բարեպաշտութեան բուսեալ, և ծաղիկ գարնանային ի ձմեռնացեալ ժամանակիս երեւեալ, սաղարթաւոր և բազմօտեան արքայական տնկոյն՝ պտուղ քաղցրաճաշակ ի համս և ի հոտս հասեալ. Հայկական սեռին և Արամեանս ազին բեկելոց և խոցանելոց յոյլալեզու ազանց՝ ապեղանի և դեղ դիւրացուցիչ բարեզարդութեան կարգաց և կրօնից եկեղեցւոյ, և մանկանց նորին գաւառութեան

1. Հեթում Բ. թէ ասոր և թէ հօրն և թէ պապուն համար ըսած գովութեան բանքն արդարև արժանաւորք են այնպիսի անձանց. տուողն այլ չէ շողոքորթ՝ այլ արդարադատ:

2. Բագրատունեաց ցեղէն համարի զՌուբինեանս, մինչև ի Զապել թագուհի. իսկ սոր ընկեր Հեթումն Ա և սերունդն՝ յԱրծրունեաց:

պայծառացուցիչ, վարժ աստուածային գրոց սրբոց, և պատուող ուսումնականաց և գիտութեան հմտականաց, բարեգութ առ ամենեսեան և խնամածու։

Յորմէ և ես Նուաստս Յովհաննէս Երզնկայեցի բազում խնամ տարայ և աշխատութիւն գթոյ վայելեցի. և զի յոյժ գրասէր և ուսումնասէր ունէր բարս բարեմիտ Թագաւորն[1], որ և ի դառն ժամանակիս յորում աշխարհ ամենայն իբրև գծով անդընդական խորովք խռովեալ և ամբոխեալ ծփէր, և աւազանման որդիք Աբրահամու անօրէն ազգն Իսմայելի և աղախնածին որդիք Հագարու, ծանրացեալ ի վայր քարշեալ ծածկէին զաստեղացեալ որդիս հօրն հաւատոյ, վասն պայծառ լուսոյ առաքինութեան ի նոսա նուազելոյ, և բռնացեալ նեղէին մաշել սրով և գերութեամբ. իսկ բարեսէր Թագաւորն Հեթում իբրև զաստղ նշանաւոր լուսանշոյլ փայլէր, և զաղքատութիւն եկեղեցւոյ մօր զարդարեալ ծածկէր, և ոչ դադարէր ի գիրս ստանալոյ, և յեկեղեցւոյ գանձս յաւելուած առնելոյ։ Վասն որոյ և ես Նուաստս Յովհաննէս Երզնկայեցի՝ ըստ բարեաց պարտական խոնարհամիտ և իմաստութեան պատուող արքայի, ընծայեցի զփոքր զայս գրքոյկս՝ որ կոչի Քերական, առ ի քերել և սրբել, պարզել և զտել զամենայն բանախօսութիւն և իրագործութիւն, վեցեակ կատարելաթիւ սորին մասամբքն։

Բ.

Յիշատակարան Յաղագս երկնային շարժմանց գրոցն.

Ամենայն ոք որ զբան՝ որ է ծնունդ անմարմին մտաց՝ գրով ի քարտիսի կամիցի դրոշմել, կամի

1. Թէ Ա Հեթում թէ Բն գրասէրք էին, բայց ոչ պակաս անոնցմէ՝ մէկուն որդին միւսին հայրն՝ Լեւոն Բ. տես զՅօդուած 335. իսկ այս տեղ Երզնկայեցւոյն գրած զովեստն Բ Հեթմոյ համար է։

և զնորին պատճառն յանդիման կացուցանել, որպէս զի վերջին ժամանակի ծննդոց մարդկան յօժարութիւն՝ և սէր խնդրողի բանին և աշխատանք տուողի խնդրոյն՝ մի ծածկեսցի ի բանասիրաց և աշխատասէր անձանց. զի կարօտք բանի իբրև զերկիր ծարաւուտ զցօղ քաղցրութեան երկնի խնդրեսցեն, և ապա սպասաւորին բանի իբրև զամպ ընդունակ ցօղոյ զանձրևային յանձանձման ծովէ իմաստից և ի գետոց հոսմանէ՝ յաղագս ծուլութեան մի արգելցեն: Ըստ որում և ես Նուաստ Յոհաննէս Երզնկայեցի, աշակերտ հոգևոր հօրն և սուրբ վարդապետին Վարդանայ[1], սպասաւոր սուրբ գրոց բանի, ի Թվ. ՉԼԳ (1284), պատահեաց գալ ինձ ի կողմանս աստուածապահ թագաւորութեանն աշխարհիս Վրաց, ի հռչակաւոր և ի մեծ մայրաքաղաքս ի Տփղիս, փայտակարանն[2] կոչեցեալ ի գիրս պատմողաց. և հանդիպեցաւ խօսել մեզ բանս քարոզութեան ի դուռն եկեղեցւոյն մեծապատիւ և խոհեմամիտ և մեծ իշխանին Հայոց պարոն Քարիմատինին[3], զոր շինեալ էր աստուածասէր և բարեհոգի հայրն նորա պարոն Ումեկն. և էր խօսեցեալ բանն՝ յաղագս երկնային շարժմանն: Վասն որոյ ախորժելի եղև զուարթամիտ պատանոյն Վախթանկայ, որ էր որդի կրսեր հռչակաւոր անուն պարոն Ումեկին[4], և մայրենի ազգաւ Թոռն մեծ իշ-

1. Հաւանօրէն է Արևելցի կոչուածն կամ Պատմիչն ծանօթ:

2. Երևի որ Թագաւորաբնակ քաղաքք այսպէս կոչուած են, ինչպէս և Աղուանիցն, ոչ փայտաշէն ըլլալուն համար, այլ Թերևս պարսիկ բառիւ փէյտաքերեն, پیل|اکبرن իբրև յայտնի, երևելի:

3. Զատ հայկական ցեղէ չերևիր ծագումն իշխանիս, անունն այլ արաբացի՝ Քէրիմ-էտ-տին (շնորհք (հաւատոյ). բայց ինքն և հայրն և որդիքն՝ մեր ազգային եկեղեցւոյ զաւակք են:

4. Գրուի և Ումեկ, Ուժմեկ, Թուի այն հարուստ վա-

խամնին Զաքարիա տեառն Խաչենոյ: որդի մօր բա-րեպաշտի, որ էր Քրիստոսի օրինօքն զարդարեալ յոգի, և ի խնդիր բանին՝ յորդորող զորդի: Սա խնդրեաց ի մէնջ յաղագս Երկնի և Նորին շարժ-մանն. յոր հարկեալ յորդորեաց զտկարութիւնս մեր՝ մեծազգի եպիսկոպոսն Տէր Յոհաննէս[1]; ազ-նուական զարմից և բարետոհմիկ հարց ծնունդ: որ և շարժեալ ի սիրոյ և ի յուսոյ խնդրողաց, և ակն առեալ ի պատուոյ շնորհաշուք տեառն և գե-րապատիւ եկեղեցւոյ գլխոյն, ի Նրբաշաւեղ և ի կորովամիտ բանից սուրբ հարցն և վարդապետաց մերոց և իմաստակ արանց, պարզեալ գրեցի հա-մառօտ բանիւ և աշխարհական խօսիւք վասն դիւ-րահասկանալի լինել ընթերցողաց: Արդ, որք գրէք յաղագս օգտի՝ զտկար աշխատութիւնս մեր, գրեա-ջիք և զայս նախադրութիւնս, և զբան յիշատակի անուան խնդրողաց և գրողի սորին, գրեալ լիջիք և դուք ի գիրն կենաց. և որ ծուլանայ և թողու զսա, ոչ լիցի անմեղ պատժոց, իբր յոլով աշխա-տութեանց՝ զիւր սակաւն գին տալ ոչ կամեցող այլոց[2]:

## Գ.

### Յիշատակարան շրման Մեկնութեան Մատթէի Աւե-տարանին[3]

Գերապատիւ և գերահռչակ հայրն մեր ըստ հոգ-ւոյ և երկրորդ լուսաւորիչն սուրբ եկեղեցւոյ, ի

Հաւանականն որ զուտեցեալ Կարնոյ քաղաքին ի Թա-թարաց աւերման ամին; զոր յիշէ Կիրակոս պատմիչ:

1: Թուի Խաչենոյ կողմանց եպիսկոպոս:

2: Այսպէս խոհեմութեամբ և հեզութեամբ խրատէ կիրթ և հանճարեղ հեղինակս, և ոչ շատից նման անէծք և նզովք գրելով:

3. Ն. Շնորհալւոյ սկսածն՝ աւարտեր է Եզնկացին:

զարմէ և ի շնորհէ Սրբոյն Գրիգորի փայլեալ, կորովամիտ և համեղաբան կաթողիկոսն Հայոց Տէր Ներսէս Կլայեցի[1], աշխատեալ վերլուծութեամբ ի սկիզբն սրբոյ աւետարանիս՝ գեղեցիկ և հանճարեղ բանիւ. և դադարեալ վարդապետութիւն նորա ի մուտս վարդապետութեան Փրկչին յայսմ վայրի[2], ոչ գիտելով եթէ ո՞յր աղագաւ եղեւ խափանեալ. վասն որոյ յոյժ ի վարանս մտեալ տագնապէի. զի թէ նա ի խնդրոյ եղբօր իւրոյ Գրիգորիսի վերադիտողի հայրապետական աթոռոյն՝ գրեաց զմեկնութիւնն, որպէս պատմի ի սկիզբն նախերգութեան նորին, և ինքն իսկ յետոյ յաջորդեաց զաթոռ կաթողիկոսութեան ամս եօթն, ապա ընդէ՞ր եղեւ թերի մնացեալ աստուածային գործոյս այսորիկ գործառնութիւն. և յոյժ հետաքրքիր եղեալ՝ ի ստոյգ պատճառէ հասմանն վրիպեցի[3]. քանզի ոմանք զմահն ասացին խափանումն, և այլք զհո՞գ հայրապետական աթոռոյն, և կէսք՝ թէ գրեաց և չէ ի միջի. բայց սոքա ինձ ոչ եղեն հաւանելի։ Եւ թէպէտ ոմանք նախ քան զմեզ ձեռնարկեցին գրել ի վերայ շարագրութեան նորին, սակայն ոչ էր կարգաւոր որպէս Սրբոյն, այլ հատակոտոր արարեալ զբանս առաջին մեկնչաց, նաեւ զբնաբանութիւն աւետարանին արտաքս մերժեալ, ուստի ոչ գայր դիւրաւ յիմացումն ընթերցողացն։

Յաղագս որոյ ես նուաստս ի Քրիստոս և յետինն յորդիս Սիոնի, ապիկար ոգիս Յոհաննէս Եզնկայեցի սպասաւոր բանի, բնակեալ ի վիճակ

1. Արդարակշիռ գովեստ գերակշիռ Շնորհալւոյն:
2. Այսինքն Մատթ. աւետարանին Ե–Է Գլխոց, յորս Տէրն մեր լերան վրայ նստած՝ ոքանչելի երկար վարդապետութիւն մի ըրաւ. անոր մեկնութիւնը գրելով Ս. Շնորհալին, աւելի առաջ չէ տարած. մահուանը պատճառաւ թէ ուրիշ՝ յայտնի չէ:
3. Այսինքն, չկարցայ ստոյգը իմանալ թէ և հետաքրքրեցի:

սուրբ Առաքելոյն Թադէոսի ի վանս Ծործորոյ[1] կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս. այլ և ժողովեալ առ մեզ բանասէր անձինք ի յուսումն կրթութեան աստուածաշունչ տառից լողութեան. յորոց յորդորմանէ և ի փափաքելի խընդրոյ, եդեալ ի մտի առնել հաւաքումն մեկնութեան որբոյ աւետարանին Մատթէի, ընլով զԹերի նորին ըստ կարողութեան իմում, չահեալ և օգտեալ յառաջին Սրբոյն. և է՛ զի ի ծագմանէ նշուլից շնորհաց վերասացեալ առնն Աստուծոյ ի միտս մեր, դիցուք տեսութիւնս պիտանացուս յանձնիւր տեղի, խառնելով զնսեմատեսակ բանիցս տգեզութիւն ընդ չքնաղագիւտ և լուսատեսակ իմաստիցն պայծառութեան, և աւանդեցաք մօր մերոյ Սիոնի փարթամութեան և որդւոցն նորին անխոնջ վաստակաւորաց, և Հրճուանս հոգեւոր խրախութեան, միանգամայն և յառատութիւն մտաց և բանի, յաւելուած վարկանելով զտաժանումն կարի քրտանցս մերոց՝ առ ընդարձակութիւն անդնդական խորոց լայնութեան. գիտելով, եթէ Պօղոսի շնորհ է վարձս ըստ տնկելոյն, և Ապօղոսի՝ ըստ ոռոգելոյն[2]։

Վասն որոյ, աղաչեմ զաստուածաբան զընթերցողսդ և զվայելողսդ այս փոքրատեսիլ և չնչին նուիրաց ընծայի՝ որ ի սուրբ եկեղեցի, վստահութեամբս մերում ներողս լինել, և զսխալանս մեր որ աստ ի բառս և ի տեսութիւնս՝ Հարազատ սիրով ուղղել։ Քանզի, բնաւորեալ է ոէր՝ զբազմութիւն եղբօր յանցանաց ծածկել, և զաշխատանս երկանց մերոց՝ ձեր օգտելով՝ քաւել, և զմեզ Հանդերձ մերովքն ծնողօք հոգեւորօք և մարմնաւորօք՝ ի տէրունի բարիսն յիշատակել։ Եւ արդ, եղեւ

1. Արտաղ գաւառի մէջ մօտ յԱւարայր դաշտ՝ ուր եղաւ Վարդանանց պատերազմն և նահատակութիւնն, և յորմէ հեղինակն կոչուի եւս Ծործորեցի։

2. Պօղոս Առաքելոյ բանծը յիշեցընէ. «Ես տնկեցի, Ապօղոս ջուր ետ, այլ Աստուած աճեցոյց »։

գրութիւն սորա ի թիւ մարդեղութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ի ՌՅԺԶ (1316)։

---

## ՅԻԸ

### ԱՒԱՆԴՈՒԹԻՒՆ ԿՈՐԾԱՆՄԱՆ ԱՆԻՈՅ[1]

### (ՂԱԶԱՐ ՋԱՀԿԵՑԻ)

Այս վարդապետս (Յովհ. Երզնկ.) ազդմամբ Սուրբ Հոգւոյն գնաց ի յԱնի քարոզել և խրատել զնոսա, զի դարձցին ի մոլորութենէ և ի չար գործոց իւրեանց. մտեալ յաւագ եկեղեցին օթեցաւ զգիշերն, և ոչ ոք կալաւ փոյթ յանձին՝ գնալ առ նա առ ի հարցանել և ողջունել զնա։ Այլ երբեւ հնչեցուցին զժամն գիշերային՝ գնաց յեկեղեցին, և զյետին տեղին ետուն նմա, և նա կայր խոնարհութեամբ. և յ՚արձակման ժամուն գնաց ի խուցն, և բնաւ ոչ ոք մօտեցաւ առ նա։ Իսկ ի ցերեկն երբեւ զեղխեցան և արբեցան, ապա եկին մօտ վարդապետին. և զի հասակաւ կարճ էր երանելին[2], վասն որոյ եդին երկայն գրակալ, զի ի ձգտելն ծաղր արասցեն զնա. իսկ նա ի շնորհաց Հոգւոյն Սրբոյ՝ զամենայն ընթերցմունս ի բերան առեալ առանց գրի անսխալ ասէր ստուգութեամբ։ Այլ ի

1. Թէ և ռամկական զրոյց մի ըլլայ այս և յետին ժամանակի գրչէ մի յառաջ բերուած, որ է Ղազար կաթողիկոս ի կէս ԺԸ դարու, բայց նշմարուի որ անծանօթ հնագոյնէ մ՚առած է. և թէ ոչ արժանի Երզնկայեցւոյ գործ, այլ նոյն իսկ իր մեծ համբաւէն պատճառած համարելով՝ իր գեղեցիկ Յիշատակարանաց վերջը յարեմք։

2. Այս պատճառաւ կ՚աւանդուի Պզտիկ կոչուիլն, իբրեւ փոքրիկ։

տուէ և ի գիշերի խրատէր մեծաւ հոգաբարձութեամբ, և նոքա ոչ անսային բնաւ և ոչ դառնային ի մեղաց: Վասն որոյ անկաւ մահ սաստիկ. զի աներևոյթքն իբրև մարմնաւոր երևելով՝ խոցոտէին յայտնապէս զմանկունս ի գիրկս մարցն և զայլս ի մահիճս, զոմանս ի մէջ քնոյն և զայլս ի յարթունս: Իբրև տեսին քաղաքացիքն զպատուհասս որ եկին ի վերայ իւրեանց[1], յայնժամ կալեալ ըմբռնեցին զսուրբ վարդապետն և եդին ի բանտի, ի նսեմ և ի ժահահոտ տեղի մի, ասելով, եթէ, Պատարագ արա և հաշտեցո ընդ մեզ զԱստուած, որպէս և ասացեր. ապա թէ ոչ՝ մեռանիս ի ձեռաց մերոց: Իսկ նա պատասխանի ետ և ասէ. Ահա կրկին բարկացուցէք զԱստուած: Եւ նոքա ոչ անսային. և անճարացեալ յերկիւղէ նոցա՝ յանձն էառ մատուցանել զպատարագ, և ելեալ գնաց յեկեղեցին: Եւ յորժամ էջ ի սեղանոյն ի խնկարկել, յայնժամ ել հուր ի բուրվառէն, և այրեաց արս չորս հարիւր, որպէս ի հնումն Նաբաթ և Աբիութ: Եւ իսկոյն զղջացեալ անկան առ ոտս սուրբ վարդապետին, և հայցէին ի նմանէ զթողութիւն, և խոստանային դառնալ ի մեղաց իւրեանց: Եւ յետ սակաւ աւուրց սկսան կրկին գործել զչարիս և թաւալիլ ի յախտս պղծութեանց. յայնժամ բարկացեալ Տէր առաքեաց գազանս չարս և այլակերպս, որ գային ի մէջ գիշերի երամովք և մտանէին տանէ ի տուն, զպատանեակս և զմանկունս յափըշտակեալ տանէին. և ելեալ առաւօտուն տեսանէին արտաքս տանց իւրեանց գիշատեալ, ոմանց զձեռս և ոմանց զոտս, ոմանց զգլուխ, և ոմանք կիսամեռ անկեալ կային արիւնաթաթախ և գիաթաւալ: Այլ և կին մի ունելով զմիամօր որդի՝ որ յափշտակեալ եղեւ ի գազանաց, գայ արտասուօք անկանի առ ոտս վարդապետին, ասելով. Արդ, օգնեա տառա-

1. Ռամկական ոճ, խելքերնին ի գլուխներն դարձան:

պեղոյս, զի միամօր է ինձ. վասն զի պահեալ էի զամենայն պատուիրանս քո, և արդ պահեմ մինչև ցմահ: Յայնժամ տեսեալ վարդապետին զհաւատս կնոջն՝ նման Քանանացւոյն, յաղօթս եկաց առ Տէր. յայնժամ գազանաց՝ որք զանդամս որդայն յափշտակեալ էին՝ ակներև բերեալ եդին առաջի սրբոյ վարդապետին. և վարդապետն առեալ զանդամս տղային դնէր և շարէր և ձգէր յիւրաքանչիւր տեղին. և սկսաւ աղօթել առ Աստուած՝ այսպէս. Տէր Յիսուս, որպէս յարուցեր զմիամօր որդի այրւոյն ի Նային քաղաքի, նոյն զօրութեամբդ և ողորմութեամբդ յարո զսա և կենդանացո, վասն զի անմեղ է. այլ և տեսցեն մերձ եղեալքն զզօրութիւնս քո և դարձցին ի չարեաց իւրեանց: Յայնժամ եռաց կտրատեալ մարմինն, կցեցաւ ոսկր առ ոսկր, և կենդանացաւ և յարեաւ հոգի մանկանն և յարուցեալ կանգնեցաւ: Իսկ որ շուրջն կային իբրև տեսին զսքանչելիսն՝ զահի հարեալ անկան առ ոտս վարդապետին և մեղայ գոչէին. և վաղվաղակի գնացեալ բերէին զդիակունս իւրեանց առաջի վարդապետին, և աղաչէին զի յարուսցէ: Իսկ սուրբ վարդապետն Յոհաննէս եկաց յաղօթս, և գոչեաց ասելով. Ով ոք անմեղք են ի սոցանէ, եղիցի նոցա բժշկութիւն. ապա թէ ոչ՝ Աստուած վրէժխնդիր լիցի ըստ հաճոյից իւրոց: Յայնժամ դիմեցին գայլք ի վերայ նոցա յանկարծակի, և պատառեցին ակներև զբազումս ի նոցանէ. և ի տեսանելն զայս ամենայն՝ ապշեցան ահիւ մեծաւ, և սկսան խստապէս մեղայ գոչել և դառնալ ի չար գործոց:

Եւ յետ երից ամաց մոռացան զառաջին հարուածսն, և սկսան կրկին ի տիղմն թաւալիլ, ասելով, թէ, Առաջին հարուածքն ի պատահմանէ եղեւ և ոչ վասն մեղաց մերոց: Եւ դարձեալ եկն վարդապետն Յովհաննէս, և սկսաւ քարոզել. և իբրև տեսին զնա զի կրկին յանդիմանէր զնոսա, բարկացան և սկսան ասել ընդ միմեանս, եթէ Սա է

մեր քակտիչ. և խորհեցան խորհուրդ նանիր և արբուցին նմա թմրադեղս[1], և թափեցին ի խելաց. և ապա մերկացուցին զնա և արկին ի վերայ սայլի, և այնպէս մերկ և խայտառակ ի մէջ քաղաքին շուրջ ածեալ մունետկաւ՝[2] ծաղր առնէին զնա. և ապա բերեալ կախեցին զամբիւղիւ ի դուռն աւագ եկեղեցւոյն, զի մտանողք և ելանողք տեսցեն։ Եւ յետ ժամուց ինչ անցելոց զարթեաւ ի թմրութենէ, և զգաստացեալ ետես զինքն այնպիսի կերպարանօք, սկսաւ յոգոց հանել և լալ դառնապէս։ Եւ լուեալ զձայնն՝ իսկոյն իջուցին, և բրածեծ արարեալ աքսորեցին զնա. պատուիրելով և ահացուցանելով, եթէ. Այսուհետեւ մի՛ տեսցուք զքեզ աստ, ապա թէ ոչ՝ չարաչար մեռանիս ի ձեռաց մերոց։

Եւ տեսեալ զայս ամենայն վարդապետին Յովհաննու, ել ի վերայ բարձր բլրի միոյ և անէծ ըզքաղաքն. կրկնեաց ծունր, ասելով. Տէր, այլ ոչ լինիմ երաշխաւոր. այսուհետեւ զոր ինչ կամիս՝ արա[3]։ Եւ յանկարծակի էջ սաստիկ բարկութիւն յԱստուծոյ և սկսաւ քաղաքն շարժիլ և տապալիլ պարսպացն։ Եւ զայն տեսեալ՝ ամենայն ոք ստէպ ընթացմամբ փոյթ ընդ փոյթ բուռն հարեալ ի ձեռաց ընտանեաց և զաւակաց իւրեանց, և տարադէպ ելեալ վտարեցան՝ թողլով զքաղաքն և զեկեղեցիս և զոսկէզօծ պալատս և զծաղկաւէտ դաշտս իւրեանց՝ որպէս փախստական։ Եւ կէսքն ճղեալ գնացին ի Ճուղայ[4]. և կէսքն առ եզերն Կասպիական ծովուն, և ոմանք ի Վան, և այլք ի Միս։

1. Կամաց կամաց ազդող թունաւոր կամ մահացուցիչ դեղ, թմրութիւն բերելով։
2. Թուրք. թէլլալ, լուր կամ հրաման կանչող։
3. Ո՞րքան տարբեր մեր գրածէն, 6 ծան. Բ. Հատուածի Նախընթաց Յօդուածին։
4. Հին Ջուղայ, Երասխ գետոյ եզերքն։

պելոյս, զի միամօր է ինձ. վասն զի պահեալ էի զամենայն պատուիրանս քո, և արդ պահեմ մինչև ցմահ: Յայնժամ տեսեալ վարդապետին զհաւատս կնոջն՝ նման Քանանացւոյն, յաղօթս եկաց առ Տէր. յայնժամ գազանաց՝ որք զանդամս տղային յափշտակեալ էին՝ ակներև բերեալ եդին առաջի սրբոյ վարդապետին. և վարդապետն առեալ զանդամս տղային դնէր և շարէր և ձգէր յիւրաքանչիւր տեղիսն. և սկսաւ աղօթել առ Աստուած՝ այսպէս. Տէր Յիսուս, որպէս յարուցեր զմիամօր որդի այրւոյն ի Նային քաղաքի, նոյն զօրութեամբդ և ողորմութեամբդ յարո զսա և կենդանացո, վասն զի անմեղ է. այլ և տեսցեն մերձ եղեալքն զզօրութիւնս քո և դարձցին ի չարեաց իւրեանց: Յայնժամ եռաց կտրատեալ մարմինն, կցեցաւ ոսկր առ ոսկր, և կենդանացաւ և յարեաւ հոգի մանկանն և յարուցեալ կանգնեցաւ: Իսկ որ շուրջն կային իբրև տեսին զսքանչելիսն՝ զահի հարեալ անկան առ ոտս վարդապետին և մեղայ գոչէին. և վաղվաղակի գնացեալ բերէին զդիակունս իւրեանց առաջի վարդապետին, և աղաչէին զի յարուսցէ: Իսկ սուրբ վարդապետն Յոհաննէս եկաց յաղօթս, և գոչեաց ասելով. Ով ոք անմեղք են ի սոցանէ, եղիցի նոցա բժշկութիւն. ապա թէ ոչ՝ Աստուած վրէժխնդիր լիցի ըստ հաճոյից իւրոց: Յայնժամ դիմեցին գայլք ի վերայ նոցա յանկարծակի, և պատառեցին ակներև զբազումս ի նոցանէ. և ի տեսանելն զայս ամենայն՝ ապշեցան ահիւ մեծաւ, և սկսան խոստապէս մեղայ գոչել և դառնալ ի չար գործոց:

Եւ յետ երից ամաց մոռացան զառաջին հարուածսն, և սկսան կրկին ի տիղմն թաւալել, ասելով, թէ, Առաջին հարուածքն ի պատահմանէ եղեւ և ոչ վասն մեղաց մերոց: Եւ դարձեալ եկն վարդապետն Յովհաննէս, և սկսաւ քարոզել. և իբրև տեսին զնա զի կրկին յանդիմանէր զնոսա, բարկացան և սկսան ասել ընդ միմեանս, եթէ Սա է

մեր քակտիչ. և խորհեցան խորհուրդ նանիր և արբուցին նմա թմրադեղս[1], և թափեցին ի խելաց. և ապա մերկացուցին զնա և արկին ի վերայ սայլի, և այնպէս մերկ և խայտառակ ի մէջ քաղաքին շուրջ ածեալ մունետկաւ՝[2] ծաղր առնէին զնա. և ապա բերեալ կախեցին զամբիւղիւ ի դուռն աւագ եկեղեցւոյն, զի մտանողք և ելանողք տեսցեն։ Եւ յետ ժամուց ինչ անցելոց զարթեաւ ի թմրութենէ, և զգաստացեալ ետես զինքն այնպիսի կերպարանօք, սկսաւ յոգոց հանել և լալ դառնապէս։ Եւ լուեալ զձայնն՝ իսկոյն իջուցին, և բրածեծ արարեալ աքսորեցին զնա. պատուիրելով և ահացուցանելով, եթէ, Այսուհետեւ մի՛ տեսցուք զքեզ աստ, ապա թէ ոչ՝ չարաչար մեռանիս ի ձեռաց մերոց։

Եւ տեսեալ զայս ամենայն վարդապետին Յովհաննու, ել ի վերայ բարձր բլրի միոյ և անէծ ըզքաղաքն. կրկնեաց ծունր, ասելով. Տէր, այլ ոչ լինիմ երաշխաւոր. այսուհետեւ զոր ինչ կամիս՝ արա[3]։ Եւ յանկարծակի էջ սաստիկ բարկութիւն յԱստուծոյ և սկսաւ քաղաքն շարժիլ և տապալիլ պարսպացն։ Եւ զայն տեսեալ՝ ամենայն ոք ստէպ ընթացմամբ փոյթ ընդ փոյթ բուռն հարեալ ի ձեռաց ընտանեաց և զաւակաց իւրեանց, և տարադէպ ելեալ վտարեցան՝ թողլով զքաղաքն և զեկեղեցիս և զոսկէզօծ պալատս և զծաղկաւէտ դաշտս իւրեանց՝ որպէս փախստական։ Եւ կէսքն ճդեալ գնացին ի Ճուղայ[4]. և կէսքն առ եզերն Կասպիական ծովուն, և ոմանք ի Վան, և այլք ի Միս։

1. Կամաց կամաց ազդող թունաւոր կամ մահացուցիչ դեղ, թմրութիւն բերելով։

2. Թուրք. թէլլալ, լուր կամ հրաման կանչող։

3. Ո՞րքան տարբեր մեր գրածէն, 6 ծան. Բ. Հատուածի Նախընթաց Յօդուածին։

4. Հին Ջուղայ, Երասխ գետոյ եզերքն։

# ՑԽԹ

## ՀԵԹՈՒՄ Բ ԵՒ ՍՄԲԱՏ ԵՂԲԱՅՐ ՆՈՐԱ

### (ՑԻՇԱՏԱԿԱԳԻՐ[1])

Հեթում զկնի մահուան հօր իւրոյ թագաւորին Լեւոնի՝ յաջորդեաց զաթոռ հայրենի և նախնի, այլ ոչ պսակեցաւ թագիւ. սակս որոյ ոչ է պատշաճ զանց առնել զպատճառաւն: Զի ի մանկական տիոց հետէ վարժեալ կրթութեամբ յաստուածային օրինացն ընթերցումն, որ գիտէ լաւ սնուցանել զ'ի նա անկեալսն քան զյանձանձումն մարց և դայեկաց, սիրեաց զիմաստութիւն և սիրեցաւ ի նմանէ[2]. վասն որոյ լաւ քան զոսկի և զականս պատուականս համարեալ անձին իւրում, որ և քաղցրացաւ քան զմեղու խորիսխ ի բերան նորա. ուստի բաց և համարձակահայեաց ակամբ հոգւոյ՝ ծանեաւ զ'իսկապէս և զարգար բարին. և այնու հետեւ սկիզբն արարեալ գործնական առաքինութեան, միշտ աղօթից և ընթերցման գրոց պարապեալ՝ զուարթ և արթուն հայեցուածով. մինչ զի բնութիւն զսովորութիւնն արարեալ՝ խնամ տանելով և դարմանելով զսուրբսն, որ են դասք աղքատաց և որբոց, պայծառացուցանելով զեկեղեցի Աստուծոյ, և աճեցուցանելով զդասս քահանայից, (որք) և հանապազ պաշտամամբ համաձայնեալք երկնային խմբից՝ օրհնութիւնս Աստուծոյ վեր-

1. Փիլոնի Եբրայեցւոյ գրոց թարգմանութեան գեղեցիկ գրուած յիշատակարան մ'է:

2. Ոչ ձրի ցրուած գովեստք են հետեւեալքն, այլ արժանաւորք արժանաւորին, որ այնքան պապուն և հօրն փառաւորած թագէն հրաժարեցաւ, բայց չթողուց հայրենեաց օգտին հոգը և ջէրը:

առաքէին։ Եւ համանգամայն զամենայն տեսակս առաքինութեան յինքն բերելով, զոր տկարանամ ի պատմել զբովանդակն. զի ժողովել հրամայեաց համձարեղ արուեստաւորս յայլեւայլ աշխարհաց այլալեզու արանց, գաղատոսաց[1] դասս, և կանգնեաց զքանդակարժան եկեղեցին ի մայրաքաղաքն Սամռձեստիս, զարդարեալ ազգի ազգի նկարօք փորուածօք ի քարանց կճէից, յանուն Սոր Տեառն մերոյ Աստուածածնին, և կարգեաց ի նմա դասս պաշտօնէից ըստ պատշաճի աստիճանաց։ Որ և հրամայեաց իմոյ նուաստութեանս Բասլի՝ որ երբեմն սարկաւագ, գրել զսոյն զայս տառ. և իմ՝ թէպէտ և թերավարժ գոլով յարհեստ գրչութեան՝ սակայն զհարկն պատշաճաւոր յանձն առնլով՝ ձեռն արկեալ շարագրեցի զսա խոշոր գրով, միայն ստուգութեանն ուշ ունելով աւարտմամբ յանգ հանեալ, արգահատութեամբ և վերակացութեամբ սրբասէր քահանայէն կոստանդեայ, որ էր քահանայից ամենայն երէց ի դրան արքունի[2]։

Բայց ի դէպ է ոչ անտես առնել զ՚ի վերն քան զբնութիւն գործն Նորին Թագաւորին Հեթմոյ. զի նա ինքն որ արհամարհեաց զմարմին և որ ինչ նորա են պատաղմունք՝ փափագմամբ և ըղձալէտ տենչանօք խոկայր միշտ գտանել զերկնաւորն Թագաւորութիւն, զներարամաղրեալն արտաքերեաց՝[3] յաւարտ և յանգ հանելով. կոչեաց զեղբարսն իւր հարազատ և զայլ ամենայն իշխանսն, վարդապետելով նոցա և հաւանեցուցանելով զամենեսին ի թագաւորեցուցանել զմի յեղբարցն իւրոց, զվայելչագեղն և զիմաստունն Սմբատ, որ ունէր զերրորդն դաս ըստ կարգի եղբարցն. և ինքն առեալ զոյգ

1. Փայտի և քարի տաշողք, քանդակողք։

2. Թագաւորին պալատան յատուկ եկեղեցւոյ քահանայից գլխաւորն։

3. Երկար ատեն մտացը մէջ պահածը՝ դուրս տուաւ, յայտնեց։

ուղեկից զմիւս եղբայրն իւր զՊարոն Թորոս[1], և մտեալ ի նաւ չուեաց դէպ ուղիղ ի Թագաւորական քաղաքն[2], և անդր յերկրպագութիւն աստուածազարդից նշխարաց և պատկերաց սրբոց։

Իսկ զկնի ոչ սակաւ աւուրց ժողովեցան Թագաւորորդիքն և Թագաւորազունքն և իշխանքն, և միանգամայն աշխարհաժողով բազմութիւն ռամկաց և խառնիճաղանճ մարդկան ի հոյակապ մայրաքաղաքն Սիս, ի տօնի մեծի Սրբոյ Աստուածայայտնութեանն։ Իսկ սրբագործ կաթողիկոսն Հայոց տէր Գրիգոր, ամենայն եպիսկոպոսօք և համագումար ժողովով և բոլոր ուխտիւ եկեղեցւոյն, և աջով Սրբոյ Լուսաւորչին մերոյ Գրիգորի, և աստուածային աւետարանաւն՝ ձեռս ի վերայ եդեալ աւանդեաց նմա զաստիճան և զօծումն Թագաւորութեան. և համաշխարհական ժողովն խրախութեամբ բարգաւաճեալք ըստ իւրաքանչիւր աստիճանի. զոր պահեսցէ աջ ամենազօրին Աստուծոյ անվրդով և երկայն կենդանութեամբ, գնալով զօրութենէ ի զօրութիւն, և հերքելով առ ոտս զթըշնամիսն Խաչին Քրիստոսի։

Վասն որոյ աղաչեմ և աղերսեմ Աստուծով զաս-

1. Որ յետ Հեթմոյ երիցագոյն էր յորդիս Բ. Լևոնի, և իրեն կ'իյնար թագը. բայց դժբաղդ եղաւ, Սմբատայ թագաւորասիրութեամբ սպանուելով։ Հեթում ոչ տիրաբար Թագաւոր կարգեր էր զՍմբատ՝ այլ իբրև տեղակալ կամ թագապահ։

2. Կոստանդնուպոլիս, ուր տարաւ իր Ռիթա քոյրը՝ կայսեր որդւոյն հարսնացընելու։ — Արժան է յիշել այս տեղ՝ որ այդ կայսրն Յունաց Անդրոնիկ Պալէոլոգ՝ իր համանուն որդւոյն հարս խնդրելու համար՝ դեսպան ղրկեր էր առ Թագաւոր մեր զԳիլիկես Յովհան անուամբ մէկ մի. աս մանրամասնաբար գրեր է իր ուղևորութեամբ տեսած տեղեաց և անձանց որպիսութիւնը, ինչպէս յիշէ Նիկեփոր պատմիչ Յունաց (Զ. Ը. 98), այլ դժբաղդութեամբ մեզ և Եւրոպացւոց՝ կորսուեր է այդ հետաքրքիր գրուածն։

տուածասէր դասս որբազանից և մանկացու մանկանց նորայ Սիոնի, և ամենայն հաւատացելոց Աստուծոյ, որք խրախանայք և լուսաւորիք իմաստախոհ վերծանութեամբ սորին, և կամ օրինակաւ օգտիք, յիշել ի բարին Քրիստոս և յաղօթս ձեր մաքուրս, զստացող սորա զսիրողն ամենայն հանճարոյ իմաստութեան՝ զՊարոնն Հեթում. և զնորոգ ծնեալն որդայ զՍմբատ, համայն եղբարբք և ծնողօք և համօրէն զարմիւք. զի արժանասցին ամենեքին ողորմութեանն Աստուծոյ և արդարութեանն նորա, ի փառս անուան իւրոյ:

Աղաչեմ և ես Թշուառական այրս և տխմար գրիչս Վասիլ՝ յիշել ի մեղաց Թողութիւն և զիմ անարժանութիւն և զծնողսն իմ և զեղբարս:

---

## ՑԾ

## ՅԻՇԱՏԱԿՔ ՀԵԹՄՈՅ Բ ԱՐՔԱՅԻ

### Ա.

*Տոհմն Ռուբինեանց. — Առումն Հռոմկլայի յեգիպտացւոց. — Ծառազատիկն*[1].

Որ ծառայեալս եմ բիւր ախտից
Կապեալ տոռամբ չար շըղթայից,
Եւ ի մեղաց գոլով տիրեալ

1. Բարեպաշտութեամբ, քաջութեամբ և գրագիտութեամբ (որոյ նշմարք են և այս ոտանաւոր գրուածքս) նշանաւոր և ծանօթ է, այլ ոչ բաւական ծանուցեալ Հեթում Բ թագաւոր և ճգնաւոր: Տես Յօդ. 347 ծան. 12: Այս Յիշատակարանս գրած է Աստուածաշունչ գրոց օրինակի մի մէջ, որ ամբողջ իր ձեռօք գրուած թուի, յամի 1295–6:

Եւ ներհակաց ներքոյ անկեալ.
Ցիս յարձակմունք անասնական
Իշխեն մըտացըս բանական.
Եւ ըստ նեխեալ գերեզմանին
Բուով արտաքինքն իմ պաճուճին.
Հերում անուամբ լոկ Թագաւոր
Ներքոյ աղքատ և պարտաւոր,
Քանզի կոչիմ իշխան Հայոց
Բայց ես իշխիմ յախտիցն իմոց.
Հոգւոյս ցաւոց դեղ յարակայ
Զայն հեծութեան զգիրս այս ստացայ,
Ինձ ողբալոյ լինել սատար
Ծուլիս խըթիչ միշտ անդադար.
Ընդոստուցիչ Թմբրեալս ոգւոյ
Իբրու խըթան հեղգ անասնոյ,
Կամ հեղեղաւ ընկղմելոյ՝
Ճեղ ի ցամաք զձեռն իւր ձգելոյ[1].
Ստացայ անկեալս ես չարաչար
Կամօք ի սուգ անմըխիթար՝
Պատճառ սովին զԱստուած յիշել
Եւ ընդ Դաւթի ուրախ լինել.
Նա և յապայս գոլ յիշատակ
Ինձ և իմոցն առ հասարակ,
Եւ ի լինել պատճառ բարեաց
Զեզ աղօթից պարապողաց:
 Որոյ գրութիւնս աւարտեցաւ
Մինչ մեր ամացըս Թիւ լըցաւ
Եօթն հարիւր ընդ քառասնի
Եւ այլ չորից Հայոց Թըւի (1295):
 Ցորում ի սոյն ժամանակի՝
Պէսպէս տեսաք գործ յիշելի,
Զոր ի Նախնի սկըսեալ սկըզբանց՝
Համառօտեմք ձերոց անձանց:
Մերոյ տոհմիս որ Հայկազնի

1. Ինչպէս ջրոց հեղեղի մէջ ընկնողն ջանայ ճիւղ մի բռնել՝ որով կարենայ դուրս ելնել:

Իշխանութիւն այն մեծ Նախնի՝
Ի յայլազգեաց ստրըկացեալ
Եւ բուն գաւառն իսպառ քանդեալ.
Յայն հեղեղէ Ռուբէնն զերծեալ
Որ ի Գագկայն զարմէ սերեալ՝
Իբրու զտապանըն փայն Նոյի
Եբաց զերկիրս այս մեր տոհմի.
Սա զԿոստանդին ծընաւ որդի
Զհայր Թորոսի և Լէոնի.
Յետ Կոստանդեայ Թորոս տիրեալ
Ապա Լէոն պայազատեալ,
Այն որ երեք որդւովք ծաղկեալ.
Քանզի Թորոս և Ստեփանէ
Ընդ Մըլեհի ծնան ի Նմանէ.
Յետ տիրելոյ միմեանց ըզկնի
Ծնաւ Ստեփանէ երկու որդի.
ԶՌուբէն երէցն որ նախ տիրեաց
Ապա զԼէոն որ յաջորդեաց:
Սա զխափանեալ թագըն Նախնի
Նոր նորոգեաց մերոյ ազգի,
Որպէս Պարոյրն որ դըրուատի՝
Թագաւորեաց քաջս այս արի:
Զապէլ դըշխոյ դուստրըր սորա
Զուգեալ տիրեաց ըզկնի նորա.
Սա արքային Հեթմոյ լըծեալ
ԶԼէոն արքայ հայրն իմ ծընեալ.
Որ վասն ազգիս մեր և երկրի
Զանձն իւր գնելով՝ չոգաւ գերի.
Իսրայելի զոյգ պատուեցաւ,
ՅԵգիպտոսէ Տերամբ դարձաւ..
Ի բազմահոյլ ծըփանս ալեաց
Յորում աշխարհ կայր յայլազգեաց,
Եւ մանաւանդ ի գոռոզէն
ՅԵգիպտացւոց Թագաւորէն,
Որ շուրջ ըզմեօք դըրացեաց տիրեաց
Եւ զԱնտիոք մեծն աւերեաց.
Զբազում ամրոցս ըմբռնելով

Եւ զքրիստոնեայս կոտորելով։
Որ և յաշխարհս մեր արշաւէր
Երիցս անգամ զայս գուն գործէր.
Սակայն պահել հայրն իմ ջանաց,
Զազգս և զերկիր յիս փոխանցեաց։
Իսկ առ ինեւ յաճախեցին
Մեծ արհաւիրք երկիւղագին.
Զի թշնամիքըն զօրացեալ
Եւ Տրապօլեայ նախկին տիրեալ,
Եղեւ խաւար մեզ անհնարին
Անմըխիթար սուգ ցաւագին.
Քանզի առին զքաղաքն Աքքա
Եւ ըզբոլորս որք ընդ նըմա.
Տեսին թէ չէ ոք օգնական
Եւ ոչ ինքեանց ինչ ներհական,
Զի յորս էաք մեք ապաստան
Ազգ նետողացըն՝ հեղգացան[1].
Զայս առաւել յոխորտացեալ
Զմեզ որսային գազանացեալ,
Որք զօրս անթիւ գումարեցին
Զընջել ըզմեզ ամենեւին.
Որպէս առիւծ մըռմըռելով
Զմեզ յորովայնս համարելով.
Զի այն զըթած Տէրն այց առնէր
Զազգս և զգաւառս հրաշիւք փրկէր։
Եւ այսօրիկ միջնորդ լինէր
Որ մեր զըթած նախահայրն էր,
Գորովաբար մեզ վըշտակցեալ
Գրիգորիոս Սուրբն երանեալ,
Որ վասըն մեր կըրեաց նախկին
Զկիրս տանջանացն և զվիրապին.
Այժմ զմեզաց մեր պատուհաս՝
Ըզգան խրատուն արժանահաս

1. Թաթարք խոստացեր էին օգնելու Հայոց և Խացեալ Լատինաց՝ ընդդէմ Եգիպտոսի սուլտանաց, բայց չեկան կամ ուշացան:

Ի բաց ի մէնջ ապադարձուցեալ
Ցինքն և յաթոռն իւր ընկալեալ,
Հովիւն ետ զանձն ընդ աշխարաց,
Մատնեալ զոսկերս իւր Նըշխարաց[1].
Քանզի զոռոյն այն խոտորէր
Եւ ըզդըղեակ Հօրն պաշարէր,
Ասեմ ըզկըղայն Հռովմայականն՝
Զհայրապետաց մեր Նըստարան.
Զոր և յիշելն է ողբալի,
Աղէտ կսկիծ ճառ դողալի.
Քանզի տիրեալ՝ ի սուր մաշէր
Ողորմելի գերիս վարէր։
Նաբուզարդան նոր կատաղէր,
Քանզի զտաճարըն հըրդեհէր,
Ըզհայրապետըն սուրբ զըզուէր,
Ըզսըրբութեան կահըն գերէր.
Որում և թաթ Աջոյն յայտնէր,
Ընդ Բաղտասար զնա տարագրէր,
Մինչդեռ հարճիւքն իւրովք լըրբէր
Պըղծել զանօթսն այն որ սուրբ էր.
Քանզի ըզփոխն էառ յանձին
Որպէս գերոզք տապանակին.
Եւ այժըմ կան դեռ հարուածեալք
Անձամբք յանձինըս բաժանեալք։
Իսկ մեք շնորհիւ պահեալ եղաք
Որպէս ճնճղուկք յորսոյ զերծաք.
Զի որոգայթըն փշրեցաւ
Որով օրհնեմք ըզգութն անբաւ։
Պատմեմ և այլ ինչ յիշելի
Ի մերս եղեալ ժամանակի,
Պատմել որդւոց ձեր ըզկընի՝

1. Լուսաւորիչ իր ազգայիններն ազատելու համար, կ'ըսէ, ինք զինքը գերի թողուց, Հռոմկլայի առմամբ և գերութեամբն Սոփիանոս կաթողիկոսի, և իր սուրբ Նշխարացն, որոց գլխաւորն էր իր սուրբ Աջն, որ համարուէր միշտ օրհնիչ Հայոց։

Ի յօրինակ ըզկուշալի:
Ի քառասուն և մի թըւի
Որ ընդ եօթանցն է հարիւրի[1],
Եղեւ ոմանց յամառութիւն
Ի սուրբ Զատկէն մոլորութիւն...
Քանզի ըզվեց ապրիլին
Որ ճշմարիտ էր որ Զատկին,
Ի բաց թողուլ բաղձաղէին,
Զերեքտասան որ ընտրէին.
Իսկ մեք զուղիղըն դատեցաք
Լինել ժողով յօժարեցաք,
Քննել ըզգիրս աղաչեցաք,
Եւ զոր ստուգի՝ յանձին կալաք:
Յայնժամ եկեալ ի միասին
Հանուր լըմամբ եկեղեցին՝
ԶԱստուածաշունչ գիրս քննեցին
Զբանըս սուրբ Հարցն ի մէջ ածին.
Եւ անգըստին ճշգրտեցաւ,
Արդարութիւն խնդրոյն ցուցաւ.
Որով հրաման կանոնեցաւ
Տօնել ի վեցն հաւաստեցաւ.
Քանզի սուրբ գիրքըն Մովսէսի՝
Զչորեքտասան օրըն լուսնի
Տօն ցուցանէ հընոյն զատկի,
Եւ այս բազմօք անդ հաստատի.
Իսկ Նոր կըտակս աստուածային՝
ԶՅիսուս ասէ գալ ի զատկին
Եւ անդ խաչեալ յայգ ուրբաթին.
Յարեաւ յետ այնմ ի յերրորդին:
Որով թէ օրըն հին զատկի
Պատահեսցի կիւրակէի՝
Զի խաչելոյն որ հանդիպի,

1. 1292ին հանդիպածն է Զատկի տօնին՝ ոմանց չաբաթ մի առաջ ետեւ տօնել ուզելով, չիտակ և սխալ հաշուով, միանգամայն և որ ցաւալին է՝ կռուըտելով:

Փոխէ ի միւսն որ ըզկընի.
Ապա թէ մէջ շաբաթու գայ՝
Հուպ կիւրակէն իւր զատկանայ,
Որպէս կանոն է Նիկիայ
Եւ ամենայն հարց ըստ նորա։
Եւ զայս Կիւրեղ ասէ յայտնի
Ընդ այլ բազմաց հարցըն խըմբի.
Զի խաչելոյն օր Քրիստոսի
Չորեքտասան դիպաւ լուսնի.
Զայս Դիոնեսիոս պատմէ,
Եւսեբի քաջ վըկայէ,
Եւ միւս Կիւրեղն համաձայնի,
Ի վեցտասան զյառնելն ասէ։
Չորեքտասան էր յայս ամի
Յօրըն մեծի չորեքշաբթի.
Ուր և Հրէից բոլոր խըմբի
Տեսաք առնել զօրըն զատկի.
Իսկ կիրակէն որ ըզկընի՝
Ութեւտասանց օր էր լուսնի,
Գնացեալ ազատ յամենայնի,
Եւ յարութեանն էր ստոյգ Զատկի։
Զայս իմաստնօք յոյժ քնընեցաք,
Յաստեղագէտսըն քաջ հարցաք,
Յետոյ զլուսինն աչօք տեսաք՝
Թէ և գրով վաղ հաւատացաք.
Այլ և Հրէիւք ճշմարտեցաւ.
Զի հինգշաբաթըն լըրացաւ
Ի շաբաթ մեծ լըրումն եղաւ,
Ուղիղ Զատիկըն տօնեցաւ.
Յորում բոլոր ազգ որ ի նոյն
Միաբանեալ եղեն ուղղոյն։
Արդ ըզպատմեալըս սակաւուք,
Եղբարք, սիրով ընկալարուք,
Եւ զմեզ յիշել մի՛ մոռանայք
Որք յաղօթելըն քաղցրանայք.
Եւ մանաւանդ ըզծնօղսըն զիմ
Յիշելով, տեարք, առ ձեզ ժըտիմ,

Ընդ արքայ հօրն իմ Լեւոնի
Զկեռանն դշխոյ մայրն իմ բարի,
Բոլոր նախնեօք և որ ըզկընի
Համայն զարմիւք ազգատոհմի.
Մաղթեմ հայցել Տեառն Յիսուսի՝
Տալ քաւութիւն մերոյն զարմի.
Եւ ձեզ կրկին փոխադրեսցի
Ողորմութիւն անզրաւելի.
Զի մեզ և ձեզ առատասցի
Ցօղ վըտակաց նորա շնորհի.
Օրհնել ըզնա ընդ Հօրն իւրում
Եւ ընդ Հոգւոյն իւրոյ սըրբում.
Միշտ և յաւէտ և յանպատում,
Զերիսն ի մի բնութեան նոյնում։ Ամէն։

## Բ.

Վասն Առման Երուսաղեմի, և գալստեան խաչակրաց [1].

Զոր Մարգարէքըս սպառնացան
ՅԵրուսաղէմի յորժամ եղան՝
Առ մեզ կրկին ի յանդ ելան,
Ի դառն աւուրքս որ այժմ հասան.
Զ'ի վեց հարիւր Հայոց Թուական
Յերսունուվեց նորին շըրջան, (1287)

1. Այս Յիշատակարանս այլ ուրիշ Աստուածաշունչ գրոց մէջ գրած է, զոր և բաղդատելով ընդ Լատինացւոցն՝ նշանակեր է անոնց գլխոց համեմատութիւնը։ Այս բանս գրեր է Մաղաքիայի մարգարէութեան վերջը։ Տեղ մ'այլ գրէ. « Համար ֆռանգին զոր » Քաբիտր (chapitre) որ ի վերայ ամենայն Աստուա» ծաշունչին ճապղած է. Ես Հեթում որ և Յով» հաննէս կոչիմ, բազում աշխատութեամբ փոխեցի, » առ ի դիւրաւ գտանելոյ՝ եթէ բան և եթէ այլ ինչ »։

Եւ յիններուն ամին լրման[1]
Հռովմայեցոցն իշխանութեան,
Յովսէփ արքայ Իսմայելեան[2]
Որք Թորգիման ազգ կոչեցան,
Յեգիպտոսէ գլով իշխան
Մինչ ի Բաբել յԱսորեստան,
Զրգեաց նա ձեռն յանդրգնութեան
Ի սուրբ սահման քրիստոնէութեան.
Քանզի մեղօքըն կորացան
Եւ մեր իշխանքըն յաղթեցան.
Գերեաց զքաղաքըն տեառնական
ԶԵրուսաղէմ և զիւրն սահման.
Արիւն բնակչացն որ անդ գտան՝
Իբրեւ ըզջուր ի գետս հեղան.
Մարմինք անկեալ ոչ թաղեցան,
Եւ սուրբ տաճարք ոչ խրթնացան[3].
Դրացիքն ըզմեզ ծիծաղեցան,
Եւ սպառնալիքս կատարեցան։
Իսկ զաւետիս դարձին որ տան՝
Աստ Մարգարէքս աստուածաբան,
Յարեւմըտից հընչէ մեզ ձայն
Պետրոսի, Հռովմ մեծին փոխան[4].
Զի անդ ողբոցս հասեալ գուժկան՝
Կական բարձեալ ի սուգ նստան.
Ի հայրապետէն առին հրաման
Զխաչըն բարձին և աստ հեղան,
Գըրոհ տըւեալ ազգ սրբազան
Բիւրք բիւրուց զօրք միաբան,
Առագաստեալ ընդ ծով գան.
Ի Պտղոմիդեա զետեղեցան[5],

1. Այսինքն փռանկաց Ս. Երկրի տիրելնուն 90դ տարին։
2. Եուսուֆ Սալահէտտինն։ Տ. Յօդուած 299։
3. Պէտք էր ըլլալ տաճարքըն խրթնացան։
4. Պարզ շարադրութեամբ փոխանն է յաջորդն Պետրոսի ի Մեծն ի Հռովմ, որ է Պապն։
5. Տես յերես 41. 426։

Փոսըս հատին և ամրացան,
Եւ անդըր կան այս երկրորդ ամ:
Ի պատերազմ են անխափան,
Եւ մահ ի դասըն յերկոսեան:
Այլ Խաչընկալքըն փութով գնան
ՅԵրուսաղէմըն վերնական.
Եւ Նոցին եղբարքն որ աստ Մնան՝
Զմարտըն դըրդուել ոչ ձանձրանան:
Հռովմայ արքայն որ Ալամանն[1]
Բիւրուք ի յայս.յոյս մեռան,
Սակայն Մնացեալքն ոչ կասեցան
Եւըս բազում ընդ ծովըն գան.
Այժըմ Փռանգաց Ֆիլիպ արքայն[2]
Եւ Ընկլիզացըն Նմին Նըման[3]
Լըծեալ ի գործ Տեառըն հասան,
Եկին առ մեզ ի չորրորդս ամ:
Սոքօք սպասեմըք փրկութեան
Եւ Աստուծոյ մեր օգնութեան,
Զի զմարգարէիցըս դարձին զբան՝
Վայելելոյ գտցուք արժան:
Ամէն, և Եղիցի:

1. Յիշէ զՓրեդրիկ Շիկամօրուսն. Տ. երես 431:
2. Փիլիպպոս Դ Գեղեցիկն:
3. Անգղիացւոց Եդուարդ Ա Թագաւորն:

## ՅԾԱ

## ՀԵԹՈՒՄ Բ ՆԻՋԱԿԱԿԻՑ ԹԱԹԱՐԱՑ ԸՆԴԴԷՄ ԵԳԻՊՏԱՑԻՈՑ

(ՆԵՐՍԷՍ ՊԱԼԵՆՑ[1])

Յամս Տեառն 1303 և թուին ՉԾԱ (751) ի վերստացեալ թագաւորէն Հայոց Հեթմոյ, որ և էր ի կարգէ Մինորացն[2], եղեւ դրդեալ և թապրեալ մանաւանդ թէ աղաչեալ իսկ խանն Թաթարացն արեւելեան՝ Խազանն. և ելեալ 150 հազարօք Թաթարով՝ յերկիրն սուլտանին Մսրայ, որ էր ընդ այն ժամանակն Մելէք Նասրն, և էր հասակաւ տղայ ամաց չորեքտասան։ Եւ հասեալ Խազանն մինչ ի Դամասկոս՝ առին զնա, բայց զոր տեղիս առնուին՝ ոչ աւերէին և ոչ զմարդիկն սպանանէին։ Որ և ի նոյն թագաւորէն Հայոց եղեւ աղաչեալ նոյն խանն այրել հրով զԴամասկոս. ասէր խանն, եթէ, Մեղք մեծ է այսպիսի շինուածք այրել. այլ ետու զնա որդւոյ իմոյ և պահեսցի վասն նորա[3]։

1. Թերեւս չափազանց երեւէին Հեթմոյ վրայ պատմածքն՝ եթէ և իր հակառակորդ արաբացի պատմիչք չպատմէին նոյն և նման գործերը. մասամբ եւս լռէին՝ զիրենք չնուաստացընելու համար։ Նախընթաց Յօդուածի մէջ տեսանք Հեթմոյ զանգատը Թաթարաց անանալուն համար. հիմայ իր դրդմամբ երեւին եկած։

2. Frati Minori, Կրտսեր Եղբարք կոչուած Փրանկիսկեան կրօնաւորք, որք գրեթէ Ա Հեթմոյ ժամանակէն ծանօթ էին մերազգեաց։

3. Զարմանք է որ այս տեղ լռէ պատմիչս, (թերեւս զգուշութեամբ՝ չխրտեցընելու զայլազգիս և չմեղադրելու զՀեթում), Հայոց ըրածը. երբ խանն Ղազան չթողուց աւերել և աւարել զԴամասկոս,

Իսկ սուլտանն զօրաժողով եղեալ գայր մերձ Դամասկոսի իբր փարսանկս[1] ութ. և անդ ի տեղի ամուր յոյժ որ են բլուրք քարաժայռք՝ անդ իջանէր։ Որոյ խանն ելեալ ընդդէմ զօրօք ճակատեցան յայնմ տեղւոջ. և ոչ կարաց սուլտանն զդէմ ունել Մուղալին, փախեան. զոր կոտորեցին անթիւ զայլազգին, և առին զաւար նոցա և զամենայն իջեւանքն նոցա։ Իսկ սուլտանն արամբք իբրեւ տասն յուղտս ձամազիկս[2] հեծեալ փախեաւ ի Մըսր։

Իսկ թագաւորն Հայոց քանզի էր զօրօք արամբք տասն հազարօք ընդ Մուղալին անձամբ, իսկ միայն արամբք որք կարացին սրաձիս գտանել՝ 4000 արամբք ընտրեցան զկնի թագաւորին, զհետ մտին... զաւուրս վեց՝ մինչեւ ի տեղին կոչեալ Ցօլի, որ է ի յաւազն՝ մօտ ի Մըսր, չորս աւուր ճանապարհ գնացողաց՝ ըստ սահմանին. իսկ ի տեղւոյն ուր

Հայք անկէ քանի մի ժամ հեռու Սալիհիյէ աւանին վրայ յարձակեցան (յանուար ամսոյ 9ին, 1300, կամ յաջորդ տարին), և գրեթէ ոչնչացուցին սրով ու հրով, ի վրէժ Եգիպտացւոց ըրածին ի Կիլիկիա։ Այլազգիք ուզեցին բողոքել առ ղանն, բայց խոհեմագոյնք՝ ընդ որս և հռչակաւոր պատմիչն Ռաշիտ–էտտին որ ներկայ էր, արգիլեցին. վախնալով որ եթէ ղանն զիջանէր անոնց, Թաթարաց գլխաւորք՝ որք ոչ միայն Դամասկոսէ չկրցան աւար առնուլ այլ և իրենց թոշակը չէին առած, չգրգռին և այլ աւելի վնաս հասցընեն սուլտանին հպատակաց։

1. Հայերէն փարսախ կամ հրասախ կ'ըսուի պարսիկ բառիւ, և սովորական ճամբու չափ ըլլալով՝ ըստ պատմչաց և տեղեաց՝ այլայլի չափն, բայց սովորական կամ իտալական մղոնէն մեծ է, աւելի կամ պակաս քան չորս բնամղոն (քիլոմետր)։

2. Ճեմմազէ, պարսկերէն նշանակէ բեռնբարձ ուղտ, բայց այս տեղ որընթաց ուղտ. ինչպէս քիչ յետոյ պատմիչս յիշէ սրաձի, և այսպէս կոչի նաեւ այս տեղ գրոցս ուրիշ օրինակաց մէջ։

թագաւորն զհետ մտաւ սուլտանին և ուր դարձաւ՝ ճանապարհ մետասան աւուր, զոր չորս օրն գնաց. և լինէր զի ուր իջանէր սուլտանն յօթևան՝ ի վաղիւն Թագաւորն հասանէր. զի գնայր առաջի Թագաւորին՝ իբրև մղոնս որ է միլ տասն կամ երկոտասան։ Այլ իբրև գնաց Թագաւորն մինչև ի նոյն տեղին Ցօղի կոչեցեալ՝ զի մօտ էր ի Խահրէ[1], ինքն էր միայն, երկեաւ թէ ըմբռնեսցի կամ ոչ ընտրեսցէ դառնալ ընդ աւազն. անդ ի տեղին յայն Թագաւորն Հայոց Հեթում՝ նշան եդ ի դուռն նոյն իջևանատանն նա ևս ի նոյն քարանակին[2], այս է ի Ցօղին, որ է այս ի մէջ բուկին. եհար թրովն և հետս արար՝ ի գուշակ և ի նշան, եթէ Թագաւորն Հայոց վարեաց մինչև աստ զսուլտանն, և ոչ կարաց հասանել[3]։ Այլ և գրեաց ևս ի յորմն, եթէ, Շատ է ինձ այս՝ զի մինչև յայս տեղի եկի հոկայաբար և բուռն զօրութեամբ, որ ոչ ոք ի նախնեաց իմոց նա և ոչ բնաւ քրիստոնեայ զօրութեամբ և վարելով մինչև աստ եկեալ է այսմ ճանապարհաւ։ Եւ զայս առնելով ապա դարձաւ Թագաւորն. որ նշանք և զարկք թրի նորա կան մինչև ցայսօր անդ՝ ի յիշատակ իւրեն։

Եւ քանզի ի վերոյ զհանգամանս իրի կռուոյն ոչ յիշեցաք՝ այժմ սակաւ ինչ ի մէջ բերցուք։ Արդ, լինէր զի իբրև ճակատէին յօրն յայն, տաճիկքն արարեալ էին իբր մարդիկս թաղեալս և զգե-

1. Եգիպտոսի մայրաքաղաքն, որ ինչպէս և հիմայ կոչուի Էլ Գահիրէ, Գայիրէ, Le Caire.
2. Ցօղի կամ Ցոյլի՝ ըստ նախնեաց մերոց՝ որթի (խաղողոյ) ճիւղ նշանակէ. թուի թէ ըստ այսմ նշանակութեան է պատմչին ըսած քարուձնակն. եւթէ փոխան դրած քարաւորի չէ։
3. Հեթում Պատմիչ համշիրակ Թագաւորիս Հեթմոյ՝ իրեն հետ էր այս տեղ և ատեն, և համառօտ պատմէ. իսկ յաջորդ դիպուածը աւելի երկար. Եփրատայ ջրով դաշտին ողողիլն և Հայոց և Թաթարաց վտանգն։

ցուցեալ իրս փայլփլունս՝ զի յարեգակնէն փայլէին. և եղեալ էին զայն ի վերայ ուղտուց իբրև ԾՌ (50,000), և զամենայն ուղտսն ի շարն կանկնեցուցեալ. և ինքեանց զօրն ամենայն յետոյ ուղտուցն ի ծածկոյթս կային. իսկ Մուղալ զօրքն ոչ ինչ հնարս ունելով՝ կայր իբրև ոչխար առաջի նոցա: Եւ իբրև խմբեցաւ պատերազմն՝ հայէին զօրքն երկու առ իրեարս և ոչ մարտնչէին: Արդ, վասն զի Մուղալանին՝ որ են Թաթարանին՝ ոչ ինչ այլ ունին զէնս՝ բայց միայն նետ, վասն այն տաճիկքն մնային զի ձգեսցեն զնետս իւրեանց և հարցեն զթաղեալ մարդիկն որք ի վերայ ուղտուցն, և ինքեանք յետոյ անվնաս մնասցեն, և իբրև նոքա դատարկանային ի նետից՝ ինքեանք յարձակեսցին ի վերայ նոցա սրով և կոտորեսցեն զամենայնն: Զոր և արարին այնպէս. քանզի մինչ ոչ որն ի նոցանէ յարձակէր ի կռիւ, տաճիկնին ետուն ելանել ի յինքեանց արանց հինգ կամ վեց հազար ընտիրս արանց, որպէս զի պատճառ լիցի Թաթարացն նետելոյ. և յարձակեցան արքն զմիրք[1] ի վերայ Թաթրնուն. և իսկոյն հրաման հանէր խանն՝ Թագաւորին Հայոց՝ իւրովքն դիւրել[2] ընդ առաջ զհեծեալսն տաճկացն. որք հսկայապէս իսկ Թագաւորն իւրովքն քրիստոնեայ զօրօք՝ որք էին իբրև Թէ ԳՌ (3000) հեծեալս, իբրև առիւծս դիմեալ... զնշան սրբոյ Խաչին առաջի տանելով՝ կոտորեցին... զի ոչ զերծան հինգ հարիւր. իսկ ի քրիստոնէից ոչ մեռան բայց քսան. և այն վասն երիվարացն, զի քարոտ էր տեղին, և երիվարացն գործել ոչ կարէին այլ անկանէին: Եւ իբրև այս լինէր՝ Մուղալն ամենայն ի նետել սկսանէր. և ընդ դառնալն Հայերոյն ի տեղի իւրեանց՝ որ է աջոյ կողմն զօրուն, և Մուղալն եւս իբր Թէ դատարկացեալք ի նետից՝ Թիկունս դարձուցին և զփախուստ գնային:

1. Քաջ, կտրիճ մարդիկ:
2. Թերևս դրդել գրուած էր ի բնագրին:

Յայնժամ արին այն զմիր Թագաւորն Հայոց արշաւեաց առ խանն Խազան, զի էր ի վրանն իւր բազմեալ և զուսանք առաջի նորա հարկանէին. և մտեալ Թագաւորին՝ ասէ. Տէր իմ խան, էր ծաղր և նախատինք եղեր ամենայն երկրի: Նա պատասխանեաց. Զի՞նչ եղեն վասն որոյ ասեսդ: Ասէ Թագաւորն. Զօրքն զփախուստ առին և գնան: Իսկոյն խանն ի դուրս վազեալ՝ ետես զի ի Թիկունս էր դարձել ամենայն զօրն իւր և գնային. յայնժամ գոչեաց բարձրաձայն խանն, Ճա՛կ, որ լսի՝ Այս է. և հրաման եհան, եթէ յամենայն ոք ի զօրաց իմոց որ ոչ առնէ զոր ես առնեմ՝ մեռցի:

Եւ ըստ օրինի Մուղալին վճիռն այն ի բերանոյ ի բերան լու եղեւ յամենայն զօրսն: Եւ խանն ի սրտմտութենէն զգտակն որ էր ի գլուխն իւր՝ էզարկ ընդ գետինն, և ի ծունկս անկեալ՝ երեք նետս նետեաց ընդդէմ տաճկաց, որ ի նոյն քթթել ական հրաման սաստկութեանն զօրացաւ. և ամենեքեան Թաթարանին ի ծունկ անկեալ սկսան իւրաքանչիւր զիւր երեք նետն նետել: Եւ լինէր զի յայնմ ժամէն որ էր աւուրն իբրեւ ժամ երեք՝ մինչեւ ցինն ժամն ծածկեցաւ օդն, և իբրեւ ի շքեկային ներքոյ մարդիկն ի թանձրութենէ նետիցն որ գնայր ընդ օդն. և յայնմ հետէ ի նոյն հարուածոց նետիցն ապա յաղթեալ՝ մանաւանդ թէ կոտորեալ զօրն տաճկաց՝ փախուստ կալան որպէս վերոյ գրի:

Բայց Թագաւորն Հայոց դարձեալ ի վարելոյ զսուլտանն՝ եկն յԵրուսաղէմ, և եգիտ զամենայն այլազգին փախեալ և սպանեալք եւս ի Թաթարացն՝ որ նախ քան զնա էին եկեալ. և մտեալ յԵրուսաղէմ ժողովեաց զբազում քրիստոնեայս որք թաքեալ էին ի ծակս՝ վասն երկիւղին. և կացեալ անդ աւուրս հնգետասան, տօնս մեծահանդէսս և պաշտօնս քրիստոնէականս՝ մանաւանդ թէ տօնախմբութիւնս պատարագաց ետ կատարել ի սուրբ տեղիսն Երուսաղեմի. և գնացեալ յամենայն ուխ-

տատեղխն սուրբ՝ մխիթարեցաւ հոգւով[1]։ Եւ մինչ էրն յԵրուսաղէմ՝ հրաման և սիգեղ[2] գայր նմա ի խանէն, զԵրուսաղէմ քաղաքն սուրբ իւրով կողմամբքն՝ նմա ի տուրս և ի ստացուածս տալով։ Եւ ապա դարձեալ ի Դամասկոս առ Խաղանն, և ձմերեցին անդ ի Դամասկոս. իսկ խանն Թողոյր պահապանս Դամասկոսի և այլ գաւառին՝ հազարապետ մի իւրով հազարովն. և ինքեանք ելեալ գնացին յաշխարհն իւրեանց։

Եւ եղեւ մինչ անցին աւուրք տասն և հեռացաւ խանն, յարեան տաճիկքն ամենայն ուր էին յերկրին, զի ոչ զօք էին սպանեալ Մուղալքն, եթէ մեր են այժմ պառիկոսք[3], որք յարեան ի վերայ և կալեալ զամենայն Թաթրնին մերկացուցին և արտաքսեցին. և յարուցին դարձեալ զպարոն Դամասկոսի՝ որ էրն ի սուլտանէն կարգեալ։ Արդ, իբրեւ զայս լուաւ խանն՝ բարկացաւ յոյժ. իսկ Թագաւորն Հայոց ելեալ ի գաւառէն իւրմէ առ ժամայն սրընթաց երեք արամբք, և զքառասուն աւուր ճանապարհն մետասան օր ընթացաւ. և բողոքեալ առաջի խանին՝ զօձիսն պատառեալ՝ ասէր. «Ո՞չ այդ բանք են զոր ես ասէի, եթէ ջնջեա... զամենայն, և դու ոչ կամեցար, արդ այժմ յազգէ յազգ նախատինք եղեւ քեզ. և զիա՞րդ կարես կոչել տէր զքեզ, զի հալածական և խաբեալ ես ի յոչինչ ազգէն». և այլ այսպիսի բանս բազում ասէր նմա։ Որոյ խանն երդուաւ ի գլուխ իւր՝ զի ի ձմեռն որ գայցէ՝ առցէ զվրէժն ամենայն ի սուլտանէն. որ և պատուէր տայր Թագաւորին Հայոց՝

1. Անտարակոյս է որ Հեթում թէ քաջութեան թէ բարեպաշտութեան յիշատակներ թողած է ի վանս Հայոց, յորոց մէկն այլ կ'ըսուի թէ իր սաթէ արքունի գաւազանն էր։

2. Sigillum, Sigle. Թագաւորական կնիք կամ կնքած հրովարտակ։

3. Իբրեւ հպատակք ըստ աւատական օրինաց։

պատրաստել զինքն գնալ անդ դարձեալ։ Եւ դարձեալ Թագաւորն յաշխարհն իւր և պատրաստեաց զինքն փարթամ և ընտիր զօրօք հեծողաց ձիաւորաց մահմէզաշոր[1] չորս հազար, հետեւակաց հազար[2], շարխողաց[3] չորս հարիւր, և այլոց արուեստաւորաց բազում՝ վասն բերդիցն առնլոյ. քանզի էր սահմանեալ ի խանէն կարգաւ ի մուտ սկսեալ զամենայն բերդ և ամրոց առնուլ և քակել, և ապա յառաջ գնալ։ Իսկ ամենայն արք զօրս ընդ իւր տարաւ Թագաւորն Հայոց յայնժամ՝ էին ԺԸՌ (18000)։

Այլ իբրեւ եկն ժամանակ գնալոյն՝ մանաւանդ թէ զամենայն զամառն զայն, սուլտանն զանձիւք կաշառեաց զամենայն մերձաւորսն և զխորհրդակիցսն խանին, և ասացին նմա և ետուն նմա թտպիր[4], եթէ երկիրն շող է և վոստոդ, բազում կայ մնաս, մի գնասցես անձամբ, այլ յղեա զայլ ոք. և հաւանեցուցին զխանն։ Իսկ նա կարգեաց ի տեղի իւր գլխաւոր զօրուն՝ զերկրորդն թագաւորութեան իւրոյ Խոզբլուշշահպար կոչեալն. և Խութլուշահն առեալ ՂՌ (90,000) Թաթար միայն՝ գայր հասանէր ի Դամասկոս. և վաղվաղակի տաճկնին թողին ի նա զքաղաքն՝ ըստ առաջին կերպին։ Իսկ Թագաւորն Հայոց գայր յիւրն գաւառէն՝ ըստ ասացեալ կերպին՝ իւրովքն հանդերձ. որ և ասացին թէ սուլտանն եւս եհաս ի նոյն տեղին առաջնոյ կռուոյն։ Եւ ելեալք ի միւս օրն ի Դամասկոսէ՝ եկին ի տեղին և իջին դարձեալ ընդդէմ միմեանց զօրքն. զերիս աւուրս ոչ պատերազմեցան բնաւ։ Իսկ Թագաւորն ստիպէր միշտ զպարոն Թաթարացն յուզել

1. Մտրակաւոր կօշիկ ձիաւորաց. Թրք. մահմուզ։
2. Հազարաւոր թիւն մոռացուած է նշանակել, բայց յետոյ գրածէն գուշակուի որ պիտի ըլլար 10 կամ 12000։
3. Պատերը քարաձիգ մեքենայով փլցընողք։
4. Խորհուրդ, խրատ, զգուշութիւն։

պատերազմ. Նա Թուլանայր, վասն զի որպէս ասի յոմանց՝ եթէ ինն բեռն ոսկի էր առեալ ի սուլտանէն՝ ոչ կռուել. զոր և արար իսկ. զի յաւուրն չորրորդի իբր սակաւ մի չարժեցին տաճիկքն կռիւ, առ ժամայն զօրն Թաթարին զփախուստ դարձաւ. և ելեալք անտի ամենեքեան դարձան ի Դամասկոս. և իբր հասին ի Դամասկոս՝ ոչ մտին անդ, այլ արտաքոյ գնացեալ փախչէին, և Հայերն զկնի. զի ոչ իշխէին ի սուլտանէն թողուլ զընկերութիւն Թաթարին: իսկ տաճիկքն որպէս և են դրաիդոսրք[1], դաւ պեղծ գործեալ էին. քանզի թողեալ էին զերկու գետոն Դամասկոսի ի վերայ դաշտին մեծի՝ որ էր իբր թէ ճանապարհ աւուրց երկուց՝ յարևելից կողմն Դամասկոսի, ընդ որ էր ճանապարհն Թաթարին. զի այլուր անհնար էր գնալն քան ընդ այն. և Նոցա թողեալ էր զջուրն ի վերայ այնմ դաշտին, և խմորեալ զամենայն ցեխ և ի տիղմ դարձուցեալ. ի յոր մօրատ անկեալ ամենայն զօրքն Թաթարին և Հայոցն եւս՝ խրեցան և ոչ կարացին ելանել. և այնպէս ամենեքեան անդ սատակեցան. ոչ զերծեալք ի Թաթարացն չորք կամ հինգ հազար. իսկ ի Հայերուն ոչ եկին ի տուն՝ հինգ հարիւր: Դարձեալ այլ իմն չարագոյն պատահէր. զի ի վերայ մեռեալ մարմնոցն մարդկան և ձիոց հազիւ ի միոյն ի միւսն անցանելով ի խառախն[2] զերծանէին ի տղմոյն՝ զկնի աւուրց, և գային առ ափն գետոյն Եփրատայ, զի ընդ այն էին անցանելոց. գտան զգետն զի գայր դարիւ և դարիւ, և ոչ կարէին անցանել. բազումք անդ խեղդէին. այլ և ոմանք Թաթարք՝ տըկօք կամ ցախեայ[3] իբր

1. Այսպիսի բառ մի գրած է Եղիշէ ի Պատմութեան Վարդանանց. ըստ հին բառագրոց դարպաս նշանակէ. բայց այս տեղ խորամանկ Նենգաւոր դաշնակուի:
2. Այս այլ այլազգի բառով նշանակէ ինչ որ Հայերէն ըսաւ, տիղմ, ցեխ և մօրատ:
3. Ծիւղերով հիւսուած:

թէ նաւս չինէին, և կապէին ի բազում ձիս զայն, և անցանէին ի միւս ճղոյ գետոյն ի միւսն. և այնպէս զերեք կամ չորս օր՝ ապա թէ կարէին անցանել։ Լինէր ապա զի Թաթարն զՀայերն այնպէս անցուցանէր՝ եթէ տային ինչ վարձս. որ և պատահեաց եւս՝ զի բազումք անցեալք յայնկոյս գետոյն՝ ոչ կարէին ելանել. զի ջուրն մղէր զնոսա և հանէր ի փուլս և յապառաժ տեղիս, զի ոչ կարէին ի վեր ելանել. որ և բազումք ի նոյն փլատակերն ի սովոյ մեռան, և այլք զչուանս, զձիս և զմարդ՝ զոր գէշ ջուրն բերէր, քաշէին[1] և ուտէին։ Այսի եւս եթէ ոչ երեւէր եզրն Եփրատայ, այնչափ էր տարածեալ։

Արդ, Թագաւորն Հայոց զերծեալ այսպիսի նեղութեամբ՝ գնաց բողոք ի խանն՝ ի վերայ այնչափ աղետին գործելոյ. ընդ որոյ վիշտ՝ ասեն, եթէ ելաց խանն եւս, և երդուաւ հաստատութեամբ՝ զի յառաջիկայ ձմեռն անձամբ իջցէ յԵգիպտոս. որ և հրաման եհան զի ամենայն զօրքն իւր յիւրաքանչիւր տասէն եօթն հեծանէին ընդ նմա. որ և ասեն եթէ լեալ էր զի հեծեալ էին այն ամենայն՝ լինէր թումանս[2] չորեքտասան, որ է ամենայն թուման Կն այր (60,000)։ Իսկ սուլտանին լուեալ զայն՝ բազում և անթիւ ոսկի յղեաց շուրջակայիցն խանին՝ զի մի թողացուսցեն այնմ իրի լինել. և եթէ այն լինիցի՝ անցեալ ջնջի ամենայն տաճկութիւնն։ Զոր առեալ պարոնացն Թաթարին զգանձն բազում, խօսէին յականջս Խանին՝ մեղացուցանել զգալն իւր. և նա ոչ առնոյր յանձն։ Իսկ ի միջոցի աստ բարի խանն այն Խազան՝ ետ բազում տուրս, պարգեւս, սիկեղս և ազատութիւնս և հարկապահանջութիւնս եւս յիւր երկրէն յամենայն ամի՝ Հայոց Թագաւորին՝ ընդ կորստեան և վզենին նորա. և ասէ. Գնա՛ ի տուն քո և ուրախ լեր, զի ես ձեռամբ առից զվրէժն քո ի տաճկաստանեացն։

1. Կամ քարշէին ըմպելու էր կամ խարշէին։
2. Ըստ Պարսից՝ թումանն նշանակէ 10,000։

Իբրև մերձեցաւ ժամանակն գնալոյ խանին ի վերայ սուլտանայ՝ և տեսին իշխանքն իւր թէ ոչ կարէին դարձուցանել զնա զի մի գնասցէ, դեղ մահու ետուն նմա, և ելաւ ի կենացս. և ասի իսկ՝ եթէ կինն նորա զոր առաւել սիրէր՝ դեղեաց զնա և մեռաւ[1]։ Եւ ամենայնն խափանեցաւ խորհուրդ և ջան թագաւորին Հայոց։

---

## ՅԾԲ

### ԳԼԱՁՈՐՈՑ ՎԱՆՔ ԵՒ ԵՍԱՅԻ Վ. ՆՉԵՑԻ. ՅԻՇԱՏԱԿՔ ՏԵՂԵԱՑ, ԱՆՁԱՆՑ ԵՒ ԴԻՊԱՑ ԺԱՄԱՆԱԿԻՆ

(ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ)

Ցելանելոյն Ադամայ ի դրախտէն մինչ ի յաւարտումն գրոցս[2] էր թիւ ժամանակիս 6504 ամ. զի յելանելոյն Ադամայ մինչ ի Քրիստոս՝ էր ՐՃՂԸ (5198), և ի ծննդենէն Քրիստոսի ՌՅԺԶ (1316) ամ. իսկ թվ. մեծ Հայոց էր ՉԿԳ (763)։ Ես Գրիգորիս բազմավէր և ծանրամեղ ոգի՝ փափագեալ յամենայն բարի և յետնեալ յամենայնի, ըստ Տեառն բանին՝ սերմանեցի յապաուժի. զի ի տղայական հասակի զվանական քահանայութեան բուռն

1. Ղազան մեռած է ի 17 մայիսի, 1304։

2. Լուծմանց Գիրք կոչուածն. Ս. Հարց գործոց թարգմանութեան ի նախնեաց մերոց՝ երբեմն բաներն և բառերն մեկնուած (լուծուած) են, ոմանք ի հին յոյն վարդապետաց, ոմանք ի մեր նախնի վարդապետաց, և ժողված մէկ գիրք մի ըրած։ Այս օրինակս՝ Մխիթարայ գրած և վարը յիշուած Թորոս Տարօնեցիէն ծաղկած՝ շատ վայելուչ և վարպետ ձեռաց գործ է։

հայրն, ձեռնադրութեամբ հօր մերոյ Կոստանդեայն[1]. և՝ յետ ամենայնի ի կատարեալ հասակի՝ բայց յանհնարին հոգւոյ՝ ցանկացեալ ընթերցման գրոց՝ անխափան մնայր. զի ոչ գիտացի պէտս գործոյ։ Եւ զի ծննդեամբ էի յերկրէն Խորդբերդոյ ի գաւառէն Ցաղման[2] կոչեցեալ, և մայրական գրկաց եկեալ ի գաւառն Եկեղեաց, և անդ սնեալ ի մեծահռչակ վանքն Տիրաշէն[3], և անդ ուսեալ սաղմոսացի և կրօնաւորեալ. իսկ յետոյ ի գալ վարդապետին Մովսիսի[4] ի Կիլիկիոյ՝ բազմաւ գրենաց, յորդորեալ և առեալ զմեզ բնակեցաւ ի Դարանաղեաց գաւառն՝ ի Լեառն Ս. և մեծ Լուսաւորչին մերոյ[5] ամս վեց....

* Զմեղաւորներդ անձն և զգործող ուխտի կրօնաւորութեան զՄխիթար՝ յիշ(ե)այ, հաւատ(ե)այ խոր, ով խոհեմ պատահող, ասելով. Քաղցր Քրիստոս, թող թող զյանցանս Մխիթրա[6] և զծնողաց իւրոց և

1. Թուի այն Եզնկացի Կոստանդինն՝ որոյ ստանաւոր գրուածք գտուին, այս Մխիթարայ գրած գրքէն քսան տարի մի վերջ օրինակուած։
2. Ցաղման կամ Ցաղմնայ գաւառ շատ յիշուէր այս գրոց գրութեան ժամանակներ և աւելի վերջն։
3. Այս վանքս այլ Եզնկայի մօտ նշանաւոր վանքերէն մէկն է. ոմանք համարին թէ Տիրան թագաւոր շինած ըլլայ իր անուամբ գեղ մի, յորում յետոյ վանքն շինուեր է։
4. Ժամանակին գիտուն վարդապետաց մէկն է. իր անուամբ գտուի մեծ գիրք մի, հաւաքումն պէսպէս բանից, որոյ համար Բոկիփորիկ կոչուի. (Տես Ցուց. 345)։
5. Սեպուհ կոչուած լերան վրայ և քովերը մեծ ու պզտիկ վանքեր հաստատուած էին՝ ի յիշատակ Ս. Լուսաւորչին այն տեղ ճգնելուն։
6. Վերը գրած ստանաւոր խօսքերէն այլ կ'իմացուի այդ Մխիթրայ զուարթութիւնն, եթէ չըսուի և բանաստեղծութիւնն։

զվարդապետի իւրոյ զԳրիգորիսի։ Հասոյց (Տէր) ի յաւարտ ձեռնարկութեանս այս՝ ի Թուիս ԶԿԴ (1314–15) Հայկազեան տումարիս։ Բայց գրեցաւ գիրքս այս առ ոտս մեծ վարդապետիս Եսայեայ[1], ի տեղիս որ կոչի Գլաձոր, ընդ հովանեաւ Ս. Ստեփանոսիս. Հրամանաւ մեծ և երանեալ վարդապետիս իմոյ Գրիգորիսի Եզնկայեցոյ՝ բանի սպասաւորի, ի վարժումն անձին իւրոյ և ամենայն բանասիրաց։ Արդ աղաչեմ զամենեսեան որք հանդիպիք այսմ խրթնայայտ կտակիս, յիշեսջիք զառաջ ասացեալ ուսուցիչն իմ զԳրիգորիս և զծնողսն իւր. ընդ նմին և զհոգեւոր հայրն իւր զկոստանդին միայնակեաց, որ բազում առաքինութեամբ զարդարեալ է. իսկ հուսկ յետոյ քան զամենեսեան զաղաչողն և զփցուն գրողս Մխիթար՝ սոսկ անուամբ կրօնաւոր, և զծնողսն իմ զհանգուցեալսն ի Քրիստոս, զՊաւղոս և զՏիրանիգ, և զեղբարսն իմ (Մաթէոս և Մարտիրոս[2]) զկրօնաւորեալսն միայնութեամբ և զքոյրն իմ նոցին հետեւող, և զհօրեղբօր որդին իմ Վարդպապ, որ յետոյ եղեւ կրօնաւոր։...

* Որք ընթերցմամբ հայիք ի սա
Եւ հանդիպիք գանձու սորա,
Տես թէ քանի աշխատեցայ
Ես Մխիթար գրիչ սորա.
Թուղթս անկոկ ու գրիչ չկայ,

1. Վերին կամ Մեծ Հայոց մէջ ԺԳ դարու վերջ և ԺԴին սկզբան՝ ամենէն հռչակեալ վարդապետն էր գիտութեամբ, և հարիւրաւոր աշակերտաց վարդապետական գաւազան տուող համարուի, անոր համար իր աթոռն այլ՝ Գայլիձորոյ վանքը՝ մայր իմաստից կոչէ մեր գրիչն և այլք։

2. Ուրիշ տեղ մի յիշէ Մխիթար այս եղբարց անուանքը. իր շատ ազգականաց այլ անուններով, զոր աւելորդ համարեցանք օրինակել։

Աւուրքըս ցուրտ ու պարզկա[1],
Զարտախս[2] բարձր ու կրակ չկայ.
Դոներս[3] չոր ու սպաս չկայ.
Եւ այս Գլաձորն ո՞վ գիտենայ.
Ես յոյժ նեղած ու ճար չկայ.
Եւ ես պանդուխտ ու վեղար չկայ։
Ինձ հատուցումն յիշման արա
Վասըն փըցուն գըրի սորա։

* Ես նուաստ անուն Մխիթար կոչեցեալ Եղընկայեցի գնալով ի մայրն իմաստից Գլաձոր՝ առ ոտս Եսայեայ վարդապետի ի վարժումն աստուածիմաստ գրոց, և յորդորեալ զիս վարդապետն իմ Գրիգորիս գրել զգիրքս զայս յոյժ աշխատանօք, և հանդիպեալ բարեմիտ և քաղցրատեսակ եղբօր՝ լցեալ ամենայն իմաստութեամբ, եւս առաւել գրականութեամբ և ծաղկողութեամբ, անուն կոչեցեալ Թորոս՝ ի Տարօն գաւառէ, ծաղկազարդեաց զգիրքս[4]

1. Նախնիք մեր պարզ կ'ըսէին երբ օդն յստակ և ցուրտ կ'ըլլայ. Թուրք. այազ։
2. Զարտախ՝ Թուրք. կամ պարսկ. տան վերի մասն, կամ բարձր ու հով բանելու տեղ, հովանոց։
3. Դոն այլ բարձր չենք նշանակէ. բայց նաև չոր հաց. Թուրք. կէվրէք. իսկ սպաս՝ տաք կերակուր։ Խեղճ Մխիթար, թէ ցուրտ քաշէ թէ անօթութիւն. և այս վիճակի մէջ՝ ո՞վ կու յիշէ, կ'ըսէ, զԳայլեձորոյ վանքը՝ որ ուտելիք կամ տաքնալիք մի բերէ։
4. Տաս տարի վերջ այլ (1332) յիշուի այս ճարտար ծաղկողն. (տես և Յօդուած 362). անկէ առաջ (1321) նկարեր է պատկերներով Աւետարան մի որ հիմայ գտուի ի Բրիտանեան Թանգարանի Լոնտոնի, յորում գրէ. «Զնկարագրող սուրբ պատկերացս՝ զԹորոս » յիշեա ի Տէր »։ Այս գիրքս և միւս երկուքն՝ որ ի վանս մեր պահուին՝ Թորոսի ճարտարութեան ինձ ծանօթքն են, երեքն այլ գրուած և նկարուած ի վանս Գայլեձորոյ, հռչակաւոր Եսայի վարդապետի առաջնորդութեան ատեն, որ յայտ է թէ ոչ միայն գրքեր

զայս՝ վասն յոյժ սիրելոյ զմեզ. Ով որ հանդիպիք՝ յիշեսջիք զինքն և զիւր ծնողսն ի Քրիստոս։...

* Ի հոլովման ժամանակիս
Ի մեծ Հայոց թուականիս
Յ՛ԷՉԿ և երեքիս (763=1314).
Ես տկար Մխիթարս
Եւ անարժանս յամէն բարիս
Գրեցի զԼուծմունք Նուրբ
Եւ արտաքին կտակարանիս՝
Յիմաստից տուն Գլաձորիս.
Ի Վայոձոր վիճակիս,
Առ ոտս տիեզերալոյս վարդապետիս
Մեծահռչակ Եսայիս,
Նա և կարեկից մեծազարմին
Աթոռակալ Տարսայիճիս[1],
Որ է մեզ կարեկից յամեն բարիս,
Եւ օժանդակ յիւր գաւառիս.
Յիշման առնել զսա արժանիս,
Ծնողիւք եղբարբք օրհնեալ յաստիս։...

* Ի թուականիս Հայոց ի ՉԿԳ (1314-5) համարողքն[2] ի Վայուձորս եկին, ու մինչեւ ի յամտական տղայն համարէին։

և կարդացողներ ժողովէր՝ այլ և ճարտար գրողներ. շատ հաւանական է որ ուրիշ շատ գրոց մէջ եւս Թորոս իր ճարտարութիւնն աւանդած է։

1. Անշուշտ մեծ Տարսայիճի՝ Ստեփանոս Օրբելեանի հօր ցեղէն, կամ անոր թոռն այն կողմերու տէր։

2. Թաթարաց խաներու կողմէն եկող տուրք առնողք, հարկահանք։

# ՑԾԳ

## ՔՈՒՐԴ ԹԻՃԽԱՆ

### (ՑԻՇԱՏԱԿԱՐԱՆ)

Յայսմ ժամանակի երեւեալ քաջ և այր յաղթող և բարձրաբազուկ իշխանաց իշխանն՝ յազգէ Վաչէի, որդի Ցայիթին, որդւոյ բարեպաշտ և աստուածասէր (Ա) Գրիգորի, որ և անուն նորա Քուրդ կոչի[1], որոյ անուամբն և քաջութեամբն մնաց գաւառս մեր և վանորայքս անշարժ և անվնաս՝ յայսմ մեղաաշարժ և դառն ցասմանէս. զի յայսմ նուազեալ և դառնացեալ աւուրս՝ որ վասն մեղաց մերոց, երեւեալ մեծափառ և աստուածահաճոյ մեծ զօրավարն և երեւելի նախամարտիկ, պարծանաց և զարդու գաւակն Հայաստանեայց, ամենօրհնեալ Քուրդն. զի ստնաձայնք երիվարացն նորա և ծոճիւն նիզակացն և փայլատակումն սուսերացն, ճայթմունք աղեղանցն, և կուռ զրահքն և սաղարափակ լինելն, և այլ ահարկու կազմուածն՝ զարհուրեցուցանէին զԹշնամիսն. Թող զյաղթութիւն և զքաջութիւն և բազում պատերազմաց վանումն՝ ի ձեռն նորա, և աղաւաղարաց նորա բազմութիւն, գեղեցկութեամբ՝ իբրեւ զօրս երկնից և քաջութեամբ և յաղթութեամբ՝ իբրեւ զառիւծ կամ իբրեւ քաջարծուի[2] ի վերայ Հայաստանեայց, յամենայն պատերազմունս։ Այնու՝ առաջի այլասեռ Թագա-

1. Քրդաց ազգէն ծագած էր, ինչպէս մեծանուն իշխանքն Զաքարէ և Իւանէ, որք քեռորդիք էին Ա կամ Մեծ Քուրդ իշխանին, և Թէ Այրարատայ կողմերը տուն տեղ ունէին, և Թէ Հայ-Աղուանից կամ Արցախոյ։

2. Տեսակ մի արծւոյ. մեծ և զօրաւոր։

ւորացն՝ Ղազանին և Ղարապանդին և Փուշայիդի[1], և մեծամեծ և սպարապետ Նոյինացն[2] մեծարգոյ և փառաւոր երևեալ, և յամենեցունց շուք և պատիւ և խիլայ ընդունեալ, պահէր խնամօքն և ողորմութեամբն Աստուծոյ զգաւառս և զվանորս ի խաղաղութեան, և այլոց գաւառակցացն բազում կարեկից և օգնական լինէր։ Որոյ՝ աջն անեղին և բազուկն հզօրին Աստուծոյ հովանի և պահապան լիցի նմա ի տուէ և ի գիշերի. աստուածասէր և բարեսէր ամուսնաւն Խոյան-խաթունին[3] և ամենայն հեծելազօրացն։ Քաղցրասցի նմա աչք բռնաւորաց և մեծամեծաց, և թշնամիք նորա առաջի նորա յամօթ և նկուն լիցին, և իբրև զԿորխ և զԴաղան յանդունդս իջցեն. և ձեռք նորա հանապազ ի վերայ թիկանց թշնամեաց իւրոց. ամէն։

---

## ՅԾԴ

### ՈՂԲ ՎԱՍՆ ԱՒԵՐՄԱՆ ՏԱՆՍ ԱՐԵՒԵԼԵԱՆ

### (ԽԱՉԱՏՈՒՐ ԿԵՉԱՌԵՑԻ[4])

Զայս ահագին աւուրքս որ հասաք,
ժամանակիս որ պատահեցաք,

1. Երեքն այլ ղանք Թաթարաց, իրարու յաջորդք, 1292 տարիէն մինչև ի 1335. զերկրորդն Խարաբանդա՝ պատմիչք մեր Խղուշ ծառայ թարգմանեն. զի խար՝ նշանակէ էշ, պէնտէ այլ՝ ծառայ։
2. Ուրիշ տեղ այլ յիշուեցան, իշխան և զօրավար նշանակելով։
3. Թերևս արաբերէն է խոյ, խոյան, իբր արագաշարժ կամ նազելի, որ կերպով մի համաձայնի Հայերէն հոյակապ կոչման։
4. Հեղինակիս և գրութեան տեղին կամ լեզուին վրայօք՝ տես ի կարգի Պատմըչաց։

Զքաղցր Արարիչն դառնացուցաք,
Զերկիր՝ արեամբ մեղօք ներկեցաք։
ԶՄայր Աստուծոյ մեզ տրտմեցուցաք,
Զմեր բարերարըն բարկացուցաք.
Զեկեղեցեաց դրունըս փակեցաք,
Զկանոնական գիրքըն մոռացաք։
Մեք մեր ձեռօք մեզ դաՀիճ եղաք.
Հայհոյութեամբ զբերանըս մեր լըցաք,
Յանզեղջ կարիքըս՝[1] չաղախեցաք,
Զաւազանին խորհուրդն ուրացաք.
Ըզկիրակին՝ սուրբ ոչ պաՀեցաք
Այլ չար գործով մեր պատառեցաք.
Զժամն եւ զաղօթս բնաւին մոռացաք,
Ի պատարագն անգամ չնայեցաք։
Հովիւս Հօտիս մեր բամբասեցաք[2],
Վարդապետաց Հակառակ կացաք.
ԶՀայր եւ ըզմայր վիրաւորեցաք,
Զազգ և զազինս ի մէնջ վարեցաք[3],
Զողորմութեան դուռըն փակեցաք,
Զորբն և զայրին անյագ դատեցաք.
Զխաչն և զՀաղորդըն զայրացուցաք,
Զեկեղեցին սուրբ քամաՀեցաք։
Ծաղր ու նախատ բազմաց մեք եղաք,
Յերկաթ ու ի նեղ գընդան մեք մըտաք
Յաղքատութիւն որ ժամանեցաք՝
Այս մեծ եարիս[4] ամենքս որ դիպաք։
Ի ձեռըն չար ազգի մեք գրաւեցաք.
Բըժիշկ չունիմք ցաւոյս որ Հասաք.
Զմեր բարերարն անյայտ կորուսաք,
Եւ այլ չունինք իսկի մեզ ճարակ։

1. Թերեւս չարիքըս գրելու էր։
2. Հայոց մեղաց կամ յանցանաց մէկն այլ Համարէ եպիսկոպոսները և վարդապետները բամբասելը։
3. Օտարազգիները չընդունելն կամ Հալածելն, կարծուի թէ կրօնական խտրութեամբ։
4. Ստոյգ թէ սխալ բառ՝ իմաստն վտանգ, նեղութիւն նշանակէ, եթէ չէ չարիս։

Խիստ արժանի էաք զինչ եղաք
Վասըն չարեաց որ մեք գործեցաք.
Մեռան իշխանք մեր ցանկալի
Իւրեանց որդւքն ի տղայ հասակի։
Սուգըն տիրեաց մեզ խորայէլի,
Լաց և աղաղակըն մեծ Հռաքէլի։
Սատունն սիրած մեծ Աւգաղա ղանի[1]
Գովված ընտիր ամէն հանդիսիւ,
Զաչերըդ բաց զինչ Դաւմասկոսի[2],
Տես ըզզաւսաս ի յերերմանի,
Զեկեղեցիքս ի մեծ վըտանգի,
Ըզքահանայքս ի տարտարոսի.
Զխոսրղու–բուղէն յարեան հոլավի[3]
Զիւր անհըման պատկերն ի հողի.
Զարքայն չիշխեմ յիշել ըզՎրացի
Զատլաս երեսն ըզԴեմետրէի[4],
Որ դեռ քրտունքն ի վայր թափի.
Սիրտըն քաշած ու դեռ կենդանի.
Զպարոն Փօշն դարդ հեծելի[5]
Որ զերկաթի դուռն անէր փոշի,

1. Տես Ցօղուած 332։ Ըստ Կիրակոսի՝ Հուլաղու ղանն էր զինքը այլազգի ըմբշի մի հետ կռուեցընողն. յարմար է որ իր որդին և յաջորդն Աբաղա–ղանն այլ իր քով պահած և պատուած ըլլայ այդ կտրիճ Սադուն Արծրունին։

2. Անշուշտ մարգարէի մի բանը յիշէ. բայց ինչ յարմարութեամբ կամ կապով տաղի բանին։

3. Թաթարաց վատութեամբ սպանուած է այս քաջ զօրավարս, յամի 1308, բայց ով ըլլալն անտարակոյս չէ. թուի թէ Խուրլուշահ կոչուածն է և որդի վերոյիշեալ Սադունին, երկուքն այլ երկար տարիներ քաջութեամբ Թաթարաց զօրավարք եղած են շատ յաղթութեամբք։

4. Դեմետր Բ թագաւոր Վրաց, զոր խաբէութեամբ կանչեց Արղուն ղան Թաթարաց, և անգթութեամբ գլխատել տուաւ՝ ի Մուղան, յամի 1289։

5. ՅԱրցախ նահանգի Խաչենոյ և Գանձակայ կող-

Աջոյ բազուկըն Նոր Սիոնի,
Հիմըն հաստատ Հայոց հաւատի.
Կամ գիւր որդիքըն զարմանալի
ԶՄրկդեմ, Վասակ՝ կորիւնք առիւծի.
Զայն զօրաւորն ի պատերազմի,
ԶԱմիր Հասանն բազուկըն քաջի.

մանց աղնուականն և կարիճ իշխանաց ցեղի մի դլխաւորներէն մէկն, որ ԺԳ–Դ դարուց մէջ շատ հորին պայազատներ ընծայեց. Այրարատայ և Սիւնեաց կեդրոնական կողմերում եւս. Վարդանեանց ազգէն ծագած կ՚ըսուին ժամանակակից յիշողներէն։ Կեչառեցիս այլ նոյն ցեղէն է. վասն զի այն տեղն եղաւ նոցա և գերեզման այդ հռչակուած Պռօշ իշխանին, որոյ արձանագրութիւնք և յիշատակք գտուին մինչեւ հիմայ, ինչպէս Ս. Գեղարդի պահարանն՝ յԷջմիածին։ Հուլաղու-ղանի զօրավարաց մէկն եղաւ. բայց շատ տարի առաջ իր մէկ եղբայրն (Պապաք) և հօրեղբայրն (Գրիգոր) Թաթարաց հետ կռուելով մեռած էին. իր հայրն կոչուէր Վասակ, պապն Հաղբակ. իսկ իր այս տեղ յիշեալ որդիքն՝ Մկդեմ, Վասակ և Հասան յիշուին և յայլոց։ Այս Պռօշէն զատ յիշուի հնագոյն Պռօշ մի, որ ցեղին հայրեննեաց Գանձակայ եկեղեցւոյ մի մէջ թաղուած է. իսկ այս Վասակայ որդի և Վասակայ հայրն՝ ըստ Թովմայի Վանանդեցւոյ թաղուած է ի Կեչառուսն, յեկեղեցին։

« Սուրբ Սիոնըն պաշտեցեալ,
» Որ Պռօշի հանգիստ տուեալ ».

ի պատմութեան յիշուի առ 1220–1268ի միջոց. իր որդւոյ Ամիր Հասանի որդի է Իւանէ կամ Եւանէ, ասոր որդի միւս Ամիր Հասան, որ յիշուի յամի 1313. անկէ քսան տարի վերջ այլ՝ 1332ին յիշուի Վասակ թոռն Պռօշի, որ թերեւս որդի է Մկդեմի կամ իր ուրիշ մէկ Պապաք կոչուած որդւոյն։ — Թէ ի պատմչաց թէ ի վիմագրաց շատ հեղ Պռօշն յիշուած. ըմբռնելուն համար՝ հարկաւոր համարեցանք այս ծանօթութիւնս, զոր դեռ ստուգել փափագիմք, որպէս և զայն Մեծ Պռօշ կոչուածն, որոյ որդւոյ Ջումայի որդիքն՝ Արղուպ և Զարխիկ մեռեր են կամ սպաննուեր Լէնկթիմուրի արշաւանաց ատեն։ Առաջնոյն յիշատակ

Ըզ Տարսայիճ զարմըն վեհազգի՝[1]
Ջեղբայր մեծին որ Սմբատ կոչի,
Որ պատուեցաւ ի դրան արքունի
Այնմ որ անուն էր Մանկու ղանի։
Զհասանն յիշեմ ըզխաչենեցի՝
Որ մականուամբ էր Որդի Դոփի[2].
Հանց յուժընդակ էր ինքն յատենի՝[3]
Քան զՔրիստոսի նշանն ի բեմի։
Աւա՜ղ, թէ զորն ասեմ ի լալի
Զայն հին ի նոր գերեզմանի։
Վա՜յ ըզմնացորդքըս սուտ կենդանի.
Մակա՛ր չէաք ծընել յաշխարհի.
Ահա գերեցաք, ու ամենքս եմք գերի.
Մեր գերեդարձքըն չեն ի միջի։

է այս Պռօշի կոյս կոչուած կամուրջն, մօտ ի Գնդեվանս Եղեգեաց ձորոյ Սիւնեաց, դժուարուտ խորաձորոյ վրայ ձգուած։

1. Ստեփաննոս Օրպելեան պատմիչ արքեպիսկոպոսի Հայրն է անշուշտ Տարսայիճս այս։ Տես Յօդ. 337–8։

2. Պռօշեանց ժամանակակից և սահմանակից՝ Խաչենոյ հիւսիսակողմն էր Հասանեանց ցեղն, որոց առաջինն Մեծ Հասան կոչի, և որդւէ որդի շատերն այս անունը կրելով՝ ինչուան վերջի դարերուս ծանօթ եղած են, իբրև մելիքք իրենց երկրին։ Յիշուի որ նոյն կողմերը (Սեւանայ ծովուն մօտեր) քանդակելով Լէնկթիմուր յամի 1384 սպաններ է այդ պայազատաց մէկը՝ Հասան մի՝ և երեք որդիքն Սարգիս, Աղբուղէ, Շրուանշէ։ Հասանեան ցեղին մէկ ճիւղն այլ Հասան-Ջալալեան կոչուի, յորմէ էր վերջին կաթողիկոսն Աղուանից (Բաղդասար)։

3. Այնպէս զօրաւոր էր և ազատիչ նեղելոց՝ ինչպէս Քրիստոսի Ս. Խաչն, եթէ նորուն այս համեմատութիւնն։

# ՅԾԵ

## ԳՐԻԳՈՐԻՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԿԱՐՆՈՅ[1]

### (ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ)

*Ընդ ժամանակս բռնակալութեան ազգին Նետողաց[2] կրկին զօրացեալ ազգն իսմայէլեան՝ յարուցանէին հալածանս ի վերայ ամենայն քրիստոնէից, մանաւանդ ի վերայ աշխարհիս Հայոց. և չար հողմունք հագարային հնչեցին հանդոյնորէն ամբարիշտ Թագաւորացն Դեկոսի, Դիոկղետիանոսի և Յուլիանոսի ուրացողին: Քանզի ազգն Նետողաց դառնային ի դեն իսմայելականաց, և յաղագս մարմնասէր կրօնից օրէնադրին իւրեանց՝ յանձն առնուին զԹլփատութիւն. և արբանեկութեամբ նոցին բազում չարիս անցուցանէին յեկեղեցիս քրիստոնէից, և զպաշտօնս Աստուծոյ խափանել ջանային ի սուրբ եկեղեցեացն Աստուծոյ. և ի բազում տեղիս զբազումս յաւարի առեալ քակէին. զոր Տէր Յիսուս խափանեաց հզօր զօրութեամբ իւրով, և խափանեսցէ զյարձակումն նոցա: Իսկ ըմբռնեալ զքրիստոնեայսն դառն տանջանօք նեղէին ուրանալ զքրիստոսական հաւատոն որ ի Հայր և յՈրդի և յԱմենասուրբ Հոգի: — Դարձեալ տեղի ետուն, և եդին հարկս ի վերայ քրիստոնէից, և յամենայն գլխոյ առնուին եօթն (և) ութ դահեկան յամենայն ամի. կամ ուրանալ զՔրիստոս, կամ*

1. *Թէ և Յայսմաւուրաց մէջ գրուած է այս Յօդուածս՝ բայց քիչ Յայսմաւուրաց մէջ գտնուի. և ոչ այնքան իբրեւ վկայաբանութիւն հրատարակեմք (զի նմաններ շատ գտնուին), այլ միանգամայն և քաղաքական պատմութեան դէպք այն դժբաղդ ժամանակին:*

2. *Յայտնի է Թաթարաց այսպէս կոչուիլն:*

տալ զդահճեկանն՝ որ է խարան։ Զոր ոչ հնազանդեցան քաջահաւատքն և արիքն՝ աղանդից նոցա. այլ յանձն առին տալ զհարկն յամենայն ամի. և մերային սեռս և քրիստոսադաւան քրիստոնեայք՝ մտանէին ի լուծ հարկացն, և զոհութեամբ տային, զինչս և զստացուածս վաճառէին և տային յամենայն ամի. և յերկոտասան տարոյ մանկանէ առնուին զհարկն. և բազումք տարագիր եղեալ վասն հարկին. իսկ քրիստոնէիցն տալով զայս ամենայն անվրդով կացին ի հաւատս՝ որ ի Տէր մեր Յիսուս Քրիստոս։

Եւ արդ, մինչ էր (թուականս) Հայոց Չ և Հ (770—1321) ամպարիշտ ոմն յազգէն 'Նետողաց, որում անուն Գաւմուրդաշ ասէ, այսինքն՝ Երկաթաքար, անօրէնն զօր յաշխարհն Հոռոմոց. և ոտնեալ զերկիրն Հայոց զԿիլիկիա, զի որպէս ճիւղ մի ձիթենոյ Մնացեալ[1] դադարէին ի նեղ և ի յանձուկ և ի խորշակահար երկրին, բազում աւարանաց ի մէջ երկուց անօրէն ազգացն այն, Եգիպտացւոց և Ցարակլիացւոց[2]. Արդ, անօրէն Երկաթաքարն այն ի նախանձ մտեալ ընդ թագաւորն Հայոց՝ վասն իւրեք պատճառանաց, և խորհէր յաւարի առնուլ զերկիրն. խոստանայր միմեանց որպէս պարիծ, զօրս ժողովէր, հեծեալս կազմէր, զեսպանս առաքէր, զի ըմբռնեսցէ զթագաւորն Հայոց, և զաշխարհս աւար առցէ։ Զոր իմացեալ դշխոյն խորհուրդն նենգաւորին՝ ոչ հնազանդեցան հրամանի նորա, այլ ամրացոյն յիւրաքանչիւր դղեակս և յամրոցս և քարանձաւս և յայլ անառ-կլանիս[3]։ Եւ անօրէն Եր՝կաթաքարն այն մտեալ յերկիրն Հայոց՝ բազում հետևակօք և ձիաւորօք, և բազում աւերմունս արարին. և զհրաշափառ եկեղեցին զէջմիածինն[4] այրեցին հրով, ընդ նմին և զկէս

1. Ի Լեւոն թագաւորի որդի Օշնի առեն։
2. Իկոնիոնի (Ղոնիայ) սուլտանաց համար կ'ըսէ։
3. Այսինքն, յանառիկ կղպայս, ամուր բերդեր։
4. Սոյն մեծ եկեղեցեաց մէկն։

քաղաքին. նա և զվաստակ երկրին այրեցին, և անթիւ սպանին և գերի վարեցին։

Եւ եկեալ անդրէն եկին ի Կեսարիա Կապադովկացւոց, և զխաչն Երեխայ[1] առեալ մանրեցին, քանզի էր կազմեալ յոսկւոյ սրբոյ. և բազում քահանայս ի հռոմադաւան քրիստոնէիցն նահատակեցին. զոր Տէր Յիսուս հատուսցէ նոցա զհատուցումն նոցա նոցին։

Եւ զայն տեսեալ անօրէն դատաւոր ումն ի մայրաքաղաքէն Կարնոյ, քանզի ունէր նախանձ ինչ ընդ եպիսկոպոսս քաղաքին և առ քրիստոնեայս, գնաց առ չարիմաց Երկաթաքարն. և առեալ հրաման հրովարտակաց և զինուորս բազումս՝ գայ ի քաղաքն Կարնոյ. և ժողովեալ զբազմութիւն քաղաքին հանդերձ եպիսկոպոսաւն Տէր Գրիգորիւ, և զամիրաւ հրովարտակին կարդաց առաջի ամենայն բազմութեանն։ Եւ ըմբռնեալ զեպիսկոպոսն ընդ նմին և զնորին հօրեղբայրն զՏէր Պաւղոս, և բռնութեամբ կապեալ թլփատեցին, և դարձուցին ի հաւատս իւրեանց[2]։ Իսկ սուրբ եպիսկոպոսն ասէ, թէ, Մերկ եկին ամենայն ծնեալքն յաշխարհս, և մերկ ելանելոց եմք յաշխարհէ, ըստ աստուածաբան սուրբ Առաքելոյն Պօղոսի. որ ասէ, «Չունիմք քաղաք որ աստէն մնալոց է»։ Իսկ անօրէն զինուորքն և դատաւորն կապեցին զեպիսկոպոսն, և նստեալ յատենի կացուցին առաջի իւրեանց. և ի հարցանել և ի դատել զնա, և որպէս խաչահանողքն զՏէրն, ասեն բռնաւորքն. Ո՞ւր է խաչն՝ որ կազմեալ է յոսկւոյ, զոր դուք աստուած պաշտէք, և երկրպագութիւն տայք որպէս Աստուծոյ։ Եպիսկոպոսն ասէ. Մեք պատուէր ունիմք ի Տեառնէ մերմէ ոչ ստանալ ոսկի և ոչ արծաթ, ոչ ակունս,

1. Հայոց որբազան խաչից մին, որոյ աւանդութիւնն ինձ չէ ծանօթ։

2. Ոչ ի հաւատս իւրեանց դարձուցին, այլ ի ձեւս իւրեանց։

ոչ մարգարիտս, և ոչ հանդերձս փափուկս, այլ զՔրիստոս միայն ստանալ, զի ի Նորա արքայութիւնն վայելեմք։ Իսկ խաչն զոր ասէք եթէ աստուած պաշտէք, ոչ է Նա մեր Աստուած, այլ զէն Աստուծոյ և պատճառ երկրպագութեան։ Յայնժամ լցան ցասմամբ և բարկութեամբ բռնաւորն և դատաւորն, և հրամայեաց չար սպասաւորացն՝ զի երկաթի բրօք հարկանեն ընդ կուրծսն և զթիկունսն, մինչև բացան կողք և ոսկերք թիկանցն, զոր աւել ումանց՝ թէ մեռաւ։ Իսկ Նա ապրեալ լինէր զօրութեամբն Քրիստոսի. և թողեալ զեպիսկոպոսն կիսամահ անդէն ի տեղին, դիմեցին առ հասարակ քաղաքին ամբոխիւ՝ ի վերայ եկեղեցւոյ եպիսկոպոսին՝ որ յանուն Սրբոյ Կարապետին, և զսուրբ սեղանն յորմէ դողան հրեշտակքն՝ մանրեալ խորտակեցին. և զսպաս սրբութեան և զսուրբ աւետարանն հանդերձ հին և Նոր կտակարանօքն՝ յափշտակեցին ի տունս իւրեանց։ Եւ յորժամ թափեցին զչարութիւնս իւրեանց ի վերայ եկեղեցւոյն, ապա յայնժամ անօրէնքն ի խորհուրդ մտեալ՝ զի առաքեսցին ի դպրաց իւրեանց և յաւագաց նոցա, զի դաւաճանութեամբ առ իւրեանց կրօնս դարձուսցեն. զանձս ցուցանէին և խոստանային, զութս ցուցանէին մարդահաճութեամբ, ըստ օրինի մարգարէին սարակինոսաց։ Իսկ երանելի եպիսկոպոսն առ ոչինչ համարելով զպարգևս նոցա և զմեծութիւնս զոր խոստանային, և ոչ զդառն տանջանս զոր կտտանօք չարչարէին, ասելով զբանս Առաքելոյն, թէ, Յոյս իմ Քրիստոս է, և ես պատրաստ եմ մեռանել վասն անուանն Քրիստոսի։

Յայնժամ հրամայեաց անօրէն բռնաւորն հանդերձ դատաւորաւն անիրաւի՝ պիղծ դահճացն, զի սրով ճեղքեսցեն զգլուխ երկուց ծնկանցն, և աղիւ լնուլին զվէրսն, նոյնպէս և ներքանս ոտիցն։ Եւ այսպէս պրկեալ կայր բազում ժամանակ անմռունչ ի բազում ցաւոց, զոր իմացեալ անօրինացն թէ մեռաւ։ Ապա առեալ տարան ի տուն մի այլազգ-

ւոյ, և վստահացուցին[1] առ ի պահել զնա. իսկ նա զօրութեամբ Քրիստոսի կայր կենդանի։ Ասէ այրն այն. Քրիստոնէից եպիսկոպոս, բերի՞ց ջուր զի արբցես. և նա ասէ. Ոչ։ Ասէ բանտապետն, իբրև մարդասիրութիւն ցուցանելով. Տաց քեզ սակաւիկ մի կերակուր, զի այս քանի աւուրք են անսուաղ կեաս։ Ասէ եպիսկոպոսն. Կերակուր չէ ինչ պիտոյ. այլ ունիմ խնդիրս ի քէն, զի տացես ինձ սակաւիկ քարտէզ։ Եւ նորա բերեալ ետ զեպիսկոպոսն. և առեալ մուր՝ գրեաց ի ծածուկ առ քահանայս քաղաքին, զի տացեն մասն՝ զի հաղորդեսցի. ասելով, Թէ, Իմ կերակուրն այն է։ Եւ առեալ տարան զխուխտն առ քահանայսն՝ գաղտ. և նոքա առաքեցին ի ձեռն պատանւոյ միոյ. և առեալ զոհացաւ և ճաշակեաց. և համբարձեալ զձեռս իւր յերկինս՝ ասէ, Գոհանամ զքէն, Տէր։ Եւ զաւուրս քսան ոչ ճաշակեաց և ոչ արբ ջուր, այլ կերակուր և ըմպելի նորա՝ չարչարանքն եղեն. զի կերակրեալ լինէր նա ի շնորհացն Քրիստոսի։ Իսկ երանելի եպիսկոպոսն յայսպիսի մրցմունս և ի չարչարանս կեայր, քաջ հովիւն և զինուորն Քրիստոսի Տէր Գրիգորիս, համանուն իւր նմանին, մենամարտիկ եղեալ ի մեծ պատերազմին ապարիզի անօրինացն. և ոչ ետ գերել զքաղաքն զայն, նա և առաւել զբազում տեղիս, այլ յաղթեաց զօրութեամբն Քրիստոսի՝ Բելիարայ և զօրաց նորա. զի եթէ գտեալ էր տեղի չարն այն և քրիստոսատեաց դատաւորն՝ բազում չար խորհուրդս համբարեալ ունէին վարդապետաւն իւրեանց սատանայիւ, զի զքրիստոնեայս քաղաքին հրապուրէին յիւրեանց աղճատելի կրօնս։ Դարձեալ, զոր օրինակ ի ճակատոյն պատերազմին Գողիաթու Դաւիթ մարգարէն զդիմի կալաւ երիս քարեաւն[2] հեղեղատի

1. Խոստմունք առին այլազգիէն՝ որ պահէ զեպիսկոպոսն իր տան մէջ։
2. Երեք քարով։

և եհար զԳողիաթ, և եբարձ զնախատինս յԻս-րայելէ ; Նմանապէս երանելի սուրբ եպիսկոպոսն Գրիգորիս՝ յերիս ահաւոր անուն[1] յաղթելով առա-քինացաւ ընդդէմ անօրէնութեան Գողիաթայ, և ընդ-դիմացաւ անօրէն բռնաւորին և դատաւորին, և եբարձ զնախատինս հաւատոյ քրիստոնէից: Քանզի յամենայն ժամ քահանայքն քաղաքին և ճաճանչ քրիստոնեայքն[2] փախեալ կային ի մեծ վտանգէն ահիւ, զի հարին զհովիւն և հօտն ցրուեցան:

Ցայնժամ հասին վճիռ ի վերայ նորա, զի սպառ սպանցեն զերանելին. ապա կապեցին կրկին կա-պանօք, և տարան ի տեղի կատարմանն: Եւ նորա հայեցեալ այսր անդր, և ոչ զոք տեսանէր ի քրիս-տոնէիցն. քանզի ամենեքեան ահիւ մեծաւ փա-խուցեալ կային. ապա կնքեալ զինքն խաչիւն Քրիս-տոսի, յանձն արարեալ զհոգին իւր սեփական՝ ի ձեռն Տեառն, եկաց յաղօթս ի սրտի խորում, և ասէ. Տէր Յիսուս Քրիստոս որդի Աստուծոյ, որ յաղագս մեր հասարակաց փրկութեանս խոնարհեցար յերկնից և առեր մարմին ի Ս. Կուսէն Մարիամայ, կրելով զմեր բնութիւնն՝ բաց ի մեղաց, խաչեցար և եդար ի գերեզմանի, և յարեար ի մեռելոց և համբարձար առ Հայր, ընկալ զհոգի ծառայիս քո Գրիգորիսի, և խառնեա զարիւն իմ որ վասն քո հեղու՝ ընդ սուրբ արեան վկայից քոց, և շնորհեա եկեղեցեաց քրիստոնէից անդորրութիւն, և երկր-պագուաց Սրբոյ Երրորդութեանդ՝ կեանս խաղա-ղականս՝ ի կրկին ներհակաց. Հայրապետին մերոյ և ամենայն ուղղափառ եպիսկոպոսաց՝ համառօ-տել[3] զբանն ճշմարտութեան. քահանայից կատա-րողաց անմահ զենման պատարագին՝ մաքուր հոգ-

1. Յանուն Ամենասուրբ Երրորդութեան:

2. Կամ կարդալու է, «յամենայն ժամ քահա-»նայքն», կամ ժամ-քահանայք, իբր եկեղեցեաց քահանայքն. իսկ ճաճանչ քրիստոնեայք՝ ո՞վ են կամ ի՞նչ նշանակէ այդպիսի կոչումն:

3. Վարդապետել:

ւով սպասաւորել կենաց հացին. բարեպաշտ Թագաւորաց և իշխանաց քրիստոնէից՝ յաղթող լինել ի պատերազմունս բարբարոսաց. և համօրէն ամենայն հաւատացելոց՝ յիւրաքանչիւր վտանգից փըրկութիւն. ծառայից և գերեաց ազատութիւն. անմեղ արեանց դադարումն: — Եւ ապա խոնարհեցոյց զպարանոցն. և անօրէն դահիճն եհար սուսերաւ զգլուխ նորա սուրբ և ընտրեալ նոր մարտիրոսին, յունվար ԻԹ (29), յաւուր շաբաթի: Եւ կին մի բարեպաշտ ձգեալ զվարշամակ գլխոյն առաջի սրբոյն, և զարիւնն ոչ եթող հեղուլ յերկիր, այլ զամենայն մաքրեալ զկաթուած արեանն, և առեալ տարաւ ի տուն իւր՝ մեծաւ յուսով: Եւ հրամայեաց անօրէն բռնաւորն զի զգուշութեամբ պահեսցեն զմարմինն, զի մի՛ եկեալ ի գիշերի գողանայցեն հաւատացեալքն, և զորս ըմբռնեսցեն՝ պատուհասակոծ արասցեն. զի անդէն ի տեղւոջն կայցեն, լինել կերակուր գազանաց:

Իսկ յերկրորդում գիշերի մինչ պահէին պահապանքն զմարմին Սրբոյն, էջ լոյս յերկնից ի վերայ պատուական մարմնոյն. զոր տեսեալ բազմութիւն արանցն հաւատացելոցն՝ տային փառս Աստուծոյ: Եւ ապա հրաման տուեալ անօրէն դատաւորն, զի առցեն քրիստոնեայքն և ըստ օրինացն պահեսցեն զերկնային գանձն: Զոր իբրև լուան քահանայքն և ժողովուրդքն՝ առ հասարակ ժողովեցան, և առեալ զմարմինն տարան հանգուցին ի տաճար Սրբոյն Սարգսի Զօրավարին: Ապա անօրէն դատաւորն ըմբռնեալ զքրիստոնեայսն, և պատուհասակոծ արարին զբազումս. և առեալ զմարմին երանելոյն տարան ընկեցին ի տեղի կատարմանն, խնդրելով ի քրիստոնէից գանձս, մինչև տացեն զխնդրելին իւրեանց. և ապա ետուն հրաման երթալ և առնուլ զմարմին Սրբոյն. և եդին ի գերեզմանի, ի սուրբ տաճարն որ յանուն Ս. Կարապետին և Ս. Գրիգորի Լուսաւորչին, մեծաւ պատուով, ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ:

# ՅԾԶ

## ԱՌՈՒՄՆ ԱՅԱՍԱՅ ՅԵԳԻՊՏԱՑԻՈՑ

(ՆԵՐՍԷՍ ՊԱԼԻԵՆՑ)

Յամին Տեառն 1321, անօրէն բռնաւորն Թա-թարաց Դամուրտաշն՝ որ էր պարոն Հոռոմոց եր-կրին[1], զկնի մահուանն բարեպաշտ թագաւորին Հայոց Օշնի՝ որ փոխեցաւ յաստեացս, եթող զոր-դին իւր Լեւոն[2] տղայ ամաց. և զի իշխանքն կա-ռավարէին զթագաւորութիւնն՝ մինչ տղայն ի հա-սակ գայցէր[3]. յորում ժամանակի ասացեալ Դա-մուրտաշն բազում հեծելօք աւելի քան 30,000 և բազում հետեւակօք, այսինքն ամենայն ուրտուին[4] իւր՝ յանկամայ և բռնութեամբ ի յաշխարհն Հա-յոց ի Կիլիկիա մտաւ. և բազում աւեր արար. սպանութիւն և աւար. և բազում ջան եդ եթէ ամրոց ինչ կարիցէր առնուլ, բայց ոչ կարաց։ Այլ և ի նոյն Հայերոյն՝ Թաթարնին՝ բազում պակա-սութիւն և կորուստ յամանս անցս և ի կիրճս՝ ըն-կալան[5]. և եթէ ոչ էր լեալ զի ասէր Դամուրտաշն եթէ սիրելարար և ի տեսութիւն եմ եկեալ, և վասն այն զի երկնչէին Հայերն յայտնի միաբել

1. Թաթարաց տէրութեան կողմանէ Փոքր Ասիոյ կուսակալ ղրկուած, զոր ոմանք ի մերոց՝ ըստ ա-նուանն (Տէմիր դաշ) Երկաթաքար թարգմանեն, ինչ-պէս Նախընթաց Յօդուածը գրողն։

2. Ի կարգի համանուն թագաւորաց՝ Դ է սա, և ինն տարուան տղայ էր հօրը մեռած ատեն։

3. Տես Նախընթաց և Հետեւեալ Յօդուածը։

4. Օրտու, Թուրք բառ. բանակ զօրաց։

5. Թաթարներն այլ շատ վնաս՝ ջարդ՝ կրեցին ի Հայոց, անոնց լերանց նեղ անցքերէն անցնելու ատեն։

Թաթարին, թէ չիք՝՝[1] զամենայն կոտորեալ էին և սպառել։ Եւ իբրև եղ Դամուրտաշն ի Հայոց՝ ի ձմերայնի գոլով, ի գարունն մերձակայ ապրիլի քառն՝ զօրքն սուլտանին ԽՌ (40,000) հեծեալս և այլ անչափ հետևակս եկին ի նոյն երկիրն Հայոց, և եկեալ ի քաղաքն Եգէիոյ որ է Այաս, յերկրորդ օրն յօր տօնի Սրբոյն Գէորգեայ, 23 ապրիլի, առին զՄինային[2] բերդն, զի ծովն ցամաքեցաւ և ի ներս գնաց. և տաճկնին ի ծովէն եկին և կորեցին զճանապարհն որ ի ներսի բերդն, և ի ծովն չկարէր ոք գնալ. և գերեցին անթիւ անձինք և անբաւ աւար առին. և ապա նստան սղարելով ի վերայ ներսի բերդին. եդին բաբան և զամենայն ի փուլ ածին, և զամենայն դրունս և զպէկք Ռիզրան[3] քաղաքին բերեալ՝ կարմունճ կապեցին ընդ ծովն ի ներս՝ մինչ եկին մօտ պարսպի բերդին, և նետախոցով առնէին զմարդիկն՝ որ փայլէին ի դրանն կողմն դղեկին, որով յամենայն կողմանց սաստկացաւ մարտն։ Այլ և Թագաւորն Կիպրոսի առաքեաց խալէս[4] ինն յօգնութիւն քրիստոնէից որք կորստեան եղեն պատճառ քան փրկութեան. քանզի ամենայն ոք որ փախչէին ի բերդէն՝ ընդունէին և առնուին, և զամենայն ինչս եւս. որ լինէր իսկ զի ոչ ոք մնաց ի բերդն ի քաղաքացեացն, այլ իւրեանց ընչիւքն գնացին ի խալէքն։ Իբր այս լինէր՝ ի գիշերի հուր արկին ի բերդն, և թողեալ ի բաց գնացին ընդ ծովն։ Այսպէս կորեաւ Այաս երկոքին բերդովն իւր գերեալ ի տաճկացն։

1. Ապա թէ ոչ, եթէ այդ վախն չըլլար, Հայք կու ջարդէին զանոնք՝ լերանց նեղուցներէն անցնելնուն ատեն։

2. Նաւահանգստին բերդն։ Տես ի Սիսուան 357–60։

3. Անծանօթ այլազգի բառ. կարծեմ թէ վերջի մասն ջիւէր՝ թուրքարէն աղխ, փականք նշանակող է, իբր թէ դրանց փականքն եւս թալներ տարեր են։

4. Galée, պատերազմական նաւ։

Զայս աղէտ կսկծանաց իբրեւ լուէր պապն Ծոհաննէս (ԻԲ) առաքեաց 30.000 ֆլօռինս ոսկոյ, զի դարձեալ շինեսցեն զբերդն Այասայ, որ և առեալ զայն Հայոց՝ և բազում յոյժ յաւելլին ի վերայ և շինեցին զբերդսն զայնոսիկ առաւել յոյժ ամրագոյն և բարձրագոյն, և եկաց զամս ԺԶ (16)։ և ապա ի ժամանակս սոյն Պավարիս[1] և պապուն Բենետիքտոսի (ԺԲ) դարձեալ եկին տաճկնին մեծաւ սաստիւ, զի զամենայն Հայք առցեն. որ և երկուցեալ Հայերոյն կամաւ ետուն զԱյաս և զայլ ամենայն բերդս, և զերկիրն որ իւրեանց կողմէ Ջահուն գետոյն[2]. զոր առեալ ունին մինչեւ ցայսօր։

---

## ՑԾԷ

### ԿԻԼԻԿԻԱ ԱՌ Դ ԼԵՒՈՆԻՒ· ԱՍՊԱՏԱԿ ԵԳԻՊՏԱՑԻՈՑ ՅԱՅԱՍ

(ԲԱՐՍԵՂ Վ. ՄԱՇԿԵՒՈՐ[3])

Շնորհօք և ողորմութեամբն Աստուծոյ Հօր սկիզբն արարի գրոցս, և ձեռնտուութեամբ և օգնական լինելովն Քրիստոսի Յիսուսի Որդւոյն Աստուծոյ՝ ի գլուխ հանեալ կատարեցի, ես լոկ անուն վարդա-

1. Լուդովիկոս Պաւիերացի կայսր Գերմանիոյ։

2. Եգիպտացւոց տէրութեան սահմանակից Ջահան գետահովտին մասն՝ անոնց թողուցին Հայք։

3. Մեր միջին կամ Արծաթի դարուց մատենագրաց վերջինն կըրնայ կոչուիլ այս Բարսեղ Վարդապետս, որ անուամբ իր բնակած Մաշկեւոր կամ Մաշկւոր վանաց՝ կոչուի. անուննն այլ գուշակուի մաշկեղէն՝ կաշիէ զգեստ հագնելնուն համար. մէկ հատ ծանօթ գրուածն է Մարկոսի աւետարանի մեկնութիւնն, որոյ առաջին կէս մասն այլ կորսուած է։ Իր գրոց վերջին և քանի մի միջին կարճ յիշատակարանքն է Յօդուածս։

պետս Բարսեղ՝ զՄեկնութիւն սորոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի, որչափ աջողեաց և զօրացոյց՝ տալով մեզ միտս և բանս Հոգին Սուրբ Աստուածն ճշմարիտ։ Վասն որոյ աղաչեմ զգիտողսդ բանի և զընթերցողսդ սորին տառի՝ յիշել զմեզ ի բարի. ծնողօք, զարմիւք և երախտաւորօքն մերովք. զի մեծ տաժանմամբ և յոլով աշխատութեամբ եղեւ գրաւ սորա. և որք գրէք զսակաւ բանս և յիշէք զմեզ՝ գրեսջիք և դուք ի գիրն կենաց, և յիշեցեալ լիջիք ի միշտ բարւոյն Աստուծոյ, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն։

Եւ եղեւ գրաւ այսր Մեկնութեան ի թագաւորութեան Լեւոնի որդւոյ Օշնի՝[1] նորընծայ և դեռաբոյս մանկանն, յոյժ երկիւղածի և աստուածասէրի, զորոյ զթագաւորութիւնն՝ յաղագս տղայութեան իւրոյ՝ խնամեն և հոգան երեք մեծագոյն և փառաւոր իշխանքն, երկու եղբարքն հարազատ՝ Պարոն Օշին և Պարոն Կոստանդին[2], որք աստիճանաւ Աւագ Պարոն և Գունդստապլ կոչին. և երրորդն Պարոն Հեթում Նղրցի[3], որ խառնեալ և

1. Լեւոն Դ է ի կարգի այդ անուամբ Ռուբինեան թագաւորաց. հայրն Օշին որդի է Բ Լեւոնի։ Իր ցեղին վերջին օրինաւոր և բարի թագաւոր եղած է (1320–42) շատ խառնակ տարիներուն։

2. Հզօր և խորագէտ իշխանք էին. առաջինն Օշին Պայլ՝ տէր էր հռչակաւոր Կոռիկոս ծովաբերդի. առաջ շատ լաւ խնամեցին զտղահասակ թագաւորն. բայց ագահութեամբ ուզելով խաբել զնա և հարստանալ, վերջապէս խայտառակեցաւ իրենց անիրաւութիւնն և մահապարտ եղան։ Աւագ Պարոն կոչուէր թագաւորին խնամակալն՝ իբրեւ հայրագիր, նա և Պայլ. իսկ Գունդստապլն էր զօրապետ։ Ունիմք Պարոն Կոստանդնի համար գեղեցիկ գունափայլ գրուած Կցրդոց գիրք մի (բարակ խազերով եկեղեցւոյ երգոց) որոյ յիշատակարանն է այս երեսի վրայ դրուածն։

3. Նղիր անուամբ ամուր բերդի մի տէր էր այս Հեթում. Լատինք կամ Փռանկք Niger կոչած են

միացեալ է ընդ նմա՝ որպէս միտք ընդ հոգի և ընդ մարմին, ուղղելով զբոլոր տունն արքունի ի բարին, որպէս միտքն՝ զհոգին և զմարմինն[1]. զոր տացէ Քրիստոս Աստուած՝ զթագաւորն և զորքն՝ տոհմօք և զարմիւք իւրեանց՝ այսմ աշխարհի և եկեղեցւոյ իւրոյ սրբոյ՝ միշտ և հանապազ. և երկարեսցէ զտէրութիւն սոցա՝ անցանելով ի հօրէ յորդի՝ մինչև ի գալուստն իւր միւսանգամ։

Եւ գրեցաւ սա ի ժամս որ կոչի Մաշտոց, ի հայրապետութեան Տեառն Կոստանդեայ կաթուղիկոսի Դրազարկեցւոյ[2]. որ բազում աշխատութեամբ ջանայ և հնարի զխաղաղութիւն այսմ աշխարհի. որ մինչև ի Մսըր առ սուլտանն անձամբ անձին գնացեալ՝ ոչինչ համարելով զաշխատութիւն, թէպէտ ծեր և տկար էր մարմնով, և զխստութիւն և զդառնութիւն նորա ի կակղութիւն և ի քաղցրութիւն յեղաշրջեալ փոխեաց[3]. զոր տացէ զսա Քրիստոս Աստուած ընդ երկայն աւուրս՝ եկեղեցւոյ իւրում սրբոյ։

Եւ էր ի ժամանակիս յայսմիկ վերակացու և առաջնորդ սուրբ ուխտիս՝ Տէր Հայրապետ եպիսկոպոս, այր հեզ և բարեբարոյ. որ բազում խնամօք խնամէր զմեզ ամենայն մարմնաւոր պիտոյիւք, և իբրև զհայր հոգեւորապէս ի վիշտս և՛ ի տրտմութեանս սփոփէր և մխիթարէր։ Վասն որոյ աղաչեմ զամենեսեան որք հանդիպիք այսմ գրոց. յիշեցէք զսա ի բարին, և խնդրեցէք յԱստուծոյ՝ զի ըստ տրոցն և բարի կամացն իւրոց զոր առ մեզ ցուցեալ է՝ տացէ նմա առատ հարիւրապատիկ, և

զբերդն, որ իրենց լեզուով ռեւ նշանակէ, բայց մեր լեզուով՝ թռչնոյ մի անունն է։

1. Գեղեցիկ նմանութիւն. Իրանի մէջ և միշտ միամտութեամբ թագաւորին հետ այլ միացած ըլլային։

2. Կոստանդին անուամբ Գ կաթողիկոս (1324–7)։

3. Սուլտանին և Հայոց թագաւորին մէջ հաշտութեան դաշինք դնելու աշխատեցաւ։

անդ իւր և ծնողացն իւրոց զկեանսն յաւիտենից պարգևեսցէ։ Եւ էր Թիւ Հայոց ՉՀԴ (1325)։

* Նա և մեք յորժամ առաւ Այաս[1] և կարծեցաք թէ երկիրս աւերելոց է և ամենեքեան սատակելոց եմք, ո՛չ առաւել տրտմէաք։

* [2]Նոյնպէս և այժմ գաւառս Կիլիկիոյ գեղեցիկ և պայծառ երեւի նեղութեամբքն, քան զնոյն ինքն և զդրախտն Աստուծոյ. մանաւանդ տեղիքն՝ ուր կոտորուածք և սպանութիւնք գործեցան, և բուրէ ի նոցանէ այնքան զարմանալի հոտ, մինչ զի Տէրն և արարիչն ամենայնի հաստատեցաւ ի հոտ անուշութեան։... Ուր այսքան բազմութիւնք հաւատացելոց սպանեան յանհաւատից, տես թէ որքան տեղիքն այն հաճոյ և սիրելի է Քրիստոսի. Ուստի յայտ է թէ Պոյրձքն Եղիայիճ և Ճանկաղէսին՝[3] չեն փոքր քան զեկեղեցին Նիկոմիդացւոց՝

1. Գ (երրորդ) ձեռքին մէջ գրուած է այս։ Այն ատեն Այաս՝ եթէ ոչ ամենէն առաջին բայց առաջին վաճառաշահ քաղաքաց մէկն էր։

2. Թ ձեռքէն։ Մեծահաւատ զգայուն և արիասիրտ ոգւոյ գեղեցիկ խօսք է, ոչ նման մեր ուրիշ շատ լալկան պատմչաց յուսահատ կամ վատ խօսից։

3. Այսպայ շատ բուրգերու և աշտարակներու երկուքին անուանքն են, յայտնի չէ ինչ պատճառաւ այդպէս կոչուիլն. երկրորդին այլակերպ և օտար անուննն կըրնայ ըլլալ այն վերջի հատուածին մէջ յիշուած Թուրք լեզուով Ջանկ-գալէսի, իբր զանգակ ունող բերդ՝ որ և է լուր կամ վտանգ իմաց տուող, մանաւանդ այդ ծպտեալ լրտեսաց այցելութիւնը։ Նիկոմիդիոյ դիպուածին նմանցընելովը յայտնէ՝ որ ընդարձակ բերդեր կամ աշտարակներ էին դոքա, ուր շատ մարդ ապաւիններ էր, և այլազգեաց որով կոտորուեցան։ Նիկոմիդիոյ (Իզնիմիտ) դիպուածն ծանօթ է և հռչակուոր մեր եկեղեցիէն յատուկ տօնիւ. Դիոկղետիանոս և իր կայսերակիցն այն քաղքին մէջ պա-

ուր երկու բիւրքն վասն Քրիստոսի հրով այրեցան, այլ և մեծ և զարմանալի։

* Տէր խնամեսցէ զսակաւ ինչ մնացեալքս՝ սիրով և գթութեամբ, և աճեցուսցէ և բազմացուսցէ առաւել քան զչափն առաջին, և արասցէ մեզ դարձեալ տեսանել զաւերակսն և զանմարդաբնակսն՝ վերստին շինեալ և լցեալ բազում բնակչօք, մինչ զի ասիցեն՝ թէ, Նեղ է մեզ տեղիս, ընդարձակեսցուք, և այլն[1]։

* Որպէս տաճիկ լրտեաք՝ զգլխապատն քակելով և զվարսս կտրելով և զզգեստս փոխելով, և լեզուաւ մերով խօսելով՝ թագուցանեն ձեւովն զթշնամութիւն. իսկ եթէ տանջանս ի վերայ հասուցեն՝ վաղվաղակի յայտնի թագուցեալն[2]։

լատ մի չինելով երբեմն բնակէին. յանկարծ հրդեհեցաւ. թշնամիք՝ զքրիստոնեայս ամբաստանեցին իբրեւ կրակ ձգող, և հրաման աւրին զանոնք ջարդելու. հաւատացեալքն ապաւինեցան ի մեծ եկեղեցին. որոյ տանիքը քակելով անհաւատք՝ կրակ թափեցին, դըրսէն այլ պաշարած՝ չթողին որ դուրս ելնեն, և ամենքն ողջակիզեալ մարտիրոսացան, թէ և չափազանց թուի երկուց բիւրուց թիւն (20,000). անշուշտ եկեղեցիէն դուրս ջարդուածներն այլ համրելու է։

1. Վերոյիշեալ (2) բանծին համեմատ լի հաւատով և յուսով քաջ քրիստոնէի խօսք։

2. Ընթերցողն դատէ թէ ինչ բանի համար այդպիսի օտարք հայերէն լեզու սովրեր և գործածեր են։

# ՑԾԸ

## ՊԱՐԳԵՒԱԳԻՐ Դ ԼԵՒՈՆԻ ԱՌ ՍԻԿԻԼԻԱՑԻՍ[1]

Յանուն Հաւր և Որդւոյ և ճշմարիտ կենդանարար Սուրբ Հոգւոյն. ամէն։

ԼԵՒՈՆ ի Քրիստոս Աստուած հաւատացեալ չնոր-

1. Անտարակոյս է որ Ռուբինեանց տէրութիւնն և մանաւանդ Ա Լեւոնի Հայոց թագաւորութիւն կանգնելն՝ պատճառ եղաւ մեծ յարաբերութեանց ընդ տէրութեանց Եւրոպացւոց, որ ի սկզբանէ ԺԳ դարու ցկէս ԺԴին գրեթէ անընդհատ տեւեցին, և երկուստեք գրաւոր կապեր կամ թղթակցութիւնք եղան, յորս նշանաւորք են Հայոց թագաւորաց առ նոսա շնորհած ազատութիւններն, պայմաններն և դաշինքն՝ նկատմամբ վաճառականութեան. այս բաներուս գրուածքն կոչեմք Պարգեւագիր, զոր մեր գրողքն եւրոպական բառով գրեր և կոչեր են **Բրիվիլիճ**, Privilège. Եթէ ժամանակին ամեն եւրոպացի վաճառական ազգաց կամ անոնց վաճառականաց տուած են այս Առանձնաշնորհութիւնքն (ինչպէս սովորութիւն է թարգմանել **Բրիվիլիճ** բառը), յորս ծանօթագոյն են Իտալացիքն, **Վենետիկեցիք**, **Ճենովացիք**, **Ֆիորենցացիք**, **Բիաչենցացիք**, **Պիզացիք**, **Սիկիլիացիք**, **Կատալանք** և այլ Սպանիացիք, **Մոնբելիացիք** (**Մոնբլուզ** կոչուածք ի մերայոց)։

Այս գրուածոց ծանօթքն յիշմամբ կամ իրօք հասած ըլլալով՝ հիմայ իբրեւ 20 կամ 30, հաւատեն՝ թէ հարիւրաւոր եղած պիտի ըլլան այն դար ու կէս Հայոց թագաւորութեան միջոց. այլ մեծաւ մասամբ կորած և անյայտ, ոչ միայն մեր աւերկոծեալ և կողոպտեալ երկրին մէջ, այլ նաև եւրոպական դիւանաց մէջ, ինչուան մեր օրերում. որոյ հարկ է վկայ բերել այս Դ Լեւոնի ներկայ իսկական Պարգեւագիրն, որ արքունի ձեռնագրաւն և ոսկի կնքով պահուէր յարքունի դիւանատան Մեսսինայ Սիկիլիոյ. և երբ ի

հաւքն և ողորմութեամբ Նորին Թագաւոր ամենայն Հայոց, որդի ի Քրիստոս հանգուցեալ արքային Հայոց Աւշնի Առաջնոյ, կարող և բարձր ի պայծառ

Հրատարակել մեր զՍիսուան ուղեցինք՝ պաշտօնական միջոցաւ՝ ունենալ այդ Թագաւորի ձեռնագրին նմանօրինակը, ծանուցին՝ որ 1849ի քաղաքական շփոթմանց տանն՝ այն քաղքի գիւանաց հին գրուածքն մասամբ այրուած են, մասամբ ցրուած և անյայտ եղած, որոց հետ և մեր Լեւոնինն։ Այս դժբաղդութեան մէջ բաւական բաղդաւոր կըրնամք զմեզ համարիլ, որ բնագրէն և ոչ երեք դար վերջը, 1603ին գաղափարուած և վաւերացեալ օրինակ մի ունիմք։ Բնագիրն կ'ըսուի 1330ին արուած Յովհաննէս Երիցանցի ջանցլերութեան տան (քարտուղարի) և Վասիլ արքայահատութեան, զոր սմանք արքայահայրութեան ուզեր են կարդալ. բայց այդպիսի արքայահայր կամ Պայլ Լեւոնի՝ ծանօթ չէ. ծանօթ են իր տղջի խնամակալքն. Պայլն Կոստանդին, և այլն. Վասիլի գրածն այլ կարդալու է գ տառի. արգահատութիւն, որ նոյնպէս խնամք՝ հոգողութիւն նշանակէ. այսպէս այլ կ'ըսէ լատին հին թարգմանութիւնն, Per Procurationem Basilii servi Dei. Բայց անմիջապէս ասոր կցուածն՝ թէ հայերէնին մէջ «և շնորհողի այսմ վերոյգրեալ » պարգեւացս», և թէ լատինին՝ առանց եւի (Servi Dei concessoris Gratiis suprascriptis), տարակոյս պատճառէ, թէ ո՞վ է պարգեւաց շնորհողն. անկարելի է որ Վասիլ ըլլայ. այլ թուի թէ յետ գրելու «Ծառայի Աստուծոյ·եւ» պէտք էր Լեւոնի անունը գրած ըլլար. եթէ թէ Վասիլ էր ծառայ Աստուծոյ և Լեւոնի շնորհողի. և այլն. և զի թագաւորին անունը ոչ ոք համարձակէր գրել՝ անուան տեղն պարապ թողցեր է, և թագաւորն բաւական համարեր է վերջին ստորագրութիւնն։ Յիշեցընեմք և զայս՝ որ թուականէս տասն տարի առաջ (1321) մարտի մէկին առաջին պարգեւագիր մ'այլ տուեր էր Լեւոն, որ այն տեն 12 տարուան էր. ասոր փռանկերէն հին թարգմանութիւնն կայ, յորում Վասիլ յիշուի գրագիր կոչմամբ, L'a ecrit Vasile le Escrivain. Պարգեւագրիս վաւերութիւնը կամ պատմութիւնը բովանդակելու

և բարի արմատոյն Ռուբինեաց․ Ծանուցանեմք ձեզ ամենեցուն որք այժմ էք և որք զկնի մեր գալոց էք․ Քանզի որպէս աւրէն՝ և սովորութիւն է Թա-

համար աւելցընենք, որ նոյն տրուած թուականէն քանի մի ամիս վերջ (6 յանուարի) լատին թարգմանութիւնը վաւերացուցեր է հասարակաց նոտար մը որ և նուիրակ (nuncius, սրոյ), Deutisalvi (Աստուածապրեցոյց) De Callio կոչուած՝ ի Սիս մայրաքաղաքի, ի տան՝ հայերէնը բառ առ բառ թարգմանողին, որ է եղեր Եղբայր Թադէոս եպիսկոպոս Occichense կոչուած տեղւոյ․ Եղբայր կոչումն յայտնէ որ կրօնաւոր էր և հաւանօրէն Դոմինիկեան և Միաբանող․ այդ ժամանակ՝ յառաջին կիսում ԺԴ դարու՝ ծանօթ է Թադէոս Միաբանող՝ եպիսկոպոս Կաֆայի․ իսկ այդ լատիններէն գրուած տեղն՝ անծանօթ, եթէ չէ գրեթէ նոյնպէս գրուածն Ocensis կամ Occensis, թեմ մի Կիւզիկիոյ (Մարմարայի ծովու մօտեր) մետրապօլտութեան ներքեւ։ Վկայ եղեր են նոտարին ուրիշ կրօնաւոր եպիսկոպոս մի՝ Բեռնարդ De Agorgonesi, անյայտ տեղւոյ, և Ռոպեր գանձապահ եկեղեցւոյն Բաւիոյ։ Իսկ մեր ունեցած վաւերական պատճէնը գրած է յ՚3 մարտի 1605, Պետրոս Փրանկիսկոս Papard, արքունի նոտարն, վաւերացուցեր է Պետրոս de Elhoyo ապանիացի արքայքննիչն՝ ի Մեսինէ։

Ոչ շատ վերջը, գուցէ և նոյն տարին՝ այս օրինակին եռեւը գրած է մեր ծանօթ Աբգար տպագրին ցեղէն նշանաւոր եկեղեցականն, « Ես Տէր Բարդողիմէոս » Աբկարացի այս թագաւորին հրամանէ՝ հաստատեմ » զօր գրեալ է »։ Քիչ վերջը ուրիշ ազգային մի գրեր է․ « Սիսա Հայոց թագաւորը տվեր է այս բաթենթան » Սիցիլեացոց, որ երթան ու գան »։ Մաղաքիա ժամանակագրին ծանօթ է եղեր այս Պարգեւագիրս, զի գրէ ի կարգի ժամանակին, ՉՁ, 1331 թուին․ « Լեւոն » թագաւոր Դ եդ ուխտս և դաշինս ընդ Սիծելեանան » Ֆռանկաց՝ վասն վաճառականութեան, որ ազատ » լինին յարքունական հարկէ »։

1․ Այսպէս Պարգեւագրիս առաջին քանի մի տողից առ երկբարբառի վրայ դրուած է այդ բնակարճ կոչուած երգի խազն (՛)։

գաւորաց բարէպաշտից ի Քրիստոս Աստուած հաւատացեալ երանելի նախնեացն մերոց և մեր՝ պատուել զամենեսեան առատաձիր պարգեւաւք ձաւտարս և զընտանիս յաստուածային առատաձեռնութեանն պարգեւացն՝ որ տուեալ է մեզ ի վերուստ՝ այնոցիկ որ խնդիր ելանեն մերոց պարգեւացն. Նայ ըստ այսմ աւրինակի եկին առաջի մերոյ թագաւորութեանս սիրեցեալ և ականաւոր բնակիչքն Սիծիլոյ և խնդրեցին պարգեւս ի շնորհս մերոյ թագաւորութենէս տարածանել յիւրեանքն առ հասարակ. Նա վասն պածառ և երեւելի իշխանին շնորհաւքն Աստուծոյ՝ թագաւորին և մեր պանծալի հաւրն Ըռէ Ֆտրկայ[1] սիրոյն և հարկեցն՝ ընդունեցանք զիւրեանց խնդրուածքն, պարտ և արժան համարեցաք առնել իւրեանց շնորհս ըստ յուսոյն իւրեանց զոր խնդրեցին ի մերոյ թագաւորութենէս, և պարգեւեցաք ամէն Սիծիլեանցն որք են Սիծիլեանք և Սիծիլիանի որդիք, որք են և որք գալոց են, որ լինին սիրածոյ, հարկեւորածոյ պահածու և նախախնամած, իւրեանք և իւրեանց անձներովն ու ըռըզակովն՝ ի մեր թագաւորութենէս և ի մեր ամենայն հնազանդելոցն, և ունայն[2] ազատութիւն զինչ ի ծովէն ի յերկիրս մտցեն, և զինչ որ մեր յերկրէս ի ծովն հանեն ու տանին. Նայ զինչ գնեն ու ծախեն ի մեր ընթանուր աս-

1. Ֆրետրիկ Ա (1296–36) որոյ դուստրը Իզապելլա կամ Կոստանդիա կին առեր էր Լեւոն Դ մէկ կամ երկու տարի առաջ, անոր համար իրեն հայր անուանէ կնկան հայրը։ Իզապել նախ ամուսնացեր էր Կիպրոսի Բ Ենրիկոս թագաւորի, բայց կոյս մնացած ինչուան անոր մահուան ատեն (1324). յետ որոյ վեց փափագողք կամ խնդրողք եղած են իրեն, Լեւոն բաղդաւոր գտուեր է, ինքն այլ այրի ըլլալով. զնա իրեն հարսնացընելու և Սիկիլիացւոց հետ դաշնակցելու։
2. Պէտք էր գրել ունեան, այսինքն՝ ունենան։

տուածապաշս[1], նայ զայն որ կշեռք մտնէ՝ տան ի հարիւրէն երկու, այլ աւելի իրաւունք չտան, թողաք իրենցն. Եւ զայն իրքն որ կշեռք չմտնէ գնեն ու ծախեն՝ ազատ լնի ի յամենայն ազգ հարկաց և իրաւանց, զարդ ի սմսարչէքն[2], որ սմսարչէք մէն տան, ի պաւման որ աւտար նաւ կամ աւտար գեմնի[3] մարդ կամ ըռըզակ չառնուն հետ իւրեանց՝ որպէս Սիծիլիան խլսեն[4]. Ու թէ գտնվի ով անէ այսպէս՝ նայ կորցնէ զիւր ազատութիւնն յաւիտեանս:

Ու թէ ղալապայ[5] լինի ի մեր յերկիրս յետ երկու Սծիլիայն կամ որ մէկն Հայ մարդ լինի կամ ընդ այլազգ կամ արիւն, էնոր իրաւունքն և դատաստանն ի մեր դարպասն լինի. Եւ թէ Սծիլանն պակասութիւն[6] անէ ի մեր երկիրս ժողովրդեան և կամ թախտաճ[7], թէ բուրճէս[8] լինի մեր և կամ բնակիչ երկրիս՝ որ երթայ զենկւածն[9] ի դարպասն[10] ու գանկտի և յայտնէ զիւր զենն զոր իրն արած

1. Այսպէս սովոր էին թագաւորքս Հայոց կոչել իրենց մայրաքաղաքն ու երկիրը:

2. Իբրեւ մաքս՝ կշռելի նիւթոց 2 առ 100 պահանջէ. չկշռուելի նիւթերն՝ ազատ ըլլան ի հարկէ, միայն միջնորդաց իրաւունքը տան, այն է սմսարչէքն, իտ. Sensaria, ֆռ. Courtage.

3. Ընկերական տէրութիւն. Հասարակապետութիւն, Commune բառն է գրածն՝ հոլովելով (գըմնին). այնպէս կոչուէին այն ատեն գրեթէ ամեն իտալական քաղաքք ինքնիշխանք:

4. Կ'արգելու որ Սիկիլիացին խաբէութեամբ օտար քաղաքացին Սիկիլիացի չձեւացընէ, զնա այլ մաքսէ ազատելու համար:

5. Հակառակութիւն, կռիւ:

6. Վնաս, զեն, զրկանք:

7. Մեծ վնաս, պատուհաս:

8. Աղնուական քաղաքացի, Bourgeois.

9. Վնասուածն, զրկուածն:

10. Ատեան, դատաստանարան:

լինին, նայ դարպասն կուչէ ի Սիծիլիանցն զով գտնուի ի մեր երկիրս, որ կենայ ու Սիծիլիանոնցն հաստատէ զպակասութիւնն զոր արել լնին այն մարդուն. յայնժամ Սծիլիան(քն) պարտին որ դրեն թուխտ ու յըղըրկեն ի Սծիլիան, թէ, Այս անուն մարդ ի ֆլան տեղ այս անուն մարդոյ ի Հայոց զեն արար, ու պակասութիւն այսչափ իրք. ապայ տան տարի մի համբերութիւնն[1], կամ ըղըրկեն զենն զոր արած լնի, կամ զենին անողն՝ որ զայ վճարէ զոր արած լնի. ու թէ զենին անողն մեռած լնի՝ նայ յընչիցն առնուն տղորկեն զենն՝ զինչ արած լնին. Ու թէ յերբ իմաց լնի իրանց Սծիլիանց ի Սծիլն՝ մինչ ի տարին և չըղըրկեն զենն կամ անաւղն, զինչ Սծլայեցիք կան յերկիրս՝ բռնուին որ վճարեն զենն զոր արել լնին Սիծիլանքն մեր բնակչացն՝ զոր կեցնվի[2] ի դարպաս: Եւ իրենք սիրեցեալ բնակիչքն Սիծլիանքն որք են Սիծիլիան Սծիլիանի որդիք՝ որք են և որք գալոց են, բռնած լինին պահել ընդդէմ[3] մեզ հաւատարմութիւն և յետ մեր ժառանգաւորացն, հիմա և յայսկից ի յետ, ըղորդ և անարատ սէր և հաւատարմութիւն՝ իւրեանց ամենայն կարողութեամբն, ի ծով և ի ցամաք, մեզ և մեր յերկիրս ամէն ժողովրդեան յոր տեղ աւր գտնվին իւրեանց ամէն կարողութիւն հաւատարմութեանն, առանց ամէն ազգ խաբէութեան:

Ցայամ հետէ չունի ոք իշխանութիւն ի թագաւորութեանս մերոյ ամենայն հնազանդելոցն մեծամեծաց մինչ ի փոքունս մերոյ թագաւորական բարձր հրամանիս հակառակ և կամ ընդդիմակաց կալ, կամ փառաւոր և սիրեցեալ բնակչաց Սծի-

1. Տարուան մի չափ ատեն տան:

2. Ինչ որ յայտնուի կամ հաստատուի դատաստանաւ:

3. Պարտական ըլլան հաւատարմութիւն պահել մեզի հետ:

լանցն ուժ կամ նեղութիւն տանել, կամ իրէնցնէ առնելի հարկ կամ իրաւունք պահանջել. այլ մնասցէ հաստատուն ամենայն մի ըստ միոջէ՝ որպէս վերոյ ենք շնորհել, առանց հակառակելոյ ումեքէ. վասն իւրոյ[1] պարգեւեցաք իւրէցն զմեր բարձր Շքեղս[2] և շնորհաւոր Բովլիձս. Եւ յաղագս առաւել հաստատութեան ձեռնագրեցաք մերով Թագաւորական բարձր ձեռնագրեաւս և կնքեցաք արքունական ոսկի վուլովս[3], ի փառս անեղին Աստուծոյ. ամէն:

Գրեցաւ ի Թվականութեանն մարդեղանալոյն Քրիստոսի յուսոյն մերոյ, ՌՅԼ (1330), ի Հայոց Մեծաց Թուիս ՉՁ (780). ի յԸնտիքտիոնիս[4] Հռոմայ ԺԵ (15), և յամսեանն Նոյեմբերի ԻԴ (24). Ի Ջանցլերութեան Յանէս Իրիցանց, և արքայահատութեան Վասիլի ծառայի Աստուծոյ և շնորհողի այսմ վերոյգրեալ պարգեւացս:



## ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ.

1. Սխալ գրուած է, ուղիղն է վասն որոյ:
2. Փոխանակ գրելու Սիձեղս կամ Սձիղս, այսինքն Sigillum, կնիք. նշանակէ արքունի կնքով հրամանագիր:
3. Bulle.
4. Ընդիկտիոն, 15 տարուան շրջանն:

Ապա այլազգն այն անհաւան...
Օձ և կարիճ ի յիժ նըման
Զերթ քացխով տիկ չարեօք լըցան
Ժողովք առին ու ի Սիս եկան.
Մանչակ անուն չարեաց աման[1]
Մօտ ի քաղաքն եկան հասան։
Վաթսուն հազար մարդ միաբան
Զրեհն հագան ու ի ձին հեծան.
Զեռուին առին ըզռում ճօճան[2]
Թուր և ասպար, ու կանգնեցան։
Վաթսուն հազար (զօրաց) ելան,
Զայն ձըգեցին ու կատղեցան.
Հարին ըզփող պատերազմին,
Ըզպուշկն ու զնաֆիրն ըզգաւճարկան[3]։
Այն անօրէն չար կենդանիքն
Որ են նոքա այլանըման,
Եւ ի յահէն Քաջ Լիպարտին
Զինչ զուռ դողան[4] ու առաջ չիգան։
Յայնժամ ասէ սուրբ թագաւորն.
«Քաջ Լիպարիտ, մեծ զօրական,
» Հեծելըս քեզ համար եկան
» Մինչ յայս տեղիս ուր կանգնեցան.
» Վաթսուն հազար մարդ կոտրեցիր
» Որ զՄանչակին գոված տղան առիր[5],

1. Կամ Միշաք. Եգիպտոսի սուլտանին զօրավարն էր՝ Շահար օղլի մականուանեալ։

2. Ծօճացող ռումբն, նիզակի տեսակ զէնք մի երեւցընէ։

3. Պուշկն նեղ փող է, եղեգի նման. երգեհոնի փողերն այլ պուշկ կոչուած են ի մերոցս։ Նէֆիր այլ փող նշանակէ պարսկերէն։ Երրորդ անունն այլ ասոնց նման փչողական ձայնահան գործիք մի յայտնուի. սակայն անունը չգիտեմ։

4. Ինչպէս ծառոց ճիւղերն հովերէ շարժած։

5. Երեւի թէ Լիպարիտ գերի բռներ էր Մանչակի որդին։

» Զթախտըն տուլթանայ բերիր.
» Զիանուն չատ թախտան (արիր)[1] »։
Բաղցրիկ եղուր պատասխանի.
Թէ, « Ես քաղքիս չարին փախան.
» Բայց չէ պատեհ զըրուց տանել[2].
» Թէպէտ հաստ ինձ որ մահուան »։
Էջ և թամրեաց զիւր ձին վազան.
Հագաւ զըրեհ և ի վրայ ծօչայ[3].
Ի գլուխ եդիր յաղթող վահան.
Ի ձեռն էառ ըղտուոմ ճօճան։
Երկըրպագեաց սուրբ աթոռոյն,
Եւ ծունր եդիր ամէն խորան.
Փառաւորեաց զԵրրորդութիւն,
Գովեաց զիշխանըն միաբան։
Հառչեաց, զորդեակըն համբուրեաց,
Հանց որ զհեծելն ի լաց եհան.
Ասաց. Որդեակ իմ Ցովհաննէս,
Վասն եղբայր իմ սիրական,
Փառօք տիկին դու Մանանայ[4],
Իշխանուհի արեւնըման,
Հայեաց պատկերս ի մանկութեան
Որ տի մտնում ի հող տապան։
Բաց Լիպարիտ ասաց ցորքայն.
« Հայոց թագւոր ազնըւական,
» Հաստատ և ամուր պահէ զկամուրճն[5]
» Որ ես մտնում ի մէջն ու գամ »։

1. Երեւի որ Լիպարիտ ձիոց մեծ ջարդ ըրեր է։
2. Թուի թէ պակաս բան կայ այս տեղ՝ զի մութ է իմաստն։
3. Կուրծքի փայլուն զրահ։
4. Անշուշտ իր կինն էր։
5. Լիպարիտ երեւի թէ կասկածէր որ զինքը մատնեն այլազգեաց, ազատ թողլով անոնց Սըռոյ կամուրջէն անցնիլ, կամ կամուրջը բռնելով՝ արգիլել Լիպարտի դարձը, և այնպէս եղեր է. վատ և չար նախանձու մատնութեամբ։

Յիշեաց զՔրիստոս ահեղաձայն,
Կըտրեց ւ անցաւ առիւծանման,
Զհեծելն արար փախըստական
Ի ի հետն երթայր ընծանըման,
Լաշկարաւ[1] դիզան դիզան
Հանց որ արիւն գետեր ելան։
Նա թագաւորըն չարացաւ,
Զհեծելն առին ու ի յետ դարձան։
Թուրքաց հեծելն յառաջ եկին,
Զկարմունջն առին ու կանգնեցան։
Երբ Լիպարիտն ե յետ դարձաւ՝
Նա չար հեծելն ի դէմ ելան.
Ըզռումբ դըրին ամեն դիմաց,
Շատ խոցեցին զյաղթող վըկայն.
Հայեր ողորմ յաջ և ի ձախ.
Ոչ ոք գըտաւ իւր օգնական։
Գազանադէմ անօրինին
Սըրբոյն արեան ծարաւէին.
Զիւր սուրբ մարմինն ի հոն թողին,
Զգլուխն առին ի հետ տարին։
Երրոր հեծելքն ե յետ գնացին՝
Ի ապա Սըւցիքն ի դուրս ելան.
Կրկին առին ի Սիս եկան,
Քաղքին կըրակ զարկին ւ ելան։
Շատ դարպասնին աւեր ածին,
Յեկեղեցեացըն զանազան
Երէց կանանց գերի տարան,
Սարկաւագունքըս միաբան։
Լոյս ճառագթեց լոյսն ի վերան
Եւ սուրբ մարմնոյն ի հանգըստեան։
Քաջ Լիպարիտ, ուսիր Յոհան,

1. Հաւանօրէն լաշկ արաւ, այսինքն դիակներ, մե֊ռած մարմիններ դիզեց. Թուրք. բառ, չէչ. չատ մարդ ջարդեց, դիակն ըրաւ։

Քրիստոնէից համար մեռան[1]։
Յոր տեղ Նըստին հաց ու ի սեղան՝
Ժողովք բազում և շատ իշխան,
Յիշեն ըզնա սուրբ քահանայք,
Տան ողորմի ասեն Նըմա։
Խէվ Յովհաննէս Թուլկարանցին՝
Կարճ և ողորմ ասաց զայս բան.
Դուք յիշեցէք վինքն հանապազ,
Յառակ ասէք ի մի բերան։

Բ[2].

Հոգևովըդ սուրբ ես և ամբիծ,
Զքեզ էր ընտրեալ Տէրն ի յերկնից.
Պարծանք եղեր քրիստոնէից,
Ո՜վ մեծ հզօր քաջ Լիպարիտ։
Անձամբըդ քաջ Սամփսոն էիր,
Յորժամ ձօշանըդ հագնէիր՝
Թո..ն ի յահէդ դառնայր մոխիր։ — Ո՜վ մեծ։...
Արեգական Նըման պայծառ
Երեսըդ լոյս էր կամար.
Բարքըդ բարի, խրատըդ շաքար։ — Ո՜վ մեծ։
Բնութեամբ բարի դէմ աղքատաց,
Լըսող էիր վարդապետաց,
Քո բանդ յամէն երկիր գոված։ — Ո՜վ մեծ։
Զանձնըդ տըւիր վասն օրէնաց
Մէ՛ն կանգնելով հազրի դիմաց,
Քու սուրըդ շատ արտեր եբաց[3]։ — Ո՜վ մեծ։

1. Ուրիշ օրինակ մի գրած է,
« Քաջ Լիպարիտ՝ ուսիր Յոհան,
» Քրիստոնէից համար մեռաւ »։

2. Քան զԹլկուրանցոյն (յորմէ առած է քանի մի բան) աւելի ռամկական է, այլ և աւելի զգայուն։ Վերջի տունքն յաւելուած թուին և պակաս շնորհքով։

3. Ի բաց գրուած էր. կարծեմ ուզէ ըսել, թէ մարդ ջարդելով՝ անոնց թաղելու համար արտեր բացուեցան։

Դու հազարաց դէմ պահապան
Մարդ չէ տեսեր քեզիկ նըման
Այս հողածինքս որ յերկրի կան։ — Ո՛վ մեծ։
Սըսայ երկրիս աստղ լուսատու,
Կանգնող էիր յամէն ժամու.
Թո..ն ի յահէդ սարսէր մահու։ — Ո՛վ մեծ։
Այն չար պահիկն որ քեզ հասաւ՝
Քեզի օգնող չըկայր բընաւ.
Անձնըդ կարմիր գոյն ներկեցաւ։ — Ո՛վ մեծ։
Ձայն չարաչար մահն որ տեսար,
Կըսկիծ է մորն որ դուն ծընար[1].
Աւա՜ղ ըզքեզ բերան հազար։ — Ո՛վ մեծ։
Սըսայ երկրին պաղչա ու ծառ
Գոյնք ի գունաց ծաղկունք որ կայր՝
Հառաչանօք առին զիրար[2]։ — Ո՛վ մեծ։
Կաթողիկոս և վարդապետ,
Սուրբ քահանայք ամենն ի հետ,
Շատ արտասուօք սըրտերն երեր։ — Ո՛վ մեծ։
Հիւսիսային հողմըն հիմիկ[3]
Սարգիս՝ յիշող եղաւ քեզիկ.
Դուն սիւն էիր Հայոց մեզիկ։ — Ո՛վ մեծ։
Է Աստուծոյ անունն օրհնած
Որ անըսկիզբն և անվախճան
Որ ուժ երետ քուչ Լիպարտին
Եւ զօրացոյց զիւր սուրբ ծառայն։
Ի Սուրբ Սարգիս քաջին նըման
Ի Սուրբ Թորոս, ի Սուրբ Վարդան,
Քան ըզՄուշեղն այլ խիստ յաղթող,
Քան ըզՏըրդատ Հայոց արքայն։

1. Շատ սուր և զգայուն անդրադարձութիւն։
2. Լալով իրարու վրայ ընկան, զիրար կոծեցին։
3. Յիշեցընէ Ս. Սարգսի համար երգուած շարականը, «Աւետաւոր Հայոց Մեծաց դիմեալ ի մէջ եր-
» կրի ի հիւսիսոյ՝ հողմն հարաւոյ ի դաշտ ծաղ-
» կածին, երագահաս Սուրբըդ Սարգիս». և այլն։

Պատերազմել եկեր հափայն[1]
Ամեն տարի տասն ու քըսան,
Ինքն ըզթումանըն հալածէր[2]
Արիւն հանէր գետեր Ջիհան[3]։

# ՅԿ

## ԱՌՈՒՄՆ ՍՍՈՅ ՅԵԳԻՊՏԱՑԻՈՑ ԵՒ ԳԵՐՈՒԹԻՒՆ ԼԵՒՈՆԻ (Ե) ԼԵՐՋՆՈՅ[4]

(ՅԻՇԱՏԱԿԱԳԻՐՔ)

### Ա.

Ի ՊԻԴ (Թուին 1375) բարկացաւ Աստուած ի վերայ քաղաքին Սիսոյ, ու սղարեցին[5] զբերդն սեպտեմբերէն ու մինչուր[6] ի յապրիլ ԺԶ (16), ու տուին զբերդն, որն ուրբաթ, ոչ այլ իրաց[7] քանց ի սովոյ, որ մարծպան[8] մի ցորենի ԳԾ ԳՐ[9] չէր

1. Ուղի՞ղ թէ սխալ՝ ինձ անծանօթ. եկեր՝ թուի թէ գալ բային եկիր, եկաւ նշանակէ։
2. Հազար ու բիւր թշնամի զօրք հալածէր։
3. Սոոյ երկրին, Կիլիկիոյ շատ անգամ յիշուած մեծագոյն մէկ գետն։
4. Այս մեծ և ազալի դիպուածին, Սսոյ առմամբ Հայոց Թագաւորութեան վերնալուն, երկարօրէն գըրուած մի չեմք գտած ժամանակակիցներէ, զուցէ գրիչնին և տրտերնին առաջ չէ գնացել. այս կարճ յիշատակներս այլ մէկ մէկ հառաչանք թուին։
5. Պաշարեցին։
6. Մինչեւ։
7. Ոչ ուրիշ պատճառաւ բայց սովու։
8. Առաքէլ Սիւնեցի, ԺԵ դարու գրիչ՝ Մարծպանը կ'ըսէ, «ցորենոյ չափ է, վեց քիլակ (քիլէ) ոչ աւելի » ոչ պակաս »։
9. 300 դրամ նշանակէ, Կիլիկեցւոց դրամով։

ի գտվել, որ կերան կատու մ'էշ[1]. ու այս սաստ էր յԱստուծոյ, յաղագս ծովացեալ մեղաց մերոց մատնեաց զմեզ ի ձեռս Թշնամեացն մերոց: Ով տեսանայր զմեր խաչերոյն արհամարհանքն ու զաստուածաշունչ գրվոյն կտրտել[2], զսուրբ սեղանուն կործանելն...:

Բ.

* Ի Թվիս հայկական սեռիս ՊՌԴ, ի բազմանալ մեղաց մերոց՝ ի նախանձ շարժեալ սուլդանն Մարայ, և զօրս բազումս առաքեալ ի վերայ անառիկ դղեկին Սիսոյ, և պաշարեալ առին. և ի գերութեան անկան եկեղեցիքն և գրեանքն. և մի ոմն ի մեր նահանգէս անդ հանդիպեալ և ի գրեանց զոր գնեալ և զոր ժողովեալ, և եկեալ ի վեր ի մայրաքաղաքս Եզնկաս, ի ծախ հանեալ. ես նուաստ փանաքի ապիկար եպիսկոպոս Տէր Աստուածատուր՝ փափագող եղեալ գնեցի յիմ հալալ արդեանց ըզգիրքս զայս[3] ինձ յիշատակ և ծնողաց իմոց և ամենայն զարմից. և Եսային ոչ կայր ի ներս, յետոյ գրեցի:

Գ.

Ի մեծ թուիս Հայոց ի դառն և նեղ ժամանակիս, ՊՌԴ, յորում առիս առաւ քաղաքն Սիս. և ես նուաստ և սուտ անուն եպիսկոպոս Զաքարէ՝ պատահեցայ անդ: Բայց զողբ և զողորմագին բանս զոր ետես ակն իմ, ո՞ կարէ պատմել գրով. զի տեսի զակունք պայծառ և զարեգակունք, զաստեղս և զլուսինս զի կային անկեալ առի[4]:

1. Այսինքն, կատուի և իշոյ միս կ'ուտէին:
2. Այլազգիք՝ խաչերը կ'արհամարհէին, սուրբ գըրքերը կտրատէին:
3. Որ էր հին Կտակարան մի:
4. Արտասուոց բան աչօք տեսողի. ակոսնքն և արե-

## Դ.

Ի Թուականութեանս Հայոց ՊԻԴ առաւ Սիս ի քրիստոնէից. և էր ի ժամանակին յայնմիկ կաթողիկոս Հայոց Տէր Կոստանդին (Դ), այր, իմաստուն և հանճարեղ. և էր թագաւոր Հայոց Գր. Լեոն՝ որդի Բրնձին[1]. սա թագաւորեաց Հայոց ամ մի։ Սա վարեցաւ գերի յԵգիպտոս՝ թագուհով իւրով և որդւով. բայց թագուհին Մարուն[2] եկաւ կեցաւ յԵրուսաղէմ զամս երիս, և հանգեաւ ի Քրիստոս. թաղեցաւ առաջի դրան Ս. Յակովբայ։

* Առին զՍիս Տամայ հեծելն՝[3] ի Թուին ՊԻԴ, ապրիլ ամիս ԺԲ. բերին զկաթողիկոսն Կոստանդին և զասորի պատրիարքն և զթագաւորն Լեւոն։ Յու-

ցակոչնքն վերոյիշեալ գրքեր և եկեղեցւոյ տպաններն են, որովք շատ հարուստ էր այդ Հայոց յետին մայրաքաղաքն, և ընկած էին այն ատեն՝ աւիրի, գետնի վրայ. ի հին Բառագիրս կայ գրուած հանդերձ նշանակութեամբն՝ աւիա կամ աւիս, ևող։

1. Անտիոքայ Բրնձին (Prince). որ մօր կողմանէ Ռուբինեան թագաւորաց ցեղէն էր, և է ծանօթ վերջին թագաւորն Հայոց Լեւոն Ե Լիւզինեանն՝ որդի Ծիւանի։

2. Սովորաբար Մարիւն գրուի. ըստ Տարաէլի Նորագիւտ փրանկ պատմչի Լեւոնի գերութեան և ազատութեան և պանդխտութեան, թագուհին կոչուէր Մարգարիտ՝ փրանկ Սուասոնեան ցեղէ։ Ոմանք համարին զնա մեռեալ յԵգիպտոս, այլք՝ որ հաւանական է՝ յԵրուսաղէմ։ Յաջորդ (361) Յօդուածէն յայտնանի որ այդ Մարիւն կամ Մարիւն անունն, շատ հաճոյ էր Ռուբինեանց, և այնպէս կոչուած են քանի մի թագուհիք։

3. Ձիաւոր զօրք Ասորւոց կամ Դամասկոսի երկրին, որ Եգիպտոսի սուլտանաց տէրութեան ներքեւ էր այն ատեն։

լիս ԺԱ դարձաւ ի հետ կաթողիկոսն և այլք իշխանք. և Մարիուն թագուհին յօգոստոս ամիս Զ (վեց)։ Էր սուլթանն Մորայ Աշրաֆ՝ Մէլիք Նասրի թոռն, Ամիրճուճեանց տղայ[1]։ Արգիլեցաւ թագաւորն ի Մըսր եօթն տարի. և յորժամ եղեւ թուին ՊԼԱ (1382-3), Հոկտ. Ա, երեկ փրանկ տեսպան ի Քոտողանեաց[2], ու խառ զինքն ու գնացեր։

---

## ՑԿԱ

### ՅԻՇԱՏԱԿՔ ՀԱՆԳՈՒՑԵԼՈՑ ՌՈՒԲԻՆԵԱՆ ՊԱՑԱԶԱՏԱՑ ԵՒ ՊԱՇՏՕՆԷԻՑ ՆՈՑԻՆ[3]

*Յանուար.*

Ա. Այս աւուր հանգեաւ ի Քրիստոս Նուաստ քահանայն Կոստանդին երեց Աղոյանց։

ԺԵ. Յայսմ աւուր հանգեաւ ի Քրիստոս Պարոն Ըռիմունեդ սինիշալ[4], որոյ ողորմեսցի Նմա Տէր Յիսուս։

ԺԷ. Ի յօրս հանգեաւ ի Քրիստոս Լեւոն աւագ երէցն. որոյ ողորմեսցի, և այլն, թվին ՉՂԸ (1349)։

ԻԲ. Յայսմ աւուր հանգեաւ ի Քրիստոս Զապել

1. Խանգարած անուն, բայց յայտնի է՝ որ Նասրի որդի և Աշրաֆայ հայրն է։

2. Սպանիոյ Կաստիլիա նահանգն է անշուշտ։

3. Օշին թագաւորի համար գրուած մագաղաթեայ Յայսմաւուրքի մէջ՝ ըստ աւուրց ամսոյ նշանակուած են արքունի ցեղէ հանգուցեալքն, և իրենց պաշտօնեայք աշխարհիկք և եկեղեցականք։ Այս գիրքս հիմայ մեր քով է։

4. ԺԴ դարու սկզբան Օշինի թագաւորութեան ատեն յիշուի, Միքայէլիկլայ բերդի տէր էր։

թագուհի Առաջինն[1], որոյ ողորմեսցի Նմա Տէր Յիսուս Քրիստոս։

ԻԳ. Ցայսմ աւուր հանգեաւ ի Քրիստոս Պարոն Թորոս[2], Լեւոն թագաւորի եղբայրն, որ սպանաւ ի յանօրինաց. որոյ ողորմեսցի Նմա Տէր Յիսուս։

## Փետրուար.

Ա. Ցայսմ աւուր հանգեաւ ի Քրիստոս. Պր. Ըռովբէն[3], յազգէն Բագրատունեաց, որ էառ զԿիլիկեայ և կայ ի Կաստաղաւնն.

Բ. Ցայսմ աւուր, և այլն, Պր. Թորոս[4], որոյ ողորմեսցի Նմա Տէր։

Գ. Ցայսմ աւուր, և այլն, Պր. Ստեփանէ[5], որոյ ողորմեսցի։

Եւ ի նոյն օրս հանգեաւ ի Քրիստոս Ներսէս ավագերէցն.

Զ. Ցայսմ աւուր, և այլն, Լեւոն թագաւոր Երկրորդն[6], որոյ և այլն։

ԺԶ. Ցայսմ աւուր, և այլն. Պարոն Լիկոս[7] որոյ, և այլն։

Ի սմին աւուր, և այլն, Պաւբիկ[8], որոյ, և այլն։

## Մարտ.

Զ. Ցայսմ աւուր ✠ Սմբատ թագաւորն, որդի Երկրորդ Լեւոն թագաւորին, և կայ ի Ներքունեթն[9]։

1. Դուստր Մեծին Լեւոնի, կին Ա Հեթմոյ։
2. Որդի Ա Հեթմոյ, Եգիպտացւոց արշաւանաց պատերազմին ատեն։
3. Նահապետ թագաւորական ցեղին։
4. Ա Պր. Թորոսն է, թոռն Ա Ռուբինի։
5. Պր. Լեւոնի որդին, Բ Թորոսի եղբայրն։
6. Որդի Ա Հեթմոյ, † 1289։
7. Եղբայր Ա Հեթմոյ։
8. Անծանօթ, թէ չէ Պաւբլէր, Boutillier, Տակառապետ, ընիկ անուան տեղն դատարկ թողուած է։
9. Այժմինքն Negroponte, Էյրիպօզ կոչուած կղզին

Ը. Ցայսմ աւուր փոխեցաւ ի Քրիստոս Պր. Կոստանդին որդի (Բ) Լեւոն Թագաւորին, և կայ ի Կոստանդինուպաւլիս։

## Ապրիլ.

Ա. Եւ յայսմ աւուր հանգեաւ ի Քրիստոս Ստե-փանոս երէց ավագերիցու որդին. որ էր այր բարի ողորմած և ժիր ի տուրս աղքատաց. ողորմեսցի Նմա Տէր Յիսուս Քրիստոս. և էր Թվականն Հայոց ՊԾԶ (1407) և պատկեր աւուր էր չորեքշաբաթի[1]։

Է. Ցայսմ աւուր հանգեաւ ի Քրիստոս տղայն Ստէփանէ որդի Երկրորդ Լեւոն Թագաւորին, և կայ ի Դրազարկն։

ԺԹ. Ցայսմ աւուր փոխեցաւ ի Քրիստոս Տէր Բարսեղ արքեպիսկոպոսն Դրազարկուն, որդի Աւագ Պարոնին[2]։

ԻԶ. Ցայսմ աւուր փոխեցաւ ի Քրիստոս Պր. Հեռին[3], որոյ ողորմեսցի Նմա Տէր։

## Մայիս.

Բ. Ցայսմ աւուր հանգեաւ ի Քրիստոս Առաջին Թագաւորն Հայոց Լեւոն, որոյ ողորմեսցի Նմա Տէր։

Գ. Ցայսմ աւուր ✠ բարեպաշտ թագուհին Հայոց Երկրորդ Զապէլն[4], որոյ, և այլն։

ի Թուրքաց։ Բաղդատնդրի կեանք մի վարեց, ըստ այնմ և վախճաններ է։

1. Թուականին երրորդ տառն տաշած՝ միայն մաս մի երեւնայ, և պէտք է ըլլայ Զ. վասն զի միայն այն 1407 տարին ապրիլի մէկն հանդիպի ի չորեք-շաբթի։ Ժամանակն յայտ է թէ կ՚անցնի Ռուբինեանց թագաւորութենէն վար. թուի թէ վերջին թագաւո-րաց ատեն էր և երկարակեաց եղած է։

2. Որ է Կոստանդին Պայլն, հայր Ա Հեթմայ։

3. Henri, թուի որդի Զապլունի՝ դստեր Բ Լեւոնի և Ամաւրեայ Լիւզինեան իշխանի։

4. Կին Օշնի Թագաւորի։

Ե. Յայսմ աւուր ✠ Թագաւորն Հայոց Գագիկ որ սպանաւ յորդւոցն Մաթաէլի[1]:

Զ. Յայսմ աւուր ✠ քաջ և յաղթող Պր. Ռուբէնի, ազգական Թագաւորին Գագկայ[2]:

Է. Յայսմ աւուր ✠ պատուելի քահանայն Ներսէս[3], որդի (Բ) Լեւոն Թագաւորին, որոյ, և այլն:

Ը. Յայսմ աւուր ✠ Պրն Լեւոնն[4] եղբայրն Պրն. Թորոսի:

Ժ. Յայսմ աւուր ✠ պատանին Ռուբէնն որդի (Բ) Լեւոն Թագաւորին:

ԺԱ. Յայսմ աւուր ✠ Պր. Թորոս որդի[5] Պր. Լեւոնի, որոյ և այլն:

ԻԷ. Յայսմ աւուր ✠ Պր. Կոստանդին որդի (Ա) Ռուբենի:

ԼԱ. Յայսմ աւուր վկայութիւն Կոստանդեայ իշխանին և ընտանեաց նորա[6]:

Յունիս.

ԺԹ. Յայսմ աւուր հանգեաւ ի Քրիստոս բարեպաշտ թագաւորն Հայոց Աշշին, որոյ և այլն,

ԻԱ. Յայսմ աւուր ✠ Կոստանդին եբեց Ճօզաժենց, որոյ, և այլն, և էր թվականն Հայոց ՊԿԵ (1416), և պատկեր աւուրն էր յերկուշաբաթ:

1. Այսպէս գրուած է փոխանակ Մանդալէի:

2. Փետր. Չին այլ յիշուեցաւ ու՝ ապա սխալ է, և կամ այս կամ առաջինն պէտք է ըլլայ Ռուբէն (Բ) եղբայր Ա Լեւոն թագաւորի:

3. Ուրիշ Յայսմաւուրքի մի մէջ նշանակուած է ի 6 մայիսի, և գրուած՝ «Նորընծայ քահանայն Ներ-
» սէս », և այլն:

4. Ա Ռուբենի թոռն, զոր կայսրն Յունաց իբրև գերի տարաւ ի Կ. Պօլիս և հոն մեռաւ:

5. Բ Պր. Թորոսն է, որ հօրը հետ գերի գնաց ի Կ. Պօլիս, և փախաւ եկաւ տիրեց Կիլիկիոյ:

6. Կ'իմացուի որ նահատակուած են, բայց ո՞վ են և ե՞րբ:

Արդ աղաչեմ զձեզ վասն սիրոյն Քրիստոսի թողութիւն խնդրեցէք յԱստուծոյ, և Աստուած ձեզ յիշողացդ պարգեւ:...

ԻՉ. Ցայսմ աւուր ✠ Աւագ Լեւոն թագաւորի Դստերքն տիկին Զապլունն և տիկին Սիպիլն և տիկին Ֆիմին, որոց, և այլն:

## Յուլիս.

ԺԲ. Ցայսմ աւուր ✠ Պր. Զապլունն, Լեւոն թագաւորին դուստրն.

ԺԴ. Ցայսմ աւուր ✠ Տէր Ներսէս Լամբրոնացին, սուրբ Հայրն, արքեպիսկոպոսն[1]:

ԺԸ. Ցայսմ աւուր ✠ աստուածասէր և բարեբարին հանգուցեալ հոգին Մարիւն[2]:

ԻԳ. Ի սոյն աւուր ✠ սոսկալի սանճանօք և նահատակութեամբ մեծ և ամենագովելի Պարոն և թագաւորահայրն Հայոց Պր. Թորոս[3], և թաղեցաւ ի դամբարանի հարց իւրոց՝ ի սուրբ ուխտն Դրազարկ, որոյ, և այլն:

Եւ յայսմ աւուր ✠ Պր. Թորոս՝ Լեւոն թագաւորի որդին, որ սպանաւ ի Բարձրբերդ[4], և այլն:

ԻԴ. Եւ յայսմ աւուր ✠ Պր. Ոյկն[5], թոռն Լեւոն թագաւորին և որդի Սրոյ տիրոջն, և այլն:

ԻԷ. Ցայսմ աւուր ✠ բարեպաշտ և աստուածասէր և ողորմածն Կռստանդիկն թագաւորին մայրն՝ տիկինն Մարիւն[5], որոյ և այլն, թվին Հայոց ՊԱ.

1. Արժանաւորապէս յիշուած է արքայազարմից մէջ՝ այս ազնուազարմն և ամենազնիւ անձն:
2. Տես 124 ծանօթութիւնը 542 երեսի:
3. Որդի Բ Լեւոնի և հայր Գին. իր եղբայրն Սմբատ էր սպաննել տուողն:
4. Նոյն առկէ առջի յիշուածն է:
5. Որդի նախայիշեալ Զապլունի և Տիւրոսի տիրոջ. Ուգոն կամ Հուգոն է անունն:
6. Պաղտին մարաջախտի կինն է, մայր Կոստանդին թագաւորի:

(1352). պատկեր աւուրն ուրբաթ, և կայ յԱնար-զաբայ։

ԻԸ. Յայսմ աւուր ✠ տիկնայց տիկինն Կեռանն թագուհի մայրն[1]։

## Օգոստոս.

Բ. Յայսմ աւուր ✠ մանուկն Ալինախն[2] որդի Օշին թագաւորին, և եղեւ պարակից վերին զը-ւարթնոցն։

Է. Եւ յայսմ աւուր ✠ բարեպաշտ Գրն. Ճոււան[3], որդի...

Թ. Յայսմ աւուր ✠ թագուհին Հայոց Կեռ-Ան[4], ի մեծ թուին Հայոց ՉԼԴ (1285) յօգոստոս Թ, և այլն։

ԻԶ. Յայսմ աւուր ✠ երիտասարդ հասակաւ բարի շառաւեղն՝ Ալինախն[5], որոյ, և այլն։

## Սեպտեմբեր.

ԻԷ. Յայսմ աւուր ✠ կորուսեա Ավագ երէցն[6], որոյ, և այլն։

1. Հանգուցեալն է մայր Կիռ Աննայի կնոջ Բ Լեւոնի։ Յայտնի է որ Կիռ յունական Քիրիա՝ տիրուհի նշանակող բառն է։

2. Մանօթ են Օշին և Ալինախ եղբարք խեղեփք, այսինքն երկուորեակք և տիրելիք մէկմէկի, Օշին իր եղբօր սիրոյն համար իր զաւակն անոր անուամբ անուաներ է, բայց վաղամեռիկ եղեր է։

3. Եղբայր Ոսկին (13), որդի Ջապլունի զոտեր Բ Լեւոնի և Տիւրոսի տիրոջ։

4. Կինն Բ Լեւոնի, և նշանաւորն քան զամենայն Կիռ Աննա համանունս։

5. Տես զ'16 ծան. երես 344։ Գետոյ մէջ լողալու ատեն՝ անզգոյշ ձիէն զարնուելով մեռած է Ալինախ։

6. Ժամանակն անյայտ, և օտար ձեռքով գրուած է այս, ոչ բուն Յայսմաւուրքը գրողին։

## Հոկտեմբեր.

Բ. Ցայսմ աւուր ✠ Տամուժէլ Անաւրն[1], թոռն Լեւոն թագաւորին, և դուստր Սրոյ տիրոջն, որոյ։

ԻԵ. Ցայսմ աւուր ✠ թագաւորն Հայոց Հեթում (Ա.) Լեւոն թագաւորի հայրն, որոյ, և այլն։

## Նոյեմբեր.

ԺԶ. (և ԻԶ). Ցայսմ աւուր ✠ ի ձեռաց անօրինաց Աւագ Պարոն Հայոց Պր. Հեթում (Բ), որդի Երկրորդ Լեւոն թագաւորին, և ի յիւր ընկերութեան թագ[2]...

ԺԷ. ի նոյն օրս ✠ կիտ[3] Լիգինեան թագաւորն Հայոց, որ էր այր աստուածասէր և բարեպաշտ և քաջամարտիկ. և ընդ նմա եղբայրն իւր Պեմոնդ գունթն Կոռիկոսոյ, և այլ բազում քրիստոնեայք...

ԻԸ. Եւ այսմ աւուր ✠ Պարոն Սարգիսին որդին խոճայ Սիմաւոնն[4], որոյ, և այլն։

## Դեկտեմբեր.

Բ. Ցայսմ աւուր ✠ Տիկին Ֆիմի կրօնաւորն, քոյրն Լեւոն (Բ) թագաւորի, և տիկին Մարիոննն՝ քոյրն Լեռան թագուհէ։

1. Փռանկ բառ Demoiselle. Անուածն թուի Agnette, վասն զի յատուկ անունն էր Ագնէս։

2. Ցայտնի է որ պիտի ըլլար թագաւորն Լեւոն Գ, տղայն, որդին Թորոսի եղբօր Բ Հեթմոյ. զորս խարդախութեամբ կերակրոյ հրաւիրելով՝ սպաննեց Պիլարղու Թաթարն։

3. Կամ Գուիտոն, Ջապլունի զաւկներէն. թագաւորած է 1343–5 տարիներու միջոց, և սպանուած իշխանաց հակառակութեամբն։

4. Հայրն այլ որդին այլ անծանօթ, և օտար ձեռքով գրուած, բայց բաւական հին։

Թ. Ցայսմ աւուր ✠ բարի ծգնութեամբ ամենամեծ Թագուհին Ցունաց՝ դուստր Հայոց Թագաւորին (Բ) Լեւոնի, Ըռիթայն, որ կայ ի Կոստանդնուպոլիս[1]:

Ժ. Եւ յայսմ աւուր փոխեցին զոսկերքն Գր. Զապլունին, հրամանաւ իւր եղբօր որդւոյն Զորրորդ Լեւոն Թագաւորին, և տարան ի Դրազարկն:

ԺԲ. Ցայսմ աւուր ✠ Պրն. Պաղտին մարաջախտըն[2], հայրն Կոստանդին (Բ) Թագաւորին. և կայ ի յԱկներն. որոյ, և այլն:

ԻԷ. Ցայսմ աւուր ✠ իմաստուն և հանճարեղ Երաժիշտն Թորոս աւագերէցն Թափրեց[3], ի Թվին ՉՂԱ (1342). ի դեկտ. ԻԷ. որոյ ողորմեսցի Նմա Քրիստոս. ամէն:

---

## ՅԿԲ

### ԳԻՐ ԵՒ ԳԻՆ ՄԻ ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ ԳՐՈՅ. ՆՇԱՆԱՒՈՐ ԱՆՁԻՆՔ ԵՒ ՏԵՂԻՔ ԺԱՄԱՆԱԿԻՆ[4]

Փառք Հօրն ամենակարողի, և իմաստութեամբ Որդւոյն միածնի և բարերարութեամբ Հոգոյն Սրբոյ ճշմարտի, երից միակի միասնական Ա. Երրոր-

1. Հարսնացեր էր Միխայէլ կայսեր, 1297ին, իր եղբարց հետ Բ Հեթմոյ և Թորոսի՝ երթալով ի Կոստանդնուպոլիս, ուր վախճաներ է 1333ին: Յոյն ճարտասան մի ողբախառն գովեստ գրած է վրայն:

2. Ծառ. արդիւնաւոր քաջ և խոհեմ մարդ:

3. Քաջ երաժիշտ ըլլալով կոչուի և փիլիսոփայ, զի այսպէս կոչէին Հայք զերգողս և զերգահանս. մականուան նշանակութիւնն յայտնի չէ, միթէ Թափօրաց հանդիսի մէջ երգելուն համար ըլլայ:

4. Թերեւս օտարոտի իմն երեւնայ վերնագիրս և նիւթ Յօդուածիս. բայց կարդացողն պէտք է հաճի և զարմանայ մէկ աղքատ բարի վարդապետի մը փա-

դութեանն. և ողորմութեամբ Սրբոյ Աստուածածնին, և առաջնորդութեամբ գլխաւորի վեհագոյն Սրբոյն Պետրոսի, և ամենայն Սրբոց երկնաւորաց և երկրաւորաց։ Աւարտումն եղեւ այսմ Աստուածաշունչ հին և նոր Կտակարանիս, յորժամ էր թիւն ըստ շրջագայութեան ժամանակի՝ ի մարդեղձութենէն Քրիստոսի ՌԿՃԼ (1330), և ի թուականու-

փագին, ջանքին, երկար անխոնջ համբերութեանց, մուրացողութեան, մէկ Աստուածաշունչ գիրք մի գրել տալով ստանալու. որոյ համար շատ նեղութիւն, յոգնութիւն և հիւանդութիւններ կրէ, բայց չի յուսահատիր, այլ իրեն երկնաւոր օգնական կարդալով զՍ. Աստուածածին՝ յաջողի։ Նոյնպէս կըրնայ դատել թէ որքան կ'արժէ եղեր այդպիսի գրքի մի նիւթին գինը և գրելէն, այսինքն գրողին վարձքն և կազմին նիւթն, ինչպէս վկայէ ստացողն (Ներսէս), որ գնելու համար գնացեր է ի Դավրէժ. հաստարակ բամբակէ թուղթ է, որ գործածութեամբ դիւրաւ մաշած վկայուի. դիրքն՝ քան մեր սովորական Աստուածաշունչ ձեռագիրքն փոքր է. իբրեւ, 0,25, (մետրի). ընդ ամենն 480 թուղթ, բովանդակելով հին և նոր կտակարանները հանդերձ անվաւեր գրովք, նաեւ Պատարագամատոյց։ Ձեռագրաց ճանչցողք շուտով գուշակեն՝ թէ շատ խնայութեամբ գրուած է, երկու գրոց պարապ միջոց չթողլով, և գիրերն այլ մանրկեկ են, իսկ յառաջաբանք և ցանկք աւելի մանրագիր՝ զոր շատերու համար դժար է կարդալն. թէ և կոկ և լաւ է գիրն։ — Նշանական է և գրոց տիրոջն բարուց հետ կրօնական համոզմունքն, զոր կամ ի Կիլիկեցւոց առեր է և կամ ի Ջահկեցւոց, որոց քով երթալը յիշէ։ Այս իր գրած կարճ Յիշատակարանն տեսակ մի երկար ոդիսեւսական թափառանք յիշեցընէ, նոյնպէս և իրմէ վերջ գրքին հանդիպածներն, այլեւայլ ձեռքէ անցնելով, հիննալով, փտելով և շատ անգամ նորէն կազմուելով. և դեռ բաւական լաւ պահուի մեր քով։ Ներսէսի ըրածին և գրածին հետ կարդացողին հաճոյ համարելով՝ յարեմք վերջի ստացողաց յիշատակարաններն եւս։

թեանն Հայկազնեայ տոհմին ՉԾԱ (1332). և ի հայրապետութեան Տեառն Յոհաննիսի (ԻԲ) մեծի Հռոմայ պապին, և ի պատրիարգութեանն Տէր Յակոբայ[1], Հայոց նահանգի, և յեպիսկոպոսութեանն Տէր Զաքարիայի Ս. Առաքելոյն Թադէոսի[2] վերադիտողի, և ի վարդապետութեան Եսայեա րաբունապետի՝[3] որ այժմ կայ ի Գայլիձորի, և յիշխարհակալութեան Ղաւն Պռոշայի[4], և ի թագաւորութեան Հայոց Լեւոնի որդւոյ Օշնի: Զսա սկսեալ ի դեկտեմբերի աւարտեցաւ ի հոկտեմբերի[5], ի ձեռն երկու քաջ քարտուղարի: Ես Ներսէս անուամբ վարդապետ, բայց գործով վերջացեալ հող և մոխիր վարդապետաց[6], որդի Վահրամա, յաշխարհէն Տարօնոյ, ի գաւառէն Սասնոյ[7], ի վանացն Ղազարու[8], ի գեղջէն որ կոչի Կոռ. եղէ ցանկացող ուսման, և ընթացեալ յարեւելս ի գաւառն Վայոցձոր, ի վանքն Գայլեձոր, և եօթն ամ աշխատեցայ ի վարժումն հին և նոր տառից և այլ բազում սրբոց բանից: Յայնմ ժամանակին եմուտ ի հոգիս իմ ցանկութիւն մեծ վասն Աստուածաշունչ գրոց. և ես էի աղքատ և ոչ ինչ ունէի բայց միայն զՔրիստոս. ապա ուխտ եդի ի միտ իմում, աստ-

1. Բ Յակոբ կաթողիկոս:

2. Արտազ գաւառի արքեպիսկոպոսական աթոռոյն նշանաւոր յաջորդ:

3. Համբաւեալ գիտութեամբ Եսայի Նչեցի վարդապետն:

4. Թաթարաց տէրութեան չփոթութեան ժամանակին՝ քանի մի տիրապետել ուզողաց մէկն:

5. Ըսել է տասն ամիս քչեր է գրութեան ժամանակն:

6. Որչափ զինքն նուաստացընէ, ըրածէն իմացուի արժանաւոր անձ ըլլալն, յիշատակողք այլ կոչեն զնա պատուական, րաբունի:

7. Ըստ նախնեաց Սանասուն կոչուէր, հիմայ Սասուն կոչուածն, յանուն որդւոյ Սենեքերիմ Ասորւոց թագաւորի:

8. Ղազարու վանք և Առաքելոց վանք նոյն է:

ցի, թէ, տար ինձ Աստուած իրք՝ նա ես յԱստուածածնի անուն տամ գրել։ Յորժամ զայս խորհուրդս ի միտս իմ արարի՝ յայն դէմ եդեալ գնայի յերկիրն Ուռհա՝[1] գեօղն որ կոչի Խաճակահ, առ եղբարք իմ և առ ամենայն արեան մերձաւորքն, խնդրել օգնութիւն ի նոցանէ. իսկ նոքա չարժեալ սիրով և լի սրտիւ՝ ողորմութեամբ Ս. Աստուածածնին ետուն ի ծախս Աստուածածնաշինչիս՝ իւրաքանչիւր ըստ կարողութեան իւրում միոյն յիշատակի. Մշեհն ԲՃԺ (210) սպ(իտակ)[2]. եղբայր՝ նորա Լեւոն Ղ (90) դրամ. Յովան Ղ դր. Թուրան Լ (30) դրամ. Դաւուր Լ դր. Մկրտչի կին Կ (60) դր. Մխիթար իմ հօրեղբօրորդին ԽԲ (42) դր. Մխիթար հուսն[3] Լ. դր. Վարդան ԼԳ (33) դր. Հայրապետն ԼԶ (36) դր. Մարտիր... Թադկան Լ. դր. Լուսեր ներկարար Լ. դր. Զաքար. ԺԸ (18). դր. Իսմանոսն և իւր մայր ԼԶ դր. Ֆռանգ խոշարցին Ճ (100) դր. Անտոն Ի (20) դր. Ումեկն և իւր որդիքն Խ (40) դրամ։

(Ես) իմ առեալ զայն գնացի յաշխարհն Պարսից ի քաղաքն Թավրէժ, յաղագս քարտիսի, և բազում աչ և աշխատանք կրեցի ի ճանապարհն և յոլով նախանձ և նեղութիւն յագահ և ի սնա-

1. Ուրիշ տեղ յիշուած չէ անունս, բայց Խաճագահ գեղի անունէն կ'իմացուի որ Ապահունեաց գաւառն էր, այսինքն Մանազկերտ քաղքին վիճակն։ Ներսէս Պալենց որ զինքն այս քաղքիս եպիսկոպոս կ'անուանէր՝ ի թղթին Մխիթար կաթողիկոսի առ պապն Հռովմայ՝ Որնեայ եպիսկոպոս կոչուի. անունն յիշեցընէ Պարսկահայոց նահանգի Ըռնա գաւառը, որ չէ շատ հեռի յԱպահունեաց։

2. Սպիտակն՝ արծաթ ստակ նշանակէ. բայց միւս ամեն տուրքերն և գումարն դրամ ստակով նշանակէ, երկուքն այլ նոյն թուին. դրամն այլ Արաբացւոց ժամանակէն վեր փոքր արծաթ մ'էր, գրեթէ նոյն չափըն և արժէքն պահած, իբր հիմկու 0,60. հարիւրեակ (centime).

3. Հիւսն, փայտի արուեստաւոր։

պարծ քահանայից և ի հակառակող աշխարհականաց. և անտի ողորմութեամբն Աստուծոյ յարուցեալ գնացի միւսանգամ ի Գայլիձորն, և կալայ միջնորդ զՅոհաննէս Մշեցին զեղբայրն իմ հոգեւոր, որ առնէր միջնորդութիւն ընդ իս և ընդ երկու գրագիր, ընդ Եփրեմ և ընդ Դաւիթն, որ էին կուսան քահանայք. և ապա ի բազում աւուրս հազիւ կարացաք կարել գիրքն[1] առանց այլ խարջի ՌՇՃ (1500) դր. բայց յետոյ զրկեց զիս Դաւիթն, քանզի խիստ աղքատ էր և արծաթասէր. և ԳՃ (300) դր. այլ ել յինէն. վասն որոյ Թողցէ Աստուած զ(յ)անցանս նորա: Եւ ես յայնժամ յարեալ անտի և գնացի ի Ս. Առաքեալն Թադէոս՝ առ Տէր Զաքարէ արքեպիսկոպոս. և նա ետ ինձ Շ (500) դր. և յետ բազում աւուրց դարձայ վերըստին ի Գայլիձոր բազում նեղութեամբ, քանզի ձմեռն էր աւուրքն. և վճարեցի զմնացեալ պարտքն յԱստուածաշունչ գրոցն. և դարձայ ի Ս. Առաքեալքն, և դադարեցի անդ սակաւ աւուրս: Եւ կայր Աստուածաշունչս անկազմիլ. և ես թշուառականս կայի հիւանդ հոգով և մարմնով. ապա խնդրեցի ի Ս. Աստուածածնէն, և նա զօրացոյց զիս. և յարուցեալ պնդեցի զմէջս իմ, և ուղղեալ գնացի ի Քռնայ[2] առ սուրբ եպիսկոպոսն Տէր Բարդողիմոս և առ վարդապետքն Հայոց (որ) առ նմա կային յայնժամ. և Մարգարէ վարդապետն չէր անդ՝ որ կազմող էր գրոց, այլ գնացեալ էր ի Ճահուկ. և ի ներգործութենէ չարին ես հիւանդացայ մերձ ի մահ զաւուրս ԽԵ (45), և Քրիստոս յարոյց զիս. և գնացի ի Ճահուկ առ Մարգարէ վարդապետն. և նա յանձն առեալ կազմեաց յաւուրս Խ (40). և

1. Հիմայ սովորաբար գրողչէք կ'ըսենք, վարձք գրելու կամ օրինակելու:

2. Գլխաւոր վանք Միաբանողաց կամ Դոմինիկեան Հայ կրօնաւորաց, ուր կենար ստորեւ յիշեալ լատին եպիսկոպոսն Բարդողիմէոս:

եւ ցիս։ Եւ իմ ուրախացեալ դէմ եդի գնալ յեր-
կիրն Տարօնոյ. և ամենեւին ինչ ոչ ունէի խարճ
ճանապարհին. յայնժամ ծախեցի զփիլոն և զհո-
ղաթափն վասն խարճի[1]։ Ապա զայս գիտասջիք
եղբարք, որ գնալս և գալս զոր ասացի՝ ի բազում
տեղի էր, ի մէջ բարբարոս ազգաց... որ մահմէ-
տականք կոչի, որ բռնացեալ ունին զաշխարհս
Հայոց վասն մեղաց մերոց. և յամենայն տեղիս
օգնեց ինձ Ս. Աստուածածին, և անվնաս մնացի.
և զամենայն թերի զոր ունէի՝ ելից և կատարեաց։
Բայց խարճն որ եղեւ այս Աստուածաշունչ գրոցս՝
ընդ ամենայն միահամուռ ԲՌԲՃ (2200) դրամ է[2]։
Տէր Աստուած Յիսուս Քրիստոս գրեսցէ զամենայն
յօժանդակողքն՝ որ շատ և որ սակաւ՝ ամենայն
արժանաւորացն՝ ի գիր կենաց Գառինն յաւիտե-
նից, և առաջնորդեսցէ նոցա յաղբիւրն ջրոյ կեն-
դանոյ. ամէն։

* Վարդապետ Ներսէս, յիշեա յաղօթս զԹորոս
ծաղկող[3], և զպապն իմ Սիար և զհայրն իմ Սար-
գիս և զմայրն իմ Մարիամ ի քաղաքէն Մշոյ։

* [4]Փառք և գոհութիւն մատուցանեմ ես, կար-

1. Վարձ այնքան չարքաշութեան և զրկմանց այդ Աստուածաշունչ գրոց տիրոյն համար, և օրինակելի վաստահութիւն ի Ս. Աստուածածինն։

2. Ըստ վերոյ նշանակելոյս (10դ ծանօթ 346 երեսի) այն գումարն կրնայ ըլլալ ըստ նիւթական արժէից 1350 ֆր. բայց ըստ արժէից արծաթոյ ժամանակին՝ աւելի քան զ՚4000։

3. Թորոսի վրայօք տես երես 326, ծանօթ. 5։ — Ոսկեզօծ զարդ և պատկերք չկան. այլ թանձր կարմիր, կապոյտ և կանաչ գոյներով կամ պարզ կարմիր գծերով. լաւագոյնն Նոր կտակարանի յառաջաբանին վրայ նկարածն է, որ է այս։

4. Ի վերջ Եզեկիէլի մարգարէութեան գրուած է այս յիշատակարանս։

կռահեալ զձեռս իմ Հօր անծնելութեանն և Որդւոյ նորին և Բանի ծնելութեանն և Հոգւոյն Սրբոյ ի նոցունցն յէութենէ բղխողութեան, որ միշտ լինել զամենայն. այժմ և յանդորր յաւիտեանսն. զի հասոյց զտկարութիւնս իմ ի կատարումն աստուածաբան մարգարէիցս: Արդ խնդրեմ յամենեցունց՝ յերեսս անկեալ, զի որք պատահիք սա ի սմանէ օգտութեան՝ թողութիւն հայցեսցէք ի Քրիստոսէ տառացողի սուրբ գրոցս Ներսէս վգ. (վարդապետի), և տառապեալ որդոյ Դաւիթ գրչիս, և զուք յիշողքդ յիշեալ լիջիք ի Քրիստոսէ. Նա և զպատուական քահանայ զՕհաննէս[1] պատուաւոր բանի և զհոգևոր երկնողն իւր զՏէր Ստեփանոս զհանգուցեալն ի Քրիստոս որ զօրինակն շնորհեաց այս երեք գրոցս[2]:

* Ի Թուին Հայոց տոմարի որ ՊԻ (820–1371) կոչի, ի յաստղմանէ չարին վասն ծավալցեալ մեղաց մերոց՝ ի հարկապահանջութենէ այլասեռիցն աւերեցաւ երկիրս Տարոնոյ, նա և սուրբ ուխտս Ղազարու, զոր և կրօնաւորք Ս. Առաքելոյս տարաշխարհիկ լինէին՝ անցանելով յայլ գաւառ. և կացեալ սուրբ տառս Աստուածաշունչ ի պահեստի բազում աւուրս՝ եղծեալ[3], այլ և զբազում սուրբ գրենոք և սպասուք. և եղեւ տրտմութիւն վանացս. զոր յետ աւուրց ինչ յորում էր Թվ. ՊԻԷ (1378–9) ումն յազնուական տոհմէ բարեմիտ և արբասէր կրօնաւոր՝ Փօղոս անուն, եղբօրորդի գոլով երջանիկ բարունոյն Յոհաննիսի փոխեցելոյն աստեացս առ Քրիստոս, որ ստացեալ ունէր զայս Աստուածաշունչս, վասն որոյ Փօղոսս եւս առաւել հօգք յան-

1. Այսպէս գրուած է անուան Յո կամ Յով մասն:
2. Թերեւս մարգարէութիւնքն Երեմիայի, Դանիէլի և Եզեկիէլի:
3. Հազիւ 40 տարի օրինակուելէն վերջը աւրըշտըկուած կամ քակտուած է գիրքն:

ձին կալեալ վերստին ետ նորոգել զգիրքս զայս բազում աշխատութեամբ անձին և ընչից իւրոց. վասն վայելման ինքեան և յիշատակ Յոհ. վարդապետին և Պօղոս արեղայի, որ եղեւ նպաստ կրկին նորոգմանս, և եղբօր իւրոյ Յոհանէս սարկաւագի հանգուցելոյն առ Քրիստոս. նա և զեղբայր վարդապետին զՍարգիս քահանայն, և ըզծնօղսն մեր և զամենայն արեան մերձաւորսն, աղաչեմ զհանդիպողք այսմ Աստուածաշունչ գրոցս՝ յիշել ի Տէր յոժար կամօք զվերոյ·գրեալքս, զի և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ ի բարին. նա և զանարժան հողիկս զՅովանէս անպիտան գրիչ, որ զաւկաւ գիրս ցանցառ գրով ձաբըռատեալ գրեցի և կազմեցի, ոչ յարուեստ ինչ վստահանալով, այլ ըստ հարկեալ և յօժարութեան կամացս Պօղոսի. վասն որոյ չմեղադրել խնդրեմ և յիշել ի Տէր միով Տէր ողորմաիւ:

* ԶՊօղոս արեղայ զստացող՝ գրոցս յիշեցէք ի Տէր Քրիստոս, աղաչեմ, և զՅոհանէս սարկաւագ զհանգուցեալն առ Քրիստոս:

* Այլ և զվերջին կազմող[1] լուսազարդ տառիս և ծաղկաւէտ բուրաստանիս զՀերապետ կրօնաւոր՝ աղաչեմ յիշել ի Տէր. և բոլոր սրտիւ Աստուած ողորմի ասել. զի խիստ փտեալ էր և թամբակ դարձեալ և ի տեղիս տեղիս ցեցն էր ծակոտեալ, հագիւ կարացի ի կապ ածել. վասն որոյ առ ոտս անկեալ պաղատիմ մանկանցդ Սիոնի. զի յորժամ հանդիպիք սմա՝ լի բերանով Աստուած ողորմի տացէք ինձ և ծնողացն իմոց՝ հոգեւորացն և մարմնաւորաց. և դուք յիշեալ լիջիք ի Տեառնէ Աստուծոյ. ամէն: Այլ և զհոգեւոր հայր մեր... զի խիստ չի-

1. Թուականն չէ նշանակուած:

ւարեալ էաք և բարակ… չէր հանգիստ… այլ… թախիծ[1]…

* Դարձեալ յերես անկեալ պաղատիմ սուրբ և պատուական ուսումնասիրացդ և բանասիրաց անձանց, զի որք հանդիպիք սմա աստանելով կամ օրինակելով՝ յիշեսջիք ի մաքրափայլ աղօթս ձեր զառաջնորդ սուրբ ուխտիս զՏէր Պօղոս արքեպիսկոպոս[2]. զի ի ժամանակիս յայսմիկ որ էր Թիւս Հայոց ՊՁԸ (888=1439) էր սա առաջնորդ ուխտիս Առաքելոց. և ի սորին աւուրքս քահանայ ոմն անուն Վարդան եղեւ գործօղն Յուդայի և մատնեաց զամենայն սրբութիւնս եկեղեցւոյն՝ անօրինաց, զխաչ և զսկի. և բազում խաւար էած ազգիս Հայոց. որ և զաղէտ տարակուսանացն և զկսկիծն՝ ո՞վ[3] կարէ ընդ գրով արկանել: Զի յայսմ ամի անեզերալոյս և քաջ բաբունապետն Թովմա՝[4] փախստական էր եղեալ յազգէն Նեստորեաց, ի գաւառէն Արճիշոյ, և եկեալ հանգստեցաւ ի սուրբ ուխտն Առաքելոյս՝ երկու վարդապետօք և բազում գրօց աշակերտօք. և ետես զպատուհաս ցասմանն. զի պերճ ամիրայն Մարաց որ ի Մուշ նստէր՝ յաւուր միում բազում զօրօք եկն ի վանքն, և ըստ քահանային Վարդանայ ընդ նոսա, և ըմբռնեցին զքահանայսն. զոմն տանջեցին և զոմն ուհարեկ առնէին. մտին յեկեղեցին և քակեցին զմին կողմին չեղ… և հանին բազում խաչ և սկի և Սրբոց նշխարք, և տարան ի քաղաքն. ըստ այնմ որ ասէ ի Սաղմոսն, Զթիկունս իմ հարին մեղաւորքն: Եւ սուրբ վարդապետքն և աշակերտքն և սրբասէր քահանայքն ողբս ի բերան առեալ լային

1. Կէս տող աւրուած և մաշած, նոյնպէս և վերջի կէսերէն ետեւ երկու տողի չափ:

2. Վերոյիշեալ Պօղոս աբեղայէն 70 տարի վերջը:

3. Ո՞վ կարէ գրուած է:

4. Թովմա Մեծոփեցի վարդապետն է, Լանկթիմուրի պատմութիւնը գրողն:

ողբալով. և այնքան կսկծացին՝ մինչ զի զգիշերն ամենայն արթուն կացեալ և խնդրեցին յԱստուծոյ զազատութիւն որբութեանցն: Եւ ի վաղիւն եկեալ երէց ոմն Մելքիսեդ անուն և եբեր մասն ինչ ի խաչերոյն. և թաղում խաչ և ոսկի կորեաւ. և այսու ամենայնի պատճառ այն պիղծ չքաւհանոյն եղեւ, որ անունն չէ յիշելոյ. որ և զպատասխանին նա տացէ յաւուրն դատաստանի. ամէն:

Այլ և դարձեալ աղաչեմ յիշել ի Տէր զվերջին նորոգող և զկազմող տուողն, որ ի վերայ սուրբ գրոցս երախտիք ունի. այլ և զնախախնամօղն աղաչեմ յիշման արժանի առնել. և եթէ մին թխթի կամ մին սակաւ իրաց երախտիք ունի ի սուրբ գիրքս՝ զփոխարէն նորա յԱստուծոյ առցէ աստ և ի հանդերձեալն. և եթէ ոք զկազմելէն[1] տայ՝ լի սրափիւ միոյն հազար Աստուած փոխարէն տացէ նմա. և էնց[2] համարի, թող թէ զԱստուածաշունչս բոլոր նա է առեր գրել. զի թէպէտ նորոգօղն է թէպէտ նոր գրող տուօղն՝ ի միասին պիտի պսակին ի Քրիստոսէ: Եւ որ զբարին կամենայ այս գրոց՝ Քրիստոս Աստուած զիւր առատ բարին նմա տացէ աստ և ի հանդերձելումն. ամէն: Ո՛հ, զեղկելի անձն իմ աղաչեմ որ յիշել ի Տէր միով Տէր ողորմայիւ:

* Զէլղպասան Զարդրանեցին և զհօրեղբօրորդին իւր զՏօղանն[3] յիշեցէք ի Քրիստոս Աստուած յա-

1. Գիրքը կազմողի վարձքն:
2. Այնպէս:
3. Երկու անձանց անուանքն այլ անծանօթ, թուի Քրդաց մէջ բնակելով. իսկ տեղին Զարդրան՝ ըստ եւրոպացի գիտնական ճամբորդի մի՝ պարսիկ չէնար բառով բարդած է, և չորս դուռ նշանակէ. զի այն տեղի Հայք ատենօք չորս եկեղեցի ունին եղեր. տեղն այլ Պարսկահայոց հարաւակողմն է, Շէքաքի կոչուած Քրդաց մէջ:

ուրն դատաստանի. վասն զի ըստ իւրեանց կարողութեան օգնեցին։

* Եւս առաւել յիշեցէք ի Քրիստոս զաստուածասէր Միքայէլ սարկաւագն, և զծնօղսն իւր և զամենայն մերձաւորսն իւր զկենդանիս և զհանգուցեալս, և Աստուած ողորմի ասացէք նմա, որ եւս նորոգել և կազմել զԱստուածաշունչս, զի խիստ եղծեալ և հնացեալ էր[1]. և բազում աշխատութեամբ և ծախս արար. և մեք ոչ կարացաք ըստ հանճարոյ և ըստ կամացն նորին առնել. զի չատ նեղաստորանք և ղառնութիւն ունէաք յանձինս՝ վասն չար գործոց և անուղղայ գնացից և անպատշաճ բարուցս մեր զոր ունիմք։ Եւ արդ որք հանդիպիք՝ անմեղադիր լերուք անկարութեանս և անյարմար բանիս։ Ողջ լերուք ի Տէր. ամէն։

* Ես Պետրոս[2] կրօնաւորս որ եկի ի սուրբ ուխտս որ կոչի Ղազարու վանք, որ և յազդմանէ չարին մատնեցին զիս ի Բանաշէն՝[3] ի ձեռս անօրինաց. և ես գիշերն փախեա և եկի աստ. զոր Տէր Աստուած անփորձ և անզրդուելի պահէ Յովանէս վարդապետն և զիւր միաբանքն, զՏէր Մեսրովբ և զՏէր Ստեփանոսն, որ ինձ քան զչափն աւելի հարկիս արարին. Աստուած ողորմի իւրեանց ծնողաց հոգւոյն, ամէն։ Ի Թվին Ռ. Ճ. ԺԵ (1115=1666) տանուտէրն Կարինն է։

1. Սիմէոն է այս նորոգութիւն ընել տուողն՝ Գրիգոր Խլաթեցւոյ մը. (յայտ է թէ չէ Ծերենցն ԺԵ դարու), յամին 1577, որ և երկար յիշատակ մի գրեր է, բայց պատմական գիտելիք մի չկայ, և կրնայ աւելորդաբանութիւն ըսուիլ, բաց ի գրքին համար ըսածէն, թէ «խիստ եղծեալ և փտեալ և ծակոտեալ » էր և բամբակ դարձեալ. և ըստ պիտոյից ոչ կա- » րացաք առնել »։

2. Պետրոս անուան ծանօթն երեւի։

3. Ծանօթ տեղի ի Տարօն գաւառի։

# ՑԿԳ

## ԱՂԱՆԴԱՒՈՐ ՀԱՑՔ Թ–ԺԵ ԴԱՐՈՒՑ

### (ՄԽԻԹԱՐ ԱՊԱՐԱՆԵՑԻ[1])

Մոլորութիւն է զանազան և ազգի ազգի Հայոց։ Քանզի անիծեալ Սմբատ Արմէնն[2] փախուցեալ ի Ծամրտոյ եկեալ բնակէր ի Խնուսնեաց[3] գաւառն, ի գեղջն Թոնդրկայ, և զգաւառն Թողայիրոյ, այսինքն Տիվրեկոյ[4] ելից չար աղանդով, որ

1. Այս Ցօղուածի հեղինակին վրայ տրուած համառօտ տեղեկութիւնն ի կարգի Պատմըչաց մերոց՝ իմացընէ իր ժամանակին կրօնական հակառակութեանց պարագլխոց մէկն ըլլալն, որով ինքն այլ երբեմն չեղուած է։

2. Թոնդրակեցի աղանդաւորաց գլխաւոր մի, զոր յիշեն Գր. Մագիստրոս, Արիստ. Լաստիվ. և այլք։ Գեօղն սովորաբար Թոնդրակ կոչուի։ Նոր ատեններս այս աղանդի վրայ շատ հետաքննական տեղեկութիւններ հրատարակեցին, Հ. Բարսեղ Վ. Սարգսեան ի Ս. Ղազար, 1893, իր Մանիքեան-Պաւղիկեան Ուսումնասիրութեան մէջ. Գալուստ Տէր Մկրտչեան և Կարապետ Վ. Տէր Մկրտչեան յԱրարատ Օրագրի էջմիածնի, 1893 և 1900. յետինս յամին 1893 գերմաներէն այլ հրատարակեց գրուած մի Բիւզանդիոյ կայսերաց ատենի Պաւլիկեանց վրայօք։ Հայագէտ Կոնիբէր (Conibcare) անգղիացին այլ հրատարակեց (1900) յՕքսֆըրտ՝ այդ Աղանդաւորաց Բանալի ճշմարտութեան կոչուած գրքոյկը, զոր շատ հին համարի, բայց նորաղանդութեան հոտ տայ, լեզուն այլ նոր է։

3. Ծանօթ է մինչև հիմայ Խնուս անուամբ աւանն։

4. Ծանօթ քաղաքաւան է Տիւրիկ. Տիւօրիկ այլ գրուած, ի փոքր Հայս. իսկ անոր գաւառն Թողայիա՝ յունարէն ծռած անուն մ'է, կամ Թուլայլեցի կոչուած աղանդաւորաց բոյնն։

յամենայն հերետիկոսաց ունէր ազանդ խմորոյ։ Եւ հետեւողք նորա եպիսկոպոսունք և վարդապետք և երիցունք են յոլովք, այլ անուանիք Մրջիւնիկ և Լուսիկ վարդապետքն Սմբատայ. իսկ աշակերտք Սմբատայ՝ Կիւրեղ, Յովէփ, Յեսու, Թէոդոս, Անանէ, Աբդայ, Սարգիս[1] և այլք[2]. որք ամենեքին էին Հայք և ազանդաւորք, և ամենեքին զհին և զնոր կտակարանսն ծաղր առնէին։

Ի սոյանէ ասաց Կիւրեղ, եթէ, Աստուած ընդ ամենայն տեղիս է և յամենայնէ պաշտի, և մեք աստուածապաշտ եմք և ոչ նիւթապաշտք. վասն որոյ բաւական է միայն ձեռամբ խաչակնքել. և սուտ և ընդունայն է եկեղեցի և խաչ և պատկերք, և եկեղեցական զգեստք և անօթք. միայն բաւական է քահանային ունել փիլոն և ոչ այլ ինչ։ Իսկ անիծեալն Յովէփ զկնի Կիւրեղի ընկալաւ զառաջնորդութիւն Թոնդրակեցւոյն, ասաց սնոտի յոյս գոլ քահանայից ի պատարագն. և քարոզեաց, եթէ ոչ է պիտոյ պատարագն, այլ խմոր թացեալ ի

1. Դր. Մագիստրոսէ առած է այս անունները. քիչ մի փոխելով շարքը։ Մագիստրոս՝ որոյ առեն ասոնց գլխաւորն էր Ղազար, 179 տարուան միջոց կ՚ըսէ. 13 կաթողիկոսք (մինչեւ ցՊետրոս Գետադարձ) նզովեցին զանոնք. որով Սմբատ Թ դարու կիսուն կ՚ըլլայ։ Անկէ վերջի դարերուն անոնց յիշատակին մեր վերոյիշեալ նոր գրողաց մէջ գտնեն հետաքննողք. գայս միայն յիշեմք՝ որ նա և մեր օրերուս կային թերեւս և կան այդ աղանդաւորաց շաշորդք, և բուն իսկ անոնց նախնեաց կեդրոնում, ի Խնուս. քանի մի տասնեակ տարի առաջ՝ գաւառին Հարամիկ գիւղի այդպիսի ընտանիք՝ Ամերիկացի քարոզչաց ջանքով ընդունեցան երիցական վարդապետութիւնը, և մասամբ գաղթեցին ի Կիւմրի՝ դեռ իրենց հին աղանդով։

2. Ասորի Ձեռագրաց մէջ (ի Լոնտոն) գտուին ասոր և իր Յովհաննէս եղբօր մասին գրուածք, որոց դէմ շատ կրքով գրած են Ասորիք և ուրիշ հերետիկոսաց հետ նզովեն։

գինի՝ պարտ է հաւատալ մարմին Քրիստոսի գոլ։ Եւ ասէր զկարգ սուրբ եկեղեցւոյ և զձեռնադրութիւն՝ ստուտ և վայրապար գոլ. այլ ասէր, եթէ որպէս զառաքելոյն ձեռն դնելով տալ զՀոգին Սուրբ, առանց պատարագի և եպիսկոպոսական զգեստուց։

Իսկ Պօղոս Սամոսատացին Արամեան ի Սամոստիա[1] գեղջէ Հայոց՝ էր աղանդոյն Թոնդրակեցոց, որք զմկրտութիւն ի ջուր՝ ոչ ընդունէին, և ասեն. եթէ, Քահանայքն ոչ հասկանան զբանն Պօղոսի հոգեւորապէս, որ ասէ, Ի մահ անդր նորա մկրտեցարուք, պարտ է ի մահն Քրիստոսի մկրտիլ. և ասէին, եթէ մկրտելն մահն է՝ մեզ ոչ է փոյթ մկրտել զոք։ Եւ դարձեալ ասէին Պօղոսեանքն, եթէ Քրիստոս ի յընթրիսն ոչ միայն վասն պատարագին ասաց՝ Այս է մարմին իմ, այլ և վասն ամենայն սեղանոյն, և այն էանց և լցաւ ընդ հնոյն։ Այլ և ասեն, եթէ, Մովսէս ընդ սատանայի խօսեցաւ և ոչ ընդ Աստուծոյ. և զերկինս և զերկիր և զամենայն մարդիկ և զայլս՝ ասէին ի սատանայէ։

Այլ և ոմանք Կաշեցիք[2] և բնակեն ի Խուն (Խնուս) գաւառն, և են Թոնդրակեցոց աղանդոյն, ասեն, եթէ, Մեք թլփատեալ Աստուած ոչ հաւատամք։ Եւ ի սոցանէ՝ Արշակունեցի Գրիգոր Մագիստրոսն, որ ի լատին ասի Մաչիսթէր, այս ինքն վարդապետ, գրեաց պատասխանի առ կաթողիկոսն Ասորոց, եթէ Մանիքեցիք վարեցան ի յաշխարհէն Յունաց, և Թոնտրակեցաց փախուցեալքն ի յԱսորիս՝ պարտ է աքսորել։ Քանզի յաւուրս Յովսէփ կաթողիկոսի[3]

1. Շատ դարերով վեր կ՚ելնէ Մխիթար այս տեղ, և թուի թէ զՍամոսատիս Հայոց սահմանակից քաղաքը՝ սեփականելով Հայոց՝ զաղանդապետն ալ հայացընէ։

2. Լաստիվերտցին յիշած է զասոնք։

3. Յովսէփ կաթողիկոս Ը դարու վերջին տարիներում հազիւ թէ յիշուած է, գործն ծանօթ չէ. այն ատեն կային բագրատունի Սմբատք, այլ ոչ թագաւորք։

և Սմբատայ բագրատունի Թագաւորի Հայոց, այս Սմբատ Ապլէճ աշակերտեցաւ պարսիկ մոգի ամեծի բժշկաց և աստեղաբաշխից, որ կոչէր Մջուսիկ[1]. և ի նոցանէ ուսեալ զանազան աղանդս՝ զըրդաւմս կարայս. և ի յայնմանէ մինչև ի Գրիգոր Մագիստրոսն աւելի է քան զճ և Հ (170) ամ: Եւ նա սահմանեաց ըստ աղէտութեան սուրբ եկեղեցւոյն Հռոմայ՝ զարդարել զեկեղեցիս և ունել սկի և հանդերձ և զանգակ և խաչ և պատկեր. և կեալ հեռագունդ և միաբան, որպէս նախնիքն, զոր ոմանք ոչ ընկալան[2]:

Այլ և գործ Սմբատայ և խրատոյցն էր ամենայն կեղծաւորութիւն, յայտնի՝ պահք և ողջախոհք. և ի ծածուկ՝ որկորամոլ և բղջախոհ...: Եւ Պօղոսեանքն վասն սիրոյ իւրեանց չար Պօղոսին՝ ասէին. Զպօղոս սիրեմք և զՊետրոս անիծեմք, զի նորա հետեւողքն մերոյ Պօղոսին հակառակ են: Եւ յայնմ չար սովորութենէ բազումք ուրացան զգլխաւորութիւն սուրբ առաքելոյն Պետրոսի, վասն որոյ և անկան ի բազում մոլորութիւնս:

Դարձեալ, և են ոմանք Հայկազեանք Հալեզուարեւապաշտք, և կոչին Արեւորդիք: Սոքա ոչ ունին գիրք և գպրութիւն, այլ աւանդութեամբ ուսուցանեն հարքն զորդիսն իւրեանց, զոր նախնիք նոցա ուսեալ էին ի Զրադաշտ մոգէ Անդրուշանէ[3] պետէ: Եւ ընդ որ երթայ արեգակն՝ ընդ այն երկրպագեն, և պատուեն զծառն բարտի և զշուշան ծաղիկն և զբամբակին և զայլսն, որ զդէմս իւրեանց

1. Ոչ այնքան յատուկ անուն՝ որքան պարսկերէնի յարմարցուցած մոգ բառն՝ մաճիւս:

2. Այս աւանդութիւն որ ուրիշներէ յիշուած չեմք կարծեր, մասամբ յիշեցընէ զխնդիր շարականին «կեցո՛ » զորդի ծառայի քո՝ զոր ի Հռովմայ գահիցն վերա- » պատուեցեր», և զոր նոյն ինքն Գր. Մագիստրոս շարադրած համարուի:

3. Ատրուշան գրելի է, կրակապաշտից բագինն:

շրջեցուցանեն ընդ դէմ արեգականն[1], և նմանեցուցանեն զինքեանս նոցա՝ հաւատով և գործով բարի և անուշահոտ։ Եւ առնեն մատաղ ննջեցելոց, և տան զամենայն Հա երիցու. սոցա առաջնորդն կոչի Հազրպետ։ Եւ յիւրաքանչիւր ամի երկու անգամ կամ աւելի՝ ամենեքեան այր և կին ուստր և դուստր ժողովին ի գուբ մի յոյժ խաւարին և մերկանան, և ապա Հազրպետն կարդայ և ղօղանջէ. յայնժամ գայ սատանայ ի նմանութիւն սեւ քօշի և միզէ ի վերայ ամենեցուն։

Իսկ Հայերն որ կոչին Գորգեցիք, ասեն, որպէս Նոյանցն ելեալ ի յումեմնէ Նոէ, եթէ Քրիստոս է Հայր և Որդի և Հոգի Սուրբ. և ըստ այնպիսեացն յիմարութեանցն համարեալ լինի՝ եթէ Սուրբ Երրորդութիւնն չարչարեցաւ և մեռաւ։ Վասն այնորիկ և բազումք ի Հայոց ուրացան զԵրրորդութիւն անձանցն, որպէս զՍաբէլ, և ասէին վասն Քրիստոսի, եթէ ինքն է Հայր, ինքն Որդի, և ինքն Հոգին Սուրբ. և յայնմ չար աւանդութեանց բազումք սովորեալք այնպէս ասէին. որպէս և հանապազորդ յաղօթսն իւր ասէր Յակոբ Մանկտաւագն[2]։ Նա և Գորգն այն որ բնակեցաւ ի յանապատն որ կոչի Արմէն[3], մերձ ի դղեակն Լամբրոնի, արար բազում աշակերտս, և առեալ զբան Մատթէոսի որ ասէ, Յերեկոյի շաբաթու[4], ասէր, եթէ Քրիստոս ի շաբաթի օրն ի յերրորդ ժամու յարեաւ. վասն որոյ և ասէր, եթէ պարտ է ուտել միս։ Իսկ աշակերտ վերոյգրեալ Գրիգորիդ[5] Մօսէս, ի Տէր

1. Ներսէս Շնորհալին այլ յիշէ զայս, իր մէկ գեղեցիկ և հմուտ Թղթին մէջ։
2. Անծանօթ է ինձ սա. Մանկտաւագ՝ տղայոց վարժապետ նշանակէ։
3. Տեղիս յիշուած է ի Սիսուան, 66. 78. 96։
4. Ի Ձեռագրին էր յերկուշաբաթու։ Մատթ. ԻԸ, 1։
5. Պէտք էր Գորգիդ ըսել։

Գրիգոր միարան կաթողիկոսէն[1] որ ի Կիլիկոյ, փախուցեալ գնաց յՍիզնկէն, և եդ կանոնս, ամենեւին ոչ առնել չրթամբք Հայր մեր յերկինս՝ ի յեկեղեցի կամ արտաքոյ, այլ միայն ի միտս և ի ծածուկ. և ասաց պատարագել փայտեղէն ամանով, և առանց սպասաւորի, և երարձ զմաղզմայն և զգօրփօրայն՝[2] եթէ ըստ Յունաց է։

Եւ ոմն վարդապետ Հայոց Վարդան անուն, թէպէտ ասէր զՔրիստոս մի անձն և երկու բնութիւն, և ընդունէր զԾնունդն Քրիստոսի և զՋատիկն ըստ եկեղեցւոյ, սակայն երարձ զՅայտնաւուրքն և զտօնս Սրբոցն. նա և ասէր, եթէ առաջի սուրբ Աստուածըն է Հօր, և Սուրբ հզօրն՝ Որդւոյ, և Սուրբ անմահն՝ Սուրբ Հոգւոյն, և ապա յիմարութեամբ ասէր՝ որ խաչեցար։ Այլ նոքա որք ասէին զՔրիստոս սոսկ մարդ և մի բնութիւն, ասէին, եթէ երեք սուրբն նշանակէ զՍուրբ Երրորդութիւն, և ոչ է պարտ ասել զՔրիստոս Աստուած, այլ միայն՝ Քրիստոս՝ որ խաչեցար՝ ողորմեա մեզ բարեխօսութեամբ։

Իսկ ի ժամանակս Կոստանդեայ Կեսարացւոյ[3], յարեան ոմանք չարք, այսինքն, Սիմէոն, Ղլաք, Յովան և Վահրամ[4], և կամեցան ասել զՔրիստոս մի բնութիւն, և բառնալ զջուրն և զամենայն զարդ եկեղեցւոյ և զգեստ քահանայական. և Տէր Կոստանդին հանդերձ ամենայն ուղղափառօք ի տասն օր տրամաբանեալ ընդ նոսա՝ յաղթեաց զնոսա և արար ամօթալից. և թագաւորն բարկացեալ չարեացն՝ արտաքսեաց ի չարեացն արս ԵՃ (500) ի Կիպրոս, և չարքն տաճկացեալ փախեան և սերմանեցին բազում չարիս։

1. Ո՞ր Գրիգոր կաթողիկոսն. միթէ Անաւարզեցին, թէ Տղայն։
2. Մարմնակալ կտաւն՝ սկիհի տակ փռուած։
3. Կոստանդին Բ կաթողիկոս, ԺԳ դարու վերջերը։
4. Այս դիպուածիս վրայ յատուկ գրուած մի չեմք գտած։

Դարձեալ և ըստ վերոասացելոցդ են և այլ բազում և զանազան Հայք ի զանազան տեղիս. քանզի ոմանք կոչին Սռեք, ըստ Սըսացոց կոչելոյն և բարբառոյն, որ ասի Բաժանեալք կամ Թափեալք. վասն զի բաժանեալ Թափեցան ի Սըսոյ միաբանութենէն որ ընդ սուրբ եկեղեցւոյ։ Եւ ոմանք կոչին Ծտար Հաեր, որ լեզուով և գրով ազգաւ են Հայք, բայց դաւանութեամբ և ամենայն օրինօք են Յոյնք, և ամենայն կարգաւ հնազանդ նոցա, որպէս յայտ է այնոքիւկ որք են ի յԵզընկէն և ի յայլ Հոռոմոց տուն և ի Կաֆէն[1], ի Ղրիմն և ի յայլ բազում տեղիս։

Եւ ոմանք կոչին Արևորդի Հաեր և կամ Գորգեցիք, որպէս ասացաւ ի սոյն ճառս և գլուխ, և այլք այսպիսիք։ Եւ ոմանք կոչին Սըսոյ միաբանք, որք բազում կերպիւ դաւանութեամբ և օրինօք և արարողութեամբ խորհրդոց՝ են համաձայն ընդ սուրբ եկեղեցւոյ. որպէս յայտնի է ի Ձեռնադրութենէ գրոցն և ի Դաշանցն[2]։ Բայց կարգաւորքն թէպէտ և յառաջագոյն ունէին ջարքոն[3], սակայն այժմ հանդերձիւ և կացուցմամբ[4] և սակաւ ինչ արարողութեամբ և ժամակարգութեամբ զանազանք։ Բայց ընդ ամենայն աշխարհ Հայք զամենայն զժամակարգութիւնս և զարարողութիւնս պատարագին առնեն՝ բաց ի սակաւուց՝ ըստ կարգաւորելոյ Սրբոյն Ամբրոսիոսի[5], որպէս յայտ է այժմ ի

1. Այսինքն Կաֆա, Քէֆէ, կամ Թէոդոսիա քաղաք Ղրիմու։
2. Գուցէ թղթակցութիւնքն Հռովմայ գահուն ընդ կաթողիկոսունս մեր։
3. Կնկուղ, վեղար։
4. Կարգ, կանոն։
5. Թերևս Միաբանող և Հայ Եղբարք անուանեալքն, որք ի Միլան այլ վանք մի ունէին, որ տևեց մինչև ի կէս ԺԶ դարու, թէ և յետին միաբանքն չէին Հայազգիք այլ Հայ անուանեալ Իտալացիք։

վիճակ նորա, այսինքն ի Միլան և ի սահմանս նորա։

Մոլորութեան (Անդրէասայ, Կայանադրայ) հետեւեցան ոմանք ի Յունաց և ոմանք ի Հայոց, որք մերձակայք են այնմ գաւառին (Կեսարիոյ) և երկրին, որք կոչին Ծայր[1] Յոյնք և Ծայր Հայք, որք ամենեւին դաւանութեամբ և օրինօք և պարագայիւք նոյն են Ծայթ Հայքն ընդ նոյն Յունաց, և յոյժ ատեն և բամբասեն զՀայսն՝ որք ոչ հաւանին վերոյգրեալ աղանդեացդ, որպէս յայտ է ի Հայոց Յայսմաւուրաց և ի չորոկանացն, ի յասացուածոցն և ի Մաշտոցէն և յաղօթիցն և ի յարգեանցն վասն ննջեցելոցն. որք հաւատան զկատարեալ չարսն և զանհաւատսն ի դժոխսն, և վասն անկատար սրբոցն և ննջեցելոց՝ խնդրեն աղօթիւք և ողորմութեամբ հանգիստ հոգւոցն ննջեցելոցն, ընդդէմ Ծայթ Յունաց և Ծայթ Հայոց. միայն լեզուաւ և գրով են Հայք, և այլով ամենայնիւ միաբան ընդ նոյն Յունաց և ամենայն գրոց նոցա. որպէս յայտ է այժմ ի Հռոմայ տանէն մինչև ի Յոյնք և ի Կաֆա և ի յայլ տեղիս, որք բազումք կան ի նոցունց յամենայն տեղիս։

Իսկ ոմանք կոչին Հայք Միաբանք, որ ամենայն կերպիւ են ըստ այժմու Հայոց սովորութեանց, բայց ուխտիւ ընդ բանին որ վերաբերի ի դաւանութիւն հաւատոյ և ի փրկութիւն՝ են համաձայն ընդ սուրբ եկեղեցւոյ։ Իսկ ոմանք կոչին Հայք և միաբան կաթողիկ ըստ ուխտի Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին և ընդ սուրբ եկեղեցւոյ. որպէս յայտ է այնոքիւկ՝ որք են ի Կաֆա և յերկիրն Նախջեւանոյ և ի գաւառն Երընջակոյ[2] և այլ բազում տեղիս։

Եւ այսպէս ըստ վերոասացելոցդ՝ գրէ եթէ ա-

1. Ծըրթռիլ բառին արմատն թուի, իբր աւրուած։

2. Ուր էին Միաբանող (Ունիթոր) Հայոց վանորայքն, որոց մին է Ապարաներ գիւղն, ուր կենար գրող Յօդուածիս Մխիթար։

մենայն Հայք ըստ զանազան տեղեաց և ժամանակաց՝ ոմանք ընդհանրականաբար և ոմանք մասնաւորաբար հետեւէին սուրբ եկեղեցւոյ. քանզի ոմանք առնեն սկիհ և մաղզմա և գօրփորա և փալա[1], և գլխարկ և ուրարք և շուրջառ և խաչն ի մէջն, և ի բազում տեղիս ունին նկարեալ պատկեր ի յորմ եկեղեցեաց և կամ ի տախտակս կամ ի դիրս. և բազում եպիսկոպոսունք առնեն զգեստ և գործիք քահանայապետական՝ ըստ ձեւոյ սուրբ եկեղեցւոյ: Եւ ոմանք ընդ մեզ ի մէջ գիշերի յառնեն ի ժամերգութիւն, զոր ինքեանց սովորութիւն է յառնել ընդ այլոց ազգաց ընդ արշալուսն: Եւ ոմանք ի յամենայն օր պատարագեն: Այլ բովանդակ ամենայն Հայք հին և նոր Թարգմանեալ գրովք և բաղարճով պատարագելով և պահելով, զանկակօք:...

---

## ՑԿԴ

## ԼԷՆԿ-ԹԻՄՈՒՐ

### (ԹՈՎՄԱՍ ՄԵԾՈՓԵՑԻ)

Այր մի Թամուրլանկ[2] անուն, դաւանութեամբ և օրինօք պղծոյ Նեռին կարապետի, յայտնեալ երեւեցաւ ի յարեւելս և ի Սմրղանդ քաղաքի. անողորմ, անգութ, անագորոյն, լցեալ ամենայն չարութեամբ, պղծութեամբ և հնարիւք բանսարկուին

1. Փալա կամ փալեկ, ըստ լատին Pala բառի՝ նշանակէ Կափարիչ, ծածկոց մաղզմայի, սկիհի:
2. Արեւելեայք կոչեն Տեմուր-լենկ, առաջին բառն նշանակէ երկաթ, երկրորդն կաղ. մին բնական միւսն բարոյական յատկանիշ այդ աշխարհադղորդ մարդուն:

սատանայի[1]. զոր ոմանք ի Սարքափուռէ[2] ասեն գալ զնա, որ ի դաւառն կոգովիա՝ մերձ ի լեառն Մասիս՝ ուր տապանն է Նոյի, և մերձ ի յԱրտազ գաւառ[3]։ Որ գնացեալ ի Թաւրէզ. և զանորէից[4] յղեալ զնա առ ի քէշիկս[5] պահել զԹշնամիս ի ճանապարհին Խորասանու. և նորա ելեալ անտի գնաց ի Խորասան. և անտի անցեալ զգետն Ջահուն, և ընթացեալ ի Սմրղանս քաղաքն արեւելից, և տեսեալ անտերունչ զաշխարհն ամենայն՝ եղեւ աւազակապետ և գլուխ մարդասպանից։ Եւ ժողովեցան առ նա ոգիք հինգ հարիւր հնգետասան, աւելի կամ պակաս՝ չար և նման ինքեան։ Եւ իշխանք քաղաքին ելեալ զհետ նոցա պատերազմել. և նոցա յետս դարձեալ պատերազմեցան հարին զնոսա և սպանին. և մտեալ ի քաղաքն՝ առին զաւէրութիւն քաղաքին, և զկին նորա[6] Խանում անուն տիկին նորին. և սակաւ սակաւ զօրացեալ՝ էառ զԲուխարա քաղաք. և անցեալ յայնկոյս Ջահուն գետոյն և մտեալ յերկիրն Խորասանու՝ առնոյր զբազում քաղաքս նոցա և կոտորէր սրով զամենեսին։ Եւ ահ և երկիւղ անկեալ ի վերայ նոցա՝ ետուն զաշխարհն ի ձեռս նորին։

1. Թովմաս՝ ի յիշելն զնա և յաջորդները՝ չի կըրնար զսպել զինքը զանոնք Թշնամանելէ. բայց չի կըրնար զլացուիլ որ Լէնկթիմուր՝ անգթութեանց հետ ունէր և կառավարութեան ճարտարութիւն և կարգադրութիւն։

2. Թուի Սարքափուռ, հիմայ կոչուի Սահարափուռ։

3. Ո՞վ հնարած է այս անկարծելի աւանդութիւնը։

4. Ցոդնակին Ղաճ կամ Խաճ կոչման, մեծ պարոնայք կամ իշխանք Թաթարաց. թարգմանողն Նեւ՝ վանորայք կարդացեր է և գրէ Monastères.

5. Թուրք բառ, անցուդարձի կամ սահմանաց տեղիք, զորս ի թշնամեաց պահպանելու համար խաւրուեր է։

6. Պէտք էր յիշել անուամբ կամ անանուն քաղքին տէրը և ապա զկինն։

Եւ նա զոմանս խաբէր սուտ կաշառօք, ոմանց երդնոյր, զոմանս որդեգիրս առնոյր, ոմանց զդստերս իւր ի կնութիւն տայր, և պատերօքն սպանանէր զփեսայսն: Որ և (էառ) զՀրէ քաղաքն Թագաւորանիստ. ետ զդուստր իւր իշխանի նոցա, և կացեալ զաւուրս ինչ առ նա՝ սպան զայր իւր սրով, և յղեաց առ հայրն գալ առնուլ զքաղաքն. և նորա գնացեալ էառ և արար քաղաք Թագաւորական:

Իսկ իշխան մի Շահ-Մանսուր անուն ընդդէմ կացեալ նմա աւելի քան զութ ամ, և ոչ տայր նմա զՇիրազ, զՔիրման և զԱսպահան. և պիղծն Թամուր խաղաղութիւն արարեալ ընդ նմա, և հնարիւք յետս դարձեալ ընդ արեւելս, և Շահ Մանսուրն դեսպան և աղերս առաքեալ նմա բազում յոյժ: Եւ նորա տեսեալ զեկեալ դեսպանն՝ սուտ հիւանդ անկեալ՝ ետ բերել գառն մի, և զենին զնա և էարբ զարիւն գառինն, և ետ բերել անօթ պղնձի, և դարձոյց յետս[1] զարիւն գառինն՝ առաջի ամենայն բազմութեանն. և հրամայեաց կոչել ըզդեսպանն ի մէջ բազմութեան, և եցոյց զդէմս կերպարանաց իւրոց իբրեւ զմեռելոտի: Եւ եկեալ դեսպանին տեսեալ՝ յոյժ ուրախ լինէր ի միտս իւր և ասէ, Այսօր և վաղիւն սատակի: Եւ ի գիշերին այնմիկ ելեալ ի ձի և հասեալ առ Շահ-Մանսուր իշխանն և ամենայն աշխարհին ետ աւետիս ուրախութեան. և ապարիշ մեծ արարին[2], այսինքն է հանդէս: Եւ ամենայն մարդիկ աշխարհին որ կային ի նեղութեան, ի քաղց ի ծարաւ և ի վտանգ տագնապին՝ ելեալ ցրուեցան յիւրաքանչիւր բնակութիւնս ուստի եկեալ էին:

Իսկ չարահնարն Թամուր պատրաստեաց զզօրս իւր. և զերից և զչորից աւուրց երթեալ ճանապարհն ի միում աւուր՝ եկեալ հասանէր ի դուռն

1. Այսինքն՝ փսխեց խմած արիւնը:
2. Եթէ սիփարիշ է՝ Թուրքարէն նշանակէ յանձնարարութիւն, պատուէր (հանդէսն ընելու):

քաղաքին. և ի պատերազմ ելեալ ի վերայ նոցա՝ ի սակաւ աւուրս կոտորեցին, և յառնուլ բերին զամուրս[1]: Իսկ արին Շահ-Մանսուր սրտապնդեալ սպառազինեաց զզօրս իւր 800 ոգի. յանկարծակի բացեալ զդուռն քաղաքին՝ և մտեալ ի մէջ անթիւ և անհամար գնդին, մինչ զի հասին ի նոյն տեղին՝ ուստի Թամուր ժողովեալ էր զամենայն գունդ Արեաց հեծելին: Եւ վերացուցեալ զսուրն իւր ի վերայ գլխոյ սատանայի զաւակին. և զօրացն անպարափակ արարեալ՝ ոչ կարացին սպանանել ըզպիղծ վիշապն անդնդային. այլ շրջապատեալ զօրաց նորին՝ զամենեսեան առ հասարակ կոտորեցին սրով. և այսպէս առին զամենայն աշխարհն Խօրասանու, զԲահլ քաղաք, զԽորասան, զՇիրազ, զՔիրման, զԱսպահան, զՆիւշապուհ, զԿուրան, զՄակուրան, զԹուս, զԹանգան, զԹամղան, զՄազանդարան, զՌէ, զՂազուին, և հասին մինչ ի Սուլթանիա, ի սահմանս Ատրպատականին Թաւրիզու: Եւ Եդիլ անուն Սուլթանիոյ իշխանին գնացեալ ընդ առաջ նորա գանձուք և թագաւորական աղերսիւք՝ հաշտութիւն արար ընդ նմա:

Եւ ղանն Թաւրիզու սուլդան Ահմատն ելեալ գնաց փախստական ճանապարհաւն Ուրշտունեաց Ոստանոյ, առաջնորդութեամբ ամիրային Մարաց Եզդեայ՝ ի Բաբելոն քաղաք, որ այժմ Պաղտատ կոչի, առ ազգականս և զօրս իւր. զի ի նոյն ժամանակին և նոցա տիրէին: Իսկ Եդիլն ասացեալ առաջնորդեալ Թամուրին ի Թաւրէզ քաղաք՝ ետ ի ձեռս նորին. և գաղտագողի խորհուրդ արարեալ ընդ զօրս իւր՝ կամէր սպանանել զԼանկն՝ զկաղն Թամուր՝ ի բաղանիս քաղաքին. և մի ոմն իմացեալ զխորհուրդն՝ ծածուկ եկեալ առ նա՝ ասէ զդաւնենգութեան Եդիլ աղային. և նորա գիտացեալ՝ յըղեալ կոչեաց զնա, և հուր ետ վառել, և եդին կենդանւոյն ի պղնձի սան և եփեցին առաջի նորա և ամենայն բազմութեանն. և այնպէս կորուսին զնա:

1. Քիչ մնացեր էր որ պիտի տիրէին բերդին:

## ՑԿԵ

## ԳԱՀԱՎԻԺՈՒՄՆ
## ԳԵՐԵԼՈՑՆ Ի ԹԻՄՈՒՐԷ ԸՆԴ ԲԵՐԴՆ ՎԱՆԱՑ

(Թ. ՄԵԾՈՓԵՑԻ)

Զուեալ գնաց ի գաւառն Տոսպայ ի վերայ ամրոցին Վանայ Հայոց. և առ ժամայն ամիրայն Եզդին յազգէն Սենեքերիմեանց[1] ոչ եկն առ նա. այլ ապստամբեալ ի նմանէ մնաց ի յամրոցին հանդերձ ամենայն զօրօքն և բազմութեամբ քրիստոնէից. և յետոյ իջեալ ի յամրոցէն՝ գնաց առ նա. և նորա կալեալ կապեաց զնա: և եկեալ ի վերայ ամրոցին՝ քառասուն օր ի նեղութիւն արկին և զբազումս սպանին ի զօրաց անօրէն Ջաղաթային: Եւ նոցա նեղեալ ի հացէ և ի ջրոյ՝ ոչ կարացին կալ ի խաարին[2], և ետուն զբերդն ի ձեռս նոցա:

Աւա՜ղ աղէտիս և դառն կսկծիս. աստ էր տեսանել զաւ՜ և զերկիւղ աւուրն դատաստանի, զլալումն և զողբումն ամենայն բերդին. զի հրաման եղեւ ի չար բռնաւորէն՝ զկանայս և զմանկունս առնուլ ի գերութիւն, և զհաւատացեալս և զանհաւատս ի բերդէն ի վայր ընկենուլ: Իսկ նոքա առ ժամայն կատարեցին զչար հրաման նորա. սկսան առ հասարակ զամենեսեան ի վայր ընկենուլ. և այնքան բարձրացաւ մեռեալն, մինչ զի վերջին անկեալքն ոչ մեռանէին. զոր տեսաք աչօք, և լուաք ականջօք մերովք ի սուրբ հօրէն՝ սրբազան արքեպիսկոպոսէ Տէր Զաքարիայէ, և ի հօրէն վարդապետ Տէր Պօղոս կոչեցեալ, որ և նոքա ազատեցան՝ լծելով ի բերդին. զի իշխան մի Ջաղա-

1. Շատ տարակուսական է այս ազգակցութիւնն:
2. Չկըրցան համբերել երկար պաշարմանն:

թայ[1] զիւր տուեալ բաժին գերիսն՝ ազատ արար, և սակաւ մնացելոցն նա եղեւ պատճառ։ Եւ լցաւ անմեղ արեամբ քրիստոնէից և այլազգեաց՝ աշխարհն ամենայն շուրջ զդղեկաւն։ Իսկ մուղրի[2] մի յոյժ բարձրաձայն ելեալ ի մինարայն քաղաքին Բերկրոյ՝ զղիւամաթի սալայն (զկոչ վերջին աւուր ձայնեաց)։ Ասա որ դատաստանին հասաւ։

Եւ պղծոյն անողորմի միտ եդեալ ասէ. «Զի՞նչ է ձայնն այն». ասեն մերձակայքն. «Օր դատաստանին հասեալ է, որ Յիսէն[3] առնելոց է. և զայն դու արարեր այսօր». զի ըստ նմանութեան փողոյ ձայն լալական գոչեաց մուղրին։ Ասէ. «Բերանն այն բեկեալ լիցի. սակաւ մի այլ թէ յառաջ գոչեալ էր՝ բնաւ երբէք մարդ ոչ սպանանէի։ Եւ նոյն ժամայն հրաման տուեալ այլ մի՛ արկանել ի վայր զմնացեալսն. այլ ազատել զամենեսեան։ Բայց ո՞վ կարէ պատմել զթիւ գերեացն և զսպանումն անմեղացն. այլ Աստուած միայն որ ստեղծ զամենայն և թուէ զամենեսեան. զի լցաւ աշխարհ ամենայն գերութեամբ Հայոց։ Մեռան քահանայք և աշխարհականք, հաւատացեալք, և անհաւատք։

---

## ՑԿԶ

## ՄՇԵՑԻ ԿԻՆՆ ՈՐԴԵՋԵՆ

(Թ. ՄԵԾՈՓԵՑԻ)

Զարմանալի գործ մի գործեցաւ ի սմին աւուր. զի կին մի երկիւղած և հաւատարիմ ի Մուշ գա-

1. Մեծ ցեղ մի Թաթարաց։
2. Մզկիթաց մէջ կարդացող կամ կանչող պաշտօնեայ։
3. Տէրն մեր Յիսուս։

ւառէ, ունելով զորդի մի յոյժ պատուական և բազ-
ձալի, և դէմք կերպարանացն իբրեւ զերեսս հրեշ-
տակի, զոլով ամաց իբրեւ եօթանց կամ ութից.
զի յելանել զօրացն արեւելից ի լեառն Խոզբայ,
բազումք ի քրիստոնէից աստ և անդ փախուցեալ
կային ի պրակս մայրից գաղտագողի։ Եւ տեսեալ
զնոսա անօրինացն՝ արշաւեալ ի վերայ նոցա կա-
մէին զերել զնոսա։ Իսկ ողորմելի մայրն որբասէր
և երկիւղած յետս դարձեալ՝ տեսանէր. զի զայլն
զկնի և մերձենային առնուլ զմանուկն։ Առեալ
սուր ի ձեռին իւրում զենեաց զորդին ցանկալի և
իբրեւ զգառն անմեղ պատարագեաց ի սէր գառին
Յիսուսի Քրիստոսի, փոխադարձ առնելով Հօրն
երկնաւորի, որ զԱստուածորդին՝ զանարատ գառն
իւր պատարագեաց, զենեալ և խոցեալ ի վերայ
քառաթեւ խաչին բարձրացեալ ի վերայ սրբոյն
Գողգոթայի։ Եւ ինքն մայր մանկանն սակաւ մի
յառաջ ընթացեալ՝ ել ի վերայ բարձրաւանդակ վի-
մի, ի վայր ընկէց զինքն և եհան զոգին. գոհու-
թեամբ փառաւորելով զանուն Յիսուսի Քրիստոսի։
Եւ զայս վասն այնորիկ արար՝ զի մի երկուքն
(երա) զրկեսցին ի Քրիստոսէ և սատանայի բաժին
լինիցին, այլ Աստուծոյ լինիցին բաժին և հա-
ճոյական պատարագ առաւել քան զհօրն հաւատոյ
մեծին Աբրահամու և քան զմայրն Շամունեայ,
որ զեօթն որդիսն պատարագ մատոյց Աստուծոյ,
յորդորելով զնոսա յօժար կամօք մեռանել վասն
Աստուծոյն մերոյ Մեսիայի։ Եւ զայս վասն այնո-
րիկ ետ թոյլ Աստուած՝ զաղխս իւր սպանանել և
Աստուծոյ պատարագել, զի մի միայն Աստուածն
Աբրահամու փառաւորեսցի, և մի սամբ հնոյն Իս-
րայելի, և մի հինն Իսրայէլ առաւել պարծեսցի
քան զնորս Իսրայէլ՝ զհաւատոյ որդիս մեծին
Աբրահամու և Լուսաւորչին Գրիգորի, որ էր ի
մարմնաւոր թոռանց հօրն հաւատոյ։ Եւ զայս մի
ոք երկբայութեամբ և կարծեօք դիտեսցէ. զի մեր
իսկ վարդապետօք և աշակերտօք գնացաք ի Սուրբ

Կարապետն և դարձեալ եկաք ի Մուշ, և բերաք զտեսողսն և զլսողսն, զճգնաւոր հայրն՝ զԴաւիթ կրօնաւորն զհոգեւոր հարազատ սուրբ ճգնաւորին Բարդողիմէոսի՝ Սուրբ Առաքելոցն Ղազարու վանացն, և ի նոցանէ զճշմարիտն ստուգեցաք, և ձեզ յիշատակ օրհնութեան Աստուծոյ թողաք:

---

## ՅԿԷ

## ՄԱՐՏԻՐՈՍ ԿՈՂԲԱՑԻ

### (Թ. ՄԵԾՈՓԵՑԻ)

Յութ հարիւր երեսուն և վեց թուականին մեր (1387) առեալ էր (Լէնկ Թիմուր) զաշխարհն Խորասանու՝ ութամեայ պատերազմաւ. և անտի չուեալ եկն էառ զԳանձակ շահաստանի՝ քաղաքն Թաւրէզ: Եւ անտի չուեալ եկն յերկիրն Սիւնեաց ի վերայ դղեկին Եռնջակու. և ապա ի վերայ երկրին Ճակատուց[1], էառ զքաղաքն Սուրբ Մարի[2], ի հիմանց տապալեալ զամուրն մեր, զոր էր ամրափակեալ պատուական ազգին Բագրատունեաց. և գերեաց զքաղաքն և զամենայն շրջակայ գեղօրայսն: Իսկ բարեպաշտ տանուտէր մի Մարտիրոս անուն, յոյժ զօրեղ զօրական, ելեալ ի լեառն Բարդող, որ կոչի յայլոց ազգաց Թակալթու, յոյժ արի և քաջ մինկամբք զեղջն՝ ապրեցոյց զամենայն հաւատացեալսն՝ մեծաւ պատերազմաւ և սրտապինդ զօրութեամբ, օգնութեամբ հզօրին Աստուծոյ Յիսուսի Քրիստոսի Փրկչին մերոյ: Եւ թէպէտ բազում անգամ պատերազմեալ՝ ոչ կարացին առնուլ զլեառն զայն: Որ

1. Այրարատայ գաւառ մի, ոչ հեռի ի Մասեաց:
2. Որ և Սուրմառի կոչուի:

յետոյ այրն այն նահատակեցաւ ի պիղծ Թուրքմանէն Ասհար[1] անուն, հեղձուցեալ ի ջուրն Արազոյ (Երասխ), անտես ի մարդկանէ։

---

## ՑԿԸ

### ՍՔԱՆԴԱՐ ԹՈՒՐՔՄԱՆ

(Թ. ՄԵԾՈՓԵՑԻ)

Որդի Յուսուփին[2] Սքանդարն ոչ հանդիպեցաւ առ հայրն իւր զի նստէր ի տեղի նորին. այլ եկն ի կողմանէն Պաղտատայ, և առեալ զզօրս հօր իւրոյ և զքաջս Հիզանին[3] եկն ի Բագրեւանդ գաւառ մերձ սուրբ ուխտին[4] չինեալ ձեռամբ Տրդատայ և Լուսաւորչին Գրիգորի. կամէր գնալ ի վերայ Շահ–Ռուհին. և Շահ–Ռուխն[5] այն հասեալ ի Հեր և ի Զարեւանդ գաւառ, և ի վերջն՝ ի Բերկրի։ Եւ համբաւ գալոյ Սքանդարին եհաս առ նա. և դար-

1. Ասոր անուամբ կարծեն ոմանք թէ այդ տեղն կոչուեր է Ասհարափոս։

2. Գարա–Գոյունլու (Սեւ ոչխարաւոր) կոչուած մեծ ցեղ մի էր Թուրքմանաց, որոյ պայազատն և Թիմուրի հետ կռուողն կոչուէր Գարա Մուհամէտ. ատոր որդին Գարա Յուսուփ հօրմէն աւելի անուանի եղաւ, ոչ պակաս քան զսա և իր որդիքն Սքէնտէր և Ճիհան–շահ։ Ուրիշ մեծ ցեղ մ՚այլ Աք–գոյունլու (Ճերմակ ոչխարի դրօշակով) Հայաստանի հարաւային սահմանաց (յԱմիդ) տիրէր, և իրարու հակառակէին։

3. Հիզան կամ Խիզան՝ Վանի արեւմտեան հարաւային կողմի գաւառ և քաղաքաւան։

4. Իւչ գիլիսէ կոչեցեալ Ս. Յովհաննու հռչակաւոր մեծ եկեղեցին։

5. Լէնկ–Թիմուրի որդին է սա, անուանի քան զեղբայրն Միրանշահ։

ձեալ անհուն բազմութեամբ եկն եհաս ի յԱրճէշ. փոս եւ հատանել յերկաւս տեղիս, մինն ի յԱրճէշ և մինն՝ ի Հաապաակ[1] մինչ ի լեառն Աղու. և ի միւս օրն ելեալ գնաց ի դաշտն Ապահունեաց ի Խանագահն. և փոս եհատ յաճէ զօրացն արի և զօրեղ զօրականին Աքանդարին: Եւ հասեալ ի Վաղարշակերտ՝ ի դաշտն Բագրեւանդայ, ճակատ առ ճակատ բանակեցան: Եւ մտեալ ի պատերազմ՝ հարկանէին զմիմեանս. և արի և քաջ պատերազմողն մտեալ ի մէջ անթիւ զօրացն Շահ-Ռուհին, և զբազումս սատակեալ ի զօրաց Ջաղաթային, եհատ զռնգունս փղին, և մի կին ի ծառայից նորա յափշտակեալ ի տանէ Շահ-Ռուհին, և արկ ահ և երկիւղ ի վերայ արեւելեան գնդին: Իսկ Շահ-Ռուհն այն կայր առանց երկիւղի յաճէ նորին. ապա երթեալ ի ծառայիցն ասեն ցնա. Հէմ կաս խաղաղութեամբ. ահա՛ կորեաք յաճէ քաջ և մենամարտիկ որդւոյ Յուսուֆին: Իսկ նորա ելեալ ի խորանէն՝ հրաման ետ զուղտս և զանասունս տանել զառաջեաւ զօրուն. և գոչեցին առ հասարակ միաբերան. և կախարդքն ձգեալ զթուղթ ի վեր յերկինս, և հանեալ զսուրս իւրեանց՝ ի վերայ նոցա դիմեցին: Եւ վաղվաղակի և առ ժամայն ի սուր սուսերի հարեալ կոտորեցին զզօրս անհնազանդ Թուրքմանին: Աստ էր տեսանել զաղէտ տարակուսանաց նոցին. զի գոչումն աղաղակի նոցա սարսեալ դողացուցանէր զերկոսին կողմանսն, որպէս քաջքն Վարդան և Մուշեղ արարին Պարսից: Այլ և հայր ուրացաւ զորդի, և որդի՝ զհայրն, մայր զդուստրն և դուստր՝ զմայրն:

Եւ երկու եղբարք Աքանդարն և Ասպահանն մազապուրծ եղեալ գնացին փախստական սակաւ զօ-

1. Ուրիշ ՕՕ գրեն Հաապաակ, Իւաապաակ, անծանօթ տեղ. միւս յիշուած տեղիքն Վանայ ծովու և Մասիս լերանց միջոցն են:

րաք ի Ներքին կողմն աշխարհին. ի Մերտին, ի Մարաշ։ Եւ ամենայն զօրքն և խիզանն[1] անկան ի ի ձեռս Ջաղաթային։

---

## ՅԿԹ

### ԱՐՇԱՒԱՆՔ ՇԱՀՌՈՒԽԻ

(ՑԻՇԱՏԱԿԱԳԻՐ)

Որդի մեծի Թամուրին Շահռուխ կոչեցեալ՝ չորս անգամ բազում հեծելօք՝ անգութ և անագորոյն և անողորմ և ծարաւի արեան քրիստոնէից. երեկ ի վերայ աշխարհիս Դաւրիժոյ. որ բազում և անասելի աւեր էած ի վերայ աշխարհիս Հայոց. զի (էր) զոր սրով կոտորեաց և զոր անողորմ գերի վարեաց և կորոյս, և զոր սովամահ արար[2], և զոր մահն տարաւ, և զոր գայլք և գազանք կերին և պատառեցին. և մնացեալք այսր և անդր փախեան բնաջինջ, և մտին յաշխարհն Վրաց։ Եւ ամենեւին անմարդաբնակ մնաց և աւերեցաւ աշխարհն մեր, և դրունք երկնանման տաճարացն փակեցան. և լոյսք և կանթեղք շիջան և խաւարեցան, և խունկք և նուէրք պակասեցան, և աղօթք և երգք սաղմոսաց պակասեցան և դադարեցան. և մատուցմունք պատարագաց և ամենայն սրբութիւնք եկեղեցւոյ Խաչ, Աւետարան, և ամենայն հանդերձեղէն սպասք եկեղեցւոյ՝ ի ձեռս այլազգեաց գերի մատնեցաւ. և մեծ սուգ և ողբ և տրտմութիւն և կսկիծ հասաւ Հայոց եկեղեցեաց, և եղաք որպէս հինն իս.

1. Ծառաներ կամ տղայք տան Թուրքմանին։
2. Շատ աւելի գոյնով նկարագրէ սա զՇահռուխ, զոր Մեծոփեցին և Խլաթեցին պայծառ ցուցին, անշուշտ բաղդատելով ընդ Սքանտարի։

րայէլ՝ կոխան և այպն կատականաց ամենայն ազգաց։...

Ցայս դառն և կսկծալից ժամանակիս, կարի աղքատութեամբ և չքաւորութեամբ ետու գրել ըզգիրս ի յօտար երկիրս Վրաց, ի ձեռս Ցովհաննու քահանային, ի վանքս Հաղբատայ[1], առ դրան սուրբ Նշանիս[2] և սուրբ մայրաքաղաք խմբարանիս և Սուրբ Աստուածածնիս և Սուրբ Գրիգորիս. առ դամբարանի սուրբ վարդապետաց, և սուրբ հայրապետաց, և բազում մեղաւքաւիչ և աստուածաբնակ տաճարացս. ի յառաջնորդութեան Տէր Զաքարիայ արհի եպիսկոպոսի և ի թագաւորութեան Վրաց Ալէքսանդրի, և պարոնութեան տեղւոյս և նահանգիս Լօռոյ[3] մեծափառ և աստուածասէր իշխանաց իշխանիս՝ պարոն Բէշքէնին յազգէ Օրբելեանց՝ թոռին մեծ պարոնին Բիւրթէլին[4]. ի թուականի հայկազեան տամարի ՊՁԷ (1438)։

1. Այն ատեններ յիշած մեծ վանքին սահմաններն՝ Վրաց թագաւորին իշխանութեան ներքեւ ըլլալով՝ Վրաց երկիր կոչէ։

2. Մեծ և նշանաւոր եկեղեցին Հաղբատայ՝ նուիրեալ Ս. Խաչի, կոչուէր Ս. Նշան. միւս եկեղեցիքն են յիշեալ Ս. Աստուածածինն և Ս. Գրիգորն։ Շատ վարդապետաց և ազնուականաց գերեզմանք կային և կան հօն մինչեւ հիմայ։ Տես զվերջին ծանօթութիւն 444 երեսի։

3. Լօռի գլխաւոր քաղաք և վիճակ էր այն ատեն, հիմայ այլ չէն գեօղաւան է։

4. Սովորաբար Բուրթէլ գրուի, և այդ ցեղէն շատերն այս անուամբ կոչուած են։

# ՑԷ

## ՎԻՃԱԿ ԵՐԿՐԻՆ ՀԱՅՈՑ ՅԵՏ ԹԱՄՈՒՐԵԱՆՑ

(ԵՐԵՄԻԱ ՉԷԼԷՊԻ)

Յետ աշխարհաւերին Թամուրլանկի, որդիք նորա ոչ տիրապետեցին աշխարհ միահեծան՝ որպէս ըզ-հայրն իւրեանց, այլ բաժանորդեալք ի վերայ միմեանց խապմ տային. և ելին այնուհետեւ ուրոյն ուրոյն, և պէսպէս իշխանքն որ ի վերայ իւրեանց բռնանային, որպէս ձկունք ի ծովու և գազանք անապատի, ԺՌաւ (10,000) և ոմանք ԻՌաւ (20,000)․ այն թէ ես իշխեմ, և այն թէ ես թա-գաւորեմ, մինչեւ ի զօրանալ Պարսից, և իշխել միահեծան Օսմանցւոց, և յաղթել կորուսանել ըզ-նոսա մերձ ԹՃ (1450) թուին մերում և այլ յե-տոյ: Եւ մնաց ազգս Հայոց ի մէջ իշխանութեան այսմ երկուց թագաւորաց՝ զորոց և զգործս յա-ռաջիկայս ընթերցցիս:

Որպէս ասացաք, յետ Թամուրլանկի սատակման՝ մինչեւ ի հաստատիլ այս երկուց թագաւորու-թեանցս, այսինքն Պարսից և Օսմանցւոց, Ճէլա-լիքն՝[1] ոչ թէ ի թագաւորաց այլ աստուածպետա-կանքն ճէլալք և ապստամբք, կէնքն սատանայի թշնամւոյն բնութեանս, մանաւանդ թէ առաւել Քրիստոս Աստուած ասացողաց թշնամի են դեւք, զի հեղձամղձուկ ելեալ մախան ընդ բնութեանս՝ որ մաքրեցաւ և նորոգեցաւ արեամբ Քրիստոսի Աստուծոյ, և զլուսեղէն տեղիս նոցա վայելչու-թեամբ յաւանս ժառանգելոց աղագին[2]․ հերձին

1. Ինքնագլուխ աւազակի նման ապստամբք:
2. Երեմիա շատ տեղ իր գրածը որբագրած կամ պարզած չէ, և մութ կամ անհասկանալի մնայ:

ճայքին և միշտ դարան և նենգութիւն և որոգայթ կազմեն լարեն յամենայն դիմաց, զի ընդ խուրեանս ի դժոխս քարշեսցեն, և յաւիտենական փառաց լուսոյն զրկեսցեն, և յօրհնաբանութենէն Աստուծոյ մերժեսցեն։ Ցայտ է թէ ի հակառակութիւն ազստամբութեան զոր ունէին առ Աստուած ստեղծողն ամենայնի, և ոչ դադարեցին ի չարութեանց թշնամութեան որ առ բաժինս Քրիստոսի և առ ժառանգորդս սուրբ արքայութեան Նորա

Այն ղէնքն սատանայի և որբանեակք զոր ասացի՝ յետ Թամուրլանկի սատակմանն յաշինչ ազգէ և աննշանք էին, պուցէ ճշմարտի թէ ծնունդք գիւաց պատուհասք աշխարհի. որպէս ի մերում ժամանակիս, Հայտար օղլի, Ջրմօր. Եէկեն և կէտէկկ և այլք. զորս ի տեղւոջ իւրեանց տեսցես զչարութիւնսն։ Եւ սոյուն նման գռեհիք և չինականք էին այսուքիկ, Ջէրքէզ Մըսըրցին, Ճիհանշահ, Շահ-Բուզ, Գարա Եուսուֆ, փիր Օմէր, իսքէնդէր, Ուզզուն Հասան, Եաղուպ պէկ, Շահսուվար, Մէլիք Ասլան, Նուրալի, և Ուզուն, Ալվանտ[1]։

Եւ սոն ի Ճաղարայէ և սոն Թուրք Հայմանա և եամաղ[2] Թուրքմանին, և բանակն Թուրքման. և Եազմա Թուրքմանաց, և Եազմա Քրդաց, և բնական Քուրդ, ի փառս և յագահութիւն կատաղեալք. Պէկլիկ ռավասի[3], և այլ ոչ ինչ գոյ պատճառաւ. ի վերայ միմեանց մարտ դնելով յաղթութեան ջանիւ սուր ի վերայ սրոյ անողորմաբար տարածէին. որպէս ժառանգել զմեծագոյն իշխանութիւն։ Եւ ոչ ինչ յաջողեցաւ նոցա յորդւոց

1. ԺԴ–ԺԶ դարուց մէջ գրուած մեր Ձեռագրաց մէջ շատ ու շատ անգամ սոքա յիշուին, և այն անիշխանութեան ատեն տակն ու վրայ ըրած են ըզ-Հայաստան և զսահմանոն։

2. Հետեւողք Թուրքմանաց։

3. Թուրքարէն բացատրէ, իշխանաւորութեամբ Ես տիրեմ ըսելով՝ մէկմէկէ յափշտակելը։

յորդիս ժառանգութիւն, որք յաւել քան ՇՀ (570) ամս[1] աշխատեցան և չքացան փքացան, և չարութիւնք իւրեանց զհետ իւրեանց գնացին ի կորուստ և ի տանջանս յաւիտենական, ըստ գործոց իւրեանց։

---

## ՃՀԱ

### ՍՈՒՐԲ ՆՇԱՆՆ ՄԱՐԴԱՂԱՒՆԵԱՑ[2]

Ի գալ Լանկթամուրին յերկիրն Սիւնեաց՝ նստաւ առ գետով Նորին և գերեաց զբնակիչս երկրին. և մի ի գերելոցն էր Յովհաննէս անուն ոմն եպիսկոպոս. յայնժամ առեալ նա կապեաց զսուրբ Նշանս յուսն իւր և անկաւ ի գետն. և շնորհօք սուրբ Նշանին գնայր ի վերայ ջրոյն որպէս ցամաքի։ Իբրև տեսին զօրքն Լանկթամուրայ՝ ահիւ պակեալ զարհուրեցան. և զաղաղակ բարձին առ Նա երդմամբ, զի թէ դարձցի յետս՝ ոչինչ վնասեսցեն Նմա, բայց միայն հարցանիցեն՝ թէ վասն ո՞յր պատճառի են սքանչելիքն այն։ Իբրև եկն եպիսկոպոսն՝ հարցին ցնա, թէ ո՞վ ոք իցես դու և կամ զի՞նչ Նշան իցէ զոր տեսաք ի քեզ։ Պատասխանեալ եպիսկոպոսին և ասէ. Այս հրաշ և զօրութիւն՝ սրբոյ Նշանիս է զոր տեսիք, և ոչ իմ։ Յայնժամ զարմացմամբ ասաց Թամուրն Լանկ. Խնդրեա յինէն զոր կամիս։ Եւ հանդէպ բանակին էր փոքրագոյն մատուռ մի. և խնդրեաց եպիսկոպոսն՝ թէ այն մատուռաւն չափ՝

1. Թուի թէ Տուղրիլի աշխարհակալութենէն սկսի այս թիւս։

2. Թէ և աւանդութիւն ըլլայ այս պատմութիւնս, գրոց Յիշատակարանաց մէջ (ինչպէս ի 1558–1671) յիշուի Խաչս՝ իբրև մի ի նշանաւոր սրբութեանց ի կողմանս Հայ-Աղուանից, ի Գետամիջի վանք կոչուածն։

որքան տանիցին՝ այնքան գերիք չնորհել ինձ. և նա անյապաղ ետ։ Եւ իբրեւ սկսան գերեալքն մտանել ի մատուռն, յայնժամ շնորհաց սուրբ նշանին թեւս առեալ աղաւնակերպ թռեան ի պատուհանէն։ Եւ իբրեւ վճարեցան գերեալքն ամենայն, յայնժամ զօրքն ապշեալ մնէին. Զի՞րդ այնքան փոքրագոյն մատուռն պարունակեաց զայնքան յոլովակի գերեալքս։ Եւ ընթացեալ ի մատուռն և ոչինչ գտին ի նմա. իսկոյն ձայն տուեալ մխմեանց հիացմամբ յայսկոյս և յայնկոյս դառնելով, տեսին զգերեալսն յայնկոյս գետոյն՝ ի տափարակ տեղւոջ ուրեք բանակեալք. և եկեալ պատմեցին բանակալին Լանկթամուրայ։ Եւ նա յաւէտ երկիւղին հրամայեաց զօրացն չուել անտի. ասելով, Մի՛ մնասցուք աստ, գուցէ պատժիցուք ի հրաշից՝ զոր տեսաք։

---

## ՅՀԲ

## ԽԱՉԱՓԱՅՑՆ ԿԻՊՐՈՍԻ

(ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ)

Աստի կենաց ներգործութեամբ տեսի զանապականութիւն փայտին սուրբ Խաչին. և եմ ականատես և ականջալուր եպիսկոպոսին՝ որ պատմեաց ինձ։ Մեք էաք Կիպրոս կղզին, և Թամուրչանեկն եկն անթիւ զօրօք ի Շամբն, ի Թվին Հայոց ՊՀ (1421)[1], և Սեհոսնի երկրին[2] քրիստոնեայքն փախեան և եկին նաւով ի Կիպրոս։ Էր այր մի որ ունէր փոքրիկ խաչ մի փայտեայ և կալեալ էր յու-

1. Շամբն է Դամասկոսի կողմերն։ Թուականն ոչ յարմարի Լանկթիմուրի. այլ յաջորդացն։

2. Ասորւոց երկրի ծովակողմն, զոր Ամօվրհացւոց երկիր այլ կոչեն գրիչք ոմանք։

կի, բերեալ առ Տէր Լեւոն եպիսկոպոսն Հայոց[1] և ասէ. Թէ, Այս խաչս ի յիմ պապանց ի հետ առ իս հասեալ է. և այժմ ես եկի ի յօտարութիւն. և եմ աղքատ, և տղայքն իմ սովին. դու հայրապետ մարդ ես, առ զխաչս ի քեզ և տուր ինձ գին զի ապրեցուցից զմանկունս իմ: Եւ եպիսկոպոսն ասէ. Ես ոչ ի գիր ընթերցեալ իմ և ոչ ումեքէ լուեալ՝ թէ ի Սահունի երկիրն ի խաչափայտէն (կայ). բայց վասն խաչիդ՝ զի խաչ է և դու աղքատ ես, առ ութ ֆլօրի[2], և տուր խաչդ: Իսկ նորա ոչ հաւանեալ՝ տանի առ Թագաւորի իշխան Թագաւորին[3], որոյ անունն էր Պէրթօրթալռեա[4], և ասէ զնոյն բանս: Իսկ իշխանն ասէ, թէ կամիս փորձեսցիս զսա հրով, զի թէ ստոյգ ի խաչափայտէն (է՝) հուրն զսա ոչ այրէ, և թէ այրի՝ չէ ի խաչափայտէն: Եւ առէ տէր խաչին, Այդպէս արա որպէս և կամիս: Եւ բերեալ մեծափառ իշխանն ոսկեգործ մի և գործելիս բազումս, և եդեալ զխաչն ի քուրա հալոցին, և եդեալ երկու փուքս, և ի վաղորդենէ աւուրն սկսեալ բորբոքեցին զհուրն ի վերայ խաչին. և ի հասարակ աւուր որ արեգակն ի կամարն երկնից ժամանեալ՝ սպառեցին զամենայն գործելիսն, և բացեալ զհալոց քուրային՝ հանին զխաչն ամբողջ և անարատ. զի ոչ թէ ի փայտն ոչ մերձեցաւ, այլ և այն նօսբագոյն ոսկին որ ի վերայ խաչին՝ ոչ կարաց բնաւ ամենեւին հալել կամ այլայլել: Եւ սկսաւ իշխանն մեծաւ խնդութեամբ ամենայն բազմութեամբն փա-

1. Դեռ Ռուբինեան թագաւորաց ժամանակի յիշատակն ազդէ անուն եպիսկոպոսի, միանգամայն և զյաջորդութիւն Կիպրոսի աթոռոյն:

2. Ըստ նիւթական արժէքին՝ Ֆլորին ոսկի՝ էր 12 ֆրանք բայց ըստ այն ժամանակին քառապատիկ արժէր:

3. Լուսինեան թագաւորաց Կիպրոսի:

4. Թուի Պերթոլլեա, Berthollet, կամ Պերթոլա:

աւուրել զՔրիստոս և զկենաց փայտ նորա զխաչն սուրբ՝ մեծաւ երկրպագութեամբ։ Լուեալ եպիսկոպոսն մեր՝ փութացեալ առ իշխանն և ասէ. Խաչդ այդ Հայոց է՝ ի Քրիստոսէ ի վեր, և մեք ոչ ունէաք զիմաստուն ոք որ փորձիւ գիտացեալ էաք. աղաչեմ զքեզ դու յիսուն ֆլորին տուր ի գին դորայ, առ յինէն հարիւր ֆլորի, և տուր զխաչն մեր ի մեզ։ Իսկ իշխանն ասէ, Թէ դու Հայ ես՝ և մեք ֆռանկ. և երկոքեան եմք քրիստոնեայք. խաչն սուրբ՝ յառաջ առ քեզ եկն. Թէ զքեզ էր կամեցեալ՝ նա քեզ էր եղեալ. այժմ որ ինձ աղորմեցաւ և առ իս եկն, թէ հարիւր հազար ֆլորի տաս՝ չեմ տար։ Եւ եպիսկոպոսն տխրութեամբ դարձաւ ի տուն իւր։ Եւ յանապատէն[1] գնացին ի տեսութիւն առ եպիսկոպոսն, և նա պատմեաց ինձ, թէ ի մեծ փորձութիւն անկայ, և եմ տրտում յոյժ որ այնպիսի աստուածային գանձն ելաւ ի Հայոց ազգէս և անկաւ յազգն Ֆռանգաց, վասն ոչ գիտելոյ մեզ։

---

## ՅՀԳ

### ԳՐԻԳՈՐ
### ԽԼԱԹԵՑԻ ԾԵՐԵՆՑ ԵՒ ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ ԻՒՐ

Երկրորդ Վկայասէր անուանեցաւ ի վերջին ժամանակս և ի յետին դարուս, զի ժողովեաց գիրս բազումս ի մերոց և յօտարաց զհնացեալսն և զեղծեալսն, զծածուկ և զանյայտ պատմութիւնս ամենայն Սրբոց՝ ի խաւարէ ի լոյս ածեալ, և արար զգիրս Յայսմաւուրաց, յուրախութիւն և ի ցնծութիւն ամենայն եկեղեցւոյ մանկանց. և լուսաւորեալ պայծառացոյց զվերին կողմանս և զներքին[2],

1. Հայոց Ս. Մակար վանքէն։
2. Մեծ և Փոքր Հայք և Կիլիկիա։

և զամենայն եկեղեցին Հայաստանեայց, մինչ զի ոչ էր եղեալ այնպիսի ուրախութիւն հոգեւոր յազգիս մերոյ թագաւորացն և իշխանացն[1]։

Եւ հասեալ ի բարիոք ծերութիւն աւելի քան զեօթանասուն ամ, կամեցաւ գալ ի սուրբ քաղաքն Երուսաղէմ՝ վարդապետօք և աշակերտօք, մխիթարել զհոգեւոր և զմարմնաւոր աղքատսն որ անդ կային, տրօք և իմաստութեամբ։ Եւ երկու ամ յամեալ յԵրուսաղէմ, և ապա անտի եկեալ ի բնիկ գաւառն իւր՝ զամենեսեան ուրախ առնէր։ Եւ ի վերայ այսր ամենայնի առաքինութեան՝ ցանկայր մարտիրոսութեան հասանել, և վկայիցն պսակացն ժամանել։ Եւ որ զկամս երկիւղածաց իւրոց առնէ և աղօթից նոցա լսէ, կատարեաց զխնդրուածս նորա։

Զի մինչդեռ յուրախութիւն և ի խնդութիւն վայելէաք, և ի քաղցրալուր վարդապետութեան նորա պարապէաք, ահա յանկարծակի եկն եհաս մրրիկ թշուառութեան ի նենգաւոր և անհաւատ ազգէն Մարաց[2]. զի հասին սուսերօք և բրօք ի վերայ Արծկէ քաղաքին, և զբազումս սպանին. և այլք ի նոցանէ երթեալ գաղտագողի յաստուածաբնակ ուխտն Ցպնայ[3], կամէին զսուրբ եղբարսն սրոյ ճարակ տալ. և նոցա գիտացեալ՝ փախստական եղեն ի տեղւոջէն։ Իսկ զերջանիկ և զերանելի այրն Աս-

1. Թուի թէ այս բանս գրողին ծանօթ չէին Տէր Իսրայէլի և Կիրակոսի և Գր. Անաւարզեցւոյ Յայսմաւուրքն, դար և կէս և աւելի առաջ հաւաքուածք. Խլաթեցին անոնց հետեւած է, աւելցընելով անոնցմէ վերջի նահատակաց և վարդապետաց քանի մի յիշատակներ։
2. Քիւրդերու համար է ըսածն։
3. Արծկէ քաղաքին հարաւակողմն էր այս վանքս, Վանայ ծովուն եզերքը, որ յետոյ տարածուելով կլլեր է զվանքն, աւերակքն դեռ երեւին ալիքներուն ներքեւ։ Վանքին խարթ անունն թուի նոյն Արծկէի հիւսիսակողման բարձր Սիփան լերին անունն ըլլայ։

տուծոյ ոչ կարացին հանել ի վանացն, այլ ասէր. Աստ կացից և աստ մեռայց. զի թէ ի նոցանէ մեռանիցիմ՝ հաւատամ ի Տէր Յիսուս, զի ընդ վկայիցն Քրիստոսի անթառամ ժառանգութեանցն արժանաւոր գտայց: Եւ մինչ նա յայսպիսի խորհուրդս էր՝ հասին ի վերայ նորա բազմութիւն անօրինաց, ծարաւիքն արեան, իբրև զշուն կատաղի. ըմբռնեցին զնա իբրև զօչխար անմռունչ, և հեղին զարիւն նորա իբրև զգառին անմեղի: Եւ նա աղօթիւքն կարգայր առ Աստուած, ասելով. Տէր Յիսուս, ընկալ զհոգի իմ՝ ընդ անմեղ մանկանցն վկայիցն քոց. և խառնեա զմահ իմ ընդ երանելի Սրբոցն գնդիցն: Եւ օրհնութեան և ճշմարտութեան դաւանութեամբ աւանդեաց զհոգին, ի փառս Հօր և Որդւոյ և Հոգւոյն:

Իսկ յետոյ եկեալ հրեղէն լեզուն՝ Յակոբ ճգնաւորն՝ վարդապետն Ղրիմեցին[1], աշակերտօքն իւրովք և ազգականօք և բազում ժողովրդօք, եդին զնա ի տապանի և կոծ մեծ արարին ի վերայ նորա:

Կատարեցաւ նահատակութեամբ մեծ վարդապետն Գրիգորիոս ի ՊՀԴ (874=1425) թուականիս մեր, ի մայիս ամսոյ ինն, յաւուր կիւրակէի մեծի Պենտեկոստէին, ի Գալստեան Հոգւոյն Աստուծոյ, ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ: Որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի ի վերայ ամենայն աշխարհի, և մաղթանօք նորա Տէր մեզ ողորմեսցի. խնդրողացս բանիցս այս, երկու Կարապետի, ի Թումայ հանոռքէ[2], որ և զայնչափ գիրս շարագրեաց, որ և նորին յիշատակն օրհնութեամբ եղիցի. ամէն:

1. Ծանօթ է աս Տօմարի մեկնութեան և այլ քանի մի գրուածներով:

2. Սա է անուանի Վարդապետն Թ. Մեծոփեցի, որ Լէնկթիմուրի արշաւանաց պատմութիւնը գրած է. իսկ երկու Կարապետքն անծանօթ են: Յիշեալ շարա-

Նոյն բան ըստ Թովմայի Մեծոփեցւոյ.

Մեծ վարդապետն և նահատակն և ողորմածն ամենայնի Գրիգոր, որդի հաւատարիմ առն Աստուծոյ՝ Ծերի[1], գոլով ի քաղաքէն Խլաթայ, յաշակերտացն մեծին Սարգսի[2], հոգեւոր հօրագատ և համշիրակ իւր, բայց ոչ ի նոյն Մոզխարուց ուխտն Աստուածածնի՝ այլ ի յերկրէ Բզնունեաց՝ ի քաղաքն Արճկէ, ի Ս. ուխտն Ստեփաննոսի վկային Ցիպնայ[3] կոչեցեալ։ Այլ ոչ պարապեալ վարդապետական դասի՝ վասն սառնացեալ բարուց ուսումնականաց մերում ազգի. այլ տիւ և գիշեր գրէր, և զամենայն աղքատս կերակրէր, և սիրէր զողորմածութիւն, և զամենայն վարդապետս և կարգաւորս ի նոյն յորդորէր, ոչ գոլով նման նմա ողորմած և մարդասէր և սպասաւոր աղքատաց և տնանկաց։ Եւ ետ նմա Աստուած իմաստութիւն առաւել քան ամենայն վարդապետաց. վասն զի զերից ժամանակաց պատմութիւնս ի լոյս ածէր՝ ի հարցանելն և ի պատասխանատուութիւնս, և զգիրս սրբոց մարտիրոսաց և վկայիցն՝ որ կոչի Յայսմաւուրք սակաւաբան և անվթար շարագրեալ ի Սրբոց հնոց և նորոց վարդապետացն՝ ի լոյս էած. զխաւարեալ

գրութենէն զատ՝ Թովմա իր Թիմուրեանց պատմութեան մէջ այլ յիշած է Խլաթեցւոյն մահը, վերոյգրեալ հատուածով։

1. Հօրը կամ յատուկ կամ յարմարցուցած անունն՝ Գրիգորի այլ մականուն եղաւ՝ Ծերենց կոչուելու։

2. Ժամանակին գիտնական վարդապետաց մէկն, Աստապատ քաղաքի վանքէն, ուստի ելած եկեր էր Արճկէի մօտ Մոզխարուց կամ Խառաքաստի կոչուած վանքը։

3. Գրիգոր Խլաթեցին էր այս Ս. Ստեփանոս Ցիպնայ կոչուած վանքը բնակողն, Սիփան լերան ստորոտը և Վանայ ծովուն հիւսիսային արեւմտեան կողմը, զոր հիմայ ծածկեր է ծովը՝ կրծելով զցամաքը։

դրունս եկեղեցւոյ մերոյ լուսաւորեաց։ Եւ ոչ ոք կարէ գիտել զիմաստութիւնն՝ որ ի նմա ծածկեալ կայ, այլ Աստուծոյ միայն է գիտելի։ Եւ յիսուն ամ գիրս գրեաց տիւ և գիշեր անհանգիստ աջնութեամբ, որպէս գիտակ է գաղտնեաց գիտակն։ Եւ բազում երգս Գանձուց[1] և Տաղից յիշատակ թողեալ ինքեան, յոյժ տօնասէր և պատուող Սրբոց. մինչ զի ոչ եղեալ է և ոչ լինելոց է։

Եւ հասեալ ի բարւոք ծերութիւն աւելի քան զեօթանասուն և հինգ ամ, և յՊՀԱ (1422) ամի Թուականիս մերում եկն պիղծ ազգն Մարաց ի յԱրծկէ քաղաք Հայոց, և գնաց յանապատն Ցիպնայ. և ըմբռնեալ զնա անօրինացն յոյժ տանջեալ չարչարեցին. և նա ճշմարիտ դաւանութեամբ ըզՔրիստոս Աստուած և Տէր դաւանեալ խոստովանեցաւ. և նոյն ժամայն զենին զնա իբրև զգառն անմեղ և անարատ, զերջանիկն և զերանելին Գրիգոր՝ փոխանակ զաւին Քրիստոսի, և եհաս մարտիրոսական պսակի՝ յոյժ մարտիրոսասէր գոլով. և եդին զնա ի սուրբ ուխտն Ցիպնայ՝ Նախավկային Ստեփաննոսի անուամբ կոչեցեալ։ Եւ հոգեւոր հարազատն իւր վարդապետն Յակոբ ճգնաւոր՝ այրն ցանկալի՝ եկն ամփոփեաց զնա հանդերձ հարազատ որդւովք իւրովք Ստեփանոս եպիսկոպոսաւ և աշակերտաւ. և նստաւ սպասաւոր նորա գերեզմանին ամ մի։

1. Գանձարան (երգարան) գրոց մէջ գտուին ասոնք. տնագլուխ տառքն իրեն անունը կապեն Գրիգոր. տաղերն հնգոտնեան և նոյնայանգ ըլլալով՝ շատ հաճոյ չեն ականջաց։

# ՅՀԴ

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ԱՂԵՑԻՑ Ի ԺԱՄԱՆԱԿԻ ՄԵՐՈՒՄ

*Զոր ասացեալ է Գրիգոր վարդապետի որ մականուանն Ծերենց կոչի. Խլաթեցի*[1]

Ի յութ հարիւր Հայոց Թուական
Ընդ որս և հինգ եօթն յաւելան, (835=1386)
Յունուար մին պահք Յայտնութեան
Լոյս արեւուն խաւարեցան[2]:...
Ի սոյն աւուրբս դառնութեան
Ծրագալուցի որ Յայտնութեան՝
Մեծ պատուհաս ի Շահաստան[3]
Բարբարոսաց ազգէն հասան.
Արքայն Հոնաց Թոխթամիշ խան[4]

1. Այս է հին վերնագիր Յօդուածիս, կամ հեղինակէն կամ առաջին օրինակողէն. յիշած եմք զինքն ի կարգի Պատմչաց, ի նախընթաց Յօդուածին և աւելի առաջ: Ինչ որ Լանկթիմուրի, իր որդւոցն և Թուրքմանաց համար տեսանք ի Յօդ. 364, 68, 69, 70, աս կրկնէ և կ՚աւելցընէ:

2. Ստոյգ է տարին և օրն (տարեմուտ 1386 Թուականի Փրկչին) և նշանակուած յաստեղաբաշխից և ի ժամանակագրաց. կէս օրէն առաջ սկսած է խաւարումն, և տեսանելի եղած է ոչ միայն յԱսիա այլ և յԵւրոպէ և յԱփրիկէ:

3. Դավրէժ կամ Թաւրէզ քաղաքն է. որ երբեմն Թաթարաց և Պարսից մեծ ղանի կամ շահի աթոռ եղած էր:

4. Ղրիմի կողմերու Թաթարներն են Հոնք կոչածը: Յիշէ ժամանակակից մի. «Ի Թուին ՊԽԴ (844=1395) » Թոխթամիշ խանն ու Աղսախթամուրն կռուեցան »:

Զօրս առաքեաց ի Պարսկաստան,
Որ եկն արար առ և թախթւան[1]
Մինչեւ յերկիրըն Հայաստան.
Հինգն յունուարի Թաւրէզ մըտան,
Ի քսան ինն ի Նախչըւան.
Անտի գնացին դէպ ի Մուղան[2],
Դարձան յաշխարհն իւրեանց բնական:
Զառ և զաւար 'նդ իւրեանս տարան,
Մըտին յաշխարհըն Հանական.
Անթիւ վնասներ գործեցան
Ի գալ նոցա՝ մինչեւ դարձան:
Բազմաց արիւնք յերկիր հեղան,
Եւ շատք ի ձիւնըն մըսեցան.
Բազումք յահէ նոցին փախեան
Եւ ի Նըղմուսս[3] սատակեցան:
Մարք ըզտղայոց գութ մոռացան,
Ծընողք՝ մանկանց դահիճ եղան.
Շատք ի սըրոյ նոցին մեռան,
Եւ այլք բազումք չարչարեցան:
Ընդ այս գործըս չարին
Եւ ընդ կորուստ Հայաստանին՝
Եհաս միւս հարուած կրկին
Եւ դառնագոյն քան զառաջին
Մինչ դեռ ի նոյն էաք սըգին՝
Եկեալ եհաս մեզ ձայն գուժին,
Թէ շարժեցաւ տուն Խորազմին
Առ հասարակ ցեղ Թաթարին,
Փառանգաւորըն Սըմըրղընտին[4],

1. Մեծ վնաս, աւար, յափշտակութիւն. ընդ Հայերէն գրուած այլ կայ՝ «թախսրենդ և վիրաւորել»:
2. Կասպից ծովու և Ատրպատականի միջոց ընդարձակ դաշտն:
3. Գետնափոր նեղ տեղուանք, թուրք. լաղըմ:
4. Սմրղանտ կամ Սամարղանդ ծանօթ քաղաք, որ էր աթոռ Լէնկթիմուրի:

Օտար որդիքն Աբրահամին[1]։
Միահաղոյն յաշխարհս մըտին
Յաթոռս Ատըր-պատականին,
Առին աւար եւ գերեցին
Զազգըս Պարսից և Հայ զարմին.
Տապալեցին յատակեցին,
Անխնայաբար խոցոտեցին,
Զարըս՝ սըրոյ ճարակ տըւին
Եւ ըզկանայսըն գերեցին։
Զոմանց գըլըխըն քերթէին,
Հանդերձ հերաքըն խըլէին,
Զայլոց ըզշունչս արգելուին
Եւ հեղձամահըս խեղդէին։
Որպէս զոչխարըս մորթէին,
Փոկս ի թիկանցըն հանէին[2].
Զկէսըս հըրով խորովէին
Եւ ճենճերովքըն ցընծային։
Շատք ըզՔրիստոս ուրանային
Եւ ըզՄահմէտ դաւանէին։
Եւ ընդ գաւառն Այրարատին
Մըտին յաշխարհըն յԱղուանին։
Զարքայանիստ քաղաքն առին
Որում Տըփխիսըն կոչէին[3].
Զարքայն Բագրատ ըզՎրացին
Ի հաւատոյն ուրացուցին.
Անտի անդրէն դարձ արարին
Եւ ի Մուղան ձըմեռնեցին։
Ապա յաւուրս գարնանային
Դարձ ի Սիւնիս Մեծն արարին[4].

1. Աբրահամ նահապետի Քետուրա հարճէն ցեղուած համարի զԹաթարս։
2. Իբրեւ մորթուած ոչխարներու կռնակի կաշիներն քաշէին հանէին։
3. Թուի թէ պակսի բան մի, որով Տփղիս քաղաքն փոխանակ Վրաց՝ Աղուանից մայրաքաղաք երեւնայ։
4. Բուն Մեծ Հայոց Սիսական կամ Սիւնեաց աշ-

ԸզՈրոտայն դըղեակն առին,
Մինչեւ ի Կարս արշաւեցին.
Զերկիրս ամեն չօլ արարին[1]
Ի յանցանելն երթեւեկին.
Զի յետ դարձան և կրկնեցին
Երրորդ անգամ չորրորդեցին։
Որոց անուն գըլխաւորին
Էր Լանկթամուր չարեաց գնդին.
Այս էր ի թիւ ութհարիւրին
Եւ երեսուն և վեց ամին (1387).
Զամուր տեղիսն յաւար առին
Եւ շատ ոճիրըս գործեցին.
Յորոց մի էր և Բըչըրնին[2]
Որ էր աթոռ երկուց պետին.
Զօր առին և քանդեցին.
Զեպիսկոպոսըն սպանեցին.
Այլ և զՀասանըն Ծարեցին[3]
Երեք որդովքն ըսպանեցին։
Զի ըզնոցին ամուրն առին
Եւ ըզբազումըս գերեցին.
Եւ զկապուտից ամուրն առին[4]
Եւ չորս հարիւր անդէն սպանին։

խարհէն, որոյ ամուր բերդերէն մէկն էր յիշուած Որոտն բերդն։

1. Թուրք բառ, նշանակէ անապատ, ամայի։

2. Բչնի, ուրիշ տեղ յիշեցինք որ Գր. Մագիստրոսի ցեղին ժառանգութիւն էր։ — Երկու պետ ըսածն՝ եպիսկոպոսն և քաղաքական իշխանն էին. սա էր Հասանն, հայրենեօք ի Ծար աւանէ, Սեւանայ լըճին հարաւային արեւելեան կողմն։

3. Սիւնեաց և Արցախոյ միջոց մեծ աւան մ՚էր Ծար, որ ԺԴ դարուն գրեթէ ինքնագլուխ իշխաններ ունէր։

4. Սիւնեաց երկրին մէջ այլ կայ այս անուամբ բերդ մի. բայց սա Այրարատի Կապոյտն է, որ շատ աեւ յիշատակ թողած էր՝ Բագրատունեաց և Սմբատ թագաւորի խղճալի դիպուածովն։

Եւ յԵրեւան մեծ աւանին
Այս հինգ հարիւր կոտորեցին։
Զունիմ ասել բան զոր կրեցին
Քրիստոնէից ազգ Հայ զարմին։
Դողան ոսկերքս և սասանին,
Լոյս իմ քաղի, սիրտըս ճըմլին,
Քանզի աչօք իմ տեսանին
Ողորմագին հարուած սացին։
Իշխանք բազումք ի տանց ելին
Եւ ի յընչից պարապեցին.
Ցերիվարացըն զըրկեցին
Եւ հետիոտըս տանէին։
Տըղայք ի մէջ ճանապարհին
Ցոչ ի կարել գնալ՝ մեռանին,
Եւ կրօնաւորք վանականին
Մոլորելով յարկ ոչ գըտին։
Որք ի կանայս ոչ նայէին՝
Հարկիւ ի մէջ նոցա մըտին.
Կարօտ հացի, մերկ շըջէին
Եւ բոկ ոտամբ հետեւէին։
Պատիւ չըկայր պատուականին
Եւ ոչ նըշան ունեւորին.
Զըկայր ոչ հաց հացաբաշխին
Եւ ոչ գինի գինարբուին։
Զըկայր ոչ ձի ձիաւորին,
Եւ ոչ սըլեխ հետեւակին.
Օտարք յօտարըս շըջէին
Եւ կերակուրս մուրանային։
Տիկնայք որ ճոխ տունս ունէին
Եւ մետաքսօք պերճանային,
Հացակարօտս երեւէին,
Ծածկոյթ անձանցըն խնդրէին։
Իշխանք որ պետք անուանէին
Եւ արծաթով յըղփանային՝
Աղքատացեալըք լինէին
Եւ կերակրոց կարօտէին.
Եւ որք բազմաց հացըս տային

Մին պատառոյ տկն ածէին,
Թէպէտ և յոյժ ամաչէին՝
Այլ ի կարևացըն լըրբէին.
Թէ և մուրալ պատկառէին,
Այլ ի սովոյն յանդըգնէին,
Ծիւրեալք ի ցաւս անտանելոյն.
Ան[1] անդր և աստ մեռանէին:
Մանկունք ի մարսըն նայէին՝
Միթէ կենաց հընարս առնէին.
Մարքն ի գըթոյն խորովէին,
Արագ ըզկեանս վըճարէին:
Հարքն ի գորով տղայոց լային,
Աղիողորմըն վարէին,
Ի տեսանելըն զոր սնուցին,
Դառըն կարեօքըն ցաւացին:
Ի մեռանել մանկանց նոցին՝
Ինքեանց հոգիքըն քաղէին.
Կիսոց չըկայր ոք որ լային
Ի ոչ գերեզման ճանաչէին:
Եւ այսպիսի ողորմագին
Այս տեսողացն երեւէին:
Այս ոչ միայն քրիստոնէից՝
Այլ ի տաճիկ ազգաց բնաւին.
Չի հասարակ էր նեղութիւն
Պարսից ազգին, Հայ և Թուրքին:
Եւ այս ամէն յայնկոյս գետին
Եւ յարշաւելըն ըզհետ Թուրքին.
Մինչեւ յԱմրայ[2] ջուրըն հասին՝
Բազում ոճիրըն գործեցին:
Անտի դարձան ի Հայք ելին
Եւ ի վերայ Վանայ եկին.

1. Օ՛ն անդր՝ միջարկութիւն խօսից կամ բացագանչութիւն մի կ'ըսուի, երբ թէ այլ ասելին. բայց յարմար չերեւիր տեղւոյս, և ոչ այլ աստ և անդ մեռանէին. սխալ ինչ թուի:
2. Հիմակուան ծանօթ Տիարպէքիր քաղաքն:

Պատեցին պաշարեցին
Զամուր գըղեակն յաւար առին.
ԶՀայ և զՏաճիկըն կապեցին
Եւ ի քարանցըն հոսեցին.
Այնքան հարին սատակեցին
Մինչ մըսադէգ անդ արարին[1]։
Այլ և զամուրն Երընճակին
Թողում ասել զանհընարին,
Որ ի յաւուրց աւագ զատկին
Մինչև ի տօն Սըրբոյ Խաչին,
Ծանըր զօրօք պաշարեցին
Բայց վնասել ոչ կարացին.
Ապա յետոյ դարձ արարին
Յաշխարհն իւրեանց ուստի եկին։
Դարձեալ կրկին ի դուրս եկին
Ի քառասուն և երկու ամին, (1393)
Ի Բաբելոն արշաւեցին
Ի ի Միջագետըս կոխեցին։
ԶՈւռհա քաղաքըն պանծալին,
Եւ ըզԱմիթ երեւելին,
ԶՄէրտինն ամուր և զՆըսըբինն,
Զորըս բնաջինջ գերեցուցին.
Եւ զայլ բազում քաղաքանին
Զորս քանդեցին և գերեցին։
Անտի դարձան յԱշխարհս վերին
Մինչև յԱռնիկ[2] արշաւեցին,
Զոր և ջանիւ մեծաւ առին.
Եւ ըզՄըսըրըն[3] գերեցին.
Անտի դարձեալ յետ գընացին,
Եւ զօրս թողին յԵրընջակին.

1. Բռնածնին բերդին վերէն թափելով՝ մարդու մըսէ դիզուած բլուր մի ձեւացուցին։
2. Բասենոյ մօտերը, շատ ամուր բերդ մի, որ Սէլճուկեանց արշաւանաց առեն այլ երկար պաշարման դիմացաւ. հիմայ գերի բռնուածն բերդատէրն էր։
3. Տեղւոյն տիրողն այլազգի։

Տասն ու հինգ ամիս խըսարեցին
  Զբերդն Երընջակ և ապա առին։
  Զթողում ասել զգործ անարին
  Զվատթար հանդէս Վրաց արքային.
Որ եկն արար վատ յաղթութիւն,
  Ըզզօրսըն փախոյց ըզՋաղարին՝
  Որ պաշարեալ խըսարէին
  Զամուր դըղեակն Երընջակին.
Անտի եհան զխանի որդին
  Զսուլթան Տախիրն յԵրընջակին,
  Տարաւ առ իւր և զօրացոյց,
  Եւ ետ տանել Ահմատ խանին։
Եւ ի գընալ չար զաւակին՝
  Ապըստամբեաց ընդդէմ խանին
  Սուլթան Ահմատ թագաւորին,
  Որ էր որդի խան Ույսին[1].
Ոչ աջողեալ այն անբախտին
  Սուլթան Տահիր որդւոյ խանին,
  Զի հայրանենգ եղեալ չարին՝
  Գետըն սարաւ ի Բաղտատին։.
Իսկ ի լըսել Լանկթամուրին
  Զոր ինչ արար արքայն Վրացին,
  Ի բարկութիւն շարժեալ կրկին
  Հանդէս արար իւր հեծելին.
Այլ բազմութեամբ քան զառաջինն
  Ի դուրս եկեալ Թամուր բէկին՝
  Ցամուրսն եմուտ Վրաց տանին,
  Արար գերի զամենեսին։
Անտի գընաց մինչ ի Զմիւռնին
  Քաղաք Լիկեայ[2] ծովեզերին,
  Զզօրսըն կոխեաց զիլտըրումին
  Զհըզօր յաղթող մեծ սուլտանին,

1. Կամ Տահիր, Տահար, որդի Ահմէտ խանի Պարսկահայոց կողմանց տիրողի։ Սորա հայրն Ույիս զրուածլաւ եւս կոչուէր Իովէիզ։
2. Փոքր Ասիոյ հին գաւառ կամ աշխարհ, Լիկիա։

ԶՂարա Թաթարս այլ ընդ նըմին,
Գերի տարաւ զամենեսին.
Որոց ոչ էր թիւ համարին
Կոտորելոց զորս գերեցին.
Ի տուն Գամրաց Կապադովկին
Որ մէջերկրեայ Հոռոմք ասին:
Ո՜հ, զայն ղազայն[1] զոր արարին
Արանց կանանց և ընդ մանկտին.
Զարսըն թաղեալ մինչ կենդանին
Հողով ջըրովըն հեղձուցին.
Իսկ ըզմատաղ տըղայ մանկտին՝
Զայն կալոտիս ձիոցն արկին[2]:
Իսկ յիշանել Միր Թամուրին
Ի Շամայ–տուռն Դամասկոսին,
Ծով ու ցամաք սասանեցին
Վասըն լըրոյ չար համբաւին.
Զորըս սըրոյ ճարակ տային
Եւ զորս բոցով հրոյ այրէին,
Եւ ըզգլուխսն զոր կտրէին
Զայնս մընիրայս յօրինէին[3]:
Եւ այսպիսի չար համբաւս
Աշխարհ ամեն սասանեցին:
Զայս արարեալ միր Թամուրին՝
Դարձաւ յաթոռ Սըմըրղընդին:
Եւ անդ եհաս օր վախճանին.
Սատակեցաւ իւր աթոռին:
Իսկ Միրանշայ որդի նորին
Եկեալ ի թախթըն Թավրիզին.
Որոյ ընդդէմ կացեալ նորին

1. Վնաս, արկած. ողջ ողջ զմարդիկ հողու տակ թաղելն:

2. Ինչպէս արեւելք ցորենը զտելու համար՝ սփռեն կալի մէջ և վրան ձի քալցընեն, այսպէս մանր տղայքը ձիոց ոտնակոխ ըրին:

3. Կտրած գլուխները վրայէ վրայ դիզելով՝ մզկիթաց մինիրա կամ աշտարակ ձեւացընէին:

Ղարա Յուսուֆ բախտախարիճ [1],
Եհար ըզզօրսըն Ջաղաթին
Ի ճառ ըզգլուխ Միրանշային:
Թագաւորեաց ի Նոյն Թախթին
Թավրէզ քաղաք շահաստանին.
Արար բազում խաղաղութիւն
Եւ յաջողումըն մարդկային.
Էրէմնութիւն [2] և էժնութիւն
Ամենեւին անգողութիւն:
Իսկ յաճախել մեղաց ախտին
Մարդկան ազգիս քրիստոնէին,
Եղեւ գընալ խան Յուսուֆի
ՑԱխըլծըխէ քաղաք Վրացին,
Արար ղազայ և գերութիւն
Անթիւ վընաս և չարութիւն:
Այս էր ի թիւ ութ հարիւրին
Այլ և վաթսուն և հինգ ամին. (1416)
Իսկ ըզգերիսըն զոր առին՝
Յօտար երկիր վըտարեցին.
Բաղտատ ու ի Մըսըր հասուցին,
Ի Խորասան Պարսկաց սահմանին.
Ոչ մին հազար, կամ հինգ վեցին
Այլ քան ըզթիւըն էր աւելին.
Նոյն սպանելոցն էր բազմութիւն
Եւ անհամար որ ոչ թըւին:
Իսկ ի յամի ութ հարիւրին
Ի եօթանասուն թըւականին, (1421)
Ղարայ Յուսուֆ տէրըն թախթին
Սատակեցաւ ըստ արժանին,
Խաղք խայտառակ որպէս սեսին
Անկեալ յերկիր մարմին պղծին:
Ձի չփոթեցաւ զօրքըն չարին
Եւ յիրերաց փախուստ առին.

1. Քաջ, կարիճ պատերազմող կոչէ այդ Ղարա Յուսուֆ կոչուած տիրողն Միջագետաց կողմանց:
2. Ապահովութիւն ի վտանգաց:

Ուռեալ նեխաւ գէշ գարշելին,
Ագռաւք հանին զաչեր նորին.
Իսկ յետ երից աւուրց եկին
Բարձին ըզգէշն և թաղեցին։
Իսկ զօրք չարին միր Ուսուֆին՝
Ընդ որ գնացին՝ աւերեցին.
Զար անըզգամ մարդիկ էին
Եւ անառակ ազգ Թուրքմանին.
Ընդ մեռանել Ուսուֆ բէգին՝
Զաղաթին զօրքն եկին հասին.
Որոց գլուխ և առաջնորդ
Էր Շահ Ռուխ անուն նորին.
Էր նա որդի միր Թամուրին
Կըրսեր եղբայր Միրանշային
Զօրքըն բազում քան զԹամուրին,
Այլ աւելի քան ըզնոսին,
Հինգ բիւր՝ որ է յիսուն հազար
Էր այս զօրքն ընդ նոյն համար.
Զի երեսուն էր Թամուրին,
Ի այլ աւելի քան զնոսին.
Բայց ոչ ունէր նա չարութիւն,
Այլ բարեսիրտ հանդարտութիւն.
Յորմէ սարսեաւ ազգ Թուրքմանին
Վասն իւր չարեացն զոր ունէին.
Զի անողորմ էր և անիրաւ
Անմըրըւաթ[1] անչաղաւաթ[2],
Անդատաստան և անհաւատ,
Գիղծ չարագործ իսկ և տըմարդ.
Անպատկառ և անամաւթ,
Մեղաց աման չարեաց անաւթ։
Փառք Աստուծոյ զոր ինչ արար
Ընդ Թուրքմանին չարեացն յարմար.
Քանզի խլըտան նախ և փախեան,
Եւ յետ դարձան կոտորեցան,

1. Անմարդաւէր. Թուրք. միւրիւվէթ։
2. Անգութ. Թրք. շէֆքէթ, գութ։

Ըստ արժանեացն ի ձեռս անկան
Շահ Ըռուհին և մատնեցան.
Ի որոյ շատք նոցա մեռան
Եւ այլն փախեան և գերեցան.
Կողոպտեցան և գերեցան,
Ձիոց կոխան սատակեցան.
Խաղք խայտառակ թալանեցան,
Ի սար ու ի ձոր փախըստական
Ընդ որ փախեան՝ հալածեցան.
Ի ինքեանք միմեանց դահիճ դարձան.
Անթիւ ըռզակ էր զոր տարան,
Աղէկ ձիան և շատ ուղտան.
Կին և տըղայքն ի թիւ չանկան
Զոր գերեցան և կոխեցան:
Բայց ողորմած և խըղճական
Նա սիրտ ունէր Շահ Ըռուհն այն.
Ասախ արար հուքմ[1] ու հրաման՝
Ոչ կորուսել զամենեսեան,
Այլ թողլ ետուր որ ցրուեցան
Ի յօտար երկիր վըտարեցան
Եւ Շահըռուհ այն մեծ սուլթան
Գընաց դարձաւ ի Խօրասան,
Գընաց յաթոռն իւր բընական
Ի Սըմըրղանդ հայրենական.
Զթաղթըն թողեալ ըզՇահաստան
Անտէր՝ ըզԹավրէզ քաղաքըն զայն.
Ապա որդիք Ուսուֆ բէկին
Եկեալ՝ թախթին այն տիրեցին.
Բայց ինքեանք ոչ բարիշեցին[2],
Այլ մին ըզմիւսըն փախուցին:
Իսկ անիծեալն ամենեւին
Կըրսեր որդի միր Ուսուֆին

1. Յասախ. Արգելք, արգելող հրաման: Հիւքմ, իշխանաբար զօրաւոր պատուէր:
2. Թուրք. Ոչ հաշտուեցան իրարու հետ:

Ըսպանդիարն[1]. անօթ չարին,
Լիրբ անըզգամ յիմար հոգին,
Էր վնասակար և աւերող
Շատ բարելի չէն գաւառներն.
ԶԱրձէշ և զԱրճկէ աւերեց,
ԶԲասեն և զԱշնիկըն քակեց.
ԶԿարնոյ քաղաքըն զԱրզըռում
Քան զամենայն խիստ աւերեց.
Իսկանդիար աւագ որդին
Ղարա Ուսուֆ բախտաւորին,
Նա ի Թավրէզ տիրեաց Թախթին
Ի ասախ արար շատ բարութիւն.
Բայց մեզ աւեր ած և խաւար
Եւ չարութիւն դառն ու դըժար.
Խեծել արար շատ բազմութիւն
Եւ եկն ի վրայ Խլաթայ բերդին.
Բերդին վնասել ոչ կարացին
Այլ ըզքաղաքն աւերեցին:
Ի յԱղովանք արշաւեցին
Եւ չար ղալայ[2] անդ արարին.
Ըզբերդն առին կոտորեցին,
Շատ քրիստոնեայք անդէն սպանին.
Քան զերբերիւրըն աւելի
Զոր անդ ի սուրն այլ քարշեցին,
Թող զորս ի ծովըն խեղդեցան
Եւ քարավէժ եղեալ կորան:
Ո՜հ, գեղեցիկ կերպ ու զըւարթ
Այն մանկտեկացն որ կորուսան.
Լաւ հարկեւոր տանուտերայք,
Համեստ և աղւոր տանուտիկնայք,
Բարձրահասակ և աղեկտեսակ
Գուն ու կերպով ճոխ կըտրըճայք.
Այսք ամենայն ի սուր անցան

1. Քիչ ի վերջ՝ աւելի ստոյգ գրէ զանուանն՝ Իսկանդիար, որ և Սքանտար, Իսկէնտէր գրուի:
2. Թրք. ղալէ, նեղութիւն, տագնապ:

Գերեզմանի շարժանեցան։
Կանայք աղայաքըն գերեցան
Քան զհինգ հարիւրն այլ աւելան.
Զի ի միոյ գեղջէ չէին,
Այլ ի բազում տեղեաց էին,
Ի Հիզանայ ւ ի Բաղիշոյ,
Որք հաւկաքաղ եկեալ էին.
Ծըղաք, Աղաղ՝ ամենեքին
Շատք յԱղիրայ անդէն էին,
Որք ի սուրըն քարշեցան.
Կանայք որդւովքըն գերեցան։
Այս ամենայն պատճառ է այն
Շամըզդինն[2] ամիրայի.
Զար սատանին արբանեկի
Եւ ի Նեռին կարապետի,
Որ նա արար հըպարտութիւն
Զհնազանդեցաւ Ըռքանդարին։
Շատ ոք ըսպան ւ անթաղ թողցին.
Ոչ հաց հօգւոյ ոչ դրամ հաղին։
Եւ որք գերի վարեալ գնացին
Յօտար երկիր վըտարեցին,
Ի յայլազգին խառնակեցան,
Ըզչարութիւն նոցա ուսան.
Օտարացան և յռացան,
Զհայրենիսըն մոռացան.
Պըղծեցան և գարշեցան,
Ազտեղեցան և զազրացան։
Ոչ ի կամաց այլ յակամայ
Հանդիպեցան այս չարք նոցա։
Միթէ Աստուածըն քաղցրանայ,
Եւ ազատէ անտի զնոսա։
Որք հանդիպիք այս երգակիս՝
Զիս յիշեցէք զեղկելիս

1. Վանայ ծովեզերքի գիւղեր։
2. Անունն սովորաբար Շեմսետտին կոչուի. ի մերոցս նա և Շամշադին. բայց ո՞վ է սա։

Զմրափած Գրիգոր Խլաթեցիս,
Որ սպասաւոր կոչիմ բանիս.
Եւ սխալանաց չարագրըրիս
Անմեղադիր լերուք անձինս,
Որ գըրէի ըղըրանս Ողբիս
Եւ կըսկըծայր սիրտս ի փորիս.
Ոչ հանդուրժեալ մըտաց խըղճիս
Զոր գըրեցի ես ի քարտիս,
Քանզի ի մէջ էաք չարիս
Որ եկն եհաս մեր աշխարհիս.
Եւս առաւել մերում ազգիս
Այս տառապեալ Հայոց տոհմիս,
Անուամբ միայն քրիստոնէից
Գործոց դատարկ ամբարըշտիս[1]....
Բայց գոհութիւն Մարդասիրին
Որ ապրեցաք ի յայս վշտիս.
Զմեզ ոչ թողեալ ի նեղութեան
Այլ փոյթ եհան յանդորրութիւն:
Տուք օրհնութիւն Հօրն անեղին
Եւ Միածնի Բանի Նորին,
Այլ և Հոգւոյն իւր էակցին
Փառք և պատիւ ի մէնջ տացին,
Երրորդութեանըն միակին
Հայր և Որդի և Սուրբ Հոգին.
Որ ետ ինձ կար տըկար անձին
Եւ զէջն ու զՆոյն հասոյց ի նմին[2].
Բաժեալ զԳանձերս որ ի միջին
Էջն առաջին և Նոյն յետին:

1. Այս խոստովանութեանց նման չորս տուն այլ կ'աւելցընէ, և ձանձրացընէ:
2. Կամ ի Նմին: Խլաթեցին իր ուրիշ Գանձի վերջ այլ այս Էջի Նոյի խաղը կ'ընէ, կոր ես չհասկըցայ:

# ՑՀԸ

## ՍԻՄԷՈՆ ՎԱՐԴԱՊԵՏ ԱՅՐԻՎԱՆԵՑԻ

### (ՅԻՇԱՏԱԿԱԳԻՐ)

Ամենագովելի և աստուածահաճոյ ամենայն գովութեանց արժանաւորեալն սուրբ և քաջ հաւատարն և արիաջան բարոյականութեան Սիմէոն, յոյժ սիրելի զանել ամենայն Սրբոց, ի տօնախմբութիւն անյապաղ տանց ձանձրանալոյ, մի ըստ միոջէ կատարելով զտօնս Սրբոց, նահապետաց, նախահարց և սրբոց մարգարէիցն, մինչև ի խոնարհել Որդւոյն Աստուծոյ...: Զոր Տէր մեր Ստեփաննոս[1] որդի մեծափառ իշխանին իւանէին Որոտնեցւոյ՝ եբեր ի Սսոյ յաստուածարեան ուխտն Երուսաղէմի սուրբ տապանոյն. և մեծ վարդապետն մեր քաջ եկեղեցականէս Հայոց Սիմէոն՝ ստացող օրինակի սորին՝ բազում աշխատութեամբ և երթևեկութեամբ բերել ետ ի գաւառն Արարատեան, և մեծափափագ յօժարութեամբ և բազում ծախիւք գրել ետ յիշատակ իւր և ծնողաց իւրոց: Արդ, գրեցաւ օրինակ սորին ի Թուաբերութեանն հայկազեան տոմարի ՊՂԳ (1444–5), ի հայրապետութեանն Գրիգորի աթոռակալի[2] Սուրբ Էջմիածնին վերստին

1. Որ է ծանօթ պատմիչն և Սիւնեաց եպիսկոպոսն Օրպելեան. որ և ինքնին պատմէ թէ երբ ի Սիս գացեր է ձեռնադրուելու համար, անկէ բերեր է օրինակ մի Յայսմաւուրաց: Յիշատակագիրս կամ սխալմամբ Ստեփաննոսի հայրը Իւանէ կոչէ փոխան Տարսայիճի կամ այն էր բնիկ անունն, իսկ Տարսայիճ մականուն մի:

2. Արդարև դեռ հազիւ երեք չորս տարի առաջ հաստատուած կամ նորոգուած էր Էջմիածնի կաթողիկոսական աթոռն:

նորոգելոյ. և յաշխարհակալութեանն կորովի և յաղթող Ջհանշահի միրզին՝ որդւոյ մեծին Յուսուֆին[1], ի մենաստանս Այրիվանք[2], ընդ հովանեաւ հրաշափառ սուրբ լուսոյ մոր կաթուղիկէ Սուրբ Աստուածածնին, ներկեալ արեամբ կենարարին սուրբ Գեղարդեանն, և ամենայն Սրբոցն որ անդ հաւաքեալ կան։

Այլ և ստանօր աղաչեմք զամենեսեան պատահողք սուրբ տառիս, յիշեցէք զստացող օրինակի սորին՝ զաստուածահաճոյ և զարդիւնական և զմեծ վարժապետն Հայոց. զՍիմէոն[3], որ յայնմ ժամանակի փայլէր ի մէջ եկեղեցւոյ իբրև զարեգակն. և մեծաւ յուսով և եռափափագ սիրով սկսաւ նորոգել և զարդարել զվանորայս Արարատեան նահանգիս, որ խախտեալ կային ի ոտնհմանաց և ի կրօնից յառաջին հարցն։ Նախ բնակեցաւ յաստուածաշէն և ի տիրախնամ գեղն Եղիվարդ[4], ի փոքր վանսն՝ որ ի մէջ գեղին, և բազում արդիւնս արարեալ անդ ի խնդրոյ աստուածասէր և բարեպաշտ մեծազգի և փառաւոր աղքատասէր ազատածին տան՝ Ազիզ պէկին և[5] որդւոց նորին՝ Աւագին և Զաքարիային, բազում կրօնաւորս և աշակերտեալ մանկունս եկեղեցւոյ ժողովեալ յուսուցանել զհինն և զնոր մատեան աստուածաշունչ գրոց, զնուրբ և զարտաքին փիլիսոփայութիւն, ամս տասն։ Եւ ապա ուշ եդեալ գնալ յաստուածակոխ սուրբ

1. Հայրն և որդին՝ Սեւախոյ (Գարագօյունլու) Թուրքմանք, այս ժամանակներս շատ անգամ յիշուած են ի մեր գրչաց։ Տես Յօդ. 369։

2. Տես երես 459։

3. Այսչափ գովեստ հաւատալի կ'ընէ որ արժանաւոր անձ մի էր այդ վարդապետն, բայց իրմէ գրաւոր յիշատակ մի չունիմք։

4. Ծանօթ գիւղ Այրարատայ։

5. Վերոյիշեալ կողմերում գրուած այլեւայլ յիշատակարանաց մէջ՝ յիշուի այս պէկս, և երեւի ազնուական ցեղէ։

քաղաքն Երուսաղէմ, տեսանել և երկիր պագանել սուրբ տնօրինականացն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. և ի ճանապարհի տկարութիւն պատահեալ՝ դարձեալ եկն բնակեցաւ ի մեծափառ սուրբ ուխտն յԱյրիվանս. և զամենայն կարգս և զսահմանս ուղղեաց ըստ առաջին սուրբ հարցն, ուխտ եդեալ յամենայն օր ասել ՃԾ (150) սաղմոսն Դաւթի, և անխափան կատարել զաստուածային պատարագն ի շաբաթ և ի կիրակէի և յամենայն մեծամեծ տօնի. և թողեալ յիշատակ պայծառ ժամատեղացն՝ մի պատուական Աստուածաշունչ, մի Տօնական[1] և մի Յայսմաւուրք: Եւ կեցեալ սուղ ինչ ժամանակ ապա եկեալ բնակեցաւ ի սուրբ ուխտն Ջագավանք[2], և վերստին կարգեաց զամենայն բարի կարգս և օրէնս յերկրին Կոտեաց, ի կարգաւորս, յաղատս և յաշխարհականս: Վասնզի շատ անկարգութիւն և անօրէնութիւն մտեալ էր յեկեղեցի. Առաջին. զազգակցութիւն, զկնքաւորութիւն, և զխընամութիւն՝[3] անխտիր անխրատ գործէին, չփոթեալ անամօթ. և յեկեղեցւոյ՝ սաղմոսն Դաւթի պակասեալ էր և չոր շարականքն[4] բազմացեալ. և քահանայք զանազան զգեստուք պճնեալ և գօտեւորեալ իբր այլազգի, և աբեղայք թողեալ զվանս և զանապատս և զամենայն հոգեւոր ուսմունս՝ ի գիւղս բնակէին: Իսկ սա աստուածային վարդապետութեամբն սաստէր և յանդիմանէր զանուսումն և զանխրատս և զանխրղայս[5]: Եւ դարձեալ, քաղցրուսոյց վարդապետութեամբն ուսուցանէր խրատէր և մխիթարէր

1. Սրբոց վարք և Քրիստոսի կամ Տիրամօր տօնից վերաբերեալ ճառք և ներբողք:
2. Այս գեղն այլ ծանօթ է, Երեւանի մօտերում:
3. Մերձաւոր ազգականաց հետ հարս ու փեսայ կ՚ըլլային:
4. Անվաւեր, հասարակաց ընդունելի չեղած Շարականներ:
5. Եթէ չէ զանուղղայս, անծանօթ կամ սխալ է:

վկայութեամբ աստուածային սուրբ գրոց՝ զզջացեալ հաւատացեալ ժողովուրդս, օրհնելով յորդորէր ի պատուիրանսն Աստուծոյ. և երարձ զամենայն խառովութիւն ի տանէ Աստուծոյ: Եւ կանոնս և օրէնս հաստատեաց՝ զի աբեղայք ի վանս բնակիցեն իւրեանց հանդերձիւն, բրդեղէն, մաշկեղէն կամ մազեղէն՝ ըստ առաջնոցն, և աշխարհի երէց ի պահք ժամանակի գինի մի՛ ըմպիցէ և ձէթ մի՛ ուտիցէ. և կապուտ փաթթէ ի գլուխն. զԾՄ (150) սաղմոսն երգէ իւր ընկերօքն յեկեղեցի. և զերեք յիսնակսն կենայ պահօք[1] շաբաթ և կիրակին, զզջացեալքն միայնակեացքն և ապաշխարողքն: Իսկ պատարագողք աբեղայքն և ճգնաւորքն՝ բոլոր կենան զյիսնակաց պահսն. և յօրն որ զպատարագն մատուցանէ՝ լեզուաւն առէ զուխտ կանոնն (Սաղմոսն) անխափան, և գինի և միս մի՛ ուտիցէ այն օրն, ըստ առաջին հարցն: Այլ և զամենայն սահմանս և զկարգ վանիցն ուղղեաց ըստ առաջնոցն. եթէ բնակիչք որ լինին ի մի խորհուրդ և մի բան և մի գործ, այսինքն երեք տեղ, ի ժամատեղն, ի հացատեղն և ի բանատեղն[2], հնազանդ լինին առաջնորդաց եկեղեցւոյ. և առանց հրամանի կրօնաւոր ի վանացն մի՛ ելցէ յոչինչ գործ: Այլ և զվանքն պարըսպեաց և ամրացոյց և որոշեաց ի յաշխարհականացն. զի աբեղայ ի շուրջ պատի կողմն բնակեսցէ, և սանամայր մի՛ արասցէ և քոյրաքոյր և մայրաքոյր[3]. և ամառն և ձմեռն ի մի վայր ժողովին ի քնոյ ժամն ըստ առաջնոյ սահմանին: Եւ հինգ մեծամեծ խաչ կանգնեաց ի մէջ

1. Զատկի, Վարդավառի և Յայտնութեան 40 կամ 50 նախընթաց աւուրց պահք:

2. Այսինքն. կրօնաւորք պէտք է որ յեկեղեցին, ի սեղանատանն և աշխատելու տեղն՝ միաբան գտուին:

3. Արանց վանորէից մէջ չմտնեն կանայք՝ եթէ սանամայր և եթէ այլ որ և է ուրիշ հոգևոր ընտանութեան անուամբք:

պարսպին. կամէր զեկեղեցի շինել և այլ բազում արդիւնս առնել. եհաս հրաման յարարչէն կոչել զվարդապետն առ ինքն, ի Թուին ՊՀԷ (1428), և մնաց գիրքն Թերատ ամս բազումս. առաջինն գրեալ եղեւ ձեռամբ սրբասէր և մաքրամիտ քահանայի Մեսրոբ անուն՝ գրոց աշակերտի. յիշատակ նորին օրհնութեամբ եղիցի։

---

## ՅՀԶ

## ՄԿՐՏԻՉ ՆԱՂԱՇ

(ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ՁԵՌԱԳԻՐ ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ ԳՐՈՑ)

Ամենեցուն ճարտարապետն Աստուած յառաջ քան զլինելն ժամանակաց՝ ընտրեաց ի մարդկանէ զորս ինքն կամեցաւ, և յիւրաքանչիւր ժամանակի նոյն Հոգի Աստուծոյ յայտնէ ներգործութեամբ զնիւթս պատշաճաւոր, և տնօրինէ նախագիտութեամբ նահապետս և մարգարէս, հովիւս և հովուապետս, տեսուչս և վերակացուս, իշխանս և դատաւոր. եւ յարաձգական յաւիտեննին ոչ դադարէ ի ներգործելոյ։... Ըստ այսմ սարասի ի վախճան ժամանակի և ի կէտ սուգականն[1], որ ամենայն ծաղիկ թառամեալ էր և ամենայն տերեւ ցամաքեալ, յայտնեաց մեզ Աստուած ծաղիկ անթառամ, որոյ անուշահոտութիւն ելից զտիեզերս ամենայն, զՏէրն տիեզերալոյր զՏէր Մկրտիչ մականուն Նաղաշ[2] կոչեցեալ։ Որ և եղեւ երկրորդ

1. Վար ընկած, ցած. վերջին ժամանակ ըսել կ'ուզէ։

2. Թուրք բառ (Նաքշ) նկար և նկարիչ նշանակէ, և այսպէս կոչեցաւ նա՝ իր ճարտար նկարչութեան համար, որոյ նշմարք ինչ գտուին ի Ձեռագիրս, և քան զծագրութիւնն՝ զգիւտն և հանճարն աւելի երեւի, զոր

լուսաւորիչ ամենայն Միջագետաց, և պարծանք պարծանաց ամենայն քրիստոնէից։ Եւ էր սա բնական ի Նահանգէն Թաղիշու ի Պոռ կոչեցեալ գեղջէ, որդի մեծատան և աստուածարեալ քահանայի Առաքելոյ և մօր բարեպաշտի։ Էին սմա և եղբարք երկու, Յովհաննէս քահանայ, որ տղայ հասակաւ փոխեցաւ առ Քրիստոս, և միւսն Աբգար անուն, որ եղեւ երեւելի մեծ և փառաւոր և պատուեալ յամենեցունց. որ և զտուն հօր իւրոյ առաւել քան զառաջինն բարեկարգեաց, երկրորդ հայր Աբրահամ լեալ՝ կերակրելով զբազումս։

Եւ բազմերջանիկս Տէր Մկրտիչ ի տղայութենէ սիրէր զվարս կրօնաւորական, սիրէր զկրօնաւորս և վանականս. և սիրող լեալ արուեստից և ուսման՝ և հանապազ նմին հետեւէր։ Եւ էր տուեալ սմա շնորհք ի վերուստ, մինչ զի զամենայն դիւրաւ ուսանէր, և զամենայն դժուարին արուեստ մի անգամ տեսանելով՝ նա գերագոյն քան զօրինակն ներգործէր։ Եւ զուսումն աստուածաշունչ գրոց զոր ինչ սա ի միում ժամու՝ այլ ոք զաւուրս տասն բազում աշխատութեամբ ոչ կարէին ի միտ առնուլ. և ամենեցուն հիանալի էր ի վեր քան զտեսութիւն մտաց. մինչ գրեթէ ոչ ոք երեւեցաւ յայսմ ժամանակի այսպիսի տիրական շնորհիւ զարդարեալ, առաքելաշնորհ և աստուածուսոյց. մինչեւ հնգետասան գոլով ամաց՝ եղեւ կատարեալ ուսմամբ և արուեստիւ, իմաստութեամբ և վարդապետութեամբ, քաջ քարտուղար, անհամեմատ նկարող, և ամենայն արհեստից ճարտարապետ։...

Եւ զի թէպէտ ոչ ունէր սէր աշխարհի՝ բռնադատեալ եղեւ ի ծնողացն եմուտ ի կարգ աշխարհի, ոչ փոխելով զբարս իւր, այլ հանապազ ընդ կրօ-

ցուցած է թէ ճարտարապետութեամբ և թէ բանաստեղծութեամբ. որովք թերեւս ԺԹ դարու ազգայնոցս վեհագոյն հանճարեղն էր. և աւաղ ներելի կ'ընէ յիշատակագրողին չափազանց կրկնած գովաբանութիւնը։

նաւորս լինէր։ Եւ զի նախագիտութեամբն Աստուծոյ տնօրինեալ էր զսա լինել փեսայ երկնաւոր հարսին եկեղեցւոյն Միջագետաց, զի սովաւ ուրախանալոց էր հարսն Քրիստոսի և ցնծալով մանկանց Սիոնի, և բարձրանալ խաչին Քրիստոսի, և ուրախանալ սովաւ տարաժամ և տխուր ազգս Հայկազեան, որ եղեւ իսկ։ Զի մին որդի ծնանելով եղեւ մեռանել ամուսնոյն իւրոյ. զոր և ինքն զնոյն խնդրէր յԱստուծոյ՝ ազատ լինել։

Եւ առաջնորդութեամբ Աստուած Սուրբ Հոգւոյն՝ ելեալ ի բնական նահանգէն՝ եկեալ բնակի յերեւելի և յականաւոր և յապաստանի քաղաքն յԱմիթ շոհաստանն. և ողորմութիւն Տեառն էր ընդ նմա, և յաջողեալ էր ի գործս սորա. զի յամենայնի Հոգին Սուրբ էր թելադիր և գործակից սմա։ Զի յորէ յորմէ հետէ մուտ սա ի Միջագետս, շարժեաց Հոգին Աստուած զսիրտ ամենայն մարդոյ ի սիրել զսա, և զամենեցուն զլեզու՝ ի գովել և ի բարեբանել և բարեհամբաւել։ Եւ եբաց սմա Աստուած զդուռն ողորմութեան, զի ամենայն ազ որ տեսանէր զսա՝ կամէր և զհոգին եւս տալ յօժարութեամբ և զուարթութեամբ և առատ սրտիւ։ Եւ ոչ միայն ազգն քրիստոնէից, այլ և Թուրք և Թաթար և քուրդ և արապ և ջհուտ, և ամենայն ազինք. ընդ տեսանելն՝ և զպատիւ և զպարգեւս պատրաստէին, ձիս և ջորիս և խոյս մեծագինս, անասելի և անպատմելի։ Եւ ոչ եթէ միայն յիւր վիճակն, այլ և յամենայն աշխարհաց գային, յարեւելից և յարեւմտից, և պարգեւս բերէին՝ ոսկի արծաթ, ականս պատուականս, կապուս մեծագինս. մինչ զի բազում անգամ հազար և երկու հազար թանկա[1] պարգեւ բերէին։ Զի տարածեցաւ համբաւ սորա ընդ ամենայն աշխարհս, մինչեւ եհաս առ Թագաւորն Պարսից և տէրն Եգիպտոսի, և էանց զմեծ ծովն մինչեւ ի պապն Հռոմայ և ի

1. Ժամանակին ընթացիկ արծաթ դրամն։

Կոստանդնուպօլիս. մինչ զի վարչամանս ոսկեթելս և մեծագին պարգեւս առաքէին: Եւ եւս առաւել սիրեցեալ եղեւ յաչս պարոնաց պարոնին Շահ Օրման բէկուն[1], որ տիրէր ի Խառանայ մինչեւ ի ծովն Պոնտոսի որ է Տրապիզոն. զի այնպէս քաղցրացոյց Աստուած զսիրտ բռնաւորին ընդդէմ սմա, զի զամենայն քրիստոնէայք որ ընդ իւրով իշխանութեամբ էր՝ ետ ի ձեռս սորա, և մեծամեծս պարգեւօք և սրօք մեծարեաց և փառաւորեաց, թագաւորական զգեստիւք և արքունի երիվարօք. մինչ զի զոր զգեցեալն էր արքայն՝ զնոյն զգեցուցանէր. և զսէրն զոր սիրէր և զպարգեւսն՝ ոչ ոք կարէ ընդ գրով արկանել, մինչ զրեթէ և ոչ ոք ի մարդկանէ ի թագաւորայն քրիստոնէից այսպիսի պարգեւօք ճոխացոյց զոք ի հայրապետաց սրբոց: Եւ զչափ սիրոյն ի պարգեւացն գիտացիր. զի յարաժամ 1000 և 2000 թանկայ ի պարգեւ տայր. և ի գնալն Նորա առ Նա՝ ընդ առաջ ելանէր և համբուրէր. և ի վերայ իւրոյ թագաւորական խալիչային[2] նստուցանէր, և զբան սորա ընդունէր իբրեւ զծառայի Աստուծոյ, զի սիրող էր բանին. զի հրաման տայր բերել յիւրոց տաճնորդացն[3], և զգիրշերն ի բուն տայր խօսել յաստուածաշունչ գրոց. և սա աստուածատուր շնորհօք և աստուածուսոյց վարդապետութեամբն զամենեսեան յամօթ առնէր, և զթագաւորն հաւանեցուցանէր. և առնոյր պարգեւս ի թագաւորէն, և օր ըստ օրէ Աստուած զօրացուցանէր զսա ի բանս իւր, և Հոգի Աստուծոյ էր ի վերայ սորա: Եւ յետ Օթման բէկուն փառաւոր սուլթանն որդի Նմին սուլթան Համ-

1. Աք-գօյունլու Թուրքմանաց ինքնագլուխ իշխողն Միջագետաց կողմերու, յԱմիդ, Մէրտին և այլն, որ սպանեց միւս (Գարագօյունլու) տոհմին իշխանապետ Ջիհան-շահը:
2. Կապերտ բազմոցի:
3. Մահմէտական կարդացողներն:

ատոյ, զոր ինչ ականատես եղեւ ի հօրէն իւրմէ՝ այլ առաւել պատուով ընդունեցաւ զսա, հայր ինքեան անուանելով փոխանակ հօր իւրոյ։ Եւ մեծաւ պատուով փառաւորէր զսա քան զամենայն մեծամեծս իւր. մինչ բազմաց ասել, թէ ինքն քրիստոնեայ է, զի այսչափ սիրէ և պատուէ զեպիսկոպոսն։

Եւ ձեռնադրեցաւ սա յաստիճան եպիսկոպոսութեան ի Տէր Կոստանդեայ կաթողիկոսէ Վահկեցւոյ, որ էր ի մեծ թուականիս Հայոց ՊՀԹ, (1430)։ Մեծարեաց զսա և կաթողիկոսն՝ զանազան պատուով և պարգեւօք, և հաստատեաց արքեպիսկոպոս ի վերայ 24 գաւազանի, և ամենեքեան սիրով հնազանդեցան և ընկալան զսա իբրեւ զառաքեալ Աստուծոյ. և եղեւ բան սորա արդիւնարար ընդ ամենայն երկիր։ Եւ եղեւ յաւուրս սորա ցնծայր եկեղեցի Քրիստոսի և բարձրանայր եղջիւր քահանայից, և պայծառանայր հաւատս քրիստոնէական, և ուրախանային ամենայն հաւատացեալք։ Զի յայտնապէս հովիւ քաջ և արժանաժառանգ վիճակին պայազատ, որ գիտէ հովուել զբանաւոր զառինս յարօտ անմահարար և ի ջուր կենդանի, բազմադիմի և յորդառատ վտակօք, որ տուեալ է սմա առատապէս ի շնորհաց Հոգւոյն։ Զի որ էն պատմագրաց[1] յաւելեալ ի ճառս գովեստից, այլ մեք զնոյն շարագրեցաք զոր ականատես եղաք, և յայտնի ամենայն երկրի տեսողաց. այլ մի ըստ միոջէ գրել ձանձրութիւն է լսողաց։ Այլ համարեա թէ զամենայն տեսակ աստուածային շնորհաց զոր յամենայն մարդիկ՝ ի սա միայն տեսանիւր լի և անթերի. ընկերասէր, օտարասէր, աղքատասէր, խաղաղարար, խոնարհ և համբերող, ողորմած, առատասիրտ, մեծապարգեւ. զի յայսմ ժամանակի ոչ ոք էառ իբրեւ զսա, և ոչ ոք եգիտ իբրեւ զսա, որպէս ասաց Տէրն, Զրի առէք և ձրի տուք. զի միայն գտաւ արկանել զքանքարն ի սեղանաւորս,

1. Թուի թէ պիտի ըլլար՝ ոչ զօրէն պատմագրաց։

և բազում բարեաց պատճառ եղեւ կարողութեամբն Աստուծոյ։

Նախ, զի յեկեղեցիս խախտեալ՝ ոչ ոք իշխէր քար մի ամրացուցանել. և սա զամենայն եկեղեցիս խախտեալ և զշինացեալ և զհողաշէնս՝ նոր նորոգեաց կամարակապ և զմբեթաձեւս, և բազում նորաշէնս. որպէս զԲարձր Աստուածածինն[1] ի գլուխ բարձր բերդին Արղնոյ։ Եւ երկրորդ, զի յաւելեաց յեկեղեցիս բազում շուրջառ մեծագին, գիրս, և սկիհ պատուական և զարմանալի, և հանապազ զնոյն բանս հոգայր։ Երրորդ, զի ոչ իշխէին համարձակ պաշտել յեկեղեցիս, և յաւուրս սորա համարձակ պաշտէին, առաւել պաշտէին քան զոր յանապատս և ի վանորայս։ Դ. զի հալածէին զքահանայս և հարկապահանջութեամբ տանջէին առաւել քան զաշխարհականս, և սա քարոզութեամբն Քրիստոսի զամենեսեան ազատ արար ի թագաւորական հարկէն։ Ե. եկեղեցիք Միջագետաց ի ներքոյ դիմոսական[2] հարկի կային, և եպիսկոպոսք մաքսապետք. զի զամենայն զոր ինչ առնուին ի քրիստոնէից՝ ի մաքս տային, և ոչ կարէին մէկ Աստուծոյ տալ կամ աղքատի. և սա զօրութեամբն Աստուծոյ եբարձ զմաքսն յեկեղեցեաց. և ինքն եւս առնոյր ի պարոնացն 10 և 20,000ու, և բաշխէր եկեղեցեաց, աղքատաց և կարօտելոց։ Զ. զի վասն սորա՝ ազգ կարգաւորաց առաւել սիրեալ եղեն ի պարոնաց քան զառաջնորդս իւրեանց։ Է. զի ոչ ոք իշխէր փիլոնով կամ վեղարով շրջել. և յաւուրս սորա ամենայն ուրեք համարձակ զգենուին, և քահանայական կարգօք շրջէին երեւելի փառօք։ Ը. զի անուամբ սորա բազմաց ազատութիւն լինէր ի դատաստանաց և ի տուգանաց և ի բանտաւորաց, մինչ զի ի ճանապարհի ըմբռնէին զբազումս, և

1. Մինչեւ հիմայ այսպէս կոչուի, յԱրղնի քաղաքին։

2. Յունական բառն δημός, զնոյն հարկ նշանակէ։

յորժամ ասէին թէ մեք Տէր Նաղաշի մարդն եմք, ազատ առնէին: Թ. զի բազում գերիս ազատեաց յանօրինաց, զորս գնելով և զորս խնդրելով ի պարոնաց, և զորս յափշտակելով ի ճանապարհին. առաքէր ի ծառայից իւրոց արս զօրեղ և սրտապինդ, և խլէին զգերիս յանօրինացն և բերէին ի Նորաշէն վանս իւր ապաստանի, ի Բարձր Աստուածածինն, պահելով ժամանակս ինչ մինչև գային տեարք ծառայիցն, և տայր նոցա հանդերձս, նաֆաղայս[1], և ուղևորէր ի տեղիս իւրեանց: Ժ. զի զամենեցուն զպակասութիւն և զնեղութիւն և զվիշտս ինքեան համարէր, և ամենեցուն օգնական լինէր կերակրով, պարգևս տալով և կարեկիր լինելով, և մխիթարելով բանիւ և արդեամբք: ԺԱ. զի դրունք եկեղեցեաց հանապազ փակեալ կային, և ոչ գոյր յեպիսկոպոսարանն սեղանատեղ, և սա կարողութեամբն Քրիստոսի այնպիսի սեղանատեղ սահմանեաց, մինչ զի յամենայն ազգաց գային. ուտէին ըմպէին, և առաւել տանէին յանխնայ անարգել առատապէս. մինչ զի պարոնայք զարմանային թէ ուստի կարէ պատրաստել ինչ որ բաւական լիցի այսչափ ուտելոյ, տանելոյ և պարգևելոյ. ոմն ասելով՝ թէ քիմիայ[2] ունի, բազումք ասէին թէ գանձ է գտեալ. և փող մի չունէր: Այլ շնորհիւն Աստուծոյ գայր նմա գանձ անպարապելի, որ յամէն օր 100 թանկայ և 200 մուահէր[3] նորա, սակաւն՝ 50. 60 լինէր. ամէնն ի շինուածն կաթողիկէին Սրբոյն Թէոդորոսի[4]: Քեզ օրինակ, որ բանակն Մովսէսի յերիկունն դատարկ լինէր ի մանանայէն, ի լուսանալ առաւօտուն լի էր ամենայն բարութեամբ. նոյնպէս և Աստուած լցուցանէր զտէրս մեր հօգևոր՝ ամենայն բարութեամբ. քան զմեծամեծ թա-

1. Թոշակ, ռոճիկ:
2. Իբր թէ ոսկւոյ և արծաթոյ հանք գտած է:
3. Կամ մասրաֆ, թուրք բառ, ծախք նշանակէ:
4. Իր ձեռակերտ եկեղեցին յԱմիդ:

գաւորս ունէր բաշխէր ձիս, ջորիս, հանդերձս, ոսկի, արծաթ, ցորեան, մեծատուր պարգեւօք: Եւ որքան առաւել բաշխէր՝ առաւել տայր Նմա Քրիստոս. Նա որ ասաց՝ Տուք և տացի ձեզ. և սա ճշմարիտ հաւատայր, զի անսուտ է խոստումն, վասն որոյ առնոյր ըստ հաւատոյն: ՃԲ. զի յայսմ ժամանակի սա միայն կատարեաց զհրաման Տեառն իւրոյ որ ասաց, Բարի արարէք ատելեաց ձերոց. և սա զամենայն ժամանակս կենաց իւրոց սիրեաց զթշնամիսն, և բարի արար ատելեաց, և ամենայն չարի փոխարէն բարի հատուցանէր. վասն որոյ արդարադատն Աստուած զամենայն թշնամի սորին անդնդասոյզ կորոյս:

ՃԳ. Զի յաւուրս սորա եղեւ օգտութիւն մեզ. զի զմեռեալս քրիստոնէից ի քարշ տանէին Հայք և Ասորիք և Նեստորականք և Ջհուդք. և թէ հարիւր հազար դեկան տային՝ ճարակ չկայր. և ի գալն նորա ընթացեալ մօտ ի սուլթանն, և ընդ բազում պարգեւացն զոր ընկալաւ՝ խնդրեաց և զայն. և առեալ հրաման բարձրացուցանել զմեռեալս քրիստոնէից, և այս սովորութիւն եղեւ:

Դարձեալ, ի ՊՁ թուին (1431–2) Նստի յաթոռ հայրապետական, և ՁԲ (1432–3) թուին շինէ զԲարձր Աստուածածինն ի յԱրղնու բերդն. ի ՊՁԸ թուին (1439) սկսանի վերանորոգել զամենագով և զամենահրաշն, զամենեցուն զարմանալին, զհրաշափառ կաթողիկէն Թէոդորոսի Զինաւորին: Եւ թէ որչափ աշխատանս կրեաց ի նմա՝ անասելի (է), մինչ զրեթէ հողանիւթ մարմին ոչ կարէր տեւել այնպիսի երկարախոնջ ցայգացանկ և գիշերատանջ չարչարանաց. որ իբրեւ զկենդանի նահատակ՝ զչորս ամ մարտիրոսական արիւն եհեղ ի շինուած սուրբ եկեղեցւոյն. և աւարտեալ կատարեաց զմբեթայարկ յօրինուածով, անտանելի և անպատմելի գեղեցկութեամբ. զի զլուխ գմբէթին բարձր էր քան զմինարայիցն, և ութեւտասն անկիւնիւ ճոխացեալ, և ութեւտասն լուսամուտ ի գմբէթին,

և բարձրութիւն լուսամտին ի չափ մարդոյ. և ո՞վ որ կարէ ընդ գրով արկանել զզանազան յօրինուածըս զմբէթին վայելչութեան: Զոր տեսեալ քրիստոսատեաց ազգն ի խոր խոցեցան. և ձայն ետուն միմեանց որդիքն Հագարայ, և հաչակ հարեալ համբաւեցին, և ամբաստան եղեն առ սուլթանն Եգիպտոսի և առ թագաւորն Պարսից և առ սուլթանն Հոռոմոց տանն[1], եթէ այսպիսի գեղեցիկ յօրինուածով բարձրացաւ եկեղեցին քրիստոնէից: Զոր լուեալ նոցա վառեցան չար նախանձու, և իսկոյն իսկ դեսպան և հրովարտակս առաքեցին առ սուլթան Համզէն, քակել զամենագով սուրբ եկեղեցին: Եւ անտանելի սուգ հասաւ ազգին Հայոց, և ամենեքեան ի խոր խոցեցան, և ամենայն տղայ աղիողորմ արտասուս հեղոյր. և ետուն կոչառս զանձս բազումս, և ոչ կարացին ազատել. զի զամենահրաշ և զամենագով զհրաշալի զմբէթն քակեցին, հաւասար տներաց. և ամենայն քրիստոնեայք ի սուգ մտին: Ո՜հ, ո՜հ, ո՜հ. ո՞վ կարէ պատմել զանտանելի սուգն և զաղիողորմ կսկիծն, զձայնս հառաչանաց և զողբս տարակուսանացն, և զկականաւոր աղաղակն և զաղետալի մորմոքումն. զի ամենայն սիրտ ի տրտմութեան էր և ամենայն աչք յարտասուս, ամենայն բերան յաղաղակ և ամենայն լեզու յաւաղումն: Եւ առաւել եւս արի այցելուն և քաջ հովուապետն Տէր Մկրտիչ, շինող սուրբ կաթողիկէին. և ի սաստիկ խոցոյն և ի դառն կսկծանացն տարաշխարհիկ եղեւ, և գնացեալ էանց ի ծովն Պանտոսի, և եհաս ի Կաֆայն և յԸստըմբօլ, և զցայգ և զցերեկ խոցեալ սրտիւ առ Աստուած աղաղակէր, այցելու լինել սուրբ կաթողիկէին՝ յառաջ քան զելանելն ի մարմնոյն, զի մի՛ մնացէ խոցով ի գերեզման: Այլ ողորմածն Աստուած այն որ կատարիչն է խնդրուածոց և լսող աղօթից,

1. Օսմանեանց սուլտանն, նախ քան զառնուլն Կ. Պօլսի ի Յունաց:

տեսեալ զՋերմեռանդ սէր նորա որ առ Աստուած և առ սուրբ կաթողիկէն, և լուաւ Աստուած աղաչանաց նորին, և կատարեաց զխնդրուածս նորա. սատակեաց Աստուած զայնոսիկ որ քակեցին ըզգըմբէթն, և յարոյց այլ թագաւոր Միջագետաց՝ զՋահանգիր խմիրզայն. և տեսչութեամբն Աստուծոյ նա խնդիր արար, և գիր և դեսպան առաքեաց Ջհանգիրն, և ամենայն մեծամեծքն և ղազեստանն[1] և տանուտեարքն քրիստոնէից և ամենայն քահանայքն և ժողովուրդքն միաբանագիր գրեցին հետ պարոնաց թղթին, երկու և երեք անգամ, և մեծաւ ջանիւ առաքեցին ի Կաֆէն. և բերին զամենեցուն զտենչալին, զարհիական զլուխն՝ զՏէր Մկրտիչն, մեծաւ պատուով: Եւ միաբան ընդ առաջ ելին երկու աւուր ճանապարհ, և ընկալան մեծաւ ուրախութեամբ. զի յորէն յորմէ հետէ ելեալ էր ի Միջագետաց՝ ամենայն եկեղեցիք ի տրտմութեան կային, որպէս զմայր որդեմեռ ի տարակուսանս կային, և ամենայն քրիստոնեայք ի տրտմութեան. վասն որոյ ի գալ սորա ցնծացան ամենայն քրիստոնեայքն և բերկրեցան եկեղեցիք և զուարճացան մանկունք Սիոնի:

Եւ սա արիացեալ ի Հոգւոյն Սրբոյ և առեալ հրաման ի պարոնէն, և 3000 թանկայ պարոնացն ետ և մեծամեծացն ետ, վերստին նորոգեաց շնորհօքն Քրիստոսի և ողորմութեամբն նմին: Եւ բնակիչք քաղաքին քահանայք և ժողովուրդք միաբան օգնական եղեն աշխատելով, դրամ տալով, կերակուր բերելով, մշակ տալով. և աղքատք և մեծատունք միամիտ քաջութեամբ և բոլոր հաւատով ջանացին. և ի տասն օրն կատարեցին զկուպայն (գմբէթն) ի շինելոյ: Եւ առաջիկայք ժողովըրդեանն և երեւելի տանուտէրք էին՝ Շահրմանն

1. Ղազի՝ թուրք բառ, պատուաւոր զինուորական:

Թիլկուրանցի[1], և ոսկերիչ Սադաղէն[2] որ էր երեսփոխան և հրամանատար, և Աշեքսիանոս ոսկերիչ, և Ցերկէն[3] Դանիէլն, Աբրահամն, և Սիմէոն դարբինն. որք ինքեանք տային ինչս բազումս և կերակուրս, և զամենեսեան յորդորէին ի գործ ծառայութեան սուրբ կաթողիկէին։ Եւ կատարեցաւ սուրբ կաթողիկէն ի ՊՂԶ (1447) թուին, յօգոստոս ամսոյ ի վեց, յաւուր երկուշաբաթի, ձեռամբ վարդապետ Նեքսամատին[4]։ Եւ յորժամ ետես արհիական գլուխն եկեղեցւոյ և աստուածաբան վարդապետն Տէր Մկրտիչն՝ զսուրբ կաթողիկէն կատարեալ, մեծաւ ուրախութեամբ գոհացաւ զԱստուծոյ, և մխիթարեալ երեսաք օրհնէր զամենազօրն Աստուած, և ցնծայր և պարէր ի գաւիթս եկեղեցւոյ, որպէս զերկնաւոր փեսայ ի մաքուր առագաստին։ Եւ զարդարեաց զեկեղեցին ամենայն կահիւք և զարդիւք. և բերեալ ի Տրապիզոնէ զմեծ սկիհն՝ զանազան յօրինուածով, ոսկեզօծ և յոյժ պատուական, որ ոչ ուրեք գտանի այնպիսի փառաւոր սկիհ. փարթամ և գերաշխարհիկ, 182 մսղալ քուլիճայ[5] արծաթ ոսկեզօծ, և միճա-քարի[6]։ Եւ ի Կաֆայն գնացեալ և ինքն շինեալ նորաձեւ նաշխ խաչաձեւ, ետ շուրջառս մեծագինս բազմախաչեան, և զհրաշալի ջնաղազարդ զպատուական սուրբ Նշանն Քրիստոսի բերեալ ի Կաֆայէն՝ որ ունի մասն ի խաչափայտէն Քրիստոսի, և բուն սուրբ Նշանին լուսափայլ ականց. և ի սիրտս խաչին՝ զՔրիստոս

1. Իր ձեռագրով գրած ի Հալէպ, յիշած է ու իր հայրը. Մարտիրոս պապը և մեծ պապը Խաչոյ։
2. Ուղղական անունն է Սադաղա. այս անուամբ բանաստեղծ կամ երգահան մի յիշուի։
3. Երկայն։
4. Ծարատրապետ նշանակէ. յիշուած է ու յամի 1424. իր հայրն Աւագ քահանայ որդի Մերչերոյ. միւս որդիքն եւս այսպիսի անսովոր անուամբք։
5. Զոյլ, զուտ արծաթ։
6. Կիտուածանկար, Email, Թուրք. միճէ։

բեւեռեալ յոսկւոյ ձուլածոյ։ Եւ թէ ուստի իցէ հրաշալիս այս սուրբ Նշանս պատուական. զսա պապն Հռոմայ պարգեւեաց մեծ վարդապետին Սարգսի Կաֆեցւոյն, յորժամ գնաց ի Հռոմ. և ի գնալն Տէր Մկրտչին ի Կաֆայն՝ մեծ վարդապետն Սարգիս[1] ընկալաւ մեծ պատուով, և ընդ բազում մեծարանացն և պատուոյն պարգեւեաց Տէր Մըկըրտչին զսուրբ և զհրաշալի զպատուական սուրբ Նշանն. զոր ընկալեալ մեծաւ ուրախութեամբ և բերեալ մեծ պարգեւօք տանս Հայոց՝ ի սեփական յաթոռն իւր ի յԱմիթ մայրաքաղաքն՝ ի սուրբ կաթողիկէն, զոր ինքն շինեալ էր. և եհաս յաւուր տօնի սուրբ Նշանին Վարագայ. և զօրն զայն տօն մեծ կարգեաց յանուն սուրբ Նշանին. և սահմանեաց յամենայն ամի յամենայն տարի զնոյն տօնս մեծ տօնախմբութեամբ խրախութիւն առնել բազմութեամբ հաւատացելոց, ուխտ մեծ կատարել զօր գալստեան սուրբ Նշանին, ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ։ Եւ զսուրբ և զհրաշալի սուրբ Նշանն, և զպատուական սկիհն և զհանդիսաւոր շուրջառն ամենավայելուչ, և զայլ գեղեցիկ շուրջառսն։ Եւ զայս գեղեցիկ Յայսմաւուրքս երեք յիշատակ[2]...

. . . . . . . . . . . . . . .

1. Գլխաւոր Նուիրակ Կոստանդնին կաթողիկոսի, ղրկուած ի ժողովն Ֆլորենցայ, որոյ վարդապետութիւնն ընդունեցան, և նոյն ինքն Մկրտիչ՝ որ հակառակ էր՝ Սարգսի բացատրութեամբն համոզուած դարձած երեւի ի Կաֆայէ։

2. Ափսոս է որ այսպիսի կարեւոր Յիշատակարանի վերջն կորած է։

# ՅՀԷ

## ԿԱՐԱՊԵՏ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՍՍՈՑ[1]

(ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ)

Որք Աստուծոյ և աստուածայնոցն են ցանկացողք և հետևողք, և յառ ի նմանէ աստուածաբուղխ իմաստիցն ճաշակեալք, յամենայն աշխարհազբօս խաբէապատիր հոգոց բարեաւ մեալ ստացեալք. որպէս և ամենայն դասք սրբազանիցն ընտրեալք սուրբք, որք զաշխարհ և զամենայն ինչ որ յաշխարհի՝ առ ոչ ինչ համարեցան յաչս իւրեանց. այլ միշտ զվերինն խորհելով՝ ուր Քրիստոս նստի ընդ աջմէ Հօր... Որոց նմանող ընթացող և հետևող, տե՛նս յաւէտ մի ի նոցանէ տեսանեմք այսօր զպատուեալս յաստուածայինսն գերալրապէս և ի մարդկայինս արժանապէս՝ զիսկապէս հետևողս Աստուծոյ և աստուածայնոցն, զառաւելեալս յամենայն առաքինական և ի սրբազնական վարս, վեհագոյն գտեալ ամենայն համացեղից եղբարց՝ Տէր Կարապետ կաթողիկոս ամենայն Հայոց: Որ և փառաց արժանաւոր գտեալ և անուն բարի ստացեալ. և գործս հրաշազանս կատարեալ, որով Աստուած Հայր փառաւորեալ. և զթագն արքայական սուրբ արփիաւորչին մերոյ ի գլուխ եդեալ և հրաշալի պատուով պսակեալ և յաջորդ սուրբ Լուսաւորչին յաթոռ հաստատեալ, և վերստին կրկին նորոգեալ զաթոռ մայրաքաղաքիս Կիլիկոյ. և ըզհետ հետոցն նախնեացն ընթացեալ, մաքրազարդ այցելուս և պատրիարք առաքելաշնորհ սուրբ աթո-

1. Էջմիածնի աթոռոյն դեռ նոր հաստատման անհաւան ըլլալով գրող Յիշատակարանիս, ճոխապէս գովաբանէ հին աթոռոյն Սսոյ ընտրեալ կաթողիկոսը:

ռոյս, հաստատեալ ի յաստուածաբնակ սուրբ ուխ-տըս Տէր Պօղոսի, որ կայ ի Հարաւակողմն քաղաքիս Սսոյ. ընդ հովանեաւ Վահկոյ սուրբ Նշանիս և սուրբ աջոյն Գրիգորի մեր Լուսաւորչին, և մօրն Տիրամօր Աստուածածնին՝ Անեայի. յորոյ անուն կառուցեալ կայ եկեղեցի: Զոր նախնեաց հետեւող գտեալ մեծ պատրիարք Տէր Կարապետ, հանճարեղ և կորովամիտ, քաջ հռետոր և վարդապետ աստուածաբան, անտարակոյս գիտող և խոհեմ, մեկնող Հին և Նոր աստուածաշունչ կտակարանաց. մանաւանդ առնող և ուսուցող, Տեառն իւրում նմանելով, և զարծաթն ի հոգեւոր սեղանս արկանելով: Սա աստուածարեալ այր՝ Տէր Կարապետ կաթողիկոս՝ ի վերայ իւր անբաւ բարեացն և անմոռանալի յիշատակացն, մանաւանդ սանն Աստուծոյ և Նորին սպասուցն զարդարմանց, ստացաւ զսուրբ մատեանս յիշատակ իւր և ծնողաց իւրոց, և եղբօրն՝ պարոն Առաքելին, և եղբօրորդւոյն Տէր Գրիգորին. և ամենայն արեան մերձաւորաց իւրոց:

Արդ, այս երջանիկ հայրապետս Տէր Կարապետ կաթողիկոս՝ եկեալ ի Թօխաթոյ և վերստին հաստատեաց զսուրբ աթոռս Լուսաւորչին ի մայրաքաղաքս Կիլիկիոյ. զոր քսան հինգ ամ խափանեալ մնաց վասն անյայտ լինելոյ սուրբ Աջին մերոյ Լուսաւորչին. և յետոյ գտեալ նորոգեաց զսուրբ աթոռս. և ելեալ գնաց յԵրուսաղէմ և երկրպագեաց սուրբ տեղեաց տնօրինականացն Քրիստոսի. և տեսեալ զամենայն պակասութիւն Հայոց վանացն Սրբոյն Յակոբայ, զի յայնմ ժամանակի եկեղեցին Հայոց ի ներքեւ պարտուց անկեալ կայր. և խաչ և աւետարան և շուրջառ ի ձեռս այլազգեաց յաւանդ կային: Եւ անտի ելեալ Տէր Կարապետ կաթողիկոսն գնացեալ էջ յԵգիպտոս առ Սուլտան Տահիրն[1], և մեծարեալ պատուեցաւ ի նմանէ. և ա-

1. Խլաթեցւոյն Ողբոց մէջ յիշուած է և անարգուած, իբրեւ ապստամբ ի հօրէն. տես երես 365:

ռեալ խիլայս[1] մեծագինս և պարգևս մեծամեծս, որպէս օրէն է թագաւորաց՝ տալ պարգևս մեծամեծաց՝ ըստ արժանեացն։ Եւ եկեալ կրկին յԵրուսաղէմ և ազատեաց զեկեղեցին ի պարտուց, և զորբութիւնսն՝ ի յանօրինաց։ Եւ անտի եկեալ սեփականեաց զսուրբ աթոռս Կիլիկեցւոց, ի սուրբ ուխտս Տէր Պաւղոսի. զոր տէր Աստուած վայելել տացէ նմա զաթոռ և զգիրքս, և անջինջ յիշատակ պահեացէ նմա և ծնողաց իւրոց և եղբօրն պարոն Առաքելին և եղբօրորդւոյն Տէր Գրիգորին. ամէն։

---

## ՑՀԸ

## ՍՈՎ ԵՒ ՍՐԱԾՈՒԹԻՒՆ Ի ՄԷՐՏԻՆ

(ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ[2])

Յորում ամի (1449–50) բացան պատուհանք հինից, բարկութեան ի տանէ Աստուծոյ, և մերկացաւ սուրն վաղակաւոր յազգերէ իւրմէ, և տարածեցաւ հուր ծախիչ ընդ ոլորտս տիեզերաց. ոչ եթէ խրատ կամ հարուած՝ որպէս երբեմն յիսրայելի, այլ պատիժ, վրէժ աշխարհի կորստեան. զի հարուածն և խրատն՝ մին գաւառի լինի՝ զի միւսն խրատեսցի, իսկ պատիժն՝ համօրէն և ընդհանրական՝ որպէս ջրհեղեղաւն. սոյնպէս և յայսմ ամի յընդհանուր արարածս տարածեցաւ տարաժամ մահ, յիլանելոյն արեւու մինչեւ ի մուտս արեւու, ի հիւսիսոյ մինչ ի հարաւ. զի ոչ ոք ետես կամ լուաւ ի հնոց կամ ի նորոց՝ այսպիսի դառնալուր պատիժ և հիանալի տեսողաց և լսողաց

1. Պատուոյ հագուստ։

2. Թէ և ի Ս. Գրոց և յայլոց առած է գրուածս, և կրկնէ ըսածը, բայց և գեղեցիկ զգացմունք ունի։

պարմանալի։ Մինն այս է դառնութիւն սորա՝ զի բոլոր ամ մի է և երեք ամիս որ ի Մերտինս է և ոչ վերանայ. և երկրորդ եղեռնագոյն դառնութիւն, որ մի անգամ և երկու հանէ խոց և ողջանայ զաւուրս բազում, և դարձեալ կրկին հանէ և մեռանի. և երրորդ դժնեայ դառնութիւն սմին, զի յոր տունն որ մտանէ բնաջինջ առնէ ամենայնիւ. չորրորդ սաստկութիւն սորա, զի ոչ տայ իմանալ զցաւն, երեւի թէ անմնաս է և իսկոյն մեռանի։ Որ եղեւ մեզ գալ և հանդիպել ի Մերտին քաղաք՝ ի սոյն ամի և դառն ժամանակի, զոր ոչ կարեմ պատմել կամ ընդ գրով արկանել զանցս աղետից և զմրուր դառնութեան. զկսկիծս մորմոքման և զբաժակն բարկութեան, զողբս արտասուաց և զբեկումն հառաչանաց. զվիշտս վառեալ և զհուրն բորբոքեալ, զաղիողորմ դառնութիւն և զանպատմելի տարակուսանս, զմեծակական հառաչանս և զաղիողորմն արտասուս. զի Աստուած էր խռովեալ և արարիչն դառնացեալ. զի անբարկանալին Աստուած էր բարկացեալ, և կենարարն մահու մատնեալ. զի ողորմածն Աստուած անողորմն դատեցաւ, և քաղցր բնութիւնն վրէժխնդիր յայտնեցաւ. զի տուողն կենաց հրաման ետ մահու, և պահապան հրեշտակն՝ հրեղէն սրովն խոցէ. քաղցր տեսութիւնն ընդ ակամբ հայեցաւ, և սուրն վաղակաւոր իսկոյն ընդ մէջ կարէ զանմեղ մանկունս։ Զի սաստիկ էր պատգամն և ահեղ պատգամաբերն. զօրաւոր էր զինաւորն և սուրն, և զօրագլուխ ահեղին. զի կարծեմ թէ որ յանապատին զքսան և չորս հազարսն կոտորեաց՝ այսօր ի միջի մերում զեօթանասուն և հինգ հազարսն երեւի, կամ որ երբեմն յաւուրս Դաւթայ ընդ մէջ կոտորեաց ի միում ժամու, այսօր չողչողայնէ զսուրն բարկութեան ի միջի մերում. կամ այն որ զօրս Ռափսակայ զհարիւր ութսուն և չորս հազար սատակեաց՝ ցուցանէ այսօր և զմրուր դառնութեան պատժոյն, և առաւել դառնագոյն քան զնոյն. զի անդ միայն ի գիշերի

սպանանէր, և սառ ի տուէ և ի գիշերի, և սառ մի ամ և երեք ամիս. զի անդ միայն զանհաւատան սատակէր և զարդարն տայրեցուցանէր, և սատանոր՝ զարդարն վասն մեղաւորաց պատժէ: Յամենայն առաւօտու փոխանակ լուսոյն՝ աղխաղորմ կսկիծ ծագէ. և յամենայն աւուր փոխանակ արեւուն՝ արեան արտասուք. յերեկորեայ երգ տրտմութեան, և ի մէջ գիշերի խաւար մահարեր. ի հաւախօսին՝ կանայք լալականք, և ընդ արշալոյսն՝ ողբերգականք պարաւորք: Անգ էր տեսանել զողբս արտասուաց և անդանոր զկսկիծն մաղկատանաց[1]. զալիս ծերոց արեան արտասուօք թաթաւեալ. և զմօրսն որդեմեռ՝ կիսամահ նուաղեալ: Ոմանք ծամակաթուր[2] և այլք ոմանք հերարձակ. ոմանք սեւազգեստ և կէսք հրապարակ[3]. ոմանք յարեան ճապաղեալ և չառք ի խելաց անցեալ. ոմանք ապշեալք և ոմանք կառաղեալք ի դառն կսկծանաց: Զի անմեղ գառինքն՝ ի հուր ծնողացն երեցան, մատաղ մանկունքն ի ծնողացն պատուհասեցան, որպէս ասէ Աստուած մարգարէիւն, եթէ. Հանեմ զմեղս հարց՝ յորդիս և յորդիս որդւոց նոցա. և զմեղս մարց՝ ի դստերս և ի դստեր դստերաց նոցա: Եւ մարգարէութիւնս այս այսօր առ մեզ կատարեցաւ. զի վասն մեր մեղացն անմեղ մանկունքն կոտորեցան: Ո՛հ դառն դատաստանիս և սաստիկ վրէժխնդրութեանս. ո՛հ անկասկած կատարածի և արժանահաս պատուհասի: Վա՜յ է ինձ ի բիւրս հազարաց և եղուկ է զիս, թէ զո՛ր կսկիծ տեսի կամ զո՛ր դառնութեան բաժակ ըմպեալ ճաշակեցի: Զի տեսի զնորաբողբոջ մանկունքն յաստուծային աճեղ որոյն սատանեալ. զի թաւալէին մանկունքն առաջի ծնողացն՝ որպէս զգառն որով զե-

1. Սաստիկ կսկիծ. օղիկ օղիկ գալ ըստ ռամկաց:
2. Ոմանց հիւսուած մազերն կտրրտուած, այլոց կապարձակ ցրուած:
3. Մերկ, խայտառակ:

նեալ, կամ զձագս աղաւնոյ նետիւ խոցոտեալ, ի վերայ գրկաց մարցն նուաղեալ, և ողորմն ընդ երեսս ծնողին նայեցեալ, զձեռքն մեկնեալ և զոտքն տարածեալ, և առ մայրն աղաղակեալ, և ի հօրէն օգնութիւն խնդրեալ։ Ոչ մայրն ողորմէր մանկան և ոչ հայրն օգնական լինէր, և հրեշտակն ահեղ կերպարանօք զհոգին քակտէր, և ընդ քակտել հոգւոյն անմեղաց՝ և ծնողաց հոգին խոցոտէր։ Անդ էր տեսանել զմանկունս մուրսուագալի[1] աղխողորմ թաւալեալ. զնոր փեսայն և զնորահարսն՝ զի փոխանակ վայելուչ անկողնոյն՝ ի գէջ գետին և ի ներքոյ հողին տարածեալ. և փոխանակ հարսանեացն՝ սուգ սաւանացեալ, և փոխանակ ուրախարար երգոցն՝ կանայք լալականք և ողբերգականք։

Արդ. զո՞ր լացից կամ զո՞ր ոք ողբացից. զո՞րս ապաշաւեցից և զորո՞ց պատմեցից. զանմե՞ղ մանկունսն՝ եթէ զկատարեալսն հասակաւ, զվայելուչ նորափեսայսն եթէ զգեղեցկագեղ նորահարսունսն. զնորաբողբոջ կուսա՞նսն եթէ զսուրբ սարկաւագունսն։ Որ ամենեքեան ի միասին կոտորեցան որպէս զծաղիկ նանենեաց հարեալ ի կարկտէ յաւուրս գարնանային. զի ամենեցուն էր պատիժն և առ հասարակ պատուհաս։ Անտանօր տեսանելի էր զի ամենայն աչք ի յարտասուս և ամենայն բերան լալական. ամենայն անձն ի սուգ և ամենայն սրտի տրտմութիւն։ Եւ այս ամենայն եկն ի վերայ մեր վասն բազում մեղաց մերոց ի ՊՂԸ (898) թուին Հայոց (1449–50). յորում ամի այսպիսի սաստիկ պատուհաս ընդ ամենայն գաւառս տարածեցաւ, և բազումս լալագին արար, և զբազում աւանս անմարդաբնակս. շատ մայր առանց որդւոյ արար և շատ ծնող առանց զաւակաց. բազում տուն առանց տանուտէր, և բազում հարսն առանց փեսայի։

1. Դեռ նոր բուսած մօրուօք կարինք։

# ՅՀԹ

## ԴԱՐՁ ԱՋՈՅ ԼՈՒՍԱՒՈՐՉԻՆ ՅԱՂԹԱՄԱՐԱՅ

(ԱՌԱՔԵԼ)

Մերձ մայրաքաղաքին Նախչուանու կայ գաւառ մի՝ զոր անուանեն Շահբունեաց ձոր, և յայսմ գաւառի կայ գիւղ մի. զոր անուանեն Օձոպի, և մերձ այսմ գեղջս կայ շինեալ վաղեմի ժամանակաց վանք մի յանուն Սուրբ Աստուածածնին, զոր անուանեն Օձոպոյ վանք. և ի միաբանից այսմ վանիցս եպիսկոպոս ոմն՝ որում անուն էր Վրթանէս եպիսկոպոս, այր խորագէտ և խելամուտ ի գործս իւր, և ճարտարաբան ի խօսս. սա գնացեալ յԱղթամար գողացաւ զԱջն Սուրբ Լուսաւորչին և եբեր դարձեալ ի Սուրբ Էջմիածին. զայս արար Վրթանէս եպիսկոպոսն խորհրդով և կամօք կաթողիկոսացն Էջմիածնի, որոց անուանքն էին Սարգիս և Յոհաննէս[1]: Եւ նախ գնաց Վրթանէս եպիսկոպոս յանծանօթ աշխարհ, և անդ այլափոխեաց զանունն և զգեստն, և հարթեալ թեթեւացոյց զմօրուքն. և եղեւ ի կերպ մոզղդսոյ՝[2] անգէտ գրոց և կարդալոյ. այլ և ի վերոյ քան զծունկն կապեաց պարանաւ զբարձն և կաղացոյց զջիլն, և եղեւ իբրեւ զբնական կաղ, որ ի գնալն իւր կաղայր: Եւ ապա գնացեալ ի կղզին Աղթամարայ՝ և անդ բնակեցաւ, և առնէր սպասաւորութիւն վանացն. և օր աւուր ընտելացաւ նոցա՝ վասն բարւոք սպասաւորութեանն, մինչ որ կարգեցին զնա լուսարար եկե-

1. Այն դարուն (ԺԵ–Զ) քանի մ'անգամ երկուաթոռակից կաթողիկոսք նստած են:

2. Միզգատտես, ըստ Արաբաց, որբազան, հոգեւոր մարդ:

ղեցւոյն և պաշտող անօթոցն և սրբութեան վանիցն. և մնաց նա ի լուսարարութիւն եկեղեցւոյն յամս եօթն:

Եւ ի ժամանակին յայնմիկ պատահեցաւ ի միում աւուր, զի եկին յոլովք արք վաճառականք՝ զոր Հայոց բառիւ փորկզիկ ասեն, և այլազգեաց բառիւ չարչի ասեն. այս չարչիքս գրաստուք և իշովք շրջելով գիւղէ ի գիւղ՝ եկին և հասին մինչ ի նաւահանգիստն Աղթամարայ. և այնպէս իշովքն և գրաստովքն իւրեանց մտին ի կղզին Աղթամար, վաճառել կտաւ և աստառ, չիթ և ալաջայ[1], և այլ ինչ: Եւ էին այս չարչիս արքս ի գիւղաքաղաքէն Ջուղայոյ, քանզի ի ժամանակին յայնմիկ տակաւին շէն էր Ջուղա. և մնացին երկու և երեք օր անդէն ի կղզին: Իսկ Վրթանէս եպիսկոպոսն հերձեաց զիշոյ միոյ կուրդինն, որ է պաղանն[2]. և բերեալ զԼուսաւորչի Աջն, ընդ նմին և զվառն, որ է խաչալամն[3], և զուրարն, զոր և զայս երեքեանս եդ ի մէջ իշոյ կուրդնին և դարձեալ կարեաց, որպէս և էր յառաջագոյն. և զայս արար թաքուն և անգիտելի յամենայն մարդկանէ, բայց միայն իշոյ տիրոջն յայտնեաց, որում և պատուիրեաց զի բարւոք պաշտպանեսցէ, զի մի՛ մնաս ինչ պատահիցի Աջոյն. այլ և մի՛ եւս ուրեք յամեսցի, այլ փութանակի առեալ հասցէ ի Ջուղայ: Եւ զկնի գնալոյ չարչոցն՝ յետ աւուրց ինչ և ինքն Վրթանէս եպիսկոպոսն պատճառանօք ինչ ելեալ ի կղզւոյն և գնաց ուրեք. և իբրև հեռացաւ ի վայրացն յանծանօթ տեղիս, ապա արձակեալ զկապ ոտիցն՝ զոր առաջագոյն կապեալ էր, և ուղի անկեալ գնայր բազում ճեպով: Իսկ բնակիչք Աղթամար կղզոյն

1. Տեսակ տեսակ և գոյն գոյն կտաւեղէն:

2. Փալան ըստ Թուրքաց, Հայերէն կ'ըսուի թամբ կամ համետ:

3. Աւետարան կամ խաչ բռնելու և ծածկելու դաստառակ:

իբրեւ տեսին՝ թէ անցին պայմանեալ աւուրքն եւ ոչ եկն լուսաւորարն իւրեանց, գնացեալ աստ եւ անդ հարցին եւ ոչ գտին. եւ իբրեւ ծանեան թէ ոչ է Աջն ի տեղւոջն իւրում, յայնժամ սկսան յամենայն ճանապարհս եւ յուղիս կարի ստիպով հետամուտ լինել, զի թերեւս հասցեն. իսկ գնացող խնդրակքն իբրեւ պատահէին եկող ճանապարհորդաց եւ հարցանէին, թէ զկաղ այր մի տեսիք. եւ եկողքն պատասխանէին, թէ չիք մեր տեսեալ զայր կաղ: Եւ այսու կերպիւ զերծաւ Վրթանէս եպիսկոպոսն, եւ եկեալ եհաս ի գիւղաքաղաքն Ջուղայ, եւ որոնմամբ եկեալ եգիտ զտունն առնն որ էր տէր իշոյն. եւ բազում տագնապաւ հոգայր վասն Աջոյն՝ թերեւս ամբողջ հասեալ իցէ Աջն ի Ջուղայ: Իբրեւ լուաւ յառնէն եւ ետես զպաղատանն, յորում ինքն եդեալ էր զԱջն, զի ամբողջ կայր Աջն, յայնժամ մեծաւ ցնծութեամբ ուրախ եղեւ. եւ փառս ետ Աստուծոյ:

Ապա գնացեալ Վրթանէս եպիսկոպոսն առ առաջնորդսն եւ առ վարդապետսն Ջուղայոյ՝ եւ ծանոյց նոցա զաւարն իւր. եւ նոքա զարմացան ընդ արարեալ գործն նորա, եւ լցան երկնային խնդութեամբ. եւ գնացեալ հանին զԱջն, եւ զխաչալամն եւ զաւարն, եւ բերին յեկեղեցին. եւ վաղվաղակի առաքեցին աւետաւորս ի սուրբ Աթոռն Էջմիածնին՝ առ կաթողիկոսն Սարգիս եւ Յովհաննէս, որոյ կամօք եւ խորհրդակցութեամբն գնացեալ էր Վրթանէս եպիսկոպոս յայս գործ: Իբրեւ լուան նոքա եւս առաւել ցնծացեալ զուարճացան եւ լցան երկնային խնդութեամբ, եւ վաղվաղակի եկեղեցականօք եւ աշխարհականօք եւ ամենայն երեւելի արամբք աշխարհին Արարատու՝ յուղի անկեալ գնացին ընդ առաջ սրբոյ Աջոյն. եւ գտին զԱջն ի Նախչուան քաղաքի. զի մինչ ի գալ կաթողիկոսացն՝ Ջուղայեցիք եւ Վրթանէս եպիսկոպոսն զԱջն բերեալ էին ի Նախչուան քաղաք: Եւ անդ ի Նախչուան քաղաքին պատուեալ փառաւորեցին զսուրբ Աջն

լուցմամբ պայծառ մոմեղինաց՝ և բուրմամբ անուշահոտ խնկոց, և զենմամբ խոյոց և զուարակաց. և կատարեցին անդէն ուխտս, և համբուրեցին մեծատենչ փափագանօք զսուրբ Աջն. և ապա աշխարհախումբ բազմութեամբ առին զսուրբ Աջն և բերին ի սուրբ աթոռն Էջմիածնին, և հանգուցին ի սեպհական և ի բնական աթոռն իւր։ Իսկ կաթողիկոսունքն և ամենայն արք աշխարհին եկեղեցականք և աշխարհականք՝ բազում և անթուելի պարգևս բաշխեցին Վրթանէս եպիսկոպոսին. այլ և որքան նուէր և աջահամբոյր՝ զոր նուիրեցին սրբոյ Աջոյն, զայն ևս զբովանդակն շնորհեցին Վրթանէս եպիսկոպոսին. այլ և կարգեցին կաթողիկոսունքն և ամենայն ժողովն՝ զի Վրթանէս եպիսկոպոս լիցի աթոռակալ կաթողիկոսացն, որ ոք և իցէ կաթուղիկոս ի մէջ սուրբ Աթոռոյն՝ որքան և իցէ Վրթանէս եպիսկոպոսն կենդանի. որ և արար աթոռակալութիւն մինչ ի ժամանակս ծերութեան իւրոյ. և ապա վասն անկարութեան մարմնոյն՝ գնաց ի վանքն Օծոպու մերձ իւրոց ազգականացն, վասն պաշտպանելոյ իւրոյ ծերութեանն, և անդէն վախճանեցաւ և թաղեցաւ ի թուին ՋԽԲ (1493), որպէս և գրեալ է ի վերայ տապանին իւրոյ։

Իսկ կաթուղիկոսունքն Էջմիածնի իբրև զհայրենատուր կտակ՝ աւանդութիւն ունէին ի մէջ իւրեանց, զի յամենայն ամի ի տարւոջն մի անգամ գնային ի վանքն Օծոպու, մատուցանէին պատարագ, և պաշտման դրամ բաժանէին վանականացն և կերակրէին զաղքատս, վասն հոգւոյ Վրթանէս եպիսկոպոսին. և մինչ ի ժամանակս Դաւիթ կաթուղիկոսին և Մելքիսեթ կաթուղիկոսին[1] կայր այս աւանդութիւն՝ որ գային կաթողիկոսունքն և կատարէին։

1. Սկիզբն ԺԷ դարու։

## 82

## ԱՌՈՒՄՆ ՍՍՈՅ Ի ՇԱՀ-ՍՈՒԱՐԱՅ[1]

### (ՑԻՇԱՏԱԿԱԳԻՐ)

*Ի մեծի թուին Հայոց ՋԺԶ (1467), ի բազմանալ մեղաց մարդկան և յաղդմանէ չարին, Տուղղարցի ոմն Շահսուար անուն՝ եղեալ հակառակ Մսրայ սուլտանին, և շատ աւերակ էած անոր աշխարհին, և շատ Թուրքման զոր Աղաճերի[2] կոչէին՝ զամենն քշեաց, և բազում չարութիւն գործեաց, և էառ զՎահկայն[3]։ Եւ յետ այսր ամենայնի խորհեցաւ չարութիւն Սսոյ քաղաքին և բերդին. ուստի բազում հեծելազօրօք խաղաց ի վերայ նորա ի յունիսի երկրորդ օրին, և հրկէզ արարեալ անցեալ գնաց, և էառ զԱտանա և զՏարսոն և զծովահայեաց քաղաքն Այաս[4]. էառ նա և զԱնար-*

1. Մեր Կիլիկեցւոց չքնաղ մայրաքաղաքին վերջին յիշատակներէն, այլ և դժբաղդներէն մէկն է, իրենց թագաւորութեան վերջանալէն հարիւր տարի մի յետոյ հանդիպած։ Յիշեալ քաղաք առնողն կամ քաղաքաւերն՝ Թերեւս սերունդ է Ապիւլ-Սուարայ, որոյ որդին Փառլուն՝ 340 տարիներով առաջ՝ Սըսոյ անդրանիկ Անիին նոյն գրկանքը հասուց. բայց Տուլղարցի անուանն զՁիւլգատրեանս երեւցընէ։ Տես Յօդ. 281։
2. Վրանաբնակ կամ թափառական ցեղ մի բազմացեղ Թուրքմանաց։
3. Թէ այս թէ վարը յիշուած բերդերն և քաղաքներն՝ այս ԺԵ դարուս մէջ դեռ բաւական շէն և հայաբնակ երեւին։
4. Պանծալի անմոռանալի նաւահանգիստ շահաստան քաղաքն, վաճառականութեան համաշխարհական հրապարակ և աղբիւր հարստութեան Ռուբինեանց՝ Այաս։

զարս, զկովառս[1] և զամենայն դաշտսն. էառ և զԳաղրասու բերդն[2], զԱնթապ[3], զՆայիպեկց[4] և զԼեռնե բերդն[5] և զկոպիտառս[6], և յետոյ զԲարձ-րաբերդ, և տիրեաց ամենայն լեռնակողմանցն:

Ելան յետոյ սուլտանայ հեծելազօրքն. և գնաց Շահսուարն ընդդէմ Շամցուն[7] և կոտորեաց. և արար փախստական մինչ ի Հալապ. և աւարեաց զբազում տեղիս. և դարձաւ մրմռալով ի վերայ բերդին Սըսոյ, և այրեաց. և չաք[8] պարոն կայր ի բերդն՝ պատերազմ՝ արարին քրիստոնեայքն ի բերդէն, շատ տաճիկ սպանին. բայց աւելի տագ-նապելով սուաք զբերդն ի դեկտեմբերի երեք:

Եւ ի Թուին ՋԺԷ (1468) գնաց Շահսուարն դարձեալ ի Շամցուն երկիրն, և առեալ հազար տուն տաճիկ Շամցի՝ ելից ի Սիս քաղաքն: Դար-ձեալ եկն Շամցուն մեծն, և Շահսուարն գնաց ընդդէմ նոցա. և Սըսու Թուրքերն և Շամցիքն եղան մէկ ի մայիս ամսոյ չորեքտասան և արարին պատերազմ. և խլեցին զբերդի պարոնին զձիան և զլօրեստան. և պարոնն բռնեց զքրիստոնեայս և եա ի հորն[9]: Եւ քաղաքացիքս ամէն Թողաք զտուն և ըռզակ. և Վարսախ՝[10] Թուրքմանն Թալնեց զքա-ղաքն, և շատ ըռզակ առաւ. և զեկեղեցեաց անօթս

1. Տես Սիսուան, 210. 392. 538:
2. Տես Սիսուան, 425. 348:
3. Անծանօթ տեղ մի Թուի և ոչ Ասորւոց երկրի Այնթապ քաղաքն:
4. Այս այլ անծանօթ է ինձ. Թուի բերդ մի:
5. Տես Սիսուան, 534:
6. Սիսուան, 169. 258. 368:
7. Դամասկոսի կողմերու տիրողն:
8. Այսպէս գրած է հրատարակողն Յիշատակարա-նիս. միթէ 2 700 նշանակէ:
9. Գետնի տակ փորուած խոր բանտ ի Սիս. յիշե-ցընէ Արտաշատայ Խոր Վիրապը:
10. Ինչուան հիմայ այս Վարշախ անուամբ՝ ծանօթ է այդ կողմերում՝ ցեղ մի:

կողոպտեցին. և զամենայն աւերութիւն զոր արարին՝ չեմ բաւական ընդ գրով արկանել։ Եւ մեք եկաք ի Կոպիտառայ բերդն։

---

## ՑՁԱ

### ԳԱՂԹԱԿԱՆՔ ԱՆԻՈՑ Ի ԿԱՖԱՑ ՂՐԻՄՈՒ

(ՑԻՇԱՏԱԿԱԳԻՐ)

### Ա.

Կղզիս այս Ղրիմ յորում բնակիմք՝ էր ի յառաջին ժամանակսն բնակութիւն Յունաց. որ (ուր) յետ Համբարձման Քրիստոսի Փրկչին մերոյ եկն մինն ի յԵօթանասնից՝ քարոզեաց զնոսա որ և դարձոյց ի հաւատս քրիստոնէական, որք էին պարապորդք այգեաց և նաւավարութեանց. և բնակութիւն նոցա լինիւր ի ծովեզերս, ի քարանձաւս, դղեակս, որք կան այնպէս նա և մինչև ցայսօր։ Եւ յետ ժամանակաց ՆՂԱ (491=1042) ամին, ել ի պարսկական գնդէն Ղբչախ կոչեցեալ ազգ մի այլալեզու, մահմէտական կրօնիւք. զայ տիրէ զբոլոր Ղռիմն. իսկ յետ սակաւուց ժամանակաց Լատինք[1] եկեալ ցանկան տեղոյն Կաֆայու՝ որ և ասի Ֆէոտոսիայ, և սիրով ուխտ եդեալ խնդրեն ի Ղբչախէն, և տայ նոցա հրաման և շինեն զՖռանկհիսար ի ծովահայեաց տեղն՝ ի ստորոտ լերին, ուստի բղխին ակունք քաղցրահամ ջրոցն զանազան աղբերց։ Այսքան վասն ներկարնակ Ղռիմայ կղզւոյս բաւեսցուք. և դարձցուք առ այն.. թէ ուր կամ յորում գաւառի էր սեպուհ բնակութիւն մեր։

1. Այս Լատինքս էին Ճենովացիք։

Զի մեք եմք սերունդք Պահլաւունեաց, ի մեծ թագաւորանիստ քաղաքէն յԱնւոյ, որ ի գաւառին Շիրակվանից տանն Շարայեան, գահոյն Բագրատունեաց. զի մեծ թագաւորանիստ քաղաքն մեր Անի՝ իշխանաց և ազնուականաց էր բնակութիւն. և զի ոչ կարեմք ներ սահմանի արկանելով պատմել զանսահման և զանհուն հարստութենէ իշխանացն ազնուականացն մինչեւ ցգաւհիկս. և բաց ի զանազան ոսկէզօծ պալատից իւրաքանչիւրոցս՝ ունէաք նա և ի նմա հազար և մէկ եկեղեցիս. բայց վերջապէս (ի) հոգի և մարմին մեր ոչ արդարութիւն գտանեցաւ ի մեզ և ոչ զղջումն՝ առ ի զերծուցանել զգրաւեալ հոգի և զմարմին մեր. բարկացաւ Տէր ի վերայ մեր: Եւ յետ սակաւուց ժամանակաց Զարմաղան խանն Թաթարի առաքեալ դեսպանս ի քաղաքն յԱնի՝ զի բնակիչք նոցին հնազանդիցէին[1] ինքեան. զի գլխաւորքն ոչ ինչ պատասխանի ետուն նոցա, իսկ ամբոխ քաղաքին և ռամիկքն սպանին զդեսպանսն. և զայն տեսեալ զօրքն այլազգեաց՝ ի բարկութիւն դրդեցան, և զքաղաքն շուրջ պաշարեալ անթիւ զօրօք՝ առին, և սուր ածեալ առ հասարակ անողորմաբար կոտորեցին, զաւկաւ կանայս և մանկունս թողեալ: Կողոպտեցին զինչս և զստացուածս, աւերեցին զբոլոր եկեղեցիսն, քանդեցին զքաղաքն, եղծին և ապականեցին զփառս վայելչութեան նորա: Անդ էր տեսանել տեսիլ ողորմագին, որ ծնողք և ծընունդք ի միասին կոտորեցեալք և դիզացեալք ի վերայ միմեանց իբրեւ զդերբուկս քարանց կուտակեալք. քահանայք և պաշտօնեայք ցիրեւցան անկեալ ընդ երեսս դաշտացն. արբեալ երկիր յարենէ և ի ճարպոյ վիրաւորացն:.. Ապա բազումք թողլով զոսկէզօծ պալատս և զծաղկաւէտ դաշտս, զվանորայս և զեկեղեցիս աւեր, չուեալ եկին որպէս փախստական ի յԱխսարայ, որ է ի մէջ Հաշտար-

1. Լատին լեզուի ձեւով ծանակէ զհայերէնն:

խանոյ[1] և Ղազանոյ. ոմանք գնացին ի Ճուղայ, ոմանք ի Վան և այլք ի Սիս։

Եւ որք յԱխսարայ՝ եկին հրաման առեալ ի Թաթար խանէն բնակեցան անդ ոչ բազում ժամանակս. որ էր այս ՉԽԸ (748=1299) թուին. վասն զի մինչ նեղեալ եղեն ի Թաթարացն՝ դեսպան յղեն ի Ղրիմ առ իշխանն Ջենիւիզաց՝ որ բնակէր ի մէջ Փռանկհիսարին Փէոդոսիոյ. ուխտ դնեն ընդ իշխանին Փէոդոսիոյ. ելեալ ի յԱխսարայէ իշխանք և ազնիւք և հասարակ ժողովուրդք, վառեալք զինու՝ պատերազմելով ընդ Թաթարացն, ճեղքեալ զան ի Ղրիմ և բնակին ի Փէոդոսիա, ի Կազարաթ[2] և ի Սուրխաթ[3] և ի կողմանս սոցա. այս եղեւ ՉՀԹ (779=1330) թուին։ Յայնժամ զօրացաք մեք և բազմացաք, և շինեցաք զգիւղս և զգաւառս՝ իշխանք և ազնուականք, ի Ղարապազարէն[4] սկսեալ մինչեւ ի Սուրխաթ և ի Փէոդոսիա, ի լերինս և ի դաշտս լի արարին վանորէիւք և եկեղեցեօք մինչեւ ի Սուրխաթ։ Եւ շինեցաք տուն հարիւր հազար և զեկեղեցիս հազար[5]. և ի յահէ Հոնականաց[6] պարսպեցին ի քաղաքն Փէոդոսիա։

Իսկ ՊԽԱ (841=1392) թուին գայ մեծ խանն Թաթարի, պատերազմեալ հալածէ զՂբչախ Թար-

1. Սովորաբար Աժտէրխան կոչուի մօտ ի բերան Վոլկա կամ Էթիլ գետոյ՝ ի Կասբից ծով։
2. Երբեմն հայաբնակ վաճառաշահ քաղաք ծովեզերեայ ոչ շատ հեռի ի Կաֆայէ, հիմայ ամայի։
3. Այս այլ մօտ ի Կաֆայ մեծ և հին քաղաք, աւելի հնագոյնի քով՝ որ կոչուէր Հին Ղրիմ. շատ հարուստ Հայք կային այս տեղ, որոց եկեղեցիք և շէնք աւեր ամայի մնան։
4. Թաթարաց մեծ քաղաքներէն մէկն, Ղրիմու միջակողմն, բազմաբնակ Հայազգեօք, հիմայ նուազած է, բնակչաց գաղթելով ի ծովեզերեայ շահաստանս։
5. Տուն չափազանց։
6. Ղբչախ Թաթարներն։

սից, և տիրէ բոլոր Ղրիմ(ու, ի) ձեռաց նորա. բայց ոչ զօրեղոյն առնուլ զՖէոդոսիա՝ ակամայ բարեկամացեալ երթեւեկութիւնս առնէին ընդ իշխանին Ջինիւիզաց. զի յոյժ սիրով էին ուխտիւք և պայմանօք, մինչեւ ՋԺԷ (917=1468) թուին։ Այս խանն էառ զդուստր Տիրիճ իշխանին[1] ի կնութիւն որդւոյ իւրոյ. և յետ խնամենալոյն հրաւիրեաց Տիրին իշխանն զփեսայն իւր ի յինքն. բայց կանուարաքն միախորհուրդ լեալք՝ այնքան խառնակութիւն արարին առ խանն՝ ասելով, թէ Տիրինն զորդի քո կոչեաց ի խորհուրդ հալածելով զքեզ՝ նստուցանել յաթոռ քո. և առ Տիրինն՝ թէ, եկեալ է փեսայն քո առ քեզ՝ զի զքեզ հալածեալ կորուսցէ. և այլ բազում բանիւք. մինչ զի պարոն Տիրինն հաւատացեալ ըմբռնեաց զփեսայն իւր, ետ ի պահեստ լաւին իշխանին։ Ընդ որ ոխացեալ խանն՝ դեսպան առաքէ առ սուլթանն Թուրքաց գալ ի յօգնութիւն, ենթ պայմանիս այսորիկ[2], ասելով, թէ Քաղաքն ձեզ լիցի և որդին իմ ինձ։ Իսկ Թուրքն 300 նաւօք ընդ ծով և ինքն ցամաքիւ պաշարեցին զՖէոդոսիա։ Յայնժամ ընդդիմացան իշխանքս և ազնուականքն մեր և ոչ ետուն զբերդն։ Ապա Թուրքն ուխտ եդեալ ընդ Հայոց չմեղանչել՝ եթէ հնազանդեսցին՝ այլ ազատութիւն տալ։ Տեսեալ իշխանաց մերոց և ազնուականաց զԹուլութիւն զօրացն նոցին, մանաւանդ թէ իշխանն փախուստ էառ, անճար մնացեալ ի սովու, առին զերդումն, և զքաղաքն[3] ետուն Թուրքաց։ Այս եղեւ ՋԻԴ (924=1475) թուին։

1. Այդ Ղրչաղ Թաթարք չորս ցեղ կամ խումբ բաժնուին եղեր, որոց ազնուագոյնն Տիրիճ կոչուի։

2. Այս պայմանաւ կամ զաշամբ՝ որ։

3. Հայոց թաղն և բերդն Ջենովացւոց Ֆռանկհիսար բերդէն կցած՝ իբր անոր շարունակութիւն էր. յատուկ պարիսպով ամրացած և ընդարձակութեամբն իբրեւ զատ քաղաք մի։

Իսկ Թուրքքն զկնի սուղ ինչ ժամանակից ստե-
ցին երդմանց և պայմանին իւրեանց. հանապազ
հարկադրէին իշխանաց մերոց և ազնուականաց՝
դառնալ ի կրօնս մահմէտական, զի դիւրաւ նուա-
ճել (կարասցեն) զմնացեալ գռեհիկս: Բազումս կե-
տիկ Ահմետ ղաբետան փաշայն[1] բռնադատէր և
բազմիցս ի ճաշ և ի ընթրիս հրաւիրեալ զպատա-
խանս խնդրէր. դառնալ ի հաւատոց. և իշխանքն
մեր պատասխանեն, թէ, Եթէ բռնութեամբ և կամ
սրով կոտորես զմեզ, մեք յօժար եմք փոխել զկեն-
ցաղս զայս ընդ յաւիտենականի՝ քան թէ զքրիս-
տոնէական կրօնն ընդ մահմէտականի. զի մեք չեմք
վաճառող կամ փոխող հաւատ ընդ հաւատոյ, այլ
սէր ընդ բարեկամի և բարեկամ ընդ սիրոյ[2]: Եւ
յետ բազում հարցմանց և պատասխանատուու-
թեանց՝ կրկին կեղծեալ բարեկամացաւ. բազմիցս
իբրև զսէր ցուցանէր իշխանաց և ազնուականաց
մերոց և ասէր. Այսուհետև ոչ է պատեհ ձեզ
զսուր ընդ մէջ կապեալ առ իս գալ ի ճաշ կամ ըն-
թրիս, այլ առանց սրոյ. և այլ բազում բանիւ:
Յաւուր միում հաւատացեալ իշխանաց մերոց բա-
նից փաշային, և միանաւանդ անճար մնացեալ,
ըստ հրամանի նորին գնացին առանց սրոյ ի ճաշ
առ փաշայն, զի էր բնակութիւն նորա իսկէլէ ղա-
բուսին[3], ի վերայ չորրորդ դստիկոնի պալատին:
Յետ ճաշելոյ նոցին ի յիջանելն ձիգ ձիգ աստիճանսն
պալատին՝ դահիճքն ըստ հրամանի փաշային մի մի
կոտորեալ արկին ի ծով: Այսպէս իշխանազունք
մեր և ազնիւք կատարեցան ի Քրիստոս: Ապա

1. Օսմանեանց պատմութեան մէջ քաջութեամբ
շատ անուանի է այս ծովապետս:

2. Քաջի, բարեպաշտի և իմաստնոյ արժանավայել
խօսք:

3. Քաղաքն զառ ի վայր դիրք մի ունենալով՝ այս
նաւակայից կոչուած դուռն՝ ամենէն վարի կողմն և
ծովու մօտն էր:

հրամայեաց Թուրքաց և Թաթարաց կոտորել զամենայն ազգս Հայոց. որք ի նմին աւուր բազմամբոխ քաղաքն Ֆէոդոսիա սակաւաբնակ արարին. զի զծերս և զտղայս, զարս և զկանայս սրոյ ճարակ եդին, և զարիւնս նոցա յերկիր հեղեալ՝ իբրեւ զվտակս գետոց ընթանայր ի փողոցսն. անթիւ աղջիկք և մանկունք և մատաղ տղայք գերեալ առաքեցին ի Պօլիս առ սուլթանն: Զսոյնս արարին ի կազարաթ և ի Սուրխաթ: Այսպէս բազումք յիշխանաց և յազնուականաց և հասարակ ժողովրդոց մեր՝ յոմանս առ Աստուած կատարեցան և յոմանս գերի վարեցան վասն հաւատոյն և վասն անուան Յիսուսի Քրիստոսի:

Բայց անօրէն խանն Ղռիմայն և գժնաբարոյն և ծարաւին անմեղ արեանց և պատճառն կոտորման ազգիս մերոյ, ինքն եւս մնաց ամօթալի. որ (զի) ոչ միայն ոչ ետ զարբետան փաշայն զորդին խանին՝ ըստ պայմանին, այլ տարաւ ի Պօլիս առ սուլթանն. և նա հնազանդեցուցանելով ինքեան զմանուկն Օսման, ամրափակ նզովիւք՝ առաքէ ի Ղռիմ, զհայրն սպանեալ նստուցանել յաթոռ խանութեան. յորմէ մինչեւ ցայսօր խանն Թաթարի՝ նստի ըստ հրամանի սուլթանին Թուրքաց. և մնացեալ ազգս Հայոց մինչեւ ցայսօր բնակիմք ի ձեռս Թաթար խանի՝ հարկատուողական պայմանիւ:

Բայց նախ քան զայսոսիկ ի ժամանակս պարըսպաշինութեան Ֆէոդոսիայ՝ կայր Տէր Մաղաքիա անուն աւագերէց մի, որ ընդ պապու եղբօր Թոռոյն իւրոյ Պետրոսի՝ շինեցին գրերդն ի չափ 500 կարտի[1]. որոց զանուանս մինչեւ ցայսօր գրեալ կայ ի վերայ Սէլ–ղարուշայն, յետ կոյս Ս. Լուսաւորչայ եկեղեցւոյն: Իսկ յետ կատարման պարըսպաշինութեան՝ Տէր Մաղաքիայի ընդ պապու եղ-

1. Զգիտեմ որքան է այս չափս. թերեւս ձեռնվացւոց կամ Իտալացւոց լեզուաւ չորրորդ (quarto) մաս նշանակէ՝ կանգնոյ կամ ձողի,

քոր Թառոյն Գեորգայի՝ ելեալ ի Ղրիմոյ գնացին ի յԱղթամար առ Յոհաննէս վարդապետն, որ էր պապու եղբօրորդի Տէր Մաղաքիային և եղբայր Գեորգայ հօրն՝ Անանիային, որք էին որդիք Իվանեայ, ի տոհմէն Պալհաւունեանց, ի գաւառէն Որոտնեայ, ի քաղաքէն Վանանդու[1]:

## Բ.

### Տաղ ի վերայ Կաֆայ քաղաքին[2].

Աստուած թող չէն պահէ զԿաֆայ.
Բոլոր պարիսպն որ ի նմա կայ,
Գերահռչակ անուն նորա.
Աստուած թող չէն պահէ զԿաֆայ:
Դըռներն ամուր որ ինչ ի նմա,
Եկեղեցիքն գերակայ,
Զանկակներուն ձայներն կու գայ[3]. Ած, և այլն:
Եպիսկոպոս մեծ և արքայ,
Ընտրեալ մաքուր սուրբ քահանայ
Թագ պարծանաց յերկրի վերայ. Ած:
Ժամատեղաց նըման չըկայ.
Իւր քահանայքն փիլիսոփայ,
Լուսամաքուր շատ սուրբ աբեղայ. Ած:

1. Երեւի թէ յՕրբէլեանց ցեղէն էին և ոչ ի Պահլաւունեաց, բայց եկէ իրարու խնամութեամբ:

2. Յետ նախագրեալ տեղեկութեանց Կաֆայ քաղաքի՝ յարմար համարեցանք անոր գովեստն այլ կարգել՝ ըստ երգողաց. առաջնոյն հեղինակն է Մարտիրոս, ժէ դարու ընիկ Կաֆացի, որպէս և յետագայ երգողն Ստեփանոս՝ գոհութեամբ նկարագրելովն յայտնեն որ այն ատեն Կաֆա դեռ չէն և ծաղկած էր:

3. Աւելի քան 20 եկեղեցիք կային ի Կաֆա, որոց զանգակքն այլ ի հարկէ լուռ չէին կենար. մանաւանդ Ճենովացւոց տէրութեան ատեն:

Խոճանին (շատ) դեկան կու տայ՝[1]
Ծառայ գնեն ու ազատեն զնա.
Կարգեն ըզնա առնեն տղայ[2]. Ած։
Հայոց տուն է այժըմ Կաֆայ.
Ձայնն յընթանուր երկիր կ'երթայ։
Ղըրիմն ի հեռ իւր մերձակայ. Ած։
Ծոխայ ամեն մարդ և խընտայ,
Մանուկ և մեծ և երեխայ,
Ցերեկոնուն լոյս ցայթել կու տայ. Ած։
Նաւն ի ծովէն շատ բարեօք գայ,
Շուրջ վանքերօքն ուրախանայ.
Որդիք մարդկան ի յուխտ կ'երթայ. Ած։
Զար Թըշնամին Թող վերանայ,
Պատիւ Հայոցըս մեծանայ.
Ջաղջերն քամով շուրջ կու գայ[3]. Ած։
Ռամիկ մարդիկ իշխանք որ կայ
Սարկաւագներ և քահանայ՝
Վարդապետին հնազանդ կենայ. Ած։
Տիկին կանայք պարկեշտ նոքա
Րամեալ մարդկան պարծանք նոքա,
Ցընծայ ամեն ու ուրախանայ. Ած։
Հիւանդ[4] հոգւով ես քեզ ծառայ.
Փառք Աստուծոյ յերակ սաս՝
Քե՛զ Մարտիրոս՝ Աստուած գըթայ.
Աստուած Թող չէն պահէ զԿաֆայ։

1. Դահեկան. ստակ, տուրք ողորմութեան, նշան հարստութեան և բարեպաշտութեան տուողացն։
2. Կամ զանոնք իրենց որդեգրեն կամ կարգելով (ամուսնացընելով) տղու տէր կ'ընեն։
3. Թէ և յարմար տեղ չէ յիշած զայս, բայց յիրաւի աչքի հաճոյ կամ զարմանալի տեսիլ մի ընծայեն բաց օդու տակ՝ հովէ դարձուշարժ հողմաղացքն քան ջրաղացք (ջաղջերն), որոց շատութիւնն ի Կաֆայ յաջորդ գրողի (Ստեփաննոսի) գրիչն այլ աչքն այլ դարձուցեր է իրենց։
4. Այբուբենի կարգով և Թուով են տողերս. որով այս տողն այլ պիտի գրուէր **Խիւանդ**։

## Գ.

### Այլ տաղ ի Կաֆայ.

Կաֆայ քաղաք նըման դրախտի
Ի Երուսաղէմ սուրբ քաղաքի,
Մեծ Հըռոմայ և Ըստամպօլի,
Շամայ, Համթայ և[1] Եգիպտոսի.
Ամուր պարիսպ չուրջանակի,
Բերդ մ'այլ ի մէջըն Ֆըռանկի[2].
Նաւըն բերէ հազար բարի.
Զըկունք ելնէ ազգի ազգի։
Վանքեր բազում և եկեղեցի.
Հովըն չըջէ ըզջողջընի[3].
Տաճարք նըման Սողոմոնի
Նա և հանգոյն Սուրբ Սիոնի։
Բարձրակառոյց սուրբ խորանք,
Ծովահայեաց սուրբ տաճարի,
Զոր տէրն Աստուած ամենայնի
Թողցէ զյանցանս այս շինողի։
Զգովք ասացի Կաֆայ քաղքի
Առ ոտըն Սուրբ Լուսաւորչի[4]
Բազմաչարչար նահատակի,
Գլուխ և պարծանք Հայոց ազգի։
Էջմիածնայ առաջնորդի
Տէր Մելքիսեթ կաթուղիկոսի,
Կարմիր Գլխոյն թագաւորի
Որ Շահապաս նոր անուանի.

1. Դամասկոս և Ամիդ կամ Տիարպէքիր։ Ամեն մեծ և անուանի քաղաքաց հաւասարցընէ. նշան բարգաւաճանաց Կաֆայի։

2. Այն է Ֆռանկհիսարն յիշեալ նախընթաց տեղեկութեան մէջ։

3. Տես զվերջին (3) ծանօթութիւն նախընթաց հատուածին։

4. Գլխաւոր եկեղեցեաց մէկն։

Ի ժամանակս Յովանիսի
Տէր Անթափցի կաթողիկոսի,
Ազարիին աչակերտի[1]
Եւ Տէր Վարպետ վերաձայնի.
Ըստամպօլու պատրիարքի
Քաջ րաբունոյն Տէր Գրիգորի[2],
Պահող հսկող և առաքինի
Ճարտարախօս ի յատենի.
Թագաւորին Տաճկաց ազգի
Սուլթան Ահմատ թագաւորի,
Որ յիստամպօլ բազմել լինի,
Եւ զորքն յուրմէն ոչ երկընչի:
Տաղիս երգող Ստեփանոսի[3],
Եղբօր իմոյ Տէր Յակոբի,
Հօրըս Սարգիս, մօրս Ճանփաշի.
Հայր մեր որ յերկինս, ուրբ եղիցի:

---

## ՑՁԲ

## ՍՏԵՓԱՆՆՈՍ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՏԱԹԵՒՈՒ[4]

Որ էր եղբօրորդի մեծ վարդապետին Շմաւոնի, յազատ տանէ և ի մեծ ազգէ. որ և յետ հօրեղբօրն իւրոյ կալաւ զաթոռ մեծափառ ուխտին Տա-

1. Վարպետ և աշկերտ՝ երկուքն այլ Սսոյ կաթողիկոսք:
2. Շղթայակիր մականուանեալն:
3. Ազգաբանութեամբն յայտնէ որ ծանօթ Թոխաթցի բանաստեղծն է:
4. Հաղուադիւտ յիշատակ մ'է Յայսմաւուրաց, ի մարտի վեց նշանակեալ: Որչափ այլ այս կարեւոր գրոց սրբազան յիշատակներն չուզեցինք անցընել ի շարս գրոցս, մի քանի միայն քաղաքական պատմութեան նկատմամբ՝ ընդունեցանք. որոց մին է այս, որ և այլեւայլ հանգամանօք արժանի է նկատման:

թեւոյ։ Ի սորա աւուրսն աբեղայ մի շարժեալ ի սատանայէ չար ցանկութեամբ ի սէր աղջկան միոյ. և եղբարցն բազում անգամ խրատեալ զնա, և նա ոչ լուաւ նոցա. այլ գործակցութեամբ սատանայի այլ մեծագոյն չարի դիպեցաւ, զի առեալ զաղջիկն և գնացեալ ի գեօղ մի այլազգեաց, և մտեալ ի տուն դատաւորին՝ տաճկացաւ։ Իսկ ազատորդին Տէր Ստեփանոս՝ քանզի ունէր բազում ծառայս այլազգիս՝ հեծեալ նոքօք ի ձի և գնացեալ ի գեօղն յայն, քարշեաց զաբեղայն և զաղջիկն՝ բռնութեամբ. և բերեալ զաբեղայն կացոյց ի տեղի իւր, և զաղջիկն եմոյծ ի կուսանոցն և յանձնեաց ի հաւատաւոր կանայսն. և այնպէս արժանացոյց զերկոսեանն ապաշխարութեան։

Իսկ յետ այնորիկ ի ժամանակս Եաղուպ փաշահին՝[1] անցելոց ամաց՝ ի Թաւրէզ, տեղի գտեալ անօրինացն և կամեցան վրէժխնդիր լինել, և մատնեալ չարախօսեցին զնա առ իշխան այնմ կողմանն, որ է աթաբէկ և հայրագլուխ որդւոց փաշահին, որոյ անուն էր Սօֆի խալիլ։ Զոր յղեալ կոչեաց զեպիսկոպոսն սիրով ի պատիւ՝ նենգութեամբ. և ելեալ գնաց միամտութեամբ. տարաւ ընդ իւր և զքուերորդին իւր որ էր եպիսկոպոս և քեռորդին իւր՝[2] որ էր աբեղայ։ Իսկ իբրև եմուտ նոքօք առ իշխանն՝ կանգնեցաւ իշխանն ի վերայ ոտից իւրոց և եկն ընդ առաջ եպիսկոպոսին, և կալաւ զձեռանէ նորա և տարաւ զի նստուցէ ի տեղին իւր. իսկ նա յետս կացեալ ասէ. Վասն Աստուծոյ, մի՛ ամաչեցուցաներ զիս, զի չեմ արժանի նստել ի բազմոցի քում. իսկ նա ասէ. Վասն այնորիկ նստուցանեմ զքեզ ի բարձի իմում՝ զի գիտասցես զկատարեալ սէրն իմ զոր ունիմ առ

1. Թոռն է անուանի Ճիհանշահի, ոչ պակաս քան զնա զօրաւոր և մեծագործ։

2. Առաջինն՝ եպիսկոպոսն՝ Ստեփանոսի քրոջ որդի է, երկրորդն՝ աբեղայն՝ իր մօրեղբօր (քեռւոյ) որդի։

քեզ։ Եւ եպիսկոպոսն ոչ լուաւ նմա, այլ նստաւ յաջմէ նորա՝ որպէս և սովոր էր յառաջմէ։ Ասէ իշխանն. Վասն սիրոյ քո երդուեալ է իմ զի զքեզ ինձ երկրորդ արարից և զամենայն հուքմ իշխանութեան իմոյ տաց ի ձեռս քո, և կացուցից զքեզ վերակացու տան իմոյ և ընտանեաց, և տիրեսցես գանձուց իմոց և ստացուածոց, և քսան և երկու որդիք իմ և ես հեծելովք իմովք հնազանդ լինիմք քեզ, և քո այսն այս լինի ի վերայ մեր. և տաց զդուստր իմ քեզ կնութեան և լինիս ինձ փեսայ, գերագոյն ամենայն իշխանաց ի դրան փադիշահին։ Զայս ամենայն և առաւել քան զայս արարից քեզ. միայն թէ լուիցես ինձ և գայցես յօրէնս մեր։ Ասէ եպիսկոպոսն Ստեփանոս. Այդ որպիսի՞ ինչ է. միթէ՞ բան ինչ լուեալ է քո ի բերանոյ իմմէ վասն այդմիկ, կամ ի համբաւոյ ուրուք լուեալ է քո։ Ասէ իշխանն. Ոչ, այլ ես ինքն հրամայեմ քեզ կատարել զայդ զոր խօսեցայ։ Ասէ եպիսկոպոսն, Քաւ լիցի. մի ասասցես ընդ իս զայդ։ Ասէ իշխանն. Իմ երկոտասան կինն յիսնէ թողած լինի՝ թէ այդ բանիդ այլ ճար չկայ. կամ պիտի քեզ իմ բանիս հաւանել և կամ չարաչար տանջանօք մեռանել։

Եւ ապա բերել առաջի նորա ազնիւ հանդերձս ոսկէնկարս, ընդ նմին և անօթս տանջանաց. և ասէ ցնա. Զոր և կամիս ընտրեա։ Ասէ եպիսկոպոսն. Ես պատրաստ եմ ի մեռանել վասն անուանն Քրիստոսի։ Եւ հրամայեաց արկանել ի բանտ ընկերօքն. և թողին անսուաղ զաւուրս ութ։ Եւ ապա բերեալ առաջի իւր հարցանէր. և նա անվեհեր տայր պատասխանի և դաւանէր զՔրիստոս Աստուած։ Եւ դարձեալ էարկ ի բանտ և եթող անսուաղ այլ եւս աւուրս երկոտասան. և սուրբքն տանէին ուրախ մտօք նեղութեանն, և ի փառաբանութենէն Աստուծոյ ոչ դադարէին։ Եւ դարձեալ կրկին բերեալ առաջի իւր հարցանէր. և եգիտ զնոսա հաստատուն ի հաւատս Քրիստոսի։ Եւ ապա

հրամայեաց եռացուցանել լի ջրով կաթսայ, և ի միւս կողմն հուր բորբոքել ուժգին. և եա կապել զնորընծայ եպիսկոպոսն զքուերորդի Տէր Ստեփանոսին՝ պարսկորէն, զերկու ոտսն ի մի և զերկու ձեռսն ի մի, և անցուցանել զկապ ոտիցն ի պարանոցն. և այնպէս որպէս զկծիկ արարին յեռանդոս ջուրցն ի մէջ պղնձին: Եւ զաբեղայն որ էր քեռորդի Տէր Ստեփաննոսին՝ նոյնպէս կապեցին, և անցուցին երկայն ձող մի յոտսն և ի ձեռսն՝ ընդ ողն[1]. և կալեալ զնա երկու արանց ընդդէմ կրակին: Եւ այնպէս առաջի Տէր Ստեփաննոսին զեպիսկոպոսն խարշեցին և զաբեղայն խորովեցին, որ մատուցան սուրբ ողջակէզ և զոհ ընդունելի և խունկ անոյշ Տեառն Աստուծոյ, իբրև զպատարագն Աբելի, զՆոյի և զԱբրահամու, յոր հոտոտեցաւ Տէր Աստուած ի հոտ անուշից. և նոքա այնպէս կատարեցան ի Քրիստոս: Իսկ զՏէր Ստեփաննոսն դարձեալ արկին ի բանտ, և տային նմա հաց և ջուր հօգեշահ,[2] յետ երկուց և երից աւուրց. և զմարմինս սրբոց վկայիցն՝ առեալ ազգականացն բազում կաշառատուութեամբ և տարեալ թաղեցին ի մեծափառ վանս իւրեանց՝ Տաթեւ:

Եւ վասն արքեպիսկոպոսին ցրուեցին բազում գանձս ի դուռն փաշահին աւելի քան զ'2000 դահեկան կարմիր, և ո՛չ կարաց փաշահն ազատել զնա ի ձեռաց նորա. զի ասէր՝ թէ երդուեալ եմ, և ոչ կարեմ հալալն հարամ անել[3] և զկանայան իմ թողուլ, որք են մարք որդւոց իմոց, վասն աբեղայի միոյ: Եւ յետ տարւոյ միոյ հանեալ զեպիսկոպոսն ի բանտէն՝ տարեալ առաջի իւր, հարցա-

1. Ոտքերն և ձեռներն կապելով մէկ տեղ՝ կծկեն կապը և կռնակէն կ'անցընեն ձողի մը վրայ:
2. Սովորաբար հոգեպահիկ կամ ոգեպահիկ կ'ըսուի, այնչափ ուտելիք որ կարենայ ապրիլ, չմեռնիլ:
3. Իբր թէ խղճար երդմանը դէմ ընել, որով իր 12 կանայքն իրմէ պիտի զրկուէին և զատուէին:

նէր ողոքանօք և սպառնալեօք. և նա զօրութեամբ Հոգւոյն Սրբոյ՝ զոր ունէր յինքեան, համարձակ խոստովանէր զՔրիստոս Աստուած։ Ընդ որ բարկացեալ իշխանն ետ բերել ատամնահանս և քարշել զ՚32 ատամունս նորա. և հարին շուրջանակի ի գլուխ նորա կռանով որպէս զպսակ[1], և տարեալ արկին ի բանտ. և եկաց այնչափ ի բանտին մինչեւ ողջացաւ ատամնահատ և վէրք գլխոյ նորա։ Եւ դարձեալ կոչեալ առաջի իւր հարցանէր. և նա զնոյն դաւանութիւն հաւատոյ դարձեալ երկրորդէր առաջի նորա. և նա ետ բերել բեւեռաքարշս[2] և քարշել զմիս ոսկերաց նորա ի 60 տեղաց. և այնպէս վիրաւորեալ մարմնով տարեալ արկին ի բանտ. և կացեալ այնչափ մինչեւ ողջացաւ ամենայն վէրք ոսկերացն։ Եւ դարձեալ ածին զնա յատենի, և հարցանէին. և նա նոյն պնդագոյն դաւանէր զՔրիստոս Աստուած, և ասէր ցիշխանն. զի, Որպէս սալն դարբնաց ոչ հոգայ ի կռանաւորաց՝ այսպէս և ես անհոգս եմ չարչարանաց. արա զինչ և կամիս։ Եւ սրտմտեալ անիծեալն ետ հուր բորբոքել. և կապեալ ըստ նմանութեան արեղայրին՝ կալեալ ի վերայ կրակին՝ խորովեցին զամենայն ոսկերս նորա. և նա դեռ եւս կայր կենդանի զօրութեամբն Քրիստոսի. և այնպէս խորովեալ անդամօք տարեալ արկին ի բանտ, և կացեալ այնչափ ի բանտին մինչ որ ողջացաւ ամենայն հրայրեաց վէրք մարմնոյն. բայց այնքան այլագունեցաւ մարմին նորա յազգի ազգի չարչարանացն, մինչ զի ոչ բաւէր ակն մարդոյ հայել ի մարմին նորա։ Եւ այնպէս հինգ ամ բոլոր ի չարչարանս և ի բանտ կացեալ կապանօք, սովով և ծարաւով՝ տեւեաց այնքան տանջանացն։ Եւ ապա բերեալ իշխանն առաջի իւր և ասէ ողո-

1. Երեւի թէ բերնէն հանած ակռաները՝ գլխուն վրայ պսակաձեւ շարելով ղարկին։

2. Մխած գամած գամերը հանելու գործիք, աքցան. Թրք. քէլփէթին։

քանօք. Զանձրացաք և նեղացաք ի տանջելոյ զքեզ և ի տեսանելոյ զաղիողորմ խորովումն մարմնոյ քո, և դու ընդէ՞ր ոչ ողորմիս անձին քում. մին բան խօսեաց առաջի մեր, և զերծեալ ի մէնջ գնա ի տուն քո և պաշտեա զհաւատս քո։ Ասէ սուրբն. Անհնար է այժմ լինել մինչ շունչս իմ առ իս է։ Եւ նա հիացեալ զարմացաւ և ասէ. Միթէ վիմա՞ց է զօրութիւն սորա։ Եւ կոչեալ զմոլայն իւր և ասէ. Ե՛կ դանիշման. և ի գրոց պատմեա մեզ նորագոյն տանջանս զոր արարեալ են առաջին թագաւորքն. և մոլայն հրամայեաց զերծուլ զգլուխ նորա և օծանել մեղրով. և բերեալ զնատակլուրն[1] որ է սեաւ բզէզն, և եդին յեօթն տեղի ի վերայ գլխոյ նորա. և պորեալ զընկոյզն՝ կործեցին զկորճն[2] ի վերայ նորա, և պատեալ ծրարեցին. և նոքա փորեցին յիւրաքանչիւր դիմաց. և ծակեալ մտին ի գագաթն նորա. և յայնմանէ խիստ նուաղեցաւ սուրբն, զի քան զամենայն տանջանսն խիստ և դժնդակ էր. մինչ զի քաղեցաւ հոգի նորա և ոչ մնաց ի նմա շունչ կենդանութեան. և այսպէս անկաւ յիրկիր իբրև զմեռեալ, մինչև բազմաց ասել թէ մեռաւ։ Իսկ յետ պահու միոյ ուշաբերեալ դարձաւ ի հոգի։

Եւ ընթացեալ քոյր սրբոյն մեծաւ հառաչանօք և պաղատանօք անկաւ յոտս մօր փաշային՝ ասելով. Թէ անպարտ իցէ եղբայրն իմ ընդէ՞ր չարչարի զանազան տանջանօք իբրև զպարտական. և եթէ ինչ վնասակար է կամ պարտական, աղաչեմ զքեզ վասն կենաց և յաջողութեան փաշային՝ հրամայեա փութով սպանանել զնա, զի ազատի յանհնարին

1. Աղբը կլորելով գլորելով տանելուն համար ռամկօրէն այսպէս կոչուած է, որպէս և թուրքարէն, այդ տգեղ միջատն, բզէզն։

2. Ընկոյզը երկու ճղքելով և կեղեւաց (կորճ) մէջը պարպելով՝ կ՚անցընեն գլխուն վրայ չարած եօթն բզէզներուն վրայ, որք կծելով ճանկելով գլխուն կաշին մինչև յուղեղն, սաստիկ ցաւ և մարմրուք բերեն։

տանջանացն։ Եւ յուղարկեալ բակումն[1] զվերակացու տանն իւրոյ առ Սօֆի խալիլն՝ լի բարկութեամբ և ասէ. Քանի՞ անէծս շահիս մեզ և զաւակաց մերոց և թեթևութիւն հաւատոց մերոց. արձակեա զայրդ անմեղ. զի զի՞նչ շահ է մեզ ի հեղմանէ արեան դորա։ Եւ նա ասէ, ոչ կարեմ թողուլ վասն երդմանն իմոյ. այլ դու առաքեա բռնութեամբ, և հան զնա բռնութեամբ ի ձեռաց իմոց, զի անպարտ լինամ ես յերդմանէն։ Եւ այնպէս արարեալ ազատեաց զնա ի ձեռաց նորա, և յուղարկեաց ի վանս իւր։ Իսկ նա յայժ տրտմեցաւ և մեղադրեաց քուերն իւրոյ վասն խափան առնելոյն նմա զասպարէզ նահատակութեանն իւրոյ։ Եւ ապա յետ տարւոյ միոյ գնաց փափագանօք յԵրուսաղէմ, և երկրպագեաց տնօրինական տեղեացն Քրիստոսի, և դարձեալ եկն ի սեպհական աթոռն իւր ի Տաթեւ, և բարեձևութեամբ և ճգնաւոր առաքինութեամբ վճարեալ զմնացեալ ժամանակս կենաց իւրոց, փոխեցաւ յերկիրն կենդանեաց ի վերինն Երուսաղէմ՝ ի կարգս նահատակացն և ի համարս հայրապետացն։

Գործեցաւ այս ի ԹՃԼԲ (932=1483) թուականիս մերում. ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ։

1. Թուր Բէկում, որպէս անուանի բէկի (պէյ) խաթունն։

# ՅՁԳ.

## ԱՐՏԱՒԻԼԱՑ ԵՒ ԿՈՏԵՐՈՑ ՍՕՖԻՔՆ

(ՑԻՇԱՏԱԿԱՐԱՆ)

### Ա.

Ի ՋԼԷ (1488) *Թուականին եղեւ արշաւիրք ի բազում տեղիս, և կոտորեցաւ ազգն Տաճկաց, զի յաշխարհն Ջաղաթային բազում պատերազմունք և արեան հեղումն եղեւ. և Մորայ սուլտանն և Հոռոմոց խոնտքարն*[1] *զմիմեանս ջարդեցին և կոտորեցին. և մեծ Սօֆի Արտաւէլ*[2] *քաղաքին ժողովեաց թղթով իւրով զամենայն սօֆիսն իւր յամենայն երկրէ. զի էր սահմանք և սովորութիւն նոցա՝ որ յամենայն ամի փութային ի կոչն նորա յամենայն աշխարհէ կարմրագտակ սօֆիքն, և զինուորէին նմա իւրեանց թոշակօքն, և փոխանակ առնելոյ ի նմանէ՝ ինքեանք տային նմա բազում ոսկի և արծաթ, և յամենայն պատերազմունս ընդ որ երթայր՝ յօժարութեամբ կռուէին և մեռանէին առաջի նորա: Որ և հիացեալ եմ և հիանամ ընդ այնպիսի կորստական անմիտ միամտութիւն. զի զմոլորեցուցիչ արուամոլն զայն՝ մեծ մարգարէ կարդային թիւրեալք ի ճշմարտութենէն, և աքանչելեօք համբաւէին զանուն նորա, եթէ ցամաք ոտիւք անցանէ ի վերայ գետոց, թաղսեայ կացնաւ*[3]

*1. Օսմանեանց թագաւորն:*

*2. Ատրպատականի Պարսից քաղաք. Սօֆին կրօնական և միանգամայն քաղաքական իշխան էր:*

*3. Թաղիքէ (Թ. քէչէ) կամ լաթէ դանակ կամ կացին ձեւացընելով՝ կարծեցընէր կտրել կոտրել քար ու երկաթ:*

խուրով կտրէ զքար և զերկաթ և զամենայն ինչ. և այլ բազում սուտ համբաւօք բարձրացուցանէին զկործանեալն ի չարիս։

Որ և ժողովեաց յայսմ ամի արս իբրեւ ԽՌ (40,000), և գնացեալ խաբէութեամբ եմուտ ի Շամախի[1], և զամենեսեան որ ի ձեռն էած ի քրիստոնէից և ի տաճկաց՝ զարս և զկանայս՝ սրով կոտորեաց, և զքաղաքն ամենայն հրով այրեաց կումաշօքն[2] և որ ինչ էր ի նմա. և զմանր տղայքն եւս ժողովել առ ինքն, և դիզեալ ի վերայ միմեանց հինգ և վեց. և ինքն հարեալ ի վերուստ նիզակաւ անցուցանէր մինչեւ ի ներքին տղայն. և վերացուցեալ նիզակաւն կանգնէր. և տղայքն աղիողորմ թալկանային ոտիւք և ձեռօք ի ծայրս նիզակացն, և նա ծափս հարկանէր ուրախութեամբ և ասէր, Այս է ճշմարիտ ղազայն[3]։ Եւ զանասունսն զամենայն զձի և զջորի զուղտ և զոչխար՝ սրով կոտորեաց, և այնպէս ոչ խնայեաց ի մարդ և յանասուն։

Զոր գոյժ արկեալ տէրն Շամախու ի Թաւրէզ առ փատիշահ փեսայն իւր Աղաւալ[4], և ծանոյց նմա. և նա յուղարկեաց զիշխանն մեծ Սուլէյմանն՝ բազում զօրօք, որ գնացեալ ջանիւ մեծաւ մարտեան և յաղթեալ կոտորեցին առ հասարակ զամենեսեան, և յինքեանց եւս շատք մեռան[5]։

1. Անուանի քաղաք Աղուանից։

2. Թէ լաթեղէն թէ ուրիշ նիւթէ՝ տուներու մէջ դրուած ինչերն։

3. Պատուհաս. թերեւս աշխարհիս վերջի վտանգը կ՚ուզէր ըսել։

4. Աղուպ. Եաղուպ, Եագուբ, պէսպէս գրեն մերայինք, և շատ յիշուի ի ձեռագիրս. երբեմն բէկ երբեմն խան եւս կոչուի. որդի էր Ուզուն Հասանի Պարսից և Հայոց կողմանց տիրողին. երկուքն այլ անուանիք զօրութեամբ։

5. Զարմանք է որ չի յիշեր այդ Արտաւիլի բռնաւորին մահն այլ. թերեւս զի հասարակ մահուանէ աւելի բան մի վայլէր այդպիսի հրէշի։

## Բ.

Դարձեալ ի սոյն ամի եղեւ աստուածասաստ բարկութիւն ի Սոփիսն կոտերոյ երկրին. է մօտ ի վանքն Այպրանից գեօղ մի Սոփենոց[1] Այդարուք[2] անուն, և բազում ներղութիւնս անցուցանէին ընդ աբեղայսն, և կորէին հանապազ զջուրս վանացն, և ոչ տային թոյլ հանգչել նոցա: Եւ յաւուրս բուն բարեկենդանին մի ոմն ի նոցանէ հարսանիս առնէր որդւոյ իւրոյ, և ամենեքեան ժողովեցան անդ և աբարին նմանութեամբ կատակ բազում: Եւ ապա բերեալ կողով մի եդին ի միջի իբր զուարթ սեղան, և աղուէս մի ի վերայ որպէս զաւետարան. և բերեալ սեաւ ջըլով[3] չներ և կացուցին շուրջանակի. և եդին անուանս նոցա զվարդապետացն և զեպիսկոպոսացն զորս ճանաչէին: Իսկ երկու ալեւորք խրատ ետուն նոցա և ասեն. Մի առնէք զայդպիսի կատակդ. այդ մեծ գուճակ (մեղք) է ձեզ, որ զպիղծ շներդ ի սրբակաց ծառայքն Աստուծոյ կու նմանեցուցանէք: Եւ նոքա եւս առաւել մոլեալ ի չարէն՝ և բերեալ զոմն կերպարանեցին սուտ մեռեալ՝ զի յետոյ յարուցանիցեն. և ոչ յարեաւ, այլ զառհաւատչեայն ընկալաւ զյաւիտենից մահուն:

Եւ ապա բերեալ գինի՝ բրդեալ հաց՝ տային շանցն յօրինակ հաղորդի. և նոյնժամայն եղեւ աստուածասաստ բարկութիւն ի վերայ նոցա, զի եղեւ դղրդումն և ճայթումն ահագին, և յահեղ որոտմանէն ամենեքեան սատակեցան որ ի տանն էին, բաց յերկուց ծերոցն:

Եւ եկեալ իշխանն Դերջնոյ՝ ետես զահագին գործն և զարհուրեցաւ. և սուր քարշեալ կամէր

1. Սոփիներու՝ կրօնական կարգացողաց բնակարան:
2. Երեք յիշեալ տեղիքն եւս ի Փոքր և Մեծ Հայոց սահմաններում, Եզընկայի և Դերջանայ մօտերն:
3. Անարգ անպիտան լաթեղէն:

զմնացեալսն ինքն կոտորել, զոր ոչ ետուն մոնղայքն թոյլ. վասն որոյ հանեալ զմնացեալսն ի գեղջէն՝ և փոխանակ նոցա կացոյց քրիստոնեայս, և արար հայանոց, ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ։ Եւ այսպիսի սքանչելեօքս հաստատեցան հաւատացեալքն առաւելապէս ի հաւատս ճշմարիտ, և անօրէնքն երկմտեցին հաւատոց իւրեանց։

---

## ՅՁԴ

### ՆՈՒԻՐԱԿՔ

### ԷՋՄԻԱԾՆԻ ՆԱՀԱՏԱԿԵԱԼՔ ՅԱՄԱՍԻԱ

Ինըն հարիւր Հայոց թվական
Յիսուն և հինգ թիւ աւելեան,
Յէջմիածնէն նուիրակք եկան,
Բոլոր աշխարհս Հոռոմոց տան.
Յոլով մեռոն կայր ընդ ինքեան
Մեծ նամակով և օրհնութեամբ.
Եկեալ հասին Բիւզանդիան,
Որ է Ստամպօլ՝ սրբոց կայան։
Ով որ տեսաւ զնոսա՝ լըման
Իբր զհրեշտակ ընդունեցան.
Մեծ Յօհաննէս՝ սրբոց նըման,
Եպիսկոպոս ազնուական։
Վանք և անապատք ուրախացան,
Յորժամ տեսին զերեսեան,
ԶՏէր Սարգիս եպիսկոպոսն,
Եւ ըզԴաւիթ կոյս աբեղայն։
Անուանք նոցա համբաւեցան,
Սուրբ օրհնութիւնք որ կարդացւան,
Եկեղեցիք բերկրեալք ցնծան,
Եւ ժողովուրդս որ օրհնեցան։

Անտի տուեալ ի զօրական,
Վիզն ի զէնճիլ ձեռն ի կիլապչան[1],
ԶԴաւիթ բերին ի մեծ տիվոն,
Տարին ձգեցին ղափճոցն օտան[2]։
Լուք[3] ղափուչիքն ամենեքեան
Ի ձի հեծեալ՝ վոնքըն հասան.
Երբ Նուիրակքն զնոսա տեսան,
Զահի հարեալ զերդ զուռ դողան[4],
Եկեալ տարան զնոսա լըման,
Ի մեծ վէզիրն Ալի փաշան.
Յայնժամ տեսեալ ըզերրորդեան[5],
Ասէ. Բերէք վաղն ի տիվան։
Բերին զինքեանք վաղն ի տիվան,
Հաւասար[6] Նըստան երեք փաշան,
Հարցաքննեն զամենեսեան,
Սուչ[7] մի գտնուն նոցա վերան։
Անտի ելեալ խոնտքար[8] մըտան.
Նա էր ասցեալ դիժար հրաման.
Ասաց, Զգեցէք ղափճոցն օտան
Մէկ քանի օր տան ըսկէնճան։
Նոքա ելեալ ամենեքեան
Ի խոնտքարէն առեալ հրաման,
Լուք կացուցին այլ մի տիվան
Ըմբռնեցին տարեալ տարան։
Սուրբ Յոհաննու պէս բանտ տարան,
Զինչ Քրիստոսի օրն ըմբռնման.
Ի չարչարանքըն զանազան,

1. Վըզին շղթայ անցընելով և ձեռացն կապանք։
2. Պահակատուն, դռնապանից տեղին։
3. Եւ ահա, կամ յանկարծ։
4. Ծառոց ճիւղի կամ տերեւի պէս երերան դողան վախնալով։
5. Զերեքեան, երեքն այլ։
6. Միաբան, միատեղ։
7. Յանցանք։
8. Թագաւորին կամ թագաւորութեան ատեանն։

Աւել աւուրք հնգետասան։
Օրն էր շաբաթ սուրբ կատարման
Նահատակացն երրորդեան,
Գլխատեցին զամենեսեան,
Լոյս կիրակի օր յարութեան։
Յոհաննու պէս գլխատեցան,
Կամ Յակոբու առաքելեան[1].
Որ և մարմինքըն ի սպանման,
Զաւուրս երեք անթաղ մընան։
Սըրբոց մարմինքն որ հոն կեցան,
Ոչ յերեսներն թարշամեցան.
Լոյսն էր իջեալ տաղանըման.
Զայն լոյս տեսեալ շատ մըսլըման։
Յետոյ գնացեալ եմիր խոճան[2],
Մօտ մեծ վէզիրն Ալի փաշան,
Իբր Յովսէփ Արեմաթեան՝
Խնդրել զմարմինն տէրունական։
Նա էր տուեալ աղէկ հրաման.
Գնա՛ թաղէ՛ զամենեսեան.
Զամէն ատեքն[3] արէք լըման
Զինչ ձեր օրէնքըն տայ հրաման։
Իսկ վարդապետք ժողովեցան,
Եպիսկոպոսք հաւաքեցան,
Եւ կրօնաւորք շատ միաբան,
Սրբոց թաղումն գումարեցան,
Երիցանիք խիստ զանազան,
Մեծ ու կրտսեր աշխարհական,
Հոն հասին ամենեքեան,
Եւ սուրբ թաղմանն արժանացան։
Բամիւ կանգնեն կարգ կատարման,
Եւ կատարեն զամեն լըման.

1. Յակոբոս Առաքեալ եղբայրն Յովհաննու Աւետարանչի։
2. Յայտ է թէ պատուաւոր քրիստոնեայ մ'էր։
3. Ըստ սովորութեան և օրինաց քրիստոնէից՝ թաղել։

Պատնեն զմարմինքըն միաբան,
Եւ սահմանեն ի մի տապան։
 Կանայք բազում ժողովեցան
Լալականից ողբերգական.
Շատ լացին զամենեսեան
Մինչ սար ու ձոր ի լաց ելան։
 Երեք մանկանց սրբոց նըման,
Երեքըն մի տապան եդան.
Արժանացան սուրբ հանգըստեան։
Դուք այլ կացէք ուրախութեամբ։
 Բամիւ զամէնքըդ միաբան,
Ձձեզ աղաչեմ զամենեսեան
Ես Յովհաննէս[1] անարժան
Եմ քահանայ գործովս ունայն.
 Նըւիրկերուն որ կատարման,
Սակաւ բաներս որ գրեցան.
Ով որ ասէ ըզհայր մեղայն՝
Յիշեալ լիցի յարքայութեան։
 Այս գործեցաւ ի մեծ թվական,
Ինըն հարիւր թիւն էր լըման
Յիսուն եւ հինգ թիւ յաւելեան,
Հոկտեմբերի եսթն և տասեան։

---

## ՅՁԵ

### ԴԻՄԱՄԱՐՑ ՏԻՐԱՊԵՏԱՑ ՄՈԿԱՑ ԵՒ ՈՍՏԱՆԱՑ

(ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ)

Գրեցաւ և կատարեցաւ աստուածախօս և տիե-զերաքարոզ Ս. Աւետարանս յերկրիս արքունական

1. Որ Յոհաննէս քահանայ է դա. անագլուխ տաղքն կապեն ի Յովանիսից հայացեալ է բանս այս յնի եր-կերնս. հայացեալի տեղ վայլէր ասացեալ. վերջի բառերն իմաստ չեն ընծայեր, եթէ սխալ չեն։

որ Մոկս կոչի, յաստուածապահ դեղս յԱռինչ, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին և Ս. Ստեփանոսի յառաջսարկաւագի և Նախավկայի: Քանզի մեծաւ ահիւ և դողութեամբ գրեցի զԱւետարանս. քանզի թշնամիք են միմեանց տէրն Մոկաց և տէրն Ջերմաձորոյ[1] և Ըստանին. և մերձ և սահմանակից էին միմեանց Առինչ և Ջերմաձոր. և յորժամ երեկոյ լինէր՝ ի մտանել արեգական՝ փախչէինք ի ծերպս վիմաց և ծառատունկս և ի թուփս անկանէինք, և ի յահէ ոչ (ոք) կայր ի քուն, ի հարամի ճնդոյէ[2] և ի հեծելէ. և բազում աւուրս ի գրել Աւետարանիս՝ զայս ահիւ և աշխատութեամբ տանէի: Այլ բարերարն և մարդասէրն Աստուած ոչ արար ըստ բազում մեղաց իմոց, այլ խաղաղութեամբ հասայ ի վերջս Աւետարանիս, և Քրիստոս Աստուած ի նոյն խաղաղութեամբ պահեսցէ. ամէն: Քանզի յառաջներորդ անգամ Եգտին անուն[3] հետն բերեալ էր ի յերկիրս՝ Մոկս, և բազում գերի էառ և աւար արարեալ էր, և այրեցեալ էր վանքս և անապատս, գիւղս և գաւառս. և բազում քրիստոնեայք սրախողող արարեալ էր երկրորդ Յուլիանոս, և զպատուհասն Յուլիանոսի առցէ. ամէն: Գրեցաւ Ս. Աւետարանս ի հայրապետութեան Տեառն Ներսէսի[4] և յառաջնորդութեան Տեառն Զաքարիայի, ի թուականիս ՋՀԳ (1524):

1. Մոկք և Ջերմաձոր, երկուքն այլ գաւառք են հին Մոկաց աշխարհին, Վանայ երկրին հարաւ-արեւմտեան կողմն:
2. Ճինտ, թուրքարէն հեծեւակ զօրք նշանակէ:
3. Մոկաց տիրողն:
4. Աղթամարայ կաթողիկոս:

## 822

## ՊԱՏԵՐԱԶՄՆ ՍՈՒԼԹԱՆ ՍՈՒԼԷՅՄԱՆԻ ԵՒ ՇԱՀ ԹԱՀՄԱԶԱՅ

(ՑԻՇԱՏԱԿԱԳԻՐ)

Ի ՋՁԳ (1534) *թուականիս... եկն տէրն Ստամբօլայ՝ հոնքարն*[1], *որ ասի յանուանէ Սուլթան Սիւլէյման, բազում զօրօք ի վերայ Կարմիր գլխուն*[2], *և եկն որ նստաւ ի վերայ երկրիս մերոյ. զի այնքան անհուն էր զօրք նորին՝ մինչ թուէր մեզ որպէս զաւազ ծովու և կամ զշիթս անձրևւաց. իբրև հայէաք յաստեղս երկնից և ի վրանս նոցա՝ միապէս երևէր. վասն զի ուրեանքն ոչ գիտէին թէ որքան էին, և մեք ոչ կարացաք գիտել. և հիացման արժանի է վասն խառնիճաղանճ զօրացն։ Եւ Կարմիր գլուխն փախեաւ ի նմանէ. և նա հետամուտ եղեալ մինչ ի Սուլթանիա, և այլ ոչ կամեցաւ գնալ. դարձաւ ի Բաղտատ, և զձմեռն ի լման անդ եկաց վասն միւսանգամ գալոյն ի վերայ Շահ Թահմազին, վասն զի տիրեալ էր բազում քաղաքաց, նախ տանն Հոռոմոց*[3] *և Շամայ և Մըսրայ և Դիարբէկիրն. և բռնացեալ էր ի հիւսիսային կողմանէն մինչ ի բերդն Աւնկայ*[4], *և ի մերոյս՝ մինչ յԱրճէկ, և Վանայ կողմանէն՝ մինչ ի յԱղթամար, և ի հարաւային կողմանէն մինչ ի Բաղ-*

1. *Խիւնքեար կամ Հիւնքեար, ըստ Թուրքաց տէր թագաւոր, համառօտութիւն Խիւտավէնտքեար պարսիկ բառի։*
2. *Գըզըլպաշ, Կարմիր գլուխ, կոչէին Թուրքք Ըզ-Պարսիկս՝ վասն գունոյ գլխարկի նոցին։*
3. *Փոքր Ասիոյ կողմերն։*
4. *Հին և ամուր բերդ Բասենոյ գաւառին մէջ։*

տատ։ Իսկ արեանարբու Մարգարէմ փաշանն անագորոյն և ամբարդի ուլամեն[1] որ նա եղեւ պատճառ աւերման արեւելեան աշխարհիս մեր, քանզի յառաջն Կարմիր գլուխ էր՝ և դարձաւ և զհօնքարն նա եբեր ի վեր, ամրացաւ ի բերդն Վանայ։ Իսկ յորժամ լուաւ Շահն Թահմազ զմտանելն նորա ի դղեակն՝ վաղվաղակի դարձաւ ի վերայ, զի թափեսցէ զթոյնս դառնութեան իւրոյ. զի ի ձմեռնային յեղանակին էին. և երկիրն ամեն թողեալ զտուն և զտեղ և զռճիկս իւրեանց ի տան, և փութանակի առեալ զկանայս և զորդիս իւրեանց՝ և մտան՝ ի բերդն. զի այնքան սաստկացաւ ահն՝ մինչ զի ոչ կարացին հաց բառնալ ընդ ինքեանս. զի ծուլացեալ մեղքն մեր ոչ եթող. իսկ ռճիկք նոցա ամեն յիւր տեղն մնաց կապած։ Իսկ նոցա սուր ի վերայ եդեալ՝ զորն զենին և զորն յուղարկեցին ի տունս իւրեանց. և այն որ ոչ ի զենել երեւի և ոչ ի տանել՝[2] վասն սաստիկ ցրտուն ձմերանն և պարզակին[3], և ոթերն և ձագերն ամենեքին ի կապած տեղն սովալլուկ բառալով և կլուալով մեռանէին։ Իսկ Կարմիր գլուխն խըռարեալ զբերդն և նստաւ ի Ս. Սարգսի պահոցէն մինչ ի Համբարձումն և ի մեծ նեղութիւն արկեալ։ Իսկ ժողովուրդն զայն սակաւ կերակուրն զոր տարեալ էին՝ հատաւ. իսկ շատք ի քրիստոնէիցն կերան զմիս ձիու և զըղտու և զիշու, և այս ոչ բաւեաց. ամենեքեան սովալլուկ լեալ մեռան, որն ի սովայ և որն ի թըշանեկէ և որն ի թօփէն[4], հաւատացեալ և անհաւատ, անձինս ԺԶՌ (16,000) ընդ այր և ընդ կին, ընդ ծեր և ընդ տղայ, ի բերդն և ի բերդէն ի դուրս։

1. Իւլեմա, նշանակէ զօրէնսգէտս կամ կարդացող մահմէտականաց։

2. Այն անասուններն՝ զոր ոչ կըրցան մորթել և ոչ հետերնին տանել։

3. Զոր ցուրտ պարզ օդոց (թրք. այազ) ասեն։

4. Հրացան և հրետ կամ հրանօթ, թնդանօթ։

Իսկ ո՞ կարէ պատմել զանցս կրից Նոցա և զամենայն ընդ գրով արկանել. զի այն ստեղծողին է գիտելի. և ամենայն ոք որ մեռանէր՝ բերդէն ի վայր ձգել տային. և լցաւ երկիր շուրջ զդղեկաւն՝ արեամբ, և ամենեքեան գէշ զազանացն անկեալ դնէին և ոչ ոք էր որ թաղէր զնոսա։ Իսկ մնացեալքն որ իջին ի վայր՝ ոչ ճանաչէին զմեռեալսն, զի խառն ընդ իրար ամենեքեան՝ հաւատացեալ և անհաւատ, մարդ և անասուն՝ նեխեալ էին. զի մի մի մարդ որ ճանաչէր՝ ոչ կարէին տանել ի գերեզմանսն, զի կենդանեացն մեռեալ էին, միայն թէ շունչն էր ի մարմինս Նոցա. երթային և այլոց տային վարձ ամէն մեռելի, 100 դահեկան և երկու, զի ծրարէին զերեսս իւրեանց և ապա երթային, զի շատք ի հոտէն մեռան։ Զի հայրքն և մայրքն որ ի բերդին էին, զեղեցիկ որդիք և սիրուն դըստերքն մեռեալ դնէին առաջի իւրեանց, և ամենեւին ոչ լային և ոչ զմիմեանս հարցանէին. բայց երթային զայլ ոք աղաչէին և ասէին, թէ, Եկ վասն Քրիստոսի սիրոյն և Աստուծոյն համար, մեր մեռեալքն ի վայր ձգէ, քեզ վարձք է. մենք չեմք կարել, հիւանդ եմք. և յահէ անօրինացն չենք կարեր թողուլ ի տեղն. և Նոքա երթային և ձգէին ի վայր. և հայրքն և մայրքն զձեռն ի գետին դնէին ի յերեսս քսէին, և գոչանային զԱստուծոյ, թէ ազատեցաք յանօրինաց։ Ցայս դառն ի չար ժամանակի եղեւ աւարտ սորին գրոցս[1]։

1. Ճառընտիր մի է գիրքն։

# ՑՁԷ

## ՍՏԵՓԱՆՈՍ Ե ԿԱԹՈՂԻԿՈՍ Ի ՀՌՈՎՄ[1]

Անուամբն Աստուծոյ. Ես Տէր Ստեփաննոս կաթողիկոս ամենայն Հայոց և Պատրիարգ Վաղարշապատու քրիստոսահրաշ աստուածաշէն լուսակառոյց և երկնահանգոյն հրեշտակաբնակ և առաքելական մեղսաքաւիչ և բազմաշնորհ սուրբ յԱթոռոյն Էջմիածնի, Նախատես առաջնորդութեամբ եկա ի Մեծն Հռոմ և բնակեցայ աստ վեց ամիսն։ Բայց իմ բանիս հոգացողն Հապաշ Տէր Պետրոսն էր, զփափան տեսնուլ, մեծամեծաց երթալն, և զայլ ամենայն ծառայութիւնս՝ մահու չափ աշխա-

1. Յետ Մեծի Գր. Վկայասէրի մինչեւ ի Ստեփաննոս այս՝ ծանօթ չէ մեր կաթողիկոսաց ի Հռովմ հանդիպիլն. իրմէ իբր երկու դար առաջ իր համանունն Ստեփաննոս Դ շատ տարիներ ի Հռովմ կեցած է և անոր համար Հռովմայեցի կոչուած, բայց յառաջ քան զկաթողիկոսութիւնն (1390–3). կրօնական նկատմամբ այլ այս Հինգերորդն խնդիր ունեցեր է ի Հռովմ. բայց մեր խնդիրն այն չէ այս տեղ, այլ իբրեւ նոր երեւոյթ մի Հայոց կաթողիկոսի հօն գտնուիլն և համարձակօրէն օտարազգի (Եթովպացի, Հապաշ) մի արքեպիսկոպոս ձեռնադրելն, իրեն ըրած ծառայութեանն և առ Պապն և առ մեծ մարդիկ զինքը մտցընելուն համար. երեւի թէ այն ատեն աւելի յաջող ազգային եկեղեցական չկար ի Հռովմ, ուր ԺԳ դարու սկիզբէն ի վեր անպակաս եղած են Հայք, վանատամբ և մատրամբք. Ստեփաննոսի դառնալէն քիչ տարի վերջ՝ Պապք տուած են անոնց՝ յետ այլոց՝ զհին և հոյակապ եկեղեցին Ս. Մարիամ Եգիպտացի։ Գրածէն յայտնուի որ Ստեփաննոս 1550ին եկեր է ի Հռովմ, և յետ յոբելինին ներկայ ըլլալու՝ դարձեր է յաթոռն, և յաջորդ տարին վախճաներ է։

տեցաւ մեզ համար՝ ինքն և իւր միաբանքն[1]. Մենք ալ տեսանք զսորա միամիտ սիրտն և աներկբայ հաւատքն և զմեծ հնազանդութիւնն մեր սուրբ յաթոռոյն և մեզ, և զսորա մեծ սէրն վերայ մեր ազգին, ձեռնադրեցաք զսա մեր հայրապետական իշխանութեամբն և բարձր հրամանաւն Սուրբ Էջմիածնի, զԹըւրֆաւրօն, որ է Պարոն Տէր Պետրոս, արհի եպիսկոպոս, ի վերայ սեպհական վիճակի Մաղհզուա՛ յերկրին հանդերձ իւր գաւառօք, և ի վերայ իւր յաթոռոյն Ցարակոյ: Զոր և մաղթեմ Ամենասուրբ Երրորդութեանն՝ բարեխօսութեամբ Սուրբ Աստուածածնին և ամենայն ընտրելալ դասուցն, զի զսա պահեսցէ Քրիստոս Աստուած ամենայն արկածիցն բանսարկուին, երեւելի և աներեւոյթ թշնամւոյն. ամէն: Եւ օրհնեսցէ զսա Տէր Աստուած այն օրհնութեամբ՝ որպէս օրհնեաց զառաջին սուրբ հայրապետքն, և որպէս օրհնեաց զդասս ճգնաւորացն և զգունդս մարտիրոսացն. Նոյն օրհնութիւն աստուածային սփռեալ ծաւալեսցի ի վերա՛ Պարոն Տէր Պետրոս արհիեպիսկոպոսին և ի վերա՛ իւր յերկրին և վիճակին. ամէն: Այլ և տացէ սմա տուողն շնորհաց զհոգի գիտութեան, զհոգի իմաստութեան, զհոգի երկիւղի աստուածապաշտութեան. որով կարող լինիցի առնել և ուսուցանել ըստ հրամանացն Աստուծոյ՝ զհետեւողսն իւր, և տալ զանձն իւր օրինակ բարի ժողովրդեանն Քրիստոսի. և այսպէս կեալ և մնալ մինչեւ ի կէտ կոչման իւրոյ. ամէն. և ընդ աստի կենացն ելանել զնա ի յերկիրն կենդանեաց, ընդ առաջին սուրբ Հայրապետացն դասակից և պսակակից արասցէ Քրիստոս Աստուած մեր. ամէն:

1. Ինչպէս Հայք այսպէս և ուրիշ արեւելեան ազգք՝ ունէին և ունին ի Հռովմ՝ եկեղեցի, եկեղեցատուն, վանք կամ վարժարան, որպէս այս տեղ յիշեալ Հապաշն և իր միաբանք. անոնց երկրին (Եթովպիոյ) գաւառ և քաղաք են յիշեալքն Մաղհզուա և Ցարակոյ:

Եւ ի գրաւելն օրհնութեանս՝ ծանիք Քրիստոսի արեամբ գնեալ ծառայք Աբեթածին զարմի, մեծամեծք և փոքունք, քահանայք և ժողովուրդք, վասն այս Հայպաշ Պարոն Տէր Պետրոս արհի եպիսկոպոսին, որ մեք զսա երեսփոխան ու վաքիլ արաք՝ Մեծ Հռոմայ եկողին ու գնացողին. զորն որ սա կամենա ընդունէ, և զոր չկամենա՛ ճանապարու դնէ. վասն այս պատճառի՝ զի բազում անբան մարդիկ[1] կու գան և նախատինք կու վատակեն Հայոց ազգիս:

Դարձեալ ծանիք, մեր հոգեւոր որդիքդ, աշխարհ է, եթէ հանդիպի ի միջի ձերում այս Պարոն Տէր Պետրոսն ուր և իցէ, նա զիմ հարկիսն՝ սորա առնէք, զի յոյժ բարի մարդ է, սուրբ, մեծատան որդի, Հայոց ազգիս միշտ բարեկամ. զայն աղէկութիւն որ դա արաւ հետ մեզ՝ բնաւ մարդ մարդու չէ՛ արեր. վասն այդորիկ ինչ որ սորա առնէք՝ համարեցէք թէ հետ մեզ էք արեր կամ հետ սուրբ Էջմիածնի. Աստուած զձեզ օրհնէ. ձեր մարդասիրութեան և հիւրընկալութեան համբաւն լի է ամենայն աշխարհ: Կատարողք աղաչանաց մերոց օրհնիք Աստուծոյ և ամենայն Սրբոցն և ի մէնջ. ամէն:

Գրեցաւ գիրս ի կայսերանիստ և ի մայրաքաղաքն մեծն Հռոմ. ի Թվ. Հայոց Մեծաց ՋՂԸ (998=1550) սեպտեմբերի վեց. Ձեռամբն տառապեալ հողոյս Սիմէոն սարկաւագի Իլովցոյ[2]. և Քրիստոսի փառք:

1. Տգէտ, անխոհեմ, անքաղաքավար:

2. Կաթողիկոսն երկար ճամբորդութիւն ընելով՝ հանդիպեր էր Լեհաստանի Հայոց եւս, գուշակուի որ անտի առեր էր իր հետ այս սարկաւագս՝ իբրեւ լեզուագէտ թարգման: Գրած լեզուն յայտ է որ ռամկօրէն է, ուղղագրութիւնն այլ պակասաւոր, ինչպէս երեւի կարդացողաց. որք թերեւս դիտեն՝ որ առ երկբարբառի վրայ ընկորձ նշան մի դնէ (ʻ), ինչ-

# ՑՁԸ

## ՎԱՍՆ ԾԱՐԺՄԱՆ ԿԱՐՄԻՐ ԳԼԽՈՑՆ

### *Որ եկեալ երեց և աւերեց զՀայոց աշխարհս Արեւելից*

Դաւիթ արքայի որդին Սողոմոն զայս մեզ քա-
րոզէ,
Թէ այն զոր Աստուած սիրէ՝ հանապազ ընդ խը-
րատէ։
Յորժամ հազար ամ լըցաւ թըւական Հայոց տու-
մարին՝
Ազգ մի Ղըզըլ պաշ ասեն չարժեցաւ նըման վի-
շապին.
Հանցեղ չարութիւն արար՝ չէր տեսեալ այլ մարդ-
հողածին.
Կարծեմ թէ սա չար եղաւ քան զնոքա որ յա-
ռաջն եկին.
Զայն որ Դանիէլն ասէր, թէ չորրորդ գազանն
ահեղ է,
Յայտնապէս սորա ասէ որ անունըն Շահ[1] կո-
չեալ է.

պէս տեսանք և Լեւոն Դի պարգեւագրին վրայ։ (Յօդուած 358)։ Բառից վերջի տառը թողլով՝ նախընթաց ձայնաւորին վրայ շեշտ դնէ, ինչպէս, վերա՛, եկեղեցւ՛։

1. ԺԶ դարուն սկզբան հաստատեցաւ նոր տէրութիւն մի Պարսից, որոց թագաւորքն Շահ կոչուեցան և կոչուին մինչեւ հիմայ. ասոնց նահապետն եղաւ Շահ Իսմայէլ, անուանի՝ Օսմանեաց հետ կռուելով. յաջորդն և հեղինակէս աշխարհաւեր կոչուածն՝ էր ոչ պակաս քան զնա անուանի Շահ Թահմազն, որ կէս դարէ աւելի թագաւորեց։

Ներսէս Հայրապետն մեր մարգարէիս բանին վըկայէ,
Թէ Կարմիր գլուխն ելցէ և զՀայոց երկիրն աւերէ։
Քաղցր ու բարերարն Աստուած մեր Հայոց ազգիս բարկացաւ.
Մեր մեղքըն պատճառ եղաւ որ այս Տաճկաց ազգըն զօրացաւ.
Աստուած զիրաւունս արար, դատապատան արդար դատեցաւ.
Մեք ամենեքեան մեղաք, յԱստուծոյ կամացըն հեռացաք.
Բարի առաջնորդ չունինք որ հոգւով զԱստուած աղաչէ,
Արտասուաց պըտուղ բերէ՝ որ Քրիստոս զմեր մեղքըն ջնջէ.
Մեր ազգի առաջնորդներն բովանդակ զԱստուած թողեր են,
Զհոգւոց առաջնորդութիւնն ի Տաճկաց երթեալ կու խնդրեն.
Թէ զկաթողիկոսն ասեմ՝ արծաթով ըզնա մեծարեն,
Թէ զեպիսկոպոսքն ասեմ՝ տամղաձոյ[1] նըման բամբասեն.
Հայոց վարդապետքն ամէն դըրամի համար քարոզեն,
Ով ոք որ դրամ չտայ՝ զայն փութով թղթով կ՚անիծեն։
Մեր ազգի երիցանին հանապազ զիրար կու նենգեն,
Անարժան պատարագօք աշխարհէս աւեր կու բերեն։
Թէ զաշխարհականքն ասեմ՝ որ բնաւ զօրէնս ոչ պահեն,
Ոչ կարգաւորաց լըսեն, ոչ երթեալ տաճարն աղօթեն։

1. Սովորաբար հարկ կամ տուրք ժողովողներն այսպէս անուանին յայլազգեաց. յայտնի է նշանակութիւնն, կնքող, կնիք զարնող։

Ոչ ոք է որ առնէ զբարի կամ սիրէ զկամքն Արարողին.
Ամենքս անպիտան եղանք, անօրէնքն ըզմեզ պատեցին.
Թէ մէկ բարի լինէր որ սրտով զԱստուած աղաչէր՝
Յայնժամ ողորմածն Աստուած՝ այլազգացն ըզմեզ ազատէր[1]...:
Վասն այն՝ չարի դիպեցաք, որ ընտիր մարդ իսկի չկայ:
Ո՛վ իմ բարերար Աստուած, անճարակին ճարակ դու արա.
Թէպէտ անարժան ենք մեք՝ քո անուանդ ըզմեզ խընայէ,
Գին եմք անպարտ արեանդ, այլ... ըզմեզ ազատէ:
Տարին տասուերկու ամիս հանապազ ըզմեզ չարչարեն,
Կեաւոր անհաւատ ասեն, զքո օրէնքն ոչինչ համարեն.
Ով որ զՔրիստոս յիշեն ճշմարիտ Աստուած դաւանեն՝
Ըռզակն ի ձեռնէն առնեն, գլխովին զինքն ըսպանանեն:...
Բայց այս անօրէն արքայն որ անունըն Շահ կոչեալ են՝
Անչափ չարութիւն արար որ նախնիքըն բնաւ ոչ յիշեն:
Անչափ մոլորեալ ազգն են որ ըզՇահն քան զԱստուած պաշտեն.
Իւրեանց սիրելի որդիքըն Շահին Եսիր[2] կու քաշեն.
Անչափ բազում հարկ առնուն, զքրիստոնեայքն ամեն կողոպտեն.

1. Դեռ 24 տող ասոնց նման մեղադրանք գրած է, գուցէ չափազանց խղճալով:
2. Կարծեմ, ընտիր սպասաւոր կ'ընծայեն Շահին:

Զինչ որ կուր աչօք տեսնուն՝ առ ժամայն ի բաց պահանջեն։
Սոքա են ադամորդիք յանիծեալ ազգէն Քանանու.
Այնչափ զօրացեալ եղեն որ արին ըզմեզ հարկատու.
Քան ըզՓարաւոն արքայն որ զօրհնեալ ազգըն չարչարեաց,
Սա մեզ Փարաւոն եղաւ, զՀայաստան երկիրս աւերեաց.
Նման Սենեքերիմայ Արծրունեաց՝ զերկիրն աւերեաց.
Ոչ գեղ ոչ քաղաք եթող, զամենայն հըրով տոչորեաց.
Քան զԹարբիլացոց արքայն որ ըզմեծ տաճարն աւերեաց,
Սա յարեւելեան աշխարհս վանորայքն ամեն աւերեաց.
Վանայ պատուական երկիրն շինութիւն բնաւ չըթողին,
Ոչ գեղ ոչ քաղաք ասին՝ զամենայն հըրով այրեցին.
Արճէշ շատ արիւն արին, վանորայքն ամեն քակտեցին.
Սուսերն ի ձեռներն առին՝ զմիաբանքն ամեն սպանեցին։
Ղըշար[1] և Արծկէ՝ ողբամ որ զայգիքն ամեն կըտրեցին.
Եւ այլ ըզկարճոյ երկրին արտորայքն ամեն այրեցին։
Ողբամ զԹասենոյ երկիրն որ հրձիգ ըզնա արարին.
Եւ Կարնոյ մինչեւ ի Սիս՝ զքրիստոնեայքն ամեն փախուցին։
Քան ըզԼանկթամուր արքայն աւելի աւեր արարին.
Ոչ հայ ոչ տաճիկ ասին՝ զամենայն սըրով մաշեցին։

1. Շատ անգամ յիշուած ծանօթ Խլաթ կամ Ախլաթ կոչուած մեծ քաղաքն։

### Վասն Ցակոր Վարդապետին և ընկերացն.

Կամիմ ես բան մի խօսել, խօսելու ոչ եմ արժանի.
Հոգիս է մեղօք լըցեալ և մըտօքս եմ տարակուսեալ.
Լըցեալ եմ զերեսուն տարին, չեմ կացեալ ի պատուիրանին,
Հոգիս ի ձեռաց Թողի, հողեղէն մարմինս սիրեցի։
Հանց ժամանակայ հասանք՝ այլազգեաց մենք կոխան եղանք,
Պէսպէս փորձանաց դիպաք և տաճկաց սրովըն խոցեցաք.
Զօրէնս Աստուծոյ Թողանք, սատանին կամքըն սիրեցանք.
Այսպէս ժամանակ հասանք և բազում չարի դիպեցանք։
Վա՜յ է մեր Հայոց ազգին, որ բազումք ըզմեզ կոխեցին.
Մեր փառքն ի մեզնէ առին, մեր տանէն հանեալ վարեցին.
Զերկիրն Հայոց ազգին՝ Թաթարի ազգն աւերեցին.
Վանայ մինչեւ յԵրզնկան շինութիւն ըլնալ չըթողին.
Շատ վանք և եկեղեցիք ի հիմանց խախտեալ փըլուցին.
Բազում գիրք ու Աստուածաշունչք՝ զայն ամենն առեալ գերեցին.
Շատ բերդ ու քաղաք առին, շատ երկիր հըրով այրեցին.
Կացինն ի ձեռվին առին՝ բոյս ու տունկ զամեն կտրեցին։
Ողորմ ողբալի բաներ որ եղաւ Արճէշ գաւառին.
Ցակոր քաջ րաբունապետն երեսուն հոգւով սպանեցին[1]

1. Անշուշտ Մեծոփայ վանից առաջնորդն էր։

Ամսեանն ի յօգոստոսին չորեքտասան աւուր կիւրակին,
Փոխման Սուրբ Աստուածածնին՝ անօրէնք զնոսա պատեցին,
Մինչդեռ ի պաշտօն էին ի ժամու ահեղ գիշերին,
Յակոբ Վարդապետըն սուրբ մեկնութիւն առնէր երազին.
Ասաց իւր միաբանիցն, թէ, փութով նշխար կազմեցէք.
Գիշերս ես երազ տեսայ, կու վախեմ. այլ մի ծուլանէք.
Որդիք, անհոգ մի կենայք, միմեանց խոստովանեցէք։
Իմ սիրտս ի փորիս կ'այրի, դուք բնաւ կու անհոգանայք։
Յորժամ ըզպաշտօնն արին, ժամարարքն ըսպաս ղընէին,
Յանկարծ դըղըրդումն եղեւ՝ թէ Եաղի(չի)քն ըզմեզ կոխեցին.
Անողորմ ի ներս մըտին սուսերօք զնոսա սպանեցին.
Մինչդեռ պատարագէին՝ զամենն սըրով մաշեցին.
Մինչդեռ կենդանի էին՝ օրհնութիւն վերառաքէին.
Բազում լալիւ ողբային, առ Քրիստոս ձայնիւ գոչէին։
Յորժամ նահատակեցին և զատճարն հրով այրեցին,
Մարմինք սուրբ երանելեացն տաճարէն այլ ոչ փախեցին։
Յակոբն էր ընտրեալ այգօք և լըցեալ եօթնարփեան շնորհօք,
Մաքուր յաշխարհի կացեալ, զարդարեալ անճառ պսակօք։
Եղո՜ւկ ու վա՜յ մեր անձանցս՝ զոր աչօք մերովք զայս տեսաք,
Ողորմ ողբալի եղաք, հայրենեաց մերոց զըրկեցաք։
Ով որ քաներս առէ՝ զվարդապետըն բերան մի յիշէ.
Քրիստոս իւր մեղքըն ջնջէ, գեհենի հըրոյն ազատէ։

# ՑՁԹ

## ՀՆԱՐՔ ՅՈՒՆԱՑ ԱՌ Ի ԳՈՂԱՆԱԼ ԶՈՍԿԵՐՍ ՎԱՐԴ ՊԱՏՐԿԻ

(ԱՌԱՔԵԼ)

Յամս և ի ժամանակս յետինս՝ ի Թուականիս Հայոց ՌԺԳ (1564). դարձեալ եկին յազգէն Հոռոմոց արք երկու՝ գողանալ զոսկերս Վարդ Պատրկայ[1], որ թաղեալ կայ ի մէջ եկեղեցւոյն ի գիւղն Խորգոմ ի Հայոց-ձոր[2] կոչեցեալ գաւառին՝ ի Վասպուրական աշխարհին։ Արդ. զոսկերսն Վարդ Պատրկայ թաղեալ է ի մէջ եկեղեցւոյն որ նախկին շինեալ է ի վերայ երեսաց երկրի ի վերայ բնական գետնոյ, և ապա հողով ծածկեալ են զայն եկեղեցին և կուտեալ են բազում հող ի վերայ նորա, որ եղեալ է մեծ բլուր. որ կարծի ի տեսողացն՝ թէ ի սկզբանէ յաւիտենից աստուածաստեղծ բլուր է նա ոչ շինովի. և հողն ծածկեալ է զեկեղեցին և առաւել ևս բարձրացեալ. և ապա

1. Հռչակաւոր Թէոդորոսի Ռշտունւոյ որդին. որ ուզելով վրէժ առնուլ ի Յունաց՝ խաբէութեամբ միաբանեցաւ անոնց զօրաց հետ ընդդէմ Արաբացւոց. և պատերազմէն դառնալու ատեն՝ (Գայլ) գետոյն կամուրջը կտրելով՝ զանոնք ի ջուր թափեց. առոր համար ոչ միայն Յոյնք այլ և Հայք նեղացան. և ինքն Վարդ այլ զղջալով, կ'ըսեն, թէ հազար եկեղեցի շիներ է, թերևս փափագեր է շինել, իբրև փոխարէն իր ըրած մատնութեան։

2. Ինչուան հիմայ ծանօթ է այս վիճակս՝ մեր ազգէ նահապետին Հայկայ՝ Բելի հետ ըրած կռուոյն տեղն, ըստ հին աւանդութեանց. գիւղն այլ Հորգոմ կոչուի, թէ ոչ Հօրգոմ, կամ յանուն հօրն Հայկայ՝ Թորգոմ։

յետոյ ի գլուխ բլրին միւսանգամ նոր եկեղեցի են շինեալ ի վերայ գագաթան ներքին եկեղեցւոյն. և յայսմ եկեղեցւոջ կատարեն քահանայքն զժամակարգութիւնն և զեօթն խորհուրդս եկեղեցւոյ. նաեւ գիւղականքն անդ գան և աղօթեն: Եւ գիւղն ոչ է շուրջ բոլոր զեկեղեցեաւն՝ այլ յարեւելից կողմն եկեղեցւոյն ի սիրտ բլրին. և յարեւմտից կուսէ եկեղեցւոյն և բլրին ծովն է՝ զոր Վանայ ծով կոչեն, իբրեւ քան կանգուն հեռի յեկեղեցւոյն: Այլ և գետ ջրոյ ի յարեւելից կողմանէ գեղջն և եկեղեցւոյն գայ. և ի հարաւոյն կողմանէ նոցին անցանէ և խառնի ի ծովն:

Եւ եկեալ երկոքին Հոռոմքն՝ նախ ձեւացուցեալ են զինքեանս իբր գայր առաքինի և հաւատարիմ և հրաժարեալք յաշխարհական իրաց. այնքան՝ մինչեւ որ քահանայք և ժողովուրդք հաւատացեալ են նոցա, և զբանալին եկեղեցւոյն ի նոսա տուեալ և զնոսա լուսարար եկեղեցւոյն և ժամկոչ են կարգեալ: Եւ նոքա թէ յետ յոլովից և թէ յետ սակաւուց ժամանակաց, ի դիպող ժամանակի յարեւմըտից կուսէ յեկեղեցւոյն իբրեւ տասն և հինգ կանգնաւ հեռի յեկեղեցւոյն ծակեալ են զգետինն, փորեալ են ճաղմ[1], և այնպէս նաղմն փորելով յառաջ գնացեալ են զի թերեւս մտցեն ի ներքին եկեղեցին, յորում ոսկերքն Վարդ պատրկայ թաղեալ կան. և զփորեալ հողն նաղմին բերեալ են ի ծովն թափեալ ի գլխոյ փլին. քանզի եզր ծովուն փուլ է՝ զոր ալիք ծովուն արարեալ է: Եւ որովհետեւ գիւղն ի յարեւելից կողմն բլրին էր՝ և յարեւմտից կողմն անբնակ էր, յայսմ պատճառէ անքոյթ էր ի մարդկանէ տեղին. վասն այսորիկ արքն վստահացեալ զայս գործէին: Արդ, ի թափեալ հողոյն և ի հարելոյ ալեաց ծովուն՝ պղտորեալ են ջուրքն, և պղտորութիւն ջուրցն խառնեալ է ընդ ջուրց

1. Թուրք բառ, լաղըմ. հայերէն՝ ական հատանել կ'ըսուի:

գետոյն՝ և գաս ի վեր ընդ գետն գնացեալ. քանզի ջուրք գետոյն ուռկան տուեալ[1] կանգնեալ կան յեզր ծովուն: Իսկ գեղականքն տեսանէին զի ջուրն՝ որ հանապազօր պարզ և յստակ էր, այժմ պղտոր է, ասէին. Անձրեւ ոչ է եկեալ և հեղեղ ոչ է եղեալ, և վասն էր են ջուրքս պղտոր. ասէին ընդ միմեանս և հիանային և խնդրէին զպատճառն: Եւ շրջելով և որոնելով պատահեալ են թափած հողոյն, և ապա գտեալ են զծակն և զնաղմն. ապա կալեալ են զարսն գայնոսիկ, և ի ծածուկ և ի ներսագոյն տան արգելեալ, և այնքան հնարեալ են գեղականքն՝ մինչ արքն այնոքիկ զստոյգն ասացեալ են. Թէ, եկեալ եմք զի զոսկերսն Վարդ պատրկայ հանցուք և տարցուք: Ապա ի գեղականացն, որք խորհրդականքն են լեալ՝ Թոքուն ի խառնիճաղանճ արանց, ի գլխերի միում զերկոսին զարսն զայնոսիկ եդեալ են ի վերայ տիտոյ, և հանեալ ի վերայ ծովուն և յառաջ խաղացուցեալ տարեալ ի մէջ ծովուն. և կապեալ են քար ի պարանոցս նոցա, և այնպէս թողեալ են ի խորս ջուրց ծովուն: Արդ, կատարումն գործոյս այսպէս եղեալ է, զոր ծերք և վաղեմի մարդիկ պատմեցին. իսկ գեղականքն այնուհետեւ առաւել զգուշութեամբ պահեն զեկեղեցին զայն. ի հանապազորդեան ժամանակի, իբր զաւանդութիւն ստացեալ յորդիս ի հարց:

1. Հողերը քշելով դիզեր են:

# ԵԴ

## ՍՈՎ ԵՒ ՍՐԱՄՈՒԹԻՒՆ ՅԱՐԵՒԵԼԵԱՆ ԵՒ ՅԱՐԵՒՄՏԵԱՆ ՀԱՅՍ

(ՅՈՎՀԱՆՆԻՍԻԿ)

### Ա.

Ի սոյն ամի (1580) ընդ երկուց պատժոցս՝ մահուն և սրոյն՝ եղեւ ահագին և անտանելի սով սաստիկ. այնքան՝ մինչ մարդիկ գազանայել անկան ի հմակերութիւն վասն որբ մնալոյն ի մահոյն[1] և վասն անինչք և անյարկ շրջելոյն ի գերչացն: Քանզի ամենայն գաւառք Հայոց՝ որ ընդ իշխանութեամբ Կարմրագլխոյն[2] կայր, քակեալ աւերեցաւ. և թէ ուրեք յանկեան մնացեալ լինէր շինութիւն, զտեղէին տնանկք և մերկք, արք և կանայք, ծերք և երիտասարդք, տղայք և աղջկունք. և առանց օթեւանի արտասուալից դիմօք շրջէին ի դրունս օտարաց և ի յերդս այլոց, առ ի խնդրել զկերակուր անձանց իւրեանց. և ի յոչ բաւելն կերակրոց՝ ուժեղքն ի նոցանէ մտանէին գաղտ ի փարախ խաշանց և ի գոմս արջառոց. և ի յոչ կարելն զենուլ զմեծամեծս յանասնոցն՝ առ ի ոչ ունելոյ սուր ինքեանց, յուժոյ անձանց ըմբռնէին որթս դիեցիկս մատաղս և ուլունս, և պատառէին զկող նոցա, և հանեալ զսիրտ և զփորոտիս նոցա՝ ուտէին հում, և ելեալ գաղտ գնային. և ոչ ոք կարծիս ունելով զայս ի նոցանէ լինել, մինչ(եւ) տեսեալ ոմանց զնոսա յայնպիսի գործ՝ հաւա-

1. Ժանտամահի ըմպած ջարդէն՝ մնացեալ մարդիկ, իբր որբեր էին:
2. Պարսից շահերուն իշխանութեան տակ:

տեալ գիտացին զայս։ Իսկ անզօրքն ի նոցանէ՝ ի կոյտս աղբից անասնոց և ձիոց որոնեալ՝ գտանէին հատս գարւոյ և ուտէին. այլ և ոչ գիտելով սրբոյ և անսրբոյ (անասնոց) ի հերուն հետէ և ի վաղ ժամանակէ ի փողոցի անկեալ ոսկերք, վեր առեալ՝ ի քարի եդեալ՝ քարիւ փշրի ուտէին, և ի բերանս իւրեանց արկանէին և մանչէին. այլ և հնացեալ փոկ կաշէ և մաշեալ տրեխ, և ի բեկտոր ինչ խեցոյ՝ ի յեփոցի եդեալ՝ և առեալ ուտէին։ Վա՜յ տեսողութեանս, եղբարք։ Եւ իբրև եղեւ գարունն, սփռեցան աղքատքն ի յերեսս դաշտաց, սեւացեալ մարմնով որպէս զերամակս այծեաց և իբրև զխոյիրս հօտից, ուտելով զբանջարս վայրիս և զխոտս կանաչ, և ոչ յագենային. քանզի կոչեցեալ էր յերկիր սով և զօրութիւն հացի բեկեալ, ըստ մարգարէին։ Մանաւանդ ուռուցեալ ի գլխոցն՝ մեռանէին, ոմանք ի տեղի տրոտիցն՝ որ ոչ կարէին դառնալ, և ոմանք եկեալ ի գեղամիջի՝ ի տակս որմոց և ի յանկիւնս տանց աւերուածոց՝ մեռանէին։ Եւ թէ լինէր ոք երկիւղած յԱստուծոյ, առեալ ի դիականցն ինն և տասն և այլ աւելի, ի վիհ ինչ կամ ի հոր արկեալ՝ հողն ի վերայ փլուցեալ ծածկէր. և թէ ոչ՝ մնայր անթաղ, և լուր լինէր բազմաց, թէ այս անուն տանուտէր կամ մեծատան որդի մեռեալ, և դի նորա ահաւանիկ յայս նիշ տեղի է. և լուեալ բազումք ի սիրելեաց և ի ծանօթից նորա, եղո՛ւկ և վա՜յ կարդային անձանց իւրեանց. եւս և զթաղել ի վաղն ձգէին և վաղուէն ի միւս վաղն, վասն բազում ձանձրութեանցն։ Եւ դարձեալ լսէին ի յոմանց, թէ դին այն պատառեալ ի գազանաց՝ ցրուեցան ոսկերք նորա. և զայս լուեալ՝ անհոգ լինէին. և այսպէս մնայր անթաղ։ Եղո՛ւկ թշուառականիս և պատմութեանս, եղբարք։ Քանզի բազումք ի պիղծ մսէ զազիր շանց և կատուաց կամաւ յագեալ[1] եղեն, և ի մարմնոց մարդկան եւս։

1. Մորթել։

Քանզի ի սահմանս Ամարասայ[1] յերկիրն Վարանդոյ և Դիզակայ, ի գեղի միում ումեմն մեծատան միամօր որդի մի գոլով ութնամեայ, և կանայք այրիք մերձակայ գեղօրէից ժողովեալ՝ բնակելով մերձ մեծատանն, կերակրելով ըստ պատահմանն ի մեծատանէն, յաւուր միում պատրանօք զտղայն ի տուն իւրեանց կոչելով կանայքն, և սպանեալ, զմի ոտն հանդերձ անդամօքն կերեալ. և յերեկոյին ծնողացն որոնեալ, և ի տան այրեացն գտանելով զկիսակտուր դիակ տղային իւրեանց։ Այլ և լուաք, թէ ծեր ոմն զմարմին դստեր իւրոյ կերեալ է ի նոյն յերկրին։ Եւ յայլ ամենայն տեղիս այսպիսի եղեւ վիշտ սովոյն ի ՌԽԸ և ՌԽԹ թուականիս։ Վա՜յ ինձ պատժապարտիս. զի մահուամբ և սրով կոտորեալ մարդկան, մարմինք նոցա անյագ գազանաց կերակուր եղեն. մինչ զի տնաստուն շունք վայրենացեալ՝ արտաքոյ շինի զկենդանի մարդիկ որսային. և գայլք ի ճանապարհի եւս և ի շինամիջի՝ ի տուն մտեալ՝ զմարդիկ ի ննջման արտաքս քարշէին և ուտէին, և խաշանցն ինչ ոչ մեղանչէին։ Եւ զթիւ մահուամբ սովով և սրով մեռելոցն և գերելոցն՝ բնաւ ոչ կարեմ ի թիւ բերել և ընդ գրով արկանել, բայց թէ իմ զքարտէսս և զմելանս առաջի ձեր արկեմ, ըստ դպրացն Դաւթի[2], որ առ Երուսաղէմիւ։

## Բ[3].

ՌԽԸ, (1599-600) Երաշտացաւ երկիր յեղանելոյն մայիսէն մինչեւ ի ձմեռնամուտն. անձրեւ ոչ տե-

1. Հայ-Աղուանից կամ Արցախ նահանգի գաւառներ են։

2. Դաւիթ՝ ողջերը և կարիճները համրել կու տար, ու՝ մեռելները։

3. Այս յԱրեւմտեան Հայս պատահած սովոյն վրայ գրողն է Գրիգոր ան., որ քանի մի տարուան ազգային քաղաքական դիպուածները նշանակեր է իբրեւ պարզ ժամանակագրական կերպով։

ղաց յերկիր, և սերմանիքն ամենայն չորացան, որ ջրովի էր՝ այն ալ մնացաւ. և եղեւ տրտմութիւն մեծ մարդոյ և անասնոյ: Յետ միւս ամին որ թիւն ՌԽԹ էր (1600), եղեւ սով սաստիկ յամենայն տեղիս, և բազումք մեռան ի սաստկութենէ սովոյն. և անկեալ լինէին դիակունք նոցա՝ եթէ ի գիւղս և եթէ ի քաղաքս, և թէ յանցս ճանապարհաց. և ոչ ոք էր որ թաղէր զնոսա: Զոր ամի երէց Երզընկացի Յեսովք անուն ի գեղջէն Շօխայու՝ պատմեաց մեզ, թէ յԵրզնկու ելայ մինչեւ յԱրզռում երեսուն մարդ մեռած տեսայ, որ ի սովոյն անկեալ էին ի վերայ ճանապարհին. մինչեւ զի մէկ ոմն ցորեան ութ ղուռուշ ելաւ ու չէր գտվեր. որ բազումք խոտաբուտ եղին, սեւացան և մեռան. և կէսք զգազանի միսն ուտել յօժարեցան, զոր աչօք մերովք իսկ տեսաք երկու բան. մէկ՝ որ ուղտ մի մեռաւ, դեռ եւս ի մէջ ձմեռան էր, կերան զմիս ուղտոյն. և երկրորդ, որ կին մի ի գիւղն Օձտեղ[1] առնայի ստացեալ զաւազակութիւն և գողացեալ էր բազում խաշինք անասունք և հաւք ընտանիք. ի մէջ ձմերային նովաւ անցուցին. զոր յաւուր միում խայտառակեցան այսպէս. շուն մի ի գեղջէն ի ցորեկի գնացեալ էր մտեալ ի տուն աւազակի կանանցն, և ոտ մի եզան քարշելով ի տանէն ի դուրս եհան, և եբեր ի մէջ գեղին ի հրապարակն ձգեաց. և գնացին մարդիկ մտան ի տունն. նա կարասներով միս լցեալ էին ի պահոց աղուհացին, և անխտիր ուտէին զպահսն. զոր հրապարակեցին ձաղանօք:

Ի սոյն ամի անկաւ մահ տարաժամ յամենայն տեղիս, և եղեւ կոտորումն յոյժ. մինչ զի հատաւ արտօսր յամենայն աչաց, և բարձաւ գութն սիրելեաց ազգականաց և բարեկամաց. ոչ հայրն լայր զորդի իւր, և ոչ մայր զդուստր իւր, ոչ ծանօթ զծանօթ, և ոչ բարեկամ զբարեկամ. ամենայն ոք հոգայր զանձն իւր. և այս եղաւ խրատ կակուղ զաւազանաւ յամենախնամ հօրէն:

1. Ծանօթ գիւղ Բաբերդու գաւառին մէջ:

# ՑՂԱ

## ՇԻՆՈՒԹԻՒՆ ԲԵՐԴԻՆ ԿԱՐՈՒՑ

### (ՑԻՇԱՏԱԿԱԳԻՐ)

Վասն մեր ծովացեալ մեղացս համար՝[1] Աստուած դառնացաւ, որ ութ ամ բարկութիւն եղաւ աշխարհիս. չորս պատուհաս եկաւ ի վերայ մեր. Սուրն, սովն, ահն, մահտարաժամն, և միւս ցաւն՝ գայլն, որ զմեռեալն ի գերեզման(էն) հանէր և ուտէր. և զօրքն Տաճկաց Ըսմէէլացիք, որ է ազգք Ջիթախ[2]. առջի ամն եկաւ վազիր մի յարեւմտից, երկու հարիւր հազար զօրօք, եկաւ դէմ յարեւելս, և շինեաց բերդն Կարուց որ կոչի Ղարս, ել և գնաց և էառ զտունս Շրվանաց[3] և կոչէ Շրվան. և մտաւ ի Տամուր-ղափու[4], շատ տեղ աւերաց, շատ բերդ շինաց, և յետոյ դարձաւ զօրօքն, եկաւ Ղարս. յետոյ տարին գերեցին Արեւանայ[5] յերկիրն ԿՌ (60,000) այր ու կին, և այլ թիւն ոչ գիտենք մեծին և փոքու, մեռածին և կորածին, բայց

1. Ընթերցողն ինքնին կ'իմանայ թէ որքան ռամիկ լեզուաւ գրուած է այս, որ է Աւետարանի մի Յիշատակարան, որպէս և գրողն խոստովանի. պատճառն այլ ընելով. Օսմանեանց և Պարսից շահից հակառակամարտութիւնն է յիշածն, իբրեւ քսան տարի յառաջ քան զՇահ-Աբասի հռչակաւոր և աղետաւոր արշաւանքն ի Հայս:

2. Յատուկ անուն ցեղի՞ թէ առաջնորդ զօրք նշանակէ. չգիտեմ: Տարեգրող մի (զոր հրատարակած է Առաքել Պատմիչ իր գրոց մէջ, գլ. ԾԵ), յիշէ զայս. «Ի թուին ՋԺ. Ջիթախն էառ զՏրապիզոն»:

3. Հին Աղուանից երկրին և Կասպից ծովու միջոց:

4. Դուռն Դարբանդայ որ և Պահակ Ճորայ:

5. Որ է Երեւան:

միայն հայրն գիտէ։ Յետոյ եկաւ խան Թաթար յերկրէն Քաֆայու[1], և անցաւ ի լեառն Ալպուրզայ[2], և մտաւ երկիրն Շարվանայ, շատ աւեր էած և գերած զազգս Հայկազանց. քակեցին ծառն ապրիշումի[3]։ Յետոյ թիւ եղաւ ՃԿՌ (160,000) գերին տարեալ ծովովն Քաֆայու, վերայ տարան ի Մսըր, վաճառէին հաւու պէս՝ այր ու կին, ծեր ու տղայքն ի ձեռն այլազգի։ Ո՛վ եղբարք, այս ութ ամս հինգ տարպայ յարևմտից զօրքն գլխաւորօք եկաւ յարևելս ի Շարհըստան[4], շինեցին Արևանեայ բերդն։ Եւ ցրուեցաւ ազգս Հայոց և Նուազաց ամենայն բարի։ Յետոյ եկաւ վազիր մի չորս հարիւր հազար զօրօք, գնաց ի Թավրէժ, շինեց բերդն. շատ աղմանք[5] եղաւ. յետ վազիրն մեռաւ, հէնց ջարդ եղաւ երեք աւուր, որ զարիւն ղաշն[6] կու տանէր։ Օրհնեալ է Աստուած[7]։

1. Կաֆայ գլխաւոր քաղաք Ղրիմու Թաթարաց։

2. Էլպրուզ, բարձրագոյն լեռ Կովկասու, որոյ անուամբ կոչէ բոլոր Կովկասեան լեռները։

3. Յայտնի և անուանի է ինչուան հիմայ այս երկրի մետաքսն, որոյ որդերը սնուցող թթենիները ջարդեր են։

4. Այսպէս գրած է, նշանակէ զԴավրէժ։

5. Աղմուկ, չփոթութիւն, խռովութիւն։

6. Այնքան շատ մարդ ջարդուեր է, որ արիւններն իրենց դիակները քշէ տանի եղեր։

7. Գրողն է Առաքել սարկաւագ, «Ի ՌԼԵ (1586)
» թուաբերութեանս Հայոց, ի յերկիրս Կարնոյ, որ է
» Արզրում, գեօղս որ կոչի Սալաձոր, ի դուռս Նորա-
» շէն Սուրբ Սարգիսիս և այլ Սրբոց, որ աստ հա-
» ւաքեալ կան»։ Յետոյ կ'աւելցընէ. «Ո՛վ եղբարք,
» աղաչանաց մերոց մի՛ մեղադրէք, որ կարս մեր այս
» է, որ այս դժար ժամանակիս միտքս մոլոր. խելքս
» է ցըրած. երամէս եմ բաժանած. մեղաւորաց տէրն
» ողորմած. Աստուած աղաչենք բազկատարած, որ
» նա փարատէ մեզ ի չարաց. ամէն»։

# ՑՂԲ

## ՏԷՐ ՅՈՀԱՆՆԷՍ ՏԷՐԶՆՑԻ ՏՊԱԳԻՐ[1]

## Ա. Թուղթ Հայոց Հռովմայ[2] առ Դաւիթ Պատրիարք Հայոց Երուսաղէմի

Ի Հայոց իշխանէն՝ որ և ի յԱստուծոյ և ի Սուրբ Փափէն պարգեւեալ է նմա գաւազան իշխանութեան ըստ մերում կարեացն, և յինէն ի ծառայիցդ ծառայէ չՏէր Յովանէս Տէրզնցոյս, և ի յայլ փոքր հօտէն՝ որ վտանգեալ մազապուրծ լինին ի յօձաժանի գայլոցն յանօրինացն և անկանին աստ, որ է տուն ապաւինութեան, մեծս Հռոմ. ի Տէր Թա.

1. Յետ առաջին անուամբ ծանօթ Հայ (Աբգար) տպագրին՝ առաջին է սա. իր արուեստին նկատմամբ բաւական ծանօթութիւնք տրուած են ի Պատմութեան Հայկական տպագրութեանց (երես 58–63), և ի Հայվենետ գիրս (երես 210)։ Տպագրութեան գործն և գրըւածքն, և նոյն իսկ կերպարանքն՝ յայտնեն որ հանճարեղ անձ մի էր, ճարպիկ և ճարտար տէրտէր մի. զուարթ ի բնէ, բայց և դժբաղդութեամբք փորձուած, ինչպէս վկայէ իր տպագրած գրոց յիշատակարանօք։
2. Այլեւայլ տեսութեամբ կարեւոր թուղթ մի է այս, զոր շարադրեր է Տէրզնցին ի դիմաց Հայոց հասարակութեան ի Հռովմ, որ գէթ ԺԳ դարէ ի վեր անպակաս եղած է այս աննման քաղաքիս մէջ, և այս ատեն հօն գտնուող Հայոց ամենէն յաջողն է եղեր սա գրողս. թղթին պատճառն կամ պատճառները մի առ մի բացատրէ Տէրզնցին, իրեն ձայնակից ընելով յանուանէ յիշեալքն ի սկզբան և ի վերջ թղթոյն. բայց անտարակոյս է որ կային այն ատեն և այլ ազգայինք ի Հռովմ։ — Ուր և յիշէ զինքն՝ իբր խոնարհութեան համար՝ փոխանակ անարժան ըսելու՝ Չ տառն դնէ իր կրօնական կարգը յայտնող բառին սկիզբը, չՏէր։

դեռս կրօնաւորէն[1], ի յԱռաքելեան, ի Մոշրատեան, ի Ցաղոշպեան, ի Միքայէլեան, ի Խաչատուրեան, ի Միրզաջանեան, ի յԱնտոնեան, ի Դաւթեան, հասցէ ողջոյն սրբասնեալ աջիդ և համբոյր բարեաշաւիղ գարշապարացդ, Սրբոյն Ցակոբայ Տեառնեղբօր տեղապահիդ, վեհագոյն և պատուեալ անուն պատրիարգի Երուսաղէմայ Տէր Դաւիթ պէւէտիկոսիդ[2]:

Զոր ոչ եմք արժանի զփառաւորեալ և զբարեբախտ անունդ յիշել ի մեղօք սանձեալ և ի կաղտեալ[3] լեզուս մեր. զի գիտեմք ստուգիւ և ի համբաւէ բազմաց տեղեկացեալ՝ զորպիսութիւն շնորհացդ և զառաւելութիւն իմաստիցդ, զերաժշտականաց գիտութիւնդ և զհամեղութիւն մանր արուեստիցդ, որ և ի յետոյ արուեստին արեգակն լուսափայլ ծագեցար, և չառաւեղդ լուսոյ փայթընթաց սլացեալ ի միահամուռ տիեզերս. որ և մի ի չառաւեղացդ փայլակնանման կայծակնատես՝ ժամանեաց ի կայսերանիստ և ի փափորնակն ի մեծն Հռոմ[4]. և այնպէս յայտնի երեւմամբ եղեւ, զի

1. Թղթի ստորագրութենէն յայտնուի որ սա էր այն ժամանակի Հռովմայ Հայոց ժամարարն:

2. Շատ տեսակ գովութեանց Դաւթի պատրիարքին գլխաւոր երեւի իր լաւ երգեցող՝ թուի թէ և երգահան ըլլալն, գուցէ և բանաստեղծ, պոէտիկոս (Poeticus), զոր սա գրէ պէէտիկոս, և յայտնէ գովելեայն հանճարը երաժշտական գիտութեամբ և մանր արուեստովն՝ որ նշանակէ շատ խաղերով երգ:

3. Այդ բառդ որ գուցէ ի բառագիրս չէ գտուիր, նշանակէ համրացեալ. ողբական երգ մի կ'ըսէ, «Կաղտեցաւ արագ լեզուս», Այս թղթիս թուականին գրուածի մի մէջ այլ յիշուի. «Կաղատակից ամեն լեզուի»: Ուրիշ նշանակութիւններ այլ ունի, զի գրուի կաղտի, թութա, և այլն: Կաթնեղէն բան մի եւս նշանակէ. «Կաղտի, կոզէ, բածին, չինուկ», և այլն, Մանդակունեայ լեզուաւ: Քիչ մի յետոյ մեր հեղինակն այլ գործածէ կաղտակից բառը:

4. Հաւանօրէն թուղթ մի է ի Դաւթէ գրուած:

ակնատես և ակնկալու լեալ աւագաց և ռամկաց, կարտինարաց և բարի երիցանց. որ եւս հաւատամ թէ և ի սուրբ փափէն ոչ ծածկեցաւ, և թէ հնարի ծածկիլ այս տկարաց՝ նամակի պատասխանոյն բազում լուիք յայտնի նմա։ Եւ ես հող ոտիցդ և որ համարձակիլ կամիմ պատկառեալ դիմօք, շողախիտ մի ի լայնատարած և յովկիանման սրբասընեալ բարուցդ ի յանիմաստ երգս իմ[1] տրամադրեալ, որ վեհդ ես ամենայն բանական մտաց ճառման։

Տաղաւար տեառն է բաղտատ
Որ վերնակայից ես լեալ բատ,
Հռետոր փիլիսոփատ,
Գրոց գիտակ հանգամանաց մատ.
Եթերականաց վարքտ անկար է.
Իմաստդ քան զմիտդ ճարտար է,
Ի յուղղութիւն զբազումս վարէ,
Անթիւ մտաց ղեկավարէ։
Ռամիկ խնճոյս որ անյարմար
Իմաստից քոց է վայրապար,
Զի ճառագայթ լուսոյդ որ կար
Զգերազանցն առնէ խաւար։
Դամասկոսէ Պաղեստինայ
Սեփական է վիճակդ որ կայ
Մեծ սեփհականըդ քո ահա,
Զքրիստոսազինս համօնգամայ։
Անյաղթ հանճարից նորոյ
Ի պատասխանս իմաստիցն քո.

1. Տէրզնցին այլ իր այլեւայլ յիշատակարանօք ցուցընէ չափ մի պուետիկոս ըԱոԱը։ Բայց տողից վերջի վանկերը յարմարցընելու համար գործած բառերն իմանալու և իմացնելու համար՝ ժամանակ և աշխատութիւն (զուցէ անօգուտ) պահանջուի. իսկ տնագլուխ տառքն կազմեն Տէր Դաւիթ պատրիարգ. վերջի ի գրով տունն պակսի։

Կաղտակիրչ[1] է ամէն լեզուոյ
Զի անհնար դիմիտ կալոյ.
Իւթ միայն ես միայնով
Երդմամբ զՏեառն վկայելով,
Նիւթականս մինդ երեւելով,
Ցաննիւթիցն ոչ պակաս գոլով:
Ի տեղ արփոյն վարդ վառվառեա
Որ զհատն չնչէ ազգին Հայկա.
Երրորդութիւն վկայ կայ
Անկեզծ մոզք է, հաւատա:
Թորգոմազնէն լուսատու ակն
Որ յայտնեցար ու արեգակն,
Ճաճանչ նորա և սուրբ փայլակն՝
Ելից զտիեզերս յակնէ ի յակն,
Գեւեոտիկոս ի յանուանէ
Վարքդ և մակքտ մի նման է.
Ով ոք է զքարքտ՝ քանական է,
Որ ծառայդ ի ժտութեան է:
Ազնիւ պտուղ յԱրամազնեայս
Անմահարար բաժակ միշտ տաս.
Ցերակ բղխմոմբ կաս անպակաս
Զերդ Ադինեան ղտակքըն կաս:
Տպազ, շափիւղ և բիւրեղի
Աննիւթ բանքդ այնպէս հեղի,
Եւ բանքդ նման քումտ գեղի.
Նեղեալք նովիմբ առցեն տեղի:
Բարուն հռետոր ճարտասանաց
Փիլիսոփայից գերազանց,
Զերամշտանս քո ով ոք լուեաց՝
Կարծեմ ի կեանս ոչ նա նջեաց[2]:
Ի յաննիւթիցս նիւթագոյեան
Ի յերիւելիս զերթ աննիւթան.

1. Տես վերի 2 ծանօթութիւնը:
2. Ով որ Դուեթի երաժշտական երգերը լսեր է՝ զմայլելով չէ կըրցեր քնանալ. թէ և ոմանք երգեր լսելով թմրին քնանան:

Տիեզերս համակ վկայ քո կան՝
Թէ հողածնեալքս չէ ոք նման։
Ահա հողըս ոտանցդ կասկաս[1]
Որում և է խրացիցդ ի սպաս՝
Հողաթափիցդ է քո վակաս,
Որում և կամք միշտ անպակաս։
Գայ նամակս այս ու ողջոյն քեզ տայ
Ի ծառայիցդ որ և աստ կայ.
Համբուրեմք զոտըդ անյագեայ[2],
Քոյդ սիրելոյդ ողջունեմք զնա։

Եւ ի վերջ դուզնաքեայ բանիցս՝ հանճարեղութեանդ իմաստ լիցի, որ սուրբ փափն պարգեւեալ է ազգիս մերում եկեղեցի մի յանուն Սրբոյն Մարիամայ Եգիպտացւոյն[3], և ոչ ունի զկատարեալ պէտսն, զի եկամուտս յողորմութիւն ունի յամին ճի (120) դրամ, զոր հազիւ մեր Հայոց իշխանն արքաշաւիղն ի Հայկայ պարոն Սուղտանշան[4] յառաջ բերեալ է, որ է ծառայակից քո. և մեր Հայկազնեանքն բազմաեկ են աղքատք և չքաւէտք, կարօտեալք և ինչանուազք, և ոչ բաւական են այս փոքր իրս նոցա ի կերակուր և յըմպելի և յանկողին, բայց զատսա այլ եւս ողորմութիւն շնորհեալ խնդրեմ, որ և եւս բաշխեմք ըստ կարի աղքատութեան մերում։ Եւ մեզ տկարացս ծառայիցս քո տեսեալ օր ըստ օրէ չքաւորեալ եկեղեցւոյս մերոյ, և յոչ ունեմք օգնականու-

1. Անծանօթ է ինձ բառդ. որոյ զուգաձայն վանկ ընելու համար՝ շատ վար իջուցեր է զվակաս եպիսկոպոսական։

2. Անյագաբար ոտքը պագնելէն չկշտանալ։

3. Յիշեցինք ուրիշ տեղ այլ. (Ծանօթ. յերես 392) որ սա երբեմն Հռովմայեցւոց դից տաճար էր, և հիմայ մի ի մնացեալ հին շինուածոց մեծի քաղաքին։

4. Աբգար տպագրի որդին, որ Հայոց Ռուբինեանց թագաւորական ցեղէ կ՚ըսուի, և արքայաշուք կամ արքայաշաւիղ կոչուած է։

թեան կալ ակն, խորհուրդ արարեալ այս փոքր հօտիս՝ թէ հնար էր նոր իմն ի սրբութեանց կողմանէ, յայտնի լիցի եկեղեցւոյս մերոյ, ի բազմաց օգտութիւն հասանէ չքաւորեալ եկեղեցւոյս, զի քան զամենայն ազգաց եկեղեցի չքաւոր է. վասն զի Հռոմայեցիքս ազգ մի բազմահաւատք են, և ամենայն իւիք հաւատարիմ հաւաստեաւ, եւս առաւել ստուգութիւն գործոյն։ Եւ մեք նուազ և տառապեալքս քան զամենայն ազգս վերաստացեալ ծառայիցդ և փոքր հօտիս, որ եմք ի մէջ յիտալացւոց և այլ բազում ազգացն՝ որպէս շիւղ մի ի մէջ անտառախիտ մայրեացն։ Աղերս մատուցանեմք և արտասուօք խնդրեմք ի քէն տառապեալ որդիքս քո ի հոգեւոր և յառատաբաշխ հօրէդ մերմէ, զի զայս ողորմութիւնս շնորհես տառապելոցս և հեռացելոցս ի փառաց սրբութենէդ քումէ. և այնպէս հաւատա հայր մեր հոգեւոր ընտրեալդ յԱստուծոյ և ի մարդկանէ, որ թէ զայդ ողորմութիւնդ առնես՝ անուն բարի յաւիտենական թողուցուս քեզ, և բարձրասցի անուն քո փառաւորեալ առաջի ամենայն Հռոմայեցւոց, և ծանօթ լինիցիս սուրբ փափին և բարձրացուսցես զանկեալքս ի վերայ երեսաց մինչեւ յերկինս, և պարտական արասցես յաւիտենական զամենայն աստ բնակեալս։

Եւ այս է եղկելոցս խնդիրքս, զի առաքեսցես մեզ փոքր մաս մի ի նշխարաց Սրբոց, որում արժանաւորութեանդ արժանաւոր է, թէ ի սուրբ առաքելոցն թէ ի սուրբ հայրապետացն, թէ ի սուրբ մարտիրոսացն՝ երեւելի անուանով, որում՝ համբաւէ անունն ի մէջ Հռովմայեցւոց ստուգիւ վկայութեամբ, թէպէտ աքանչելիս եւս երեւելիս յայտնեալ և զպատմութիւն եղելոցն գրեալ ընդ իւր։ Զի մեզ ազդ առնելով աստ կարտինարացն և սուրբ փափին, բազմամբոխ խնդիւ ելանեմք առաջի սրբութեան խնկօք և մոմեղինօք, բերեալ մուծանեմք յեկեղեցիս մեր, և տեսցեն ազգս այս թէ յԵրուսաղեմայ պարգեւեցաւ մեզ, և ծանիցեն թէ

ազինք մեր մարդիք են, զի զազգս մեր իբրեւ զոչինչ և նուազ քան զամենայն ազգս համարին։ Եւ այնպէս կարծեա՛ մի առ աչօք հայրդ սուրբ և պատրիարք սուրբ գերեզմանին Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ ամենեքեան մեք բուռնս հարեալ եմք զոտից քոց, և զերեսս մեր դնեմք ընդ գարշապարաւ քով սրտատուօք. զի ոչ յուսահատես զմեզ ի յուսոյն մերոյ, և ամօթ և նախատինս առնես զմեզ բազում ազգաց որ աստ են. և զի բազմաց խոստացեալ եմք թէ պատրիարքն Երուսաղեմայ սուրբ հայրն մեր հոգեւոր՝ այնպէս առնելոց է ընդ մեզ. և ոչինչ ծանր գործ է քեզ, հայր սուրբ, զի գիտեմք ստուգիւ որ անչափ սրբոց մասն ունիս՝ որ բաւել ոչ կարես կամ թուել. և եկեղեցիս մեր խիստ դառն աղքատ է և կայտակք[1] եմ ամենայն ազգաց։ Արդ նախանձեցուցանեմք զքեզ ի նախանձն հոգեւոր. և մեք հաւատամք որ հայր գթած ես և կատարես զաղերս ծառայից քոց. ապա այսպէս առնիցես, հայր մեր հոգեւոր, զի ոչ թէ զգիտութիւնդ քո արհամարհեմք, այլ զսովորութիւն սորա ծանուցանեմք սրբութեանդ. զի կոչեսցես զՖռանգներու վարդիան[2] որ է հայր վանացն, և առաջի նորա թէ հատցես ի մասանց Սրբոցն, թէ առանց հատման բաշխես կարօտելոցս՝ զի նորա վկայութեամբ լիցի։ Եւ հրամայեսցես նմա, պարծա՛նք մեր, զի գրեսցէ նամակս առ սուրբ փափն՝ զամենայն ինչ գործեցեալ ի փառաւորելայդ՝ ի մէջ իւրոյ նամակին, և յիշեսցէ նշանակի զօգնականութիւն սրբութեանդ ընդ իւրեանս, և հայցեսցէ սուրբ փափէն, զի շարժեսցի գթութեամբ ի վերայ եկեղեցւոյս մերոյ. և փառաւորեալդ յամենայն լեզուաց նոյնպէս արասցէ, գրեսցես նամակ առ սուրբ փափն և գովասանս յիշխանութիւն հաւա-

1. Այսինքն օտար ազգք զմեզ կատակեն, ծաղրեն։
2. Ետեւի բառով բացատրէ ինչ ըլլալն, որ է առաջնորդ, պահապան, մեծաւոր, փռ. Gardien.

տոց, և դառաքումն սուրբ մասին յիշեցես. և զբարութիւնդ զոր առնես ընդ ազգիս այսմիկ, զի ամենայն եկեալք անտի վկայեն աստ: Եւ առաքեսցես զպերճ նամակդ Հայու գրով, և զսուրբ մասն ընդ առն ումեմն մահդասի[1] փափաքողի Սրբոյն Պօղոսի և Պետրոսի. և երբ մտի Հռոմայ աւուր միոյ ճանապարհ՝ ազդ առնէ մեզ, զի մեք ելցուք ընդ առաջ նորա և պատուով մուծցուք ի քաղաքն. և զոր ինչ ի ճանապարհն ծախս հանեալ է՝ առաւելապէս ըստ աղքատութեան մերում հատուսցուք նմա. և ի դառնալն նորա առ Հայրդ մեր՝ որչափ որ կար մեր է և աղքատ եկեղեցւոյս մերոյ, իբրև պատուականագոյն առաքեսցուք ի պատիւ երեսաց քոց: Իբրև այսոքիկ լրացաւ՝ Հայր մեր սրբութեան, գտեր զմեզ ծառայ քո. ոչ միայն ծառայք այլ ծառայս և աղախնայս. և զամենայն ինչ որ կարս մեր յամենայն աւուր զպարտ ծառայութեան լնումք, եթէ թղթիւ եթէ բանիւ. և յայս ունիմք որ նոր իբրս գործեմք աստ, զի մեզ դարձուցեալ զլատին սաղմոսն և զաւետարանն ի Հայոց գիր, և կամիմք ի տիպ արկանել, և նախ և առաջին սրբութեան քում առաքեմք: Եւ զամենայն եղեալս որ աստ գործի՝ մի ըստ միոջէ ծանուցանեմք փառացդ: Ողջ լեր ի Տէր, Հայր մեր հոգեւոր, և Տէրն առողջ կենօք և անսայթաք պահեսցէ զքեզ, աղաչեմք. ամէն:

Յետ բազում աղաչանաց և մաղթանաց և խընդրուածոց առաջնոյն, երկրորդեմք զմաղթանս մեր. զի առաջինն վասն մերոյ փառացն էր, և երկրորդ վասն քումս հրաշափառութեան. և այս է խորհուրդ, զի բազում հրաւիրակք առաքեալ են ընդ ամենայն տեղիս քրիստոնէից, ի յԵթովպիա, յԱրաբիա, ի Սուրիա, ի Վիրս, ի Հայս, ի յԱսորիս, ի Միջագետս, ի խոնարհ Պաղեստինայս, ի յՌուսուն, ի Հռոմս, և յամենայն ի խաչապաշտս, ի պատրի-

1. Հռովմ գալու փափագող ուխտաւոր մի:

արքս և յեպիսկոպոսունս, զի գայցեն առ վասն նոր իմն իրի՝ զոր սուրբ փափն կամեցի. և ահա ճաշքն պատրաստ են, և զհրաւիրացն զապաղիլն[1] ոչ գիտեմք. զի են հրաւիրակք որ են ամաւ ուղեկցեալ, և են որ ամաւ և կէս, և են որ կէս ամօք, և այլք յառաջ և յետ, ոչ ի սուրբ փափէն այլ յիւրաքանչիւր յազգէ. և մեզ տեսեալ զնոցա յամելն՝ հրաւիրեմք զսրբութիւնդ՝ հրաւիրակ նամակաւս. զի փոխանակ բարեացն զոր առնես մեզ՝ այս լիցի նշան պարտին. զի մի՛ յամեսցես, այլ պատրաստեսցես զքեզ ամենայն սպասիւք պատրիարգութեան, և փոյթ առ փոյթ ժամանեսցես առ եպիսկոպոսիւք, քահանայօք և փարթամութեամբ որչափ կարի քո է, և զպատրաստեալ բարիս ամենեցուն՝ միայնդ արժանաւորեսցիս: Եւ վկայն իմ յերկինս է որ այնպիսի փառաւորութեան հասանես՝ որ ոչ եղեալ ի սկզբանէ և մի՛ այլ եւս լիցի. և տեսցես զբազմութիւն կառավարացն երանել առաջի սրբութեանդ, և զբազմութիւն զանկակացն հնչեցուցանել վասն քո, և զձայնս բազմորոտ մչնեզաց[2] որ հարկանեն վասն փառաւորութեանդ. և ոչ լիցի լեալ այնպէս յաւուրս Լուսաւորչին. և փառօք պերճութեամբ մտցես ի մեծն Հռոմ. և բուսցի մեզ եղջիւր փառաց, և պերճանամք իմէջ ամենայն ազգաց. և յաւուրն յայնմիկ ո՞վ է մարդ ի մէնջ որ ոչ կամի զկեանս. և այլն:

Արդ, արի՛ Տէր և մի՛ յամեր. արի Տէր և մի մոռանար իսպառ. արի Տէր, զի ճաշն պատրաստ է. արի Տէր զի շահն է քանքարաց. արի Տէր զի Տէրն խնդրէ. արի Տէր զի ժամանակն է, արի Տէր զի հասեալ է օր. արի Տէր զի վաղահաս լիցիս. արի Տէր, զի բազումք սպասեն, արի Տէր, զի հասցես ամենայն փափագանացդ:

1. Հրաւիրելոցն ուշանալը:

2. Թուի թէ սրատաձայն խնդանօթոց համար է այդ բառդ, Canonnade, կամ հրացանից, Fusil.

Եկ Տէր մեր և տես զսուրբ փափն. եկ Տէր մեր և տես զհզօր զօրութիւն նորա. եկ Տէր մեր և տես զկառս և զերիվարս նորա. եկ Տէր և տես զբարձր հրամանս նորա. եկ Տէր և տես զմարմնաւորն որպէս զանմարմին. եկ Տէր և տես զփառաւորութիւն նորա. եկ Տէր մեր և տեսցես լիս որ ոչ ես տեսեալ. եկ Տէր մեր և եղիցիս որդեգիր սուրբ փափին. եկ Տէր մեր և նորոգի պատրիարքութիւնդ. եկ Տէր մեր և նորոգի տէրութիւնդ: Գայ Տէրդ և տեսանէ զՍուրբն Պետրոս. գայ Տէրդ և տեսանէ զՍուրբն Պօղոս. գայ Տէրդ և տեսանէ զվէմն հաւատոյ. գայ Տէրդ և տեսանէ զփող Հոգոյն. գայ Տէրդ և տեսանէ զբացող արքայութեան. գայ Տէրդ և տեսանէ զանօթն ընտրութեան. գայ Տէրդ և տեսանէ զբարձրաշէն յարկս նոցա. գայ Տէրդ և տեսանէ հարիւրամեայ սկզբնաւորեալ շէնս նոցա. գայ Տէրդ և տեսանէ զանպատում խորանս նոցա. գայ Տէրդ և տեսանէ զանճառ աւանս նոցա: Եւ բերէ Տէրդ մեր ընծայ ի պատիւ երեսաց սուրբ փափին, սուրբ նշխարս մարտիրոսաց երեւելի վկայութեամբ զոր և կարիցէ, և ականս պատուականս թագի սուրբ փափին, և ֆրանկ կրօնաւորս ի վկայ մեծութեանդ: Եւ մի երկմտիցես վասն ծախուց, զի հարիւրապատիկ պատրաստեալ կան: Եւ թէ ոչ գաս՝ կարծես թէ ձրի վայելեցեր զկեանսդ, և թէ գաս՝ ի վերայ գլխոց մերոց շաւիղս, և թէ չի գաս՝ կամք քո սուրբ եղիցի. ապա զխնդիրս մեր զառաջինս կատարեսցես:

Ողջ լեր քոյովք, քումք, քանիօք, քառանօք (?), անքանդ, անդուրդ, անձանձ[1], անվախ Տէրամբ. ամէն. Հայր մեր:

Գրեցաւ նամակս ի մեծն Հռոմ, ի հիւրանոցն Հայոց՝ ձեռամբ Տէր Յովանէս Տէրզնցոյս. յիշխանութեան Հայոցն որ աստ արքայազնին Պարոն Մուշտաճշին. ի փափութեան Գժ (Երեքտասանե-

1. Առանց քանդուելոյ, դրդուելոյ, ձանձրանալոյ:

րորդ) սրբոյն Գրիգորի. ի Թուականին Հայոց մեծաց ՌԼԲ, և փոքուն Ծ. և Հռոմայեցւոց ՌՇՁԳ. (1583)և Հոռոմոց մեծաց ՌՅԼՁ (1386), և քննիկան ՄՀԲ, (272) և մահմէտականին ՋՂ, (990) ի յունվարի ԻԷ ի հին հաշիւն, և ի նորումս սուրբ փափին՝ ի փետրուարի Է, և ի տրէք Դ, օրն ԴՇԻ[1]: Եւ ի յայս ամս նոր հրաշք լեալ, զոր ի յերկրորդում՝ Թղթոյն պատմեսցի[2] խնդրողացն: Բաւ է:

## ՎԵՐԱԿԱՑՈՒՍ ՍՈՒԼՏԱՆՇԱՀ ՁՏԷՐ ՅՈՎԱՆԷՍ ՏԷՐՁՆՑԻՍ ՏԷՐ ԹԱԴԷՈՍ ԺԱՄԱՐԱՐ ՀԱՑՈՑՆ ԽԱՉԱՏՈՒՐ. ԳՐԻԳՈՐ ԵՊԻՍԿՈՊՈՍ

## Բ.

### Թարգմանութիւն և Տպագրութիւն Գրիգորեան Տոմարի.

Թարգմանեցաւ Տոմարս և Տօնացոյցս ի լատին լեզուէ ի Հայս, և տպագրեցաւ ի նոյն քաղաքն ի մեծն Հռոմ, առ ոտս սուրբ գլխաւոր Առաքելոցն Պետրոսի և Պօղոսի հրամանաւ փափին. Գժ Գրիգորի, և ի հովուապետութեան Հայոցն ի Հռոմ կարտինար Սանթա Սեվերինին[3], ի վերակացող տնտեսութեան Պարօն Սուլթանշա Թօխաթցոյն, զոր ֆռանկն Մարգանտոն[4] կոչէ, ձեռնտուութեամբ

1. Զորեքշաբթի:
2. Անշուշտ Յուլեան կամ հին տոմարի նորոգութեանն համար է ըսածն:
3. Ոչ Սանդա (որ իգական է ըստ իտալ լեզուի) այլ Սանդոյ պէտք էր ըսել. San Severiano կոչուի հին եկեղեցի մի, որոյ իբր հոգաբարձու դրուած է մի ի կարդինալաց Հռովմայ, և այն ժամանակի կարդինալին յանձնուած էին Հայք:
4. Ինչո՞ւ համար այսպէս կոչուէր. Թերեւս բնիկ անուընն Մարկոս էր, կամ զի իտալացիք մեծղի մարդկան այդ կոչումը տային:

Տէր Յովանէս Տէրզընցոյս, և Թեղադրութեամբ որդոյ իմոյ Խաչատուրին, ի վայելումն ամենայն Հայկազան ուսումնասիրաց։ Այլ և եղեւ տպագրութիւն սորա ի Թվին Քրիստոսի ՌՇՁԴ (1584) զոր Հռովմայեցիք վարին, և Հայոց Մեծաց ՌԼԴ (1034), և Սարկաւագին՝ Շ (500) առաջին շրջանին, և Յունացն՝ որ են Հոռոմք՝ ՌՅՁԴ (1384), և Եփրայեցւոցն ԷՌՅԺԳ (7313), և Ասորոցն ՌՃԺ (1110), յամսոյն Հռոմայեցւոց հոկտեմպեր ԻԷ (27), Հայոց Մեծաց հրոտից ԺԴ, Սարկաւագին՝ սահմի ԺՁ. Յունաց՝ հոկտմբ. ԺՁ. Եփրայեցոց մեհրչուան Ը. (ութ), Ասորւոց Թզրինկտիմ ԺՁ, ի յօրն շաբաթ, ի ԻԳ (23) ժամն։ Եւ յայսմ աւուր է արեգակն ի Կարիճն Ը (ութ) տարաճան, և ի գիր այիփ և բեճիցն ի յՌՆ. և զայլն իմաստնոցն յայտնի է[1]։ Եւ յետ այսմ բանիցս՝ զերեսս արկանեմ ոտից ձերոց, մաղթելով հայցեմ զի զվերոգրեալքն յամենայն աղօթս ձեր յիշման արժանի առնէք. և զիս զանարժանս և զփոխեալս իմ առ Քրիստոս՝ կցորդ առնէք յիշեցելոցն. և յիշողացդ և յիշեցելոցն Տէր Աստուած շնորհեսցէ զիւր արքայութիւն. ամէն։

Մի մեղադրէք, եղբարք, զի առաջին արուեստն է։

Գ.

Սաղմոս տպագրեալ ի Վենետիկ, յամի 1587.

Տէր Յովանէս Տէրզնցին և որդին Խաչատուրն ծառայք Աստուծոյ և յիշողացս. ՌԼԶ։

Փառք Ամենասուրբ Երրորդութեան, Հօր, ևն։

Աւարտեցաւ գիրս ձեռամբ Տէր Յովհաննէս Տէրզընցւոյս և որդւոյ իմոյ Խաչատուրին, ի Թվին ՌԼԶ, ի մայրաքաղաքն Վենետիկ, ընդ հովանեաւ Մարկոս

1. Որոց Թողումք այդ այիփ բեճի կարգաւ գրին նշանակութիւնն այլ, որպէս և Տէրզնցոյն տոմարական գիտութիւնը։

ուետարանչին, ի թագաւորութեան Պասքուալ Չիգօ-նին[1], ի պատրիարգութեան Ջուան Թրէվիզանոյն[2], ի բանատուն[3] Ճուան Ալպէրթին, ձեռնատուր խօճայ Շահնշօլլու[4] և հոգեւոր որդւոյն իմոյ Յոհաննեսին, և այլ Ծողեցոյց, զոր Տէր Աստուած տացէ ըստ սըր-տից իւրոց: Այլ զկարապետ քաղիչեցին յիշեցէք ի Քրիստոս, որ՝ բազում օգնութիւն հասոյց մեզ: Այլ և զերեսս արկանեմ ոտից ձերոց, մոխրամածեալ և արտասուալից հառաչմամբ հայցեմք և մաղթեմք ի ձէնջ, զի մի ողորմայիւ արժանի առնէք զկենակիցն իմ զինախփաշէն և զմայրն իմ զՄարիամն և զհայրն իմ զխանեսն, զփոխեալքն առ Աստուած. և Աստուած յիշողացն և յիշեցելոցս ողորմեսցի յիւր միւսանգամ գալուստն. ամէն:

* Այս է տաղ և յիշատակարան ի վերայ ա-նուշան[5].

1. Որ է դուքն կամ Տոժն Վենետկոյ, Pasquale Cicogna.

2. Giovanni Trevisano կամ Trevisanato.

3. Գործատուն, գործարան Giovanni Albertoի:

4. Շահնշօլլու, մի ի հարուստ Ջուղայեցի վաճառականաց, որ ձեռք տուեր է, օգներ է Տէրզնցւոյն Սաղմոսը տպագրելու համար:

5. Երբ սրտանց կ'ուզէ խօսել Տէրզնցին՝ արձակ լեզուն ի չափաբան. (ոտանաւոր) ի տաղ փոխէ. ափսոս է որ այս տաղիս վերջն պակսի մեր ունեցած օրինակին մէջ, որմէ պիտի տեղեկանայինք իր գլխուն եկած փորձանաց: Ըստ իր սովորութեան տնագլուխ տառերով կապէ իր անունը Տէր Յովան: Համիթ կամ Ամիդ (Տիարպէքիր) քաղքէն ըլլալն գուշակել տայ՝ որ այդ քաղքին մէկ գեղն համարուած էր իր բուն հայրենիքն՝ Տէրզն կամ Տէրզէն՝ զոր ուրիշ տեղ յիշուած չեմ գտած: Եօթնամի անմայր մնացած տղայն՝ է Խաչատուրն կամ Խաչիկ, որ իրեն քեռադիր եղեր է և օգնական, թէ գործով թէ խորհուրդ տալով. երեւի թէ աղջիկ զաւակներն այլ հետը բերեր էր, զի յե-

Ժամ ես զերեսս ձեր ոտաց, ունկն դնել այսուհեկ
    բանին,
  Որ ես պատմեմ փոքր մի զանցս իմ՝ զեղեալս
    իմս ի գոյն տաղի.
Երբ որ եղէ այրի գերիս՝ ի Համիթ մայրաքաղաքին՝
  Մնաց երկու աղջկունք և տղայ մի եօթնամի.
Դախճանին ատեցեալն տարակուսիչ ես եմ անձին,
  Եհան զիս յիմ՝ որբերացն, ած ի Հռոմ յեր-
    կիրն յատին.
Յորժամ կամեցայ յետ դառնալ՝ զի վերջ առի զիմ
    առաջին,
  Ի սուր (քսան աւուր) ճանապարհք չոգա միա-
    միտ յիմ ճանապարհին.
Որոյ վկայ է Տէր Աստուած որ ծածկատես ամէն
    գաղտնին,
  Զի վնաս ինչ ոչ գործեցի՝ զի արժանի լինի
    բանտին.
Բան իմ մեղացն որ յառաջ կայր որ ինչ գործեալ
    յիմ երկրին՝
  Փութանակի աստի հասան մի ըստ միոջէ կա:..
Արդ երբ որ այն պատահեցօ(աւ) լեցին (?)
  Ի Հռոմայ թուղտ առաքեցին ի քաղաքին. ա-
    սեն...

տագայ հատուածին մէջ կ'ըսէ, թէ «Ես որդուովք ի » քաղաքս ուղղայ»․ այսինքն որդւոց հետ եկեր է ի Մարսիլիա։ Երբ, ուր և ինչու ի բանտ դրուեր է, փափագելի մնայ գիտնալն. թուի թէ Հռովմէն ելնելէն վերջը իբրեւ կասկածելի անձ՝ բռնուեր և բանտուեր է։

## Դ.

### Յիշատակարան Թարգմանութեան Գեղեցկին փարիզու[1]

### Յիշատակ Թարգմանչի Տաղիս.

[2] Զարեաք պինտ լի երես որ կայ
Տրորեալ մածիմ ստացդ վերայ.
Եղբայր, լեզուով մի յիս գթայ.
Բամեալ հողաւս ողորմի տայ,
Յորդ արտասուօք գոչեմ ամէն.
Ողորմեցէք որպէս Յովբայ.
Վկայն իմ Տէրն է կրկին վկայ.
Աղաղակեմ ձայնըս կու գայ.

1. Փռանկաց ամենածանօթ և հռչակեալ վիպասանութիւն մի է, Le Chevalier Paris et la Belle Vienne, շատ հեղ տպագրուած այլ և այլ տարբերութեամբ ըսուածի և գրուածի. չէ յայտ թէ ինչ օրինակէ ըրած է մեր ճարտար Տէրզնցին իր թարգմանութիւնը, և ինչ յաջողութեամբ թարգմաներ է Մարսիլիա եղած ատեն. վարժելո՛վ Փռանկաց լեզուի թէ օգնութեամբ ուրիշ լեզուագիտի։ Հեղինակ վիպասանութեանն բնիկ գաւառացի մի է Գաղղիոյ և նոյն գաւառական լեզուով գրած է, յետոյ այլ ոմն ի փռանկերէն փոխեր է. Թուի թէ մեր թարգմանիչն բուն հեղինակին լեզուով գրածն ընտրեր է, անոր հայրենեաց կենդրոնը եղած ատեն (ի Մարսիլիա)։ Որպէս և ըլլայ, դարձեալ իրեն պատիւ է, և նշանակ մի իւր իսկատիպ հանճարոյն և կերպարանացն՝ մեր պատմութեան և գրականութեան մէջ, մանաւանդ այն ԺԶ դարուն։

2. Այս տեղ այլ՝ ի վերջ թարգմանութեան բնագրին՝ կցէ տաղաչափութեամբ յիշատակ մի, որոյ տողագլուխ տառքն կապեն դայս բան. «Զտէր Յովաննէսի Տէրզնցոյ ասաց յուս», վերջին երեք տառից տեղ պէտք էր ըլլալ՝ տասցեալ և կամ զսա այսինքն ասաց զսա։

Նա որ առէ մի Տէր ողորմեա
Եղկելայն այն որ կու հեծայ՝
Ամին բիւրս յաւելանայ,
Ի յանդենին առնու խնդայ։
Տրամադրեալ սա ի Ֆրանգայ
Էր ի քաղաքն Մառչիլիայ.
Թամեալ թուիս մերոյս Հայկայ
Ջերդ և հազար և երեսուն կայ.
Նայ աւելի եւս վեցամեայ (1587-8)·
Ցվերջ ամսուն յամոց սոցայ[1],
Որ և երկրիս այս մեծ արքայ
Ցենրիքոս կոչին ըղնա,
Այլ ես որդովք քաղաքս ուղղայ,
Սիրտ իմ կամի որ միշտ երթայ.
Այլ ճանապարհս երկրի սորայ
Ցամաքն և ծովն կապեալ մնայ։
Ցօտարութիւնըս մաշեցայ,
Որ ի երկիրըն Ֆռանգայ.
Այս ինչ ցաւ է կայ և մնայ։
Կատարեցաւ բանս[2]։

1. Թուի նշանակել տարւոյն վերջին ամիսը, տոցա այսինքն Եւրոպացւոց դեկտեմբերն. որոյ ցրտոյ պատճառաւ, թէ ոչ և այլ ինչ, «Ցամաքն և ծովն կապեալ մնայ», և խեղճ տէրտէրոջ սիրտն մաշել տայ յօտարութեան, կարօտով հայրենեաց և հայրենակըցաց· որոյ փորձառուք գիտեն՝ թէ «Այս ի՛նչ ցաւ է (որ) կայ և մնայ»։

2. Բայց մեր ծանօթութիւնք Տէրզնցւոյն վրայ անկատար մնան, և թերեւս շատ անկատար, մանաւանդ որ գիտեմք և ժամանակաւ հանդիպած եմք իր յատուկ բարուք և ոճով տաղաչափ գրուածի մի եւս, որ ներկայիս չի գտուիր մեր ձեռաց ներքեւ. և որ է խնդրուածք մի յելնելն ի Հռովմայ՝ ի Սրբազան պապէն՝ իրեն ճանապարհի ծախուց դրամական օգնութեան համար։

# ԾՂԳ

## ՈՂԲ ԵՒ ՈՏԱՆԱՒՈՐ ՏԱՂ Ի ՎԵՐԱՅ ԵՒԴՈԿԻԱ ՄԵԾԻ ՔԱՂԱՔԻՆ

*Որ այժմ Թոխաթ ասի, զոր անօրէն և անհաւատ Տէլու Հասան Ղարայ Եազըճին[1] ղալի և ճէլալի[2] յայտնեցաւ, և զերկիրս Հայոց և Հոռոմոց յՈւրհայոյ մինչ ի յՈւսկոտարն՝ ծովեզերօք և բոլորօքն հանդերձ երեց և աւերեց, բարձնեց և գերեց. զբազումս սպանեց և զշատս փախոյց. զոր ես Ստեփանոս Թոխաթցի Երեցս[3] զորն աչօք տեսի և զորն ականջօք լուայ, և զսակաւ բանս ասացի անյարմար գոյով*

### Ա.

Վեց հազար ու ութ հարիւր թըւին
Եւ երկու թիւ աւելորդին՝

1. Ծանօթ է Օսմանեան պատմութեան մէջ՝ այս ի մերոց Եազիճի կամ Ազիճի կոչուած ապստամբին և հետեւողացն չարագործութիւնն: Ժամանակին Վենետկաց պաշտօնեայք յարեւելք՝ երկար տեղեկութիւն տուած են իրենց տէրութեան. մեր շատ Յիշատակարանք և ժամանակագիրք այլ յիշեն. որպէս մէկն. « Թվին ՌԽԹ (1600), մարտ 24, խապար եկաւ յԱմիթ » թէ Եազիճուն եղաւ յՈւռհայ:.. ի Կ. Պօլսէ մինչեւ » յԱմիթ՝ գեօղ և քաղաք չէն չեթող, զամէն աւերեց, որ ընդ գրով արկանել չէ կայր:... Այլեւ » 21. լիտր մի հաց եղեւ յԱմիթ ութ շահի (դրամ), » ու չէր գտնուի... Վա՜յ ժամանակիս նեղութեանցս... » Մայիսի 4, չարեկ մի ցորեն 40 շահի. չարեկ մի » կորեկ (մաշ, ոլոռն) 32 շահի, չարեկ մի կարեկ 24 » շահի ». և այլն:

2. Ըմբոստ, ապստամբ. Եազիճի՝ որ մականունն էր՝ այս նշանակութիւնն տուաւ:

3. Այս ոտանաւորի չափով Ողբ մ'ալլ գրած է Ստեփանոս իր վաղամեռ Յակոբ եղբօր վրայ. տես եր. 383:

Յետ ելանելոյ հօր մեր Նախնեին
Ի դըրախտէն՝ մինչ յայս վայրին.
Ի ծնընդենէն Տեառն Յիսուսի
Հազար և վեց հարիւր ամի,
Չորս Թիւ այլ Ջետն յարաբարդի
Մինչեւ յայս օրըս համարի.
Եւ մեր Թըւին Հայոց ազգի
Հազար ու յիսուն մէկ աւելի[1],
Մայիս ամսոյ քըսան ու ինն<br>ի,
Օրըն շաբաթ չորրորդ ժամի.
Եկաւ Խաղի և Ճէլալի[2]
Տէլու Հասան սեւ Խազըրձի,
Եմուտ քաղաքըն Թոխաթի,
Ի Հարաչարժ ասած տօնի[3]:
Հասան փաշան էր ի միջի
Եւ այլ փաշաներ խիստ անուանիք.
Յիսուն վաթսուն հազար հոգւով՝
Ոչ կարացին կալ ի դիմի.
Հանց փախուցին ըզփաշանին
Իւրեանց զօրօքն և զքաղքըցին՝
Որպէս առիւծն զդասս աղուէսին
Եւ կամ բազան ըզկաքվհաւին[4].
Որպէս Թազի զլապըստըկնին[5],
Իբրեւ զկատու ըզհետ մըկին,
Կամ միեղջերու[6] ի հետ օձին,

1. Քրիստոսի Թուականն սովորական հաշուէն երկու տարի առաջ համրուած է:

2. Երկուքն այլ յանդուգն, ապստամբ, ճիտող՝ նշանակեն. մեր յիշատակագրաց մէկն այլ Խաղիկը կոչէ զասոնք:

3. Հոգեգալըստեան տօնի ութերորդ օրն, կիրակի, որոյ շարականն այդ բառով սկսի, ի հայրաշարժ կամ յարաշարժ աղբերեն:

4. Կաքաւ հաւն:

5. Որսի շունն՝ զնապաստակ:

6. Աւելի երեւակայեալ քան իրական կենդանի:

Կամ գլչմեղուն ի վրայ ճանճին:
Կատարեցաւ բանըս գրքին
Մովսէսի սուրբ մարգարէին,
Մին ըղհագարս հալածեցին
Երկուքն ըղբիւրըս փախուցին.
Հանց ըշտապով փութով փախեան
Եւ ետեւնին ոչ հայէին,
Մինչեւ գնացին ի Ղուրպէկլին[1],
Ապա ձիուն ի վայր իջին:
Քաղաքացիքն հազար բարով
Ըզտունն և պտեղըն ձըգեցին,
Ելեալ փախեան, ոմն ի բերդին,
Ոմանք լերին, շատք ի սարին.
Ոմանք զմիմեանըս կորուսին
Եւ գըտանել ոչ կարացին.
Ոմանք բոկիկ և գըլխիբաց
Եւ թալանած ի շուրջ գային.
Ոմանք ամսով հաց չըգըտին
Եւ ըզլերանց խոտն ուտէին,
Ջիւրեանց բարիքն այլք ուտէին՝
Ինքեանք հեռուստ նայեալ լային:
Մեծ կարմընճին գետի քովէն
Որ Խըտըրլըխ[2] անուանէին՝
Մինչ Կոմանա[3] էր շատըրնին,
Թիւ և համար ոչ ունէին.
Երեք ամիս նըստան յայտնի
Ջգեղ և քաղաք թալանեցին,
Ոչ հոր թողին ոչ պահունի[4],

1. Կարծեմ լերանց նեղուկ անցք մի է:
2. Փոքր գետակ մի որ լծավի յԻռիս (Եէշիլ Ըրմագ):
3. Երբեմն անուանի քաղաք հիմայ գրեթէ աւերակ. Ս. Ոսկեբերանի վերջի շունչն և մարմինն ընդունելուն համար՝ անմոռաց պիտի մնայ ի քրիստոնէութեան. Թոխաթայ արեւելեան կողմն է, երկու երեք ժամ հեռի:
4. Բան պահելու ծածուկ տեղ:

Զամէն հանքին նըման Նեռին.
Յետոյ հըրով բորբոքեցին
Զոսկով նախշած ըզճարտարութիւնն[1].
Նման տաճարին հանց քակեցին
Մինչեւ ի հիմըն հասուցին.
Էրեցին պատուն և ըզպատեզր.
Զմանուկ տըղայքն արին գերի,
Ոսկի արծաթ և զգումաշնի՝
Զայն թալնեցին անյագելի.
Ըզշուրջառներն և զըրգեստնի,
Զոսկի ծածկոց սուրբ սեղանի՝
Ձիոց ծածկոյթ արին յայտնի.
Եւ պայլս՝ Հագուստըս Միվանի[2].
Զխաչ և զըսկիհ՝ զարծաթ ւ ոսկին
Ի այլ սրբութիւնքս տաճարին՝
Ձիոց ըրախտ[3] շինել տըւին.
Եւ խըլնդային վերայ նոցին։
Զըսպանելոց թիւն ոչ ասին
Կամ փախուցեալքըն լեռ ւ ի սարին,
Ոմանք քաղցած եւ ծարաւի,
Մերկ և բոկիկ եւ անօթի.
Եւ ըսպանեալքն ի փողոցին՝
Շունք և գազանք զայն ուտէին.
Եւ ոչ ոք էր թաղեր զնոսին,
Զի Սաղմոսին բանք կատարին.
Աւերեցին և քանդեցին
Զայն չէն բոլոր ըզքաղքընին.
Երեք անգամն կողոպտեցին,
Մինչ ճըռաքաղ զնա արարին։
Զթոխաթ քաղաքըն գովելի
Որ Կոմանու խիստ է մօտի,
Յորում տապանն է Յոհաննի
Ոսկէբերան վարդապետի.

1. Հովանոց, վերնատուն։
2. Պատանի, կտրիճ տղայ։
3. Ձիոց որ և է կազմածն, զարդն։

Շատ գեղեցիկ չէն բարեկլի
Այգով արտով պաղչով ի լի,
Ջրով առատ բոյս բանջարի,
Եդեմ դրախտին էր նըմանի:
Մեծ գետըն նման էր Եփրատի
Որ Թօզանլու նա անուանի,
Բերէր գերանք և սիւնք չէնքի,
Ըզկոճ և զփայտըն վառելի:
Եւ պըզտի գետն քաղքին միջի՝[1]
Ամեն պարտէզ նովաւ ջըրի.
Եւ զճերմակ ջուրըն կրկնակի,
Աղբիւրքն անտի կու բաժանի:
Բաղնիք և խանք կայր գովելի
Մաքուր ջըրով աննըմանի.
Շուկայն խանութք բարով ի լի.
Վա՜յ ինձ, որ ես անտի ելի:
Վաճառականաց էր նա տեղի.
Զօրս կողմանց գայր պազըրկնի.
Ծախէր բեռնով ապրուշումնի,
Զուխայ, քըթան և այլ ղումաշնի[2]:
Ելնէր նախշի ապրուշումնի
Գոյնըզգունաց ամեն ցեղի,
Ղէզազի բան և դերձակի,
Եկ Թավաշայ շար տիպարի.
Զիվթայ Թավթայ պուրունճուկնի[3],
Մուղատտամներ[4] և այլ ղումաշնի:
Զայս ամենայն զոր յիշեցի՝
Ի միզանեն[5] բեռնով կ'ելնի:
Կայր պէզաստան[6] մ'ինն գումպէթի,

1. Վերայիշեալ Խըտըրլըխն:
2. Պէսպէս լաթեղէն, կտաւէ, բամբակէ, և այլն:
3. Տեսակ տեսակ մետաքսեղէնք. որոշ զանազանութիւնը յանձնեմ ճանչցողաց:
4. Միզգատեմ. Թուրք. Բեհեզ:
5. Կշիռք. կշռելու տեղ:
6. Վաճառանոց կտաւեղինաց:

Բազում խանութք ի յիւր միջի,
Շատ տոլվաթվորք նըստեալ կարգի
Ծախեն քըթան և ջնսայի[1].
Գըտակկարնոցն ի յիւր քովի,
Կարեն ոսկւով արախճենի[2].
Եւ պէզստան մ'այլ Հըրէի,
Մէջն էր ղումաշ և շուխանի։
Ոսկերչընոց էր գովելի,
Շամայ սպահի պազրինն[3] նմանի.
Կայր շատրուան մի յիւր միջի,
Վարպետք ու աշկերտք խանութն ի լի.
Ելնէր աղէկ թաս և թափսի[4],
Վարպետօրքան մեծ կըպղաքնի[5].
Եւ գոյնըզգոյն սախտիանի[6],
Ի այլ շատ բաներ զարմանալի։
Զո՞ր մէկն ասեմ ըզմաքաճինի[7],
Զփէշակարին[8] և զարվեստնին.
Սիրտըս կ'այրի և կըսկըծի.
Շատք տընազեն[9] և ծիծաղին։
Ցիշեմ ըզվանք Սուրբ Անճային[10],
Երկու գեղի նա ի միջի.
Լըծքեր[11] բազում կայ զօմ ըզկնի,
Պախրէ, եզներ ձի, և ջորի.

1. Զգեստեղէն։
2. Այս այլ նշանակէ զտակ կամ որ և է գլխանոց։
3. Դամասկոսի շուկայի վաճառանոցի մի նման։
4. Մետաղէ աման, խոր և տափակ, ըմպանակ, ափսէ։
5. Ճարտարութեամբ շինուած կղպանք, բանալիք։
6. Կաշի, մորթէ շինուածք։
7. Մաքաճ, Մէքաճ. արաբ. որ և է կաճ, կարա-ոփ, ծախելիք։
8. Պարս. փիշքեար, արուեստագործ։
9. Ծաղր ընել։
10. Ինչուան հիմայ շէն է և ուխտատեղի։
11. Լուծք, զոյգք եզանց և նման անասնոց՝ որով հերկեն զարտորայս։

Կովեր հորթեր, այծ ու ոչխարնի,
Մեղուի փեթակ և աղաւնի.
Աղբերակունք, կօլն[1] ի միջի.
Ի չորս բոլորն արտ և այգի:
Ի ժամանակս էր խիստ բարի
Յակոբ անուն վարդապետի,
Որ քաղաքաւ էր Չէյթունցի
Եւ առաջնորդ Թոխաթ քաղքի:
Տէր վարպետներ կայր ուստծնի[2],
Եպիսկոպոս հաբեղանի,
Սարկաւագունք և դըպըրնի,
Շատ մանկակալք և մըշակնի[3].
Երբ կանգնէին ի ժամտեղի՝
Գոռայր տաճարն նըման ամպի.
Երգ, Թագաւորք[4] ու Ալէլուքնի,
Գանձեր, Տաղեր և Մեղեդի:
Ունէր նա թեմ շատ գեղանի,
Հարիւր հազար բարով ի լի.
ԶԱրբուզ-օվայ և զՂազ-օվայ[5],
Եւ այլ գեղերըս լեռնային:
Երթանք ի թաղ Պազարձուխին[6]
Որ է աւագ եկեղեցին,
Եւ է անուն Սուրբ Սարգըսին
Արագահաս զօրականին.
Շատ քրիստոնեայք կայր յայն թաղին,
Ամենքըն ճոխ տանուտէրնի,
Կարդացողներ հասկըցողնի,
Առատաձեռըն խօճանի:

1. Թրք. կեօլ, լճակ:
2. Ուսեալ մարդիկ, գիտունք:
3. Այս տողը պէտք էր երկու տուն առաջ տանել, ըրժքերի հետ յիշել:
4. Գիշերային ժամերգութեան երգ, Թագաւոր յարութեան բառով սկսուած:
5. Թոխաթու մօտիկ վիճակք:
6. Քաղքին մէկ թաղն:

Գընանք ի Թաղն Տաշմարտիկեան[1],
Սուրբ Ստեփանոս եկեղեցի
Որ քարկոծեալ Նախավկայի,
Տեսեալ զՔրիստոս յաջմէ ծնողի։
Անտի ելեալ Ղալա մահլեան,
Սուրբ Նիկողոս եկեղեցի,
Արագահաս և օգնական՝
Իւր խնդրողաց շուտ հասանի.
Թախտա-ղալին իջանեմք մօտի
Սուրբ Սարգսի նահատակի[2],
Որդւոյ նորա Մարտիրոսի,
Զի օգնական մեզ լինիցի։
Աստի ելեալ ի Թէքրպիան
Սուրբ Ստեփանոս նոր տաճարի
Նախավկայ սարկաւագի,
Առաքելոց սպասաւորի։
Ի Սուրբ Մինաս կոզբատագիւղն[3]
Երթանք ի յուխտ արտասուելի,
Որ զմեր խնդիրքըն կատարէ
Եւ բարեխօս լիցի մեզի։
Ելեալ դիմեմք ի խաչ բաղին
Բարձրաւանդակ սուրբ խորանին,
Ճինեալ յանուն Սուրբ Պարսամայ
Հայր ճգնաւոր և անուանի։
Դիմեալ երթամք Մահմատ-էձիպ
Սուրբ Քառասնից մեծ տաճարին,
Երեք խորան կանգնեալ յանուն
Երրորդութեանն օրինակին.
Զինչ որ Թոխաթ մարդ մեռանի՝
Բերեն ի յայս եկեղեցի,
Լայն և արձակ և ապահով

1. Նշանակէ քարէ սանդուղ։
2. Երկրորդ եկեղեցի մի նուիրուած Ս. Սարգսի, որպէս և վարի յիշած միւս Ս. Ստեփանոսն։
3. Գեղեցիկ կոչումն, նուիրուած այդ սքանչելագործ Սրբոյ ըրածին համեմատ։

Պահին յետեւ սուրբ տաճարին։
Երիցաներըն Թոխաթի՝
  Ամենն ընտիր ու առաքինի,
  Գըրակարդաց ժիր և արի,
  Ամենք նըման վարդապետի.
Երեցփոխան ալվաթորնի
  Եւ տանուտէրք յայժ մըտացի.
  Խելօքներ շատ նման Խիկարի[1]
  Եւ իմաստնոյն Սողոմոնի։
Վաճառականք ճանապարհորդք
  Գնային Շիրվան և Շամախի,
  Շամ, Հալէպ ու Ըստամպօլի,
  Պուրսայ, և այլ բազում տեղի։
Երբ չարն եկաւ յանկարծակի
  Սեւ Եազըճին ի Թոխաթի՝
  Ցըրվեց զամենըն ոնց փոշի,
  Ձըգեց զամենն մի մի տեղի։
Ոմանք գնացին յԸստամպօլի,
  Ոմն ի Պուրսայ, յԱտրանայի,
  Շատք գընացին յՌումէլի,
  Ֆռանկաց տուն, Պուղտան, Լեհի։
Որպէս և ես իսկ Ստեփանոս՝
  Սահեալ անկայ մէջ Կաֆայի,
  Տընանկ պանդուխտ նըշգեհ ղարիպ,
  Կամ իբրեւ գնաւ ի մէջ ծովի։
Կաֆայ քաղաք նըման գըրաւատի
  Ի Երուսաղէմ սուրբ քաղաքի,
  Մեծ Հըռովմայ ու Ըստամպօլի,
  Շամայ, Համթայ ու Եգիպտոսի.
Ամուր պարիսպ շուրջանակի
  Բերդ մ'այլ ի մէջըն Ֆըռանկի.
  Նաւըն բերէ հազար բարի,
  Ձըկունք ելնէ ազգի ազգի։
Վանքեր բազում ու եկեղեցի.

1. Հին առակախօսի մի անուամբ՝ գիտնական կամ հանճարաւոր զրուցողք Խիկար կոչուին յարեւելս։

Հավըն չըլէ ըղլաղլընի․
Տաճարք նըման Սողոմոնի
Նա և հանգոյն Սուրբ Սիոնի։
ԶՈղբս ապացի Թոխաթ քաղքի
Ի Կաֆայու եկեղեցի,
Առ ոտըն Սուրբ Լուսաւորչի[1]
Բազմաչարչար նահատակի,
Բարձրակառոյց սուրբ խորանի
Ծովահայեաց սուրբ տաճարի․
Զոր՝ Տէր Աստուած ամենայնի՝
Թողցէ գյանցանս զաս շինողի։
Ի ժամանակս Յովաննէսի
Տեառն Աերապցի կաթուղիկոսի[2],
Ազարիին աշակերտի
Եւ Տէր Վարդպետ վերաձայնի․
Էջմիածնայ առաջնորդի
Տէր Մելքիսեդ կաթուղիկոսի,
Կարմիր գլխոյն[3] Թագաւորի
Որ Շահ–Աբպաս նա կոչի։
Ըստամպօլու պատրիարքի
Քաջ բաբունոյն Տէր Գրիգորի
Պահող հըսկող ու առաքինի,
Ճարտարախօս ի յատենի։
Թագաւորին Տաճկաց ազգի
Սուլթան Ահմատ անուանի
Որ ի Ստամպօլ բազմեալ լինի․
Խաղաղ կենայ յայամ աշխարհի։
Տաղիս երգող Ստեփանոսի
Եղբօրն իմոյ Տէր Յակոբի,
Հօրըս Պարգևի, մօրս Ճանփաշի,
Հայր մեր յերկինս, սուրբ եղիցի։

1․ Ակէ եռաքի առանքն՝ նոյն են որ յերես 583։
2․ Սոյ կաթողիկոսն։
3․ Պարսից, զոր Թուրքք այդպէս կոչեն, Գզըլպաշ, ինչպէս շատ հեղ յիշուեցաւ․ տես Յոդ․ 585։

## Բ.

### Որք ի վերայ Եւդոկիա քաղաքին՝ որ այժմ ասի Թոխաթ, զոր ունի անօրէն Տէկոր Հասան ասեն որ եկաց այրեաց և աւերեաց զաշխարհն

(ՅԱԿՈՎԲ ԵՐԷՑ ԲԱԹՈԽԿԵՆՑ[1])

Ի Թուականիս յարեթական
Հազար ու յիսուն մէկ ի լըման,
Պատիժ կըրեաց Եւդոկիայն
Վասըն մեղաց ժողովըրդեան։
Եւդոկիա դու գովական
Նըման երկրին Պաղեստինեան,
Բազում բարեօք և զանազան,
Ի քեզ բնակել շատ ոք ցանկան.
Նըման էիր դու այն երկրին՝
Որ էջ հըրջեաց Աստուածորդին,
Մեղըր և կաթն ի քէն բղխին,
Եւ բընակիչք անդորր էին։
Եւդոկիա դու ցանկալի
Համանըման Եգիպտոսի.
Գանձ և ղումաշ էր ի քեզ լի
Որպէս զաթոռ մեծ արքայի։
Վայելչագեղ է Նիստ քոյին
Ի մէջ երկու ձորամիջին,
Թիկունք տըւեալ ես դու դարին
Եւ կու հայիս յերես դաշտին։
Ի քէն բղխէ ջուր աղբերաց
Ի չորս անկիւն քո տարածեաց,
Անուշահամ ի ծարաւեաց,

1. Ուրիշ գրուածի մէջ չեմ գտած այս ողբացողին յիշատակը. գրուածն աւելի պարզ պատմական. կարգաւոր է քան Ստեփանոսինը, թէ և յետինն աւելի շատ տեղեկութիւն տայ։

Առօգանող անդաստանաց։
Եկեղեցիք ի քեզ կային,
Զարմանալի հրաշք գործէին.
Պաշտօնեայք իւր խրախանային,
Փառօք Սրբոցըն նոխային։
Ի քեզ էին ազէկ տըներ
Բարձրապարիսպ շէն պալատներ,
Նըկարագործ վերնատըներ,
Ըզբօսանօք պատուհաններ։
Այլ չորս ամրոց ի քեզ կային
Որ պէզաստանք անուանէին,
Ամենից զանձն ի հօն էին,
Հայու, Տաճկի և Հոռոմին.
Նա և շուկայք քո բարեօք լի
Գանուճանօք ազգի ազգի,
Արուեստաւորք ամեն ցեղի
Էին ուրախ և ցընծալի։
Այլ և էին ընտիր խաներ,
Գանդըխտեկոց իջեւաններ,
Որ կու գային վաճառականներ
Եւ օթէին բազում օրեր։
Գըմբեթաձեւ բաղանիքներ,
Կամարակապ եռանկիւններ,
Սալարակապ շատըրվաններ,
Ցեղք ի ցեղաց էր իւր քարեր։
Այգի դըրախտ և բուրաստան
Շատ կար ի քեզ ւ էր անըման.
Գըտուղք նոցա անուշահամ,
Եւ բուսանէր վարդ և շուշան.
Նա և բնակիչք ամենեքեան
Եւ քահանայք քո սըրբազան,
Արք և կանայք միանգամայն
Ի բարութիւն քո զուարճանան։
Քո տոլվաթվորքն և խօճանին
Փարթամ և անուանիք էին,
Մեծահամբաւ պազիրկեանին
Երախտաւորեալ զօրականացին.

Ծերք և տըղայք, կանայք, մանկունք՝
Էին ի քեզ որպէս ծաղկունք,
Պայծառ մարմնով ուրախ սրտիւք,
Բընաւ չըկայր ի քեզ աղմուկ։
Ո՜հ, որ յանկարծ եկ բարկութիւն,
Զի դու մեղար քո Աստուծոյն,
Վասն այն եղեւ մահ դառնագոյն
Որ ամեն տան կայր դիակուն։
Այնով չեղեւ քեղի խըրատ՝
Որ կենայիր մեղաց ի զատ,
Զողորմութիւն տայիր առատ
Եւ լինէիր չարեաց ազատ։
Յետոյ տիրեաց սով սարսելի
Ըզքեզ պատեաց չորեքկուսի,
Որպէս աւուրն Եղիայի,
Զըկայր ցորեան և ալիւր հացի.
Այնչափ խըստեաց սովն ահագին՝
Որ զանմաքուր պիղծն ուտէին,
Ոմանք զարիւնըն ոչխարին
Եւ կէսք ըզմիս շանց և կատուին։
Այդ այլ չեղեւ քեզ զգաստութիւն
Որ դառնայիր յարդարութիւն,
ԶՏէր շարժեցեր ի բարկութիւն՝
Որ խըստացոյց զսիրտն այն պղծոյն։
Եւդոկիա քաղաք գոված,
Ճէլալին քեզ չարիք մախաց.
Եկեալ դէմ քեզ չորեք դիհաց՝
Յանկարծակի զքեզ պաշարեաց.
Այն օրըն չար և նեղութեան
Սասանեցոյց զամենեսեան.
Լաց և հառաչ ի յողբ մըտան,
Վա՜յ կանչէին միաբերան։
Յայնժամ ըզծերսն կոտորեցին,
Զերիտասարդսն գլխատեցին,
Եւ զգեղեցիկ մանկունս քոյին
Ի ծընողացըն զատեցին։
Քաղաքացիքդ ազնըւական

Քաղանայք ու աշխարհական,
Հայ և Հոռոմ և մուսուրման
Ի սար ու ի ձորըս ցրուեցան։
Ոմանք պըրծեալ բերդըն մըտան,
Կէսք ի լերինս փախեալ թաքեան,
Ընկեցին զինչօըն զամենայն,
Հազիւ զմանկունս առեալ՝ զերծան։
Այն լուսատիպ կոյս աղջըկներն
Որ արեգակն չէին տեսեր՝
Երես ի բաց բոկ ի սարերն
Ի յընտանեացն էր մոլորեր։
Քո բնակիչք միանգամայն
Եղեն ամենըն ցիր և ցան.
Յօտար երկիր պանդըխտեցան,
Ի Ֆռանկստան և Պարսկաստան։
Զքեզ աւաղեմ հազար բերան՝
Որ այդ չարեացըդ դիպեցար.
Ի քեզ եմուտ անթիւ չատ չար,
Գող աւազակ և զենարար.
Մըտեալ ի քեզ և աւերեաց,
Ի բարութեանցդ ըզքեզ մերկեաց,
Զգանձ քո բաշխեաց իւրեան զօրաց,
Յետոյ դարձեալ հըրով այրեաց։
Ըզպըրթութիւն քո պըղծեցին,
Զեկեղեցիս կողոպտեցին,
Զըզգեստըն սուրբ կապուտ առին
Ի իգացեղոցըն ագուցին։
Խաչ և ըսկի ու Աւետարան
Յանօրինացըն գերեցան,
Գանձ, Շարակնոց, Սաղմոսարան՝
Վասըն մեղաց մեր մատնեցան.
Աղէկ տըներ քո քակեցան
Եւ չէն շուկայքըդ այրեցան.
Պէզէստէններդ աւեր դարձան
Վասըն մեղացն որ գործեցան։
Պաղչաներ քո զարմանազան
Որ մանուշակ կայր ու ըռահան,

Ծառունք ի ներս մանկանց նըման՝
Որպէս զանշէն ի բոհ[1] դարձան.
Քո փողոցներն որ խիստ շէն էր՝
Անմարդ արաւ, և բուն ճիչէր[2],
Երէվայրի մէջն արածէր.
Մարդ մըտանէր՝ կու զարհուրէր։
Թոխաթ քաղաք աւաղելի,
Քո ճոխութիւնդ յէ՞ր չերեւի.
Արդ ես եղեալ դու ամայի
Եւ նըշաւակ ամեն ազգի։
Քրիստոս որդին Հօր Միածին՝
Նորոգեսցէ դարձեալ կրկին
Ըզշինութիւն քոյոյ յարկին
Եօթնապատիկ քան զառաջին։
Հարք և եղբարք ամենեքեան,
Ի մեր մեղացն այս գործեցան,
Պարտ է ասել ըզՀայր մեղայն
Եւ պինդ պահել ըզպատուիրան։
Տէր Յակոբ քահանայն բարի
Ազնըւական և անուանի,
Վարժապետն իմ հայր հոգելի՝
Որ Այվազենց անուամբ կոչի[3],
Եւ սա ի յայն դառն ատենի

1. Զարմանք է այս յետին դարուց մէջ (սկիզբն ժէին) գտնել այս հին բառը. ի սկզբան Ս. Գրոց (Ծննդոց, Ա), ըսուածն նորաստեղծ երկրի համար, «աներևոյթ էր և անպատրաստ», մեր նախնի թարգմանիչք Ս. Հարց գրոց մէջ կոչած են թոհ և բոհ կամ թոխ և բոխ, որ հեթանոսաց Caos կոչածին յարմարի։

2. Թէ Ս. Գրոց և թէ հասարակաց սովորութիւն է աւերակ տեղեաց համար ըսել՝ թէ բու (hibou) գիշերահաւն՝ այն աւերակաց մէջ բոյն դրած՝ գիշերատեն ճուայ ճըչէ։

3. Նոյն թուի Ստեփաննոսի յիշած երեցն Զեթունցի և առաջնորդ Թոխաթու, որ պատուարժան անձն երեւի։

Գանդըխտեցաւ այս նահանգի,
Ի Զամուցան Լեհաց երկրի,
Առ դուռըն Սուրբ Աստուածածնի։
Զիս որ տըրրդալ եմ ամենի՝
Զցակոբ երէցըս Թոխաթցի,
Ի Բարոյկենց թոռանցն էի
Նշդեհ հոգով ի տար երկրի.
Նայ Տէր Յակոբ սուրբ քահանայն՝
Բըռնադատեաց զիս զանարժան՝
Որ այսքան բանս շարադրեցան,
Անգէտ մըտացս ի կարգ անկան։
Բայց աղաչեմ զձեզ միաբան՝
Ըզմեզ յիշել ի ժամ հարցման.
Եւ դուք յիշիք յարքայութեան.
Եւ Քրիստոսի փառք յաւիտեան։

---

## ՑԶԴ

### ԿԱՐԱՊԵՏ ԶԱԳ ՎԱՐԴԱՊԵՏ

### (ՑԻՇԱՏԱԿԱՐԱՆ)

Կարապետ վարդապետն որ մականուն Զագ կոչի, որ եւ յանապատն Վարագայ, յամս եսթն բազում ճգնութիւնս արար։ Եկն խզըլպաշն[1] և զՎան գերի արար. ԿՌ (60,000) հոգի գերի վարեցան, ոմանք սպանուան, ոմանք սրախողխող եղեն. Կարապետ Վարդապետի եղբօրորդիքն գերի տարանինքն այլ էջ ի լեռնէն իւր կամաւն, և գնաց հետ գերելոց վասն ժողովրդեանն և եղբօրորդւոյ իւրոյ, զի ազատեսցէ և մխիթարէ զժողովուրդն, նման ըստ Երեմիայի մարգարէին՝ որ ասէ. Որպէս հովիւ զկնի հօտին, զի մի անգութ մոլորեսցին և գազա-

1. Պարսից Շահ-Աբասի արշաւանքն։

վէժ հոգով լիցին։ Գնաց Զագ վարդապետն ի Ճողայ. զՃուղայ այլ ի տեղէն հանին տարան մինչեւ Սպահան. և վարդապետն էր ընդ նոսա։ Նոր Ճողայ շինեցին, եկեղեցի շինեցին Սպահան, և զվարդապետն արգելեցին. բայց ոչ կամէր բնակիլ վարդապետն ի տեղին, գալով ի վանքն յանապատն իւր ի Վարագ. բայց Ճուղացիք ոչ թողին. կամքն Աստուծոյ այսպէս էր, որ այն տեղն վախճանելոց էր. և թաղեցաւ ի Սպահան։ Երկուամ էանց ի վերայ՝ բազում բժշկութիւն իրաց[1], մինչեւ այլազգիք գային ի գերեզմանէն հող տանէին։ Բայց երկիրն Վանայ բազում տրտմութիւն կրեցին ի վախճանելն վարդապետին ի Սպահան. մեծ աշակերտն իւր վարդապետն Մարտիրոս հիւանդացաւ ի տրտմութենէն ի Վան՝ վասն վարդապետին իւրոյ. ել և գնաց հիւանդոտ ի գերեզմանն վարդապետին զի բերցէ զմարմին վարդապետին. և ոչ գոյր հնար, զի պահապան կայր գերեզմանին. տարի մի կացաւ ի Սպահան, յետոյ գողացաւ զմարմինն ի սուրբ Յարութեան գիշերին ի մեծ Զատկին, բազում չարչարանօք, և եբեր ի Վարագ, հանգոյց ընդ այլ վարդապետս։

## Յիշատակարան[2].

Ընդ առաջին աշխատաւորացն յիշեալքն զվերջին ստացող կտակիս զՄեսրոպ Կաֆայեցի՝ որ ստացաւ զսա ինձ ի յիշատակ բարի. զի զսա ընկալեալ էր Յակոբ վարդապետն Առնչեցի ի Պօղոս վարդապետէ. և իմ գնացեալ ՌԾԵ թվին ի սուրբ Էջմիածինն ի Վաղարշապատ, և անտի Երեւան, և անտի Առինճք, և անդ շնորհեաց ինձ պակասաւո-

1. Արար, ըրաւ։

2. Ուրիշ գրոց (Յովհ. Եզնկացւոյ Քերականութեան) օրինակող մի, յամի 1608, գրած է այս հետեւեալ յիշատակարանս։

րիս՝ վերոյասացեալ Յակոբ վարդապետն և ճգնազգեաց Զագ վարդապետի աշակերտն, Պօղոս վարդապետն, որոյ յիշատակ նոցին օրհնութեամբ եղիցի. և որ յիշէ յիշեալ լիցի ի Քրիստոս. ամէն։

---

## ՃՂԵ

## ՏԱՐԱԳՐՈՒԹԻՒՆ ՋՈՒՂԱՅԵՑԻՈՑ Ի ՍՊԱՀԱՆ

(ԱՌԱՔԵԼ Ե.)

Ժամ է այսուհետեւ պատմել մեզ վասն մեծի և անուանւոյ գիւղաքաղաքին Ջուղայոյ[1], զի ընդնախկին ամբարեալ դառնութեան թոյնսն և զչարակնութիւնն՝ որ վասն Ջուղայու՝ քողաբորբեալ ունէր ի սրտի իւրում շահն[2], ատտանօր պատճառ գտեալ արտայայտեալ երեւեցոյց. քանզի բերեալ յինքեան զխորհուրդն նախահաւոյն իւրոյ Սաբիւռսի[3]. վասն զի որպէս պատմեցաք ի նախկին ճառին՝ թէ կարգեաց շահն ի զօրացն Պարսից՝ շուեցուցանողս ազգին Հայոց, և առաքեաց յամենայն երկիրն Հայոց, որք հանին և շուեցուցին. սոյնպէս և արար Ջուղայու։

Քանզի կոչեաց առաջի իւր զՀանեիս թումանազղուղի բէկն, որոյ վասն յառաջագոյն պատմեցաք,

1. Հին քաղաքաւան Երասխայ եզերքում, Արարատ և Սիւնական նահանգաց միջոց. երբ ի սկիզբն ԺԷ դարու բնակիչքն վտարեցան ի Սպահան, իրենց հայրենեաց անուամբ շինեցին հօն աւան մի և կոչեցին Նոր Ջուղա, որով իրենց բնիկն այլ կոչեցաւ և կոչուի հիմայ Հին Ջուղա։

2. Շահ-Աբաս։

3. Շապուհ Սասանեան, որ զԱրշակ Բ թագաւոր Հայոց գերի տարաւ ի Տիզբոն։

թէ եղբայր է Արաքելին, և տուեալ էր սա պատանդ յազգէն Վրաց՝ թագաւորացն Պարսից, որ առ նոսին սնեալ՝ ուրացեալ զհաւատն։ Եւ այժմ շահն կոչեցեալ զայս Թահմազղուլիս առաջի իւր, գրեաց նմա (հրովարտակ) հրամանի և ետ ցնա, և հրամայեաց նմա գնալ ի Ջուղայ և միահաղոյն քշել զնոսա, և ոչ թողուլ ի նա բնակիչ և ոչ զմի։ Եւ Թահմազղուլին ելեալ յերեսաց արքայի, արագընթաց արշաւմամբ շեշտակի աճապարեալ ի Ջուղայ, և կոչեալ զաւագանիսն և մեծաւ ցասմամբ սպառնացեալ նոցա, սարսափելի և տաժանելի մահուամբ կորուսանել զնոսա՝ թէ ո՛չ առ ժամայն և վաղվաղակի զհրամանս թագաւորին կատարեսցեն։ Այլ և զնոյնս հրամանաց թագաւորին հանեալ՝ առաջի ամենայն ժողովրդեանն ընթերցան. յորում գրեալ էր, թէ հրաման է ի թագաւորութենէս մերմէ ձեզ Ջուղայեցւոցդ, ելանել ի տեղեաց ձերոց՝ և գնալ ի Պարսկաստան աշխարհ։

Եւ յետ այնորիկ հրամայեաց Թահմազղուլի բէկն ելանել մունետիկ՝ որ է ջառչի[1], և կանչել ի մէջ շինին Ջուղայու յամենայն տեղիս. Հրաման է ի մեծ թագաւորէն Շահաբասայ՝ ձեզ ամենայն բնակչացդ Ջուղայոյ, ելանել ի բնակութենէ ձերմէ և գնալ յաշխարհն Պարսից. արդ, մինչեւ ցերիս աւուրս ձեզ ներումն լիցի՝ որ ելանէք, և ով ոք յետ երից աւուրցն աստ գտցի, զինքն սպանանեն և զընտանիս և զինչս նորա գերեն. այլ և թէ ոք փախիցէ կամ թաքիցէ, որ ոք զայնպիսին ցուցանիցէ, ապրանքն նորա ցուցողին լիցի և գլուխն՝ թագաւորին։ Եւ զայս հրաման միշտ հրատարակեալ գոչէր մունետիկն և ահացուցանէր զամենեսեան. և յահէ սպառնալեաց մահուան՝ ոչինչ դանդաղեցին Ջուղայեցիքն, այլ առ ժամայն կատարեցաւ առ նոսա հրաման թագաւորին, և պատրաստեցան յելանել։ Բայց վասն փութով և յանկար-

1. Քաղքին մէջ մեծ ձայնով կանչելով լուր տուող։

ծակի ելանելոյն՝ ոչ գտանէին գրաստ և բեռնակիր անասուն, յորժ վտանգէին ժողովուրդքն. զի ինչք և ստացուածք նոցա ցրուեալ և անկեալ կայր առաջի իւրեանց, և ոչ կարէին բառնալ տանիլ առ ի չգոյէ գրաստուց: Եւ զոր ինչ կարացին բառնալ՝ բարձին, և զոր ոչ կարացին բառնալ՝ իւրաքանչիւր ոք պահուստ և թաքուստ արարեալ թաղեցին: Բայց ընչից նոցա յոլովքն ի կորուստ և յափշտակութիւն գնաց. քանզի ո՛չ միայն այն զօրքն՝ որ ընդ Թահմազղուլի բէկին էին եկեալ՝ նոքա միայն հարկէին զժողովուրդն վասն փութով ելանելոյ, այլ և բազումք ի մահմէտականաց՝ որք ի շրջակայ գեղօրէիցն գային, և որք ի զօրացն Պարսից՝ որք ի բուն բանակէն իւրեանց յառաջեալ գային և խառնեալ լինէին ընդ զօրացն Թահմազղուլի բէկին, և օրաւուր յաւելանային Պարսիկքն ի մէջ Ջուղայու: Եւ գումարեալ մահմէտականացն ի միասին, էր որ տասն, էր որ քսան, էր որ երեսուն մտանէին ի տունս քրիստոնէիցն, զնոսա ստիպէին ելանել և գնալ. հարկանէին սաստիկ հարուածով, այլ և յընչիցն և ի կարասեաց ինքեանք յափշտակէին, որոց միտք իւրեանց հաւանէին՝ և զայլսն ցրուէին; որ այլք յափշտակէին, և այսպէս յափշտակութեամբ և կորուստ էր ընչից քրիստոնէից:

Եւ ի դառնագոյն չարեացն Պարսից՝ զոր ածէին ի վերայ ժողովրդեանն, հարկանել և կեղեքել և հարստահարել, անճարակ լեալ ամենայն բնակչացն Ջուղայու, ակամայ կամօք իւրաքանչիւր ոք ելին ի գնալ: Եւ թէպէտ կարօղքն մարմնով և կամ որք ունէին գոյք ստացուածոց՝ նոքօք հանդերձէին ի գնալ, բայց որք էին տկարք՝ այսինքն տնանկք և այրիք և ծերք՝ ո՛չ կարէին ի գնալ, աղաղակ բարձեալ աղիողորմ ձայնիւ արտասուօք և աշխարական[1] կականիւ առ հասարակ ողբային. ոմանք զտունս և զյարկս, ոմանք զբնակութիւնս

1. Աշխարելի լալ ողբալ նշանակէ:

և զհայրենիս, ոմանք զեկեղեցիսն, ոմանք զնախնի հարց գերեզմանս և զդամբանս, և ոմանք զանկարողութիւն մարմնոյ առ ի գնալ, լային և ողբային և յորդ արտօսր յաչաց հեղուին։ Ոչ ոք էր որ ողորմէր նոցա և օգնէր, քանզի փակեալ էր դուռն ողորմութեան գթածին Աստուծոյ ընդդէմ նոցա։

Եւ զբանալի եկեղեցւոյն՝ զոր Վերին Նկարն ասէին՝ առին քահանայքն, և յորժամ ելին ընդ դուռն պարսպին Ջուղայու, և ի հասանելն առաջի եկեղեցւոյն՝ որ անուամբ Աստուածածնին կայ շինեալ արտաքոյ Ջուղայու, իբրև հայեցան և տեսին զԱստուածածին եկեղեցին, և բազում քրիստոնեայք եկեալ խառնեցան ընդ քահանայսն. որ և նոքա ևս բերին զբանալիս տանց իւրեանց, և ի միասին զաղաղակ բարձին աղիողորմ ձայնիւ, փղձկեալ սրտիւ և արտասուալի աչօք գոչային և լային, և աղաղակելով կանչէին ընդդէմ Աստուածածնին, և ասէին. «Ո՛վ Սուրբ Աստուածածին, այսոքիկ բանալիք սրբոյ եկեղեցւոյ մերոյ՝ և տանց մերոց՝ քեզ յանձն լիցի. և դու դարձուսցես զմեզ ի տեղիս մեր յօտար երկրէն՝ ուր տանին[1]»։ Եւ զայս ասացեալ արկին զբանալիսն ի գետն, և մորմոքելով յոլով ժամս ձայն բարձեալ լացին. և ապա գնացին։

Եւ այսպէս ժողովուրդն Ջուղայու հարուստք և չքաւորք՝ ելին ի Ջուղայոյ. և գնացին յեզր գետոյն Երասխայ առ ի անցանել զգետն. և անդէն բանակեալ զետեղեցան մինչև ամենայն ժողովուրդքն ելին ի գեղջէն՝ և ժողովեցան ի ժողովատեղն յեզր գետոյն։ Եւ յորժամ սպառեցաւ գալն ժողովրդեան, յայնժամ հրաման եղև ի Պարսիցն առ ժողովուրդն, թէ անցէք զգետն։ Եւ յաւուրս յայսոսիկ թագաւորն Շահ-Աբաս հասեալ էր

1. Արդարև սրտառուչ՝ միանգամայն և վսեմ մտածութիւն և կիրք. հին Երուսաղեմի գերութիւնն և Երեմիայի ողբը լսեցընէ։

ի Ջուղայ և բանակեալ յափն գետոյն Երասխայ. և յայնմ ժամու իբր թէ առ ի յողորմել, և յօգնել ժողովրդեանն Ջուղայեցւոց, թագաւորն Շահաբաս հրամայեաց զօրապետաց իւրոց՝ զի և նոքա հրամայեսցեն իւրեանց զօրացն՝ զի օգնեսցեն ժողովրդեանն, և անցուսցեն յայնկոյս գետոյն՝ երկվարօք և ուղտուք: Եւ ի յանցուցանելն հեծելոցն Պարսից զժողովուրդսն քրիստոնէից, որոց և հաւանէին սիրտք իւրեանց, եթէ կանանց, եթէ աղջկանց՝ եթէ տղայոց, եթէ ապրանաց, որոց և հաւանէին՝ առեալ գնային ուր և կամէին, և տեարք նոցա ոչ կարէին գնալ զկնի նոցա, և նոքա գնային ի կորուստ և ի գերութիւն: Եւ որք տկարք էին՝ թափեալք լինէին ի ջուրն և ծփալով և ճչալով գնային ընդ երեսս ջրոյն. և յոլովք հեղձնուին ի ջուրն և մեռանէին: Եւ յերկու կողմէ յեզերս գետոյն ցրուեալք էին գէչք և դիք մարդկան խեղդելոց ի ջրոյն: Եւ այսպէս տառապանօք անցին ժողովուրդքն զգետն Երասխ. և սակաւ ինչ յառաջ գնացեալ բանակեցան, մինչեւ ամենեքեան ժողովեցան ի բանակատեղն:

Եւ ի նմին ի տագնապելի աւուրսն՝ հանճարեղն ի խորհուրդս չարեաց՝ Շահ-Աբաս, նորագոյն չարիս խորհեալ վասն Ջուղայու, կոչեաց առաջի իւր ըզնոյն Հանիս Թահմազղուլի բէկն՝ և հարցանէր, թէ յետ հանելոյ քո զբնակիչսն Ջուղայու՝ այրեցե՞ր զշինուածս նորա. իբրեւ պատասխանեալ եղեւ ի նմանէ՝ թէ ո՛չ էր հրամայեալ մեզ ի թագաւորէն՝ վասն որոյ և ո՛չ այրեցաք. և անդէն յետ բազում մեղադրանաց՝ հրամայեաց իսկոյն դառնալ յոլովք զօրօվք և այրել զամենայն շինուածս զտանց և զայլոց յարկաց: Որոյ չիշտակի հասեալ ի Ջուղայ բազում հրոսակօք, և առեալ ի ձեռս իւրեանց ջահս լուցեալս և ղամբարս եղեգանց, և նաւթիւ կազմեալ լապտերս, և սկսան այրել և հրդեհել, և քանդել զառաստաղս, և տապալել զշինուածս որմոց: Եւ ո՛չ բնաւ թողին յարկ ծածկեալ կամ չէն,

այլ յաւեր և յապականութիւն դարձուցին։ Իբրև կատարեցին զչարեաց գործս իւրեանց, դարձան և եկին ի բուն բանակն, և յանդիման եղեալ արքային պատմեցին՝ թէ եղեւ, տէր, զոր հրամայեցեր։

Այնուհետեւ հրամայեաց Շահն Թահմազղուլի բէկին, թէ մի եւս թողուցուս զժողովուրդն Ջուղայու Նստիլ, այլ վարեալ և տարեալ հասուսցես ի Թարվէզ։ Եւ նորա եկեալ իսկոյն չուեցոյց զժողովուրդն յետեղէն (ի տեղւոջէն) յորում բնակեալ կային։ Եւ ի յորն և ի ժամն յորում բանայր իւրաքանչիւր ոք զբեռն իւր, երկինք և օդք իւր ի միասին խռովեցան ի վերայ ժողովրդեան քրիստոնէից. քանզի խառնակեցան ամպք և խռովեցան օդք և մթացան երկինք, հնչեցին հողմք ուժգնակի, փայլատակեաց կայծակն մեծաւ ճայթմամբ, տեղացին ձիւնախառն անձրեւք. և հարեալ տանջեցին զքրիստոնեայսն։ Եւ որք էին կարողք մարմնով կամ գրաստիւ՝ գնացին, իսկ տկարքն յետ աւուրց ապա եկեալ հասանէին՝ բազում տառապանօք և չարակրութեամբ. և բազում վշտիւք և տաժանմամբ բերեալ հասուցին ի քաղաքն Թարվէզ։

Եւ անդէն ի Թարվէզ չարք ոմանք ի չար գանձուց որոց իւրեանց խօսեցան զբանս չարս վասն Ջուղայու ընդ չարին Թահմազղուլի բէկին. վասն զի յիշեցին թէ տակաւին կան ի Ջուղայ մնացեալ ժողովուրդք, զի յոլովք ոմանք փախստականք եղեալք ի լերինս և ի ձորս, և այլք պատճառեալք զտկարութիւն, և ոմանք զծերութիւն, ոմանք զաղքատութիւն, և այլք այլ ինչ պատճառանօք ո՛չ եկին՝ այլ անդէն մնացին, և այժմ կան ի Ջուղայ։ Եւ ի լսելն զայս Թահմազղուլին՝ զայրացաւ յոյժ սաստիկ բարկութեամբ, բայց ոչ կարէր չար ինչ առնել՝ զի ո՛չ էր ձեռնհաս. և թողին մնալ մինչ ի գարունն։ Եւ ի սկսանիլ գարնանն՝ պատրաստեաց զայր ոմն երեւելի յիւրոցն արանց՝ որում անուն կոչէին Համդամ աղայ, յոլով զօրօք, այլ և զհրովարտակ հրամանի առեալ ի թագաւո-

բէն եւ ի ձեռս նորա և առաքեաց ի Ջուղայ. բերել զմնացեալ ժողովուրդն: Եւ եկեալ Համդամադայն ընդ իւր զօրօք ի Ջուղայ՝ կոչեաց զմնացեալ ժողովուրդն առաջի իւր, և խօսեցաւ ընդ նոսա սաստիւ և բռնութեամբ, եթէ հնազանդեալ անսպայք հրամանաց թագաւորին՝ ելէք ձերովք ընտանեօք և ստացուածովք, զի ի միասին երթիցուք, և թէ ոչ կամիք գալ՝ զարուս և զկարօղս ձեր սրով կոտորեմք և զինչս և զընտանիս ձեր ի գերութիւն առնումք: Այլ և գնացեալ ի լերինս և ի ձորս ի տեղիս փախստէիցն՝ գտին զփախուցեալսն, և բերին ի Ջուղայ. և Ցինանց երկրորդում կիրակէի երկուշաբաթ օրն, չուեցուցին ի Ջուղայոյ՝ և ուղեւորեցին դէպ ի Թարվէզ: Եւ անցուցեալ զայն ու բերեալ հասուցին առաջին բանակին ժողովրդեանն ի քաղաքն Ղազբին. և ընդ նոսա զետեղեցուցին անդէն ի քաղաքին Ղազբինու և ի գեղօրայս նորա. վասն ցրտոյ ձմերան, յորոյ պատճառէ ոչ կարէին գնալ: Եւ ի չնչել հողմոյն գարնայնոյ վերստին վարեցին զնոսա մինչեւ տարեալ հասուցին ի քաղաքն Սպահան, և անդէն բնակեցուցին զնոսա, տուեալ նոցա տեղի շինութեան. որք շինեցին յարկս և բնակութիւնս ինքեանց, հրաշալի յօրինուածովք, կամարակապ փողոցօք, թեւաւոր ապարանօք և ամարասուն հովանոցօք, բարձրաբերձ և արքայակերպ շինուածօք, զարդարեալ և յօրինեալ ի ծաղիկս ոսկւոյ և լաջվարդի և պէս պէս երանգաց ակնախտիտ տեսողաց: Նոյնպէս շինեցին և զեկեղեցիսն հրաշազան յօրինուածովք, ըստ արժանւոյն փառացն Աստուծոյ, երկնանմանս խորանօք, և գերամբարձ կաթուղիկէիւք. բովանդակ ծաղկեալ պէս պէս երանգովք, ոսկւով և լաջվարդով, տնօրինականօք Տեառն և պատկերովք Սրբոց. և ի գլուխ կաթուղիկէից ամենայն եկեղեցեաց՝ կառուցեալ զնշան սրբոյ խաչին նոցին եկեղեցեացն, ի պսակ և ի պարծանս քրիստոնէից:

# ՅՂՁ

## ՈՂԲՔ Ի ՋՈՒՂԱ[1]

Ողբամք երկիրս Արարատեան
  Գետովք և գաւառք աւեր դարձան,
  Եկեղեցիք խաւարեցան,
  Ժամատեղաց ձայնքըն հատան։
Ջուղա քաղաքն ազնիւ շինած,
  Քօշք և սարայքըն բարձրացած
  Եւ գոյնըզգոյն ծաղկեցուցած,
  Նա հիացումն էր տեսողաց.
Եօթն ժամատեղ էր հաստատած,
  Եկեղեցիքըն զարդարած,
  Բուրվառանին ոսկեջըրած,
  Ծածկոցըներն ոսկեթեղած։
Աւետարանքն և Սուրբ Խաչեր
  Անգին ակամբք էր զարդարած,
  Սեղանըներն և սրբութիւն
  Ուրախութիւն էր նայողաց։
Ժամատեղին խափանեցաւ,
  Պաշտօնէից ձայնըն հատաւ,

1. Հեղինակն որ իր անունը յայտնէ ի վերջ Ողբոցս, իր հայրենի գեղեցիկ երկրին մէկ կողմի եպիսկոպոս եղած է, ինչպէս գրուի Յայսմաւուրքի մի Յիշատակարանին մէջ, յամի 1610, և առաջնորդ վանաց Խորոտկան Ս. Աստուածածնի. յիշուին և ծնողքն Խաչիկ և Փիանէ։ Շատ տարի առաջ այլ (1587) Աւետարան մի օրինակեր է, եպիսկոպոս ըլլալով, բայց յօտար երկրի՝ «ի Խնուս, ի գիւղս որ կոչի Քէշիշ » ապան, ընդ հովանեաւ Ս. Սարգսի... վաղուց հետէ » գիր չէի գրել, և էի տեղեացս խարիպ, և հոգս շատ » ունէի »։ Այս Ողբէն առաջ այլ նոյնպէս ոտանաւոր՝ աւելի պատմական կերպով գրած է այս Շահ-Աբասայ արշաւանքն և Ջուղայի արկածը։

Լոյսն և կանթեղքն խաւարեցաւ,
Պայծառութիւնն աւեր դարձաւ։
Ջուղա քաղաքն և Երևան
Շօշ[1] քաղաքին բընակեցան.
Ի յայն, տեղւոյն հաստատեցան.
Յետ դառնալոյ չըկայր հրաման։
Բոլոր երկիրըս ամենայն
Մինչ Կաղզուան և Շիրակվան,
Ձորն Եղեգեաց և Նախչևան[2]
Զամենեսեան սուրգուն[3] տարան.
Եկըն հարաւ ի միւս ամին
Դառնալ եղեւ Շահապասին,
Եկեալ իջան Թաւրէզ քաղքին,
Պահպանութեան իւրոյ երկրին։
Դարձեալ եկըն Ջըղալի որդին[4]
Ի սահմանս Թավրէզ քաղքին.
Հանդէպ միմեանց իջեալ էին,
Դիպող ժամու կռուել կամէին։
Այնչափ շատ էր զօրքըն Նորին
Հըպարտացեալք պարծենային
Թէ ըմբռնեմք շէխի[5] որդին
Կապեալ բերեմ առաջ քոյին։
Ասեն. Յորժամ Շահըն առնեմք
Եւ իւր հեծեալքըն կոտորեմք,
Արտաւիլ քաղաքն իջանեմք
Մեծ շըխերուն շիրիմքն այրեմք։

1. Որ է Շօշ, նոյն և Ասպահան մայրաքաղաք, որոյ դիմաց շինեցին Հայք զՆոր Ջուղա։

2. Առջի երկուքն Այրարատայ գաւառք են, վերջի երկուքն՝ Սիւնեաց երկրի։

3. Թուրք բառ, աքսորել քշել։

4. Կամ Ջղալ-օղլի, Օսմանեանց բանակին զօրագլուխն։

5. Շահ-Աբասն, որոյ ցեղին նախահայրն էր Հայտար՝ Արտաւիլ քաղաքի շէյխն, որոյ որդին Խոճայէլ սիրեց Դավրիժու և եղաւ առաջին Շահ Պարսից. ասոր որդւոյ՝ Թահմազի՝ թոռն է Շահ-Աբաս։

Սըրտապընտեալ Շահապատին՝
Անունն Աստուծոյ յիշեցին,
Հետ ի նորա կըռիւ մըտին,
Յաղթեալ անհուն զօրաց նորին.
Հըզօր ազգըն տըկարացան,
Թաչար[1] ազգին կոխան եղան,
Բազումք ձեռօք սոցա մեռան
Ի այլք գիշերի փախուստ առան:
Վըրանքն ամեն Թըրքաց Թողին
Մալ և ըզձահս ոչ նայեցին.
Որպէս առիւծ գոչմամբ եկին,
Իբրեւ զաղուէս յետըս դարձին:
Յորժամ յաղթեաց մեծ փաշային
Ինկեալ վերայ Գանձու քաղքին[2],
Նըստան բոլոր շուրջ ըզբերդին
Ջորս ամիս, ապա առին:
Սուր ի վերայ նոցա եդին,
Ումար ազգըն կոտորէին,
Քըսան հազար այլ աւելին
Որք բնակել էին ի մէջ բերդին.
Անտի գընաց յերկիրն Շարվան[3]
Եւ Շամախու բերդն այլ առան,
Եւ կոտորեաց զամենեսեան
Այլ աւելի քան ըզԳանջայն:
Վրաց տան բերդերքն որ կային
Թումանիս, Ցփխիս և Գօրին,
Ելին յառաջ Շահապատին,
Բերդորայքն դատարկ Թողին:
Օմարու ազգն[4] յերկրէս հատաւ
Եւ Ղըզըլպաշն հաստատեցաւ.

1. Ցեղ մի Պարսից:
2. Հին Գանձակ քաղաքն Աղուանից, Կէնճէ. հիմայ Ելիսաբեթուպոլիս:
3. Աղուանից սահմանակից. Շիրվան կոչուի առ-վարուքս, և երագլխաւոր քաղաքն է Շամախի:
4. Օսմանեանց նախահօր անուամբ կոչէ:

Իւր հայրենի երկիրն առաւ
Ուրախութեամբ յետըս դարձաւ։
Ամեն երկրի խաներ նըստան
Եւ շինութեան սկիզբն արարան,
Շատ եկեղեցիք շինեցան,
Բազմաց խորհուրդն կատարեցան։
Մէկն Սղարաքս է բազմաց[1],
Իւր խաչին մօտ վիմէն փորեաց
Ժամատեղով խորան շինեաց,
Ներքեւ վիմին գուգ ջըրաղաց։
Երբ Օմարաց ազգըն հատան
Սօքա Ջաֆախ գեղըն թողան,
Մեծ Ղարամուրատըն դարձան
Ներքի շէնըն մընաց ունայն։
Դարձեալ պատմեմք և այլ չարիս
Որ եղեւ այսմ ժամանակիս,
Հազար յիսուն և հինգ թըւիս
Սաստկացաւ սով վերայ երկրիս,
Բազումք սովու մեռանէին.
Շատ ոք զորդիսըն ծախէին,
Ոմանք մարդոյ միս ուտէին
Եւ այլք դըռնէ դուռ շրջէին։
Մարդակեր գազանքըն շատացան
Բազում տեղիս մարդիկ կերան.
Այսչափ չարիքս առ մեզ հասան
Ոչ եղեւ դարձ ազգի մարդկան։
Երկու ամ բոլոր սով տեսաք,
Օտար երկիր վըտարեցաք.
Ոչ մեր մեղացըն զըղջացաք
Եւ ոչ չարեաց դադարեցաք։
Վա՜յ քեզ Դաւիթ Գեղամեցի
Վասըն քո մեղացն ամենայնի։

1. Թերեւս ազգական Դաւթի, բնակիչ Ղարամուրատ գիւղի, ուր և նա բնակէր. յամի 1609 աւետարան մի ազատեր գներ է յայլազգեաց Աղաբաբէն և գրեր է յիշատակարան։

Միթէ Քրիստոս քեզ ողորմի,
Մարդասէր կամքն քեզ ազատի։
Ով որ ըզգիրս ընթեռնէ
Եւ պատմութիւնըս տեսանէ,
Մեղացս իմ թողութիւն տայ,
Աստուած իւրեան մեղքըն ջնջէ։

---

## ՅՂԷ

## ՆՈՐՈԳՈՒԹԻՒՆ ԱՆԱՊԱՏԱԿԱՆ ԿԵՆԱՑ Ի ՀԱՅՍ

(ԱՌԱՔԵԼ. ԻԱ)

Սարգիս եպիսկոպոս էր յաշխարհէն Արարատեան, ի գաւառէն Ամբերդոյ[1], որ է Արագածոտն, ի գեղջէն որ ասի Ցարենի, որ է մերձ ի գիւղն Կարբի[2], և այժմ է աւերակ և անմարդաբնակ, բայց ի ժամանակս հարց մերոց էր շէն գիւղս այս Ցարենի, ուստի էր այս Սարգիս եպիսկոպոս. որոյ եկեալ բնակեցաւ ի մեծափառ ուխտն Սաղմոսավանից[3], լեալ ոպասաւոր բազմահաւաք սրբութեանցն՝ որք կան անդր, որ և զկնի ամաց ինչ եղեւ առաջնորդ նոյն վանացն։

Բայց գոյր մերձ այս վանիցս գիւղ մի փոքրիկ, ուստի այր ոմն քրիստոնեայ՝ որսորդ գոլով՝ շրջէր աւուրց յաւուրս ի լերինս որսալ երէ վայրիս։ Եւ եղեւ յաւուր միում գնալ առնս այսմիկ ի մեծ լեառն Արագած վասն որսոյ, և ի շրջելն իւրում ի գլուխս լերինն՝ պատահեցաւ առն ումեմն ճգնաւորի, որ ի խոռոչս վիմացն նստեալ կայր գճկեալ,

1. Ուղղագոյն ըսելու էր Անբերդ։
2. Երեւանայ վիճակին գլխաւոր գիւղից մէկն։
3. Այրարատայ երեւելի հին վանօրէից մէկն, Հիմայ ամայի։ Տես Այրարատ, երես 161–5։

ունելով ի գլուխն վեղար և զիւրեւ փիլոն. և մօտ եկեալ առ ի ստուգիւ գիտել թէ զի՞նչ իցէ այն, ետես զի մարդ էր հաւաստեաւ, և մեռեալ էր, և այնպիսի նստեալ կայր, և մարմինն անապական: Եւ ի տեսլենէս յայսմանէ անկաւ երկիւղ և սոսկումն ի վերայ ամ̃նս այս որսորդի, և ոչ եւս կարաց ժուժել ի տեղին յայն, այլ դարձ արարեալ անտի եկն ի տուն իւր: Եւ եկեալ ի Սաղմոսավանք՝ պատմեաց ամենեցուն զննջումն ճգնաւորին, որ պատահեցաւ նմա ի գլուխ լերինն:

Իբրեւ լուաւ զայս Սարգիս եպիսկոպոսն, և ստուգեալ վերահասու եղեւ՝ թէ յորում տեղւոջ իցէ: Եւ յաւուր միում յանձնեալ զանձն իւր Աստուծոյ՝ Սարգիս եպիսկոպոսն՝ յուսացեալ յառաջնորդութիւնն Աստուծոյ, ելեալ գնաց ի լեառն Արագած, և շրջեալ այսր և անդր յաւուրս երիս, եգիտ զվախճանեալ ճգնաւորն, և բազում փափագանօք և ջերմեռանդն սիրով համբուրէր զձեռս և զոտս նորա. և յետ հեղման բազում արտասուաց՝ ամփոփեալ թաղեաց զնա նորին զգեստիւն, դարձաւ և եկն ի վանքն:

Եւ եղեւ այս պատճառ զղջման Սարգիս եպիսկոպոսին և հրաժարելոյ յաշխարհէս. քանզի [illegible]ողտըլկալի թուեցաւ յախորժակս սրտի նորա պատիր և ընդունայն, խենէշ և խաբուսիկ վայելչութիւն աշխարհիս այսորիկ: Եւ յայնմ օրէ և առ յապայ խնդրէր Սարգիս եպիսկոպոս հեռանալ յաշխարհէ, և հետեւել լուսաշաւիղ երկնաշու ճանապարհին առաքինական վարուց: Բայց ոչ գոյր ի ժամանակին յայնմիկ անապատ և կամ գիտող կարգաց կրօնաւորական վարուց. վասն բազում հինից թըշնամեաց եկելոց ի վերայ վրդովմանց՝ և աւերանաց աշխարհիս Հայոց, ամենեւին բնաջինջ եղեալ էր և բարձեալ նշոյլ և նշմարան առաքինի գործոց՝ և բարի կարգաց յաշխարհէս Հայոց: Եւ մինչ կայր ի մէջ յայսմ վարանմանս Սարգիս եպիսկոպոսն, եդ ի մտի իւրում գնալ ի սուրբ քաղաքն Երու-

սաղէմ յերկրպագութիւն տնօրինականաց Քրիստոսի Աստուծոյ մերոյ. և ելեալ գնաց յԵրուսաղէմ։

Դարձեալ ի սոյն ժամանակի գտեալ եղեւ միւս եւս այլ ոմն այր որում անունն էր Տէր Կիրակոս, որ կամօք և յօժարութեամբ նման զոյր կամաց և յօժարութեան Սարգիս եպիսկոպոսին. և էր Տէր Կիրակոսս այս ի քաղաքէն Տրապիզոնայ, մտեալ ի կարգ աշխարհի, բայց ոչ վայելեալ, քանզի զկնի սակաւ աւուր վախճանեալ ամուսնոյ նորա, և ինքն մենացեալ իբրեւ զտատրակ ողջախոհ, և հանապազօր խոկայր ի պատուիրանս Աստուծոյ, և անձանձիր ընթեռնոյր զգիրս աստուածայինս և ի միտ առնոյր զպատգամս նոցա, և ջանիւք և երկօք կրթէր զանձն ըստ հրամանի գրոցն կենցաղավարիլ։ Ի սոյն ժամանակի յայսպիսում խորհրդեան գոլով տէր Կիրակոսիս՝ լուաւ յոմանց վասն Սարգիս եպիսկոպոսի, թէ՝ և նա զղջացեալ է յաշխարհէ, և կամի հրաժարել և հետեւել առաքինի վարուց. վասն որոյ Տէր Կիրակոսն ելեալ ի Տրապիզոնայ և եկն յերկիրն Արարատու՝ ի Սաղմոսավանք՝ առ ի միաբանիլ ընդ Սարգիս եպիսկոպոսին. և ոչ կարաց տեսանել զնա, զի գնացեալ էր յԵրուսաղէմ։ Վասն որոյ և սա եդ ի մտի իւրում գնալ յԵրուսաղէմ. և դարձեալ ի Սաղմոսավանից եկն ի Տրապիզոն՝ վաճառեաց զամենայն ինչս իւր. զմասն ինչ ետ աղքատաց, և զտունն և զանդաստանն իւր աւանդեաց եկեղեցւոյն Տրապէզոնայ, և զմասն ինչ էառ ընդ իւր թոշակ ճանապարհին, և ելեալ գնաց յԵրուսաղէմ։ Եւ պատահեցան սոքա երկոքեանս միմեանց, Սարգիս եպիսկոպոս և Տէր Կիրակոս. և յետ աւուրց ինչ առ միմեանս կելոյ, գտին զիրեարս միով դիտաւորութեամբ և միով յօժարութեամբ և կրիւք ախտացեալս[1]. և միա-

1. Պէտք է իմանալ զգածեալս, նոյն կիրքը զգացող։

կամ և միաբան և միախորհուրդ եղեալ յայնմ օրէ և առ յապայ կենցաղավարիլ ի միասին։

Բայց խնդրէին տեղի անքոյթ և պատշաճաւոր անապատի, և հեռի ի շփոթմանց աշխարհի. և լուեալ յոմանց գիտողաց թէ այդպիսի տեղիք բազումք գոն յարեւելեայ մասն աշխարհին Հայոց, և մանաւանդ յերկրին Սիւնեաց, որ և ի հին ժամանակաց անապատ եղեալ է յաշխարհին յայնմիկ, որոց տեղիքն արդէն եւս երեւէին։ Եւ իբրեւ ստուգեցին զբանն, ելեալք յԵրուսաղեմէ յօժարութեամբ դիմեցին և եկին յաշխարհս արեւելեան՝ յերկիրն Սիւնեաց, և հասին ի մեծափառ ուխտն Ստաթէի առաքելոյն՝ որ այժմ ասի Տաթեւու վանք։ Եւ սուղ ժամանակս կացեալ անդ՝ գնացին ի տեղին որ անուանի Ջորոյ վանս, որ ասի Ցրուանց. և զկնի սուղ ժամանակաց գնացին անտի ի տեղին, որ անուանի Թանահատի վանք[1]. և անտի եւս ելեալ որոնէին առաւել եւս անքոյթ և անշփոթ և յապահով տեղի, մինչեւ գտին զտեղին, յորում այժմ շինեալ կայ Մեծ Անապատն. և անդ շինեցին եկեղեցի և զխուցս, ըստ պատշաճի անապատի և միայնակեցի, որպէս ցուցանէ Գիրք Հարանց վարուց և այլ ճգնաւորաց, նսեմ և մթին փոքրագոյն. և սկսան անդ զետեղիլ։

Իսկ տէրն տերանց և Աստուածն աստուածոց՝ որ միշտ զբարին կամի և յառաջեցուցանէ, յաջողէր և ուղղէր զգործս նոցա, և ինքն ձեռնտու և օգնական լինէր. վասն զի ի վերայ բարի համբաւոյ նոցա եկին բազումք և յարեցան ի նոսա. և եղեն նոցա միաբանք և բնակիչք տեղւոյն. ոչ միայն աշխարհականք և աննշանք, այլ և եկեղեցականք և անուանի արք, վարդապետք, եպիսկոպոսք և քահանայք։ Որ էր Պօղոս վարդապետն Մոկացին. և Մովսէս վարդապետն Սիւնեցին, որ զկնի եղեւ կաթողիկոս, որ և զերկուցս պատմութիւնսն և

1. Տես երես 250։

ղարդիւնսն յայլում ճառի երկար պատմելոց եմք. և Ներսէս վարդապետն Մոկացին, որ զկնի գնաց ի կղզին Լմայ և անդ շինեաց անապատ. և Թումայ եպիսկոպոսն Ցաթեւոյ, որ զկնի եղեւ վարդապետ, և գնաց յերկիրն Շամախոյ հովուել և առաջնորդել ժողովրդեան աշխարհին. և Կարապետ եպիսկոպոսն Էջմիածնի, որ զկնի գնաց ի Սեւան կղզին, և զայն տեղին շինեաց անապատ, և կայ հաստատ մինչեւ ցայսօր. և Շամբեցի Արիստակէս վարդապետն, որ զկնի եղեւ առաջնորդ նոյն Մեծ Անապատին, և անդ եկաց մինչեւ ցվախճան կենաց իւրոց և անդէն թաղեցաւ։ Եւ միւս Տէր Արիստակէսն, որ էր ի գաւառէն Բարկուշատայ[1], որ զկնի գնաց ի տեղին՝ զոր անուանեն Ցանձափարախ[2], և շինեաց անապատ, և անդ եկաց մինչեւ ցվախճան կենաց իւրոց և անդէն թաղեցաւ, և տեղին անապատ կայ հաստատուն մինչեւ ցայսօր։ Եւ Դաւիթ եպիսկոպոսն՝ որ էր ի Շամքորոյ[3] ձորէն՝ և ի ցեղէ իշխանաց, զոր Ղարամանենց կոչեն, սա եւս եկեալ եկաց ի Մեծ Անապատս, և ապա ելեալ գնաց ի ձորն Շամքորու՝ և անդ շինեաց անապատ, զոր կոչեն Ջարեքագետի[4] անապատ, որ է բազմաժողով եղբարց բնակութիւն, և յոյժ հաստատուն ամենայն կարգօք և սահմանօք անապատի մինչեւ ցայսօր. և ինքն Դաւիթ եպիսկոպոսն անդէն վախճանեցաւ և անդէն թաղեցաւ։ Եւ այլք բազումք և յոլովք՝ որք անդէն կացին և առ Տէր փոխեցան, և որք յայլ ուրեք գնացեալ շինեցին անապատս և վանօրայս։ Քանզի իբրեւ զմայրն Սիօն՝ զորմէ ա-

1. Սիւնեաց երկրին գաւառ մի է։

2. Վերոյիշեալ գաւառին մօտ Բերձոր կոչուած վիճակի մէջ։

3. Սովորաբար գրուի Շամքոր. Հայ–Աղուանից երկրի մէջ էր այս տեղս։

4. Ջարեք գետոյ անուամբ, որ Կուր մեծ գետոյ մէջ թափուի։

սէ մարգարէն Եսայի. թէ «ի Սիոնէ ելցեն օրէնք՝ և բան Տեառն յԵրուսաղէմէ», տոքա երկոքին արքս եղեն սկիզբն անապատիս, և անապատս եղեւ մայր և ծնող ամենայն անապատաց, և առիթ լուսաւորութեան ազգիս Հայոց։

Վասն զի որպէս ասացի, աստ վարժեալ ուսաւ Մոկացի Ներսէս վարդապետն զվարս կրօնաւորական, և ելեալ գնաց ի գաւառն Վասպուրականի, և եմուտ ի կղզին Լմայ ի մէջ ծովուն, և անդ ժողովեցան առ նա բազմութիւնք եղբարց. և եղեւ անապատ հաստատուն ամենայն կարգօք և կրօնիւք միակեցութեան վարուց. և ինքն Ներսէս վարդապետն անդէն կացեալ կրօնաւորական ժուժկալութեամբ՝ կատարեաց զընթացս իւր առաքինի վարուք, անդէն վախճանեցաւ և անդէն թաղեցաւ, և վախճան նորա եղեւ ի թուին մերում ՈՀԶ ամի (1627)։

Եւ զկնի նորին յաջորդեաց զառաջնորդութիւն տեղւոյն ընկեր նորին Մաքիաննոս վարդապետն։ Եւ յայսմ ժամանակիս և եւս աճեցան միաբանք Լմայ անապատիս, վասն որոյ ոմանք ելեալ ի Լմայ՝ գնացին ի տեղին՝ որ անուանի Կտուց, որ և սա կղզի է ի մէջ նոյն ծովուն, և անդ եւս շինեցին անապատ և եղբայրանոց, և է այժմ հաստատ ամենայն կրօնաւորական կարգօք։

Են և այլ եւս մանունք անապատք շինեալք այսր և անդր, բայց մեք զնշանաւորսն յիշեցաք. որ յայս մեծ Անապատէս ուսեալ և վարժեալ գնացին յայլ տեղիս՝ և հաստատեցին. որոց ամենեցուն եղեն սկիզբն և պատճառ վերոյասացեալ երկոքին արքն, Սարգիս եպիսկոպոսն և տէր Կիրակոսն։...

Եւ էր հոգաբարձու ի մարմնաւոր կողմանէ՝ Անապատիս՝ Սարգիս եպիսկոպոսն, և գրոց ուսուցիչ՝ Տէր Կիրակոսն, և Պօղոս վարդապետն և Մովսէս վարդապետն, և Ներսէս վարդապետն, և Թումայ եպիսկոպոսն. որք բազում ժամանակս կացին ի միասին տոքա ամենեքեան. և ապա Տէր Կիրակոսն

և Թումայ եպիսկոպոսն՝ գնացին յերկիրն Քշտաղս[1], մերձ ի գիւղն Հօչանց, շինեցին անապատ՝ և անդ բնակեցան։ Իսկ Սարգիս եպիսկոպոսն եկաց մնաց ի նոյն Մեծ Անապատին, և համբերութեամբ տանէր ամենայն նեղութեանց եկելոց ի վերայ, մինչև եհաս ի խորին ծերութիւն՝ առաքինական վարուք, զընթացն կատարեալ և զհաւատսն պահեալ փոխեցաւ աստի յերկիրն կենդանեաց, ի նոյն Մեծ Անապատին, որ և անդէն կայ թաղեալ պատուական նշխարք մարմնոյ նորա. որում վախճանն եղև ի թուականութեան մերում ՌԿԹ (1620)։ Իսկ Տէր Կիրակոսն որ գնաց ի Հօչանց՝ կացեալ անդ կրօնաւորական ժուժկալութեամբ, ի նմին տեղւոջ մերձ ի գիւղն Հօչանց յիւրում անապատին, եղև վախճան սորա ի թուականութեան մերում ՌՀ. (1621) և գնաց առ սիրեցեալն իւր Քրիստոս, որում փափագեալ հանապազ կրէր ի հոգին իւր. և ի նմին տեղւոջ կայ թաղեալ պատուական նշխարք մարմնոյ նորա. ի փառս Քրիստոսի Աստուծոյ օրհնելոյն՝ յաւիտեանս. ամէն։

---

# ՑՂԸ

## ՆԵՐԲՈՂԵԱՆ ԳՈՎԵՍՏԻ ԶՈՐԵՑՈՒՆՑ ԱՐԱՆՑՆ ՈՐՔ ԵՂԵՆ ՍԿԻԶԲՆ ԱՆԱՊԱՏԻ ԿԱՐԳԵԼ

(ՆԵՐՍԷՍ Վ. ՄՈԿԱՑԻ[2])

Օրհնեալ Տէր Յիսուս Փրկիչ նորոգողն ազգի մարդկան

1. Խանգարեալ անուն Քաշաթաղք գաւառի Սիւնեաց, որ աւելի հին ատեն Աղահեճք կոչուէր։
2. Նախորդ Յօդուածին մէջ Առաքել պատմիչ յիշեց գովութեամբ զՎարդապետս այս Մոկաց. որ ծա-

Որ միշտ ըղձարին կամի և սպասէ մերոյս փըրկութեան.
Յայսմ յետնեալ ժամանակիս յիշատակ արար նորոգման,
Բացեալ մեծ դուռըն բարւոյ և եհեղ ձիր ողորմութեան.
Ով որ լուսանցոյց ունի ճաճանչի այս մեծի ծագման՝
Կարէ վայս ի միտ առնուլ և իմանալ պարգեւ տիրական.
Ականջ ունողացդ ասեմ, ունկըն դիք բանիս միաբան,
Լըւէք, փափագող լերուք ծարաւի բաժակիս արբման.
Զի սիրոյ սեղան կազմեմ և կոչեմ զձեզ ի խրախարան,
Կայթելով ծափըս հարէք ի լսել զճառս երանական.
Զի թէ մեք յետնեալ գըտաք և չեղաք արժան գովութեան,
Սակայն մերայինքս եղեն պարծանաց տեղի և կայան։
Աստանօր պատմել կամիմ զեղելոցս որ մեզ դիպեցան,
Թէպէտ վաղափոխք եղեալ՝ պատահարք իմն երեւեցան.
Զի հայրըն վերին գըթած ի խնդիր ել տանս Արամեան,
Եգիտ զմեզ անկեալ յորսայս ի ծուղակ չարին յանդիման.
Զըգեալ ըզդաստակ ձեռին զեղջերաւս մեր թշուառական՝

Նօթ է այս գրուածէն լաւագոյն տաղաչափութեամբք. և արժանի գովութեան թէ գրուածոց և թէ վարուցն համար. իր (Հայրապետ) հօրեղբօր հետ աշակերտ եղած էր մեծանուն Բաղիշեցի Բարսեղ արքեպիսկոպոսի Ամդայ. ի հաշակելն զԱնապատի հաստատողս՝ խոնարհութեամբ չէր յիշեր զինքն. որ հիմնադիր եղաւ Լմայ անապատին, այլ յիշուի ի բարերարաց։

Ձեռն ետ և կանգնեաց զմեզ ի գլորմանէս որ յերկարեցան.
Սակաւ մի հոգի առաք ի խնամոցս այս արարչական
Որպէս Պետրոսին եղեւ ի ծովուն ալէկոծութեան.
Շահապաս Պարսից արքայն որ տիրեաց տանս արեւելեան
Ընտրեաց զգունդն Արեաց Պարսից՝ Օսմանին եկաց յանդիման.
Մինն ի յընտրելոց դասուցն երեւեալ քրիստոսադաւան,
Այր հզօր քաջամարտիկ ճակատուն բազմաց ախոյեան,
Ընդ որ հաւանեալ արքայն և գովեաց բազմաց յանդիման.
Ապա ակնածէր սիրով միամիտ նորայն քաջութեան,
Կացոյց զնա իշխան երկրի, հանեալ ի պատիւ մեծութեան,
Մեծարգոյ փառօք պատուեաց և կոչեաց զնա իւր սիրական.
Հախնազար հայրըն նորա յորջորջեալ ըզնա սեռական՝
Հայկազն[1] անուանէր ըզնա նմանել Հայկազնին Տիգրան,
Որ Յունաց յաղթող գըտաւ և Սկիւթացւոց հիւսիսական,
Որոյ ի դիմի հարաւ Քուրդըն մեծ վիշապն Աժդահակայն[2],

1. Հին Ջուղայէն քշուած և Նորոյն գլխաւորներէն մէկն եղած է Հախնազար, որ հին հայրենեաց յիշատակաց սիրով՝ Հայկազն անուաներ է իր որդին, և սա ճշմարտեր է իր անունը, զինուորական քաջութեամբ՝ Շահաբասի բանակաց մէջ. Մոկացին՝ Խորենացւոյ ըսածն Հայկազն Տիգրանայ համար՝ ընդարձակելով յարմարցընէ այս Նոր Հայկազին, որ յետ զէնք չարժելու ընտրեր է գլխաւ և քաշուեր է յանապատ։
2. Մարաց Թագաւոր ըլլալով՝ Քուրդ կոչէ զԱժդահակ։

Ըզլեարդն և ըզթոք նորա զեղարդեամբն ի փորոյն եհան.
Մօվսէս քերթողըն պատմէ և գովէ զնա յոյժ զանազան,
Ըզձեւ և ըզտիպ կերպին զբաղդին մեծ ընդ զօրեղութեան.
Այն սա անպակաս կերպիւ և ձեւօքն իւր արքունական՝
Ցուել քան ըզնա ի փառս հաւատոյն Սուրբ Երրորդութեան:
Պերճ հսկայաձեւ մարմնով և տիօքըն վայելչական.
Իսկ տիպ պատկերին գեղոյ շնորհաւոր և գիւցազնական.
Ընդ մէջ իւր ածեալ սուսեր զերկսայրին և զթուրըն կտրան՝
Զվահանն պղնձապատ աջողակ ընդ ձախոյ կըռան [1],
Հարթ համակ նկարակերտ նպատակ նետից ուժգնական,
Զլախտն յաջոյ ձեռին ունէր՝ նիշ գունակ ինքն իշխանութեան.
Ցահեկին կախեալ կըռան կըտցաւոր և ինքն զառնիշան [2].
Հասակըն զրահաւորեալ սաղաւարտ պըսակ գագաթան,
Սադաճքն [3] յերկոքին կողմանց փքնալից ծաղկեալ զանազան.
Ի շահատակել զինուցն՝ ահընկէց լինէր նա մարդկան,
Եւ ի խիզախելն ուժգին՝ բեկանէր նա զիւր դիմական.

1. Ձախ ուսէն կախած վահանը, որ թշնամեաց ուժով արձըկած նետերու նպատակ էր:
2. Կտուցի կամ ճանկի նման ծայրով ոսկեզօծ զէնք մի:
3. Ի՛նչ լեզուի բառ ըլլայ Սադաճ, դուշակուի որ նշանակէ կապարճ՝ փքիններով նետերով լցուած:

Յարշաւելն երիվարին կրթանաւ և վարժողական
Դափըր հարկանել դաշտին՝ դողացուցանէր զամե-
նայն։
Դասք հրազէն հետեւակաց՝ առաջի գնդակ ըն-
թանան,
Զգուշութեամբ մեծաւ սպասեն հրամանին յոյժ
խորհրդական.
Իսկ յարիութիւն անձինն յոյժ անքատակ[1] ի յոր-
դիս մարդկան,
Եւ անհամեմատ խաղեմ ի շարժել շրթանցն յատ-
կական.
Ճարտասան արագախօս անթարթափ յարտաբե-
րութեան
Եւ բաղխոհական ոճով բարբառէր յարքայից դիւան։
Իսկ ներքին մասամբ հոգւայն երկիւղած և ըզգաս-
տական.
Խոնարհ էր և հեզ բարուք և սիրող աստուած-
պաշտութեան.
Անապատի սիւն լինէր և գըրգէր գըթով հայրական.
Մինչ յիշխանութեան միջին՝ ջանք դընէր անապա-
տական։
Յայսըմ քանակեալ աւուրս յայտնեցաւ քարոզն
ընտրութեան
Պօղոս վարդապետն արի ջատագովըն ճշմարտու-
թեան,
Հոմանուն Առաքելոյն, համարաւոր նոյն քարո-
զութեան.
Փողելով հրատարակէր յուշ առնէր զբանըն ար-
թընական,
Կարծրագոյն վիմաց հաստեալ զտուն հոգւոյ հա-
ւատոյ հիման,
Զգուշութեամբ փորեալ ի խոր ըստ բանիցըն աւե-
տարանական.
Իջին անձրեւաց հեղեղք, փորձութիւնք յորդւոց
մարդկան։

1. Աննման, իրեն հաւասարող չունող։

Ի Վասպուրական երկրին, Մոկաց տունն և ի Քըրդաստան,
Կործանել ոչ կարացին զնա յուսոյն իւրոյ քաջութեան.
Ճըշմարիտ բանիւ գործեաց ի յայգւոջըն տէրունական,
Ի տարաշխարհիկ լինելն ի գաւառն որ կոչի Գողթան:
Դարձեալ անդ զարթեաւ հին չարն և յարոյց կրկին հալածան.
Առաջնորդք, եպիսկոպոսք, արեղայք և եկեղեցական՝
Հակառակ կացին նըմա և ընդդէմ նըմին զինեցան.
Վասն այն ըզնոսա սըրեաց կործանիչըն ազգի մարդկան
Զի յանձնէ աւերեսցի տուն մերոյս առաջնորդական.
Միատեսակ թշնամի հաւասար և համանըման,
Զի պառակտեսցին մարդիկ և յարուսցեն հերձուած չարութեան:
Ճըգունըս բազումըս կըրեաց ի Հայոց ու ի Տաճկի դիւան,.
Վըկայեաց ի բազում տեղիս Տեառըն մերոյ մարդեղութեան:
Վարժող էր նա անձանձիր՝ թէ լինէր ոք փափագ ուսման,
Թէ չէ՝ ինքն ինքեան ասէր և երգէր զերգս աստուածական.
Զի ներքին մշակութիւնըն չէր մընար պարապ ընդունայն,
Այլ խոկմամբ աստուածայնոցըն վերընթաց լինէր յարաժամ.
Զյաճախ ուտելն արգելոյր, և կարկիչ էր յանդըգնութեան,
Մանաւանդ արեղայից խափանիչ համարձակութեան.
Զնախնի կարգն յառաջ ածէր, կանոնք դընէր ի յատեան:
Վըկայէր վասն աշխարհի՝ զի էին գործքն իւր չարութեան:

Վասն որոյ իմ նըմանիքս որ կրօնիւք յերկիր կորացան՝
Կարի առեցին ըզնա ; բարկութեան նախանձ բըրդեցան։
Հազար և վաթսուն և եօթն յաւելեալ Հայոց թըւական, (1618)
Ցանկարծ շարժեցան մարդիկ, թինդ առին և ժողովեցան.
Կաթողիկոսունք երկու, եպիսկոպոսք համանգամայն,
Արեղայք և վանականք և տէրտէրք շատ գումարեցան[1],
Ուխտադիրք եղեն միմեանց, խորհեցան խորհուրդ միաբան,
Եւ չու արարեալ գնացին ի Դաւրէժ ի քաղաք Շահաստան.
Ղարչըղայ խանին դիպան, տուրեւառ խօսիւք շատացան,
Թէ այր մի օտարական մեզ լինի պատճառ խանգարման։
Այլ նա ի վերին խնամոցըն մարդկապէս կոչեաց ի յատեան,
Ասաց, թէ Քահանայից չէ պատեհ կալ անմիաբան.
Վասն որոյ փոշիմանեալ և ինքեանց մեղադիր եղան,
Եկեալ թողութիւն առին, ակամայ կամօք հաշտեցան։

1. Առաքել չի յիշեր այս անվայել հակառակութիւնը, գուցէ ակնածութեամբ եկեղեցականաց պատւոյն, միանգամայն գուցէ և կաթողիկոսական աթոռոյ յաջորդութեան չփոթութեան ինչ պատճառաւ. զի շատ յայտնի չեն. ինչպէս Առաքել կաթողիկոս մի ԺԶ դարու վերջին քառորդին. ԺԷին այլ առաջին քառորդին մեր Անապատաւորաց օրերում՝ Աւետիս կաթողիկոս մի, զոր յիշէ յետագայ (2Գ) ծանօթութեան մէջ զանոնք յԵրուսաղէմ տեսող գրիչն։

Ահա յարուցմունք գետոց, փորձութիւնք սուտ եղբայրական՝
Ուժգնակի բախեալ ըզտուննն ըզհաստատեալն ի վերայ վիման.
Իսկ գըթած Տէրըն բարի զնա պահեաց առանց սասանման.
Եւ յաւել նըմա շնորհ ըզգալի տուն լինել տիրական.
Տաճարաց հոգաբարձու յԱստուծոյ էառ հրաման,
Թէ սովաւ յայտնի լինի այս խախտեալ ազգիս ի հիման,
Թէ սա է բարի շինող լըքելոյն յուսահատութեան.
Զմեզօք կործանեալըս կանգնէ ու առնէ տաճար տիրական։
Կարծեմ թէ սա էր ճըրագն ըստ պետին առաքելական,
Որ ի գիշեր կենցաղոյս խաւարչուտ և նըսեմական՝
Ճաճանչ նըշուլից փայլեաց, և շաւիղ բանայր նա մարդկան,
Մինչ տիւըն լուսաւորի արուսեկին մեծի ծագման։
Համբեր սա համբերելով խեղճ մըտօք ի զուր տըղմական.
Մինչեւ լուաւ աղօթից արարիչ տէրըն գըթական.
Եհան ի կաւէ գըբոյն, ի վիմին եդ հաստատութեան,
Եւ արկ ի բերան նորա օրհնութիւն, ըստ երգոյն դաւթեան.
Անեղ լոյսն արարչական լոյս վառեաց խաւարեալ մարդկան,
Երկու լուսատու աստեղըք՝ որք յարեւմըտից ծագեցան,
Ի յԵրուսաղէմ սըննեալք՝ ի լուսոյն լուսոյ լըրացան[1],

1. Առաքել այլ յիշեց այս երկու գլխաւոր անապատաւորաց՝ ատեն մի յԵրուսաղէմ կենալն. այն ատեններ (1606–7) նոյն քաղքին Ս. Յակոբայ վանաց մէջ Աստուածաշունչ գիրք օրինակող մի յիշէ զասոնք՝ ուրիշ ներկայից հետ. « Կամաւոր աղքատին

Եւ մեզ խոր խաւարելոցս լուսատուք Նոր առաքեցան։
Սարգիս մեծ եպիսկոպոսն և Կիրակոս արին այն՝
Սըլացեալ թեւօք Հոգւոյն և հասին սըմա օգնական.
Պետրոսի և Յովհաննու օժանդակ եհաս Պօղոսն այն,
Իսկ այս Պօղոսիս հասին ստուարաստեղն երկու գաւազան,
Նորին սատարացուցին շըշընջիւն անտի յայտնեցան.
Մերկ պարտին լինել մարդիկ՝ Քրիստոսի կարգել զօրական.
Ահա Նորահրաշ հընչիւն՝ դեռաբոյս և անյայտական,
Թէ պարտ է զմարմին թողուլ և հոգւոյն լինել պաշտըպան.
Նոր երգ Նոր Ներբողեան, Նոր կական ի ձայն ցընծութեան,
Նոր պարըս խմբել այսօր և երգել գոհաբանական.
Նոր պարու պարապետիս պալաւորք լինել համաձայն,
Երկրըպագութիւն և փառք տըւողին՝ ի ձայն գոհութեան՝
Որ զայս երկու ուսուցիչքս առաքեաց մեզ ճըշմարտաբան,
Գործնական իմաստութեամբ կատարել միշտ ըղտեսականն.
Զայս եղինքս ամոլական բանաւոր և արդիւնական՝
Բանական երկրի մըշակ խըթատանջ և միշտ ժըրաջան,
Զայս երաշտացեալ գետինս արտասուաց ցօղով արբուցման,

» Սարգիս եպիսկոպոսին Սաղմոսավանեցին, և Տրա-
» պիզոնցի կամաւոր աղքատին՝ Տէր Կիրակոսին »։
որով վկայէ՝ թէ յառաջ քան տեղով հաստատելն
զմիայնակեցութիւն՝ սրտով հաստատեր էին, կամ
սրտերնին անապատացուցեր էին։

Զայս խոպանացեալ երկիրս՝ արարան բերքի անդաստան։
Հերկեալ խըրատով զայգիս, չարահնար փուշքըն խըլեցան,
Եւ ապականիչ աղուէսքն որք կալեալ և որք զօղեցան.
Նոր գարնանային հողմունք քաղցրասիւզք յայգիս կոչեցան,
Եւ ձայն տատրակաց սրբոց մընչիւնիւ աստէն լըսեցան.
Ձըմեռք և անձրեւք անցին, խստութիւնք սըրտից կակղացան,
Եւ ծաղիկք զարմանազանք ի յերկրիս մեր երփնեցան.
Իջցուք ի յայգիս, եղբարք, և տեսցուք զծառս համանգամայն,
Ծաղկեալ որթ և թուզ և նուռ, նըռնենիք և մուրտ և շուշան.
Երկուց նըմանեալ հողմոց որք յառակողէն ասացան[1].
Արի՛ հիւսիսի փըչումն, ե՛կ հարաւ ջերմին սիրական,
Շընչեա ի պարտէզըս մեր, խընկալից և խիտ բուրաստան,
Բուրեսցին խունկք մեր անոյշք և ծաղկունքն որ հանդիսացան.
Փառս նորոգողին տացուք՝ որ ետ դուռն ապաշխարութեան,
Եւ փոխ հատուսցուք սոցա ներբողեան գովասանական։
Այս երկու մեծ լուսաւորքս կորընթարթն երկնից կառուցան,
Լուսատու լինել յերկիր և նըշան ժամանակեան.
Երկու այս բեւեռ աստղունք՝ որ ի վեր և ի վայր կայացան

1. Սողոմոն, յԵրգ Երգոց գրոց մէջ։

Որովք կարգք եկեղեցւոյ կանոնօք սահմանադրեցան․
Երկու պատուական ակունքս որ յերկու կուռն ահարոնեան,
Նշանքն Իսրայելի մեղանչական և արդարութեան,
Երկու ձիթենի ուղէշքն որ յերկրի Նոր արմատացան,
Գընդլին լուցելոյ յաջմէ և յահեկէ ոստովք բարձրացան․
Մինչ ի հովանին սոցա ախտաժէտք բազումք կուտեցան
Թանահտի[1] յանապատս, և ձիթովս այս բըժըշկեցան․
Պարարտ ձիթենի գոլով՝ Տաթեւոյ գաւթիս տընկեցան
Եւ պարարտացեալ պտղովք Քրիստոսի աստ ընծայեցան․
Երկու բարձրաբերձ լերինք՝ Ահերմոն և Թաբորական,
Եւ ակունք Յորդանանու՝ յորս մարդիկ Նոր մըկըրտեցան․
Ենովքայ և Եղիայի փոխանորդ յերկրի շրջեցան,
Թէպէտ աննըման կենօք՝ այլ գործովք յոյժ համանըման․
Դիմօք և ձեւովն իւրեանց հանդերձիւքըն խոշորական՝
Ծանուցին որդւոց մարդկան զաշխարհի վայելս ընդունայն։
Երկու դրունք տեսանելեաց՝ յԱրարչէն կենդանեաց եդան,
Յատուկ ի միմեանց գոլով՝ մի շաւիղ տեսլեան ընթանան։
Այսպէս այս երկու ընտրեալքս բացակայ տեղեաւ մեզ ցուցան,
Մինըն Պոնտացի գոլով, միւսն ի տանէն Արարատեան։

1. Տես յերես 250 գրոցս։

Թէպէտ առանձին դիմօք, կրկնակի կերպիւ յատկացան,
Մի կամք մի կարգ մի կըրօնք, մի հոգի կառավարեցան։
Ցընծալ պարտի Հայաստանս և խայտալ խընճոյս հոգեկան.
Պարսնցի առնել յուռով և երգել զերգ հոմերական,
Նոր սըրինգ և նոր տաւիղ, քընար և նոր երգարան,
Նոր կաճառախումբ լինել և քննել յոյժ խորհըրդական.
Բանալ ըզարգանդ մըտաց և ճաշակ տալ համբերութեան.
Ըմպել ըզհամեղութիւն բաժակիս այս իմաստութեան։
Գըրեան վաղընջուց փակած՝ ընթերցան ոճով մեկնեցան,
Եւ լապտերք եկեղեցւոյ՝ գալըստեամբ սոցին վառեցան.
Բարիոք մեզ Նաւաստիք ի ծըփման ծովուս յայտնեցան,
Վարեցին թեւօք Հոգւոյն և հասին յանդրաւ խորութեան։
Մինչ յայս խրախութեան կայաք յաջողակ հողմով սըլացման
Եւ յաջ և յահեակ թռուցեալ դիտէաք ըզկէտն ուղղական,
Ցանկարծ հողմն ուռուցիկ փոթորկեաց ըզնաւս առժամայն
Եւ շըջապատոյտ առեալ տատանէր յալէկոծութեան.
Հողմով կուտակեալ կոհակք ի ներքուստ անտուստ խռովեցան
Եւ ծովըս հանդարտական յամբոխեալ ալիս փոխեցան.
Թըռչարանն առագաստին՝ ի ծըւէնըս պատառեցան[1],

1. Նարեկացւոյ աղօթագրոց ԻԵ Բանի նկարագրութենէն կ'առնու Մոկացին, ինքը իր դրացիէն գողնալով։

Եւ կայծն ամբարձման պարզող՝ ի ծովու խորըս սուզեցան.
Դեկն և ղեկավարն և Թեւք խառնելեացըն խափանեցան,
Եւ չարքըն տախտակամած ի միմեանց բաց անջատեցան.
Երկու լըծակաց մածմունք ծընօտիւքըն բաժանեցան,
Եւ լաստն ողնափայտին առ քեղիքըն խարխալեցան։
Ահա արդ մեծ արհաւիրք, աղաղակ և յոյժ լալական.
Տրտմութեան ալիք դիզեալ առ Թիկունս մեր կործանեցան.
Զի այս չորս անկեան հիմունքս՝ յորոց նաւըքըս մեր հաստատեցան,
Ուխտեալ՝ ի միում ամի և մահուամբ առ Տէր փոխեցան.
Այս չորս սիւնքս խարխալեալք՝ որք աԹոռ Տեառըն կազմեցան՝
Խոհեմ արի և արդար ողջախոհ առաքինացան.
Զորս գետոց նըման հոսեալ արբուցին զծարաւ Հայաստան,
Նոքա ի յԱդին դառնան և սոքա ի յերկնից կայան.
Զորից աւետարանչաց նըմանեալ՝ առ մեզ յայտնեցան,
Եւ չորս տարերաց նըման ի չորս անկիւնըս համբաւեցան.
Քառադէմ կառաց նըման՝ Առիւծ և Եզն ասացան,
Մարդ և Արծւոյ նըման[1] փութապէս առ Տէր սըլացան.
Զորս կարգէս[2] քրիստոնէից ըստ միոյ միոյ ընտրեցան.

1. Եզեկիէլ մարգարէի տեսլեան մէջ երեւցած կառքըն և կառաձիգքըն։

2. Զորս դասակարգէ քրիստոնէից. Իշխանն է Հայկազն. Վարդապետն Պօղոս. Հայրապետն Սարգիս. Առանձնականն՝ Կիրակոս։

Իշխանն ընդ Վարդապետս, Հայրապետն և Աստուածնական:
Ի հազար ու եօթանասուն յաւելեալ Հայոց Թըւական
Երբեւ կատարումըն սոցա որք ի մէնջ առ Տէր փոխեցան[1]:
Թէ դիմառնական խօսիմք, ով եղբարք իմ և սիրական,
Զմեզ ի խնջոյս ածեր և փոքու երգ գամբռանական.
Խիստ մի՛ խըռովիք, եղբարք, չը գիտել գիրըս կենցաղական.
Կարգ եղեալ է Արարչին չըմընալ աստանեփախճան.
Մանաւանդ այս Հայաստան վաղվաղակի և փոփոխական:
Ի Հարց ու ի պապանցն լուաք, յառաջին սորոցն ասացան,
Հիւսիսոյ հաւէն առնուն մեր ծաղկունքս և յայտ զօրանան,
Եւ տապըն խորշակահար ծաղկընկէց անէ առժամայն:
Ահա ձեզ ձայն աւետեաց սփոփանաց յառաջըրպական.
Թէպէտ սերմանողքն անկան, սերմանեալքն յայտ արդիւնացան.
Մարմնով հեռացան ի մէնջ, բայց հոգւով ոչ հեռացան.
Միայն զյաղթանակն առին, յախտաւլից կենաց փոխեցան,
Անդէն բարեխօս բարի վասըն մեր առ Տէր կացուցան,
Զաթոռով անմահ Գառինն՝ ընդ քահանայիցըն կարգեցան:
Փառք և գոհութիւն տացուք Աստուծոյ անմահ տէրութեանն.

1. Մէկ տարուան ժամանակի մէջ մեռած են, բայց Հայոց երկու թուականաց մէջ՝ ՌՀԹ և ՌՀ:

Ըսկետանամնուց սոցա պահեսցէ ի խաղաղութեան։
Առ ձեզ պաղատիմ, եղբարք, եւ Ներսէս Թշուառական,
Հայցեցէք ընդ իմ առ Հարքս՝ յիշել զիս առ անմահ արքայն։
Փոքրիկ Փիլիպպոս գրչիր փափագող բանիս տաղական՝
Զայս խնդիր արար՝ թէ ասա յիշատակ, որ ողորմիտան։

---

# ՅՂԹ

## ՍԱՍԱՆՈՒԹԻՒՆ ՄԵԾԻ ԱՆԱՊԱՏԻՆ

(ԱՌԱՔԵԼ ԻԲ)

Նարագրեսցուք վասն սոյն մեծ Անապատիս միւս եւս պատմութիւն. զի յետ շինութեան Անապատիս, իբրեւ անցին ի վերայ ամք քառասուն եւ հինգ կամ աւելի, արեւմտեան կողմն Անապատին՝ գետինն պատառեցաւ ընդ կողմն հիւսիսոյ, եւ եհաս մինչեւ ի կողմն արեւելից մինչ ի հանդիպոջ լեռնավէմն. իսկ յարեւմտից կողմանէ անցեալ զգերեզմանօքն, եհաս մինչ ի լեառն արեւմտեան կողմանն. եւ այնքան պատառեցաւ լայն եւ ընդարձակ եւ խորագոյն, զի թէ եզն եւ ձի եւ այլ անասուն դէպ լինէր անկանել ի խորափիտ պատառածին՝ ոչ կարէր ելանել. այլ եւ բաց ի սմանէ այլ եւս պատառուածք այսր եւ անդր յոլովք լինէին օր յաւուր։ Եւ յայսմ պատճառէ երկիւղալից կասկած անկաւ ի սիրտս բնակչաց Անապատիս, թէ գետինն յորոյ վերայ շինեալ կայ Անապատն՝ սահելոց է ի տեղւոջէ իւրմէ։ Նա եւ ամենայն գաւառականքն որք անդ պատահէին, ի տեսանելն զպատառուածն զայն՝ զնոյն վկայէին։

Իբրեւ եհաս թուականն մեր ՌՃԷ (1658), և յապրիլ ամսոյն, եղեւ անձրեւային գարունն այն, և պատառուածքն սկսան օր յաւուր լայնանալ, և հաւաստեաւ հաստատեցաւ ի սիրտս ամենեցուն՝ թէ այսօր կամ վաղիւն սահեալ հոսելոց է ստորակայ գետին Անապատիս: Եւ եղեւ յաւուր Աշխարհամատրան կիւրակէին, որ էր ապրիլ ամսոյ քսան և հինգ, ընդ ժամանել ի ժամ երեկոյին՝ մերձ ի մուտս արեւուն, սկսաւ պատառիլ գետինն ի հարաւայնոյ կողմանէ Անապատին ի բարձուէ ի լեռնէ անտի, և իբրեւ զմրրկեալ ամպ դիմեալ գայր ի բարձանց լերին, ահագին դղրդմամբ և թնդմամբ, և որոտմամբ, և ճայթմամբ, իբրեւ զորոտումն կայծակնացայտ ամպոց. և այնքան ահագին էր որոտումն և թնդումն, մինչ զի ամենայն բնակիչք Շինահայր[1] գեղջն, և Հալիձոր գեղջն՝ լուեալ զձայնն, և ելեալք յանդիմանակայ տեղւոջ գեղջն իւրեանց, տեսանէին զարհաւիրն զայն: Զի յաւիտենից հաստակառոյց լեռնական վէմք՝ պատառեալք յինքեանց՝ ի միմեանց ի բաց տրոհէին, և ի սկզբանց կառուցեալ վէմք՝ որք հիմն էին գետնոյն, եռացեալ ի վեր գային յերեսս գետնոյն, և յոլով ժամանակաց ծառք և տունկք ամենայն, եթէ ընկուզի և թէ կաղնի, և ընդ նոսին մեծամեծ վէմք՝ զառ ի ստորեւ սուզեալ ի ներքս յանդունդս կլեալք աներեւութանային. և մեծամեծ վէմք հատեալք ի լեռնէն՝ զկնի միմեանց հոլովեալ գային ի վայր, որոց ի բախելն ընդ միմեանս՝ փշրեալ և խորտակեալ ի բաց ցնդէին. և ուժգնութիւն սոցին բախմանցն՝ թնդումն սաստիկ առնէր ամենայն վայրացն, և ձայն գոռալոյ և որոտման սոցա խլացուցանէր զլսելիս, և սրտամեռ առնէր զամենեսեան:

Եւ որովհետեւ երեկոյացեալ էր օրն և սակաւ մնացեալ ժամ աւուրն, և այն եւս էանց և ժա-

1. Համառօտելով Շնհեր կոչուի հիմայ:

մանեաց պլշերն ի վերայ, սկսաւ անձրեւ թորիլ և լինել սաստիկ մթնագիշեր, այնքան զի և առընթերակայ կացեալքն զմիմեանս ոչ տեսանէին: Եւ ամենայն բնակիչք Անապատին ելին յԱնապատէն, և գնացեալ ժողովեցան յարեւելեան կողմն Անապատին՝ ի քարեայ լեառն, և անդ զետեղեալ վառեցին լապտերս և մեծամեծ մոմս, կային ահաբեկ պակուցմամբ, և միայն կատարածին, և ըղձային լուսոյ առաւօտուն:

Բազումք համարեցան թէ Անապատն միահաղոյն քանդեցաւ՝ ընդ այլ սահեալ գետնոյն. բայց աբարչական խնամ գթածին Աստուծոյ հայեցեալ ի մշտապաղատ մաղթանս ողորմելի եղբարցն՝ ոչ եթող ի սպառ աւերիլ, այլ սակաւ. քանզի արեւմըտեան կողմն Անապատին, պարիսպն և հիւրատունն, և ախոռք անասնոցն և համբարանոցքն, և մասն ինչ ի սենեկէ եղբարցն, և արեւմտեան կողմն մեծ եկեղեցւոյն՝ սեանցն յետուստ կուսէ, սոքա ամենեքեան աւերեցան:

Եւ յոյժ ահագին և ահընկէց էր գործեցեալ իրն. քանզի որպէս լեռնացեալ կոհակք ալեաց ծովու՝ որք զհետ միմեանց սահեալ ընթանան, սոյնպէս և հաստահիմ վէմք, քար և հող վայրացն այնմիկ եղեն: Զի ի սրտէ լերինն յորոյ վերայ Թանահատի վանքն կայ շինեալ, ի խորոց անդնդոց բնական վէմք լերինն սկսան պատառիլ, և հողով և խճով և մեծամեծ վիմօք իբրեւ զտուն՝ եկեալ զառ ի վայր հոսին. և ի վերուստ եկեալ հոսինն՝[1] իւրոյ բռնութեամբ և ուժգին հօսմամբն, զիւր առաջի վայրսն ի բնական տեղւոյն ի բաց ոստուցեալ, ածեալ ընդ իւր ի միասին զկնի միմեանց ընթանային իբրեւ զյորձանս ծովուց ելեւէջս առնելով: Եւ այսպէս սահելով գնացին և հասին ի գետն մեծ Որոտան որ ի մէջ ձորոյն անցանէ, և արգելին

1. Սաստիկ փլցընող աւրող հով, երբեմն և ձիւնախառն:

զգնացս ջուրցն իբրեւ ժամս ութ. և ջուր գետոյն որ ի վերուստ իջանէր՝ եկեալ ծովացաւ և լցաւ տեղին, և այս ի կողմանէ ինչ եզրս ինքեան զտեղիս գնալոյ՝ և գնաց. և քարինքն և հողքն՝ որք արգելան յեզր գետոյն՝ եղեն բլուր մեծ:

Իսկ գերեզմանատունք անապատաւորացն էին յարեւմտեան կողմանէ Անապատին, և ընդ հոսիլ վայրացն՝ այս գերեզմանատունքս եւս հասարակ միահաղոյն ամենեքեան ի միասին՝ խորագոյն և անդընդային յատակաւն իւրեանց առեալ ի տեղւոյէ իւրեանց՝ սահեալ գնացին բազում հեռաւորութեամբ, ի վայրի ուրեմն զկայ առեալ կայացան: Այլ և ի նոյն տեղւոջ էին թաղեալ սուրբ վարդապետն Պօղոս, զորոյ զպատմութիւնն արարեալ եմք յայլում հատի, և Սարգիս պարոնտէրն՝[1] որոյ սակս յանցեալ հատիդ պատմեցաք. և Արիստակէս վարդապետն, որ զկնի Սարգիս պարոնտէրին նա եղեւ առաջնորդ Անապատին. և նշանաւոր և ընտիր և առաքինագործ աբեղայն Տէր Բարսեղ. սոքա չորեքեանս առընթեր միմեանց թաղեալք կային, և ի վերայ իւրեանց շինեալ կայր մատուռն. և ի ժամ հոսելոյ տեղւոյ գերեզմանատանն՝ խնամքն Աստուծոյ իբր զգործ ինչ սքանչելեաց արար ի վերայ սրբոցս. զի ամենեւին գերեզմանքս սոցա ոչ խախտեցան, որ և քարինք տապանացն ոչ թիւրեցան, այլ զգլխոյ իւրեանց դէպ ուղիղ ընդ արեւելս ընկալեալ կայացան, որպէս և նախկի թաղեալք էին. բայց մատուռն՝ որ ի վերայ սոցա կայր, փլուզեալ ցնդեցաւ:

Եւ ի լինելն այսմ ամենայնի գործոցս սոսկալի՝ խնամօքն Աստուծոյ ամենակալի ոչ ումեք եղեւ վնաս մարդոյ կամ անասնոյ, այլ միայն եղբայր ոմն մնաց ի մէջ իւրոյ խցին և անդէն մեռաւ ի ներքոյ հողոյն. զի ընդ սկսանիլ հասմանն ի ժամ երեկոյին, ոմանք յեղբարցն գնացեալ ազդեցին

1. Պարոնտէր՝ եպիսկոպոս նշանակէ:

նմա եղանել անուն՝ զի մի մնասցէ ի նորքոյ հօտոյ. և նա ի փառս ժամանակաց ցանկանալով պարտէր մահու, ոչ եկն առաւելս, այլ մնաց անդէն՝ յուսով ակնկալելով Տեառն, զի թերեւս փառն անպարտ մահուան իւրոյ ընկալցի այցելութիւն հոգւոյ իւրոյ ի բազմագութ Տեառնէ Աստուծոյ. Իսկ միւս այլք բնակիչք Անապատին՝ ամենեքեան ժողովեալք էին ի քաղաքն որ կայ յարեւելից կողմն Անապատին, յորդաբուխ արտասուօք և մեծաւ հառաչանօք կոծէին զանձինս, և աղաչէին զԱստուած, զի թերեւս զերծցին ի սատակմանէ, և փրկեսցին շինուածք Անապատին ի փլմանէ. քանզի յուսահատեալ էին վասն ահագին արհաւրացն եղելոց, և մինչեւ ցլուսանալ ի լոյս առաւօտու երկուշաբաթին, իբր զպաղատաւոր ոք՝ յերկրանս կային. իսկ այն՝ որոյ զթութիւնն բնութեամբ է, աղբիւրն ողորմութեան Տէր Աստուած, ոչ միայն զնոսա փրկեաց ի սատակմանէ, այլ և զԱնապատն եւս ամբողջ պահեաց, և ոչ եթող աւերել. զի ամենազօր աջովն իւրով անխախտ պահեաց զԱնապատն, բաց յաւագ տապալեալ աւերելոցն։

---

# Ն

## ԿՆԻՔ ՊԱՏՄԱԿԱՆ ՔԱՂՈՒԱԾՈՅՍ

### (ՄԽԻԹԱՐ ԱՅՐԻՎԱՆԵՑԻ)

Յովհաննէս Աւետարանիչն հրամայէ[1] վասն երեքամեան և երեքամսեան գործոց և աքանչելեացն Քրիստոսի, «Որ թէ զամենայն գրեալ էր՝ կարծեմ թէ և ոչ աշխարհս բաւական էր տանել»։ Իսկ թէ

1. Յովհ. Աւետ. ԻԱ. 25. որ է վերջին տուն բովանդակ Աւետարանաց։

այս այսպէս է, որպէս և է իսկ, ապա զի՞նչ պարտ է ասել վասն ի սկզբանէ աշխարհի անցիցն անցելոց՝ եթէ գրեալ էին։ Իսկ մեք քայլելով ի վերայ ժամանակագրաց անհուն գրուցաց՝ քաղելով զմի ի հազարաց և զերկուս ի բիւրուց, ըստ կարի հասու արարաք զձեզ, որբազան հայրք և եղբարք, կարգի թուոյ ժամանակաց։ Իսկ դուք աննախանձ մտօք ընկալարուք զսակաւ սատարս ի մէնջ, որպէս Եղիա ի Սարեփթացւոյն[1]։ Զի և այս ոչ ին մէջ իրակերտեցաւ, այլ ի Հոգւոյն Սրբոյ հրաշագործեցաւ։ Որում երկիր պագանեմք, և փառաւորեմք զանսկիզբն էութիւն և զմիասնական աստուածութիւնն Հօր անծնին և Որդւոյն ծնեցելոյ և Հոգւոյն բղխեցելոյ, անտրոհ մեծվայելչութեանն և արարչական զօրութեանն՝ զոհութիւն և բարեբանութիւն յամենայն արարածոց նորա և յընդհանուր շնչոց, յերկնաւորաց և յերկրաւորաց և ի սանդարամետականաց, յաւիտեանս յաւիտենից. ամէն[2]։

1. Եղիա մարգարէ երբ փախչէր յԱքայաբայ թագաւորէ, անցնելով ի Սարեփթա քաղաքաւանէ՝ անօթի ըլլալով՝ խնդրեց մէկ այրի կնկանէ ուտելիք. նա որ միայն քչիկ մի ալիւր և քչիկ մի իւղ միայն ունէր, անով թրեց, եփեց, կերուց։

2. Կարդացողն կ'իմանայ հեղինակին միտքը, ինչպէս զմերն, որ իրեն հետ փառաւորելով զԱստուած, կրկնեմք՝ Ամէն։

# ՅԱՆԿ

## ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍԻՆ

### Ա, Բ, Գ ՀԱՏՈՐՈՑ *


Աբաս Թգ. Կարուց Բ, 96-8, 103, 137, 142-4, 190
— Թգ. Տաւուշոյ Բ, 341-2, 344
— կթ. Աղուանից Բ, 339
Աբաս շահ. տ. Շահաբաս։
Աբասաձոր գղ. Բ, 378, 380
Աբգար Թգ. 84-93, 157
— եղբ. Նաղաշի Ե, 221
Աբդլլայ Ա Ոստիկան 548
Աբդլմէլիք ամիրապետ 556, 558, Բ, 11
Աբդռահիմ եղբօրորդի Մահմետի Բ, 551
Աբեղեանք կամ Աբեղէնք 65, 123
Աբէլ կամ Աբէղ սպարապետ Վաղարշակայ 65
Աբիւդենոս յոյն պատմիչ 69
Աբլ-հաճ ամիրայ Բ, 150
Աբուսահլ Թգ. Արծր. Բ, 109, 123, 125
Աբրահամ Ա կթ. 491
— առաջնորդ Ղազարայ վանաց Բ, 480, 482
— Թարգմանիչ 437
— սարկաւագ 399
Աբրէհէմ սէլչուկ զօրվ. Բ, 188
Ագաթանգեղոս 146, 244
Ագնիս դիք Հնդկաց 57ծ.
Ագուզք ազգ 285
Ագռաւուց քար կամ Ագռաւաքար 100, 104, 160
Ադաքուք գղ. ի Մեծ Հայս Ե, 262
Ադախ գռ. Բ, 344
Ադամակերտ. տ. Հադամակերտ։
Ադդէ հիւպատ. Եդեսիոյ 93, Բ, 90ծ
— կոմս առ Թէոդոսիւ 281, 300
— (Անդէ) գրիչ Բ, 372
Ադէլբիոս եպս. Արաբացւոց 316
Ադրամելէք ո. Սենեքերիմայ 54
Ադրիանոս կայսր 122
Ազատ տէր Հերքան բերդոյ Բ, 347
Ազատս Բ, 164
Ազատին Սուլտ. Ղոնիոյ Բ, 508
Ազարիա կթ. Սսոյ Ե, 253
Ազպագունիք Բ, 126
Աթանագինէս եպս. 127; 187, 190
Աթանագինէս որդի Յուսկան 238
Աթանաս պատր. Աղեքսանդրիոյ Բ, 436
— աշկ. Մեսրոպայ 416
Աթենադորոս (Թէոդ. Սալահ.) 175-9
Աթենաս աստուածուհի 80
Աթենացիք 434


* Համառօտագրութիւնք. Բ, Ե = յերկրորդ կամ յերրորդ հատորս. աշ = աշակերտ. բ = բերդ. գ = գետ. գղ = գիւղ. գռ = գաւառ. Թգ = Թագաւոր. իշխ = իշխան. լ = լեռ. ծ = ի ծանօթութեան. կթ = կաթողիկոս. հ = հայր. ճգ = ճգնաւոր. ո = որդի. վ = վանք. վրդ = վարդապետ. տ = տես. ք = քաղաք.

Անբերդ ամրոց թ, 472
— (Ամբերդ) գռ. գ, 335
Անգեղ տուն 70, 191-5
— բերդ 278
Անգիայեւս թգ. Յունաց 71ծ.
Անգղիայէ դաւսար Յաքեթի 71ծ.
Անդակ տեղի ի Տարօն 472
Անդովկ (Անտիոք) Սիւնի՝ հայր Փառանձեմայ 242-8
Անդունն վ. ի Կիլիկիա թ, 533
Անդրէաս Առաք. 199, 219
— տարկի Թրգմն. թ, 257
— աշկ. Մեսրովբայ 413ծ
Անդրէի կամ Անդրիասանց վ. թ, 459
Անէ բերդ թ, 460
Անթապ ք. գ, 243
Անի ամրոց 79, 80, 110, 147
— ք. Շիրակայ 424. թ, 139-41, 163, 164, 170, 176-8, 181, 203-6, 227, 274-5, 230, 333 353, 402, 472, 499. գ, 86, 245
Անկիւրիա (Գաղատիա) թ, 498
Անձեւացիք (Անձաւացեաց երկիր) 72, 99, 103
Անձեւացեաց վ. յԵրազմ. 515
Անյուշ կամ Անդուշուշ բերդ 277-9, 496
Աննա կուսան քոյր Որմզդատայ 101
Անոյշ կին Աժդահակայ 56
Անտիոք ք. 59, 529. թ, 217 219, 236, 242, 261, 270, 278, 394, 404, 435, 438, 446, 456, 598
Անտիոքոս թգ. Անտիոքայ 59
Անտոն անապատական 421. թ, 389
— ընկեր Կրօնիդեայ 206
— հայ ոմն ի Հռոմ գ, 292
Անփայտ կամ վերին Բասեան 63
Աշամունեաց վ. յԵրազմ. 516
Աշամունիք կամ Արշամունիք. տե. Արշամունիք։
Աշխադար Դիմաքսեան սպ. Արշակու Գ. 307
Աշխէթ զօրվ. յաւուրս Բուղայ թ, 37-8
Աշխէն տիկին Տրդատայ 182, 185
Աշմուշատ որ և Արշամուշատ ք. թ, 214-5
Աշնակ աւան յԱրցախ նահանգի թ, 353
Աշոտ Ա Բագրատ. թգ. թ, 42, 48-51, 54
— Գ Բագր. Ողորմած թ, 105, 137-42
— Դ Բագր. որդի Գագկայ Ա 141, 161-3
— Արծր. իշխ. յաւուրս Բուղայ թ, 29-31
— Արծր. ո. Դերենկայ թ, 66-8
— Բագր. ո. Սահակայ թ, 21-2
— Բագր. ոմն 429
— իշխ. Բագրեւանդայ 429
— իշխ. Կանչոյ թ, 460
— եղբօրորդի Սմբատայ Ա. թ, 74
— թգ. Սիւնեաց թ, 227
— իշխ. Սիւնեաց թ, 61-2
Աշոց կամ Աշոցք գռ. 69
Աշուշայ բդեաշխ Վրաց 360, 407
Աշտարակ աւ. թ, 164
Աշտիշատ ք. 78 195, 240, 336, 338
Աշրաֆ (Աշրափ) սուլտան թ, 474
— միլիք որդի Ալֆեայ գ, 51, 153
Ապահունիք 71. թ, 145, 197. գ. 188
Ապաղա ղան, տե. Հուլաղու։
Ապիրատ. տե. Գրիգոր Զ. կթ.։
— եղբ. Ն. Լամբր. թ, 413
Ապիլ–Սուվար ամիրայ Դունայ թ, 170-4
Ապլասաթ Տարօնեցի թ, 263
Ապլխարիպ (Ապլղարիպ) իշխ. Արծրունի թ 402-3
— Գունդստապլ թ, 460
— իշխ. Ցաւանաւայ թ, 460
— հօրեղբ. Գր. Մագիստրոսի թ, 119-21
Ապողոն կուռք 78
Ապումըճուր հարկապահանջ թ, 26
Ապումկդէմ թ, 35-7
Ապումուսէ իշխան. Աղուանից թ, 38-42

Աղուներճիզ ք, 27
Աղուավար. տ. Աղիւլ-Սուվար։
Աղրանից գղ. գ, 262
Առան Սիսակեան 68
— գտ. ք, 276. 345. 347. 349, 388, 497
Առաւան թգ. Հայկազն ո. Վահագնի 58
Առաւենեանք 58, 72
Առաւիւտոց գղ. 261
Առաքեալքն | Առաքելոց վ. (Մշոյ), տ. եւ Ղազարայ վ. 198. ք, 226, 366, 369 478, 482. գ, 164, 168
Առաքել վրդ. Սիւնեցի 70ծ.
— հ. Նաղաշի գ, 221
— ի Հռոմ բնակող գ, 292
— եղբ. Կարապետ. կթ.ի Սսոյ գ. 233
Առբերանի գտ. 125
Առինջ գղ. Մոկաց գ, 269 323
Առլէխ ք. ք, 511
Առոն իշխ. ք, 257
Ասատուր Թաթար ք, 498
Ասիա կին Յապետոսի 4
Ասլան Թաթար ք, 498
Ասլան պէկ Մամիկոն ք, 508
— սուլտան ք, 349
Ասկաղոն կամ Ասղալան ք. 392, 394
Ասկլեպիոս չաստուած 176
Ասկունաս ք. ք, 239, 461
Ասմանէ ք. ք, 164
Ասղալան. տ. Ասկաղոն։
Ասորեստան (Ասորիք) 30, 31, 43, 85, 278
Ասորեստանեայք 29, 31
Ասուտ Բագր. որ եւ Աշոտ 80
Ասպահան ք. տ. Սպահան ք 222. գ, 182
— ո. Գարա Յուսուֆի գ, 188
Ասպեթալի ք. գ, 51
Աստղաքլուր 417
Աստղիկ դիցուհի 4, 119, 187
— քոյր Զրուանայ 5
Աստղնբերդ 194ծ
Աստղոն գղ. 193
Աստուածատուր եպ. Երզն. գ, 151
Աստուածատուր եպ. Մեծքրուն ք, 459
— եկեղեցպան Թաթլոյ վանաց 430
— Խլաթեցի ք, 481
— ոսկի Բայբերդոյ ք, 475
— վրդ. Սկեւռացի գ, 40, 41
— օրինակող ք, 370-2
Ասքանազ 2
Ասքանազեանք 2, 3
Ատան (Սիր-Ատան) իշխ. Գողթ-տոյ ք, 460
Ատանա ք. ք, 540. գ, 30, 244
Ատոմ Խորխոռունի 483-4
Ատոմ Աղբակացի վկայ ք, 32-3
— Գնունի վկայ 376
— ճգնաւոր ք, 200-2
— Մոկացի 309-10
Ատոմեանք (Ա) 377
— (Բ) ք, 32-3
Ատտիկէ ք. 154
Ատրպատական աշխարհ 67, 224. 286. ք, 278, 472, 497
Արա Գեղեցիկ 34-7
Արայի լ. ք, 508
Արաբք, Արաբացիք տ. եւ Հարաւայինք 502-3, 534-6
Արագած լ. 9, 25. ք, 508. գ, 335
Արագածոտն 25, 465. ք, 15. գ, 335
Արագէճ ք, 164
Արազ գ. տ. եւ Երասխ գ, 187
Արած գղ. 399
Արածանի (Մուրատ-սու) գ. ք, 23
Արամ 28-35
Արամազդ 56, 150, 161, 202
Արամայիս. տ. Արմայիս։
Արամենակ. տ. Արմենակ։
Արաստ թոռն Արամայիսի 26
Արարատ կամ Այրարատ նահանգ 12, 17, 131, 134, 157, 163, 227, 240, 271, 311-4, 339, 422 546. ք, 74, 182, 331. գ, 28, 335
Արատոս վ. գ, 32
Արգամ Մուրացան տէր 112-3
Արդեանք գղ. յԱրարատ 271
Արեգ կամ Հելիուպոլիս ք. ք, 498

Արեգակնածագ բլուր 199
Արեգնի կամ Արեգի վ. ք. 459
Արեւան. տ. Երեւակ է, 289
Արեւգոյն տ. իշխ. Համամայն ք,
Արգեւան տ. Ընձակ։
Արդու-խաթուն կին Վախտան-կայ ք. 179
Արթուխ.օվայ է, 313
Արիստակէս կթ. ո. Լուսաւորչի 146, 222-4
— վրդ. Բարկուշատցի է, 339
— վրդ. Տամբեցի է, 339
— ի ԺԲ. դարու է, 78
— որ ինակող ք, 363
Արիստոն փեղլացի 122
Արիստոտել է, 3
Արիտ աւ. ք, 226
Արծկէ ք. կամ գղ. յեզր ծովուն Վանայ 329. է, 197, 199, 213, 270, 279
Արծկեոյ վ. ք, 478
Արծն կամ Արզն ք. ք, 188, 196, 216
Արծրունիք 65
Արծրունեաց վ. յԵրուսղմ. 515
Արկազան (Էրզէզ) գղ. ք, 8
Արկնի (Արղնի) ամրոց ք, 184-5
Արձախ. տ. Արցախ։
Արձան Արծր. աշ. Մեսրոպեայ 326, 375
— լ. 209
— քրմապետ 191-7
Արձն գռ. 79
Արղն գռ. է. 225
Արղուն ղան է, 8, 31, 32, 36
Արճէշ ք. կամ գղ. ի Բաղջերու-նիս ք, 95, 149, 197, 548. է. 213
—— գռ. է, 188, 279-80
Արմայիս ո. Արմենակայ 26
Արմաւիր ք. 26-8, 73, 78, 110
Արմենակ ո. Հայկայ 12, 15, 18, 25
Արմենի անապատ է, 56
Արմէն տեղի է, 175
Արմոգ թգ. Հայկազն 58
Արշակ Ա ո. Վաղարշակայ 74, 76
— Բ ո. Տիրանայ 238, 242, 261, 265-8, 270, 276-80
— Գ ո. Պապայ 304, 307-8, 311-6
— Ա պարթեւ թգ. Պարսից 58-60
Արշական թգ. Պարսից 79
Արշակաւան 290
Արշակունիք 58-60, 74, 112, 131
Արշակունեաց վ. յԵրուսղմ. 516
Արշամունեաց գռ. 450
— վ. յԵրուսղմ. 517
Արշարունիք որ և կամսարականք 428. ք, 98
Արշարունեաց գռ. ք, 98, 101, 143, 182
Արշաւիր թգ. Բաբելոնի 60
— կամսարական փեսայ Վար-դանայ 351, 373-4, 387, 440, 444
Արշէզ ո. Քսերքսեայ 55
Արշէն երեց վկայ 399
Արուաստան 534
Արուճ աւ. ք, 27
Արջուց կամ Արջայ գռ. 195
— ծոր 195
Արտուրան ամիրայ ք, 191
Արտազ կամ Շաւարշական գռ. 122. է, 180
Արտազական դաշտ 425
Արտակ Մոկացի 360
— եպ. ի ժողով Շահապիվանի 351
Արտամետ աւանորանոց Սաթին-կայ 120
Արտաշատ ք. 125, 134, 180, 227, 370
Արտաշէս Ա թոռն Վաղարշակայ 74, 77-9
— Բ ո. Սանատրկոյ 109, 125, 297
— Գ կամ Արտաշիր ո. Վռամ-շապհոյ 329-34
— ո. Հմայեկայ 413ա.
Արտաշիր թգ. Հայոց. տ. Ար-տաշէս Գ։
— Ա Սասանեան 128, 136, 244
— Մամիկոն ո. Մանուէլի 304
Արտաւազդ թգ. ո. Արտաշեսի 118, 125-8
— Մամիկոն յաւուրս Դաւթի Դունեցւոյ 551

